


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները`*

*Պաշտոնական կայք`*[http://www.armin.am](http://www.armin.am)

*Էլ. փոստ`*[info@armin.am](mailto:info@armin.am)

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԵԱՆՑ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ - ԹԻՒ 8

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## ՀԱՅԵՐՈՒ ՑՐՈՒՈՒՄԸ ԱՇԽԱՐՀԻ ԶԱՆԱԶԱՆ ՄԱՍԵՐԸ

Բ.

(ՔՐԻՍՏՈՍԻ ԺԱ. ԴԱՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՎԱԽՃԱՆԸ)

*

ԳՐԵՑ

ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

*

ՏՊ. ՆՈՐ ԱՍՏՂ

ԳԱՀԻՐԷ 1955

Printed in Egypt

# تاريخ مهاجرات الارمن

تأليف

آرشاك آلبوياجيان

HISTORY OF

# THE ARMENIAN EMIGRATIONS

**By ARCHAG ALBOYADJIAN**

## ՋԵԿՈՅՑ

*Մտաւորական Սպասարկութեանց Գրասենեակը հաճոյքն ունի լոյս ընծայելու այս անգամ՝ Արշակ Ալպօյաճեանի* **Պատմութիւն Հայ Գաղթականութեան** *կարեւոր աշխատասիրութեան երկրորդ հատորը։*

*Այս հատորը կը հրատարակուի գրասէր ազգայիններու կողմէ ինքնաբերաբար եղած նուիրատուութեանց գումարով, որ գոյացաւ հեղինակին Գրական Գործունէութեան Յիսնամեակայ Յոբելեանին առթիւ (կայացած ի Գահիրէ, 22 Մարտ 1953ին)։*

*Ինչպէս ծանուցուած էր նախապէս, յիշեալ գումարը պահ դրուած էր Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Եգիպտոսի Կեդրոնական Յանձնաժողովի մօտ, աւելի ուշ՝ գործածուելու համար իր նպատակին։ Սակայն շուտով տեսնուեցաւ որ գոյացած գումարը պիտի չբաւէ տպագրութեան ծախքերուն։*

*Նուիրահաւաքումը փակուած չէր տակաւին, երբ Կիպրոսի մեր ազգայինները — գլխաւորութեամբ և ջանքերովը Տիար Յակոբ Գոհճէլեանի — կարեւոր մասնակցութիւն մը բերին հիմնադրամին, ապահովելով գիրքին ամբողջական տպագրութիւնը։ Մենք արդէն ձեռնարկեր էինք տպագրութեան, երբ մեր ամերիկահայ բարեկամներն ալ շարժեցան ի նպաստ հրատարակչական մեր ձեռնարկին և վստահ ենք որ նշանակելի գումար մըն ալ պիտի ունենանք ամերիկահայութենէն։ Յոյս կայ նաև այլ շրջաններէն։*

*Հեղինակը ունի բազմաթիւ այլ երկասիրութիւններ, որոնք հրատարակութեան կ՚սպասեն։ Վերոյիշեալ նուիրահաւաքութիւններէն գոյացած գումարին անհրաժեշտ մասը այս գիրքին գործածուելէն ետք. մնացեալը պիտի շարունակէ հանդիսանալ հիմնադրամ մը վասն այլ երկերու տպագրութեան, անշուշտ աճելով և զարգանալով յառաջիկայ տարուան ընթացքին, շնորհիւ հայ մշակութասէր շրջանակներու ջանքերուն։*

*Արտօնուած ենք յայտարարելու որ Յոբելեանական Յանձնաժողովը առեն մը ետք դրքոյկի ձեւով պիտի հրատարակէ իր հաշուետուութիւնը, ուրկէ մեր ազգայինները՝ տեսնելով թէ ի՛նչ խղճամիտ ձեւով գործածուած է գումարը՝ պիտի խթանուին աւելի անվերապահ ջերմութեամբ քաջալեր հանդիսանալու մեր հրատարակութիւններուն, որոնք առեւտրական ոչ մէկ բնոյթ ունին ու կը մնան միշտ մշակութային ձեռնարկներ միայն։*

Գահիրէ, 15 Սեպտ. 1955

ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԵԱՆՑ
ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԵԱՆՑ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ




*Դիմել հետեւեալ հասցէին՝*
THE NEW STAR PRESS
7, Rue Daramalli
Bab el Louk
Le Caire (Egypt)


# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Պատմութիւն Հայ Գաղթականութեան Ա. հատորին մէջ արդէն պարզած եմ այս աշխատութեան նպատակն ու ձգտումը։ Ուստի որեւէ նոր բացատրութեան հարկ չեմ տեսներ։*

*Հոս միայն կ'ուզեմ աւելցնել մի քանի մանաւոր ծանօթութիւններ՝ այս Բ. հատորին մասին։*

*Ա. հատորը հնագոյն ժամանակներէն մինչեւ Քր.ի ԺԱ. դար կը հասցնէր Հայ Գաղթականութեան Պատմութիւնը, բաժնուած՝ երեք մասերու։*

*Ա. մասին մէջ կը խօսուէր մինչեւ Արշակունեաց կործանումը (Քր.ի* 428) *Հայաստանէն հեռացող Հայերուն վրայ։*

*Բ. մասին մէջ կը պատմուէր Սասան–Բիւզանդական պայքարը* 428*էն* 640*՝ Հայաստանի համար և անոր հետեւանքով Հայաստանէն հեռացող Հայերու ցրուումը աշխարհի զանազան մասերը՝ իսկ Գ. մասին մէջ կը ներկայացուէր Արաբական տիրապետութեան շրջանին* (640-1040) *անցքերը և Հայերու Հայաստանէն տեղափոխութիւնը մանաւորապէս դէպի Արեւմուտք։*

*Այս երկրորդ հատորին մէջ կը խօսուի Կեդրոնական Ասիոյ հրոսներու դէպի Արեւմուտք արշաւներուն և այդ շրջանի Հայ գաղթականութիւններուն վրայ. հետեւաբար այս հատորը կ'ընդգրկէ* 1040-1468 *չորս դարերու Հայ գաղթականութեան պատմութիւնը։*

*Այս շրջանին սկիզբէն մինչեւ վերջը Հայաստան ենթարկուած էր Կեդրոնական Ասիայէն դէպի Արեւմուտք արշաւող հրոսներու կատարած աւերածութիւններուն և կեղեքիչ տիրապետութեան։ Այդ բարբարոսները հեռուէն գալով ոչ միայն տիրեցին երկիրին, այլ հոն տեղաւորուեցան և Հայաստանի բնակչութեան ցեղային բաղկացութիւնը այլափոխեցին և Հայ մեծամանութեան պակսելուն պատճառ եղան։*

*Հայ պատմութեան այս դժբախտ շրջանը, որուն հետեւանքները այնքան խորունկ եղած են մեր ազգին ճակատագիրին վրայ, մեր գաղթականութեան պատմութեան ալ ամէնէն նշանակելի շրջանը եղած է, քանի որ Հայերը այդ ժամանակ մեծ զանգուածներով հեռացած են իրենց բնակավայրէն և անկէ դուրս նոր հայրենիք մը կերտած են, մեծ Հայաստանի սահմաններէն դուրս Կիլիկիոյ մէջ անկախ Թագաւորութիւն մը հիմնելով և համաշխարհային պատմութեան մէջ նշանակելի դեր կատարելով։*

*Հետեւաբար, Ասիական հրոսներու երեք մեծ արշաւանքները, որոնք կատարուեցան Սելճուկներու, Մոնկոլներու և Էօզպէք–Թաթարներու կողմէ, ե-*

րեք յաջորդական ալիքներով, մեր ազգին վրայ ունեցած են խորունկ ներգործութիւն եւ ճակատագրական ազդեցութիւն։ Ատոնց հետեւանքները տակաւին այսօր կը կրէ Հայ ազգը, որ մօտաւորապէս հազարամեակ մը թրքական այդ ցեղերուն հետ ուղղակի յարաբերած է, իր բազմապիսի շփումներուն և բնակակցութեան պատճառով։ Իսկ ԺԱ. դարէն առաջ՝ գրեթէ նոյնքան ժամանակ ալ անուղղակի կերպով մեր պատմութեան հոլովոյթին մէջ դեր մը կատարած են այդ վայրենի ժողովուրդները։ Արդարեւ, այդ Թուրք-Թաթար ցեղերն էին որ Պարսկաստանը տկարացուցին իբրեւ Թուրան կանգնելով Իրանի դէմ։ Անոնք էին նաեւ որ իբրեւ վարձկաններ, աւարառութեան սիրով տարուած, Աբբասեան Խալիֆաներուն բանակներուն մէջ մտան և աղէտալի դեր մը կատարեցին, քանդելով իսլամական քաղաքակրթութեան ծաղկումը Բաղդատի Խալիֆաներուն հովանիին տակ։ Հետեւաբար, անոնք քանդած են Պարսկաստանը, որ Հայաստանի համար պատուար մըն էր Արեւելքի խժդուժ ժողովուրդներուն դէմ և Արաբ Խալիֆայութիւնը որուն պաշտպանութեան տակ Հայաստան ինքնավար պետութիւն մը ունէր և կը վայելէր որոշ առաւելութիւններ, որոնք չէին ըմբռնուած դժբախտաբար Հայերէն։ Արաբները երկար ատեն պաշտպանած են Հայաստանը Հիւսիսէն և Արեւելքէն արշաւող յետամնաց և կոպիտ, արիւնկզակ ու վայրենի ժողովուրդներու դէմ, որոնք իրենց շարունակական արշաւանքներով վերջապէս կործանեցին Արաբ Խալիֆայութիւնը և Մերձաւոր Արեւելքի մէջ անիշխանութեան և խառնակութեան շրջան մը բացին։ Ասոր հետեւանքով՝ առնուազն 2500—2600 տարիներէ ի վեր նախ անուղղակի ապա ԺԱ. դարէն սկսեալ ուղղակի և անմիջական մերձաւոր յարաբերութիւններ ունեցած են Սելջուկ-Մոնկոլ-Թուրք ժողովուրդներուն հետ և դեռ այսօր ալ ունին դժբախտաբար իբրեւ դրացի և բնակակից։

Անուրանալի ճշմարտութիւն մըն է, որ մասնաւորապէս մեր պատմութիւնը իր քաղաքական և քաղաքակրթական կրկնակ երեսներովը՝ ԺԱ. դարէն սկսեալ մինչեւ մեր օրերը, Հայ և Թուրք յարաբերութիւնները ունին իբր գլխաւոր ազդակ և մղիչ զսպանակ, և ինչ որ կատարուած է մեր կեանքին մէջ իբրեւ բարեշրջում կամ յոռեշրջում, իբրեւ վերելք կամ վայրէջք, իբրեւ առաջդիմութիւն կամ յետադիմութիւն, ատոնք ամէնքն ալ Հայ և Թուրք յարաբերութիւններու հետ կապ ունեցած են։

Հետեւաբար, Հայ եւ Թուրք յարաբերութիւնները ներկայացնել յարմար դատեցի սկսեալ ամենահին շրջաններէն. տալով Թրքութեան Մերձաւոր Արեւելքի մէջ կոկոզավիզ երեւան գալէն առջի շրջանին պատմութիւնը եւս, իբրեւ նախամուտ կամ ներածութիւն, ապա խօսելով անոնց սկզբնական պատմութեան վրայ նախ քան իրենց Հայաստան մուտքը։

Իսկ ԺԱ. դարէն սկսեալ, Ա. հատորին մէջ ընտրուած մեթոտին համաձայն այս հատորին մէջ տրուած է Կեդրոնական Ասիոյ հրոսներու արշաւանքներուն պատմութիւնը և զանոնք կատարող խաժամուժներուն ցեղային նկարագիրը, անոնց Հայաստանի մէջ ստեղծած կառավարական վարչութիւնը, անոնց վայրագութիւնները և պատճառած աւերները և դժբախտութիւնները, ինչպէս և Հայ ազգին կրած բազմապիսի զրկանքները և կեղեքումները,



որպէսզի կարկառուն կերպով պարզուի այն անհանդուրժելի կացութիւնը, որ Հայերը մղած է լքելու իրենց հայրենի երկիրը և երթալու հեռաւոր աշխարհներ, հողմացրիւ և թափառական։

Եւ ինչպէս Ա. հատորին մէջ եղած էր, այս հատորին մէջ ալ ցոյց տրուած է Հայ փախստական գաղթականներուն չուն ու երթը՝ բախտէն հալածական՝ մեր աշխարհին չորս կողմերը, ինչպէս դէպի Արեւելք, մինչեւ Խաղաղական Ովկիանոս, դէպի Հիւսիս՝ գրեթէ մինչեւ մօտը Սպիտակ ծովին կամ Հիւսիսային Սառուցեալ Ովկիանոսին, դէպի Հարաւ՝ մինչեւ Պարսից Ծոց և Կարմիր ծով, Եգիպտոս և Եթովպիա և վերջապէս դէպի Արեւմուտք՝ մինչեւ Ատլանտեան Ովկիանոսի եզերքը, ուրկէ անդին «Համատարած Ովկիանոսին մէջ նետուելուն յանդուգն փորձութիւնն իսկ ունեցած է Հայ գաղթականը կամ շրջիկը։

Համաձայն իմ ծրագիրիս, Հայ գաղթականներուն իրենց նոր բնակավայրերուն մէջ ունեցած կեանքին ամբողջական պատմութիւնը վերապահուած է իւրաքանչիւր գաղութի մասնաւոր և ընդարձակ պատմութեան։ Հոս ուզած եմ համառօտաբար ներկայացնել անոնց զարգացման և բարգաւաճման հիմնական գիծերը միայն, որպէսզի ընթերցողը գոնէ ընդհանուր գաղափար մը ունենայ. Այս մեթոտով՝ Հայ Գաղթականութեան պատմութիւնը իր հիմնական գիծերուն մէջ տրուած պիտի ըլլայ, և առանձին առանձին վայրերու Հայ գաղութներուն պատմութեան պատրաստութեան աշխատանքը պիտի դիւրանայ։

Ա. հատորին մէջ ցաւ յայտնած էի, որ ստիպուեր եմ ջնջել յատուկ անուններու բառարանը, որ անհրաժեշտ էր գրեթէ այս տեսակ աշխատութեան համար. Այս թերին ալս անգամ լրացուցի՝ հակառակ տաղտկալի և տաժանելի աշխատանք մը ըլլալուն, յանձն առնելով Ա. և Բ. հատորներուն յատուկ անուններու բառարանը կցելու գործիս, ինչ որ կը յուսամ թէ մեծապէս պիտի դիւրացնէ երկու հատորներուն ալ օգտակարագոյնս գործածութիւնը։ Կը ցաւիմ որ այս անգամ ալ չկրցայ կցել աշխարհագրական գունաւոր քարտէսներ, յատկապէս այս գործին համար պատրաստուած, նիւթական դժուարութիւններու պատճառով։

Գ. հատորը որ պիտի ամբողջացնէ Հայ գաղթականութեան պատմութիւնը, եթէ բախտ ունենամ տպագրել տալու, պիտի ջանամ անոր կցելու գունաւոր քարտէսները ամբողջական գործին և ասով այդ թերին ալ լրացնել։

Գ. հատորին մէջ պիտի տրուի նաեւ երեք հատորներուն մատենագրութիւնը, ներկայացնելով ցանկը այն հարիւրաւոր հատորներուն, հանդէսներուն և լրագիրներուն, որոնցմէ օգտուած եմ այս հատորներուն պատրաստութեան ատեն։

Նոյնպէս, այդ Գ. հատորին մէջ՝ իւրաքանչիւր երկիրի Հայ գաղութներուն համար մասնաւոր աղբիւրներու ցանկեր պիտի տրուին, որպէսզի դիւրութիւն ունենան անոնք, որ մասնաւոր շահագրգռութիւն կը տածեն որոշ երկիրի մը Հայ գաղութին մասին։

Կը յուսամ թէ իրենց ազգին պատմութեամբ շահագրգռուող Հայ անհատ-

ներ, մանաւանդ երիտասարդներ, պիտի գնահատեն այս գործը, զոր պատրաստողը բնաւ յաւակնութիւնը չունի թէ զայն անթերի կրցած է ընել։ Սակայն պիտի հաստատեն ընթերցողները թէ գոնէ զայն կարելի եղածին չափ կատարեալ ընելու համար որեւէ ջանք խնայուած չէ։

Եթէ երկասիրողը հնարաւորութիւնն ունեցած ըլլար աչքէ անցընելու ազգային մատենադարան մը, մանաւորաբար Խ. Հայաստանի պետական ճոխ մատենադարանը, բնական է այս երկը կրնար աւելի ճոխանալ և կատարելագործուիլ։ Իմ աշխատանքս գերազանցելու պարտքը, ուրեմն, կ'իյնայ մայր-հայրենիքի բանասէր գրչեղբայրներուս, աւելի խնամեալ երկասիրութիւններով։

Գահիրէ
15 Սեպտեմբեր 1955

# ՀԱՅԵՐՈՒ ՑՐՈՒՈՒՄԸ ԱՇԽԱՐՀԻ ԶԱՆԱԶԱՆ ՄԱՍԵՐԸ

(ԺԱ. ԴԱՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՎԱԽՃԱՆԸ)

## Ա.

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԱՍԻՈՅ ՀՐՈՍՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ (1040—1468)

### ՇՐՋԱՆԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Հայ ժողովուրդի պատմական դառն շրջաններէն մէկն է այս աւելի քան չորս դարերու ժամանակամիջոցը, որուն տեւողութեան մեր մայր հայրենիքը՝ Մեծ Հայաստանը պարպուեցաւ Հայերէ, ունենալով նախորդ շրջաններէն անհամեմատ աւելի մեծ թիւով գաղթողներ, վասնզի վայրենի հրոսներ ողողեցին մեր երկիրը, ինչպէս Ասիոյ արեւմտեան և Եւրոպայի արեւելեան մասերը և հիւսիսային Ափրիկէն, և աւարի տուին ու աւերեցին հին քաղաքակրթութեան օրրան հանդիսացող բոլոր այս երկիրները, անոնց աւերակներուն վրայ լարելով իրենց վրանները։ Արդարեւ այս չորս հարիւր տարիներու ընթացքին է որ Կեդրոնական Ասիայի տափաստաններէն դէպի շէն ու բարգաւաճ երկիրներ կ'արշաւեն պարբերաբար, վայրենի և բարբարոս ցեղեր զանգուածային գաղթաշարժերով և իրենցմէ անհամեմատ բարձր քաղաքակրթութիւն ունեցող ժողովուրդները կ'ընճեն և կը վանեն զանոնք իրենց հողերէն և իրենք կը տեղաւորուին հոն։*

*Արեւելքէն դէպի արեւմուտք յառաջացող այս յարատեւ հոսանքը, մասնաւորապէս երեք գլխաւոր ցեղերու՝ — Սելջուկներու, Մոնկոլներու և Եօզպէք Թաթարներու — իրարու յաջորդող երեք ուժգին շարժումներով, կերպարանափոխ ըրաւ քաղաքակիրթ աշխարհը և գէթ քանի մը դար կասեցուց մարդկային յառաջդիմութեան ընթացքը։*

*Հայերը, որ այդ վաչկատուն և վայրենի ժողովուրդներու արշաւուղիին վրայ գտնուելու դժբախտութիւնը ունէին, իբրեւ շինարար ու խաղաղասէր ժո-*

դովուրդ, չկրցան հանդուրժել այս վայրագ հրոսներու հասցուցած չարիքներուն։ Շատեր հեռացան իրենց հայրենիքէն, մրրիկէ վանուած փոշիին պէս, չորս ծագերուն ցրուելով, կամ, նման՝ փոթորիկէ խորտակուած նաւի մը բեկորներուն, որոնք խաղալիք կ'ըլլան ջուրերու անհուն տարածութեան և կ'լլնան հեռաւոր ափեր։ Հրոսները այդ անհեղ մրրիկներուն դերը կատարեցին։

Կեդրոնական Ասիոյ բարբարոս ժողովուրդներէն փախչող Հայաստանի դժբախտ Հայ բնակչութիւնը, իր բնագաւառէն դուրս, միջձաւոր և հեռաւոր երկիրներու մէջ, ապաստանութիւն ու հանգիստ, ինչպէս նաև ազատ և բարօրութիւն կ'որոնէր։

Հայաստան, իր աշխարհագրական աննպաստ դիրքին պատճառով, ինչպէս աւելի հին շրջաններուն, նոյնպէս և այս շրջանին, իբրև անցք ծառայեց վաչկատուն և թափառիկ ժողովուրդներուն, որոնք, ինչպէս ըսինք, յաջորդաբար խուժեցին հոն և գրեթէ վանեցին անկէ երկրին բնակչութեան մէկ կարևոր մասը և անոր տեղը իրենք հաստատուեցան։

Հետևաբար, այս շրջանին Հայաստան բոլորովին փոխեց ցեղային բաղկացութեան տեսակէտէն արդէն իսկ այլայլած իր զուտ հայկական նկարագիրը և վերածուեցաւ խառն բնակչութեամբ երկիրի մը, ուր տեղաւորուած էին այլևս մեծ զանգուածներով՝ այլացեղ և այլակրօն ժողովուրդներ, և խախտած՝ մեր բնավայրին բնակչութեան ցեղային ու կրօնական միութիւնը։ Այսպէս, անբաղձալի կացութիւն մը ստեղծուեցաւ մեր ժողովուրդին համար, որ ատոր անխուսափելի դառն հետևանքները ան կը կրէ մինչև այսօր, մօտաւորապէս հազար տարիէ ի վեր։

Արդ, մենք հայերս, տասը դարէ ի վեր ուղղակի շփում ունեցած ենք Կեդր. Ասիոյ ժողովուրդներուն, մանաւորապէս Թուրքերուն հետ, որոնք ցեղով մոնկոլ-թաթար ծագում ունին, և իբրև սկզբնական բնակավայր՝ Չինաստանէն և Մանչուրիայէն մինչև Թուրքիստան տարածուած հողերը։

Ուրեմն, նկատելով որ Թուրքերը միակ ցեղն են որ մօտաւորապէս հազար տարիէ ի վեր դէթ ուղղակի յարաբերութեան մէջ են մեզի հետ, և նկատելով որ այս հազարամեայ շրջանը կանխող հինգ հարիւր տարիներու ընթացքին ալ անուղղակի կերպով կրած ենք թրքական հրոսային շարժումներու հետևանքները, կ'արժէ ներկայացնել թրքական ցեղերու համառօտ պատմութիւնը, աւելի հասկնալի դարձնելու համար մեր պատմութիւնը իր բոլոր ծալքերով, և հանգամանօրէն բացատրելու՝ ԺԱ. դարէն սկսեալ. Հայ գաղթականութիւններու գոյութեան պատճառները։

Դժբախտաբար մեր մէջ շատ քիչ կարևորութիւն տրուած է Թուրքերու պատմութեան, որ մեզի համար կենսական կարևորութիւն պէտք է ունենար և այսօր ալ ունի, և կրնայ շատ բան լուսաբանել, եթէ խոր.ապէս քննուի։

## ՍԿԻԶԲ ԹՈՒՐՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

Հին ատեն իբրև անծանօթ աշխարհ մը կը ներկայանային այն ընդարձակ երկիրները, որոնք կը տարածուէին Կասպից ծովին և Ուրալ, Ալթա, Չինական և Հիմալայա լեռներուն միջև և նախնական օրօրաններն էին բազմաթիւ բարբարոս ցեղերու (1), որոնք անյիշատակ ժամանակներէ սկսեալ ձըգտում ունէին գաղթաշարժերով իրենց նախնական հայրենիքէն հեռանալու և ուրիշ երկիրներ ասպատակելու, զանոնք նուաճելու և այն տեղերը հաստատուելու։



Հերոդոտոս և ուրիշ պատմիչներ, քաղաքակիրթ և ծանօթ աշխարհէն դուրս գտնուող և անոր սպառնացող այս ժողովուրդները կը ճանչնային ընդհանուր անունով մը — Սկիւթացի — և անոնց արշաւներուն վրայ կը խօսէին իբր պատուհասներու։ Անոնց համար Սկիւթացի էին Դանուբէն անցնող բարբարոսները, ինչպէս Կովկասեան լեռներու անցքերէն դէպի հարաւ խուժող ժողովուրդները, և Օքսուսէն անդին անցնող և թաթարական տափաստաններէն Իրան առաջացող բարբարոսները։ Իսկ Պարսիկները՝ հիւսիսէն դէպի իրենց կողմը (հարաւ) արշաւող և իրանեան հողերէն ներս խուժել նկրտող այս ժողովուրդներուն բնակավայրը միօրինակ անունով մը՝ Թուրան կը կոչէին։ Իրան-Թուրան պայքարը, որ Պարսիկ պատմութեան գլխաւոր առանցքներէն մէկը կը ներկայացնէ, արձագանգ գտած էր նաև արևմուտքի մէջ։ վասնզի Հերոդոտոս կը խօսի Սկիւթացիներու վրայ, որոնք Դարեհ Վշտասպեանի (521 — 486 Ք. Ա.) ատեն, Սոգդիանիայի (Սմրղանտի շրջանակ) և Բակտրիոյ սահմանագլուխները բռնաբարած էին։ Պարթևներու Հրահատ Ա. թագաւորը (176 —171 Ք. Ա.) Անտիոքոս Դ. Եպիփանի (2) (175—164 Ք. Ա.) դէմ, այս Սկիւթացիները օգնութեան կը կոչէ, սակայն անոնք յետոյ իրեն դէմ կը դառնան և Պարթևներու բոլոր ջանքերը չեն կրնար արգիլել զանոնք հաստատուելէ Բակտրիոյ և Սոգդիանիայի մէջ։

Անոնք յետոյ, Միջին Դարուն, Թուշանք անունով կոչուեցան Պարսիկներէն, որոնք Դ. դարէն սկսեալ գործ ունեցան անոնց հետ։

Այս ընդհանուր անուններով ներկայացուած բարբարոսները միակ ազգ մը չէին, այլ բազմաթիւ ցեղեր և ժողովուրդներ, որոնցմէ մէկն էր Թուրքը, որ շատ հին ատենները կը բաղկանար մեծ մասամբ ուարաու և վաչկատուն հինգ ցեղախումբերէ, որոնք կը կոչուէին Քիփչաք, Օյղուր կամ Ույղուր (3) Քանքլի, Քալաչ և Քարլուք (հմմտ. Մ. Սերոբեան, Մեր պայքարը հայ ազատագրութեան ուղիով, Գահիրէ, 1948, էջ 1)։

---

(1) Հին ժամանակներուն մէջ անոնք կը ճանչցուէին այլազան ընդհանուր կոչումներով, ինչպէս Սարմատացիք, Սկիւթացիք, Թուրանք, Հեփթաղք, Խազարք կամ Խազիրք, եւ աւելի ուշ՝ Մանկոլ, Թաթար, Խրղըզ, Թուրք, Քալմուք եւ այլ անուններով:

(2) Կը նշանակէ «երեւելի»:

(3) Քիփչաքները եւ Օյղուրները ամէնէն կարեւոր ցեղախումբերն էին թրքական, եւ կը բնակէին Աւազներու Երկիրին մէջ (Գարա Գում, Գըզըլ Գում, Աք-Գում այսինքն սեւ, կարմիր եւ ճերմակ աւազ բաժանումներով) որ կը տարածուէր Կասպից ծովին հարաւակողմը. Քիփչաքները՝ արեւմուտքը եւ Օյղուրները՝ անոր արեւելքը կը գրաւէին (Lamouche - Էջն. 13): Օյղուր բառ Léon Cahun-ի (Introduction de l'Histoire de l'Asie. Turcs et Mongols, 1896) կը նշանակէ «միացած մարդիկ», ենթակայ մէկ օտարերկի, ճեճերաբար, յառաջդիմաբար քաղաքակրթուած եւ համաձայնօրէն [illegible]: Ուղացոյց անոնց առաջ չափով մը քաղաքակրթութեան, իրենց գիրն է, որ Ը. դարուն անոնց տարին Սուրիայէն Նեստորական քարոզիչները, որոնք Թուրքեստան եկած եւ մինչեւ Չինաստան թափանցած էին (Philippe Berger, Histoire de l'Ecriture dans l'Antiquité, 282): Առաջին, բառք գիրքը գրուած է Քաշղարի մէջ (Lamouche, Էջն 14):

Չինացիներ Քր.ի Ա. դարուն «Ճամբաներ» անունը տուած են այն երկիրներուն, որոնք այսօր ծանօթ են Զունկարի (Dzoungarie) և Քաշկար կամ աւելի հասարակօրէն Չինական Թուրքեստան անուններով (հմմտ. Colonel Lamouche, Histoire de la Turquie depuis les origines jusqu'à nos jours, 1934 Paris, 13)։

Առաջինը կոչուած է Փէ-Լու՝ «Հիւսիսի Ճամբայ», և երկրորդը Նան-Լու՝ «Հարաւի Ճամբայ»։

Թուրքերը այդ երկիրներէն Փէ-Լուի կու տան Պեշ-Պալիք, «հինգ քաղաքներ» և Նան-Լուի՝ «Ալթը Շէհիր» անունները։ Կ՚ըսուի թէ երբ մարդ Չինաստանի Հիւսիսային Ճամբէն մեկնի, կը հասնի Թուրքերուն բնակավայրը, Թուրքիստանի մէջ, զոր Թուրքերն ու Մոնկոլները կը կոչէին Չէթէ, «Սահմանագլուխ»։ Հոս է որ Թուրքերը պահ մը կանգ առին, խմբաւորումներ կազմեցին, գիւղեր հիմնելով և իրենց պաշտպանութեան համար հարկադրուեցան որդեգրել կարգապահութեան սկզբունքները, իրենց մեծերուն ձեռքին տակ և երեւան բերին Օյկուր ցեղախումբը։ (հմմտ. Մ. Սերոբեան, նոյն 2)։

Չինացիները՝ Թուրքերը, Մոնկոլները և Օյկուրները կը կոչեն Հիունկ-Նու, «Ապստամբ գերիներ», «Ըմբոստ ծառաներ», որոնք կը բնակէին Հօանկ Հօ գետին հիւսիսակողմը։

Պատմութեան մէջ Թուրք անունը առաջին անգամ կը յիշուի Ե. դարուն, երբ Չինացիներ այդ Մոնկոլ ժողովուրդներուն կու տան Թու-Քիու անունը (1), և այդ չինական կոչումն է որ Զ. դարուն յոյները կը վերածեն Թուրք ազգի ձեւին։

Չինական տարեգրութիւններու համաձայն, 569ին Թու Քիուի Թագաւորը դեսպան կը ղրկէ Չինաստանի կայսեր և համաձայն յունական տարեգրութիւններու, Բիւզանդիոնի Հռոմէական կայսրը իր կողմէ դեսպան կը ղրկէ Թու-Քիուի Թագաւորին (Մ. Սերոբեան, նոյն, 3)։

Թուրքերէն մաս մը անջատուած է իրենց մեծ զանգուածէն և հեռացած է անկէ։ Այս փախստականները, այդ վայրենացածները Թուրքերէն կոչուած են Խըրղըզ-Ղազաք անունով, որ կը նշանակէ ազգէն խումբէն բաժնուած։ Քանքլի ցեղախումբի այդ փախստականներու մէկ մասը երբ պարտաւորուեցաւ շարունակ փախուստ տալ իրմէ զօրաւորներուն առջեւէն, տափաստաններու վրայ ապրեցաւ, իբրեւ Խըրղըզ (= Թափառական) և անապատներու մէջ՝ իբրեւ Ղազաք հարկադրուեցաւ ապրիլ, արկածախնդրութեամբ, թալանով և քանդելով ամէն ինչ՝ որուն կը հանդիպէր իր ճամբուն վրայ։

## ՉԻՆ ԵՒ ԹՈՒՐՔ ՊԱՅՔԱՐ

Չինաստան տեսնելով այս բարբարոսներուն անուղղայ ընթացքը և անոնց կողմէ ստեղծուած յարաճուն վտանգը, ուզեց միանգամ ընդ միշտ ազատիլ

(1) Չինացի գրողներ առաջին անգամ կը յիշեն Թու-Քիուներ՝ Հաւանօրէն թուրքերու համար գործածուած է եւ մոնկոլ Թիւրք-ուտ բառէն կազմուած: *(Colonel Lamouche, Histoire de la Turquie depuis les origines jusqu'à nos jours 1934, Paris, 13):*



այդ անբաղձալի տարրերէն, այդ «ապստամբ գերիներ»էն, որոնք սկսած էին ունենալ տեսակ մը պետական կազմ, Չէն-Եու (Թուրքերէն Թանգրի-Գութ) կայսեր ձեռքին տակ։ Մեր Թուականի 72ին, Չին կայսր Մինկ-Թի որոշեց վերջնական հարուածը տալ անոնց, և այդ գործը յանձնեց Փան-Չաօ զօրավարին, որ լաւ կատարեց իր պաշտօնը։ Ան հետզհետէ գրաւեց Փէն-Լուն և Նան-Լուն, և Թուրքերը քշեց դէպի արեւմուտք։ Անոնցմէ շատեր սպաննուեցան Չինացիներէն, Թաթարներէն, Մոնկոլներէն, Օյկուրներէն ու Թունկուզներէն, և այդ բռնապաղթին ենթարկուած տարագիրներու մնացորդները հետզհետէ ձուլուելով Քիփչաքներու, Գազաքներուն և Խըրղըզներու մէջ, եկան ինկան Ալթայի վրայ և դարերով տխուր կեանք մը ապրեցան։ Չինացիք պաշտպանելու համար իրենց երկիրը միանգամ ընդ միշտ այդ հրոսներու յարձակումներուն դէմ, կառուցին Չինաստանի Մեծ Պարիսպը 214ին (Քր.է առք)։

Թերեւս իրենց յառաջխաղացութեան դէմ կանգնած այս պատուարը, այդ բարբարոսները սանձահարած է կամ զանոնք մղած է դէպի արեւմուտք դառնալու և փորձելու ոտնակոխ ընել Իրանը, որ երկար ատեն մաքառած է այս ցեղախումբերուն դէմ, զոր Պարսիկները, ինչպէս ըսինք. Թուրան ընդհանուր անունով կը ճանչնային։

Ուրեմն Չինացիներէն կոտորակուած և հալածական եղած այս ցեղը մինչեւ Ե. դար բազմացած և իր ուժերը վերստացած, աւելի կարգապահ դուրս ելաւ Էրքէնէ-Քունէն, առաջնորդութեամբ իրենց գլխաւորին Պիւրթէ-Չէնէի, (Գորշ-Գայլ), որ ըստ Թուրք ու Մոնկոլ աւանդութեան, հայրն է Ալան Կօայի, Լոյս Եղնիկի, որ Չինկիզ Խանի նախահայրն էր։

Ասկէ վերջն է որ այս ցեղախումբը փոխանակ «Հիունկ Նու»ի (ապստամբ գերիներ), կը կոչուին Թու Քիու կամ Թուրք, Ե. դարուն չինացիներէն, ինչպէս տեսնուեցաւ։

Չին գրողներ կը յիշեն նաև Օղուզները որոնք կը բնակէին Թուրքեստանի արեւելքը և իրենց անունը կ՚առնէին Օղու-Խան կոչուած պետէ մը, որուն առասպելական պատմութիւնը զինքը ժամանակակից կը դարձնէր Աբրահամ Նահապետի (Համմէր. Օսմ. Պատմ. Ա. 7)։

Համմէր կը յիշէ նաեւ Ղուզերը կամ Ուզերը, որոնք դաշնակիցներն էին Կումաններու և Փեչենէկներու։ Կարելի է Օղուզ, Ղուզ և Ուզ միեւնոյն ժողովուրդներն են որ վաղնջական դարու մը բաժնուած են երկու մասի, օրոնցմէ մէկը մնացած է կեդր. Ասիոյ մէջ, մինչ միւսը՝ տեղափոխուած է հիւսիս, դէպի Ուրալ և Վոլկա (Lamouche, նոյն, 14)։

Այսպէս, ինչպէս տեսնուեցաւ, Թուրքերու իրական պատմութիւնը կը սկսի այդ թուականներէն, վասնզի այնուհետեւ, անոնք հետզհետէ իրենց իշխանութեան կ՚ենթարկեն Ռուսիոյ սթէփներէն մինչեւ Դանուբի հովիտը, Պարսկաստանը, Միջագետքը, Հայաստանը և Փոքր Ասիան։

Եւ այսպէս ամբողջ Արեւելքի մէջ կը հասնին տիրական այլ սակայն աւերող և քանդող դիրքի մը։

Անոնք կու գան խառնուիլ մշակոյթով իրենցմէ բարձր ժողովուրդներու հետ և կը դառնան անոնց բնակակից և կ՚ազդեն անոնց ճակատագրին վրայ,

ինչպէս Հայաստանի մէջ, ուր այս անմիջակ ցեղը կը խառնուէր երկիրին բնակչութեան։

Հայերէն շատ առաջ, անոնց ազդեցութեան ենթարկուեցան մեզի ցեղակից Պարսիկները, որոնց երկիրին արեւելեան սահմանին վրայ անոնք տեղաւորուած էին եւ շարունակ Իրան մտնել կը փորձէին։

## ԻՐԱՆ.-ԹՈՒՐԱՆ. ՊԱՅՔԱՐԸ

Պատմութենէն գիտենք թէ Շապուհ Բ. (309–378) յարձակած է այս բարբարոսներուն վրայ 368ին (ՊՀԺ. Ա. հտ. 191) սակայն չէ կրցած գլուխ ելլել անոնց հետ։

Դ. դարուն վերջերը, ահարկու հրոս Հեփթաղեան Հոները, հաստատուած էին Անտիոքոս եւ Բակտրիա, կործանելէ վերջ այդ շրջաններուն հին Yuetchi կայսրութիւնը (385) (տես. Specht, Etudes sur l'Asie Centrale d'après les historiens chinois, J. A. 1893, II. 334 350, եւ René Grousset, Histoire de l'Asie 1921 I. 93)։

Այս սպառնալից կացութեան առջեւ էր որ Սասանեան վեհապետը՝ Վահրամ Գոռ (421–438) կը փութայ խաղաղութիւն կնքել Բիւզանդիոնի հետ, որպէսզի արեւմուտքի մէջ ձեռքը ազատ ըլլայ, Արեւելքէն Իրանի սպառնացող վտանգին դիմագրաւելու համար (René Grousset, նոյն, I. 93)։

Շնորհիւ այս նպաստաւոր դաշինքին Պարսկաստան վերջ տուաւ Հայաստանի Արշակունի թագաւորութեան (428) եւ Արեւմուտքի մէջ ապահովուած, դարձաւ դէպի Արեւելք։

Հեփթաղները 429ին աւերեցին Խորասանի պարսիկ սատրապութիւնը, ինչ որ առիթ մը եղաւ որ Վահրամ Ե. Գոռ անոնց դէմ երթայ։ Վահրամ յաղթեց անոնց եւ զանոնք դուրս վանեց Անտիոքոսէն (նոյն)։ Իրանի ժառանգական թշնամիներուն դէմ շահուած այս յաղթանակը Սասանեան այս վեհապետը հերոսացուց եւ ան դիւցազնավէպերու մէջ փառաբանուեցաւ նոյնիսկ իսլամական շրջանին։

Յազկերտ Բ. (438–456) 449ին եւ 457ին անոնց դէմ ճակատեցաւ (ՊՀԺ. Ա. 192–3) վերջ տալու համար Հեփթաղներու վրէժխնդրութեան եւ պարտուեցաւ։ Արիականութեան կորուստը՝ Բակտրիոյ մէջ փոխարինելու համար իրանականութեամբ, հիւսիս-արեւմուտքի կողմը Հին Հայաստանի թագաւորութեան մէջ Հայերը Պարսիկ զանգուածին մէջ ձուլել փորձեց 451ին եւ Վարդանանց պայքարին առիթ տուաւ։

Հոս ալ Սասանեանք ձախողեցան վասնզի արմատախիլ չկրցան ընել Պարսից զրադաշտական կրօնքին հակադրուող եւ ծաւալող քրիստոնէութիւնը երկիրին մէջ։

Պերոզ (457–484) այն ատեն պարսիկ քրիստոնէութիւնը ուզեց անջատել Տիեզերական Եկեղեցիին միութենէն, որպէսզի անոնք գործիք չ'ըլլան Բիւզանդիոնին։

Հայերու Քաղկեդոնի ժողովը (451) չընդունիլը կատարեալ ապահովութիւն մը չէր, քանի որ հանդիսաւորապէս հռչակուած չէր, մինչ 484ին Պարսկաստանի քրիստոնեայ եպիսկոպոսներու Bit-Lapatի ժողովը, որ ընդ-



գրկեց Նեստորի վարդապետութիւնը, Պարսկաստանի եւ Բիւզանդական քրիստոնեաները եւ Հայ Եկեղեցին կ'անջատէր իրարմէ, ինչ որ գոհունակութիւն կը պատճառէր Սասանեան Արքաներուն (René Grousset, նոյն, I. 93), որոնք իրենց քրիստոնեայ հպատակները մինչեւ այն ատեն կը նկատէին Բիւզանդիոնի գործակալները, (նոյն, 95)։ Նեստորականութիւնը, այսպէս պարսիկ քրիստոնեաներուն հաւատարմութիւնը ապահովեց Սասանեան պետութեան։ Նիզիպի դպրոցի շուրջ կազմուեցաւ զուտ իրանեան քրիստոնէութիւն մը, որ տարածուեցաւ մինչեւ Կեդր. Ասիա, լուսաւորեց պահ մը Թուրք-Մոնկոլ աշխարհը եւ թափանցեց մինչեւ Չինաստան։

483ին Պերոզ (457–484) ինքն ալ կռուեցաւ Քուշաններու յաջորդող Հեփթաղներու դէմ (ՊՀԺ. Ա. 191), եւ իր կեանքն ալ վրայ տուաւ։ Վաղարշ (484–491), այնքան ծանր պարտութիւն մը կրեց որ յանձն առաւ հարկատու դառնալ Հեփթաղներուն (ՊՀԺ. Ա. 191 եւ 193)։ Այս նուաստացուցիչ վիճակը տեւեց մինչեւ Զ. դարուն կէսերը, (545), ուր պարսիկները ապստամբեցան Թուրանի դէմ եւ յաջողեցան հարկը դադրեցնել, վասնզի ինչպէս կ'երեւի այդ աշխարհամասին մէջ ազգեր ազգերու վրայ իյնալ սկսած էին։ Այս շփոթութիւններու միջոցին Հեփթաղներու թագաւորութիւնը կործանեցաւ՝ հարաւէն Պարսիկներու եւ հիւսիսէն Թուրքերու կողմէ գործադրուած ճնշումին հետեւանքով (ՊՀԺ. Ա. 190)։

Այսպէս, պատմութեան ասպարէզ եկան Թուրքերը, որոնց հետ կը նոյնացնէ Միքայէլ Ասորի (388)՝ Սկիւթացիները։ Ինչպէս նաեւ Կովկասեան լեռներու հիւսիսային կողմը ապրող ժողովուրդները, որոնցմէ մէկ մասը Հայերու եւ Վրացիներու ձեռքով քրիստոնէութեան յարած էին (Միքայէլ Ասորի, 392)։

Ինչպէս Միքայէլ Ասորիի խօսքերէն կը հասկցուի, Պարսիկները այս բարբարոս ժողովուրդներէն վարձկան զինուորներ կ'առնէին. վասնզի կ'ըսէ՝ թէ «Յորժամ պէտս ունէին զօրացն, հանէին ի նոցանէ Պարսիկ թագաւորքն վարձուք, եւ ի վճարմանն պատերազմին դարձեալ տանէին անկանէին ի տեղիս», (Միքայէլ Ասորի, 388–9) եւ կը յիշէ՝ թէ ինչպէս Խոսրով, 5000 կոյս աղջիկներ եւ «բազում գանձս» նուէր ղրկելով Թուրքաստան Յուստինոսի դէմ անոնց օգնութիւնը խնդրած է (նոյն, 269) եւ ուրիշ անգամ մը՝ նոյն նպատակով Շապուհ դարձեալ 5000 աղջիկներ ղրկած է (նոյն, 393). Նոյնպէս կը յիշուի՝ թէ Խոսրովի դէմ ապստամբած Վռամ-Շապուհի բանակին մէջ այդ կողմերէն բազմաթիւ վարձկաններ կային (Théophyracte Simocatta, Ե. Ժ. 225), ինչպէս նաեւ ապստամբ Վահրամ Չոբին Միհրեւանդակ, Ռաժիկ ի Միհրան տոհմէ, երբ ինքզինք թագաւոր կը հռչակէր, իրեն միացուցած էր այդ հիւսիսային ազգերը, եւ անոնց հետ կը քալէր Որմիզդի վրայ։ Երբ բիւզանդական օգնութեամբ եւ Վստամի ձեռնտուութեամբ Որմիզդի որդին Խոսրով կը յաղթէ Վահրամի, ան կ'ապաստանի Խազարներու աշխարհը, ուր եւ կը սպաննուի։ Իսկ երբ Վստամ ապստամբեցաւ եւ ինքզինքը հռչակեց թագաւոր իբր Պերոզ-Վստամ, իր բանակին մէջ ունէր Դիլումք, Թուրքեր եւ ուրիշ հիւսիսային ազգեր (Հ. Ն. Ակինեան, ՀԱ. 1931, 158)։ Միջին դարուն սակայն այդ բարբարոս ժողովուրդները նոյնիսկ Տիզբոնի եւ Բիւզանդիոնի հրաւէրով թափան-

ցեցին այս երկու պետութիւններուն սահմաններէն ներս, իբր զինուորական ոյժեր կամ գաղթականներ և հետզհետէ դիրք գրաւել սկսան թէ՛ Պարսկաստանի և թէ՛ Բիւզանդական Կայսրութեան մէջ, մինչև որ արաբ խալիֆայութեան երկիրներուն մէջ գերազդեցիկ դիրք մը ձեռք բերին։ Նախ Բիւզանդիոն օգտագործել փորձել ուզած է Իրան-Թուրան պայքարը, զինակցիլ փորձելով Թուրանի հետ ընդդէմ Իրանի, որուն յաւիտենական հակառակորդն էր Թուրան և այս կերպով բնական զինակիցը Բիւզանդիոնի որ նոյնպէս պայքարի մէջ էր ընդդէմ Իրանի։ Պատմութիւնը կը յիշատակէ թէ Յուստինոս Բ. 572ին դաշինք կնքած է Թուրքերու հետ, սակայն յուսախաբ եղած է (ՊՀԳ. Ա. 154 հմմտ. Գիւտերբոք, Բիւզանդիոն եւ Պարսկաստան, 145—147, S. Vallé. Echos d'Orient, 1909, 206–214 և The Turke in the Sixty Century, Bury EHR XII. 1897, 417—426)։

Այս ձախողումը սակայն չէ յուսահատեցուցած Բիւզանդացիները, որոնք միշտ աշխատած են շարժել Թուրքերը ընդդէմ Սասանեանց և անոնց կործանումէն յետոյ, ընդդէմ Արաբներու, մանաւանդ տեսնելէ յետոյ թէ անոնք ինչպէս կը ծառայէին արաբ բանակներու մէջ։ Բիւզանդացիք իրենք ալ զինուորագրեցին իբրև վարձկան ներկայացող Թուրքերը, որոնց թիւը Թ. դարուն շատ մեծ էր Բիւզանդական բանակին մէջ։

Միքայէլ Գ. կայսեր (842—867) առեն կը յիշուի Ֆէրկանա-ի բնիկ, Թուրք վարձկան պետ մը (Գէորգ Մենակեացի Ժամ. 722) և Կոստանդին Ծիրանածին կայսրը կը հաստատէ տեւական գոյութիւնը Ֆէրկանացիներու գունդի մը, կայսերական պահակազօրքին մէջ (Գիրք Արարողութեանց, 570, Բ. 674)։ Իսկ Հարուն Պէն Եահեա, շուրջ 880ին, Պոլսոյ Կայսերական Պալատին մէջ տեսած է 10,000 Թուրքերու և Խազարներու բանակ մը, բոլորովին ոսկեճամուկ հագուստներով և զէնքերով (J. Marquart, Osteuropaische und Ostasiatiche Streifzüge — Leiptzig, 1903, 217—219 և 227)։

Բիւզանդացիք, նոյնիսկ ինչպէս Հայ, նոյնպէս Թուրք գաղթականներ հաստատեցին իրենց երկիրին մէջ, օգտագործելու համար զանոնք իրենց սահմանագլուխներէն ներս խուժող բարբարոսներուն դէմ։ Այսպէս, կը յիշուի թէ Թէոփիլոս Կայսրը, 829—842ին, Վարդարեան (Vardariotes) Թուրքերու գաղութ մը հաստատած էր Թեսաղոնիկէի մօտ, Axios գետին եզերքները, անոնցմէ զինուորականութիւն մը կազմելու նպատակով և Թեսաղոնիկէի ու Strymon թեմերը պաշտպանելու հաշիւով։ Այս Վարտարեան Թուրքերը Axiosին տուին անոր արդի անունը, Վարտար. (Tafel, Thessalonique, 81 և Histoire de l'Empire Ottoman depuis les Origines jusqu'à nos jours par le Vte. de le Jonquière, 1914, Paris, 42)։

Սակայն Արեւելքի մէջ Թուրքերը շատ աւելի լայն ու ընդարձակ գործունէութիւն մը ունեցան։ Երբ Արաբները ասպարէզ եկան և Պարսիկներու երկիրը արշաւեցին, այս վերջինները, իրենց հին ատելութիւնը մոռնալով՝ Թուրքերու օգնութեան ապաւինեցան։ Յազկերտ Դ. վերջին Սասանեանը, Արաբներէն պարտուած՝ ապաստանեցաւ 636ին Թուրքաստանի կողմերը (Սեբէոս, 222), հաւանօրէն անկէ զօրք հայթայթելու համար. սակայն հոն սպաննուեցաւ



(Միքայէլ Ասորի, 307—8. հմմտ. Սեբէոս, 223 և 214—5, Ղեւոնդ Բ. 23։ Թովմա Արծրունի 115, Հերում, 24)։

Այնպէս որ Պարսիկները չկրցան որևէ օգուտ քաղել Թուրքերէն, որոնք աւելի փութացուցին իրենց կործանումը։ Եւ երբ Արաբները մինչև Խորասան և Թուրքիստան տարածեցին իրենց պետութիւնը և նուաճեցին նաև Կեդր. Ասիան, Թուրքերը յարեցան մահմետականութեան (հմմտ. Հերում, 24–26)։ Այդ թուականներէն յետոյ անոնք աւելի յաճախ յիշուիլ սկսան Թուրք անունով և իբրև վարձկաններ ծառայեցին Արաբ Խալիֆաներու բանակներուն մէջ։

## ԹՈՒՐՔԵՐԸ՝ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹԵԱՆ ՏԻՐՈՂՆԵՐ

Երբ Արաբ Խալիֆայութեան մէջ ներքին պառակտումներ ծայր տուին, Թուրքերը այս կամ այն կողմէն վարձուած՝ խառնուեցան այս ներքին պայքարներուն։ Մասնաւորապէս անոնք Աբբասեանց կողքին էին՝ երբ անոնք կը մաքառէին Դամասկոսի Ումմեանց դէմ և այդ իսկ պատճառով կը յարէին Սիւննի դաւանութեան։ Թուրքերը այս երկարատև պայքարի միջոցին, Պաղտատի Խալիֆաներուն հայթայթեցին ամէնէն քաջ զինուորները. այնպէս որ Խալիֆաները իրենց անձը վստահեցան միջնորդութեամբ Խորասանի կառավարիչին —որ անոնց երկիրին դրացի էր — իրենց ծառայութեան մէջ առնուած Օքսոսէն, Եաքսարտեսէն անդին ապրող այն հրոսներուն, որոնց գրոհներ կատարելու և աւարելու համար ցոյց տուած վայրագութիւնը ամէն տեղ ուշագրաւ եղած էր (Laurent, 227)։ Արդարև, ինչպէս կը դիտէ Միքայէլ Ասորի Պատրիարքը (Miohel le Syrien Գ. 157), «Արաբները պէտք ունէին Թուրքերը իրենց օգնութեան կոչելու: Անոնք Արաբներուն հետ կը քալէին իբր հպատակներ եւ ոչ իբր տէրեր: Բայց որովհետեւ ամէն ուրէք որ անոնք կ'երթային՝ քաջութեամբ կ'առաջանային եւ յաղթանակներ կը տանէին, քիչ քիչ սորվեցան տիրակալել: Անոնք իրենց երկիրը կը տանէին եւ կը ցուցադրէին երկիրին հարստութիւնները ուրիշներուն, գրգռելու համար զանոնք որ երթան եւ բնակին այսպիսի ինչքերով լեցուն երկրի մը մէջ»:

Այնպէս որ Աբբասեանց հաստատութենէն (750) յետոյ Թուրքերու թիւը հետզհետէ կ'աւելնար պահակազօրքին և բանակին մէջ (Muller, Ա. 520), ինչպէս պետական-վարչական պաշտօններու մէջ (1)։

Այս պատեհութեամբ, իբրև արաբական բանակի զինուոր և Խալիֆաներու պետութեան պաշտօնատար, նոյնիսկ Ը. դարէն սկսեալ Հայաստանի պատմութեան ալ խառնուեցաւ իրենց անունը։

Մասնաւորապէս 760ին, Հայաստանի կառավարիչ Հասան որդի Կահաթբայի (կամ Իպն Քաթապահ), զօրքերը, առնուած էին Խորասանէն և ապահովաբար Թուրք, վասնզի Ղեւոնդ (168), կ'ըսէ թէ «Ընդ նմա գունդ բազում ի տոհմէ Խորասան աշխարհին. որք առաւել դառնութեամբ յաճախ գործէին զզազրագործութիւն եւ բազմացուցանէին զաղէտս եւ զհեծութիւնս աշխարհիս»:

---

(1) Օրինակի համար 751–755ին, թուրք մը քաղաքապետ էր Համատանի պէս կարեւոր քաղաքի մը (Էլ-Թապարի, Գ. 118):

Դարձեալ այն 30,000 զօրքերը, զորս Ամրու բերաւ Սուրիայէն՝ 772ին՝ ընկճելու համար Հայկական ապստամբութիւնը, Խորասանէն առնուած էին եւ նոյնպէս վստահաբար Թուրք (Ղեւոնդ, 183)։

Արդէն Թ. դարուն սկիզբէն Խալիֆայութեան հնթակայ բոլոր երկիրներուն մէջ Թուրքերը ազդեցիկ տարր մը դարձած էին, վասնզի արաբական առաջին յաղթանակներուն յաջորդած էր յղփացումը եւ յաղթանակներու գինովութիւնը եւ Արաբ Խալիֆաները՝ իրենց իշխանութիւնը պահպանելու համար պարտաւորուած էին դիմում ընելու վարձկան զինուորներուն, որոնք ընդհանրապէս կ'առնուէին Թուրքերէն։

Ասոր համար է որ Մամուն (813-833) զանգուածային կերպով զինուորագրեց Անդրօքսոս (Tranaxiana), Ochronschanaի և Ֆէրկանայի Թուրքերը (A. Muller, Der Islam in Morgen und Abendland, Berlin, 1885, Ա. հտ. 519—520) եւ 4000 Թուրքեր ունէր իրեն հետ երբ քալեց, 832 Յունուարին, Եգիպտոսի ըմբոստներուն դէմ, (Weil, Geschichte des Chelifen, Mannheim, 1846—1862, Բ. 224 246, Muller. Նոյն, Ա. 507, A. A, Vasilief, Byzance et les Arabes, I. Relations Polltiques de Byzance et des Arabes au temps de la Dynastie d'Amorium, (820—867), Petersbourg, 1900, 96)։ Ասոր համար՝ René Grousset (տես. Histoire de l'Asie I. 1921, Paris, 151), իրաւունք ունի Թուրքերու Իրան տեղաւորուելուն պատասխանատուութիւնը բեռցնելու Մամուն Խալիֆային վրայ, վասնզի ա՛ն էր որ թողուց՝ որ կազմուի իրապէս Թուրքերէ կազմուած պահակախումբ մը Հռոմի կայսրերուն պրետորեան գունդերուն նման։

Մուհթասիմ Խալիֆան (833—842)՝ երրորդ զաւակը Հարուն էլ-Ռաշիտի, իր գահակալութեան (833) ժամանակ, Թուրք գերիներով կազմեց ընտրեալ պահակազօրք մը, որուն շարքերը միշտ կը լրացնէին Թուրքեստանէն բերուած նոր զօրքերով։ Այս պահակազօրքը հանդիսացաւ իր բանակին գլխաւոր ուժը եւ կ'ըսուի թէ զինուորներուն թիւը իր օրով հասաւ 70,000ի, (Weil, Նոյն. Բ. 398, Muller, Նոյն, Ա. 520, Vasilief, Նոյն, 5. եւայլն)։

Էլ Մասուտի, (Prairies Է. 118) կ'ըսէ թէ «Մուհթասիմ կը փնտռէր փութկոտութեամբ Թուրք գերիներ եւ զանոնք կը գնէր իրենց ազատագիրներէն: Այսպէս կազմեց գունդ մը 4,000 գերիներու, որոնք կը կրէին դիպակէ կերպասներ, գօտիներ եւ ոսկեզօծ զարդեր, այսպէս զատուելով բանակին մնացեալ մասէն: Ան զինեց նաեւ Խորասանէն, մասնաւորապէս Ֆէրկանայէն եւ Ochrouschanaէն բերած մարդիկ: Թուրքերը կազմեցին շուտով բազմաթիւ բանակ մը»: Անոնց մէջ կը գտնուէր Ճուֆ Ֆէրկանացին, (մեռած ի Պաղտատ 10 Դեկտ. 861ին), որուն սերունդները յետոյ Եգիպտոսի մէջ իշխած են (Իպն Խալլիքան, Գ. 218)։

Խալիֆային ծառայութեան մէջ գտնուող այս Թուրք բանակն էր որ 838ին աւերեց Ամորիումը, նոյնինքն Խալիֆային հրամանով։ Կեդրենոս (67) եւ Թէոփանէս Շարայարեալ (Գ. ԼԱ., 127), կը հաստատեն թէ Ամորիումը գրաւող բանակին մէջ 10,000 Թուրքեր կային եւ նոյնիսկ բանակին գլխաւոր պետերը Թուրքեր էին (Lebeau, Histoire du Bas-Empire, Paris 1824. ԺԳ., 138,



Weil, Բ. 313. շար. Müller Ա. 538, Vasilief, Նոյն, 120,, Bury, «Montasim's march through Cappadocia in a. d. 838, Journal of Hellenic Studies, XXIX. 1909, 120—129, նաեւ աւելցուցէք անոնց տեղեկութեանց, Michel le Syrien, Գ. 93 եւայլն, եւ Էլ-Մասուտի, Prairies Է. 135)։

«Առաջապահները տրուեցան Աֆշին Թուրքին, աջ թեւը Itakh Թուրքին, վերջապահները Բուղա Երէցին» որ նուաճեց Հայաստանը 852ին (Նոյն 348)։ Ուրիշ զօրաբանակ մը կը գտնուէր հրամանատարութեանը տակ Kaousի որդի՝ Աֆշին Khaïdarի, որ եկած էր Ochrouschanaի իր կողմնակիցներով։ Ա՛ս էր որ գերի առաւ Պապէքը (Էլ-Մասուտի, Avertiss, 230 և Prair. Է. 123)։ Անոնք էին որ նոյնպէս նուաճեցին իրենց տիրոջմէն դժգոհ Արաբներու ըմբոստութիւնները. օրինակ՝ մասնաւորապէս 862ին, Պաղտատի մէջ (Weil Բ. 368, 379, Vasilief, Նոյն, 198, 229, 237), 813ին Սուրիոյ, Եգիպտոյ, Մաբաշի և Սամոսատի մէջ (Michel le Syrien, Գ. 22 եւայլն, Իպն Խալլիքան Բ. 53, Weil Բ. 200 եւայլն, Muller Ա., 506, 223) և 840ին Տարայի, Նիզիպի և Ամիթի մէջ «ուր Պարսիկները սպաննեցին Tayagéները եւ ոչ քրիստոնեաները, վասնզի Պարսիկները զրգռած էին Tayagéներու դէմ (Michel le Syrien, Գ. 104)։ Նիզիպ-Սինճար երկիրին մէջ, արաբ Robiaye ցեղը տասանորդուեցաւ 843ին (Michel le Syrien Գ. 108)։

Մոթազզէմ Խալիֆան (833-843) ազատելու համար Պաղտատի խռովութիւններէն և Թուրքերը հեռացնելու համար անկէ, հիմնեց Սամարա քաղաքը 835—836ին՝ հոն ապրելու համար պաշտպանութեանը տակ իր նախամեծար համարած պահակազօրքին, որուն մեծ մասը Թուրքերէն առնուած էր (Muller, Ա. 521, Էլ Մասուտի, Prairie Է. 119 և Avertiss, 457, տես ՊՀԳ. Ա. 348)։ Մութէվէքքիլ Խալիֆան (847—861) վերջապէս ինկաւ այս պրետորեան գունդերը յիշեցնող Թուրք պահակազօրքին խնամակալութեան տակ։ Աբբասեան Կայսրութիւնը կառավարող Պարսիկներուն տեղը բռնեցին Թուրքերը։ Իրապէս զինուորական կարգապահութիւն մը տարածուեցաւ երկիրին մէջ, տակաւին արթուն, այնքան մշակուած, այնքան ազատական և այնքան նուրբ, որ մինչեւ մտածութիւնը գերել կը նկրտէր։

Մութէվէքքիլ, որ կը կոչուէր «արաբներու Ներոնը» արգիլեց իմաստասէրներուն Գուրանի վրայ ամէն վիճաբանութիւն, այսպէս մտածութեան ազատութիւնը կաշկանդեց։ Իսլամութիւնը, որ Արաբներու և Իրանեաններու համար սքանչելի միջոց մը եղած էր յառաջդիմութեան, Թուրքերով եղաւ ճնշումի գործիք մը։ Այս քաղաքակրթութեան մեծ նպաստը վերածուեցաւ ամէնէն ծանր մնացող ծանրութիւններէն մէկը, որ կը կրէ դեռ մարդկութիւնը, ըստ Ռընէ Կռուսէի (René Grousset, Նոյն, I. 151)։ Ամէն պարագայի մէջ ճիշդ է որ Թուրքերը կ'ուզէին ծառայել Խալիֆային միայն իրենց ուզած ձեւով։ Անոնք կը կռուէին առաւելապէս աւարին սիրով։ Եւ Խալիֆան, որ անոնցմէ չէր կրնար բաժնուիլ առանց բանակի մնալու վախով, անոնց ձեռքը գերի եղաւ։ Ահա այդ օրէն, անկարելի դարձաւ կառավարել իր հպատակները և Կայսրութիւնը։

Այնպէս որ Աբբասեան Խալիֆայութիւնը կը թուէր դատապարտուած ըլ-

լալ անիշխանութեան կամ դառնալ Թուրք կայսրութիւն մը։

Այս կացութեան հետեւանքով Խալիֆաները չկրցան իրանեան երկիրները պաշտպանել, ուստի իրանեան ցեղը լքեցին իր բախտին։ Իրանեանք իրենք ստիպուեցան աշխատիլ վանելու Թուրքերը, իրենց միջոցներով, և այսպէս կրկին ձեռք բերին իրենց քաղաքական անկախութիւնը և իրենց ճակատագիրը վարելու ազատութիւնը (R. Grousset, Նոյն, 151)։

Իսկ երբ Խալիֆաները փորձեցին արգիլել իրենց Թուրք վարձկանները, պետութիւնը կողոպտելէ և քաղաքային պատերազմներու առիթ տալէ, անոնք պետութեան համար պատուհաս մը դարձան և կատարեցին Հռոմի պրետորեան զունդերու դերը։ Գահընկեց ըրին Խալիֆաները և իրենց ուզած անձերը գահ բարձրացուցին, մանաւանդ Թ. դարուն, մասնաւորապէս 862 870 ութ տարիներուն՝ երբ այդ կարճ ժամանակին մէջ չորս Խալիֆաներ գահակալեցին և գահազուրկ եղան Թուրք պահակազօրքին կամքով (1)։

Եթէ այս չորս կարճ իշխանութեամբ և միշտ Թուրքերէ սպաննուած խալիֆաներուն յաջորդող Ահմէտ Իպն Մութավէքքիլ Էլ Մութամիտ խալիֆան (870–892 Հոկտ. 15), 22 տարի կրցաւ մնալ գահին վրայ, պատճառն այն էր որ ան թողուց Թուրքերը որ վարեն երկիրը և իր իշխանութիւնը ոչինչի վերածեն։ Անիկա 876ին խոհեմութիւն համարեց հեռանալ Թուրքերու բանակատեղին եղած Սամարիայէն և երթալ Պաղտատ, ուր ան նուազ ուղղակի ենթարկուած էր Թուրքերու վայրագ խստութեան. սակայն ան չկրցաւ սանձել Թուրք վարձկան զօրքերը, որոնք շարունակեցին իրենց զլացած ձեւով վարուիլ։

Այսպէս, Թուրք վարձկան զինուորականութիւնը որ անշուշտ ունէր իր հետեւորդները և արբանեակները, որոնք հաւանօրէն այնքան փոքր թիւ մը չէին ներկայացներ — կը կազմէին առանձին ոյժ մը և ազդեցիկ տարր մը։ Արաբ Խալիֆայութեան սահմաններուն մէջ, ինչպէս Հայ զինուորները և զօրապետները Բիւզանդական կայսրութեան մէջ, և անկէ կախում ունէր յաճախ, գահին ճա-

---

(1) Այսպէս Ահմէտ Իպն Մուհամմէտ Էլ Մուսթաին (862—866) 865 Փետր. 4ին Սամառայէն փախած է Պաղտատ, վասնզի Վասիֆ եւ Բուղա, երկու թուրքերը սպաննած էին իր հաւատարիմ՝ Թուրք Պէքիրը: Մուսթաինը, մէկ տարուան պաշտպանութենէն ետք գահազուրկ եղաւ 866 Յունուար 23ին եւ 866 Հոկտ. 17ին սպաննուեցաւ: Իր տեղը Թուրքերը գահ բարձրացուցին Մուհամմէտ Իպն Մութավէքիլ Էլ Մութազ (866—869), որ չէր սիրեր Թուրքերը, որոնք սպաննած էին իր հայրը՝ Ճաֆար Իպն Մութասիմ Էլ Մութավէքիլը. (847 - 862 Դեկ. 20), եւ իրմէն նախամեծար համարած՝ իր եղբայրը՝ Մուհամմէտ Իպն Մութավէքիլ Էլ Մունթասիրը (861 - 862 Յունիս 8 +) զոր յետոյ թունաւորած էին, ու զայն գահ բարձրացուցած էին, եւ երբ անկէ ետք զինքը գահ բարձրացուցին. իրեն համակիր ըլլալնուն համար չէր անոնց, այլ այն ատելութեան համար զոր իրենք ալ անոր պէս ունէին ընդդէմ Վասիֆ եւ Բուղա Թուրք էմիրներուն, որոնցմէ Բուղա գլխատուեցաւ 868 Նոյեմ. 20ին Սակայն խալիֆան չկրցաւ ձերբազատիլ Թուրքերու թունակալութենէն եւ ենթարկուեցաւ Պաղտատի մէջ Թահիրեան Ապտուլլահի որդի Մուհամմէտի, որ կ'առաջնորդէր բաց կամ զայն ընդդէմ մեծապէս խռովեալ ժողովուրդին: Ան ի վերջոյ ետեւ իր պալատին յեղակարծ կերպով աւերուելը իրեն դէմ ապստամբած Թուրքերէն որոնք յաջողեցան գահընկէց ընել զինքը, 869 Յուլիս 11ին եւ քանի մը օր ետք, (17 Յուլիսին) սպաննել: Իսկ իր յաջորդը՝ Մուհամմէտ Իպն Էլ-Վաթիք Էլ Մուհթատի (869—870) իրապէս իշխել ուզելուն համար սպաննուեցաւ թուրքերէն 870 Յունիս 20ին:



կատագիրը Պաղտատի մէջ, այլասերած Խալիֆաներու առեն, ինչպէս Բիւզանդիոնի կայսրերու գահակալութիւնը Հայ զինուորականութեան կամքին ենթարկուած էր Է. դարէն մինչև ԺԱ. դար։

Այսպէս, Թուրքերը, թափանցած էին Արաբ կայսրութեան մինչեւ կեդրոնը, պահելով իրենց ազգային ինքնութիւնը, հակառակ անոր որ կը ծառայէին Արաբներուն և անոնց կրօնքին յարած էին։ Անոնք նոյնիսկ չէին ուզեր սորվիլ արաբ լեզուն։ Թուրք Բուղա, որ մօտաւորապէս 90 տարեկան մեռած է և իր ամբողջ կեանքը Խալիֆային ծառայութեան մէջ անցուցած, կը ցաւէր որ արաբերէն չէր գիտեր, «Օտարական եմ, ըսաւ օր մը իր տիրոջ, կը խօսուի արաբերէն եւ ես չեմ հասկնար թէ ինչ կ'ըսուի» (Էլ-Մասուտի Prairies, Է. 363)։

Թուրքը՝ վայրենի ու ասպատակ՝ կը քայքայէր Խալիֆայութիւնը և Արաբներու՝ Պարսիկներու հետ գործակցութեամբ ստեղծած իսլամական քաղաքակրթութիւնը։ Արաբներու և Պարսիկներու անկումը սկսաւ Ժ. դարուն վերջերը և անոնք այլեւս՝ անցեալին պէս՝ քաղաքական և զինուորական մեծ գործօններ չէին, եւ հակառակ անոր որ անոնք դեռ կը պահէին իրենց մշակութային եւ մտաւորական հանգամանքները, բայց կարծես անընդունակ դարձած էին գործելու (Grousset, Նոյն, 173)։

Արաբ-Պարսիկ գործակցութիւնը առատօրէն ծնունդ կու տար իմաստասէրներու, գրողներու, բանաստեղծներու, արուեստագէտներու և վաճառականներու, բայց չէր արտադրեր այլեւս զինուորականներ։ Այսպէս, ընկերային ծանր կացութիւն մը կը ստեղծուէր եւ համայնավայր վարդապետութիւններ կը տարածուէին զանգուածին մէջ եւ զայն տեւական խառնակութեան կը մղէին։ Իրանեան ազնուապետութիւնը, Ժ. դարուն իր ձեռքը առած էր վերջապէս երկիրին գործերը, թէեւ անկարող՝ ստեղծելու երբեմնի քաղաքական կայուն միութիւնն ու կարգը (Նոյն, 175)։ Ոչ միայն իրանեան երկու գլխաւոր ընտանիքները, Սամանեանք եւ Պուիտեանք, չէին կրնար համաձայնիլ իրարու հետ։ այլ անոնցմէ իւրաքանչիւրը բաժնուած էր մրցակից պզտիկ հողատիրութիւններու։ (Նոյն)։

Այնպէս որ՝ իսլամ աշխարհը անտէր էր: Եւ Թուրքերը, իբրեւ անկարգ տարր, աւարի եւ կողոպուտի սիրոյն զինուորագրուած, խալիֆաներու հեղինակութիւնը ոչինչի վերածած եւ արաբ կեդրոնական պետութեան քայքայման պատճառ եղած էին: Պաղտատի մէջ Խալիֆան ստիպուած էր հանդուրժել օրուան ամենահզօր անձին քմահաճոյքին։ Խալիֆան չէր կրնար վճռաբանել վարդապետական հարցերու մասին այլեւս։

Պարսկաստանի եւ Անդրօքսոսի մէջ, Պուիտեան եւ Սամանեան էմիրներ, նեղամիտ և ապիկար պետեր, իրենց վերջին ուժերը կը գործածէին իրար կործանելու։ Իրաք-Աճէմիի և Մազանդարանի մէջ գիւղական սոսկալի ապստամբութիւններ կը հիւծէին և կ'սպառէին այդ շրջանները։

## ԹՈՒՐՔԵՐԸ ԵՒ ՊԱՐՍԻԿՆԵՐԸ՝ ԱՐԵՒԵԼՔԻ ԿԱՌԱՎԱՐՈՂՆԵՐ

Ամէն կողմ անիշխանութիւն կը տիրէր։ Այս միջոցին, այսինքն Ժ. դարուն էր որ Թուրքերը, որոնք անծանօթներ չէին Պարսիկներուն եւ Արաբներուն — մանաւանդ Պարսիկներուն՝ որոնց հետ 2000 տարի մաքառած էին — երեւան կու գային եւ կացութեան տէր կը դառնային, այդ դարուն իսկ իսլամանալով։

Թուրքերը ի ծնէ ռազմիկ, իբր վարձկան գլնուէր, Խալիֆաներու ծառայութեան մտնելով, ինչպէս տեսնուեցաւ, ամենայն ինչ եղան արաբ ընդարձակածաւալ պետութեան մէջ. որուն ամէն մասերուն մէջ հաստատուած էին իբրեւ գաղթական։ Հայաստանի ինչպէս Միջաւոր Ասիոյ, մանաւորապէս Արաբ Խալիֆայութեան ուղղակի տիրապետութեան կամ գերիշխանութեան ենթարկուած երկիրներուն մէջ, հաստատուած օտարականներուն մեծամասնութիւնը կը ներկայացնէին կեղր. Ասիայէն եկած զանազան ցեղախումբերու պատկանող մարդիկ, որոնք՝ իբրեւ կռուող ուժ մանաւորապէս Արաբ Խալիֆայութեան սահմաններուն մէջ՝ ունէին ճիշդ այն դիրքը, ինչ որ Է. դարէն մինչեւ ԺԱ. դար Հայերը գրաւած էին Բիւզանդական Կայսրութեան մէջ, իրենց թուական առաւելութեամբ և ձեռներէցութեամբ, ձեռք առնելով ամէն ինչ։ Արդարեւ այդ ժամանակամիջոցին, ինչպէս Հայերը գաղթած էին Բիւզանդական երկիրները և հոն մեծ ազդեցութիւն ձեռք բերած, նոյնպէս կեղր. Ասիոյ մէջ ապրող ցեղերէն ալ մարդիկ, խումբերով կամ անհատաբար, դէպի Արեւմուտք, Պաղտատի Խալիֆերու երկիրները դիմած, հոն մանաւորապէս արաբ բանակին և կառավարական վարչութեան մէջ ծառայութեան մտած և բովանդակ պետութեան մէջ տարածուած ազդեցիկ տարր մը դարձած էին։ Անոնք, նման Հայերուն՝ որոնք Բիւզանդական Կայսրութեան սահմանագլուխներուն վրայ կազմած էին սահմանապահ իշխանութիւններ (Ակրիտ) և ճորտ հողատիրութիւններ, Արաբ Խալիֆայութեան սահմանագլուխներուն վրայ կամ ծայրագաւառներուն մէջ կազմած էին ճորտ իշխանութիւններ, Էմիրներու կամ Պէկերու իշխանութեան տակ և այսպէս աւատապետական կալը տուած էին Խալիֆայութեան։

Պաղտատի Խալիֆայութիւնը ԺԱ. դարուն սկսած էր դէպի կործանում դիմել։

Խալիֆաները դարձած էին կեդրոնին մէջ պետականութեան վեհապետներ, խաղալիք իրենց պաշտօնատարներուն ձեռքը։ Ժ. դարուն, ապիկար խալիֆա մը, Մուհամմէտ էլ Ռատի (935), ստեղծեց էմիր իւլ ումերայի (իշխանաց իշխան) պաշտօնը, որուն կոչուողը իրաւունք ունէր հրամայելու բանակներուն, մատակարարելու պետութեան ելեւմուտքը, հռչակելու պատերազմ և կնքելու խաղաղութիւն։ Մէկ բառով, վեհապետութիւնն իսկ էր որ կը փոխանցուէր անոր, միայն առանց տիտղոսի (Jonquière, 43)։ Այս թուականէն սկսեալ, Թուրք իշխանաւորներ դարձան իրական պետերը պալատին, զոր կը կառավարէին անզօր և վատասերած խալիֆային անունով։ Բայց իրենց բանակալութիւնը դարձաւ այնքան անհանդուրժելի, որ Պաղտատի մէջ



յեղափոխութիւն մը ծագեցաւ և Խալիֆաներու մայրաքաղաքը իրեն օգնութեան կանչեց կեղր. Պարսկաստանի մէջ Շիրազի շրջակայքը գոյութիւն առած պարսիկ բնիկ իշխանութիւն մը, Դայլամեանց կամ Պուետեանց պետը, որ առիթը օգտագործեց, հալածելով Թուրքերը և իրեն սեփականելով Էմիր-իւլ-ումերայի աստիճանը, զոր իր յաջորդները ամբողջ դար մը իրենց ձեռքը պահեցին (Jonquière, 43)։

Խալիֆաները հանդիսատես եղան այս Թուրք և պարսիկ պայքարին, զոր իրենց գահին շուրջը և անոր համար կը մղէին Թուրքերը և Պարսիկները իրարու դէմ։ Անոնք այս պայքարին չխառնուեցան և ոչ ալ փորձեցին ձեռք բերել վերստին իրենց նախկին հեղինակութիւնը, Այն վայրկեանէն որ անոնք տէրոջ մը ենթարկուելու նուաստութիւնը յանձն կ՚առնէին՝ այլեւս քիչ կը շահագրգռուէին այդ տէրոջը անձնաւորութեամբը։

### ԹԱՀԻՐԵԱՆՔ

Ժ. դարէն սկսեալ Աբբասեան Խալիֆաներու անուանական իշխանութեան տակ կամ բոլորովին անջատ իրանեան երկիրներու մէջ կազմուած էին քանի մը իշխանութիւններ, որոնց առաջինը եղաւ Թահիրեանը (814—873), Խորասանի մէջ, որ Արաբ Կայսրութեան մէկ ծայրագաւառն էր։

Պարսիկ Թահէր (Taher), հիմնադիրը այս հարստութեան, կուսակալ էր Մամուն Խալիֆայի առեն և օգնած էր անոր գահակալութեան։ Այս ծառայութեան ի վարձ, Մամուն անոր տուաւ Խորասանի ժառանգական կուսակալութիւնը որ Թահիրեանք իրենց ձեռքը պահեցին չորս սերունդներ։ Ամէնէն նշանաւոր դէմքը՝ անոնց մէջ՝ եղաւ Թահէր Բ. (844—862) որ Նիշապուրը դարձուց առաջին աստեղագիտական կեդրոնը Արեւելքի։

### ՍԱՖՖԱՐԵԱՆՔ

Այս իշխանութեան պէս աւելի հարաւ, Տաբարիստանի, Սէիստանի, Քիրմանի, Ֆարսիստանի շուրջ կազմուեցաւ ուրիշ բնիկ պարսիկ իշխանութիւն մը, որ Սաֆֆարեան կը կոչուէր։

Այս իշխանութիւնը հաստատուած էր 873ին։ Բախտախնդիր Եագուպ Իպն Լէյթ (1) պարսիկին կողմէ, որուն կեանքը Հազար եւ մէկ Գիշերներու պատմութեան կը նմանի։ Եագուպ բրուտ մըն էր Սէիստանի մէջ։ Ան այս աննշան վիճակէն բարձրացաւ իր շուրջը հաւաքելով սրտոտ մարդիկ՝ գործեց ամէն խայտառակութիւն և աւազակութիւն։ Կը կողոպտէր կարաւանները, բայց մղուած փառասիրութենէ՝ քան շահէ, գրաւուած կոյքերէն մաս մը կը դարձնէր իր զոհերուն և մնացորդը կը բաժնէր իր խումբի մարդերուն ու ինք ոչինչ կ՚առնէր։ Այս աւազակութեան և վեհանձնութեան խառնուրդը հրապուրեց պարսիկ երեւակայութիւնը։ Այս բախտախնդիր աւազակը եղաւ բանակի պետ և առաջապահ Իրանի ազատագրութեան և ղեկավար պարսիկ խուժանին, ըմբոստանալու համար ընդդէմ արաբ ազնուապետութեան։

---

(1) *René Grousset*՝ Լէյթը կը կարդայ *Leith* (Նոյն, 153)

862ին, եղաւ տէրը իր հայրենիքին՝ Սէիստանի։ 873ին գրաւեց Խորասանը Թահիրեաններէն. 875ին, այս պարզ պարսիկ գիւղացին յանդգնեցաւ Խալիֆային — արաբ աշխարհին կրօնական և քաղաքական պետին — վրայ յարձակիլ և պարտուած ու մահացու կերպով վիրաւորուած Պաղտատի ճամբան։ Միւսւ խշտեակի մը վրայ չքաւոր, ինչպէս ապրած էր երբեմն։

Եաքուպ այսպէս 873ին փրկեց իր երկիրը և հիմնեց պարսիկ իշխանութիւն մը, որ Սաֆֆարեան կոչուեցաւ, վասնզի Եաքուպի հայրը՝ Լէյս, գործարան մը ունէր, պղինձէ ամաններու, որոնք Սաֆֆար կը կոչուէին։

Եաքուպ Իպն Լէյսի յաջորդեց իր եղբայրը Ամրու (Amrou), որ թագաւորեց 876էն 900՝ Սէիստանի. Խորասանի և Ֆարսիստանի վրայ։

ՍԱՄԱՆԵԱՆՔ

Այս իշխանութիւնը սակայն շատ կարճ տեւեց, վասնզի ըստ ոմանց՝ 920ին, և ըստ այլոց՝ 964ին անիկա վերջ գտաւ, տեղի տալով Սամանեաններուն, որոնք նոյնպէս Մավար Էլ Նահրի (1) և Խորասանի մէջ կը տիրապետէին։ Այս հարստութեան հիմնադիրն էր Ապու Իպրահիմ Սամանի (ծն. 850 — 907 +) որ թուրք էմիր մըն էր։ Իր մեծ հայրը Ասատ ծառայութեան մէջն էր Էլ-Մամուն Խալիֆային և կը յաւակնէր ըլլալ Վահրամ Չոբին Սասանեաններու իշխանին սերունդէն։ Հետեւաբար, հակառակ իր թուրք ծագումին, ան Պարսիկ կը ձեւանար՝ շահելու համար երկրին բնիկներուն համակրանքը և աջակցութիւնը։ Ասատ, 817ին, Մամուն Խալիֆայէն նշանակուած Անդրօքսոսի ճորտը, կը կառավարէր Պուխարան, Սմրղանտը և Ֆէրկանան։ Երբ Պաղտատի Խալիֆաները լքեցին կամաց կամաց Արեւելեան Պարսկաստանը, Սամանեան էմիրները ես եղան շուտով բոլորովին անկախ իրենց Անդրօքսոսեան իշխանութեան մէջ։ Անգամ մը տիրանալէ ետք այս շրջանին, Սամանեանները իսկապէս գրաւեցին Պարսիկ ազգին ախոյեանի դիրքը և վերսկսան Թուրանի գինուորական պայքարը ընդդէմ Իրանի։

Ասատի թոռը՝ Նասր Իպն Ահմէտ Սմրղանտի մէջ վեհապետ հռչակուեցաւ իր հօրը՝ Ահմէտի մահէն անմիջապէս յետոյ, սակայն Իսմայիլ Էլ-Սամանի՝ (892—907) իր կրտսեր եղբայրը, զայն գահընկէց ըրաւ 888ին։

Իսմայիլ Էլ-Սամանի անցաւ Սիր-Տարիան և հալածեց Թուրքերը մինչեւ Թալաս և Թօգմագ, և մինչեւ անապատները (891)։ Ցեղին ժառանգական թշնամիին դէմ այս յաջողութենէն ետք՝ Իսմայիլ տարակոյս չունէր այլեւս թէ պիտի յաղթէր Պարսկաստանի մէջ իր մրցակիցներուն։ 900ին Պալխի մէջ յաղթեց և գահընկէց ըրաւ Ամրուն, վերջին Սաֆֆարեանը և վերջ տուաւ այդ հարստութեան Աբբասեան Մօթամէտ Խալիֆային հրամանով։

Իր այս ծառայութեան իբրեւ վարձատրութիւն ստացաւ անդրօքսոսեան երկիրները, Խորասանի և Տապարիստանի կառավարութիւնը և նուաճեց գրեթէ ամբողջ Թուրքեստանը։

---

(1) Այսպէս կ'անուանէին Արաբները անդրօքսոսեան երկիրները, եղծմամբ Մաուէրաունն-Նահրի որ կը համապատասխանէր Անդրօքսոսին (Trasoxiania): Յետոյ այս երկիր Չինկիզի որդիներէն մէկուն անունով Ջիղաթայ պիտի կոչուէր:



Իր յաջորդներէն մին Նասր Բ. (914—943), Խալիֆայի խնդրանքով ապստամբ Ռէյ (Rei) քաղաքը հնազանդեցուց և այս կարեւոր կեդրոնը կցեց իր ստացուածքներուն՝ Իրագ Աճէմիի արեւելեան մասին հետ։ Այս հարստութեան իշխանութեան տակ, Անդրօքսոսի և Խորասանի քաղաքները, ինչպէս Պուխարա, Սամանեաններու մայրաքաղաքը Սմրղանտ, Պալխ, Մէրվ, Նիշապուր, եղան խլամ քաղաքակրթութեան ամէնէն փայլուն կայանները։ (René Grousset, նոյն, էջ. 153—154)։

Նասր Բ.ի յաջորդած են կարգով Նուհ Ա. (943—954), Ապտ-Իւլ-Մէլիք Ա. (954—961), Մասուտ Ա. (961—976) որ կռիւներ մղած է Պաւիտեաններու դէմ, Ռէյի (Թէհրանի մօտ) և Իրագ Աճէմիի ուրիշ վայրերուն համար։ Վերջապէս համաձայնեցան որ Ռէյ մնայ Պուիտեաններու, որոնք այս քաղաքին համար նկատուեցան ճորտերը Սամանեաններու (R. Grousset, Ա. 155)։

Նուհ Բ.է (976—997) ետքը սկսաւ անկումը, երբ Թուրքերը աւելի սպառնալից դարձան։

992ին, Քաշքարի Թուրք թագաւորը՝ Պօղրա (Boghra) Խան, գլուխը անցած էր կիսավայրենի հրոսներու, արշաւեց Անդրօքսոս և դարձաւ անմիջապէս Սմրղանտի տէր։ Իր մարդոց Քաշքարէն մեկնելէն վերջ, Նուհ Բ. վերջապէս Սմրղանտի տէր։ Իր մարդոց Քաշքարէն մեկնելէն վերջ, Նուհ Բ. վերստացաւ իր թագաւորութիւնը, բայց իր սեփական իշխանաւորներուն ըմբոստութիւնը ստիպեց զինքը դիմելու Ղազնէվի Թուրքերուն, որոնք իսլամութիւնը ընդունած էին և Սամանիներուն ծառայելէ յետոյ, Ղազնայի մէջ յատուկ հողատիրութիւն (seigneurie) մը կազմած էին (Աֆղանիստանի լեռներուն մէջ)։ Նուհ Բ. իր ճորտերուն յեղափոխութեամբ բանտարկուած, զգլխաց Ղազնէվիներու կոչում ընելուն համար, վասնզի Սեբէկ Թէգին (Sevek Tékine 976—997) վեհապետը, ըմբոստները վանեց, բայց ի վարձ իր միջամտութեան՝ հարկադրեց իրեն թողուլ Նիշապուրը, Հերաթը, Պալխը և Խորասանը ամբողջովին (995)։ Սեբէկ Թէգինի որդին, Մահմուտ Ղազնէվի իր առհմին փառքը հազմեց։

Սամանեանները չկրցան պաշտպանել իրենց երկիրը՝ Քաշկարի Թուրքերուն դէմ։

997ին Քաշկարի Խանը Իլիք, յաջորդը՝ Boghraի, գրաւեց Պուխարան և Սմրղանտը։

Վերջին Սամանեանը, հերոս Մունթասիր (991—1005), հալածուած իր հայրենակիցներէն, թափառեցաւ Անդրօքսոսի մէջ, մինչեւ որ կորսուեցաւ խառնակութեան մը միջոցին։ Սամանեան հին էմիրութիւնը բաժնուեցաւ այսպէս երկու թուրք պետերու միջեւ։ Քաշկարի Խանը տիրացաւ Պուխարայի կամ Անդրօքսոսի ու Սուլթան Մահմուտ Ղազնէվի տէր դարձաւ Խորասանի։

ԲՈՒԻՑԵԱՆՔ

Սամանեաններու իշխանութեան ժամանակակից էր նաեւ Բուիցեաններու իշխանութիւնը, Արեւմտեան Իրանի մէջ հաստատուած։ Այս իշխանութեան

պետերէն մէկը, ինչպէս տեսնուեցաւ, Էմիր-Իւլ-Իւմերայի բացառիկ դիրքը գրաւած էր։ (վերը՝ էջ 15)։

Ան մէկն էր Պարսիկ ազգային առաջին իշխանապետներէն և դէմ կանգնած էր Պարսկաստանի տիրապետող Աբբասեան Խալիֆաներուն։

Բուիտեանք Մազանդարանցի բախտախնդիրներու ընտանիք մըն էին, բնիկ Իրանցի և Շիի աղանդով։ (R. Grousset, Ա. 157)։ Ըստ ոմանց, այս հարստութեան նախահայրն էր Դելլմաց կամ Դելիմա գաւառէն աղքատ մարդ մը կամ պարզ ձկնորս մը՝ Գապա-Բալիշ, մականուանեալն Բույա կամ Պույա (Boulah = Բավայիհ ըստ Շահնազարեանի) որ կը յաւակնէր սերունդէն ըլլալ Վահրամ Գոռի։ Այս պատճառով իր հիմնադիրին անունով Պուիտեան (Ֆր. Bouides և անգլ. Buwaihids) կամ իր ծագումին պատճառով Դայլամեան (Deilemite) անունով ճանչցուած է այս իշխանութիւնը (1)։

Բուիտեան իշխանութեան հիմնադիրը Բույա կամ Պույա մաքառած է նախ Սամանեանց դէմ։ Իր երեք զաւակները, Ալի, Հասան և Ահմէտ, նախ Գիլանի իշխանին ծառայութեան մէջ մտան և ապա հետզհետէ բանակ կազմելով Պարսկաստանի գրաւումին ձեռնարկեցին։ Ժամանակը նպաստաւոր էր այս տեսակ ձեռնարկի մը համար։ Պաղտատի մէջ Աբբասեան Խալիֆաները նեղուած իրենց Թուրք պահակազունդէն, անկարողութեան մատնուած էին։ Թուրք բանակը իրական տէրն էր Աբբասեան պետութեան։ Իրանեանները, որ չէին ուզեր Աբբասեան Կայսրութեան Թրքացումը, պէտք էր որ միջամտէին։ Թուրքերը և իրենց հայրենիքը ժառանգական Թշնամիին իշխանութեան ենթարկուեցան։ Պարսիկ ազգային ղեկավար Պուիտեան երեք եղբայրները աշխատանքը բաժնեցին։ Անդրանիկը՝ Ալի, այն որ յետոյ իբրև վեհապետ պիտի ճանչցուէր, Imadeddaula անունով, հարուածեց Մոքտատիր Աբբասեան Խալիֆային բանակները, և տիրեց Պարսկաստանի Ֆարսիստան նահանգին և Շիրազը մայրաքաղաք ըրաւ։ Հասան տիրեց կեդրոնական Պարսկաստանի և Սպահանը մայրաքաղաք ըրաւ։ Ահմէտ գրաւեց Ahwazը (հին Շօշը = Սուսիան) և մտաւ Պաղտատ և հալածեց Թուրք պահակազօրքը և Խալիֆա մը կարգեց իր ուզածին պէս (946)։ Այսպէս, իրանեան տարրը յաղթեց Թուրք տարրին և ստորադասեց արաբ տարրը։

Բայց ասիկա դիւրին չեղաւ։ Երբ Ահմէտ Պաղտատի տիրեց, Թոյլ Խալիֆան մտածեց կրօնական պետ դարձնել Ալիի տունը, սակայն պէտք էր ողոքել որ Սիւնի Խալիֆան իր ժառանգորդին տար Moizz-eddaula տիտղոսը կամ վերահաստատէր Կայսրութեան Էմիր-Իւլ-Իւմերայի պաշտօնը և առժամեայ լիազօրութիւն՝ Միջագետքի և Ահուազի վրայ (946 - 967)։ Իրանեան տարրը այս կերպով կատարելապէս վրէժ լուծած պիտի ըլլար։

Անկէ ետքն է որ Արաբ Խալիֆաները սահմանափակուեցան իրենց զուտ հոգեւոր պաշտօնին մէջ, և Թողուցին քաղաքական վեհապետութիւնը Պարսիկ իշխողներու։

---

(1) Դեյլմիկ (Տիլէմ) կը յիշէ Մ. Ուռհայեցի: Անոնք կը բնակէին կասպից ծովուն արեւմտեան հարաւային եզերքը, Գիլանի մօտ. (Ալիշան, Տեղագիր Բ. 406) եւ սահմանակից էին Փայտակարանի: Ժ. դարուն հիմնուած էր այս իշխանութիւնը (Նոյն)։



Պուիտեանք բաժնեցին Աբբասեան կայսրութեան երկիրները։ Moizz-eddoula ստացաւ Պաղտատը և Imadeddaula՝ Ֆարսիստանը. իսկ Հասան եղաւ Էմիր Rokn-eddaula, հիմնեց Իրագ Աճէմիի մէջ ուրիշ իշխանապետութիւն մը, Սպահան մայրաքաղաքով։

Rokn-eddaula կռուեցաւ Անդրոքսեան Սամանեաններու դէմ, որոնք ի զուր կը փորձէին տիրել Ռէյի (տես վերը՝ էջ 17)։ Իր որդին Adhod-eddaula (949-982) միացուց պահ մը Պուիտեան զանազան երկրամասերը։ 949ին այս իշխանը յաջորդեց իր հօրեղբօրը՝ Ֆարսիստանի էմիր Imad-eddaulaի։ 978ին առաւ իր զարմիկին՝ Moizz-eddaulaի որդիէն Պաղտատը և Էմիր-Իւլ-Իւմերայի պաշտօնը։ 982ին, գրաւեց իր եղբայրներէն, Սպահանը և Իրագ Աճէմին։ 979ին առաւ նաև Մուսուլի էմիրութիւնը Համտունեան տեղական իշխաններէն։

Adhod օրինականացուց իր իշխանութիւնը գործնապէս։ Վերակազմեց Պաղտատի Դպրոցը։ Իր արքունիքին մէջ կ'ապրէին իր ժամանակին մեծ մարդիկը։

Adhodի մահէն վերջ Պուիտեան պետութիւնը բաժնուեցաւ իր որդիին և եղբայրներուն միջեւ։ Անոնցմէ ոմանք առին Սպահանը և Իրագ Աճէմին, միւսները՝ Պաղտատը և Էմիր-Իւլ-Իւմերայի պաշտօնը, իսկ ուրիշներ Շիրազը և Ֆարսիստանը։ Շատերը եղան արժանաւոր իշխողներ, իմաստասիրութիւն և գրականութիւն սիրողներ, բայց տկար, անհոգ և ապիկար, իրենց ընտանի պայքարին համար։ Ասով հանդերձ պարսիկ բնիկ իշխանութիւններուն ամէնէն հզօրը Պուիտեաններն էին, որոնք՝ թէև մասերու բաժնուած բաւական երկար ատեն տոկացած են, մինչեւ որ ընկճուած են ուրիշ զօրաւոր ցեղերէ ու քշուած դէպի Արեւմուտք։

Այսպէս, Պուիտեան վերջին վեհապետը վանուած՝ իր երկիրներէն. գրաւած է Տիարպէքիրը, Տիար-Մոտաէր, Իրագ-Աճէմին, Ճուրճանը (1), և Տաբարիստանը։

Այսպէս, Պաղտատի Խալիֆաներու տկարութենէն օգտուելով՝ Պարսկաստանի մէջ գոյութիւն կ'առնէին աւելի կամ պակաս ընդարձակ և տեւականութիւն ունեցող Պարսիկ իշխանութիւններ, որոնք որոշ չափով մը կը ճանչնային Խալիֆաներու գերիշխանութիւնը կամ զայն բացէ ի բաց կը մերժէին։

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ

Այս կարգին, Պաղտատի ուղղակի ազդեցութենէն խուսափած էր նաև Հայաստանը, Թ. դարուն, վասնզի Հայաստան ինքն ալ ծայրագաւառ մըն էր։

Հայաստան այս տեսակէտէն ունէր եզական դիրք մը, որովհետեւ անիկա ամբողջովին և տեւականապէս արաբ լուծին տակ չէր ինկած և Բիւզանդացիք յաճախ անոր մէկ մասին և երբեմն ամբողջին,— ինչպէս Վասիլ Բ.ի ատեն (Պ. ՀԳ. Ա. 225) — տէրը մնացած են, և երկու պետութիւններուն, թէ՛ բիւզանդականին և թէ՛ արաբականին համար ծայրագաւառ եղող այս երկրամասին

---

(1) Ճուրճանը (Jurjan) Վարդան «Գուրգան» ձեւով յիշած է: Ան կը համապատասխանէր Ծախնեաց Վրկանին:

մէջ, թէ՛ Բիւզանդիոն և թէ՛ Պաղտատ հանդուրժած են կէս-անկախ իշխանութիւններու գոյութեան։ Այնպէս որ՝ Թ. և Ժ. դարերուն երբ Արեւելքի այս երկու հզօր ուժերը, աւատապետական կազմ կ'ստանային, Հայաստանի մէջ կազմուած էին բազմաթիւ Հայ և իսլամ մանր իշխանութիւններ, (ՊՀԳ. Ա 222—3) որոնք Պաղտատի կամ Բիւզանդիոնի ուժերուն փոխադարձ յարաբերութեան և երբեմն ալ իրենց որոշ նախասիրութիւններէն մղըւած՝ մէկ կամ միւս կողմին կը հնազանդէին։

Այս բազմաթիւ Հայ իշխանութիւններուն մէջ ամէնէն պատկառելին և հինը — ինչպէս յայտնի է — Բագրատունեանց թագաւորութիւնն էր, (կազմուած 859ին) որ չկրցաւ դժբախտաբար բովանդակ Հայաստանի տէր դառնալ, այլ ընդհակառակը ինքն իր մէջ մասերու բաժնուեցաւ, և իրեն մրցակից ունեցաւ իր շուրջը ուրիշ Հայ իշխանութիւններ, — ինչպէս Արծրունեաց Թագաւորութիւնը (հիմնուած 908ին) Վասպուրականի մէջ—, որոնք իր ազդեցութիւնը և ուժը ջլատեցին։

Թէեւ պէտք չէ մոռնալ թէ Բագրատունիք՝ ճարտար աշխարհվարութեամբ մը ձեռք բերին դրացի երկիրներու, ինչպէս Վրաց, Աղուաններու, Ափխազներու և այլ գահերը, և եթէ օտար դաւադրութիւններ չքանդէին իրենց ծրագիրը, անոնց ձգտումը ըլլալ կը թուէր կազմակերպել դաշնակից քրիստոնեայ թագաւորութիւններու միութիւն մը, Անիի թագաւորին Շահնշահութեան ներքեւ։

Բայց այս ծրագիրը իրագործել կարելի չեղաւ, վասնզի երկիրին մէջ գոյութիւն ունէին, Հայ իշխանութիւններու քով և անոնց հետ միաժամանակ և նոյնիսկ աւելի կանուխ կազմուած կարգ մը իսլամ իշխանապետութիւններ, որոնք Հայ թագաւորներուն պէս ճորտերն էին Ատրպատականի կամ Ամիթի ամիրաներուն, որոնք Հայաստանի տիրապետութիւնը իրենց վերապահել աշխատող երկու մեծ աւատապետներն էին։

Հայ թագաւորները յաջողէին թերեւս խլացնել կամ իրենց ստորադասել նաեւ օտար սադրանքներով Հայ հողին վրայ կազմուած մահմետական այս կէս-անկախ ճորտ իշխանութիւնները կամ էմիրութիւնները, եթէ ժամանակ տրուէր իրենց։ Դժբախտաբար ոչ այդ ժամանակամիջոցը և ոչ ալ ատէ պատեհութիւն ունեցան, ամէն կերպով աննպաստ պայմաններու մէջ գտնուելով (1)։

Այնպէս որ, Հայաստան չկրցաւ միաձոյլ և մեծ ուժ մը կազմել և Թ. դարէն մինչեւ ԺԱ. դար կառավարուեցաւ կէս-անկախ կամ հարկատու և ստորաբաժանեալ թագաւորութիւններով և անոնց քով ու մէջտեղը կազմուած մահմետական մի քանի իշխանութիւններով, որոնք առաւել կամ նուազ ազատութիւն կը վայելէին։

---

(1) Բագրատունեաց թագաւորութեան վրայ խօսիլ աւելորդ կը համարեմ, վասնզի նախապէս այդ մասին բաւական ընդարձակ կերպով գրած եմ (տես ՊՀԳ. Ա. հտ. էջ 208—225): Կը յանձնարարուի իբրեւ քննական ուսումնասիրութիւն եւ ժամանակաշրջանին ամբողջական պատկերացումը՝ կարդալ Ն. Ադոնցի «Բագրատունեաց Փառքը» (Պատմական Ուսումնասիրութիւններ, Փարիզ, 1948, էջ 49—156) եւ Արշակ Ալպօյաճեանի «Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները» գործին նոյն շրջանին վերաբերեալ էջերը. (ինչպէս՝ 55—65, 115—121 եւ 122—231):



Այս իշխանութիւններէն անոնք՝ որոնց պետերը մահմետականներ էին, հովանաւորուած Պաղտատի Խալիֆաներէն կամ անոնց ենթակայ մեծ աւատապետներէն, օրէ օր աւելի կը զօրանային և հայ բնիկ իշխանութիւնները կը տկարանային և կ'անշքանային հետզհետէ։

Այնպէս որ, երբ իբրեւ հետեւանք Թուրք ցեղին Արաբ Խալիֆայութեան սահմաններուն մէջ կատարած քայքայիչ դերին, մէկ կողմէն արաբ կայսրութիւնը ստացաւ աւատապետական կազմ և միւս կողմէն Խալիֆաները — այսինքն կեդրոնական իշխանութիւնը — խաղալիք դառնալ սկսաւ օտար ցեղերէ — մասնաւորապէս Թուրքերէ — առնուած զինուորներու ձեռքը, այլեւ արաբական աշխարհը տիրապետող ուժ ըլլալէ դադրեցաւ։

Ասկէ օգուտ քաղելով* Ներքուստ նոյնքան քայքայուն և կազմալոյծ, Բիւզանդական կայսրութիւնը, Ժ. դարուն վերջերը և ԺԱ. դարուն առաջին կէսին, վերջին անգամ մըն ալ տարածուեցաւ դէպի Արեւելք և կարճ ժամանակի մը համար, վերստին իր տիրապետութեան ենթարկել յաջողեցաւ Հայաստանը։ Այս տիրապետութիւնը եթէ ամուր մնար, կրնար ապահովել կայսրութիւնը, կամ գէթ Փոքր Ասիական հողերը։

Բայց Բիւզանդացիք՝ դժբախտաբար՝ չկրցան Հայ ժողովուրդին հոգիին ու սիրտին մօտ մնալ այս անգամ ևս, ու անոր օժանդակութիւնն ու հաւատարմութիւնը ապահովել։ Եւ երբ՝ վանուած Արաբին տեղ Կեդրոնական Ասիոյ խորերէն դէպի Արեւմուտք դիմող բարբարոսները Բիւզանդիոնի դէմ ելան, ան անկարող եղաւ պաշտպանելու Հայկական Բարձրաւանդակը, ռազմական այս շատ կարեւոր դիրքը, և տեղի տուաւ։

Ասոր իբրեւ հետեւանք՝ հայ բաժան բաժան եղած թագաւորութիւնները ևս ոտնակոխ եղան բարբարոսներէն, որոնք անցնելով մեր երկիրէն՝ թափանցեցին Փոքր Ասիա, միեւնոյն ատեն ջնջելով Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող այլազան իշխանութիւններէն մեծ մասը։

ԺԱ. դարուն՝ երբ Բագրատունեաց թագաւորութիւնը իր բոլոր ստորաբաժանումներով, ինչպէս նաև Արծրունեաց և Սիւնեաց թագաւորութիւնները, վերջ կը գտնէին, արդէն Հայաստանի բնակչութեան խառնուած էին օտար տարրեր և Հայաստան զուտ և անխառն հայ բնակչութեան մը բնակավայրը ըլլալէ դադրած էր։ Նոյնիսկ Հայկական Բարձրաւանդակին վրայ, Բագրատունի իշխանութիւններու բիւզանդեան տիրապետութեան ենթարկուելէն ետք, զանազան շրջաններու մէջ, տակաւին իրենց գոյութիւնը մինչեւ ԺԴ. դար քաշքշող մի քանի փոքր հայ իշխանութիւններու հետ, գոյութիւն ունէին իսլամ Ամիրներու և Պէկերու վեհապետութեան տակ փոքր ճորտական իշխանութիւններ, որոնք իրենց հպատակներուն մէջ կը հաշուէին բաւական մեծ թուով Արաբ, Պարսիկ և Մոնկոլ-Թաթարական ցեղերու պատկանող իսլամ բնակիչներ (1)։

---

(1) Գաղափար մը կազմելու համար թէ ի՞նչ վիճակ կը ներկայացնէր Հայաստան, Բագրատունեաց կործանումէն մինչեւ 1467, տեսնել Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները (Գահիրէ, 1950) գործին Բ. մասին Ա—Ե. գլուխները (էջ 115—375), ուր մանրամասն ներկայացուած են բոլոր մեծ եւ փոքր հայ եւ օտար իշխանութիւնները, որոնք Հայաստանի հողէն մասեր գրաւած էին:

Հայաստանի բախտին արժանացան նաև Պարսկաստանի զանազան մասերուն մէջ կազմուած բնիկ իշխանութիւնները, որոնց բնակչութիւնը Պարսիկ-Արաբ-Քիւրտ խառնուրդի մը վերածուեցաւ և իր ազգային առանձնայատուկ դրոշմը կորսնցուց, վասնզի մահմետական կրօնը այդ ցեղերը կը միացնէր իրարու։

Պարսիկները սակայն, իրենց ազգային դիմագծութիւնը պահած են և կարծես ձգտում ունեցած են արաբ զանգուածին մէջ չկորսուելու և պահելու իրենց ցեղային որոշ առանձնայատկութիւնները, և տեւապէս ջանքեր ըրած են Պարսիկ իշխանութիւններ կազմելու, ինչպէս տեսնուեցաւ։

Եւ յաջողած էին Պարսիկ անկախ շրջաններ ստեղծելու, քրիստոնեայ Հայերուն, Վրացիներուն և Աղուաններուն պէս։

## ԹՈՒՐՔ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Սակայն Պարսկաստանի և Հայկական Բարձրաւանդակին վրայ կազմուած բոլոր իշխանութիւններուն զօրութիւնը ներքուստ քանդող ուժը, Թրքական ցեղերն էին, որոնք Արաբ Խալիֆաներու կեդրոնական իշխանութեան հեղինակութեան հետզհետէ նուազելէն օգտուելով, պետութեան զանազան մասերուն, բայց մասնաւորապէս ծայրագաւառներուն մէջ, ծնունդ առնող բնիկ իշխանութիւններուն երկիրներն աւելի դիւրին թափանցեցին և անո՛նց ալ իբրև վարձկան ծառայեցին։ Եւ այդ տեղերն ալ կատարեցին նոյն այն դերը՝ զոր կատարած էին Պաղտատի մէջ և նոյնիսկ տեղ տեղ իշխանութիւնը իրենց սեփականեցին: Անոնք շատ լաւ գիտցած են նպաստաւոր պայմաններէն օգտուիլ և իրենց ազդեցութեան և իշխանութեան ենթարկել շատ մը երկիրներ, որոնք Արաբ կայսրութեան մաս կը կազմէին և իրենց անկախութեան տիրացած էին։ Արդարեւ Արաբ Խալիֆային հեղինակութենէն խուսափած բոլոր արեւելեան երկրամասերուն, այսինքն Կասպից ծովին և Պարսից ծոցին, Պաղտատի և Թուրքեստանի սահմանագլուխին և Հնդկաստանի միջեւ տարածուած ընդարձակ երկիրներուն մէջ, Թրքական ազդեցութիւնը անժխտելի էր։ Անոնք Կասպից ծովին արեւելեան կողմէն մտան Պարսկաստան և յարելով իսլամութեան, թափանցեցին մինչեւ պետութեան կեդրոնը և անոր ուրիշ մասերը, մինչեւ անոր արեւմտեան ծայրերը, ինչպէս Եգիպտոս, ուր Թուրք Թուլուն գերիին զաւակները, կը վարուէին իբրեւ տէրերը Եգիպտոսի և կը գրաւէին Սուրիան, վերցնելով Բիւզանդական սահմանագլուխին հրամանատարութիւնը։ Այսպէս, Թուրքերը Թ. և Ժ. դարերուն ամբողջ Արեւելքի մէջ կը ներկայացնէին կարեւոր տարր մը, որ բովանդակ մահմետական աշխարհին մէջ զինուորական և հետեւաբար ամէնէն ազդեցիկ դասը կը ներկայացնէին, և երբեմն ուղղակի և երբեմն ալ անուղղակի տէրերը և վարիչները կը դառնային Խալիֆայութեան պատկանող երկիրներուն, իրական քայքայումի մը ենթարկելով հսկայ կայսրութիւնը։

Արդէն բացատրուած է թէ ինչպէս Հայաստան, թէև անուանապէս Պաղտատի Խալիֆայէն կախում ունէր, սակայն ինքնիշխան դարձած Ամիրաներու իշխանութեան տակ կը գտնուէր, իբրեւ ուղղակի հետեւութիւնը Թրքական թափանցումին խալիֆայական երկիրներէն ներս, և անոնց կազմալոյծ վիճակին։



Հայաստանի Հայ և մահմետական փոքր և ճորտ իշխանութիւններու աւատապետները եղող այդ Ամիրաները գրեթէ տեւականապէս իրենց ձեռքին տակ ունէին, ինչպէս իրենց մեծ աւատապետները՝ Պաղտատի Խալիֆան, Թրքական ցեղերէ առնուած զօրքեր, որոնք նաև այս եղանակով կը մտնէին Հայաստան և անոր ինչ ինչ մասերը կը նուաճէին և կը հաստատուէին հոն (Չամ. Բ. 831)։

Թուրքերը ոչ միայն Հայաստանի, այլ ամբողջ Մերձաւոր Արեւելքի մէջ տարածուած էին և կարեւոր դիրքեր գրաւած էին իշխող տուներու մէջ, հովանի ունենալով արաբ և պարսիկ իշխաններ՝ որոնց վեհապետութիւնը գրեթէ անուանական դարձած էր։

Այնպէս որ, գետինը պատրաստ էր Թրքական տիրակալութեան մը համար, կը բաւէր որ շարժում մը ծայր տար, ինչ որ չուշացաւ Ժ. դարուն վերջերը, վասնզի չի գիտցուիր Կեդրոնական կամ Խորագոյն Ասիոյ մէջ պատահած ինչպիսի դէպքերու հետեւանքով՝ Թուրքեստանի կողմէն Թուրք ցեղեր կրկին ճնշել սկսան Պարսկաստանը, որ այս անգամ անզօր դիմադրելու, դէպի Արեւմուտք առաջանալ ձգտող այս բարբարոսներուն, տեղի տուաւ, հազիւ մէկ դարու ժամանակամիջոցի մը մէջ ողողուելով այս այլազգի և այլացեղ ժողովուրդներէն, որոնց արշաւուղիին վրայ գտնուելու դժբախտութիւնը ունէր։

## ՂԱԶՆԷՎԻՆԵՐԸ

Արդարեւ Ժ. դարուն վերջերը, Թրքական քանի մը ցեղեր դիմեցին Պուխարայի շրջակայքը (Boukkarie), ուր կը տիրապետէին, ինչպէս տեսնուեցաւ ծագումով Թուրք Սամանեանք։

Անոնք, ինչպէս տեսնուեցաւ, բաժնուած էին երկուքի, վասնզի Քաշկարի Խանը, տիրացած էր Պուխարայի կամ Անդրօքսոսի և Սուլթան Մահմուտ Ղազնէվի, եղած էր տէր Խորասանի։

Ղազնէվիններու առաջին հիմնադիրն էր Ալփթէգին, որ արդէն Անդրօքսոսեան երկիրներուն մէջ անկախ իշխանութիւն մը հիմնած էր 960ին՝ Սամանեաններու գերիշխանութեան տակ (Jonquière, 44)։

Իր երկրորդ յաջորդը Մահմուտ (998—1030)՝ իր արտակարգ կարողութիւններուն շնորհիւ՝ յաջողեցաւ վերջ տալ Սամանեան հարստութեան և հիմնել Ղազնէվի բոլորովին անկախ հարստութիւնը։

Մահմուտ յիշելով որ իր նախահայրերը իրենց ասպարէզը սկսած էին Սամանեաններուն ծառայելով, ինքզինքը հռչակեց վրէժխնդիր, ժառանգ և յաջորդ անոնց։

Անիկա յաջողեցաւ իր իշխանութեան միացնել Աֆղանիստանը, Սէիստանը, Խորասանը, Իրագ Աճէմին և Իրանեան վերածննդեան ամէնէն փայլուն կեդրոնը դարձուց իր արքունիքը, որ իբրեւ մտաւորական միջավայր, արտառոց փայլ մը ունեցաւ Ֆիրտուսիի պէս դէմքերով։

Ղազնէվի Մեծն Մահմուտ ճանչցուց իր անկախութիւնը Պաղտատի Խալի-ֆային (1) և իր բացարձակ իշխանութիւնը հիմնեց Խորասանի մէջ և Ղազնան (Ghazna) իր մայրաքաղաքը ըրաւ։ Մահմուտ յաջողեցաւ իր տիրապետու-թեան ենթարկել Խորասանէն զատ՝ Պարսկաստանը և հիւսիսային Հնդկաստանը։ Մահմուտ, իսլամութեան մոլեռանդ հետեւող, 12 արշաւանքներ կատարեց դէ-պի Հնդկաստան և «կուռքերու խորտակիչ» անունը շահեցաւ (CMH. Դ. 299 — 318 The Seljuqs հատուածը գրուած Herbert M. J. Lœweէն, Քէմպրիճի Queen's Collegeի ուսուցիչներէն)։

Մահմուտ, որ մեծ վեհապետ մըն էր, Ղազնայի մէջ հիմնեց Համալսա-րան մը, և սատար հանդիսացաւ գրականութեան և արուեստներու (Lœwe)։ Իր ատեն Ղազնան դարձաւ կեդրոն մը ուր զարգացած մարդիկ կը հաւաքուէ-ին (Նոյն)։ Ֆիրտուզի իր համբաւաւոր Շահնամէն գրած է Մահմուտի քաջա-լերութեամբ (Նոյն)։

Իրեն յաջորդեց իր որդին Մասուտ (1028 — 1042), որուն օրով Ղազնէվի-ներու իշխանութիւնը մատնուեցաւ անօրինակ անկումի մը և տեղի տուաւ Ա-սիայի խորերէն դէպի Արեւմուտք առաջացող ազգերու ճնշումին առջեւ։

## ՍԵԼՋՈՒԿՆԵՐՈՒ ՍԿԻԶԲԸ

Ղազնէվիները քաշուեցան դէպի Արեւելք և Ղազնայի շուրջը տակաւին պահեցին իրենց անկարեւոր իշխանութիւնը մինչեւ 1189 (Jonquière, 44), երբ արդէն ուրիշ Թրքական ցեղ մը, աւելի արիւնռուշտ, ասպարէզ կու գայ, և իր յառաջապահները հանդիսացող և աւելի հանդարտաբարոյ և Նստակեաց ցե-ղերու հիմնած պետութիւնները, ինչպէս նաև Պարսկաստանի, Հայաստանի և Արաբ կայսրութեան ուրիշ մասերուն մէջ կազմուած բնիկ ու եկուոր փոքր իշխանութիւնները կ'աւլէր և Ասիոյ գրեթէ մեծագոյն մասը իր իշխանու-թեան ենթարկելով՝ ընդարձակածաւալ պետութիւն մը կը հիմնէր։

Այս ցեղը, Սելջուկներն էին, որոնք մինչեւ Ժ. դար, իբրեւ վրանաբնակ-ներ կը թափառէին այսօրուան Ուրալ գետի և Պալքաշ լիճին միջեւ, Սիբտա-րիայի հիւսիսը, Խըրղըզներու երկիրին մէջ, առաջնորդութեամբ պետի մը, որ ինչպէս ուրիշ ցեղախումբերու պետերը՝ հարկատու էր Մեծ Խանին, մինչեւ

(1) Մխիթար Անեցի Հաւաքումն Պատմութեան Վարդանայ Վարդապետին (1862, Վէնետիկ, 94). Մահմուտ Ղազնէվիի վրայ կ'ըսէ թէ գտած է որ «Այսպէս, Մահմուտն զոր ասացաք Սըբքթենայ (= Սեբէկ Թէգին = *Sévuk Tékine*, զոր որդին էր Ալփթէգինի) որդի, յաննշանից մեծացեալ՝ որպէս Արտաշիր Սասանեան եւ եբարձ զիշխանութիւնն Մահմէտի ազգին ի Մահմետ Մուհամմէտ, երեսներորդ երրորդ ի Մահմետայ, յերկերիւր քառասուն եւ վեցերորդ ամի իշխանութեան նոցա (860ին, այս հաշուով որ ճիշդ չէ, վասնզի 997 պիտի ըլլայ), եւ զօրացաւ նա ի Բահլ քաղաքի յերկրին Քուշանաց եւ ել համբաւ զնմանէ ուժգին, մինչեւ խալիֆայն երկուցեալ՝ առաքէ նմա ընծայս եւ ալամ (= վառ, դրօշ իշխանութեան) եւ լաղապ (մականուն, կոչում), Ամիրմաղլ (էմին ալի = ուսիկան արդարութեան) եւ Սուլտան կոչէ զնա։ Եւ առեալ նորա զպատիւն եւս մեծանայ եւ ելանէ ի Հնդիկս ի համբաւ կռոցն Մարաց, զոր կործանէ եւ առեալ աւար դառնայ, զՄահմուտ, որդի իւր թողլով անդէն։



որ Ղուզ կամ Ուզ ցեղէն Սելջուկ որդին Թօքմաքի կամ Տէգագի (կոչուած նաև Թիմուրպալեղ, այսինքն «երկաթեայ աղեղ»), որ Ժ. դարուն վերջին կէսին մէջ կ'ապրէր և իր ծագումը կը տանէր մինչեւ Օղուզ, համբաւաւոր հե-րոսը, ո'չ միայն այս այլ նաև բոլոր Թրքական ցեղերուն (EB)։ Սելջուկնե-րը, Մոնկոլիոյ Keraïtներուն և Naimanesներուն նման նեստորական քրիստո-նէութիւն կը դաւանէին։

Սելջուկ, նոյն անուն տոհմին (Clan) հերոսը, ծառայութեան մտած էր Անդրօքսոսի Սամանեան վերջին թագաւորին քով, որ անոր տուաւ իբրեւ ճոր-տական կալուած՝ Ճէնդը, Սիրտարիայի աջ եզերքին վրայ։

Ասոր համար՝ արկածախնդիրներ, իրաւունք ստանալու և Իրանի մէջ կեդրոն մը հիմնելու նպատակով, կ'որոշեն ընդգրկել իսլամութիւնը (Grousset, 176)։ Սելջուկ և իր ցեղախումբը այսպէս կ'իսլամանան։

Արդէն Ղուզերէն շատեր 907էն 1020 կը ծառայէին Ղազնէվի Սեբէկ Թէ-գինի (976—997) և Մահմուտ Ա.ի (998—1030) բանակներուն մէջ. և մաս-նաւորապէս Մահմուտի իշխանութեան տակ անոնք մեծ եռանդով կը յարէին իսլամութեան, վասնզի այն ատենները Ղազնէվիներու հարստութիւնը իր զօ-րութեան գագաթնակէտին վրայ էր շնորհիւ մասնաւորապէս Մեծն Մահմուտի հանճարին և ճարտարութեան (Lœwe)։

Սելջուկ, որ ունէր չորս զաւակներ, Միքայէլ, Իսրայէլ, Մուսա (Մովսէս) և Եոնուս կամ Բէկու, տեղափոխուեցաւ Անդրօքսոս, Թուրքեստանի Խըրղըզ կամ Գըրկըզ տափաստաններէն և իրեն ձմեռանոց ընտրեց Պուխարայի մօտ և ամարանոց՝ Սուղտ (Sughd) և Սմրղանտ (Lœwe), 956էն 969 (Յու-սիկf, 404)։ Շատ որոշ է թէ ինքը և իր զաւակները և հետեւորդները ար-դէն իբրեւ զինուոր կը ծառայէին Մահմուտի հօր՝ Սեբէկ Թէգինի (975—997) մօտ՝ և մինչեւ Մահմուտի գահակալութիւնը կրցեր էին քաղաքական կարեւոր դեր մը խաղալ շրջակայ իսլամ պետութիւններու մէջ (Lœwe)։

Սելջուկի (+ 1020) զաւակները իբրեւ ցեղին արքայական ընտանիքը, ունէին զանազան յարաբերութիւններ Անդրօքսոսի կամ Խուարէզմի տիրող իշխաններուն հետ։ Բայց բարեկամ թէ թշնամի, Ղուզերը եղան լուրջ վտանգ մը մերձակայ մահմետական նահանգներուն համար՝ իրենց աւարառու սովո-րութիւններով, և տեւական ասպատակութիւններով (EB)։

Կը բաւէ յիշատակել որ Սելջուկեանները, Բեկու-Ասլան-Իսրայէլի առաջ-նորդութեամբ անցան Օքսոսը և տարածուեցան Պարսկաստանի արեւելեան նա-հանգներու մէջ, ամէն տեղ կողոպտելով և քանդելով (EB)։

Վերջապէս Մահմուտ զգաց անոնց յարաճուն զօրութեան վտանգը և ձեր-բակալեց Սելջուկի որդիներէն՝ Իսրայէլը և զայն բանտարկել տուաւ Հնդկաս-տանի Գալանճար ամրոցին մէջ, ուր ան մեռաւ կալանաւոր։ Գութուլմիշ, Իսրայէլի տղան, փախաւ Պուխարա և իր ազգականները մղեց որ իր հօրը մահուան վրէժը լուծեն։

Անոնք Մահմուտի հետ բանակցութեան մտան՝ հրաման ստանալու համար հաստատուելու անոր թագաւորութեան սահմաններուն մօտերը՝ Օքսոսի արե-ւելեան եզերքին վրայ (Loewe)։ Ըստ Rawandiի, Մահմուտ այն ատեն զբաղած

Հնդկաստանի արշաւով, անմտօրէն տուաւ խնդրուած հրամանը՝ հակառակ Tusի կառավարիչին խորհուրդին և այսպէս դիւրութիւն ընծայեց, որպէսզի Սելջուկները իրենց ուժը ամրապնդեն իր պետութեան սահմաններուն մէջ (Loewe և հմմտ. Վարդան 93—94)։ Այսպէս անոնք հաստատուեցան Խորասան և հանդարտ մնացին Մահմուտի վերջին տարիները (Loewe)։ Բայց անոր մահէն յետոյ իր որդւոյն՝ Մասուտի — որ նկարագիրով իր հօրմէն շատ հեռու էր (Loewe) — ատեն, Սելջուկներու ընթացքը վրդովում պատճառել սկսաւ։

Ղազնէվի մեծ Սուլթանին մահէն առաջ, Միքայէլ Պէկ (+ 1038), Բեկու Արսլան Իսրայէլի եղբայրը, և իբրև պետ Սելջուկներու, անոր յաջորդը, ունեցած էր երկու զաւակներ՝ Շուղրի (= Չաղր (1) կամ Ձեաֆար ըստ մեր պատմիչներուն) և Տուղրիլ Պէկերը։

Անոնք վստահ իրենց ուժին, շատ քիչ տրամադրութիւն ցոյց տուին ճանչնալու Մասուտի գերիշխանութիւնը։ Իրենց անկախութիւնը շատ քիչ սքօղուած էր և Սուլթանը թէ՛ իր հպատակներէն և թէ՛ իր դրացիներէն բազմաթիւ բողոքներ կը ստանար անոնց դէմ, վասնզի անոնք չարունակ կը նեղէին իրենց ասպատակութիւններով, իրենց բնակակից և դրացի ժողովուրդները (Loewe)։ Մասուտ տեսաւ վտանգը, ուզեց պայքարիլ, բայց Սելջուկները հիմնաւորուած էին իրանեան հողի վրայ։ Իրենց պետը՝ Տուղրիլ Պէկ, մականուանեալն «Ինքնագով», գրաւեց Մէրվը մէկ հարուածով (1031)։

## ՏՈՒՂՐԻԼ ՊԷԿ

Մասուտ հրամայեց Ղուզերու արտաքսումը և Խորասանի կառավարիչին հրաման տուաւ զօրացնելու զինուորական կազմակերպութիւնները։ Ան ճամբայ ելաւ զօրաւոր բանակով մը դէպի Խորասան, սակայն ջախջախիչ պարտութեան մը մատնուեցաւ և յաղթական Սելջուկները Խորասանի մայրաքաղաքը Նիշապուր մտան 1038 Յունիսին, և կատարեալ ազատութեամբ հոն հաստատուեցան, և Սուլթան հռչակեցին Տուղրիլ Պէկը, որուն եղբօրը՝ Շուղրի Պէկի անունը արդէն նախորդ տարին ներմուծուած էր «Արքայից Արքայ» տիտղոսով Խութպէյին կամ մաղթանքասացութեան մէջ։ Երբ այս լուրերը հասան Հնդկաստան, ուր կը կռուէր Մասուտ, ան ըմբռնեց որ իր ներկայութիւնը անհրաժեշտ էր, ուստի դարձաւ Իրան և իր բոլոր ուժերով փորձեց վանել Տուղրիլը. բայց անիկա ճարտար շարժումներով Dindakanի ձախողուածին մատնեց զայն, ինչ որ վճռեց Արեւելեան աշխարհի ճակատագիրը (1039)։

Այս յաղթանակը պարգեւեց Սելջուկեաններու Ղազնէվի իրանեան պետութեան լաւագոյն ստացուածքները՝ Խորասանը, Հերաթը, Մէրվը, Պալխը, Խուարէզմը, Անդրօքսոսը և Ֆերկանան։

Ասկէ յետոյ Սելջուկ նուաճումներու ընթացքը դէպի Արեւմուտք տարածուեցաւ։

Մանաւորապէս Մէրվի մօտ տեղի ունեցած երկրորդ մեծ ճակատամարտէն (1040) ետք, երբ կը վճռուէր Պարսիկ պետութեան ճակատագիրը, Ղազնէվիները քաշուեցան դէպի Արեւելք, վասնզի Մասուտ բոլորովին պարտուեցաւ և քաշուեցաւ դէպի Ղազնա (Loewe)։

(1) Ըստ Ալիշանի (Յուշիկք Բ. 402) Չաղըր Պէկ:



Այսպէս, Թրքական ցեղեր, Թուրքեստանի տափաստաններէն Օքսոս գետը անցնելով, Ղազնէվիներու երկիրէն ներս մտան։ Այս խուժումը, որ ապահովաբար անդրադարձութիւնն էր Խորագոյն Ասիոյ մէջ գտնուող ժողովուրդներու ճնշումին, անարձագանգ չմնաց և կեդր. Ասիան, ինչպէս նաև Ղազնէվիներու և Պուիտեան իշխանութիւնները, մատնուեցան տակնուվրայութեան։

Այս ընդհանուր խառնակութիւններու արձագանգը հասաւ նաև Հայաստան, որուն հողին վրայ առաջին անգամ գրեթէ Ղազէվիներու երկիրէն ներս Թուրքերու խուժումին ժամանակակից, Թուրք հրոսներու թափանցումի փորձերուն կը հանդիպինք։

Այսպէս, 1017—18ին, երբ Սելջուկները տակաւին նոր մտած էին Ղազնէվիներու երկիրը, Հայաստան կրեց ազգերու տեղափոխութեան ալիքներուն ազդեցութիւնը (1)։

Այսպէս, շուրջ 1018ին, Վասպուրական, որ աշխարհագրապէս Ատրպատականի սահմանակից էր, ենթարկուեցաւ յարձակումին «խուժադուժ» ազգերու, որոնք Լաստիվերտցի (14) և Վարդան (92) կը ճանչնան՝ Պարսիկ, Ուռհայեցի (59) և Սամուէլ Անեցի (104—5)՝ Թուրք, Թովմա Արծրունիի շարունակողը (343 և 345)՝ Եղեմացի «որ են ազգք Թուրքաց» և Սմբատ Գունդստապլ (45)՝ Մուղալ (= Մոնկոլ) անունով։

Գրեթէ նոյն օրերուն կամ քիչ ետքը. 1021ին, Նախիջեւանի կողմէն Հայաստան կը մտնեն ուրիշ բարբարոսներ, որոնք Ուռհայեցի (13) Դելումաց Թագաւորին, Սմբատ Գունդստապլ (29) Դելմանաց զօրավարին և Վարդան (98)՝ Տուղրիլի (2) հետեւորդները կը կարծեն և մինչեւ երկիրին կեդրոնը՝ Նիգ կ'առաջանան։

(1) Ալիշան (Յուշիկք Բ. 105), իր պատմէ թէ Չաղըր Պէկ, Թուրք եւ Թուրքմէն զօրքերով, կտրած անցած է Խորասանը եւ մտած Մարաց երկիրը եւ անկէ ալ Ասպրականն ու Հայաստան: Մինչեւ ուր երթալն յայտնի չէ, բայց հասած է մինչեւ Բիւզանդեան սահմանները Հայաստանի, եւ իբր յանկարծահաս փոթորիկ անցած Հայաստանէն, կոխած տեղը կրակով կործանելով: Դիմադրողները հալածած է. քանի մը բերդեր ալ անպաշտպան գտնելով՝ նուաճած է եւ շրջան մը ընելով՝ աւարառութեամբ եւ աւերածութեամբ՝ դարձած է իր տեղը: Մահմուտ Ղազնէվի Սուլթանը, լսելով անոր իր երկիրէն անցնիլը՝ զայրացեր է եւ պատուիրեր է որ դարձին բռնեն զայն. բայց ան խորամանկօրէն ծպտուելով վաճառականի զգեստով, կ'անցնի Մահմուտի սահմաններէն եւ կը հասնի իր եղբօր՝ Տուղրիլի քով, ի Բուխարա: Այս անհաւատալի պատմութիւնը չեմ գիտեր թէ ի՛նչ աղբիւր ունի. սակայն հաւանական չէ որ ճշմարիտ ըլլայ:

(2) Ինչ որ բացարձակ անկարելի էր, վասնզի Տուղրիլ միայն 1038ին Նիշապուրի մէջ թագաւոր հռչակուած է եւ 1040էն յետոյ է որ Պարսկաստանի տիրապետած: Ժամանակով իրմէ առաջ կատարուած արշաւանքներուն անոր վերագրութեան պատճառն այն է որ Տուղրիլ շատ մեծ անուն ունէր եւ իր վրայ կ'անձնաւորէր ցեղը: Օրմանեան (Ազգապատում, 1195 որ նշմարած է Վարդանի եւ անոր հետեւորդներուն (ինչպէս Չամչեան Բ. 904) սխալը, յարձակումը կը վերագրէ անոր նախորդին՝ Միխայէլի եւ Ասպրականի Դելմանի գաւառէն կատարուած ցոյց կու տայ: Դելումնաց կամ Դելմանաց բառերուն նմանութենէն տարուելով: Համաձայն Շահնազարեան Վրդ.ին, (Սմբատ, Նոյն), այս յարձակումը կը կարծեմ թէ Դայլամկանց (= Պուիսեանց) գործն է, նկատելով որ անոնց տիրապետութիւնը մինչեւ Ասպրական տարածուած էր:

Այս արշաւանքները հաւանօրէն արդիւնքներն էին Կեդր. Ասիոյ մէջ պատահած ազգերու գաղթաշարժին, որ ծայր տալ սկսած էր և առաւելապէս մէկ հետեւանքն էր Թուրքերու կատարած ճնշումին. սակայն զուտ Թրքական բնոյթ չունէր, քանի որ Թուրքերը այն ատեն նոր կ'անցնէին Ոքսոսը և անկարելի էր որ մասնական և հատուածային յարձակումներով առաջացած ըլլային մինչեւ Հայաստան. հետեւաբար Դայլամեանք (= Գուխտեանք) որ Հայաստանի արեւելեան սահմանին վրայ կը գտնուէին և Թուրքերէ բաղկացեալ զինուորական ուժ մը ունէին, իրենք էին որ յարձակած էին Հայաստանի վրայ։

Ուրեմն այս առաջին խուժումը որ Հայաստանի վրայ կը կատարէին մինչեւ այն ատեն Հայերու անծանօթ ժողովուրդներ, Սելջուկ չէին։ Անոնք Հայաստան պիտի հասնէին մօտաւորապէս 20—22 տարի ետքը, երբ արդէն Մէրվի յաղթութեամբ Ղազնէվիններու պետութեան ճակատագիրը վճռուած, Սելջուկի զաւակները անկախ հռչակուած, և Գայլը, Ճուրճանը, Տապարիստանը, Խուարէզմը և բազմաթիւ քաղաքներ, ինչպէս Ռէյ, Համատան և Սպահան գրաւուած էին։

Այս առաջին յարձակումները, ինչպէս տեսնուեցաւ (ՊՀԳ. Ա. 238), պատճառ եղան որ Սենեքերիմ Արծրունի, Վասպուրականի թագաւորը (1003—1026) ինքզինքը անկարող զգալով դիմադրելու, իր երկիրը տայ Վասիլ կայսեր և ինքը իր թագաւորութեան բնակիչներուն հետ փոխադրուի Սեբաստիա։

Բիւզանդիոն, առիթը բարեպատեհ համարելով, իր բանակները առաջացուց մինչեւ Հայաստանի հարաւ-արեւելեան ծայրագաւառը՝ Վասպուրական, և աշխատեցաւ Հայաստանի միւս մասերուն ալ տիրել և բովանդակ երկիրին տէրը դառնալ։ Սենեքերիմ ապաւինեցաւ քրիստոնեայ Արեւմուտքին վասնզի Պաղտատի Խալիֆաները գրեթէ լքած էին Հայաստանը իր ճակատագիրին։ Ճիշդ այս պատճառով էր որ Վանի ծովի շրջակայ քաղաքներուն, ինչպէս Բերկրի, Մանազկերտի, Խլաթի և Արճէշի մէջ հաստատուած մահմետական ամիրաները եւ՝ պաշտպանուելու համար Արեւելքէն կատարուած արշաւանքներուն դէմ, փոխանակ Պաղտատ դիմելու, Վասիլ կայսեր պաշտպանութեան ապաւինեցան, և անոր գերիշխանութիւնը ճանչցան. վասնզի տեսան թէ Վասիլ՝ ամրապնդելու համար Բիւզանդական տիրապետութիւնը, ջանքեր կ'ընէր և իր իշխանութիւնը կ'ուզէր պատկառելի ընծայել, Հայաստանի մէջ կազմուած քրիստոնեայ և մահմետական իշխանութիւններուն։

Բայց դժբախտաբար ընդհանուր համաձայնութիւն մը չունէին իրենց մէջ այդ պզտիկ իշխանութիւնները, որոնցմէ ոմանք առանց իրենք զիրենք պաշտպանելու բաւականաչափ ուժ ունենալու, անխոհեմութիւնը ունեցան Բիւզանդիոնի դէմ կանգնելու և չարաչար պատժուեցան։

Օրինակի համար, Անիի Յովհաննէս-Սմբատ թագաւորը, որ Վրաց Գէորգի թագաւորին հետ Վասիլի դէմ ելած էր, պարտաւորուեցաւ անոր գերիշխանութեան ենթարկուիլ և իր մայրաքաղաքը՝ Անին կտակել Բիւզանդիոնի, որ հիմնուած այս կտակին վրայ, վերջ տուաւ Հայերու Բագրատունի թագաւորութեան (տես ՊՀԳ. Ա. 243)։



## ԲԻՒԶԱՆԴԻՈՆ ԱՆԿԱՐ

Անգամ մը որ Հայաստան ամբողջութեամբ կցուեցաւ Բիւզանդական կայսրութեան, տնիկա աշխատեցաւ պաշտպանել իր գրաւած հողերը, սակայն հակառակ իր ջանքերուն, չկրցաւ, վասնզի հազիւ 25 տարիներ (1045—1070) կրցաւ տոկալ բարբարոսներու գրոհին (1) և տեղի տուաւ Կեդր. Ասիոյ բարբարոս ժողովուրդներուն առջեւ, որոնք գրաւեցին երկիրը ամբողջովին։

Այսպէս, Միքայէլ Դ. Պափլագոնացի կայսեր (1034—1041), իշխանութեան սկիզբը (1034—35) Վասպուրականի սահմաններուն վրայ նոր յարձակումներ կատարուեցան և Բերկրին իր շրջականերով գրաւուեցաւ և Խորիկ անուն մէկը հոն հաստատուեցաւ իբրեւ Ամիրա։ 1036—7 թուականներուն, ըստ Ու-Լաստիվերտցիի (28), Վասպուրականի գաւառապետը Կաւասիլաս և ըստ Ուռհայեցիի (86) և Սմբատի (53)՝ Հայ իշխան Գանձի, կը գրաւեն Բերկրին և հոն պահապան զօրք կը թողուն, Կաւասիլասի փոխանորդը աւելի հեռուն մինչեւ Արծակ կ'առաջանայ։ Ճիշդ այդ միջոցին Խորիկի թելադրութեամբ կամ խնդրանքով, իր ազգականները Պարսկաստանէն կը հասնին և կը պաշարեն Բերկրին. և որովհետեւ պահապան զօրքը անփոյթ մնացած էր, յանկարծակի յարձակմամբ քաղաքը կը գրաւեն և 24,000 Բիւզանդացի զօրք կը ջարդեն։ Ըստ Ուռհայեցիի, հոն կը մեռնի նաեւ Գանձի հայ իշխանը։ Արծակ գտնուող զօրքը օգնութեան չի կրնար հասնիլ և բարբարոսները սպաննուած զօրքերուն աւարը առնելով կ'երթան իրենց երկիրը, իրենց հետ տանելով բազմաթիւ կալանաւորներ եւս։ Ճամբան Խորիկ անոնց կը հրամայէ փորել փոս մը, որուն եզերքը կը մորթէ զանոնք, մինչեւ որ փոսը արիւնով կը լեցուի և ինքը անոր մէջ լոգանք կ'առնէ։

Յաջորդ տարին Բիւզանդացիք նոր զօրք կը ղրկեն մեքենաներով և կը յաջողին Բերկրիի պարիսպները քանդել։ Բերդականները տեսնելով որ փրկութիւն չկայ, իրենց զօրագլուխէն կը խնդրեն որ թոյլ տայ իրենց երկիրը երթալու և այսպէս երկիրը կը գրաւուի Բիւզանդացիներէն և Վասպուրականը կը պահպանուի (Լաստ. 28—29, Ուռհ. 86—87, Սմբատ 53)։

Քանի մը տարի ետք, Միքայէլ Դ. Պափլագոնացի կայսեր (1034—1041) կամ անոր յաջորդին՝ Միքայէլ Ե. Կալաֆատէի (1041—1042) ատեն դարձեալ Հերի և Սալմաստի կողմէն Վասպուրականի Թոռնաւան գաւառին վրայ յարձակում կը գործեն բարբարոսները և Առիւծ Խաչիկ Հայ իշխանը և իր որդին Իշխան թէեւ զոհ կ'երթան այս յարձակման, սակայն իր միւս որդիները՝ Հասան և Ճնճղուկ կը լուծեն վրէժը իրենց հօրը և եղբօրը սպանութեան և ետ կը վանեն բարբարոսները և դարձեալ կը յաջողին պահել Վասպուրականը, (Ուռհ. 105—8, Սմբատ 59—60)։

Իսկ հիւսիսային Հայաստանի բնիկ իշխանները իրենց կարգին կը մաքառին բարբարոս ժողովուրդներու դէմ, և հայերը և Բիւզանդացիք Հայաստանի մէջ կը տոկան ժամանակի մը համար։

(1) Հայաստանի մէջ հաստատուած օտար վարչութեան եւ յարձակող բարբարոսներուն դէմ երկիրը պաշտպանելու համար Բիւզանդացիներու ջանքերը ներկայացուած են իմ «Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմանները» գործին մէջ (տես. էջ 232—257)

Թերեւս աւելի համերաշխ եւ ուղղամիտ գործակցութիւն մը երկու ազգերուն միջեւ աւելի երկար ատեն ապահովէր Հայաստանի պաշտպանութիւնը եւ թոյլ չի տար բարբարոսներու խուժումին. սակայն, դժբախտաբար, Բիւզանդացիք պէ-չէին կրցած հասկնալ Հայաստանի պատուարին պահպանութեան իրենց տութեան ապագային համար ունեցած կենսական նշանակութիւնը, եւ չէին չա-փած մանաւանդ սպառնացող վտանգին ահաւորութիւնը։ Եթէ ըմբռնած ըլլա-ին ատիկա, անոնք, Անիի Բագրատունի թագաւորութեան դէմ պիտի չդա-ւէին։ Մինչդեռ անոնք ամէն նենգութիւն գործադրեցին, հակառակ այն ծա-ռայութիւններուն զորս հայերը ցոյց տուեր էին իրենց՝ կուրծք տալով Թրքա-կան արշաւանքներուն։ Գագիկ Բագրատունի, 1043ին գահ բարձրացած էր, հակառակ բիւզանդական սադրանքներուն, ներքին թշնամիներուն եւ Բիւզան-դացիներուն դէմ կռուելով հանդերձ, Արեւելքէն եկող բարբարոսներու ալ դի-մադրեց դիւցազնօրէն (Ուռհայեցի 102 եւ Սմբատ 58—59 եւ ՊՀԳ. Ա. 243—4)։ Այս հերոսական պայքարը փոխանակ քաջալերելու, Կոստանդին Թ. Մո-նոմախոս, (1042—1054), նենգութեամբ դաւադրեց Հայերու անկախութեան դէմ, 1045ին Գագիկը Պոլիս հրաւիրելով ու հոն պահելով, եւ տարի մը ետքն ալ Անին գրաւելով։

Մոնոմախոս, ջանաց վերջ տալ նաեւ Հայաստանի մէջ հաստատուած իշ-խան ճորտ իշխանութիւններուն, որոնք բարբարոսներու արշաւանքներէն ահա-լամ բեկ՝ Բիւզանդիոնի գերիշխանութիւնը նախընտրեր էին Վասիլի ատեն։ Այս նպատակով, առանց նկատի ունենալու սպառնալից վիճակը, վէճեր ստեղծեց անոնց հետ եւ զանոնք թշնամացուց իրեն։ Այսպէս, Մոնոմախոս, դեսպան ղրկեց Դուինի Ապուսուար (Ապու՚լ Ուսուար) պարսիկին եւ պահանջեց որ իրեն թողու, իբրեւ Անիի թագաւորութեան եւ Հայ աշխարհի մաս, այն քաղաքները՝ զորս ան խլած էր Գագիկէն։ Ապուսուար մերժեց, նոյնինքն կայսրէն ստա-ցած խոստումին վրայ հիմնուելով։

Եւ սկսաւ կռիւ մը Դուինի ամիրային դէմ։ Մոնոմախոս իր ուժերը փո-խանակ բարբարոսներու արշաւանքը դիմագրաւելու համար պահելու, հրամա-յեց «Արեւելից կուսակալ» Նիկեփորոսի եւ Անիի կուսակալ Ասիտի՝ որ հայերէն եւ վրացիներէն զօրք հաւաքելով, յոյն զօրքերուն հետ յարձակին Դուինի Ամի-րային վրայ։

Ապուսուար կը կանխէ, Ազատ գետին ընթացքը կը դարձնէ եւ կ'ողողէ Դուինի շրջակայ դաշտը՝ որ ճահիճի կը վերածուի։ Միւս կողմէն՝ անհոգութիւն կեղծե-լով շրջակայ այգեստաններուն մէջ դարանակալ կ'սպասցնէ զինուորներ, որոնք անակնկալի կը բերեն յոյները եւ մեծ կորուստ կը պատճառեն անոնց (Կեդրե-նոս, Զամ. Բ. 937)։ Այս կռիւին մէջ կը մեռնին Վահրամ եւ Գրիգոր Պահ-լաւունիները (Լաստ. 42—43, Ուռհայեցի 115 եւ Սմբատ 64)։

Մոնոմախոս իր պարտութեան վրէժը լուծելու համար կրկին զօրք կը հա-ւաքէ եւ կու գայ Տէլիարխ կամ Տէլխարի (1) Կուրտ կամ Ներքինի զօրավարին

(1) Ոմանք կը կարծեն թէ այս բառը անձնանուն չէ, այլ պաշտօնի եւ կը նշանակէ հրամանատար: Գործածած է Ուռհայեցի (555), իսկ Սմբատ (65) «Մելարխ» կը գրէ, որ հաւանօրէն սխալ ընթերցում է:



եւ Դուինի վրայ կը ղրկէ (1046)․ բայց ոչինչ կրնայ ընել (Ուռհ. 117 եւ Սմ-բատ 65):

1048ին նոյն զօրավարը կրկին կը փորձէ Դուինի վրայ երթալ եւ «Բա-զում չարչարանս եւ տագնապս գործեաց այնմ գաւառին, որով եւ գերու-թեամբ ապականեաց զամենայն ազգն տանկաց, եւ դարձաւ յաշխարհն յու-նաց խաղաղութեամբ», (Ուռհ. 117—8, Սմբատ 63), բայց քաղաքը անառիկ կը մնայ (Զամ. Բ. 938)։

Այս յարձակումները բնական է դառնացուցին Ապուսուարը, որ ոչ միայն Բիւզանդիոնի դէմ ելաւ, այլ բռնացաւ նաեւ իր իշխանութեան տակ գտնուող քրիստոնեաներուն վրայ, զորս հալածել սկսաւ (Զամ. Բ. 938) եւ վրէժխնդ-րութեամբ դարձաւ Սելջուկներուն կողմը։

Այսպէս, Բիւզանդացիք իրենց մոլեռանդութեամբը եւ անհեռատեսութեամ-բը՝ թշնամացուցին թէ՛ Հայերը եւ թէ՛ մահմետականները, որոնք այլեւս կ'ա-տէին զիրենք։

Բիւզանդացիք նկատի չունեցան իրենց ձախող քաղաքականութեան ան-դրադարձութիւնը, ընիկ ժողովուրդին ատելութեան հետեւանքները, եւ երկի-րին մէջ գոյութիւն ունեցող իշխանութիւնները ջնջելով, իրենց համար ստեղ-ծուած ծանր կացութիւնը։

Անոնք երկիրին իշխանութիւններուն վերջ տալով, կը պարտաւորուէին իրենք ուղղակի ճակատելու Արեւելքէն եկող հրոսներուն դէմ՝ առանց յոյս դնելու բնիկ ու եկուոր քրիստոնեայ եւ մահմետական տարրերու վրայ, որոնք տիրող վիճակէն դժգոհ ըլլալու պատճառներ ունէին. վասնզի Բիւզանդացիք Հայաստանի մէջ կը վարէին կարճամիտ քաղաքականութիւն մը։

Բիւզանդացիք կա՛մ պէտք էր շատ աւելի զինուորական ուժ պահէին Հա-յաստանի մէջ եւ կա՛մ պէտք էր երկիրին բնակչութիւնը իրենց կապէին սիրա-շահութեամբ։

Բիւզանդացիք այս երկուքին մէջ ալ թերացան։ Ու այս թերացումով՝ պատմութեան ընթացքը հիմնովին փոխուեցաւ։ Հայաստանի մէջ անոնք կնա-մարդի զօրավարներու ձեռքին տակ սակաւաթիւ զօրքեր ունէին եւ — ինչպէս տեսնուեցաւ — անխորհրդաբար արձակած էին 50,000 հայ եւ վրացի զինուոր-ները, որոնք երկիրին պաշտպանութեան համար անհրաժեշտ էին (Գելցեր, 287):

Ասիկա իբր թէ բաւական չըլլար, նոյնիսկ՝ փոխանակ երկիրին բնիկները իրենց սեփական հայրենիքին պաշտպանութեան համար գործածելու, զանոնք հեռաւոր վայրեր տարին զինուորական ծառայութեան համար, ինչպէս կը պատմէ Ուռհայեցի (103), ըսելով թէ Միքայէլ կայսրը «զօրաժողով արար... զամենայն աշխարհն յունաց եւ այլ ի հայոց զօրացն որք ընդ Հոռոմոց իշ-խանութեամբն էին՝ Սեբաստիա եւ Տարօն եւ ամենայն Վասպուրական եւ անթիւ բազմութեամբ հասանէր թագաւորն Միխայլ յարեւմուտս եւ գերի առեալ զամենայն աշխարհն Գնդաց (= Գոթաց) եւ զապստամբսն ունէր ի հնազանդութիւն, եւ արար իւր հնազանդ զամենայն աշխարհն եւ դարձաւ ի Կոստանդինուպոլիս...»:

Գուցէ բացատրուի որ Բիւզանդացիք իրաւունք ունէին այսպէս վարուե-

լու, վասնզի չէին կրնար վստահիլ հայերուն, զորս ոչ միայն սիրաշահած չէին, այլ ընդհակառակը զանոնք դառնացնելու համար ամէն բան ըրած էին, անոնց քաղաքական իշխանութենէն զատ, եկեղեցական վարչութիւնն ալ քանդել փորձելով։ Այս ձախորդ առաջադրութեամբ՝ անոնք ձեռք դրին Հայ Եկեղեցիին վրայ, և ջանացին զայն Քաղքեդոնական դարձնել, առանց խորհելու թէ հակաքաղքեդոնականութիւնը Հայաստանի մէջ իրական ուժ մըն էր՝ զոր պէտք էր հաշուի առնել Հայաստանի տիրապետել ուզողը։

Այս կարճամիտ քաղաքականութիւնը Վասիլ Բ.էն ժառանգ մնաց իր յաջորդներուն։ Վասիլ կայսր անսալով մոլեռանդներու, Հայ եկեղեցին հալածած էր, մինչ իրեն նման աննկուն զինուորական մը կարող էր երկաթէ մըտրակով մը զսպել վիճասէր և միաբանութեան ձգտող կղերը, ինչ որ չըրաւ։ Իր այս մեծ սխալը իր յաջորդները շարունակեցին և Հայ թագաւորութեան վերջ տալէ ետք, աշխատեցան նաև Հայ եկեղեցին հնազանդեցնել Կ. Պոլսոյ Տիեզերական Պատրիարքութեան և Հայերը բիւզանդական հալոցին մէջ անհետացնել։

Այս նպատակով էր որ Կոստանդին Մոնոմախոս կայսրը, Պետրոս Գետադարձ Կաթողիկոսը († 1056) Գագիկ Թագաւորին պէս Պոլսոյ մէջ արգելափակեց և անոր յաջորդին՝ Խաչիկ Բ. Անեցիի (1058—1065) ընտրութեան արգելք հանդիսացաւ։ Բիւզանդացիք ասկէ տարբեր քաղաքականութեան մը չհետևեցան Հայաստանի մահմետական իշխանութիւններուն նկատմամբ ալ։

Անոնք իրենց լուծը առելի դարձուցին նաև ծանր հարկեր դնելով Հայաստանի պէս լեռնային աղքատ երկրի մը վրայ, որուն բնակչութիւնը բացարձակապէս անկարող էր տոկալու այս ծանր տուրքերուն.

Այնպէս որ երկրին բնակչութեան համակրութիւնը աւելի յարձակողներուն կողմն էր, քան թէ Բիւզանդացիներուն, որոնք, ի վերջոյ իրենց այս անմիտ քաղաքականութեան պատճառով, բարբարոսներէն պարտուեցան, տեղի տուին և Հայաստանի ռազմական կարևոր դիրքը թողուցին Կեդր. Ասիոյ հրոսներուն, հակառակ անոր որ Հայաստանը զինուորական գրաւման ենթարկած էին, և կը կառավարէին զայն զինուորական պաշտօնատարներով։ Հայաստանը բաժնեցին զինուորական երեք գլխաւոր կառավարչութիւններու կամ կուսակալութիւններու, որոնց պետերը՝ զինուորականներ՝ զօրավարներ էին։ Այս երեք կուսակալութիւններն էին.

Ա. Դերջանի Պրոտոսպաթարութիւնը և Տարօնի զօրավարութիւնը։

Բ. Վասպուրականի Գաւառապետութիւնը կամ «Կուսակալութիւն Արևելից»ը։

Գ. «Տանն Հայոց իշխանութիւնը» կամ Անիի կուսակալութիւնը, որոնք սակայն չկրցան երկիրը պահել վասնզի ինչպէս ըսինք, փոխանակ ներքնապէս իրենց իշխանութիւնը զօրացնելու և տեղացի տարրերու գործակցութիւնը ապահովելու, ու արտաքին յարձակումներու դիմադրելու միջոցները փնտռելու զբաղեցան ներքին կռիւներով, և մահմետական ու հայ իշխաններու հետ մաքառելով, ինչպէս Դուինի ամիրային հետ, պատրուակելով թէ երկիրը կը գտնուէր բարբարոսներու ապաւինալիքին տակ։





Այս պայմաններուն տակ՝ Հայաստան ա՛յնքան անպաշտպան դրութեան մէջ էր, որ նոյնիսկ վաչկատուն ժողովուրդներ Հայաստանի հարաւակողմը կ'ասպատակէին այնպիսի բանակով մը (1) որ Մուսուլի մօտ պարտուած էր Արաբներէն։ Այս բանակը, հակառակ տկարացած ըլլալուն, իր նահանջի ճամբուն վրայ, Դ. Հայքի մէջ կոտորածներ կը կատարէր և նոյնիսկ Բիւզանդացի Ստեփան Կատապանը գերի կը տանէր և կ'սպաննէր (Ուռհ. 115—117, Սմբատ 64—65)։

Վաչկատուններու այս ասպատակութիւնը պատճառ կ'ըլլար որ Թուրք ցեղապետի մը՝ Սելջուկի նախաձեռնութեամբ հիմնուած պետութեան մը վեհապետը՝ նոյն Սելջուկի որդին Տուղրիլ, իր թոռը՝ Հասանը կամ Արսլան Խուլը Հայաստան ղրկէ բանակով մը, մանաւորապէս Վասպուրականը աւերելու համար։

Ահարոն Բուլկար Վասպուրականի կուսակալը, տեսնելով Թուրքերու բազմութիւնը չհամարձակեցաւ ճակատիլ և հրաւիրեց Անիի իշխան՝ Կատարան որ օգնութեան հասնի։ Երկու զօրավարները համաձայնութեամբ կ'որոշեն լքել իրենց անհուն գոյքերով և պաշարներով լեցուն բանակատեղին և դարան լարել Սելջուկներուն, որոնք արդարև երբ տեսան բանակատեղին անտէր, յոյները փախուստ տուած կարծելով, կողոպուտի հետամուտ եղան։ Յոյները որ կը դիտէին Սելջուկ անկարգ հրոսակները, իրենց թաքստոցներէն ելան և կարգաւորեալ զինուորներով յարձակեցան անոնց վրայ և չարաչար պարտութեան մատնեցին զանոնք։ Արսլան և անոր հետ եղող բոլոր Սելջուկ քաջերը կոտորուեցան չարաչար և միայն մէկ քանիները մազապուրծ փախան Պարսկահայոց լեռները։ Այսպէս Բիւզանդացիք խաղով մը յաղթեցին բարբարոսներուն և անոնց հրամանատարը և զօրքը ջարդեցին։

Տուղրիլ իբր թէ կը կազմէ նոր բանակ մը 100,000 զօրքով, բաղկացած Դեյլմուկներէ, Կաբիլներէ, Թուրքերէ և Խորասանցիներէ և անոնց հրամանատար կը կարգէ Իպրահիմ Նիյալը և Սիւլէյման Գութուլմիշը, ու կը ղրկէ Հայաստան (Կեդրենոս, 724, Զամ. Բ. 946).

Այս հորդաները «անթիւ բազմութեամբ գան ի յաշխարհն Հայոց, վասնզի ի ձեռացն Հոռոմոց գիտացին անտէր եւ անպահապան զամենայն աշխարհն Հայոց, զի զարս քաջս եւ զհզօրս քակեալ հանին յարեւելից Հոռոմք եւ կուրծ(2) զօրապետօք ջանային պահել զաշխարհն Հայոց եւ զամենայն տունն արեւելից» (Ուռհայեցի, 120, հմմտ. Սմբատ 65):

Թէ՛ Կեդրենոսի եւ թէ՛ Հայ պատմիչներու խօսքերը կը պարունակեն որոշ չափով ճշմարտութիւններ, սակայն ճիշդ չէ թէ Իպրահիմ Նիյալ «ի սանէն Պարսից հրամանաւ Տուղրէլ Սուլտանին եւ... ի սիւանէ անօթի» (Ուռհ. 120) ղրկուած ըլլայ, վասնզի Տուղրիլի յարաբերութիւնները հեռու էին բարեկամական ըլլալէ Իպրահիմի հետ։

---

(1) Կը թուի թէ այս բանակը ունէր երեք հրամանատարներ — Պաղի, Պուկի եւ Անազուղի անուններով:

(2) Թէեւ ձեռքին կը նշանակէ. սակայն հոս «չնամարդի» իմաստով գործածուած է:

Հաւանօրէն Ապուսաւար Դուինի ամիրան, Իպրահիմ Նիյալի դիմած է և ո՛չ թէ Տուղրիլի, որուն հետագայ հռչակը պատճառ եղած որ ինչպէս մեր պատմագիրները՝ նոյնպէս ուրիշներ, բոլոր Սելջուկեանց կողմէ կատարուած արշաւները անոր վերագրեն կամ դէպքերը իրարու հետ շփոթեն։

Գալով Գութուլմիշի որ եղբօրորդին էր Տուղրիլի, հաւանական է որ Միջագետք արշաւած ըլլայ Տուղրիլի հրամանով։

Իպրահիմ Նիյալի համար օտար պատմիչներ կը հաստատեն թէ արդարեւ ան մտած է 1048ին Հայաստան Ղուզ նոր գունդերով, և թափանցած է մինչեւ երկիրին սիրտը՝ Մանազկերտ, Կարին, Սպեր, Տայք, Տարօն, Հաշտեանք, Խորձեան, և մէկ կողմէն հասած է մինչեւ Սեւ ծով (Տրապիզոն), և միւս կողմէն մինչեւ Եփրատ կամ Փոքր Ասիոյ սահմանը (Լաստիվերցի 62—69)։

Լաստիվերցի այս արշաւանքը նկարագրած է շատ սրտառուչ կերպով, ըսելով թէ «Ի սոյն ամս բացաւ դուռն բարկութեան յերկնից ի վերայ աշխարհիս մերոյ, եւ շարժեալ զօրս բազումս ի Թուրքաստանէ, որոնց երիվարք արագունք իբրեւ զարծուիս եւ սմբակք նոցա իբրեւ զվէմս հաստատունս, աղեղունք լարեալք եւ սլաքեալ նետք նոցա զօտեւորեալք քաջապէս, եւ անլուծանելի ունելով զխարիսխ կօշկաց: Եւ ելեալ ի գաւառն Վասպուրականի, յարձակեցան ի վերայ քրիստոնէից իբրեւ զգայլս քաղցեալս անյագեալս ի կերակրոյ, եւ եկեալ մինչեւ ի գաւառն Բասեան եւ մինչեւ ի դաստակերտն մեծ՝ որ կոչի Վաղարշաւան (հիմա Քէօփրիւ Քէօյ), քանդեալ ապականեցին գաւառս քառասուն եւ չորս՝ սրով եւ հրով եւ գերութեամբ՝ ... Որք իբրեւ զառիւծս ընթացան եւ իբր կորիւն առիւծուց անողորմաբար արկին զդիակունս բազմաց գէշ գազանաց եւ թռչնոց երկնից եւ կամէին այնու ձեռնարկութեամբ գալ ի քաղաքն Կարնոյ» (Լաստ. 44)։

Ճակատագրապաշտ Լաստիվերցի անոնց արշաւանքին կասումը կը վերագրէ Աստուծոյ, որ «արկ զխաւար թանձրամած առաջի նոցա եւ արգել զնոսա յընթացից իւրեանց» (Լաստ. 44)։

Սակայն յաջորդ տարին, 1049ին, «շարժեալ միւս անգամ մրուր դառնութեան լի բարկութեամբ ի տանէն Պարսից՝ ահագին ծփանօք, եւ եկեալ հեղեալ յընդարձակ դաշտն Բասենոյ եւ Կարնոյ եւ ցայտուկս հեղեղաշին կալաւ զչորս անկիւնս երկրին, յարեւմուտս մինչեւ ի Խաղտեաց գաւառն, իսկ ի հիւսիսի՝ մինչեւ ի Սպեր եւ մինչեւ յամուրս Տայոց եւ Արշարունեաց, իսկ ի հարաւ, մինչեւ ի Տարօն եւ մինչեւ ի գաւառն Հաշտենից մինչեւ յանտառն Խորձենոյ: Եւ զտեղի առեալ դադարեաց աւուրս չորեքտասան եւ ծովացեալ ծածկեաց զլերինս եւ զմացառ վայրս, եւ կալաւ բնաւ զաշխարհս» (Լաստ. 46—7)։

Պատմիչը (47) կ'ըսէ. «Տունն Հայոց... թմրեալ յիմարեցաւ... եւ այժմ անկեալ կայ ի կիցս ամենայն ճանապարհացն մերկ եւ խայտառակեալ եւ կոխեն զնա նախատանօք անցաւորք ճանապարհաց»։

Սելջուկեան յաջողութիւնները կը քաջալերեն, ինչպէս Լաստիվերցի գրած է (47), որ ուրիշներ ալ յարձակին Հայաստանի վրայ «քանզի յառաջին անգամայն՝ յորժամ ելին Պարսիկք եւ այլ խուժադուժ ազգք հեթանոսաց եւ



մարդակոտոր սատակմամբ ապականեցին զգաւառս բազումս եւ առեալ գերի բազում առեալ իջին յաշխարհն իւրեանց, աւետաւորք եղեն ազգաց եւ քաջալերութեանց»։ Այնպէս որ յաջորդ տարին «ժողովեցան իբրեւ արծուիք ի վերայ կերակրոյ անհամար բազմութիւնք զօրաց, աղեղնաւորաց եւ սուսերաւորաց եւ մեծաւ խրախուսանօք ճեպեճեպոյ ելին յաշխարհս մեր յամսեան Սեպտեմբերի, ի տօնի Ս. Խաչին, յաւուր չորեքշաբթու»։ (Լաս. 48)։

Պատմագիրը որ ականատես եղած է Սելջուկ խժդժութիւններուն, կը նկարագրէ այս արշաւանքներուն հետեւանքները ըսելով՝ թէ «Քաղաքք մեր աւերեալք եւ տունք այրեցեալք, ապարանք հնոցացեալք եւ արքունականն սրահք անհետացեալք: Արք ի հրապարակս կոտորեալք, եւ կանայք ի տանց գերի եղեալք եւ կաթնասուն տղայք զքարի հարեալք, եւ գեղեցիկ դէմք պատանեկաց թառամեալք, կոյսք ի հրապարակս ի խայտառականս անկեալք, եւ երիտասարդք առաջի ծերոց սրախողխող եղեալք, պատուական ալիք ծերոց ընդ արիւն եւ ընդ ապաժոյժ եկեալք, եւ դիակունք նոցա թաւալգլոր խաղացեալք: Սուրք թշնամեացն շլացեալք եւ ձեռք նոցա ի զօրութենէ պակասեալք, աղեղանց նոցա լարք հատեալք եւ նետք ի կապարճից նոցա սպառեալք, անձինք նոցա ձանձրացեալք, եւ սիրտք նոցա յողորմութիւն ոչ եկեալք» (Լաս. 48—49)։

Քրիստոնեայ մատենագիրը բոլոր այս թշուառութիւնները աստուածային պատուհաս կը մեկնէ և պատիժ ամբարիշտութեան համար։ Ամէնէն սոսկալին այդ խժդժութիւններուն զոր այդ «ազգն հեթանոսաց»ը գործադրած է, եղած ի Սմբատաբերդ (Մանանաղի գաւառին մէջ) ուր «ժողովեալ էին բազմութիւն անթիւ փախստէիցն եւ անասունք որ ոչ գոյր թիւ»։ (Լաս. 50)։

Սելջուկները հոն հասան և «ապականեցին զամուրս նորա եւ մտեալ ի ներքս՝ սուր ի վերայ եդեալ կոտորեցին զամենեսին» (նոյն)։

Լաստիվերցի (51—52) չափազանց յուզիչ կերպով նկարագրած է այս աղեխարշ կոտորածը, այնպէս որ պատմիչը «լեառն արեան, կոխման եւ կորստեան» կը կոչէ «լեառն ամուր Սմբատայ» (Լաս. 52) և կ'աւելցնէ. «Ոչ է մարթ անուանել զքեզ լեառն, այլ խորխորատ տղմոց ի կորուստ ամենայն բնակչաց երկրի, քանզի ի քեզ գազանք սրգայանան, եւ ցինք եւ անգեղք արարին իւրեանց բնակութիւն ի քեզ աղուեսունք երամակեալք, խայտացեալք, լցեալք ի կերոյ»։

Այս սոսկալի կոտորածէն յետոյ Սելջուկները կը յարձակին Հայաստանի ամէնէն գեղեցիկ քաղաքներէն մէկուն՝ Արծնի (1) վրայ (1049), «քաղաքի այսպիսում, որ հոյակապ եւ ականաւոր էր ամենայն աշխարհաց, իբրեւ զքաղաք որ ի վերայ լերինն կայցէ: եւ ծով եւ ցամաք երկնէր, եւ առատանայր կրել ի սմա զզօրութիւն իւր» (Լաս. 53) և քաղաքին բարոյական անկումը պատճառ կը նկատէ այս պատուհասին որ անիկա իբր խրատ կ'ընդունի (Լաս. 57—58)։

(1) Արծն, Կարնոյ Դաշտին գլխաւոր քաղաքն էր: Անոր տեղը կայ հիմա Քարարզ գիւղը՝ իբր Գարա-Արզ (= Սեւ Արծն)։ Կարինի կամ Թէոդուպոլիսի՝ Էրզրում կոչումը Օրմանեան (Ազգ. 1242) կը նկատէ «Արծն Հոռոմոց» եւ ոչ «Երկիր Հոռոմոց»։

Սելճուկները այս հարուստ և վաճառաշահ քաղաքը, որ ամրացած չէր, մոխիրի կը վերածեն (Գելցեր 287) և բնակիչները կը կոտորեն (հմմտ. Ուռհ. 120—1, Սմբատ 66). Կեդրենոս (772) սպաննուածներու թիւը կը նշանակէ 140-000 և առանց նշանակելու գերի վարուածներուն թիւը, որ ոչ նուազ պէտք է ըլլայ (հմմտ. Լաստ. 57—58, Ուռհ. 120—121, Սմբատ 66). քանի որ «փառաւոր կանայք հանդերձ տղայօքն վարեցան ի գերութիւն յաշխարհն պարսից յանգիւտ ծառայութիւն» (Ուռհ. 121):

Արծնի կռիւը որ հայերը միս մինակ մղել պարտաւորուած էին, լքուած Բիւզանդացիներէ, «սկիզբն եղեւ Հայոց կորստեանն» (Ուռհ. 121, Սմբատ 66), «վասնզի այս է առաջին քաղաք որ առաւ սրով եւ գերութեամբ ի Հայոց»: Արդարեւ, ինչպէս կը հասկցուի ժամանակակից ականատես պատմիչին բառերէն, անպաշտպան Հայաստանի մէջ Սելճուկները ուրիշ շատ նախճիրներ գործած են, սակայն ինքը միայն իր աչքովը տեսածները գրած է. «իսկ զայլ գաւառացն ու զքաղաքաց զանցս աղետից», չէ գրած ժամանակի կարօտ ըլլալուն համար (Լաստ. 57)։ Ասիկա փաստ մըն է թէ աղէտը սահմանափակուած չէր երկու տեղի վրայ, այլ ուրիշ գաւառներ և քաղաքներ ալ Սելճուկ հրոսներու հարուածին ենթարկուած են և այս քաղաքները ո՛չ առաջինն էին և ո՛չ ալ վերջինները՝ Հայ քաղաքներուն, որոնք բարբարոս հրոսներու խըժդժութեանց առարկայ կ'ըլլային։

Սելճուկ ահեղ հոսանքը կ'ողողէր Հայաստանը և անարգել կ'առաջանար, հակառակ անոր որ բոլոր բերդերը և ամրոցները լաւ ամրացած և պահապան գունդերով պաշտպանուած էին և տոկացին բաւական Սելճուկներու յարձակումներուն, բայց Բիւզանդացիք տկարացան, և ընկրկեցան և հեռացան Հայաստանէն։

## ՀԱՅԱՍՏԱՆ ՏԱԳՆԱՊԻ ՄԷՋ

Մինչեւ Բիւզանդացիներու վերջնական պարտութիւնը և Հայաստանէն հեռացումը, երկիրը ապրեցաւ տագնապալի շրջան մը, վասնզի կրեց բարբարոսներու հարուածները և ինչպէս ըսուեցաւ Վասպուրականէն մինչեւ Բասեն, Եկեղեաց գաւառը, մինչեւ Սպեր և Տայք, ինչպէս նաեւ Տարօն, Հաշտեանք և Խորձեան, այսինքն մինչեւ Եփրատ, Սելճուկ բարբարոսներու ոտքերուն կոխան եղան, ինչպէս կը նկարագրէ ականատես պատմիչը՝ որ եթէ չափազանց քրիստոնեայ, աւելի համակիր է քրիստոնեայ Բիւզանդիոնի։

Իսկ Կեդրենոս՝ յոյն, Իպն Ալաթիր՝ արաբ և Լաստիվերտցի, Ուռհայեցի եւ Օրբելեան հայ պատմիչները իրար լրացնելով կը պատմեն թէ ինչպէս Բիւզանդացիք Արծնի անկումէն ետք, մեծ թիւով զօրք ղրկած են (Ուռհ. 121—2, եւ Լաստ. 58) Հայաստան, սակայն, Բիւզանդացի երկու կուսակալները՝ Անիի՝ Կամենաս եւ Վասպուրականի՝ Ահարոն, հայ զօրքերու հրամանատար Գրիգոր Մագիստրոս եւ Վրաց զօրքի զօրավար Լիպարիտ անհամաձայն էին։ Ուրեմն, «ոչինչ վճարեցաւ,... քանզի եւ ինքեանք իսկ չէին միաբան առ միմեանս» (Լաստ. 59) եւ Հայաստանի պաշտպան այս բանակը պարտուեցաւ նոյնիսկ



Բիւզանդացիներու դաւաճանութեամբ (Ուռհ. 126—7, Վարդան, 99—100, Ստեփանոս Օրբելեան Բ. 118—22, Չամ. Բ. 949—50):

Այսպէս Սելճուկ բանակին առջեւ Բիւզանդացիք ցիրուցան եղան։

Իպրահիմ Նիյալ Բասենի մէջ բիւզանդական բանակը ջախջախելէ ետք կրնար Հայաստանի մէջ տեղաւորուիլ, սակայն չըրաւ եւ ետ դարձաւ գերիներով եւ աւարով (Լաստ. 59)։

Ոմանք կը խորհին թէ Սելճուկները չկրցան հաստատուիլ Հայաստանի մէջ, շնորհիւ Վասիլի նախահոգութեամբ կառուցուած ամուր բերդերուն, բայց աւելի հաւանական է — ինչպէս կը կարծեն ուրիշներ — ասոր պատճառը Սելճուկի թոռներուն՝ Տուղրիլի և Չագըր Պէկի մղած պայքարն էր ընդդէմ իրենց յանդուգն և խիզախ խորթ եղբօրը՝ Իպրահիմ Նիյալի։

Արդարեւ այս պայքարը, որ ինը տարի տեւած է, այսինքն մինչեւ Իպրահիմ Նիյալի գերի իյնալը և խեղդուիլը (Loewe), պատճառ եղած է որ Սելճուկ բանակներու առաջխաղացութիւնը ատեն մը կասի, ինչ որ յաճախադէպ պարագայ մըն էր իրենց պատմութեան մէջ (EB)։ Ասիկա առիթ կու տայ Բիւզանդացիներուն վերակազմելու իրենց ուժերը և գոնէ Եփրատի արեւմուտքը կասեցնելու Սելճուկներու արշաւանքը և Արեւելեան Հռոմի քաղաքակրթութեան փլուզումը լման չորս դար յապաղեցնելու։

Իսկ Եփրատէն Արեւելք գտնուող Հայաստանի համար աղէտալի շրջանի մը սկիզբը եղած է Սելճուկներու արշաւանքները, վասնզի Բիւզանդիոն անկարող պաշտպանելու Հայաստանը, թողուցած է որ ամէն տարի շարունակուին ասպատակութիւնները և աւարառութիւնները, Սելճուկ կանոնաւոր և անկանոն բանակներէն և հրոսակային խումբերէն (Ուռհ. 131)

Այսպէս, արդարեւ Բասենի յաղթութենէն յետոյ, ինչպէս Լաստիվերտցի նկարագրած է՝ «յայնժամ որկ եւ այար՝ իբրեւ շունք գիշախանձք, կամ իբրեւ գայլք արաբացիք՝ ոչ յագեցան երբեք արեամբ քրիստոնէից, մինչեւ սպառեցին եւ բարձին ի միջոյ: Եւ եղեւ երկիրս ամենայն իբրեւ անդաստան ճասեալ ի հունձս, զորոյ զհետ հնձողացն բիրացան որ զորայն բառնացան եւ ապա զհասկաքաղն եւ զխոզանն միայն թողուցուն յարօտ երէոց» (Լաստ. 59):

Դժբախտութիւնը առաւելապէս հոն էր որ արշաւող հրոսները իրարու դէմ ալ կը մաքառէին մեր երկիրին մէջ։

Տուղրիլ առնակոխ կ'ընէր Հայաստանը զոր Իպրահիմ Նիյալ նուաճած էր։

Հայաստան առաւելապէս եւ սաստիկ կերպով աւերածութեան թատր ըլլալ սկսաւ այն օրէն՝ երբ Տուղրիլ պահանջեց Իպրահիմ Նիյալէ իրեն յանձնել Համատանը եւ Իրաք Աճէմին, եւ ան մերժեց։ Այդ ատենէն ծայր տուաւ իրենց միջեւ զէնքով պայքար մը, սկսեալ 1050էն, այսինքն այն թուականէն որ Տուղրիլ իր հեղինակութիւնը պարտադրած էր Պաղտատի Խալիֆային վրայ եւ մաղթանքասացութեան (Քուպէ) մէջ իր անունը կարդացուիլ սկսած էր։

Այսպէս, Հայաստան երկու հակառակորդներուն ալ հարուածներուն ենթարկուեցաւ, ամէն տարի տեւականօրէն, անոնց՝ իրարու դէմ մղած կռիւներուն ռազմադաշտ ծառայելով։

Տուղրիլի յառաջապահները կամ Իպրահիմ Նիյալի հրոսակները, որ ամէն

*տարի Հայաստան կ'արշաւէին,* 1053 *Յունուար 6ին, Ծնունդի տօնի օրը, յանկարծակիի բերին Կարսեցիները,* «հարստացեալք բազում ընչեղութեամբ ի ծովէ եւ ի ցամաքէ ամբարեալ», «քանզի առանց զգուշութեան էր քաղաքն»: *Սելջուկ զօրքը* «մտեալ ի ներքս, սուր ի վերայ առն եդեալ, անողորմ կոտորեցին զամենեսեան» և «քանզի օրէն է քաղաքաց ի Տէրունական տօնի բազում զարդարանօք վայելչանալ արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց ըստ ուժոյ եւ ըստ կարողութեան, ըստ նմանութեան զարմանաբեր ծաղկանոցաց», *կողոպուտը փառաւոր եղաւ։* «Մեծամեծարքն եւ պատուական վաճառականք չարաչար մահուամբ սպանեալք, երիտասարդք եւ ըմբշամարտք ի փողոցն սրակոտորք, պատուական այրք ծերոցն արիւնաշաղախ առ նոքօք անկեալք, եւ այսպիսօրէն գործովք սպառեցաւ քաղաքն յարանց»: *Միայն ազատեցան անոնք որոնք կրցան* «յամուրն ելանել որ ի վերայ քաղաքին կայ»: *Բարբարոսները* «զօրն ողջոյն ի սեղւոջն խիլ արկեալ բթեցին զսուրսն, եւ ապա հուր հարեալ այրեցին զքաղաքն եւ ինքեանք առեալ զգերի եւ զկապուտ քաղաքին գնացին յաշխարհն իւրեանց» (Լաստ. 61—2)։

## ՏՈՒՂՐԻԼ ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՄՏՆԷ

*Յաջորդ տարին,* 1054*ին, Տուղրիլ (Թրքական հնչումով Էրթողրուլ) առաջին անգամ ըլլալով անձամբ Հայաստան արշաւեց, հոն մտնելով Վասպուրականէն, այսինքն ճիշդ անկէ՝ ուրկէ մտեր էին Սելջուկ նախորդ հրոսակները իրենց ասպատակութեանց ատեն.* «Գազան մահաշունչ արիւնարբու եւ մարդախոշոշն» (Լաստ. 62) «անհագին բազմութեամբ որպէս զաւազ ծովու եւ խաղացեալ անթիւ զօրօք» (Ուռհ. 140) «փղօք եւ կառօք եւ երիվարօք, կանամբք եւ որդովք եւ բազում պատրաստութեամբ» (Լաստ. 62). *Կը յարձակին Բերկրիի վրայ եւ* «երկոտի կապանօք զիշխանսն վարէր ի գերութիւն առաջի իւր» (Ուռհ. 140) *Յետոյ* «զայլ քաղաքս սրով մաշեալ դառն մահուամբ... յարուցեալ որպէս զսեաւ հրացայտ եւ զայր հասանէր հանդերձ մահաբեր կարկտիւն». *և կը պաշարէր Արճէշ քաղաքը եւ անոր դէմ սաստիկ կը կռուէր ութ օր* (Ուռհ. 140), *առանց գրաւել յաջողելու։ Անկէ կ'անցնէր Մանազկերտ եւ զայն կը պաշարէր* (Լաստ. 62, Ուռհ. 140, Սմբատ 69), *միեւնոյն ատեն արձակելով* «ասպատակս յերեսին կողմանս աշխարհին, ի հիւսիս՝ մինչեւ յամուրն Ափխազայ եւ մինչեւ ի լեառն որ կոչի Պարխար եւ մինչեւ ցստորոտն Կովկասու եւ յարեւմուտս՝ մինչեւ յանտառն Ծանեթոյ, իսկ հարաւ՝ մինչեւ զՍիմն կոչեցեալ լեառն, եւ բովանդակ կալեալ զաշխարհս իբրեւ հնձողք ոհոյ ազարակի» (Լաստ. 62):

«Արդ զայնմ ժամու զչարիսն՝ զոր նոքա աշխարհիս հասուցին, ով կարէ ընդ գրով արկանել, կամ ո՛յր միտք բաւեն ի համար ածել, զի ամենայն աշխարհս լի էր դիակամբք, շէնք ու անշէնք, ճանապարհք եւ անապատ տեղիք. քարանձաւք եւ առապարք, անտառախիտ մայրիք եւ ափափայ վայրք եւ յամենայն շինանիստ տեղիս հուր հարեալ. ապականեցին զտունս եւ զեկեղեցիս, որոյ բոց հրատին առաւել բարձրանայր քան զհնոցն Բաբելոնի եւ այսպիսի ձեռնարկութեամբ ապականեցին զաշխարհս մեր, ո՛չ միանգամ,



այլ երիցս անգամ մի ի միոյ վերայ դարձ արարեալ՝ մինչեւ առհասարակ հասաւ երկիրս ի բնակչաց եւ բարձաւ կառաչ անասնոց: Զայս արարուած տեսեալ՝ սուգ առ եւ կործանեցաւ երկիր, վասնզի կործանեցան բնակիչք նորա, բարձաւ ուրախութիւն յերեսաց ամենայն երկրի, յամենայն տեղիս աղբք եւ հառաչանք. ամենայն ուրեք կոծ եւ լալականաց հանդէսք» *եւ այսպէս կը շարունակէ նկարագրել համատարած թշուառութիւնը* (Լաստ. 63)։ *Յետոյ կը խոստանայ* «զգլխաւոր տեղեաց մի ըստ միոջէ զանհնարին չարիսն» *գրել։ Կ'ըսէ թէ* «զԽորձեան եւ զՀանձէքն յորժամ յիշեմ եւ որ ինչ ի նոսա գործեցաւ, հատանիմ արտասուօք. փղձկի սիրտ իմ, եւ յիմարին միտք իմ եւ զդողի հարկանի ձեռքս եւ ոչ կարիմ զոն տալիս յառաջ խաղացուցանել: Բազում եւ անհամար հոգիք ի վերագոյն գաւառացն, վասն տեղեացն ամրութեան՝ անդր ժողովեալ էին. յորոց վերայ հասեալ անօրինացն արագապէս որպէս թռչունք, անողորմաբար որպէս գազանք, սրմտութեամբ եռացեալք որպէս վրէժխնդիրք, եւ խիլ արկեալ ի քարանձաւս եւ յանտառախիտս մայրիս՝ անխնայաբար կոտորեցին զորս եւ գտին...» (Լաստ. 64)։ *Եւ կը կցէ իր սովորական ողբագին ոճով ջարդի եւ աւերածութեան դառն նկարագրական մը, որ զանց կ'առնեմ։* «Իսկ զոր ի Դերջան եւ յԵկեղեաց եւ ի միջասահմանս նոցա եղեւ կոտորումն, զայն եւ ընդ գրով արկանել չէ ոք բաւական. ... իսկ որ ի Տայոց մտին, առեալ զերկիրն եւ հասեալք մինչեւ ի գետն մեծ՝ որ կոչի Ծորոխ (= Ճորոխ). եւ զկնի գետոյն դարձեալ իջին յաշխարհն Խաղտեաց, եւ առեալ զառ եւ զգերի գաւառին, դարձան եւ եկեալ մինչեւ ի բերդաքաղաքն... Բաբերդ. հանդիպին եւ անդ գունդ մի ի զօրացն Հոռոմոց, որ կոչին Փռանկք, որք յանգէտս միմեանց ի դիմի հարեալք նահատակեցան, եւ... զօրացան գունդն Հոռոմոց. եւ յաղթեալ թշնամեացն՝ զգլուխ զօրուն սպանին եւ զբազումս ընդ նմա, եւ զայլսն ի փախուստ դարձուցեալ. զառ եւ զգերի զամենայն թափեցին, բայց փախստէիցն զհետ ոչ իշխեցին յերկարել, քանզի երկեան թէ զուցէ ծանր զօրու հանդիպեսցին: Իսկ գերիքն որ ազատեցան.... չոգան ի տունս իւրեանց: Իսկ որ ի վերայ Հայոց գնացին, զոր եւ գտին ի սուր եւ ի գերութիւն ծախեցին եւ լցեալ աւարաւ դարձան անդրէն, եւ եկեալ ի սահմանս Վանանդայ, որոց ի դիմի հարեալ քաջազուն իշխանին Գագկայ որդւոյ Աբասայ, եւ բազում նախճիրս ի տեղւոջն գործեալ: Որոց ի վերայ հասեալ զօրք անօրինաց ի մէջ փակեցին եւ քանզի յերկարել պատերազմին եւ յաճախ կոտորուածէն ի զօրութենէ պակասեալք էին ինքեանք եւ երիվարք իւրեանց. վասն որոյ ոչ կարացեալ զդատնէս թշնամեացն պատառել եւ ելանել, յորոց սուր ի վերայ եդեալ կոտորեցին յազատացն արս երեսուն» (Լաստ. 65—66):

*Ուրիշ թեւ մը ասպատակներուն՝ Մանազկերտէն բաժնուելով կ'իջնէ Տուարածոյտափ եւ անկէ Բասենի ընդարձակ դաշտը Աւնիկ կոչուած անառիկ ամրոցին ճամբով, և կու գայ Դուգիւղը, ուրկէ կ'ուղղուի դէպի Կարին, որուն վրայ յարձակելու չին համարձակիր* (Լաստ. 67)։

*Մանազկերտցիք, որոնք հրոսներու հեռանալը տեսած էին՝ անկասկած քաղաքէն դուրս ելան, հունձքը քաղեցին եւ պաշար պատրաստեցին, մինչեւ որ Սուլթանը աստ անդ արշաւելէ յետոյ դարձաւ Մանազկերտ եւ պաշարեց քա-*

զաքը, որ դիւցազնական դիմադրութիւն մը ցոյց տուաւ (Լաստ. 67–71, Ուռհ. 141–45). այնպէս որ Տուղրիլ յուսահատ՝ թողուց Մանազկերտի պաշարումը, եւ գնաց Արծկէ, Վանի ծովին եզերքը: Քաղաքացիք կ'ապաստանին քաղաքին մօտ գտնուած ամուր եւ անառիկ բերդը, եւ «անհոգ կային» «ապաստան եղեալ ի ծովն եւ յամրոցն», բայց «արիւնարբու գազանն ծանծաղ տեղի գտեալ ի ծովուն, երբեմն առաջնորդութեամբ ուրուք, եւ երբեմն իւրեանց հնարագիտութեամբն, մտին ի քաղաքն եւ առեալ զգերին եւ զկապուտ քաղաքին, ելին ի տեղւոջէն» (Լաստ. 71):

Անկէ յետոյ կը հեռանայ Սուլթանը և կը դառնայ իր երկիրը (Լաստ. 71):

Ինչպէս կը տեսնուի այս նկարագրութենէն՝ բովանդակ Հայաստան ասպատակ կ'ըլլայ Տուղրիլ Բէկին որ հաւանօրէն իրեն հետ ունէր Գութուլմիշը, Լաստիվերտցիի (69) «Որսիլմիշ... զօրուն իշխանն» կոչածը): Սելջուկները Վասպուրականէն մտնելով Հայաստան մինչեւ Տայք արեւելքէն արեւմուտք բոլոր երկիրը կը մատնէ սրածութեան և տեսակ տեսակ խժդժութիւններու: Սելջուկները միայն Բաբերդի մօտ Բիւզանդացի զօրքէն և Կարսի Գագիկ Աբասեան թագաւորին կողմէ է որ ընդդիմութեան կը հանդիպէին:

Լաստիվերտցի, որ ժամանակակից էր և գրեթէ ականատես այս համատարած աւերածութեան, ողբագին տողերով նկարագրած է Հայաստանի «անկանգնելի կործանումը»: Ան կ'ըսէ թէ «աշխարհս ամենայն յանկարծակի լի եղեւ խռովութեամբ եւ ոչ ուրեք գտանէր տեղի ապաւինի, զի վասն անհնարին չարեացն՝ բարձաւ յոյս կենաց յամենայն մարդկանէ» (Լաստ. 66), վասնզի դժբախտաբար Բիւզանդական կայսրութիւնը բոլորովին քայքայուած վիճակ մը ունէր:

Կոստանդին Մոնոմախոսէն († 1054 Նոյեմ. 30) ետք Բիւզանդական գահը կը բարձրանար վերջին Ծիրանածինը՝ Թէոդորա (1054—1056), որուն Տուղրիլ սպառնական պատգամներ կը ղրկէ և պահանջներ կը ներկայացնէ, մինչ անարեկ կայսրուհին զայն ողոքել կը ջանայ նուէրներով (Լաստ. 73). և ինչպէս կը հասկցուի Տուղրիլ ժամանակ մը անկարող կ'ըլլայ իր սպառնալիքները գործադրելու, վասնզի Պաղտատի կողմերը զբաղած էր (Լաստ. 78—9): Բայց իր զբաղած ըլլալը պատճառ չեղաւ որ դադրին Հայաստանի մէջ յելուզակութիւնները և յարձակումները: Երկրին մէջ գտնուող կամ դրացի Թուրք իշխանութիւնները անդադար նեղեցին Հայերը: Լաստիվերտցի, ժամանակակից պատմագիրը իրաւամբ կ'ըսէ (78–79) թէ «բայց որ մերս էին սահմանակիցք եւ դրացիք, խանձեալ. ոչ դադարեցին զամառն եւ զձմեռն յապականելոյ զաշխարհս Հայոց, քանզի դիպօք որոնէին, եւ ուր լսէին զմարդաբնակ տեղիս, գիշերագնաց եղեալ՝ յանկարծուստ ի վերայ անկանէին, եւ նորանոր հնարուածովք անողորմաբար զամենեսեան առհասարակ սատակէին, եւ անհոգացեալ յերկիւղից՝ բազում աւուրս առնէին ի տեղւոջն, մինչեւ խիլ արկեալ սոցին. երբեմն ուրուք կայր ինչ ի քարոսեան՝ զամէնն հանեալ. եւ բնաբարձ աւերմամբ քանդեալ զվայրն, առեալ զառ եւ զգերի՝ յաշխարհն իւրեանց դառնային»:

Այնպէս որ երբեք չդադրեցան Սելջուկեան արշաւանքները Հայաստանի



մէջ, և գրեթէ ամէն գարնան յարձակումներ կը գործադրուէին Տուղրիլի հրամանով կամ անոր հովանաւորութեան տակ, աւելի ստորին 18 Դեկտ. 1055էն յետոյ, երբ Տուղրիլ Աբբասեան ամիրապետութեան ալ տէր կը դառնար, Էմիր-էլ-Ումերայի (1) պաշտօնը ստանձնելով:

Այսպէս 1054ին, Դուինի և Գանձակի ամիրան Աբուսուար, պաշտպանելը Սելջուկներու, որ Հայոց Աշոտ թագաւորին ալ փեսան էր, Սելջուկ զօրքերու օգնութեամբ (Լաստ. 73) Հայաստանը աւերելու կը ձեռնարկէ: Հայերը «ի քաղաքն Անի ժողովեցան, եւ ոչ ժամանեալ ամենեցուն ի ներքս մտանել, քանզի երեկոյացաւ ժամն եւ ածին զդրունս քաղաքին: Իսկ զօրքն Պարսից (= Սելջուկ) գիշերագնաց եղեալ, կալան զդուռն քաղաքին, եւ սուր ի վերայ եդեալ՝ անհնարին կոտորածս առնէին, որում ոչ ոք զոյր օգնական զօրաց. առեալ զառ եւ զգերի, գնացին յաշխարհն իւրեանց» (Լաստ. 73):

Միեւնոյն ժամանակ Տարօնի կողմերը, գաւառին իշխան «Թէոդորոս որդի Ահարոնի, զոր Աւանն կոչէին ըստ իւրեանց լեզուին»... (Լաստ. 73), կը հիւրընկալէ Թուրքաստանէն եկած գունդ մը՝ որ իրեն հնազանդած ու հաւատարմութիւն յայտնած էր, արշաւելով Խլաթ (2) և «առեալ աւար բազում» Տարօն կը տանի: Սելջուկները Պարսկաստանէն և Թուրքաստանէն զօրք հաւաքելով կու գան Տարօնի վրայ և Թէոդորոսէն կը պահանջեն իրեն ծառայութեան տակ մտնել, Թուրքերը իբրեւ ապստամբ յանձնել, եթէ ոչ կ'սպառնան ամբողջ իր երկիրը գերի վարել: Թէոդորոս կը մերժէ, և այս պատճառով 2—3 անգամ կը պատերազմի Սելջուկներուն դէմ, և վիրաւորուելով կը մեռնի (Լաստ. 73—74):

1056 Յունուար 6ին, Ծնունդի օրը, «գիշերագնաց եղեալ զօրք անօրինաց, եւ եկեալ ի քաղաքագիւղն Հարքայ որ կոչի Մանկանցոց, եւ կալեալ զնոսա անհաւատքն... սուր ի վերայ եդեալ կոտորեցին զամենեսեան, եւ որ շուրջ զնովաւ գիւղք եւ ագարակք էին, եւ առեալ զգերի եւ զաւար, չոգան ի գետն (=գետը) Արածանի, քանզի ընդ այն իսկ անցանէին»: Հոն սառած գետը անցնելու համար գերիները և աւարները միւս կողմ անցուցած ատեն, սառը կը կոտրի և ամէնքն ալ գետամոյն կ'ըլլան (Լաստ. 74):

ՄԱՅՐԱԳՈՄԻ ՈՂԲԸ

Մայրագոմի աղէտին օրը (1056 Յունուար 6), Հայաստանի մէկ ուրիշ

(1) Իրմէ առաջ Պաղտատի մէջ այս պաշտօնը կը վարէր Մելիք էր-Ռահիմ, որուն ենթակայ էր Իսֆահսալար Պասասիրի անունով Թուրք մը, որ իրական իշխողն էր Պաղտատի մէջ: Ասոնք Շիի աղանդին կը պատկանէին: Խալիֆան Գայիմ (1031–1075), որ սեղմուած էր զոյգ ձեռքով այս անտանելի տիրապետութեան՝ ապաւինեցաւ Սիւննի Տուղրիլ Պէկի պաշտպանութեան: Ան, 1055ին մտաւ Պաղտատ եւ իրեն ստանձնեց Էմիր-էլ-Ումերայի պաշտօնը, որ քաղաքային գերագոյն պաշտօնն էր զոր կրնար ստանալ մահկանացու մը՝ խալիֆայի պետութեան մէջ: Տուղրիլ այս կերպով նուաճեց ամբողջ քաղաքական պետ եւ ասկէ ցեղախումբի մը պետ ըլլալէ դադրելով՝ եղաւ աշխարհակալութեան մը հիմնադիրը:

(2) Խլաթ Իսլամներու տիրապետութեան տակ էր եւ Թէոդորոս յայտնի է թէ Բիւզանդական պաշտօնատարներէն է որ այս քաջ զօրքը կը գործածէ:

վայրին մէջ ալ կը պատահէր նման դէպք մը, ապահովաբար ուրիշ Սելճուկ հրոսակներու գունդի մը կողմէն։

Լաստիվերտցի կը նկարագրէ այդ հարուածն ալ, պատմելով թէ ինչպէս յարձակեցան նախ «ի գաւառին Բասենոյ» աւանի մը վրայ «ամերձ առ ստորոտով լերինն որ կոչի Ծիրանիս, եւ անուն նորա Օկոմի (1) մարդաշատ եւ բնչաւէտ (2), յորոյ վերայ գիշերագնաց եղեալ անօրինացն յաւուր մեծի Աստուածայայտնութեան տօնին եւ քանզի ի սաստիկ սառնամանեացն դաշտի՝ բռնացեալ էին ձեռք եւ ոտք մարդադէմ գազանացն, որք յորժամ հասին մօտ ի շէնն, գտին խոտ բազում ի դարմանս անասնոց դիզեալ, որում հուր հարեալ, եւ ի հրատին բորբոքմանէ առհասարակ դաշտն ամենայն իբրեւ միջօրէիւ լուսաւորեցաւ, առ որ կացեալ ջեռան ինքեանք եւ երիվարք իւրեանց: Եւ ապա յարեալ զաղեղունսն եւ մերկացուցեալ զզէնսն՝ յարձակեցան ի վերայ շինին, հեծուցեալք իբրեւ յամարայնի, եւ սուր ի վերայ եդեալ կոտորեցին առհասարակ զամենեսեան ոգիս իբրեւ երեսուն հազար, ոչ մնալով ի բնակչաց տեղւոյն եւ ոչ մի. բայց թէ ի ճանապարհի ուրեք ոք կայր: Եւ արարեալ ի տեղւոջն աւուրս երիս, եւ բարձեալ եզանց եւ իշոց եւ ձիոց, զամբարս ցորենոյ եւ զմթերս բնչից, եւ սակաւ ինչ ի պիտանեաց, զորս առեալ գերի, գնացին զաշխարհն իւրեանց: Այլ զբազմադէմ չարիսն զորս նոքա անդ գործեցին, ընդ գրով ո՞վ կարիցէ արկանել, եւ այսպիսի ձեռնարկութեամբ ամայացաւ ի բնակչացն երկիրս ամենայն, ոչ մնալով կենդանի՝ բայց եթէ յամրոց ուրեք»: (Լաստ. 79)

Պատմիչէն մէջ բերուած հատուածները ցոյց կու տան որ ասոնք դէպքեր են զորս ինք նկարագրած է, եթէ ոչ պատկերը համառօտած է և երկիրի միւս մասերուն մէջ ալ գրեթէ ընդհանուր կերպով կը կատարուէին այնպիսի յարձակումներ. կողոպուտներ, ջարդեր, աւերածութիւններ և գերեվարութիւններ։

Եւ ասոնք կը կատարուէին յաջորդաբար ամէն տարի, մանաւանդ 1056էն յետոյ, երբ բոլորովին անպաշտպան կը մնար Հայաստան, Բիւզանդիոնի մէջ պատահած գահակալական վէճերու հետեւանօք, վասնզի Թէոդորայի մահէն վերջ, գահ կը բարձրանայ ծերունի Միքայէլ Զ. Ստրատիոտիկոս (30 Օգոստ. 1256—1057 Օգոստ. 31) բայց ասոր դէմ կ՚ելլէր Կոմնենոս և կը տիրանար գահին, շատ քիչ յետոյ հրաժարելու համար այս փառքէն՝ կրօնաւոր դառնալով. իր տեղը գահ կը բարձրանար Իսահակ Կոմնենոսը (8 Յունիս 1057—1059), որ սակաւակեաց եղաւ, իշխելով միայն երեք տարի։

Գահակալութեան այս վերիվայրումները, և Միքայէլի ու Կոմնենոսի իրարու դէմ կռիւը «յորժամ Պարսիկք գիտացին... համարձակապէս եկին ի վերայ մեր անդադար երթեւեկս առնելով. տարաւ յանգ զաշխարհաւեր կործանումն... Նոքա իբրեւ զգայլս գիշախանձս՝ որք հանդիպին հօտի՝ որոյ ոչ

(1) Ուկամ կամ Ոկոմի ըստ Չամչեանի (Բ. 960): Օկոմի ըստ Օրմանեանի արդի Հասանքալէն է (Ազգ. 1260):

(2) Ըստ Չամչեանի (Բ. 960) աւելի քան 30.000 բնակիչ ունէր քաղաքը, որոնցմէ շատերը հարուստ:



զուգէ ծովիւ, զի ոչ թէ իւրեանց կերովն միայն շատանան կոտորել, այլ զամենայն ջանան: Նոյնպէս եւ ի Պարսից եկեալ զօրքն՝ ոչ թէ աւարաւ յագենային, այլ անյագ քաղց մերոյ սատակմանն ունէին, զի զոր աչօք տեսանէին, անհնար էր նմա ի ձեռաց նոցա պրծանիլ, մեծ բարեգործութիւն համարելով զայն» (Լաստ 82):

## ԱՏ․Վ ԵՐՋ ԱՌԳԱՑՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Այսպէս, երկիրը կը մատնուէր կատարեալ քաոսի մը՝ ուր ով որ չարիք մը կրնար հասցնել, անվարան կը գործադրէր։

Այս անիշխանութեան շրջանին նոյնիսկ քրիստոնեայ իշխան մը, Իւանէ Ուապելեան, որդի Լիպարիտի, որ Բիւզանդիոնի կողմէ Հաշտենից և Արշամունեաց գաւառին իշխան կարգուած էր, առիթէն օգտուիլ ուզեց և ընդարձակեց իր իշխանութիւնը ի վնաս Բիւզանդիոնի և չվարանեցաւ նոյնիսկ Սելջուկները 1058ին առաջնորդելու դէպի Եփրատ՝ Մելիտինէի ուղղութեամբ (Լաստ. 82-84, Ուռհ. 153, Սամուէլ Անեցի 112 հմմտ. նաև «Պատմ. Հայաստանի Սահմաններ 254—5)։ Այս դէպքը բարբարոսներուն աչքը աւելի բացաւ և անոնք ըմբռնեցին տիրող անիշխանութիւնը և Բիւզանդացիներու Հայաստանը պաշտպանելու անկարողութիւնը, և սկսան 1057ին աւելի սանձարձակ և համարձակ գործել։ Հրոսներու ահարկու խումբ մը իջաւ Մանանաղի գաւառը, և հոն երկուքի բաժնուելով՝ մէկ թեւը գնաց Եկեղեաց գաւառը և անոր կեդրոնը՝ Երզնկան յանկարծակիի բերելով «լցեալ եւ յագեցեալ աւարաւն, հուր հարեալ քաղաքին, առեալ զգերի եւ զկապուտ գաւառին, դարձան անդրէն» (Լաստ. 84). Այս թեւը կ'առաջանայ նաև դէպի Կարնոյ գաւառին Բլուր գիւղը, որ, թէև պարսպապատ՝ բարբարոսներու հեղեղին առջեւ տեղի կու տայ, և բնակչութիւնը և հոն ապաստան գտած յայսկոյս Եփրատի գիւղերու և Արծին աւանի բնակիչները անօրինակ կոտորածի մը կ'ենթարկուին (Լաստ. 85)։ Ջարդուողներու թիւը կը նշանակուի 7000 և 60 կրօնաւորներ (Լաստ. 87)։

Մանանաղիէն բաժնուող հրոսներու միւս թեւը ևս անգործ չի մնար և կը վազէ Հանձիթ և Խորձեան և կը հարուածէ Հարաւ (1) կամ Հատաւ քաղաքը, և Բաղէշը (Լաստ. 87—88

Յաջորդ տարին (1058) անհամար զօրք Դինար (1) անուն զօրագլուխի մը հրամանին տակ մտաւ Հայաստան և ինչպէս նախորդին՝ այս անգամ ալ երկուքի բաժնուեցան Կամախէն. մէկ մասը գնաց մինչեւ Մելիտինէ և սրակոտոր ըրաւ բնակիչները և միւսը՝ մինչեւ Կողոնիա՝ աւարի առնելով երկիրը (Լաստ. 91—92, և Ուռհ. 153—5)։

Առաջին անգամն էր որ կեդր. Ասիոյ հրոսները կ'առաջանային մինչեւ Եփրատ, զայն կ'անցնէին և Հանձիթի մէջ կը ձմեռէին (Ուռհ. 155 և Սմբատ 72)՝ անլուր չարիքներ գործելով իրենց 5—6 ամսուան բնակութեան միջոցին, ինչպէս մանրամասն կը նկարագրէ Լաստիվերտցի (89 - 95)։

Ամառը հրոսները կը մտնեն Տարօն և կ'առաջանան Սասուն (Լաստ. 94, և

(1) Չամ. Բ. 964, Ուռհ. 153 եւ 557:

(2) Լաստիվերցի չունի այս անունը: Ուռհայեցի (153) եւ Սմբատ (71) եւ Սամուէլ 111), կու տան այս անունը Դինար կամ Դինիեար ձեւերով: (Հմմտ. Միքայէլ Ասորի 395):

Ուռհ. 155—6)։ *ուր Թոռնիկ իշխան որդի Մուշեղի, Սասունցի լեռնականներու գլուխը անցած կը կռուէր այդ ասպատակներն* (Ուռհ. 155—6) *և կ'ազատէ Մելիտինէէն վերցուած գերիները* (Լաստ. 94, Ուռհ. 155—6, Սմբատ 72, Սամուէլ 111, Միքայէլ Ասորի 395)։

*Սելջուկները թէև նեղուած էին Հայաստանի սառնաշունչ կլիմայէն և Սասնոյ մէջ կռուրած մը կրած, սակայն անժխտելի է որ անոնց այս անզամուան յարձակումովը՝ Հայաստանը արևելքէն արևմուտք ճեղքուած և բովանդակ երկիրը ոտնակոխ եղած էր։ Հայաստանի մէջ չէր մնացած քաղաք և գաւառ՝ որ անոնց բռնութեան զոհ գացած չըլլար։ Սելջուկ ասպատակներ անդադար կ'արշաւէին՝ և կողոպտելով ու գերելով ետ կը դառնային։ Այս պատճառով՝ Հայաստան կը մատնուէր սոսկալի սովի* (Ուռհ. 158)։

*Հակառակ անոր որ Բիւզանդական Կայսրութեան մէջ ներքին խռովութիւնները դադրած էին և 1059ին գահ բարձրացած էր Կոստանդին ԺԱ. Դուկաս* (*Տուկիծ* 1059—1067) *և այլևս առանց հակառակորդի կը տիրէր երկրին, սակայն Սելջուկները օրէ օր աւելի յանդուգն և աւելի համարձակ կը դառնային, և ինչպէս ըսինք, կ'անցնէին Եփրատը և մինչև Ալիս* (= *Գըզըլ Ըրմաք*) *այսինքն Սեբաստիոյ մօտերը կ'առաջանային* (Ուռհ. 159—61) *վասնզի Տուղրիլ Պէկ,* 1059*ին ազատած էր իր երկու հակառակորդներէն, Իպրահիմ Նիյալէն, որ գիրի բռնուելով խեղդամահ եղած էր աղեղնալարով, մինչ Պասասիրի ինկած էր պատերազմի մէջ կամ գլխատուած։*

*Այսպէս, պատմիչին բառերով՝* «յանցաւորութենէն, ի սուտ պահապանացն, ի տկար եւ ի բուլամորթ վատ ազգին յունաց, վասն զի մի առ մի քակեալ հանին զզօրականսն ի տանէն Հայոց զորս հանին յարկաց եւ ի գաւառաց, եւ բարձեալ խափանեցին զարբոռ թագաւորութեանն Հայոց. քակեցին զցանկ պահպանութեան զօրացն եւ զօրավարաց եւ ազգն Հոռոմոց իւրեանց անուն քաջութեան զանդարձ փախչելն արարին պարծանս, նմանեցան վատ հովուացն, զի յորժամ զգայլն տեսանէ՝ փախչի։ Սակայն Հոռոմք այն ջանս ջանացան որ լուր զպարիսպ ամրութեան տանս Հայոց քակեալ կործանեցին եւ զՊարսիկս ի վերայ դարձեալ յարձակեցին արով եւ զամենայն յաղթութիւնս իւրեանց համարեցին, եւ ինքեանք անպատշաճելի երեսօք կուրս զօրավարօք եւ ներքինի զօրօք զՀայս պահել ջանային, մինչ եւ Պարսիկք անտէր տեսին զամենայն Արեւելս եւ յանձն մեծաւ զօրութեամբ զօրացան այլազգիքն, որ ի մէջ սակաւ ժամուց հասին մինչեւ ի դուռն Կոստանդինուպոլսի, եւ առին զամենայն աշխարհն Հոռոմոց, զքաղաքս ծովեզերեայ եւ զկղզիս նոցա եւ արարին զազգն յունաց որպէս զբանտարկեալս ի ներս ի Կոստանդինուպոլիս» (Ուռհ. 162—3)։

*Արդարև Բիւզանդական կայսրութեան տապալման այլևս կրնար վճռուած համարուիլ։ Կայսրութիւնը վատնգուած էր։*

*Հեռապատկերը ողբալի էր։ Հայաստան միանգամ ընդ միշտ Բիւզանդիոնի համար կորսուած էր։*



## ՍԵԼՋՈՒԿ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ

## (1064—1220)

*Հայերը ընկճուած էին արդէն, իսկ Բիւզանդացիք բոլորովին վանուած էին Եփրատէն դէպի Արևմուտք։ Սելջուկները տէրն էին երկրին։ Այլևս Հայերը ոչ մէկ յոյս ունէին քրիստոնեայ կայսրութենէն, որ չափազանց տկարացած էր։*

*Հայաստանի հիւսիսային մասին՝ Կարսի մէջ տակաւին իր գոյութիւնը կը քաշքշէր Գագիկ Աբասեան թագաւորը՝ որ հայրենի հողին վրայ իշխող ազգային հարստութեան վերջին ներկայացուցիչն էր։ Իսկ աւելի հիւսիս կ'իշխէին Գուգարաց, Ափխազաց, Վրաց և Աղուանից թագաւորները, որոնք Բագրատունի էին ծագումով, բայց իրենց երկիրներուն բնիկ դարձած։ Անին կը մնար իշխանութեանը տակ յոյն կուսակալին, որ բոլորովին կորսնցուցած էր իր հեղինակութիւնը և ատելի էր Հայոց, վասնզի Կոստանդին Դուկաս տակաւին Հայերը կրօնապէս իրենց միացնելու անմիտ քաղաքականութիւնը կը հետապնդէր, և Հայոց Կաթողիկոսութիւնը ջնջելու փորձեր կը կատարէր, հակառակ անոր որ օրէ օր աւելի սպառնալից կը դառնային Սելջուկները՝ որ Պաղտատի խալիֆաներուն անունովը կ'ուզէին ամբողջ Արևելքի մէջ իրենց տիրապետութիւնը հաստատել։*

*Կոստանդին Ժ. Դուկաս,* (1059—1067), *որ տնտեսական գործերու մէջ հանճար մըն էր եւ երկրորդական պաշտօններու մէջ փայլուն յաջողութիւններ ունեցած էր, ժամանակին յարմար մարդը չէր։ Իրմով կ'սկսի պաշտօնակատարներու, հռետորներու եւ ուսումնականներու իշխանութեան ամենադժբախտ շրջանը, վասնզի վերատին փորձ կ'ըլլար Պղատոնի երեւակայած փիլիսոփաներու գաղափարական իշխանութիւնը իրագործել, ինչ որ Մարկոս Աւրելիոսի ատեն՝ անգամ մը փորձուած և այնքան կործանարար հետևանքներ ունեցած էր* (*հմմտ.* Գելցեր 291—2)։

*Կոստանդին չափազանց շատցուց Ծերակոյտին ազնուապետականներու թիւը, անոնց շարքին ընդունելով բազմաթիւ ժողովրդական տարրեր՝ արհեստաւորներէն և բարբարոսներէն։*

*Հին Ծերակուտականները, որոնց ազնուականութիւնը խիստ կասկածելի էր և քիչ առաջ նուիրագործուած, կատաղութեամբ կը դիտէին, հակառակ անոր՝ որ ժողովրդական Ծերակուտականներու կուսակցութիւնը բոլորովին իր ձեռքն առաւ պետական հարկերը։ Պաշտօնակատարներն էին որ կը կառավարէին կայսրութիւնը և անոնց մէջ ամէնէն ազդեցիկ տարրը ելեւմտական պաշտօնեաներն էին։ Զինուորականներու ազդեցութիւնը կը նուազէր և զինուորական ծախքերը կը կրճատուէին և զօրքերու թիւը կը պակսէր* (Գելցեր 293)։

*Ասիկա աղէտալի քաղաքականութիւն մըն էր, քանի որ Արևելքի մէջ հակայ ում մը կ'առեղծուէր։ Արդարև՝ Կոստանդին Ժ. Դուկասի իշխանու-*

թեան ժամանակը՝ ձախողուածներու շրջան մը եղաւ։ Հայաստան անդարձ կորսուեցաւ, Միջագետքը և Սուրիան վտանգուեցան (Միք. Ասորի 396 և Հեթում 27), և Կոստանդին Դուկաս ոչ մէկ ջանք ըրաւ այդ երկիրները ազատելու համար բարբարոսներու տիրակալութենէն։

Մանաւորապէս Հայաստանի վիճակը բոլորովին դժնդակ եղաւ, վասնզի բոլորովին անպաշտպան, պարբերական յարձակումներու և կողոպուտի և կոտորածի առարկայ կ'ըլլար բարբարոսներէն, որոնք հոն չէին ամրանար ու տեղաւորուիր, սակայն գրեթէ միշտ գարնան կու գային։

Այսպէս 1061ի գարնան (Արեգ ամսուան մէջ) «բարկութիւն շարժեցաւ ի դրանէն Պարսից եւ գային արք երեք մեծք եւ երեւելիք ի դիւանէն անտի Տուղրիլ Սուլտանին, որք են այսոքիկ, Սլար-Խորասան, եւ Մեծն եւ Խութլվ» (Ուռհ. 165)։

Առնցմէ առաջինը՝ Սլար-Խորասան (= Սալար = զօրավար Խորասանի), ուրիշ մէկը չէր եթէ ոչ նոյնինքն Տուղրիլի եղբօրորդին, ա՛յն որ նախապէս կը կոչուէր Իսրայէլ և որ յետոյ իսլամութիւնը ընդգրկելով առաւ Մուհամմէտ անունը. և երբ ան 1064ին յաջորդեց Տուղրիլի, առաւ Ալփասլան (= Քաջ Առիւծ կամ մեծ առիւծ) անունը իբրև պատուանուն և անով ճանչցուեցաւ պատմութեան մէջ։ Օտար աղբիւրներ կը հաստատեն որ Տուղրիլի իշխանութեան ատեն, իր Չագըր Պէկ եղբօրը այս որդին Խորասանի կուսակալ էր և անոր մահէն երկու տարի առաջ արդէն կարեւոր պաշտօններ գրաւած էր, գրեթէ իշխանակցութեան (co-regency) համազօր (Lœwe)։

ՍԵԼՋՈՒԿՆԵՐԸ ԿԸ ՏԻՐԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ

Հետեւաբար պատմական Ալփասլանը նախ քան Տուղրիլի յաջորդելը, 1061ին, մտաւ Հայաստան՝ «Բազում զօրօք, ի գաւառն որ կոչի Պաղին եւ սրով սրտմտութեամբ հեղաւ բազում արիւն ի հաւատացելոցն եւ գերեցաւ ամենայն գաւառն Պաղնայ» (Ուռհ. 166)։ Յետոյ անցաւ Թլխմոյ Արկնոյ (Արղն) գաւառը և «առանց պատրաստութեան գտանէր զամենայն գաւառն։ Եւ եղեւ յորժամ ետեսին զամենայն երկիրն յամրութիւն, եւ կային ամենայն գաւառն ի մեծ ուրախութիւն։ Իսկ նոքա որպէս գազանաբարոյ գայլք, կամ իբրեւ կատաղի շունք սրով անողորմ յարձակեցան ի կոտորել զամենայն գաւառն առ հասարակ... եւ յԱրեգի չորս յաւուր շաբաթու (= 1061 Մարտ 12) յութերորդ ժամու լցաւ լայնատարած դաշտն արեամբ եւ գերութեամբ եւ անողորմ կոտորածով...։ Բազում եւ անթիւ այն էին որ կրակով այրեցան, եւ յամենայն գաւառն ոչ ոք էր որ կարաց զերծանել յերեսաց սրոյն...» (Ուռհ. 166, հմմտ. Սմբատ 75—6, և Սամուէլ Անեցի, 112)։

Ամիթի ամիրան, Ամիր Սախտ, որդին Նըրտոլի (որ քիչ առաջ սովի մը պահուն ցոյց տուած էր իր բարութիւնը), «գրեաց առ Սլար-Խորասան եւ հաստատեաց ընդ նմա սէր եւ զամենայն գերութիւն հրամայեաց ի գաւառն իւր ծախել. վասնզի էր բարի եւ ողորմած ի վերայ քրիստոնէից ազգին եւ եհան հրովարտակ ընդ ամենայն երկիրն զի գնեսցեն զամենայն գերութիւնն, եւ արարին այնպէս» (Ուռհ. 167—8)։ Այս գերիներէն մէկ մասը Ամիթ բերուած ատեն կը նահատակուին «ի դուռն քաղաքին» (Ուռհ. 168) և դեռ մեծ



մաս մըն ալ տարուած պէտք է ըլլայ Պարսից աշխարհը, ինչպէս կը նկարագրէ Ուռհայեցի, ըսելով թէ՝ «տանէին զնոսա երամ երամ որպէս զբազմութիւն թռչնոց» (Ուռհ. 169)։

Երբ այս արշաւանքին լուրը հասաւ Կոստանդին Դուկաս կայսեր հաւանօրէն այս բարբարոսները Եփրատի վրայ դիմակալելու համար՝ «զօրաժողով արարեալ» «կացուցանէր զօրավար զմեծ իշխանն որ կոչէր Ֆրանգապօլ (1) եւ առաքեաց զնա բազում զօրօք ի գաւառն Թլխմոյ, եւ գային հասանէին ի Թլխում մեծաւ զօրութեամբ։ Եւ արար զօրաժողով Ուռհայոյ դուքն, որոյ անուն ասէին Դաւատանոս, այր քաջ եւ հզօր ի պատերազմի եւ անուանի ի վերայ երկրի, որոյ զօրաժողով արարեալ զՈւռհայ եւ զԿարկառ եւ զՀասան Մանսուր (= Հիսնի Մանսուր), եւ խաղայր զօրօք ի վերայ Տանկաց եւ վրէժխնդիր լինէր արեան քրիստոնէիցն զոր հեղին, եւ երթեալ բազում զօրօք բանակ հարկանէր ի դաշտն Թլխմոյ եւ տեսանէր ի տեղիս զայնքան բազմութիւն կոտորածին՝ լային առ հասարակ ամենայն զօրքն։ Իսկ զօրքն Թուրքաց լուեալ զգալ զօրացն Հոռոմոց, փախեան յաշխարհն Պարսից, եւ յայնժամ Դաւատանոսն գոչեաց որպէս զառիւծ ի վերայ Տանկաց եւ յարձակեցաւ ի պատերազմ ի վերայ քաղաքին Ամթայ» (Ուռհ. 170) որուն մեծ Ամիրան Ամիր Սայիտ թունաւորեալ սպաննուած էր (նոյն)։ «Իսկ յորժամ լուան քաղաքացիքն զգալ զօրացն Հոռոմոց յուղարկեցին զաղս առ Ֆռանգապօլն տասն հազար դահեկան, եւ արար Ֆռանգապօլն զաղտուկ սէր ընդ Տանկունս եւ գիտացեալ զայն Դաւատանոսին՝ նախատեաց զՖռանգապօլն, եւ յորժամ հասան ի դուռն քաղաքին Ամթայ, ի տեղին ուր Հոռոմ դուռն կոչեն, եղին ամենայն զօրքն այլազգեաց ի պատերազմ։ Իսկ Ֆռանգապօլն զպատերազմն նենգաւորութեամբ՝ Դաւատանոսին տայ, եւ ինքն ամենայն զօրօքն ի յետս կայր պարապ ի պատերազմէն, եւ հեծեալս վաթսուն հազար ընդ նմա, եւ յորժամ խմբեցաւ պատերազմն, մի ոմն ի զօրաց այլազգեացն այր քաջ, որում անուն ասէին Հեծն-Պճառայ (Պեճիր ?), մեծ ոճիրս գործէր զօրացն Հոռոմոց, որպէս զառիւծ պատառէր զճակատ Դաւատանոսին զօրացն եւ ի ներս դառնայր կրկնէր։ Եւ տեսեալ զայն Դաւատանոսն, ձայն առեալ ձիոց եւ ասէր՝ թէ «զկամանն (= ղաման, երկբերանի սուր) մատուցէք ինձ»։ Եւ իբրեւ եկեալ զայր Պճառայ, Դաւատանոսն որպէս զառիւծ ի վերայ յարձակեցաւ, եւ նիզակաւն յարեալ զսիրտն՝ պատառեաց զերկաթն, եւ յայնկոյս հանեալ զգեղարդն, եւ երկոքեանն ի ձիոյ անկեալ լինէին։ Եւ բախեալ երկոցունց կողմանց ի վերայ սպանեալ ի նոյն տեղին Դաւատանոսն եւ Պճառայ սատակեալ կայր ի մէջ նիզակին։ Եւ լուեալ քաղաքացիքն եթէ մեռաւ Դաւատանոսն, եւ Պճառայ սատակեալ կայր ի մէջ նիզակին, միաբան առ հասարակ ի դուրս բախեալ ելանէին։ Եւ յայնժամ մի ոմն ի զօրաց Դաւատանոսին գնացեալ առ Ֆռանգապօլն, եւ դատախազ վարէր ընդ նմա վասն մահուան Դաւատանոսի, որում անուն Տավառ ասէին եւ իմացեալ

(1) Ֆռանգապօլ, մականունն էր Նորմանացի Հերվէի կամ Հերվեվիոսի որ յոյն կայսեր ծառայութեան մէջ էր ըստ Կեդրենոսի։

զայս Տռանգապօլն յարձակեցաւ ի վերայ այլազգեացն եւ արար աւարի կոտորած ի դուռն քաղաքին՝ նիզեսաան հազար, եւ դարձաւ ի Հոռոմ աշխարհ» (Ուռհ. 170—2)։

*Պատմագիրը նոյն տարին սակայն Տռանգապօլը կը տանի Կարին, ուր կը հանդիպի* «բազում զօրացն՝ որ կոտորեալ էր զգաւառն Թլխմոյ» *և կը պատերազմի անոնց հետ և կը յաղթէ* (Ուռհ. 172—3), «զամենայն զօրս Թուրքաց կոտորեաց, եւ սատակեաց զամիրայն այլազգեացն՝ որում անուն Ուսուփ ասէին եւ արար անթիւ աւար եւ թափեաց անթիւ գերութիւն ի նոցանէ» (Ուռհ. 173)։

*Սակայն երբ Կոստանդին Դուկաս կայսրը կ'իմանայ Դաւատանոսի մահը* «որ նենգութեամբ Տռանգապօլին եղեւ, կոչեաց զնա ի Կոստանդնուպոլիս եւ ծովահեղձ արար զնա» (Ուռհ. 173)։

*Ահա այսպէս Բիւզանդական կայսրը մէջտեղէն կը վերցնէր կարող զօրավար մը, որ Ալփասլանի պէս ասպատակի մը արշաւանքը կասեցուցած էր։*

## ԱԼՓԱՍԼԱՆ

1063 *Սեպտ.ին* (EB) *Տուղրիլ յաղթող իր բոլոր թշնամիներուն խալիֆային իբրեւ վարձատրութիւն՝ անոր աղջիկը կնութեան առնել որոշած էր, երբ հարսանեկան արարողութենէն առաջ մեռաւ* (*հմմտ.* AB. Noel Vergers, Arabie. 469, Loewe. CMH. Դ. 299—318, Ազգ. 1250), *առաջացած տարիքի մէջ։ Այս իշխանը որքան քաջ, նոյնքան գթալիր, իր իշխանութիւնը թողուց իր եղբօրորդւոյն* (1), *մինչեւ այն ատեն Խորասանի կուսակալ Ալփասլանի, որ նորոգեալ ուժերով շարունակեց ասպատակային արշաւանքները և աւելի սաստկացուց։*

*Ալփասլան ընդարձակ հողամասերու իշխեց։ Իր սահմանները Ոքսոսէն մինչեւ Տիգրիս կը տարածուէին։ Ալփասլան իր նախորդներուն նուաճած հողերով չգոհանալով, իր կայսրութեան կցեց նոր նուաճումներով, զանազան երկիրներ, արդիւնք իր զինուորական քաջութեան և յաջող բախտին։*

*Իր զինուորական գործողութիւններուն առաջինը կատարեց Պարսկաստանի մէջ։*

1064*ին ընկճեց Խուարէզմի նոր սկսող բայց զօրաւոր ապստամբութիւնը և Մելիքշահ որդին հոն ձգեց այդ նահանգը կառավարելու համար։ Քիչ յետոյ իր գաւառական բոլոր կառավարիչները կանչեց ընդհանուր ժողովի մը, ուր ընդունիլ տուաւ իր Մելիքշահ որդին իբրեւ իր յաջորդը և բոլոր ներկաներէն հաւատարմութեան երդում առաւ իր որդիին համար* (Loewe)։

*Իր իշխանութեան շրջանին՝ Ալփասլան վերջապէս նուաճեց և ընկճեց Հայաստանը և անկէ խապառ ջնջեց Հայ անկախ իշխանութիւններու վերջին հետ-*

---

(1) *Loewe*, Վէպէր եւ *EB*. այսպէս կը ճշդեն. Որիս. Հանր. նոյնիսկ կը նշէ անոր հայրը, որ էր Չաղըր Պէկ, եղբայր Իպրահիմ Նիյալի եւ Տուղրիլի: Հայ պատմիչներէն Վարդան (104) եղբօրորդի, Ուռհայեցի (173) եղբայր եւ Հեթում (27) որդին կը կարծեն: Կիրակոս ալ (294) որդին կը ճշդէ:



*քերը։ Իր գահ բարձրանալէն անմիջապէս յետոյ,* «զօրաժողով արարեալ զՊարսիկս եւ զազգս Թուրքաց եւ զամենայն խուժադուժն աշխարհն մինչեւ ի Սագաստան եւ շարժեալ մեծաւ զաւամբ եւ ահագին բազմութեամբ՝ ծփայր չարեօք ալեօք, եւ խաղայր որպէս զգետ յարուցեալ մրրկաբեր բարկութեամբ եւ որպէս զգազան արիւնարբութեամբ զայրացեալ եւ գայր հասանէր ի Հայաստան աշխարհս եւ անհամար բազմութեամբ զօրօք մտանէր յաշխարհն Աղուանից (Ուռհ. 173—4), *ուր կ'իշխէր Կորիկէ, Դաւիթ Անհողինի որդին, Աղուանից կամ Գուգարաց թագաւոր տիտղոսով։*

*Ալփասլան, Աղուանից երկիրը* «մատնեաց... ի սուր եւ ի գերութիւն» (Ուռհ. 174)։ «Անթիւ եւ անհամար արար զանցումն քրիստոնէից» (Նոյն) *եւ* «ի բազմութենէ զօրացն ծածկեալ եղեւ ամենայն երեսք դաշտացն եւ փակեաց զամենայն տեղի փախստեանն» (Նոյն)։ *Կիւրիկէի աղջկան հետ ամուսնանալէ յետոյ՝ Ալփասլան Կիւրիկէն պատուով ճամբու դրաւ դէպի Լոռի, իր աթոռը։ Յետոյ անցաւ Վրաստան* «եւ մեծաւ ուժգնութեամբ մատնեաց զնոսա ի սուր եւ ի գերութիւն» *և Ջաւաղքի Ախալքալէ քաղաքը պաշարեց և գրաւեց, և սուրէ անցուց բնակչութիւնը և* «անհամար մանկունս եւ աղջկունս տարան ի Պարսիկս ի գերութիւն» (Ուռհ. 175 *և* Վարդան 101)։

*Այսպէս, Աղուանից և Վրաց թագաւորները սարսափահար անձնատուր ընելէ յետոյ՝ Ալփասլան արշաւեց Հայաստանի թագաւորական անառիկ Անի ամրոցին վրայ։*

*Ասիական բարբարոսները վարժուած չէին քաղաքներ պաշարելու, սակայն անօրինակ զօրութեամբ Սելջուկ հրոսակները տոկացին այս ամրացած քաղաքին պարիսպներուն առջեւ։ Բիւզանդիոն դրամ և զօրք չունենալով, օգնական գունդեր չղրկեց, և թոյլ տուաւ որ հրաշալի քաղաքը բարբարոսներու աւար դառնայ* (Գելցեր 295—6, *հմմտ.* Ուռհ. 176—180),

*Սելջուկ արշաւանքները՝ Ալփասլանի շրջանին տարբեր նկարագիր կ'առնեն։ Անոնք այլեւս իրենց տիրակալած եւ աւերած երկիրներէն չեն մեկնիր, այլ հոն կը հաստատուին։ Այլեւս աւարառու արշաւանքներ չեն, այլ տիրակալութեան պատերազմներ։ Ալփասլան* «եկեալ հասանէր... բազում բիւրուք եւ անթիւ սպառազինօք, մտեալ յաշխարհս մեր՝ ահ եւ երկիւղ հասուցանէր հեռաւորաց եւ մերձաւորաց. կոխէր, տապալէր զաշխարհս բազումս, մինչեւ եհաս ի քաղաք՝ որ զմեզս իւր ի կատարումն լրիւ իւրով ունէր: Կանգնեաց զխորանն իւր ընդդէմ քաղաքին Անւոյ, եւ տարածեաց զբանակս ընդ լայնութեան երկրին. ջանայր, հնարէր՝ զի զդուռն երկաթի եւ զնիգս պղնձի ի բաց խլեսցէ, որ կայր ընդդէմ թագաւորութեանն իւրոյ, եւ անյոյս լեալ յաղագս ամրութեանն՝ թէպէտ եւ զմարտն սաստկացուցանէր, կամէր չուել: Եւ զայն որ գիտացեալ թէ էարկ տէր ի մէջ պահապանաց եւ իշխանացն երկպառակութիւն եւ անմիաբանութիւն, ամբոխումն եւ բաժանումն, եւ անդէն թողեալ զգործ պատերազմին՝ ի փախուստ դարձան, եւ խուճապեալք երկիւղէն՝ ոչ ոք յազգայինսն կամ ի կարեւոր բարեկամսն հայեցաւ, այլ իւ-

րաքանչիւր ոք անձին ըմբռնեալ: Եւ տեսեալ զայս սպառազէն զօրացն՝ որ արտաքոյ մարտնչէին, հանդէպ ինքեանց ի վերայ պարսպին ճանապարհ առնէին, եւ իբրեւ զկուտակումն ալեաց ծովու ի ծոց քաղաքին հեղուին եւ ըզպարսպականսն ի գործ արկեալ, ոչ ումեք խնայէին: Իսկ բազմութիւն արանց եւ կանանց յապարանս թագաւորացն դիմեալ՝ իբր թէ կամիցին ապրել, եւ այլքն» (*«այլքն»ը որոշած է Ուռհայեցի* (177) *ըսելով թէ* «իսկ անօրէն իշխանքն Հոռոմոց՝ զորս կացուցեալ էր թագաւորն պահապանս տանն Հայոց, Բագրատ հայրն Սմբատայ եւ Գրիգոր Բակուրանին (1) որդին՝ Վրացի ազգաւ) ճողոպրեալ յամուրն որ Ներքին բերդ կոչի: Իսկ որ ի մէջ քաղաքին ամրացեալ էին, իբրեւ գիտացին թշնամին թէ անպատրաստք են, եւ ոչ գոյ ի նոսա այր պատերազմող կամ կերակուր եւ ըմպելի. վաղվաղակի շուրջ պատեալ եւ շտապ տագնապի հասուցանէին, մինչեւ յակամայ արտաքս հանին» (Լաստ. 110, *հմմտ.* Ուռհ. 175–80, Սմբատ 76—7, Վարդան 101, Կիրակոս 52, Սամուէլ Անեցի 105—12, Թովմա Արծրունի *շար.* 346, *եւ վերջապէս Յովհ. Սկիլիցէս Կիւրապաղատ յոյն պատմիչը* 815 *և Զամ. Բ.* 982)։ 1065 *Օգոստ.* 15*ին կը գրաւուի Անին Ալփասլանէ* (Ուռհ. 179, Լաստ. 128/9, Վարդան 101, Ազգ. 1264/5)։ *Լաստիվերտցի յետոյ կը նկարագրէ իր ծանօթ ոճովը Անիի բնակչութեան կոտորածը* (Լաստ. 110–1, *հմմտ.* Ուռհ. 178) *և իր սովորական մտայնութեամբ այս աղէտին մէջ կը տեսնէ աստուածային սաստ մը և կ՚ըսէ՝* «այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, եւ ի քրտանց տնանկաց փարթամանան, եւ ի վաշխից եւ յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն, եւ ինքեանք զմիտս իւրեանց անողորմ առնելով առ աղքատս եւ տնանկս՝ միայն հեշտութեան եւ փափկութեան սպասեն եւ ի գործոց աղտեղութեան ոչ խորշին, այլ միայն արբեալ լինին ի ցանկութեանցն որ զնոսա ըմբռնեալ ունի» (Լաստ. 111), *Սամուէլ Անեցի այս առթիւ կ՚ըսէ թէ* «կոտորեաց անխնայաբար ի սուր սուսերի եւ ի գերութիւն վարեաց զկանայս եւ զմանկունս»:

*Անիի գրաւումը կատարուած է* 1065 *Օգոստոս* 15*ին։ Անոր գրաւումը նկարագրելէ յետոյ Լաստիվերտցի պատմութիւնը կը վերջացնէ սա տողերով.* «Թագաւորն Պարսից բազում գաւառաց տիրեալ եւ անթիւ աւարաւ դարձաւ յաշխարհն իւր» (111), *բայց չի յիշեր այն գաւառները որոնց տիրեց աշխարհակալը և նոյնիսկ չի խօսիր* 1065 - 1074 *պատահած դէպքերուն վրայ, մինչև որ մեծ դէպք մը վերստին կը մղէ զինքը գրիչը ձեռք առնելու։*

*Սամուէլ Անեցի* (109) *Անիի կործանումէն յետոյ* «յորժամ տեսին, *կ՚ըսէ,* զանհնարին աղէտ կործանման զգլխաւորի տեղւոյս՝ անձնատուրք եղեալք ընդ ձեռամբ վիշապին. կամաւ ելին փախստեամբ առ կայսրն յունաց եւ նոքա (Սելջուկները) տիրեցին ընդհանուր աշխարհիս...»

*Թովմա Արծրունիի շարունակողը* (346—7) *կ՚ըսէ թէ Ալփասլանի պէս* «այր մի նենգին ժանտ եւ ապարասան եւ փոյթ, արբանեկութիւն սատանայի, արիւնարբու եւ տաղղակեր, Սրահանգ անուն եկեալ եառ յաւարի

(1) Պուլկարիոյ Պաշքովոյի վանքին հիմնադիրը (տես. ՀԳՊ. Ա. էջ 323):



զգաւառն Վասպուրական եւ եկն եկաց մինչեւ ցաւանն Վան եւ զնա պաշարեալ տառապեցոյց ի տառապանս խիստ, եւ զնա եւս մաշեաց ի սուր սուսերի, եւ զբնակութիւնսն այրեաց հրով. նոյնպէս եւ զԱրճէշ քաղաք Գնունեաց գաւառին, եւ ոչ մնաց տեղի ապաստանի քրիստոնէից բաց միայն յանմատոյց ամրոցն Ամիւկ, եւ յաստուածաբնակ կղզւոյն Աղթամար, որ վայելչացեալ ունին զգեղ վայելչութեանն ամրացեալ ալեօք, եւ պարսպեալ խրոխտացեալ կոհակօք»:

*Ուռհայեցի ալ* (180) *ունի մաս մը տեղեկութիւններ այս շրջանին վրայ։ Գագիկ Աբասեան Կարսի թագաւորին* «յղեաց Սուլտանն... դեսպանս զի գայցէ նմա յերկրպագութիւնն»։ *Գագիկ որ էր* «այր հանճարեղ եւ իմաստասէր, խորհեցաւ հնարս զերծանել խաղաղութեամբ ի Սուլտանէն» *ուստի* «զգեցաւ սեւազգեստ սգաւորի եւ նստաւ ի վերայ սեւաւ բարձի» *իբր թէ իր բարեկամին Տուղրիլի մահը սգալու համար։ Ասիկա հաճոյ թուեցաւ և Ալփասլան զայն պատուեց և անոր բարեկամութիւն ցոյց տուաւ։ Վտանգը անցնելէ յետոյ սակայն* «զկնի աւուրցս այսոցիկ թողեալ Գագիկ զԿարս եւ գնաց ի Հոռոմս եւ թագաւորն Տուկիծ տայր նմա զԾամնդաւ եւ անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք եւ թողեալ զտունն հայրենեաց իւրոց» (*Ուռ.* 181 *հմմ.* Սմբատ, 77—79, Կիրակոս, 56–58, Վարդան, 102):

## ՎԵՐՋ ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՑ

*Այսպէս վերջացաւ հայկական իշխանութեան վերջին մնացորդն ալ եւ* «գերեցաւ տունն Հայոց, եւ արեամբ լցաւ առհասարակ աշխարհն ամենայն, որ եւ իբրեւ զծով ծփայր ծայրէ ի ծայր եւ քակեալ ապականեցաւ հայրենական տունն մեր լեալ, խախտեցաւ հիմն բնակութեան Հայաստան ազգացս, զի ոչ մնաց տեղի յուսոյ ապաւինի, եւ եղաք մատնեալ ի ծառայութիւն ազգաց անօրինաց եւ օտար զազանաց» (Ուռհայեցի 181)։

*Ալփասլանի այս յաջողութիւնները՝ որով Հայաստան և Վրաստան միանգամընդմիշտ կը կորսուէին, մահն էր Հայաստանի բարձր քաղաքակրթութեան։ Սելջուկեանք Հայաստանի լեռնադաշտին տիրանալէն յետոյ մշտակայ պատուհասը պիտի դառնային Փոքր Ասիոյ և Ասորիքի, և պիտի սպառնային անէացնելու նաեւ Բիւզանդական քաղաքակրթութիւնը, որուն առաջին և կենսական պատուարը Հայաստան՝ ինկած էր արդէն:*

*Հայկական պատուար պետութիւններու կործանումը արդարեւ Բիւզանդական կայսրութեան կործանումը կը պատրաստէր։ Յովհաննէս Սկիլիցէս* (Scylitze) *Կիւրապաղատ* (815 *կամ* 637) *իրաւամբ կը դատապարտէ Կոստանդին Ժ. Դուկասի անհոգութիւնը և կը ցաւի Ալփասլանէն գրաւուած Անիի և այլ Հայ քաղաքներուն կորստեան վրայ և կ՚ըսէ.* «Ահա յայս վիճակ թշուառութեան հասին սահմանք (Հայոց) որք էին ընդ տէրութեամբ Յունաց. յԱսիա եւ յամենայն աշխարհս» (Զամ. Բ. 982)։ *Կոնորաս, ժամանակակից ուրիշ յոյն պատմիչ մը, աւելի իրաւունք քան Բիւզանդեան պետութեան վարիչները։ կը մեղադրէ Դուկաս կայսրը և զինքը շրջապատող ծերակուտականները, և Ռոմանոս կայսրը*

որոնք անհոգութիւնով թոյլ տուին Հայաստանի ոտնակոխումը և Հայ ազգին անճիտումը, դաւաճանելով Բիւզանդական պետութեան լաւ ըմբռնուած շահերուն, և պատճառ եղան որ ոչ միայն Հայաստան, այլ նաեւ Փոքր Ասիոյ մէկ կարեւոր մասը, անդարձ կորսուէր կայսրութեան համար։

Կոստանդին Դուկաս, Դանուբէն սպառնացող Կումաններուն կամ Ուզերուն դէմ պայքարելու զբաղած (1065ին) Հայաստանը բոլորովին անպաշտպան ձգած էր (Ուռ, 182—3)։

Ըստ Ուռհայեցիի (187) 1066ին Ալփասլան երկրորդ անգամ Հայաստան կ'արշաւէ և Թլխմոյ բերդը չի կրնար առնել (Ուռհ. 187)։

Ալփասլան, Հայաստանի մէջ այլեւս գործ չունէր, ուստի կ'արշաւէ Բիւզանդական երկիրներ և Հայաստանի տիրապետութեամբ ապահովուած «յարուցեալ բազում զօրօք» կը մտնէ Միջագետք և «գայր յերկիրն Ուռհայոյ եւ հաստատէր ի բերդն որ կոչէր Սեւերակն (Սեւերեկ) եւ կայր անդ Ֆռանկն զօրօք կողմնապահ երկերիւր եւն ձիաւոր» (Ուռհ. 187)։

Թուրքերը կը յաջողին փախուստի մատնել ֆրանգները, առնել Սեւերէկը և Նիզիպը և ինչպէս կոտորած ըրին նոյնպէս նաեւ «զկանայս նոցա եւ զորդիսն վարեցին ի գերութիւն, անհամար աւարաւ» (Ուռ. 188):

Հետզհետէ Միջագետքի մէջ տարածուեցան, առին Եդեսիան (Ուռհան), Էհնէշը (Ուռ. 188), հակառակ անոր որ Եդեսիոյ օգնութեան կը հասնի Խաչատուր Անեցի «Պեխտ» կամ «Վեստ» զօրավարը (Ուռ. 188—190) որ յետոյ 1068—1072 պիտի վարէր Անտիոքի իշխանութիւնը կամ դքսութիւնը Ռոմանոս Դ. կայսրէն կոչուելով այդ պաշտօնին։

Ալփասլան յետոյ անցաւ Հալէպ, ուր կոտորած և գերառութիւն կատարեց, ապա գնաց Տէպ (Այնթապ?) բերդին վրայ և բանակեցաւ Քեսունի դէմ։ Բիւզանդացիք ի զուր փորձեցին դիմադրել. հայերու և ֆրանգներու օգնութեամբ եւ պարտուեցան (Ուռհ. 190—191)։

Ամէն կողմ ասպատակները բազմացան նորանոր անուններով եւ աւերեցին երկիրը։ Այսպէս։ 1067ին «զօրաժողով արար ամիրայն Պարսից որ ասի Աւշէն եւ յապականութիւն դարձոյց զբազում գաւառս... եւ բազում սուգ եւ խաւար տարածեցաւ իվերայ երկրի իձեռաց անօրինիս այսմիկ: Եւ գայր խաղայր բազմութեամբ զօրօք եւ արար ձմեռոց ի Սեաւ լեառն» (Ուռհայեցի 223):

Այս կերպով Թուրքերը կը հասնէին մինչեւ Միջերկրական, հիւսիսային Սուրիան տիրապետելով։

Սեւ լեռ ուր ապաստանած էին վանականներ և հիմնած վանքեր, աւերումի ենթարկուեցաւ «անհագին արեան հեղութիւն եւ կոտորած լինէր յամենայն գաւառն եւ բազում անձինք ի սրբոց կրօնաւորացն մասնեցան ի բերան սրոյ եւ յայրումն հրոյ եւ եղեն կերակուր գազանաց եւ թռչնոց... եւ անթիւ վանօրայք եւ գեղք այրեցան հրով,... եւ Սեաւ լեառն եւ ամենայն գաւառն ի ծայրէ ի ծայր լցուաւ արեամբ կրօնաւորացն եւ քահանայիցն եւ արանց եւ կանանց եւ ծերոց եւ տղայոց...» (Ուռհ. 223):

Աւշէնի այս ասպատակութեան ժամանակակից կը թուի թէ «եղանէր ամիրայ մի մեծ եւ հզօր 'ի դրանէն Աբասլան Սուլտանայ, որ էր հենպ (= արքունական պաշտօն) նորա եւ անուն նորա Գոմէշ Տիկին (= Գոմշտիկան կամ Գիւմիւշ Տիկին) եւ յարուցեալ գայր մեծաւ ահարկութեամբ եւ ախոյեան զօրօք հասանէր ի վերայ Քրիստոնէիցն, եւ վտակս արեան յարուցանէր 'ի յազգէ հաւատացելոց եւ բազում խոցուածով զայրացեալ ի վերայ գաւառին Թլխմոյ (Դ. Հայքի մէջ) որպէս գազան, եւ արար սաստիկ կոտորածս զմնացեալսն յառաջին բարկութենէն, եւ մեծաւ պատերազմաւ էառ զբերդն որ կոչի Թլէթուխ (հաւանօրէն Թլխէ) եւ անողորմ զամենեսեան սրով կոտորեցին: Եւ անհամար գերութեամբ հասանէր ի գաւառն Ուռհայոյ եւ իջեալ ի վերայ բերդին որ կոչի Նսեպի եւ աւուրս ինչ պատերազմեալ ի վերայ նորա եւ ոչ կարաց առնել ինչ. յայնժամ անցանէր ընդ հուն Եփրատ գետոյն եւ սրով յարձակեցաւ ի վերայ Հասան-Մսրոյ (= Հիսնի Մանսուր) գաւառին եւ աստուածասաստ բարկութեամբ ի բերան սրոյ մաշեաց զայն քաջ վայելուչ գաւառն եւ զմաղձ դառնութեան իւրոյ չարութեանն եհեղ ի վերայ ամենայն գաւառին, վասնզի որպէս զկարկուտ հրացայտ փայլատակմամբ հասանէր ի վերայ ամենայն բնակչաց երկրին սոսկալի կոտորածով եւ հրով այրէին եւ զամենայն իշխանսն գաւառին Հասան-Մսրոյ սրով եւ մահու խոցմամբ սատակէին եւ զփառաւոր կանայսն եւ զվայելուչ որդիսն նոցա հանդերձ դստերօքն ի գերութիւն վարէին» (Ուռհ. 224—5):



Երեք օր կոտորած կ'ըլլայ Քրիստոնէից։ Այս վիճակը տեսնելով Նսիպնայ բերդին իշխանը Ուռհայի Արուանդանոս դուքսին լուր կը ղրկէ որ գայ Եփրատի եզերքը ձերբակալելու համար Գոմէշ Տիկինը, սակայն ան չի շարժիր և դանդաղօրէն կու գայ Օշին բերդը 1500 ձիաւորով և 20,000 հետեւակով և պատերազմի կը մտնէ, սակայն կը պարտուի։ Արուանդանոս գերի կ'իյնայ բազում իշխաններու հետ։ 11,000 անձ կը կոտորուի։

«Գոմէշ Տիկին մեծաւ յաղթութեամբ եւ բազում գերութեամբ եւ անհամար աւարաւ խաղաց եւ գնաց յաշխարհն Պարսից, եւ մատուցեալ առաջի Սուլտանին ծառայս գեղեցիկս, մանկունս եւ աղջկունս իբրեւ երկու հազար» (Ուռհայեցի, 225—7):

Միջագետքի և Սուրիոյ շրջաններուն մէջ գործուած այս ասպատակութեանց ժամանակ՝ դէպի հիւսիս ալ Ալփասլան իր տիրապետութիւնը ընդարձակել կ'աշխատէր։ Անիի գրաւումէն երկու տարի ետք ան 1067ին դարձեալ մտաւ Վրաստան, առաւ Տփղիսը, և տուաւ Գանձակի Փատլուն Ամիրային, իսկ Ասխարթան՝ Կախեթի Գագիկ թագաւորին որդին, մինչեւ Սուլթանին երթալու կը համակերպի, սակայն յետոյ Բագրատ ետ կ'առնէ իր երկիրները (Ջուանշիր 113—114)։

Այսպէս, Ալփասլան իր ընտանիքին տիրապետութեան սահմանները կը տարածէր, կը տիրէր Միջագետքի և Հիւսիսային Սուրիոյ և Հալէպի (EB) և իր իշխանութեան միջոցին Թուրք էմիր մը, Աթսիզ կը կորզէր Սուրիան և Պաղեստինը Ֆաթիմեանց ձեռքէն (EB.)։

Ասկէ զատ անիկա յաջող արշաւանքներ կ'ընէր յոյներուն դէմ, որոնք հետզհետէ կ'ընկճուէին իր ուժէն։

## ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ

*Անհրաժեշտ էր հզօր ճիգով մը դէմ դնել Սելջուկեանց, սակայն կարող դէմք մը պէտք էր երեւան գար։ Կոստանդին Ժ. Դուկաս (Տուկիծ) իր իշխանութեան ամբողջ շրջանին ցոյց տուաւ որ ժամանակին պահանջած մարդը չէր։ Ան 1067ին կը մեռնէր, թողլով անչափահաս զաւակ մը որ էր Միքայէլ Է. Պարապինակէս, որուն անունով տարիի մը չափ իշխանութիւնը վարեց Եւդոքսիա թագուհին, բայց Ռոմանոս Դիոգինէս կամ Տիօժէն զօրավարին սիրահարուելով՝ անոր հետ ամուսնացաւ յաջորդ տարին և զայն կայսր հռչակել տուաւ 1067 Դեկտ.ին, Ռոմանոս Դ. անունով* (Ազգ. 1291, Գելցեր 299, Ուռ. 228—9, Սմբատ 83—84)։ *Ռոմանոսի քաջութիւնը և զինուորական հմտութիւնը յոյս կու տար որ տէրութեան համար զօրաւոր առաջնորդ մը երեւան ելած էր, ինչպէս Նոր Լեւոն Իսաւրացի կամ Կոստանդին մը* (Գելցեր 301)։ *Սակայն դժբախտաբար անոր մոլեգնութիւնը և դէպի թշնամին ունեցած արհամարհանքն զինք կործանեցին։ Պաշտօնակալներու երկարատեւ յոռի վարչութիւնը ոչնչացուցած էր զօրքին մէջ կարգապահութիւնը։ Գէշ մատակարարութիւնն ալ չէր լեցուցած տէրութեան գանձարանը, վարձկան զօրքերու այլատարազութիւնը, որոնց հրամանատարները մեծ մասամբ իրենց ցեղէն սպաներ էին, դժուար և անապահով կը դարձնէր ընդհանուր հրամանատարութիւնը և գործողութեան միօրինակութիւնը։* (հմմտ, Գելցեր, 301)։ *Զօրքերուն մէջ կարգապահութիւնը բոլորովին ջնջուած էր և տնտեսական դրութիւնն ալ խանգարուած։*

*Հակառակ ասոնց Ռոմանոս ըստ ոմանց 1068ին կամ ըստ այլոց 1069ին շատ յաջող արշաւանք մը գործեց և լաւ պատժեց թէ Հալէպի մուսուլմանները* (Ուռհ. 234) *և թէ խիստ հարուած տալով յետ մղեց Սելջուկեան աւազակային գունդերը որոնք կը կողոպտէին Պոնտոսի շրջակայքը* (Գելցեր 301, Ազգ 1291)։

1069*ին վայրենի հորդաներ դարձեալ ողողեցին Կապադովկիան, որ կրեց վանտալական աւերումներու և կոտորածներու բոլոր սարսափները* (Գելցեր 301 հմտ. Ուռ. 232)։

*Թուրք դիւրաշարժ ձիաւորներու հանդէպ անզօր էր Բիւզանդացիներու ծանր սպառազինութիւնը։ Բայց կայսրը վերջ ի վերջոյ կրցաւ աւազակային հրոսակները Եփրատէն հեռու քշել. սակայն երբ ան կ'ուզէր յանդուգն արշաւանքով մը և Նախկին Դ. Հայքի ճամբով անակնկալօրէն գրաւել Խլաթը — Վանի լիճին ամրոցը, — լսեց որ իր զօրապետը Փիլարտոս Կապադովկիոյ մէջ ջարդ կրած էր* (Գելցեր 301)։

*Սելջուկները կողոպտեցին մինչեւ Իկանիա* (Գելցեր 301]։ *Ռոմանոս Դ. որ յաջող սկզբնաւորութիւն մը ըրած էր, բարբարոսներու դէմ յաղթանակներ ձեռք բերելով և թերեւս անձամբ կռիւը շարունակելով պիտի կարենար աւելի մեծ արդիւնքներ ձեռք բերել,* 1071*ին ստիպուեցաւ դառնալ մայրաքաղաք, վասնզի իր կինը՝ Եւդոքսիա, որուն կը պարտէր իր գահը, զինք իր մօտը ունենալու համար Պոլիս կանչած էր* (Ազգ. 1291, Ուռ. 231—2)։

*Իր բացակայութեան ժամանակ Ասիական բանակին ընդհ. հրամանատար*



*եղաւ Մանուէլ Կոմնէն — Իսահակ Կայսեր* (1057—1059) *եղբօրորդին — որ Սելջուկներէն մեծ ջարդ մը կրեց և գերի ինկաւ* (Գելցեր 302)։

*Ուրեմն կացութիւնը Բիւզանդական Կայսրութեան Արեւելեան սահմաններուն մօտ աւելի ծանրացաւ երբ Ալփասլան հայկական Արեւելքի մէջ տակաւին Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող մեծ ամրութիւնը՝ Մանազկերտ «խիստ նշանաւոր քաղաքը, պաշարումով առաւ* (Գելցեր 302, հմմտ. Ուռհ. 232, Սմբատ 84)։ *Յետոյ գնաց Ամիթ,* (Ուռհ. 233, Սմբատ 84) *և անկէ Թլխում (= Արկն), զոր երկար պաշարումէ մը յետոյ նենգութեամբ գրաւեց և* «կոտորած բազում արարին եւ անթիւ գերութիւնս» (Ուռհ. 233)։ *Յետոյ Ալփասլանը կը տեսնենք Ուռհայի ճամբուն վրայ՝ բազմաթիւ բերդեր գրաւելով և իր սովորական անգթութիւնները ի գործ դնելով։ Ուռհա ցոյց կու տայ դիւցազնական դիմադրութիւն մը և կը փրկուի* (Ուռհ. 233—7)։

*Սելջուկ այս ասպատակութիւնները և յարձակումները Ռոմանոս Կայսրը ստիպեցին որ հաւաքէ իր ուժերը և պատերազմի պատրաստուի* (Լաստ. 112—3, Ուռհ. 237)։ *Գելցեր* (301) *Ռոմանոսի հաւաքած զինուորներուն թիւը կը նշէ* 100,000։ *Ռոմանոս անձամբ կ'երթայ թշնամիին դէմ, ճամբան սպառնալով դարձին ջնջել հայոց հաւատքը* (Ուռհ. 237—8 և Վարդան 102)։

*Զօրաբաժին մը, որ բաղկացած էր Ուզերէ (Ուռհայեցի* «զօրս յայլազգեացն խուժատանաց» *բառը) և արեւմտեան (Ուռհայեցի* «Ֆռանգաց» *որակածը) վստահելի վարձկաններէ, ֆրանսացի Ուրսել Բայլեյլիւլի առաջնորդութեամբ պիտի գրաւէր Խլաթը, երբ գլխաւոր բանակը կայսեր առաջնորդութեամբ, ետ առաւ Մանազկերտը* (Գելցեր 301—2, հմմտ. Լաստ. 113, Ուռհ. 239)։ *Սակայն կռիւներու ժամանակ երեւաց Ալփասլանի պատերազմներու մէջ փորձ ու վարժ ձիաւոր գունդերուն գերազանցութիւնը։ Կայսրը ի զուր օգնութեան կոչեց Խլաթի դէմ ուղարկուած գունդը։ Թուրքերը զանոնք ետ քշած էին դէպի Միջագետք* (Գելցեր, 303)։ *Հ. Գելցեր* (303) *կ'ըսէ.* «Ալփասլան զգալով որ իր առաջ կանգնած է արժանաւոր մրցակից մը, առաջարկեց խաղաղութիւն» (*հմմտ.* Ուռհ. 240)։ *Ռոմանոս յիմարաբար հպարտութեամբ մերժեց այդ առաջարկը* (Գելցեր 303, Ուռհ. 240)։

*Տեղի ունեցաւ զարհուրելի ճակատամարտ մը։ Զարանչան գուշակութիւններ սարսափեցուցին կայսերական զօրքը, որ շտապով ամենակարճ ժամանակի մէջ հաւաքած էր Ռոմանոս Դ. և խիստ կարգապահութեամբ չէր կրցած կանոնաւորել։ Սպաներու եւ զինուորներու դաւադրութիւնը եւ մատնութիւնը սեփական բանակին մէջ. թուլցուց բոլորին եռանդը։*

*Պատերազմին առաջին օրը, երկու կողմն ալ հերոսաբար կռուեցան առանց վճռական արդիւնքի։ Սակայն երկրորդ օրը երբ Անդրոնիկոս Դուկաս իշխանը դաւաճանութեամբ իր գունդով ետ քաշուեցաւ, սարսափ տիրեց զօրքին մէջ։ Ուրիշ զօրապետներ ալ հետեւեցան Անդրոնիկոսին. իրենց վստահուած զօրագունդերով։ Սելջուկ հեծելազօրքը վայրենի սաստկութեամբ յաղթելով՝ անարգել առաջ անցաւ։ Ռոմանոս Դ. կայսեր ձին վիրաւորուեցաւ եւ ինքը վար գլորեցաւ եւ գերի ինկաւ Սելջուկներու ձեռքը* (Գելցեր 303-304 հմմտ. Ուռհ. 240—3, Լաստ. 112-4, Վարդան 102, Միխայէլ Ասորի, 398) *եւ* Ազգ. 1291)։

## ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ՊԱՐՏՈՒԹԵԱՆ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

*Մանազկերտի սոսկալի պարտութեան օրը* (1071) *Բիւզանդական մեծ պետութեան մահուան ժամն էր։ Թէև անոր հետեւանքները իրենց բոլոր արհաւիրքներով անմիջապէս զգալի չեղան, բայց Փոքր Ասիոյ արեւելեան մասը՝ Հայաստան եւ Կապադովկիա, այն երկիրները, որոնցմէ այնքան կայսրեր եւ քաջ զինուորականներ երեւան եկած էին եւ որոնք կը ներկայացնէին Բիւզանդական տէրութեան ուժը, անդարձ կորսուեցան եւ բարբարոս Թուրքը իր վրանը լարեց հին հռոմէական անցեալ չքեղութեան աւերակներուն վրայ։ Այսպէս, քաղաքակրթութեան ոլորանը զոհ կ'երթար բարբարոսութեան։*

*Ծանր բարոյական պատասխանատուութիւնը այդ սոսկալի հարուածին որմէ յետոյ Բիւզանդիոն այլեւս չկրցաւ եւ չէր կրնար վերականգնիլ, կը ծանրանայ ոչ թէ դժբախտ Ռոմանոս Դ. կայսեր, այլ պաշտօնակալներու եւ արքունիքի կուսակցութեան վրայ, որոնք անհեռատես քաղաքականութեամբ մը կը հակառակէին զինուորականութեան եւ տէրութիւնը կը զրկէին պաշտպանութենէ և իր գլխաւոր ներկայացուցիչին ձեռքով ազգին դէմ բացարձակ կը դաւաճանէին (հմմտ.* Գելցեր 304—5)*։ Հետագայ բոլոր սերունդները իրաւամբ գնահատած են որ բացարձակ օրինակելի վեհանձնութիւնը որ կոպիտ Թուրքը՝ Ալփասլանը ցոյց տուած է ընկճուած եւ գերի ինկած հակառակորդին, որուն ականջներէն զանգակ կախել հրամայած էր նախ, ի նշան ստորնութեան։*

*Ալփասլան՝ Ռոմանոսը ազատ արձակեց, փոխարէնը առնելով Սելջուկ գերիները և մէկ միլիոն Բիւզանդական ոսկի* (Գելցեր, 305)*։ Ուրիշներ կ'ըսեն թէ Ռոմանոս արձակուած է հարկ վճարելու և իր աղջիկը Սուլթանին կնութեան տալու խոստումով։* (CMH. *Դ.* 306, *հմմ.* Կիրակոս 58, Սամ. 114)*։*

*Ռոմանոս սակայն չկրցաւ վերագրաւել Բիւզանդական գահը, վասնզի Բիւզանդացիք կայսր հռչակած էին Միքայէլ Պարապինակէսը։ Ռոմանոս գահը գրաւելու ձախող փորձէ մը յետոյ կամաւորապէս կրօնաւոր եղաւ, իր կեանքը ազատելու համար, բայց Միքայէլ հրամայեց անոր աչքերը փորել* (Լաստ. 115 Սմբատ 84, Կիրակոս 58, Սամուէլ 114, Վարդան 102)*։*

*Ռոմանոս մեռաւ* 1071*ին։*

*Այն խաղաղութեան դաշինքը զոր տարաբախտ Ռոմանոս կնքած էր Ալփասլանի հետ Նոր կառավարութիւնը իսկոյն մերժեց, առանց սակայն որեւէ միջոց ձեռք առած ըլլալու տէրութեան պաշտպանութեան համար, այնպէս որ Արեւելքը զոհ տրուեցաւ Սելջուկեան բարբարոս աւազակախումբերու* (Գելցեր 310):

*Թուրքերը այդ Թուականէն յետոյ անընդհատ հարուածեցին Բիւզանդական կայսրութիւնը մինչեւ որ օր մը զայն ջնջեցին իսպառ։* «Յայնմ հետէ բարձաւ զօրութիւն յիշխանաց եւ ի զինուորաց, եւ ոչ տուաւ յաղթութիւն այնմ թագաւորութեան եւ իշխանք նենգութեամբ եւ մախանօք առ իրեարս կային, եւ զդատաստանաց իրաւունս բարձին, միայն զաշխարհն աւերէին եւ ոչ փրկութիւն գործէին: Մինչեւ բարկացեալ արդարութեամբ տէր՝ հրաւիրեաց զազգս բազումս ի վրէժխնդրութիւն նոցա, ի Լուսնայլերանց եւ ի մեծէ գետոյն որ անցանէ ի հիւսիսակողմն Հնդկաց, այլալեզու եւ չար ազգաց



գալ հեղուլ իբրեւ զջուրս բազումս ի վերայ աշխարհաց մերոյ, արկանել զհիմունս իւրեանց առ եզերբ ծովուն Ովկիանոսի եւ կանգնել զխորանս իւրեանց յանդիման քաղաքին մեծի (*իմա Պոլիս*) եւ լնուլ զամենայն աշխարհս արեամբ եւ դիակամբք եւ բառնալ զկարգս եւ զկրօնս Քրիստոնէութեան» (Լաստ. 115)։

*Թէ արդեօք կարելի՞ էր փրկել Բիւզանդական տէրութիւնը, որուն ձեռքէն էին տակաւին Բարձր Հայքի ռազմագիտական յոյժ կարեւոր դիրքը, Անտիոքը, Եդեսիան և ծովեզերքները, իրաւամբ կասկածելի է։*

*Ռոմանոսի կնքած դաշինքին յարգումը թերեւս առիթ կրնար ընծայել Բիւզանդական ոյժերը վերակազմելու և յառաջիկայ յարձակմանց դիմագրաւելու չափ զօրութիւն մը գոյացնելու։ Սակայն Բիւզանդիոնին պակսեցաւ այդ իմաստութիւնը, ինչպէս յաճախ պակսած էր այդ՝ ուրիշ առիթներու մէջ։ Անիկա փտութեան և ապականութեան մէջ եղծուած, դատապարտուած էր կործանման, ներքին պառակտումներու պատճառով մանաւանդ։*

*Մանազկերտի պարտութիւնը որ սկիզբն էր Բիւզանդական պետութեան քայքայումին, մէկ արդիւնքն էր Փոքր Ասիացի կիսովին օտար բնակչութեան ատելութեան, որմէ մեծապէս օգտուած էին Սելջուկեանք իրենց առաջխաղացութիւններուն միջոցին։ Այդ հակակրութիւնը զոր հպատակները կը տածէին զիրենք հովանաւորող պետութեան դէմ, կը ծնէր այն տառապանքներէն և զրկանքներէն, զորս կրելու դատապարտուած էին երկրագործները, մշակները և արհեստաւորները, ծանր տուրքերու տակ հեծելով և իրենց աշխատութեան արդիւնքէն զրկուելով, պարզապէս դրամ հայթայթելու համար արքունական ճոխութեանց, ազնուականութեան պերճանքին, և բոլոր այն զեխութիւններուն, որոնց հանդիսատես կ'ըլլար Բիւզանդիոն այդ օրերուն։ Ցաւիտենական տուրքերէն և հողէն անբաժան մնալու կաշկանդիչ դրութենէն զատ, տուրքերու տարապայման ծանրութիւնը, ինչպէս նաեւ կրօնական հալածանքները գլխաւոր պատճառներն էին այն ատելութեան, զոր Փոքր Ասիայի մանաւանդ ոչ օրթոտոքս և օտար ցեղէ բնակիչները կը սնուցանէին ընդդէմ Բիւզանդական պետութեան։*

«Յնորոց է, *կ'ըսէ Գելցեր* (286) որ Ռոմանոս Դիոգինէս չարաբախտ կայսրը իր արշաւանքին ժամանակ երդմնցած էր վերադարձին ջնջել հայ եկեղեցին: Հայոց վարդապետները կը պաղատէին Աստուծոյ որ բոլորովին խորտակէ զայն, ինչպէս Յուլիանոսը զոր նզոված էր Ս. Բարսեղ: Անոր հայոց այս զզուած տրամադրութիւնը մեզ միջոց կու տայ լուծելու Սելջուկեանց յաջողութեան հարցը. տրամադրութիւն՝ որուն շարժառիթը եւ պատճառը յունական անմիտ եկեղեցական վարչութիւնն էր»:

*Ու երբ Հայաստան յունաց իշխանութենէն բոլորովին կորզուեցաւ, այն ատեն միայն Բիւզանդական կայսրները հասկցան իրենց քաղաքագիտական խոշոր սխալը, որով աշխատած էին կործանելու, ջնջելու և խափանելու հայկական Թագաւորութիւնները։ Անոնք նշմարեցին ինչ որ կրօնական և ցեղային ատելութիւնը արգելք եղած էր տեսնելու, այսինքն թէ հայոց քաղաքական կեանքի պահպանութիւնը ոչ միայն հայոց համար կարեւոր էր, այլ և կայսրութեան ընդհանուր շահերուն համար։*

Արդարեւ Բագրատունի և Արծրունի թագաւորութիւնները հիմնուելէն առաջ՝ Բիւզանդական կայսրութեան արեւելեան սահմանները անընդհատ նախ Պարսից և ապա Արաբներու կողմէ յարձակումներու ենթարկուած էին և գրեթէ անպաշտպան մնացած, իսկ այս երկու գլխաւոր և շրջակայ մանր թագաւորութիւնները հաստատուելէն յետոյ՝ կայսրութեան հիւսիսային արեւելեան սահմանը զերծ մնաց այդ խժդուժ յարձակումներէն և վայելեց երկու դարու չափ խաղաղութիւն մը որ հայոց արեան գինովը ստացուած էր. Եթէ Բիւզանդացիք փոխանակ ընկճելու այս պատուար ուժերը զանոնք պաշտպանէին այդ յարձակումներուն դէմ, որոնք Արեւելքէն կու գային Բիւզանդական կայսրութիւնը աւելի երկար ատենի համար իր գոյութիւնը ապահոված պիտի ըլլար։

Դժբախտաբար Բիւզանդացիները փորձառութենէն ալ օգտուած չեն զի այդ շրջանին մէջ հարաւային արեւելեան սահմանը առանձին կարող չեն եղած պաշտպանել և թոյլ տուած են որ այդ սահմանէն ներս խուժեն Սելջուկները և ոտնակոխ ընեն և աւարառութեան ենթարկեն բազմաթիւ գաւառներ։

Նոյն այդ սահմաններէն էր որ Սելջուկները առաջացան մինչեւ Իկանիոյ դաշտը,—հազիւ քանի մը օրուան ճամբայ հեռու կայսրութեան կեդրոնէն՝ Կ. Պոլիսէն,— և հոն հաստատուեցան։

Այդ մահմետական ցեղէն օր մը ծնունդ պիտի առնէր զօրաւոր իշխանութիւն մը, որ յանկարծական զարգացումով յառաջանալով պիտի հասնէր մինչև Բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքը և պիտի յափշտակէր Մեծն Կոստանդիանոսի գահը։

Բիւզանդիոն եթէ հեռատեսութիւն ունեցած ըլլար պիտի պաշտպանէր ո՛չ միայն Հայ քրիստոնեայ թագաւորութիւնները, այլ նաեւ ուժ պիտի տար կազմելու Միջագետքի մէջ ալ իրմէ հովանաւորեալ և բարեկամ քրիստոնեայ թագաւորութիւններ և կամ պիտի պաշտպանէր ու քաջալերէր Տաւրոսեան լեռնական ցեղերը՝ որոնք տխմարաբար այլուր փոխադրեց։ Այնպէս որ կարծես կամաւորապէս բաց ասպարէզ ձգեց այդ վայրենի հրոսակներուն, որոնք իրենց գլուխը ունենալով Տուղրիլի և Ալփասլանի պէս անձեր, տարիներով Հայաստանը և անոր շրջակայքը, ինչպէս նաեւ յունական երկիրներէն մաս մը տակնուվրայ ըրին, բազմամարդ ու շէն քաղաքներ կործանեցին և հազարաւոր մարդեր սուրի և գերութեան մատնեցին։

Բիւզանդացիք այս բուռն արշաւանքներուն դէմ դնելու անկարող՝ ետ քաշուեցան և հազիւ Հայաստանի արեւմտեան քանի մը քաղաքները կրցան իրենց ձեռքը պահել, մինչեւ որ Մելիք Շահ՝ Ալփասլանի որդին և յաջորդը առանց ոեւէ լուրջ ընդդիմութեան հանդիպելու տիրապետեց բովանդակ Հայաստանի (1086—1092)։

Բիւզանդիոն եթէ յարգած ըլլար Ռոմանոս Դ.ի կնքած դաշինքը և սրբագրէր մինչեւ այն ատեն ընդգրկած սխալ ընթացքը՝ հանդէպ Փոքր Ասիայի այլազան ցեղերուն և համայնքներուն, զոր Օրթոտոքսութեան միջոցաւ ձուլել կ'ուզէր, թերեւս կարելի ըլլալ փրկել կայսրութիւնը որ օր մը պիտի իյնար Թուրք ուժերուն առջեւ ջախջախուած և ընկճուած։



## ԱԼՓԱՍԼԱՆԻ ՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Ալփասլան իր բոլոր վայրագութեամբը որքան քաջ ու յանդուգն, նոյնքան ասպետ անձ մըն էր։ Անիկա վեհանձնօրէն արձակեց Ռոմանոս կայսրը գերութենէ և Կարսի Գագիկ Աբասեան թագաւորին հետ վարուեցաւ ազնուօրէն, երբ անիկա իրեն բարեկամութիւն ցոյց տուաւ։

Իր մեծանձնութեան հաւատքն էր թերեւս որ Գագիկ Բագրատունի՝ Անիի թագաւորը, որ բիւզանդական դաւաճանութեամբ իր աթոռէն և թագէն զրկուած էր և Կեսարիոյ կողմերը ճորտական իշխանութիւն մը ստացած էր, «փախուցեալ գնալ առ Աբասլան Սուլտանն Պարսից եւ սիրանալ աթոռոյ թագաւորութեանն տանն Հայոց, զի բազում անգամ կոչէր զԳագիկ Սուլտանն եւ նա յաղագս քրիստոնական հաւատոյ արգելեալ լինէր» (Ուռհ. 217, և Սըմբատ 81)։

Ալփասլան իր հեծելազօրքին Աստուածը և կատաղի թշնամին Բիւզանդական Կայսրութեան,— որ կը կառավարուէր թուլամորթ պաշտօնատարներու և գեղեցկախօս հռետորներու ձեռքով, — յաղթական Արեւմուտքի և Արեւելքի մէջ, և իշխող Աբբասեան Ամիրապետին անունով, կը հանդիսանար առաջամարտիկը Սիւնի իսլամներուն (EB)։ Անիկա Սելջուկեան իշխանութիւնը զօրացնելով, Աբբասեաններու ազդեցութիւնը հետզհետէ բարձրացուց։

Ո՛չ միայն Միջագետք, Հայաստան, և Ասորիք, այլ և Արաբիան անոր ձեռքին տակ նուաճուեցան։

Ռոմանոս Դ.ի վրայ իր տարած յաղթութեան յաջորդ տարին, (1072), Ալփասլան Արեւելեան Ներքին գաւառները արշաւեց և նուաճեց Թուրքեստանը և Խուարէզմը (EB)։ Այս արշաւանքը կը կատարուէր ընդդէմ Թուրքեստանի Թուրքմէններուն, այսինքն դէպի Սելջուկներու նախկին բնակավայրը, այն նպատակով որ իր իշխանութիւնը հոն հաստատէ։ Այս արշաւանքին մէջ էր որ 1072ին իր մահը գտաւ (Ազգ. 1292)։ Սուր վիճաբանութիւն մը ծայր տուաւ Սուլթանին և Սելջուկներէն գրաւուած բերդի մը հրամանատարին՝ Եուսուֆ Պարզամիի միջեւ։ Սուլթանին նախատինքներէն վիրաւորուած, Եուսուֆ առաջ կը նետուի և կ'սպաննէ Ալփասլանը ի ներկայութեան ամբողջ պահակներուն և աւագանիին, որոնց Ալփասլանը փրկելու համար ի գործ դրած միջամտութիւնը շատ ուշ կը հասնի։

Ուրիշ աղբիւր մը (EB), կը հաւաստէ թէ Ալփասլան, Եուսուֆ Պարզամին – որ նաև կը ճանչցուի Եուսուֆ Քոթնալ անունով – իր ներկայութեան բերած էր իր ձեռքովը սպաննելու համար (հմմտ. Ուռհ. 246—7)։

Մեր պատմիչները, ինչպէս տեսնուեցաւ, չափազանց անողոք և խիստ եղած են իրենց դատումներուն մէջ հանդէպ Ալփասլանի, զայն ներկայացնելով իբրեւ գազան մը կամ արիւնարբու վայրենի մը։

Այս տեսութեան համաձայն չեն թուիր Եւրոպացի նոր պատմիչներ, որոնք քննական ոգիով մը կը դատեն։

Ընդհակառակը, ինչ ինչ դէպքեր ցոյց կու տան թէ անիկա արդարութեան և կանոնաւորութեան կողմնակից և զեղծումներու հակառակորդ եղած է։

## ՄԷԼԻՔ ՇԱՀ

*Ալփասլանի մահէն ետք իր անդրանիկ որդին Մելիք Շահ, Խալիֆային կողմէ իր յաջորդը ճանչցուեցաւ և պատուուեցաւ Էմիր-Էլ-Մումինին (Հաւատացեալներու հրամանատար) տիտղոսով, որ մինչեւ այն ատեն Խալիֆաներու կողմէ նախանձախնդրօրէն իրենց վերապահուած էր* (Lœwe)։

*Մելիք Շահ, որ* 18 *տարեկան գահ բարձրացաւ,* 20 *տարի* (1072—1092) *կառավարեց Սելջուկ կայսրութիւնը, ու բարի և արդար վեհապետի մը համբաւը առացաւ, հակառակ իր հօրը թողած բռնութեան և չարութեան համբաւին։*

*Անիկա ծանօթ էր Ճալալ-Էտ-Տին և Մուզ-Էտ-Տին Վատտին անուններով* (Herbert M. J. Loewe, The Seljuqs, *ի* The Cambridge Medival History t. IV *Նիւ-Եորք,* 1923, *էջ* 299–318) *և գովութեամբ յիշուած է հայ պատմիչներէն իբրեւ* «խաղաղասէր եւ քրիստոնէասէր բարուք» *մէկը* (Վարդան 105), *իբրեւ* «այր բարի եւ ողորմած եւ յոյժ քաղցր ի վերայ հաւատացելոցն Քրիստոսի» (Ուռհ. 247) *և իբր* «ազատաբարոյ եւ մեծախորհուրդ, խոհեմ եւ արի քան զյոլովս ի թագաւորաց, որ տանէր հոգ արդարութեամբ առ ամենեսին վարել, զի մի ոք լիցի տրտում ի զրկելոց եւ հպարտ ի զրկողաց» (Սամուէլ Անեցի. 115, *հմմտ.* Ազգ. 1302)։

*Այս բոլոր գովեստները զուր շռայլուած են իրեն համար, անտարակոյս ապացոյց են այն մեծ բարեացակամութեան որ ան ցոյց տուած է հայ հոգեւոր նուիրապետութեան նկատմամբ։ Հայոց կաթողիկոսին խնդրանքով եկեղեցիները և վանքերը, ինչպէս նաև եկեղեցիի պաշտօնեաները ապահարկ ըրաւ ան* (Ուռհ. 290, Ազգ. 1315)։

*Մելիք Շահի իշխանութեան շրջանին պաշտօնի վրայ մնաց Նիզամ-Իւլ-Մուլք մեծ վէզիրը և երկար ժամանակ իր ազդեցութիւնը պահեց* (Loewe)։

*Մելիք Շահ հազիւ գահ բարձրացած էր երբ ստիպուեցաւ կռուիլ իր հօրեղբօրը, Քաւուրդի* (Qawurd) *հետ, որ հիմնադիրն էր Քիրմանի Սելջուկեան կայսրութեան։ Քաւուրդ կ'ուզէր ինքն յաջորդել Ալփասլանի ըստ Թրքական աւանդութեան և ասոր համար իր գունդերը առաջնորդած էր դէպի Համատան* (E B.)։ *Մելիք Շահ երբ տեղեկութիւն առաւ թէ իր հօրեղբայրը յեղափոխութիւն հանած էր և դէպի Քիրման կը յառաջանար, անմիջապէս ճամբայ ելաւ Խորասանէն դէպի Իրաք, անոր դէմ ելլելու համար։ Արդարեւ յաջողեցաւ վանել անոր բանակը և զայն գերի բռնել։*

*Մելիք Շահ իր նախարարին խորհուրդով սպաննել տուաւ Քաւուրդը բանտին մէջ, թոյնով կամ խեղդելով* (1073*ին*) *վասնզի իր զօրքերը իրեն ցրտութիւն ցոյց տուին և Քաւուրդին՝ համակրանք։ Այս ոճիրը ժողովուրդին հաղորդուեցաւ որպէս անձնասպանութիւն մը և զինուորներուն մէջ կարգապահութիւնը վերահաստատուեցաւ։* (Loewe)։

*Իշխանութիւնը ապահովելէ յետոյ Մելիք Շահ կանոնաւորեց Փոքր Ասիոյ և Սուրիոյ գործերը։*

*Այսպէս, իր զարմիկը՝ Սուլէյման Իպն Գութուլմիշը կարգեց արեւմուտքի հրամանատար և զայն ղրկեց արշաւանքի դէպի Փոքր Ասիա և Սուրիա։* (Loewe CMA. *Դ,* 307)։



## ՍՈՒԼԷՅՄԱՆ ԻՊՆ ԳՈՒԹՈՒԼՄԻՇ

*Սուլէյմանի պաշտօն տրուած էր պաշտպանել սահմանները Բիւզանդական պետութեան դէմ* (Գելցեր 310)։ *Այս քաղաքագէտ անձը կրցաւ Արեւելքի մէջ Բիւզանդայիններուն հասցնել ամենամեծ մահացու հարուածը* (Գելցեր 310)։ *Անկարելի և անօգուտ էր Ռոմանոսի և Վասիլի օրէնքներով մարտնչիլ մեծ հողատիրութիւններու կազմաւորման և այս շարժումին հետզհետէ ծաւալումին դէմ, բան մը որ ոչ մէկ տեղ այնքան զարգացած էր՝ որքան Արեւելքի մէջ։*

*Հողին կապուած ստրուկները կը մշակէին մեծահարուստ հողատէրերուն կալուածները։*

*Սուլէյման իր հեռատեսութեամբ Հռոմ կայսրներէն խլած երկիրներուն տիրապետութիւնը ապահովեց։ գործադրելով տնտեսական յեղափոխութիւն մը։ Բոլոր գիւղացիները, որոնք, կը տառապէին ստրկութեան մէջ, ազատ հռչակեց* պայմանով որ գլխահարկ վճարէին։ Ասով վերջ տուաւ ստրուկներու դասակարգին և այս կերպով զանոնք սիրաշահեցաւ ու Սելջուկեան իշխանութեան կապեց ամբողջ շինական դասակարգի բնակչութիւնը և ապահովեց համակրութիւնը գործող ձեռքերուն, որոնք Բիւզանդական պետութեան անտանելի յոռի վիճակին՝ տարիներ պատճառաւ տառապած էին։* 

*Ոչ մէկ պարագայի ամենավատթար մէկ հետեւանքը եղող ստրկութեան պատճառաւ՝ մեծապէս դժգոհ էին։ Եւ զարմանալի է որ այս դժգոհները գըլխաւորաբար Հռոմէներն էին, այսինքն բուն Բիւզանդացիները, թէեւ լըլամ ստրուկները և ոչ-օրթոտոքս քրիստոնեաներն իսկ առանց այդ տնտեսական կեղեքումներուն ենթակայ ըլլալու՝ մասնաւոր համակրութեամբ մը կապուած չէին Բիւզանդական տէրութեան հետ* (Գելցեր 320).

*Իսահակ Կոմնէն զօրավարը՝ որ Ռոմանոսի գերի իյնալէն ետք Բիւզանդական բանակին գլուխը անցած էր, Կեսարիոյ մօտ մեծ պարտութիւն մը կրեց։ Ասոր վրայ Բիւզանդական բանակին հրամանատարութիւնը ստանձնեց Կեսար Դուկասը, որ Նորմաններու դէմ գնաց, նախ անոնք զսպելու համար, բայց անոնց ձեռքը գերի ինկաւ։*

*Այն ատեն ան միացաւ Նորմանտական արկածախնդրին Ուռսելի հետ և գահը ձեռք բերելու համար արշաւեց դէպի Բիւզանդիոն՝ իր հարազատ եղբօրորդիին դէմ։*

*Միքայէլ Պարապինակէս կայսր* (1071—1078) *յուսահատական այս րոպէին, դիմեց Թուրքերու օգնութեան՝ Սուլէյմանի հետ հաշտութիւն կնքելով* (1074), *Մելիք Շահի հաւանութեամբ։ Այդ դաշնագրութեան հետեւանքով Սուլէյման կը ճանչցուէր օրինաւոր տէրը, Փոքր Ասիոյ մէջ Բիւզանդական կայսրութենէն իր գրաւած բոլոր հողերուն։ Ասոր փոխարէն Սելջուկները կը խոստանային զօրաւոր օգնական բանակ մը ղրկել Բիւզանդացիներուն։ Արդարեւ Սուլէյման կատարեց իր խոստումը։ Անոր ձիաւորները հալածեցին ապստամբները և թէ Դուկասը և թէ Ուռսելը գերի բռնեցին։ Դուկաս վանք քաշուեցաւ, իսկ Ուռսել յաջողեցաւ փախչիլ և սկսաւ նոր գունդեր հաւաքել Արմենիական թեմին մէջ։ Սակայն ոչ մէկ յաջողութիւն ունեցաւ։ Անոր դէմ գնաց Ալեքսիս*

Կոմնէն՝ Իսահակ կայսեր եղբօրորդին, և յաջողեցաւ ձերբակալել ապստամբը և բերել մայրաքաղաք (Գելցեր 310–312)։

Թուրքերը Փոքր Ասիոյ մէջ շարունակեցին միշտ նեղութիւններ տալ Բիւզանդացիներուն, յարձակումներով և աւարառութիւններով (Գելցեր 312)։

## ՍԵԼՋՈՒԿ ՆՈՒԱՃՈՒՄՆԵՐ

Փոքր Ասիոյ մէջ Սուլէյման Իպն Գուրթուլմիշ թրքական ազդեցութիւնը կը շեշտէր և նորանոր գրաւումներով կ'ընդարձակէր թրքական տիրապետութիւնը, մինչ Ազիզ, Մելիք Շահի մէկ ուրիշ զօրավարը, կը գրաւէր Երուսաղէմը 1073ին և Դամասկոսը 1076ին (E B.)։ Ազիզ Իպն Աւք-Իպն էլ Խուարեզմի Դամասկոսի Սելջուկեան կառավարիչը, ինչպէս կ'երեւի իր անունէն՝ Խուարեզմի բնիկ, «Թուրք էր» (Ուռ. 280 և «յազգականաց» Տուղրիլի (Հեթում 27) եւ արդէն Ալփասլանի ատեն (1063–1072) իբրեւ էմիր կորզած էր Սուրիան եւ Պաղեստինը Ֆաթիմեաններու ձեռքէն և Մելիք Շահի ատեն կը շարունակէր իր նուաճումները Ֆաթիմեաններու՝ Աբբասեաններու հակառակորդներու հողերէն։ Ան եկաւ նոյնիսկ մինչեւ Գահիրէ և ժամանակաւոր կերպով տիրեց անոր։

Մելիք Շահ ի վերջոյ Սուրիան որպէս ժառանգական ճորտապետութիւն տուաւ իր եղբօր Դդուշի, որ հաստատուեցաւ Դամասկոսի մէջ և սպաննեց Ազիզը (EB. հմտ. Ուռ. 280, Տըգլներ, Պատմ. Հոնաց, Պ. 215)։

Այսպէս, Մելիք Շահ իբրեւ միահեծան տէրը երկրին, կառավարեց Աբբասեան Խալիֆաներու աշխարհը, ջերմ պաշտպան հանդիսացաւ Սիւննի հաւատքին և Խալիֆայութեան, և կարգեց իշխաններ և ամիրաներ զանազան երկիրներու վրայ (ինչպէս Հայաստանի, Միջագետքի, Ասորիքի և այլն) և այսպէս կազմակերպեց աւատական կազմով խոշոր պետութիւն մը։

Իր իշխանութեան միջոցին Սելջուկեանց պետութիւնը իր զօրութեան զէնիթին հասաւ, գրեթէ ամբողջ Փոքր Ասիան իրեն հպատակեցնելով։ Իրեն կը հնազանդէին Քաշկարէն մինչեւ Նիկիա, Հերաթէն մինչեւ Անտիոք, Կասպեան երկիրներէն մինչեւ Եէմէն։ Այս ընդարձակ պետութեան մայրաքաղաքն էր Սպահան Պարսկաստանի հին մայրաքաղաքը։

## ՍԵԼՋՈՒԿ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

Մելիք Շահի (+1092) յաջորդին և որդին Պարկիարուխի (1092–1101) ատեն սկսաւ անկումը Սելջուկ մեծ պետութեան որ 3–4 մասերու բաժնուեցաւ, վասնզի գահին շուրջ կատարուեցան պայքարներ, որոնք պատճառ եղան պետութեան բաժան բաժան ըլլալուն,

Այսպէս Սելջուկ կայսրութիւնը բաժնուեցաւ չորս մեծ և շատ մը երկրորդական իշխանութիւններու։

Կարեւոր իշխանութիւններն էին 1) Սելջուկ կայսրութիւնը, որուն կեդրոնն էր Սպահան։ Ասիկա պահեց իր գոյութիւնը իբրեւ Պարսկաստանի Սուլթանութիւն։

2) Սելջուկներու նախնական բնակավայրին, այսինքն Խուարէզմի շրջա-



նակը կազմեց անջատ իշխանութիւն մը։

3) Ռումի Սելջուկ հարստութիւնը կամ Իկոնիոյ Սուլթանութիւն կոչուած այն պետութիւնը, զոր Փոքր Ասիոյ մէջ կերտած էր Սիւլէյման Իպն Գուրթուլմիշ և որ Մելիք Շահի մահէն ետք իսպառ մերժեց ընդունիլ անոր յաջորդներուն գերիշխանութիւնը։

4) Նոյնպէս Սուրիոյ մէջ Հալէպի և Դամասկոսի շուրջ կազմուած Դտուշի իշխանութիւնը, որ Սիւլէյմանի տէրութեան պէս դարձաւ բոլորովին ինքնիշխան ու անկախ ու չճանչցաւ մեծ Սելջուկին գերիշխանութիւնը։

Այս չորս ընդարձակ և մեծ Սելջուկ իշխանութիւններէն զատ, Մելիք Շահի կամ առաւելապէս Սանճարի մահէն վերջ՝ գոյութիւն առին մեծ թիւով թուրք պզտիկ տանուտիրութիւններ (segneuries) որոնք առաւել կամ պակաս իրական հնազանդութեամբ մը կապուած էին կեդրոնական իշխանութեան,

Չորս մեծ տէրութիւններէն առաջին երկուքը, Պարսկաստանի և Խուարէզմի (1) Սուլթանութիւնները, իրարու դրացի էին և ջնջուեցան Խուարէզմի թաթարական ցեղերու պատկանող ասպատակներէ, որոնք նախ Խուարէզմի և ապա Պարսկաստանի տիրապետեցին և վերջ տուին հոն հաստատուած Սելջուկ Սուլթանութեան 1114ին։ Երրորդը՝ Ռումի Իկոնիոյ Սուլթանութիւնը, ամէնէն երկարատեւը և տոկունը հանդիսացաւ, վասնզի մինչեւ 1309, այսինքն ԺԴ. դարուն սկիզբները, պահեց իր անկախութիւնը, իրեն դրացի Կիլիկիոյ հայկական թագաւորութեան պէս, որուն հետ երբեմն բարեկամական և երբեմն թշնամական յարաբերութիւններ ունեցած է տեւականապէս։

Իսկ Սուրիոյ Սելջուկ իշխանութիւնը չկրցաւ Իկոնիոյ Սուլթանութեան չափ երկարակեաց ըլլալ վասնզի ԺԳ. դարուն կէսին (1260ին) ընկճուեցաւ և նուաճուեցաւ Թաթարներէն (Ալիշան, Ցուցիկք Բ. 410)։

---

(1) Սանճարի (1117–1156) մահէն վերջ, երբ Սելջուկ կեդրոնական միակ իշխանութիւնը քայքայուեցաւ, թրքական նախնական ոստանին՝ Խուարէզմի (այժմ Խիվա) շրջանին մէջ կազմուեցաւ նոր իշխանութիւն մը, որուն առաջին վեհապետը եղած է Անուշթեկին, որ Խազնայէն թուրք գերի մըն էր եւ հետզհետէ բարձրանալով Մելիք Շահէն (1072–1092) նշանակուած էր Խուարէզմի կուսակալ (Lœwe)։ Անուշթեկինի կը յաջորդէ 1097ին իր որդին Գութպէտտին Մուհամմէտ, որ Պարկիարուխի կողմէ կ'ստանայ «Խուարէզմի շահ» տիտղոսը (Lœwe): Ասոր կը յաջորդէ 1123ին իր որդին Ազիզ, որ շատ տարածեց իր հողերը. մասամբ իր անկախութիւնը ձեռք բերելու ի վնաս Սինճարի (1117–1156) եւ ոչ մէկ միջոց խնայեց իր անկախութիւնը ձեռք բերելու համար: 1138ին Սինճար արշաւեց դէպի Խուարէզմ եւ յաղթեց վճռաբար Ազիզի, որուն որդին Իլքիլիկ ալ սպաննուեցաւ այս պատերազմին մէջ: Սինճար Խուարէզմի կուսակալ կարգեց իր եղբօրորդին Սիւլէյմանը եւ սաով պահ մը վերջ տրուեցաւ Խուարէզմի անկախութեան, սակայն Ազիզ միանալով արագօրէն յառաջացող Քարախիթայի կայսրութեան Գուրխանին (մեծ-խանին)՝ փառաւոր յաղթանակ մը տարաւ Սմրղանտի մէջ 1141ին Սիւլէյմանի վրայ (Lœwe եւ EB.) Սինճար որ փախաւ իր հօրեղբօր Սինճարի մօտ, Խուարէզմը լքելով Ազիզի. Սինճար 1142ին եւ 1147ին, երկու անգամ եւս Ազիզի դէմ պատերազմեցաւ, բայց միշտ ներողամտութեամբ վարուեցաւ: Ազիզ իր կայսրութիւնը ընդարձակեց մինչեւ Ջանդ (Jand) Աքսարտէսի վրայ եւ մեռաւ 1156ին: Իր յաջորդներէն Թակաշ 1194ին նենգութեամբ սպաննելով Իրաքի եւ Քիւրտիստանի Տուղրիլ Բ. Սուլթանը՛ անոր երկիրները միացուց իր կայսրութեան եւ գրեթէ բովանդակ Պարսկաստանի տէր դարձաւ:

Խուարէզմի շահերուն այս հարստութիւնը դար մը եւս շարունակուեցաւ եւ վերջ գտաւ երբ Շահ Մուհամմէտ եւ իր որդին Ջէլալէտտին Մանկոլներու կողմէ տապալեցան:

Իսկ կազմուած բազմաթիւ տանուտիրութիւնները իրենց չարունակական ըմբոստութիւններով տկարացուցին ոչ միայն կեդրոնական իշխանութիւնը, այլ նաեւ իրենց փոխադարձ պատերազմներով նաեւ բովանդակ կայսրութիւնը (Lœwe)։

Պետութեան քայքայումը հետզհետէ աւելի չեչտուեցաւ։ վասնզի կուսակալները — որոնք Աթաբէկ կը կոչուէին — աւատական դրութեամբ, քիչ քիչ իրենց յանձնուած երկիրներուն տէր դարձան և ինքնագլուխ ըլլալու միտում ցոյց տալ սկսան։

Այս մանր իշխանութիւններուն գլուխը կը տեսնուէին երբեմն Սելջուկ իշխողներ՝ ազգականական կապերով կապուած մեծ Սելջուկին և երբեմն ալ արքայական ընտանիքին չվերաբերող Թուրք էմիրներ, որոնք ժառանգական ճորտեր դարձած էի և սովորաբար կը կրէին այդ Աթապէկ տիտղոսը, ինչպէս Պարսկաստանի, Ատրպատականի, Սուրիոյ և այլ Աթապէկները (EB.)։

Սանճարի 1117—1156) իշխանութեան վախճանին այս դրութեան անպատեհութիւնները երեւան եկան։ Այս թուականէն յետոյ, Սելջուկներուն պատմութիւնը դարձաւ պատմութիւնը այն միութիւններուն և խմբաւորումներուն, որոնց միջեւ մինչեւ այն ատեն բաժնուած էր այդ մեծ կայսրութիւնը որ իր մէջ կը պարունակէր Պարսկաստանը, Հայաստանը, Միջագետքը, Սուրիան և Կեդր. Ասիոյ մէջ՝ Անդրոքսոսը (Transoxiana)։

Սելջուկները իբրեւ անքաղաքակիրթ ժողովուրդ, չկրցան հաստատել որեւէ կանոնաւոր և ամուր վարչաձեւ մը, ինչպէս իրենց գրաւած բոլոր երկիրներուն՝ նոյնպէս նաև Հայաստանի մէջ (հմմտ։ Արշակ Ալպօյաճեան «Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները 69»:

Անուանապէս և ըստ երեւոյթին մեծ համադաշնակցութիւն մը կը կազմէին այն մեծ ու պզտիկ բազմաթիւ իշխանութիւնները, որոնք իբր թէ Սելջուկ կայսրութեան մաս կը կազմէին, բայց իրապէս անկախ և ըմբոստ, չարունակ իրարու հետ վէճեր և կռիւներ կ'ունենային։ Մեծ Սելջուկը իբրեւ գերագոյն պետ և իբրեւ իրաւարար կ'ուզէր միջամտել այս վէճերուն, սակայն իբ իշխանութիւնը որ իբր կեդրոնական ուժ՝ պիտի տիրապետէր, չունէր բաւականաչափ ուժ՝ միութիւնը պահելու համար, այնպէս որ Սանճարի մահէն (1156) վերջ պետութիւնը բոլորովին բաժան բաժան եղաւ։

Այս քայքայումէն օգտուելով, հարկատուներ և կուսակալներ դէպի անկախութիւն քայլ մը եւս առին, ինչ որ Աթապէկներու կերպով մը աւատական դրութեան անխուսափելի հետեւանքն էր ((Loewe)։

Այս կեդրոնին անզօր գերիշխանութիւնը երբեմն ճանչցող և երբեմն մերժող ժառանգական իշխանները, իրենց շրջանակներուն մէջ կազմեցին աւելի կամ նուազ տեւական պետութիւններ և իշխանութիւններ։

Այս ընդհանուր խառնակութիւններու միջոցին, Հայաստանի մէջ — որ Պարսկաստանի Սելջուկներու տիրապետութեան տակ էր — տեղաւորուեցան այլացեղ ժողովուրդներ և հոն ամրապէս հաստատուեցան, չարագուշակ ապագայ մը պատրաստելով Բիւզանդական պետութեան, զի առաջին անգամ էր որ Փոքր Ասիոյ բարեկից դաշտերուն տիրապետող ռազմական դիրքը՝ հայկական լեռնադաշտը, օտար կիսավայրենի նոր ու առոյգ ցեղի մը ձեռքը կ'անցնէր։



Իրաւ է որ, մինչեւ այն թուականը քանի քանի անգամներ Բիւզանդական կայսրութեան ոսոխ պետութիւններու ձեռքը անցած էր Հայաստանը, սակայն անցեալին ո՛չ Բիւզանդական պետութիւնը այնքան տկարացած էր և ո՛չ ալ տիրապետողները, այնքան կենսունակ ուժերով կը գրաւէին երկիրը, այլ ուժասպառ և գրեթէ յոգնած վիճակի մէջ։

Նոյնպէս նախկին գրաւումներու ժամանակ երկիրը որքան որ ալ կ'ընկճուէր բայց միշտ, գէթ մասամբ, տէրն էր իր ճակատագրին։ Նախարարները և իրենց զօրագունդերը իրենց գոյութիւնը կը պահէին։ Հետեւաբար ուժ մը կը ներկայացնէին, որոնք հարկ եղած ատենը կրնային իրենց ազդեցութիւնը զգալի ընել տալ և նոյնիսկ երկիրը մաքրել օտարներէն։ Այդ շարժումներն ալ արգելք էին ապահով առաջխաղացման մը, մինչ Մելիք Շահի տիրապետութենէն յետոյ շնորհիւ Բիւզանդական որքան վատասիրտ նոյնքան անմիտ քաղաքականութեան, այդ ներքին ուժերը գոյութիւն ունենալէ դադրեցան հայկական զօրքին ցրուելովը։

Մելիք Շահ արշաւեց մինչեւ Եփրատ, որուն արեւելեան կողմը գտնուող հողերը կցուեցան Սելջուկ պետութեան։ Իր որդին Պարկիարուխ (1092—1105) անցաւ Եփրատը և մինչեւ Անարզաբա և Հիսնի-Մանսուր յառաջացաւ։

Իսկ Մուհամէտ Տափար (1105—1118) ամէն տարի Ասորիք և Կիլիկիա կ'արշաւէր (Ազգ. 1321. 1338—9)։

Այս նուաճողական և ծաւալողական շարժումները և գահին շուրջ պայքարները, արգելք էին պետութեան ներքին կազմակերպութեան և պետութեան կանոնաւոր վարչութիւն մը ունենալուն, վասնզի երկիրը տեւապէս անապահովութեան և խռովութեան մէջ կը մնար։

Ինչպէս տեսնուեցաւ Մանազկերտի վճռական ճակատամարտը Հայաստանի ճակատագիրը յանձնեց Սելջուկներու ձեռքը, ուստի 1071ին Ալփասլան Հայաստանը փոխարքայութեան մը վերածեց և այս պաշտօնը վստահեցաւ իր քեռորդին Սիւլէյման Իպն Գութուլմիշի։

«Բայց Սիւլէյման եւ իր չորս եղբայրները, զէնքով հզօր եւ իշխանութեան մէջ փառասէր, վրէժխնդրական ոգիով ալ լեցուած ըլլալով՝ ապերախտօրէն սուր քաշեցին Ալփասլանի որդւոյն Մելիք Շահի դէմ 1076ին:

Այն ատեն, երբ երկու ոխերիմ բանակներ նոյնի կը սպասէին զիրար փողոտելու, Պաղտատի Աբբասեան խալիֆան կը փութայ միջամտել եւ կը յորդորէ որ փոխանակ եղբայրասպան կռիւով զիրար փճացնելու, իրենց միացեալ ուժերը անհաւատ Յոյներուն դէմ գործածեն:

Երկու կողմերն ալ անսացին այս պատգամին:

Մելիք Շահ ողջագուրեց իր ըմբոստ ազգականները եւ Սիւլէյմանի յանձնեց արքայական դրօշակը ազատ համարձակ աշխարհակալութիւններ ընելու եւ ժառանգական իշխանութիւն մը հիմնելու Ալիսէն մինչեւ Պոլիս եւ անկէ ալ բոլոր ծանօթ եւ անծանօթ երկիրներու վրայ»: (Edward Gibbon Decline and Fall of the Roman Empire ed. J. B. Bury. London 1912 vol. VI. 258 *կամ Կոմմագենացի*, Փիլարտոս Հայը, 1930, *Հալէպ*, 41—42։

*Այս Հայաստանի Սելջուկ փոխարքայութիւնը հազիւ 1—2 տարի կեանք ունեցած է վասնզի Սիւլէյման ապստամբած է և Պաղտատի Խալիֆային միջնորդութեամբ անոր ասպարէզը փոխուած է և Փոքր Ասիան իրեն տիրակալութեան ձգուած է։*

*Իբրեւ փոխարքայ Հայաստանի՝ Սիւլէյմանի կը յաջորդէ Սրահանգը (Ա. Ալպօյաճեան,* Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմանները, 303-4:)

*Մելիք Շահ թոյլատրեց որ իրենց իշխանութիւնը պահեն այն հայ և վրացի իշխանները, որոնք իր գերիշխանութիւնը կը ճանչնային։ Այնպէս որ Հայաստանի միայն արեւելեան մասը ուղղակի Սելջուկ իշխանութեան ենթարկուեցաւ, իսկ անկէ դուրս մնային Վրաստան, Սիւնիք, Տաշիրք, ինչպէս նաև Կարին և Կարս։*

*Մինչեւ 1092 Մելիք Շահի մահը, Հայաստան այս վիճակին մէջ մնաց, Սելջուկ փոխարքան էմիր տիտղոսով կը նստէր Գանձակի մէջ։*

*Պարկիարուխի ժամանակ (1092—1104) Հայաստանի կամ Կովկասի շրջանին վերակացուն եղաւ իր մօրեղբայրը Իսմայէլ, Արկուին մեծ ամիրային որդին (տես. նոյն, 303) որ նախապէս էր* «երեսաց փոխան ի վերայ ամենայն աշխարհին Պարսից, (Ուռ. 294) *վասնզի Պարկիարուխ հազիւ 13 տարեկան էր իսկ յետոյ* «տիրեալ էր իբրեւ զթագաւոր ի վերայ ամենայն աշխարհի Հայոց» *թերեւս Պարկիարուխի խնլահասութենէն վերջ Հայաստան զրկուած ըլլալով։ Անոր իշխանութեանատեն* «ամենայն ոք տիրեալ էր հայրենեաց իւրոց» (Ուռ. 298—9)։ *Ինչ որ կը նշանակէ թէ բնիկ իշխանները կը պահէին իրենց հողերը։ Իրեն շռայլուած գովեստներէն յայտնի է թէ հայերը գոհ էին իր իշխանութենէն։*

*Դժբախտաբար Իսմայէլ կ'սպաննուի և 1098ին Մուհամէտ Տափար իբրեւ գահակից կամ փոխարքայ ինքը կ'ստանայ Ատրպատականը և Արեւելեան Հայաստանը։ այսինքն Հայաստանի այն մասերը, որոնք ուղղակի Սելջուկներէն կը կառավարուէին։ Գանձակ այս իշխանութեան գլխաւոր քաղաքն էր և իրեն ենթակայ կամ ճորտ ունէր շատ մը էմիրներ, թէ՛ Աղուանից և թէ՛ Հայոց երկիրներուն մէջ։*

*Այս կողմնակի Սուլթանութիւնն ալ կարճ տեւած է (1098—1104) վասնզի Պարկիարուխի մահէն (1104) վերջ, Մուհամէտ Տափար իր մականին տակ առաւ անոր սեփական Արեւմտեան Իրանը, Միջագետքը և Ասորիքը և կազմեց բաւական ընդարձակ Սուլթանութիւն մը, Համատան մայրաքաղաքով։*

*Հայաստան, որ այս Սուլթանութեան մաս կը կազմէր, դարձեալ հաստատուն վարչութիւն մը ունենալու բախտը չունեցաւ։*

*Սելջուկ պետութեան մէջ ծագած խառնակութիւններուն ազդեցութիւնը կրեց Հայաստանն ալ, ուր երեւան եկան այլազան իշխանութիւններ, մանաւանդ ԺԲ. դարուն առաջին տարիներուն, իբրեւ ստորաբաժանումները Սելջուկ մեծ պետութեան, բացի տակաւին ժամանակի մը համար իրենց անկախութիւնը պահող հայկական Բագրատունի, Սիւնի, Արծրունի, Մամիկոնեան, Աղուան, Պահլաւունի, Վրահայկական անկախ իշխանութիւններէն, ինչպէս նաև Արաբական տիրապետութեան շրջանին հաստատուած զանազան էմիրութիւն-*



*ներէն, որոնք Հայաստանի զանազան կողմերը հիմնուած էին և երկիրը իրարու մրցակից և հակառակորդ, կրօնքով և մտայնութեամբ այլազան վարիչներով կը կառավարէին երբեմն իրարու միանալով և երբեմն իրար դէմ կռուելով։*

*Քրիստոնեայ իշխաններու ներքեւ իրենց գոյութիւնը պահող պզտիկ տէրութիւններուն ամէնէն նշանակելին Վրաստանի թագաւորութիւնն էր, որ Հայ Բագրատունիներու իշխանութեան տակ, Վրաստանի աշխարհագրական դիրքէն օգտուելով, կը շարունակէր բաւական ուժ ներկայացնել և իր զօրաւոր կազմակերպութեամբ դեր մը խաղալ, Վրաստանէն դուրս Հայաստանի հողին վրայ բնական զինակից հանդիսանալով հայ բնիկ իշխանութիւններուն։*

*Մանաւանդ Տափարի մահէն (+1156) վերջ, Վրաստան կրցաւ նշանակելի դեր կատարել, բաւական զօրաւոր հարուածներ տալով Սելջուկ պետութեան Պարսկաստանի հատուածին, սակայն չկրցաւ միութիւն մը ստեղծել իր շուրջը համախմբելով իրենց անկախութիւնը պահող քրիստոնեայ տէրութիւնները վասնզի իրենց հողերը իրարու կից միապաղաղ տարածութիւն մը չէին և թէ այլազգի իշխանութիւններով շրջապատուած, կղզիացեալ վիճակ մը ունէին, հետեւաբար հազիւ կրնային իրենց գոյութիւնը քաշկռտել։*

*Եղաւ ժամանակ որ բոլորովին բաժան բաժան եղաւ Հայաստան և Իսլամ ու Քրիստոնեայ Պարսիկ, Քիւրտ, Արաբ։ Հայ, Աղուան, Վրացի և այլ ցեղերէ փոքրիկ իշխանութիւններ կազմուեցան անոր հողին վրայ։*

*Անոնց մէջ գտնուած են իշխանութիւններ որոնք փորձած են հայ տարրին վրայ կռթնող պետութիւն մը հիմնել և հակառակ իրենց իսլամ ըլլալուն իբրեւ «Հայոց Թագաւոր» (Շահի Արմէն) ներկայանալ (1)։ Այս իշխանութեան պատմութիւնը (2) ցոյց կու տայ որ այդ վեհապետները ինչպէս աշխատած են կազմել համադաշնակցութիւն մը՝ աւատապետական կարգերով, առանց Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող բնիկ և եկուոր իշխանական տուներու գոյութիւնը ջնջելու, սակայն չեն յաջողած, վասնզի ոչ մէկ ներդաշնակութիւն և համկցողութիւն կար Հայաստանի մէջ կազմուած իշխանութիւններուն միջեւ, և ոչ ալ Մուհամէտ Տափար Սելջուկ վեհապետին մահէն վերջ, գերիշխան վեհապետի մը հաւասարակշռող հեղինակութիւնը։ Այնպէս որ իրարու հակառակորդ իշխանութիւնները մերթ կրօնական և մերթ ցեղային պատճառներով, շարունակ իրարու հետ պայքարեցան։*

*Բիւզանդացիք թէեւ բաւական հեռու վանուած Եփրատէն, ուղղակի և անուղղակի այդ կռիւներուն ուժ տուին՝ երբեմն խառնուելով այդ մանր սակայն քանդող և աւերող ներքին շփոթութիւններուն, մէկ կամ միւս կողմին դիտումնաւոր պաշտպանութիւններ ընծայելով, այնպէս որ երկիրը զարհուրելի կերպով աղէտներու մատնուած և չարաչար փնասուած և ուժասպառ եղած էր երբ Մոնկոլները երեւացին պատմութեան հորիզոնին վրայ։*

---

(1) Բոլոր այս իշխանութիւններուն վրայ առանձին առանձին եւ յատուկ տեղեկութիւններ ստանալու համար դիմել՝ Պատմ. Հայաստանի Սահմանները գործը (էջ 66—76 եւ 257—326):

(2) Տես. Պատմ, Հայաստանի Սահմանները էջ 311—314, այս իշխանութեան պատմութիւնը ներկայացուած է բաւական ընդարձակօրէն:

## ՀԱՅԱՍՏԱՆ ՄՈՆԿՈԼԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

(1220—1382)

*Մոնկոլները, որոնք կը պատկանէին Թրքական ասպատակ ցեղերու եւ Թուրք ալ կը կոչուէին, արշաւանքներու մէջ ամէնէն հեռուները հասնողները հանդիսացան, ինչպէս նաև ամէնէն հզօրը, վայրագը կամ աւելի լաւ է ըսել՝ ամէնէն աւելի* Նետողը, *այնպէս որ հայ պատմիչներ զանոնք կոչած են* «Ազգ Նետողաց» (*Ալիշան,* Յուշիկք, Բ. 411)։ *Ասոնք մէկ ճիւղն էին Հսի Ուէյ* (Hsi Wei) *ժողովուրդին, և հպատակ էին* Խիտաններու *և ապա Չին-Թաթարներու, որպէս բնակավայր ունենալով* Բուրխամ (Burkham) *լեռները,* Օնոն *և* Կերուլան *գետերու միջեւ։ Բուն նախնական Մոնղոլ ցեղեր այժմ ալ գոյութիւն ունին և գրեթէ քիչ բացառութեամբ կը գրաւեն նոյն հողերը, զորս կը գրաւէին Ջինկիզ Խանի օրով — այն է Չինական մեծ պարիսպին հիւսիսային կողմը Մանչու* (Mandshu) *երկրամասին արեւմտեան մասերը, տարածուելով մինչեւ Պայքալ լիճին հիւսիսային եզերքը։ Հոն կը թափառէին Մոնկոլ զանազան ցեղեր, որոնք ատելութեամբ իրարու դէմ լեցուած էին։*

*Մինչեւ ԺԳ. դար Մոնկոլները միայն Չին աղբիւրներու մէջ կը յիշատակուին, մօտաւորապէս Քր.է* 1766 *տարի առաջ, Թանգ* (Teng) *արքայական տան օրով* (*Տիրայր Արք.* Ֆրիկ Դիւան, 1952 *Նիւ-Եորք*, 579)։

*Մեր պատմագիրներէն Կիրակոս Գանձակեցի առաջին անգամ զանոնք կը յիշէ Թաթար անունով, իսկ Ստեփանոս Օրբելեան Մուղուլ և կը կարծէ թէ գիւղացիները միայն Մուղուլներուն Թաթար անունը կու տային և Թաթարը Մոնկոլին ռամկօրէնն էր* (*տես Գ. Ալթունեան* Թաթարների արշաւանքը (1) *ԱՐԱՐԱՏ* 1912, 663)։ *Կ՚երեւի թէ հիմ մը ունի աս հաւաստումը, վասնզի Չինացիք Մոնկոլ բառը կը թարգմանէին «քաջ», «արի» և «աներկիւղ»* (Ֆրիկ, 579) *մինչ Հեթում* (31) *Մոնկոլը կը թարգմանէր վարատական կամ փախստեայ։*

*Մոնկոլները Թրքական ասպատակ ցեղերու մէջ ամէնէն սոսկալին էին։ Անոնք ոչնչացուցին մշակոյթի և քաղաքակրթութեան այն մնացորդները, որոնք Սելջուկներու բարբարոսութիւններէն զերծ մնացեր էին։ Կեդրոնական և Մերձաւոր Ասիան անոնց ոտքին տակ տխուր աւերակներու շեղջակոյտներու վերածուեցան, և Արեւելքը ամայացաւ, վասնզի իր վաճառաշահ, հարուստ և շքեղ շահաստանները կողոպտուեցան։*

*Հայաստան ևս չարաչար տուժեց այս ժողովուրդին արշաւանքէն։ Թէպէտ անոնց նպատակակէտը Մերձաւոր Ասիոյ հարուստ երկիրներն էին, սակայն ինչպէս բոլոր Ասիական բարբարոս ժողովուրդներ, ասոնք ալ անցան իրենց արշաւուղիին վրայ գտնուող Հայաստանէն, որ անգամ մը ևս կրեց աշխարհակալական արշաւանքներու աւերիչ հետեւանքները։*

---

(1) Ասիկա յօդուածաշարք մըն է որ գրուած է աղբիւր գործածելով ժամանակակից եւ յաջորդ դարերու Հայ պատմագիրները, ինչպէս նաեւ Եւրոպացի, արաբ եւ թուրք պատմիչներու եւ ուղեգիրներու գործերը: Մեծապէս օգտուած եմ այս յօդուածաշարքէն, որուն նախնական բնագիրը ռուսերէն էր:



*Մոնկոլները ճակատագրական դեր մը կատարած են ոչ միայն մեր ազգին, այլ գրեթէ աշխարհի բոլոր ազգերու պատմութեան մէջ քիչ բացառութեամբ, վասնզի անոնք անօրինակ նախճիրներ գործած են ընդարձակ տարածութեամբ երկիրներու մէջ և կազմած են աշխարհի ընդարձակագոյն պետութիւնը, որ կը տարածուէր Ծայրագոյն Արեւելքէն կամ Խաղաղական Ովկիանոսէն մինչեւ Կեդրոնական Եւրոպա։*

### ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒ ՖԻԶԻՔԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ ԵՒ ԲՆԱԿԱՎԱՅՐԸ

*Այս ցեղին մարդիկը, կերպարանքով կը տարբերէին արեւելքի ծանօթ ժողովուրդներէն, վասնզի* «էին տեսլեամբ կերպարանաց դժոխատեսք եւ ահագնալուր, մօրուս ոչ ունելով բայց սակաւուց ոմանց կամ ի կլափն կամ ի շուրթն. ակն նեղ եւ արագատես, ձայն նուրբ եւ սուր, բազմակեացք եւ տեւողք» (Կիրակոս 147) *Իսկ Թաթարներու Պատմութեան հեղինակը* (1) *կ՚ըսէ թէ* «Զի ոչ էին իբրեւ զմարդ առաջինքն, որ եկին ի վերին երկիրն, այլ էին անագինք տեսողաց եւ անպատմելիք, զի գլուխն մեծ էր իբրեւ զգոմիշու, աչերն նեղ՝ իբրեւ զձագու, քիթն կարճ՝ իբրեւ զկատուի, դունչն մռունչ իբրեւ զշան մէջքն բարակ զինչ մրջմնան, ոտներն կարճ զերթ խոզի, մօրուս բնաւ իսկ չունէին, տաւլաթ ունէին զառիւծու. ձայն ճչող զերդ արծուի, ուր չպատմէր, անդ զտանէր: Կանայքն իւրեանց ունէին զդականի սուլուլի վերանալի, ծածկեալ զարագուրով գրպակի, երեսն լայն պեւեքի սպանմամբ դեղով ծեփէին, իժի նման ծնանէին, եւ զայլոյ պէս կերակրէին: Մահն ի նոսա իսկի չերեւիւր, վասն այն՝ որ երեք հարիւր տարի ապրէին, այս ցեղ էին առաջինքն որ եկին յաշխարհն վերին եւ հաց ամենեւին չուտէին» (տես Երուս. 1870 էջ 15—16)։

*Օրբելեան Բ.* (147) *ընդհակառակը զանոնք կը ներկայացնէ* «պատկերով յոյժ գեղեցիկք եւ լերկք ըստ կանացի դիմաց».

*Հեթում* (31) *կ՚ըսէ թէ անոնք կը բաղկանային եօթը տոհմերէ կամ ազգութիւններէ, որոնց գլխաւորներէն մէկն էր* Մուղալը (*Եւրոպացիներու Մոնկոլը*)։ *Մոնկոլներու իշխանութեան կեդրոնավայրը կը կոչուէր Ղարաղրում կամ Գարագորում Գարախիտա աշխարհին մէջ, Թիպեթի հիւսիսային կողմը։*

*Անոնց նախնական բնակավայրը կը բաժնուէր երկու մասի,* Ներքին *և* Արտաքին:

*Ներքինը Չինական աշխարհին դրացի՝ կրած էր անոր քաղաքակրթական ազդեցութիւնը, և խաթարուած էր իր ազգային դրոշմը։ Իսկ Արտաքինը կը նկատուէր Մոնկոլներու նուիրական երկիրը, հեռու մնացած էր արտաքին ազդեցութիւններէն։ Ոչ Չինական մշակոյթը և ոչ ալ Իսլամ կրօնքը կրցած էին հոն մուտք գործել. Մոնկոլները պահած էին հոն իրենց ցեղին հարազատ կեանքն ու մտայնութիւնը որպէս վաչկատուն, ամէն կարգ կանոնէ ազատ՝ անսանձ ժողովուրդ մը։ Զ. դարուն երբ Թուրքերը տիրեցին երկրին, ստիպուեցան ճանչնալ անոնց ներքին ազատութիւնը։ Երկրին կլիման ձմեռը սաստիկ ցուրտ ու*

---

(1) Երբեմն սխալմամբ Մաղաքիա Վրդ.ի մը վերագրուած:

ամառը սաստիկ տաք էր։ Մոնկոլները երբեք հողագործ չէին եղած, բահ ու բրիչով աշխատութիւնը իրենց համար ամօթ ու ստորնութիւն կը համարէին։ Խաշնարածութիւնը ազգային բնոյթ առած էր, բայց որովհետեւ հարաւէն փչող փոթորիկները իրենց արօտավայրերը յաճախ աւազով կը ծածկէին, ուստի անոնք ստիպուած էին նոր մարգագետիններ փնտռել։ Հետեւաբար խմբովին կը գաղթէին դէպի աւելի բարեբեր շրջաններ։ Լեռներէն ու ձիւնահալէն կազմըւած գետակները աւազներու տակ կը կորսուէին։ Առատ ջուրի միակ աղբիւրը Պայքալ լիճն էր։ Ձմեռը հիւսիսէն ձիւնախառն, իսկ ամառը՝ հարաւէն աւազախառն փոթորիկները դժոխքի կը վերածէին այս երկրամասը։

Միայն այս երկիրին գարունը անզուգական է։ Ամբողջ Մոնկոլիան ծաղկաստան մը կը դառնայ, և այս հիասքանչ տեսարաններն են որ կը ներշնչեն անոնց սիրուն ու գեղեցիկ գորգերու հիւսքը։ Մոնկոլին համար տարին կ'սկսի գարունով։

ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒ ԿԵԱՆՔԸ

Մոնկոլի մը հայրենիքը իր վրանն ու իր ձիուն կռնակն էր։ Մոնկոլները կ'ըսէին «Մարդ վրանի մը ներքեւ կը ծնի ու ձիու մը կռնակը կը մեռնի»։ Վրանը եուրթ կը կոչուէր, զոր կը ծածկէին կապերտներով և մորթերով։ Կէս ժամ բաւական էր զայն հաստատելու և կամ քակելու համար։ Անոնց կահ կարասին կը կազմէին քանի մը նախնական առարկաներ։ Ամէն ինչ շինուած էր մորթէ, հագուստ, կօշիկ, գլխանոց, անկողին, ամաններ, ծածկոց, վահան և այլն։ Ասոր համար Մոնկոլի մը հարստութիւնը իր անասուններն էին։ Միսը՝ ուտելու, մորթը՝ ծածկուելու, ոսկորները՝ զէնք և այլ գործիքներ շինելու կը գործածուէին։

Իրենց սնունդը գրեթէ միայն միս էր, «Խոտը անասուններուն եւ անասուններն ալ մարդուն համար են»։ կ'ըսէին և սուրբ եւ անսուրբ մսի մէջ խտրութիւն չէին դներ, — թէեւ ձիու միսը կը գերադասէին — և բոլոր կենդանիներն ալ կ'ուտէին, նոյնիսկ շուն, կատու և մուկ, մորթուած, սպաննուած կամ մեռած, կը բաւէ որ միս ըլլար։ Միսը կտոր կտոր կ'ընէին, կ'եփէին կամ կը տապկէին առանց աղի, նորէն կը մանրէին և ետքը կ'ուտէին։ Ոմանք ուտելու ատեն ուղտի պէս կը չոքէին և ոմանք կը նստէին։ Ծառաներն ու տէրերը միասին կը ճաշէին առանց աստիճանի խտրութեան։ Ձեռքով կ'ուտէին և իրենց ճենճոտ ու ճարպոտ ձեռքերը կը սրբէին իրենց ոտնամաններուն։ Այս պատճառով իրենց կօշիկները կը մնային միշտ կակուղ։

Մոնկոլները եփուած թանով կը շինէին ու արեւով կը չորցնէին տեսակ մը ուտելիք, որ կը յիշեցնէր չորթանը որ ամէն եղանակի կը դիմանար։ Զայն կ'ուտէին ջուրին կամ թէյին մէջ հալեցուցած կամ մանրած։

Կը խմէին մատակ ձիու թթու կաթէն պատրաստուած տեսակ մը ոգելից ըմպելի, զոր Գումիս կը կոչէին, և գինի։ Կենդանիներու մորթը իրենց մերկ մարմնոյն վրայէն կը հագնէին, եղանակին համեմատ՝ մազերը ներս կամ դուրս։ Այր թէ կին նոյն ձեւով կը հագուէին ու անխտիր մեծ թէ փոքր, այր թէ կին, ամէնքն ալ ձի կը նստէին, նոյնիսկ ամէնէն աղքատը։ Ճամբորդութեան և արշաւներու միջոցին, ձիուն վրայ կը քնանային՝ յենած երկար ձողի մը։ Թէեւ ձիերը փոքր էին, սակայն տոկուն, ժուժկալ և սակաւապէտ։

Մոնկոլները երկու պէշ բաներ ունէին, գինովութիւն և աղտոտութիւն։



Իրենց տեւական շփումն ու կենակցութիւնը անասուններու հետ, զիրենք եւս մարդ-անասուն դարձուցած էին։

Կաթը շատ յարգի էր, ու կը կթէին անասունները որքան որ կրնային։ Մայր մը իր զաւկին մինչեւ 5—6 տարեկանը, ստիպուած էր կաթ տալ։ Փոխանակութեան նիւթը կը կազմէր անասունը։ Անհատն ալ իր կարողութեան չափով կը փոխանակուէր անասունով։ Պատերազմի մը միջոցին եթէ կողոպտուած անասունները աւելի յարգի ու կարեւոր ըլլային, բռնուած գերիները կ'սպաննէին, իբրեւ աւելորդ բեռ մը։ Մոնկոլին համար օգտակարն էր, որ արժէք մը կը ներկայացնէր, և ինչ որ օգտակարութենէ զուրկ էր, պէտք էր անհետանար։ Բարեկամի մը հանդէպ անկեղծ ու հաւատարիմ էին, սակայն թըշնամիին հանդէպ ամէն խորամանկութիւն ու կեղծիք ներելի էր, նոյնիսկ հակառակ տրուած երդման ու ուխտին։ Մոնկոլ մը երբ ստէր, ա՛լ կը ստէր բառին բովանդակ առումով, իսկ երբ օիտակը խօսէր անկարելի էր ստել տալ։

Բնակչութեան մարդահամարը կը կատարուէր վրանով, որուն գլուխն է-այրը։ Առտնին գործերը և անասուններուն խնամքը յանձնուած էին կիներուն, որոնք ընկերութեան մէջ դիրք ու յարգանք կը վայելէին։ Անոնք բազմակին էին, սակայն առաջին կինն էր որ կը կառավարէր ընտանիքը—եուրթը, եւ ինքն ու իր զաւակները միայն կրնային ժառանգել։ Հօրը մահէն վերջ զաւակը կ'ամուսնանար իր հօր միւս կիներուն հետ, նոյնպէս եղբայր մը՝ իր եղբօր մահէն ետք, անոր կնոջ հետ։ Ցեղախումբին պատկանող բոլոր կիներն ու աղջիկները ամէնուն կողմէ կը յարգուէին և ունէին բարձր բարոյական։ Աններելի էր կնոջ անհաւատարմութիւնը, մինչ այրերը ազատօրէն կը խառնակէին օտար կիներու հետ։ Կ'ատէին գողութիւնը և գողերը անխնայ կ'սպաննէին։ (Հմմտ. Պետրոս քհ. Գասպարեան «Ինչպէս կ'ապրէին Մոնկոլները», Նոր Օր, 28 Յուլիս 1950, և Գ. Ալթունեան Արարատ 1912, 957—8)։

Մեր պատմիչներէն Հեթում (70) շատ մեծ համարում չունի Թաթարներու մասին։ «Զմարդասպանութիւն եւ զպոռնկութիւն չհամարին ի մեղս, առնուն բազում կանայս եւ զմօրուն պարտական է առնուլ որդին, եւ եղբայր զկին եղբօրն»։

Քիչ մը վարը կ'ըսէ «Ոչ կամին զի ոք ստեսցէ, այլ ինքեանք կամակար ստեն, բաց ի գործոց պատերազմի եւ 'ի խոստովան լինելոյ զյանցանս, որ հաւատարմութեամբ զամենայն ինչ խոստովանին»։

Օրբէլեան Ստեփանոս (Բ. 146—147) Մոնկոլներու նկատմամբ հայ եւ օտար պատմիչներու և ճանապարհորդներու կողմէ յայտնուած վերոգրեալ կարծիքներուն հակառակ՝ նպաստաւոր կերպով կ'արտայայտուի, զանոնք ներկայացնելով «անաստուածք եւ անօրէնք, բայց բնութեամբ օրինացն զարդարեալք, ատեցողք աղտելի գիջութեանց եւ ամենայն վնասակար գործոց, արդարամիտք ու միմեանս, միամիտք եւ հնազանդք առաջնորդի իւրեանց, իրաւարարք եւ իրաւադատք, իսկ բարուք աղքատի եւ ընչաքաղցք, նեղիչք եւ կեղեքիչք մարդկան»։

Ինչպէս վերը յիշուեցաւ անոնց ֆիզիքականն ալ գեղեցիկ կը ներկայացնէ և կը յարէ թէ՝ էին «ծանօթք Քրիստոսեան հաւատոյ եւ յոյժ սիրողք

Քրիստոնէից, յաղեղունս կորովիք եւ յամենայն պատերազմունս յոյժ հնարաւորք»:

*Օրբելեան կարծես այս տողերը գրած է անոնց նախնական շրջանին համար, վասնզի անմիջապէս կ'աւելցնէ թէ* «Բայց յետոյ թողին զբնական բարս իւրեանց եւ ելին ի հայրենի սահմանէն զոր ունէին, մտին ընդ Մահմետի օրէնսն եւ ուսան զամենայն պղծութիւն եւ անկարգութիւն եւ յանառակ կեանս վարէին»:

*Վարդան վրդ. եւս որ ժամանակակից է Մոնկոլներուն, այնքան գէշ չ'արտայայտուիր անոնց մասին, զի կ'ըսէ թէ* «էին պարկեշտ ի կերակուր եւ ի հանդերձ եւ ի կուսութիւն, եւ ի չափաւոր ամուսնութիւն եւ ի խառնակութիւն. քսան ամաց կին առեալ, ասեն, մինչ յերեսուն ամն ի շաբաթն երեք հետ խառնէին եւ անդի մինչ ի քառասուն ամն՝ ամսեանն երեք, եւ անդի մինչ ի յիսունն՝ տարեանն երեք, եւ ընդանցեալ՝ բնաւ ասեն ոչ մերձենալ, ուստի մանաւանդ կարէին խաբել» (Վարդան, 160):

*Մոնկոլները, ինչպէս կը տեսնուի, զգաստ մարդիկ կը ներկայացուին։*

## ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՕՐԷՆՔ

*Այնպէս կը թուի թէ անոնք շատ կապուած էին իրենց սովորութիւններով և բարքերով իրենց նախնիքներուն։ Իրենց համար աւանդութիւնը սուրբ էր։ Մինչեւ Ջինկիզ անոնք կը կառավարուէին սովորութիւններով և աւանդութիւններով, որոնք օրինագիրքի տեղ անցած էին, և սրբութեամբ կը պահուէին։*

*Մոնկոլ առաջին օրինագիրքը Ջինկիզ Խան հրատարակեց* 1206*ին Խուռսիոյ մէջ, վասնզի այսքան ընդարձակ երկրի մը և այսքան խառն բնակչութեամբ տարածութիւններու համար օրէնքներ անհրաժեշտ էին։ Այս օրինագիրքը կը կոչուէր* Եասախ (*կը նշանակէ* արգելք)*։ Ան կ'արգիլէր սուտ խօսիլ, գողնալ, ուրիշին կնոջ հետ խառնակիլ և կը հրամայէր ուրիշները իր անձին պէս սիրել, չհայհոյել և նոյնիսկ չգիտնալ և կամաւոր կերպով իրենց հնազանդողները չմեռցնել, քաղաքներու և Աստուծոյ տուներուն խնայել և հարկ չառնել անոնցմէ, ինչ կրօնքի ալ պատկանին* (Վարդան, 160)*։*

*Այս օրինագիրքը կը պարունակէր նաեւ որսի համար օրէնքներ, վասնզի Մոնկոլներուն համար էական էր որսորդութիւնը, իբրեւ ապրուստի անհրաժեշտ աղբիւր և իրենց հաճոյքներէն մեծագոյնը (հմմտ.* Ֆրիկ 587)*։*

*Տիրապետող և յաղթական ցեղը կը համարուէր սրբազան, և ազատ՝ ամէն տեսակ ձեռական աշխատանքէ, բացի զէնքի գործածութեան պարտականութենէն։ Ձեռական աշխատանքը պարտադիր էր պարտեալներուն, ստրուկներուն, գերիներուն և օտարներուն (հմմտ. Տիրայր Արք.,* Ֆրիկ Դիւան, 587)*։*

*Ցեղին ապագայ ընդհ. պետին և պետութեան ղեկավարին ընտրութիւնը պէտք է կատարուէր կայսերական տան անդամներէն և կամ ականաւոր ցեղապետներու մէջէն։*

*Պրոֆ. Վերնադսկիյ, որ այս օրինագիրքը ուսումնասիրած է, անոր մասին խօսելով կ'ըսէ թէ՝* «Մոնկոլներու միջազգային իրաւունքի ընդհանուր



առաջադրանքն էր — հաստատումը տիեզերական խաղաղութեան: Այս նպատակին կարելի պիտի ըլլար հասնիլ՝ բոլոր ժողովուրդները խանի կամքին ենթակայ դարձնելով կա՛մ միջազգային բանակցութիւններով եւ կա՛մ, եթէ ենթարկումը բանակցութիւններով անկարելի դառնար, պատերազմով («Ս. Վեռնադսկի, 1954 Յունուար»):

*Մեծ Խանը կամ Մոնկոլներու Կայսրը Աստուծմէ արտօնուած էր նուաճելու աշխարհը և տիրելու անոր։*

## ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒ ԿՐՕՆՔԸ

*Վայրագ և անքաղաքակիրթ այս ժողովուրդը որ* «անաստուած» *և* «անօրէն» *էր ըստ Ստեփանոս Օրբէլեանի, բոլորովին զուրկ չէր հաւատալիքներէ։ Բոլոր նախնական ժողովուրդներուն պէս շատ պարզ կրօնք մը ունէր նախ, առանց որոշ պաշտամունքի։*

«Կային աւազակութեամբ, վայրենաբնակք եւ յոյժ աղքատք, զբաղում ժամանակս: Եւ պաշտօն ինչ ոչ ունէին բայց միայն պատկերս Թաղեայ, զոր տակաւին կրէին ընդ ինքեանս ի պէտս կախարդութեան: Բայց ընդ արեգակն զարմանային, որպէս ընդ զօրութիւն ինչ աստուածային» (Պատմութիւն Թաթարաց, *Երուսաղէմ* 1870 *էջ* 12):

*Ըստ Հեթումի* (70) «Թաթարք ճանաչեն զմի Աստուած անմահ, զոր եւ կարդան յօգնութիւն, այլ չունին ինչ պաշտօն Աստուծոյ, ոչ աղօթս ունին եւ ոչ պահս»:

*Կիրակոս Գանձակեցի պատմագիրն* (148) *ալ կը հաստատէ թէ* «Պաշտօն ինչ ոչ գոյր առ նոսա կամ երկրպագութիւն, բայց ստէպ զանունն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. զայս թէ «զչէն Աստուծոյ զոհանային եւ կամ զայլ ոմն Աստուած կոչէին, մեք ոչ գիտեմք եւ ինքեանք եւս»:

*Ուրեմն Մոնկոլները հին ատեն բնապաշտներ էին։ Եւ որչափ ատեն որ իրենց հեռաւոր երկիրին մէջ մեկուսացած ապրեցան, շրջապատուած գրեթէ մշակութային մակարդակով իրենց հաւասար ցեղերով, մինչեւ ԺԲ. դար, այսինքն Ջինկիզի ատեն, պահեցին իրենց կրօնական պարզ հասկացողութիւնը՝ հասարակաց Ծայրագոյն Արեւելքի և կեդր. Ասիոյ կիսավայրենի ցեղերուն։*

*Անոնք կը հաւատային միակ Աստուծոյ մը* (Թանկրը)*, պատճառ և արարիչ միւս բոլոր աստուածներուն, որոնք ստեղծուած են և կան՝ անոր արտօնութեամբ և իշխանութեամբ (հմմտ. Տիրայր Արքեպս.՝* Ֆրիկ Դիւան 1952 *Նիւ-Եորք,* 587) *և չունէին ծիսակատարութիւններ և կրօնական գիտելիքներ։ Իրենց պաշտամունքին գլխաւոր առարկան ըրած էին, ինչպէս Հոները,* երկաթը. *ուրկէ կը շինէին իրենց զէնքերը։ Տակաւին Զ. դարուն, Արաբ-Իսլամ աշխարհակալութիւններէն առաջ, այս պաշտամունքը կը շարունակուէր, վասնզի պատմագիրներ կը գրեն թէ Բիւզանդացի դեսպաններ,* «*Թուրք երկրի սահմանագլուխին վրայ ներկայ գտնուած են արարողութեան մը, որուն միջոցին* երկաթ *նուիրեցին իրենց*»*, (հմմտ. Մ. Սերոբեան,* Մեր Պայքարը, 5)*։*

*Այս վիճակը նոյնիսկ Ջինկիզէն ետք շատ քիչ փոփոխութիւն կրած է, եթէ*

հաւատ ընծայել կարելի է Կիրակոս Վրդ. Գանձակեցիի, որ իբր թէ Հեթում Թագաւորէն իմանալով կը խօսի «աշխարհ»ի մը վրայ, որ «անդր քան զՂացայիքն» այսինքն Չինաստանէն անդին էր, և կու տայ այնպիսի տեղեկութիւններ, որոնք անհաւատալի են։ Իբր թէ հոն «կանայք են ի ձեւ մարդոյ՝ բանականք, եւ արքն ի կերպարանս շանց եւ են անբանք»: Այս տեղեկութիւնները նոյնիսկ աւելորդ է յիշել (տես. Կիրակոս, 216), որովհետեւ արժէք չունին և իրական չեն։

Կիրակոս, ի մէջ այլոց կ'ըսէ թէ «կայ եւ աշխարհ բազում կռապաշտից, որ պաշտեն կուռս կաւեղէն մեծ յոյժ, անուն Շակմոնիա», որ իբր թէ 3040 տարեկան էր (Կիրակոս, 216) և կը յիշէ «այլ միւս եւս ոմն՝ որում անուն էր Մազրին», որուն «անհնարին» մեծութեամբ պատկերը շինած էին։ Անոր քուրմերը «հանդերձ կանամբք եւ մանկտովք... անուանին Տոյինք, զերծածք հերօք եւ մօրուօք, ունին եւ փիլոն դեղին ըստ նմանութեան քրիստոնէից, բայց զլանջօքն ունին եւ ոչ թիկամբք»:

Կիրակոս այս երկու աստուածներուն մասին կը խօսի իր գործին մէջ ևս այլուր (տես. 233—4), ինչպէս նաև Վարդան (159—160)՝ գրեթէ միեւնոյն ձեւով։

Մինչեւ ԺԳ. դար երկար ժամանակ անցած էր և, ինչպէս կը տեսնուի, անոնք որ անշարժ մնացած են իրենց նախնական օրօրանին մէջ, չէին կրցած որոշ զարգացման մը հասնիլ, և մէկ կրօնքի մը յարիլ։ Ընդհակառակը զանազան կրօնքներու, ինչպէս Շամանիզմի, Մովսիսականութեան, քրիստոնէութեան, Իսլամութեան, Պուտտայականութեան միջեւ տատանած են, մինչեւ որ Չինաստանի տիրակալող Մոնկոլները՝ իրենց հպատակներուն կրօնքին՝ Պուտտայականութեան և Մերձաւոր Ասիոյ մէջ հաստատուողները 1303ին վերջնականապէս Իսլամութեան յարած են։

Բայց մինչեւ այն ատեն Ծայրագոյն Արեւելքի վաչկատուն ցեղերէն ա, նոնք որ զանազան պատճառներով դէպի արեւմուտք շարժեցան, և իրենց թափառումներուն միջոցին, շփումներ ունեցան մշակոյթով իրենցմէ բարձր ժողովուրդներու հետ, անոնց ազդեցութեան տակ, քիչ շատ զարգացան (հմմտ. Գ. Ալթունեան, Արարատ 1912, 962 և 964)։

Առաջինը այն ազգերուն, որոնց հետ շփում ունէին անոնք՝ Չինացիք էին, որոնց Պուտտայական կրօնքը քիչ շատ տարածուեցաւ Մոնկոլներու մէջ։

Նոյնպէս յարաբերած են իսլամացած երկիրներու հետ — իբր բարեկամ կամ թշնամի կամ վարձկան Խալիֆային բանակին մէջ — և շատեր իրենց բնակավայրէն դուրս իսլամացած են։

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆԸ ԹՈՒՐՔ ՑԵՂԵՐՈՒ ՄԷՋ

Քրիստոնէութիւնը Թուրքերու մէջ չէ կրցած տարածուիլ դժբախտաբար, խառնակ և վաղանցուկ յաջողութիւններէ ետք անհետանալով, նոյնիսկ քրիստոնեայ քարոզիչներու մրցակցութեան պատճառով, մինչ եթէ յաջողէր, թերեւս աշխարհի ճակատագիրը այսօր տարբեր պիտի ըլլար։

Քրիստոնեայ քարոզիչներ շատ կանուխ, նոյնիսկ Դ. դարուն Խորասանի



ճամբով մտնելով հոն գործել սկսած են։

334ին Մերվի մէջ քրիստոնեայ եպիսկոպոս մը կար (Գ. Ալթունեան, 1912 Արարատ, 965)։

Քրիստոնեաներ քիչ յետոյ կու գան Մոնկոլիա և ամբողջ Միջին Դարուն շարունակ կը յիշուին առաքելութիւններ և տեւականօրէն հոն ապրող քրիստոնեաներ (Նոյն)։

Բայց մինչդեռ Պուտտայական և Մահմետական կրօնները ժողովրդային զանգուածներուն վրայ տիրապետած էին, անհատ քրիստոնեաները, երբեք այդ ուժը չէին ունեցած. վասնզի քրիստոնէութիւնը ժողովրդային զանգուածին կրօնքը չէր եղած։

Զ. դարուն սկիզբը (503), արքեպիսկոպոսութիւններ հաստատուած էին Հերաթի և Սմրղանտի մէջ։

Զաքարիա Հռետորի եկեղեցական պատմութիւնը (տպ. Լէյպցիկ 1899 էջ 254—256). որ գրուած է Զ. դարու առաջին կէսին, կը յիշէ որ Հոնաց աշխարհի (1) մէջ քրիստոնէութիւնը քարոզուած է Կաւատի (488—531) օրով, երբ Հռոմէական երկիրներէ գերի բերուած քրիստոնեաները կը վաճառուին Հոներուն և հոն փոքրիկ համայնք մը կը կազմեն։

Ապա կը հրաւիրեն Աղուանից (Արան) եպիսկոպոս Քարդուշտը, այսինքն Մխիթարը, որ հետը առած քանի մը կրօնաւորներ, Հոնաց Դուռէն կ'անցնի և հոն կը մկրտէ գերիներէն շատերը, և Հոներէն մաս մը քրիստոնեայ կը դարձնէ։

Երկու տարի յետոյ Քարդուշտ ետ կը դառնայ Հոներու երկիրէն և իրեն տեղը կը ղրկէ Մաք անունով հայ եպիսկոպոս մը քանի մը քահանաներու հետ: Մաք հոն կը շինէ աղիւսակերտ եկեղեցի մը։

Նոյնը կը հաստատէ 547—549 թուականներուն Կոզմաս Հնդկաչու, գրելով թէ Զ. դարուն Բակտրիայի, Հոնաց աշխարհի, Պարսկաստանի, Մարաստանի, Ելամացիներու երկիրին և բոլոր պարսիկ երկիրներու մէջ կը գտնուէին մեծ թիւով եկեղեցիներ (Topographia Christiane Գ. 179)։ 553ին կը յիշուի Գիլանի մէջ Նեստորական եպիսկոպոսանիստ աթոռ մը (Marquart, Eransahr 124—125)։

Աւելի որոշ գաղափար մը կու տայ Նեստորական եկեղեցիին վրայ 554ին Յովսէփ կաթողիկոսի գումարած ժողովին ներկայ եպիսկոպոսներու ցանկը, ուր կը տեսնուին բազմաթիւ թեմեր Պարսկաստանի հեռաւոր վայրերը (Braun, 161—163)։ Է. դարուն Չինաստանի մէջ Նեստորականութեան քարոզիչը եղած է Սիւրիացի եկեղեցական մը։ Ը. դարուն վերջերը Տիմոթէոս Ա. (780—823), նոր թեմեր կը հիմնէ Պարսկաստանի հեռաւոր սահմաններուն վրայ և քրիստոնէական քարոզութեան նոր ասպարէզներ կ'ստեղծէ մինչեւ անգամ Հնդկաստանի, Թուրքեստանի, Չինաստանի և Եէմէնի մէջ։ Իբր թէ նոյնիսկ կը յաջողի Գարագորումի Թուրք Խաքանը քրիստոնեայ դարձնել։

Մար Ցեչոսիոուղ Կումդանի երէցն և քորեպիսկոպոսը, որ 784ին Սի-Նգան-Ֆուի նշանաւոր Նեստորական արձանագրութեան հեղինակն է, Պալխի

---

(1) Հոնաց աշխարհը ըստ Եղիշէի նոյնն է Քուշանաց աշխարհին հետ:

երէցին որդին էր (հմմտ. Maquart. Osteuropaische Streifzuge էջ 283 Ծանօթ)։

Այս և նման բազմաթիւ վկայութիւններ կան, որոնք ցոյց կու տան թէ Ձ. և յաջորդ դարերուն բաւական տարածուած էր Քրիստոնէութիւնը, գլխաւորաբար Նեստորական քարոզիչներու ձեռքով, Պարսկաստանի հեռաւոր սահմաններուն վրայ (Հ. Ներսէս վրդ. Ակինեան ՀԱ. 1931 էջ 404—405)։

Մասնաւորապէս Մեսախի ճանապարհին հետեւելով է որ Նեստորականները թափանցած էին նոյնիսկ Չինաստանի սահմաններէն ներս և հոն ունէին եկեղեցիներ։ Անոնք յաջողած էին երկիրին իշխողներէն զանազան արտօնութիւններ և առանձնաշնորհներ ստանալ (Գ. Ալթունեան, Նոյն, 965), և ազատ մուտք ունենալ մեծ խանին և խաներու արքունիքները (Նոյն) բայց իրենց յաջողութիւնները չափազանցուած էին դիտմամբ։ Իրենք կը տարածայնէին ամէն կողմ թէ հազարաւոր ժողովուրդ և մեծ խաներ և իշխաններ արդէն մկրտած են և քրիստոնեայ ըրած, մինչ իրականութեան մէջ այնպէս չէր (Նոյն, 967)։ Ճիշդ է որ մեծ ջանք թափած են և որոշ յաջողութիւններ ալ ձեռք բերած էին, ինչպէս Ժ. դարուն վերջերը Քէրայիթ Թուրքերը կրցած էին Նեստորական քրիստոնեայ դարձնել։

Նեստորականներու հետ նոյնաժամանակ ուրիշ քարոզիչներ կային Մոնկոլիոյ մէջ։ սակայն առաջին գիծին վրայ էին Նեստորականները միշտ իրենց թիւով և ազդեցութեամբ, այնպէս որ ԺԳ. դարուն Սրբեւլք գացող ուղեւորները ու լատին քարոզիչները ամէն տեղ կը հանդիպէին Նեստորականներու, որոնք բաւական նշանակութիւն ունէին այդ տեղերը։

Մասնաւորապէս կաթոլիկ վանականներու նախանձը կը գրգռէր Նեստորականներու գրաւած դիրքը, ուստի խաչաձեւեցին և խանգարեցին Նեստորականներու ջանքերը և զանոնք վանելով իրենք տիրակալելու աշխատեցան (հմմտ. Ֆրիկ 587)։ Այսպէս, Հռոմի Պապը 1247ին Մեծ Խանին ղրկեց իբրեւ նուիրակ երկու Իտալացի կրօնաւորներ, որոնք ընծաներով ներկայացուցին Պապին նամակը, գրուած խիստ դրեթէ յանդիմանական ոճով, անոնց դէպի Եւրոպա արշաւանքին համար։ Պապը կը հրաւիրէր Խաքանը և բոլոր Մոնկոլները մկրտուիլ իբրեւ Քրիստոնեայ իր նուիրակներէն։ Խաքանը զայրացած վռնտեց իտալացի վանականները, յանձնարարելով անոնց որ ըսեն Պապին որ գայ անձամբ առնէ և կամ սպասէ որ Մոնկոլները իրենց յառաջիկայ արշաւանքին հանդիպին Հռոմ և տան իր նամակին պատասխանը։

Այս տեղեկութիւնները սարսափի մատնեցին Եւրոպան, որուն մինչեւ կեդրոնական մասերը հասած էին Մոնկոլները (հմմտ. Ֆրիկ 587)։

Պապը և կաթոլիկ քարոզիչներ թերեւս իրենց ձախողութեան պատճառ կը նկատէին Նեստորականները, որոնց գործունէութիւնը չէզոքացնելու համար, ինչպէս նաեւ Մոնկոլները ողոքելու համար Պապը այս անգամ Խաքանին ղրկեց 1253—1255ին Ռիւպրիւքը իբրեւ պապական նուիրակ եւ միանգամայն դեսպան Ֆրանսայի թագաւորին։ Ան եւս իր հետ կը տանէր նամակ մը, թանկարժէք ընծաներ և կտոր մըն ալ Կենաց փայտ։



Այս պատուիրակութիւնն ալ մեծ դժգոհութիւն պատճառեց Մոնկոլ արքունիքին։ Մեծ Մոնկոլը մերժեց Պապական նուիրակութեան մը հաստատութիւնը իր կայսրութեան մէջ և զայն սահմանէն դուրս հանեց։

Ռիւպրիւք զարմանքով տեսաւ Նեստորականներու եկեղեցին՝ կից Մեծ Մոնկոլին վրանին և անոր ու ընտանիքին այդ եկեղեցին յաճախելը։ Թեեւս անկէ ինքն ալ լեցուած Նեստորականներու դէմ, բոլոր կաթոլիկ միսիոնարներուն պէս շատ գէշ խօսած է Նեստորականներու վրայ։ Ան այնքան առաջ կ'երթայ որ կ'ըսէ թէ «Նեստորականները աւելի վատթար են, քան հեթանոսները և մահմետականները։ Եւ անլուր բաներ կը գրէ անոնց մասին (Գ. Ալթունեան, Նոյն, 966—7)։ Նման արտայայտութիւններ ունեցած են ուրիշ կաթոլիկ կղերականներ, որոնք հազիւ փոքրաթիւ անհատ Մոնկոլներ շահած էին և նոյնիսկ Կամբալայի (Փեքին) մէջ — ուր ամէնէն շատ էին քրիստոնեաները — ունէին համայնք մը, որուն համար Կղեմէս Ե. Պապը 1307ին արքեպիսկոպոս մը նշանակած էր (1) բայց քանի որ Քրիստոնէութիւնը ժողովրդական զանգուածներու կրօնը չէր եղած, մեծ ազդեցութիւն մը և քաղաքակըրթիչ դեր մը չէ կրցած ունենալ (Նոյն, 965)։ Չէ ալ կրցած արմատանալ, վասնզի մէկ ճակատով չէ ներկայացած։ Պառակտուած և զանազան տեսակ քրիստոնեաներու ներկայացուցիչները իրենց մրցակցութիւններով և իրարու գործ քանդելու և խաչաձեւելու ջանքերով, վարկաբեկ եղան այս կիսավայրենի ժողովուրդներուն մէջ, և պարտուեցան։ Մինչ եթէ համագործակցաբար աշխատէին. թերեւս կարենային զանոնք քրիստոնեայ դարձնել և թոյլ չտալ որ իսլամութիւնը տարածուի այնքան չուտով։ Այդ պարագային՝ թերեւս կարելի ըլլար մահմետականութիւնը վանել դէպի այն անապատները։ որոնցմէ դուրս եկած և քրիստոնեայ աշխարհը սասանեցուցած էր։ Դժբախտաբար հակառակը պատահեցաւ։ Այնպէս որ ԺԸ. և ԺԹ. դարերուն և թերեւս աւելի առաջ կեդր. Ասիոյ մէջ քրիստոնէութենէն ուրիշ հետք չէր մնացած, այլ միայն «Նեստորական գերեզմանոցներ, Սիպերիոյ խորը կորսուած» (հմմտ. Մ. Սերոբեան, Մեր պայքարը, 5)։

## ՄԱՀՄԵՏԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՈՒՐԻՇ ԿՐՕՆՔՆԵՐ

Մոնկոլ-Թուրքերու մէջ քարոզուած է նաեւ Մահմետականութիւնը, որ թաթարական հոգիին աւելի ըմբռնելի և մատչելի էր, ուստի սկսաւ գերակշիռ դեր ու նշանակութիւն ստանալ բաղդատմամբ միւս կրօնքներուն, որոնց հետ շփում ունեցած էին Թաթարները։ Թուրք առաջին արշաւանքները զօրս Սելջուկները գործադրեցին, գիրենք շփման մէջ դրին Մահմետականութեան հետ, որ իբրեւ կրօն շատ աւելի մարդկային և քիչ զոհողութիւն և զրկանք պահանջող վարդապետութիւն մը ըլլալով՝ աւելի մեծ յաջողութիւն ունեցաւ, այնպէս որ Թուրք-Մոնկոլ զանգուածը։ ԺԴ. դարուն սկիզբը բոլորովին իսլամացաւ։

(1) Այս արքեպիսկոպոսը կը կոչուէր Յովհաննէս տը Մոնդեքորվինօ: Կղեմէս Պապը այս արքեպիսկոպոսութեան ենթակայ վեց եպիսկոպոսութիւններ հաստատած էր. (Գ. Ալթունեան, Նոյն, 965:

Այսպէս, Դ. դարէն մինչեւ ԺԴ. դար այդ բարբարոսներու մէջ գործած են Հրեայ Ռաբբին, Լատին, Հայ, Նեստորական քրիստոնեայ քահանան եւ վանականը, Մահմետական իմամը, Գուտտայական Պանտան, որոնք ամէնքն ալ ազատ եւ ճնշումէ զերծ, ապահարկ ըլլալու առանձնաշնորհը ունէին։ Marignola ճանապարհորդը (Reise 40—43) շատ իրաւացիօրէն կ'ըսէ թէ «Մոնկոլներու տէրութեան մէջ ամէն տեսակ ազգեր եւ աղանդներ կան եւ իւրաքանչիւրին ու բոլորին թոյլ տրուած է իր աղանդին համեմատ ապրելու: Որովհետեւ մարդիկ այն կարծիքէն են — կամ աւելի այն մոլութիւնը ունին — որ իւրաքանչիւրը իր աղանդով կարող է երջանիկ ըլլալ, մենք կարող ենք ազատ եւ անարգել քարոզել»:

Ասոր նման կարծիքներ յայտնած են նաեւ ուրիշներ (Ալթունեան, նոյն 1919)։

Հետեւաբար կրօնական կատարեալ ազատութիւն կար եւ մեծապետը կամ Մեծ Խաքանը որ Մոնկոլ կառավարութիւնը կը մարմնաւորէր, ինքը որոշ կրօնք մը չունէր եւ միշտ կը տարուբերէր զանազան կրօնքներու միջեւ։

Դժբախտաբար կրօնական այս ազատութենէն ո՛չ Նեստորականները, ո՛չ Հայերը, ո՛չ Ասորիները եւ ո՛չ ալ Պապին ղրկած քարոզիչները կրցան օգտուիլ, եւ հետեւաբար Մոնկոլները չկրցան քրիստոնեայ մշակոյթին շնորհիւ քաղաքակրթուիլ։

«Դարերու հոլովումը ոչինչ փոխած էր «հոտած» եւ «աղտոտ», — ինչպէս Չինացիք կը կոչէին զանոնք,— Մոնկոլներու կենցաղէն: «Գողութիւն, յափշտակութիւն, ասպատակութիւն, միջցեղային տեւական կռիւներ, դրացի ցեղակից կամ ոչ՝ երկիրներու վրայ արշաւանքներ, թալան ու կողոպուտ, ջարդ ու աւեր, ահա այս էր Մոնկոլներու կեանքը: Քանիցս հիմնուած կայսրութիւնները ոչ մէկ հետք ձգած էին այս նախնական խաշնարածներու կենցաղին եւ ըմբռնումներուն վրայ: Մշտապէս փոթորիկի մէջ էին, իրենց երկրի կլիմային նման, արիւն ու կրակ տարածելով իրենց շուրջ: (Հմմտ. Պետրոս քհ. Գասարճեան, Չինկիզ Խան եւ Մոնկոլները ՆՈՐ ՕՐ 1950 Օգոստոս 8, Թ. 60):

Սակայն բոլորովին ալ անհետեւանք չէ մնացած մանաւորապէս նոր կրօնքներու քարոզութիւնները, որոնք նոր ըմբռնումներու եւ նոր ծանօթութիւններու հետ հաղորդակցութեան կը դնէին զիրենք, կրօնական այս շփումը զիրենք բաւական հեռացուց իրենց բնապաշտական կրօնքէն, որ սակայն բոլորովին չջնջուեցաւ։

Ամէն կրօնք ազատօրէն կը պաշտուէր եւ Մոնկոլները կը հանդուրժէին անոնց գոյութեան, ինչպէս նաեւ քարոզութեան, Բայց այս հանդուրժողութիւնը կարելի չէ ուրիշ կերպ մեկնել՝ բայց եթէ իրենց անտարբերութեամբը դէպի կրօնքը (հմտ. Գ. Ալթունեան, նոյն, 969)։ Դժբախտաբար քրիստոնեայ քարոզիչներ իրենց նկատմամբ ցոյց տրուած մօտութենէն խաբուած են եւ կարծած են թէ պիտի կարենան զանոնք քրիստոնեայ դարձնել։

Իրական շարժառիթը իրենց այդ ընթացքին, տարբեր էր։ Բոլոր Թուրք ցեղերը իրենց նախնական բնակավայրէն դուրս իրենց գաղթաշարժերուն մէջ իրենց դէմ Մահմետական ուժերու հանդիպած էին միայն։ Անոնց դէմ իբրեւ



բնական զինակիցներ կրնային ըլլալ Քրիստոնեաները. որոնք Խաչակրութիւններով իրենց պէս Իսլամներու դէմ կը կռուէին։ Ուստի իրենք աշխատեցան հասարակաց թշնամիին դէմ համագործակցիլ։

Արղուն Մեծ Խանը (1284—1291)։ որուն կինը ու մայրը Նեստորականներ էին, Քրիստոնէութեան հանդէպ անկեղծ ու անսահման համակրութիւն ունէր։ Ան Փէքինցի Թուրք Ռապպան Շօման եպիսկոպոսին Երուսաղէմ ուխտի երթալէն օգտուելով զայն դեսպան նշանակեց, յանձնարարելով Երուսաղէմէն անցնիլ Եւրոպա եւ համոզել Արեւմուտքի իշխանները, զինուորական համաձայնութիւն մը կնքելու, որպէսզի անոնք ծովէն եւ իրենք՝ Մոնկոլներն ու Հայերը, ցամաքէն՝ նուաճեն Եգիպտոսը։ Արդարեւ Թուրք եպիսկոպոսը Ռապպան Շօման Երուսաղէմէն՝ Հռոմ Պապին, Հռոմէն՝ Փարիզ Ֆրանսայի Փիլիպպոս Դ. Գեղեցիկ (Philippe le Bel 1285—1314+) թագաւորին ու յետոյ Լոնտոն՝ Անգլիոյ Էտուարտ Ա. Թագաւորին (1272—1307+) այցելեց։ Դժբախտաբար չյաջողեցաւ իր առաքելութեան մէջ ու ամօթով վերադարձաւ իր երկիրը։ (Հմմտ. Պետրոս քհ. Գասարճեան, նոյն): Թաթարները սակայն իրենք առանձին կրցան նուաճել Մահմետական երկիրները եւ զանոնք անգամ մը նուաճելէ ետք, սկսան սիրաշահիլ զանոնք եւ ի վերջոյ բոլորովին անոնց կրօնքին յարեցան։

## ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

Որչափ ատեն որ Ուրալէն մինչեւ Ալթայ տարածուող ընդարձակ երկիրներուն մէջ կ'ապրէին անհամար ցեղեր ու ցեղախումբեր, ենթակայ մեծ եւ փոքր բազմաթիւ խաներու, իւրաքանչիւրը իր կարգին նախանձախնդիր իր ազատութեան ու անկախութեան, աւազակներու պէս կը փայլէին ու կ'անհետանային բազմաթիւ իշխանութիւններ, ոչ մէկ հետք ձգելով իրենց ետին։

Այս իշխանական ընտանիքներուն մէջ մեծ համբաւ հանած էր «Գորշ Գայլ» կոչուածը, որ Կոպի անապատին հիւսիսը գտնուող ցեղերուն մէջ նշանաւոր դեր կատարած էր։ (Հմմտ. Պետրոս քհ. Գասարճեան, Ճինկիզ Խան եւ Մոնկոլները, ՆՈՐ ՕՐ, 8 Օգոստոս 1950, 28րդ տարի Թ. 60)։

Այս Թափառիկ ցեղերը, ինչպէս բոլոր նախնական ժողովուրդները պատմութիւն չունէին, այլ միայն առասպելներ, որոնք առհասարակ չաստուածներու եւ արքայական ընտանիքներու նախահայրերուն կուտային յաճախ աստուածային գերբնական ծագում, հեղինակութիւն տալու համար անոնց։

Այս առասպելներուն համաձայն Մոնկոլներու նախահայրն էր Բուդանցար (Budantsar), որուն որդին կամ ժառանգն էր Կաբուլ (Kabul), որ յաջորդեց իրեն եւ ազատեց ժողովուրդը չինական լուծէն։ Միեւնոյն ատեն ան կազմակերպեց ու միացուց Մոնկոլ ցեղերը եւ կազմեց Մոնկոլ Մեծ Ազգը։ Ասոր Թոռը, Եսուգայ (1) (Yassugaï) նոր գրաւումներ կատարեց եւ իր ժողովուրդին հողերը ընդարձակեց ու կազմեց «Մոնկոլ Աշխարհը» (հմմտ. Ֆրիկ, էջ 580)։ Ասոր

(1) Պետրոս քհ. Գասարճեան, այս իշխանը կը կոչէ Եսուգէ (տես Նոր Օր. 1950 թ. 60) որ մեծ ազդեցութիւն ունէր վաչկատուն ցեղախումբերուն վրայ:

Օգելու (Ogelou) (1) *կնոջմէն ծնած է Թեմուչին (կամ Թեմուժին) որ պիտի դառնար աշխարհի ամէնէն աւերածու բռնակալներէն մէկը, (Ալիշան, Ցուցիկ Բ. 411)։*

«Թեմուժին 13 տարեկան էր, երբ հայրը թունաւորուեցաւ թշնամիներու կողմէ։ Արդէն չափահաս մարդու մը հասակը եւ ուժը ունէր: Կրնար ձիու թամբին վրայ նստած մնալ ամբողջ ցերեկ մը. ասկէ զատ անազդու աղեղնաւոր մըն էր: Իր բարոյական կորովը վար չէր մնար իր ֆիզիքական ուժէն» (Լէոնին Միւլլէր, Չինկիզ Խան Աշխարհակալը, *Յուսաբեր*, 3—5 *Ապրիլ*, 1951)։

*Իր անչափահասութենէն օգտուելով կարգ մը Մոնկոլ ցեղեր, որոնք իր հօրմէն նուաճուած էին, ապստամբեցան, բայց մայրը՝ Օգելուն կրցաւ յարգել տալ իր տղուն իշխանութիւնը, իր շուրջը բոլորելով փոքր թիւ մը հաւատարիմներու։ Թելադրեց իր որդին որ պայքարի ապստամբներուն դէմ։ (հմմտ.* Ֆրիկ)։

«Ան վճռեց յաջորդել իր հօրը, իբրեւ պետը վաչկատուն ցեղի մը, որ իր գոյութիւնը կը պահէր Վերին Ասիոյ անբերրի տափաստաններուն մէջ: Բայց իրեն թշնամի էին եւ կ'ուզէին ազատուիլ իրմէ: Զայն հալածեցին տափաստաններու մէջ, վայրի գազանի մը պէս, մինչեւ որ ձերբակալեցին եւ վիզէն անցուցին փայտէ օղակ մը եւ կապեցին դաստակները: Գիշեր մը օղակով զարկաւ իր պահակները եւ խոյս տուաւ: Անցաւ ճնացող զինուորներու մէջէն, եւ պահուըտեցաւ գետի մը մէջ, մինչ հալածող ձիաւորներ գետեզերքին կը հետեւէին զինքը բռնելու համար. Քիչ մը աւելի ուշ, դուրս ելաւ գետէն եւ հանդիպեցաւ թափառական որսորդի մը, որ զինք ազատեց:

«Իր ասպարէզին առաջին տարիներուն հանդիպեցաւ դաւաճանութիւններու, հետապնդումներու, որոնցմէ միշտ կրցաւ ճողոպրիլ, գրեթէ հրաշքով: Սակայն Թեմուժին յամառօրէն շարունակեց պայքարիլ իշխանութեան տիրանալու համար:

Քսան տարեկան հազիւ կար, երբ վերջապէս յաջողեցաւ իր շուրջը համախմբել անձնուէր կուսակիցներ իր հպատակներէն եւ անոնց պետը եղաւ. Այնուհետեւ սկսաւ. քաղաքական դաւերով եւ պատերազմներով, մոնկոլ ցեղերէն համադաշնակցութիւն մը կազմել իր ղեկավարութեան տակ: Չէր հանդուրժեր, որ ուրիշ մէկը իշխանութիւնը բաժնէ իրեն հետ: Ժամուկան իր զարմիկն էր: Երկար եւ դժնդակ տարիներու ընթացքին անոր հետ բաժնած էր վերջին պատառը, որ կը մնար իրենց. երբ ոչինչ կար այլեւս ուտելիք, միասին գացին որսորդութեան: Բայց Ժամուկա կը զայրանար Թեմուժէնի հրամանին ենթակայ ըլլալուն, ուստի՝ հաւաքեց իր կողմնակիցները եւ պատերազմեցաւ իր զարմիկին դէմ: Պատերազմին ելքը ի նպաստ ապագայ Չինկիզ Խանին էր։ Ան գերի բռնեց Ժամուկան եւ սառնասրտութեամբ խեղդել տուաւ զայն:

(1) Մ. Սերոբեան (**Մեր Պայքարը**, 4) Օլուն Խարուն անունով կը յիշէ եւ կը շեշտէ թէ իմաստուն կին մը եղած է: Պետրոս Քհ. Գասպարեան (ՆՈՐ ՕՐ, 1950 թ. 60) Իլուն ձեւով ալ կը յիշէ:



Տուղրիլ, Թեմուչինի հօրը բարեկամն էր եւ օգնած էր իրեն՝ անցընելու տագնապի շրջան մը: Բայց այն օրը, երբ ծեր ցեղապետը ծառացաւ երիտասարդին իշխանութեան դէմ, այս վերջինը զայն եւս սպաննել տուաւ: Սակայն առատաձեռնօրէն կը վարձատրէր այն հպատակները, որոնք քաջագործութեամբ իրենց հաւատարմութիւնը ապացուցած էին»: (Լէոնին Միւլլէր, Նոյն):

*Վերջապէս յաջողեցաւ 27 տարեկանին յաջորդել իր հօրը և դառնալ* խաքան *Արլիտ* (Arlid) *ցեղին։ (հմմտ.* Ֆրիկ, 580)։

*1187ին նոր և աւելի մեծ ուժ հաւաքեց և իր հողերը ընդարձակեց։*

*1189ին կամ ըստ այլոց 1203ին կամ 1206ին տիրապետող, հպատակ և բարեկամ բոլոր ցեղապետ Խանները ընդհանուր համաձայնութեամբ և Թուրք աւագանիին մեծ ժողովին (Գուրուլթայ) վաւերացմամբ հաստատուեցաւ իր իշխանութիւնը և Թեմուչին որ այս ժողովէն առաջ* Սուբու–Պոկտօ *(երկինքի զաւակ) կը կոչուէր, առաւ Չինկիզ* (1) *Խան տիտղոսը (Պետրոս քհ. Գասպարեան,* Նոր Օր, 1950 *թ.* 60) *վասնզի կրցած էր շատ մը մեծ ու փոքր խաներ նուաճել։ Չինկիզ Խան ժողովին բոլոր ներկաներուն* Մոնկոլ *պատուանունը շնորհեց և խոստացաւ անոնց աշխարհի նուաճումը։ Այսպէս Մոնկոլները կազմեցին միակ ազգութիւն մը և ունեցան Մոնկոլիոյ ազգային պետութիւնը։*

## ՉԻՆԿԻԶ ԱՇԽԱՐՀԱԿԱԼ

*1193ին նոր նուաճումներու ձեռնարկեց և 1203ին պարտութեան մատնեց Պայքալ լիճի շուրջը ապրող Մերկիտ ցեղը և 1194ին Չինաստանի ներքին գործերուն խառնուեցաւ և 1195ին Բէյթալիթի մէջ ծագած խռովութիւնը օգտագործեց և երկիրը իր իշխանութեան ենթարկեց։ 1204ին, տէրը և տիրականը դարձած էր արդէն ամբողջ Մոնկոլիայի* (Ֆրիկ, 580)։

*1208ին յաղթեց Արեւմտեան Կոպիի անկախ իշխանութիւններու դաշնակցութեան, որուն պետն էր թրքական զօրաւոր* Նայման *ցեղի պետ* Կուշլուճին (Kushlu) *և Մերկիտներու ցեղապետին՝* Թուխտուլին (Tukhtul) *(հմմտ.* Ֆրիկ 581) *Կուշլուճ ապաստանեց Ուգուրներու երկիրը սակայն իր Մահմետական դաշնակիցները դաւեցին իրեն և լքեցին Կուշլուճն՝ որ քրիստոնեայ էր։ Չինկիզ Խանի աճող բանակներուն համար, զգալի էր պէտքը մանաւանդ դամասկոսեան ընտիր զէնքերու զորս կը ստանար Արեւմուտքէն, հռչակաւոր* մետաքսի ճանապարհով։

*Չինկիզ Խան շատ սուղ կը վճարէր ստացուած զէնքերուն, քանզի մե-*

(1) Ջինկուզ = Չինկիս *(Genghis)* = Ջանկզ եւ վերջապէս Կանտիաս ալ կոչուած է: **Չինկիզ Խան** կը նշանակէր «ամենազօրաւոր իշխան» «Իշխան Անողոք, անընկճելի, անսասան, բացարձակ» (Մ. Սերոբեան, **Մեր Պայքարը**, 4) կամ ըստ Լէոնին Միւլլէրի «տէրերուն հզօրագոյնը» կամ պարզապէս **Մեծ Խան** կամ **Խաքան** (**Ֆրիկ 580**, **Հերում, 35**, **Նոր Օր, 1950 թ. 60**):

տաքսի ճանապարհը, Պարսկաստանէն մինչեւ իր սահմանը, կ'անցնէր Գարախիթայէն — Սեւ Չինաստանէն, որուն բնակիչներուն համար աւելի շահաւոր էր կարաւաններէն գանձուած տարանցիկ առեւտուրի (թրանզիթ) տուրքը քան իրենց դաշտերուն մշակումը։ Ազատ վաճառականութեան սկզբունքի պաշտպան, պատրուակ չէր պակսեր Ջինկիզ Խանի այդ կարեւոր դիրքը կցելու իր տէրութեան։ Նայմանի Թուրք Խանը, Ջինկիզ Խանի դէմ պատերազմին մէջ սպաննուած ըլլալով, իր երկիրը կցուած էր Մոնկոլներու տէրութեան։ Սակայն Նայմանի գահաժառանգը, Գարախիթայ ապաստանած ու յաջողած էր նոյնիսկ տեղւոյն գահը գրաւելու։ Ասիկա բաւական էր Ջինկիզ Խանի, իր բանակները շարժման մէջ դնելու։ Կարճ ժամանակի մը մէջ կը գրաւէ ամբողջ երկիրը ու կը կցէ իր իշխանութեան։ Գարախիթայի կցումը կայսրութեան սահմանները կը յառաջացնէր մինչեւ Պարսկաստան, ուր կը տիրէր միահեծան, Խուարէզմի Մուհամէտ Շահը, որ ինքզինքը «Աստուծոյ շուքը» կը յորջորջէր (Հմմտ. Գասպարեան քհ, Չինկիզ Խան եւ Մոնկոլները, Նոր Օր, 1950 թ. 61)։

Ջինկիզ այսպէս ընկճեց բոլոր դրացի ցեղերը և ամենուրեք տարածուեցաւ իր համբաւը։

Ջինկիզ այս երկրամասին մէջ՝ ուր դեռ ժողովուրդը վայրենի էր և գազանաբարոյ, կոշտ ու անոպայ, ինքն ալ կարծես ստիպուած էր ըլլալ գազան մը, որ ցեղապետները նախ զինակից ըրաւ և սակայն առաջին յաղթութենէն վերջ՝ զանոնք ամէնն ալ մահացուց։(1)

«Թեմուչին իր բանակատեղին հաստատեց Գարագորումի մէջ, քաղաք մը որ ամբողջովին կազմուած էր վրաններէ եւ որ կը գտնուէր կառաւաններու քառուղիին վրայ: Ան չէր կողոպտած կառաւանները, որովհետեւ իր ծրագիրին մէջ մեծ դեր մը վերապահած էր անոնց:

Որքան զօրաւոր կ'երեւէր այս մարդը, որ հագած էր ոչխարի մորթենի, կարծր կաշեպատ, զգեստներ, եւ որ կը վարէր չարքաշ կեանքը այն մարդոց, որոնք վարժուած են տեւականապէս ձիու մը թամբին վրայ մնալու: Դէմքը ակօսուած էր խորշոմներով: Հաւանաբար երբեք չէր լուացուած: Աչքերը արտասովոր փայլ մը ունէին: Շատ քիչ կը խօսէր եւ միշտ խոր մտածումէ մը վերջ:

Յիսուն տարեկանին Թեմուչին արդէն միացուցած էր Կեդրոնական Ասիոյ զանազան ցեղախումբերը զօրաւոր կազմակերպութեան մը մէջ, որուն բացարձակ իշխանաւորն էր ինք: Այնուամենայնիւ եթէ այդ ժամանակ թշնամի նետ մը հասնէր իր սրտին, պատմութիւնը բնաւ պիտի չյիշէր իր անունը: Որովհետեւ իր կեանքի վերջին 16 տարիներուն է, որ կատարուեցան զինք պատմութեան մէջ նշանաւոր հանդիսացող պատերազմները: Աշխարհը նուաճելու ընդունակ մեքենականութիւնը, զոր ինք դարբնած էր, պատրաստ էր հիմա իրեն ծառայելու» (Էտուին Միւլլէր):

Ջինկիզ Խան Մոնկոլ ցեղերուն գլուխը անցնելէն ետք, պիտի նուաճէր նաեւ դրացի երկիրները և բնականաբար պիտի բախէր ժամանակակից ասիա-

---

(1) Միայն 70 ցեղապետներ եռացած ջուրի կաթսաներու մէջ սպաննած է (տես. Ֆրիկ, 581):



կան ժողովուրդներու քաղաքական մեծ ուժերուն, որոնք էին Չինաստանը, Հնդկաստանը. Խուարէզմը, Պարսկաստանը և վերջապէս Պաղտատի արաբական Խալիֆայութիւնը։

Չինաստան, ուր կը ծաղկէր աշխարհի ամէնէն հին քաղաքակրթութիւնը, այն ատեն բաժնուած էր երկու կայսրութիւններու — Քինկ և Սինկ — առաջին երկիրն էր՝ որուն հետ գործ պիտի ունենար Ջինկիզ։ Նախ ինքը հարկատուն էր Չին կայսեր, բայց շուտով նախատեց անոր դեսպանները, որոնք հարկ առնելու եկած էին և փոխանակ անոնց պահանջած գումարը տալու՝ զինուած խումբերով Չինաստան մտաւ և սկսաւ երկարատեւ կատաղի կռիւ մը, որուն միջոցին (1211—1223) սպաննուեցան 18,470,000 մարդ և պատերազմը վերջացաւ Չինաստանի նուաճումով (Գ. Ալթունեան, Արարատ, 1912, 672—3)։

Ինքը անձամբ գնաց Վէյ-Հայ-Վէյ (Wei-Hai-Wei, արդի Շանտունգի նահանգին մէջ)։ «Անցք մը բացաւ մեծ պարիսպներէն եւ իր զինուորները արձակեց Քինկի՝ — կամ հիւսիսի չինական կայսրութեան — ընդարձակ տարածութիւններուն մէջ»: Չին կայսրը Հսուան-Ցունկ (Hsuan-Tsung) հաշտութիւն խնդրեց և յանձն առաւ հարկ տալ Ջինկիզ Խանի, սակայն չընդունեց և երկիրը տակն ու վրայ ըրաւ և աւերեց մինչեւ Եանգինկ, (Yen-King) մայրաքաղաքը զոր գրաւեց, և վերջ տուաւ հիւսիսի չինական կայսրութեան։

Ջինկիզ այնպէս մը կարգադրած էր որ թաթար լրտեսներ և հետազօտիչ գունդեր կը հետեւէին 1215—1220ին ամէն կողմ դրացի ցեղերու և ժողովուրդներու կեանքին և իրենց խուզարկութիւններուն արդիւնքը Մոնկոլ Մեծ Խանին կը հասցնէին (Գ. Ալթունեան, Նոյն, 674)։

Մեծ Խանը այս տեղեկութիւններուն համաձայն ամէն կողմ կը ղրկէր իր գունդերը, ապատակելու և Մոնկոլ անունը իր պետութեան սահմաններէն շատ հեռու, զօրեղ և ահարկու դարձնելու համար։ Իր նորակազմ պետութեան դէմ, առաջին զօրաւոր պետութիւնը որ կը գտնուէր արեւմտեան սահմանագլուխին վրայ, Խուարէզմն էր, որ Կեդր. Ասիոյ ամէնէն պատկառելի ուժը կը ներկայացնէր և որուն հետ բախումը անխուսափելի էր։ Պէտք էր ընկճել զայն, արեւելեան կողմը գտնուող Չինաստանը նուաճելէ վերջ։

## ՄՈՆԿՈԼ - ԽՈՒԱՐԷԶՄ ՊԱՅՔԱՐ

Սելջուկները Կեդր. Ասիայէն Արեւմուտք արշաւելով, Մերձաւոր Ասիոյ մէջ կազմած էին զօրաւոր պետութիւն մը։ Իսկ Կեդր. Ասիոյ մէջ անոնք տկար էին։ Այսպէս, այդ կողմերը կազմուած էին Ղազնայի և Գուրի ինքնավար թագաւորութիւնները՝ Ֆիրզինկան և Գուր լեռներուն վրայ (Ֆրիկ, 605)։

Այս անկախ պետութիւնները, դարուն վերջերը արդէն որոշ ուժ մը կը ներկայացնէին։

Մասնաւորապէս Ղազնայի վեհապետը Սուլթան Մահմուտ, որ 997ին իր հօրը՝ Սուլթան Սեբէկ-Թէգինի յաջորդած էր, ունէր բաւական պատկառելի դիրք (տես. վերը, 23—24)։

Բայց այս երկու իշխանութիւններէն աւելի կարեւոր էր Խուարէզմի կամ

Խիվայի շահերու արքայական տոհմը, զոր հիմնած էր 1077ին Մելիք Շահի (1072—1092) մատռուակ Անուշտիկինը, որ ԺԱ. դարուն վերջին տասնամեակին երեւան եկաւ և բաւական սպառնալից ուժ մը կազմեց։

Այս հարստութեան իրական իշխանութիւնը սկսաւ 1127ին, երբ գահ բարձրացաւ փառասէր և խորամանկ Աթսիզ, որուն վրայ յարձակեցաւ Մեծ Սելջուկը՝ Սինջար, 1138ին։ Աթսիզ ծանր կորուստներ կրելով պարտուեցաւ։ Նոյնիսկ իր Իլիկ որդին գերի ինկաւ և Սինջարի հրամանով սպաննուեցաւ միջակտուր։ Սինջար Խուարէզմը իբրեւ ճորտական իշխանութիւն տուաւ Աթսիզի եղբօրորդւոյն Գիյաթաւտին Սիւլէյման Շահին (հմմտ. Ֆրիկ, 604)։

Հազիւ Սինջար Մէրվ հասած էր՝ երբ Աթսիզ վերստին գրաւեց իր մայրաքաղաքը և վրէժ լուծելու համար գրգռեց Չինացի Թաթարները (Khata) որ յարձակին Սելջուկներուն և Սինջարի վրայ։ Սինջար պարտուեցաւ 1141ին, կորսնցուց 100,000 զինուոր։ Իր կինը և Սելջուկ իշխաններ գերի ինկան։ Աթսիզ ինքզինքը կրկին անկախ հռչակեց և գրաւեց Մէրվը, որուն բնակիչները սպաննեց կամ գերի տարաւ։

Սինջար 1143ին, փորձեց նուաճել Խուարէզմը և երբ չյաջողեցաւ, հաշտութիւն կնքեց Աթսիզի հետ, որ մինչեւ իր մահը (30 Յուլիս 1156) խաղաղութեամբ կառավարեց իր երկիրը։

Խուարէզմ ԺԲ. դարու կէսերուն կը տիրէր ամբողջ Անդրկասպեան երկրամասին, և Խուարէզմէն զատ Մեծ-Պուխարայի (Սոգտիանիա), Խորասանի և Պարսկաստանի կէսին։

Այս պետութիւնը տարածուած էր դէպի Արեւելք՝ մինչեւ Մոնկոլներու երկիրը, իսկ դէպի հարաւ և Արեւմուտք՝ կը հասնէր Սելջուկներու պետութեան սահմաններուն և Կասպից ծովին։

Տիրապետելու անյագ տենչով լեցուած Խուարէզմի Շահերը շուտով գրաւեցին Սելջուկներու տեղը։ Սելջուկներու վերջին Տուղրիլ Սուլթանին (1175—1194) գլուխը Պաղտատի Արաբ Խալիֆային ընծայ ղրկեց Խուարէզմի Տակաշ Շահը և Տուղրիլի մահով ինքը դարձաւ Արեւմտեան Ասիոյ իսկական պետը, որովհետեւ Պաղտատի Խալիֆաները արդէն շատոնց դադրած էին իրենց պետութիւնը կառավարելէ։ Տակաշ և իր յաջորդը ինքնակոչ վարիչները դարձան երբեմն այնքան զօրաւոր և այդ միջոցին այնքան տկարացած Պաղտատի Խալիֆայութեան (Գ. Ալթունեան Թաթարների Արշաւանքը. Արարատ, 1912, 661)։

## ՋԻՆԿԻԶ ԽԱՆ ԵՒ ՄԱՀՄՈՒՏ ՇԱՀ ԴԷՄ ԴԷՄԻ

1172ին Խուարէզմի գահը բարձրացաւ Աթսիզի թոռը Ալա-Ուտ-Տին Սուլթան Մահմուտ Շահը (1172—1220) որ Խուարէզմի Սուլթաններուն ամէնէն կարկառուն դէմքն հանդիսացաւ և էր ժամանակակիցը Ջինկիզի։ Անոր իշխանութիւնը կը տարածուէր Հնդկաստանէն Սեւ ծով ու Արաբիայէն մինչեւ Ուրալ լիճ։ Ան իր հովանաւորութեան ենթարկած էր նոյնիսկ Պաղտատի Խալիֆան։

Շահ Մահմուտ կը ծրագրէր դէպի Արեւմուտք աշխարհակալութիւններու ձեռնարկել։ երբ արդէն Ջինկիզ Խան, Մոնկոլ ցեղերը իր ձեռքին տակ միացնելով նոր ուժ մը կազմած էր։



Նասիր կամ Էլ-Նասր (1190—1225), Պաղտատի Խալիֆան, Ջինկիզ Խանի պաշտպանութիւնը խնդրեց ընդդէմ Շահ Մահմուտի։

Ջինկիզ, որ նախանձով կը դիտէր անոր զօրանալը և չէր հանդուրժեր անոր գոյութեան, Մոնկոլ միթոսներուն, համաձայն, ներսէն քայքայելու աշխատեցաւ Մահմուտ Շահին պետութիւնը։ Այս վերջինը շատ ուշ սթափեցաւ և տեսաւ սպառնացող վտանգին մեծութիւնը։

Ջինկիզի մարդիկը յաջողած էին Հարաւային Պարսկաստանի, Աֆղանլեռնաշխարհի և Հնդկաստան տանող ճամբուն վրայ գտնուող երկրամասերուն ճորտ իշխանները (Աթաբէկներ) խրախուսել, որ իրենց միջեւ բաժնէին Շահին երկիրները, և հնազանդէին կա՛մ Ջինկիզ Խանին կամ Պաղտատի Խալիֆաներուն։

Այնպէս որ երբ Ջինկիզ յարձակեցաւ իր վրայ, ոչ մէկ իշխան իրեն օգնեց և իր հպատակները զինք լքեցին։

Միւս կողմէ Ջինկիզ պատրաստուեցաւ պատերազմի և սպասեց յարմար առիթին՝ յարձակելու համար Խուարէզմի վրայ։

Այդ առիթը շուտով ներկայացաւ։

Ջինկիզ դաշինք մը ունէր Շահ Մահմուտի հետ, որով Մոնկոլ առեւտրական կարաւանները արտօնուած էին անցնիլ Խուարէզմի Շահին երկիրէն, դէպի Արեւմուտք։ Բայց որովհետեւ շատ չանցած խումբ մը Մոնկոլ վաճառականներ դաւով սպաննուեցան հրամանովը Իւթրարի կամ Օթրարի (1) կառավարիչին (Ֆրիկ, 582), որ անոնց ինչքերը և դրամները գրաւեց, Ջինկիզ հատուցում և պատիժ պահանջեց, սակայն Շահ Մահմուտ նախ տանջեց և ապա սպաննել տուաւ դեսպանը (Նոյն)։

Ջինկիզ այս անարգանքը իմանալով 1219ին իրենց Գուրուլթային որոշումով Շահ Մահմուտը պատժելու ձեռնարկեց։

Ջինկէզ Խան պատերազմի մտնելէ առաջ, հաւատարիմ մարդիկ ղրկեց լրտեսելու համար Խուարէզմի երկիրը և Սիհուն (Եւքսարդէս = Սիրտարիա) գետին եզերքը հաւաքեց 700,000 պատերազմիկներ, զանազան ցեղերէ։

Ջինկիզ սկսաւ շարժիլ Գարագորումէն 1219ին, հետը առնելով խորհրդականներ, Ջինացի, Արաբ, Պարսիկ և Ասորի։ Ան անցաւ Կոպի անապատը և մտաւ Խուարէզմի Շահին երկիրները 200,000 զօրքով։

Մահմուտ Շահ 400,000 զօրքով—որոնք առնուած էին քսան ազգերէ—, Մոնկոլներու դէմ գնաց, անոնց յառաջխաղացութիւնը կասեցնելու համար։ Առաջին ճակատամարտին Շահին բանակին 400,000 զօրքերէն 100,000ը սպաննուեցան, բայց Ջինկիզ չյաղթուեցաւ։

Ջինկիզի որդին՝ Ուխաթան երկրորդ անգամ Խուարէզմի վրայ գնաց, վեցամսեայ պաշարումէ մը վերջ Օթրարը գրաւեց, և այն կառավարիչը — որ Մոնկոլ վաճառականները սպանած և կողոպտած էր — մահացուց՝ հալած արծաթ լեցնելով անոր աչքերուն և ականջներուն մէջ։

Քաղաքը աւերի տուաւ, բնակիչները ջարդեց և գերի տարաւ Պուխա-

(1) Օքսոս գետին եզերքը կը գտնուէր այս քաղաքը

րա, ուր անոնք ծառայեցին Ջինկիզի բանակին մէջ։ Իրենց հայրենակիցներուն և կրօնակիցներուն դէմ կռուելու համար։ Քաղաքը բոլորովին կործանեցաւ։

Իրարու ետեւէ գրաւուեցան Պուխարա, Իւչքենտ, Ժանտ, Պանաքիաթ և այլ քաղաքները։ Խօքանդ միայն դիմադրեց յամառօրէն, Թիմուր Պալեղի գլխաւորութեամբ։

1220ին արդէն Մոնկոլները տէրն էին Պուխարայի և շրջականերուն ու անխնայ աւեր կը սփռէին։

Սմրղանտ ևս գրաւուեցաւ միմիայն չորս օրուան պաշարումէ մը ետքը և աննախընթաց անգթութիւններու ենթարկուեցաւ։

Շահ Մահմուտ՝ այն համոզումով որ Մոնկոլները Օքսոսը պիտի չանցնէին՝ կանգ առաւ Նիշափուրի մօտ, սակայն երեք շաբաթ ետքը երբ իմացաւ որ Մոնկոլները Խորասան հասեր են, սարսափահար փախաւ դէպի Արեւմուտք՝ Ղազուին և անկէ Գիլան և Մազանդարան։

Ջինկիզի զօրքերը աւերեցին և տնակոխ ըրին Հերաթը, Մէրվը, Նիշափուրը, Պալխը և Գանտահարը, այսինքն Ինտոսէն մինչեւ Կասպից ծովի արեւմտեան կողմի հողերը, որոնք ամբողջ քարուքանդ եղան, վասնզի Խուարէզմ դիմադրած էր։ Բնակչութիւնը սրածութեան ենթարկուեցաւ, բացի արհեստաւորներէ և վաճառականներէ, որոնք տարագրուեցան Մոնկոլիոյ զանազան կողմերը։

Խուարէզմի Շահը, թէև տակաւին չէր նուաճուած բոլորովին, սակայն վանուած իր մայրաքաղաքէն, և իր կինը Թուրխան Խաթունը (1) պալատական կիները, զաւակները և թանկագին գոհարներու մեծ հարստութիւնը, Մոնկոլներուն թողած, կը թափառէր և շարունակ կը փոխէր իր բնակավայրը, որպէսզի զինքը հալածող Մոնկոլներուն ձեռքէն ճողոպրէր։

1220ին Գուռզ Մահմուտ տեսնելէ ետք իր թագաւորութեան կործանումը, մեռաւ Կասպից ծովուն կղզիներէն մէկուն մէջ, ուր ապաստանած էր (Օրբէլեան, Բ. 339)։

## ՋԻՆԿԻԶԻ ԲԱՆԱԿՆԵՐԸ ԵՒ ՃԷԼԱԼԷՏՏԻՆ

Մահմուտ Շահի որդին, Ճէլալէտտին Մանկոբուրնի, (1220—1231 ✝) իր հօրը օրհնութեամբ, անոր սուրը ածելով իր մէջքին, յաջորդեց անոր առանց երկիր ունենալու իր իշխանութեան տակ։

Ճէլալէտտին ասպետական ոգիի տէր և քաջութեամբ համբաւաւոր վեհապետ մը եղաւ և վերջին պաշտպանը և պատնէշը՝ մահմետական աշխարհին, ընդդէմ ամէն ինչ աւերող և կործանող Մոնկոլ հրոսներուն։

Հաւաքեց խումբ մը քաջեր և ծրագրեց դիմագրաւել Մոնկոլներուն, որոնք իր ժառանգական երկիրներուն տիրած էին, և մեծ ծաւալով աշխարհակալութեանց ձեռնարկած։

Ջինկիզ, որ պատերազմական հսկայ և վիթխարի ուժ մը ստեղծած էր իր 700,000նոց բանակովը, կազմակերպեց այդ բանակը իւրայատուկ եղանակով

(1) 1223ին Գարազորում տարուած է իբրեւ գերի:



մը, և ամենազօր եղաւ. իր բանակը չորս մասի բաժնած էր և անոնց ամէն մէկուն գլուխը դրած էր իր չորս որդիներէն մէկը։

Ասոնցմէ առաջինը Ջուջի Խան, Արեւմուտք արշաւեց և Կասպից ծովին հիւսիսային կողմէն անցնելով, Քիփչաքը նուաճեց և զայն իբրեւ ժառանգութիւն ստացաւ իր հօրմէն։

Ջուջիի որդին և յաջորդն էր նշանաւոր Բաթուն, որ Ռուսիոյ մնացեալ մասերը, Լեհաստանը և մինչեւ Հունգարիա տարածուող երկիրները գրաւեց։

Իսկ Ջինկիզի միւս որդիները, Չաղատա, Օգաթա կամ Ուխաթա Խան, և Տուլի (1) Չինաստանի, Պարսկաստանի և Խուարէզմի մէջ գործեցին (Գ. Ալթունեան, Արարատ, 1912, 674)։

Այս հզօր զօրութեան դէմ Ճէլալէտտին չորս տարի պայքար մղեց։

Այս շրջանին, 1222 (հմմտ. Ֆրիկ, 617) «Եկն Սուլտանն Խորասանայ՝ Ջալալադին կոչեցեալ եւ եհար զթագաւորութիւնն Վրաց եւ խոստացաւ մի զկնի միոյ գալ զօրաց այլազգեաց եւ աւերել զաշխարհս Հայոց, Աղուանից եւ Վրաց» (Կիրակոս, 90):

Յաջորդ տարին (1223) Ճէլալէտտին իր աւերող արշաւանքները կը հասցնէ մինչեւ Քիրման, Ֆարս, Սպահան և Ռէյ (Ֆրիկ, 617)։

Իսկ 1224—5ին պարտութեան կը մատնէ Խալիֆային զօրապետը Ղուշթէմուրը, և կը հալածէ զայն մինչեւ Պաղտատի դուռները (Նոյն)։

Այդ օրերուն կը գրաւէ նաև Դաւրէժը և կրկին կը յարձակի Վրաստանի վրայ և ծանր հարուածներ կու տայ թէ՛ Վրացիներու և թէ՛ անոնց հետ քաղաքական կապերով կապուած Հայերուն (Նոյն):

Կիրակոս այս արշաւանքին հետեւանօք — որ 1224ի վերջերը կատարուած պէտք է ըլլայ — կ'ըսէ թէ ընդմիջուած է Նոր Գետկայ վանքին մէջ շինուած տաճարը «Քանզի եկն Սուլտանն Խորասանայ Ջալալադինն (3) կոչեցեալ եւ եհար զօրս Հայոց եւ Վրաց եւ աւերեց բազում գաւառս» (Կիրակոս, 116):

1225ին Կիրակոս կը նկարագրէ նոր յաղթական մէկ արշաւանքը Ճէլալէտտինի և Վրաց պարտութիւնը։

1226ին Ճէլալէտտին «աւերեալ զբազում քաղաքս զնաց ի քաղաքն Տփխիս եւ ձեռնտու եղեն Պարսիկքն՝ որ ի նմա եւ առ զնա (քաղաքը) եւ զբազումս կոտորեաց եւ զեւս բազումս բռնադատէր թողուլ զքրիստոնէութիւնն... Հրաման ետ, որք հաւանին եւ որք ոչ՝ բռնութեամբ զամենեսին թլփատել... եւ ընդ կանայս խառնակէին... զայս ոչ միայն ի Տփխիս, այլ եւ ի Գանձակ եւ ի Նախջուան եւ յայլ տեղի (Կիրակոս, 118):

Բայց Ճէլալէտտին ստիպուեցաւ թողուլ Վրաստանը և դառնալ Պարսկաստան, դիմել դէպի հարաւ-արեւելք և պատժել Մոնկոլներու հետ դաւադիր Բուրաղ-Հաջիբը (հմմտ. Ֆրիկ, 619), բայց հաւանօրէն ինքն ալ կը պարտա-

(1) Տուլին նուաճած է Խորզգներու երկիրը եւ ուրիշ վայրեր եւ առաջացած է մինչեւ Հայաստան:

(3) Վենետիկի տպագրութիւնը Սալահատին գրած է սխալմամբ:

ւորին ապաստանիլ Հնդկաստան։ Մինչեւ որ զինքը կը հետապնդեն Մոնկոլները։

Ճէլալէտտին հոն ցոյց կու տայ արիութիւն։ Ինքը և իր փոքր բանակը Ինդոս գետին եզերքը կը բռնուին Մոնկոլ հետապնդող աւելի մեծ և ուժեղ բանակին կողմէ։ Յուսահատական դիմադրութիւնէ մը ետք, որ արշալոյսէն մինչեւ կէսօր տեւած էր, տեսնելով որ պարտութիւնը անխուսափելի էր, Ճէլալէտտին իր ձիուն գլուխը կը դարձնէ դէպի գետը և զրահներն ու աւելորդ զէնքերը մէկ կողմ նետելով, կը խորասուզուի գետին ջուրերուն մէջ և լողալով կ'անցնի միւս եզերքը։ Իր հետեւորդները և բանակին մնացորդը իր օրինակէն խրախուսուած, նոյնը կ'ընեն։ Շատերը կը խեղդուին կամ նետահար կ'ըլլան Մոնկոլներէն, բայց Ճէլալէտտին փրկուած փոքր թիւով զինուորները կարգի դնելով՝ կը յարձակի Հնդիկ Ջուդի իշխանին վրայ, յետոյ Սինդի Ղարաջա և Տելհիի՝ Իլթամիշ իշխաններուն միացեալ ուժերուն դէմ և կը գրաւէ անոնց երկիրները և իր ձեռքը կը պահէ։ Այդ միջոցին Ջինկիզ Խուարէզմի մէջ մահ և աւեր կը սփռէր, 15 միլիոն մարդիկ ջարդելով և մինչեւ Հնդկաստան Ճէլալէտտինը հետապնդելէ ետք, կը դառնայ Հնդկաստանէն Գարագորում, անցնելով Քաշմիրի հովիտէն և Պուտտայականութեան խորհրդաւոր սրբավայրը և միջնաբերդը հանդիսացող Թիպեթէն, զոր թերեւս նուաճել կ'ուզէր։

Ջինկիզ երբ Գարագորում կը հասնի, անմիջապէս իր ընդարձակ կայսրութեան վարչութիւնը ամուր հիմերու վրայ կը հաստատէ, ինչպէս նաեւ իր յաջորդութեան կնճռոտ հարցը կը կարգադրէ։ Այլեւս կրնար հանգչիլ անվրդով, սակայն պարտաւորուեցաւ կռուիլ Հիայ ցեղին դէմ, որ վտանգած էր Մեծախի ճամբան։

Ջինկիզ որոշեց վերջ տալ գոյութեանը այդ աւազակ ազգին, որ կը գտնուէր կայսրութեան սիրտին վրայ։ Հունկ-Հոյի սառած ջուրերուն վրայ մղուած պատերազմին, մէջ 300,000 սպաննուածներուն գանկերով բուրգեր շինել տուաւ։

Բայց այդ ցեղը մինչեւ Ջինկիզի մահը անընկճելի մնաց։ Ո՛չ զէնքով, ոչ խոստումներով, և ոչ յորդորներով կարելի եղաւ համոզել Հիայի թագաւորը։

Նմանապէս Խուարէզմի Ճէլալէտտինը, որ երբ Ջինկիզ իր բանակներով քաշուեցաւ Արեւելք, կրցաւ կրկին մտնել Պարսկաստան և գրաւել, եթէ ոչ ամբողջութիւնը դէթ իր երկիրներուն մէկ կարեւոր մասը (Ֆրիկ 615), ու սկսաւ մաքառիլ կրկին զինքը հետապնդող Մոնկոլներուն, իր եղբօրը Ջիայաթ-Ուտ-Տինի դաւերուն, ինչպէս նաեւ Քիրմանի կառավարիչ Բուրաք-Հաջիբի, Պաղտատի Խալիֆային, Թուրքմէններուն և Իսմայիլեաններուն դէմ։

## ԽՈՒԱՐԷԶՄ ՎԵՐԱԿԱԶՄԵԱԼ

Ճէլալէտտին 1227ին կրկին պատժեց Թուրքմէնները և Իսմայիլեանները և յաղթեց Մոնկոլներուն Դամղանի մօտ (1) և պաշտպանեց Սպահանը Մոնկոլներուն դէմ։ Բայց երբ լսեց որ Վրացիները դրացի ազգերու հետ միանալու փորձեր կը կատարեն, յանկարծ դարձաւ կրկին Վրաստան և բանակին գլուխը անցած անձամբ պատերազմեցաւ ականաւոր չորս մարդիկներու հետ և յաղթեց Վրաց և ծանր պատիժներու ենթարկեց զանոնք։ Ջինկիզ առանց վճռական յաղթանակ տանիլ կարենալու, ինչպէս Հիայի թագաւորին նոյնպէս նաեւ Ճէլալէտտինի դէմ, մեռաւ 24 Օգոստոս 1227ին՝ 66 տարեկանին։ (Օրբելեան Բ. 339—340, նաեւ Petit de la Groixի Պատմութիւն Ջինկիզ Խանի 170։ D'Herblotի, Bibliothèque Orientale 382, Alexandre Mazasի, Les Hommes Illustres de l'Orient. Բ. 68)։

(1) Թէհրան-Մաշէտի ճամբուն վրայ, մօտաւորապէս 20 մղոն հեռու Ասխապատէն (Ֆըրիկ, 619)



Պատմութիւնը շատ սեւ գոյներով նկարագրած է անոր աղետաբեր տիրապետութիւնը. ան քարուքանդ ըրած է աշխարհը և աւերակներու ու դիակներու կոյտեր դիզած է իր ճամբուն վրայ Ջինաստանէն մինչեւ Սիլեզիոյ անկիւնները, մէջն ըլլալով նաեւ Արեւելեան Եւրոպան (Մ. Սերոբեան, Մեր Պայքարը 4)։

Իսկ Ճէլալէտտին իր գլխաւոր ոսոխ՝ Ջինկիզի մահէն և Քրիստոնեայ Վրաստանի ու Հայերու միացեալ ուժերուն դէմ յաղթանակէն յետոյ՝ կը մտածէ մահմետական իշխաններու դաշնակցութիւն մը կազմել Մոնկոլներուն դէմ, բայց Մոնկոլները զինքը յանկարծակիի կը բերեն Չարմաղան Նուինի առաջնորդութեամբ, 30,000 զինուորներով և փախուստի կը մատնեն զայն։

Ճէլալէտտին կը նահանջէ դէպի Արեւմուտք, և կրկին կը մտնէ Արեւելեան Հայաստան. և Մուղանի դաշտին մէջ բանակելով զօրք ժողվելու կ'սկսի (հմմտ. Ֆրիկ 620)։

Իր նոր բանակով Ճէլալէտտին կը յաջողի գրաւել Գանձակը, բայց Չարմաղանի բանակը կը յարձակի իր վրայ և զայն կը վանէ Հիւսիսային Հայաստանէն։ Թաթարները «աւերեցին ամենայն աշխարհն Պարսից եւ զԱտրպատականու եւ զԴիլմայ», (Կիրակոս, 123. հմմտ. Ֆրիկ 620).

Եւ երբ Մոնկոլները զբաղած էին Պարսկաստանի մէջ, Ջէլալէտտին կը մտնէ Գանձակ։ Թաթարները սակայն շուտով կը հասնին և կը փորձեն պաշարել Գանձակը և Ճէլալէտտինը իր բանակով, սակայն չեն կրնար զայն գերի բռնել, վասնզի կը յաջողի խոյս տալ։

Ատկէ վերջը բախտը չժպտեցաւ իրեն և ինքը ջլատուեցաւ և անձնատուր եղաւ արբեցութեան (Ֆրիկ, 620)։

«Այս թագաւորն, որ եհան զնա փախստական յերկրէն իւրմէ, զհետ մտեալ Թաթարն՝ սաստիկ վարեալ զնոսա մինչեւ յԱմիթ քաղաք եւ անդ եհար զզօրս նորա սաստկապէս, կոտորեաց եւ աւարեաց զինչս նորա։ Ի նմին պատերազմի եւ թէ որպէս ոմանք ասեն, երթայր, հեծելոս փախստական, դիպեալ նմա առն միոջ եւ գիտացեալ թէ նա է եսպան զնա փոխանակ (արեան) եղբօր իւրոյ՝ որ սպանեալ էր զնա յայլում աւուր: Եւ այսպէս բարձաւ չարն ի միջոյ (Կիրակոս, 121):

Ճէլալէտտին մեռած է 15 Օգոստոս 1231ին, Քիւրտ գիւղի մը մէջ ,քիւրտէ մը սպաննուելով.

## ՋԻՆԿԻԶ ԻԲՐԵՒ ՆԵՐԳՈՐԾՈՂ ԴԷՄՔ

Ջինկիզ իր ընդարձակածաւալ կայսրութիւնը կազմելու և բազմազան ժողովուրդները նուաճելու համար, ցոյց տուած է գերազանց ձիրքեր և կարողութիւններ, որոնք բնածին էին վանիլի ուսէ դաստիարակութիւն չունէր և ո՛չ գրել գիտէր և ո՛չ կարդալ (2)։

Ջինկիզ սոսկ ռազմիկ մը չէր, այլ ունէր նաեւ քաղաքագիտական կարողութիւններ, որոնք ոչ նուազ նպաստեցին իր յաջողութեան։

Չափազանց անգութ և անողոք՝ բարեխիտ կը ձեւանար հանդէպ այն իշխաններուն, որոնք կը հպատակէին իրեն։

Ան մեր օրերու «ջիղերու պատերազմը» կը մղէր իրեն հնազանդող ցեղապետներուն դէմ, որոնց ամէնէն խիզախներն անգամ անկարելի էր որ սարսուռ մը չզգային երբ խնճոյքներու ատեն ան գործածէր իբրեւ բաժակ Կէրաիտ (Keraite) Խանի գանկը, արծաթապատ և թանկագին քարերով ընդելուզուած։ Այս սահմռկեցուցիչ տեսարանը սարսափ կ'ազդէր անշուշտ այդ ցեղապետներուն վրայ որոնցմէ Ջինկիզ Խան կը պահանջէր հպատակութիւն, զինաթափութիւն և կատարեալ հնազանդութիւն։

Ան մեղմութիւն ցոյց կուտար իրեն հնազանդողներուն և դաժանութիւն՝ ըմբոստներուն հանդէպ։ Ըստ Էտուին Միւլլերի՝ «Ջինկիզ խան գիտէր նաեւ ահաբեկումով գործ տեսնել: Երբ ծրագրէր նուաճել երկիր մը, բնակչութեան կը յիշեցնէր նախասացիրը այն երկիրներուն, որոնք դիմադրած էին իրեն:

Ահաբեկումը իրեն համար քաղաքականութիւն մըն էր, զոր կը գործադրէր պաղարիւնութեամբ: Եթէ քաղաք մը դիմադրէր կ'այրէր զայն եւ սուրէ կ'անցընէր կիները, այրերը եւ երեխաները: Այս գործը կատարելէ ետք, բանակը կը քաշուէր իր ետին ձգելով փոքրաթիւ ջոկատ մը եւ գերիներու բազմութիւն մը: Քիչ ժամանակ վերջ գերիները կը պարտադրուէին գրուիլ քաղաքին մէջ եւ լուր տարածել, թէ Մոնկոլները մեկնած են: Այն հազուագիւտ բնակիչները, որոնք ազատած էին ջարդերէն, դուրս կ'ելլէին իրենց թաքստոցներէն եւ Մոնկոլները զանոնք եւս կը բնաջնջէին: Եւ որպէսզի բոլորովին վստահ ըլլային թէ ողջերը մեռած են, Մոնկոլները կը գլխատէին զանոնք: Այս կերպով մեռնողներու թիւը կը հաշուուէր տասնեակ միլիոններով»:

Ջինկիզի յաջողութեան մէկ ուրիշ գաղտնիքն ալ իր մէկ ուրիշ հնարիմացութիւնն էր։ Անիկա կը գրգռէր ընչաքաղցութիւնը իր զինուորներուն, որոնք իբրեւ զաւակները չափազանց նախնական ժողովուրդի մը, կը ցանկային մասնաւորապէս քաղաքակրթական աւելի բարձր մակարդակի հասած ժողովուրդներու աւարին։

Իբր թէ որպէսզի Խուարէզմի Շահին անարգանքով իր վիրաւորուած արժանապատուութիւնը գոհացում գտնէր, Ջինկիզ թոյլ տուաւ—ինչպէս տեսանք— որ Մոնկոլ հրոսներ սոսկալի աւերածութիւններ կատարէին Շահին երկիրին մէջ։ Սակայն ո՛չ Մուհամէտ Շահին մահը իր երկիրէն հեռու, ո՛չ անոր որդւոյն պարտութիւնը և ո՛չ ալ իր զինուորներուն գործադրած սոսկալի աւարառութիւնը զինքը չգոհացուցին իբրեւ աննշան հատուցում մը։ Նոյն ձեւով վարուեցաւ ուրիշ երկիրներու հետ ալ, չբաւականանալով զանոնք ընկճելով, այլ տիրակալութեան անյագ փափաքով մը՝ չարունակ ընդարձակեց իր պետութիւնը (հմմտ. Ֆրիկ, 582—585)։ Այսպէս մէկ կողմէն ահաբեկելով և միւս կողմէն իրեն հաւատարիմները վարձատրելով նուաճուած երկիրներու բնակիչները օգտագործեց։

Իր ծրագիրը չէր նուաճած երկիրները միայն կողոպտել, այլ տեւականօրէն տիրապետել անոնց և իր պետութեան կցել։

Այսպէս անիկա «տիրեց այնպիսի ընդարձակ կայսրութեան մը, որուն նմանը ոչ ոք տեսած էր դեռ մինչեւ մեր օրերը, կայսրութիւն մը որ կը տարածուէր Խաղաղական Ովկիանոսէն մինչեւ Կեդրոնական Եւրոպա եւ որ կ'ընդգրկէր այն ատենուան ծանօթ երկիրներուն մեծ մասը եւ աշխարհի բնակչութեան կէսէն աւելին: Գարագորում քաղաքը, Կեդրոնական Մոնկոլիոյ մէջ, եղաւ մայրաքաղաքը այս արեւելեան կայսրութեան, որ կ'սպառնար իր տիրապետութեան տակ առնել բովանդակ Քրիստոնեայ աշխարհը» (Էտուին Միւլլեր):

Եւ զարմանալի է որ յաջողած է նուաճուած երկիրներուն բնակիչները շահիլ։ Եւ այսպէս շնորհիւ բնիկ հաւատարիմ և վստահելի տարրերու աւելի դիւրին և աւելի շուտ տէր կրցած էր ըլլալ շատ մը երկիրներու։ Զաղատայի դրած արգելքը իր զօրքին, որպէսզի ջարդ չկատարեն, ըսելով թէ «Մեք ոչ ունիմք հրաման ի Ղանէն կոտորել զայնոսիկ՝ որ հնազանդ են մեզ, եւ կան մեզ ի ծառայութեան եւ հարկատուք են Ղանին, եւ իրք ապստամբութեան նոցա ոչ է ճշգրտեալ» (Կիրակոս, 180, հմմտ. Brosset, 511) շատ յատկանշական է այս տեսակէտով (1) Պաղտատի Խալիֆային նկատմամբ ալ այսպէս վարուած են, ինչպէս կը հաստատեն նոյնիսկ իսլամ պատմագիրներ (տես Raschid Eldin, Ա. 143 և Aboul Ghazi Բ. 125)։

Գրաւուած երկիրներու բնակիչները փոխադարձարար անձնուիրօրէն ծառայած են և իրենց կեդրոնէն այնքան հեռացած բանակներուն—որոնք անծանօթ էին տեղական պայմաններուն—առաջնորդ և զինուոր և նոյնիսկ հրամանատարներ հայթայթած են։

Ջինկիզ իբրեւ ռազմավար որոշ է որ օժտուած էր մասնաւոր ձիրքերով։

## ՋԻՆԿԻԶ ԻԲՐԵՒ ՌԱԶՄԻԿ

Ըստ Էտուին Միւլլերի «Ոչ մէկ հրամանատար իրմէ աւելի յաջողութիւն ունեցած է»։

---

(2) Թրքական ցեղեր առհասարակ անգիր են, միայն 1—2 ցեղեր շատ նախնական փոխառեալ տառեր գործածած են: Բրոֆ. Յակոբ Մարքաեան ունի ուսումնասիրութիւն մը «Նախիսլամական Թուրքերու գիրերը» խորագրով. (տես Ընդարձակ Տարեցոյց Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի 1932, էջ 116–128):

(1) Արդարեւ, Սեբաստիոյ (Կիրակոս, 155) Տիվրիկի (Նոյն, 155) Դամասկոսի (Նոյն 74) հետ շատ մեղմութեամբ վարուած են: Հեթում Ա. Կիլիկիոյ թագաւորը նոյնիսկ իբր նորս վեհապետ նկատած եւ ոեւէ վնաս չեն հասուցած անոր: Իսկ Անի, Պաղտատ, Կարին, Կեսարիա, Երզնկա, Մուֆարգին, Հալէպ եւն. չարաչար պատժուած են:

*Ոչ մէկ ատեն 200,000էն աւելի զօրք ունեցած է իր բանակներուն մէջ։ Բանակին մէջ Թուրքերը որ յարաբերութեան մէջ էին Մոնկոլներու հետ, և անոնց դաշնակիցները կամ հովանաւորեալները, թուով առաւել շատ էին* (հմմտ. Տրիկ, 579)։

*Մեծ մասը իր զօրքերուն և շատերը իր սպաներուն կամ տեղակալներուն՝ Թուրք էին* (Histoire Universelle Lavisse et Rambend, հտ. Բ. 884, L. Caban Introduction de l'Histoire de l'Asie, Turcs et Mongols, 1896, Lamouche, 14) *Բայց երկու ազգերն ալ ստուար զանգուածներ չէին, հետեւաբար Ջինկիզի բանակը մեծ թիւ մը չունէր։*

*Ասով հանդերձ, այս համեմատաբար փոքր բանակով՝ ան փոշիացուց կայսրութիւններ, վասնզի* Ջինկիզ խան պողպատեայ կամքի տէր էր եւ ունէր բարոյական եւ ֆիզիքական անընկճելի ուժ մը։ Բացարձակապէս խղճի խայթ եւ կարեկցութեան զգացումներէ զուրկ էր։ Բայց իր մեծութիւնը կը կայանար իր բանակներուն գործունէութեան մէջ։ Աստ մէջ է որ պէտք է փնտռել Մոնկոլ կայսեր յաղթանակներուն գաղտնիքը...

Ջինկիզ խան առաջինը եղաւ որ իր ժողովուրդը դաստիարակեց իբրեւ պատերազմիկ։

Մոնկոլ ձին եւ ձիաւորը իրեն կը հայթայթէին սքանչելի «նախանիւթ» մը։ Ձին տոկուն էր, յոգնութեան դիմացող, կը գոհանար երեք օրը անգամ մը ջուր խմելով։ Իր սնունդը կը ճարէր ամէն տեղ։

Հեծելազօրը նմանապէս, կրնար ձիավարել գիշեր կամ ցերեկ, քնանալ ձիւնի մէջ եւ սնանիլ գրեթէ ոչինչով։ Ի ծնէ ռազմիկ մըն էր, մանկութենէն կրթուած զիրկընդխառն կռիւներու եւ աղեղով նշանառութեան։

Այն եղանակը, որով Ջինկիզ խան զինեց իր բանակը, կը յայտնէ իր կազմակերպական հանճարը եւ իր ցոյց տուած շահագրգռութիւնը մինչեւ ամենավերջին մանրամասնութիւնը։ Մոնկոլ զրահը շինուած էր եզան կարծրացուած եւ խիժապատ կաշիէ։ Իւրաքանչիւր զինուոր երկու աղեղ ունէր, մէկը՝ ձիու վրայէն նետ արձակելու, միւսը՝ աւելի անվրէպ, կանգնած վիճակի մէջ արձակելու համար։ Տէգերն ալ երեք տեսակ էին, իւրաքանչիւրը տարբեր տարողութեամբ։ Կարճ հեռաւորութեան համար գործածուած տէգին ծայրը պողպատով պատած էր եւ կրնար մինչեւ իսկ զրահ մը ծակել։ Ամէն մէկ պատերազմիկ իրեն հետ ունէր չորցուած մածունի պահեստ մը, որմէ կէս լիպրա ուտելով կրնար օր մը շարունակ պատերազմիլ։ Ունէր նաեւ պահեստի լար, մոմ եւ հերիւն մը նորոգութեան համար։ Այս բոլորը կը պահէր կաշիէ պայուսակի մը մէջ, որ, ի պահանջել հարկին, կրնար օդով լեցուիլ գետ մը անցքը դիւրացնելու համար։

Բանակը 10, 100, 1000 եւ 10000 անձերէ կազմուած միաւորներէ կը բաղկանար (1)։ Կռուողներու հետ կային օժանդակ գունդեր, ամրաշէն զին-

(1) Հմմ. Հեթում Պատմիչ 33, նաեւ *Piano Carpini, 287, Aboul-Ghazi, 143, Marco Polo, 80, C. 89-90,* Գ. Ալպունեան, **Արարատ**, 1912 էջ 1109), Հեթում (70) անոնց բանակին մասին սա շատ յատկանշական տողերը ունի. **«Թաթարք են քաջ զինուորք եւ պա-**



ուորներ, մասնագէտներու խումբեր, որոնց պարտականութիւնն էր վարել քարընկէց մեքենաները եւ պաշարման ուրիշ գործիքներու վերակացութիւնը, ձի հայթայթող սպասարկութիւն մը, զինագործ արհեստաւորներ։ Եւ բանակին ետեւէն կու գար բազմութիւն մը որ անդադար կ'աշխատէր բանակին ուտեստեղէն եւ անհրաժեշտ կազմածները հայթայթել։ Իսկ ոչ-կռուողներու պարենաւորումը հասած էր նուազագոյն աստիճանի մը։

Ջինկիզ խանի ստեղծած ռազմավարութիւնը կատարեալ սքանչելիք մըն էր, ձեռք բերուած երկարատեւ փորձառութեամբ։ Բանակը կը շարուէր հինգ կարգի վրայ՝ մէկը միւսէն լայն անջրպետով զատուած գումարտակներով։ Առաջին շարքին վրայ էին յարձակման զօրագունդերը (ոչ-թաթարները, որպէսզի երկու կրակի—թշնամիին եւ թաթարներուն մէջ մնալով փախուստ չտան կամ չդաւաճանեն), որոնք լաւապէս զինուած էին եւ կը գործածէին դաշոյն, նիզակ եւ լախտ։ Ասոնցմէ վերջ կուգային հեծեալ աղեղնաւորները։

Աղեղնաւորները քառասմբակ կ'արշաւէին, յարձակման ջոկատները իրարմէ բաժնող տարածութեան մը մէջէն նետեր արձակելով թշնամիին վրայ։ Երբ բաւական կը մօտենային հակառակորդին, կ'իջնէին ձիէն եւ նետերու տարափ մը կը տեղացնէին թշնամի բանակին վրայ։

Ուրեմն, յարձակման էական մասը կը կազմէր բուռն եւ կեդրոնացած նետաձգութիւն մը, որ աննախընթաց էր...։

Երբ թշնամին կազմալուծուած ըլլար, պատերազմիկները կը յարձակէին պարտութիւնը կատարեալ դարձնելու համար։ Լաւ յղացուած ծրագիր մըն էր։ Հրամանները փոխանցելու համար ըստ պարագայի կը գործածուէին սեւ եւ ճերմակ դրօշակներ։

Եւ վերջապէս, Մոնկոլներու յարձակման յաջողութեան կը նպաստէին զէնքերու առաւելութիւնը, յարձակման արագութիւնը եւ ճիշդ նշանառութիւնը։ Ջինական բանակները, իսլամ պետութեան պատերազմիկները, քրիստոնեայ աշխարհի ասպետներն ու կռուողները մէկիկ-մէկիկ զգետնուեցան Մոնկոլներու նետերուն առջեւ։

Թէեւ Մոնկոլ աշխարհակալը միշտ գործ կ'ունենար թուապէս գերազանց ուժերու հետ, բայց եւ այնպէս կը կարգադրէր, որ վճռական յարձակ-

**տերազմողք, հնազանդք զօրավարին, եւ նշանօք դիւրաւ կառավարին։ Տէրն թաթարաց յելանելն ի պատերազմ չտայ նոցա դրօշակ, այլ ի հաւատարմութենէ եւ յաւարէ կեան եւ սան անձի բաժին տեառն իւրեանց, շատ զէնս առնուն ընդ իւրեանս... Աջողակք են ի ձիավարել, եւ քաջ աղեղնաւորք՝ հետեւակք ծանր քայլեն, ճարտարք են յառնուլ պատերազմաւ զքաղաքս եւ զամրոցս։ Ոչ ամօթ համարին փախուստ դառնալ, եթէ լաւ իցէ փախչիլ։ Ոչ են յանդուգն ի յարձակմունս մարտի, այլ եթէ հանոյ թուի՝ դիմեն ի վերայ թշնամեաց, եթէ թշնամին չկարիցէ կռուիլ ընդ նոսա։ Եւ որովհետեւ քաջ նետաձիգք են, դժուարին է մարտնչել ընդ նոսա, կամ ի յետս կասիլն հետամուտ լինել նոցա. վասնզի կարգաւոր օրինօք յետս յետս խաղան, եւ թիկունս կոյս արձակեն զնետս. եւ այլ»։ (Օտար Արեւմտեան հեղինակներ կը հաստատեն այս տեղեկութիւնները. (տես. Գ. Ալպունեան, Արարատ, 1912 էջ 1115—7)։**

ման պահուն թուական գերակշռութիւնը իր կողմը կ'ըլլար: Ան գիտէր թըշնամի ուժերը բաժնել եւ կեդրոնացնել իր ուժերը:

Ճարտարօրէն կեղծիքի կը դիմէր եւ երեւան կ'ելլէր հոն ուր թշնամին բնաւ չէր սպասեր իրեն: Պատերազմը կը շահէր կողմնակի շարժումներով, քան ուղղակի յարձակումով, որ շատ սուղի կը նստի յարձակող կողմին:

Իր յարձակումները հիմնուած էին արագութեան վրայ(1) որովհետեւ ան կը շարժէր երկու անգամ աւելի արագ, քան իր հակառակորդը (2): Իր թեթեւ զօրասիւները կը թափանցէին թշնամի գիծերէն ներս, մասերու կը բաժնէին եւ մեթոտիկ կերպով կը բնաջնջէին զանոնք: Ամրութիւնները ետեւ կը ձգէր եւ առաջ կ'անցնէր ետքի թողլով զանոնք նուաճելու գործը:

Չէր վստահեր յանպատրաստից յարձակումներու: Իր մղելիք ճակատամարտները կը նախապատրաստէր մանրամասնութեամբ, երբ դեռ թշնամին չէր իսկ կասկածեր, թէ պատերազմը կը մօտենայ: Երկիրի մը դէմ կ'արձակէր իրարմէ հարիւրաւոր մէթր հեռու վայրերէ, երեք կամ չորս բանակներ, որոնք շատ քիչ միջոց ունէին կամ բնաւ չունէին իրարու հետ հաղորդակցելու, այսուհանդերձ, ան կը յաջողէր զանոնք համակարգել եւ առաջ մղել դէպի իր ցանկացած նպատակակէտը:

ՉԻՆԿԻԶԻ ԲԱՆԱԿՆԵՐՈՒՆ ՕԺԱՆԴԱԿՆԵՐԸ

*Չինկիզի յաջողութիւններուն մէջ մեծ դեր ունէին բանակին օժանդակ գործօնները: Ինչպէս տեսանք ան առաջուց կ'ուսումնասիրէր այն երկիրները,*

(1) Այնքան արագաշարժ եւ յանկարծահաս էին որ յարձակման ենթարկուած երկիրներու ժողովուրդները եւ իշխողները երբեք ժամանակ չէին ունենար դիմադրութիւն կազմակերպելու: Ստեփանոս Օրբելեան զանոնք կը նմանցնէ մրրիկի: Զարմանալի է այս արագութիւնը, վասնզի Թաթար բանակը հորդա էր, քանի որ Թաթարները իրենց հետ կը տանէին ինչ որ ունէին, բնակարան, ինչք, պատերազմական գերիներ (որոնք ծառայի դեր կը կատարէին), իրենց կիները եւ զաւակները, ընտանի անասունները — ուղտ, եզ, ջորի — մէկ խօսքով իրենց ամբողջ հարստութիւնը (**Կիրակոս**, 122): Այս բազմութիւնը կրնար Մոնկոլ պատերազմական գործողութիւնները դանդաղեցնել, բայց այդպէս չէ եղած, վասնզի ամբողջ ժողովուրդը բանակի կազմ ունէր:

(2) Բնակիչները յաճախ յանկարծակիի գալով կը լքէին իրենց բնակավայրերը եւ կը փախչէին երկիրին ամուր բերդերը եւ ամրոցները: Թաթարները նախ դաշտերը եւ գիւղերը կը գրաւէին, առանց դժուարութեան եւ անարգել կ'աւերէին եւ կը կողոպտէին, կը յափշտակէին ժողովուրդին հարստութիւնը, կենդանիները եւ բնակիչները գերի կը վարէին եւ ծառայ կը դարձնէին: Գալով բերդերուն գրաւման, վասնզի անոնց դէմ իրենց նետերը անզօր էին, Թաթարները կը գործածէին պաշարման մեքենաներ, որոնք Կիրակոս Փիլիկուն կը կոչէ, հաւանօրէն Լատինաց *Catapulta*ն:

Այդ մեքենաները կը բարձրացնէին մինչեւ պարիսպները եւ անկէ իրենց նետերու տարափը կը տեղացնէին պաշարեալներուն վրայ:

Երբ դարձեալ չյաջողէին, այն ատեն ականներ կը փորէին պարիսպներուն տակ եւ զանոնք կը փլցնէին եւ ներս կը խուժէին: Իսկ խրամները կը լեցնէին փայտով, քարով եւ հողով, որպէս զի մօտենան: (Հմմտ. **Կիրակոս**, 124—5, 127, 136—9, **Պատմ. Թաթարաց**, 17, **Հեթում**, 47. *Quatrèmere, 134—6, Plano-Carpini, 325*, Գ. Ալթունեան **Արարատ**, 1912, 1111—2):



*որոնց վրայ պիտի յարձակէր: Վաճառականական կարաւանները, որոնք կ'ակօսէին ամբողջ Ասիան, իր հինգերորդ զօրասիւներն էին:* «Անոնց միջոցով «կը գնէր» գաղտնի գործակալներ ամէն երկիրի մէջ, կ'ուսումնասիրէր նուաճուելիք երկիրին աշխարհագրութիւնը, ժողովուրդը եւ անոր հետեւած քաղաքականութիւնը: Երեւան կը հանէր դժգոհները եւ զանազան խմբակցութիւններ իրարու դէմ կը լարէր:

Իսլամ երկիրներու մէջ իր պահած լրտեսները տեղեկացուցին թէ Սուլթանին մայրը կը նախանձի իր որդիին ունեցած իշխանութենէն: Չինկիզ խան այս կնոջ ուղղուած նամակ մը գրել տուաւ, իբրեւ պատասխան անգոյ նամակի մը, որով այդ կինը շնորհակալութիւն կը յայտնէր իրեն խոստացուած զինուորական օգնութեան համար: Ապա այնպէս մը կարգադրեց որ այս նամակը առնողը ձերբակալուի Սուլթանին կողմէ: Եւ երբ Չինկիզ խան արշաւեց երկիրէն ներս զայն գտաւ քաղաքային պատերազմը յիշեցնող վիճակի մը մէջ...

Իմացած ըլլալով որ Չինաստանի պատերազմական նախարարը պետական գանձէն անհագին գումարներ իւրացուցած է, լուրը տարածել տուաւ Չինաստանի մէջ, ինչ որ քաղաքական մեծ տագնապ մը առաջ բերաւ ճիշդ այն ժամանակ, երբ Մոնկոլները կը պատրաստուէին յարձակման անցնիլ այս երկիրին դէմ:

Իր նպատակներուն ծառայեցնել գիտէր նաեւ քարոզչութիւնը, մանաւանդ իր ժողովուրդին բարոյականը բարձր պահելու համար: Ան կը ջատագովէր զինուորական ասպարէզը եւ բնական կը գտնէր, որ բոլոր ոչ-պատերազմիկները պէտք է բանակին ծառայեն: Կը քարոզէր իր հպատակներուն թէ Մոնկոլ ցեղը գերազանց է բոլոր միւս ցեղերէն»:

*Այսպէս իր ամէն մասերով մտածուած Պատերազմական մեքենայով մըն էր որ ան գրեթէ ամբողջ աշխարհի տիրած է:*

«Իր մահէն ետքն ալ պատերազմական այս մեքենան շարունակեց գործել: Իր յաջորդները եղան բովանդակ Ասիոյ տէրերը: Շարունակեցին թափանցել Եւրոպայի խորերը եւ յաղթեցին Հունգարներուն, Լեհերուն Գերմաններուն: Ոչ մէկ ազգ կրնար դիմադրել անոնց ուժին: Չինկիզ խանի թոռան՝ Քուպլէ խանի օրով, Մոնկոլներուն զօրութիւնը իր զարգացման գագաթնակէտին հասաւ: Սակայն հետագային այս կայսրութիւնը բաժնուեցաւ այլասերած ժառանգորդներու միջեւ: Այսօր Մոնկոլները դարձեալ վաչկատուն ցեղերու բաժնուած են, ո՛չ ուժ ունին, ո՛չ ալ համագործակցութիւն: Գարագորումը անհետացաւ Կոպի անապատի աւազներուն մէջ: Անունն անգամ մոռցուած է գրեթէ: Սակայն զինուորականները չեն մոռցած Չինկիզ խանը»: (Էտուին Միլլէր, նոյն) (1):

(1) Այս նկարագրութիւն Չինկիզ խանի գործելու եղանակին մասին, ցոյց կու տայ թէ Գերմանները շատ օգտուած են իրենց ռազմավարութեան մէջ, աշխարհի պատուհաս եղող այս աշխարհակալէն: Էտուին Միլլէր կ'ըսէ թէ «բացայայտ է որ գերմանները շատ բան սորված են Չինկիզ խանի «դպրոց»էն եւ իբրեւ ապացոյց կը յիշէ թէ Գերմաներէն հինգ ընդարձակ եւ մասնագիտական ուսումնասիրութիւններ կան մեծ Մոնկոլին զինուորական դրութեան նուիրուած, իսկ անգլերէն՝ երկու կամ երեք համառօտ աշխատութիւններ:

## ՉԻՆԿԻԶԵԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ ՉԻՆԿԻԶԷՆ ՅԵՏՈՅ

Չինկիզի զաւակները և թոռները կայսրութիւնը պահեցին իրենց ձեռքին մէջ մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը և շարունակեցին անոր՝ գործը աւելի ընդարձակելով իրենց ինկած ժառանգութիւնը։

Ժամանակի ընթացքին անոնք հասան մինչեւ Պալթիկ, Ադրիական և Միջերկրական ծովերը, Գերմանիոյ-Պոհեմիոյ-Աւստրիոյ գիծը և Պալքանեան լեռները և ամէն կողմէն շրջապատեցին Բիւզանդական կայսրութիւնը։

Ֆինլանտիոյ և Մոսկուայի մեծ դքսութիւնները դարձան անոնց հարկատու։ Մոնկոլ բանակ մը առաջացաւ նոյնիսկ մինչեւ Հիւսիսային Սառուցեալ Ովկիանոսի եզերքը։

Նուաճուեցաւ ոչ միայն Հիւսիսային Չինաստանը ամբողջութեամբ՝ Չինկիզ Խանի ծրագիրին համաձայն, այլ նաեւ Հարաւային Չինաստանի կայսրութիւնը, Հնդկաչինը. Աննամի կայսրութիւնը և ամբողջ Թերակղզին և շրջակայքը, որոնց տիրելէ ետք, Չինկիզեանները հասան Ճաւա, Սումաթրա և Մալայեան միւս կղզիները։

Մոնկոլ կայսրութեան կցուեցաւ Հնդկաստանի Հիւսիսային մասը եւս։

Մոնկոլները ցուրտ երկիրներու բնակիչներ ըլլալով, Հասարակածային երկիրներու մէջ նեղուած են չկարենալով տոկալ տաքին։

Այդ պատճառով՝ անոնք աւելի Հարաւ և Ափրիկէ չկրցան արշաւել։ Սակայն իրենց նաւերը մինչեւ Ափրիկեան ծովեզերքները, ինչպէս Եթովպիոյ ափերը, և նոյնիսկ Հարաւ. Ափրիկէ՝ Զանզիպար և Մատակասկար կ՚երթեւեկէին։ Ճափոնական կղզիներու բնակիչները ապաւինելով իրենց դիրքին՝ մերժած են հպատակիլ Մոնկոլ Խանին, որ 100,000 զօրքով մեծ նաւատորմիղ մը ղրկած է նուաճելու համար այդ ըմբոստ կղզեխումբը. սակայն այս արշաւանքը ձախողած է, վասնզի փոթորիկ մը մեծ վնաս հասցուցած է նաւերուն։ Այսպէս, անսահման տարածութիւն ունեցած է Մոնկոլ աշխարհակալութիւնը և իր լուծը պարտադրած է բազմաթիւ երկիրներու և ժողովուրդներու։

## ՉԻՆԿԻԶԻ ՅԱՋՈՐԴՆԵՐՈՒՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Չինկիզ անհեղ բռնապետ մըն էր, բայց զարմանալի է՝ որ գոնէ ձեւականօրէն իր ընդարձակ պետութիւնը կը կառավարէր Աւագներու ժողովով մը և խորհրդակցութեամբ։ Այս ժողովը որ Գուրուլթայ կը կոչուէր, կերպով մը արդի խորհրդարաններու դերը կատարելու կոչուած էր։ Թեմուչինը կը գումարէր իր կենդանութեան ատեն, և իբր թէ անոր խորհուրդով կը շարժէր։ Ինքը կը նստէր մասնաւոր թաղիքի մը վրայ, որուն վրայ ոչ միայն ոչ ոք իրաւունք ունէր նստելու, այլ նոյնիսկ ոտք դնելու։

Այս թաղիքը յետոյ ազգային, դարձաւ սրբազան առարկայ մը, երբ Գուրուլթայն Թեմուչինը հռչակեց Չինկիզ, Մեծ Խան կամ Խաքան։

Չինկիզէն վերջ այս Ներկայացուցչական Մարմինը իր գոյութիւնը պահած է ատեն մը և յաջորդ խաները ընտրուած են անկէ։

Նոյնպէս իր գոյութիւնը պահած էր անոր իբրեւ օրինագիրք գործադրութեան դրած Եասախը, որուն պատրաստութեան մէջ թերեւս մեծ դեր ունէր, Ջաղաթա (Gaghatai Khan), Չինկիզ Խանի և իշխանուհի Burt Fudjinի երկրորդ որդին, որ իր եղբայրներուն մէջ ամէնէն աւելի ուշագրաւն էր ուսման և գիտութեան իր հակումներով։ Հօրը կենդանութեան ժամանակ՝ իսկ պալատին մէջ մեծագոյն հեղինակութիւնն էր Եասախի գիտութեան և Չինկիզ Խանի կողմէ իրեն վստահուած էր օրէնքի և իրաւունքի գործադրութիւնը, իբրեւ գերագոյն օրէնսգէտ՝ պետական, հանրային, անհատական իրաւանց և մանաւանդ բարքերու հարցերուն մէջ (տես Ֆրիկ, 584 եւ հոն յիշուած բազմաթիւ աղբիւրները հազիւ գիտական աշխարհին ծանօթ)։



Ինչպէս կը թուի այս օրինագիրքը արհամարհելի բան մը չէր, վասնզի որչափ ատեն որ Եասախը տիրող էր իբրեւ ընդհանուր օրէնք, երկիրը լաւ կառավարուած է, խաղաղութիւնը եւ անդորրութիւնը տիրած է ամէն կողմ և բոլոր նուաճուած ժողովուրդները լայն շունչ մը առած են յառաջդիմութեան և բարօրութեան պատեհութիւն ունենալով։

Այսպէս նուաճուած ժողովուրդները գոհ էին Մոնկոլ կառավարութենէն։ Ասիկա կը հաստատուի իրողութեամբ մը, որ պատմութիւնը արձանագրած է։ Ճելալէտտին Խուարէզմի Շահը, որ իր հօրը՝ Մուհամէտ Շահի մահէն ետք Հնդկաստան փախած էր, երբ վեց տարի ետք կրկին մտաւ Պարսկաստան, որպէսզի ժողովուրդը ապստամբեցնէ, բոլոր դուռները գոց գտաւ իր առջեւ։ Ասիա արդարեւ այսպիսի խաղաղ և արդար կառավարութիւն երբեք չէր տեսած։

Կը քաջալերուէին բոլոր ձեռներէց մարդիկը և քաջ արհեստաւորները և արուեստագէտները։ Մահապատիժ սահմանուած էր անբարոյ արարքներու, ինչպէս նաեւ մարդասպանութեան, երդմնազանցութեան, ձիի և էշի գողութեան համար, և այսպէս՝ կատաղի և անզուսպ անձեր կ՚ապրէին իրարու հետ խաղաղութեամբ և արդարութեամբ։ Բայց երկար չտեւեց այս Եասախին պահպանութիւնը և զանցառութիւններ եղան։

Բայքայումը սկսաւ շուտով, ոչ միայն ի մեծ դժբախտութիւն Մոնկոլներու, այլ նաեւ իրենց բոլոր հպատակներուն։

Առաջին հարուածը եկաւ կրօնական մարզէն, երբ իշխանները ձգելով Եասախի պատուէրը, յարեցան զանազան կրօնքներու և իրենց սեփական կրօնքը պաշտպանեցին։ Նախ Քրիստոնէութեան համակիր, ապա յարեցան Պուտտայականութեան ու Մահմետականութեան, գործիք դառնալով Լամաներու և Մոլլաներու ձեռքը, Լքեցին եուրթերը և բնակեցան մարմարեայ պալատներու մէջ, նետեցին իրենց վրայի մորթերը և հագուեցան բեհեզեայ ու մետաքսեայ թանկագին ու հազուագիւտ ընտիր կերպասներ։ «Հոտածները», երբեք չլուացուողները, սկսան ամէն առտու տաք ջուրի լոգանք առնել։ Գրեթէ միսով ու չոր թանով ապրողները, համադամ, նրբաճաշակ կերակուրներ ուտել սկսան։ Ձիու կռնակը միայն քնացողներն ու արշաւողները նախընտրեցին փարթամ ու կակուղ անկողիններու մէջ պառկիլ ու կառքերով ճամբորդել։ Ժուժկալութեան վարժուածները սկսան գինովութեան մէջ կորսուելով և

արբեցութեամբ ապրիլ։ (Հմմտ. Պետրոս քհ. Գասարճեան)։

Բարքերու այս փոփոխութիւնները, ապականութիւններու տարածումը և պարզ կեանքէն հրաժարումը, ծնունդ տուին յարակից բոլոր զեղծումներուն և վրիպումներուն ու եղաւ ատեն մը որ Եասախը այլեւս բոլորովին մոռցուեցաւ։

Այս բարքերու անկումը անշուշտ տեղի չունեցաւ մէկ օրէն միւսը, այլ աստիճանաբար։

Ջինկիզի անմիջական յաջորդներուն ատեն տակաւին կը պահուէր նահապետական պարզ կեանքը, սակայն աւելի ուշ՝ կարգապահութիւնը հետզհետէ մոռցուեցաւ և հին քաղաքակրթական կեդրոններու կեանքը իր բոլոր յոռի կողմերով ընդօրինակուեցաւ այս բարբարոսներու կողմէ, իրենց նուաճումներու շրջանակին տարածման հետեւանքով։

## ՋԻՆԿԻԶԻ ՅԱՋՈՐԴԸ՝ ՈԽԱԹԱ (1229 – 1241)

Ջինկիզ Խանի մահէն (1227) երկու տարի վերջը, երեւելիներու ժողովի (Գուրուլթայ), 22 Հոկտեմբեր 1229ի նիստին՝ անոր երրորդ որդին՝ Ուխաթա կամ Օգաթա (Qghata) Խաքան կամ Մեծ Խան հռչակուեցաւ և պետութեան մայրաքաղաքը՝ Գարագորում հրաւիրուեցաւ (Գ. Ալթունեան 1912 Արարատ, 675)։ Ուխաթա, երբ իր հօրը կայսրութիւնը բաժնուած էր իր չորս զաւակներուն միջեւ, ստացած էր Նայմաններու (Naiman) երկիրը։ Մեծ Խան դառնալով, իբրեւ յաջորդ Ջինկիզ Խանի՝ կը ժառանգէր աշխարհի ամէնէն ընդարձակածաւալ պետութիւններէն մէկը։

Մեծ Խան կամ Խաքան Ուխաթա (1229—1241 Դեկտեմբեր 11 +) իր ընտրութեան յաջորդող օրն իսկ տեսակ մը նահապետական և հայրական կառավարութիւն մը ձեւաւորեց և ժողովուրդին սիրտը շահեցաւ։ Իր գահակալութեան օրուան առթիւ, ո՛չ միայն բանտերուն դուռները բանալ տուաւ ազատութիւն շնորհելով բոլոր յանցաւորներուն, այլեւ պարպել տուաւ պետական մթերանոցները և գանձերը, իւրաքանչիւր քաղաքացիի պէտքին համեմատ բաշխելով զանոնք։ Ան կ'ըսէր. «Մարդիկ անցորդներ են այս աշխարհին վրայ և օր մը պիտի թողուն զայն. միայն իր նմաններուն սրտերուն մէջ ամբարուած գանձերը արժէք ունին»։ Կայսրը երբ տեսնէր որ պետական գանձը լեցուած է, անմիջապէս կը հրամայէր որ ան բաշխուի ժողովուրդին։ 1235ի Գուրուլթային կատարած բաշխումը այնպէս էր որ բնիոն մը իսկ մնացած չէր պետական գանձին մէջ։ Դիտողութիւն ընողներուն կը պատասխանէր թէ նոյն բանն էր, թէ դրամը իր կամ իր ժողովրդեանը քով եղած է։ Ոչ ապաքէն ամէն ինչ իրեն կը պատկանի այս աշխարհիս վրայ. Ինք կու տայ բայց ժողովուրդը իրեն կը դարձնէ։ Դրամը պէտք է շրջաբերի որպէսզի երջանկացնէ մարդկութիւնը», (Հմմտ. Պետրոս քհ. Գասարճեան, Նոյն)։

Ուխաթա իր կայսրութիւնը բաժնեց երեք մասերու և անոնց վրայ ժառանգական կուսակալ դրաւ իր երեք եղբայրները, որոնց սերունդները ետքը հետզհետէ անջատ իշխանութիւններ կազմեցին։

1. Երէց եղբայրը Ջուչի (Jutchi կամ Djoudji) առաւ Կանեալըքեն (Kanyalik) և Խուարեզմէն (Kharizm) մինչեւ Սաքսիմ (Saksim) այսինքն Արեւմտ. Սիպերիան և Վոլկա գետին հովիտը՝ նախնեաց Մաղքթաց և Սարմատացւոց աշխարհները։ Իր իշխանութեան տակ կը գտնուէին Կասպից ծովի Հիւսիսային կողմ Կիպչաքներու երկիրները և էր անոնց վեհապետը։ Իր որդին Բաթու՝ այս կողմերու տիրակալութիւնը պահեց։

Այս պետութեան կեդրոնն էր Գազան քաղաքը։

2. Երկրորդ եղբայրը Չաղաղա (Yagatai, Yasgatai, Cagatat = Dfagatai) տիրացաւ Ուղուր (Uighur) կոչուած երկրամասէն մինչեւ Պուխարա, այսինքն Սկիւթացիներու և յաջորդ Կասպից երկիրները, այսինքն այժմեայ Թաթարիստանը (Խիվա, Պուխարա և այլ) զոր արաբ պատմագիրները Մաւալարնահարա կը կոչէին (1)։

3. Ջինկիզի չորրորդ որդին՝ Թուլէ (Tulé= Tuoloui=Zelel) (1227 – 1250) տէր էր բուն հայրենի երկիրին հողամասերուն, այսինքն Թիպետի, Խօրասանի (Խորազմիա) և Պարսկաստանի։

Այսպէս Մոնկոլ լայնածաւալ պետութիւնը բաժնուեցաւ երեք մասերու Մեծ Խանին վերին հեղինակութեան ներքեւ և անոր ենթակայ։

Նոր Մեծ Խանը շարունակեց հօրը նուաճումները մեծ թափով և մեծ ծաւալով։

Չարմաղան զօրավարը 30,000 զօրքով ղրկեց Խուարէզմի վրայ, հոն քար քարի վրայ չթողնելու խստագոյն հրամանով, վերջնականապէս նուաճելու համար այս երկիրը։

Իսկ Խուարէզմի Ճէլալէտտին Շահը Մոնկոլներէ հալածուած, եկաւ Հայաստան (1225) և պատճառ եղաւ որ Մոնկոլները ուշադրութիւն դարձնեն Հայաստանի վրայ, ինչպէս պիտի տեսնուի ստորեւ։

Խաքան դառնալէ յետոյ, Ուխաթա իր իշխանութեան առաջին հինգ տարիները (1227—1232) ներքին խռովութիւնները զսպելու և իր իշխանութիւնը ամրապնդելու յատկացուց ու ապա սկսաւ շարունակել Ջինկիզի աշխարհակալութիւնները, 1232ին դէպի Արեւմուտք արշաւանքներ կատարելով, (Ազգապատում 1619)։

Ուխաթա իր արշաւող բանակներուն ընդհ. հրամանատար նշանակեց Չարմաղանը որ Մուղանի դաշտը կեդրոն ըրաւ և Մոնկոլ կայսրութեան սահմանները դէպի Արեւմուտք տարածեց։

Սակայն իր առաջին գործերէն մէկը եղաւ 1334ին՝ Ջինկիզի կտակին համաձայն՝ Չինաստանի դէմ արշաւանքը։ Գրաւեց այդ երկիրին մայրաքաղաքը Պիեն (Pien) և ապա Հիւսիսային Չինաստանը։ Պարտուած Չին կայսրը Այ-Ցունկ (Ai Tsung) ինքզինքը կախելով անձնասպան եղաւ։ Ուխաթա 1236ին ապստամբութեան ձեռնարկեց դէպի Քորէա, Սունգս (Sungs) և Արեւելեան

(1) Չաղաթայ ըստ *Lamouche*ի (Նոյն էջ 14) եղած է *Pé-Lou*ի *(Dzoungarie)* տէր եւ պէտք է բոլորովին թրքացած ըլլայ, իր տիրապետած երկիրին բնիկներուն խառնուելով: Գէթ ընտանեցած էր անոնց լեզուին եւ թրքական բարքերուն, վասնզի իր անունը կցուած է Թուրքեստանի գրական լեզուին, Արեւելեան Թուրքերէնի որ դեռ այսօր կը կոչուի Չաղաթա, *(Lamouche)*: Ինքն էր որ Չաղաթա լեզուն պահեց եւ պաշտօնականացուց:

Եւրոպա։ Մոնկոլ Թաթարները արշաւեցին նախ Ռուսաստան, աւերեցին Ռեազանը, Մոսկուան և Քիեւը և անտեղէն ալ մտան Հունգարիա և Լեհաստան։

Բաթու իշխանը և զօրապետը գրաւեց Esztergonը յարձակումով։ Այսպէս, Չինկիզ Խանի մահէն ետք Մոնկոլ արշաւանքները աւելի բուռն հանգամանք մը առին, ամէն ուղղութեամբ տարածուելով։ Իկոնիոյ Սուլթանին բանակները ջարդուփշուր եղած էին, Կարինի և Երզնկայի միջեւ։ Մոնկոլները մինչեւ Կեսարիա արշաւած էին։ Շատ չանցած Եւրոպայի մէջ յաջողած Մոնկոլ-Թաթար իշխան - զօրապետները լուր առին, թէ Ուխաթան գինարբուքի ժամանակ խեղդուելով մեռեր է (1241 Դեկտ. 11ին), ուստի ստիպուած թողուցին Եւրոպան և դարձան Գարագորում (Karakorum)։

## ՔԻՈՒՔ ԽԱՆ (1242—1248 +)

Ուխաթայի յաջորդեց Քիուք կամ Քայիւկ Խան (Kuyuk=Kuguek = Խայուխ կամ Կույուկ) որ իշխեց ըստ ոմանց երեք և ըստ այլոց եօթը տարիներ։

Քիուք բարեացակամ էր հանդէպ քրիստոնէութեան և քրիստոնեաներուն։ Իր գլխաւոր պաշտօնատարները և բժիշկները — որոնք մեծ ազդեցութիւն ունէին արքունիքին մէջ — Քրիստոնեաներէն ընտրած էր։ Այս պատճառով է թերեւս որ Օրբելեան զայն կը կոչէ «մեծ և բարեպաշտ արքայն աշխարհակալ»։ Ան պահ մը այնքան համակիր էր քրիստոնէութեան որ իր սեփական վրանին քով ունէր վրան-եկեղեցի մը իրեն համար։ Քիուք Գարագորումը ընդարձակեց և գեղեցիկ ու մեծ շէնքերով և բազմաթիւ պալատներով ճոխացուց։

Իր իշխանութեան սկիզբը, Չարմաղան որ համրացած և անկարացած էր մեռաւ (1242) եւ իրեն յաջորդեց Բաչու (Կիրակոս. 152) որ Հայաստանի և Փոքր Ասիոյ վրայ Մոնկոլ տիրակալութիւնը ամրապնդեց։

Քիուք մեռաւ 1248ին անզաւակ եւ իր այրին Օղուլ Կըմթմիշ իբրեւ խնամակալ կառավարեց պետութիւնը մինչեւ 1251, երբ Խաքանի կամ գերիշխան վեհապետի տիտղոսը անցաւ Պարսկաստանի տիրապետող Մանգոյ կամ Մանգու (Mangu կամ Mengku) Խանին, 1 Յուլիս 1251ին։

## ՄԱՆԳՈՅ ԽԱՆ (1251—1259)

Մանգոյ Խան Ուխաթայի եղբօր՝ Թուլէի (Tulé) որդին էր եւ Չինկիզի թոռը։ Հաւասար աչքով նայած է բոլոր կրօններուն եւ անոնց հետեւողներուն վրայ։ Չէր հովանաւորեր ոչ մէկ կրօնք։ 1253—1255ին Լուի ԺԱ.ին պատուիրակութիւնը, որուն պետն էր Ուիլեամ Ռիւպրիւքը, Ֆրանսայի թագաւորին բարեկամութեան հաւաստիքները ներկայացնելու համար եկած է և սիրով ու յարգանքով ընդունած է, սակայն Խանը մերժած է ընդունիլ եւ ենթարկուիլ Ճոն տը Բլանօ Գարպինի (Jon de Plano Carpini) եւ Ասելլինոսի (Ascelinos) դեսպանութեանց, անոնց պահանջները մերժելով, (Ֆրիկ, 561)։

Մանգոյ (1251—1259) Մոնկոլ Խաներուն ամենէն փառաւորը և նշանաւորը եղաւ. գահ բարձրանալէն անմիջապէս ետք, սպաննել տուաւ Քիուքի այրին եւ կոտորել հրամայեց կայսերական տան արուները։ Իր գահակալութեան



վաղորդայնին՝ Պարսկաստանի մէջ Մոնկոլներուն դէմ ծագած ներքին խռովութիւնները զսպելու համար իր եղբայրը Հուլաուն կամ Հօւլաղուն (Hulagu) ղրկեց Պարսկաստան։ Հուլաղու Սմրղանտի եւ Քիշի ճամբով անցաւ Օքսոս (Oxos) գետը եւ Պալխի ճանապարհը բանելով աւերեց Խուզիստանը, (Kohlstan), 1256ին սպաննեց Ռուխ էտ Տին Կուրշահ Բ.ը (Rokh-ad-Din Gurshah II) և անոր հպատակներէն մօտաւորապէս 800,000 հոգի ջարդել տուաւ (Ֆրիկ 589)։ Ապա Հուլաղու արշաւեց դէպի Պաղտատ, խալիֆաներու մայրաքաղաքը, զոր պաշարեց և յարձակումով գրաւեց և աւարի ու հրդեհի մատնեց և բնակիչները կոտորածի ենթարկեց (5 Փետրուար 1258)։

## ՎԱԽՃԱՆ ՊԱՂՏԱՏԻ ԽԱԼԻՖԱՅՈՒԹԵԱՆ

Հուլաղուն եղաւ վերջ տուողը Պաղտատի Աբբասեան խալիֆայութեան, որուն Արեւելքի մէջ կատարած կարեւոր դերը անուրանալի է։

Կիրակոս Գանձակեցի, կատարելապէս համաձայն օտար պատմիչներուն, այս նշանաւոր դէպքը, որ Պաղտատի գրաւումով իրագործուեցաւ, պատմած է մանրամասն և ժամանակին քաղաքական դէպքերուն գիտակ անձի մը ձեռնհասութեամբ, վասնզի իր տեղեկութիւնները քաղած է ականատեսներէն և մասնաւորապէս Պաղտատի գրաւման մասնակցող Պռօշեան Հասան-Պռօշ իշխանէն «որ ականատես եւ ականջալուր էր իրաց» (Կիրակոս, 224)։

Պաղտատը գրաւելէ ետք, Հուլաղու 1258ին հոն հաստատուեցաւ և հրաման տուաւ իր աստղագէտին՝ Նասր-էտ-Տինի (Nasir-ad-Din) որ դիտարան մը շինել տայ Մարաղայի մէջ։ աստղերը դիտելու և երկինքի գաղտնիքներուն գիտակ ըլլալու համար։ Ապա արշաւեց Հալէպ, գրաւեց զայն, աւարի ենթարկեց և ապա ուղղուեցաւ Դամասկոս (1260), որուն կառավարիչը խոհեմութիւնը ունեցաւ քաղաքը կամովին յանձնելու իրեն (Ֆրիկ, 595)։

Հուլաղու կը պատրաստուէր Երուսաղէմ արշաւել՝ երբ իմացաւ թէ Մանգոյ Խան մեռած է։ Այն ատեն Քիթու Բուղան (Kitubuka) իր բանակին ընդհ. հրամանատար նշանակելով՝ ինք հապճեպով դարձաւ Մոնկոլիա։

Մանգոյ Խանի մահէն (1259) ետք երբ Մոնկոլ-Թաթար ցեղերու աւագներու Ընդհանուր Ժողովը (Գուրուլթայ կամ Կուրուլթայ (Courultat=Kuriltai) գումարուեցաւ, պետութեան նոր պետը ընտրուեցաւ Քուբլայ իսկ Հուլաղուին արտօնեցին կառավարել այն երկիրները, զորս ան նուաճած էր։

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄՈՆԿՈԼ ԿԱՅՍՐ ՔՈՒԲԼԱՅ (1259—1294 †)

Երբ Հուլաղու Մանգոյ Խանի իշխանութեան շրջանին՝ Արեւմտեան զանազան երկիրներ կը նուաճէր, իր եղբայրները՝ Մանգոյ և Քուբլայ (Kuplai) Խան՝ կը նուաճէին Հարաւային Չինաստանը (հմմտ. Կիրակոս, 220)։

Այս արշաւանքէն դարձին՝ Մանգոյ մեռաւ, և Հուլաղուի երկու եղբայրները Քուբլայ կամ Քուպիլայ (Հայ մատենագիրներու Ղուպիլան) և Արիք-Բուղայ (Կիրակոս, 221) Մանգոյի մահուան ատեն Ծայրագոյն Արեւելքի երկու

ազդեցիկ պետերն էին։ Քուբլայ՝ Չինաստանի բանակին հրամանատարը և Արիք-Բուղայ՝ Մոնկոլիոյ կառավարիչը որոնք կայսրութեան իբրեւ թեկնածու վէճի բռնուեցան։ Քուբլայ կ'ակնկալէր Հուլաղուի բարոյական օգնութիւնը, վասնզի անոր կապուած էր քաղաքական նոյն միտումները ունենալով։ Արիք-Բուղայ իրեն կուսակից ունէր միւս Ջինկիզխանեաններուն մեծամասնութիւնը, Թուրքեստանի մէջ (այսօրուան Ռուսական և Չինական Թուրքեստանները միասին առնելով)։

Այսպէս քաղաքային պատերազմ մը սկսաւ Ջինկիզեան կայսրութեան մէջ։ Հուլաղու ստիպուեցաւ ընդհատել իր աշխարհակալութիւններու ընթացքը Սուրիոյ մէջ և դառնալ Պարսկաստան, իր բանակին մեծ մասին հետ (René Grousset, Պատմ. Խաչակրաց)։ Քաղաքային պատերազմը վերջացաւ Քուբլայի յաղթութեամբ, որմէ Հուլաղու դժգոհ, դարձաւ արեւմուտք, այս անգամ գրեթէ անկախ։

Քուբլայի իշխանութեան 35 տարիներու ընթացքին (1259 – 1294) Մոնկոլ կայսրութիւնը ժամանակաշրջանին հզօրագոյն պետութիւնը դարձաւ։ Անոր ձեռքով է որ նուաճուեցաւ Չինաստանի այն մասը (Գարագորում) որ կ'իյնար Եանգ-Ցէ գետին հարաւային կողմը։

Քուբլայ թողուց հին մայրաքաղաքը՝ Գարագորումը և պետութեան նոր կեդրոն դարձուց Կամպուլիկը (Kambulic) որ է արդի Բեգինը (Peaking) իբրև Տա-դու (Tatu), այսինքն մեծ մայրաքաղաք, իսկ Կէյպինգ (Kaiping) անուանեց Շանգ-Տու, այսինքն «երկրորդ մայրաքաղաք»։

Քուբլայ իր իշխանութեան շրջանին Մոնկոլներու Խանը ըլլալէ կը դադրէր՝ դառնալու համար Չինաց կայսր։

Իր կայսրութեան սահմանները կը հասնէին Դեղին ծովէն մինչեւ Սեւ ծով՝ Արեւմուտքի մէջ և Մոնկոլիայէն մինչեւ Թոնքինէն հիւսիս տարածուող հողերը երկիրին հարաւային մասը կը կազմէին։

Ան համակերպեցաւ Չինական սովորութիւններուն, նիստուկացին։ Իւրացուց անոնց մշակոյթը, հովանաւորեց չինական գիրը և գրականութիւնը, հոգածու եղաւ գրիչի և միտքի մարդերուն։ Խնամք տարաւ Չին ազգային մշակութային հաստատութիւններուն (Ֆրիկ, 593) և այլն։

Քուբլայ մեծ Խանը, Մոնկոլ կայսրութիւնը իր զէնիթին հասցուց, ո՛չ միայն իր սահմանները ընդարձակելով, այլ նաեւ օժտելով զայն հարստութեամբ, խաղաղութեամբ, անդորրութեամբ։ Մշակոյթով, գիտութեամբ, ճարտարարուեստով, ու գեղարուեստի բոլոր ճիւղերով։ Այս մասին շատ հետաքրքրական է Մարգօ Բոլոյի գրածները։ Ինչպէս կը թուի վարչական և զինուորական կազմակերպչական ոգին անզուգական մնացած է Մոնկոլներուն մօտ։ Կատարեալ արդարութիւն և անդորրութիւն կը տիրէր ամէն կողմ և ոճրագործութիւնը գրեթէ անհետացած էր կայսրութեան մէկ ծայրէն միւսը։ Տնտեսական բարօրութիւնն ալ կատարեալ էր։ Ժողովուրդը բնաւ չէր կեղեքուեր։ Հարկերը կ'առնուէին մասամբ ապրանքով և մասամբ դրամով։ Պետական գանձին եկամուտը կը կազմէին մաքսը։ Երկրագործական և ճարտարարուեստի արդիւնաբերութիւնը, մետաղի ու աղի կապալը։ Պետական կալուածներու և



անթիւ հօտերու արդիւնքը, նաեւ հարկատու երկիրներու տուրքը։

Մոնկոլները առաջին անգամ կիրարկած էին թղթադրամը պետութենէն երաշխաւորուած։ Ոսկին որպէս փոխանակութեան միջոց դադրած էր գործառնութենէ ու կը ծառայէր լոկ արդուզարդի։

Յատուկ լաւ կազմակերպուած պետական վարչութիւն մը կը հսկէր իւրաքանչիւր անհատի տնտեսութեան վրայ ու ձախորդութեան մը միջոցին, անմիջապէս իր դիրքին ու ընկերային վիճակին, այսինքն իր ապրելակերպին համապատասխան օժանդակութիւն կ'ստանար որպէսզի կարենայ իր նախկին նիւթական դիրքը պահել։

Գործաւորները ստիպուած էին շաբթուան մէկ օրը պետական աշխատանոցներու մէջ գործել։ Այս աշխատանքներուն արդիւնքով և վաճառականներէն ստացուած ապրանքներով, անկար ու թշուառ անհատները կը նպաստաւորուէին՝ պետական հսկողութեամբ։ Այս լայնածաւալ կայսրութեան ոեւէ մէկ կէտին վրայ սովի առաջքը առնելու համար հաստատուած էին պետական մթերանոցներ ուր կ'ամբարուէին առատութեան շրջանին աւելորդ մնացած արմտիքը, գնուած պետական գանձէն, ու սովի պարագային նոյն գնով կը ծախուէին ժողովրդեան, պահելով տնտեսական կայուն վիճակ մը (հմտ. Պետրոս քհ. Գասարճեան, Ցոյճ)«

Քուբլայի հիմնած Իւվան (Yuan) հարստութիւնը շատ շուտ սկսաւ իր անկման շրջանը և 1363ին արդէն վերջացած էր։ Չնայած որ Քուբլայ ինքն հետեւող դարձաւ Լամայական վարդապետութեան, այն է Թիպեթի Տալա-Լամայի կրօնին, սակայն նոյն ատեն ոչ մէկ ջանք խնայեց որ Քրիստոնէութիւնը ծաղկէր Չինաստանի մէջ։ Անոր հրամանով էր, որ Ժան-տը-Մոն-Կորվէն (Iean de Montecorvin) եկեղեցի մը չինեց Քուբլայի նոր մայրաքաղաքին Կամբալիկի (Kambulic) այսինքն Փեքինի մէջ, 1292ին։ Սակայն, կը թուի թէ Թիպետը գրաւելէ ետք, բոլորովին տարուեցաւ Լամայականութեամբ։ Զայն նկատելով նաեւ քաղաքական ազդակ մը՝ իր հաստատած նոր պետութեան պահպանման համար (Ֆրիկ, 594)։ Այն իրողութիւնը թէ Մարգոյ Բոլօն (Marco Polo) Վենետիկցի ճանապարհորդ, հետախոյզ, վաճառական, դեսպան, պատգամաբեր, ու պատգամատարը, Քուբլայի զինուորական խորհուրդի փոխ-նախագահն էր, ինքնին ակներեւ ապացոյց մըն է որ Քուբլայ-Խաքանը ազատախոհ, ազատ միտքի տէր անձ մը և հեռատես քաղաքագէտ մըն էր, (Ֆրիկ, 594)։։

Դժբախտաբար Մոնկոլ կայսրութեան այս մասը, որ նոյնացաւ իր հպատակներուն՝ Չինացիներուն հետ, անոնց այլամերժ նկարագիրը իւրացնելով, բոլորովին մեկուսացաւ և ընդհանուր ծանօթ աշխարհէն հեռու ապրելով՝ կապ և յարաբերութիւն չունեցաւ նաեւ Հայաստանին և հայ ժողովուրդին հետ։

## ՀԵԹՈՒՄ Ա.Ի ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆԸ ԹԱԹԱՐՆԵՐՈՒՆ

Մինչեւ 1240 Հայաստան ամբողջովին նուաճուած էր Ծայրագոյն Արեւելքի մէջ իրենց կեդրոնը հաստատած Մեծ-Խաքաններու կողմէ ղրկուած զինուորական ուժերէն, որոնք անդիմադրելի զօրութեամբ մը Արեւմուտք կ'ար-

չաւէին, Ջինկիզի պէս, իրենց տիրապետութեան ենթարկուած երկիրներուն մէջ դիմադրել փորձողները բնաջնջումով պատժելով և հպատակողներուն ալ անպայման թոյլտուութիւններ շնորհելով։

Մասնաւորապէս դիմադրողներուն անխնայ ջարդը սաստիկ ահաբեկած էր ամբողջ աշխարհը, ինչպէս նաև Հայաստանը, ուր տակաւին իրենց գոյութիւնը պահող իշխանութիւններու պետերը խոհեմութիւն համարած էին հպատակիլ Թաթարներուն։

Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան վարիչները որոնք անշուշտ տեղեակ էին մասնաւորապէս Մեծ Հայքի և ընդհանրապէս Մերձաւոր Արեւելքի անցքերուն հաւանօրէն իրենք ալ խոհեմութիւն համարած են սրածութեամբ բնաջնջուելու վտանգէն զերծ մնալու համար՝ հնազանդիլ Մոնկոլներու և իրենց իշխանութիւնը պահել և ազգին գոյութիւնը փրկել։

Այս խոհեմ, իմաստուն և հեռատես քաղաքականութիւնը ընդգրկեց նաեւ Կիլիկիոյ Հեթում Ա. Թագաւորը (1224—1269), որ տեսնելով Մոնկոլներուն անպարտելի զօրութիւնը, հասկնալով որ անկարող էր այդ ուժին դիմադրել, երբ Բաչու զօրավար Փոքր Ասիա արշաւել սկսաւ իրալու ետեւէ գրաւելով Ռումի Սելջուկ Գոնիայի Սուլթաններուն հողերը, Կեսարիա Բաչու Նոյին և Ջարմաղանի կնոջ՝ Ելթինա Խաթունի, զրկեց 1244ին թագաւորահայր Կոստանդին Պայլը և անոնց հնազանդութիւն յայտնեց, Խոշենցի Հասան-Ջալալի միջնորդութեամբ (Կիրակոս, 156 եւ Պատմ. Թարարաց 27), Թաթարներու բարեկամութիւնը խնդրեց, դառնալով անոնց հարկատու և զինակից, կամ աւելի պարզ բառով՝ անկախութենէ հրաժարելով ճորտական իշխանութեան մը վերածուելու յանձնառութեամբ։

Բաչու այս ինքնամատոյց հնազանդութիւնը սիրով ընդունեց և թողուց որ Հայերը Կիլիկիոյ իրենց թագաւորութիւնը պահեն և իբր հաւաստիք իրենց անկեղծ հպատակութեան և հաւատարմութեան՝ պահանջեց որ Հեթում յանձնէ Գոնիայի Սուլթանին մայրը, կինը և աղջիկը, որոնք Կիլիկիա ղրկած էր Սուլթանը, ապաստանելու համար (Կիրակոս 156)։

Հեթում պարտաւորուեցաւ ակամայ ընդունիլ այս անպատուաբեր առաջարկը՝ իր երկիրը և ժողովուրդը փրկելու համար։ Այս պատճառով երբ Մոնկոլները քաշուեցան Արեւելք, 1245ին և 1246ին երկու տարի յաջորդաբար, Գոնիայի Ռումի Սուլթանը պաշարեց Տարսոն և Ատանա քաղաքները։ Կոստանդին Թագաւորահայր և Սմբատ Գունդստապլ աշխատեցան պաշտպանել երկիրը, որ սակայն փրկուեցաւ միայն Մոնկոլներու օգնութեամբ, զոր Հեթում խնդրած էր։ Հայերը ետ առին Սելջուկ Սուլթանին գրաւած հողերը և բերդերը, Լամբրոնի Կոստանդին իշխանին օգնութեամբ։ (Ազգապատում, 1624)։

Այսպէս, Հեթումի խոհական քայլը իր բարերար արդիւնքը ունեցաւ և Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը ամրապնդուեցաւ և հայերուն գոյութիւնը հոն ապահովուեցան։

Սակայն Մեծ Հայքի կամ Վերին Հայաստանի մէջ։ Հայերը կը տառապէին, մատնուած ըլլալով անթիւ խժդուժութեանց, իբրեւ հետեւանք Վրաց Թագաւորին ապստամբութեան։



Մոնկոլները ամենուրեք հուր և սուր կը սփռէին, և Հայերը զոհ կ'երթային։
Հեթում Մեծ Հայքի այդ դժբախտ վիճակին դարման մը տանելու միտ-
քով՝ փորձեց աւելի մօտենալ Մոնկոլներուն, անոնց պաշտպանութիւնը ձեռք
բերելու և ապահովելու համար այդ տեղի Հայերուն ալ հանգիստը։
Այս նպատակով Հեթում ղրկեց 1248ին իր եղբայրը՝ Սմբատ Գունդս-
տապլը իբրեւ դեսպան զրկել Ոսկէ Հորդայ Սային Շահ Բաթուի (1)։ Նուէր-
ներով։ Սմբատ Սպարապետ պաշտօն ունէր Հեթումի կողմէ յայտնելու անոր
իբրեւ գերիշխան վեհապետի՝ իր հպատակութիւնը, ինչ որ Մոնկոլ պետու-
թեան կարգերուն համաձայն պէտք էր յայտնէին Մեծ Խանին բոլոր հպատակ
թագաւորները և իշխանները անձամբ ներկայանալով և անկէ հաստատուէին
իրենց իշխանութեան մէջ։
Ոսկէ Հորդայի հիմնադիր Բաթու Խան, որ Մոնկոլները կ'անուանէին
«Սային Խան», այսինքն «լաւ Խան», Քիւուք Խանի մահէն (1248) մինչեւ
Մանգույի Մեծ Խան (1251—1259) ընտրուիլը առժամապէս կը վարէր Մեծ
Խանին պաշտօնը (Յ. Մանանդեան Քննական տեսութիւն Հայ ժողովրդի պատ-
մութեան։ Երեւան 1952 էջ 220)։ Ան Սմբատ Սպարապետը ընդունեցաւ մեծ
պատիւով և սիրով և անոր տուաւ ոսկի փայիզա (2), Թաթար ազնուական կին
բարձր գտակով և յատուկ արտօնագիր, որուն համաձայն Կիլիկիոյ Թագաւո-
րին պէտք էր տրուէին այն բոլոր գաւառները և բերդերը, որոնք առաջ Լեւոն
Բ.ի կը պատկանէին, բայց Իկոնիոյ Ալայէտտին Սուլթանէն գրաւուած էին։
(Կիրակոս, 178—9, Պատմ. Թարարաց 27—8, Մանանդեան նոյն 220—1)։
Հեթում Թագաւոր անշուշտ այս արդիւնքէն գոհ էր, և կը շարունակէր
իր բարւոք յարաբերութիւնները Թաթարներուն հետ։
Բաթու Խան՝ որուն աջակցութեամբ Թուլէի որդին Մանգոյ Խան 1251ին
Խաքան ընտրուած էր, 1254ին Կիլիկիոյ Հեթում Թագաւորը հրաւիրեց իրեն
մօտ տեսակցութեան, և ապա երթալ ներկայանալու համար Մանգոյ Մեծ
Խանին։
Հեթում 1254 Փետրուար 4ին Սիսէն ճամբայ ելաւ, ուղեկից ունենալով
եկեղեցական և աշխարհական հետեւորդներ: Իկոնիոյ Սուլթանին հողերէն
անցնելով անշշուկ հասաւ Կարս, ուր տեսակցեցաւ Բաչու զօրավարին հետ։
Հեթում Կարսի մերձակայ Վարդենիք գիւղին մէջ հայազգի Բուրդ իշ-
խանէն կը հիւրընկալուի, մինչեւ որ Սիսէն կը հասնին այն նուէրները, որոնք
Խանին պիտի մատուցուէին. Կարսէն Տերպենդի ճամբով գնաց Բաթուի և ա-
նոր որդիին՝ Ուխաթայի կայան-բանակատեղը, որ կը գտնուէր Էթիլ (Վոլկա)
գետին եզերքը։ Հեթում յետոյ շարունակեց իր ճամբան և հասաւ Գարագո-
րում Սեպտեմբեր 14ին, և հոն հիւրասիրուեցաւ 50 օրեր Մանգոյ Խանէն,

(1) Յ. Մանանդեան, Քննական Տեսութիւն Հայ Ժողովուրդի Պատմութեան,
1952, Երեւան, Գ. հտ. էջ 219—220, փաստացի կ'ապացուցանէ թէ Սմբատ Սպարապետ դի-
մած է Բաթուի եւ ոչ թէ Քիւուքի, ինչպէս կարծուած է շատ մը Հայ պատմագիրներէ:
(2) Փայիզա կը կոչուէին այն փոքրիկ տախտակները, որոնց վրայ կը գրուէին Ոսկեձոյլ
եւ Խանին անունները եւ կը տրուէին նոյն իշխաններուն եւ պաշտօնատարներուն՝ իբրեւ վա-
ւերագիր իրենց իշխանութեան;

որ մեծ պատիւներ ընծայեց Հայոց Թագաւորին, որ 1255 գարնան դառնալու համար իր երկիրը, անցաւ Արաքսը, եւ Դալասի (Թուրքեստան) մէջ տեսակցութիւն մը ունենալէ ետք Հուլաղու Խանին հետ — որ նոյն տարին Պարսկաստան եկած էր — դարձաւ Կիլիկիա, (Կիրակոս, 214) իր դիրքը զօրացուցած՝ ապահովելով Թաթարներու հովանաւորութիւնը եւ պաշտպանութիւնը։

Մանգոյ Խանէն Հեթում ստացաւ մասնաւոր հրովարտակ մը, որով կը հրամայուէր որ ոչ ոք զինքը և անոր երկիրը չնեղէ։ Հեթում յանձն հ'առնէր Խանին թշնամիներուն դէմ կռուիլ եւ ի փոխարէն խոստում կ'ստանար թէ Ինք Իկոնիոյ Սուլթանին գրաւած գաւառները ետ պիտի ստանար Մոնկոլներու օգնութեամբ։

Ասկէ զատ կը յաջողէր Հայաստանի հայերուն համար եւ մասնաւորապէս հայ եկեղեցիներու եւ եկեղեցականներու համար հարկերու եւ տուրքերու թեթեւացում եւ ապահարկութիւններ ստանալ։

Մշակուած այս բարեկամական յարաբերութիւնները իրենց օգուտը ունեցան ուրեմն եւ Մոնկոլները Հայերու հետ անողոք խստութեամբ չվարուեցան,

Այս պարագային, թերեւս տակաւին բոլորովին չիսլամացած Մոնկոլները, Յակոբիկեան եւ Նեստորական քրիստոնեաներու ազդեցութեամբ բարեացակամութիւն ցոյց տուած են։

Հեթումին պէս «Բազում թագաւորք եւ Սուլտանք եկին նմա ի հնազանդութիւն բազում ընծայիւք եւ մեծացաւ Հուլաւուն Ղանն եւ հարստացաւ այնքան որ ոչ գոյր թիւ հեծելոց եւ զօրաց նորա, նոյնպէս եւ ամենայն իրօք, զի պատուական ակն եւ մարգարիտն իբրեւ զաւազ ծովու էր առաջի նորա. թող զայլ ցեղ մեծութիւն եւ բազմութիւն ոսկւոյ եւ արծաթոյ եւ ձիոց եւ հօտից, որոնց ոչ գոյր չափ եւ թիւ» (Պատմութիւն Թաթարաց, Երուս. 1870, 45)։

ՀԵԹՈՒՄԻ ԻՄԱՍՏՈՒՆ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ

Հեթում շատ մեծ խոհեմութիւն մը ըրած էր Մոնկոլներուն հովանաւորութեան ապաւինելով եւ ընդգրկելով համակերպութեան քաղաքականութիւն մը քանի որ անզօր էր իր երկիրը պաշտպանելու Մոնկոլներու դէմ։

Ի պատիւ Հեթումի պէտք է ըսել թէ, եղած է հայ քաղաքական այն սակաւաթիւ մարդերէն, որոնք իրենց երկրին իրական շահերուն ծառայած են՝ զերծ ամէն կանխակալ կարծիքէ։

Այս քաղաքականութիւնը զոր Հեթում ընդգրկած է, ասիական ժողովուրդներու պատմութիւնը եւ մանաւանդ Խաչակիրներու շրջանը խորապէս ուսումնասիրած մեզի ժամանակակից նշանաւոր պատմագիրը՝ René Grousset կը գնահատէ մեծապէս, Հեթում Ա.ը ներկայացնելով «ԺԳ. դարու քրիստոնեայ աշխարհին տիրապետող դէմքը: Անոր ծրագիրները, կ'ըսէ, Փենիկէն մինչեւ Ասիա կը տարածուէին եւ ան տեսած էր որ Արեւմուտքի Քրիստոնէութեան փրկութիւնը, Մոնկոլեան յորձանքներուն մէջ պէտք է փնտռել: Բայց իրեն մտիկ ընող մը չգտնուեցաւ:

«Չինկիզեան ահաւոր ուժը Քրիստոնէութեան ի նպաստ օգտագործելու համար մինչեւ Գարագորում երթալէն չքաշուող այս հայ իշխանին հրաժեշտ



տուած պահուն, պատմութիւնը զինքը կ'ողջունէ իբրեւ Միջին Դարու ամենէն յստակատես, ամէնէն զօրեղ հանճար ունեցող քաղաքագէտներէն մին: Եթէ Արեւմուտք զինքը մտիկ ըրած ըլլար, անիկա պատմութեան ընթացքը փոխելու կարող եղած պիտի ըլլար: Անիկա մինչեւ Սուտան եւ Թունուզ տարածուող Թուրք-Մոնկոլ կայսրութիւն մը ընդնշմարած էր, պաշտպան Հայ եւ Արեւելեան Ֆրանկ թագաւորութիւններուն, որ հայ, ասորի, լատին եւ յոյն կղերին ազդեցութեան տակ Քրիստոնէացած պիտի ըլլար, ինչպէս չինական Մոնկոլ կայսրութիւնը՝ Պուտտայականութեան, Թուրքեստանինը Մահմետական երկիրներու հիմնադիրը եղած էին» (Խաչակիրներու Պատմութիւն, Գ. հտ. էջ 639)։

Արդարեւ Հեթումի դիւանագիտական այս մեծ հեռատեսութեան նպաստաւոր արդիւնքը վայելեցին թէ՛ Կիլիկիոյ եւ թէ Մեծ Հայքի Հայերը, որոնք այս բարեկամական յարաբերութիւններէն նպաստաւորուեցան, մանաւանդ այն շրջանին ուր Հեթում կանգնեցաւ Թաթար Խաներու կողքին, ինչպէս Հուլաղուի, որ իբրեւ հիմնադիրը Արեւմտեան Մոնկոլ կայսրութեան, պատմական ամենանշանաւոր դեր կատարեց։

Հուլաղու կամ Հուլաւու Խան (Hulagu Khan) ծնած էր Սարքուլոնի Պաճի կամ Սարկակ Բանոի Խաթուն կայսրուհիէն եւ հակառակորդ մըն էր Մահմետականութեան։

Իր գլխաւոր կինը Տոքուզ Խանում երկար ատենէ ի վեր Նեստորական քարոզիչներէն Քրիստոնէութիւնը ընդունած Արեւելեան Մոնկոլիոյ Քերայիկներու նշանաւոր թագաւոր Վան-Խանի թոռնուհին էր եւ շատ ջերմեռանդ Քրիստոնեայ մը, որ իր ամբողջ կեանքին տեւողութեան պաշտպանեց Քրիստոնեաները, որոնք շատ բարգաւաճ վիճակ մը ունեցան։ Այնպէս որ իր կայսրութեան, այսինքն Պարսիկ Խանութեան ամէն կողմը ամէն օր նոր եկեղեցիներ կը բարձրանային, եւ Տոքուզ-Խաթունի օրտուի (բանակ) դուռը միշտ մատուռ մը կար և հոն զանգակ կը հնչեցնէին։ Տոքուզ-Խաթունի քրոջ աղջիկը Թուտիթի-Խաթուն ալ, որ նմանապէս Հուլաղուի կիներէն մին էր ջերմօրէն յարած էր Նեստորական-Քրիստոնէութեան (René Grousset, Խաչակիրներու Պատմութիւն): Bar Hebraeus, աւելի ծանօթ Ապուլֆարաճ անունով, կը վկայէր թէ Տոքուզ-Խաթուն «հաւատացեալ թագուհի եւ ճշմարիտ Քրիստոնեայ» էր եւ «Բարձրացոյց զեղջիւր Քրիստոնէից յամենայն աշխարհ»։

Իսկ Վարդան պատմիչ որ Մոնկոլ արքունիքը ապրած էր և անձնապէս ծանօթացած էր և մասնաւոր վստահութիւնը կը վայելէր անոր երկարօրէն կը խօսի իր մասին։

Վարդան կը պատմէ թէ այս Թուրք քրիստոնեայ իշխանուհին միշտ իր եուրթին մօտ կանգնել կու տար վրան-մատուռ մը, ուր կ'աղօթէր և անոր ազդեցութեան կը վերագրէ այն արտակարգ լաւ վերաբերումը որ Հուլաղու ցոյց տուած է իր նուաճած երկիրներու Քրիստոնեաներուն հանդէպ (հմմտ. Օրբելեան Բ. 165, Կիրակոս 233, Ազգապատում 1652)։

Ասոր համար անշուշտ Ստեփանոս Օրբելեան Հուլաղուն կը հռչակէր «յոյս եւ ականկալութիւն Քրիստոնէից»։

Հուլաղու ինչպէս կը թուի անձնապէս Քրիստոնեայ եղած չէ երբեք, անիկա

աւելի Պուտտայական էր, բայց իր Իրանեան Թագաւորութեան մէջ Պուտտայականներ չկային, մինչ կային մեծ թիւով Քրիստոնեաներ, Նեստորական կամ Յակոբիկեան, Հայ կամ Վրացի։ Եւ բնական է որ ինք կրօնակիցներ չունենալուն պատճառով նպաստաւորէր մօրը կրօնակիցները։ Սակայն իր զարմիկները, որ կը կառավարէին Հարաւային Ռուսիան և Թուրքիստանը կը հակէին դէպի Իսլամութիւն (Հմմտ. René Grousset, Պատմ. խաչակրաց):

Մանգոյ Խան և իր որդին Հուլաղու կը շահագրգռուէին կրօնքով այն չափով որ չափով որ ան իրենց քաղաքական նպատակներուն կը ծառայէր։

«Մանգոյ Մեծ խանը իր կրտսեր եղբայրը Հուլաղուն Արեւմտեան Ասիա ղրկած ժամանակ՝ իր առաքելութեան ծրագիրը հետեւեալ հանդիսական ոճով պարզած էր. «Հաստատէ Չինկիզ խանի կարգերը, սովորութիւնները եւ օրէնքները Ամու-Տարիայի եզերքէն մինչեւ Եգիպտական երկրին ծայրերը: Քու հրամաններուն հպատակութիւն եւ հնազանդութիւն ցոյց տուող ամէն անձի հանդէպ վարուէ բարութեամբ, լիացուր զայն բարեացակամութեանդ ապացոյցներով: Ան որ քեզ հլու չըլլար ընկղմէ նուաստութեան մէջ»: Ծրագիր մը, որ ինչպէս կը տեսնուի, նշանաւոր կերպով նպաստաւոր էր Քրիստոնեայ իշխաններուն, ինչպէս Հայաստանի թագաւորը Հեթում Ա. կամ Անտիոքի իշխանը Պոհեմոնտ Զ., որոնք Մոնկոլեան գերիշխանութիւնը ընդունելու հարկաւորութիւնը ցոյց տալով անպարտելի Թաթարներուն պաշտպանեալներն ու դաշնակիցները կը դառնային:

Մեծ խանին հրահանգները, ուղղուած իր եղբօր, կը յայտնէին տակաւին մասնաւորաբար, «Ամէն պարագայի մէջ մի՛ թերանար խորհրդակցելէ Տոֆուզ խաթունին հետ եւ առնել իր կարծիքները»: (René Grousset, Նոյն, հմմտ. Գ. Ալթունեան, Արարատ, 1912, 814)։

Հուլաղու 1256 Յունուար 2ին, անցաւ Ամու-Տարիան և եկաւ կառավարելու համար խռովեալ Պարսկաստանը և անկէ նուաճելու բոլոր մահմետական երկիրները մինչեւ Եգիպտոս։ Իրեն հետ ունէր իր երկու զաւակները՝ Աբաղան և Իսմուտը, եղբայրը՝ Սունտան, իր բարեկամները Բաչու Թիմուրը և Տաղուտարը և երեք ազգականները Բալաղին, Կուլին և Կոտարը (Գ. Ալթունեան, Նոյն)։

## ԻՍՄԱՅԻԼԵԱՆՆԵՐՈՒ ՋՆՋՈՒՄԸ ԵՒ ՓՈՔՐ ԱՍԻՈՅ ՆՈՒԱՃՈՒՄԸ

Հուլաղուի առաջին գործերէն մէկը եղաւ Իսմայիլեան աղանդաւոր Հաշիշիներու կամ Մլհետներու (= Մելահիտէ = հերձեալք կամ մոլորեալք, պարսիկներէն Հաշիշ և Եւրոպացիներէն Ասասսէն = ոճրագործներ, կոչուած) խորտակումը։ Ասոնք պատուհաս դարձած էին Իսլամ աշխարհին մէջ իրենց սպանութիւններով և աւազակային արարքներով։

Անոնց կեդրոնավայրն էր Ղազուինի մօտ Ալամուդ անառիկ բերդը։ Անոնց առաջնորդը՝ Ռուհ էտ Տին անձնատուր եղաւ Հուլաղուի և բոլոր ամրոցները յանձնեց անոր (1256)։ Մոնկոլ զօրքը ջարդեց զանոնք և Ալամուդը հիմնայատակ կործանեց (Արարատ, 1912, 315) և վերջ տուաւ մօտաւորապէս երկու դար Արեւելքի սարսափը եղող այս ոճրագործներու ընկերակցութեան։ Հուլաղու իրեն բանակատեղին ընտրեց Մուղանի դաշտը, որ Բաչուի և անոր բանակին ձմեռանոցն էր։ Բաչու պատրաստուեցաւ թողուլ Մուղանը և անցնիլ Փոքր Ասիա և հարուածել Ռումի Սելջուկ Իկոնիոյ Սուլթանը, որուն երկիրները մինչեւ Միջերկրական և Սեւ ծովերը աւերեց և աւարեց Բաչու, Հեթումի աջակցութեամբ։ Այս արշաւանքին ժամանակ (1257) Հեթում կրցաւ ետ առնել և միացնել իր թագաւորութեան Իսաւրիան ու նաեւ մի քանի քաղաքներ զորս Սելջուկները խլեր էին հայերէն։



Շահնշահի որդին Զաքարէ, Խաղբակեան Վասակի որդին Հասան Պռօշ, Գրիգոր Խաչէնցիի որդին Սեւադա, Բագրատունի Կիւրիկէի որդին Թաղիադին և այլք։ Հուլաղու յարձակումէն առաջ հրաւէր ըրաւ Խալիֆային իրեն հնազանդիլ, սակայն ան չհամակերպեցաւ և նոյնիսկ անարգանք ըրաւ զօրավարին,

Հուլաղու որուն յանձնարարուած էր նուաճել Մոնկոլ Մեծ Խանութեան սահմանակից պետութիւնները Մերձաւոր Ասիոյ մէջ, սկսաւ պատրաստուիլ մեծ արշաւանքի մը։ 1257 աշնան նախ արշաւեց Մերձաւոր Ասիոյ ամէնէն մեծ իշխանութեան Պաղտատի Խալիֆային վրայ, գործակից ունենալով իրեն Բաչուն։ Հուլաղու հրամայեց բոլոր Մոնկոլներուն հպատակութիւն յայտնող իշխաններուն, որ Պաղտաա երթան պաշարելու համար այդ քաղաքը։ Հայերէն Շահնշահի որդին Զաքարէ, Խաղբակեան Վասակի որդին Հասան-Պռօշ, Գրիգոր Խաչէնցիի որդին Սեւադան, Բագրատունի Կիւրիկէի որդին Թաղիադին և այլք, գացին Պաղտատ։

Հուլաղու յարձակումէն առաջ հրաւէր ըրաւ Խալիֆային իրեն հնազանդիլ, սակայն ան չհամակերպեցաւ և նոյնիսկ անարգանք ըրաւ Մոնկոլ զօրավարին, յուսալով որ իր կոչին վրայ օգնութեան պիտի հասնէին Սուրիոյ Էյուպեանք և Եգիպտոսի Մեմլուքները և Իրան, ինչպէս նաեւ Թուրքեստան, պիտի ապստամբէին Մոնկոլներուն դէմ։ Այս յոյսերը ի թերեւ ելան։ Հուլաղու գրաւեց Պաղտատը և 12000 հոգի ջարդեց պատերազմի դաշտին վրայ։ Քաղաքին գրաւումէն ետք, զինուոր և բնակիչ ամէնքը, սրակոտոր ըրաւ։ Ջարդը տեւեց քառասուն օր և 80,000 բնակիչներ ջարդուեցան։ Խալիֆային հարէմէն հանեցին 700 կին ու հարճ և 1000 ներքինի։

Հինգ հարիւր տարիէ ի վեր Խալիֆաներուն կուտակած հարստութիւնները դիզուեցան լեռներու պէս Խանին վրանին շուրջ և քաղաքին շէնքերուն մեծ մասը կրակի տրուեցաւ (Ռընէ Կռուսէ, Խաչակրաց Պատմութիւն)։

Բայց Պաղտատի քրիստոնեաները, Տօքուզ-Խաթունի խնդրանքով ազատեցան ընդհանուր ջարդէն։

## ՆՈՒԱՃՈՒՄ ՄԻՋԱԳԵՏՔԻ

Պաղտատի Խալիֆայութիւնը նուաճելէ ետք, Հուլաղու ուզեց իր իշխանութեան ենթարկել Հիւսիսային Միջագետքը և Ասորիքը, ուր կ'իշխէին Էյուպեան Սալահէտտինի շառաւիղները և Եգիպտական Մէմլուքները։ Հետեւաբար առանց ժամանակ կորսնցնելու Պաղտատէն դարձին, 1258ի գարնան իր կրտսեր որդին Իսմուտը ղրկեց Հիւսիսային Միջագետք, Էյուպեանց դէմ, որոնք Եգիպտոսէն մինչեւ Հայաստան առաջացած էին և իբրեւ մոլեռանդ իս-

*լամներ կը նեղէին Արեւելքի Քրիստոնեաները, որոնք Թաթարները կը նկատէին ազատարարներ, Էյուպեան Մելիք–էլ–Քամել Մուֆարգինի տէրը, մոլեռանդ Մահմետական, խաչել տուած էր Ասորի քահանայ մը՝ որ իր երկիրը եկած էր Մոնկոլական անցագիրով։*

*Ասիկա գեղեցիկ պատրուակ մը եղաւ Հուլաղուի որ իր քրիստոնեայ զինակիցներուն թելադրութեամբ Մուֆարգինը պաշարել տուաւ Իսմուտին, որուն բանակին մէջ նաեւ Վրացի և Հայ զօրքեր կային Խաղբակեան Հասան Պռօշի գլխաւորութեամբ։ Բուռն դիմադրութիւն ցոյց տուաւ Մուֆարգին, (= Մարտիրուպոլիս = Մարտիրոսաց քաղաք = Տիգրանակերտ) որուն պաշարումը տեւեց երկու տարի* (1258—1260)։ *Այս կռիւներուն ընթացքին մեծ կորուստներ կրեցին թէ՛ Մոնկոլները և թէ Հայերը։ Բայց վերջապէս քաղաքը անձնատուր եղաւ սովի մատնուած։*

*Էլ Քամէլ տանջանքներով սպաննուեցաւ։ Մոնկոլները անոր գլուխը նիզակի մը ծայրը անցընելով պտտցուցին Սիւրիոյ մէջ Հալէպէն մինչեւ Դամասկոս։ Մուֆարգինի Էյուպեան Էմիրութեան բոլոր իսլամները ջարդուեցան, բայց հոն ալ խնայուեցան քրիստոնեաները, որ մեծ թիւ ունէին, վասնզի Մարտիրոպոլիս Յակոբիկեան Ասորի հին մեծ եպիսկոպոսութիւն մըն էր և հաւասարապէս հայկական կեդրոն մը* (René Grousset, Պատմութիւն խաչակր.):

*Մուֆարգինի գրաւումէն վերջ Հուլաղու առաջացաւ և Միջագետքի մէջ գտնուող բերդերը և քաղաքները Մահմետականներուն ձեռքէն գրաւելու ձեռնարկեց։*

«Չինկիզ խանի թոռան արշաւանքը կ'ստանար Հայ–Մոնկոլական խաչակրութեան մը երեւոյթը, կը դառնար որոշ չափով Ֆրանք–Մոնկոլական խաչակրութիւն մը: Արդարեւ հայ թագաւորը Հեթում՝ Մոնկոլներուն հետ իր յարաբերութեանց մէջ չէր բանակցեր միայն իրեն համար, այլ նաեւ իր փեսային Պոհեմոնտ Զ.ի համար, որ Անտիոքի իշխանը եւ Տրիպոլիի կոմսն էր», *ինչ որ կը հաստատէր Ռընէ Կրուսէ օտար մատենագիրներու տեղեկութեամբ։*

*Իսկ Վարդան* (156) *որոշապէս կը հաստատէ թէ իր գերութեան ատեն Սուլթանին մօտ տեսած էր* «անդ լինելն եւ ամենայն հնազանդեալքն իւրեանց սաս եւ երեւելի նուիրօք՝ թագաւորք եւ Սուլտանք, որպէս եւ ի մեր տեսն Թագաւորն Հայոց Հեթում եւ Թագաւորն Վրաց Դաւիթ եւ ԲՐԻՆՁՆ ԱՆՏԱՔՈՒ, եւ Սուլտանք ի Պարսից կողմանց յոլովք»:

## ՖՐԱՆԿՆԵՐԸ ԵՒՍ ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒՆ Կ'ԱՊԱՒԻՆԻՆ

*Հուլաղուի հմայքը քրիստոնեաներու աչքին այնքան մեծցած էր որ Սիւրիոյ ֆրանկներն, մանաւանդ ծովեզերքը հաստատուած ֆրանկ իշխանութիւնները որոնք Սալահէտտինի Երուսաղէմը գրաւելէն ետք շատ նեղ դրութեան մատնուած էին։*

*Այս ֆրանկ իշխանութիւնները, որոնք Խաչակիրներէն հաստատուած էին, ինչպէս Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը, որ եթէ Խաչակիրները չէին հիմնած գէթ ամրապնդած էին և միշտ բարեկամական յարաբերութիւններ պահած*



*էին անոր հետ, համանման դիրք ունէին Մահմետականներու հանդէպ և բնական էր որ ապաւինէին Հուլաղուի և անոր բարեացակամութիւնը խնդրէին։*

*Առաջինը այս ֆրանկ իշխանութիւններուն, որ Հուլաղուի հովանաւորութեան ապաւինած է, ինչպէս տեսնուեցաւ Անտիոքի Պոհեմոնտ Զ. Դուքսն էր։ որ փեսան էր Հայոց Հեթում թագաւորին, ամուսնացած ըլլալով անոր Սիպիլ աղջկան հետ և հաւանօրէն Հեթումի իրատես քաղաքականութիւնը ընդգրկելով ինքն ալ հնազանդած էր Հուլաղուի* (René Grousset, Խաչակրաց Պատմ.) *և գացած էր մինչեւ Թաթար Խաքանին այցելութեան։*

## ԲԻՒԶԱՆԴԻՈՆ ԱԼ ՄՈՆԿՈԼ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԵԱՆ ԿԸ ՁԳՏԻ

*Պաղտատի գրաւումը, Ռումի Սելջուկ կայսրութեան ընկճումը, Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան հպատակիլը, ինչպէս նաեւ Անտիոքի և Սիւրիոյ ֆրանկ իշխանութիւններուն Մոնկոլ կայսրութեան ապաւինիլը, մտածել պիտի տային ի վերջոյ ահուդողի մատնուած Բիւզանդիոնին՝ մօտենալ Մոնկոլներուն։ Ասոր համար անոր դիւանագէտները իրենք ալ օրինակ առնելով Հեթումէն, Անտիոքի դուքսէն, Իկոնիոյ Սելջուկ Սուլթանէն և այլն, փորձեցին շահիլ Մոնկոլներու բարեկամութիւնը, եթէ ոչ հնազանդութեան և հպատակութեան խոստումով՝ գէթ խնամիական ուղիով։*

*Այս նպատակով, Միքայէլ Պալէոլոկ* (1261—1282) *կայսրը, իր ապօրինի աղջիկը՝ Մարիան կնութեան տուաւ Հուլաղուի։ Բիւզանդացի իշխանուհին իբրեւ կին, միանգամայն իբրեւ պատանդ ղրկուեցաւ Պաղտատ՝ Անտիոքի օրթոտոքս Պատրիարքին առաջնորդութեամբ։*

*Իշխանուհին տակաւին Պաղտատ չհասած կամ հասնելէն քիչ յետոյ,* 1265*ին Հուլաղու մեռաւ։*

*Մանկամարդ իշխանուհին պարտաւորուեցաւ ամուսնանալ անոր տղուն և յաջորդին՝ Ապաղա Խանին հետ, որ Քրիստոնեայ էր։*

*Բիւզանդիոնի կայսեր այս աղջիկը իր ամուսնութենէն սպասուած բարիքը կրցաւ ընծայել Բիւզանդիոնին, վասնզի կարելի եղաւ բարեկամութեան դաշինք մը կնքել Միքայէլ Պալէոլոկի և Ապաղայի միջեւ։*

*Մարիա* (1265—1285) *ապրած է Մոնկոլ արքունիքին մէջ,* Տեսփինա խաթուն *անունին տակ, ինչպէս կը ճանչնայ զինքը մեր Վարդան պատմիչը*(1) (161)։

*Այս իշխանուհին իր ամուսնին թունաւորուելով մեռնելէն քիչ ետք դարձաւ Պոլիս, ուր Պլախէրնեան պալատին (այժմ Այվան Սարայ) մօտ բնակութիւն հաստատեց և շինեց վանք մը, Ս. Աստուածածնի նուիրուած* (2)։

---

(1)Թերեւս Մարիա Պալէոլոգ Դեսպինան պէտք է նոյնացնել «մեծ թագուհի Խութայ Խաթունի հետ, որ անձամբ գնաց Մարաղա եւ առաջնորդեց քրիստոնեաները, իրենց ուսէներուն վրայ խաչեր կախած, «Զօրհնեացք» հանդէսը տօնելու Յայտնութեան տօնին օրը *(Bar Hebraeus)* (Ֆրիկ, 563)

(2) Ժողովուրդը այս եկեղեցին կը կոչէր **«Փանայիա Մուղլիոթիսա»** (= Մոնկոլ Աստուածածին): Թուրք տիրապետութեան տակ՝ եկեղեցին եւ անոր շրջակայ թաղը **«Գանլը Քիլիսէ»** (= Արիւնոտ Եկեղեցի) յանկանական անունով կը կոչուէր եւ դեռ կը պահէ նոյն անունը՝ թաղը եւ եկեղեցին Ոսկեղջիւրի Ֆէնէրի բարձունքը, (**Արեւելք**, 1936 Դեկտ. 6 եւ 8):

Այս իշխանուհին ալ, Քրիստոնեաներու համար օգտակար դեր կատարեց, սակայն դժբախտաբար, Մոնկոլներու Քրիստոնէութիւնը չարմատացաւ, ինչպէս բացատրուեցաւ վերը (էջ 76–77) զայն քարոզողները իրարու հետ աններդաշնակ և նոյնիսկ իրարու դէմ մաքառող դիրքով մը ներկայացած ըլլալով։

## ՔՐԻՍՏՈՆԵԱՅ - ՄԱՀՄԵՏԱԿԱՆ ՊԱՅՔԱՐ

Հուլաղու այսպէս կը դառնար Քրիստոնեաներու պաշտպանը Մերձաւոր Արեւելքի մէջ և Մահմետականութեան դէմ ախոյեան մը։ Այստեղէն կ՚սկսէր Քրիստոնեայ և Մոնկոլ գործակցութիւնը որուն նպատակը նոյնն էր՝ Խաչակրութեան հետ։

Նշանակելի է որ Հուլաղու նոյնիսկ Մուֆարգինի անձնատուութենէն առաջ, հաւանօրէն թելադրուած քրիստոնեաներէն, մեծ թիւով զօրքով 1259ին կը ձեռնարկէ արշաւել Սուրիա, ուր ԺԳ. դարուն երկրորդ կէսին սկիզբը շատ զօրացած էր Էյուպեան Մելիք Նասիր Սալահէտտին Եուսուֆը, որ տիրացեր էր գրեթէ ամբողջ Սուրիոյ։

Իսկ Սուրիոյ հարաւային կողմը հաստատուեր էին և կ՚իշխէին Եգիպտոսի Մէմլուքները, որոնք ԺԳ. դարու կէսէրուն, յաջողած էին գրաւել Էյուպեաններու գահը և հիմնել Մէմլուք Սուլթաններու իշխանութիւնը։

Մոնկոլ մեծ բանակը Ատրպատականէն շարժեցաւ դէպի Սուրիա, 1259 Սեպտեմբերի սկիզբները։

Հուլաղուի Նեստորական զօրավարը Քիթ Բուղա, որ Պաղտատի գրաւումին մէջ մեծ դեր խաղացած էր, կը միկնի յառաջապահներու հետ։ (René Grousset խաչակրաց Պատմութիւն)։

Հուլաղու որուն կ՚ընկերանար իր Քրիստոնեայ կինը՝ Տոքուզ-Խաթուն, Քիւրտիստանի ճամբով Միջագետք իջնելով, գրաւեց Մծբինը, ընդունեց հպատակութիւնը Եդեսիոյ, սուրէ անցուց Սուրուճի ժողովուրդը, որ փորձած էր դիմադրել։ Նոյն կերպով տիրեց յետոյ Բիրի՝ անոր մօտէն անցաւ Եփրատը։ Մէմպիճը աւարի տալէ ետք՝ Մոնկոլ բանակին առաջապահները երեւցան Հալէպի առջեւ, որուն Սուլթանը Ալ-Նասիր Դամասկոս ապաստանած էր։

Հաւանօրէն Հեթում թագաւոր Հուլաղուի Հիւսիսային Սուրիա մտնելէն ետք անմիջապէս օգնութեան գացած է անոր՝ իր հետ ունենալով Հայոց Կաթողիկոսը, որ իր օրհնութիւնները տուած է Հուլաղուին։ Ռընէ Գրուսէ կը հաւաստէ (խաչակրաց Պատմութիւն) թէ Հեթում մեծ դեր ունեցած է այս մեծ պատերազմին մէջ, զոր Մոնկոլները մղեցին Մահմետականներու դէմ իրենց զինակից Քրիստոնեաներու հետ, Սուրիոյ, Պաղեստինի և նոյնիսկ Եգիպտոսի տիրապետութեան հեռապատկերը ունենալով իրենց աչքին առջեւ։

Պատերազմին ծրագիրը, որ «լաւ յղացուած եւ լաւ կատարուած գործողութիւն մըն էր, Չինկիզեան ռազմագիտութեան լաւագոյն սկզբունքներուն համաձայն»։ René Grousset, հիմնուելով օտար ժամանակակից քրոնիկագիրներու վկայութեան վրայ, կը հաւաստէ թէ Հեթում Ա.ի և Հուլաղուի խորհրդակցութեամբ կազմուած էր և Հեթումն էր որ խորհուրդ տուած էր Մոնկոլ իշխանին՝ որ եթէ Ս. Երկիրը ազատել կ՚ուզուէր, պէտք էր նախ Հալէպը գրաւէր, որպէսզի դիւրանար Սուրիական միւս քաղաքներուն գրաւումը։



## ՀԱԼԷՊԻ ԳՐԱՒՈՒՄԸ

Հուլաղու հաւանելով այս ծրագիրին, Մոնկոլ մեծ բանակը նոյնինքն Հուլաղուի հրամանատարութեամբ, և զօրացած Հեթում թագաւորին Հայերովը(1) և Անտիոքի իշխան Բոհեմոնտ Զ.ի ֆրանկ ասպետներով, հասաւ Հալէպ, որուն պաշտպանը Էլ-Մուազզամ Թուրան Շահ մերժեց իրեն ուղղուած հնազանդութեան հրաւէրը։ Հուլաղու 1260 Յունուար 18ին պաշարումի սկսաւ շարժման մէջ դնելով 20 քարընկէց մեքենաներ (catapulta) և վեց օր ետք Յունուար 24ին մտաւ Հալէպ, և գրաւեց քաղաքը, բացի միջնաբերդէն՝ որ մինչեւ Փետրուար 25 դիմադրեց։

Յունուար 24էն 30 անդադար բնակչութիւնը ջարդի ենթարկուեցաւ։ Ողջ մնացող Մահմետականները ծախուեցան Կիլիկիոյ շուկաները կամ ֆրանկեան Սուրիոյ նաւահանգիստները իբրեւ գերի (2)։ Հուլաղու առատ աւարի տիրացաւ, և մեղմութեամբ վարուեցաւ Թուրան Շահին հետ՝ նկատի առնելով անոր յառաջացած տարիքը և ողջ մնացած բնակիչներու արտօնեց իրենց տուները երթալ՝ Մոնկոլներուն հսկողութեան տակ։ Բայց բերդը քանդուեցաւ։

Ինկաւ ուրեմն այն ամրոցը, որ անպարտելիօրէն դիմադրած էր անցեալին մէջ միշտ և դերեւ հանած էր բոլոր ջանքերը Խաչակիրներուն։ Անկէ է որ մեկնած էին ընդդէմ Խաչակրութիւններու Իսլամ յաղթական բանակները։ Ինչ որ չէին կրցած ընել Ժ. դարու Բիւզանդական մեծ կայսրերը և ԺԲ. դարուն ֆրանկ պարոնները, ահա Մոնկոլ բանակին Նեստորական հրամանատարները ըրին քանի մը շաբթուան մէջ։

Բովանդակ իսլամ Սուրիան, անսահման ահուսարսափի մատնուեցաւ։ Նոյնիսկ Մոնկոլներու ժամանումէն առաջ, շատ մը իսլամ իշխաններ փութացին յայտնել իրենց հպատակութիւնը։ Հալէպի առջեւ իսկ, Էյուպեան Էլ-Աշրաֆ Մուսա, Հոմսի նախորդ Մելիքը, որ գահընկէց եղած էր իր հօրեղբօրմէն՝ Էլ-Նասիր Եուսուֆէն, վերահաստատուեցաւ իր իշխանութեան մէջ իբրեւ ճորտ։ Իսկ անոնք որ կ՚ընդդիմանային՝ չարաչար կը պատժուէին։

Հալէպի անկումէն ետք, Հուլաղու մեծ հարստութիւններ բաշխեց իր մարդոց, ինչպէս նաեւ Հայոց Հեթում թագաւորին և անոր փեսային՝ Անտիոքի իշխան Բոհեմոնտին, որոնք ետ առին իրենց կորսնցուցած հողերը և դղեակները։

## ՍՈՒՐԻՈՅ ԳՐԱՒՈՒՄԸ

Հալէպի գրաւումէն յետոյ՝ Համայի երեւելիները Հալէպ եկան և Հուլաղուի յանձնեցին իրենց քաղաքին բանալիները (հմմտ. René Grousset)։ Հու-

(1) Ըստ օտար աղբիւրներու, Հեթումի տրամադրած զօրքը 12,000 ձիաւոր եւ 60,000 հետեւակ էր:

(2) Այս սոսկալի օրերուն՝ Հայոց կոստանդին կաթողիկոսին եղբայրը՝ եղող քահանայ մը, յոյն գերիներու ազատագրութեան համար աշխատած է, ըստ *René Grousset*ի:

*լաղու իրենց շնորհեց Էմէն (ապահովութիւն) և իրենց կառավարիչ նշանակեց Խոսրովշահ անուն պարսիկ մը։*

*Սուլթան Էլ-Նասիր Եուսուֆ չպաշտպանեց նաեւ Դամասկոսը և Նապլուսի ճամբով։ Իր զօրքին հետ գնաց Գազա և Էլ-Արիշ, Եգիպտոս փախչելու մտադրութեամբ (Հմմտ.* Նոյն)։

*Դամասկոս անձնատուր եղաւ Մոնկոլներուն։ Քաղաքին երեւելիները Հուլաղուի ներկայացուցին թանկագին ընծաներու հետ քաղաքին բանալիները։*

*Մոնկոլ գրաւման բանակը Քիթ Բուղայի հրամանատարութեամբ* 1 *Մարտ* 1260*ին Դամասկոս մտաւ։*

*Իրեն կ'ընկերանային Հեթում Ա. թագաւոր և Անտիոքի իշխանը։ Դամասկոսի միջնաբերդն ալ ժամանակ մը դիմադրեց, բայց Քիթ Բուղա պաշարեց* 20*ի չափ քարընկէց մեքենաներով և երեք շաբաթէն յաջողեցաւ զայն անձնատուր ընել տալ։*

*Քաղաքը աւարի տրուեցաւ, շէնքերը այրուեցան, աշտարակներուն մեծ մասը քանդուեցան և բոլոր պատերազմական մեքենաները փճացուեցան։*

*Քանի մը շաբթուան մէջ Քիթ Բուղա լրացուց Մահմետական Սուրիոյ գրաւումը։ Մոնկոլ բանակը գրաւեց նաեւ Սամարան և հասաւ Նապլուսի առջեւ, որուն պահակազօրքին դիմադրութիւնը պատժուեցաւ ջարդով։ Մոնկոլները անարգել հասան Գազա, ուրկէ փախած էր Սուլթան Էլ-Նասր Եուսուֆ դէպի Պէլկա (Անդրյորդանան) ուր գերի ինկաւ Մոնկոլներուն ձեռքը։ Հուլաղու խոստացաւ զայն վերահաստատել գահուն վրայ երբ Մոնկոլները գրաւէին Եգիպտոսը։*

*Այսպէս Մահմետական ընդդիմադրութեան վերջին կեդրոնները յաջորդաբար կ'ընկճուէին։*

## ՄԵՐՁ. ԱՍԻՈՅ ՄԷՋ ՅԵՂԱՇՐՋՈՒՄ

«1260ի տարին նոր շրջանի մը պէս կը բացուէր Արեւելեան Քրիստոնէութեան համար.

Պարսկաստանի եւ Իրաքի վրայ, որոնք առաջ Ֆրանկներուն դէմ Մահմետականութեան պաշտպան ախոյեան ամրոցներ էին, հիմա կ'իշխէր կէս Քրիստոնեայ արքունիք մը, եւ անհետացած խալիֆային տեղ մեծ ազդեցութիւն ստացած էր Նեստորական Պատրիարքը որ Մոնկոլ պետութեան գլխաւոր անձնաւորութիւններէն մէկը դարձած էր: Դամասկոս, Իսլամ Սուրիոյ մայրաքաղաքը անբռնաբարելի քաղաքը, զոր խաչակրութեան պետերը անզօր եղած էին գրաւելու, ահա կը հպատակէր Քրիստոնեայ աշխարհակալի մը, Քիթ Բուղայի. եւ ահա այս յաղթականին դաշնակիցները՝ Հայոց թագաւորը եւ Անտիոքի իշխանը, հոն ձի կը խաղցնէին տիրաբար, եւ ասորական կամ յոյն տարրը ժողովուրդին՝ ինքզինքը բաւական ապահով կ'զգար Մոնկոլ կառավարիչներու պաշտպանութեամբ, Իումմեանց եւ Սալահէտտինի մայրաքաղաքին մէջ մզկիթ մը եկեղեցիի փոխակերպելու համար: Ինչ որ ոչ մէկ խաչակրութիւն, ոչ ալ Երուսաղէմի թագաւորներուն յամառ քաղաքականութիւնը կարող եղած չէին ընելու, Մեծ Ալթայէն եկող Նայման ռազմի-



կին սուրը պարտադրեց մէկ հարուածով: Նեստորական Մոնկոլը՝ որ իր տիրոջ Ջինկիզ Խանին անունով կը հրամայէր Եդեսիոյ, Հալէպի, Համայի, Դամասկոսի, Նապլուսի, Գազայի, իր կարծր աջը կ'երկարէր Ֆրանկին, որ կը տիրէր ծովեզերքին:

Բայց Ֆրանկ Պարոնները քաղաքային կռիւներով զբաղած էին:

Ֆրանկեան Սուրիոյ ի նպաստ Մոնկոլ միջամտութեան արժէքը միայն երկու անձ գնահատած էին, Հայաստանի իմաստուն թագաւորը Հեթում Ա. եւ իր փեսան Պոհեմոնտ Զ., իշխան Անտիոքի եւ Կոմս Տրիպոլիի:

Երկուքն ալ իրենց քաղաքական խելահասութեան չափը ցոյց տուած էին իրենց տուներուն երկար եւ հին վէճերուն վերջ տալով՝ Հեթումի աղջկան՝ Սիպիլի ամուսնութեամբը Պոհեմոնտի հետ, 1254ին։

Հեթում հետապնդած էր Քրիստոնէից խաղաղութեան գործը, հաշտեցնելով իր փեսային հետ անոր նորտերը եւ ասպետները: Հիմա Հայ թագաւորը եւ Ֆրանկ իշխանը կը կռուէին երկուքն ալ Մոնկոլ մեծ բանակին շարքերուն մէջ:

Անոր հետ գործած էին Հալէպի եւ Դամասկոսի գրաւումին համար: Հուլաղու իր շնորհներով առատօրէն կը վարձատրէր իր այս դաշնակիցները, շատ վստահելի՝ քանզի անոր կապուած էին իրենց իսկ շահուն համար: Անիկա կ'ընդարձակէր անոնց երկիրները՝ վերադարձնել տալով իրենց պատկանած տեղերը»: (René Grousset, Խաչակրաց պատմութիւն):

*Այս մեծ յեղաշրջումը, որուն ականատես կ'ըլլային Սուրիոյ Իսլամները, շատ ծանր կը ճնշէր իրենց վրայ, քրիստոնէական տիրապետութեան ենթարկուած տեսնելով իրենք զիրենք, հակառակ անոր որ Մոնկոլները որ ոչ մէկ կրօնքի յարած էին, որեւէ կրօնք չէին պաշտպաներ, թէեւ օգտուելով իրենց հրամանատարին Քիթ Բուղայի Քրիստոնեայ ըլլալէն՝ չփացած էին Սուրիոյ Քրիստոնեաները։*

*Մանաւանդ Դամասկոսի մէջ, որ կեդրոն մըն էր Իսլամութեան, Քրիստոնեաներու համարձակութիւնը և յանդգնութիւնը անհանդուրժելի կը թուէր Իսլամներուն, որոնք կը բողոքէին Քիթ Բուղայի, որ հետեւանք չէր տար այդ դիմումներուն:*

*Սուրիա կարծես թէ Քրիստոնէացած էր կրկին և Իսլամութիւնը ընկճուած։*

## ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՐԱՒՈՒՄԸ ՎՐԻՊԱԾ

*Հիմա կը մնար Երուսաղէմի գրաւումը, որուն կը ցանկային ոչ միայն Հուլաղուի զինակիցները, այլ նաեւ նոյնինքն Հուլաղու, Աբբասեաններէն յետոյ Մէմլուքները ընկճելու համար։*

*Սուրբ քաղաքին գրաւումը, ինչպէս* R. Grousset *դիտել կուտայ, Քիթ Բուղայի բանակին համար քանի մը շաբաթի գործ էր։*

«Հուլաղու մտադիր էր Երուսաղէմ մտնել, Սուրբ Երկիրը ազատելու եւ զայն Քրիստոնէից դարձնելու համար»:

*Ճիշդ այս պահուն իր եղբօրը՝ Մանգոյ Խանին մահուան* (1259 *Օգոստոս* 11) *հետեւանքով ծագած քաղաքային պատերազմը ստիպեց Հուլաղուն ընդ-*

*հատելու իր գործը, և դառնալ Պարսկաստան՝ իր բանակին մեծ մասին հետ, Սիւրիոյ պաշտպանութիւնը վստահելով Նեստորական Քիթ Բուղա զօրավարին։*

*Հուլաղուի և իր բանակին յանկարծական մեկնումը Մոնկոլներուն և Քրիստոնեաներուն համար պիտի ունենար ամէնէն աղէտալի հետեւանքները։*

«Երբ Քրիստոնեից պաշտպան խանին կարելի եղած ըլլար իր մեծ բանակին հետ երկարել իր բնակութիւնը տակաւին քանի մը ամիսներ, Սիւրիոյ մէջ Մոնկոլեան տիրապետութիւնը այս երկիրին մէջ հաստատուն կերպով տեղաւորուելու ժամանակ գտած պիտի ըլլար եւ երբ Մամլուքները հակառակութիւն փորձէին՝ պիտի ճզմուէին Մոնկոլներու թուական առաւելութեան տակ:

«Ջինկիզ խանի թոռան հեղինակութիւնը՝ միացած Հեթում թագաւորին եւ Պոհեմոնդ իշխանին քաղաքական խելահասութեան, անոնց միջոցը գտած պիտի ըլլար կնքելու եւ ընդհանրացնելու ՖրանկեւՄոնկոլեան համաձայնութիւնները:

«Ջինկիզեան աշխարհակալութիւնը, խաղաղութեան ձնող, հաւանաբար մղուած պիտի ըլլար մինչեւ Նուպիա եւ Լիբիա, զոր Մեծ խան Մանգոյ սահմանած էր, մինչ Ֆրանկ տիրապետութիւնը վերահաստատուած պիտի ըլլար Երուսաղէմի մէջ, ինչպէս որ Հուլաղու ինք խոստացած էր:

«Հուլաղուի եւ իր բանակին մեծ մասին մեկնումէն ետք՝ Սիւրիոյ մէջ Մոնկոլ տիրապետութեան գործը կը ծանրանայ միայն Քիթ Բուղայի արժանիքին վրայ: Ան էր որ կը հրամայէր խանին կողմէ թողուած զաւման փոքր բանակին: Ջինկիզխանեան կռիւներուն այս վետերանը այնքան աւելի կարող կառավարելու Սիւրիան՝ որքան իր Քրիստոնէի հանգամանքով կը թուէր ամենէն յարմարը ըլլալ ի կատար ածելու համար Ֆրանկ-Մոնկոլեան Դաշնակցութիւնը: Հուլաղու արդէն Հայաստանի թագաւորն ու Անտիոքի իշխանը ըրած էր իր հետեւորդները ու դաշնակիցները:

«Աքիայի, Տիւրոսի, Կիպրոսի Պարոններուն կը մնար կնքել նման դաշնակցութիւն մը Քիթ Բուղայի հետ: Երկու ժողովուրդներուն խիստ ակներեւ շահը կը թուէր ցոյց տալ այսպիսի քաղաքականութիւն մը» (René Grousset Խաչակիրներու Պատմութիւն):

*Քիթ Բուղա իր Քրիստոնեայ զգացումներով ծանօթ, տիրապետելով Սիւրիոյ մէջ, կարծես նախատեսել կու տար կատարեալ Ֆրանկ-Մոնկոլեան դաշնակցութիւն մը, երբ Ֆրանկ Պարոններու յիմարութիւնը ամէն ինչ քանդեց։ Անոնցմէ Սիտոնի տէրը կողոպուտ և գերի առնելու սիրոյն՝ յարձակեցաւ Մոնկոլ սահմանին վրայ և սպաննեց Քիթ Բուղայի եղբօրորդին։ Ասիկա պատճառ եղաւ որ Քիթ Բուղա ֆրանկներու դէմ դառնայ։ Ֆրանկ Պարոնները, փոխանակ ընդունելու ձեռքը՝ զոր իրենց կ'երկարէին Մոնկոլները և օգտուելու նպաստաւոր տրամադրութիւններէն Հուլաղուի և Քիթ Բուղայի՝ Երուսաղէմի վրայ իրենց իրաւունքները ճանչցնել տալու համար, գէշ հարուածներով ճղճիմ շահեր կը փնտռէին։*

*Ֆրանկ-Մոնկոլեան բարեկամութիւնը՝ գիտակցաբար պատրաստուած Հեթում Թագաւորին և Պոհեմոնտ իշխանին կողմէ, Սիտոնի տիրոջ և իր համախոհներուն* (émule) *ապիրատութեան և ապուշութեան շնորհիւ փճացաւ։ Բնազդական համակրութիւնը, զոր Նեստորական ռազմիկները կը տածէին իրենց կրօնակից Ֆրանկներուն հանդէպ, ատելութեան վերածուեցաւ, ի նպաստ իրենց հասարակաց թշնամիներուն, Եգիպտոսի Մէմլուքներուն, որոնք Խաչակիրներուն և Մոնկոլներուն միութեամբը մամուլի մը մէջ ճնշուելու տեղ, պատեհութիւն պիտի ունենային յաղթելու, նախ Խաչակիրներուն բարեացակամ չէզոքութեանը շնորհիւ վանելով Մոնկոլները Եփրատէն դէպի Արեւելք և յետոյ Մոնկոլներուն բացակայութեան շնորհիւ՝ ծով թափելով Խաչակիրները։ (Հմմտ.* René Grousset, Խաչ. Պատմութիւն)։



*Հուլաղուի հեռանալէն ետք Եգիպտոսի Սուլթան Քօթուզ (էլ Մէլիք էլ Մօզաֆէր) օգտուելով Քիթ Բուղայի զօրքին սակաւութենէն, մեծաթիւ զօրքով մտաւ Պաղեստին, կասեցնելու համար Մոնկոլներու յառաջխաղացումը։*

*Ընդհարումը տեղի ունեցաւ* 1260 *աշնան, Ցորղանան գետին եզերքը։*

*Քիթ Բուղա ոչ միայն մեծ պարտութիւն մը կրեց, այլ գերի ինկաւ և սպաննուեցաւ։*

*Այս ճակատամարտին մէջ ջարդուեցան մեծ թիւով Հայեր և Վրացիներ որոնք Մոնկոլ բանակին մէջ էին իբրեւ զինուոր։*

*Այս պարտութենէն ետք, Եգիպտացիք տիրեցին գրեթէ ամբողջ Սիւրիոյ, բայց Քօթուզ Եգիպտոս դարձին սպաննուեցաւ Պիպարս-Պնտուխտարէն, որուն մերժած էր տալ Հալէպի Սուլթանութիւնը։ Պիպարս ինքն եղաւ Եգիպտոսի Սուլթան* (1260—1277)։

*Երուսաղէմի գրաւումը վրիպած էր Մոնկոլ-Քրիստոնեայ դաշնակցութեան համար։*

*Տարի մը ետքը* (1261*ին*)՝ *թէեւ Հուլաղու պատրաստուած էր Քիթ Բուղայի պարտութեան վրէժը լուծելու, սակայն չյաջողեցաւ, վասնզի թշնամութիւններ ծագեցան նոյնիսկ Մոնկոլներու կողմէ իրեն դէմ։*

ՄՈՆԿՈԼ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

*Ինչպէս բացատրուեցաւ, ճիշդ այդ միջոցին կը ճարճատէր Մոնկոլ մեծ կայսրութեան սոսկավիթխար շէնքը, վասնզի Ծայրագոյն Արեւելքի մէջ Մեծ Խանին գահուն շուրջ կը պայքարէին Հուլաղուի երկու եղբայրները, Աքիք Բուղա Գարագորումի մէջ և Քուբլայ՝ Չինաստանի մէջ, իրենք զիրենք Խաքան հռչակելով։*

*Միեւնոյն ատեն, կայսրութեան արեւմտեան երկու մեծ իշխանութիւններն ալ կը մաքառէին իրարու հետ։ Բարկա կամ Բերքա (Պէրքէ ալ գրուած է), որ տէրն էր Կասպից ծովի Հիւսիսային կողմի երկիրներուն և Բաթուի ու Սարտախի Նախորդը, կը պահանջէր որ Հուլաղու, որ ընդարձակ փոխարքայութեան մը գլուխն էր, իրեն հպատակէր* (Արարատ, 1912, 819) *կամ իրեն հողային զիջումներ ընէր։*

*Այսպէս, առաջին անգամ ըլլալով Ջինկիզի տոհմին մէջ պառակտումներ կը ծագէին, որոնք կը վերածուէին քաղաքային պատերազմի։*

*Այս վիճակը քաջալերեց՝ որ ուրիշ ստորադաս իշխաններ, երբեմն թելա-*

դրուած մաքառող մեծ իշխաններէն, իրենք ալ անկախ ըլլալու փորձեր ընեն և ներքին շփոթութիւններու տեղի տան, ինչպէս պատահեցաւ Հուլաղուի, որուն պետութեան մէջ Բերքայէն քաջալերուած անջատողական յաւակնութիւններով խռովութիւններ յարուցին իր բանակին մէջ գտնուող արքայական տան պատկանող իշխանները, զորս սպաննեց Հուլաղու։ Սակայն ասոնցմէ ոմանք ճողոպրեցան և փախելով ապաստանեցան Բերքայի մօտ, որ անոնց պաշտպան կանգնեցաւ և վրէժխնդիր եղաւ։ (Կիրակոս, 222)։

Այսպէս, 1262էն սկսեալ մօտաւորապէս մէկ դար, Մոնկոլ կայսրութեան այս երկու մեծ հատուածները իրարու դէմ մաքառեցան։

Առաջին ռազմավայրերը եղան Ղազուին և Շամախի (1262 Օգոստոս)։ Բերքայի զօրավարը Նողայ պարտուեցաւ և փախաւ և Հուլաղուի բանակը գրաւեց Տերպէնդը, անցաւ Տերեկ գետը և հասաւ Բերքայի ձմեռանոցը, ուր Բերքա կատաղօրէն կռուեցաւ Տերեկի մօտ (1263 Յունուար) և յաջողեցաւ ետ վանել Հուլաղուի բանակը։

Նահանջի պահուն Տերեկի սառոյցը կոտրեցաւ և Հուլաղուի զօրքերէն շատերը ջրամոյն եղան։

Այս մեծ պատերազմին մասնակցած են նաեւ Հայ և Վրացի զօրքեր և Տերեկի մօտ, ինչպէս կը հաստատէ Ստեփանոս Օրբելեան, սպաննուած է Էլիկումի որդին Բուրթելը։

Ցիշեալ երկու մեծ Մոնկոլ պետերուն այս երկարատեւ պայքարին շարժառիթը զանազան կերպով բացատրուած է։

Ոմանք այնպէս կը ներկայացնեն թէ Բերքա պահանջած է Հուլաղուէն Առանը և Ատրպատականը, իբրեւ վարձատրութիւն այն օգնութեան, որ անոր արշաւանքներուն ատեն ինքն ըրած էր։ Ուրիշներ կը կարծեն թէ պայքարին պատճառներէն մէկն ալ երկու պետերուն կրօնական համակրութիւններն էին՝ հանդէպ Քրիստոնէութեան և Մահմետականութեան. որոնցմէ առաջինին պաշտպանն էր Հուլաղու և երկրորդին՝ Բերքա։

Սակայն հաւանօրէն պայքարին բուն շարժառիթը քաղաքական էր, ինչպէս կը բացատրէ Մարկոյ Բոլօ, որ կ'ըսէ թէ «Վէճին պատճառ երկու իշխաններու պետութիւններուն սահմանակից նահանգներուն խնդիրն էր։ Անոնցմէ իւրաքանչիւրը կը ցանկար տիրել այդ նահանգներուն եւ ոչ մէկը կ'ուզէր միւսին տեղի տալ»։ (Արարատ, 1912, 820)։

Յ. Մանանդեան (Քննական տեսութիւն, 340) հետեւաբար՝ իրաւամբ կը կը կարծէ թէ իրական պատճառը այս հակառակութեան ուրիշ բան չէր եթէ ոչ այն ցանկութիւնը որ Ոսկէ Հորդայի Խաները ունէին տիրելու համար Հարաւային Կովկասի, Պարսկաստանի, Ատրպատականի, ուր կը գտնուէր Դաւրէժ, ուրկէ կ'անցնէր Ասիան Եւրոպայի հետ յարաբերութեան դնող առեւտրական մեծ ուղին։

Այս առաւելապէս Հայ շրջանները, ուրեմն շարունակ ոտնակոխ և պատերազմի դաշտ եղան մէկ դար, և հայ դժբախտ ժողովուրդը մեծապէս տուժեց։ Առանց այս պայքարին թերեւս այդ նահանգները աւելի բարգաւաճ վիճակ մը պիտի ունենային քանի որ Հեթում խոհեմ քաղաքականութեամբ Հուլաղուի հպատակութիւն յայտնած էր և իբրեւ ճորտ իր ծառայութիւններով ա-



նոր վստահութիւնը շահած և յաջողած էր բարեխօսել և Հայաստան ապրող հայերուն համար ստանալ բացառիկ շնորհներ և մեղմել մասամբ անոնց թըշուառ վիճակը։

Հայաստան այսպէս երկու տուներու պայքարէն տուժեց, ինչպէս ամբողջ Քրիստոնեայ աշխարհը՝ կորսնցնելով Երուսաղէմի տիրելով Մահմետականութեան սարսափէն ձերբազատուելու առիթը, որ ներկայացած էր, և որ կորսուեցաւ

## ՀՈՒԼԱՂՈՒ ԱՆԿԱԽ

1263ին երբ Քուբիլայ (1259—1294) յաղթեց իր հակառակորդներուն և ճանչցուեցաւ Խաքան, ուղարկեց Հուլաղուին — որ իր կողմնակիցը եղած էր— 30,000 Մոնկոլ ընտիր և նոր զօրքեր և անոր տուաւ «Իլխան»ի այսինքն «ժողովուրդի պետի» տիտղոս։

Այսպէս, անոր պետութեան ինքնուրոյնութիւնը ճանչցուեցաւ նաև գործնապէս, երբ արդէն Մոնկոլ կայսրութեան քայքայումը իրականութեան մէջ սկսած էր, վասնզի կազմուած էին բազմաթիւ Մոնկոլ փոքր պետութիւններ, որոնք Ջինկիզ Խանի որդիներուն ուլուսներն(1) էին և կը համարուէին անուանապէս Մեծ Խանութեան անբաժան մասերը։

Հուլաղուի իշխանութեան ենթարկուած էին Պարսկաստանը և Մերձաւոր Ասիոյ մեծագոյն մասը՝ Հնդկաստանէն և Ամու-Տարիայէն մինչև Միջերկրական ծովը, և անոր սահմանակից էր հիւսիսային կողմէն Ջաղատաններու և «Հիւսիս»ի Մոնկոլ պետութիւնները, իսկ Հարաւ-Արեւմուտքէն՝ Եգիպտոսի Մէմլուք Սուլթանութիւնը։

Այս պետութեան մաս կը կազմէին Հայաստան, Վրաստան, Աղուանից երկիրը, Փոքր Ասիա, Միջագետք և Սիւրիա։

Այս պետութիւնը աւելի մեծ էր քան Սասանեան Պարսկաստանը և Իրագի Սելջուկ Սուլթանութիւնը։

Այս ընդարձակ պետութիւնը սակայն՝ կտրուած Մոնկոլ մեծ Խանութենէն, և կազմած արքայական նոր տուն մը՝ «Իլխանեան» կոչուած, անուանապէս կը ճանչնար բաւական ատեն տակաւին Մեծ-Մոնկոլին գերիշխանութիւնը, և ձգուած առանձին, առանց ստանալու այլեւս մարտական օգնական ուժեր Ծայրագոյն Արեւելքէն, չկրցաւ նոր երկիրներու տիրապետել և աւելի մտահոգուեցաւ պաշտպանելով պետութեան սահմանը քան զայն ընդարձակելով։ Հուլաղու Խանի ժամանակ վերջ կը գտնէր այլեւս Արեւմտեան Ասիոյ մէջ Մոնկոլ նուաճումներու շրջանը։

Իրմէ վերջ, մանաւանդ ԺԴ. դարու երկրորդ կէսին, կը բացուէր խառնակութեան և ներքին կռիւներու շրջան մը։

Այս դժբախտ վիճակին միացած խիստ հարկահանութիւնը և տիրողներու շահագործումը, ուժասպառ ըրին և քայքայեցին պետութիւնը։

---

(1) Ուլուս կը կոչուէին այն հողամասերը, որոնք կը գտնուէին Մոնկոլ Մեծ Խանին կամ խաներու տոհմի անդամներուն իշխանութեան ներքեւ։

## ԻԼԽԱՆԽԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Հուլաղու կը մեռնէր 1265ին՝ հիմնել յաջողելէ ետք Պարսկաստանի մէջ Մոնկոլական հաստատուն կառավարութիւն մը, որ Իլխանեան կը կոչուի և իր սերունդին մէջ կը շարունակուի մինչեւ 1335, Իլխաններէն առաջ Պարսկաստանի մէջ հիմնուած թագաւորութիւնները «եղած էին զինուորական, բանակ դնելով՝ իրենց կէս թափառական ձիաւորներուն հետ՝ սարին Արաքսի դաշտերուն մէջ (1), սնուցանելու համար իրենց ձիերը եւ զանձելու ու Գարագորում ղրկելու համար հարկերը: Հուլաղու, ընդհակառակը, հաստատեց Իրանի մէջ կանոնաւոր կառավարութիւն, պաշտօնական արքունիք՝ թէեւ տակաւին սորադաս Գարագորումի Մեծ խանին (2) եւ հիմնեց Իրան-Մոնկոլեան հզօր թագաւորութիւն մը» (René Grousset, Խալակրաց Պատմութիւն):

Այս պետութիւնը որուն սահմաններուն մէջ էին Հայաստան և դրացի Վրաստան, մեր պատմութեան մէջ կարեւոր տեղ մը կը գրաւէ իբրեւ իշխանութիւն մը՝ որ բարեացակամ վերաբերում ունեցած է հանդէպ Հայերու՝ իր տիրակալութեան ժամանակամիջոցին մէկ կարեւոր մասին մէջ։ Ասիկա թերեւըս բարիք մը պիտի ըլլար մեր երկիրին համար, եթէ Հեթում Ա.ի իմաստուն և խոհական քաղաքականութիւնը կարգ մը պատահարներ,– ինչպէս Մոնկոլ Կայսրութեան քայքայումը, Արեւմտեան քրիստոնեայ երկիրներու անհամերաշխութիւնը, Հռոմի Պապերուն ամբարտաւան մեծամտութիւնը, ինչպէս նաեւ քրիստոնեայ կրօնաւոր քարոզիչներու ապիկարութիւնները՝ իրենց աններդաշնակ և անխորհուրդ գործերով, — ապարդիւն չդարձնէին և Մոնկոլները մահմետականութեան ծոցը չնետէին և զանոնք քրիստոնեայ աշխարհին թշնամի չդարձնէին։

Իլխանեան իշխանութիւնը՝ որ Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը ընդունած էր իբրեւ զինակից կամ ճորտ, ապահոված պիտի ըլլար թէ՛ անոր գոյութիւնը, միեւնոյն ատեն առիթ ընծայելով որ Կիլիկիոյ Հայ թագաւորները միութեան կապ մը ըլլային Արեւմուտքի քրիստոնէութեան և Մոնկոլներուն միջեւ, հաւաքարար կռուելու համար Մահմետականութեան դէմ, որ պիտի չկարենար ամբողջ Արեւելքին տիրող կրօնքը դառնալ՝ նկուն վիճակի մատնելով քրիստոնէութիւնը, մանաւորապէս երբ միանգամ ընդ միշտ ջնջուեցան Սուրիոյ ծովեզերքներուն և Պաղեստինի մէջ, հազարաւոր Խաչակիրներու թափած արիւնով հիմնուած իշխանութիւնները, որոնք քրիստոնէութեան կռուաններ կը կազմէին, Մահմետականութեան յաղթանակը կատարեալ եղաւ և Ասիոյ քրիստոնեաները՝ Մահմետական ովկիանոսին մէջ ցրուած բեկորներ, ենթարկուեցան մեծ տառապանքներու, առանց յոյսի և ապաւէնի։

Այս տեսակէտէն խիստ շահագրգռական է մեզի համար Իլխանեան իշխա-

(1) Կ'ակնարկէ Մուղանի դաշտին․

(2) Ասիկա կը հաստատէ 1276 թուականով հայերէն ձեռագիրի մը գրիչը՝ Ռոմանոս Վարդապետ, որ կ'ըսէ թէ գրուած է «տիեզերակալութեան Պուպիլա խանին եւ յաստա . . . . . (կարդայ յաստիկանութեան) Ապաղա Պղանին, որդւոյ եղբա(ւ)ր նորին» (տես. Ցուցակ Ձեռագրաց Միխիթարեանց Վենետկոյ, Ա. հտ. 426): Ասիկա կարկառուն փաստ մըն է որ Հուլաղու եւ իր զաւակը Ապաղա կուսակալ կը նկատուէին:



նութեան պատմութիւնը, որ կը լուսաբանէ ո՛չ միայն քրիստոնէութեան անկումը և տկարացումը Արեւելքի մէջ, այլ անոր հետեւանքը եղող Հայերու ունեցած դժբախտութիւնները։

## ԱՊԱՂԱ (1265–1282 ԱՊՐԻԼ 1 +)

Հուլաղուի իշխանութիւնը ժառանգեց իր որդին՝ Ապաղա, որ պետութեան մայրաքաղաքը ըրաւ Դաւրէժը։ Հուլաղուի մահուան ատեն տակաւին կը շարունակուէին Հիւսիսի Խանին՝ Բերքայի և Մեմլուքներու դէմ պատերազմները։ Բերքա որ 1262էն ի վեր կը շարունակէր կռիւը։ 1265ին ահագին զօրքով Նողա զօրավարը ղրկեց գրաւելու համար Ատրպատականը, Վրաստանը և հիւսիսային Հայաստանը։ Իսմուտ, Ապաղայի եղբայրը, անոր հրամանով անցաւ Կուր գետը և յաջողեցաւ վանել Նողան, (Ց. Մանանդեան, ՔՆՆ. Տեսութ. Գ. 293), որուն օգնութեան հասաւ՝ զինուորներու մեծ թիւով՝ Բերքան։ Իսմուտ Կուրի վրայ ձգուած կամուրջները քանդելով՝ քաշուեցաւ ետ։

Բերքա առանց ժամանակ ունենալու Կուրը անցնելու՝ մեռաւ 1266ին և իր բանակը ցրուեցաւ։ Ապաղա, անոր յաջորդին՝ Մանգու-Թիմուրի (1266–1280) դէմ, կռիւը շարունակեց մինչև որ ան հաշտութիւն խնդրեց, (Նոյն 204)։ Այս պատերազմով զբաղած՝ Ապաղա չկրցաւ օգնութեան հասնիլ, Հեթումի, երբ Եգիպտոսի Սուլթանը՝ Պիպարս յաղթական արշաւեց Կիլիկիա և սպաննեց Հեթումի որդին՝ Թորոսը և գերի բռնեց անոր միւս որդին՝ Լեւոնը, այրեց Սիսը և աւերեց ամբողջ երկիրը (Վարդան, 162, Հեթում, 84, Սմբատ Գունդստապլ 115–6, Պատմ. Թաթարաց 53–54, Սամուէլ Անեցի, 151 և այլն)։

Պիպարս 1268ին գրաւեց նաև Անտիոքը և Խաչակիրներու ամրութիւնները և քաղաքները։

Հեթում առանձին՝ անկարող դիմագրաւելու՝ ստիպուեցաւ Պիպարսի թողուլ Հիւսիսային Սուրիոյ մէջ գտնուող մի քանի ամրութիւններ և ազատել գերութենէ (1268) Լեւոնը, որուն յանձնեց թագաւորութիւնը (1270–1289) և ինքն կրօնաւոր դարձաւ (1) (Հեթում, 52)։

Արդարեւ, Ապաղա, դժուար դիրքի մը մէջ էր, վասնզի Մանգու-Թիմուր վրէժ լուծելու համար՝ անոր վրայ յարձակելու կը մղէր Մէմլուքները և Ջաղատայի Մոնկոլ վեհապետ Բարախը և կը գրգռէր ներքին ըմբոստութիւններ՝ անոր բանակին մէջ։

Ապաղա, իրեն կողմը ունէր Արեւելքի Քրիստոնեաները, վասնզի մեղմութեամբ կը վարուէր իր Քրիստոնեայ հպատակներուն հետ։ Իրեն կողմն էր նաև Բիւզանդական կայսրութիւնը, որուն հետ խնամիացած էր՝ Մարիա-Տեսփինա իշխանուհիին հետ ամուսնանալով։ Եւ վերջապէս Կիլիկիան և Սուրիոյ Քրիս-

(1) Եգիպտական աղբիւրներ միջոցին է որ կը եղելէ Պապը 17 Մայիս 1267ին, Հեթում Ա.ին կը գրէ՝ թէ ան իմացած է՝ բազում անգամներ՝ լաթինական ժողովուրդը, թէ ան օգնեց Անտիոքի, ընդդիմացաւ Ս. Խաչին թշնամեաց եւ սիրեց Ֆրանկաց բարեկամութիւնը, եւ այլն, որ զոհը եղաւ քրիստոնէութեան նկատմամբ կա՛ ի վնաս իր ազգին եւ իր թագաւորութեան, որ զոհը եղաւ քրիստոնէութեան նկատմամբ իր պաշտումին:

տոնեայ իշխանութիւնները, որոնք Մէմլուքներուն դէմ իր աջակցութեան պէտք ունէին։ Ապաղա անոնց միջոցով կը փափաքէր բարեկամական կապեր հաստատել Եւրոպայի հետ, որ չկրցաւ օգտագործել այս նպաստաւոր պարագաները։

Ապաղա յաջողեցաւ Չաղաթայի տէր Բորախը – որ 1270ին գրաւած էր Իլխանեան իշխանութեան սեփական Խորասանը — Մոնկոլ և Հայ-Վրացական զօրքերով ետ մղեց և իր եղբօր Թագուդարի ըմբոստութիւնը զսպեց (Պատմութիւն Թաթարաց 65—66) և Թագուդարը ձերբակալելով բանտարկեց 1269ին։ Ապաղայի այս ներքին և արտաքին պատերազմներով զբաղած ըլլալէն օգտուելով՝ Եգիպտացիք Լեւոն Գ.ի (1270—1289) վրայ յարձակելով Պիլպարսի հրամանատարութեամբ, հուրի սուրի մատնեցին Կիլիկիան, մինչեւ Կոռիկոս։ Տարսոն գրաւուեցաւ և աւարի տրուեցաւ և քաղաքին բնակիչները սպաննուեցան կամ գերի տարուեցան։ Իսլամ Մէմլուքներուն Կիլիկիոյ մէջ առաջանալը տեսնելով՝ Փոքր Ասիոյ Սելջուկները իրենց կրօնակիցներու օգնութեամբ Մոնկոլ լուծէն ազատիլ փորձեցին, և երբ Եգիպտական բանակը 1277ին Փոքր Ասիա մտաւ և Կեսարիան գրաւեց՝ զայն իբրեւ ազատարար ընդունեցին։ Մոնկոլները հասնելով Ալպիստանի մօտ, 1277 Ապրիլ 16ին յաղթեցին Եգիպտացիներուն, որոնց դաւաճանած էր Սելջուկ Սուլթանը։

Ապաղա, Հայ բանակին — որուն կը հրամայէր Սմբատ Սպարապետ — օգնութեամբ վանեց Պիլպարսը, որ նոյն տարին (1277ին) մեռաւ, իսկ Սելջուկները, Մոնկոլներու դէմ ապստամբելու թելադրող Ղայասէտտին Գ.ի 1267 — 1283) վէզիրը՝ Մուինէտտին Փարվանա, փախաւ Թոզատ, ուր և սպաննուեցաւ։ Մոնկոլները իրենց սովորական մեթոտով սրածութեամբ և աւերածութեամբ պատժեցին Փոքր Ասիոյ ապստամբութեան մասնակցող ամիրաները և հազարաւորներ ջարդեցին։

Ապաղա Խան 1277ին, առաջարկեց Լեւոն Գ.ի — որ իր հօրը պէս երբեք չէր դաւաճանած Մոնկոլներուն, — իրեն թագաւորութեան կցել Ռումի Սելջուկ պետութեան երկիրները, սակայն Հայոց «իմաստուն» և «խոհական» թագաւորը — ինչպէս զայն կը կոչէ Հեթում պատմիչ (54), մերժեց այդ առաջարկը, առարկելով որ ինք շրջապատուած ըլլալով զօրաւոր թշնամիներով՝ անկարող էր պաշտպանել երկու թագաւորութիւններու հողերը (Յ. Մանանդեան, Քննական Տեսութիւն, Գ. 290)։

Ապաղա, թերեւս պիտի յաջողէր իր պետութեան արեւմտեան սահմանը ապահովող միջոցներ ձեռք առնել, սակայն հարկադրուեցաւ ընդհատել իր գործը և փութով դառնալ Կովկասեան ճակատ, վասնզի Մանգու-Թիմուրի զօրքերը Տերպենտէն անցնելով, հիւսիսային Հայաստան մտած էին։

Ապաղա զանոնք վանելէ ետք, 1281ին դարձաւ հարաւ, Եգիպտոսի նոր Խալիֆային՝ Մանսուր Սէյֆէտտին Քելաունի (1) (1279—1290) վճռական հարուած մը տալու մտադրութեամբ։

Իրեն բանակին հետ էին Լեւոն Գ. Կիլիկիոյ և Դեմետրէ Վրաստանի թա-

(1) Հայ պատմիչները զայն կը յիշեն Ալփի կամ Ալֆի անունով:



գաւորները, որոնք հիւսիսային Սուրիոյ, այսինքն Հալէպի շուրջ յաջողութիւններ ձեռք բերին, սակայն չկրցան վճռական արդիւնքի մը հասնիլ։ 1282 Ապրիլ 1ին մեռաւ Ապաղա Խան Համատանի մէջ, թունաւորուած իր Խօճա Մուհամէտ Շէմսէտտին, «Սահիպ Դիւանի» վէզիրէն։

Ապաղա Խան, իր իշխանութեան շրջանին, ինչպէս տեսնուեցաւ, աւելի քրիստոնեաներու համակիր և պաշտպան եղած է։ Մեր պատմիչները այս պատճառով միշտ գովեստով խօսած են իր մասին։ Այսպէս Պատմութիւն Թաթարացի (տպ. 1870 Երուս. 52), հեղինակը կ'ըսէ թէ «Աբաղան բարի տեսլեամբ եւ գեղեցիկ հասակաւ, ի մէջ երեսուն եղբարց իւրոց, եւ յաւուրս ղանութեան նորա առատութիւն ամենայն իրաց ընդ ամենայն երկիր»:

Վարդան պատմիչ (161), ինչպէս կ'երեւի առանց հաւատալու կ'ըսէ թէ «ել համբաւ . . . եթէ մկրտեցաւ». սակայն Հեթում (51), անոր համար կ'ըսէ թէ «էր այր իմաստուն եւ աջողակի եւ բարեբաստութեամբ վարեաց զիշխանութիւնն, բայց միայն չկամեցաւ քրիստոնեայ լինել, որպէս եղեալ էր հայր նորա, այլ էր կռապաշտ եւ միշտ զրգռէր պատերազմ ընդ սահմանակիցս իւր»:

Իսկ 1273ի Որմի գրուած ձեռագիր Աւետարանի մը յիշատակարանին մէջ, գրիչը՝ Ատոմ քհ. կը մաղթէ որ Աստուած «տացէ թագաւորիս մերոյ Ապաղայ ղանիս զաւրութիւն եւ յաղթութիւն սմա ի վերա թշնամեաց խաչին, սուրք թշնամեաց սորա մտցեն ի սիրտս իւրեանց եւ մի կարասցեն կեալ ընդդեմ սորայ հակառակորդք սորայ. այլ եղիցին թշնամիք սորայ կոխան ամենայն ազգաց քրիստոնէից» (Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի, էջ 97):

Իրեն Արեւմուտքի քրիստոնեաներուն հետ լաւ յարաբերութիւններ մշակելը կ'ապացուցուի Հռոմի Պապին և Անգլիոյ Էտուար Ա. թագաւորին նամակներովը։

Մարկոյ Բոլոյ, ճեղքելով Ապաղայի տէրութիւնը, Պարսկաստանի մէջէն՝ գացած է Չինաստան։

## ԹԱԳՈՒՏԱՐ ԿԱՄ ՏԱՆԳՈՏԱՐ (1282—1284)

Ապաղայի եղբայրը առաջ քրիստոնեայ մկրտուած էր՝ Նիկողոս անունով, բայց ապա իսլամութեան յարեցաւ և առաւ Ահմէտ կամ Մուհամէտ անունը։ (Հեթում, 56 և 84, Օրբ. 172, Ազգ, 1090):

Ալատաղի մէջ վեհապետ հռչակուեցաւ Վէզիր Խօջա Մուհամէտ Շէմսէտտին Սահիպ-Դիւանի և հաւանօրէն այլ մահմետականներու օգնութեամբ։ Իսլամանալով՝ կ'ուզէր իր իշխանութեան նեցուկ դարձնել մահմէտականները, որոնք Մերձաւոր Արեւելքի մէջ աւելի բազմաթիւ էին և աւելի ուժեղ քան քրիստոնեաները։

Ահմէտ, իշխանութեան տիրանալէ ետք՝ սպաննեց իր հակառակորդները, ինչպէս իր Ղոնղրաթա եղբայրը և Մոնկոլ ու Վրացի մի քանի մեծամեծներ, նաեւ Ղայասէտտին Գ. Սուլթանը, որուն իշխանութիւնը յանձնեց Մասուտի (1283)։ Մոլեռանդ իսլամ, Եգիպտացիներու հետ հաշտուեցաւ և իր հպատակները բռնի իսլամացուց և Կիլիկիոյ ու Վրաստանի թագաւորները հրաւիրեց

նոյնպէս իսլամանալ (Հեր. 57)։ Կիլիկիոյ թագաւորութիւնը այս կերպով մեծ տագնապի մատնուեցաւ և իր զօրաւոր դաշնակիցներէն լքուեցաւ։

Իրեն դէմ ելաւ Ապաղայի որդին և օրինաւոր ժառանգը՝ Արղունը, որ թէեւ անգամ մը յաղթուեցաւ և Խորասանի մէջ բռնուելով բանտարկուեցաւ, սակայն 1284ին անոր կողմնակիցները զայն ազատեցին և Ահմէտը բռնելով՝ միջակտուր մահացուցին։ Սպաննեցին նաեւ Ահմէտին համախոհները — որոնց մէջ և Սահիպ Դիւանը — և իշխանութիւնը յանձնեցին Արղունի (1)։

Ահմէտ իր իշխանութեան միջոցին գրաւուած էր իր նոր կնոջմէն՝ Թուտայ (Tudai) Խանումէն, որ նշանաւոր էր իր հրապոյրներով և գեղեցկութեամբ (Marco Polo 11, 469, Ֆրիկ, 54)։

ԱՐՂՈՒՆ (1284 - 1291)

Արղուն բարեացակամութեամբ վարուեցաւ Հայերու և Վրացիներու հետ, որովհետեւ Հայ և Վրացի զօրքը օգնած էին իր գահակալութեան։ Ան Վրաց Դեմետրէ թագաւորը պատուեց և անոր գերիշխանութեան ենթարկեց Հայ հողատէր-իշխանները։

Արղուն, որ կրցաւ Իլ-Խանեան իշխանութիւնը խաղաղութեան մէջ պահել, եղաւ շինարար վեհապետ մը։ Կառուցած է Հեթանոսական տաճար մը Դավրէժի մօտ և հիմնած է Սուլթանիյէ քաղաքը։

Լեւոն Գ. Կիլիկիոյ թագաւորը 1285ին այցելեց Արղունին, յուսալով Հեթում Ա.ի դաշինքը նորոգել և ազատել իր թագաւորութիւնը Մէմլուքներու ասպատակութիւններէն։

Արղուն տրամադիր էր Լեւոն Գ.ի օգնել ընդդէմ Եգիպտացիներու, բայց հրաժարեցաւ այդ մտադրութենէն, վասնզի 1288ին դարձեալ Հիւսիսի Խանին զօրքերը Հիւսիսային Հայաստան խուժեցին և Արղուն ստիպուեցաւ զանոնք վանելու աշխատիլ։

Արղունի ամենազօր պաշտօնեան Ջելաիրեան նշանաւոր Մոնկոլ ցեղէն Բուղա որ 1286ին «Չինքսան» (իշխանաց իշխան) անուանուած էր, դաւեց իրեն դէմ և իր կողմը շահելով Մոնկոլ աւագանին, փորձեց գահը յափշտակել (1289) սակայն դաւը յայտնուած ըլլալով չարաչար պատժուեցաւ իր մեղսակիցներուն հետ, որոնցմէ ըլլալու անիրաւ ամբաստանութեան ենթարկուեցաւ նաեւ Դեմետր Վրաց թագաւորը, որ Բուղայի աներն էր և սպաննուեցաւ։ Իշխանութեան համար այս պայքարին ակնարկելով՝ Օրբելեան (Բ. 176) կ՚ըսէ թէ «անկաւ շփոթումն մեծ ի մէջ մեծամեծացն գլխաւորաց» և կը պատմէ թէ Արղուն կասկածելով որ «խորհուրդս ենենզութեան էին խորհեալ նմա» իր զօրապետներէն շատերը հետզհետէ սպաննել տուաւ (Օրբ. Բ. 177) ինչպէս նաեւ Դեմետրէ Վրաց թագաւորը։

---

(1) 1284 թուականով ձեռագիրի մը (տես. Ցուցակ Վ.ենետիկի Մխիթարեանց Ռ. 810) յիշատակարանին մէջ գրուած է՝ «յաշխարհակալութեան Արղու Բայու Ղանին, զոր յայս ամին հապան զամբարշեալ զառողն զՍուլթան Ահմատն զհաւեղբայր իւր»։



Այս ներքին տագնապէն օգտուելով՝ 1290ին Հիւսիսի Մոնկոլները դարձեալ Տերպենտէն անցնելով հարաւ խուժեցին, բայց Արղուն այս անգամ ալ յաջողեցաւ վանել այս յարձակումը։

1291ին Մուղանի մէջ յանկարծամահ եղած կամ թունաւորուած է Արղուն։ Ան՝ քրիստոնեայ աշխարհին հետ գործակցելով, Մահմետականներուն դէմ ընդհանուր յարձակողական մը առաջարկած է Պապին, Ս. Երկիրը ազատելու և Խաչակրութիւններու նպատակը իրագործելու համար։ 1285ին, 1287—88ին 1281—90ին և 1290—91ին՝ չորս դեսպանութիւններ ղրկած է Հռոմ, բայց Պապը և Եւրոպայի քրիստոնեայ թագաւորները միայն խոստումներով խաբխբած են զինքը։

ՔԵՂԱԹՈՒՆ (1291—1295)

Այս վեհապետը որ Խայխաթուն (Kaikhato) ալ կոչուած է, Ապաղայի որդին էր և Արղունի եղբայրը։

Բնաւորութեամբ յախուռն, անհոգ պետական գործերու նկատմամբ, անհեթեթօրէն շռայլ և թոյլատու ամէն ինչի, դառնացուց բանակը և իրեն դէմ հանեց զայն։

Զինքը խեղդեցին 1295ին (Ֆրիկ, 564, Ազգ. 1706)։ Քեղաթուն կոչուած է նաեւ Գաննիաթու կամ Ռեզայիս (Հեր, 59), որ Էրնճի-Թուրունջի մականունը ունէր, և որ «Գտաւ զկորուսեալն» կը նշանակէր (Օրբ. Բ. 231)։

Այս վեհապետը ոչ մէկ կրօնի կը հետեւէր։

Իբրեւ կառող անզօր էր և կը վարէր ցոփ ու զեխ կեանք։

1294ին թղթադրամը գործածութեան դրաւ ան։

1295ին ծանր խռովութիւններ և ներքին պառակտումներ պատահեցան պետութեան մէջ, որոնց կ՚ակնարկէ 1296ի Սալմաստու գրուած Աւետարան մը, որուն յիշատակարանը կ՚ըսէ թէ «Եղեւ գրութիւն սորա ի թվականութեանս Հայոց ՉԽԵ (1296) յաւուր բռնակալութեան ազգին Նետողական, յորում ամի թագաւորք երեք փոխեցին յաթոռսն իւրեանց Քեղաթուն, Պայտուն եւ Ղազան, եւ յաւարտի Աւետարանս, էր սաստկացեալ խռովութիւն ի միջի իւրեանց, զիրեարս զբռաստէին, եւ վերջ նորա յայտնի է Աստուծոյ միայն»: (Ե. Լալայեան, Ցուցակ ձեռագրաց Վասպուրականի 119)։

ԲԱՅԻՏՈՒՆ (1295 Ապրիլ-Հոկտեմբեր)

Քեղաթունի յաջորդեց իր հօրեղբօրորդին՝ Բայիտուն (Baidu) կամ Պայտուն (Պակտու) (Հերում, 59 և Ազգապատում, 1727, Ց. Մանանդեան, Քննական տեսութիւն 305)։

Բայիտուն բարեկամ էր Քրիստոնէից՝ հակառակ որ ինքը Իսլամ էր (Ազգապատում, 1727)։

Սակայն իսլամացած թաթարները «դժկամակ եղեն» և իրենց կողմը շահելով Արղունի որդին Ղազանը, զինքը հալածեցին և ան հազիւ վեց ամիս իշխելէն ետք սպաննուեցաւ (Օրբ. Բ. 220)։

## ՂԱԶԱՆ ՄԱՀՄՈՒՏ ԽԱՆ (1295–1304)

*Դիւրութեամբ և առանց մեծ յուզումներու գահ բարձրացաւ։ Իր առաջին գործերէն մէկը եղաւ ինքզինքը Իսլամ հռչակել, որպէսզի կարենայ Թաթար Խաներու — որոնք տակաւին կռապաշտ էին — ազդեցութիւնը խորտակել։ Ուժ և նեցուկ էր Մահմետականներուն և կը հանդուրժէր անոնց մոլեռանդական արարքներուն և թոյլ կուտար որ իսլամները կործանէին ամէն տեղ քրիստոնէական եկեղեցիները և հրէական Սինակոկները։ Ձեռագիրի մը յիշատակարանը իբր իրողութիւնը կը հաստատէ թէ Ղազանը էր* «այր ժանտ եւ ունէր աբեղանեակս չարս Իսմայիլականս» *որոնք իր վրայ կ'ազդէին և ինք իսլամ տարրը շահելու համար թոյլ կը վարուէր հանդէպ Մահմետականներու։*

*Կը կարծուի որ իր Նախորդը՝ Պայտուն — որ քրիստոնեայ էր — ինքն սպաննած է և հիմա կ'ուզէր Իսլամութեան միջոցով պայքարիլ իր հակառակորդներուն դէմ։*

*Ասկէ քաջալերուած՝ Մահմետականները Քրիստոնեաները և Հրեաները հալածեցին։*

1296*ին ձեռագիրի մը յիշատակարանը կը հաստատէ ասոնք, գրելով թէ* «վասնզի քրիստոնեայ էր Պայիտուն, եսուն վճիռ քակել զեկեղեցիս Քրիստոսի եւ յանորդի (*կարդա՝ հարձորդի*) ազգն Իսմայիլի յարեաւ ի վերա...: Քակեին զեկեղեցիսն եւ երկուս այլեւս ղաղաւթանոցսն Հրէից եւ հեթանոսաց: Եւ յորժամ սկսան, ի բազում տեղիս քակեցին զեկեղեցիսն եւ ըմբռնեին զհաւատացեալս յամենայն ազգաց, վասն որոյ զայսպիսի անցս կրեցին, զի տէր պատերազմէր ընդ մեր, եւ նորա յանկարծաւրէն յարեան ի վերայ միմեանց, հայր զորդի եւ եղբայր զեղբայր՝ սրախողխող եւ դիաթաւալ արարեալ եղեն անթիւք եւ եղիցին եւ յառաջակայն բարի եղիցին»:

*Այս կացութեան առջեւ հաւանօրէն, Հեթում Բ. կաթնած Հեթում Ա.ի օրով եղած կարգադրութեան վրայ, կ'երթայ Ղազանին և ինչպէս նոյն ձեռագիրին գրիչը կը վկայէ՝* «Համաւզեաց ի խաղաղութիւն զաղմկեալ աշխարհս ամենայն, Քրիստոսաբար ազատեաց զեկեղեցիս եւ զամենայն ուխտսն...» (Ցուցակ ձեռագրաց Վասպուրականի, 119—121): *Այս ձեռագիրին ժամանակակից (Թուականով* 1296) *Սամուէլ Անեցիի Ժամանակագրութեան մէջ* (164) *կը կարդանք թէ* «Խազանն մեծ հալածանս յարոյց եկեղեցւոյ, եւ բարեպաշտն Հեթում խաղաղացոյց գնալով յարեւելս պատահելով ղառնութեան ժամանակի»:

*Այսպէս, կը հաստատուի որ Հեթում Բ. այցելած է Ղազանի, և բարեխօսած է Քրիստոնէից համար։*

*Ղազան, որ իբրեւ քաղաքականութիւն ցոյց կու տար հակաքրիստոնեայ ընթացք, Հեթումի միջնորդութիւնը ընդունած է և սիրաշահած է Հեթումը, որուն պէտք ունէր, քանի որ Սուրիա Մոնկոլներու և Եգիպտոսի միջեւ կռուախնձոր մը եղած էր։*

*Արդարեւ Ղազան* 1299*ին արշաւեց Եգիպտոս, Սուրիայէն անցնելով և ամէն տեղ աւեր սփռելով։ Սակայն Բ. արշաւանքի ժամանակ* 1303*ին պարտուեցաւ* (Տրիկ, 565):



*Թղթակցած է Եւրոպական վեհապետներու հետ։ Դեսպան ղրկած է Վոնիփակ Ը. Պապին* (1294—1303)։

*Խոր համոզում ունէր թէ ինքը սրտին խորքը Քրիստոնեայ էր։ Անգլիոյ Էտուարտ Ա. թագաւորը պատգամաւորութիւն ուղարկեց Խազանին,* Ceoffréy de Langley*ի գլխաւորութեամբ, որ Ղազանին կողմէն ինձ մը բերաւ Անգլիոյ թագաւորին, գառագեղի մէջ։*

*Ղազանը աշխատած է կառավարել իմաստութեամբ և արդարութեամբ։ Շինարար վեհապետ էր։ Դավրէժի մէջ կառուցած է հոյակապ մզկիթ մը, շքեղ դամբարան մը և բազմաթիւ դպրոցներ և մատենադարաններ, ինչպէս նաեւ հիւանդանոց մը և դիտարան մը. Գիտուններու և ձեռնհաս անձերու վստահեցաւ այս հաստատութիւնները վարել և հսկել։*

*Իլ-խան հարստութեան վեհապետներուն ամէնէն կարեւոր դէմքն է այս։*

*Ղազանի գիտութեան և ուսման սէրը կը տեսնուի վաւերագիրի մը* (1) *մէջ։*

*Ղազան Մահմուտի օրով,* 1303*ին Մոնկոլ-Թաթարները վերջնականապէս Իսլամութիւնը ընդունեցին։ Ղազանի համար գրուած էր որ թէպէտ առաջ* «խիստ է ցոյց զանձն առ Քրիստոնեայս այլ յետ հաստատելոյ զտէրութիւնն, սկսաւ պատուել եւ սիրել զՔրիստոնեայս» (Հեթում 60):

*Ղազան Խան աշխատած է կանոնաւորել հարկատուութիւնը, բարեկարգել արդարութեան գործը եւ քաջալերել առեւտուրը եւ արդիւնագործութիւնը։*

*Ղազանի ատեն երկիրը ունեցաւ բարեկեցիկ վիճակ մը եւ որոշապէս աւելցան պետական գանձին եկամուտները։*

1304 *Թուականով յիշատակարանի մը գրիչը կ'ըսէ՝* «ի սոյն ամի ինքնակալն Ղազանն, վճարեցաւ ի կենացս... Եբարձ սա զերկրպագութիւն դեւապաշտից, ելչեաց եւ աղուճեաց եւ կարգեաց յամենայն տեղիս սուրհանդակս, որ են երջիկք, եւ սակս արդար իրաւացն, զոր առնէր, փակեաց Տէր Աստուած զամենայն բերանս սորա ի ձեռս սորա:

Գնաց առ մեծաւ ուժով եւ ծիախռովս որոտմամբ, բազմախուռն նիզակօք եւ խառնիճաղանճ բազմութեամբ, յոճնախումբ խմբիւք, եառ նուաճեաց զամենայն սուլտն Շամայ — եհար կոտորեաց մեծ եւ սաստիկ պատերազմաւ զզօրս Մսրոյ եւ արեան ճապախիս ոչ սակաւ գործեաց, մինչ գրեթէ մարմինք մարդկան եւ անկեալ դիականցն ի վերայ արեանցն տարաբերել զաւղիւր, որպէս տերեւս թզենոյ, եւ հետամուտ եղեալ մինչեւ ի մուտս արեւու անյագաբար ի սուր սուսերի մաշեցին զնոսա»: (*Ց. Մանանդեան*, Քննական տեսութիւն, 308, *Լ. Ս. Խաչիկեան* ԺԴ. դարի ձեռագրերի յիշատակարաններ, *Երեւան* 1950, 24)։

*Ղազան Խան բարեկամացաւ Հիւսիսի Մոնկոլներու Տոխտա Խանին* (1290-1312) *հետ, որ յաջորդած էր Մանգու Թիմուրի և վերջ տուաւ այն երկարատեւ պայքարին, որ Բերքայի օրերէն* (1262) *կը մղէին անոնք գրեթէ անընդհատ Իլ-Խանեան տոհմին դէմ, որ Քրիստոնէութեան կողմնակից էր, մինչ Հիւսիսի Խաները՝ իսլամութեան։*

---

(1) Նամակ մըն է որուն թարգմանութիւնը տես. **Տրիկ, 566:**

*Ղազան հիւսիսային կողմէն ապահովուած գնաց հարաւ, Մէմլուքներու դէմ, որոնք 1289ին Տրիպոլիսը և 1291ին Աքիան գրաւած և Խաչակիրներու հաստատած բոլոր Քրիստոնեայ իշխաններու ստացուածքները յափշտակած էին։ Մէլիք Աշրաֆ առաջացեր էր մինչեւ Հռոմկլայ, Եփրատի վրայ և Հայ Կաթողիկոսներու այս աթոռանիստ բերդը գրաւեր էր։*

*Հեթում Բ.ի և իր եղբայրներուն ժամանակ* (1289—1305) *Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան վիճակը շատ տագնապալից էր արտաքին յարձակումներու և ներքին խռովութիւններու պատճառով. ուստի Հեթում Բ. իր եղբօրը Սմբատի հետ գնաց Ղազան Մահմուտի և անոր հետ դաշինք կնքեց* (1295—1297)(1)։

*Եգիպտացիք իրենց դէմ դաշնագրութեան կասկածով արշաւեցին Կիլիկիա և աւերեցին երկիրը* (1298)։ *Ղազան օգնութեան հասաւ Հեթում Բ.ի* (1299), *և անոր բանակներուն միանալով յաղթեց Եգիպտական զօրքերուն, Հոմսի մօտ* (1299 *Դեկտեմբեր* 23—24)։ *Պաշարեց Դամասկոսը որ անձնատուր եղաւ և աւերածութեան ենթարկուեցաւ։*

*Ղազան առաջացաւ մինչեւ Գազա և ամբողջ Սուրիոյ տիրեց, բայց երբ* 1300*ին Սուրիոյ պահպանութիւնը թողլով Խութլուշահ և Չօպան զօրավարներուն ինքն դարձաւ Դաւրէժ, երկիրը ապստամբեցաւ և Մոնկոլ զօրքը հեռացաւ, Ղազանի և Հեթում Բ.ի բանակները որոնց միացած էին նաեւ Հայ-Վրական զօրքերը, քանի մը անգամ Սուրիա արշաւեցին ԺԴ. դարուն առաջին տարիներուն։ Խութլուշահ* 1303*ին վերագրաւեց Հոմսը և Դամասկոսը, սակայն մեծ պարտութիւն մը կրեց Դամասկոսի հարաւակողմը և քշուեցաւ Միջագետք։ Ղազան այս պարտութեան վրէժը լուծելու կը պատրաստուէր, Ան Պաղտատի մէջ գրկաբաց ընդունեց Հեթում Բ. թագաւորը և կրկնեց իր խոստումները։ Սակայն Ղազանի շրջապատը, Եգիպտոսի Մէմլուքներէն կաշառուած, ինչպէս նաև նոր զօրացած իսլամութեան կուսակիցներէն թելադրուած, ամէն բան ըրին արշաւանքը ձախողեցնելու համար։ Բայց որովհետեւ Ղազան չէր հրաժարեր իր մտադրութենէն՝* 1304*ին թունաւորեցին զայն։* (*Հմմտ.* Մաքրիզի, Հեթում 67)։ *Ղազանի մահէն ետք՝ Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը մնաց առանձին՝ շրջապատուած մահմետական թշնամիներով*։

*Հակառակ անոր որ Ղազան իսլամացած էր և իսլամները կը հովանաւորէր, Հայերը գոհ եղած ըլլալ կը թուէին մանաւանդ իր իշխանութեան վեր-*

---

(1) Զամչեան (Գ. 379—380), կը հաւաստէ թէ այս տարին Հեթում Բ. Ղազան խանի կնութեան տուած է իր աղջիկը, տեղեկութիւն մը՝ որ ուրիշ ոչ մէկուն կողմէ հաստատուած է, սակայն բոլորովին անհաւանական չէ։ Զամչեանի աղբիւրն է Դոմինիկեան կրօնաւոր Ոնորինոս Ֆորզիկլիոն Արքեպիսկոպոսի (1381—1459) մէկ գործը։ Իսկ թէ Ղազան խան, որ քրիստոնեաներու բարեկամ էր, Լեւոն Գ.ի աղջկան պահանջմամբ, [illegible] պայմաններու մէջ քրիստոնեայ եղած է։

Ըստ լատին քրոնիկագիրին՝ Ղազան խան ամէն կողմ խնդրակներ ղրկած էր, որպէսզի գեղեցիկ աղջիկ մը գտնեն եւ անոնք գտած են Հայոց թագաւորին աղջիկը։ Հայ թագաւորը հաւանեցաւ տալ իր աղջիկը՝ եթէ ան յօժարէր։ Աղջիկը համակերպեցաւ, պայմանով որ ազատօրէն հետեւի քրիստոնէութեան։ Ղազան խան հաւանեցաւ եւ Հայ արքայազուն իշխանուհին բազմաթիւ հարսնածուներու հետ ղրկեց Մոնկոլ խանին. անոնց մէջ էին թագաւորին կրօնաւոր եղբայրը եւ քանի մը եկեղեցականներ։



*ջին տարիներուն։ վասնզի յիշատակագիր մը զայն կը ներկայացնէ* «Թագաւոր իմաստուն եւ բարեխոհ եւ անկելոց կանգնող»։ (*Ե. Լալայեան*, Ցուցակ ձեռագրաց Վասպուրականի» 142) *և ուրիշ մը՝* 1304 *թուականով կ'ըսէ թէ* «ինքնակալն խազանն վախճանեցաւ ի կենացս եւ սուգ մեծ եհաս ամենայն տանս արեւելից, մանաւանդ նեղեալ ազգացս Քրիստոնէից, որոյ յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի եւ ընդ սրբոց թագաւորացն գահակալեսցի, վասնզի ի սորա ժամանակս խաղաղացաւ երկիր իբրեւ զդրախտ Աստուծոյ» (Խաչիկեան Ա. 187)։

ԽՈՒՏԱՊԷՆՏԷ (1304-1316)

*Ղազանի կը յաջորդէ իր եղբայրը Մուհամմէտ Խուտապէնտէ (=Աստուծոյ ծառայ) կամ այլ անունով* Ուլջայտու(1) *կամ* Եօլչայտու *Խան։ Յ. Մանանդեան կ'ըսէ թէ հայ աղբիւրներ զայն կը կոչեն* Ղարպենդա *կամ* Խարբանդա, *որ կը նշանակէ «ծառայ իշու»։ Ան միականի էր։*

*Իր իշխանութեան կեդրոնը փոխադրեց Սուլթանիյէ, որ արդէն նշանաւոր քաղաք եղած էր։*

*Իր գահակալութեան առաջին տարիներուն քրիստոնեաներու բարեկամ եղած է ինչպէս Բերդակի մէջ* 1306*ին գրուած Աւետարանի մը յիշատակարանին մէջ իրեն տրուած* «թագաւոր իմաստուն եւ բարեխոհ եւ անկելոց աւգնող» *ներբողը և* «որոյ Տէր Աստուած ընդ երկար աւուրս արասցէ զնա» *մաղթանքը, պերճախօս փաստեր են, որ ան Քրիստոնէից պաշտպան եղած է։ Իսկ Հեթում պատմիչ* (67) *նոյնը կը հաստատէ զայն ցոյց տալով ջերմեռանդ քրիստոնեայ մօր որդի, քրիստոնեայ դաստիարակուած, սակայն մօրը մահէն ետք Մահմետականութեան յարած ու Կիլիկիոյ Հայոց շատ տառապանք պատճառած։*

*Եւրոպացիք թերեւս իր նախապէս քրիստոնեայ ըլլալուն համար զինքը քրիստոնեայ կը նկատէին, մինչ ինքը՝ հակառակ անոր որ քրիստոնեայ դաստիարակուած էր, ինչպէս յիշեցինք, իսլամութեան յարեցաւ և ժամանակ մը ետք հալածեց Քրիստոնէութիւնը, ինչպէս կը հաստատեն հայկական մէկէ աւելի աղբիւրներ* (2) *պատմելով իր կատարած բռնի կրօնափոխութիւնները եւ անտանելի հարկահանութիւնները։*

---

(1) Ուլջայտու = Ալանճաքտու = Օրճայթու = *Aljaito* = Բախտաւոր = Բարեբախտ, տիտղոսն էր Խուտապէնտէ Մուհամմէտ խանի։ Մեր պատմիչները կը յիշեն Ղարբանդա կամ Էօլղապատուն կը գործածեն։ 1306ին Բերդակ գրուած Աւետարանի մը մէջ «Ամչաթու Սուլթան» կը կոչուի (**Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի**, 149)։

(2) Ինչպէս Գրիգոր Եպս. Կարնեցիի վկայաբանութիւնը (**Հայոց Նոր Վկաները**, Վաղարշապատ, 1903, 121—122). 1306 եւ 1307 թուականներով երկու յիշատակարաններ (Զամչեան, **Պատմ. Հայոց**, Գ. 299), Երեւանի Մատենադարանի թ. 3074 եւ 4881 ձեռագիրներու յիշատակարանները, Յ. Մանանդեան, **ՔՆՆ. Տես.** Գ. 315 եւ Ալիշան, **Հայապատում**, 526։

## ԱԲՈՒ ՍԱՅԻՏ (1316 -1335) ԵՒ ՎԵՐՋ ԻԼԽԱՆԵԱՆՆԵՐՈՒ

*Խուտապէնտէի յաջորդեց իր անչափահաս որդին՝ Աբու Սայիտ* Պահատուր *կամ* Պուսայիր(1) *որ իրականութեան մէջ վերջին Իլխանեան վեհապետն է։*

*Իր իշխանութեան շրջանին սկսաւ պետութեան քայքայումը, վասնզի երեւան եկան ինքնագլուխ և ըմբոստ ամիրաններ և զօրապետներ, որոնք իրարու հետ կը մաքառէին։*

*Ոսկէ Հորդան կամ Հիւսիսի Խանը, որ հին հակառակութիւն ունէր Իլխանեան տան հետ, նորէն փորձ ըրաւ նուաճելու Ատրպատականը և Հայաստանը, ուրկէ կ'անցնէր Եւրոպայի և Փոքր Ասիոյ միջազգային առեւտուրի ճամբան։ Ուստի Ուզբեկ Խան* (1317—1340), 1319*ին անցաւ Տերպենտէն աւերեց և կողոպտեց Շիրուանը և իջաւ մինչեւ Կուր գետ. Աբու Սայիտի զօրավարը՝ Չօպան զայն փախուստի մատնեց։ Ուզբեկ Խան* 1325*ին և* 1335*ին դարձեալ փորձեր ըրաւ, բայց չյաջողեցաւ։*

*Աբու Սայիտի ժամանակ քրիստոնեաներու դէմ կրօնական հալածանքը մեղմացաւ, սակայն հարկապահանջութիւնը և կեղեքումները շարունակուեցան։*

*Աբու Սայիտ, մեծ դժուարութեամբ զսպեց ծագած մի քանի ապստամբութիւնները։ Իր մահէն վերջ, սակայն, կարելի չեղաւ պահել պետութեան ամբողջականութիւնը և քայքայուեցաւ անիկա ու գահը խաղալիք եղաւ զօրավարներու և ցեղապետներու ձեռքը։*

*Աբու Սայիտ թոյլ եւ անկարող վարիչ մը եղաւ և մեռաւ* 30 *Նոյեմբեր* 1335*ին։*

## ՔԱՅՔԱՅՈՒՄ ԻԼԽԱՆԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

*Այս երկարատեւ կռիւները, որ Իլխանեանք մղեցին Եգիպտացիներուն, Սելջուկներուն և Ոսկէ Հորդայի կամ Հիւսիսի Խաներուն դէմ, չափազանց տկարացուցած էին այս պետութիւնը, որուն ենթակայ Հայաստանի մէջ հիմա երեւան ելած էին հարկատու կամ բոլորովին անկախ իշխանութիւններ, և երկիրը գրեթէ անիշխանութեան մատնուած էր։*

*Աբու Սայիտի մահը ազդանշան մը եղաւ և սկիզբը՛ պետութեան հոգեվարքին։*

*Մոնկոլական Սուլտուզ և Ջելայիր ցեղերու առաջնորդները Չօպանեաններ և Ջելայիրեաններ՝ մրցելով և պատերազմելով իրարու հետ.* 1335*էն* 1344, *ինը տարուան կարճ ժամանակամիջոցին մէջ գահ բարձրացուցին և գահընկէց ըրին կամ սպաննեցին ութը Խաներ։* 1344*ին Իլխան մեծ պետութիւնը, որուն ինչպէս ըսինք՝ մաս կը կազմէր Հայաստան, վերջնականապէս քայքայուեցաւ* (*Յ. Մանանդեան*, Քննական տեսութիւն, 321)։

*Մանաւորապէս Հիւսէյին Ճելայիր, Արղուն Խանին փեսան, ազդեցիկ ազնուական և կարող դէմք մը, ինքն էր որ միւս էմիրներուն գործակցութեամբը յաջորդաբար և կարճատեւ իշխանութեամբ գահ կը բարձրացնէր Խաներ, որոնց մի քանին տակաւին Հուլաղուի սերունդէն էին, բայց չափազանց*

(1) Մեր պատմիչները այս վերջին անունով կը ճանչնան զինքը:



*անզօր, կառավարելու համար այս պետութիւնը՝ որ սրընթաց դէպի քայքայում կը դիմէր, իր վեհապետներուն սոսկ անուանական իշխողի մը դերը թողլով։ Այսպէս, իրարու յաջորդելով, Իլխանեան պետութեան եթէ ոչ իրական այլ անուանական պետերը եղան՝*

1. *ԱՐՓԱ ԽԱՆ* (1335—1336) *որ Հուլաղուի սերունդէն չէր, այլ անոր եղբօր Արիք Բուղայի և առանց Գուրուլթային հաւանութեան զօրքին պահանջով Խան եղաւ, որպէսզի կռուի Հիւսիսի Ուզբեկ Խանին դէմ, որ դարձեալ դէպի հարաւ արշաւած էր* (1336)*։ Ան թէեւ յաջողեցաւ թշնամին վանել, սակայն իր ապօրէն ընտրութեան համար Մոնկոլ բազմաթիւ իշխաններ զինքը չճանչցան և հազիւ վեց ամիս եղած էր իր գահակալութիւնը, երբ իր դէմը ելաւ Աբու Սայիտի քեռին՝ Ալի փաշա Նոյին, որ սպաննեց Արփա Խանը և գահ բարձրացուց Պայտուտ Խանի թոռը՝ Մուսան,* (Սամուէլ Անեցի. 158 *և* 168):

*Ալի փաշայի Արփա Խանի դէմ սնուցած ատելութեան մէկ պատճառն ալ Արփա Խանի Քրիստոնէութեան յարած ըլլալն էր, վասնզի անոր սպանութենէն վերջ հալածանք սկսած է քրիստոնեաներու դէմ։*

2. *ՄՈՒՍԻՆ կամ ՄՈՒՍԱ* (1336) *ինչպէս նաեւ իր յաջորդները լաւ գործիքներ էին Ալի փաշայի և իրարու մրցակից ու հակառակորդ Ջէլայիրեան Հասան Վէզիրին և Չօպանեան Քիւչիւք Հասանի, որ Աբու Սայիտի Վէզիր Չօպանի թոռն էր և Տիմուրթաշի որդին։ Առնցմէ Արփա Խանը սպաննող Ալի փաշա. որ Մուսան գահ բարձրացուցած էր, ինքն ալ սպանուեցաւ Խալիթ աղա անուն մէկէն, որ իբր թէ Աբու Սայիտ Խանին ՀԱՍԱՆ անուն որդին եղած ըլլար, որ Խան ընտրուեցաւ և թէպէտ իբր մեծ Խան ճանչցուեցաւ սակայն ոչ մէկ հեղինակութիւն ունէր, վասնզի Մոնկոլ պետութիւնը բաժնըւած էր բազմաթիւ ինքնավար Խանութիւններու և մատնուած անիշխանութեան* (Ազգ. 1855—6)։

*Այս շփոթի միջոցին է որ Հայաստան եւս կ'ենթարկուի ինքնակոչ բռնակալներու տիրապետութեան։*

*Այսպէս՝*

3. *ՄՈՒՀԱՄՄԷՏ* (1336—1338), *որ յափշտակիչ մըն էր։ Ապստամբած է Կարնոյ մէջ՝ Աբու Սայիտ Պահատուր Խանի սպանութենէն* (1335) *անմիջապէս վերջ, Իլխանեան երկու օրինաւոր գահակալներուն դէմ, և տիրակալած Հայաստանի մեծ մասին, ինչպէս Բարձր Հայքի, Տուրուբերանի, Վասպուրականի և Աղուանից երկիրին, և նոյնիսկ Փոքր Հայքի։*

*Այս բռնակալին մրցակից կը հանդիսանան՝*

4. *ՍԱԹԻ ԲԷԿ* (1338—40 *կամ* 1339—40)։
5. *ԹԱՂԱ կամ ՏՈՂԱ ԹԻՄՈՒՐ* (1337 *կամ* 1338—41) (✝ 1353)։
6. *ԱՋՋԷՏՏԻՆ ՋԵՀԱՆ ԹԻՄՈՒՐ* (1336—40 *կամ* 1339—41)։
7. *ՍԻՒԼԷՅՄԱՆ ԽԱՆ* (1339—1344)։
8. *ՆՈՒՇԻՐՈՒԱՆ կամ ԱՆՈՒՇԻՐՈՒԱՆ* (1344—50 *կամ* 1344)։

*Ասոնք կը բռնատիրեն Հայաստանի արեւմտեան մասերուն մէջ և երկիրին զանազան գաւառները իրարու ձեռքէ կը յափշտակեն։*

## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԻՐԱԿԱԼՆԵՐ

Իսկ Արեւելեան Հայաստանի մէջ նոյն թուականներուն կը բռնակալէին յաջորդաբար Ջելայիրեան տոհմէն՝

1. ՇԷՅԽ ՀԱՍԱՆ (1335—1356)։
2. ՇԷՅԽ ՕՎԷՅՍ ՊԱՀԱՏՈՒՐ (1356—1387)։
3. ՃԷԼԱԼ-ԷՏ-ՏԻՆ ՀԻՒՍԷԻՆ Ա. (1374—1382)։
4. ՂԱՅԱՍԷՏՏԻՆ ԱՀՄԷՏ ՊԱՀԱՏՈՒՐ (1382—1385 և 1404—1409)։

Նոյնպէս, Հայաստանի մէջ, այս այլազան իշխանութեանց հետ միաժամանակ կը գտնենք ՄՈԶԱՖՖԷՐԵԱՆՆԵՐԸ, որոնք Իլխան Ապու Սայիտ Պահատուր Խանի (1316—1335) ատեն (տես. վերը էջ 130) անկախութիւն հռչակելով՝ իշխած են Ֆարսիստանի, Իրաքի և Ատրպատականի վրայ, 1316էն մինչեւ 1392։

Ասոնցմէ ՃԷԼԱԼԷՏՏԻՆ ՇԱՀ ՇՕՋԱ (1357—1384) պահ մը տիրած է նաեւ Հայաստանի մէկ մասին, մանաւորաբար Նախիջեւանի շրջակայքին։

Այսպէս, կը կազմալուծուէր Մոնկոլ կայսրութիւնը և անոր Հայաստանի տիրակալող Իլխանեաններու հարստութիւնը ու կը քայքայուէր պետութիւնը, Հայաստանի համար ստեղծելով խառնակ կացութիւն մը և անապահով վարչութիւն մը։

Այս պատճառով երկիրին մէջ անպակաս էին անկարգութիւնները, բռնութիւնները և գերութիւնները (Ազգ. 1727, Օրբ. Բ. 220) ինչպէս նաեւ ապստամբութիւնները։

Այս անիշխանական շրջանին է որ իբրեւ գաղթական Հայաստան մտած տոհմեր տիրական կը դառնային և կը բռնակալէին երկիրին։

Այսպէս, Հուլաղուի յաջորդներէն Արղուն Խանի ատեն (1288—1291), արեւմուտքէն գալով Հայաստան հաստատուած էին, մէջ ի այլոց, երկու Թիւրքմէն տոհմեր, որոնք կայսրութեան մէջ ծագած խառնակութիւններէն օգտուելով՝ կազմեցին երկու անկախ մեծ ամիրայութիւններ, իրենց գագթաշարժէն մօտաւորապէս մէկ դար վերջ,

Ասոնցմէ մէկը հաստատուած էր Միջագետք՝ Տիարպէքիրի շուրջ, Գարագոյունլու անունով, վասն զի իրենց դրօշակին վրայ կար նկարեալ սեւ ոչխար մը, իսկ միւսը՝ Կապադովկիա, Սեբաստիոյ շուրջը, Ագգոյունլու անունով, վասն զի իրենց դրօշակին վրայ կը կրէին սպիտակ խոյի պատկեր մը։

Այս վերջինները կը կոչուէին նաեւ Պայանտրեանք, տոհմին անունով։

Գարագոյունլուներու յանդուգն պետը՝ Գարա-Եուսուֆ 1390ին կազմեց իշխանութիւն մը, անոր կեդրոնը հաստատելով Սասունի լեռներուն վրայ։

Գրեթէ միեւնոյն ժամանակ՝ Ագգոյունլուներէն Գարա Օսման կամ Գարա Ուլուկ (Սեւ Տզրուկ) կը հիմնէ իր կարգին իշխանութիւն մը և իրեն կը հնազանդեցնէ Թոգատի և Սեբաստիոյ շրջակայքը և կը տիրէ Հալէպի, Դամասկոսի և Մերտինի, որոնց իշխանները մէկ օրուան մէջ կ'սպաննէ։

Այս երկու իշխանութիւնները ցեղակից ըլլալով հանդերձ՝ իրարու թշնամի էին։ Երկուքն ալ բազմաթիւ փոքրիկ իշխանութիւններու համամիութիւններ էին՝ գերիշխան պետի մը գլխաւորութեամբ։



Այսպէս, Սասունի տիրող Գարա Եուսուֆի ենթակայ էին կարգ մը ճորտ իշխանութիւններ, որոնց գլխաւորներն էին Արճէշի՝ Գարա Աճմէտ, Խոյթի՝ Շէյխ Շէրիֆ, Բաղէշի՝ Ամիր Շարաֆ ամիրաները։ Իսկ Ամիթի Պայանտրեաններու կամ Ագգոյունլուներուն ճորտ էին Սեբաստիոյ, Հալէպի, Դամասկոսի և Մէրտինի ամիրաները։

Հայաստան, ուրեմն, ԺԴ. դարուն վերջերը կը պարզէր տխուր պատկեր մը, բաժնուած մանաւորապէս Թիւրք Պէկերու միջեւ, որոնք ինքնիշխան կը տիրակալէին և իրենց՝ իրարու դէմ մղած պայքարներով, երկիրը կը մատնէին թշուառութեան։

Մոնկոլական տիրապետութեան շրջանին, մանաւորապէս անոնց բոլորովին Իսլամանալէն առաջ, երբ Հայերը կրցած էին Թաթարներու հետ քիչ շատ լեզու գտնել և հասկացողութեան մը գալ, Հայաստան ունեցած է համեմատաբար խաղաղ վիճակ մը, որ տեւական չէր եղած դժբախտաբար։

Մայր Հայրենիքի մէջ կը ջնջուէին բոլոր հայ իշխանութիւնները, բայց Մոնկոլ հովանիին տակ կը կազմուէին ինքնավար շրջաններ, որոնք բնաւ Հայաստանի կառավարութիւն կարելի չէր նկատել, վասն զի Հայաստանի շատ փոքր մէկ մասին վրայ հեղինակութիւն ունէին և միութիւն մը չէին կազմեր։ Այս շրջանին, երկիրին կը տիրեն մահմետական եկուոր կարգ մը այլազգի իշխաններ, որոնք սակայն չունէին ո՛չ հայ և ո՛չ Հայաստանի պետութիւն մը հանդիսանալու հանգամանքը։

## ԱՆԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ ՊԱՏԿԵՐԸ

Անիշխանութեան այս շրջանին, աւերածութիւնները և կողոպուտները, ինչպէս պետութեան զանազան մասերուն, նոյնպէս և Հայաստանի մէջ հասած ծայրայեղ աստիճանի (հմմտ. Յ. Մանանդեան, Նոյն, 322), այնպէս որ յիշատակագիր մը կ'ըսէր.

«Ի ժամանակիս խառնիճաղանճ ազգիս Նետողաց... ով ոք կարէ պատմել զաղէտս տառապանաց, որ ոչ աշխարհ եւ ոչ քաղաք եւ ոչ ագարակ, եւ ոչ արքայկրանն վանորայք զխաղաղութիւն գտեալ. այլ համակ ի նեղութիւն եւ ի խիստ հարկապահանջողաց աւերեալ լինէր աշխարհս. քան(զի) ոչ գոյր քաղաքաւոր եւ ոչ իշխան եւ ոչ այցելու, այլ յամենայն կողմանց խռովութիւն եւ աղմուկ (Գարեգին Կաթ. Յովսէփեան, Խաղբակեանք կամ Պռօշեանք Հայոց Պատմութեան մէջ, 1928, Ա. 228 և Յ. Մանանդեան, Նոյն, 322—3)։

Ասոր նման կան ուրիշ յիշատակարաններ, ինչպէս 1338ին գրուած երկու Աւետարաններունը (տես. ԺԴ. դարի Հայերէն Ձեռագրերու Յիշատակարաններ, էջ 306 և 314) և 1340ին Վերին Ագուլիսի մէջ գրուած ձեռագիրինը (Մեսրոպ Վրդ. Մաքսուտեան, Վերին Ագուլիսի եւ Շրջակայքի Հայերէն Ձեռագրերը, Արարատ, 1915 կամ Ե. Լալայեան, Գողթն, Ազգագրական Հանդէս, ԺԲ. գիրք, 1905, 165)։

Այսպէս, Ապու Սայիտի մահէն ետք, Իլխանեան մեծ պետութեան փլատակներուն վրայ հետզհետէ կը կազմուին բազմաթիւ ինքնուրոյն և անկախ

մանր պետութիւններ, որոնք պատերազմելով իրարու դէմ, շարունակեցին աւերել ու տնտեսապէս քայքայել Մերձաւոր Ասիոյ երկիրները։ Բայց ԺԴ. դարուն վերջերը (1392—3ին), երբ Իլխանեան պետութիւնը բոլորովին քայքայուած և անզօր դարձած էր՝ կայսութեան տէր կը դառնար Կեղր. Ասիայէն արեւմուտք արշաւող Լէնկթիմուր, ջնջելով մանր այս պետութիւնները։ Ան 1411ին կը տիրանար Նախկին Իլխանեան պետութեան բոլոր հողերուն։

* * *

Մոնկոլներու ծագումը, ցեղային առանձնայատկութիւնները, բարքերն ու սովորութիւնները, և ձգտումները, ինչպէս նաև իրենց տիրապետութեան զարգացումը և ծաւալումը աշխարհի զանազան մասերուն վրայ, ընդհանուր կերպով ներկայացուցինք, բայց գրեթէ չխօսեցանք անոնց մեր մայր հայրենիքին մէջ կատարած դերին, իրենց պատճառած աւերումներուն եւ հասցուցած չարիքներուն վրայ, որոնք մեզի մանաւոր կերպով չահագրգռելու բնոյթ ունին, իբրև պատճառ եւ չարժառիթ՝ Հայաստանի Հայ բնակչութենէ դատարկացման, անոր ցեղային բաղկացութեան զուտ հայկական հանգամանքին խաթարման եւ բազմաթիւ հայ գաղութներու կազմութեան։

Հետեւաբար կ'ուզեմ ներկայացնել նաեւ Հայաստանի՝ Մոնկոլ տիրապետութեան շրջանի վիճակը, որպէսզի լիովին կարելի ըլլայ ըմբռնել այդ ժամանակամիջոցին կեանքը եւ անոր հետեւանքները, հայ ազգին ճակատագիրին վրայ։

Չինկիզի կայսրութեան համեմատութեամբ՝ Հայաստան աննշան երկրամաս մըն էր, որուն գրաւումը անխուսափելի էր, այնքան ընդարձակ և անսահման տարածութեամբ երկիրներու գրաւումէն ետք։ Իսկ Մոնկոլներու վերաբերումը Հայերու հետ չէր կրնար տարբեր ըլլալ, քան ինչ որ Ծայրագոյն Արեւելքէն մինչեւ Փոքր Ասիա և Կեդրոնական Եւրոպա, իրենց գրաւած բոլոր միւս երկիրներու բնակիչներուն նկատմամբ ունեցան անոնք։ Ինչպէս տեսնուեցաւ, իրենց հիմնական և անփոփոխելի սովորութիւնն էր, ջախջախել և բնաջնջել անոնք՝ որ կ'ընդդիմանային և հպատակութիւն չէին յայտներ իրենց։

Բարեբախտաբար Հայերը շատ շուտ ըմբռնեցին՝ թէ իրենք անկարող էին այս սոսկալիթխար ուժին դէմ կանգնելու և համակերպելէ և զանոնք ողոքելէ զատ ուրիշ միջոց չունէին։

Մոնկոլները, Խուարէզմը նուաճելէ և Մահմուտ Շահը (1172—1220 Դեկտ. +) իր երկիրէն վանելէ յետոյ, (հմմտ. Մխիթար Այրիվանեցի 86, Կիրակոս 104, Գ. Ալթունեան, Արարատ, 1912, 667, վերը՝ 84—86), Խուարէզմի այս փախստական վեհապետը հետապնդելու համար ղրկուած Մոնկոլ երկու զօրավարները՝ Չէպէ Նուի և Սաբատա Պահատուր, երբ Շահը մեռաւ 1220ին՝ Պարսկաստանէն անցան Ատրպատական, ուր պաշարեցին և գրաւեցին Դիլման և Մարաղա ամուր ու հարուստ քաղաքները և Ուրմիոյ լիճին արեւելեան եզերքը, Սօֆտիչայի վրայ բանակեցան։



Հոնկէ՝ Մեծ Խանին արտօնութեամբ՝ Կասպից ծովի արեւմտեան ափերէն առաջացան դէպի հիւսիս ու անցան Ճորայ Պահակէն կամ Տերպենտի կիրճէն (այժմ Տէմիր Գարու), և արշաւեցին արեւմտեան Քիպչաք։

Այս առաջապահ բանակը որ միայն 20,000 զինուոր ունէր, իր ճամբուն վրայ մտաւ Աղուանից աշխարհ (1220—21)՝ Դաւրէժի կողմէն և Մուղանի դաշտէն անցնելով։

Վարդան (էջ 142), այս արշաւանքը կը պատմէ ըսելով՝ թէ 1220 թուականին «Զօր ինչ օտարադէմ եւ այլալեզու, շարժեալ ի Չին եւ ի Մաչին աշխարհէն, Մուղալ եւ Թաթար անուն կոչեցեալ՝ եկին մտին յերկիրն Գուգարացւոց առ դաշտավայրօքն, ի կողմանցն Աղուանից, իբրեւ թէ քսան հազար, եւ կոտորեցին զամենայն կենդանի՝ զոր գտանէին եւ փութով դառնային»:

Վարդան Վրդ.ի հետ համաձայն է Իպն Էլ-Ասիր արաբ պատմիչը (տես. Ց. Մանանդեան, Քննական Տեսութիւն Գ. 181), մինչ Կիրակոս Գանձակեցի — որ Թաթարական շրջանի դէպքերուն և իրերուն աւելի իրազեկ ըլլալ կը թուի — զարմանալի է որ այս արշաւանքը՝ հիւսիսէն Տերպենտի դուռէն կատարուած ցոյց կու տայ, հաւանօրէն դէպքերը իրարու հետ շփոթելով։

Կիրակոս Գանձակեցիի համաձայն՝ «Յանկարծակի յեղակարծում ժամու յոլով գունդ զօրու ծանու՝ ամենայն կազմութեամբ ելեալ ընդ դուռն Դարբանդայ եւ եկեալ յաշխարհն Աղուանից, գալ անցանել յաշխարհս Հայոց եւ Վրաց եւ զոր ինչ գտանէր ի ճանապարհին՝ զամենեսեան սրոյ ճարակ տայր՝ զմարդ եւ զանասուն՝ մինչեւ ի շունս անգամ, եւ մեծագին հանդերձից եւ ընչից փոյթ ո՛չ առնէր, բայց ի ձիոյ: Եւ փոյթ ընդ փոյթ չոգան մինչեւ ի քաղաքն Տփղիս, եւ դարձեալ եկին իջին յաշխարհս Աղուանից, ի սահմանս Շամքոր քաղաքի եւ համբաւ ստութեան զայր զնոցանէ թէ մոգք են եւ քրիստոնեայ հաւատով եւ նշանագործ, եւ եկեալ են ի վրէժխնդրութիւն քրիստոնէից որ ի բռնութենէն Տաճկաց, եւ ասէին թէ ունին եկեղեցի վրանեայ եւ խաչ սքանչելագործ, եւ բերեալ կապին մի գարի՝ արկանեն առաջի խաչին, եւ ամենայն զօրքն առեալ տանին տան երիվարաց իւրեանց, եւ ոչ պակասի. այլ իբրեւ եկին ամենեքեան եւ սպասեն ի տանելոյ՝ նոյն չափ կապճին անդէն մնայ. նոյնպէս եւ զկերակուրս մարդկան, եւ այսպիսի համբաւ ստութեան լցաւ յաշխարհս: Վասն այնորիկ ո՛չ ամրացան բնակիչք աշխարհին, մինչեւ երէց մի աշխարհական, առեալ զժողովուրդ իւր եւ խաչիւք վառելովք յընթացաւ ընդ առաջ նոցա եւ նոցա սուր ի վերայ եդեալ՝ կոտորեցին առ հասարակ եւ այսպէս անհոգս գտեալ զբազումս կոտորեցին եւ աւերեցին զյոլով տեղիս» (Կիրակոս, 102—3):

Այսպէս, 1220ին Չինկիզ Խանի բանակները կը գրաւեն Հայաստանի դրացի և սահմանակից Աղուանից աշխարհին և Վրաստանի մէկ մասը և հոն գտնէ առժամապէս կը տեղաւորուին Պարտաւ (1) և Բելուկումա (2) (= Պայլիգան) քաղաքներուն միջեւ ամայի տեղեր, որ Գեղամէջ կը կոչուէին։ Մոնկոլները ասկէ յանդուգն յարձակումներով շատ գաւառներ կ'աւերէին, (Կիրակոս, 103):

(1) Պարտաւ, Աղուանից թագաւորութեան մայրաքաղաքն էր:

(2) Բելակումա՝ Կուրի եւ Երասխի գետախառնուկին վրայ կառուցուած էր:

## ՄՈՆՂՈԼՆԵՐԸ ՎՐԱՍՏԱՆԻ ԴԷՄ

Վրաց թագաւորը՝ Գէորգի Լաշա (1213—1243), որ Հայաստանի մէջ կազմուած աւատապետական կարգերով կառավարուող Վրա-հայկական պետութեան պետն էր, իր Աթաբէկին՝ Իւանէի հետ յարձակեցաւ Մոնկոլներու վրայ Խունանի դաշտին (1) մէջ և յաղթեց անոնց. սակայն Մոնկոլ զօրքին մէկ մասը, որ դարանակալ կը սպասէր, կանակէն զարկաւ վրական բանակը, և մեծ վնաս հասցուց անոր (Կիրակոս, 103) Կոտման գետին եզերքը, (1221 Յունուար)։ Լաշա Թագաւոր, Իւանէ Աթաբէկ և ուրիշ մեծամեծներ հազիւ կրցան փախչիլ (Գ. Ալիշանեան, Արարատ, 1912, 668—0), միայն Վահրամ Գագեցի, Թոռը Վահրամ Զաքարեանի, որ անտեղեակ էր այս ծախողումին, մեծ քաջութեամբ յարձակեցաւ Մոնկոլներու վրայ, կոտորեց զանոնք և հալածեց՝ հաւանօրէն 1221 Յունուարին, մինչեւ Գարդման։ (Հմմտ. Վարդան, 142 և Յ. Մանանդեան, Քննական Տեսութիւն, Գ. 184)։

Գէորգի Լաշա Թագաւորը այս անգամ առաջինէն աւելի թիւով զինուոր ժողվեց յարձակելու համար Մոնկոլներուն վրայ, բայց «Նոքա առեալ զկին եւ զորդիս եւ զամենայն ինչս՝ կամեցան անցուցանել ընդ դուռն Դարբանդայ յաշխարհն իւրեանց. իսկ զօրն Տաճկաց որ ի Դարբանդ՝ ոչ ետուն նոցա մուտ անցից, եւ նոքա հատեալ զլեառն Կովկաս ընդ անանց՝ ի վիհսն լցնլով զփայտ եւ զքար նաեւ զախս իւրեանց եւ զերիվարս եւ զկազմած պատերազմական, անցին գնացին յաշխարհն իւրեանց» (Կիրակոս, 103-4)։

Արտաքին պատմիչներ, ինչպէս նաև Վարդան, Կիրակոս Գանձակեցիի այս վերջին տեղեկութիւնները չեն հաստատեր, վասնզի անոնք Սաբատա Պահատուրը դէպի հիւսիս քաշուած ցոյց տալու տեղ՝ դէպի հարաւ իջած է կ'ըսեն, սպասելու համար Մեծ Խանին օգնութեան և Բիփչաք մտնելու հրամանին, և աւելի ճիշդ կը թուի։ Որովհետեւ Ջէբէ և Սաբատա 1220—1221ի ձմեռը Աղուանից աշխարհն էին և գարնան դարձան Ատրպատական և հոն գարնան և ամառը կռուին հուրի և սուրի մատնեցին Մարաղա, Համատան, Նախիջեւան, Արտապիլ և այլ քաղաքները իրենց շրջակայ գիւղերով. ինչպէս նաև աւերեցին Պայլեկան քաղաքը և ջարդեցին ամբողջ բնակչութիւնը՝ ո՛չ միայն այրերը, այլ նաև կիները ու երեխաները (Յ. Մանանդեան, Քննական Տեսութիւն Գ. 184)։ Երկրորդ անգամ մըն ալ արշաւեցին դէպի Վրաստան և Վրա-հայկական բանակին յաղթեցին (նոյն)։

## ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ ԼԵՌՆԱԿԱՆՆԵՐԸ

1221ի աշնան Մոնկոլ զօրքը յառաջացաւ դէպի Շիրուան, որուն մայրաքաղաքը Շամախին պաշարեց և անոր բնակչութիւնը ջարդի և կողոպուտի ենթարկեց. ապա անցաւ Հիւսիսային Կովկաս և աւերեց Ալաններու ու Բիփչաքներու երկիրները, ուր 16 Յունիս 1223ին՝ այս բանակը կը յաղթէ նաև Ռուս և Բիփչաք միացեալ ուժերուն, Կալկայի մեծ ճակատամարտին մէջ (Գ. Ալիշանեան, 1912, Արարատ, 670)։

(1) Խրամի գետաբերանին արեւելեան կողմը:



Այս հարաւէն՝ հիւսիս, դէպի Հարաւային Ռուսիոյ տափաստանները արշաւանքներ կատարուած պահուն, Կովկասեան լեռներու հիւսիսային կողմը ապրող ժողովուրդներ կը շարժին դէպի հարաւ, և կարգ մը ցեղախումբեր Կովկասեան լեռներու հարաւային ստորոտը՝ հիւսիսային Հայաստան կը մտնեն և հոն հաստատուիլ կ'ուզեն։

Այս գաղթականներու բաւական ստուար զանգուածը կը կողոպտէ Շիրուանը և մասնաւորապէս Կապաղակ քաղաքին շրջակայքը և կը հասնի մինչեւ Գանձակի մօտերը.

Կիրակոս (104) կը գրէ թէ՝ «Զօր մի ի Հոնաց. զոր Խուչախն անուանեն (1) եւ եկեալ ընդ աշխարհն Վրաց առ թագաւորն Լաշայ եւ առ հազարապետն Իւանէ, զի տացէ նոցա տեղի բնակութեան եւ նոքա ծառայեսցեն նոցա միամտութեամբ», այսինքն հաւատարմութեամբ, սակայն Վրացիք չտուին խնդրուած այս ապաստանութիւնը, ուստի անոնք գացին Գանձակի շրջակայքը հաստատուեցան։ Գանձակեցիք «յօժարութեամբ ընկալան», (նոյն), վասնզի մեծ նեղութեան մէջ էին Վրացիներու յարձակումներուն պատճառով, ուստի իբրեւ վարձկան զօրք կ'ընդունին զանոնք և կը տեղաւորեն Վրաստանի սահմաններուն մօտ։

Այսպէս, 1222ին «զօր բազում հասուածեալ ի Հոնաց, զոր Խփչաղն կոչեն, եկեալ ի Գանձակ միաբանեցան» Գանձակի իսլամ տիրապետներուն, (Վարդան, 142)։

Վրացիք, բնական է հաճոյքով չէին կրնար դիտել իրենց սահմանագլուխին վրայ այսպիսի ուժի մը հաստատումը, ուստի Իւանէ հազարապետ, զանոնք ընկճելու մտադրութեամբ, կը քալէ Գանձակի վրայ (1222)՝ առանց լուրջ պատրաստութեան։

Վարդան (142), կ'ըսէ՝ «ի գնալ մերոց վստահութեամբ եւ անզգուշաբար ի վերայ նոցա, հասուածեալք դարձան փախստեամբ, զբազումս սրոյ ճարակ առեալ եւ զոմանս կենդանի կալեալ, ի փառաւոր ազատացն եղին՝ ի բանսի, ընդ որս եւ զԳրիգոր Իշխանն զկոչեցեալն որդի Խաղբակայ, եւ զեղբօրորդին իւր զարիական եւ զքաջ նահատակն զՊապաքն անուանեալ, զորոց զվրէժն առին ի գալ ամին զօրս մեր, ջնջելով զաւելի մասն Խփչաղին, ի գալն նոցա յերկիրն Վարդանաշատոյ» (Վարդան 142—43, հմմտ. Կիրակոս, 104—105)։

Խաչէնի հայ իշխանը՝ նահատակուած Գրիգոր Խաղբակեանի Վասակ եղբօրը որդիներէն Պապաք իշխան, պատերազմին մէջ սպաննուած և Մկդէմ ու Հասան հազիւ ազատած էին։ (Կիրակոս, 105)։

Բարբարոսները որ գերիները հաւատուրացութեան կը ստիպէին և «զանազան տանջանօք նեղէին, քաղցիւ, ծարաւով եւ մերկութեամբ» (Կիր. 105)։ Աւելի խստութեամբ վարուեցան Գրիգոր Խաղբակեան իշխանին հետ, զոր

(1) Շփոթ ու անորոշ բացատրութիւններ, որոնք հեռու են մեզ լուսաբանելէ: Խուչախը (= Ղփչախք կամ Գապճաղ) թաթարական ցեղ մըն էր, մինչ Հոնք Ե. դարէն սկսեալ ծանօթ քրիստոնեայ ազգ մըն էին:

«Նեղեցին բազում խոշտանգանօք, զի ուրասցի զՔրիստոս, եւ նա ոչ, առ յանձն... եւ նոցա բարկացեալ քարեցին զնա մերկ ի վերայ երկրի եւ փշով քանցեցին զամենայն մարմինն նորա եւ այնքան տանջեցին զնա՝ մինչեւ ի գանելն նոցա աւանդեաց զհոգին եւ ընկալաւ ի Քրիստոսէ զվկայական պսակն», (Կիր. 105, *հմմտ.* Վարդան, 142—3):

*Գանձակի քրիստոնեայ բնակիչները գերիներուն ի նպաստ ինչ որ կրնային ընել, ըրին* (Կիր. 105, *մինչեւ որ քիչ յետոյ Իւանէ՝ վրացի և հայ նոր զօրքով եկաւ իր պարտութեան վրէժը լուծելու և յանկարծակի յարձակմամբ այդ բարբարոսները սուրէ անցուց կամ գերի առաւ 1223ին, Մուղանի դաշտին մօտակայ Վարդանաշատի շուրջը իր տարած յաղթանակէն ետքը (տես.* Կիր. 104—5 *և* Վարդան, 143)։

*Սակայն յաջողութիւնը մասնակի էր և վճռական նշանակութիւն մը չունեցաւ, ուստի Վրա-հայկական բանակները շարունակեցին իրենց պայքարը այս բարբարոսներուն դէմ, որոնք 1223ին Սուրմառի գաւառին մէջ և 1225ին, Գանձակի մօտ՝ Ատրպատականի մէջ՝ յաղթեցին Վրայ-հայկական բանակին, որ այլեւս Թամար թագուհիի փառաւոր օրերուն ուժը չունէր (Ց. Մանանդեան,* Քննական Տեսութիւն *Գ.* 188), *անոր յաջորդին՝ Գէորգի Լաշայի* (1213—1243) *ատեն, վասնզի ան իր դէմ գրգռած էր Վրաստանի իշխանները, ի մէջ այլոց Իւանէ Աթաբէկը և Վահրամ Գագեցին։*

*Գէորգի Լաշա մեռաւ Բագաւանի մէջ 1243 Յունուար 18ին և իրեն յաջորդեց իր քոյրը Ռուսուդանը* (1243 - 1247), *որ ամուսնացաւ Ռումի Սելջուկ Սուլթան Խլիճ Ասլան Բ.ի թոռան՝ Էրզրումի ամիրա Տուղրուլ Շահի մեծ որդիին հետ, որ քրիստոնեայ եղաւ,* (Կիր., 224)։

ՉԷՊԷԻ ԵՒ ՍԱԲԱՏԱՅԻ ՊԱՇՏՕՆԸ ՎԵՐՋԱՑԱԾ

1223*ի վերջերը Չէպէ և Սաբատա Պահատուր, մօտաւորապէս երեք տարուան արշաւանքներէ ետք դարձան արեւելք՝ Չինկիզ Խանի մօտ, ճշդութեամբ կատարելէ վերջ Մեծ Խանին հրամանը և գետին պատրաստած ապագայ նուաճումներու, որոնք Հայաստանի մէջ չէ որ պիտի կատարուէին, այլ Կովկասեան լեռներու միւս կողմը, ընդարձակ տարածութեամբ հողերու տիրակալութիւնը ապահովելով։*

*Իրենց այս նպատակին հասնելու համար, թէրեւս Մոնկոլները Կասպից Ծովու եզերքէն, Կովկասեան լեռներու հիւսիսը անցնելով և ընդարձակ տափաստանները գրաւելով պիտի բաւականանային, առանց Հայաստանով զբաղելու։ Արդարեւ մինչեւ* 1223 *այդպէս ըրին, սակայն Խուարէզմի Մահմուտ Շահի մահէն ետք, անոր որդիին՝ Ճէլալէտտինի* (1220—1231) *Մոնկոլներու դէմ պայքարին (տես. վերը* 87—89) *հետեւանօք՝ Հայաստան ալ մտան Մոնկոլները՝ առանց հայ ժողովուրդին հետ գործ ունենալու, միայն Ճէլալէտտինի դէմ մաքառելու համար։*

ՄՈՆԿՈԼ-ԽՈՒԱՐԷԶՄ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՅ-ՎՐԱԿԱՆ ՀՈՂԵՐՈՒՆ ՎՐԱՅ

*Տեսանք թէ Չինկիզ Խան մեռաւ* (24 *Օգոստոս* 1227), *առանց Ճէլալէտտինը ընկճել կարենալու։*



*Չինկիզի արեւելք դառնալէն օգտուելով՝ Ճէլալէտտին Հնդկաստանէն եկաւ Պարսկաստանի հարաւային շրջանները, որոնք Մոնկոլ արշաւանքներու աւերէն զերծ մնացած էին և գրաւեց զանոնք Ֆարսիստանի Աթաբէկին օգնութեամբ,* 1225*ին, և ինչպէս տեսնուեցաւ (վերը՝* 88), *սկսաւ մաքառիլ կրկին իր իշխանութեան թշնամիներուն դէմ։*

*Ճէլալէտտին նուաճեց նախ Խուժաստանի մէկ մասը, որ սահմանակից էր Միջագետքի, ինչպէս նաև Ատրպատականը, որուն Ելտկուզեան տոհմէն իշխանը՝ Աթաբէկ Ուզբէկ չկրնալով պաշտպանել իր երկիրը՝ փախաւ Գանձակ։*

*Ճէլալէտտին գրաւեց անոր մայրաքաղաքը՝ Դաւրէժը* (25 *Յուլիս* 1225) *և իրեն մայրաքաղաք ըրաւ։ Ճէլալէտտին, որ Պարսկաստանը այսքան արագ վերագրաւած էր, ինչպէս կը հաստատէ Վարդան* (143), *կու գայ* «Ընդ Աղլը-պարական երկիր ի յՈստանն Հայոց (1) առնուն զնա եւ լնուն զդաշտն լայնատարած վրանօք»: *Արդարեւ, Դաւրէժը գրաւելէն մէկ ամիս ետքը՝ Օգոստոս* 1225*ին՝ կը գրաւէր նաև Հայաստանի սիրտին վրայ, անոր մայրաքաղաքը՝ Դուինը* (Վարդան, 143, Միքայէլ Ասորի էջ 521):

*Հայ-վրացական Միացեալ բանակին գլուխը անցած Իւանէ Աթաբէկ կ'երթայ Ճէլալէտտինի դէմ և Գառնիի մօտ մղուած ճակատամարտի մը մէջ* (1225 *Օգոստոսի վերջերը կամ Սեպտեմբերի սկիզբները) Իւանէի զօրքը մեծ կորուստներ կը կրէ և փախուստ կու տայ։ Իւանէ հազիւ կրնայ ազատիլ։*

*Ճէլալէտտին, Գառնիի յաղթանակէն ետք ուզեց Վրաստանի հետ հաշտուիլ և դաշնակցիլ, ինչպէս փորձած էր մահմետական իշխաններու հետ դաշնակցութիւն մը կազմել, Մոնկոլներուն դէմ (տես. վերը* 89)։

*Սակայն Վրացիք, գուցէ մոլեռանդութեամբ կը մերժեն իրեն հետ հաշտուիլ,* (*Ց. Մանանդեան,* Քննական Տես. *Գ.* 188—9). *իսկ մահմետական իշխաններու հետ ժամանակ իսկ չունեցաւ բանակցելու։ վասնզի Մոնկոլները զինքը յանկարծակիի բերին։*

*Ճէլալէտտին, որ աննկուն մաքառող մըն էր, Վրացիներու այս անարգանքը փոխադարձեց Գանձակը գրաւելով։*

*Իւանէ սպարապետ փորձեց դիմադրել, սակայն պարտուեցաւ և Վրացի զօրքը սոսկալի կոտորածի ենթարկուեցաւ։*

*Ճէլալէտտին Գանձակէն անցաւ Թիֆլիս՝ Վրաստանի մայրաքաղաքը և* 9 *Մարտ* 1226*ին գրաւեց քաղաքը, ջարդի և աւարի մատնելով զայն։*

*Քաղաքին բնակչութիւնը բռնադատեց որ իսլամութիւնը ընդունի։ Նոյն մոլեռանդութիւնը ցոյց տուաւ Թիֆլիսէն զատ նաև Դաւրէժի և Նախիջեւանի մէջ* (Վարդան, 143—144 *և* Կիրակոս, 118)։

*Մասնաւորապէս Սուլթանին հետեւորդներէն՝ Օրղան,* «բազում չարչարանօք նեղէր զքաղաքն Գանձակ (*իմա՛ Դաւրէժ*), ոչ միայն զքրիստոնեայս, այլ եւ զՊարսիկս, հարկապահանջութեամբ բազմաւ, եւ սպանաւ ի նմին քաղաքին ի Մլհեդաց (2), որք սովոր էին սպանանել զմարդիկ» (Կիրակոս, 118):

(1) Դուինն ըսել կ'ուզէ:

(2) **Մլհեդ** կամ **Մելահիտէ** նոյնն է **Հաշիշի** կամ **Ասասէնի** հետ (տես. վերը էջ 108): Ասոնք հետեւորդներն էին Հասան-Սեպահ մոլեռանդ բռնաւորին, որուն կայանն էր Ալամուտ բերդը:

Ինչպէս Վարդան (143) կ՚ըսէ՝ «Սուլթանն յաղթազգեաց պերճանօք յանճոգըս եղեալ, կոխէ բազում տեղիս, եւ ընդ կրունկն դարձեալ ի Դաւրէժ, զկնի ամի միոյ (այսինքն 1226ին), գայ ընդ կողմն դաշտավայրացն Գագայ ի Տփղիս եւ բազում ոճիրս գործեալ» (հմմտ. նաեւ Միքայէլ Ասորի, 522—3 որ ունի կարեւոր մանրամասնութիւններ)։

Արդարեւ ան կ՚արշաւէր ամէն կողմ և ոտից կոխան կ՚ընէր երկիրը։

Ճէլալէտտին 1226ի աշնան կը պաշարէ և կը փորձէ գրաւել Անին և Կարսը, բայց չի յաջողիր։

Կ՚ասպատակէ և կ՚աւերէ նաև Աքխալքան և սրընթաց գնացքով կ՚իջնէ և կ՚ասպատակէ Խլաթի ամիրայութեան հողերը և կը պաշարէ Մանազկերտը և Խլաթը, (1226 աշնան վերջերը)։

Բայց հոն ուժգին դիմադրութեան կը հանդիպի և մեծ կորուստներ կը կրէ ու կ՚ստիպուի հեռանալ և դառնալ Պարսկաստան, Թիֆլիսի կամ աւելի ճիշդ Վրաստանի կառավարութիւնը թողլով իր վէզիրին՝ Շէրիֆ Էլ Մուլքի, որ քաղաքը պարենաւորելու դժուարութեան առջեւ կը գտնէ ինքզինքը և դարման տանելու համար, կ՚արշաւէ Կարին, և անկէ կը յափշտակէ մեծ քանակութեամբ ուտեստեղէն և գերի, բայց դարձին՝ երբ կ՚անցնէր Խլաթի Ամիրայութեան սահմաններէն՝ քաղաքին տէրը, Էյուպեան Աշրաֆը՝ ամբողջ անոր ձեռք բերած պաշարը և աւարը կը խլէ իրմէ։

Նոյն օրերուն՝ Խուարէզմի Շահ Ճէլալէտտինի բանակը կը կրէր ուրիշ ձախողումներ ևս։

Այսպէս, 1227 (Փետրուար-Մարտ) Հայ-վրական բանակին մնացորդները, որոնք երկիրին ամուր վայրերը քաշուած էին, Անիէն, Կարսէն և այլ ամրացած վայրերէն եկան Թիֆլիսի վրայ և գրաւեցին քաղաքը, ջարդեցին տեղւոյն Մահմետականները, որոնց դաւաճանութեամբը տիրած էր Ճէլալէտտին քաղաքին։ Անոնք քաղաքին մէկ մասը կրակի տալէ յետոյ՝ դարձան իրենց տեղերը (Միքայէլ Ասորի, 522)։

Դարձեալ այդ օրերուն (1227 կամ 1228) Վասակ Խաղբակեանի որդին, Մեծ իշխան Պռօշ, մտնելով Դուին՝ ջարդեց հոնտեղի Խուարէզմեան պահակազօրքը և քաղաքին այն մահմետականները՝ որոնք 1225ին օգներ էին Ճէլալէտտինին, որպէս զի սուրէ անցնէ այդ քաղաքը բնակող քրիստոնեաները։

Այսպէս, հայ և վրացի մնացորդ ուժեր, որոնք ապաստանած էին բերդաքաղաքներու և մէկուսի վայրերու մէջ, երկիրը փրկելու համար՝ յաճախ բախումներ կ՚ունենային և երբեմն նոյնիսկ կը յաղթէին Ճէլալէտտինի զօրքերուն, որոնց գլխաւոր կայանները Հայաստանի և Վրաստանի մէջ Թիֆլիս, Գանձակ և Դուին էին։ Անոր թուրք զօրքերը այդ տեղերէն դուրս գալով, կ՚ասպատակէին Հայաստանն ու Վրաստանը, երբ ինքը գացած էր Պարսկաստան, իր բանակներուն վրայ եղած յարձակումներուն դիմադրելու համար։ Հետեւաբար անմիջականօրէն չկրցաւ Հայաստանի իր բանակին օգնութեան հասնիլ, բայց երբ յաջողեցաւ վանել Մոնկոլ յարձակումները Արեւելքի մէջ՝ դարձաւ Ատրպատական և գրաւեց Խոյը, Մարանդը և Նախիջեւանը։

1228ին եկաւ Խլաթ, անցաւ Մշոյ դաշտը և Տողատաիի ու Ճապաղջուրի



կողմերը և կողոպտեց ու աւերեց այդ շրջանները և կոտորեց այրերը և գերի տարաւ կիները և մանուկները։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԽՈՒԱՐՄՆԵՐՈՒ ԶԻՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՄՈՆԿՈԼՆԵՐՈՒՆ ԴԷՄ

Նոյն 1228 թուականին, Ճէլալէտտին արշաւեց և աւերեց նաև Իկոնիոյ Ալատտին կամ Ալայէտտին Սուլթանին (1219—1233) նուաճած արեւելեան երկիրները, այսինքն Էրզրումի բոլոր շրջանները և Հայաստանի արեւմտեան կողմը՝ Երզնկա, Կամախ (Քէմախ) և անոնց մերձակայ հողերը, զորս Ալատտին կցեր էր Իկոնիոյ Սելջուկ Ռումի Սուլթանութեան։

Իկոնիոյ Սուլթանը՝ պաշտպանելու համար իր գրաւած հողերը՝ դաշնակցեցաւ Խլաթի տիրոջ՝ Սալահէտտին Էյուպեանի որդւոյն՝ Աշրաֆի և անոր եղբայրը՝ Եգիպտոսի Սուլթան՝ Քամէլի հետ, որոնք նոյնպէս Ճէլալէտտինի հետ խնդիր ունէին, վասնզի Խուարէզմի այս Սուլթանը 1229ին կրկին պաշարած էր Խլաթը, որ Աշրաֆի տիրակալութեան տակ էր (Վարդան, 144, Կիրակոս, 119)։

Երկար պաշարումէ յետոյ՝ 14 Ապրիլ 1230ին Ճէլալէտտին գրաւեց Խլաթը և իրեն կին առաւ Աշրաֆի կինը՝ Թամթան, որ Իւանէի աղջիկն էր։

Այս պաշարումի առթիւ, Ճէլալէտտինի օգնած է Իկոնիոյ Ալատտին կամ Ալայէտտին Սուլթանին (1219—1233) հօրեղբօր որդին, որ Ճէլալէտտինի աջակցութեամբ տիրացած էր Էրզրումի՝ ընդունելով անոր գերիշխանութիւնը։

Խլաթի գրաւումէն ետք, 1230ի ամառը, Աշրաֆ, Քամէլ և Ալայէտտին, միացեալ ուժերով գացին Ճէլալէտտինի վրայ, որ՝ ինչպէս Վարդան (144) կը պատմէ՝ «դարձեալ ի վերայ Խլաթայ եւ առեալ զնա եւ հարստացեալ՝ երթայ ի Հոռոմս, ի վերայ Ալադին Սուլթանին եւ Մելիք Աշրաֆին»։

Արդարեւ, Խուարէզմի Շահը անճարակ էր շարժիլ դէպի Արեւմուտք և անոնց հանդիպեր էր Երզնկայի մօտերը, ուր իրաւամբ «մեծապէս խորտակումըն կրեալ ի զօրն» (Վարդան, 144), այսինքն ծանր պարտութեան մը մատնուած, «փախչի սակաւուք ի Մուղան» կամ աւելի ճիշդ՝ Ատրպատական, և կանգ կ՚առնէ Խոյի մօտ (10 Օգոստոս 1231)։

Աշրաֆ և Ալատտին կը վերագրաւեն իրենց հողերը, իսկ Ալայէտտինի հօրեղբօրորդին, Էրզրումի Ամիրան, իբրեւ դաւաճան մահապատիժի կ՚ենթարկուի։ Այս մեծ ճակատամարտին մէջ Ալատտինի զօրքին մէջ կային Կիլիկիոյ Հայ թագաւորութեան և Ֆրանկներու օգնական զօրագունդերը (Կիրակոս Գանձակեցի, 119—20)։

Այս պարտութենէն վերջ, Ճէլալէտտին յուսահատութեան մատնուեցաւ, մանաւանդ երբ 1231ին, Արեւելքէն Ատրպատական մտաւ Մոնկոլ մեծ բանակը, 30,000 հեծելազօրքի, հրամանատարութեամբ Չարմաղանի, որ պաշտօն ունէր Մոնկոլ կայսրութեան այս կառաղի հակառակորդը ընկճել։ Չարմաղան, նկատելով որ իրենց գլխաւոր թշնամին Ճէլալէտտինն է, եկաւ ուղղակի Ատրպատական, անտես առնելով իր ճամբուն վրայ Պարսկաստանի զանազան մասերուն մէջ գտնուող ուժերը։

Ճէլալէտտին, որ իր թիկունքը ապահովելու համար Աշրաֆի և Ալատտինի

*հետ դաշինք կնքած էր, չկրցաւ նոր զօրահաւաք ընել և Մոնկոլ բանակին դիմադրել և փախաւ մինչեւ Ամիթ, ուր իր ետեւէն հասան Մոնկոլները։ Ամիթի առջեւ մղուած ահեղ պատերազմի մը մէջ Ճէլալէտտին սպանուեցաւ* 15 *Օգոստոս* 1231*ին* (Կիրակոս, 117—121 *և* 123, Վարդան, 143—4, Օրբէլեան, 193, Գ. Ալբունեան, Araras, 1912, 675, *և վերը՝* 89)։

*Ճէլալէտտինը հալածելու պատրուակով, այսպէս Հայաստան մտան Մոնկոլ զօրքերը, որոնք աւերածութեան մատնեցին Վարագի Ս. Նշան վանքը, Ամիտի, Արղնի, Միաֆարգինի և անոնց դրացի հողերը, պաշարեցին և գրաւեցին Արճէշը, Բերկրին և կոտորեցին գրեթէ այս վայրերուն ամբողջ բնակչութիւնը։*

*Ճէլալէտտինի պարտութենէն, փախուստէն և սպանութենէն ետք, Ատրպատական ենթարկուեցաւ Մոնկոլ տիրապետութեան և հարկ վճարեց։*

*Չարմաղան իր բանակով մտաւ Առան, և պաշարեց ոչ միայն Աղուանից, այլ ամբողջ Ատրպատականի ամենամեծ և հարուստ քաղաքը՝ Գանձակ Շահաստանը, զոր* 1231—32*ին գրաւեց և անողոք խստութեամբ վարուեցաւ անոր հետ՝ հիմնայատակ կործանելով զայն՝ ինչպէս մանրամասնօրէն կը նկարագրեն Կիրակոս Գանձակեցի* (222—224) *և Վարդան պատմագիր* (144)։

*Գանձակի գրաւումէն ետք, Մոնկոլները հեռացան Աղուանից աշխարհէն և Հայաստան ու Վրաստան քանի մը տարի զերծ մնացին Մոնկոլ ասպատակութիւններէն։*

*Չարմաղանի* 1231/2*ի արշաւանքին նպատակը՝ — ընկճել Ճէլալէտտինը, ոչընչացնել անոր զինեալ ուժերը — լիովին իրագործուած էր։ Մոնկոլ բանակը այլեւս կրնար բնաջնջ ընել նաև Մահմետական իշխանութիւններու այն ցրուած մարտական ուժերը, զորս թողեր էր իր թիկունքին և վերստին նուաճել ապստամբ շրջանները։*

*Այս էր պատճառը, որ Հայաստանի և Վրաստանի նուաճումը տեղի ունեցաւ ոչ թէ անմիջապէս* 1231*ին, այլ քանի մը տարի յետոյ,* 1236*ին։*

## ՄՈՆԿՈԼՆԵՐԸ Կ'ՈՐՈՇԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԻՐԵԼ

*Գարագորումի մէջ* 1235*ին գումարուած Գուրուլթայի որոշումով՝ Մոնկոլ կայսրութիւնը դէպի արեւմուտք ընդարձակելու համար,* 1236*ին, Չարմաղան և Բաթու* (1) *միաժամանակ սկսան Հայաստան, Վրաստան և Ռուսաստան արշաւել։ Մոնկոլները* 1236*էն առաջ թէև Հայաստան մտած էին, հալածելու համար Ճէլալէտտինը՝ որ այնքան յամառութեամբ եօթը տարի մաքառեցաւ Հայաստանի մէջ իրենց դէմ և պատճառ եղաւ որ Հայաստան ու Վրաստան պատերազմի թատերավայր ըլլան, սակայն անոր մահէն* (1231) *ետքը, մինչեւ* 1236, *մեր երկիրը զերծ մնացած էր մոնկոլական յարձակումներէ, և Մոնկոլ զօրքերը այս սահմաններէն ետ քաշուած էին հաւանօրէն անոր համար որ, կեդր. Ասիայէն մինչեւ Հայաստան տակաւին միջանկեալ աննուաճ երկիրներ գոյութիւն ունէին։*

**(1) Ջինկիզի թոռը եւ Ջուչիի որդին:**



*Արդարեւ, շատ բան կար ընելու, քանի որ տակաւին կատարելապէս նուաճուած չէին Պարսիկները, Վրկանները, Քուշանները, Խօրասանը, Մարաստանը, Սպահանը, Ատրպատականը, որոնք իրարու ետեւէ նուաճուեցան շատ արագ կերպով։*

*Հայաստանի նուաճումը վստահուած էր Չարմաղանի, որուն հետ էին երեք* (1) *ուրիշ զօրավարներ, իրենց հրամանին տակ ունենալով առանձին զօրամասեր,* (*Գ. Ալթունեան,* Araras, 1912, 675)։ *Իր բանակը մօտաւորապէս* 30—40 *հազար շատ լաւ մարզուած, բազմաթիւ կռիւներու մէջ եփած և գործելու վերին աստիճանի ընդունակ զինուորներէ կը բաղկանար։*

*Այս կանոնաւոր բանակին կ'ընկերանար խառնիճաղանճ զանգուած մը, Թրքական և այլ զանազան ցեղերու, որոնք իրենց հետ կը տանէին սայլերով իրենց ամբողջ ինչքերը, ինչպէս կիները և երեխաները։*

*Մոնկոլները, այսպէս բազմութեամբ* «Եկին հասին յաշխարհն Աղուանից՝ ամենայն ախիւք եւ բազմութեամբ իւրեանց, եւ ի բերրի յարգաւանդ դաշտին՝ որ կոչի Մուղան, եւ լի ամենայն բարութեամբ՝ ջրով, փայտիւ եւ մրգով եւ որսով, անդ զետեղ առեալ՝ հարին զխորանս իւրեանց· Այսպէս առնէին զամենայն աւուրս ձմերային, եւ ի ժամանակս գարնանայինս սփռէին ընդ կողմանս ասպատակաւ եւ աւերմամբ եւ դարձեալ դառնային անդրէն եւ բանակէին» (Կիրակոս, 123):

*Չարմաղան, իր բանակատեղին դարձուց Մուղանը և ապա Գանձակի աւերակներուն քովէն անցնելով* 1236*ին, մտաւ արեւելեան Վրաստան, որ այդ միջոցին Բագրատունի թագաւորներու իշխանութեան տակ, աւատապետութիւն մըն էր՝ մեծ մասամբ հայ ճորտ իշխաններով* (2), *որոնց մէջ նշանաւոր էին Իւանէի որդին՝ Աւագը, Զաքարէի որդին՝ Շահնշահը և Վահրամ Գագեցին, Չարմաղանի Հայաստան և Վրաստան մտած ատեն* (1236)։

*Այս հայ իշխանները, ինչպէս նաև վրացիները, յանկարծակիի եկած, չկրցան ժամանակ ունենալ ոչ ինքնապաշտպանութեան միջոցներ գտնելու և ոչ ալ կազմակերպուած ուժ մը երեւան բերելու՝ միացեալ և հաւաքական դիմադրութեան մը համար։*

*Նման նախաձեռնութիւն մը մի՛այն Վրաստան կրնար ունենալ, եթէ տկարացած չըլլար և ժամանակ ունենար։ Այդ ժամանակը չտուին Մոնկոլները, բայց եթէ ատեն ունենային իսկ, նման փորձ մը դատապարտուած էր ձախողութեան։*

*Այնպէս որ՝ հայ իշխանները, առ հասարակ Վրաստանի թագաւորին ճորտերը, ուրիշ տանուտէրներու հետ, ուրիշ բան չկրցան խորհիլ քան իրենց անձերը փրկել,* «անձնապահք եղեն ամենեքեան, գաղթեալ յամրոցս ուր եւ կարացին» (Կիրակոս, 126):

(1) Ըստ Կիրակոսի եւ Ռաշիտ-էլ-Տինի, Չարմաղանի ստորադաս էին չորս զօրավարներ՝ Իւրար, Ղութուն, Թութուն եւ Չաղաղա:

(2) Վրա-հայկական այս պետութեան մասին բաւական լայն ծանօթութիւններ տրուած է իմ **Պատմական Հայաստանի Սահմանները** գործիս մէջ (էջ 281—293 եւ 337—356):

Հետեւաբար, չկրցան լուրջ դիմադրութիւն ցոյց տալ ընդդէմ Մոնկոլներու, նաև այն պատճառով, որ 1327ին Իւանէ Աթաբէկ մեռած էր և կեդրոնական դէմք մը գոյութիւն չունէր։

Սարսափահար և անգլուխ ժողովուրդը, զանազան կղզիացեալ վայրերու մէջ առանձին, իր սեփական տկար ուժերուն ապաւինիլ պարտաւորուած, միացեալ ուժերով չկրցաւ դիմադրել, և կամ ինչպէս կը թուի, տեսնելով որ ընդդիմադրութիւն ցոյց չտուողներուն կեանքը կը շնորհուի եւ Մոնկոլները անոնց հետ վեհանձնութեամբ կը վարուին, իրենց ճակատագիրին համակերպիլ խոհեմութիւն համարեցին։

## ՄՈՆԿՈԼՆԵՐԸ ՇՈՒՏՈՎ ԿԸ ՏԻՐԱՆԱՆ

Հետեւաբար Մոնկոլները ամենակարճ ժամանակի մէջ տիրեցին երկիրին, նախ դաշտերը գրաւելով եւ ապա ամրութիւնները, ինչպէս Կիրակոս Գանձակեցի կը ներկայացնէ ընդհանուր պատկերով մը, «Սփռեալք առ հասարակ ընդ երեսս դաշտաց, լերանց եւ ձորոց, իբրեւ զմարախ բազմութեամբ, եւ կամ իբրեւ զանձրեւս յորդութեամբ տեղեալ ի վերայ երկրի, եւ անդ էր տեսանել այնուհետեւ աղէտս տրտմագինս, եւ աշխար արժանի ողբոց. զի ոչ երկիր թագուցանէր զմտեալս, եւ ոչ վէմք եւ անտառք պահէին զապաստանեալս, ոչ ամրագոյն շինուածք բերդից եւ ոչ խոխոմք ձորոց, այլ ամենեքեան արտաքս վարէին զղօղեալս. լքանէր անձն՝ արի արանց, եւ լուծանէին ձեռք՝ կորովի աղեղնաւորաց, թագուցանէին զսուրն՝ որք ունէին զնոսա, զի մի տեսեալ թշնամեացն՝ անողորմ սատակեսցեն զնոսա. ձայնք թշնամեացն հալէին զնոսա, դոփիւնք կապարճաց նոցա ահաբեկ առնէին զամենեսեան, աչք իւրաքանչիւր զօրհասն իւր տեսանէր եկեալ, եւ սիրտք իւրեանց մեռանէին ի ներքուստ, մանկունք խուսափէին առ ծնողս յահէ սրոյն, եւ ծնողք յահէ նոցա անկանէին հանդերձ նոքօք, նախ քան զընկենուլ թշնամեացն:

Անդ էր տեսանել զսուրս յանխնայ կոտորելոցն զարս եւ զկանայս, զերիտասարդս եւ զմանկունս, զծերս եւ զպառաւունս, զեպիսկոպոսունս եւ զքահանայս, զսարկաւագունս եւ զդպիրս, մանկունք ստնդեայք զքարի հարեալք, եւ կուսանք գեղեցիկք խայտառակեալք եւ գերեալք: Ահագին էր տեսիլ կերպարանաց նոցա, եւ անգութ աղիք որովայնի նոցա. մի՛ եւ միոյ մօր արտասուաց՝ ո՛չ ողորմէին եւ յալիս երբէք ո՛չ գթային, ի սպանութիւնս խրախութեամբ ընթանային, իբր 'ի հարսանիս կամ ի զինարբուս: Լցաւ երկիրն ամենայն դիակամբք մեռելոց եւ ոչ ոք էր՝ որ թաղէր զնոսա: Հատեալ էր արտօսր յաչաց սիրելեաց եւ ոչ ոք իշխէր լալ զանկեալսն յահէ անօրինաց:

Սուգ զգեցաւ եկեղեցի, եւ բարձաւ պայծառութիւն գեղեցկութեան նորա, խափանեցան պաշտամունք նորա, եւ վերացան պատարագք ի սեղանոյն, լռեցին պաշտամունք նորա եւ ոչ եւս լսէր ի նմա ձայն երգոց: Իբրեւ խաւարաւ մածեալ էր ամենայն աշխարհս եւ սիրէին մարդիկ առաւել զգիշեր քան զտիւն, եւ երկիր թափուր մնաց ի բնակչաց իւրոց եւ շրջէին ի նմա օտարաց որդիք. յափշտակեցան ինչք եւ ստացուածք նոցա եւ ժլատու-



թիւն բարուց նոցա ոչ երբէք յագեցաւ, խուզեցան տունք եւ սենեակք ամենայն, ո՛չ ինչ մնաց, զոր ո՛չ առին. շրջէին այսր եւ անդր անդադար արագութեամբ իբրեւ զայծեմունս, եւ կեղեքէին՝ պատառէին իբրեւ զգայլս, երիվարք նոցա ո՛չ վաստակէին յընթացս. եւ ոչ ինքեանք ձանձրանային ի ժողովել զաւարս» (Կիր. 126—7):

## ԵՐԿԻՐԻՆ «ՎԻՃԱԿՈՎ» ԲԱԺԱՆՈՒՄԸ

Չարմաղան, երբ տեսաւ որ հայ իշխանները պզտիկ դիմադրութիւններէ ետք, — որոնք ձախողեցան — խոհեմութիւն համարեցին հնազանդիլ, երկիրին գաւառները և բերդերը բաժնեց իր զօրապետներուն միջեւ, «վիճակով»։ Իւրաքանչիւր քիչ թէ շատ յայտնի զօրավար իր բաժինը ստացաւ իբրեւ տիրապետ (Գ. Ալթունեան, Արարատ, 1912, 679, Վարդան, 144—5, Կիրակոս, 124—125, 135—136): Երկիրները վիճակով իրենց միջեւ բաժնելը շատ յատկանշական էր և երկիրին բնական բաժանումներն ալ շատ նպաստաւոր էին ասոր (հմմտ. Վարդան, 145, Կիրակոս, 123 և 145 և Պատմ. Թաթարաց. 20):

Ուստի, «Զկնի ամաց ինչ անցանելոյ աւերման քաղաքին Գանձակայ (1), այս զօրս մոլեկան եւ խոռամանկ, իբրեւ վիճակաւ բաժանեալ զաշխարհս Հայոց, Վրաց եւ Աղուանից՝ իւրաքանչիւր գլխաւորի, ըստ մեծութեան եւ փոքրութեան, զքաղաքս եւ զգաւառս, զաշխարհս եւ զբերդս, առնուլ, քանդել, եւ աւերել, եւ չոքան իւրաքանչիւր մասն բաժնի կանամբք եւ որդւովք եւ ամենայն ախիւք բանակին իւրեանց, եւ նստեալ յանհոգութեան՝ ապականել, ուտել զամենայն բոյս դալարոյ, ուղտօք եւ անասնօք իւրեանց» (Կիրակոս, 125, հմմտ. Վարդան, 144, Անանուն Ժաման. 21, Ց. Մանանդեան, Քննական Տեսութ. Գ. 201):

Սակայն և այնպէս, բոլորովին դիւրին չեղաւ երկիրին տիրակալութիւնը և տեղ տեղ, հակառակ իշխաններու կամքին, որոնք համաձայն չէին դիմադրութեան, ժողովուրդը ըմբոստացաւ և կռուեցաւ։

## ՇԱՄՔՈՐԻ ԳՐԱՒՈՒՄԸ

Այսպէս, Մոլար Նոյինի զօրքերը Ուտիի դաշտային շրջանը աւերելով և կողոպտելով տափաստաններու մէջ գտնուող գիւղերը, շրջապատեցին բերդերն ու ամրոցները, սկսելով Շամքորէն, (Գանձակի մօտակայ) «զոր առեալ էին յառաջագոյն ի Պարսկաց» (Կիրակոս 128), և որ այդ պահուն կը գտնուէր Բլու Զաքարէի որդի Վահրամ Գագեցիի և անոր որդւոյն Աղբուղայի իշխանութեան տակ։ Վահրամ տէրն էր Գագայ եւ Տաւուշի, իբրեւ ժառանգորդ Կիւրիկեան Թագաւորութեան և խնամի Խաչէնի իշխաններուն։

Մարդիկ «առաքեցին բնակիչք քաղաքին Շամքորոյ առ Վահրամ եւ առ որդի նորա, զի օգնեսցէ նոցա եւ ասացին թէ սակաւ են [Մոնկոլք], իսկ

(1) 1235ին աւերակոյտի մը վերածուած էր քաղաքը:

նա ոչ օգնեաց. այլ եւ զորդին՝ որ կամեցաւ գնալ, ոչ եթող, այլ խափանեաց, բանս ի բերան դնելով եկեղեցն՝ ասել թէ բազումք են, այլ եւ ո՛չ քաղաքացեացն հրամայեաց մարտնչել ընդ նոսա» (Կիրակ.. 128)։

*Ասկէ որոշ կը հասկցուի թէ Վահրամ յօժար չէր կռուելու և կ'զգուշացնէր Շամքորի բնակիչները, որոնք հակառակ Վահրամի կամքին՝ դիմադրեցին և չարաչար տուժեցին, սուրի մատնուելով, իսկ քաղաքը հրդեհուեցաւ և աւերուեցաւ* (Կիր. 128—129, Վարդան, 145, Պատմ. Թաթարաց, 16)։

*Շամքորը աւերելէ ետք՝ Մոլար Նոյինը, առանց դժուարութեան և մեծ մասամբ առանց կռիւի գրաւեց Վահրամ Գագեցիի հողերը և բերդերը՝ Սագամը, Տէրունականը, Երգեւանքը, Տավուշը, Կածարեթը, Քաւազինը, ու Գագը, նաև Մածնաբերդը, որ նստոցն էր Աղսարթանի որդի Կիւրիկէի,* (Վարդան, 145, Կիրակոս 128) *և Նոր Բերդը, որ կը պատկանէր Կիւրիկեան «արքայազն Վասակին»։* (Կիր. 129, Վարդան 144—5, Պատմ. Թաթարաց, 16)։

## ՈՒՏԻԻ ԼԵՌՆԱՅԻՆ ՄԱՍԸ ԿԸ ԳՐԱՒՈՒԻ

*Ուտիի հարաւային լեռնային մասը վիճակով բաժին ինկած էր Ղատաղա Նոյինի, որուն զօրքերը գրաւեցին Գարդմանը, Չարեքը, Գետաբեկը, Վարդանաշատը և անոնց մօտակայ շրջանները* (Կիրակոս, 129 *և* Վարդան 144)։

*Մեծ իշխան Վահրամ Գագեցին, որ կը գտնուէր այդ ժամանակ Գարդման՝ կրցաւ փախչիլ և տեղէ տեղ շրջելով իր Աղբուղա զաւակին հետ՝ ապաստանեցաւ ի վերջոյ Արևմտեան Վրաստանի մէջ Քութայիս քաղաքը* (Կիր., 129, *Մելքիսեթ Բէկ,* Վրաց Աղբիւրներ Բ. 54)։

*Վահրամի երկիրը համեմատաբար քիչ էր տուժած, որովհետև անոր բերդերը կամովին անձնատուր եղած՝ և Մոնկոլ զօրքին յանձնած էին իրենց անասուններն ու գոյքերը, ինչ որ անոնք պահանջած էին* (Կիր., 129)։

*Վահրամ, երբ տեսաւ որ Մոնկոլները կը խնայեն,* «ի նենգանդեալս՝ որք կամօք խոնարհին ի ձեռս նոցա», *ինքն ալ անձնատուր եղած է* «եկեալ առնոյր զառեալն ի նոցանէ զդղեակս եւ զգաւառսն՝ որ սեփական լեալ էր նոցա ի հայրենեաց» (Վարդան, 145)։

*Եւ պատմիչը* (նոյն), *մի առ մի կը թուէ բոլոր այն վայրերը, որոնք Մոնկոլները գրաւած՝ և ապա վերադարձուցած էին։*

## ԼՈՌԻԻ ԳՐԱՒՈՒՄԸ

*Աւելի ծանր եղաւ Լոռի բերդաքաղաքին և դրացի տեղերու դրութիւնը, որոնք կը գտնուէին ամիրսպասալար Զաքարէի որդի Շահնշահի իշխանութեան տակ* (Վարդան, 144, Կիրակ.. 135—6)։

*Այս շրջանը բաժին ինկած էր Ջաղատա Նոյինի։ Ասիկա իմանալով որ Լոռի բերդաքաղաքին մէջ պահուած է մեծ իշխան Շահնշահի գանձերուն մեծագոյն մասը, եկաւ ընտիր և սպառազէն զօրքով և պաշարեց քաղաքը։ Իսկ Շահնշահ ամրացաւ քարայրի մը մէջ և քաղաքին պաշտպանութիւնը յանձնեց իր կնոջ ազգականներուն։ Սակայն Մոնկոլ զօրքը քանդեց պարիսպները, ական փորելով և մտաւ քաղաք և անխնայ ջարդեց այրերը, կիները և մա-*



*նուկները։ Քաղաքը կողոպտեց, ինչպէս նաև Շահնշահի գանձերը, որոնց պահուած տեղը գտաւ։*

*Ջաղատա Նոյի, ետքը գրաւեց նաև Դումանիսը, Շամշոյլտէն, և Վրաստանի մայրաքաղաքը Տփղիսը* (Կիր., 136 *հմմտ.* Վարդան, 144)։

*Լոռիի անկումէն յետոյ, Շահնշահը, ըստ Վրաց ժամանակագրութեան, փախած էր Անճարա։*

## ԱՒԱԳ ԱՆՁՆԱՏՈՒՐ

*Գալով Աւագին, ան ամրացած էր Կայեն բերդը, ուր հաւաքուած էր նաև գաւառին բնակչութիւնը։ Տուղատա Նոյին եկաւ ստուար զօրքով պաշարեց բերդը։ Տուղատա, Աւագին առաջարկեց աներկիւղ հպատակիլ իրեն։ Աւագ, անոր սիրտը շահելու համար, անոր ղրկեց իր աղջիկը և այլ նուէրներ։ Բայց Մոնկոլները կը շարունակէին պաշարումը խստութեամբ, ուստի Աւագ որոշեց կամովին անձնատուր ըլլալ և իր տան վերակացու Հեջուբ Գրիգոր Տղան ղրկեց գլխաւոր հրամանատար Չարմաղանի, որ այն ատեն Սեւանի լիճին եզերքը բանակած էր։*

*Չարմաղան, հրամայեց այլևս չնեղել բերդը և գաւառին բնակչութիւնը, և իրեն ղրկել շուտով Աւագը, զոր պատուով ընդունեց և հրամայեց, անոր ետ դարձնել բոլոր բերդերը և կալուածները* (Կիր. 136—8, Վարդան, 144, Օրբելեան Բ. 150 *հմմտ.* Վրաց Աղբիւրներ Բ., 54—55)։ *Հպատակելով Մոնկոլներուն՝ Աւագ համաձայնեցաւ հարկ վճարել անոնց և մասնակցեցաւ իր զօրքով Մոնկոլ արշաւանքներուն։*

*Աւագի անձնատուութենէն յետոյ, Չարմաղան՝ որ ընդհանուր հրամանատար էր, գայն իր հետը առնելով, անձամբ յարձակեցաւ Անիի վրայ, որ Շահնշահի իշխանութեան տակ էր։ Հոն ապաստաներ էր իր անասուններով ու գոյքով՝ նաև գաւառին ժողովուրդը։*

## ԱՆԻԻ ԵՒ ԿԱՐՍ ԿԸ ՊԱՏՈՒՀԱՍՈՒԻՆ

*Մոնկոլ զօրապետը Անի գալով, մարդ ղրկեց քաղաքին գլխաւորներուն և պահանջեց, որ անձնատուր ըլլան և քաղաքը յանձնեն իրեն։ Բայց քաղաքացիք յարձակեցան պատգամաւորներուն վրայ և բոլորը ջարդեցին։ Իմանալով ասիկա՝ Չարմաղանի կատղած զօրքը պաշարեց Անին, գրաւեց քաղաքը պաշարման մեքենաներով և բնակչութիւնը սուրէ անցուց, բացի սակաւ կիներէ, երեխաներէ և արհեստաւորներէ, որոնք գերի տարուեցան 1239ին։*

*Կարսի բնակիչները, իմանալով ասիկա, Անիի վիճակին չենթարկուելու համար, որոշեցին անձնատուր ըլլալ և քաղաքին բանալիները ղրկեցին Չարմաղանի։ Բայց Մոնկոլները, որ թալանի մեծ փափաք ունէին, կողոպտեցին նաև Կարսը և ջարդեցին բնակիչները և մէկ մասն ալ գերի տարին։*

## ՍՈՒՐՄԱՌԻԻ, ԽԱՉԷՆԻ ԵՒ ՍԻՒՆԻՔԻ ՆՈՒԱՃՈՒՄԸ

*Ասկէ յետոյ, Չարմաղանի զօրավարներէն մէկը, Ղարա Պահատուր, յան-*

կարծակի յարձակեցաւ նաև Սուրբ Մարիի (Սուրմառիի) վրայ, զոր քանի մը տարի առաջ գրաւած էին Շահնշահը և Աւագը և շուտով տիրեց. ապա մատնեց կողոպուտի և աւերածութեան (Կիր., 140,—1 Ստեփ. Օրբէլեան, Ժամանակ. 35):

Մոնկոլները 1236ին նուաճեցին նաև Խաչէնը և Սիւնիքը, ամենակարճ ժամանակի մէջ, առանց պատերազմի և ընդդիմութեան։ Ինչպէս Կիրակոս կը հաւաստէ, Խաչէնը վիճակած էր Ջուղբուղայի, որ Խաչէնի անպաշտպան շրջանները ասպատակելէ և աւերելէ յետոյ, գաղտնի և անակնկալ կերպով մտաւ Հաւքախաղաց անմատչելի բերդը, (Վերին Խաչէնի մէջ, Թարթառ գետի աջ կողմը) և անխնայ սուրէ անցուց կամ գահավէժ ընել տուաւ հոն ապաստանած ժողովուրդը։ Յետոյ Ջուղբուղա յարձակեցաւ Ներքին Խաչէնի իշխան՝ Հասան Ջալալի վրայ, որ ամրացեր էր Խոխանաբերդի մէջ (Խաչէնայ գետի վրայ Գանձասարի վանքին դէմ), Բայց տեսնելով որ անհնար է բերդը գրաւել՝ հաշտութիւն առաջարկեց։ Հասան Ջալալ անձնատուր եղաւ և հարուստ ընծաներով շահելով Մեծ Նոյինի սիրտը՝ ազատեց իր ժողովուրդը կոտորածէ և արհաւիրքներէ (Կիր., 146):

Ստեփանոս Օրբէլեան կը յիշէ ուրիշ զօրամասի մը ներխուժումը Սիւնիքի կողմերը։ Այս շրջանը վիճակած էր Ասլան Նոյինի։ Ինչպէս ուրիշ տեղերու մէջ, նոյնպէս և այստեղ Օրբէլեան Մեծ Իշխանը, Էլիկումը իրեններուն հետ ամրացաւ Վայոց Ձորի Հրաշկաբերդ ամրոցը, որ կը գտնուէր Նորավանքի մօտ։ Բայց Սիւնիքի մէջ ալ Ասլան Նոյինի առաջարկութեամբ, հաշտութիւն կնքուեցաւ և Էլիկում ընծաներով ընդառաջ գնաց անոր և բարեկամութիւն հաստատեց Մոնկոլներու հետ։ Ապա Մոնկոլ զօրավարը, որ նուաճեր էր Վայոց Ձորը, և Եղեգիսը և մինչեւ Երերոն գիւղը, Գառնիի դիմաց, այդ ամբողջ երկիրը տուաւ Էլիկումին (Ստեփ Օրբէլ. Բ. 150):

### ՀԱՅԵՐԸ ԸՆԿՃՈՒԱԾ

Ջարմաղանի զօրքերը, այսպէս, արդէն 1236ին կրցած էին տիրանալ Զաքարեաններու իշխանութեան տակ գտնուող գրեթէ ամբողջ հիւսիսային Հայաստանի բերդաքաղաքներուն, ուր հայ իշխանները ամրանալ փորձեր էին, իրենց ժողովուրդին հետ, Մոնկոլները այս վայրերուն մէջ գործեցին անգթութիւններ և խնայեցին միայն այն քաղաքներուն, որոնց տէրերը ինքնաբերաբար յօժարած էին հպատակիլ իրենց և տարեկան հարկին հետ խոստացած էին նաև Մոնկոլներու թշնամիներուն դէմ պատերազմիլ։

Ժամանակակից յիշատակագիր մը, որ ականատես եղած է Հայերու համակերպութեան և Մոնկոլներու արագ տիրապետութեան, 1236ին կը գրէ թէ «յարեաւ ազգ մի գազանաբարոյ եւ անողորմ եւ եհեղ բազում արիւն... Բնական անուն նորա Ղարա Թաթար... Ոչ կարեմ պատմել զանցս չարչարանացս, որ ես ըմպել զբաժակն բարկութեան Այրարատեան գաւառին եւ Անւոյ եւս առաւել, զոր իմ է տեսեալ զանհնարին ողբն... («Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի, էջ 443):

Ոմանք թէև զարմանալի կը գտնեն երկուստեք, Հայերու անփառունակ համակերպութիւնը և Մոնկոլներու արագ տիրակալութիւնը, սակայն իրապէս ոչինչ կար զարմանալի և տարօրինակ։



Երբ Մոնկոլ ուժին առջեւ Չինաստան, Խուարէզմ, Հնդկաստան, Պարսկաստան, Արաբ Խալիֆայութիւն և Ռուսաստան, իրարու ետեւէ կ'իյնային, ի՞նչ պիտի կարենային ընել փոքրիկ Վրաստանը և իրեն միացած Հայ ճորտ պզտիկ հողատիրութիւնները։

1236ի ամառը միայն բաւական եղաւ Մոնկոլներուն՝ հպատակեցնելու համար Արեւելեան Վրաստանը և անոր կապուած Արեւելեան Հայաստանի իշխանութիւնները։ Մոնկոլները երկիրը նուաճելէ և աւերելէ, ժողովուրդէն մաս մը ջարդելէ և մաս մը գերի վարելէ, իշխանները հպատակեցնելէ կամ կապանքի ենթարկելէ յետոյ, ամառուան ընթացքին, հասկաքաղէն առաջ, աշնան կամ ձմեռնամուտին, անոնք քաշուեցան Մուղան, (Պատմութիւն Թաթարաց, 17, Կիրակոս. 123, 125, 141), ձմեռը հոն անցնելու համար, մինչ երկիրին բնակչութեան այն մասը, որ ողջ մնացած էր և գերի չէր տարուած, հրաման կ'ստանար երթալ իր տեղերը, գիւղերը և քաղաքները և վերաշինել աւերուած շրջանները, ծառայել միշտ նոր տէրերուն։

Ժողովուրդը որ չէր կրցած իր հունձքը քաղել, ձմեռը ապրեցաւ արտերուն մէջ լքուած հացահատիկները հաւաքելով. և հակառակ անոր որ չէր կրցած նաև աշնանացանը կատարել, հետեւեալ տարին ալ սնանեցաւ այն ինքնաբոյս բերքով, զոր երկիրը արտադրեց։

### ԻՇԽԱՆՆԵՐԸ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԱԾ

Մոնկոլները՝ 1237ին՝ Աւագը ղրկեցին Արեւելք իրենց Մեծ Խանին, որ ընդունեց զայն սիրով ու պատուով, տուաւ անոր Թաթար կին և ետ դարձուց զայն Հայաստան, գրելով Ջարմաղան զօրավարին, որ անոր յանձնէ երկիրին իշխանութիւնը և անոր աջակցութեամբ հնազանդեցնէ ապստամբած և փախստական իշխանները։

Իր օրինակին հետեւեցան նաև Շահնշահը, Վահրամ Գագեցին (տես վերը էջ 147—9), և միւս փախստական իշխանները, որոնք նոյնպէս հպատակեցան Մոնկոլներուն և վերահաստատուեցան իրենց իշխանութիւններուն մէջ։

### ԱՐԵՒՄՏԵԱՆ ՎՐԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒՍ ՆՈՒԱՃՈՒԱԾ

Ջարմաղանի զօրքերը արշաւեցին և ասպատակեցին նաև արեւմտեան Հայաստանը և բուն Վրաստանի շրջանները՝ Քարթլի, Թռեղք, Ջաւախք, Սամցխէ, Շավշէք, Կղարջք, Կողա և Արտահան։ Անոնք հոնտեղերը ևս աւերեցին, և ջարդեցին ու գերեցին բնակիչները. (Վրաց Աղբիւրներ, Բ. 54):

Այսպէս, 1236—1240ի, չորս տարուան կարճ ժամանակամիջոցին՝ Մոնկոլները նուաճեցին թէ՛ Հայաստանը և թէ՛ Վրաստանը։

1240ին, ամբողջ Հայաստան արդէն Թաթարներու ձեռքն էր (Վարդան, 181):

### ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ (1236 - 1256) ՄՈՆԿՈԼ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

Մոնկոլները մինչեւ 1240 «ի սուղ ժամանակս անվաստակ եւ առանց աշխատութեանց» (Վարդան, 109) տիրանալէ յետոյ Հայաստանի, հոն հաստատուեցան։ Իրենց տիրապետութիւնը Հայաստանի և Վրաստանի վրայ տեւեց մէկ դարէ աւելի, երկու շրջանով, որոնք իրարմէ կը զանազանուին տարբեր յատկանիշներով։ Առաջին շրջանը հազիւ 20 տարի (1236—1256) տեւած է։

Այդ շրջանին, Հայաստան Վրաստանի հետ կը կազմէր Ջինկիզ Խանի մեծ պետութեան Կուրճիստանի վիլայէթը (կուսակալութիւնը), որուն պետը զինուորական մըն էր, և ուղղակի Գարագորում նստող Մեծ Մոնկոլէն կախում ունէր. Հայաստանի յատուկ քաղաքային (civil) վարչութիւն գոյութիւն չունէր։

Այս շրջանին Հայաստանը կառավարողներն եղած են.

ՉԱՐՄԱՂԱՆ (1236—1242), ԲԱՉՈՒ (1242—1253), և ՀՈՒԼԱՂՈՒ (1253—1256) երեք զօրավարները։

Մոնկոլները, որոնք մշակոյթով աւելի յետամնաց էին քան իրենց տիրապետած երկիրներուն բնիկները, չեն փոխած իրենց տիրած երկիրներուն քաղաքային վարչութիւնները։

Այսպէս, Հայաստանի և Վրաստանի մէջ ևս պահած էին երկիրին աւատական կարգուսարքը և օգտագործած Հայ և Վրացի իշխանները և անոնց զինուորական ուժը և վարչական կազմակերպութիւնը (Յ. Մանանդեան, Քննական Տեսութիւն, Գ. 244—5)։ Այս պատճառով, Հայաստանի և Վրաստանի նուաճումէն ետք, իրենց գոյութիւնը պահեցին տեղական հողատէր իշխանները, որոնք կառավարեցին իրենց երկիրները։

Մոնկոլները թոյլ տուին որ Հայ և Վրացի իշխանները իրենք կառավարէին իրենց երկիրները՝ անուանական կերպով կախում ունենալով վերին իշխանաւոր՝ Մոնկոլ կուսակալ-զօրապետէն, որ կը խորհրդանշանէր Մոնկոլ տիրապետութիւնը, որ երկու կերպով իր գոյութիւնը զգալի կ'ընէր հայ իշխաններու վրայ, մին զինուորական պարտաւորիչ օժանդակութեամբ և երկրորդը՝ հարկատուութեամբ։

Այսպէս, Հայ իշխանները պարտաւոր էին իրենց զօրքերով մասնակցիլ մոնկոլական արշաւանքներուն։

## ՀԱՅԵՐՈՒ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

Արդարեւ, Հայերը և Վրացիները մեծ նպաստ մը բերին Մոնկոլ բանակին, երբ անիկա սկսաւ կռուիլ Իկոնիոյ Սելճուկ Սուլթանութեան դէմ, զայն ընկճելու և Հայաստանի սահմաններէն հեռացնելու համար։

Այսպէս, Բաչու զօրավարը, որ Չարմաղանի համբանալէ ետք, անոր տեղը անցած էր, (Վարդան, 147), երբ հպատակ ժողովուրդներէն մեծ թիւով զօրք հաւաքեց 1242ին և իր արշաւող բանակը շարժման մէջ դրաւ, այդ բանակին մէջ էին Հայ և Վրացի իշխանները, իրենց զօրքերով։ Բաչու իր բանակով առաջացաւ դէպի Կարինի շրջանը և պաշարեց քաղաքը, ուր ապաստանած էին շրջակայքի բնակիչները։ Մոնկոլները իրենց սովորութեան համաձայն մարդ ղրկեցին և պահանջեցին անձնատուութիւն առանց դիմադրութեան։ Սակայն քաղաքին պաշտպանները ո՛չ միայն չհամակերպեցան, այլ անարգեցին պատգամաւորները։ Երկու ամսուան պաշարումէ ետք՝ Մոնկոլները քաղաքին տիրեցին յարձակմամբ (Կիրակոս, 152, Վարդան, 147) և բնակչութիւնը ջարդեցին և կողոպտեցին, (Կիրակոս, 152, Պատմ. Թաթարաց, 23, Վարդան, 147, Օրբէլեանի Ժամանակագրութիւն, 25 եւ Անանուն Ժամանակագրութիւն, 21)։



Յաջողութեան պատճառը թէ՛ այս և թէ՛ հետագայ կռիւներուն մէջ, Յ. Մանանդեանի (Քննական Տես. Գ. 214) համաձայն, բազմաթիւ վկայութիւններով կը հաստատուի թէ Հայ և Վրացի զօրքերն էին, որոնք կանգնած առաջին շարքերու վրայ՝ ուժեղ կերպով կը յարձակէին թշնամիին վրայ, մինչ Մոնկոլները իրենց նետերով ու աղեղներով կու գային անոնց ետեւէն, այնպէս որ ամէնէն շատ զոհերը անոնք կու տային և փախուստի ճամբայ չունէին, թշնամի և Մոնկոլ զօրքերու միջեւ մնացած ըլլալով։ (Հմմտ. յատկապէս Պատմ. Թաթարաց, Երուս., էջ 24)։

Կարինի գրաւումէն յետոյ, Մոնկոլ զօրքը քաշուեցաւ Մուղան ձմերելու համար. իսկ 1243ին Բաչու Հայ և Վրացի իշխաններու հետ կրկին արշաւեց Իկոնիոյ Սուլթանին երկիրները և յառաջացաւ մինչեւ Երզնկա։

Չմանկատուկ, (հիմա Չիմին գիւղ) գիւղաքաղաքի մօտ (10—12 քիլոմէթր դէպի Արեւելք Երզնկայէ), փախուստի մատնեց Իկոնիոյ Ղայասէտտին Սուլթանը, (Պատմ, Թաթարաց, 23—24, Կիրակոս, 153)։

Բաչու, յետոյ անցաւ Փոքր Ասիա։ Գրաւեց Երզնկան, Կեսարիան, Սեբաստիան, Տիվրիկը և Խարբերդը, որոնցմէ առաջին երկուքը դիմադրած ըլլալով, ենթարկուեցան կողոպուտի և ջարդի (Կիրակոս, 155, Վարդան, 147, Պատմ. Թաթարաց, 25—6)։

Մոնկոլներու՝ Սելջուկ պետութեան վրայ երկու յաջորդական տարիներ — 1242 և 1243 — կատարած արշաւները, այնքան ընդարձակ տարածութեան մը վրայ և տրուած պայմաններու մէջ, այսինքն բանակին առաջին գիծերուն վրայ կռուելու հարկադրանքի մէջ, մեծ աղէտ մը եղաւ Հայերուն համար, վասնզի մարդու շատ կորուստ ունեցան։ Վարդան պատմիչ, Հայկական թուականին ՈՂԲ (692+551=1243) ըլլալը, կը պատշաճեցնէ տարւոյն զուգադիպող թշուառութիւններու, որոնց ենթարկուած են նաև «զայլ աշխարհս եւ զգաւառս, ուր մանաւանդ ազգ Հայոց վշտատեաց բնակեալ էին, զի համարագիր թուականին ՈՂԲ (692+551=1243). եր եւ ըստ այն գործեցան արդիւնք արժանաւոր ողբոց եւ արտասուաց, ոչ միայն բանականաց, այլ եւ անբանից, լերանց եւ դաշտաց, որք ոռոգեցան արեամբ եւ արտասուօք», (Վարդան, 147—148)։

Այս աղէտալի պատերազմներուն մէջ, Մոնկոլ բանակին հետ, անոնց թշնամիներուն դէմ կռուողներուն մէջ էին Զաքարեան տունը՝ իր պետով՝ Աւագով, Շահնշահը, Վահրամը և որդին Աղպուղա, Հասան և Ջալալ Խաչէնցիք և Գրիգոր Դուփին Խաչէնցի իշխանները (Կիրակ., 153 եւ 155)։

Մասնաւորապէս Կարինի գրաւման ատեն, Մոնկոլ զօրքին ձեռքը անցաւ մեծ քանակութեամբ ձեռագիրներ, որոնք չնչին գիներով կ'առնէին Հայերը և կը նուիրէին Շիրակի և Հիւսիսային Հայաստանի վանքերուն ու եկեղեցիներուն (Կիրակոս, 152—3, և Պատմ Հայ Կեսարիոյ 558 եւ 1841)։

Հայերը դրամով ազատագրեցին նաև իրենց ազգակից գերիները (Կիրակոս, 152—153)։

Այս նոր աշխարհակալութիւններով, Մոնկոլները կը հասնէին Կիլիկիոյ սահմանները։

*Հեթում, ինչպէս տեսնուեցաւ (վերը՝* 104), *սպառնացող աղէտը կանխեց, հպատակութիւն յայտնելով Բաչուի և Էլթինա Խաթունի, Խաչէնի Հասան Ջալալ իշխանին միջնորդութեամբ։*

*Հեթում ալ ստացաւ Հայաստանի և Վրաստանի տեղական իշխաններու պէս Էլ-Տամղա և գործակցեցաւ անոնց պէս Մոնկոլ բանակին* (Կիրակոս, 156, Պատմ. Թաթարաց, 27):

*Մոնկոլները, որոնք տակաւին տիրած չէին Հարաւային կամ նոյնիսկ Կեդրկ. Հայաստանի, ինչպէս Վասպուրականի և Տուրուբերանի, Հայաստանի Արեւմտեան մասերը Սելջուկ լուծէն ազատելէ յետոյ, նուաճեցին նաև Վասպուրականը և Տուրուբերանը, որոնք դարձեալ հայ տանուտէրներու իշխանութեան տակ թողուցին։*

*Այսպէս, Ռումի Սելջուկ Ղայասէտտին Քայ Խոսրով Բ.* (1237—1247) *Սուլթանին ուժը խորտակելէ և ընկճելէ երկու տարի ետք, այսինքն 1245ին, Բաչու արշաւեց Միջագետք և Ասորիք, ուր կ'իշխէին Էյուպեան Սալահէտտինի և անոր Ադիլ եղբօր որդիները և թոռները։*

*Մոնկոլ զօրքերը մտան նաև Բզնունիք և առին Բաղէշը և Խլաթը։*

*Այս քաղաքներուն, ինչպէս նաև ամբողջ Խլաթի Ամիրայութեան երկիրներու իշխանութիւնը յանձնեցին Էյուպեան Մէլիք Աշրաֆի կնոջ՝ Թամթային, զոր իր հայրը՝ Իւանէ, կնութեան տուած էր նախ Իկոնիոյ Քէյ Քաուս Սուլթանին և յետոյ Սալահէտտինի տղուն՝ Աշրաֆի, որ տիրացած էր Խլաթի* (Կիրակոս. 80—81, Վարդան 138): *Երբ Ճէլալէտտին՝ Խլաթը գրաւեց Աշրաֆէն, Թամթան, որ կարեւոր դեր կատարած էր ի նպաստ քրիստոնէից* (Կիր-, 81), *ինք կնութեան առաւ* (Կիրակոս, 119), *և Խուարէզմ տարաւ։*

*Հօն, Թամթա գերի ինկաւ Մոնկոլներու ձեռքը և երկար ատեն հոն մնաց* (Կիրակոս, 161). *բայց երբ Վրաց Ռուսուդան թագուհին, Մոնկոլներուն հետ բարեկամացաւ, խնդրեց անոր ազատ արձակումը, որ շնորհուեցաւ և Խանը հրովարտակով մը անոր դարձուց* «զոր ինչ լեալ էր նորա՝ մինչ կին էր Մելիք Աշրաֆին». *որով անոր տրուեցաւ* «զԽլաթ եւ զգաւառն որ շուրջ զնովաւ» (Կիրակոս, 161): *Այսպէս, ան ալ դարձաւ Աւագ Իշխանաց Իշխանին* (Կիրակոս, 176) *շուրջ խմբուած՝ հողատէրերէն մէկը։*

*Բաչուի զօրքերը, Խլաթէն իջան հարաւ և ասպատակեցին Էյուպեան տոհմի մանր և իրարու թշնամի խալամ իշխանութիւններու երկիրները։ Անոնք թէև դիմադրութիւն ցոյց չտուին, բայց Մոնկոլները մեծ կորուստներ ունեցան, և իրենց զօրքին և ձիերուն մեծագոյն մասը մեռան երկիրին տաք կլիմային պատճառով, որ իրենց անսովոր էր։*

*Կիրակոս Գանձակեցի կ'ըսէ թէ* «ինքեանք ասպատակ սփռեալ ընդ կողմանս կողմանս, ի Միջագետս Ասորւոց, յԱմիթ եւ յՈւռհա եւ ի Մծբին եւ ի Շամբին (*կարդա՛ Շամի*) երկիրն, եւ յայլ բազում գաւառս, դարձան ունայն, զի թէպէտ ոչ ոք էր ընդդէմ նոցա պատերազմել, սակայն վասն տօթոյն ամառայնոյ բազումք ի նոցանէ խորշակահարք եղեալ մեռան, մարդ եւ երիվար եւ եկեալ ի տեղի իջեւանի իւրեանց՝ դադարեցին զաւուրս ձմերան», *հաւանօրէն Կարինի շուրջը, վասնզի անմիջապէս պատմագիրը կը խօսի 1245ին*



*այս քաղաքի վերաշինութեան վրայ* (Կիրակոս, 161—2), *կամ ըստ ոմանց կրկին Մուղան։*

*Այս 1245ի բաւական տաժանելի արշաւանքին ալ մասնակցած են իրենց զինուորներով, Վրացի և Հայ իշխանները։*

## ՀԱՐԿԱՏՈՒՈՒԹԻՒՆ

*Զինուորական այս օժանդակութեան հետ, Հայ իշխանները պարտաւոր էին նաև հարկ կամ տուրք վճարել։*

*Այս հարկերը գանձելու համար, Մոնկոլ Կայսրութեան կեդրոնէն, Հայաստան և Վրաստան կը ղրկուէր յատուկ հարկահան մը, որ շատ կարեւոր դեր կը կատարէր, քանի որ Մոնկոլ տիրապետութիւնը, Արաբականին նման գրեթէ միայն մէ՛կ նպատակ ունէր, որ էր հարկահանութիւն։*

*Հարկահանը պաշտօն ունէր հաւաքելու սահմանուած տուրքերը և Գարագորում ղրկելու, Արաբական շրջանին, Դուին նստող* Ոստիկանին *պէս, որ Հայաստանի հարկը Բաղտատ կը ղրկէր։ Անշուշտ, ասոր համար է որ Վարդան և Կիրակոս պատմիչները, Մոնկոլ հարկահանները «Ոստիկան» կոչած են։ Օրբէլեան զանոնք «վազիր և պասղաղ» կը կոչէ։*

*Մինչեւ* 1256, *այսինքն Իլխանեան իշխանութեան հաստատութեան ատեն, Հայ և Վրացի իշխանները, կ'երեւի թէ պարտաւոր էին վճարել սահմանուած որոշ հարկ մը Կիւրճիստանի Վիլայէթին համար։*

*Մոնկոլ տիրապետութեան այս առաջին շրջանին* (1236—1256), *Կայսրութեան կեդրոնին՝ Գարագորումի մէջ կը կազմակերպուէր և կը տնօրինուէր հարկերու հիմնական խնդիրը։ Այդ շրջանին հարկերը կը վճարուէին այս նոր տիրապետներուն՝ Հայաստանի և Վրաստանի իշխաններուն կողմէ։*

*Քիւք Խանի առաջին գործը եղաւ 1246ին հարկահաններ ղրկել ամէն տեղ և հրամայել իր զօրքերէն տասանորդ, իսկ նուաճուած երկիրներէն և իշխանութիւններէն հարկեր առնել։*

*Մերձաւոր Ասիա ղրկուած հարկահաններու գլխաւորն էր Արղուն, որ ղեկավարն էր բոլորին, իսկ Բուղա՝* (Կիրակոս, 175) *Հայաստանի,* (Ջամ. Գ. 213), *Վրաստանի և Աղուանից Աշխարհին։*

*Կիրակոս* (175) *Բուղան կը ներկայացնէ* «չարագոյն եւս էր քան զայն Բուղայն՝ որ յաւուրս Ջափրին Իսմայիլականին՝ եկ ի Հայս եւ աւերեաց զբազում աշխարհս»: *Անիկա,* «մտանէր զտունս աւագանոյն, եւ զոր ինչ ախորժ թուէր՝ առնոյր անխնայ, եւ ոչ ոք իշխէր ասել ինչ նմա, զի ժողովեալ էր առ ինքն արս արիկայս ի Պարսից եւ ի Տաճկաց, որք անխնայ գործէին զգործս խակութեան, եւ թշնամիք էին առաւել քրիստոնէից»: *Այս անգութ հարկահանը՝ բարեպաշտ Հասան Ջալալ իշխանին սոսկալի չարիքներ պատճառեց, և անոր Խոյախանայ և Դեղ, Տիրանաքար և այլ ամրոցները հիմնայատակ կործանեց և ահագին հարստութիւն յափշտակեց անկէ։*

*Փորձեց Աւագն ալ նոյն վիճակին մատնել, սակայն ան մեծ թիւով զինուորներով գնաց իր քովը, երբ զինքը կանչեց։ Բուղա վախցաւ և Աւագի հետ հաշտուեցաւ առ երես, սպասելով յարմար ժամանակի. բայց այդ ժամա-*

նակը չհասաւ, վասնզի «սատակեցաւ չարն չարաւ» (Կիր., 176)։

Հայ իշխանները, Գարագորումէ որոշուած հարկերը վճարելէ զատ՝ պարտաւոր էին տալ փոխադրութեան միջոցներ, սայլ, ուղեցոյց, օթեւան և պարէն, փայլզա ունեցող պաշտօնատարներու և յանձնարարեալ ճամբորդներուն (Marco Polo). Երթեւեկներու սպասարկելու և կերակրելու ծանր պարտականութիւնը կ'իյնար գլխաւորապէս բնակչութեան վրայ, որուն իրենց իշխանները կը պարտադրէին, ինչպէս կը հասկցուի Մոնկոլներու Ներքին Խաչէն հաստատութեան առթիւ, Կիրակոսի սա տողերէն որ նուիրած է Հասան Ջալալ Խաչէնի իշխանը գովելու համար.

«Իսկ նա խոհեմաբար կարգաւորեաց զաշխարհ իւր, որ ինչ մարթ էր առնուլ ի պէտս երթեւեկաց՝ որ գային առ նոսա, թէ՛ կերակուր եւ թէ՛ այլ ինչ, ինքն առնոյր եւ պահէր, եւ յիւրմէն յաւելուածով տայր նոցա, յորժամ գային առ նա, եւ ոչ նեղէին զաշխարհս, բայց թէ առ նա գային։ Իսկ յայլ աշխարհս զայս ոչ առնէին, այլ եւ ուր հասանէին՝ ամենայն ուրեք նեղէին զնոսա» (Կիրակոս, 146)։

## ՀԱՅ ԻՇԽԱՆՆԵՐՈՒ ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Հայ և Վրացի իշխանները, զօրքով օգնելով Մոնկոլ բանակին և հարկ տալով Մոնկոլ Մեծ Խանին, Մոնկոլ տիրապետութեան առաջին քսանամեայ շրջանին (1236—1256)՝ պէտք է խոստովանիլ թէ գտած են քիչ շատ բարեացակամ վերաբերում։ Ինչպէս ըսինք, Մոնկոլները թոյլ տուած էին որ Հայ իշխանները պահէին իրենց ինչքերը և ստացուածքները, ինչպէս նաև տիտղոսները և իշխանական առանձնաշնորհները։

Նոյնիսկ կը թուի, թէ 1236—1246 տասնամեակին, երբ Ռուսուդան թագուհի Սվանէթ ապաստանած էր, Վրաստանը, առանց Մոնկոլներու միջամտութեան, բայց անշուշտ անոնց գէթ լռելեան հաւանութեամբ, կառավարուեցաւ տեղական իշխաններէ, ըստ երեւոյթին Զաքարեան Իւանէի որդի՝ Աթաբէկ Աւագի գլխաւորութեամբ, մինչեւ որ 1246ին, Կեսարիայէն՝ Մոնկոլները բերել տուին Գէորգի Լաշայի որդի՝ Դաւիթը, որ Թիֆլիսի մէջ թագաւորեցուցին, անոր թողլով Արեւելեան Վրաստանը և միւս Դաւիթը՝ Ռուսուդանի որդին՝ Սվանէթի մէջ, իբր յաջորդ իր մօրը, որ մեռաւ 1247ին (Ց. Մանանդեան, (Նոյն 218—219)։

Այս առաջին շրջանին (1236—1256), երբ տակաւին Մոնկոլ Կայսրութեան միութիւնը պահուած էր և Ուլուսները Մեծ Խաներուն ստորադաս էին, Հայաստանի և Վրաստանի գերագոյն իշխանաւորները, իբրեւ մեծ խաներու ճորտերը, պէտք էր ամէն նոր գահակալութեան առեն, անձամբ ներկայանային իրենց գերիշխաններուն և վերահաստատուէին իրենց կալուածատիրական և իշխանական իրաւունքներու մէջ (Ց. Մանանդեան, ՔՆՆ. Տեսութիւն, Գ. 246)։

Հայ իշխաններն ալ, երբ Խանը կանչէր, պարտաւոր էին անյապաղ երթալ անոր մօտ և իրեն ներկայանալ։ Հակառակ պարագային՝ յանցաւոր կը նկատուէին և իբրեւ դաւաճան կը պատժուէին։



Ասիկա այնքան ծանր հարկադրանք մը չէր, երբ մանաւանդ նկատի ունենանք Հայ իշխաններուն թողուած առաւելութիւնները, որոնք անշուշտ աննըպատակ չէին։

Ինչպէս Ծայրագոյն Արեւելքէն դէպի Մերձաւոր Ասիա, իրենց արշաւին, խոչընդոտ ունէին Խուարէզմի Սուլթանութիւնը, հիմակ ալ իրենց դէմ կը կանգնէին Ռումի Սելճուկ Իկոնիոյ Սուլթանութիւնը և այլ խլամ տէրութիւններ, որոնց հետ անխուսափելի էր բախումը։

Հետեւաբար, Մոնկոլները՝ իրենց թիկունքը ապահովելու, ինչպէս նաև տեղական զինուորական ուժերուն օժանդակութիւնը վայելելու համար, պէտք էր սիրաշահէին Հայերը, Վրացիները, Աղուանները և Մերձաւոր Արեւելքի միւս ժողովուրդները։ Հակառակ պարագային, Մոնկոլ—Սելճուկ անխուսափելի պայքարին մէջ՝ անոնք կրնային միանալ Սելճուկներուն և դժուարութիւններ յարուցանել, մանաւանդ որ, Չարմաղանի նուաճումները Հիւսիսային Հայաստանի մէջ անապահով էին, որչափ ատեն որ Հայկական Բարձրաւանդակը ամբողջովին չէր գրաւուած։

Մոնկոլները՝ Հայաստանի և Վրաստանի իրական տիրապետութիւնը ապահովեցին, նոյնիսկ Հայերու և Վրացիներու օգնութեամբ լրացնելով ոչ միայն Հայկական Բարձրաւանդակի ամբողջական տիրապետութիւնը, Կարինի, Երզնկայի, Խլաթի և այլ գրաւումներով, այլ առաջացան դէպի Արեւմուտք՝ Փոքր Ասիա և դէպի հարաւ, մինչեւ Պաղտատ և Սուրիա, ինչպէս տեսնուեցաւ։

Մոնկոլները՝ Հայերու օժանդակութիւնը եւ հաւատարմութիւնը կերպով մը վարձատրեցին, անոնց շնորհելով ինքնավարութիւն՝ կարելի եղածին չափ սեղմ եւ ոչ ընդարձակ սահմանի վրայ, որպէսզի մեծ միութիւն մը չկազմեն։

Անոնք աշխատեցան իրենց տիրապետութենէն առաջ կազմուած Վրահայկական միացեալ եւ աւատական կարգերով պետութիւնը քայքայել եւ Հայաստանի մէջ միակ հայ մեծ իշխանութեան մը գոյատեւութեան թոյլ չտալ, բայց իրենց տիրապետութեան առաջին շրջանին (1236—1256), երբ երկիրը ուղղակի Մոնկոլ Մեծ Խանին կը հպատակէր եւ անկէ նշանակուած կուսակալ—զօրավարով մը կը կառավարուէր, իրենք իսկ կազմեցին հայ ինքնավար իշխանութիւններ։

## ԶԱՔԱՐԵԱՆՔ ԻՆՔՆԱՎԱՐ

Մոնկոլ գրոհի սկիզբը, Զաքարէ Ամիր Սպասալարի (+ 1212) եղբայրը Իւանէ, պետն էր Վրաստանի կապուած Հայ իշխաններուն։

Երբ ան մեռաւ 1227ի՝ իրեն յաջորդեց Աւագ (+ 1250), որ ինչպէս տեսնուեցաւ, 1236ին երբ Մոնկոլները Հայաստանի նուաճումին ձեռնարկեցին՝ ամրացաւ Կայան բերդին մէջ եւ անձնատուր եղաւ Տուղատա Նոյին, որ զայն Չարմաղանի ղրկեց (տես. վերը՝ 147)։ Աւագ յանձն առաւ հարկ վճարել եւ զօրք տալ, եւ Չարմաղան զայն վերահաստատեց իր բերդերուն եւ կալուածներուն մէջ։

Չարմաղան՝ Աւագը իր հետը առնելով Անիի վրայ գնաց եւ քաղաքը գրաւեց։

1237ին Աւագը ղրկուեցաւ Մեծ Խանին, (Կիրակոս, 142), որպէսզի Խա-

նը զայն սիրաշահի եւ իրենք օգտագործեն անոր ազդեցութիւնը, Հայ եւ Վրացի իշխաններու վրայ եւ այսպէս անոնք հպատակին եւ հնազանդութեան մէջ պահուին։

Աւագ, Գարագորումի մէջ կը ներկայանայ Ուխտա Խանին։ «Ցանգիման լինէր մեծի արքայինն եւ ցուցանէր նմա զգիրս զօրագլխաց իւրոց, եւ յիշեցուցանէր զպատճառս գալոյն առ նա, թէ ի ծառայութեան եկեալ է նմա (Կիրակոս, 142)

Խաքանը սիրով եւ պատուով կ'ընդունէր Աւագը եւ անոր Մոնկոլ կին մը կու տար եւ «յուղարկէր զնա յիւր աշխարհն, եւ գրէր առ զօրավարն իւր, տալ ի ձեռն նորա զիւր աշխարհն, եւ նովաւ նուաճել զամենայն ապստամբսն, որ եղեւ իսկ, զի իբրեւ եկն նա յաշխարհն իւր, եւ արարին զօրագլուխք զհրամանս արքային իւրեանց, եկին ի հնազանդութիւն ծառայութեան նորա Շահնշահ՝ որդի Զաքարէի եւ Վահրամ իշխանն, եւ որդին իւր զԱղպուղայն. եւ Հասան, որ Ջալալն կոչէին, իշխան կողմանցն Խաչենայ, եւ այլք բազումք, եւ զիւրաքանչիւր երկիր տային նոցա՝ եւ առ ժամանակ մի նեղումն» (Կիրակոս, 142):

Արդարեւ, Աւագ իշխան երբ եկաւ իր երկիրը, Խանին հրամանին համաձայն, տիրացաւ իր իշխանութեան եւ իր շուրջը համախմբուեցան եւ անոր հնազանդեցան Շահնշահ որդի Զաքարէի. Վահրամ Գագեցի իշխան եւ իր որդին Աղպուղա եւ Խաչէնի Հասան Ջալալեան իշխանը եւ ուրիշ շատեր, ինչպէս կ'ըսէ պատմագիրը։

ՈՒՐԻՇ ՀԱՅ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Նոյնպէս կազմուած են ուրիշ ինքնավար Հայ տոհմապետութիւններ, որոնք Աւագի չէին ենթարկուած կամ նախապէս ենթակայ՝ յետոյ պատեհութիւնը գտած էին ձերբազատուելու, անջատողական ոգիով եւ տոհմային հակառակութիւններով։

Այսպէս, տեսնուեցաւ որ 1236ին, Ջուղբուղան յարձակեցաւ Ներքին Խաչէնի իշխան Հասան Ջալալի վրայ, որ ամրացած էր Խոխանաբերդի մէջ (տեսվերը, 148)։ Հասան Ջալալ ինքնաբերաբար անձնատուր եղած էր եւ ճոխ ընծաներով շահելով Մոնկոլ զօրավարին սիրտը, ազատած էր իր ժողովուրդը կոտորածէ եւ արհաւիրքներէ (Կիրակոս, 146)։ Նոյնիսկ դիւրք չինած է, վասընզի 1243—1245ին, Հեթում իր միջնորդութեամբ կրցաւ հաշտութեան եւ բարեկամութեան դաշինք կնքել եւ ստանալ Էլ–Տամղա։

Բուղա հարկահանը, որ թշնամի էր քրիստոնեաներու, Հասան Ջալալ բարեպաշտ իշխանը հարուածեց եւ անոր Խոյախանայ բերդը եւ Դեդ եւ Ծիրանաքար եւ այլ ամրոցները հիմնայատակ ըրաւ 1246էն յետոյ իբրեւ հարկահան գալէն ետք, եւ անոր ահոգին հարստութիւնը կողոպտեց։

Այդ միջոցին, (1242—1246) Ուխտա (+1241) մեռած էր, եւ իր կինը Տուրագինէ կը կառավարէր կայսրութիւնը, վասնզի Բաթու, Ջինկիզեան ընտանիքի երէց անդամը, հիւանդութեան պատրուակով չարունակ կը յետաձգէր Նոր Խանին ընտրութիւնը, իր յարաբերութիւնները Ուխտայի որդւոյն Գիւքի հետ լաւ չըլլալուն համար։



Բաթու, այդ շրջանին ամենայն ինչ էր եւ միակ ընտրելին՝ Մեծ Խանութեան, բայց ինք կը մերժէր այդ պաշտօնը, Ոսկէ Հորդան — իր հիմնած պետութիւնը — բաւական համարելով իրեն։

Բայց առանց իրեն խորհուրդին և հաւանութեան, կայսրութեան մէջ ոչինչ կը կատարուէր։ Հետեւաբար «սկսան երթալ առ նա թագաւորք եւ թագաւորազունք, եւ իշխանք եւ վաճառականք եւ ամենայն վշտացեալք, որք զրկեալ էին ի հայրենեաց իւրեանց, եւ նա արդար դատաստանաւ տայր զիւրաքանչիւր գաւառսն եւ զհայրենիս եւ զիշխանութիւնս ամենայն ումեք երթողացն առ նա, եւ զգիրս նշանաւորս, եւ ոչ ոք իշխէր ընդդէմ դառնալ հրամայելոցն ի նմանէ» (Կիրակոս, 207):

Այդ անիրաւուածներէն և վշտացեալներէն մին էր Հասան Ջալալ, Ներքին Խաչէնի իշխանը, որ վերահաստատելու համար իր հօրենական իշխանութեան նախկին սահմանները, Բաթուի և անոր որդի՝ Սարդախի դիմեց։ Անոնք մեծարանքով ընդունեցին այս հայ իշխանը և հրամայեցին վերադարձնել իր ժառանգականը կալուածներ, ինչպէս Չարաբերդը, Ականան և Կարկառը, որոնք առաջները խլեր էին Թուրքերը և Զաքարեանները (Կիրակոս, 207):

Ց. Մանանդեան կ'ըսէ թէ Հասան Ջալալի այս այցելութիւնը Բաթուի, հաւանական նշան մըն է, որ Ներքին Խաչէնը եղած է Մոնկոլներու ժամանակ անկախ իշխանութիւն և չէ գտնուած Զաքարեաններու, այսինքն Վրաստանի գերիշխանութեան տակ (ՔՆՆ. Տեսութիւն, 221): Եթէ ճիշդ է այս տեսութիւնը, ուրեմն Հայաստանի մէջ կար երկրորդ ինքնավար շրջանակ մը՝ անկախ Զաքարեան Աւագի հիմնած ինքնավար իշխանութենէն։

Նոյնպէս, Ց. Մանանդեան կը հաւաստէ թէ Վրաց ժամանակագրութեան վկայութիւններէն կ'երեւի, որ նոյնպէս Մոնկոլները հովանաւորեր և առաջ քաշեր են Սամցխէի իշխանները՝ նախ Սարգիս Ջաղելին և ապա անոր յաջորդները, (Մելքիսեթ-Բէկ, Վրաց Աղբիւրներ Բ. 59–61), որոնք հետըզհետէ զօրանալով, անջատուեցան Վրաստանի թագաւորութենէն։

Նոյն անջատողականութեան երեւոյթը կը տեսնուի, այս շրջանին Արեւելեան Հայաստանի մէջ ալ, ուր Մոնկոլները հովանաւորեցին և պաշտպանեցին Օրբէլեան տոհմի իշխանները, որոնք անհաշտ թշնամի էին Աւագին և անոր սերունդին.

Օրբէլեանց իշխանութիւնը հաստատուած էր Իւանէ Աթաբէկէն, Լիպարիտ Օրբէլեանի գլխաւորութեամբ, Գեղարքունիքի, Վայոց Ձորի և Սիւնիքի մէջ, հետեւաբար Օրբէլեաններն ալ, ինչպէս Դոփեանք և Խաղբակեանք ենթարկուած էին Իւանէ Զաքարեանի տան գերիշխանութեան։ Բայց անոնք նըկատի ունենալով իրենց անցեալ ճոխութիւնը և հարուստ կալուածներու տէր ըլլալը, ինչպէս նաև ամիրսպասալարութեան բարձր պաշտօնը իրենցմէ յափըշտակուած ըլլալը՝ Զաքարեաններէն, իրենց Իւանէէն ստացած երկիրը, կը համարէին ո՛չ թէ հովանաւորեալ իշխանութիւն՝ Զաքարեաններու ենթակայ, այլ սեփական տէրութիւն, որ Թամար թագուհիի և Գէորգի Լաշայի հրամանով ստացեր էին Աթաբէկ Իւանէէն «Հայրենագիր սիգելաւ, փոխան հայրենեաց», (Ստեփանոս Օրբէլեան, Բ. հտ., 104, Ց. Մանանդեան, ՔՆՆ.

Տես. Գ., 253): Յ. *Մանանդեան դիտել կու տայ թէ, ուշագրաւ է որ Ստեփանոս Օրբէլեան, իր պատմութեան յաջորդ գլուխներուն մէջ կ'ընդգծէ — ոչ անշուշտ աննպատակ — թէ Լիպարիտի որդի Էլիկումի և անոր տոհմին, իրենց երկիրը և իշխանութիւնը տուած է Ասլան Նոյին, որ 1236ին գրաւած է այդ տեղերը* (ՔՆՆ. Տես. Գ., 253՝ Ստեփ. Օրբէլեան Բ., հտ., 149—150):

*Օրբէլեանները շատ զօրացան Էլիկումի եղբօր՝ Սմբատի իշխանութեան ժամանակ, շնորհիւ Մանգոյի, պաշտպանութեան և օգնութեան։ Սմբատ Օրբէլեան փրկելու համար իր իշխանութիւնը կործանումէ և Զաքարեան Աւագի կնոջ՝ Գոնձայի հալածանքներէն՝* 1251*ին գնաց Մանգոյի, անոր նուէր տանելով մեծարժէք գոհար մը, որ իրեն տուած էր Ռուսուդանի որդին՝ Սվանէթի թագաւորը՝ Դաւիթ։*

*Սմբատ, երեք տարի մնաց Մանգոյի արքունիքը և* 1253*ին դարձաւ Գարակորումէն, ճանչցուելով Մեծ Խանին կողմէ իբրեւ* ինջու (= *ենչու), այսինքն անկախ իշխան, որուն երկիրը այլեւս պիտի չգտնուէր Զաքարեաններու կամ Վրաց թագաւորներու գերիշխանութեան տակ, այլ պիտի համարուէր մեծ խանական տան անձնական կալուած* (Ստեփ. Օրբէլեան Բ., 152—160):

*Իր իշխանութեան անկախութիւնը Զաքարեաններէն և Վրաց թագաւորութենէն, աւելի ես ամրապնդեց* 1256*ին երկրորդ անգամ երթալով Մանգոյ Մեծ Խանին, և եղաւ Ներքին Խաչէնի պէս ինքնավար երրորդ Հայ իշխանութիւնը։*

*Ուշագրաւ է որ, Սմբատ Օրբէլեան* (1253—1273) *և Հասան Ջալալ* (+ 1251) *արձանագրութիւններու մէջ յաճախ կոչուած են, առաջինը՝* «Սմբատ Արքայ», *իսկ երկրորդը՝* «ինքնակալ» «բնակաւոր ինքնակալ» *կամ* «մեծ արքայ», (*Կ. Կոստանեան,* Վիմական Տարեգիրք, 81, 122, 134, 148 *և Ալիշան,* Սիսական *էջ* 171, 189, 192):

*Ինչպէս կը տեսնուի՝ Վրաց թագաւորութեան աւատական կազմին մէջ գտնուող մասնաւոր իշխանութիւններու ինքնուրոյնութիւնը և անկախութիւնը պաշտպանելով, Մոնկոլները կ'ուզէին արգելք հանդիսանալ հարաւային Կովկասի իշխանութիւններուն միութեան զօրացման և կը գործադրէին «բաժանեա զի տիրեսցես» հռոմէական սկզբունքը։*

ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ԱՆՏԱՆԵԼԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

*Այս կերպով, Հայերը, շնորհիւ իրենց պետերուն խոհականութեան, Մոնկոլ բարբարոսներու խստութիւնը և վայրագութիւնը մասամբ մեղմացուցին եւ իրենց համար տեսակ մը ինքնավարութիւն ստեղծեցին Մոնկոլ գերիշխանութեան տակ և Հայ իշխաններու գլխաւորութեամբ։*

*Եթէ երկիրը խաղաղութիւն վայելէր, Հայերը կրնային Մոնկոլ տիրապետութեան տակ քիչ շատ լաւ վիճակ մը ունենալ, մանաւանդ Մոնկոլ տիրապետութեան սկիզբը՝ երբ անոնք քրիստոնեաներու բարեկամ էին։*

*Անուրանալի է որ Մոնկոլական տիրապետութեան առաջին տարիներուն, Հայաստանի մէջ կոտորածները դադրեցան, բայց ժողովուրդին վիճակը անտանելի էր, վասնզի մեծ ու փոքր պաշտօնատարներ կը գործադրէին ցե-*



*ղին յատուկ ընչաքաղցութենէ մղուած, կամայականութիւններ, բռնութիւններ եւ կողոպուտներ։ Ասով Մեծ Խանէն իշխանութիւն ստանալէն յետոյ,* «իբրեւ անցին ամք ինչ՝ նեղեցաւ ի նոցանէ իշխանն Աւագ, զի կարի ժլատք էին, եւ ոչ կարէր զամենեսին բաւ միսս նոցա հանել, զի ոչ միայն ոչ բաւականային ուտելով կամ ըմպելով, այլ եւ պահանջէին երիվարս եւ հանդերձս մեծագինս, զի կարի յոյժ ձիասէրք էին, վասն այսորիկ եւ խաղեցին զձի յամենայն երկրէ, եւ ոչ ոք իշխէր համարձակ պահել զձիս եւ զջորիս, բայց թէ ի ծածուկ ուրեք վասն հարկին զինուորութեան, զի ուր եւ գտանէին, յափշտակէին եւ աւելի եւս՝ յորում գտանէին զնշանն իւրեանց, եւ զոր առնուին՝ իւրաքանչիւր զօրագլուխ իւրով նշանով կնքէր. խաբելով ի մի անգամսն, եւ թէպէտ գնէին ի նոցունց, եւ պատժէին զնոսա իբրեւ զգողս, եւ զայս ոչ միայն մեծամեծ մարդիկն առնէին այլ եւ փոքունքն եւս» (Կիրակոս Գանձակեցի, էջ 142): *Այսպէս, Մոնկոլները* «սկսան հարկապահանջութեամբ եւ երբեւեկութեամբ եւ զինուորութեամբ նեղել» *Հայ իշխանները, բայց ինչ որ պատմիչը* (Կիրակոս, 142), *առանձին կը շեշտէ՝* «բայց զոք ոչ սպանանէին», (Նոյն):

*Կամայականութիւնները եւ բռնութիւնները աւելի սաստկացան Չաղաղայի մահէն յետոյ։*

*Չաղաղայ Նոյին, բարեկամն էր Աւագին,* (Կիրակոս, 143), *որ օգտուած է անոր բարեացակամութենէն, բայց երբ այս Մոնկոլ զօրավարը սպանուեցաւ՝ Հայաստանի մէջ հարստահարութիւնները սաստկացան, մանաւանդ երբ Չարմաղան, որ մեծ խանէն կուսակալ-զօրավար նշանակուած էր Հայաստանի եւ Վրաստանի մէջ իր գրաւած շրջաններուն վրայ, հիւանդացաւ եւ համրացաւ, 1242ին։*

*Անիշխանութիւնը այնքան մեծ էր՝ որ մինչեւ իսկ Մոնկոլ ստորադաս զօրավարներէն ոմանք, ուզեցին սպաննել Աւագը, որ խուսափեցաւ մահուանէ՝ փախչելով Արեւմտեան Վրաստան, ուր ապաստանած էր նաեւ Ռուսուդան թագուհին։*

*Աւագ գրեց Մեծ Մոնկոլին, որ ինքը փախած է ակամայ ու հարկադրուած։ Չարմաղանի կինը Էլթինա Խաթուն, որ ամուսինին իշխանութիւնը ինքը կը վարէր անոր համրանալէն ետքը, սաստիկ զայրացաւ այս փախուստին պատճառ եղողներուն դէմ* (Կիրակոս, 144), *եւ ընծաներ ղրկելով Աւագին, հրամայեց խստիւ Հայաստանի Մոնկոլ բանակին, որ անոր չարիք չհասցնեն։*

*Ասկէ յետոյ, Աւագը որ մեծ պատիւով ընդունած էին Մոնկոլները, ղրկեցին յատուկ պատգամաւորութեան մը հետ Ռուսուդան թագուհիին։ Ան համոզեց թագուհին որ հնազանդի, իր Դաւիթ որդիին հետ, եւ ենթարկուի Մոնկոլ խաներուն* (Կիրակոս Գանձակեցի, 144) *եւ ինքն ալ Մոնկոլ բանակին օգնէ զինուորական օժանդակութեամբ։*

## ՄՈՆԿՈԼ ԲԱՐԵԱՑԱԿԱՄՈՒԹԻՒՆՆԵՐ

*Այսպէս, Աւագ թէեւ կը նպաստէր Մոնկոլ տիրապետութեան Վրաստանի վրայ տարածուելուն, սակայն Հայերու ենթարկուած չարիքներն ալ կը սահմանափակէր, նպաստաւոր պարագաներէն օգտուելով։*

*Իր յաջողութեան մեծապէս նպաստած է, ինչպէս տեսնուեցաւ, Չարմաղանի կինը* Էլթինա Խաթուն, որուն Հայերու բարեկամ եւ պաշտպան ըլլալուն իբրեւ ապացոյց կրնայ յիշուիլ՝ Աւագի նկատմամբ ցոյց տուած բարեացակամութենէն զատ, հարստահարութիւններու դարման խնդրելու համար իրեն դիմող Աղուանից Ներսէս կաթողիկոսին ըրած ընդունելութիւնը եւ ըրած մեծարանքները եւ տուած պարգեւները եւ յատուկ հրովարտակը* (Էլ Տամղա), *որպէսզի զայն չնեղեն,* (Կիր. 159—161):

*Հարստահարութիւններու մեղմացման նպաստած է նաեւ Գարագորումի մէջ Մեծ Խանին խորհրդական Սիմոն անուն Ասորին, որ* Ռաբան Աթա *(Վարդապետ—Հայր կը կոչուէր։ Ասիկա, լսելով քրիստոնէից անխնայ կոտորումը, դիմեց Խանին և հրաման ձեռք բերաւ, որպէսզի անմեղ մարդերու կոտորածը դադրի, երբ անոնք չեն կռուիր իրենց դէմ. և յաջողեցաւ մեծամասնաբար իսլամ քաղաքներու, ինչպէս Դավրէժի և Նախիջեւանի մէջ քրիստոնեաներուն դէմ ցոյց տրուած բռնութիւնները դադրեցնել տալ* (Կիր., 150—151): *Այսպէս, հաստատուեցաւ Հայաստանի մէջ կացութիւն մը, որ բոլորովին յուսահատական չէր, սակայն հաստատուն ալ չէր, քանի որ Հայաստան ամբողջովին Մոնկոլ տիրապետութեան չէր ենթարկուած և երկիրին համար տեւական խաղաղութիւն մը չէր ապահովուած։*

*Ասով հանդերձ, Աւագի իշխանութիւնը մեծ առաւելութիւն մըն էր, քանի որ ներքին ինքնավարութիւն մը կ'ապահովէր Հայերուն։*

## ՄՈՆԿՈԼ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԺԽՏԱԿԱՆ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

*Հակառակ ցոյց տրուած այս ժամանակաւոր և պարբերական բարեացակամութիւններուն, ինչպէս տեսնուեցաւ, Մոնկոլները իրենց ընչաքաղց և կեղեքիչ բնաւորութեամբ, երբեք չդադրեցան ժողովուրդը հարստահարելէ՝ տուրքի անունով։ Այնպէս որ, ժողովուրդը քամուեցաւ և մեծապէս տկարացաւ Վրա—հայկական պետութիւնը, որ Մոնկոլ տիրապետութենէն առաջ և մինչեւ Գէորգի Լաշա Թագաւորին մահը* (+ 1243), *երկու ազգերէն բաղկացած միացեալ և նկատի առնուելիք ույժ մըն էր։*

*Վրաց այս Թագաւորին մահէն վերջ, ներքին անխորհուրդ հակամարտութիւններով և գահուն շուրջ մղուած անիմաստ պայքարներով երկիրը իր միութիւնը կորոյս և երկուքի բաժնուեցաւ, ինչպէս տեսնուեցաւ երկու Դաւիթներու, Թիֆլիսի և Սվանէթի մէջ Թագաւորելով (տես. վերը* 154 *նաև Յ. Մանանդեան* Քննական Տեսութիւն, 219 *և Արշակ Ալպօյաճեան,* Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները, էջ 338—339):

*Լաշայի որդին Դաւիթ, անգամ մըն ալ յաջողեցաւ միացնել Վրացի և Հայ իշխանները, բայց ատիկա շատ կարճ տեւեց և երկիրը նորէն մատնուեցաւ խռովութեան։*



*Մոնկոլ տիրապետութեան առաջին քսանամեայ* (1236—1256) *շրջանին, Հայաստան և Վրաստան զերծ էին ասպատակութիւններէ և արտաքին վտանգներէ, և կը վայելէին ինքնավարութիւն և այլ առաւելութիւններ։*

*Այս շրջանին Հայաստան կը կառավարուէր Գարագորումէն ղրկուած զօրավար-կուսակալներով։ Սակայն հարկերու ծանրութեան պատճառով, կային դժգոհութիւններ, որոնք կ'արտայայտուէին հերթական ըմբոստութիւններով։ Անկէ յետոյ, յատկապէս Հայաստան սաստիկ կը տառապէր տիրողներուն չափազանց ագահութենէն և անսանձ կողոպուտներէն։ Մոնկոլ պաշտօնատարներ չէին գոհանար սահմանուած հարկերով և շարունակ կը պահանջէին ձիեր, զգեստներ, ուտեստեղէն, կտաւ, ոսկի և ուրիշ թանկարժէք իրեր* (Պատմ. Թաթարաց, 32):

*Այսպէս, ապօրէն հարկապահանջութիւնը հետզհետէ կը խստանար և կ'առնէր կազմակերպուած կեղեքումի մը ձեւը։*

*Ինչպէս բացատրուեցաւ, Գիւք Խանի առաջին գործերէն մէկը եղաւ* 1246*ին, ամէն կողմ հարկահաններ ղրկել։ Մերձաւոր Ասիա ղրկուած հարկահաններուն պետն էր Արղուն, որ տուրքի հաւաքման գործին ընդհանուր վարիչն էր, իսկ Հայաստան եկաւ Բուղա, որ անտանելի կերպով կեղեքեց Հայերը, մինչեւ Գիւք Խանի մահը* (1248)։

*Այս ծանր բռնութիւններուն չտոկալով, Հայ և Վրացի իշխանները, որոնք միացած էին Դաւիթ Թագաւորի գլխաւորութեամբ* 1249*ին, Թիֆլիս հաւաքուեցան իրենց զօրքերով և ուզեցին ապստամբիլ Մոնկոլ հարստահարիչներուն դէմ։*

*Այս դէպքը,* Պատմութիւն Թաթարաց *գիրքին մէջ կը ներկայացուի* (Եր. 1870, *էջ* 31—32), *այնպիսի ձեւով — գուցէ որոշ նպատակով մը — որ լուրջ ձեռնարկ ըլլալ չի թուիր։ Գրուած է որ* «մին յիշխանացն Վրաց համարեաց առաջի թագաւորին զայլ իշխանսն եւ ասաց զթիւ իշխանացն հազար: Եւ կայր իշխանացն՝ որ ունէր հազար ձիաւոր պատերազմող, կայր՝ որ ունէր հինգ հարիւր, եւ անկաւ բանս այս ի լուր ամենայն թագաւորութեանն, յորժամ էին անուշացեալ յուտել եւ յըմպելն: Եւ յորժամ հաւուեցան եւ համարարին զօրացն Հայոց եւ Վրաց՝ ասացին զիւրեանցն յաղթող լինել ի վերայ զօրաց Թաթարին եւ բաժանեցին զգլխաւորսն ի վերայ իւրեանց, եւ ԱՅՍ ՈՉ ԹԷ ՈՒՂՈՐԴ ԽՈՐՀԵՑԱՆ ԵՒ ԿԱՄ ԽՕՍԵՑԱՆ, ԱՅԼ ԱՌ ԿԱՏԱԿԱՆՍ, ԶԻ ՊԱՐԱՊ ԵՒ ԱՆՀՈԳ ԷԻՆ Ի ՑԱՒՈՑ, եւ այլ թշնամի ոչ գոյր յերկիրն արեւելից, բայց միայն Թաթարն, որ յամենայն ժամ գային եւ հարկաւ նեղացուցանէին զՎրաց եւ զՀայոց իշխանսն, յոմանց ուզէին ոսկի՝ կտաւ, յոմանց՝ բազայ, յոմանց աղեկ շուն եւ ձի, եւ այդպէս նեղացուցանէին զնոսա, զաւ իմալէն եւ ի թաղարէն եւ ի խալանէն (1) վասն այնորիկ խօսեցան զայդ, ԲԱՅՑ ՈՉ ՈՒՂՈՐԴ, ԱՅԼ ԸՆԴ ԽԱՂՍ ԵՒ ԸՆԴ ԿԱՏԱԿՍ»:

---

(1) Տուրքի տեսակներ են այս երեքը:

Այս «կատակ» կամ «խաղ» ապստամբութիւնը որեւէ արդիւնք և յաջողութիւն չունեցաւ (Նոյն էջ 32)։

Հաւանօրէն Վրաստանի թագաւորը իրապէս որեւէ մասնակցութիւն չունէր, այլ Մոնկոլները կ'ուզէին պատրուակ մը ստեղծել, որպէսզի Վրաստանի ուժին վերակազմութիւնը արգիլեն, վասնզի Վարդան (148) և Կիրակոս (178—180) չեն հաստատեր ապստամբութեան ծրագիրի մը գոյութիւնը, այլ կասկածի կը վերագրեն։

Վարդան կ'ըսէ թէ «քանզի կարծիս առին Բաչուն եւ այլ աւագանին ամբարտաւանութեան եւ ապստամբութեան թագաւորին եւ իշխանացն Վրաց» (հմմտ. Կիրակոս, 179–180)։ Դաւիթ թագաւորը և մեծամեծները ձերբակալեցին, «կապեցին եւ հասին վճիռ մահու, այլ ի խնամոց վերնոյն արձակեցին ի մահուանէ։ Սակայն անթիւ կոտորեցին եւ գերեցին գիւղս եւ ագարակս, գործեցին խայտառականս ի կանայս» (Նոյն)։ Այնպէս որ պատմիչը իրաւունք ունէր ըսելու թէ ՈՂԲը կրկնուեցաւ, ՈՂԸը, (1249) թուին։

Վրաց թագաւորը և ամբաստանուած Վրացի ու Հայ իշխանները ազատեցան մահէ և հարստահարութենէ, շնորհիւ Աւագի որ ծանր հիւանդ ըլլալով, պատգարակով գնաց բարեխօսել և փրկեց զանոնք (Վարդան, 148, Պատմ. Թաթարաց, 32—33, Վրաց Աղբիւրներ, Բ. 57)։ Աւագ, որ Աթաբէկ և Ամիրսպասալար էր Վրաց թագաւորութեան և հաստատուած էր Բջնի ամրոցը, Մոնկոլներու կատարեալ վստահութիւնը կը վայելէր։ Իր խօսքը և վկայութիւնը բաւական եղաւ Մոնկոլներուն, մեղմանալու և արձակելու Հայ իշխանները։

Բայց ինչպէս կ'երեւի՝ բոլորովին ալ երեւակայական չէր ապստամբութեան գործը, վասնզի Վրաստանի թագաւորին և իշխաններուն ձերբակալութենէն ետք, հակառակ որ անգլուխ մնացած էին, Թիֆլիսի և Լօռիի շրջակայքը զանազան տեղեր պատահեցան ըմբոստութիւններ, մասնակցութեամբ Հայ և Վրացի գիւղացիութեան (Հայ Ժողովուրդի Պատմութիւն, 211)։

Ըմբոստական այս ձախողած ձեռնարկը պատրուակ ծառայեց, որ մասնաւորապէս Սամցխէ և վրացական այլ գաւառներ ենթարկուին կողոպուտի, աւերի և կոտորածի։

Հետեւաբար, առաջին չարիքը, որ Մոնկոլ տիրապետութիւնը կը պատճառէր Հայ ժողովուրդին տուրքի պատրուակին տակ, անոր կեղեքումն էր և անոր տնտեսական կեանքի քայքայումը։

Մոնկոլ տիրապետութիւնը, իր կեղեքիչ տուրքերուն առընթեր՝ Հայաստանին կը բերէր ուրիշ չարիք մը եւս, ոչ նուազ ծանր և աղէտալի քան առաջինը։

Ինչպէս տեսնուեցաւ, Հայաստանի իշխանները իրենց զօրքերով հարկադրուած էին մասնակցելու Մոնկոլներու հեռաւոր և մշտական արշաւանքներուն։ Այս արշաւանքներուն հետեւանքով, Հայաստան կը կորսնցնէր չափունակ իր բնակչութեան թարմ և աշխատունակ մասը ու հետզհետէ ուժասպառ և արիւնաքամ կ'ըլլար։ Հետեւաբար, այս զինուորական պարտաւորիչ և հարկադրական օժանդակութիւնը, որ Հայերը մատուցանելու կը բռնադատուէին,



կատարեալ արհաւիրք մըն էր երկիրին համար, ինչպէս կ'ըսէ Ց. Մանանդեան։

Տեսանք արդէն՝ թէ Բաչու և Հուլաղու ինչպէս իրենց հետ ունէին դէպի Փոքր Ասիա, Միջագետք, Պաղտատ և այլուր ըրած արշաւանքներուն մէջ, Հայ իշխանները իրենց զօրքերով։

Այս մարդկային զոհաբերութիւնը՝ պահանջուած է ո՛չ միայն իրենց տիրապետութեան առաջին տարիներուն, այլ մինչև վերջը։ Ստեփանոս Օրբէլեան, իր հօրը՝ Տարսայիճ իշխանին վրայ խօսելով, վեր կ'առնէ անոր մեծ քաջութիւններ գործած ըլլալը և մասնակցութիւնը պատերազմներու, որոնք մղուած են «ի Խորասան, ի Շամ, ի Հոռոմս, ի Համս եւ ի Համայ ընդ Մըսրացւոյն եւ ի Դարբանդ» (Օրբէլեան, Պատմութիւն Բ., էջ 170)։

Միակ առաւելութիւնը որ ունէր Մոնկոլ տիրապետութիւնը, առաջին շրջանին՝ այն էր որ Արաբ և Սելջուկ տիրապետութեան շրջաններուն նման, կրօնական հալածանք չկար, վասնզի իրենք ալ տակաւին որեւէ կրօնի յարած չէին և ամէն կրօնք ազատօրէն կը պաշտուէր պետութեան մէջ մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը, բացի մի քանի իսլամութեան յարող վեհապետներու կարճատեւ շրջաններէն կամ քանի մը մոլեռանդ պաշտօնատարներու, ինչպէս Արղունի, անցողակի արարքներէն։

Սակայն Մոնկոլ տիրապետութեան Բ. շրջանին (1256—1344) սկիզբէն, շատ բան դէպի չարը փոխուեցաւ և ստեղծուեցաւ դժնդակ վիճակ մը Հայերուն համար։

## ԲԱԹՈՒԻ ՓՈԽԱՆՑՄԱՆ ՇՐՋԱՆԸ

Քիուք Խանի մահէն (1248) վերջ, Մոնկոլ կայսրութեան գահուն շուրջ վէճ սկսաւ։ Բաթու, իբրեւ Ջինկիզի ընտանիքին երիցագոյն անդամը, գերազդեցիկ դիրք մը ապահոված էր իրեն՝ «քանզի նա էր յետ Ղանին» (Կիրակոս, 158) «մօտաւոր ազգական, որ ամենից իշխէր, այլ եւ Ղանն առանց հրամանի նորա ոչ նստէր յաթոռն» (Կիրակոս, 177)։

Վարդան (149), զայն կը կոչէ «մեծ թագաւորն հիւսիսոյ, համազգի Ջանգզ Ղանին» և ուրիշ տեղ մը (150) «մեծ կողմնակալն հիւսիսի», և երրորդ տեղ մը (155) «կուսակալ հիւսիսոյ»։

Կիրակոս (105), եւս զայն կը ներկայացնէ «մեծ զօրավարն... որ ի կողմանս հիւսիսոյ»։

Կիրակոս կրկին կը շեշտէ թէ «սա զօրացաւ յոյժ եւ մեծացաւ քան զամենեսին, եւ հնազանդեաց զտիեզերս եւ ի հարկի կացոյց զաշխարհս ամենայն, այլ եւ իւր ազգայինքն՝ զնա քան զամենեսին մեծ ունէին, եւ որ թագաւորն էր ի նոցունց՝ զոր Ղան կոչէին, հրամանաւ նորա նստէր յաթոռն» (Կիրակոս, 205—207)։

Կիրակոս, Մանգոյի ընտրութենէն (1251) ետք, զայն տեղ մը «մեծ թագաւորահայրն եւ զօրապետն» կը կոչէ և ցոյց կու տայ թէ կայսրութեան գործերուն մէջ ան ձայն ունէր։ Օրինակի համար Բաթուն տեսնելէ վերջն է որ Հեթում Մանգոյի գնաց։ (Կիրակոս, 213—4)։

Իր մահէն (1256) վերջ, Մանգոյ Խան, անոր որդւոյն՝ Սարտախին «ետ

զիշխանութիւն հօրն իւրոյ իշխել ամենայն զօրացն, այլ եւ ամենայն հնազանդելոց իշխանութեան նորա, եւ երկրորդ իւր կոչել, եւ տալ հրաման տիրաբար եւ յուղարկեաց զնա ի տուն իւր» (Կիրակոս, 217—218)։

*Այսքան հեղինակաւոր անձ մըն էր Բաթու, և անոր առաջարկները կ'ընդունուէին առանց ընդդիմութեան։*

*Կիրակոս, Բաթուի այս գերազդեցիկ դիրքը կը հաստատէ, Վրաց թագաւորութեան վրայ խօսած ատեն՝ գրելով թէ,* «զայրին առ նա (*Ռուսուդան թագուհի*) դեսպանք երկուց կողմանց՝ ի զօրաց Թաթարին ի մեծ զօրավարէն՝ որ ի կողմանս հիւսիսոյ, որում անունն էր Բաթու, մօտեւոր ազգական Ղանին, որ ամենից իշխէր, այլ եւ Ղանն առանց հրամանին նորա ոչ նըստէր յաթոռն եւ ի միւս զօրավարէն՝ որ ի կողմանս Հայոց, որ Բաչուն կոչէր, գալ առ նոսա սիրով խաղաղութեամբ եւ իշխել տէրութեան իւրոյ նոցին հրամանաւն» (Կիրակոս, 177)։ *Ասիկա ցոյց կու տայ Բաթուի հեղինակութիւնը նաև Հայաստանի վրայ։*

*Նոյնպէս Բաթուի բարձր հեղինակութեան և ազդեցութեան պատճառով, Կիլիկիոյ Հեթում թագաւորը, իր եղբայրը՝ Սմբատ Սպարապետը ղրկեց անոր* 1248*ին, ինչպէս տեսնուեցաւ* (*վերը* 105)։

*Քիւքի մահէն վերջ, Բաթուի առաջարկուեցաւ Մեծ Խանին գահը, բայց ան մերժեց, և երեք տարի* (1248—1251) *տեւող իր միջանկեալ իշխանութենէն ետք՝ թելադրեց որ Մեծ Խան ընտրուի՝ Մանգոյ* (1251—1259 +), *որ որքան ատեն որ ողջ էր Բաթու* (+ 1256) *կը գործէր անոր խորհուրդներով։*

*Այս պատճառով, բոլոր խնդրարկուները միշտ նախ Բաթուի կը դիմէին և ինքն զանոնք լսելէ ետք, Մանգոյի կը ղրկէր։*

*Կիլիկիոյ Հեթում թագաւորը* (1226—1269), *անոնցմէ մէկն է, որ 1254-ին նախ կ'երթայ Բաթուի,* «որ ի կողմանս հիւսիսոյ զետեղ առեալ կայր անթիւ բազմութեամբքն որ ընդ նմա առ ափն մեծ եւ անհուն գետոյն, զոր Էթիլ (= *Վոլկա*) կոչեն, որ մտանէ ի ծովն Կասբից» (Կիրակոս, 211)։ *Բաթուի այցելելէ ետք, կը դիմէ Մոնկոլներու Մեծ Խանին՝ Մանկոյին, մինչեւ Փեքին՝ երթալով նկարագրուած ուղիով* (Կիրակոս, 221), *Սիպերիոյ անապատներէն անցնելով և Թուրքեստանի ճամբով ետ դառնալով, ութը ամսուան տաժանելի ուղեւորութենէ մը ետք* (*տես. վերը՝* 105—106)։

*Բայց ինչ որ ամէնէն նշանակելին է, Հեթում՝ Մանգոյ Խանէն ստացած շնորհները և արտօնութիւնները* (1), *առանց Բաթուի վաւերացման և հաստա-*

(1) Հեթումի ձեռք բերած հրամաններուն մասին, գրեթէ ոչինչ գիտենք: Միայն հաւանական կը թուի որ Հեթում իր «սեփական երկիրին» ապահովութեան հետ, հոգացած է «վերին աշխարհին արեւելից», այսինքն աշխատած է Հայաստանի մէջ գործադրուած պատուհասներ կամ չարիքներ, (որոնք **բարկութիւն** բառով կը բացատրէ պատմիչը), սահմանափակելու:

Ասով կարելի է մեկնել **Պատմ. Թաթարացի** հեղինակին, իր գիրքին մէջ (էջ 34—35), Արղունի հարկահաւաքութեան համար գործադրած հրեշային եւ զարհուրելի չարչարանքները նկարագրելէն յետոյ, անմիջապէս աւելցուցած սա շատ նշանակելի տողերը.



*տութեան, անհաստատ կը նկատէ և անկէ կ'առնէ հրամաններ, Մանգոյի արտօնութիւնները վաւերացնող։ Կիրակոս պատմիչ կ'ըսէ թէ Հեթում դարձին* «եկեալ ի տուն իշխանին Քրդին, ի գիւղն Վարդենիս, ուր թողեալ էր զաղխ իւր եւ զկարասի, եւ մնայր զալստեան Բարողի քահանայի զոր յուղարկեալ էր առ Բաթուն վերստին, զի ցուցցէ նմա զգիրսն եւ զհրաման Մանգու Ղանին, ԶԻ ԵՒ ՆԱ ԸՍՏ ՆՄԻՆ ՕՐԻՆԱԿԻ ԳՐԵՍՑԷ ՀՐԱՄԱՆՍ» (Կիրակոս, 216)։

*Այսպէս, Մանգոյ թէեւ միահեծան ինքնակալն էր Մոնկոլ կայսրութեան, սակայն առանց Բաթուի, ոչինչ կ'ընէր։*

*Հետեւաբար Մոնկոլ իշխանութեան առաջին տարիներուն եղած կարգադրութիւնները Բաթուի հաւանութեամբ պէտք է կատարուած ըլլան։*

*Բաթու, որ* 1236*ին հիւսիսի զօրավար կամ Ոսկէ Հորդանի հիմնադիրը եղած էր, ապահովաբար Հայաստանի նուաճումէն ետք* (1236—1240) *երբ հոն՝ հաստատուն կառավարութեան մը սկիզբը կը դրուէր, ունեցած է իր*

**«Իսկ քրիստոսասէր եւ բարեպաշտ թագաւորն Հեթում, իբրեւ լուաւ զայս ամենայն բարկութիւն որ գործեցաւ ի վերին աշխարհն արեւելից, ապա վասն սիրոյ քրիստոնէից եւս առաւել վասն իւր սեպհական երկրին, գնաց թագաւորն զանձիւք առ Մանկու Ղանն, եւ հոգաց զթողուլ յերկիրս իւր զայսպիսի բարկութիւնս: Եւ յորժամ հասաւ առ Ղանն, կամօքն Աստուծոյ մեծարեցաւ ի Ղանէն: Եւ արարեալ Ղանն մեծ պատիւ եւ հարկիս թագաւորին Հայոց, եւ զամենայն բանն նորա հոգաց ըստ կամաց նորա, եւ դարձոյց մեծ ուրախութեամբ յաշխարհն իւր»:**

Հոս բացորոշ է թէ որքան իր իշխանութեան, նոյնքան Հայաստանի հարստահարութիւններուն առաջքը առնելու համար կատարած է Հեթում իր երկար ուղեւորութիւնը:

Միայն թէ, որոշ չէ թէ ի՞նչ ձեռք բերած է, վասնզի անորոշ եւ տարտամ է **«զամենայն բանն նորա հոգաց ըստ կամաց նորա»** բացատրութիւնը, որ ոչ խնդրուածը եւ ոչ ալ շնորհուածը կը նշէ:

Միւս Հայ պատմիչներէն, Վարդան (148–9), միայն երկու տողով կը յիշէ Հեթումի ուղեւորութիւնը, ըսելով թէ ան **«չոգաւ ի Բաթու... եւ անտի առ Մանկու Ղանն եւ ըստ արժանւոյն մեծարեցաւ եւ դարձաւ յետ տարւոյ, խաղաղութեամբ յաթոռ իւր»:** Կիրակոս (213), կը խօսի հրովարտակի մը վրայ, որ Մանկոյ տուած է: Պատմիչը զայն կը կոչէ **«հրովարտակ նշանաւոր, զի մի՛ ոք իշխեսցէ նեղել զնոսա եւ զաշխարհս նորա, եւ ետ գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս»:** Այս տեղեկութիւնը քիչ մը աւելի կը լուսաբանէ մեզ: Հեթում իր երկիրը՝ Կիլիկիան ապահոված է եւ կրօնական պաշտամունքի ազատութիւն ստացած է բոլոր կայսրութեան մէջ հայ եկեղեցիին համար:

Վահրամ Րաբունի (220), կը պատմէ այցելութիւնը իբրեւ բարեկամութեան դիմում, զի կ'ըսէ.

**«Բանըս սիրոյ՝ եւ գիր առեալ**
**Ապա փութով յետս դարձեալ**
**Եւ զբազում գաւառս առեալ»:**

Հայ պատմիչները, ինչպէս կը տեսնուի շատ սակաւախօս են այս մասին: Միայն Հեթում պատմիչ, համանուն թագաւորին Օշին եղբօր որդին, (**Սիսուան**, **837** եւ **Ազգապատում, 1650**), **«արձագանգ եղած է» «տարօրինակ գրոյցներու»**, որոնք, ինչպէս Օրմանեան կ'ըսէ, չէ վարանած խառնել իր պատմութեան, իբր թէ **«ի բերնոյ իւրմէ լուած»**, վասնզի իր գործը գրած էր հեռաւոր եւրոպացիներուն համար, որոնց թերեւս հաճելի էին այդ առասպելները:

ձայնը, իր մեծ հեղինակութեամբ և իբրև տեղակալը Մեծ Խանին (1241—1246 և 1248—1251)։

Պէտք է ըսել՝ թէ Մանգոյի ատեն (1251—1259) արիւնահեղութիւնները դադրած են Հայաստանի մէջ և աւերուած վայրերը՝ նորոգուած։

Թէև որոշ փաստ մը չկայ, սակայն հաւանական է որ հարկերու դէմ կայսրութեան ամէն կողմերը տեսնուած դժգոհութիւնը դարմանելու համար, Մանգոյ և Բաթու համախորհուրդ որոշած էին թէ՛ Մեծ Խանութեան եկամուտները աւելցնելու և թէ՛ Արևելքի և թէ՛ Արևմուտքի մէջ հարկահաւաքութեան նոր կազմակերպութիւն մը ստեղծելու համար, տուրքերու բաշխում-

---

Պէտք չէ մոռնալ թէ Հեթում որ լատին կրօնաւոր դարձած էր, իր պատմութեան բնագիրը ֆրանսերէն գրել տուած էր Նիկողայոս Սալկոնի, որ Կղեմէս Ե. Պապին հրամանով, Պիկտաւիա քաղաքը, Հեթումի բերանացի թելադրածները գիրի առած է եւ ապա վերածած լատիներէնի 1307ին:

Այս գործը, «վասն մեծի փառացն Աստուծոյ», աղճատուած եւ եղծուած բնագիր մը ըլլալ կը թուի:

Հեթում պատմիչ, որուն ժամանակագրութեան հայերէն բնագիր օրինակը գտնուած է Հեթում Ա.ին, Մեծ Խանին երթալը չէ յիշած բնաւ, բայց իր գիրքին մէջ կը պատմէ թէ Հեթում Ա. իբր թէ Մանկոլ Խանին ներկայացուցած է եօթը խնդրանքներ, որոնք են. 1.— Մանկու ինքն եւ բոլոր թաթարները քրիստոնեայ ըլլան: 2 — Թաթարներու եւ Հայերու մէջ մշտնջենաւոր բարեկամութիւն հաստատուի: 3.— Հայերը կարենան բոլոր Թաթար երկիրներուն մէջ եկեղեցի շինել եւ կալուածներէ ու տուրքերէ ազատ ըլլան: 4.— Թաթարները, Երուսաղէմը Թուրքերէն առնեն եւ քրիստոնեաներուն տան: 5.— Պաղտատի խալիֆայութիւնը ջնջեն: 6.— Թաթարները, ի հարկին Հայ թագաւորութեան օգնեն: 7.— Որքան տեղ ու քաղաք որ Սելջուկները, Հայերէն առած են, Թաթարները ետ առնեն եւ Հայերուն տան. (**Հեթում Պատմիչ**, 43):

Պարզ ակնարկով մը կը տեսնուի թէ առանց իբր խնդրանք, նոյն իսկ իշխան մը — որպէս էր Հեթում — չէր կրնար զերիշխան վեհապետի մը ներկայացնել եւ կերպով մը անոր հրամայել:

Ըստ Հեթում պատմիչի, Մանկու Խան իրեն իշխաններուն հետ խորհրդակցելով, իբր թէ պատասխանած է որ. 1.— Ինքն Քրիստոնէութիւնը կ'ընդունի եւ իրեններն կը յորդորէ **առանց բռնութեան**: 2.— Մշտնջենաւոր բարեկամութիւն կը շնորհէ **վնասողական եւ պաշտպանողական**: 3.— Կը հաւանի որ քրիստոնեայ եկեղեցիներ եւ եկեղեցականներ եւ աշխարհականներ **մնան ի շնորհս ազատութեան**: 4.— Երուսաղէմի առումը եւ քրիստոնէից յանձնումը, կը յանձնարարէ իր եղբօրը՝ Հուլաղուի: 5.— Պաղտատի խալիֆայութիւնը ջնջելու պաշտօնը կը յանձնէ Պայջու զօրավարին: 6.— Ամէն ձեռնտուութիւն կը խոստանայ Հայերուն: 7.— Կը հրամայէ որ ինչ որ Հայերուն կը պատկանի, **անյապաղ տային նոցա անդրէն։**

Այս պատասխաններուն մէջ ալ, շատ պարզ եւ յստակ կերպով կը տեսնուին բաներ, որ արդէն Թաթարներու կողմէն պիտի կատարուէին: Այս կերպով քրիստոնէութեան հեղինակութիւնը երեւել կը նկրտի Հայ պատմիչը կամ անոր պատմութեան մէջ գրիչ խաղցնողը:

Օրմանեան, որ կաթոլիկ եկեղեցիին կամ պապական աթոռին գործերուն լաւատեղեակ է եւ շատ աղէկ կը հասկնայ անոնց խաղերը, իր կողմէն կ'աւելցնէ թէ «**Մանկուի քրիստոնեայ ըլլալը ժամանակին տարածուած զրոյց մըն էր, եւ լատիններուն մէջ ալ խօսուած է, մինչեւ իսկ պապական դիւանին մէջ այդ մասին յիշատակներ գտնուիլը կը խօսուի. (Կալանոս, 387), եւ կը պատմուի եւս Լուդովիկոս Թ. Գաղղիոյ թագաւորին կողմէ այդ առթիւ դեսպանութիւն յղուիլը գլխաւորութեամբ Գուլիէլմոս Ռուբրուկեցւոյ եւ Բարթողիմէոս Կրեմոնացւոյ, որոնք իրենց ապարդիւն ուղեւորութեան տեղեկագիրն ալ մատուցած են 1225ին», (Ազգապատում. 1651)։**



մը հիմնել նոր ընդհանուր մարդահամարի մը վրայ, որ պիտի կատարուէր բոլոր Մոնկոլ տիրապետութեան ենթարկուած երկիրներուն մէջ։

1252ին՝ Չինաստանի, 1253ին՝ Պարսկաստանի, 1254ին՝ Հայաստանի և Վրաստանի մէջ և յաջորդ տարիներուն, ուրիշ տեղեր, մարդահամար կը կատարուի։

Այս մարդահամարէն ետք, Հայաստան կու գայ կրկին, Արղունը (1) որ Մանգոյ Խան դարձեալ Հայաստան կը ղրկէր անշուշտ Բաթուի հաւանութեամբ, վասնզի Վարդան պատմիչ կը գրէ թէ 1254ին «առաքեաց Մանգու Ղանն եւ մեծ զօրավարն Բաթու, զայր մի ոստիկան, Արղուն (2) անուն, որ Գիւուգ Ղանէն առեալ էր հրաման վերակացութեան հարկացն արքունի ի հնազանդեալ աշխարհացն եւ զմիւս եւս այր գլխաւորաց ի տանէ Բաթուին, որում անուն էր Թուրա Աղա, հանդերձ այլօք բազմօք՝ որ ընդ նոսա, աշխարհագիր առնել յամենայն ազգս՝ որ ընդ ձեռամբ նոցա էին հնազանդեալ» (Կիր., 209) և «դըներ հարկս ըստ գլխոց արանց. բաց 'ի կանանց եւ ի բուն ծերոց եւ ի մատաղ տղայոց» (Վարդան, 148):

Արղուն իր պաշտօնը խստութեամբ գործադրեց և մեծապէս կեղեքեց Հայերը, անշուշտ մանաւորապէս Բաթուի մահէն (+ 1256) վերջ, երբ արդէն Հայաստան ենթարկուած էր Իլխանեան իշխանութեան և Հայաստանի համար կը բացուէր Մոնկոլ տիրապետութեան դառնագոյն Բ. շրջանը, որ 1256-էն մինչև 1344, Իլխանեաններու վերջաւորութիւնը, պիտի տևէր։

## ՄՈՆԿՈԼ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Բ. ՇՐՋԱՆԻՆ (1256—1344) ՆԿԱՐԱԳԻՐԸ

Մոնկոլ միահեծան կայսրութիւնը, ինչպէս տեսնուեցաւ, ԺԳ. դարուն կէսին, բաժնուած էր աւատական կարգերով ճորտ իշխանութիւններու կամ ենթաիշխանութիւններու, որոնք բաժնուեցան հետզհետէ կայսրութեան միութենէն (տես. վերը 98—99, 101—103 և 117—119)։ Ասոնցմէ մէկն էր Իլխանեան պետութիւնը, որ 1256ին անկախ իշխանութիւն մը դարձաւ (տես. վերը, 119)։

Այս պետութեան մաս կը կազմէր Հայաստան, որ ուժասպառ կ'ըլլար շարունակ, 1254ի մարդահամարէն սկսող հարկահանութիւններու, անողոք խստութիւններու հետեւանօք։

Յանձնարարուած էր Արղունի, Թուրա Աղային և ասոնց օգնականներուն և իրենց հրամանին տակ դրուած զօրքերուն, կազմել Հայաստանի, Վրաստանի և Աղուանից երկիրին և Պարսկաստանի մէջ աշխատող այրերուն ցուցակը, որպէսզի անոր համաձայն հարկ պահանջուէր (3)։

---

(1) Այն որ 1246ին Քիւուք Խանն անգամ մը ղրկած էր Բուղա հարկահանին հետ:

(2) Արղոն, ըստ Վարդանի (148):

(3) **Պատմութիւն Թաթարաց** (34—35) կ'ըսէ թէ այր մարդիկը հաշուած են 15էն մինչեւ 60 տարեկաններ, իսկ Կիրակոս, 10 տարեկանէն վեր եղողներ: Վարդան (148) հարկատուութենէ զերծ կը ներկայացնէ կիները զատ տղաքները եւ ծերերը, ինչպէս նաեւ եկեղեցականները.

Ըստ Յ. Մանանդեանի (Քննական Տեսութիւն Գ., 250—1), 1254ի մարդահամարին նպատակը միայն դրամական հարկերը աւելցնել չէր, այլ նաև զօրակոչի ենթարկուելիք անձերուն թիւը, վասնզի Անանուն ժամանակագիրը կ՚ըսէ թէ, Արղուն մարդահամար պիտի ընէր, և պիտի որոշէր քանակը հեծեալ և հետեւակ զինուորներուն, որոնք կրնային պատերազմի երթալ Թաթար զօրավարներուն հրամանին ներքեւ։

Մոնկոլ իշխանութեան քմահաճոյքին ենթարկուած տեղացիներէ բաղկացեալ այս զօրագունդերուն շնորհիւ, Մոնկոլները աւելի գործօն դեր մը կատարել սկսան երկիրին վարչութեան մէջ և միջամտեցին ներքին գործերու։ Այսպէս, տեղական իշխանութիւնները, և անոնց ամէնէն զօրաւորը, Վրաց թագաւորութիւնը տկարացաւ, իր զինուորական ուժերը հեռաւոր վայրերու մէջ գործածուելուն համար (տես. վերը 150—3)։

Հարկահանութիւնը յաջողութեամբ իրագործելու համար, 1254էն ետք մոնկոլական մասնաւոր զօրագունդեր կազմուեցան Հայաստանի և Վրաստանի համար, որոնք պաշտօն ունէին հսկելու անդորրութեան և իշխաններու վրայ, ինչպէս նաև հարկերու կանոնաւոր և ժամանակին հաւաքումին և գանձարան ղրկուելուն։

Այս զօրամասերը կը գտնուէին հրամանին տակ բարձր Թաթար պաշտօնատարներու, որոնք կը կոչուէին Պասղաղներ։

1254ին, Հայաստանի մէջ նոյն պաշտօնը ունէր Արղուն, որուն Կիրակոս կու տայ Ոստիկան տիտղոսը։ Օրբէլեան անոր իշխանութիւնը աւելի ընդարձակ ցոյց կու տայ, Արղունը «վազիր եւ պաստաղ կարգեալ ի Մեծ Ղանէն», ցոյց տալով «ի վերայ ամենայն աշխարհին, այսինքն հրամանատար ամենեցուն եւ իշխեցող արքունի հարկացն եւ մեծ դիւանին»:

1254ի մարդահամարէն վերջ, Հայաստանի մէջ Մոնկոլ տիրապետութիւնը կը կազմակերպուէր և հաստատուն կառավարութեան սկիզբը կը դրուէր ի միաս տեղական ինքնավարութիւններու, վասնզի պասղաղներու ենթարկուած էին քաղաքներու վերակացուները, որոնք Շահնաս կը կոչուէին (Ուղեգրութիւններ, Ա. 423)։ Նոյնպէս հիմնուեցան կառավարական գրասենեակներ կամ «Դիւան»ներ, ուր կը պահուէին հարկատուներու տոմարները կամ Տաւթարները (Օրբէլեան Բ. հտ. 159, 173 և այլ), Դիւանին քարտուղարները կ՚անուանէին բիթեքչի, (Պատմութիւն Թաթարաց, 45)։ Կը յիշուին նաև ճեթոբար, (ըստ Մանանդեանի՝ թերեւս նոտար և ըստ Աճառեանի՝ բերդապահ), Տամղաճի, (հարկահաւաք կամ բաժբար) անունով պաշտօնեաներ։

Այս կերպով Իլխանեան տան իշխանութեան առեն, Հայաստանի մէջ տեղական հողատէր-ճորտերու իշխանութեան տեղ, իսկական Մոնկոլ վարչութիւն մը կ՚ստեղծուէր մանաւանդ Հուլաղուէն վերջ։

ԻԼԽԱՆԵԱՆՆԵՐՈՒ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

Սակայն և այնպէս, անուրանալի է որ Մոնկոլները չեն կրցած ամուր և բարեկարգ կառավարութիւն մը հաստատել։ Անոնք անկարող էին կատարեալ ապահովութիւն հաստատելու, վասնզի աւազակաբարոյ, վրանաբնակ և վաչ-



կատուն ժողովուրդներու նկարագիրը ունէին, և ամէնէն առաջ պետական պաշտօնեաներն էին անկարգութեան տարրը կառավարութեան մէջ։

Անոնք չեն կրցած հաստատուն կարգերով կառավարել իրենց նուաճած երկիրները և իրենց պաշտօնեաները սանձարձակ և անպատիժ կերպով կեղեքած և թալանած են հպատակ ժողովուրդները և աւերածութեան մատնած են անխտիր, իրենց տիրած բոլոր երկիրները, և զանոնք անշքացուցած և աղքատացուցած են հակառակ ոմանց սխալ կարծիքին, թէ անոնք տնտեսական բարօրութեան նպաստող վարչաձեւ մը ստեղծած են (հմմ. Յ. Մանանդեան, Քնն. Տեսութիւն, 271—272)։ Միջազգային համբաւով նշանաւոր տեսաբան, տնտեսագէտի մը կարծիքով, Մոնկոլները որոնք աւելի քան երկու դար Ռուսաստանի տիրապետած են, ո՛չ միայն ճնշած են տիրապետեալները, այլ և պղծած և հիւծած են ժողովուրդին ոգին։ Անշուշտ անոնք Հայաստանի մէջ տարբեր նկարագիր չէին կրնար ցոյց տալ, քանի որ իրենց տիրապետութիւնը հիմնուած էր կարգաւորեալ ահաբեկումի վարչաձեւին վրայ և կը գործադրուէին շարունակ կողոպուտներ և զանգուածային ջարդեր։

Գործելու այս եղանակը, Հայաստանի և Վրաստանի մէջ, շատ ծանր ազդած էր ժողովուրդին վրայ, որ չէ հանդուրժած և միշտ հակամէտ եղած է ըմբոստանալու, հակառակ իր իշխան-վարիչներուն համակերպութեան յորդորներուն։ Մոնկոլները, իրենց առաջին արշաւանքներուն շրջանին երբ Հայաստան մտան, ուրէ՛ պատրուակով հոն խուժելով, ամբողջ երկիրը կողոպտեցին ու առեւտրական ու ճարտարարուեստական կեդրոնները քարուքանդ ըրին և բնակչութեան մէկ կարեւոր մասը ջարդեցին կամ բռնագաղթի ենթարկեցին։

Իսկ երբ իրենց տիրապետութիւնը հիմնաւորեցին և հաստատուեցան երկիրին մէջ, ժողովուրդին վարի խաւերուն, այսինքն գիւղացիներու և քաղաքացիներու վիճակը անտանելի դարձուցին հարստահարութիւններով և ծանր տուրքերով ճզմելով։

Եթէ Մոնկոլ իշխանաւորներ թոյլ կու տային Հայերուն, կրկին շէնցնել իրենց աւերուած երկիրը՝ ո՛չ թէ ժողովուրդին բարիքին համար էր, այլ կ՚ուզէին որ անիկա կարենար տոկալ իրենց ծանր հարկապահանջութեամբ կատարելիք կողոպուտին։

Հայաստան, որ նախ քան Մոնկոլ տիրապետութիւնը կը գտնուէր տնտեսական զարգացման բարձր աստիճանին վրայ, կորսյս իր առաջնակարգ դիրքը, և ո՛չ միայն յետադիմեց, այլ զգալապէս իր բնակչութենէն դատարկացաւ։ (Յ. Մանանդեան, Քնն. Տես. Գ., 373—4)։

ՀԱՐԿԵՐԸ

Այս մեծ աղէտին գլխաւոր պատճառը Մոնկոլ հարկերն էին, ինչպէս կը հաստատեն ժամանակակից և ականատես Հայ պատմիչները՝ (Կիրակոս, (210, 217), Պատմ. Թաթարաց, 34—35 և այլն)։ Ստեփանոս Օրբէլեան, որ իր տոհմին նկատմամբ Մոնկոլներու ցոյց տուած բարեացակամ վերաբերումին համար, Մոնկոլներու նկատմամբ նպաստաւոր տրամադրութիւններ ունի, չի կըր-

նար անոնց կողոպտիչ և հարստահարող նկարագիրը ծածկել։ Հակառակ անոր որ նախ կը գովէ, ներկայացնելով զանոնք «Անաստուածք եւ անօրէնք, բայց բնութեամբ օրինաց զարդարեալք, ատեցողք աղտեղի գիջութեանց եւ ամենայն վնասակար գործոց, արդարամիտք առ միմեանս, միամիտք եւ հնազանդք առաջնորդի իւրեանց, իրաւարարք եւ իրաւադատք.» անմիջապէս այս գովասանական տողերուն քով կ'աւելցնէ սա ժխտական նկարագիրը. «իսկ բարուք աղքատք եւ ընչաքաղցք, նեղիչք եւ կեղեքիչք մարդկան» (Ստեփ. Օրբէլեան Բ. հտ., էջ 146—7)։

Ֆրիկ, որ ժամանակակից ըլլալ կը թուի, իր բանաստեղծութիւններուն մէջ շատ տեղեր Մոնկոլ ընչաքաղցութեան և կողոպտիչ նկարագիրին մասին ակնարկութիւններ ունի։

Մոնկոլները, մինչև 1254, Արղունի աշխարհագիրը կամ մարդահամարը, այսինքն իրենց տիրապետութեան առաջին քսանամեակին վախճանը, Հայաստանի բնակչութենէն կ'առնէին մալ (1), թաղար (2) և ղփչուր (3) կոչուած հարկերը (Պատմ. Թաթարաց, էջ 17)։

Մոնկոլները կ'առնէին նաև գլխահարկ, ինչպէս Պատմ. Թաթարաց (էջ 34), կը հաստատէ, գրելով թէ «առնուին այնուհետեւ զհարկն ի գլխաքուոյ մարդկանն. քանի որ գրեալ լինէր ի տաւթարն, եւ այսպէս այլ աւերեցին զաշխարհն Արեւելից, զի ի մի փոքր գեղն յիսուն մարդ համարէին, կամ երեսուն: Ի տասն եւ հինգ տարեկանէն ի վերն զամէնն համարէին, մինչ ի վաթսուն տարեկանն, եւ յամէն գլխոյ որ համարէին վաթսուն սպատակ առնուին»:

Այս հարկը շատ ծանր էր, վասնզի 60 սպիտակը բաւական կարեւոր գումար մըն էր։ (Յ. Մանանդեան, նոյն, 276)։ Արհեստաւորներէն և վաճառականներէն աւելի ծանր տուրքեր կը պահանջէին (Կիրակոս, 210, և Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ., 248—9)։

Իսկ այն պարտականութիւնը որ ժողովուրդին վրայ դրուած էր, բոլոր երթեւեկող պաշտօնատարները հոգալու, անոնց ձիեր, սայլեր, ուղեցոյցներ և սննդամթերք տալու համար (տես. վերը, 154), եամ կը կոչուէր. (Նոյն 279)։

Ասոնցմէ զատ կային բազմաթիւ զանազան տեսակի տուրքեր, ինչպէս Տամղա (= բաժ) և այլն, որոնց թիւը մինչև 15ի կը բարձրանար (Ալիշան, Շիրակ, 91)։

Այսպէս ծանր տուրքերու տակ կը հեծէր ժողովուրդը, որուն մեծագոյն դժբախտութիւնն այն էր, որ թէ՛ հարկը ծանր էր և թէ՛ հարկահաւաքները զեղծարար և բռնաւոր։

Պէտք է խոստովանիլ թէ Իլխանեան հարստութեան սկիզբները, Հուլա-

(1) Հաւանօրէն համապատասխան **խարաճի**, հողային տուրք մըն էր, որ հնչուն դրամով կը հատուցուէր. (Յ. Մանանդեան, **ՔՆՆ. Տես., 275**)։

(2) Տասանորդին պէս բերքէն առնուած տուրք մըն էր կամ **«եղին թաղար»** եւ **«կալաթաղար»**։ Ըստ Յ. Մանանդեանի, կը կարծուի զօրքին համար պահանջուած պարենահարկն էր եւ ծանր հարկ մըն էր։

(3) Ղփչուր, անասնահարկ կամ արօտատեղիի հարկն էր։ Անասուններէն քանէն մէկը կ'առնէին։



ղուի և իր որդւոյն Ապաղա խաններու ատեն, բաւական տարբեր էր կացութիւնը։ Հայաստանի հարկերը խիստ ծանր էին, սակայն երկիրին ներքին վիճակը համեմատաբար տանելի էր, որովհետև այն հզօր իշխանները, խստութեամբ կը վարուէին աւազակութեամբ զբաղող Մոնկոլ խումբերու հետ և զանոնք կ'արգիլէին անսանձ բռնութիւններէ և կողոպուտներէ։

Այսպէս, երբ Հայ և Վրացի իշխաններ Ապաղայի բողոքեցին իր իսկ եղբօրը՝ Թագուտարի դէմ, ան նկատի առաւ։ Պատմութիւն Թաթարացի հեղինակը կը պատմէ թէ Թագուտար «յոյժ շատացաւ հեծելով եւ զանձով ոսկւով եւ ամենայն ընչիւք, զի երեք հարիւր ուղտ եւ հարիւր յիսուն սայլ զգանձն եւ զմալն տանէին, թող զչոկս ձիոցն եւ զհօտիցն որոց թիւ ոչ գոյր, եւ էր թիւ հեծելոցն քառասուն հազար, անուանիք եւ յոյժ պատերազմողք եւ աներկիւղք յամենայն տեղիս. զի զկարեւան երկրին կոտորէին աւազակութեամբ պահելով ի գիշերի զճանապարհս, եւ զամենայն ինչսն առնուին զկարեւանին որ գնային ի քաղաքէ ի քաղաք. Նոյնպէս եւ զփոքր գեղօրէս ի գիշերի ծեծէին եւ զամենայն ինչսն եւ զչորքոտանիսն տանէին եւ զմարդիկն նետով անողորմ խոցէին, նոյնպէս եւ երթային ի վանէրն եւ զժամարար երէցնին գլխիվայր կախէին եւ աղ եւ ունչ խառնեալ ածէին ընդ քիթսն ժամարարացն, ասելով, բերէք գինի ծովին չափ եւ միս սարին չափ: Այլ եւ արարին ի բազում տեղիս, զի զշանն ագին բռնել տային աբեղայցն բերանով ի վանէրն՝ վասն գինի չունելոյ ողորմելեացն. զի այս էր երդումն նոցա, կա՛մ տալ գինի ըմպելոյ եւ տանելոյ որչափ ուզէին, եւ կա՛մ այսպէս ըմբռնել զշանն ագին որպէս գրեցաք» (Պատմ. Թաթարաց, 65—66):

Եւ երևակայել թէ աւազակային, անոպայ, վայրագ և ոճրագործային այս արարքներուն հեղինակը և վարիչը, պետութեան վեհապետին եղբայրն էր։

Ասով հանդերձ, ինչպէս պատմագիրը կը վկայէ, թէ՛ Հայ և թէ՛ Վրացի իշխանները կը համարձակէին բողոքելու և ներկայանալու Ապաղա Խանին։ Անոնք «ընկեցին զուստերս իւրեանց առաջին Ղանին, եւ ասացին կա՛մ զԹագուտարն տալ ի ձեռս նոցա, իւր հեծելովն, կա՛մ զիւրեանցն կոտորել առաջի իւր, եւ ոչ տեսանել զայնպիսի նախատինսն որ առնէին առ եկեղեցիսն իւրեանց եւ առ եկեղեցականսն, նոյնպէս եւ այլ Տաթար զօրքն զանգատեցան, ասել թէ ի դուրս զմեզ այլ կու ծեծեն զօրք Թագուտարին եւ զմեր ձիանն առնուն: Նոյնպէս եւ Ղանն զանգատեցաւ առաջի Հայոց եւ Վրաց զօրացն, այլ եւ իւր Տաթար գլխաւորացն եւ ասէ. «Թագուտարն մեծացաւ եւ հարստացաւ, եւ զմեզ չէ ի մռել, եւ զմեր ասախն չէ ի յառնել եւ կամի աւերել զերկիրն իւր, անասախ կալովն եւ իւր հեծելոյն» (Պատմ. Թաթարաց, 66)։

Ապաղա Խան հրամայեց 100,000 Թաթար, Հայ ու Վրացի զօրքերուն, իրենց բոլոր ուժովը յարձակիլ Թագուտարին վրայ և անխնայ կոտորել անոր զօրքը և զինքը ձերբակալելով տանիլ իրեն։ Հայ և Վրացի զօրքերը ասիկա իմանալով, շատ ուրախացան որ իրենց երկիրը պիտի ազատի այդ հրէշէն։ Թագուտար ապստամբեցաւ (տես. վերը, 122) և փախաւ Ափխազիայի կողմերը։

Թաթար զօրքերը, Զարմաղանի որդի՝ Սիրամոնի հրամանատարութեամբ

*յարձակեցան Թագուտարին զօրքերուն վրայ և անխնայ կոտորեցին հեծեալները, և* «առին ամենայն զանձս նոցա, եւ զինքն եօթն հարիւր մարդով» *և տարին Խանին* (Պատմ. Թաթարաց, 67), *ձերբակալուած։* 1269*ին Թագուտար բանտարկուեցաւ Հերի և Զարեւանդի մէջ (Ց. Մանանդեան,* ՔՆՆ. Տես. Գ., 296)։

*Ուրեմն, Ապաղայիատեն* (1265—1282), *տակաւին արդարութիւն ընելու և զրկանքներու դէմ մաքառելու տրամադրութիւն կար։*

*Թերեւս նոյն արդարութեան իղձով — թէև կասկածելի է —* 1273*ին, Ապաղայի հրամանով, Արղուն դարձեալ մարդահամար մը կատարեց Հայաստանի և Վրաստանի մէջ (Ստեփ. Օրբէլեան,* Ժամանակագրութիւն, 27 *և* Մխիթար Այրիվանեցի, 68):

## ԿԵՂԵՔԻՉ ԵՒ ԱՊԱԿԱՆՈՒԱԾ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

*Բայց ինչ օգուտ որ ապականուած էր կառավարական վարչութիւնը և կարելի է խորհիլ թէ ի՛նչ աստիճան, որ Թագուտար, այդ գարհուրելի աւազակը, կը յաջորդէր իր եղբօրը՝ Ապաղայի, ոտնակոխ ընելով օրինաւոր ժառանգին՝ Արղունի իրաւունքը և երկու տարի* (1282—1284) *գահուն վրայ կը մնար (տես. վերը՝* 123) *և վրէժ կը լուծէր իր հակառակորդներէն։*

*Իլխանեան վեհապետներուն մէջ Ղազան Մահմուտ Խան* (1295—1304), *իբրեւ վեհապետ, ինչպէս տեսնուեցաւ (վերը՝* 127), *աշխատած է կառավարել իմաստութեամբ և արդարութեամբ և կանոնաւորել տուրքերու գանձումը, բարեկարգել դատարանները և քաջալերել առեւտուրը և արդիւնաբերութիւնը։ Այս մտադրութեամբ Ղազան Խան թեթեւցուցած է տուրքերը (Ց. Մանանդեան,* ՔՆՆ. Տեսութիւն Գ., 281), *որոնց գանձման եղանակը, իր վէզիրը Ռաշիտ Էտտին կը ներկայացնէ այնպիսի ձեւով մը, որ արդարեւ դառն էր։ Ան կը պատմէ թէ յաճախ կը պատահէր որ քաղաքի մը կամ գիւղի մը բնակիչները իրենց տուներուն դուռները կը փակէին քարերով և իրենք կը մտնէին կ'ելլէին տանիքէն։ Երբ հարկահաւաքները շրջիլ սկսէին՝ անոնք կ'ապաւինէին տեղացիներէն որեւէ անզգամի մը օգնութեան, որ անոնց կը ծառայէր որպէս ուղեցոյց։ Անմիջապէս որ բնակիչները հեռուէն հարկահաւաքը տեսնէին, ապաստան կը փնտռէին և տանիքէն վար կը ցատկէին և կը կոտրէին երբեմն իրենց ոտքերը։ Եթէ տուրք հաւաքողները չյաջողէին փախչողները ձերբակալել՝ անոնք կը բռնէին անոնց կիները, կը քշէին զանոնք ոչխարի հօտին պէս թաղէ թաղ և կը տանէին իրենց պետին մօտ։ Այնտեղ կապելով զանոնք կը կախէին իրենց ոտքերէն և այնպէս կը ծեծէին որ օդը կը թնդար անոնց լացուկոծէն.* (Ց. Մանանդեան, Նոյն, 285)։

*Հայ պատմիչները կը հաստատեն և կը նկարագրեն տուրքերու գանձման համար գործադրուած վայրագութիւնները։*

Պատմութիւն Թաթարաց (*էջ* 21), *կը հաստատէ թէ* «մեծ եւ անհարկ իշխանքն Վրաց եւ Աղուանից, եղեն ընդ հարկաւ նոցա՝ որ կամաւ եւ որ ակամայ, եւ տային անխափան զամենայն սահմանեալ հարկսն»: *Նոյն պատմիչը (էջ* 35), *անոնց անգթութիւնը կը պատմէ հետեւեալ սոսկալի պատկե-*



*կով.* «թէ ոք փախչէր կամ թաքչէր, յորժամ ըմբռնէին, կապէին անողորմ ձեռս ի յետս եւ դալար գաւազանօք ծեծէին, մինչ զի մարմինն ամենայն տրորէր եւ յարենէն շաղախէր եւ ապա անողորմաբար զկատաղի շներն իւրեանց, զոր սովորեցուցեալ էին ուտել միս մարդոյ, 'ի ներս թողուին եւ ուտել տային զտառապեալ եւ զչունեւոր քրիստոնեայսն»,

*Իսկ Կիրակոս Գանձակեցի կը պատմէ թէ ինչպէս աշխարհագիրը ըրաւ Արղուն, որպէսզի կարենայ* «յամենեցունց պահանջել խստագոյն հարկս՝ աւելի քան զկար մարդոյն, եւ սկսան չքաւորել, եւ նեղէին անհնարին կտտանօք եւ չարչարանօք եւ գելոցիւք, եւ որ թաքչէր՝ ըմբռնեալ սպանանէին եւ որ ոչ կարէր հատուցանել զհարկն՝ զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն, քանզի պարսիկ տաճկահաւատ (*իմա՝ մահմետական*) սպասաւորօք շրջէին...: Այսու ոչ բաւականացան, այլ եւ զամենայն արուեստագէտս եթէ ի քաղաքս, եթէ ի գիւղս՝ զամենայն ի հարկի կացուցին, այլ եւ զծովակս եւ զլիճս ձկնորսաց եւ զերկաթահանս եւ զդարբինս եւ զշպարարս (1) եւ զի պիտոյ է մանաւանդ ասել, զամենայն դուռն շահից հատին ի մարդկանէ, եւ ինքեանք միայն շահէին, եւ զամենայն աղահանս առին որ ի Կողբ, եւ յոր այլ կողմանս կողմանս: Նաեւ ի վաճառականացն բազում ինչ ուսեալ եւ շահեալ, կուտեցին բազում գանձս ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատուականաց, եւ այսպէս զամենեսեան աղացուցեալ, վայիւ եւ աշխարով լցեալ զաշխարհս, թողին չար ոստիկանս ի վերայ աշխարհացս, զնոյն պահանջել յամենայն ամի նովին համարով եւ գրով» (Կիրակոս, 210)։

*Ինչ որ ամէնէն ցաւալին էր, ինչպէս ամէն ժամանակներու մէջ, նոյնպէս Մոնկոլ տիրապետութեան շրջանին, տիրապետողներուն հաճելի ըլլալու համար, անոնց ստրուկ գործակալներ պակաս չեն եղած, ինչպէս Կիրակոս Գանձակեցի* (210), *անշուշտ դառնութեամբ, կ'արձանագրէ իր պատմութեան մէջ, գրելով թէ* «այլ եւ իշխանք տեարք գաւառաց՝ նոցուն (*Մոնկոլներուն*) գործակից լեալ ի նեղելն եւ ի պահանջելն, վասն իւրեանց շահելոյ»:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ

*Ռաշիտ Էտտինի վկայութեամբ, զեղծումներու պատճառով, տուրքերու հաւաքման ատեն, ոչ միայն կը սնանկանային քաղաքացի և գիւղացի աշխատաւորները, այլ նաև յաճախ դատարկ կը մնար Մոնկոլ պետական գանձը։*

*Երբ Ղազան Խան* (1295—1304), *ուզեց բարեփոխել պետական վարչութիւնը և ժողովուրդին հարկ տալու կարողութիւնը բարձրացնել, տեսնուեցաւ որ գիւղացիներէն շատերը այլեւս անկարող էին մշակել իրենց հողերը, որովհետեւ ոչ լծկան անասուն ունէին և ոչ սերմնցու։*

*Այս պայմաններուն մէջ՝ ի՞նչպէս և ինչո՞վ տուրք պիտի տային։*

*Այնպէս որ Ռաշիտ Էտտին, որ Ղազան Խանի վէզիրն էր և մօտէն ծանօթ, Մոնկոլ կառավարութեան հաստատած կարգերուն, կը պատմէ թէ Մոն-*

(1) Ոմանք պաղլեղի բառերը կը կարծեն այս բառը, վասնզի հայերէն շիպ = թրքերէն շապ կ'ըսեն պաղլեղին, իսկ այլք դեղագործ կամ տպարիչ կը հասկնան այս բառով:

կոլ տեղական իշխանութիւնները՝ բասղաղները, շահնաները և անոնց ստորադաս պաշտօնեաները մեծ մասամբ կը գործակցէին հարկահաններուն և կապալառուներուն հետ, որով հարկատու գիւղացիները և արհեստաւորները խիստ կը հարստահարուէին ու յաճախ ստիպուած կ'ըլլային իրենց տարեկան հարկը վճարել քանի մը անգամ:

Ռաշիտ Էտտին շատ իրաւամբ գրած է թէ, կառավարական այս գիշատիչ դրութիւնը ժողովուրդը հասուցած էր կատարեալ սնանկացման և անկարող ըլլալով խաղաղօրէն աշխատիլ և ապրիլ, կը լքէր իր հողը և գործը և կը փախէր (Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես., Գ. 284):

Նոյն վիճակը կը հաստատէ Ֆրիկ ևս՝ իր բանաստեղծութիւններուն մէջ ողբալով (տես. Նոյն): Հետևաբար Մոնկոլներու կեղեքումները, իրենց համար ալ աննպաստ հետևանքներ կ'ունենար, և տուրքերու հասոյթները հետզհետէ կը պակսէին:

ԺԴ. դարուն առաջին կէսին ապրող Համտուլլահ Ղազուինի Պարսիկ պատմագիրը և Մոնկոլ բարձր պաշտօնատարը, կը հաւաստէ թէ նոյն դարուն 40ական թուականներուն, Մոնկոլ պետութիւնը Պարսկաստանէն, Հայաստանէն և Վրաստանէն կը գանձէր չափազանց դոյզն քանակութեամբ տուրք: Իր ցոյց տուած հաշիւներուն համաձայն, ԺԴ. դարուն գանձուած հարկը միայն 10—20 առ հարիւրն էր Սելջուկեան շրջանին՝ ԺԱ.—ԺԲ. դարերուն գանձուածին (տես. Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ., 389):

Խուտապէնտէ Խանին (1304—1315) իշխանութեան ատեն՝ Հայաստանի զանազան կողմերը՝ հարկահանները անպատիժ կը նեղէին ու կը կեղեքէին Հայերը, և անոնցմէ կը պահանջէին կրկնակի և ապօրինի հարկեր:

Նոյնիսկ անչափահասներէ հարկ կ'առնէին (1): Բազմաթիւ ձեռագիրներու յիշատակարաններ կը հաստատեն այս անիրաւ կեղեքումները (տես. Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ., 316):

Մանաւորապէս Հիւսիսային Արեւելեան Հայաստանի քաղաքներուն վիճակը խիստ տագնապալի էր, տրուած ըլլալով որ անոնք կորսուած էին իրենց առևտրական նախկին միջազգային կարեւորութիւնը, վասնզի տարանցիկ (թրանզիտի) առևտուրի ճամբաները տեղափոխուած էին (հմմտ. Յ. Մանանդեան, Նոյն, 318):

Մանաւորապէս, ճոխ ու հարուստ Անիի տնտեսական ծանր կացութիւնը յստակ ցոյց կու տայ 1301 թուականով Զաքարեան Աղբուղայի հետեւեալ արձանագրութիւնը.

«Թվ. ՉԾ (= 1301) Շնորհիւն Աստուծոյ, ես Աղբուղես որդի Իւանէի, թոռն մեծացն Զաքարիայի, եկի յԱնի, հրամանաւ Շահնշահի, տեսայ զքաղաքս աղքատացեալ եւ խիստ ի վեր մնացել, զի շատ հարկ էր ի վերայ դրած, որ ի սկզբանէ չէր եղել: Ես Գ. հարկ ի վեր կալա վասն երկար կենդանութեան եւ արեւշատութեան եղբարցն իմոց Շահնշահի եւ իմ, եւ վասն իմ

(1) Գլաձորի վանքը 1314ին գրուած ձեռագրի մը յիշատակարանին համաձայն «համարողքն ի Վայոց ձորս եկին, ու մինչեւ ի յամսական օդայն համարէին» (Ալիշան, Հայապատում, էջ 526):



նախնեաց գերեզմանին համար թողի զեզինն հազրն, զկովին համբրեյքն, զոչխարին աղլհակն. եթէ ոք յիմ ազգէ եւ թէ այլ ուստեք որ զյիշատակս մեր հաստատուն պահէ աւրհնի յամենակալ Բանէն Աստուծոյ»:

Շարունակութեան մէջ, քահանաներէն ալ հարկ առնելը առկախելու և այլ տուրքերու ջնջումին մասին կը խօսի. (տես. Ալիշան, Շիրակ, 62, Կ. Կոստանեանց, Վիմական Տարեգիրք, 151, Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ. 317):

Աղքատացած Անի քաղաքի հարկերու թեթեւացման մասին տեղեկութիւններ կու տան նաև Աթաբէկ Շահնշահի կնոջ և Սարգիս Մխենց Բաժրարի 1320 թուականով արձանագրութիւնները (Վիմական Տարեգիրք, 160):

Մանաւորապէս Անի քաղաքի և ընդհանրապէս ամբողջ Հայաստանի տնտեսական քայքայումը և աղքատացումը նկարագրուած է Անիի Մանուչէի մզկիթին պատին վրայ փորագրուած Ապու Սայիտի արաբատառ պարսկերէն արձանագրութեան մէջ (1320—1335 թուականներուն), ուր պատուէր կը տրուի քաղաքին ոստիկաններուն չնեղել բնակիչները և չպահանջել կարգ մը տուրքեր:

Ահա այդ կարեւոր արձանագրութիւնը (1):

«Աստուած կը պարունակէ իր անբաւութեան մէջ իր ծառաները: Ապու Սայիտ Պահատուր խան: Հրովարտակ (եառլըխ): Երկիրի երեսին ներկայ թագաւորի մայրաքաղաքէն՝ աշխարհի Սուլթանին, որ երկրաւոր աշխարհի ու հաւատքի փառքն է եւ որուն թագաւորութիւնը Աստուած թող յաւիտենական ընէ: Քանի որ Արեւելքէն մինչեւ Արեւմուտք, աշխարհի բնակիչները կը գտնուին անոր գթութեան եւ արդարութեան ներքեւ՝ թող Ամենակալն Աստուած առաւելապէս կտրուկ ընէ անոր տնօրինութիւնը եւ հրամանը:

Այս է անոր կարգադրութիւնը: Քանի որ երկիրին մակերեսը ենթակայ է անոր հրամանին եւ անոր գրիչին շարժումէն կախում ունեցող Դիւանի կարգադրութիւնը՝ թող ոչ ոք չհամարձակի որեւէ բան պակսեցնել կամ աւելցնել, թող բացի տամղայէն եւ արդար մաքսէն, ուրիշ ոչինչ չառնեն եւ թող ոչ ոքէն խալանի, նեմերիի, քարխի պատրուակով բան մը չպահանջեն. անոր համար որ ասկէ առաջ Անի քաղաքին մէջ եւ Վրաստանի այլ շրջաններուն մէջ խալանի, նեմերի անարդար յատկացումներու ու քարխի պատրուակով ապօրինի տուրքեր կ'առնէին եւ բռնութիւն կ'ընէին եւ կը զօրծադրէին, եւ երկիրը սկսաւ ամայանալ, հասարակ ժողովուրդը ցիրուցան եղաւ եւ քաղաքին շրջակայ տանուտէրները ձգեցին խալանի եւ դռնագիրի պատճառով իրենց անշարժ ու շարժական գոյքը եւ ընտանիքը եւ հեռացան բռնելով Ամենակալն Աստուած չպակսեցնէ Ձեր գլուխին վրայէն իր բարձր հովանին...»:

Այս արձանագրութենէն կը հասկցուի որ Անիի և ուրիշ վայրերու բնակիչները ծանր և ապօրինի հարկերու պատճառով, կը ձգէին երկիրը և կը

(1) Ալիշան (Շիրակ, 56), եւ Յ. Մանանդեան (ՔՆՆ. Տես. Գ., 317—8) թարգմանութիւնը տուած են այս արձանագրութեան, մին գրաբար եւ միւսը՝ Արեւելեան Հայերու բարբառով: Ես, Յ. Մանանդեանին թարգմանութիւնը Արեւմտահայերէնի վերածեցի:

գաղթէին, և Ապու Սայիտ՝ որպէսզի երկիրին դատարկացման առաջքը առնէ և կասեցնէ գաղթը, կ'ուզէ պաշտպանել ժողովուրդը՝ զայն կեղեքող ապօրինի հարկերէն։ Ըստ Յ. Մանանդեանի, հաւանօրէն Ապու Սայիտի շրջանին (1316—1335), կը վերաբերի նաև Գրիգոր Աղայի և Յովհաննէս Տանուտէրի անթուական արձանագրութիւնը, որ կը գտնուէր Անիի Աւագ դրան վրան։

Այս արձանագրութեան համաձայն, Գրիգոր Աղան և Յովհաննէսը՝ թեթեւցնելու համար Անիի բնակչութեան ծանր տուրքերը, կը ջնջէին նախկին տուրքերէն շատերը։

Ահա այս շատ նշանակելի արձանագրութիւնը.

«Գրութեամբն մարդասիրին եւ անմահ Բանին Աստուծոյ եւ վասն յերկար կենդանութեան Արքային Արքային Աստուածայի փաքցանին եւ Աստուածիմաստ իշխանաց իշխանին, աշխարհակալն եւ ի թագաւորութեան Վրաց աշխարհիս, որ եղեւ մայրաքաղաք Անի խասինչու եւ ի տէրութեան քաղաքիս Աստուածասէր պարոնացն Գրիգոր Աղին եւ Յովհաննիսի եւ յեպիսկոպոսութեան տէր Յովհաննիսի. ողորմածն Աստուած հայեցաւ ի դժուարին քաղաքիս եւ խորհուրդ բարի ծագեց ի սիրտ պարոնացն Գրի[գորի] եւ Յով[հաննիսի], որ զքաղաքս մեր նորոգել, շինեցին եւ զամենայն հարկապահանջութիւն բարձին՝ զմ[ալ] եւ զթաղար, զհեծել, զղափչուն. [=զղըփչուր], զախուրթամարան՝ եւ զդռնագիրն ի բաժ ի դաղմս եւ ի մուսայիպն դարձուցին եւ զաքոռին հարկն որ յեսոյ ի չարաց դրած էր՝ զկապալն յեպիսկոպոսին բարձին եւ յառաջին սահմ...» (Վիմական Տարեգիրք, 221, Ալիշան, Շիրակ, 40, Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ., 318—9):

Ասոնք ակներեւ ապացոյցներ են և ցոյց կու տան թէ կեղեքիչ և ապօրինի տուրքերով ժողովուրդը ո՛ր աստիճան տնտեսական անձկութեան, աղքատութեան, անչքացման և յետադիմութեան մատնուած էր։

Մեր երկիրը չարաչար տուժած էր Ճէլալէտտինի, Չարմաղանի և Բաչուի արշաւանքներու շրջաններուն, վասնզի աւերուած էին շատ մը քաղաքներ, ջարդուած և գերի տարուած էին հազարաւոր բնակիչներ, և փճացած էին անհամար նիւթական արժէքներ, ինչպէս կը դիտէ Յ. Մանանդեան, (ՔՆՆ. Տես. Գ., 287):

Համտուլլահ Ղազուինի ժամանակակից պարսիկ պատմագիրը, որ միևնոյն ատեն Մոնկոլ բարձր պաշտօնատար մըն էր, իբրեւ գիտակից անձնաւորութիւն, իր գործին մէջ իրաւամբ կը նախատեսէ թէ աւերները և ջարդերը այնքան մեծ էին, որ Մերձաւոր Ասիա, առջի բարեկեցիկութիւնը և բարօրութիւնը ունենալու համար, երկար դարերու պէտք պիտի ըլլար (Յ. Մանանդեան, Նոյն, Գ., 287)։

Նախատեսութիւն որ կատարելապէս իրականացած է դժբախտաբար։

## ԿՐՕՆՔԻ ՀԱՄԱՐ ՍՊԱՆՈՒԹԻՒՆ ՉԷ ԳՈՐԾՈՒԱԾ

Կրօնական լայնախոհութիւնը որ Մոնկոլները ցոյց տուած են Հայաստանի մէջ, հաւատոյ նահատակներու շարանը ղադրեցուցած է։

Մոնկոլները, ինչպէս տեսնուեցաւ, իրենց դէպի Արեւմուտք արշաւներէն



առաջ, շատ պարզ կրօնք մը ունէին։ Երբ շփում ունեցան ուրիշ աշխարհներու հետ, ամէն կրօնք քարոզուեցաւ իրենց կայսրութեան մէջ՝ ուր իրապէս պետական կրօնք մը և ուրիշ կրօնքներու դէմ հալածանք չկար։

Եւ որո՞ւ, ի՞նչ կրօնքի համար պիտի ըլլար հալածանքը, քանի որ Մոնկոլները որոշ կրօնք մը չունէին հասարակաց և այլազան կրօնքներու կը հետեւէին։ Ասով հանդերձ, պատահօրէն գործադրուած են վայրագ արարքներ, որոնք կրօնական հալածանքի երեւոյթը ունին, սակայն իրենց խորքին մէջ բնաւ ոեւէ որոշ կրօնքի դէմ չեն։

Այսպէս, կը յիշատակուի Խաչէնի Հասան Ջալալ իշխանի նահատակութիւնը 1251ին (Ազգապատում, 1671—2), բայց բոլոր պարագաները ցոյց կու տան թէ, ան հարկահան Արղունի անձնական ատելութեան զոհ գացած է, վասնզի Հասան Ջալալ՝ Արղունի դէմ գանգատելու համար, Բաթուի դիմած էր, և այսպէս իրեն դէմ գրգռած էր անոր ատելութիւնը, ինչպէս նաև հաւանօրէն Հուլաղուի — որուն դէմ ալ էր Բաթուի եղած դիմումը — որ Արղունի առաջարկով անոր սպանութիւնը հրամայեց։

Նոյնպէս ունինք յիշատակութիւնը զանգուածային հալածանքի մը, որ իբր թէ 1257ին կատարուած է Հուլաղուի Հայաստան գալէն ետք և Պաղտատի արշաւանքին ձեռնարկէն առաջ։ Պատմութիւն Մոնկոլացի հեղինակին վաւերականութիւնը բաւական կասկածելի պատմութեան համաձայն, «Եկին յարեւելից, ուստի Մեծ Ղանն էր՝ եւթն ղանի որդիք, ամենն դումանի մի հեծելով, եւ մի դումանն էր երեսուն հազար: Եւ եւ անուանք նոցա այս, առաջին եւ մեծն ի նոցանէ Հոյլաւու (1), որ էր եղբայր Մանկու Ղանին, երկրորդ Խուլն (2), որ եւ զինքն եղբայր Աստուծոյ ասէր, եւ ոչ ամաչէր. երրորդն՝ Բալախէն (3), չորրորդն՝ Տուբար (4), հինգերորդն՝ Թագուդարն (5), վեցերորդն՝ Ղատաղանն (6), եւթներորդն՝ Բուրաղանն, եւ էին սոքա անհնազանդ միմեանց եւ յոյժ աներկեղք եւ մարդակերք: Իսկ ի գալն որ եկին, ամենն կառօք եկին, եւ կառօք երթէին, մինչ զի զլեառն եւ զբլուրս հարթէին աշխարհովն արեւելից, վասն հեռս գնալոյ կառացն եւ սայլիցն:

Իսկ այն գլխաւորն որ զինքն եղբայր Աստուծոյ ասէր, եկն ընդ մէջ երկրին եւ կոխեաց անողորմաբար զտառապեալ քրիստոնեայսն, եւ զփայտեայ խաչ ուր եւ գտանէին ի ճանապարհս եւ ի լերինս կանգնեալ, զամենն այրէին, եւ ոչինչ իրօք ոչ յագենային, այլ եւ զվանօրայսն որ կային յերկիրն ուր եւ գտանէին առաւել եւս կոխէին ուտելով եւ ըմպելով, եւ զպաշտօնական քահանայսն կախէին եւ ծեծէին անողորմաբար»: (Պատմ. Թաթարաց, տպ. Երուս., էջ 35—36)։

(1) Ծանօթ եւ միւս պատմագիրներէն ալ յիշուած Իլխանեան տան հիմնադիրն է:

(2) Կիրակոս, Ղուլ կամ Ղուլի ուղղագրած է անունը այս զօրավարին (218, 220 եւ 232):

(3) Կիրակոս, 218, 220 եւ 232, «Բալախա Թաթար» կը կոչէ:

(4) Կիրակոս, (218), Տուտար կը կոչէ:

(5) Թագուտար կամ Տանգուտար՝ Ապաղայի եղբայրը (տես. վերը՝ 123—4):

(6) Զայն կը յիշէ Վարդան (144) եւ Կիրակոս (129, 220 եւ 232):

Զարմանալի է որ, Վարդան, բայց մանաւանդ Կիրակոս, այս իշխանները յիշատակելով հանդերձ՝ բնաւ ծանօթ չեն Ղուլի այս արարքներուն։

Կիրակոս, որ Ղուլի համար կ'ըսէ թէ «զոր մեծ խսկ ցեսանէ», բնաւ չ'ըսեր այն բաները, զորս կը պատմէ Թաքարաց Պատմութիւնը։ Այլ միայն կը յիշէ՝ թէ ինքզինքը «Աստուծոյ որդի» կը կոչէր (Կիրակոս, 218). մինչ «Թաքարաց Պատմութիւն»ը «Եղբայր Աստուծոյ» կ'ըսէ, ինչ որ միևնոյն բանն է։

Վարդան և Կիրակոս բնաւ չեն խօսիր անոր Հայաստանի մէջ գործած արարքներուն վրայ, որոնք հաւանօրէն կրօնական նպատակ չէին հետապնդեր, այլ կողոպուտ, եթէ ոչ Վարդան և Կիրակոս վարդապետները, իբրև բարեպաշտ քրիստոնեաներ, պիտի յիշէին անպայման։

Հայոց Պատմութիւնը պահած է Մոնկոլ տիրապետութեան շրջանէն նաև յիշատակը կարգ մը «Նահատակ»ներու, որոնք «վասն հաւատոյ» չեն վկայուած։ Այսպէս, վերոգրեալ դէպքերուն ժամանակը, 1257ին, կը յիշուի նաև Գերեթի վանքին վանահայր՝ Ստեփանոսի սպանութիւնը, որ կրօնական հալածանքի արդիւնք չէր, այլ թունաւորման կասկածի մը՝ որ ունեցած էր վերոյիշեալ զօրապետներէն Ղուլի գլխաւորներէն մէկը, վանահօր կատարած հիւրամեծարութենէն յետոյ, հիւանդացած ըլլալուն համար (Պատմ. Թաքարաց, 36—37) (1)։

Նոյնպէս, հաւատքի համար նահատակուած չէ՛ կարելի նկատել Շահնշահ Զաքարեանի որդին՝ Զաքարէն, որուն թողած էր իր հայրը իշխանութիւնը։ Զաքարէ, ինչպէս կ'երևի զոհ գացած էր անխոհեմութեան և սպաննուած է սոսկ քաղաքական պատճառով, վասնզի իր կինը տեսնելու համար գաղտնի այցելած էր տունը իր աներոջ՝ Ուխտիքի Սարգիս իշխանին, որ ապստամբ էր։ Արղուն, որ անձնապէս հակառակ էր Զաքարիայի, Հուլաղուի առջև զայն ամբաստանեց, «բարուրս» կուտելով և մահուան դատապարտել տուաւ։ Զայն կտոր կտոր ըրին և շուներու առջև նետեցին։ Հայրը՝ Շահնշահ, իր որդւոյն սպանութեան գոյժը առած պահուն իսկ, յուզումէն մեռաւ (1261ին) և Օձուն գիւղը թաղուեցաւ (Կիրակոս, 230—231)։

Նոյնպէս նաև 1276ին, ըստ Ապու'լ Ֆարաճի, Երզնկայի Սարգիս Արքեպիսկոպոսը և անոր որդին՝ Յովհաննէս իշխանը, 38 երեւելիներու հետ, սպաննուած են Խարբերդի բերդին պահակախումբին հրամանատարէն, որ Եգիպտական Սուլթանին պաշտօնատարն էր և չի գիտցուիր թէ ինչո՞ւ դրագրեր էր այս եպիսկոպոսը և իր իշխան որդին սպաննել և խոյս տալ Եգիպտոս։

Այս սպանութեան համար վայրացած է Ապաղա Խան (1265—1282) և Սարգիս Եպս.ի թոռները պատուած, ինչոր ցոյց կու տայ՝ որ Մոնկոլներու կամքին հակառակ գործադրուած ոճիր մըն էր անիկա (2)։

(1) Այս դէպքն եւս չեն յիշեր Վարդան եւ Կիրակոս:

(2) Այս ոճիրը իր բոլոր պարագաներով եւ բազմաթիւ աղբիւրներու խղճամիտ բաղդատութեամբ պարզած է Յ. Քիւրտեան իր «Երիզա եւ Եկեղեաց գաւառ» գործին մէջ (Ա. հտ. 127—134):





Այս դէպքերը կը հաստատեն թէ Մոնկոլները իրենց տիրապետութեան Ա. շրջանին (1236—1256) և անկէ յետոյ ալ մինչև ԺԴ. դարուն սկիզբը, մինչև իրենց բոլորովին իսլամանալը, կրօնական հալածանք կամ քրիստոնէութեան դէմ պայքար չեն բացած։ Անոնք, «հարկապահանջութեամբ, երթեւեկութեամբ եւ զինուորութեամբ» կը նեղէին «բայց զոք ոչ սպանանէին», ինչպէս Կիրակոս Գանձակեցի վարդապետը (142) կը շեշտէ. իսկ կրօնական բռնադատութիւններ չեն ըրած, ինչպէս կ'երևի, վասնզի բնաւ չէ յիշուած 1304էն առաջ, որ քրիստոնէութիւնը հալածուած ըլլայ։ Ընդհակառակը, Մոնկոլ կայսրութեան մէջ կը վխտային կրօնական քարոզիչներ, ամէն դաւանանքէ, որոնք կը ջանային Մոնկոլները լուսաւորել։

Քրիստոնեայ քարոզիչներուն մէջ ամէնէն յաջողները եղած էին Նեստորականները, որոնք մինչև Մոնկոլներու արքունիքը թափանցած էին և բաւական տարածած՝ քրիստոնէութիւնը, որ եթէ Մոնկոլները ընդգրկէին, թերևս այսօր աշխարհի ճակատագիրը բոլորովին տարբեր պիտի ըլլար։

Սակայն ինչպէս տեսնուեցաւ, Նեստորականներու աշխատանքը խաչաձևեցին պապական քարոզիչները (վերը, 76—77)։

Այս պայքարին խառնուած են նաև Հայ, Վրացի, Ասորի և Յոյն քարոզիչներ, որոնք սակայն Նեստորականներուն հետ մէկ ճակատ կը կազմէին և բնաւ անոնց գործը չէին խանգարեր, ոչ ալ կաթոլիկներու նման ամբարտաւան յոխորտութեամբ զանոնք կը գրգռէին, ինչպէս 1247ի և 1253—1255ի երկու պապական նուիրակութիւններն ըրած էին (տես. վերը 76)։

Հայ եկեղեցականներ, ընդհակառակը միշտ լաւ ընդունելութեան արժանացած են, վասնզի բնաւ ամբարտաւան կեցուածքով բռնակալներ չեն եղած։ Միայն, դժբախտաբար, մեր պատմութիւնը չի յիշեր յատուկ կրօնական քարոզչութեան նպատակով, Մոնկոլներու մէջ գործող Հայ քարոզիչներ։ Քանի մը եկեղեցականներ գերի տարուած են (1) և ուրիշներ՝ Խաներու խնդրանօք, որոնք ... ամէն դաւանան-
տոյց ըլլալու և շնորհ խնդրելու համար գացած են Մոնկոլներու երկիրները։

Իսկ բացառաբար 1264ին, կը յիշուի որ Հուլաղու Խան, հետաքրքրութենէ մղուած՝ Շնորհաւոր անուն վաճառականի մը կամ պաշտօնատարի մը միջոցով,— որ թերևս թելադրողն ալ է — հրաւիրած է Վարդան Վրդ.ը, անոր հետ տեսնուելու համար։

Վարդան վրդ. ինքը մանրամասն կը պատմէ իր այցելութիւնը (Վարդան, 155—161)։ Իր գրութեան մէջ, մէկ բառի չենք հանդիպիր՝ որ կրօնական քարոզութեան վերաբերի։ Ընդհակառակը, Հուլաղու Խան ինքն է որ ինքզինք ցոյց կու տայ իբրև քրիստոնեաները սիրող մը (Վարդան, 157)։ Վարդան վրդ. միայն առիթը օգտագործած է և Խանը յորդորած է՝ լաւ վեհապետ մը ըլլալու և իր հպատակները սիրելու։

Ան, Խանին կ'ըսէ. «ամէն ազգի տուեալ է Աստուած տէրութիւն աշ-

(1) Վանական վարդապետ, Կիրակոս Գանձակեցի, Մարկոս եւ Սաքբենէս քհ.ներ, (Կիրակոս, 130):

խարհի. մինչ ի ձեզ՝ աշխարհաւեր են լեալ եւ աղքատաց անողորմն ծանր-շալակ են դրել, եւ նոքա յոգոց են հանել եւ լացեալ առաջի Աստուծոյ: Աստուած առեալ է զիշխանութիւնն եւ յայլ ազգ տուեալ. թէ դուք աշխարհաշէն լինիք եւ աղքատաց ողորմած, ի ձեզանէ չառնու Աստուած, զոր տուեալ է՝ թողու առ Ձեզ, եւ զոր տալ կամի՝ զայն, այլ տայ: Ի քո դրանս հէնց մարդ կացո՝ որ յԱստուծոյ երկնչի եւ զՁեզ սիրէ, որ զլալով եկած տառապեալն որ աղետս չունի եւ կաշառք՝ ուրախ ի տուն ուղարկէ, քեզ յիշեցնէ եւ զաշխարհս տեսանել տուր հէնց մարդոյ՝ որ յստակ տեսանէ, կուրանայ ո՛չ կաշառօք եւ քեզ ասէ զիրաւն...» (Վարդան, 157):

*Ուրիշ Հայ եկեղեցականներ ալ Խաներու ներկայացած և անոնց խընդրանքներ ներկայացուցած են, սակայն կրօնածաւալ գործունէութիւն չեն ունեցած, այլ աւելի քաղաքային և աշխարհիկ գործեր կարգադրած են։*

*Ասոնց ամէնէն կարկառուն օրինակն է Սիւնեաց նշանաւոր արքեպիսկոպոսը* Ստեփանոս Օրբէլեան, որ իշխանական տունէ էր և ժառանգութեամբ տիրացած էր աշխարհական իշխանութեան մը՝ իբրև հողատէր իշխան։ Հակառակ անոր որ 1287ին, Սիսի մէջ Եպիսկոպոս ձեռնադրուած ատեն, Ամենայն Հայոց Կաթողիկոսէն բացառիկ իրաւունքներ ստացած էր մետրոպոլի-տիտղոսը առնելով և Հայաստանի բոլոր Եպիսկոպոսներուն Նախաթոռ նշանակուելով կամ Կաթողիկոսի փոխանորդ. իր ինքնակենսագրութեան մէջ (Ստեփանոս Օրբէլեան,* Պատմ. Նահանգին Սիսական, *Բ. հա., էջ* 226—231), *կը պատմէ՝ թէ ի՛նչպէս յաջորդաբար Իլխանեան երեք խաներու ներկայացած է, իր իշխանական իրաւունքները հաստատելու համար։ Այսպէս, ինք կ՛ըսէ թէ* «ի գալն մեր ի Կիլիկիոյ, յետ աւուրց ինչ գնացաք առաջի աշխարհակալ արքային Արղունին, եւ հանդիպեալ նմա ընկալաւ զմեզ եւ յոյժ յարգեաց եւ սիրեաց եւ մեր ծանուցաք զվիշտս մեր եւ ցուցաք զշրջաբերականն մեր զոր ետ թարգմանել եւ ընթեռնուլ առաջի իւր: Ցուցաք եւ զսիգելն հայրենեաց մարմնաւոր ժառանգութեանց զոր ետ հայրն իմ, զի հանեալ էր բաժին ժառանգութեան մեզ զվանորայսն իւրոյ իշխանութեանն զՏաթեւ, զՆորավանս եւ զՑաղացքար, զԱրատիս եւ զայլսն ամենայն, զոր եւ տեսեալ հրամայեաց գրել հրովարտակ հրամանի եւ վերստին հաստատեաց ի մեզ զըբովանդակն կրկին իշխանութեամբ հոգեւոր եւ մարմնաւոր եւ հրամայեաց մեզ կալ եւ օրհնել զեկեղեցին ի դրանն Արքունի, զոր առաքեալ էր մեծպապն Հռոմայ:

Անդ էր եւ կաթողիկոսն Նեստոր երկոտասան եպիսկոպոսօք, որք եւ օրհնեցաք ի միասին մեծաւ հանդիսիւ: Եւ ինքն Արղունն զգեցուցանէր իւրով ձեռամբն զզգեստն հայրապետական, զոր ինքն էր սահմանեալ կաթողիկոսին եւ մեզ եւ ամենայն եպիսկոպոսացն: Եւ առեալ ի ձեռն զժամահարն շրջէր ի մէջ բանակին եւ հարկանէր եւ օրհնէր զամենայնն» (Ստեփանոս Օրբէլեան, Բ., 230):

*Այսպէս, Արղունի իշխանութեան շրջանին* (1284—1291), 1287 *թուականէն քիչ յետոյ՝ Սիւնեաց այդ Արքեպիսկոպոսը կը դիմէր անոր, անձնական հողատիրական իշխանութիւնը հաստատելու համար։ Հայ Եպիսկոպոսը*



*կրօնական քարոզութիւն չէ ըրած։ Արղունն է որ անոր և Նեստորականներու Կաթողիկոսին եկեղեցի օծել տուած է։*

*Ստեփանոս Օրբէլեան կը պատմէ թէ* «Եետ սակաւուց եկն եւ եպիսկոպոս մի ի նոյն պապէն եւ մկրտեաց զկրտսեր որդի Արքային»: *Այս տեղեկութիւնը շփոթութեան մատնած է պատմագիրներէն ոմանք, որ կարծած են թէ Ռուբրիքն է այդ Եպիսկոպոսը, ինչ որ սխալ է, վասնզի ան* 1255—1256*ին է որ գացած է Մոնկոլներու Մեծ Խանին։*

*Ստեփանոս Օրբէլեան, Արղունի յաջորդին՝ Քեղաթունի* (1291—1295) *ալ դիմած է։* «Առ որ գնացեալ մեր եւ ի նմանէ ընկալաք պատիւ որպէս յեղբօրէն եւ առաք հրովարտակ հրամանի վերստին հաստատութեամբ» (Օրբէլեան Բ. 231): *Ինչ որ ցոյց կուտայ թէ իր իշխանական իրաւունքներուն վերահաստատութեան համար, ինչպէս բոլոր իշխանները, կը դիմէին՝ ինքն ալ գացած է։*

*Օրբէլեան չէ դիմած Բայդուին* (1295 *Ապրիլ–Հոկտ), որուն իշխանութիւնը թէ՛ կարճատեւ եղած է և թէ՛ անհաստատ։*

*Բայց Ղազանի ատեն* (1295—1304) *դարձեալ դիմած է Խանին։* «Ի թագաւորել Ղազանին գնացաք եւ առ նա» *կ՛ըսէ և կ՛աւելցնէ թէ* «բարձրագոյն ի նմանէ ընկալաք փառս քան յայլոցն, զի ետ կրկնապատիկ ամրութեամբ զնոյն հրովարտակ, եւ հրամայեաց ի շրջելն մեր զխաչ զառաջեաւ ունել եւ բարձրագոյն շրջեցուցանել, շնորհեալ եւ մեզ փայիզայ ոսկի... Եւ մեր տեսեալ զանակնկալի (անակնունելի) ողորմութիւնն՝ փառս եւ գոհութիւն Արարչին վերընծայեցաք. եւ այսպէս եկեալ ի տուն կացաք հաստատութեամբ» (Ստեփ Օրբէլեան Բ., 231):

*Ասկէ կը հասկցուի թէ Մոնկոլները չէին արտօնէր որ իրենց առջեւէն խաչ տանին եկեղեցականները և Ստեփանոս Օրբէլեան Արքեպիսկոպոսը այդ իրաւունքը ստացած է։*

*Ինչպէս կը տեսնուի՝ Հայ Եկեղեցականներու կողմէ բնաւ քրիստոնէութիւն քարոզելու ձեռնարկի յիշատակութիւնը չունինք։*

## ՄՈՆԿՈԼՆԵՐԸ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՆԵՑՈՒԿ

*Բայց հայերն են որ Մոնկոլներու մէջ առանց քրիստոնէութիւն տարածելու աշխատելու, զանոնք ի նպաստ Քրիստոնէութեան գործածած են։*

*Խաչակրութիւնները՝ իսլամներու կատաղութիւնը գրգռած էին Քրիստոնէութեան դէմ և Խաչակիրները՝ նախնական յաջողութենէ մը յետոյ՝ մինակ մնալով իսլամ աշխարհին դէմ, հետզհետէ տկարանալ սկսած էին։*

*Մոնկոլները այս երկու հակառակորդ ուժերուն համար կը ներկայացնէին երրորդ ուժ մը, որ ո՛ր կողմին որ յարէր, անոր յաղթանակը կրնար ապահովել։*

*Ասիական ժողովուրդներու պատմութիւնը մասնագիտաբար և խորապէս ուսումնասիրող հռչակաւոր պատմագիրը՝ Ռընէ Կռուսէ, իր* «Le Bilan de l'Histoire» *գիրքին մէջ կ՛ըսէ.*

«Մոնկոլները ի շահ քրիստոնէութեան դարձնելու ջանքին մէջ միայն հայերը յաջողեցան: Հայոց Հեթում Ա. թագաւորը ունեցաւ մեծ ծրագիր մը,

այն է Մոնկոլեան հսկայ ուժը իրեն քաշելով, գործածել զայն մահմեդականութեան դէմ: Թէեւ այս ծրագիրը շատ դժուարին հարց մըն էր, սակայն հայ թագաւորը իրեն աջակից ունէր Նեստորականները եւ Մոնկոլներուն քրիստոնէից հանդէպ տածած անվերապահ համակրանքը: Ան յանձն առաւ տաժանելի ճամորդութիւն մը՝ մինչեւ Գարագորում՝ Մեծ խանին մօտ երթալու, հեռու մնալով իր երկիրէն գրեթէ տարի ու կէս: Սակայն յաջողեցաւ «Դեղին խաչակրութեան» կազմութեան: Իրարու ետեւէ ինկան մահմեդականութեան սուրբ եւ նուիրական կեդրոնները՝ Պաղտատ, Հալէպ ու Դամասկոս: Սուրիական ծովեզերք հասատուած, Եւրոպական խաչակրութեան մնացորդ իշխաններէն միայն Անտիոք կը մասնակցէր Հեթումեան խաչակրութեան՝ հայոց թագաւորին կողքին: Հակառակ եղած առաջարկերուն, Աքքայի իշխանը մերժեց միանալ, ու նոյն իսկ ան հակեցաւ Մեմլուքներուն, թոյլ տալով որ իր երկրէն անցնին անոնք, ինչ որ շատ տխուր հետեւանք ունեցաւ, Գալիլիոյ հովտին մէջ պարտութեան մատնելով Մոնկոլեան եւ Հայկական բանակները: Կաթոլիկութեան մէջ կուրացած այս փոքր իշխանութիւնները *նախընտրեցին մահիկը՝ խաչին.* մոռնալով որ խաչին համար եկած էին մինչեւ այն տեղերը: Սակայն քանի մը տարի վերջ, այն Մեմլուքները, որոնց օգնած էին ընդդէմ Հայոց եւ Մոնկոլներուն, որոնք կ'ուզէին մահմեդականութիւնը նետել Արաբիոյ անապատները, վերջ տուին իրենց գոյութեան իսկ: Հայ մեծ թագաւորին անյաջողութիւնն էր նաեւ խաչակիրներու անյաջողութիւնը, ե՛ւ Եւրոպայինը:

Հեթում արքան՝ իր ծրագիրով՝ տիրեց բովանդակ քրիստոնէութեան, խաղաղական ովկիանոսէն մինչեւ Միջերկրական: Դժբախտաբար Արեւմուտքի մէջ ոչ ոք ուզեց հասկնալ այս մեծ թագաւորին հանճարամտութիւնը: Այս մեծ Հայուն՝ Արեւմուտքը Մոնկոլներու միացնելու բոլոր ջանքերն ու ճիգերը կասկածանքով եւ թշնամութեամբ փոխարինուեցան: Սակայն պատմութիւնը պէտք է ճանչնայ, որ ան Միջին դարուն ամէնէն ողջամիտ, ամենէն հանճարեղ քաղաքագէտներէն մին եղաւ: Հեթումը այն անձն էր, որուն եթէ Արեւմուտքը հետեւէր, ան պատմութեան ուղին՝ հունը՝ ուրիշ հոսանքի կրնար դարձնել...: Այս մեծ հայը կ'ուզէր Մոնկոլեան կայսրութիւնը տարածել մինչեւ Եգիպտոս, վերահաստատել Երուսաղէմի քրիստոնեայ թագաւորութիւնը, ապահովել միանգամ ընդ միշտ քրիստոնեաներու ազատութիւնը: Նեստորականներու եւ հայ ու լատին վանականներու ջանքերով՝ քրիստոնէացնել բոլոր Մոկոլները»:

*Քրիստոնեայ Արեւմուտքը չկրցաւ գնահատել Հեթումի ծրագիրը և այնպիսի ընթացք մը բռնեց՝ որ Մոնկոլները զզուած լքեցին քրիստոնեաները և միացան իսլամներուն, ինչ որ Քրիստոնէութեան համար մեծ դժբախտութիւն մը եղաւ և հարուածեց զայն։*

*Իսլամները արդէն նախատեսեր էին այս պարագան և ասոր համար իսլամ քարոզիչ մոլլաներ՝ անշուշտ զիրենք հովանաւորողներուն քաջալերութեամբ՝ ամէն ջանք կ'ընէին իսլամութիւնը տարածելու Մոնկոլներու մէջ, որոնց Քրիստոնէութեան յարիլը՝ իսլամութեան համար աղէտ մը պիտի ըլլար։*



## ԻՍԼԱՄՆԵՐՈՒՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

*Այն պայքարին մէջ որ քրիստոնեայ և իսլամ հաւատածաւալ քարո-
զիչներ մղեցին, քրիստոնէութիւնը և իսլամութիւնը տարածելու համար,
յաղթանակը շահեցան իսլամ մոլլաները (վերը՝ 77—79), հակառակ անոր որ
Մոնկոլները նոյնիսկ իրենց արշաւանքներու սկզբնաւորութեան շրջանին,
ինչպէս որ իրենց խոչընդոտ եղող ուժերը բնաջնջել աշխատած են, նոյնպէս
նաև մահմետականութիւնը ընկճել ուզած են իբրև ընդդիմադիր ոյժ, մանա-
ւանդ իբրև հակառակորդ իրենց բարեկամ և զինակից քրիստոնեայ աշխարհին։*

*Արաբները տեսեր էին Մոնկոլ խաներու Եւրոպայի հետ յարաբերութիւն-
ներուն հետեւանքները, ուստի ամէն բան ըրին, մասնաւորապէս Իլխանեան-
ներու դէպի քրիստոնէութիւն ունեցած հակումին դէմ կանգնելու համար։ (Հմմտ.
Տիրայր Արքեպս., Փրիկ Դիւան 1952, 577)։ Անոնք կը տեսնէին քրիստոնէու-
թեան ազդեցութիւնը Մոնկոլ Խաներու Արքունիքին մէջ, և անոնց վրան-ե-
կեղեցիները, անոնց զաւակներուն մանուկ հասակի մէջ քրիստոնեայ մկրտուի-
լը և Նեստորական կրօնապետներէն դաստիարակուիլը։*

*Արաբները կը նախատեսէին վտանգը որ իրենց կ'սպառնար, եթէ Մոն-
կոլները քրիստոնեայ ըլլային, և ասոր համար ամէն ջանք ըրին Մոնկոլները
իսլամացնելու և յաջողեցան շնորհիւ քրիստոնեայ աշխարհին անճարակութեան,
անկարողութեան և խաբէական քաղաքականութեան։*

*Տեսանք թէ Մոնկոլները նոյնիսկ տրամադիր էին Խաչակիրներու նպա-
տակը իրագործել, և գրաւել Սուրիան և Պաղեստինը, ու խորտակել արա-
բական ոյժը, որուն կ'օգնէին նաև Սելջուկ Թուրքերը՝ արդէն իսլամացած,
որպէսզի կարենային իրենց իշխանութիւնը պահպանել Արաբներուն միացած։
Հակառակ պարագային, Բաչուի արշաւանքին օրինակը ցոյց կու տար թէ
իրենց խորտակումը անխուսափելի էր։*

*Որչափ ատեն որ Մոնկոլները յոյս ունէին քրիստոնեայ աշխարհին օգ-
նութեան վրայ, ընկճելու համար Արաբական ոյժը, իրենց վեհապետները գոր-
ծածեցին «Բարեպաշտ Քրիստոնեայի» և «Քրիստոնէից Պաշտպանի» դիմակը
և քաղաքական հաշիւներով Քրիստոնեայ Արքունիքներու հետ խնամու-
թիւններ հաստատեցին և դաշինքներ կնքեցին։*

*Երբ Մոնկոլ Խաները տեսան որ Եւրոպա, առանց դրական օգնութեան,
զիրենք խոստումներով կ'օրօրէ, այս անգամ ալ մահմետականութիւն կեղծե-
ցին և սկսան բարեկամանալ Սուրիոյ և Եգիպտոսի մահմետականներուն հետ։*

*Ասկէ օգտուեցան իսլամները, իրենց կրօնքը տարածելու համար Մոն-
կոլներու մէջ, մանաւանդ ԺԳ. դարուն, երբ մասնաւորապէս Իլխանեան Մոն-
կոլ վեհապետներն ալ կրօնքը քաղաքական նպատակներու ծառայեցնելու
սկսան։*

*Տեսանք արդէն, (վերը՝ 123), թէ Թագուտար (1282—1284), եղբայրը՝
Ապաղայի (1265—1282), ինչպէս իսլամանալով, պետութեան իսլամ բնակ-
չութիւնը քաջալերեց որ հարուածեն քրիստոնեաները։ Անիկա գահ բարձրա-
նալուն պէս, անվարան լքեց քրիստոնէական Նիկողոս անունը և եղաւ Ահ-
մէտ, առանց սակայն դադրելու ցոյց տալու բարեացակամութիւն քրիստո-*

եաններուն, անոնց հարկերը թեթեւցնելով, ապահարկ ընելով եկեղեցիները և եկեղեցականները և մեծամեծ նուէրներ ղրկելով նշանաւոր վանքերու և եկեղեցիներու։

Այնպէս որ, որոշ էր թէ իր կրօնափոխութիւնը ոչ հաւատքի և ոչ ալ համոզումի հարց էր, այլ քաղաքականութեան։

Իր յաջորդը՝ Արղուն (1284—1291), ընդհակառակը, նախ ազատութիւն տուաւ քրիստոնեաներուն (վերը՝ 124—5) և Գեղաթուն (1291—1295), անկրօն ըլլալով, մնաց անկողմնակալ և Բայիտուն (1295 Ապրիլ-Հոկտ.) թէև ինքը իսլամ, բարեկամ հանդիսացաւ քրիստոնեաներու (վերը՝ 125), մինչեւ որ Ղազան (1295—1304) պաշտօնապէս իսլամութիւնը պետական կրօնք դարձուց, մահմետականութեան յարելով և նեցուկ հանդիսանալով իսլամներուն, որոնք այս վեհապետին քաջալերութեամբ գործադրեցին կրօնական հալածանքներ։

## ԻՍԼԱՄՈՒԹԵԱՆ ՋՕՐԱՑՈՒՄԸ ԵՒ ԱՆՈՐ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

Իսլամ կրօնի տարածումը Մոնկոլներու մէջ թէ՛ Ջինկիզի հիմնած կայսրութեանը և թէ՛ ընդհանուր կերպով մարդկութեան համար ճակատագրական եղաւ։

Գուպլա-Խանի մահէն (1294) ետք, իսլամ ուժեր ապստամբած էին Մոնկոլ Իլխաննեանց դէմ։ Արաբները շուտով ամէն տեղ ծառացած էին քրիստոնեաներուն դէմ և չարժումը վերածած էին Արաբ իշխանաւորներու պետական քաղաքականութեան՝ Մոնկոլ Խաներու՝ Արեւմուտքի հետ ունեցած կապերն ու բարեկամութիւնը խզել տալու համար։

Պարագաները նպաստաւոր էին իրենց, վասնզի Իլխանեան հարստութեան վերջին վեհապետները թոյլ, անկարող, ծոյլ, պետական գործերը անտեսող անձեր էին։ Այլեւս լքած էին Արաբները Հարաւէն և Արեւմուտքէն դուրս վանելու գաղափարը և Արաբները օգտուելով այս ընդհանուր մեղկացումէն աւելի յանդուգն դարձած և սկսած էին կողոպտել հարուստ վանքերը, թալանել և այրել նշանաւոր եկեղեցիները, և աւերէ ու կործանումէ փրկուածները մզկիթի վերածել։

Մոնկոլ Խաները ստիպուեցան օրէ օր զօրացող Արաբ իշխանութիւններու բարեկամութիւն փնտռել։ Հետեւանքը եղաւ այն, որ քրիստոնեաները կրօնական յարձակման թիրախ եղան իսլամ կրօնի չհետեւողներուն դէմ անհանդուրժող ոգիով տարուած Արաբ ուժերու և կրօնական զգացումներէ զուրկ կամ այդ զգացումները վաճառքի հանող իշխանաւորներուկողմէ և այսպէս Քրիստոնեաներու ստացուածքը կողոպտուեցաւ, և կրակի տրուեցաւ։

Իսլամները, քրիստոնեայ կարող և դիմադրական ուժ մը ներկայացող անձերը կը կոտորէին, երիտասարդները և մանուկները գերի կը վարէին, կը ծախէին և կամ հեռաւոր վայրեր կը ղրկէին և բռնի կրօնափոխութեան կը հարկադրէին, իսկ նոր հարսերը ու գեղեցիկ կոյսերը կանանոցներու զարդ կը դառնային։

Արաբները ատելով կ'ատէին Մոնկոլ Թաթարները, իբրև աւերող ուժ, անկոչ հիւր, իբրև քրիստոնեաներ և նոյն իսկ իբրեւ մահմետական, որոնց մէջ և ոչ մի սրբութեան նկատմամբ յարգանքի նշոյլ կը տեսնէին։



Իսկ Պաղտատի մէջ, Հուլաղուի և յաջորդներուն հրամանով կատարուած աւերը և խժդժութիւնները, Արաբները մղեցին բոլորովին ջնջել անոնց հետքը, անունը, յիշատակը, մաքառումին սաստկութիւնը անգթութեան հասցնելով, չխնայելով ոչ ոքի, անտեսելով սեռի և տարիքի խտրութիւնը։

Մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը՝ Մոնկոլ ընդարձակածաւալ պետութեան մէջ, իսլամութիւնը դարձաւ տիրող ուժ, որուն առջեւ Մոնկոլ վեհապետները ստիպուեցան խոնարհիլ և իրենք ալ մոլեռանդ իսլամներ եղան կամ ըլլալ կեղծեցին։

Իլխան վեհապետներէն ոմանք իրենց գահուն ապահովութիւնը իսլամ տարրը շահելուն մէջ տեսան և ուրիշներ՝ քրիստոնեաներուն ապաւինեցան և այսպէս պետութեան մէջ ներքին կրօնական կռիւ սկսաւ։ 1296ին գրուած Աւետարանին յիշատակարանը, ինչպէս տեսնուեցաւ, «սաստկացեալ խռովութիւն ի միջի իւրեանց, զիրեարս զիջասեին» կ'ըսէ (տես. վերը՝ էջ 125)։

Բայիտուն (1295) հազիւ վեց ամիս կրցաւ իշխել, վասնզի հակառակ իր իսլամ ըլլալուն, քրիստոնեաներու բարեկամ էր (վերը՝ 125), բան մը որուն իսլամները չհանդուրժեցին։ Հետեւաբար Հայերը իբրեւ քրիստոնեայ տառապիլ սկսան։

## ՀԵԹՈՒՄ Բ.Ի ԴԻՄՈՒՄԸ ՂԱԶԱՆԻ

Հեթում Բ. (1289—1305) դարման տանելու համար Կիլիկիոյ տագնապալի վիճակին, քանի որ Եգիպտական յարձակման վտանգին տակ կը գտնուէր, կ'որոշէ Հեթում Ա.ի Մոնկոլներու հետ կնքած դաշինքին վրայ հիմնուելով՝ դիմել Մոնկոլ խանին։ Ուստի Բայիտուն Խանը շնորհաւորելու և Կիլիկիայէն՝ 1295 Սեպտեմբերին՝ իր հպատակութիւնը յայտնելու համար, Կիլիկիայէն՝ 1295 Սեպտեմբերին ճամբայ կ'ելլէ, Հայաստան կ'երթայ, և հոն կ'սպասէ Մարաղայի մէջ, իսլամ և քրիստոնեայ պայքարին վախճանին։ Հոն կը փրկէ կեանքը՝ Նեստորականներու կաթողիկոս Մար Եաբալահ Ալլահա Գ.ի, որ ծնունդով Թաթար էր. (տես. Ց. Գիւրտեան, Բազմավէպ, 1937, էջ 155—8)։

Այդ միջոցին երկիրը կառավարողն էր, իբրեւ վէզիր, Նէվրուզ, որդին՝ նշանաւոր հարկահան Արղունի (✝ 1275)։ Նէվրուզ սաստիկ կ'ատէր քրիստոնէութիւնը, ուստի իսլամները քաջալերեց և Նէվրուզի զօրքերը սկսան ամէն կողմ քակել եկեղեցիները, կողոպտել քրիստոնեաները, թլփատել քահանաները, ջարդել ժողովուրդը, գերի տանիլ կին ու տղայ։ Անոնք կողոպտեցին գլխաւորապէս Նախիջեւան քաղաքին և Սիւնիքի եկեղեցիները և վանքերը և չարչարեցին քահանաները և ուզեցին քանդել եկեղեցիները։ Տաթեւի վանքը Օրբէլեան Ստեփանոս Արքեպս. ազատեց «կաշառօք և բռնութեամբ» մինչ Արտազի Տիրացու անուն եպիսկոպոսը չարչարեցին և նախատեցին և կողոպտեցին (Օրբ. Բ. 321, Ազգ., 1727)։

Հեթում Բ., որ Բայիտունին ներկայանալու համար եկած էր, ականատես եղաւ բոլոր մոլեռանդական այս արարքներուն, որոնք իրեն ալ ցաւ կը պատճառէին, վասնզի պատմագիրը (Օրբ. Բ,. 222) կ'ըսէ թէ «Եւս իսկ հաստեցին վիշտս»։ Վերջապէս երբ իսլամները յաղթական եղան և Ղազանը բարձրացուցին՝ Հեթում «գնաց առ Ղազանն եւ յանդիման եղեւ Դաւրէժի մէջ։ Իր հետը տարած էր նաև Նեստորական եմա» (Օրբ., նոյն),

պատրիարքը ծպտեալ։ Ձեռագիր մը Հեթումը կ'աստուածացնէ ըսելով թէ «ճառում ոչ ոք համեմատ ի թագաւորս, բայց Քրիստոս միայն, քանզի յայսմ ամի եկն Հեթում ի Կիլիկիոյ յարեւելեայս, առ ազգըն Նետողաց, եւ հանդիպեալ Ղազանին որ էր այր ժանտ եւ ունէր արքանեակս չարս Իսմայելականս, վասնզի Տէր էր ընդ Հեթումի, յոյժ սիրեցին զնա եւ պատուեցին՝ կատաղի ժողովուրդքն»: Այդ ձեռագիրը կը հաստատէ թէ ամբողջ երկիրը խառնակ վիճակի մէջ էր և Հեթումի կը վերագրէ մեծ դեր մը, երբ կ'ըսէ թէ «ի մէջ անցեալ արի եւ արթուն թագաւորն Հայոց Հեթում, համազգեաց ի խաղաղութիւն զաղմկեալ աշխարհս ամենայն. Քրիստոսաբար ազատեաց զեկեղեցիս եւ զամենայն ուխտն, զորոյ փոխարէնն՝ Տէր հատուսցէ զտրիտուր՝ իւրն եւ իւրայոցն...» (Ե. Լալայեան, «Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի, 121 և վերը՝ 126)։

Ստեփանոս Օրբէլեան կը պատմէ թէ Ղազան, «մեծաշուք պատուով» ընդունած է Հեթումը, որ կը համարձակի իմացնել «արքային զանցս աղէտից քրիստոնէից»: Ղազան անգիտանալ կը ձեւացնէ կատարուածները և անոնց պատասխանատուութիւնը Նէվրուզի վրայ կը բեռցնէ ըսելով՝ թէ «ես ոչ գիտեմ զայդ, այլ Նաւռուզն գործեաց զամենայն, եւ հրամայեաց առ ժամայն գրել հրովարտակ ընդ ամենայն աշխարհ զի մի իշխեսցին ձեռնարկել (ձեռք դպցնել) յեկեղեցիս եւ ի քրիստոնեայս, այլ խաղաղութեամբ բնակեսցեն ամենայն ոք՝ զիւր հաւատս եւ պաշտօն համարձակ ունելով» (Օրբ. Բ. 222):

Ասկէ կը տեսնուի թէ Ղազան, իսլամացող Մոնկոլներու և Արաբներու աջակցութեամբ Խաքան դառնալէ վերջ, Արաբներու ազդեցութիւնը չէզոքացնելու համար, դարձեալ դէպի քրիստոնեայ տարրը յարում ցոյց տուած է, իսլամ-արաբ տարրին զօրանալը վտանգաւոր նկատելով։

Այսպէս, խաղաղութիւնը կը հաստատուի Մոնկոլ երկիրին և գլխաւորապէս Հայաստանի մէջ.

Հեթում «մեծաւ պատուով եւ շքեղաշուք փառօք» կը դառնայ իր երկիրը՝ Կիլիկիա, 1295 Նոյեմբերին։ (Բազմավէպ. 1937, էջ 158):

Ղազան պաշտօնանկ կ'ընէ և կը հեռացնէ Նէվրուզը և անոր տեղ Հայաստան կը ղրկէ իր քեռայրը՝ Խութլուշահը, որ մեր պատմագիրները «յոյժ բարեկամ» և «օգնական քրիստոնէից» կը կոչեն։

Շուտով կ'արգիլուի և կը դադրեցուի հալածանքը (Օրբ. Բ. 228)։

Վրաց Դաւիթ թագաւորը որ Դարեալի փախած էր՝ Խութլուշահի միջոցաւ կը վերահաստատուի իր գահուն վրայ.

Նէվրուզ, որ Խորասան ղրկուած էր, դաւադրութիւն մը կը սարքէ Ղազանի դէմ, որ կը մատնուի։ Զայն ձերբակալելու համար Խութլուշահի հրամանին տակ, Խորասան ղրկուած արշաւախումբին մէջ էր Տարսաիճ Օրբէլեանի եղբօր որդին՝ Լիպարիտը և Խաղբակեան մեծ իշխան Պռօշի (+ 1284) թոռը և Ամիր Հասանի (+ 1292) որդին՝ Էաչին։ Օրբէլեան Ստեփանոս կ'ըսէ. «թուք արձակեալ յերեսս Նավռուզին, մեծ անարգանօք ձաղէին» (Օրբէլեան, Բ. 223)։

Ասիկա ցոյց կու տայ թէ Հայերը տակաւին կը համարձակէին կրօնքի համար զիրենք հալածողը այսպէս անվերապահ նախատելու։



Այսպէս, ինչպէս բացատրուած է (վերը՝ 127—128), Ղազան իր պետութիւնը կարգաւորելու և արդար կառավարական վարչութիւն մը հիմնելու աշխատած է, և իր հպատակները գոհ ձգած է, ինչպէս կը հաստատեն իր իշխանութեան ժամանակ գրուած հայերէն ձեռագիրներու յիշատակարանները (վերը՝ 128)։

Նոյնիսկ կարելի է մտածել թէ Ղազան Խան, քաղաքական հաշիւներով, առերես իսլամացած մըն էր, տեսնելով թերեւս որ առանց անոնց գործակցութեան՝ իր գահը կորսուած էր։

Ամէն պարագայի մէջ, Հեթում պատմիչի սա տողերը նշանակելի են. Ղազան «խիստ եցոյց զանձն առ քրիստոնեայս, այլ յետ հաստատելոյ զտէրութիւնն, սկսաւ պատուել եւ սիրել զքրիստոնեայս» (Հեթում, 60):

Օրմանեան (Ազգապատում, 1727) դիտել կու տայ որ «եթէ ուզենք ալ կարծել թէ Ղազան իւր քաղաքագիտական դիտումներով կատարած է այդ փոփոխութիւնը, սակայն հնար չէ մտադրութեան չդարձնել Հայոց կողմէ եղած ջանքերուն ալ»։

Արդարեւ, ինչպէս տեսանք, իրեն դիմած է Հեթում Բ., ինչպէս նաև Ստեփանոս Արքեպս. Սիւնեաց (տես. վերը, 181) և Ղազան անոնց լաւ ընդունելութիւն ըրած էր։ Հեթումէն ետք, իր Սմբատ եղբայրը, որ յափշտակած է անկէ Կիլիկեան գահը, 1296—1298, ինքն ալ գնաց 1297—8ին Ղազան Խանին, որ ճանչցաւ զայն իբրեւ թագաւոր Հայոց և Մոնկոլ կին տուաւ։

## ԽՈՒՏԱՊԷՆՏԷԻ ՇՐՋԱՆԻ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԸ

Սակայն իր յաջորդին՝ Խուտապէնտէի (1304—1316) ատեն, բոլորովին փոխուեցաւ Իլխանեան պետութեան վարիչներու կրօնական հայեցքը։

Խուտապէնտէ, Նեստորական Պատրիարքին քով քրիստոնեայ դաստիարակուած և իր մօրը Ուրուք Խաթունի կողմէ քրիստոնեայ մկրտուած, իսլամութեան յարեցաւ։ Ժամանակ մը իսլամութեան՝ Շիի և Սիւնի երկու դաւանանքներուն միջեւ տատանելէ ետք, Շիի եղաւ (Kromers. Իսլամ Հանրագիտարան, Հոմանն, 1936, 1042)։ Մոլեռանդ իսլամ, բռնի իսլամացնել աշխատեցաւ իր քրիստոնեայ հպատակները և զանոնք հալածեց, բայց բնաւ չդադրեցաւ ինքզինք ցոյց տալէ քրիստոնեայ և իբրեւ դեսպան Կղեմէս Ե. Պապին, Էտուար Ա. Անգլիոյ և Փիլիպպոս Դ. Գեղեցիկ Ֆրանսայի թագաւորներուն ղրկեց Թովմաս Իլտուզին, որ իր վեհապետը քրիստոնեայ կը ներկայացնէր, մինչ ան իր գործադրած հալածանքներովը պատճառ եղաւ որ Մայրագոյն Արեւելքի ամէնէն բարգաւաճ եկեղեցին՝ Նեստորականը, անշքանայ և Չինաստանի, Կեդրոնական Ասիոյ, Իրագ Աճէմիի և Միջագետքի Նեստորականները մեծ մասամբ անհետանան (Ֆրիկ Դիւան, 563)։

Իր օրով գործադրուած հալածանքներուն վրայ կը խօսին հայ ձեռագիրներու յիշատակարանները։ Այսպէս, Հ. Միքայէլ Չամչեան (Պատմ. Հայոց, Գ. 299), կը վկայէ թէ տեսած է ինքը 1306 և 1307 թուականներով երկու ձեռագիրներու յիշատակարանները, որոնք կը պատմեն թէ Խուտապէնտէ այնքան չարացած էր քրիստոնեաներու դէմ, որ հրամայած էր բռնի իսլամա-

ցընել Մեծ Հայքի, Աղուանքի և Վրաստանի մէջ ապրող բոլոր քրիստոնեաները։ Եւ երբ չյաջողեցաւ՝ ծանր հարկեր դրաւ և պահանջեց որ բոլորը՝ մեծէն մինչեւ փոքրը՝ վճարեն խարաճ՝ 40—30 սպիտակէն մինչեւ 10 սպիտակ։

Երեւանի մատենադարանի «Պատմութիւն Վարդանայ Արեւելցիի» Թ. 3074 ձեռագիրին յիշատակարանը ունի սա տեղեկութիւնները.—

«Ի ժամանակի յորում էր թուականս մեր ՉԾԶ. (1307), ի պակասել արդարութեանց եւ ի բազմանալ անօրէնութեանց մերոց, առաւել բազմացաւ բարկութիւն եւ սաստկացաւ չարութիւն ազգին Նետողաց ի վերա մեր ազգին քրիստոնէից, քանզի ել տղայ հասակաւ այր մեծ ի Խորասանայ միականի, համանման Նեռինն, որ գալոցն է, անուն նորա Խարբանդա, որ թարգմանի իշու ծառայ, որդի Արղունին, որդոյ Հուլայունին։ Սա բառնալ կամեցաւ զՔրիստոնէութիւն աշխարհիս Հայոց եւ Վրաց, զոր խափանեաց Տէր եւ ոչ կատարեցաւ չար խորհուրդ նորա։ Յետոյ այլ բանս մտաւ ածեաց արբանեկն սատանայի, առաքեաց ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ դնել նշան խայտառակութեան քրիստոնէից (1) եւ հարկ առնուլ ըստ մարդաթուի խ (40) արծաթս, մինչ ի ժ. (10) ըստ կարի» (Լ. Ս. Խաչիկեան, ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, 1950, Երեւան, էջ 46)։

Երեւանի մատենադարանին 1307 թուականով (Թ. 4881) ձեռագիրին յիշատակարանը նաև ուշագրաւ է և կը հաստատէ բռնի իսլամացման փորձերը։

«Եւ նեղեն [ազգ Նետողաց] զամենայն քրիստոնեայք դառնալ ի պատիր յոյսն իւրեանց, զոմն նեղեն, զոմն տանջեն, զոմն սպանանեն, զոմանց զինչսն յափշտակեն, եւ ոչ այնու շատացեալք, այլ եւ եդին ի վերայ ամենայն քրիստոնէից հարկն եւ նշանս նախատանաց՝ ի վերայ ուսոց թիկանցն կտաւս սեաւ, զի որք տեսցեն զնոսա՝ ճանաչեսցեն եթէ քրիստոնեայք են եւ հայհոյեսցեն եւ ամենեւին ջանան, զի մի երեւեսցի քրիստոնէութիւն ի վերա երկրի» (Նոյն, էջ 47)։

Այսպէս, կրկին անհանդուրժողութիւնը և պաշտօնեաներու ճնշումները, կը սաստկանային։

Խուտապենտէի կը յաջորդէ իր անչափահաս որդին՝ Աբու Սայիտ (1316—1336), որուն օրով Արաբներու մէջ ներքին քայքայում առաջացնելու քաղաքականութիւնը իր նպատակին հասաւ, վասնզի իսլամ ինքնագլուխ իշխանութիւններ երեւան եկան, ըմբոստ ամիրաներու և զօրապետներու գլխաւորութեամբ և երկիրը անիշխանութեան մատնուեցաւ և մոլեռանդ իսլամներ սանձարձակ գործել սկսան։

Այս շրջանին է որ Կարնոյ Գրիգոր եպիսկոպոսը հաւատոյ նահատակ կ'ըլլայ, 1321 Յունիս 20ին, Թիմուր Թաշ զօրավարի թոյլ տուած չըլլալուն համար որ կողոպտէ քաղաքին եկեղեցիները։ Զայն և հօրեղբայրը Պապ քահանան բռնի կը թլփատեն և անօրինակ բռնադատութիւններէ ետք՝ կը գըլխատեն հրապարակով։

(1) Ասիկա ակնարկութիւնն է այն հրամանին, որով կը հարկադրուէին քրիստոնեաները, մահմետականներէն զանազանուելու համար, իրենց մէջքին վրայ ունենալ սեւ կամ կապոյտ նշաններ։



Այս եպիսկոպոսին վկայաբանութեան գրիչը, (տես. Հայոց Նոր Վկաները 1903, Էջմիածին, 121—122), հետեւեալ տողերով կը ներկայացնէ ընդհանուր պատկերը այն մոլեռանդական արարքներուն, որոնք գործուած են այդ շրջանին.—

Ընդ ժամանակս բռնակալութեանն ազգին Նետողաց՝ կրկին զօրացեալ ազգն Իսմայէլեան՝ յարուցանէին հալածանս ի վերայ ամենայն քրիստոնէից, մանաւանդ ի վերայ աշխարհիս Հայոց։ Եւ չար հողմունք հազարայի հնչեցին հանգոյնօրէն ամբարիշտ թագաւորացն Դեկոսի, Դիոկղետիանոսի, եւ Յուլիանոսի Ուրացողին, քանզի ազգն Նետողացն դառնային ի դին Իսմայէլականաց եւ յաղագս մարմնականասէր կրօնից օրէնսդրին իւրեանց՝ յանձն առնուին զթլփատութիւն եւ արբանեկութեամբ նոցին բազում չարիք անցուցանէին յեկեղեցիս քրիստոնէից եւ զպաշտօնեայս Աստուծոյ խափանել ջանային ի սուրբ եկեղեցեացն Աստուծոյ։ Եւ ի բազում տեղիս յաւարի առեալ քակէին, զոր Տէր Յիսուս խափանեաց հոգով զօրութեամբ իւրով եւ խափանեսցէ զյարձակումն անօրինացն։ Եւ ըմբռնեալ զքրիստոնեայսն դառն տանջանօք նեղէին ուրանալ զքրիստոնէական հաւատն՝ որ ի Հայր եւ յՈրդի եւ յամենասուրբ Հոգի։ Դարձեալ տեղի եդուն եւ եդին հարկս ի վերայ քրիստոնէից եւ յամենայն գլխոյ առնուին եօթն ութ դահեկան՝ յամենայն ամի, կամ ուրանալ զՔրիստոս կամ տալ զդահեկանն՝ որ է խարան, զոր ոչ հնազանդեցան քաջահաւատքն եւ արիքն խաբեբայ աղանդից նոցա, այլ յանձն առին տալ զհարկն յամենայն ամի։ Եւ մերային սեռս եւ քրիստոսադաւան քրիստոնեայք մտանէին ի լուծ հարկացն եւ գնութեամբ տային զինչս եւ ստացուածս վաճառէին եւ տային յամենայն ամի եւ յերկոտասանամեայ մանկանէ առնուին զհարկն եւ բազումք տարագիրք եղեալ վասն հարկին»։

Իսկ Աբու Սայիտէն ետքը տիրող անիշխանութեան շրջանին, մանաւանդ 1335—1336 տարիներուն՝ երբ մոլեռանդ մահմետական՝ Ալի Փաշա տէրն էր պետութեան, Մուսին կամ Մուսա (1336—1338), երբ իշխանութիւնը ստացաւ շնորհիւ Ալի փաշայի, գործիք եղաւ անոր, մինչեւ որ Ալի Փաշա սպաննուեցաւ Խալիթ Աղայէն (վերը՝ 133)։ Այս շրջանին մոլեռանդներ ազատօրէն կը կոտորէին և կը թալանէին։

## ԶԱՔԱՐԻԱ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍԷՖԷՆՏԻՆԵԱՆԻ ԴԻՄՈՒՄԸ ԵՒ ՆՈՐ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐ

Զաքարիա Սէֆէնտինեան, Աղթամարի Կաթողիկոսը (1296—1336), որ Սիւնեաց Ստեփանոս Օրբէլեան Մետրապոլիտին բարեկամն էր, անձամբ կը դիմէ Պաղտատ՝ Մուսինի, 1335ին և կը յաջողի համոզել Խանը որ դադրեցնէ քրիստոնէից հալածանքը։ Սամուէլ Անեցի (159), կը պատմէ թէ 1335ին մեռաւ Աբու Սայիտ (1316—1335 +) «եւ նստաւ Արփա Ղանն Զ (6) ամիս եւ եկեալ քեռի Բուսայիտին (Աբու Սայիտին), Ալի Փաշայ Նուինն ի Բաղդատայ զԱրփա Ղանն եսպան, վասնզի քրիստոնեայ էր յառաջին Ղանորաց զարմէն, եւ ինքն իւրովի այլ նոր ղան եդ ի թախթն՝ Մուսի անուն (1336), որ ոչ ելաւ եւ ոչ զօրացաւ եւ ինքն Ալի Փաշայն վարէր զհուքմն Օրտուին՝ տա-

րիեւկս, եւ արար հրաման քակել զեկեղեցիս, եւ քակեցին ի բազում տեղիս ի Մոսլայ մինչ ի Խլաթ եւ ի Սալմաստ, մինչ որ գնաց առ նա Տէր Զաքարիա Աղթամարայ Կաթողիկոսն՝ պայազատն եւ արքայազարմն եւ ապա եբարձ զչար հուքմն»:

*Սամուէլի պատմութիւնը կը հաստատուի 1336 գրուած ուրիշ յիշատակարանով մը, որ Զաքարիա Կաթողիկոսի համար կ'ըսէ թէ* «զհաւատս Հայոց նոր գնեաց ի յանօրէն առաջնորդաց եւ զեկեղեցիքս ազատեաց Աստուծոյ տեսչութեամբն եւ ձեռօք իւրովք» (Թորոս Աղբար, *Բ., էջ* 253 *և Հ. Ներսէս Ակինեան*, Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ, էջ 47):

*Դանիէլ Աղթամարցի (Թովմա Արծրունի, էջ* 323) *ալ կը հաստատէ Զաքարիա Կաթողիկոսի գործունէութիւնը, գրելով թէ* «Սա կացեալ ընդդէմ չարեաց մրրկին Ալի Փաշային եւ այլոց նմանեացն նորա, որ խռոխտային ի վերայ սրբոց եկեղեցեաց եւ հաւատոց քրիստոնէից. սա բազում հարկս եւ խարաճս խափանէր ի վանորայց եւ ի կրօնաւորաց» (Գաւազանագիրք, 48):

*Վերջապէս ուրիշ յիշատակարան մը աւելի լիակատար կու տայ պատկերը հալածանքներուն, որոնց ի դարման,* «երիցս երանեալ երջանիկ հայրապետն Զաքարիայ հետ Ղանին գնացեալ մինչեւ ի Բաբելոն ամ մի ողջոյն եւ առլեխ առեալ ի նմանէ զկրաւնաւորքս եւ զքահանայսն ազատեաց ի հարկապահանջութենէ, այլ յաշխարհականացն եւ ի տղայոցն առնուին, որոց զարդիս խաղաղական կենաւք շնորհեսցէ նմա Տէր եւ իւրոցն ամենայն եւ զելիցն յիշատակ աւրհնութեամբ ի Քրիստոս», (*Հ. Ակինեան*, Գաւազանագիրք, 53, *Ե. Լալայեանց*, Ազգագր. Հանդէս, *ԺԲ.* 1905, 163—164)։

*Յիշատակարանը կը նկարագրէ մանրամասն՝ անտանելի կեղեքումները և կողոպուտները, որոնք կը գործադրուէին։*

*Եւ ասիկա ընդհանուր վիճակ մը կը դառնար քիչ յետոյ, ժամանակաւոր մեղմացումներէ վերջ։*

*Այսպէս, օրինակի համար,* 1340*ին կը նկարագրուի Գողթն գաւառին անպատմելիօրէն դառն վիճակը՝ Վերին Ագուլիս գրուած ձեռագիրի մը յիշատակարանին մէջ, զոր կրնանք ընդհանրացնել իբրեւ ամբողջ երկրին վիճակին պատկերը։ Հոն ըսուած է թէ* «Այլ բարձեալ է թագաւորութիւն, քանզի իշխանք են խռովարարք եւ տատանեալք, ի վերայ միմեանց աղմկեալք, զոր ոչ կարէ բերան պատմել զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց ի հեծելեաց, զորս երեսուն հազար մարդադեմ գազանաց ի վերայ երկրիս մերում յարձակեալք, զնետս սրեալ եւ զաղեղն լարեալ եւ զթուրս իւրեանց թափեալ յարեան ի վերայ երկրիս մերում եւ ով կարէ պատմել զանօրինութիւնս նոցա զոր արարին եւ գործեցին, քանզի բազում գաւառս գերեցին եւ աւերելով կործանեցին,եւ զինչս արդիւնեաց զամենայնն յափշտակեցին եւ զամենեսեան զքրիստոնեայս կողոպուտ արարին, մերկ եւ բոկ, եւ ոչ թողին եւ ոչ մի ինչ ի վերայ անձանց քրիստոնէից, այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան զոչխարաց եւ զեզանց, զկովուց եւ զցլուց, զիշուց եւ զերիվարաց, եւ զհանդերձս ի յանձնէ մերկացուցին եւ մերկս արարին ի տեսիլս խայտառակաց, քանզի ո՞ր աչք բաւէ տեսանել զաղիողորմ տարակուսանաց. եւ կամ ո՞ր անձն բաւէր տեսանել եւ



տանել այնմ չարչարանաց...» (*Մեսրոպ Վրդ. Մաքսուտեան*, Վերին Ագուլիսի եւ Շրջակայքի Հայերէն Ձեռագրերը, ԱՐԱՐԱՏ 1915, *կամ Ե. Լալայեան*, Գողթն ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ *ԺԲ. գիրք, Թիֆլիս*, 1905, *էջ* 165, *հմմտ.* «ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ» *Լ. Ս. Խաչիկեան, էջ* 324)։

*Այս բոլորը ցոյց կու տան թէ, ինչպէս հետզհետէ Իլխանեան պետութեան առաջին շրջանին կրօնական լայնախոհութեան օրերը անցած էին և սկսած էր մոլեռանդութեան շրջան մը, ուր քրիստոնեաները անխնայ կը հալածուէին։*

## ՌՑԼ ՍՌԿԱՑՆ Կ'ԱՊՐԻՆ ԵՒ ԿԸ ԳՈՐԾԵՆ

*Կրօնական հալածանքները բարեբախտաբար տեւական չեն եղած և դիմումներով յաճախ կը մեղմանային, և ժողովուրդը պարբերաբար շունչ կ'առնէր. մշտակայ, շարունակական և գրեթէ բնաւ չմեղմացող բաները՝ հարկահանութիւններն ու կեղեքումներն էին, որոնք ուղղակի հետեւանքներն էին Մոնկոլ ցեղին ընչասէր ու կողոպտիչ նկարագիրին։*

*Այնպիսի ծանր վիճակ մը ստեղծած էին ժողովուրդին համար, որ հայկական շրջաններու բնակչութեան մէկ մասը, տեսնելով պահանջուած հարկերուն իրենց կարողութենէն վեր ըլլալը, ստիպուած եղեր են գաղթել օտար երկիրներ (հմմտ. Ց. Մանանդեան,* Նոյն, 316)։ *Աւելցուցէք ասոր վրայ Մոնկոլ պետութեան կազմալուծումը և քայքայումը, հետեւանք, ինչպէս բացատրուած է (վերը* 130—138), *այն տեւական պատերազմներուն՝ որոնք մղել պարտաւորուած էր, իր գրաւած աշխարհամասին դիրքին բերմամբ, առանց Մոնկոլ հեռաւոր բնակավայրէն մարդկային կուտող նոր զանգուածներ ստանալու։*

*Հարաւի Արաբները և Եգիպտոսի Մեմլուքները, Արեւմուտքի՝ Սելջուկները Անդրկովկասի կամ Դաշտի Կպչաքի կամ Ոսկէ Հորդանին Մոնկոլները, շարունակ իր վրայ կը յարձակէին, և ինքը, անջատուած Մոնկոլ կայսրութենէն (տես՝ վերը՝* 119—130), *մինակը դիմադրելու պարտաւորուած էր այս ուժերուն։*

*Այսպէս, ներքին և արտաքին անբաղձալի կացութեան մը մէջ՝ Իլխանեան պետութիւնը չկրցաւ տոկալ և նուաճուած ժողովուրդները, մանաւորապէս իբրեւ նկուն, վաչկատուն և թափառիկ ցեղեր՝ որոնք իր սահմաններուն մէջ հիւրընկալուած էին, ինչպէս նաև հինէն ի վեր այդ տեղերը ապրող ազգերը՝ խլրտիլ սկսան, քաջալերուած Մոնկոլներու տկարանալէն։*

*Մենք հոս կրկին պիտի չթուենք իրարու յաջորդող ըմբոստութիւնները, և պիտի չխօսինք այն անիշխանութեան մասին, որ Աբու Սայիտի մահուան* (✚ 1335) *յաջորդեց, վասնզի արդէն խօսած ենք (վերը՝* 139—134). *և ոչ ալ պիտի խօսինք այն մանր իշխանութիւններուն մասին, որ ոչ-Հայ ցեղերէն կազմուած էին այս շրջանին։*

*Այդ նոր կազմուած իշխանութիւններէն ոմանք բաւական զօրաւոր էին և կրցան դեր մը կատարել, սակայն չկրցան կարգաւորեալ պետութիւններ կազմել, այլ ընդհակառակը ամբողջ երկիրը մատնեցին խառնակութիւններու,*

և խռովութիւններու, որոնցմէ Վրացիք միայն օգուտ քաղեցին և ամրապընդուեցան, վասնզի Վրաստանի Արեւմտեան և Հիւսիսային շրջանները քիչ աւերուած և համեմատաբար անվթար մնացած էին։

Չօպանեաններու և Ջելայիրեաններու իշխանութեան ատեն՝ Վրաստանի Գէորգ Փառայեղ (1314—1346) թագաւորը ոչ միայն կրցաւ զօրացնել և բարեկարգել իր երկիրը, այլ Վրաստանէն բաժնուած մի քանի շրջանները ենթարկեց վերստին իր իշխանութեան։

Իսկ Հայ իշխան-տանուտէրները չկրցան օգուտ քաղել տիրող նպաստաւոր վիճակէն, վասնզի ուժասպառ եղած էին։

Հայերը՝ որոնք ակամայ իրենց մասնակցութիւնը բերել պարտաւորուած էին Իլխանեան պետութեան մղած տեւական պատերազմներուն, անճրկուած էին իրենց առոյգ և կենսունակ տարրերէն՝ զրկուելով և թիւ կորսնցնելով, և միւս կողմէն հարկերու տարապայման ծանրութեան տակ տնտեսապէս քայքայուած և աղքատացած ըլլալով։

Այնպէս որ՝ Աբու Սայիտի (1316—1335) իշխանութեան ատեն, տիրողները տկարացած էին և սպառած (վերը՝ 130), սակայն նոյնքան ալ հիւծած էին Հայերը, որոնք չկրցան միասնաբար գործել, և հրաշք մըն էր պարզապէս երբ ԺԴ. դարու կէսերուն, Իլխանեան մեծ պետութեան անդամահատութենէն ետք իսկ՝ Հայաստանի հայկական իշխանութիւնները, թէև տկարացած և հիւծած վիճակով, բայց բոլորն ալ իրենց գոյութիւնը կը պահէին և նոյնիսկ անոնցմէ ոմանց մէջ տեղ տեղ կը շարունակուէր մշակութային փայլուն գործունէութիւն մը, հակառակ իրենց երերուն և անհաստատ վիճակին։

Այս երեւոյթը, որուն վրայ ծանրանալ, մեր առաջադրութենէն դուրս է, ցոյց կու տայ թէ Հայերը կրցած են այդ ձախող պայմաններուն մէջ իսկ կենսունակութիւն ցոյց տալ և միայն նիւթականին չկառչիլ ու չանտեսել հոգեկանը։

Իրապէս այդ շրջանին՝ Հայերը իրենց շինարարութիւններով և մշակութային աշխուժով, մտաւոր զարգացման համար ցոյց տուած իրենց ջանքերով, նշանաւոր եղած են ու տարած են ստեղծագործական աշխատանքներ, որոնք մեզ կը հիացնեն և զարմանքի մէջ կը թողուն։

Եթէ մշակութային այս ծաղկումը կատարուած ըլլար գէթ Բագրատունեաց թագաւորութեան պէս իշխանութեան մը ժամանակ, այնքան զարմանալի պիտի չթուէր. սակայն ասիկա կը կատարուէր վայրենի ժողովուրդի մը տիրակալութեան ատեն՝ հայկական պզտիկ հողատէր-իշխաններու հովանիին տակ, ինչ որ իրապէս հրաշք մըն էր։

Արդ, այդ փոքր և անզօր իշխանութիւնները, որոնք կղզեակներ էին բարբարոսական ովկէանոսի մը մէջ, նեցուկ հանդիսացան որ ապրի այս Ազգը և տեւէ՝ այդ ձախող պայմաններուն մէջ, անոր հոգեկան ուժը և կորովը պահպանելով մշակոյթի ճամբով, ինչ որ կրնայ պահպանել նաև ֆիզիքականը։

Իր դիմադրականութեան ու անվհատութեան մեծագոյն փաստը տուած է Հայ ժողովուրդը այդ շրջանին։ Եւ տանուտէրներու հայկական փոքրիկ իշխա-



նութիւններուն դերը, այս տեսակէտէն անգնահատելի է։ ԺԳ. և ԺԴ. դարերու ամէնէն փոթորկալից շրջանին իսկ՝ իր հայրենի հողին փարած մնալու մեր ժողովուրդին յամառութիւնը՝ մեր պատմութեան ամէնէն հետաքրքրական և գեղեցկագոյն էջը կրնայ նկատուիլ։ Երկիրը լքելով հեռանալու փորձութիւնը փարատած է՝ այդ փոքրիկ իշխանութիւններուն ներքին մշակութային և ոգեկան կեանքին շնորհիւ։

## ՀԱՅԱՍՏԱՆ ԷՕԶՊԷՔ ԹԱԹԱՐՆԵՐՈՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

## (1382—1468)

ԺԴ. դարուն վերջերը, ինչպէս ըսուեցաւ, Հայաստան Մոնկոլ տիրապետութեան տակ հիւծած և ուժասպառ եղած էր։

Հայերը, այլեւս դադրած էին բնակչութեան ստուար մասը կազմելէ, վասնզի Արաբական տիրապետութեան շրջանէն սկսեալ՝ շարունակ օտար ժողովուրդներ գաղթած և հաստատուած էին Հայաստանի մէջ՝ զանազան հանգամանքներով։

Այդ օտար ժողովուրդներու ներգաղթը շարունակուած է Ծայրագոյն Արեւելքէն դէպի Արեւմուտք խուժող այս ասպատակ և վաչկատուն ժողովուրդներով, վասնզի անոնք սոսկ զինուորական արշաւ չէր որ կը կատարէին, այլ տեղաշարժ մը և տունով տեղով կը հեռանային իրենց բնակավայրէն և ուր որ յարմարութիւններ կը գտնէին՝ կը տեղաւորուէին։

Նոյնպէս, ամէն տարի ամառը, իրենց բազմանդամ ընտանիքներով և անասուններով կու գային մեծ թիւով խաշնարածներու խումբեր, Հայաստանի հարուստ արօտատեղիներէն օգտուելու համար։

Անոնք ալ երբեմն կը տեղաւորուէին Հայաստան, որուն բնակչութեան ցեղային նկարագիրը արդէն մեծապէս այլայլած էր, և Հայաստանի զանազան մասերուն մէջ՝ նոյնիսկ նշանակելի թիւի մը, թերեւս — մեծամասնութիւն մը կազմելու աստիճան — հասած էին այլացեղ ժողովուրդները։

Այսպէս, Հայաստանի Արեւմտեան կողմը բնակած էին Թուրքմէնները, Արեւելեան կողմը՝ Պարսիկները, իսկ Հարաւային կողմը՝ Քիւրտերը։ Այս հայկական հողերը բռնագրաւող ժողովուրդները և ցեղախումբերը Հայաստանի զանազան մասերուն մէջ կազմած էին ինքնիշխան փոքրիկ պետութիւններ — մեծ մասամբ Քիւրտ պետերու իշխանութեան տակ — որոնք շարունակ իրարու հետ ալ պայքարի մէջ էին։

Հայ մի քանի շատ փոքր իշխանութիւններ ևս, իրենց գոյութիւնը կը պահէին Հայաստանի մի քանի անխուլ մասերուն մէջ։

Հայաստան իսպառ կտրուած էր քրիստոնեայ աշխարհէն, որուն Արեւել-

քի մեծ ներկայացուցիչը՝ Բիւզանդական Կայսրութիւնը, ստուերի մը վերածուած և սահմանափակուած էր Վոսփորի և Տարտանելի նեղուցներուն շուրջը, իսկ Փոքր Ասիոյ մէջ տիրակալող Սելջուկ Ռումի Կայսրութիւնը — Մոնկոլ հարուածներու տակ քայքայուած և հիւծած — իր տեղը տուած էր Թաթարներու ցեղակից՝ Օսմանցի Թուրքերու երիտասարդ պետութեան, որ երբեմն սոսկ աննըշան ճորտութիւն մը, յաջողած էր Ռումի Սելջուկ Կայսրութեան բոլոր հողերը գրաւել և բաւական պատկառելի պետութիւն մը կազմել, փանզի իր պետերը խորագիտութեամբ կրցած էին չահիլ Փոքր Ասիոյ բնակչութիւնը՝ Յոյները և Հայերն ալ միասին առնելով։

Անիշխանութեան և չփոթի շրջանէ մը յետոյ, որ կարծես շուարումի մատնած էր Մերձաւոր Ասիոյ բոլոր ազգերը, որոնք ալեկոծումէ մը հազիւ փրկուած մարդերու նմանութիւնը ունէին, Հայաստան ևս կ'ապրէր այսպիսի շուարումի շրջան մը, բաժնուած զանազան փոքր ուժերու միջև, երբ Ասիական բարբարոսներու երրորդ ահարկու արշաւին առջև գտնուեցաւ։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐ

Այս երրորդ արշաւանքին հերոսն էր Էօզպէք Թաթարներու ահարկու առաջնորդը՝ Լէնկ Թիմուր, որ իր սոսկալի ուժով կը ձեռնարկէր վերականգնել Ջինկիզ Խանի մեծ պետութիւնը։

Թուրք Կէօրէկէն ցեղախումբին Պաթլաս ընտանիքին կը պատկանէր Լէնկ Թիմուր, որ Ճինկիզ Խանի չափ վայրագ հետևող մըն էր անոր ռազմավարական արուեստին, աւելին ունենալով՝ ամենածայրայեղ կրօնամոլութիւնը։

Ան ծնած էր 1335ին, Թաթարիստանի Քէշ քաղաքը (Սմրղանտի մօտ), ուր իր հայրը եղած էր տեղական փոքր իշխանաւոր մը։ Լէնկ Թիմուրը ներբողող Պարսիկ և Արաբ պատմիչները, զայն կը ներկայացնեն զտարիւն Մոնկոլ և չառաւիղ Ջինկիզ Խանի տոհմին, սակայն աւելի հաւանական է — ինչպէս կ'ընդունին նոր պատմագիրներ — որ անիկա Ջաղաթա-Թուրք մըն էր (Յ. Մանանդեան, Գ. 344)։

ԺԴ. դարուն երկրորդ կէսին, Ջինկիզի՝ Ջաղաթա որդւոյն սերունդը այլևս միահեծան չէր իշխեր Կեդր. Ասիոյ մէջ։

Մոնկոլ այս Ուլուսը արդէն շատոնց քայքայուած էր և բաժնուած մեծ ու փոքր անկախ կամ կէս-անկախ իշխանութիւններու։

Լէնկ Թիմուր, 1369—1370ին, զանազան արկածախնդրութիւններէ ետք, դառնալով Ջաղաթա տոհմին աննշան ու անուանական մէկ խանին վէզիրն ու Աթաբէկը, տասը տարուան մէջ, վերականգնեց Ջաղաթա նախկին հզօր պետութիւնը, իսկ 1380էն սկսեալ, տարածեց նաև անոր իշխանութիւնը Պարսկաստանի Արևելեան մասերուն վրայ։

1381—82ին, այդ ասպատակութիւններու միջոցին՝ Էօզպէք Թաթար հրոսներ, որոնք մինչև Ատրպատական հասած էին, սփռուեցան Վանէն մինչև Կարսի կողմերը, ինչպէս նաև Սիւնիք, և 12 գաւառներ աւերեցին և աւարի տուին (Թ. Մեծ, 14)։ Բայց 1382 Յունուար 6ին, եկած սաստիկ ձիւնը



և ցուրտը, զանոնք ստիպեց չուելու։ Այդ պատճառով «բազումք զերծան ի
զերութենէ» և ասպատակողները «զբազում մասն աւարին ի բաց ընկեցեալ,
գնացին յաշխարհն իւրեանց» (Թ. Մեծ 14, Ազգ., 1968)։
Այս առաջին անկանոն արշաւները կարծես նախափորձերն էին այն հսկայ
աշխարհակալութիւններուն, զորս Լէնկ Թիմուր պիտի ընէր Ասիոյ կեդրոնէն
դէպի հիւսիս, դէպի արևելք, դէպի հարաւ և դէպի արևմուտք, ամէն կողմ
հուրի և սուրի մատնելով։
Լէնկ Թիմուրի վերակազմած Ջաղաթա պետութիւնը մեծ ուժ մը կը ներ-
կայացնէր, քանի որ մեծ խաներու իշխանութիւնը ստուերի վերածուած էր և
Ասիոյ մէջ կազմուած էին բազմաթիւ իշխանութիւններ և Սուլթանութիւններ,
որոնք իրարու դէմ կը մաքառէին չարունակ։
Մեծ Խալիֆան կը նստէր Պաղտատի մէջ, բայց որևէ ազդեցութիւն չու-
նէր միւս Սուլթաններուն վրայ, որոնք կ'իշխէին Հայաստանէ զատ, Պարս-
կաստանի, Ատրպատականի, Միջագետքի, Ասորիքի, Եգիպտոսի, Փոքր Ասիոյ
և Կովկասի մէջ, և ամենուն ձեռքին տակ ալ Հայեր կային, որոնք այս շփոթ-
ներուն և իրարու դէմ մղուած կռիւներուն աղէտալի հետևանքները կը կրէին։
Լէնկ Թիմուր չբաւականացաւ Ջաղաթա պետութիւնը վերականգնելով,
այլ ուզեց Ջինկիզխանեան ընդարձակածաւալ կայսրութիւնը վերահաստատել։
Այս նպատակով, խաշնարածներու խուժանի մը գլուխը անցնելով՝ Սմրղանտէն
ճամբայ ելաւ 1380ին, նուաճելու համար բոլոր այն ազգերը, որոնք Ջինաստանէն մինչև Միջերկրական և Եգիպտոսէն մինչև Ռուսիոյ Միջնաշխարհը
տարածուած էին, Պարսկաստանը արիւնով ողողելէ, Հնդկաստանի մէջ մար-
դիկը անասուններու պէս մորթելէ ետք՝ հասաւ Հայաստանի սահմանները։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ Ա. ԱՐՇԱՒԱՆՔԸ Ի ՀԱՅԱՍՏԱՆ

1386ին, մեծ բանակով մը մտաւ Ատրպատական։ Սուլթանիյէի Ամիրան
Ճտիլ՝ հպատակութիւն յայտնեց Լէնկ Թիմուրի և անոր օգնեց՝ հալածելու հա-
մար Ահմէտ Ամիրան՝ որուն մայրաքաղաքը՝ Դաւրէժը գրաւուեցաւ և թալանի
տրուեցաւ՝ 1386ի գարնան։
Սակայն Ճտիլ, իբրև գաղտնի դաւադիր ամբաստանուելով, պղնձէ սանի
մէջ եփուելով՝ սպաննուեցաւ (Թովմա Մեծոփեցի, 13)։
Լէնկ Թիմուր՝ նոյն տարին՝ Ատրպատականէն առաջանալով դիմեց դէպի
Հիւսիս-Արևմուտք և Նախիջևանի ճամբով արշաւեց Հայաստան և Վրաստան։
Արաքս գետը անցնելով՝ մտաւ Սիւնիք և պաշարեց և գրաւեց Որոտան
բերդը (Սամուէլ Անեցի, 170)։
Յակոբ գրիչ, որ այդ օրերուն հոն գտնուած է, իբրև Յովհաննէս Որոտ-
նեցիի աշակերտ, կը գրէ իր Երնջակի մէջ 1386ին գրած ձեռագիրին յիշա-
տակարանին մէջ թէ՝
«Եւ մինչդեռ աննառ ցնծութեամբ եւ բերկրալից ուրախութեամբ լըց-
եալ կայաք, ռաբունին կ (= 60) աշակերտօքն, ի բնիկ գաւառն իւր` յեր-
կիրն Որոտան, կարդալով եւ գրելով զՍուրբ Մատեանս, մեղքն իմ ծովաց-
եալ եհան զգունդս անօրինաց ի վերայ Քրիստոնէից, մանաւանդ ի վերայ

տանն Բուրտելի: Որ եկին եւ առին զբերդն Որոտան եւ հայրենազուրկ արարին զպարոն Սմբատն, որդի Նանիկին, եւ կամէին ձերբակալ առնել զՍուրբ Րաբունիս մեր, վասն հայրենեացն ժառանգութեան: Եւ սա, կամօքն Աստուծոյ զերծաւ ի նոցանէ եւ Բ (= 2) ամ բոլոր յայլեւայլ տեղիս շրջէր աշակերտօքն հանդերձ՝ կարդալով եւ ուսուցանելով»: (*Լ. Խաչիկեան*, **ԺԴ. դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ**: 560, *Ձեռ. Թ.* 5707, *Երեւանի Մատենադարանին*)։

*Այն ատեն է որ Յովհաննէս Որոտնեցի ալ Ծար գիւղի բարձունքը ապաւինեցաւ։ Ապրակունիէն փախչելով Երնջակի պաշարման պատճառով* (Թ. Մեծ, 17):

*Նոյն տարին* (1386)՝ *Լէնկ Թիմուրի զօրքերը ասպատակեցին նաեւ Այրարատեան նահանգին Արեւելեան շրջանները, մինչեւ Կարբի, Բջնի, Գառնի, Սուրմալի* (1) *և Կողբ.* (Սամուէլ, 17, Թովմա Մեծոփեցի, 17), *որոնց բնակիչները գերի վարեցին կամ սպաննեցին։*

*Լէնկ Թիմուրի անգթութեանց հռչակը իր գալէն առաջ տարածուած էր երկրին մէջ։ Երբ իր արշաւանքին լուրը առին՝ շատեր, սարսափած, իրենց տունն ու տեղը լքեցին և ապահովութեան համար լեռները և ձորերը քաշուեցան։*

*Թովմա Մեծոփեցին կը պատմէ որ Սուրմալուի և շրջակայ գիւղերուն բնակչութեան մէկ մասը, բարձրանալով Կողբի հարաւային կողմերը գտնուող Բարթող լեռը,՝ դիւցազնաբար կռուած են արշաւողներուն դէմ և զանոնք պարտութեան մատնած։*

«Իսկ բարեպաշտ տանուտէր մի Մարտիրոս անուն՝ յոյժ զօրեղ զօրական, ողորմած եւ աղքատասէր, ի գեղջէն Կողբայ, ելեալ ի լեառն Բարդող, որ կոչի յայլոց ազգաց Թակալթու, յոյժ արի եւ քաջ մանկամբք գեղջն ապրեցոյց զամենայն հաւատացեալսն, մեծաւ պատերազմաւ եւ սրտապինդ զօրութեամբ օգնութեամբ հզօրին Աստուծոյ, Յիսուսի Քրիստոսի Փրկչին մերոյ: Եւ թէպէտ բազում անգամ պատերազմեալ՝ ոչ կարացին առնուլ զլեառն զայն» (Մեծ., 18)

*Այրարատի մէջ այս աւերները գործելէ ետք, Լէնկ Թիմուր գերիներու ստուար բազմութեամբ մը գնաց Վրաստանի մայրաքաղաք Տփղիսի կողմերը, պաշարեց ու առաւ զայն* 1386 *Նոյեմբերին և անկէ ալ անհամար գերիներ վերցուց։* (Թովմա Մեծոփեցի, էջ 22, Սամուէլ Անեցի, 17, Միքայէլ Պանարետի, 17, 43):

*Միքայէլ Պանարետ Բիւզանդացի պատմագիրին համաձայն՝ Լէնկ Թիմուր* «Չինական լեռներէն ճամբայ ելլելով եւ հետը առնելով, ինչպէս կ՚ըսեն գիտցողները, աւելի քան 800,000 մարդ՝ եկաւ եւ գրաւեց ամբողջ Պարսկաստանը: Յետոյ մտնելով նաեւ Իբերիայի լեռները, կռուեցաւ եւ նուաճեց զարմանքի արժանի Տփղիսը, գերի առաւ հզօր ռազմիկ Բագրատ թագաւորը, անոր կինը՝ մեր [*իմա՛ Բիւզանդացւոց*] թագաւորին դուստր չնաղ Կիր-Աննան եւ անոր Դաւիթ որդին, իսկ բնակիչները ջարդեց եւ ոչնչացուց: Թէ ինչպիսի աւերածութիւններ գործեց, որքան սուրբ պատկերներ կողոպտեց եւ այրեց, որ-

(1) Սուրբ Մարի ալ գրուած է (**Թ. Մեծ**, 17):



քան թանկագին քարեր, մարգարիտներ, ոսկի եւ արծաթ տարաւ՝ ասիկա ոչ ոք գիրի չի կրնար առնել: Ասիկա տեղի ունեցաւ Նոյեմբեր ամսին 21ին, 895 թ.ին», (= 1386):

*Թիֆլիզի կոտորածին վրայ խօսելով՝ Թովմա Մեծոփեցի* (19) *կ՚ըսէ թէ* «Սպանեալն յոլով էր քան թէ ապրեալն» *և Ստեփանոս Փիր Վարդապետը հազիւ կրցած էր ազատիլ* «մազապուրծ եղեալ ի սպանմանէ» (նոյն):

*Լէնկ Թիմուր ձմերելու համար* (1386—7ի) *կը քաշուի Մուղան* (Թ. Մեծ 20, Սամուէլ Անեցի, 17)՝ *իրեն հետ տանելով Բագրատ Ե. Թագաւորը։ Ան բռնադատեց որ Բագրատ ընդունի մահմետականութիւնը։ Վրացի արքան առ երես համակերպեցաւ, երբ այլեւս ընծաներով չկրցաւ ողոքել Լէնկ Թիմուրը։ Բագրատ յետոյ՝ իբր թէ Վրաստանը հպատակեցնելու համար՝ Լէնկ Թիմուրէն* 12,000 *հոգի առաւ և զանոնք դաւով սպաննել տուաւ, ու ինք ապաստանեցաւ Վրաստանի լեռնային մասերը* (Թ. Մեծ, 20):

1387*ի գարնան՝ Լէնկ Թիմուրի զօրքերէն մաս մը կրկին յարձակեցաւ Սիւնիքի վրայ* (Սամուէլ Անեցի. 171) *և ուրիշ մաս մըն ալ Շիրուանի կողմերը Թախթամիշի զօրքերուն դէմ, որոնք Տէրպէնտէն անցնելով, հասած էին Սամուր գետը։ Սակայն շուտով պարտուելով, դարձեալ Տէրպէնտի ճամբով քաշուեցան ետ* (*Յ. Մանանդեան*, Քնն. Տես., 373)։

*Սիւնիքի վրայ, Լէնկ Թիմուրի կատարած այս երկրորդ արշաւանքի ընթացքին՝ երկիրը աւելի մեծ աւերածութեան ենթարկուեցաւ, ինչպէս կը հաստատէ* 1387*ին Շահապոնք ամրոցը գրուած ձեռագիրի մը (պահուած Երեւանի Մատենադարան, Թ.* 3616) *գրիչը, որ կը յայտնէ թէ ձեռագիրը ընդօրինակած է ինքը,* «ի խռովութեան ժամու, եւ յանձուկ տեղւոջ, յորում պաշարեալք ի հինից Նետողաց կրկին յարուցեալ, նորազմ անուանեալ յազգաց, զոր եւ անբաւ բազմութեամբ ասպատակեալ աւերեաց զաշխարհ Հայոց, Պարսից, Վրաց եւ զամենայն արեւելեայս: Ոմանք ի գերութիւն վարեալ, արք եւ կանայք, եւ կէսք առ թուր դիաթաւալ սրախող գալարեալ առհասարակ՝ քահանայք եւ աշխարհականք, զէտ անկեալ դիակամբք, անթաղ ընկեցեալք, եւ այլ. ի բազմազան տանջարանս մաշեալք: Ոմանք հրով կիսայրեացք տոչորեալք, եւ այլք ի սովոյ զազանաբեկ վտանգեալք, կէսք խստամբեր կռճիւք չարչարեալք, եւ այլք երկիւղիւ պակուցեալք: Որ եւ մերն ունելով իբր մտալս կամաւոր ի պահոց Շահապոնս կոչեցեալ ամրոցի, ոչ ինչ ընդհատ բերելով ի մեզ զօրինակ մեծի սաստասարսուռն աստենի: Նախ որպէս անդանօր ողջունեն զխաղաղութիւն եւ զշինութիւն գոլ, յեղակարծ ժամու հասանել բարկութիւն, նմանապէս եւ աստ՝ աւուրն Կիրակէի ասացեալն կրկնոյ Զատկի, յանկարծահաս ժամու շարժեալ հեղեղաց ուղխից խռովութեան զաւրաց սաստկագին գոչմամբ եւ ահագնատեսիլ. սուսերամերկ կորովալին Նետողաց, որք պատեալ պահեալ պաշարեին զմեզ...: Եւ այս աղէտ անզերծ տարակուսից շրջապատեալ զմեզ շրջագայութեամբ տումարի Հայկազեան սեռից՝ հարիւրից կրկնակի քառից եւ վեցեաց վեցից (= 1387), յորում ամի եղեւ Ծռասօն Զատկաց ազգի կոչեցեալ Յունաց, ի վերոյ ասացեալն աւուր Նորոյս տէրունեաց» (ԺԴ. դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, *Լ. Խաչիկեան*, *էջ* 567—568, *Յ. Մանանդեան*, Քնն. Տես., *էջ* 348)։

1387ի այս արշաւանքին ժամանակ գրաւուած են նաև Փոքր Սիւնիքը և Մարը, ուր սրախողխող կոտորուեր և արիւնաներկ դիաթաւալ նահատակուեր էին Դոփեան իշխան Հասանը, անոր կինը՝ Խանձան և որդիները՝ «Քաջ եւ արի պարոններ» Գրիգորը, Սարգիսը Շանշին, Ջհանշին, Աղբուղան և Շիրվանը, և նաև «Թագազարմ իշխան Սասուն» (Գր. Խլաթեցի, Յիշատակարան Աղէտից, Վաղարշապատ, 1897, էջ 6, Կարապետ Եպս., Նիւթեր Հայ Մելիքութեան մասին, Պրակ Բ., 84—85 և 185, Վանի Հայկավանք Եկեղեցիի Ճաշոցի Յիշատակարան)։

Գրիգոր Խլաթեցի կը յիշէ նաև թէ Լէնկ Թիմուր, 1386/87ի արշաւանքներուն ժամանակ, Հայաստանի իշխաններէն շատերը գերի տարած է (Յիշատակարան Աղէտից, էջ 6)։

«Իշխանք բազումք ի տանց ելին
Եւ ի յընչից պարապեցին,
Ցերիվարացըն զրկեցին
Եւ հետիոտըս տանէին»։

## ԿԱՐԻՆ ԵՒ ԵՐԶՆԿԱՅ ԿԸ ԳՐԱՒՈՒԻՆ

Լէնկ Թիմուրի զօրքերը 1387ին հասած են Հայաստանի սիրտը Կարին։ Ինչպէս կը հաստատէ նոյն թուականին Երզնկայի մէջ գրուած Ճաշոցի մը գրիչը՝ Գէորգ։ Ան կը գրէ թէ «յայսմ ժամանակի յորում էր թուական Հայոց ՊԼԶ (= 1387), ելաւ ազգն խուժադուժ յարեւելից, ի կողմանց հիւսիսոյ, որ կոչէր Լանկ Թամուր, եւ եկն մինչեւ յԱրզրում, եւ բազում ոճիրս գործեաց... զոր յետս դարձոյց Աստուած, եւ աղօթք Սուրբ Լուսաւորչին պահեաց զքաղաքս Երզնկայ եւ զգաւառս իւր, որք եւ առ մեզ բոլորակայ» (ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի յիշատակարաններ, 270)։

## ՀԱՐԱՒԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Լէնկ Թիմուրի ահարկու ուժէն ահաբեկ՝ Հայաստանի մահմետական ամիրաները և պէկերը, միառմի ստիպուեցան խոնարհիլ այս աշխարհասասան բռնաւորին առաջ. ոմանք ալ ընդդիմութիւն ցոյց տալով՝ մեծամեծ արիւնահեղութիւններու պատճառ եղան։ Լէնկ Թիմուր, մանաւորապէս զօրաւոր ընդդիմութեան հանդիպեցաւ, հարաւային Հայաստանի մէջ, ուր կազմուած էին, Մոնկոլներու տկարանալէն վերջ, երկու մեծ Ամիրայութիւններ՝ աւատապետական կարգերով, Թուրքման, Մար և Քուրդ (Թ. Մեծ, 27 և 29)։

Ասոնց երկու գլխաւորներն էին Գարագոյունլուներու և Ագգոյունլուներու կամ Պայատրեաններու իշխանութիւնները (տես. վերը՝ 132), որոնք բազմաթիւ փոքրիկ իշխանութիւններու համամիութիւններ էին՝ գերիշխան պետի մը գլխաւորութեամբ։

Լէնկ Թիմուրի ատեն՝ Գարագոյունլուները շատ զօրացած էին Տուրուբերանի մէջ։ Իրենց պետը՝ Գարա Մէհմէտ, որ 1378ին հիմնած էր Գարագոյունլուներու հարստութիւնը և կ'իշխէր իր զաւակին՝ Գարա Եուսուֆի հետ,



ԺԴ. դարուն վերջերը, իր իշխանութեան տակ ունէր Քաջբերունիքը, Տարօնը և Սասունը, Լէնկ Թիմուր, 1387ի գարնան՝ յանկարծակի յարձակեցաւ Գարա Մէհմէտի վրայ, որ փախաւ Ճապաղջուր, ուրկէ անակնկալօրէն ետ դառնալով՝ հարուածեց Լէնկ Թիմուրի Լողմաղան Թաթար զօրավարին զօրքը (Մեծ ,21)։

Այսպէս, Ճապաղջուր գաւառին և Լեռնային Խոյթի շրջանին մէջ պարտուելով՝ Լէնկ Թիմուրի բանակը գնաց Արեւելք և պաշարեց Վան քաղաքը։ Այս պարտութիւնը կը հաստատէ Մեծոփեցի (24), գրելով՝ թէ «բեկեալ խորտակեցաւ զօրութիւն Ջաղաթային»։

Լէնկ Թիմուր՝ պարտուած էր թէև, սակայն ժողովուրդը, կ'երեւի այնքան քիչ վստահութիւն ունէր Գարա Մէհմէտի և Գարա Եուսուֆի այս յաղթանակին վրայ՝ որ Արճէշի և Մանազկերտի շրջակայից բնակիչները Ս. Կարապետի երկնային պաշտպանութեան ապաւինելով, դէպի Գլակայ վանքը փախան։

Գարա Եուսուֆ, նոյնպէս անվստահ իր յաղթանակին վրայ, Տարօնի ժողովուրդը Սասուն բարձրացուց, Խոյթի և Բաղէշի Շէրիֆ Ամիրային յանձնարարելով որ զայն քշէ դէպի Խոյթ՝ «բռնութեամբ եւ հարկանելով», զի «քրիստոնէիցն ապստամբեալ ոչ կամէին ելանել ի լեառն Խութայ եւ Սասնոյ» (Մեծ, 22)։ Բայց ետքը համոզուեցան թէ ճիշդ էր այս միջոցը, վասնզի անով կրցան վանել Թաթարները, որոնք հեռացան՝ հալածուելով նոյնիսկ Սասունի և Խոյթի քրիստոնեայ և իսլամ բնակիչներէն։ (Մեծ, 27)։

Լէնկ Թիմուր, Տարօնէն դէպի Վասպուրական իր անցքին վրայ, իր ահարկու համբաւին շնորհիւ Մուշի Ամիրային հնազանդութիւնը ապահովելէ և Բաղէշի Ամիրային՝ Ամիր Շէրիֆի հպատակութիւնը ընդունելէ (Մեծ, 28), յետոյ ուղղուեցաւ դէպի Արծկէ (նոյն), որուն Սահանդ իշխանը, Հեր եւ Զարեւանդ գաւառին Օրտու Բուղա անուն իշխանին միջնորդութեամբ հնազանդեցաւ և «սիրեցեալ եղեւ... եւ ազատեցաւ... երկիր ամենայն եւ մնաց ի խաղաղութեան» (Մեծ, 29), և աւերեալ աշխարհը վերաշինուեցաւ (Մեծ, 29—30)։

## ՎԱՆԻ ԱՂԷՏԸ

Լէնկ Թիմուր, որ Տարօնէն՝ Վասպուրական եկած էր, հոն ալ ընդդիմութեան հանդիպեցաւ, վասնզի Վանի Եղտին Ամիրան, որ ըստ Թովմա Մեծոփեցիի, ծագումով «յազգէն Սենեքերիմեանց», (Մեծ, 30), այսինքն Արծրունի էր, անմիջապէս հնազանդութիւն չյայտնեց, այլ ուշ։ Լէնկ Թիմուր զայն կալանաւորել տուաւ և պաշարեց Վանը (Մեծ, 30)։

1387 Սեպտեմբերին, երբ քաղաքը անձնատուր եղաւ, երկար ժամանակեայ պաշարման միջոցին, բանակը մեծ կորուստներ ունեցած ըլլալուն, Լէնկ Թիմուր մեծ վրէժխնդրութեամբ և անողոք խստութեամբ վարուեցաւ այս քաղաքին հետ։ Հրամայեց կիները և տղաքը գերի վարել, իսկ բնակչութեան մնացեալ մասը գահավիժել Վանի բերդէն վար։ Կը պատմուի թէ դիակներու կոյտը այնքան բարձրացաւ որ, վերջին նետուողները այլեւս չէին մեռներ, (Թ. Մեծ, 30, Գր. Խլաթեցի, 9, Սամուէլ Անեցի, 171)։

Այսպէս, ինչպէս ականատես պատմագիրը կ'ըսէ՝ «աւերեցաւ ամենայն

երկիրս, զի յԱրճէշոյ մինչեւ ի ծովն Վրաց եւ մինչ ի Կուր գետն Աղվանից, ծաղախեցաւ արեամբ անմեղաց, երկիր ամենայն չարչարանօք, սպանմամբ եւ գերութեամբ» (Մեծ, 32). Եւ իբրեւ հետեւանք՝ սաստիկ սով մը տարածուե-
ցաւ 1388ին, մինչ Լէնկ Թիմուր հեռացած էր Հայաստանէն 1387ի վերջերը,
Հայաստանի ղէկը եւ լիակատար նուաճումը յանձնելով Ազտինի։

Լէնկ Թիմուրի այս առաջին արշաւանքը երկու տարի (1386—1388) տե-
ւեց եւ աւերածութեան շրջան մը եղաւ՝ իր կոտորածներով եւ բերած սովալլ
սովովը, Թովմա Մեծոփեցի (32) կ'ըսէ. «ջնջեցաւ մարդկութիւն, մանաւանդ
Հայկազեան զաւառիս»:

ՎԵՑԱՄԵԱՅ ՀԱՆԳԻՍՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ

1388էն սկսեալ Հայաստանը վեց տարի երեւութապէս խաղաղ էր ու հան-
գիստ, մինչեւ Լէնկ Թիմուրի երկրորդ արշաւանքը՝ 1394։ Այս վեցամեայ
շրջանին,՝ առաջին երեք տարիներուն (1388—1391), Լէնկ Թիմուր զբաղեցաւ
նախ Կովկասեան լեռներու հիւսիսակողմը Ոսկէ Հորդանի Թոխթամիշ Խանին
դէմ պատերազմելով։ Ան գրաւեց անոնց Սարայ մայրաքաղաքը։ Իսկ 1392-1394
զբաղեցաւ զսպելու ապստամբ Պարսիկները՝ Իրաքի եւ Ֆարսիստանի մէջ, կըռ-
ուելով Մուզաֆֆէրտին Շահ Մանսուրի դէմ (Յ. Մանանդեան, ՔՏՆ. Տես.,
351)։ 1394ին, յաջողեցաւ յաղթել վերջապէս իր երկու ամենազօրաւոր թշնա-
միներուն՝ Դեշտ-ի-Ղիփչաղի մէջ Թոխթամիշը եւ Ֆարսիստանի մէջ՝ Շահ Ման-
սուրը, որոնք այնքան զօրաւոր դիմադրութիւն ցոյց տուած էին։

Նա անցաւ Տոնը եւ առաջացաւ մինչեւ Մոսկուայի մօտերը, (Թ. Մեծ.,
68)։ Նոյն տարին (1394)՝ Լէնկ Թիմուր գրաւեց Պաղտատը, ուր անլուր ան-
գթութեան արարքներ գործեց եւ վերջ տուաւ Հուլաղուի հիմնած Իլխանեան
պետութեան։

Յաջորդաբար տիրեց Պասրայի, Մուսուլի, Տիարպէքիրի (Մեծ., 44—45)
եւ աւերեց Մերտինը եւ շրջակայքը (Մեծ., 105)։ Յետոյ Իրաքէն՝ Պաղտատի
ճամբով նուաճեց Մուսուլի շրջանը եւ անկէ անցաւ Հիւսիսային Միջագետք եւ
ապա Հայաստան։ Անկէ 1387ին իր հեռանալէն յետոյ, Գարագոյունլու Թուրք-
մէնները, որոնք ուժգին դիմադրութիւն ցոյց տուած էին 1387ին, վերստին
տիրեր էին այդ շրջաններուն։

1388ին կամ 1389ին մեռած էր անոնց առաջնորդը՝ Գարա-Մէհմէտ եւ
անոր յաջորդած էր իր որդին Գարա Եուսուֆ (1388/9—1420)։

ԼԷՆԿԻ Բ. ԱՐՇԱՒԱՆՔԸ ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Լէնկ Թիմուր, 1394ին, հարաւէն արշաւելով՝ նախ գրաւեց Հիւսիսային
Միջագետքը եւ անոր գլխաւոր քաղաքները՝ Ամիթ (= Տիարպէքիր), Մեր-
տին, Ուրֆա (= Եդեսիա) եւ Մծբին, ինչպէս նաեւ Հարաւային եւ Արեւմըտ-
եան Հայաստանը (Թ. Մեծ., 44—45, Գր. Խլաթեցի, 10, Սամ. Անեցի, 171,
Իպն Արաբշահ, թրգմ. Ա. Եպս. Տէր Յովհաննէսեան, 63—69),

Մերտինի մէջ գերի բռնեց Օրթոքեան Մէլիք Ջահէրը, զոր քիչ յե-



տոյ ազատ արձակեց եւ ո՛չ միայն վերահաստատեց իր գահուն վրայ, այլ նա-
եւ անոր տուաւ իր երկիրին սահմանակից շրջաններ։

Մերտինի կողմերէն Եօզպէք Թաթար զօրքերը ստուար թիւով խլամներ
եւ քրիստոնեաներ գերի առին, ի մէջ այլոց նաեւ չորս գիւղ արեւապաշտ
Հայեր՝ կոչուած Արեւորդիք։

Հիւսիսային Միջագետքէն Լէնկ Թիմուր առաջացաւ Արեւմտեան Հայաս-
տան, ուր իրեն ինքնաբերաբար անձնատուր եղաւ Երզնկա քաղաքը, որուն
կ'իշխէր Թախրաթան (Մեծ., 45)։

Այնուհետեւ մտաւ Բարձր Հայք ի գրաւեց Բասենի հարաւակողմը գըտ-
նուող Աւնիկ բերդը եւ կալանաւորեց անոր Մսեր իշխանը (Նոյն)։

Լէնկ Թիմուր ապա անցաւ Այրարատեան նահանգի Վանանդ գաւառը, եւ
առաւ Կարսը, Կոգովիտը եւ Արճէշը (Նոյն, 46) եւ կրկին աւերեց Սուրմալին եւ
Կողբը, բայց լուր առնալով որ Թոխտամիշի զօրքերը Տերպենտէն անցնելով
խուժած են Շիրուան՝ արագօրէն գնաց Առան (Թ. Մեծ., 45—46)։

Շիրուանի մէջ այդ ատեն կ'իշխէր Շէյխ Իպրահիմ Տերպենտցին (1382
—1417), որ 1386/7ին հպատակած էր Լէնկ Թիմուրին։

Երբ Եօզպէք Թաթարներու անհեղ առաջնորդին յաղթական բանակը մօ-
տեցաւ Շիրուանի սահմաններուն՝ Ոսկէ Հորդայի զօրաբանակը ետ նահանջեց
Տերպենտէն անցնելով եւ Լէնկ Թիմուր չուզեց զայն հետապնդել եւ Մուղանի
մէջ հանգստացաւ 1394—5ի ձմեռը եւ 1395ի գարնան սկիզբը ձեռնարկեց Թոխ-
թամիշի դէմ մեծ արշաւանքի մը՝ Տերպենտէն անցնելով եւ Թերեք գետի մօտ
զայն սոսկալի պարտութեան մատնեց (1395 Ապրիլ)։

Յետոյ անարգել արշաւեց դէպի հիւսիս եւ կողոպտեց եւ աւերեց Սարայը,
Կաֆան (= Թէոդոսիան), Ազախ (= Ազով) եւ Հաճի-Տարխանը (= Աժտերխան)։

Լէնկ Թիմուրի այս հիւսիսային երկիրներու մէջ զբաղած ըլլալէն օգտուե-
լով՝ Գարա Եուսուֆ փորձեց վերականգնել իր պետութիւնը, կռուելով նաեւ
Լէնկ Թիմուրի հնազանդութիւն յայտնող Արճէշի Սահանդ իշխանին եւ Ոստանի
Եզտին Քուրտ Ամիրային դէմ, իրեն հետ ունենալով Բաղէշի Իպրահիմ Ամի-
րան «ասող քրիստոնէից» որ եղբայրն էր «սիրող քրիստոնէից» Ամիր Շարաֆին
եւ անոր յաջորդած էր։

ԳԱՐԱԳՈՅՈՒՆԼՈՒՆԵՐ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԱԾ

Գարա Եուսուֆ պահ մը վերագրաւեց Արճէշը (Մեծ., 17), զոր չկրցաւ
պաշտպանել, Լէնկ Թիմուրի կողմէ Հայաստանի կառավարիչ նշանակուած Ոս-
տանի տէր՝ Եզտինը, որ պարտուած՝ համակերպեցաւ հաշտութիւն կնքելու Գա-
րա Եուսուֆի հետ (Մեծ., 47)։

Թաթար Աթալմիշ իշխանը, Բասենէն օգնութեան կը հասնի Եզդինի եւ
երբ կը տեղեկանայ որ անիկա հաշտութիւն կնքած է՝ Աղի գիւղը կը գերէ
(Մեծ., 48)։ Եուսուֆ եւ իր եղբայրը Արալի՝ երբ կ'իմանան ասիկա, կ'աճապա-
րեն եւ կը բռնեն Ջաղաթան եւ անոր զօրքը կը կողոպտեն եւ Աթալմիշ իշխա-
նը ձերբակալելով Եգիպտոս կը ղրկեն (Մեծ., 48)։

Բայց այս խառնակութիւնը շատ կարճ տեւեց։ Լէնկ Թիմուր որ 1396ին

արդէն դարձած էր Հայաստան, Գարա Եուսուֆի դէմ ղրկեց մեծ բանակ մը իր Միրանշահ (1) որդւոյն առաջնորդութեամբ, Գարա Եուսուֆը հալածեց մինչեւ Սուրիա, ուրկէ կ'անցնի Եգիպտոս և տասը տարի (1396—1406) հեռու մնաց Հայաստանէն (Մեծ., 49)։

Իսկ Բաղէշի Իպրահիմ Ամիրան ձերբակալուեցաւ և մահապատիժի ենթարկուեցաւ և իր իշխանութիւնը յանձնուեցաւ Միրան Շահի կողմէն Ամիր Շարաֆի փոքր տղուն՝ Շամշատտինի, բարեխօսութեամբ Ոստանին Եզտին Ամիրային (Մեծ., 69)։

## ՄԻՐԱՆՇԱՀ ԿՈՒՍԱԿԱԼ

Լէնկ Թիմուր Ատրպատականէն հեռացաւ, հոն ձգելով իր Միրանշահ որդին, իբրեւ կուսակալ Արեւմտեան երկիրներու, որոնք կը տարածուէին Պաղտատէն մինչեւ Տերպենտ և Համատանէն մինչեւ Փոքր Ասիա, իրենց մէջ ունենալով նաեւ Հայաստանը

Միրանշահ, 3196—7ին որպէս կուսակալ հայկական շրջաններու, Վանի լիճին կողմերը ղրկեց Շէյխ Ահմէտ Ջաղաթան, որ տասնեմէկ տարի (1397—1407) կառավարեց երկիրը շինարար իշխանութեամբ մը, շէնցնելով և ծաղկեցնելով երկիրը (Մեծ., 49)։ Ան խաղաղեցուց երկիրը, հաւաքեց ցրուած ժողովուրդը և ամէն կերպով աջակցեցաւ անոնց, որ վերաշինեն իրենց քանդուած եկեղեցիները։ Թովմա Մեծոփեցի կը վկայէ թէ ան «շինեաց զաշխարհս մեր աստի եւ անտի ժողովելով եւ յոյժ բարեբարոյ եւ քրիստոնեասէր գոլով», (Մեծ., 49), այնպէս որ, «եկին ամենայն ցրուեալքն եւ սկիզբն արարին շինութեան: Եւ ծաղկեցաւ ուսումնականօքն, ի ձեռն խաղաղութեան, ողորմութեամբն Աստուծոյ մեծապէս ամ ծովաբոլորս» (Մեծ., 49)։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ՀԵՌՈՒ

1396ի ամառը, Լէնկ Թիմուր դարձաւ Սմրղանտ և 1397—8ին կողոպտեց, անողոք կերպով սուրի մատնեց և աւերեց Հիւսիսային Հնդկաստանը և անոր Տելհի մայրաքաղաքը։ Լէնկ Թիմուր, իր զօրքերը պատերազմական աւարով շլացնելու և խանդավառելու համար՝ Հնդկաստանի պէս հարուստ երկիր մը արշաւելու պէտք ունէր, վասնզի Պարսկաստանի, Հայաստանի, Վրաստանի և այլ, արդէն թալանուած երկիրները չէին կրնար գոհացում տալ անոնց։

Մերձաւոր Ասիայէն իր բացակայութեան ժամանակ՝ իր կողմէ Ատրպատական նստող իր Միրանշահ որդւոյն դէմ ապստամբեցան Իրաքի և Ատրպատականի նախկին Սուլթան՝ Ջելայիրեան Ահմէտը և Գարագոյունլու՝ Գարա Եուսուֆ Թուրքմէնը, որոնք Եգիպտոս ապաստանած էին և կ'ուզէին վերահաստատել իրենց տէրութիւնները։

Սուլթան Ահմէտ իր յոյսը դրած էր Արաբ պետութիւններուն վրայ, որոնց օգնութեամբ Սուրիայէն արշաւեց Իրաք և կրցաւ վերստին գրաւել Պաղտատը,

(1) Միրանշահ «յոյժ ողորմած եւ բարեբարոյ» կոչուած է Թովմա Մեծոփեցիէն, (69): Զարմանալի է որ օտար պատմիչներէն վանտալ խելագար մը ներկայացուած է:



իսկ Գարագոյունլուներու պետը, կը վստահէր Միջագետքի մէջ շարունակ շարժման մէջ եղող իր ցեղակիցներու օգնութեան. սակայն երկուքն ալ յուսախաբ եղան։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐ ԿՐԿԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Լէնկ Թիմուր արդէն 1399ին վերադարձած էր Մերձաւոր Ասիա, ուր իր Բ. արշաւանքէն (1394—1396) վերջ, շատ կարճ ժամանակի մէջ քաղաքական փոփոխութիւններ տեղի ունեցած էին։

Նոյնիսկ 1380—81ին, ջնջուած էր իշխանութիւնը Թաթար Արդինա Ամիրային, որ կ'իշխէր Արեւելեան Փոքր Ասիոյ և Արեւմտեան Հայաստանի մէջ, (Կեսարիա, Սեբաստիա, Երզնկա և Էրզրում), և անոր հողերը գրաւած էր Ղազի Պուրհանէտտին Ահմէտ։

Նոյն ժամանակ, այսինքն ԺԴ. դարուն վերջին քառորդին, զօրացած էին այս կողմերուն Աքգոյունլու ցեղերը, որոնք բնակութիւն հաստատեր էին Ամիթ (Տիարպէքիր) և շուրջը և կ'ասպատակէին յաճախ իրենց հօտերով, Մալաթիայի ու Սեբաստիայի տափաստանները։ 1397/8ին, անոնց առաջնորդը Գարա Եուլուք Օսմանը, որ հիմնադիրն է Աքգոյունլուներու Պայանտրեան հարստութեան, կռուեցաւ Պուրհանէտտինի դէմ, զայն սպաննեց և տիրեց անոր երկրին մեծագոյն մասին։

Բայց ասոր տիրապետութիւնը Արեւելեան Փոքր Ասիոյ մէջ տեւեց միայն մէկ կամ երկու տարի։

Մօտաւորապէս 1399ին, Սեբաստիայի, Մալաթիայի և Երզնկայի շրջանները, իր հզօր պետութեան միացուց Պայազիտ Ա. Օսմանեան Սուլթանը, և անմիջական դրացի դարձաւ Լէնկ Թիմուրի պետութեան։

Երզնկա քաղաքը և շրջակայքը, ինչպէս տեսնուեցաւ, կամովին հնազանդած էին Լէնկ Թիմուրի 1394ի արշաւանքի միջոցին և կը գտնուէին անոր տիրապետութեան տակ։ Երզնկայի գրաւումը, ուրեմն Պայազիտ Ա.ի կողմէ պարզապէս մարտահրաւէր մըն էր՝ ուղղուած Լէնկ Թիմուրի, որ պիտի չուշանար Օսմ. Սուլթանին դէմ յարձակելու։

## ԵՐՐՈՐԴ ԱՐՇԱՒԱՆՔ ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ

Սակայն Լէնկ Թիմուր, 1399ին, Փոքր Ասիա, Օսմ. Սուլթանին երկիրները արշաւելէ առաջ, նախ յարձակեցաւ Վրաստանի վրայ և ուզեց պատժել Վրացիները, որոնց դէմ մեծ վրէժխնդրութեամբ լեցուած էր երկու պատճառներով։ Ա. Բագրատ Ե.ի (1360—1393) դաւը, որուն զոհ գացին 1386ին, իր 12,000 զօրքերը (վերը՝ 197 և Յ. Մանանդեան, 354) և Բ. Վրաց Թագաւորը յարձակեր էր Ջելայիրեան Ահմէտ Սուլթանի որդին՝ Սուլթան Թահիրը, Երնջակ բերդին մէջ պաշարող Լէնկ Թիմուրի զօրքերուն վրայ, զայն ազատեր և իր հօրը ղրկեր էր (Գր. Խլաթեցի, 11—12, Սամուէլ Անեցի, 171 եւ 175, Յ. Մանանդեան, Նոյն, 354)։

Մեծոփեցի կը պատմէ թէ, Գէորգի Է. Վրաց Թագաւորը և իր Կոստան-

գին և Դաւիթ եղբայրները՝ Վրացիները և Հայերը պատսպարեցին ամրութիւններու մէջ և իրենք ամրացան նեղ և կածան տեղեր.

Բայց քանի մը դաւաճաններ Լէնկ Թիմուրի ցոյց տուին ճամբաները և զայն առաջնորդեցին Վրաստանի ներսերը, ուր ան գրաւեց և քանդեց բոլոր ամրութիւնները և եկեղեցիները, կոտորեց անխնայ բնակիչները, իսկ աւելի քան 60,000 հոգի ալ գերի տարաւ (Մեծ., 66—67, հմմտ. Գր. Խլաթեցի, Ցամուէլ Անեցի, 171 եւ 175. Իպն Արաբշահ, 99)։

Վրաստանի այս արշաւանքը՝ 1399ի աշունէն մինչեւ 1400ի ամառը՝ եօթը ամիս տեւած է, ըստ Խառաբաստի վանքը գրուած Մեկնութիւն Կաթողիկէ Թղթոց Սարգիսի Շնորհալւոյ (պահուած այժմ Երեւանի Մատենադարանի թ. 5435) ձեռագիրին 1400 թուականով յիշատակարանին, որ միասմի կը յիշէ Լէնկ Թիմուրի, Հայաստանի վրայ կատարած բոլոր արշաւանքները. (տես. ամբողջութիւնը, Խաչիկեան, ԺԴ. դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, էջ 627—628, ինչպէս նաև Ց. Մանանդեան, Քնն. Տես. Գ. էջ 355-6) և կը խօսի Վրաստանի այս արշաւանքին մասին. ան կը գրէ.

«Եւ եկն եկաց ի վերայ աշխարհին Վրաց յաճախային յեղանակեն, մինչեւ յամառնայինն, ամիսս է (7) աւելի եւ ոչ պակաս: Եւ առեալ բազում ամրոցս, եւ սպան զբազումս ի նոցանէ մինչ գրեթէ զամենայն արս կոտորեաց, զորս զկանայս եւ զտղայս գերի խաղացոյց, անթիւ եւ անհամարս: Որոց տեառնն աղիողորմ աղէտիցն, ոչ միայն քրիստոնէից, այլ եւ յայլասեռից, որք տեսանէին զայսպիսի անմեղ զաւակսն մատնեալ ի ձեռն արիւնախանձ եւ մարդադէմ գազանացն, որ ոչ կանանցն խնայէին եւ ոչ տղայոցն ողորմէին, ոչ ի հիւանդսն գթային եւ ոչ ի կարիսն նայէին, ոչ ի յալեացն հարկէին եւ ոչ ի մատաղ մանկունսն խնայէին, այլ անողորմաբար հետիոտս տանէին՝ մերկ, բոկոտն եւ գլուխ բաց: Եւ որք ոչ կարէին գնալ՝ քարամբք ըսպանանէին եւ անցեալ գնային: Եւ որք զայսպիսի կսկիծսն տեսանէին, ասէին լերանց, թէ անկերուք ի վերայ մեր, եւ բլրոցն, թէ ծածկեցէք զմեզ»:

## ՊԱՅՔԱՐ ՕՍՄ. ՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ

Վրաստանը այսպէս չարաչար պատժելէ յետոյ, 1400ին՝ Լէնկ Թիմուր սկսաւ իր մեծ արշաւանքին Օսմանցիներու դէմ, Առաջին վայրը, զոր Թուրքերէն կորզեց՝ եղաւ Սեբաստիան։ Լէնկ Թիմուր պաշարումով մը գրաւեց զայն և հոն սարսափելի գազանութիւններ գործեց։

Ու իր արշաւանքը շարունակելէ առաջ՝ ուզեց ապահովել իր բանակին թիկունքը Սուրիոյ կողմէն և գրաւեց Մալաթիան և անոր պաշտպանութիւնը յանձնեց Աքքոյունլուներու պետ Գարա Սուլուք Օսմանին, որ իրեն օգնած էր՝ երբ Գարագոյունլուներու պետին՝ Գարա Եուսուֆի դէմ կը կռուէր։ Գարա Օսման, Լէնկ Թիմուրի ապաւինելով, կը յուսար Փոքր Ասիոյ մէջ Սուլթան Պայազիտէն գրաւուած իր հողերը փրկել։

Օսմանցիք կ'սպառնային նաև Տրապիզոնի Կոմնենեան կայսրութեան, որուն Ալէքսիոս կայսեր փեսան էր Գարա Օսման։ վասնզի Կայսեր Տեսբինա աղջիկը կնութեան առած էր։



Այսպէս, շահերու միութեամբ և նոյնութեամբ կազմուած էր Լէնկ Թիմուր, Գարա Օսման և Ալէքսիոս համաձայնութիւն մը՝ ընդդէմ Օսմանցիներուն։

Միւս կողմէն, Գարա Եուսուֆ, Գարագոյունլուներու պետը, Լէնկ Թիմուրի դէմ իր երկիրը պաշտպանելու համար՝ միայն Օսմանեան Թուրքերէն աջակցութիւն կրնար ակնկալել. ուստի իր բախտը կապեց անոնց, և այսպէս ստեղծուեցան երկու մեծ ուժերու միջեւ տատանող փոքր իշխանութիւններով կազմուած խմբակցութիւններ։

Լէնկ Թիմուր, Մալաթիայէն անցաւ Սուրիա. արիւնով ողողեց ամբողջ երկիրը ու Հալէպի և Դամասկոսի մէջ մեծ աւերներ գործեց (1400ի աշնան)։

Սուրիոյ մէջ ձմեռելէ ետք, 1401ի գարնան մտաւ Միջագետք, ուր Մերտին և Պաղտատ ապստամբած էին և Մեմլուքներու միացած։

Այս քաղաքներն ալ՝ իր ոճովը և հասկցած եղանակովը չարաչար պատժուեցան։

1401ի վերջերը, Լէնկ Թիմուր իր Ջաղաթա զօրքերով դարձաւ Հայաստան, Մուղանի դաշտը, իր սովորական ձմեռանոցը։

1402ի գարնան, Լէնկ Թիմուր կրկին մտաւ Փոքր Ասիա, վճռական հարուած մը տալու համար Պայազիտ Ա.ի, որ իր բացակայութենէն օգտուելով, վերագրաւեր էր Սեբաստիան և Երզնկան։

Ճակատամարտը տեղի ունեցաւ 1402 Յունիս 18ին, Անկիւրիւի դաշտին մէջ։ Պայազիտ Ա. պարտուեցաւ և գերի ինկաւ։

Այս կերպով՝ Փոքր Ասիան անցաւ Լէնկ Թիմուրի ձեռքը։ Սելջուկեան Թուրք Ամիրաներէն անոնք որ Էնկիւրիւի ճակատամարտէն առաջ իր կողմը անցած էին, իրենց հին իշխանութիւններուն մէջ վերահաստատեց։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Պայազիտ Ա.ի պարտութենէն յետոյ՝ Լէնկ Թիմուրի գերիշխանութիւնը ճանչցաւ նաև Եգիպտոսի Սուլթանը։ Լէնկ Թիմուր իրապէս յաջողած էր վերակազմել Ջինկիզի մեծ պետութիւնը և հիմնել թերեւս անկէ աւելի ընդարձակ կայսրութիւն մը, որ կը տարածուէր Ջինաստանէն և Հնդկաստանէն մինչեւ Եգիպտոս, Հելլեսպոնտոս և Մոսկուա

Այս հսկայ տարածութեան մէջ կը մտնէին նախկին երեք մեծ Ուլուս կոչուած Մոնկոլական պետութիւնները։

1. Ջինկիզ Խանի որդի Ջաղաթայի կեդր. Ասիական ուլուսը։
2. Բաթուի նուաճած Ոսկէ Հորդայի բոլոր երկիրները։
3. Հուլաղուի հիմնած Իլխանեան իշխանութեան հողերը

## ՎՐԱՍՏԱՆ ԸՆԿՃՈՒԱԾ

Փոքր Ասիան նուաճելէ ետք՝ Լէնկ Թիմուր դարձաւ Անդրկովկաս և 1403-ին անոր զօրքերը սկսան նոր արշաւանքի մը, դէպի Արեւմտեան Վրաստան և Ափխազիա։

Բայց շուտով, Գէորգի Է.ի խնդրանքով և Շիրուանի իշխան Իպրահիմ Տէրպէնտցիի միջնորդութեամբ, պատերազմական գործողութիւնները և աւե-

րածութիւնները դադրեցան և Լէնկ Թիմուր հաշտութեան դաշինք կնքեց Վրաց Թագաւորին հետ, որ հպատակեցաւ իրեն և մնաց իր գահուն վրայ (Իպն Արաբշահ, 182—7)։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ՄԱՀԸ

1403—4ի ձմեռը, Լէնկ Թիմուր կրկին անցուց Մուղանի մէջ և 1404ի գարնան, մեծ աւարով և բազմաթիւ գերիներով և իր զօրքերուն հետ դարձաւ Սմրղանտ։ Ապա, իր յաջողութիւններէն գինովցած, որոշեց Չինաստանն ալ նուաճել։

1405 սկիզբը հազիւ անցած էր Եաքսարտէս (Սիր Տարի՛ա) գետը, հիւանդացաւ և մեռաւ Օթրարի մէջ 1405 Փետրուար 18ին։

Զաղաթա այս աշխարհակալին նուաճումները և տիրապետութիւնը Մերձաւոր Ասիոյ մէջ, տեւեցին միայն 20 տարի (1386—1405), բայց անոր պատճառած չարիքները իր գրաւած երկիրներուն մէջ՝ այնքան ծանր էին, որ երկար ժամանակ մնացին անդարմանելի։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

Ասիական ժողովուրդներու մեծ երեք տեղաշարժերուն վերջինն էր Լէնկ Թիմուրի արշաւանքը, որ իր նախորդները գերազանցեց, իր վայրագութեամբ և գազանային արարքներով, որոնց կու գար խառնուիլ կատաղի մոլեռանդութիւնը։

Ինչպէս իր ընդարձակածաւալ կայսրութեան ամէն կողմերը, նոյնպէս Հայաստանի մէջ, Լէնկ Թիմուր բացարձակապէս անգութ և արիւնարբու գազանի մը պէս վարուած է։

Ան գրեթէ բովանդակ Ասիան և Արևելեան Եւրոպայի ընդարձակ տափաստանները հուրի և սուրի մատնած է և ահարկու սարսափի՝ իր նուաճած բոլոր երկիրները։

Ան կ'ուզէր ահաբեկել ժողովուրդները, և ատոր համար՝ խիստ անգութ և անողոք էր անոնց հանդէպ որոնք կը դիմադրէին իրեն։ Պատմութեան մէջ քիչ անգամ նմանը արձանագրուած իր անգթութիւնները, կ'ըսուի, կը գործադրէր վարպէսզի ուրիշներ անձնատուր ըլլան։ Արդարեւ ալ նպատակին հասաւ, վասնզի ժողովուրդներ սահմռկած են երբ լսած են որ, ան Պաղտատի բնակիչներէն ջարդելէն ետք՝ անոնց գլուխներէն բուրգեր շինած է, Խորասանի մէջ ի կենդանւոյն մարդիկներ վրանին կիր թափելով իբրեւ քար գործածած և անոնցմով պատ հիւսել տուած է, Սեբաստիոյ մէջ 4000 հոգի ողջ ողջ թաղած է. և Վանի բերդէն հազարաւոր մարդիկ վար գլտորել տուած է, եայլն։

Շահապօնեցի վարդապետ մը, 1387ին, տակաւին Լէնկ Թիմուրի առաջին արշաւանքին, կը պատմէ Հայաստանի քաղաքներուն աւերումը և հայերու կրած դժբախտութիւնները։ «Ոմանք, կ'ըսէ, ի գերութիւն վարեալք՝ արք եւ կանայք եւ կէսք առաթուր դիաթաւալ սրախողխող գալարեալ, առ հասարակ քա-



հանայք եւ աշխարհականք զեր անկեալ դիակամբք անթաղ ընկեցեալք եւ այլք ի բազմազան տանջանարանս մաշեալք: Ոմանք հրով կիսայրեացք տոչորեալք եւ այլք ի սովոյ զազանաբեկ վտանգեալք, կէսք խստաբեր կրիւք չարչարեալք, եւ այլք երկիւղիւ պաշարեալք, եւ մեր նստելով թէր ի մետաղս կամաւոր դիպահոջ Շահապօնս կոչեցեալ ամրոցի... ոչինչ ընդհար բերելով ի մեզ զօրինակ մեծի սաստկապատուհասն ատենի» (Զամ. Գ., 421):

Եւ ասոնք կը կատարուէին ո՛չ վրէժխնդրութեան և ո՛չ ալ մասնաւոր քմահաճոյքութեան պատճառով, այլ պարզապէս տեսակ մը անըմբռնելի քմահաճոյքով, վասնզի ոչ որոշ ազգի և ոչ ալ որոշ կրօնքի մը դէմ էին, այլ ամէնուն դէմ հաւասարապէս։ Լէնկ Թիմուրի շրջանին չափազանց ծանր և անտանելի էր ընդհանուր բնակչութեանց կացութիւնը։

Գրիգոր Խլաթեցի իր «Յիշատակարան Աղետից»ի մէջ (էջ 8—9) կը հաստատէ ասիկա. ան կը գրէ.

«Այս ոչ միայն քրիստոնէից,
Այլ ի Տաճիկ ազգաց բնաւին,
Զի հասարակ էր նեղութիւն
Պարսից ազգին, Հայ եւ Թուրքին»

Ասով հանդերձ՝ մոլեռանդութիւնն ալ իր տեղը ունէր որոշ չափով, որովհետև Լէնկ Թիմուր, իր արշաւանքներուն ատեն՝ ոչ միայն աւեր ու մահ կը սփռէր, այլ հաւատուրացութիւն ալ կը պահանջէր՝ իբրև ազատութեան պայման, այնպէս որ «բազումք նահատակութեան հասին եւ պսակաց արժանացան». իսկ անոնք որ չէին ուզեր հաւատուրաց ըլլալ «չարչարէին տանջանօք եւ անագորոյն բարուք անմարդաձայն արարին զամենայնից գաւառն Հայոց», (Թ. Մեծ., 19):

Հետևաբար, կրօնական հալածանք ալ գոյութիւն ունէր Լէնկ Թիմուրի օրով, վասնզի այս արտասովոր հրէշը, մասնաւոր հաճոյք կ'զգար արիւն թափելէ։ Կրօնական հալածանքէն զատ, յիշատակարաններ կը վկայեն թէ տուրքերով չափազանց կեղեքուած են Հայերը նաև այս շրջանին, նոյնքան սաստկութեամբ, որքան կը հարստահարուէին Մոնկոլներուն շրջանին։ Կառավարելու ձևին ալ տարբերութիւն չունէր Սելջուկ և Մոնկոլ իշխանութիւններու որդեգրած դրութենէն։ Խօզպէք Թաթար այս առաջնորդն ալ իր նուաճած երկիրները կը կառավարէր աւատական կարգերով, այսինքն պզտիկ բռնապետներով, որոնք իրենց տիրապետութեան տակ գտնուած հողերուն բնակիչները անխնայ կը կողոպտէին։

## ՀԱՅ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԻՆ ՀԵՏՔԵՐԸ ՋՆՋՈՒԱԾ

Սելջուկները և Մոնկոլները, Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող և տոկացող Հայ իշխանութիւնները շատ տկարացուցած էին, սակայն անոնցմէ ոմանք, թէև ստուերի վերածուած, կը շարունակէին և կ'ապրէին «նուաղեալ»։

Խօզպէք Թաթարներու այս արշաւանքը, այդ պզտիկ և աննշան իշխանութիւններն ալ աւլեց։ Այսպէս, Լէնկ Թիմուրի թոռը՝ Օմար՝ «ատեցող ազ-

զիս քրիստոնէից՝ *իր իշխանութեան առաջին տարին* (1404) «երեք իշխան յազգէս մերմէ, որք իբրեւ զնիռ մի ողկուզաց էին մնացեալ ի մէջ ազգիս, դարձոյց բռնութեամբ ի յանհաւատութիւն» (Մեծ., 67):

*Արդարեւ քանի մը իշխանութիւններ մնացած էին, որոնք Լէնկ Թիմուրի շրջանին գոյութիւն ունենալէ դադրեցան։ Այլեւս չեն յիշուիր հին իշխանական -հողատիրութիւններէն շատերը, իսկ մի քանիներուն ալ վերջնական վախճանը կը յիշատակուի, ինչպէս Օրբէլեանց Որոտնայ ճիւղին, որ* 1386*ին վերջ գտած է, վասնզի* «թուրքն եառ զբերդն Որոտան» (Սամուէլ Անեցի, 170):

*Յակոբ գրիչ, Յովհան Որոտնեցիի աշակերտներէն մին, իր կարգին կը հաստատէ թէ* «մինչդեռ անճառ գնծութեամբ լցեալ կայաք, Րաբունին Կ (= 60) աշակերտօքն ի բնիկ գաւառն իւր, յերկիրն Որոտան, կարդալով եւ գրելով զՍբ. մատեանս, մեղքն իմ ծովացեալ եհան զգունդս անօրինաց ի վերայ քրիստոնէից՝ մանաւանդ ի վերայ տանն Բուրդելի, որ եկին եւ առին զբերդն Որոտան եւ հայրենազուրկ արարին Սպատն որդի Նանիկի...», (Խաղբակեանք, Ա. 230):

*Բռնի իսլամացած .երեք իշխաններէն մէկը, Որոտան տէրը Բուրթէլ Օրբէլեանն էր, զոր իր եղբօրը՝ Սմբատի հետ Սմրղանտ տարին, բայց ետքը կրցաւ ազատիլ և դառնալ իր հայրենիքը, և քրիստոնեայ եղաւ կրկին, սակայն վերջապէս պարտաւորուեցաւ,* 1438*ին,* «առեալ զամենայն կողմն Սիւնեաց եւ զամենայն գաւառս շրջակայ մերձ ի Սիւնիս, աւելի քան զ60,000 քրիստոնեայ տունս եւազատեալ ի Շահ-Ռուխէն՝ հասոյց ի կողմն Վրաց եւ թագաւորն (Աղեքսանդր Ա.) առ երեսս պատուեալ զնա տայ նմա զդղեակ Լօռու,...» (Մեծոփեցի, 117—8):

*Այսպէս, վերջ գտաւ Օրբէլեանց այս ճիւղը։ Իրեն ժամանակակից է նոյն Օրբէլեան տոհմէն Տարսայիճ իշխան* «որդի Գարգոնին», *որ տէրն էր Եղեգեաց Ձորին* (1)։ *Ասիկա ևս Որոտան իշխան Բուրդելի և Սմբատի հետ Սմըրղանտ տարուած էր* (Մեծոփեցի, 68) *և անոնց հետ դարձած ու քրիստոնեայ եղած էր կրկին* (Մեծ., 73)։ *Ասոնց հետ էր նաև Աղցից (գիւղ մը Արագածոտն գաւառին մէջ) տէրը, որ նոյնպէս բռնի իսլամացած էր, ապա կրկին քրիստոնեայ եղած էր անոնց պէս,* (*Ալիշան*, Այրարատ, 147—148, Մեծ., 68 *և Օրմանեան*, Ազգ., 2035)։

*Այս երեքին հետ կը յիշատակուի Մակուի իշխանը, որուն հողատիրութիւնը թերեւս շարունակութիւնն էր Կոկովիտի և Ծաղկոտնի վաղեմի իշխանութեան* (*տես.* Պատմ. Հայաստանի Սահմանները, 156, 368 *և* 352). *Այս իշխանութիւնը, որուն բնակիչները և իշխողները ԺԴ. դարուն կաթոլիկութեան յարած հայեր էին, Իսկէնտէր կը ջնջէ և կաթոլիկ հայերը կը ցրուէ և Մակուն կու տայ Պայազիտ անուն մէկուն, ինչպէս կը հաստատուի Թովմա Մեծոփեցիէ* (73) *և ուրիշ ձեռագիրներու յիշատակարաններէ, ինչպէս նաև Սպանիոյ Հէնրի Գ. թագաւորին կողմէ իբրեւ դեսպան Լէնկ Թիմուրի Սմրղանտ ղրկուած Կլավիխոյի ուղեգրութենէն։* (*տես. Յովհ. Յակոբեան,* Ուղեգրութիւններ, *Ա.* 114—116, *Յ. Մանանդեան,* ՔՆՆ. Տես. Գ. 361—363)։

(1) Սիւնեաց Վայոց Ձոր գաւառին գեղեցկագոյն մասը, որ հիմա Արագեազ կը կոչուի:



*Այս իշխանութիւնն ալ* 1427*ին վերջ կը գտնէր, ինչպէս կը հաստատէր Թովմա Մինասենց, ձեռագիրի մը յիշատակարանին մէջ գրելով թէ* «եառ... Սքանդարն զանառիկ բերդն Մակուայ... ի ձեռաց քրիստոնէից եւ տիրեաց նմա... զի ի բոլոր աշխարհացս այն մեծ բերդն միայն մնացեալ ի ձեռս քրիստոնէից եւ այն եւս առաւ ի մենջ» (Դիւան Հայոց Պատմ. Ժ. 4):

*Ասոնց ժամանակակից կը յիշուին մանր մունր մի քանի հողատէր պըզտիկ իշխանութիւններ, մնացորդները կամ ստորաբաժանումները նախկին իշխանութիւններուն, որոնք այլեւս բոլորովին անշքացած և կորսուած էին իրենց երբեմնի փայլն ու շուքը։*

*Ասոնցմէ ոմանք Լէնկ Թիմուրի դէպի Հայաստան յաջորդական արշաւանքներուն և ուրիշներ՝ Իսկէնտէրի երկարատեւ պատերազմներու ատեն — որոնք Հայաստանը մեծ տագնապի կը մատնէին — բոլորովին ջնջուեցան* (1)։

## ՀԱՅԱՍՏԱՆ ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ՄԱՀԷՆ ԵՏՔ

*Լէնկ Թիմուր և իր հրոսակային բանակը՝ ինչպէս տարածուած էին շատ մը երկիրներու մէջ, նոյնպէս տարածուեցան Հայաստանի մէջ և սանձարձակ գործադրեցին կեղեքումներ, հարստահարութիւններ և սպանութիւններ։*

*Իր մահէն վերջ սակայն, իր ընդարձակ պետութիւնը՝ որքան շուտով ստեղծուած էր, նոյնքան ալ շուտով քայքայուեցաւ։*

*Հազիւ թէ քսանամեայ աշխարհակալ իշխանութենէ մը յետոյ՝ երբ Լէնկ Թիմուր մեռաւ* (1405), *իր ահարկու զօրութեան առջեւ ընկճուած բոլոր իշխանութիւնները վերստին տիրացան իրենց կորսուած երկիրներուն։*

*Գարա Եուսուֆ, ամէնէն զօրաւորը այդ պարտուած իշխաններուն, որ Լէնկ Թիմուրի սարսափէն թափառական կը շրջէր, Սուրիայէ, Դամասկոսի կողմերէն զօրքով եկաւ Հայաստան* (1406*ին*) *և նորէն տիրելով երկրին հարաւային մասին, վերականգնեց իր պետութիւնը* (1408)։

*Բաղէշի տէրը Շամշադին Ամիրա, որ Ամիր Շէրիֆի որդին էր, և Միրանշահին կողմէն այս պաշտօնը ստացած էր,* «ատող քրիստոնէից» *Իպրահիմ Ամիրայի սպանութենէն ետք,* 1396*ին* (Մեծ., 69), *ընդ առաջ գնաց Եուսուֆին, և* «յոյժ մեծարեաց զնա հացիւ եւ ջրեոք, ձիովք եւ ամենայն զինուորական եւ պատերազմական պատրաստութեամբ» (Մեծ., 70): *Իսկ Ոստանի Ամիրան, Եզդին, և անոր Մելէք որդին, միացին հաւատարիմ Միրանշահին և Եուսուֆի դէմ կռուեցան* (Մեծ., 71)։

*Եուսուֆ այնքան կը զօրանայ որ կ'առաջանայ դէպի արեւելք և կը տիրէ Ատրպատականի և անոր մայրաքաղաք Դաւրէժի* (Մեծ., 71) *և զայն կը*

(1) Այս շրջանին Հայաստանի մէջ տակաւին ապրող իշխանութիւններուն եւ անոնց որպիսութեան եւ անհետացման պարագաներուն մասին հետաքրքիրներ կրնան դիմել **Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները** գործին 302—372 էջերուն, ուր պիտի գտնեն մանրամասնութիւններ:

միացնէ իր երկիրներուն և այսպէս կը տիրակալէ Հայաստանի մեծ մասին։

Միրանշահ, ըստ Մեծոփեցիի (71) կ'սպաննուի այս պատերազմներուն մէջ և իրեն կը յաջորդէ Ապուպէքիր, որ չի համարձակիր Եուսուֆի հետ ճակատիլ և կը փախչի (Մեծ., 72)։

Եուսուֆ աւելի զօրացած, յաջորդ տարին կու գայ և կը գրաւէ Երզնկան՝ առանց կռիւի վասնզի քաղաքին իշխանը՝ Դարխրատ մեռած էր (Մեծ., 72)։ Եուսուֆ կը գրաւէ նաև Մերտինը, Ամիթը և Արղնը։

Երզնկայի տէր Փիր Օմար, Եուսուֆի հետ հաշտեցուց Ամիթի տէր Օթմանը որ «սիրող յոյժ ազգիս Հայոց» էր և «քաջ զօրական» (Մեծ., 72)։ Այսպէս, Հայաստան երկու իշխանութեանց մէջ բաժնուեցաւ։

Պաղտատի Ամիրան Ահմէտ՝ Եուսուֆի բացակայութենէն օգտուելով Դաւրէժը կը գրաւէ, սակայն Եուսուֆ յետոյ Պաղտատն ալ կ'առնէ և Ահմէտը սպաննելով իր Իսկէնտէր որդին այնտեղ կը նստեցնէ և ինք կը դառնայ Վաղարշակերտ (= Ալաշկերտ)՝ հանգստանալու։ Երկիրը այսպէս պահ մը կը խաղաղի։ (Մեծ., 53, Ազգ., 2035)։

## ԻՍԿԷՆՏԷՐ «ՇԱՀԻ ԱՐՄԷՆ»

Լէնկ Թիմուրի որդին և յաջորդը, Միրզա Մուինէտտին Շահ Ռուխ (1404—1417) Եուսուֆի առաջդիմութիւնները տեսնելով, մեծ պատրաստութեամբ կու գայ անոր վրայ, բայց նոյն տարին Եուսուֆ կը մեռնի (1417) եւ իրեն կը յաջորդէ որդին Իսկէնտէր, որ «Շահի Արմէն» տիտղոսը գործածել կ'սկսի։ Ասիկա հօրմէն աւելի քաջ եւ պատերազմասէր՝ տասնեօթը տարի (1421—1437) յամառութեամբ կռուեցաւ Շահ-Ռուխի դէմ և թէեւ քանի մը անգամ յաղթուեցաւ, բայց մինչև վերջը անընկճելի մնաց։

Առաջին անգամ 1421ին ան Պաղտատէն — որ իր նստոյն էր — եկաւ Բագրեւանդ և ուզեց երթալ Շահ-Ռուխի վրայ, որ եկած էր Հեր, Զարեւանդ և Բերկրի։

Երբ այս վերջինը իմացաւ Իսկէնտէրի գալուն լուրը, եկաւ մեծ բանակով Արճէշ։ Երկու բանակները իրարու կը բախին (Մեծ., 80), Իսկէնտէր կը պարտուի եւ իր Ասպահան եղբօր և քիչ մը զօրքով կը փախչի դէպի Մերտին եւ Մուսուլ։ Իր զօրքը կ'իյնայ Շահ-Ռուխի ձեռքը (Մեծ., 81)։

Շահ-Ռուխ, մեծ աւարով կը դառնայ Խորասան, սակայն երբ իր հեռանալը կ'իմացուի, Ասպահան, Բաղէշի ճամբով կը դիմէ Դաւրէժ եւ հոն կը նստի իր քիչ զօրքովը։ Իսկէնտէրն ալ իր կարգին կու գայ Պաղտատի ճամբով Դաւրէժ, ուրկէ կը վանէ իր եղբայրը եւ ամբողջ երկիրը կը գրաւէ եւ թագաւոր կը դառնայ Հայաստանի (1422), (Մեծ., 82)։

Ասպահան կ'ապաստանի Բասեն, ուր կը գրաւէ Աւնիկայ ամրոցը (Նոյն, 82):

Յաջորդ տարին (1423), Ասպահան կ'երթայ Պաղտատ, ուր կ'իշխէր իր միւս եղբայրը՝ Շահ Մահմուտ։

Հոն «համբերեալ զերկու ամ եւ ապա միաբանեցոյց զօրս իւր ի վերայ եղբօրն իւրոյ, եառ զամենայն աշխարհն Բաբելացւոց» (Մեծ., 82):

Շահ Մահմուտ փախուստ տուաւ եւ ինկաւ Թաթարներուն ձեռքը, եւ



սպաննուեցաւ, «զի էր այր խաղաղարար եւ քրիստոնեասէր» (Մեծ., 82)։
Պատմագիրը նոյնիսկ կը յայտնէ թէ «բազումք ասէին թէ Քրիստոսի ծա-
ռայ էր» (Նոյն)։
Իսկ յափշտակիչը՝ Ասպահան «լցից արեամբ զաշխարհն Բաբելացւոց»
և անլուր ապականութիւններ ըրաւ, (Մեծ., 82). Մուսուլի, Սնջարի, Թըլ-
կատի, Ճէզիրէի, Մերտինի մէջ ոչ Արաբի և ոչ ալ Ասորիի խնայելով։ Օթմանի
որդին Համզան որ կը տիրէր Մերտինի, յաջողեցաւ զայն կասեցնել և փախ-
ցընել (Մեծ., 82—83)։
Իսկ Իսկէնտէր, որ Դաւրէժի մէջ կը թագաւորէր, 1422ին եկաւ Խլաթ,
որուն Ամիրան՝ Շամշատին իր փեսան էր (Մեծ., 83), և հոն հաստատուեցաւ
(Մեծ., 83) և դարձաւ պատուհաս Հայաստանի համար (Մեծ., 108)։
Ան 1423ին Բաղէշը աւերեց (Մեծ., 83), յետոյ մտաւ Վասպուրական,
ուր կը տիրապետէր Սուլթան Ահմէտ, որդին Եզտին Ամիրային։ Պաշարեց
Վանը (Մեծ., 84), գնաց Երնջակ, ուր ապաստանած էր Սուլթան Ահմէտ,
բռնեց զայն և սպաննեց (Մեծ., 84)։
1425ին կրկին Վան եկաւ և Մելիք Ասար (= Էսատ) ձգեց հոն և ինքը անցաւ
Ջուլամերկ (Մեծ., 84)։ Ան գրաւեց նաև Աղթամար կղզին (Մեծ., 84) և 1426-
ին արշաւեց Արծկէ (Մեծ., 85) և առաջացաւ մինչեւ Ուրմիա և Սուլթանիա
(Մեծ., 85—86)։
Շահ-Ռուխ ամէն ջանք ըրաւ զսպելու համար Իսկէնտէրը, 1427ին դար-
ձեալ անոր վրայ գնաց և անզօր՝ զայն ջախջախելու, միայն անոր երկիրը
աւերելով քաշուեցաւ Մուղան։ 1428ին, Իսկէնտէրի զօրքերը կողոպտեցին
Վասպուրականը և Բաջբերունիքը (Մեծ., 87—8, Ազգ., 2044, 2050, 2051)։
Այս խառնակութենէն օգտուելով Օթման Ազգոյունլու կը յարձակի Գա-
րագոյունլուներու այս անհանդարտ պետին վրայ և Արճէշը գրաւելով կը կո-
ղոպտէ։ Պահ մը Իսկէնտէր կը վանուի և առերեւոյթ խաղաղութիւն մը կը
հաստատուի, սակայն շատ կարճ կը տեւէ, վասնզի 1429ին, Իսկէնտէր կը
դառնայ, Արծկէն կը պաշարէ և դէպի Բասեն կ'արշաւէ, հակառակ Շահ-Ռու-
խի որդւոյն Ջանկայի ջանքերուն (Մեծ., 90)։ Բազմաթիւ հայեր, այս խառ-
վայրոյզ կացութեան չհանդուրժելով՝ կը փախչին (Մեծ., 91) և անթիւ գերի-
ներ Խորասան կը տարուին։ Իսկ 1430 Մայիսին՝ կ'երթայ Վան, առաջնորդու-
թեամբ Սեւտին անուն քուրդի մը «ի ցանէ եւ յազգէ բարեբարոյ եւ աշխար-
հաւէն Ամիրայի Եզտին եւ Մելիքին, որ ունէր զերկիրն Բերկրոյ» (Մեծ., 92)
և ահագին գերի կը տանի Արծկէէն և Վանէն (Մեծ., 92)։
1430 Սեպտ. 17ին, Իսկէնտէր կը պաշարէ Արծկէն, որ անձնատուր կ'ըլ-
լայ (Մեծ., 95 և Ազգ., 2051)։ Իսկէնտէր կ'սպաննէ միայն Սալթին՝ քա-
ղաքին տէրը և խորհրդական Դանիշման մը և «մազ մի ոչ կորեաւ... ի քա-
ղաքէն, զի քրիստոնեասէր էր եւ ողորմած ազգին մեր» (Մեծ., 93)։ Արալի,
Իսկէնտէրի որդին և Վանի իշխանը, որ սաստիկ հարկապահանջութեամբ կը
նեղէր ժողովուրդը, եղած բողոքներուն վրայ՝ հօրմէն ետ կանչուեցաւ. բայց
ան ապաստանեցաւ Շամախիի իշխան Խալիլուլլահի մօտ, որ Արալին
Շահ-Ռուխ Մեծ Խանին ղրկեց, (Մեծ., 99—100)։ Այս պատճառով Իսկէնտէր

Շամախիի վրայ յարձակեցաւ 1434ին և ամէն կողմ կոտորեց, մինչեւ 1435 (Մեծ. 100)։

Վերջապէս, Իսկէնտէր Պէկի զինուորները, իր երկարատեւ պատերազմներէն ձանձրացած՝ լքեցին իրենց անհանդարտ առաջնորդը։ Իրմէ բաժնուեցան նաև իր մերձաւոր ազգականներն իսկ և Շահ-Ռուխի կողմը անցան։

Շահ-Ռուխ, երբ Սուլթանիան պաշարեց և Երնջակ եկաւ, Իսկէնտէրի մայրը և եղբայրը զայն սպաննել փորձեցին, սակայն ան կրցաւ փախչիլ ու Կարինի վրայ քալեց և Գարա Օսմանի հետ բախում ունեցաւ (1435) և զայն ու իր որդին Պայազիտը սպաննեց և առաջացաւ մինչեւ Ագշէհիր և Թոգատ (Մեծ. 102—103)։

Շահ-Ռուխի որդին Ջոնգայ, չկրցաւ անոր ետեւէն հասնիլ (Նոյն)։

1436ին Իսկէնտէր Սեբաստիա արշաւեց, Տիվրիկը, Խարբերդը, Դերջանը գերեց (Մեծ., 104) և 1438ին Շահ-Ռուխի եղբօրը՝ Հայաստանի կուսակալ Ջիհանշահի վրայ քալեց և սակայն վերջապէս սպաննուեցաւ իր մօրմէն և իր հարազատ Շահուբաթ որդիէն, (Մեծ., 108) և այսպէս առժամապէս խաղաղեցաւ երկիրը, վասնզի Շահ-Ռուխ, Իսկէնտէրի տեղ 1440ին՝ Շահի Արմէն կամ Ատրպատականի Ամիրա նշանակեց անոր Ճիհան կամ Ջահան եղբայրը, որ իրեն հպատակած էր (Մեծ., 103)։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԱԺՆԱԳՈՅՆ ՎԻՃԱԿԸ

Մինչեւ այս ժամանակաւոր խաղաղութիւնը՝ Իսկէնտէրի իշխանութիւնը, որ 17 տարի տեւեց, եղաւ աղէտալի շրջան մը, վասնզի Հայաստան իբրեւ թատերավայր պատերազմներու՝ չարունակ բանակներէ ոտնակոխ եղաւ։ Բազմաթիւ քաղաքներ և գիւղեր կողոպտուեցան, շատ մարդիկ սուրի և գերութեան մատնուեցան, լեռները և ձորերը ապաւինողներն ալ սովէն ու ցուրտէն մեռան։

Հայաստան այս աղէտալի շրջանին այլեւս կը զրկուէր Հայ իշխանութիւններէն և Հայերու ապաւէն և ապաստան անառիկ ամրոցները կը գրաւուէին։

Թովմա Մինասենց, Աղթամարի մէջ 1428ին գրած իր Աւետարանին մէջ կը պատմէ թէ ինչպէս ԺԵ. դարուն սկիզբը այդ պզտիկ Հայ իշխանները և նոյնիսկ քրիստոնէից բարեկամ իսլամ կառավարիչները կը կոխոտուէին բարբարոսներէն։ Ան կը նկարագրէ թէ «ի դառնութեան ազգին Նետողաց Ամիրզա Սքանդարին, Թուրք ազգաւ, որ տիրեաց աշխարհիս մերում, եւ բռնութեամբ զանառիկ ամրոցը աշխարհիս մերոյ, այս է զանմատչելին եւ զանկոխ ոտից թշնամեաց եւ զտեղիս ապաստանի բոլոր աշխարհացս զկղզիս Աղթամարայ, եւ զանառիկ ամրոցս եւ զմայրաքաղաքս երկրիս զՈստան, եւ զպանծացոցատանիցն զՎանուկ... զբոլոր աշխարհն բռնակալեաց ընդ ձեռամբն իւրով եւ ընդ իշխանութեամբ...»:

Յետոյ կու գայ երկար շարքը դառնագոյն շրջանի մը մէջ պատահած աղէտներուն, որոնցմէ մին էր 1424—1425ին Իսկէնտէրի, Ոստանի Սուլթան Ահմէտը և Բաղէշի Շէմս-էտտին Սուլթանները նուաճելը և Վանի տիրելը։

Նոյն գրիչը, Ռշտունեաց Ս. Յակոբայ վանքին պատմութեան մէջ, նոյն



դէպքերը ընդհանուր կերպով կը յիշատակէ՝ կրկին ըսելով թէ «եւս անիծեալն Սքանդար, զաշխարհս մեր եւ զանառիկ բերդորայքն Քրտստանայ, զՎան եւ զՈստան եւ զայլսն ամենայն ի ձեռաց բնիկ պարոնաց մերոց եւ անցոյց զտունն Տամօանից եւ մնաց երկիրս շատ աւերակ» (Դիւան Հայոց Պատմ. Ժ. 10)

Շահ-Ռուխի մահէն մօտ կէս դար յետոյ՝ 1483ին, յիշատակագիր մը, Հայաստանի մէկ ծայրը՝ Գուգարաց Աշխարհի Հաղբատի վանքը նստած՝ ինչպէս դառնագին կ'ողբայ իր ժողովուրդին վիճակը, Լէնկ Թիմուրի որդիին՝ Շահ-Ռուխի օրով։

«Որդի մեծ Թամուրին, Շահ-Ռուխ կոչեցեալ՝ անգութ եւ անագորոյն եւ անողորմ, եւ ծառայի արեան քրիստոնէից, բազում եւ անասելի աւեր եած ի վերայ աշխարհիս Հայոց: Զի [եր] զոր սրով կոտորեաց, եւ զոր անողորմ գերի վարեաց եւ կորոյս, եւ զոր սովամահ արար, եւ զոր մահն տարաւ եւ զոր գայլք եւ գազանք կերին եւ պատառեցին, եւ մնացեալք այսր եւ անդր փախեան բնաջինջ: Եւ ամենեւին անմարդաբնակ մնաց եւ աւերեցաւ աշխարհն մեր, եւ դրունք երկնանման տաճարացն փակեցան, եւ լոյսք եւ կանթեղք շիջան եւ խաւարեցան, եւ խունկք եւ նուէրք պակասեցան եւ դադարեցան. եւ մատուցմունք պատարագաց եւ ամենայն սրբութիւնք եկեղեցեաց ի ձեռն այլազգեաց գերի մատնեցաւ: Եւ մեծ սուգ եւ ողբ եւ տրտմութիւն եւ կսկիծ հասաւ Հայոց եկեղեցեաց, եւ եղաք որպէս հինն Իսրայէլ՝ կոխան եւ այպն կատականաց ամենայն ազգաց» (Ալիշան, Հայապատում, 557):

Այս ողորմելի կացութիւնը այլեւս տեւական կը դառնայ և Հայերը կ'սկսին ապրիլ անյոյս վիճակի մը մէջ։ Աննշան ոստերը՝ որոնց կրնային կառչիլ՝ այլեւս կը խուսափէին անոնց ձեռքերէն։

Օրինակի համար, Աղթամար կղզին՝ որ ինչպէս կը թուի քրիստոնէական վարչութեան տակ մնացած էր, 1431ին իսլամներու կողմէ կը գրաւուի։ Թովմա Մինասենց յիշատակագիրը, կը գրէ թէ «ՊՁ (= 1431) թուականին, եկն Փիր Բէկն զԱղթամար կղզին եւ անպատմելի տրտմութիւն եհաս աշխարհիս եւ ազգիս Հայոց եւ երկիրս աւերակ մնաց երկու տարի» (Դիւան, Ժ. 10):

Ասոր նման Օրբէլեան իշխանութիւնը, «աստղ մի ի խաւարի գիշերի եւ տեղիք ապաւինի ամենայն քրիստոնէից ազգիս» (Մեծոփեցի, 109), վերջ կը գտնէ Վրաստանի Ալիքսան թագաւորին հրամանով և դաւաճան հայու մը ձեռքով, 1438ին, Պեգզին իշխանին թունաւորմամբ. վասնզի Վրաց թագաւորը կը վախնար որ Հայերը Սիւնեաց նահանգին մէջ կ'ապստամբին Պեգզինի շուրջ հաւաքուելով (Մեծ., 118)։

Այսպէս, ամէն յոյս կը փճանար։ Հետեւաբար, 1440ին, երբ Ջիհանշահ Վրաստանը կը նուաճէ և իր պետութեան կը կցէ, Մեծոփեցի կ'ըսէ թէ «մեք [որ] հանապազ յոյս ի Վրացիսն ունենալով պարծէաք. յայսմանէ յուսահատեալ, առաջին անօրինաց, ափ ի բերան եղաք» (Նոյն, 123):

Յուսահատական այս կացութեան մէջ, յանկարծ սակայն Հայերը նորէն յոյսեր տածել կ'սկսին և փորձեր կ'ընեն իրենց համար հաստատուն վիճակ մը ստեղծելու։

## ՋԻՀԱՆ ՇԱՀ «ՇԱՀԻ ԱՐՄԷՆ» ԵՒ ԻՐ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Իսկէնտէրի մահէն (1435) ետք, իր եղբայրը Ջիհան Շահ կամ Շահան Շահ կը յաջորդէ իրեն և կ'իշխէ երեսուն տարի (1437—1467)։ Իր իշխանութիւնը Հայաստանի մէջ նշանաւոր եղաւ կարգ մը դէպքերով, որոնք անլուծելի են և մեկնութեան կը կարօտին։

Ջիհան Շահ, որ 1440ին Վրաստանի ալ տիրեց (վերը, 213), 1446ին, Շահ Ռուխին հպատակութիւն յայտնեց (Մեծ., 103) և ճանչցաւ անոր գերիշխանութիւնը, և անկէ նշանակուեցաւ «Շահի Արմէն» կամ Ատրպատականի Ամիրա։

Այս կերպով խաղաղութիւն կը հաստատուէր և աղէտալի մեծ պայքարը՝ զոր Գարագոյունլու իշխանութիւնը վարեց Եօզղէք-Թաթար կայսրութեան դէմ, վերջ գտաւ։ Ասով զօրացաւ Ջիհան Շահի դիրքը, երբ ինքը պետ դարձաւ մեծ իշխանութեան մը, որուն մայրաքաղաքն էր Դաւրէժ (Ե. Լալայեան, Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի, 360), իրեն ենթակայ ունենալով Պարսկահայքը, Կորճէքը, Սիւնիքը, Արդուինը, Այրարատը և Վասպուրականը ամէն տեղ պահելով իրեն ստորադաս ամիրաներ և բէկեր, — մեծ մասամբ Քուրդ —, որոնց պետն էր իր որդին Հասան Ալի, որ կը նստէր Նախիջեւան, իբրեւ ընդհանուր կուսակալ, իրեն ձեռքին տակ ունենալով փոխ-կուսակալներ, Վանի, Երեւանի, Տփղիսի և այլ վայրերու մէջ, բէգ կամ պէյ (= պէկ) տիտղոսով։

Տարօրինակ է որ Ջիհան Շահը, իր հօրը՝ անգութ Իսկէնտէրին պէս, կը թուի Հայերու բարեկամ եղած ըլլալ, թերեւս քաղաքագիտութեամբ, և իր բարեացակամ արարքները գուցէ պարզ կեղծիքներ էին՝ իր հպատակ Հայերը սիրաշահելու և զանոնք իր իշխանութեան նեցուկ դարձնելու համար։

Սակայն ինչ նպատակով ալ եղած ըլլայ՝ անժխտելի իրողութիւն է որ Հայերը, Ջիհան Շահի իշխանութեան տակ, գանգատելու շատ պատճառներ չունէին։

Նոյնիսկ կը տեսնենք՝ թէ երկիրը հազիւ խաղաղած, Հայերը վերակազմութեան ճիգեր ի գործ կը դնեն, օգտուելով տիրողներու բարեացակամութենէն։

Այսպէս Ջիհան Շահի ստորադրեալ Երեւանի կուսակալին՝ Եաղուպ Պէկի — որ բարեկամ էր հայերու — հովանաւորութեան և պաշտպանութեան տակ էր, որ կատարուեցաւ 1441ին, Ամենայն Հայոց Կաթողիկոսական Աթոռին վերահաստատութիւնը իր նախնական վայրին՝ Էջմիածինի մէջ։

Ասիկա փորձ մըն էր Ազգին կրօնական վարչութիւնը վերահաստատելու, որ իսկապէս կարեւոր էր, Սիսի Աթոռին դժբախտ վիճակին պատճառով։

Հայերը՝ ինչպէս կ'երեւի՝ այս ձեռնարկը Ջիհան Շահի իշխանութեան մէջ, իր պաշտօնատար-ներկայացուցիչներու հովանաւորութեամբ իրագործելէ յետոյ, միամտութիւնը ունեցան Հայաստանի մէջ հայ քաղաքական իշխանութիւն մըն ալ ստեղծելու յոյսը տածելու։

Թովմա Մեծոփեցիի կենսագիրը, Կիրակոս վրդ., այս գաղափարը կ'արտայայտէ կերպով մը, գրելով թէ Կաթողիկոսական Աթոռի փոխադրութեան նախաձեռնարկ Թովմա Մեծոփեցի, «ճանապազ խնդրէր յԱստուծոյ, զի էջմիածինն վերստին նորոգեսցի, կաթողիկոս եւ թագաւոր նստցի ի յէջմիածինն» (ԱՐԱՐԱՏ, 1913, էջ 745)։



Իսկ ինքը, Թովմա, իր յիշատակարանին մէջ (էջ 62), որոշ կ'ուզէր թագաւորական հրամանի մը լծորդել Աթոռին վերահաստատութիւնը և իրեն կամ իրեններուն գործի խառնուիլը արդարացնելու համար՝ կ'ըսէ «դարձեալ գիտելի է, թէ վասն էր ի խնդիր ելաք էջմիածնի բնակութեան եւ կաթողիկոսութեան Հայկազեան սեռին, զի ոչ գոյր մեզ թագաւորութեան հրամանք եւ ոչ իշխան, այլ եզովեալ էաք զամենայն որդի մարդկան» և միամտօրէն կը կարծէ, իր խանդավառութեան մէջ ցնորքներու անձնատուր, թէ ժամանակը հասած էր վերականգնումին՝ ազգին կրօնական և քաղաքական աթոռներուն։

Այս առիթով, Աթոռին փոխադրութեան իբրեւ արդարացում 17 պատճառներ կը թուէ, որոնցմէ մէկն ալ այն էր թէ «Թորգոմեան ազգիս փրկութեան ժամանակը հասաւ, Մեծն Ներսէսի տեսիլքին համեմատ»։

Այս ցնորքէն տարուած էին թերեւս Թովմա Մեծոփեցի և համախոհները՝ երբ գործի ձեռնարկեցին յուսադրուելով Իսկէնտէրի և իր որդւոյն հայերուն ընծայած կարեւորութենէն և «Շահի Արմէն» տիտղոսը կրելով՝ երկիրին այլազան բնակչութեանց մէջէն, Հայերուն տուած կարեւորութենէն և նախապատուութենէն։ Ասիկա կը հաստատէ 1449ին գրուած ձեռագիր մը՝ յիշատակելով թէ՝ Ջիհան Շահ «տիրեաց երկու թագաւորութեան, Հայոց եւ Ասորոց, եւ էր խաղաղասէր, բայց հարկապահանջութիւնն բուռն է ի վերայ քրիստոնէից» (Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի, էջ 691)։

Շահ-Ռուխի գերիշխանութիւնը ճանչնալով խոհականութեամբ՝ Ջիհան Շահ, Հայաստանի մէջ երկար խառնակութենէ մը յետոյ, կրցած էր հաստատուն իշխանութիւն մը հիմնել եւ համեմատական հանդարտութիւն մը ստեղծել։ Թերեւս անոր համար ալ՝ Հայ ձեռագիրի մը գրիչը Շահ-Ռուխը կը կոչէ «բարեսէր եւ արդարադատ արքայն», «ողորմած... եւ քաղցր... բարուք», (Հ. Աճառեան, Ցուցակ Թաւրիզի Ձեռագրաց, 113)։

Երեւան նստող կուսակալին՝ Եաղուպի բարեացակամութիւնը եւ անոր պետին՝ Ջահան Շահին դէպի Հայերը ցոյց տուած մասնաւոր շահագրգռութիւնը, եւ վերջապէս, վերին հովանաւորին, Շահ-Ռուխի ցոյց տուած մեղմութիւնը, կը թուի Հայերուն կարծել տուած ըլլալ թէ այլեւս իրենց համար պիտի բացուի անդորր եւ խաղաղ կեանքի շրջան մը, եւ անոնք յանդգնած են ոչ միայն Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը դնել այս իշխանութեան հովանիին տակ, այլ նոյնիսկ մտածած են ստեղծել հայ հովանաւորեալ թագաւորութիւն մը եւս։

Այս ծրագիրը՝ ունեցած են ապահովաբար կարգ մը տուեալներու կամ խոստումներու վրայ, որոնք չէին կրնար ուրիշ նպատակ ունենալ, բացի ներքին ըմբոստութեանց առաջքը առնելու մտահոգութենէն, քանի որ միշտ ալ կար արտաքին թշնամի մը։

Ինչպէս տեսնուեցաւ, այս պետութեան ժառանգական հակառակորդն էր Աղգոյունլուներու իշխանութիւնը։ Եւ քանի գոյութիւն ունենար անիկա, երկիւղն անպակաս էր։

## ԳԱՐԱԳՈՅՈՒՆԼՈՒՆԵՐՈՒ ԵՒ ԱԳԳՈՅՈՒՆԼՈՒՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

*Բայց Ջիհան Շահ, 1461ին յաջողեցաւ վերջապէս Ագգոյունլուն Ջիհանկիրը հարկատու դարձնել և իր գերիշխանութեան ենթարկել, վասնզի 1460ին տիրած էր բովանդակ Պարսկաստանի և կազմած մեծ և պատկառելի պետութիւն մը Ասիոյ մէջ։*

*Սուլթան Ջիհանկիր երրորդ վեհապետն էր Ագգոյունլուներու պետութեան, որուն հիմնադիրն էր Գարա Օսման (տես. վերը՝ 132), որուն յաջորդած էր Համզա Պէկ (1435—1444)։*

*Ասոր յաջորդած էր Ջիհանկիր (1444—1467), Համզայի եղբօրը՝ Ալի Պէկի որդին։ Ասոնց ոստանն էր Միջագետք և մայրաքաղաքը Ամիթ կամ Տիարպէքիր։*

*Ասոնց իշխանութեան տակ էր հարաւային Հայաստանը (Աղձնիք և Տուրուբերան)։ Այս իշխանութիւնն ալ Գարագոյունլուներու պէս, իրեն ստորագաս և ենթակայ ունէր Բաղէշի, Խլաթի, Սասունի, Մուշի եայլնի մէջ Ամիրաներ, իրեն կողմէն նշանակուած։*

*Ուրեմն, որչափ ատեն որ Ագգոյունլուներու իշխանութիւնը գոյութիւն ունէր՝ Ջիհան Շահ պէտք ունէր Հայերու աջակցութեան և հաւանօրէն ասոր համար բարեացակամութիւն ցոյց կու տար, ոչ միայն անոնց հոգեւոր իշխանութիւնը հովանաւորելով, այլ նաև թոյլ տալով որ անոնք քաղաքական իշխանութիւն մըն ալ կազմել փորձէին, ինչպէս որ կը փափաքէին և ծրագրած ալ էին (տես. վերը 214—5) Կաթողիկոսական Աթոռին փոխադրութեան գաղափարը մշակողները։*

## ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻ ՄԸ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ...

*Բայց դժբախտաբար չյաջողեցան, վասնզի ծրագիրը իրագործելու համար, իրարու հետ միացողները իրենց անձնական շահագրգռութիւնները և փառասիրութիւնները ունէին և համերաշխութեամբ չկրցան գործել։*

*Աթոռին փոխադրութեան գաղափարը մշակողները և զայն իրագործելու համար ձեռք ձեռքի տուողները, ամէնքն ալ իրենց յետին միտքերը և ակընկալութիւնները ունէին և ո՛չ թէ նպատակ՝ միայն ազգին շահուն և անոր օգուտին ծառայելու։*

*Ասոնց մէջ կարեւոր դէմքերէն մէկն էր Աղթամարի Զաքարիա կաթողիկոսը, որ խաղի եկաւ, վասնզի կ'երեւի թէ իր գործակցութիւնն ունենալու համար, խոստացած էին զինքը Ամենայն Հայոց Կաթողիկոսական Աթոռը բարձրացնել, և սակայն չգործադրեցին իրենց խոստումը։*

*Զաքարիա բնական է յուսախաբ եղաւ և դառնացաւ։ Եւ որովհետեւ Ջիհան Շահի բարեկամն էր կամ պաշտպանեալը՝ բռնի ձեռք բերաւ ինչ որ զլացուած էր ժողովով և գնաց գրաւեց Էջմիածինը։*

*Ան, ինչպէս նախապէս ծրագրուած էր, զօրացնելու համար Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը կրնայ ըլլալ որ ուզած էր ստեղծել քաղաքական իշխանութիւն մը ևս. սակայն իր ծրագիրը գործադրելու ժամանակ չունեցաւ և Էջմիածինէն վանուեցաւ և 1464ին վախճանեցաւ։*



*Իր յաջորդը, Ստեփանոս Կաթողիկոս (1465—1485), որ ապա ինքն ալ Ջիհան Շահի արտօնութեամբ պիտի գրաւէր Էջմիածինի Աթոռը, թերեւս Զաքարիայի ծրագիրը իրագործելու համար, նախ քան Էջմիածինը գրաւելը, զարմանալի փորձ մը ըրած է իրեն հովանաւոր թագաւորութիւն մը ստեղծելու։*

*Անիկա, իր եղբօրորդին՝ Սմբատը որդին Ամիր Գուրջի Պէկ Սէֆէտինեանի, կ'օծէ Աղթամարի մէջ «Հայոց Թագաւոր», 1465ին, նշանակելի յանդգնութեամբ մը, որ միայն Ջիհան Շահի բարեացակամութեան վրայ իր ունեցած վստահութեամբ կրնայ մեկնուիլ։*

*Աղթամարի Կաթողիկոսը, իբրեւ տէրը կղզիին՝ ազատ էր իր հողատէր-տիրապետութեան իրաւունքը փոխանցելու ուրիշի մը, սակայն ձեռնարկը ինքնին գրգռիչ էր, որչափ որ Սմբատի թագաւորութիւնը — որ միայն երկու տարի տեւած է կամ այնքան ատեն միայն յիշուած է յիշատակարաններու մէջ — ծիծաղելի բան մըն էր, քանի որ Աղթամար կղզիակէն դուրս ոչ մէկ իշխանութիւն ունէր և կրնար ունենալ, սակայն իսլամ տիրապետներու ուշադրութիւնը կրնար գրաւել և աղէտ մը պատրաստել Հայոց համար։*

*Ասանկ անխոհեմութիւն Զաքարիա և Ստեփանոս կաթողիկոսները պիտի չընէին։*

*Հաւանօրէն երկու կաթողիկոսները կրցած էին շահիլ անձնական բարեկամութիւնը Ջիհան Շահին, և օգտուիլ խիստ հաւանօրէն անոր Հայաստանի մէջ հայ տարրին կռթնելու քաղաքականութենէն։*

*Ասոր գլխաւոր փաստ կարելի է ներկայացնել սա պարագան թէ անիկա նոյնիսկ այն թուականներուն, որ դէպի արեւելք՝ Պարսկաստան կը տարածուէր և Շահ-Ռուխի (✝ 1451) յաջորդող Պուսայիտի կամ Ապուսայիտի հողերը կը գրաւէր և Ջիհանկիրը հարկատու կը դարձնէր և պատկառելի ուժ մը կը դառնար, նորէն չէր դադրեր Հայերը հովանաւորելէ։*

*Զաքարիա և Ստեփանոս կաթողիկոսները անոր հրամանով կրցան բռնագրաւել Էջմիածինի Աթոռը, և Ստեփանոս հաւանօրէն իր աթոռին ազդեցութիւնը գերակշիռ ընելու համար,՝ յաջողեցաւ համոզել զայն, որ իր քով՝ Աղթամարի մէջ, Հայերուն թագաւոր մը օծէ, և ան հաւանեցաւ թերեւս մտածելով թէ Աղթամարի կղզեակին մէջ, Հայերու հողատէր-Կաթողիկոսի մը հետ «Հայոց Թագաւոր» տիտղոսով, և իրականութեան մէջ ոչ նոյն իշխանութեամբ անձի մը գտնուիլը ոչ մէկ կերպով կը վնասէր իր վեհապետական իրաւանց, սակայն կրնար ուրախացնել Հայերը... կամ աւելի ճիշդը՝ խաբել զանոնք։*

*Որչափ ատեն որ Ջիհան Շահ (1444—1467) պետն էր իշխանութեան, այս ուղղութիւնը անփոփոխ մնաց։*

*Իր մահէն վերջ սակայն՝ գործերը փոխուեցան և Հայերը անտեսուեցան և պետութիւնը Պարսիկ տարրին կռթնեցաւ։*

## ՊԱՐՍԻԿ ՄԵԾ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԸ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

*Ջիհան Շահ մեռաւ 1467ին, երբ Ագգոյունլուները կամ Պայընտրեանք զօրացած էին։*

*Ջիհանկիրի որդին Ուզուն Հասան (1467—1478) յաջողեցաւ Գարա և Աք-*

գոյանալու երկու տէրութիւնները միացնելով և ամբողջ Պարսկաստանը հպատակեցնելով իրեն՝ վերականգնել Պարսից թագաւորութիւնը, բացարձակ միահեծան վարչութեամբ։

Այս նորակազմ մեծ պետութեան հողերուն մէջ էր Հայաստան, որուն Հայ բնակիչները ընկճուած էին չորս դարերու ընթացքին և իբրև քաղաքական ուժ, մարտական տարր և տնտեսական գործօն, շատ բան կորսնցուցած՝ իրենց նախկին կարողութիւններէն ուժասպառ, արիւնաքամ և կեղեքուած, կ'ենթարկուէին զօրաւոր նոր պետութեան մը լուծին, որ գոնէ խաղաղութեան բարիքը չկրցաւ ապահովել Հայերուն, իրենց բնագաւառին մէջ, եթէ ոչ անոնք իրենց քաղաքակրթական ընդունակութիւններով և մշակութային ձիրքերով կրնային թերևս պատրաստուիլ տարբեր ապագայի մը։

Բայց դժբախտաբար Ուզուն Հասան, հազիւ տիրած էր Հայաստանի, երբ իր պետութեան չափ զօրաւոր նոր մրցակից մը եկաւ կանգնիլ, Հայաստանի Բարձրաւանդակին արեւմտեան սահմանը գծող Եփրատի եզերքը։ Այս նոր զօրութիւնն էր Էրթողրուլի որդի Օսման անուն ցեղապետի մը ԺԴ. դարուն սկիզբը Անատոլուի կեդրոնը հիմնած, աննշան և նախնական իշխանութիւնը, զոր իր յաջորդները տարածեցին և ընդարձակեցին, և հուսկ ուրեմն 1453ին Պոլիսը գրաւելով՝ դարձուցին մեծ պետութիւն մը, որ Մերձաւոր Ասիոյ մէջ, այնուհետեւ, այնքան ճակատագրական դեր մը կատարեց։

Օսմանեան պետութիւնը, իր նուաճողական պատերազմներով Եփրատի եզերքը հասնելէն յետոյ, հոն կանգ պիտի չառնէր և պիտի մղուէր տիրականալու հայկական լեռնադաշտին, այդ ռազմական դիրքին գրաւումով, ապահովելու և տեւականացնելու համար Անատոլուի մէջ իր իշխանութիւնը։

Այսպէս, երկու խոշոր մեծ պետութիւններ պիտի սկսէին տանիլ Հայաստանի տիրապետութեան համար նոր պայքար մը, որ կարծես շարունակութիւնն էր Պարթեւ-Հռոմէական, Սասան-Բիւզանդական և Արաբ-Բիւզանդական զօտեմարտութեան, զոր աշխարհի հզօրները մղած են մեր դժբախտ երկիրին շուրջը և մէջը, մշտնջենական տագնապի և աւերածութեան ենթակայ պահելով զայն։

Շարունակ ոտնակոխ բանակներէ, տեւականապէս կեղեքուած օտար բռնակալներէ, մշտապէս տէր փոխելու դժբախտութեան ենթարկուած Հայ ժողովուրդին կեանքը դիւցազնամարտ մը եղած է և հրաշքով է որ կրցած է այնքան դժբախտ պայմաններու մէջ իր որոշ դիմագծութիւնը պահել և մանաւանդ հերոսաբար տոկալ՝ իր գոյութիւնը պահպանելու համար։

---



# Բ.

## ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ՀԵՌԱՑՈՂ ՀԱՅԵՐ ԱՍԻԱԿԱՆ ՀՐՈՍՆԵՐՈՒ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐՈՒ ՇՐՋԱՆԻՆ (1040—1468)

Չորս դարերու (1040—1468) այս շրջանին, մանաւորապէս Արեւելք տակն ու վրայ կ'ըլլար կեդր. Ասիոյ տափաստաններէն՝ բարբարոս ժողովուրդներու դէպի Արեւմուտք զանգուածային տեղափոխութիւններուն հետեւանօք։ Այս խուժումներէն Հայաստան ևս, ինչպէս տեսնուեցաւ, մեծ հարուածներու և թշուառութիւններու ենթարկուեցաւ, առաւելապէս անոր համար որ արշաւող ժողովուրդները նախնական, կիսավայրենի և վաչկատուն ցեղեր էին։ Անոնք տակաւին քաղաքակրթութեան շատ տարրական աստիճանի մը մէջ, Կեդրոնական Ասիայէն կը շարժէին պարբերական և զանգուածային մակընթացութիւններով և կու գային Մերձաւոր Ասիան տակնուվրայ ընելու, անոր բնակչութեան դիմագծութիւնը փոխելու և ինչ որ ամէնէն սոսկալին էր, մանաւորապէս Մերձաւոր Ասիոյ մէջ, աւեր ու սարսափ սփռելուն։

Այդ դժբախտ երկիրներէն մէկն էր Հայաստան, որ կրեց այդ ժողովուրդներուն աղէտաբեր հարուածները և մեծ դժբախտութիւններու մատնուեցաւ, վասնզի Թուրանեան հրոսները, որոնք Իրանեան ժողովուրդներու ամէնէն նշանաւորէն՝ Պարսիկներէն զսպուած էին երկար ատեն և պահուած իրենց տափաստաններուն մէջ, ԺԱ. դարուն, վերջապէս, հեղեղի պէս ողողեցին Պարսկաստանը։

### ԹՈՒՐԱՆԵԱՆՆԵՐՈՒ ԽՈՒԺՈՒՄԸ ԻՐԵՆՑ ՏԱՓԱՍՏԱՆՆԵՐԷՆ ԴՈՒՐՍ

Իրան-Թուրան դարաւոր պայքարին մէջ՝ վերջապէս Իրան տեղի կու տար և Պարսկաստան իր արեւելեան սահմանագլուխը այլեւս չկարենալով պաշտպանել, իր դուռները լայնօրէն կը բանար Թուրանեան ժողովուրդներու առջեւ, որոնք Պարսկաստանէն անմիջապէս ետք կ'արշաւէին Հայաստան, անկէ անցնելու համար Քրիստոնեայ քաղաքակրթութեան ախոյեան Բիւզանդական կայսրութեան երկիրները, որոնք իրենց ետին ունէին դարերու ճիգով ստեղծուած բարձր քաղաքակրթութիւն մը։ Դ. դարուն սկսող բարբարոսներու արշաւանքները, ինչպէս Եւրոպայի համար ճակատագրական դեր կատարեցին, ԺԱ. դարուն սկսող Թուրանական բարբարոսներու արշաւանքներն ալ նոյնքան

ծանր հետևանքներով նշանաւոր եղան, Մերձաւոր Ասիոյ համար, որ Դ. դարէն մինչև ԺԱ. դար կրցած էր շնորհիւ Բիւզանդական Կայսրութեան՝ իր սահմաններէն հեռու պահել բարբարոսները։

ԺԱ. դարէն մինչև ԺԵ. դար, այս անհարկու արշաւանքները, զոր Մայրագոյն և Կեդր. Ասիայէն շարժող կիսավայրենի ժողովուրդներ կատարեցին, մեծ հարուածներ էին և մարդկային քաղաքակրթութեան շէնքը հիմնայատակ ընել կ'սպառնային։

Այս մեծ աղէտէն և դժբախտութենէն զերծ չմնաց Հայաստան ևս և Մերձաւոր Արևելքի միւս երկիրներուն պէս՝ ենթարկուեցաւ այդ հրոսներուն շարունակական արշաւանքներուն, որոնք նախ փոքր հատուածներով և ապա մեծ զանգուածներով եկան իր վրայ։

Այս թափառիկ ցեղերը, որոնք աւելի գաղթաշարժ մը կը կատարէին, ինչպէս բոլոր իրենց անցած տեղերուն՝ նոյնպէս նաև Հայաստանի մէջ հաստատուեցան և բոլորովին այլայլեցին երկիրին բնակչութեան զուտ Հայ նկարագիրը։

Մինչև ԺԱ. դար՝ թէև Հայաստան լիակատար անկախութիւն մը չէր ունեցած, և միշտ երկու մեծ պետութիւններու միջև տարուբերած էր, սակայն այդ հակամարտ ուժերը, իբրև կազմակերպուած և ուժեղ պետութիւններ, թոյլ չէին տուած որ Հայաստան մտնեն բարբարոս և վաչկատուն ժողովուրդներ, ինչպէս Կովկասեան լեռնականները և Ասիոյ թափառաշրջիկ ցեղերը, որոնք հինէն ի վեր պարբերաբար փորձած էին հոն մտնել և հաստատուիլ։ Այսպէս, մէկ կողմէն նախ Հռոմ և ապա Բիւզանդիոն և միւս կողմէն նախ Տիզբոն և ապա Դամասկոս ու Պաղտատ, կերպով մը պաշտպանած էին Հայաստանը բարբարոսներու հեղեղին դէմ, մինչև որ ԺԱ. դարուն հաւասարապէս Բիւզանդիոնի և Պաղտատի տկարութենէն օգտուելով, Ասիոյ խորերէն մէկէ աւելի վաչկատուն և խաշնարած ցեղեր՝ — որոնք միշտ իրարու վրայ կ'իյնային — մինչև Փոքր Ասիա հասան, Հայաստանը ոտնակոխ ընելէ ետք։ Անոնք իրենց վանտալական արշաւին մէջ անլուր չարիքներ հասցուցին, փճացնելով ինչ որ խաղաղասէր և շինարար ժողովուրդներ կերտեր էին։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿՈՒԱԾ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ ԱՅՍ ՇՐՋԱՆԻՆ

Հայ շինարար, աշխատունակ, գործունեայ և բարոյական արժանիքներով օժտուած ժողովուրդն ալ, այս արշաւանքներուն հետևանքները կրեց մեծ զանութեամբ, տուժելով ամէն կերպով, նիւթապէս և բարոյապէս։

Հայերը մեծապէս վնասուեցան, կորսնցնելով իրենց թիւէն և իրենց ազգային հոգեկան հարստութիւնները փճացման վտանգին ենթարկուեցան։

Այնպէս որ՝ Հայաստանի պատմութիւնը, ինչպէս տեսնուեցաւ, եղած է նաև այդ չորս դարերու ընթացքին, ինչպէս աւելի հին դարերուն, — յատկապէս արաբական տիրապետութեան շրջանին — աղէտներու շարք մը, զոր այդ բարբարոսները պատճառեցին Հայ ժողովուրդին։ Արդարև, այդ բարբարոս ժողովուրդներու տեղաշարժը, դէպի Արևմուտք իրենց շարունակական տեղափոխութիւնները, — իբր արշաւուղի ունենալով գլխաւորաբար Հայկա-



կան Բարձրավանդակը — անլուր չարիքներու պատճառ եղան Հայաստանի համար, որուն բնակչութիւնը, ինչպէս նախորդ շրջաններուն, նոյնպէս նաև 1040էն մինչև 1468 տևող այս չորս դարերու ժամանակամիջոցին ալ՝ իր մայր երկիրէն հեռացած է, չկրնալով տոկալ այս «դժնետեսիլ» և «մարդադէմ գազաններուն» հեղեղին առջև, և ինքն ալ տեսակ մը գաղթաշարժի ենթարկուած է՝ դէպի Արևմուտք մղուելով, հալածուած այս բարբարոսներէն, որոնք իրենց արտերն ու այգիները, իրենց տուներն ու ինչքերը լքելով Հայաստանէն հեռացող Հայերու տեղը իրենք կը գրաւէին։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ՏԵՂԱՑԻՆ ԲԱՂԿԱՑՈՒԹԻՒՆԸ

Այս փախուստներուն հետևանքով՝ Հայաստան, որ մինչև ԺԱ. դար, այս շրջանի սկիզբը, իր բնակչութեան մէջ հազիւ աննշան թիւով Հրեաներ, Ցայներ, Պարսիկներ և Արաբներ կը հաշուէր, տակէ ետք, տեսաւ իր սահմաններուն մէջ աճումը այլացեղ և այլակրօն զանազան ժողովուրդներու, որոնք կու գային Կեդր. Ասիոյ ընդարձակ տափաստաններէն։

Հայերը, Հայաստանէն այդ դժբախտ շրջանին հեռացած են բաւական կարևոր թիւով մը, երբեմն գերի վարուելով իրենց հայրենիքէն հեռու ուրիշ վայրեր։ Բարբարոսները նաև առանց գերութեան բռնագաղթի ենթարկած են Հայերը, իրենց երկիրները շէնցնելու համար հայ ժողովուրդին շինարար աշխատանքով և քրտինքով։

Իսկ անհամար էր թիւը անոնց, որոնք չկրնալով տոկալ բարբարոսներու սրածութիւններուն, կեղեքումներուն և հարստահարութիւններուն, այլուր գաղթած են, փնտռելով անդորր միջավայրեր, հոն իրենց համար նոր կեանք ստեղծելու համար։

ԵԿՈՒՈՐՆԵՐՈՒ ԴԵՐԸ ԵՒ ԴԻՐՔԸ

Ասիական այս բարբարոս ժողովուրդները պարզ հրոսներ չէին, այլ գաղթող կամ տեղափոխուող ցեղախումբեր, որոնք իրենց արշաւած երկիրները կը մտնէին կառքերու վրայ հաստատուած շարժուն բնակարաններով, իրենց ընտանիքներով, կիներով, զաւակներով և գոյքերով։ Անոնք երբեմն հոծ ու երբեմն փոքրիկ զանգուածներով կը շարժէին, ալիք ալիք և իրենց առջևէն կը փախցնէին ուրիշ ժողովուրդներ և անոնց տեղերը կը հաստատուէին։ Այսպէս, հետզհետէ տարածուելով, կը հասնէին մինչև քրիստոնեայ քաղաքակրթութեան մեծ որրանը՝ Փոքր Ասիոյ արգաւանդ դաշտերը, մինչև որ վերջապէս կը կործանէին Բիւզանդական կայսրութիւնը՝ գրաւելով Պոլիսը՝ քրիստոնեայ քաղաքակրթութեան այդ մեծ կեդրոնը, ինչպէս ըսինք։

Այս ժողովուրդները, ինչպէս տեսնուեցաւ (վերը 9—13), Զ. դարէն մինչև ԺԱ. դար, փոքր խումբերով երևցած են Մերձաւոր Ասիոյ զանազան մասերուն մէջ, իբրև կռուող ուժեր վարձկան զինուորութիւն կատարելով, Արաբ և Բիւզանդական բանակներուն մէջ և ԺԱ. դարուն առաջին քառորդին մէջ, փոքր խումբերով ասպատակային արշաւանքներ ըրած են իրենց արշաւուղիին

վրայ գտնուող Հայաստանի զանազան մասերու մէջ, մինչեւ որ 1048ին Սելջուկ մեծ արշաւանքին ալիքները հասած են Հայաստան։ Այդ փոքր արշաւները 1016–18էն մինչեւ 1063 գրեթէ ամէն տարի կրկնուած են, անօրինակ թշուառութիւններու ենթարկելով Հայաստանը, եւ անոր հողին հաւատարիմ մնացած Հայերը, որոնք գերագոյն ճիգ կը գործադրէին, յաճախ առանձին, եւ երբեմն Բիւզանդացիներու տկար օգնութիւններովը, իրենց գոյութիւնը եւ կեանքը տեւականացնելու, եւ թոյլ չտալու համար որ այս ասպատակները — որոնք կողոպուտ եւ կոտորած ընելով կը մեկնէին — յաջողին հայ հողին վրայ հաստատուիլ։

Դժբախտաբար ինչ որ մինչեւ 1063 Հայերն ըրած են, այդ թուականէն յետոյ չկրցան ընել։

Ալփասլան, որ 1063ին Սելջուկներու գլուխը անցաւ, իր իշխանութեան շրջանին (1063 - 1072), հրոսակային ասպատակութիւններու տեղ, աշխարհակալութիւններու եւ տիրակալութիւններու հետամուտ եղաւ եւ բոլորովին նուաճեց Հայաստանը, որ Սելջուկ հաստատուն կառավարութեան մը իշխանութեան ենթարկուեցաւ։ Ալփասլանի տիրակալութենէն յետոյ, Ասիոյ խորերէն եկող իր ասպատակները, իրենց հրոսակային արշաւանքներէն վերջ ետ չէին դառնար, այլ Հայաստանի մէջ կը հաստատուէին թէ՛ իբրեւ տիրապետողներ եւ թէ՛ իբրեւ բնակիչներ։

Այսպէս, Հայաստանի մէջ տեղ գտան եւ տեղաւորուեցան իբրեւ տիրող տարր՝ Կեդր. Ասիոյ բնիկ ժողովուրդները, 1064—1071 անհաբեկութեան շըրջանէ մը ետքը։

1071ին, Մանազկերտի պարտութիւնը խսպառ կը հեռացնէր Հայաստանէն Բիւզանդական տիրապետութեան ամէն հետք եւ մեր երկիրը կ'ենթարկուէր Սելջուկ լայնածաւալ պետութեան իշխանութեան։

Եւ այսպէս, Հայկական Բարձրաւանդակին տիրացած, Սելջուկները մըշտակայ պատուհաս կը դառնային Փոքր Ասիոյ եւ Ասորիքի (Սիւրիոյ), սպառնալով անէացնել նաեւ Բիւզանդական քաղաքակրթութիւնը, որուն առաջին պատուարը Հայաստան՝ արդէն ինկած էր։

Բարբարոսներու այս առաջին մեծ զանգուածը՝ Սելջուկները, անգամ մը մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը յառաջանալէ եւ մինչեւ Միջերկրական հասնելէ վերջ, հաստատուն կառավարութիւն մը հիմնել աշխատեցան։

Ալփասլանի որդին եւ յաջորդը, Մելիք Շահ (1072—1092), Սելջուկ տիրապետութեան ենթարկուած երկիրներուն մէջ, պետական բարւոք վարչութիւն մը հաստատելու համար, խղճմտօրէն աշխատեցաւ։ Եւ Հայաստան ալ այդ շրջանին, քառորդ դարու չափ ժամանակ մը, վայելեց խաղաղութեան բարիքները. բայց դժբախտաբար Մելիք Շահի մահէն (1092) յետոյ, իր կազմակերպած պետութիւնը եւ իր ուժեղ իշխանութիւնը քայքայուեցաւ եւ հայ հայրենիքն ալ այս քայքայումին հետեւանքով բաժան բաժան եղաւ եւ Հայկական Բարձրաւանդակին վրայ կազմուեցան զանազան փոքր իշխանութիւններ, որոնք իրարու դէմ կռուելով, երկիրը դժբախտ վիճակի մը ենթարկեցին (տես. վեր, 62—7)։



ՀԱՅԱՍՏԱՆ ՈՏԻՑ ԿՈԽԱՆ

Այս վիճակը աւելի քան հարիւր տարի (1092—1220) տեւեց, այնինչ մինչեւ այն թուականը, որ նոր խոշոր արշաւանք մը կամ ցեղաշարժ մը սկսաւ Չինկիզ Խանի (1219—1227) գլխաւորութեամբ։

Իր հեռաւոր բնակավայրէն, Մոնկոլիայէն, այս նշանաւոր աշխարհակալին զանազան ուղղութեամբ յարձակումները անօրինակ ստուար բանակներով երբ սկսաւ. իր առջեւէն խուճապահար խոյս տուին կարգ մը ցեղեր եւ իրենց հողերը կորսուին քանի մը վեհապետներ, որոնք ի զուր յամառօրէն կռուեցան իրենց գահերը վերահաստատելու համար։ Այս ցեղերէն եւ վեհապետներէն ոմանք օգտուիլ ուզած են Հայաստանի աշխարհագրական դիրքէն եւ մեր երկիրը պատերազմի թատերավայր ըրած են կամ իրենց անցքին վրայ մեծ չարիքներ հասցուցած Հայ ժողովուրդին։

Հայաստանի համար աղէտ մը հանդիսացող այս փախստական վեհապետներէն մէկն էր Խուարէզմի Ճէլալէտտին Սուլթանը, որուն մղած կռիւները — մեծ մասը Հայաստանի մէջ — արդէն տեսանք (վերը էջ 83—89 եւ 139—142) թէ ինչպէս Ասիան տակն ու վրայ ըրին։

ՑԵՂԱԽՈՒՄԲԵՐՈՒ ԵՒ ՕՍՄԱՆԻ ԱՇԻՐԷԹԻՆ ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Իսկ Չինկիզի բանակներուն առջեւէն Կամ Կեդր. Ասիոյ մէջ անոր գործադրած սոսկալի անհաբեկիչ խժդժութիւններէն սարսափահար, անոր դէպի արեւմուտք արշաւելէն առաջ, շատ մը ցեղախումբեր (ացիրեք), թողած էին իրենց հայրենիքը եւ գաղթած* զանազան ուղղութեամբ։ Եւ մեծ էր թիւը այդ ցեղախումբերուն։ Ինչպէս տեսանք, ասոնցմէ ալ կարեւոր մաս մը Հայաստան եկած եւ մնացած է։ Այս ցեղախումբերէն մէկուն պետն էր Սիւլէյման Շահ, որ Ժ.Գ. դարուն սկիզբը՝ ըստ ոմանց 150,000 եւ ըստ այլոց 50,000 գաղթականներով Մահան գաւառէն ճամբայ ելլելով, դէպի արեւմուտք փախած է եւ հասած Հայաստան, ուր հաստատուած է Եկեղեաց գաւառէն մինչեւ Ախլաթ տարածուող երկրամասին մէջ։

Պատմագիրներէն ոմանք կը պատմեն թէ 1224ին, երբ Մոնկոլները Խուարէզմի Ճէլալէտտին Սուլթանը հալածելու համար, Հայաստան խուժեցին, Սիւլէյման եւ իր ացիրեքը հարկադրուեցան թողուլ իրենց կայքը եւ յառաջանալ դէպի Արեւմուտք՝ եզերքը Եփրատի, զոր Սիւլէյման փորձեց անցնիլ, սակայն գետին մէջ խեղդուեցաւ, այնուհետեւ Թուրք Մեզարը կոչուած կէտին վրայ։

Ուրիշ պատմագիրներ կ'ըսեն թէ, երբ 1227ին Չինկիզ Խան կը մեռնի՝ Չինկիզի բանակներէն հալածուած ցեղախումբերէն ոմանք դառնալ կ'ուզեն իրենց երկիրը՝ անշուշտ աւարով։

Սիւլէյման Շահ ալ նոյն մտածութիւնը ունեցած է եւ իր ցեղախումբը ժողվելով որոշած է դառնալ հայրենիք, սակայն Եփրատը անցած ատեն խեղդուած է 1231ին։

Անգլուխ մնացած իր ցեղախումբէն մաս մը դէպի հարաւ՝ Ասորիք (Սիւ-

րիա) գաղթած է, իսկ Յունացեալները կրկին դարձած են Հայաստան, իրենց առաջնորդ եւ պետ ունենալով Սիւլէյման Շահի չորս որդիներէն միայն երկուքը Տունտարը եւ Էրթողրուլը, որ կու գան կը հաստատուին Կարնոյ արեւմուտքը, եւ կը մտնեն Գոնիայի Սելջուկեան Ալաէտտին Ա.ի (1297—1327) հովանաւորութեան տակ։ Երկու եղբայրներէն՝ Էրթողրուլ, քիչ յետոյ, իր Գայը Խան ցեղէն եղող հայրենակիցներով՝ Հայաստանէն Փոքր Ասիա կ'անցնի եւ կը հաստատուի Ռումի Սելջուկ կայսրութեան երկիրներուն մէջ, ուր իր յաջորդները կը հիմնեն Օսմանեան Թուրքերու պետութիւնը։

Աւանդութիւնը Էրթողրուլի կը վերագրէ բացառիկ բախտ մը. իբր թէ երբ անիկա կը հասնի Ռումի երկիրին սահմանները, լեռան մը կատարէն կը տեսնէ երկու կռուող խումբեր, որոնք էին Ալաէտտին Ա. Սելջուկ Սուլթանը, որ ինքզինք կը պաշտպանէր Մոնկոլ յարձակման մը դէմ։ Էրթողրուլ ասպետական ելոյթով մը, իր զինուորներով օգնութեան կը հասնի տկար բանակին, որ Սելջուկներունն էր եւ անոր կ'ապահովէ յաղթանակը։

Աւելի ուշ՝ Էրթողրուլ յաղթականօրէն կը հարուածէ նաեւ, ի նպաստ Ալաէտտինի, Յոյներու եւ Թաթարներու միացեալ բանակները, Պրուսայի եւ Էսկի Շէհիրի (Dorylée) միջեւ, եւ ի վարձատրութիւն իր ծառայութիւններուն, Ալաէտտինէ կ'ստանայ իբրեւ աւատ (fief) Պիլէճիկի շրջանակին մէջ Էրթողրուլ գաւառը, որ իր անունով կոչուած է եւ ցարդ կը պահէ այդ անունը, ինչպէս նաեւ արդի Էսկի Շէհիրի շրջանակը, որ անուանուած է Սուլթան Էօնիւ (= Սուլթանի ճակատ)։ Այսպէս, Էրթողրուլ կ'ունենայ Բիւզանդական սահմանին վրայ տանուտիրութիւն մը, Բիւզանդական հողերէն նուաճումներ ընելով՝ զայն ընդարձակելու իրաւունքով։

Արդարեւ, Էրթողրուլ իր յաղթանակներով հետզհետէ կը տարածէ իր տիրոյթը (Colonel Lamouche, Histoire de la Turquie, 1934, Paris, 16)։

Էրթողրուլ մեռած է 1288ին եւ իրեն յաջորդած է իր որդին Ութման կամ Օսման (Սրունք Կոտրող), որուն անունով թրքական այս աշիրէթը կոչուեցաւ Օթոմանեան կամ Օսմանեան (= Օսմանցի), (հմմտ. Մ. Սերոբեան, Մեր Պայքարը, 4)։

Rambrand (Histoire Générale, Գ, 822), կ'ըսէ թէ Էրթողրուլի հետեւորդ Թուրքերը, տակաւին ոչ քրիստոնեայ էին եւ ոչ իսլամ, երբ Փոքր Ասիա եկան եւ կ'արձանագրէ խել մը առասպելներ, յիշեցնող Ս. Գիրքին նախագուշակութիւնները, Էրթողրուլի եւ Օսմանի սերունդին ապագայ մեծութիւնը նախատեսող։

Ասոնք ցոյց կու տան հօրը՝ Էրթողրուլի հակամիտութիւնը դէպի իսլամութիւն եւ որդւոյն՝ Օսմանին այդ կրօնքը ընդգրկելու որոշումը (Col. La mouche, Նոյն, 16—17).

Սիւլէյման անունը, զոր կը կրէր Էրթողրուլի նախահայրը, ան որ Խորասանէն մեկնեցաւ իր հետեւորդներով՝ բախտ որոնելու համար Արեւմուտքի մէջ, ցոյց կու տայ իսլամական ազդեցութիւն մը. ինչպէս եւ Օսման, որ անունն էր իսլամ չորս մեծ իմամներէն մէկուն եւ երրորդ յաջորդը Մարգարէին։ Ասիկա ենթադրել կու տայ թէ Օսման արդէն իրապէս միւսլիման եղած էր իր հետեւորդներով (Նոյն):



Ճելալէտտին Խուարէզմի Սուլթանին և աշիրէթապետ Սիւլէյման Շահի
պէս, ուրիշներ ալ կային, որ Ասիոյ ուրիշ մասերուն մէջ ապաստան փնտռած
են Ջինկիզի իշխանութեան առեն, անոր հարուածներուն չտոկալով։ Այս ցե-
ղախումբերը, ինչպէս տեսանք, Ջինկիզի վրէժխնդութենէն խուսափելու հա-
մար կը հարկադրուէին հեռանալ իրենց բնակավայրէն և հաստատուիլ այլուր։
Անոնց այդ տեղափոխութիւնները նախանշաններն էին այն փոթորիկին, զոր
Մոնկոլները պիտի յարուցանէին Ծայրագոյն և Կեդր. Ասիայէն ետք՝ նաև
Մերձաւոր Ասիոյ մէջ ընդհանրապէս ու Հայաստանի մէջ մասնաւորապէս։

Ջինկիզի մահէն հազիւ 10 տարի յետոյ, սոսկատեսիլ Թաթարները ո-
ղողեցին Հայաստանը և 1236էն մինչեւ 1250ական թուականները անտանելի
դժբախտութեանց և թշուառութեանց մատնեցին անոր խաղաղ բնակչութիւնը,
որ ոչ միայն կոտորածներու ու աւարառութեան ենթարկուեցաւ, այլ նաև ա-
մենախիստ հարկապահանջութեան, մինչեւ որ Հեթում Ա. Հայոց Կիլիկիոյ թա-
գաւորը, իբրեւ ճորտ, Մոնկոլ Մանկու Մեծ Խանին (1250—1259), անոր հո-
վանաւորութեան տակ ոչ միայն Կիլիկիոյ հայ թագաւորութիւնը զօրացուց,
այլ նաև Մեծ Հայաստանի Հայերուն վիճակը բարւոքեց։

Թաթարներու տիրապետութեան ժամանակամիջոցին մէկ կարեւոր մասը,
տեւականապէս 90 տարի (1250—1340), Հայաստանի հայ բնակչութիւնը
իրարու յաջորդող Թաթար կուսակալներու իշխանութեան տակ ապրեցաւ
նպաստաւոր պայմաններու մէջ և Թաթար կուսակալներու իշխանու-
թեան տակ Հայերը յաջողեցան նոյնիսկ Վրաց հետ համերաշխիլ և Վրաստանի
թագաւորներուն աւատապետութեան տակ այսպէս աւատապետական կազմով
ճորտական հայ իշխանութիւններ կազմել։ Այսպէս, Արարատեան նահանգին մեծ
մասին մէջ կազմուած տոհմապետութիւնները Վրաստանի Աթապէկի և Սպա-
սալարի պաշտօններով Հայ և Վրացի միութիւնը սերտացնող Զաքարեան իշ-
խաններու գլխաւորութեամբ և Սիւնեաց նահանգին մէջ, Մոնկոլ հովանաւո-
րութեան տակ, նոյնպէս Վրաստանի հետ համերաշխ և համաձայն գործող այս
երկու իշխանութիւնները, ստեղծեցին հայ զօրաւոր կեդրոնավայրեր, ինչպէս
նաև Հայ մշակոյթի հոյակապ վառարաններ, որոնք Հայ ազգը ապրեցուցին
նոյնիսկ այնպիսի օրերու մէջ, երբ հուրի և սուրի մատնուած էր բովանդակ
Հայ աշխարհը։

Այս ժամանակամիջոցին, նոյնպէս Թաթար հովանաւորութեան տակ,
երեւան կու գան, Հայաստանի, մասնաւորապէս հարաւակողմի նահանգներուն
մէջ ինքնիշխան փոքրիկ պետութիւններ, Քիւրտ պէյերու իշխանութեան տակ։
Այս վերջինները ԺԴ. դարուն կէսերը աւատապետական կազմով բաւական զօ-
րաւոր երեք իշխանութիւններու կը վերածուին, և Հայաստանի կը տիրեն ե-
րեք դարեր։ Ասոնցմէ Թուրքմէն իշխանութիւնները կը գրաւէին Հայկական
Բարձրաւանդակին Արեւմուտքը, Պարսկականները՝ Արեւելքը և Քիւրտ պէկերը՝
Սասունի Ամիրային իշխանութեան տակ՝ Հարաւը, երբ նոր հեղեղ մը բար-

բարոսներու, այսինքն Եօզպէք Թաթար ցեղը, գլխաւորութեամբ Լէնկ Թիմուրի
ԺԴ. դարուն վերջին քառորդին, Հայաստանը կ'ողողէ և անսահմանելի խժդը-
ժութիւններու կ'ենթարկէ բնակչութիւնը ամբողջ քառորդ դար մը, որմէ յե-
տոյ Հայաստան միայն Շէյխ Ահմէտի կուսակալութեան տակ 1397էն 1407,
11 տարի խաղաղութիւն կը վայելէ, որ դժբախտաբար շուտով կրկին կը խան-
գարուի։ Լէնկ Թիմուրի մահէն յետոյ Գարա Եուսուֆ, իր կորուսած երկիրնե-
րը վերագրաւելու համար, Լէնկ Թիմուրի որդւոյն՝ Շահ-Ռուխի դէմ մղած
պայքարներով։ Ինչպէս տեսանք, տեւական կռիւները աւելի սաստկութեամբ
շարունակեց իր որդին Իսկէնտէր, մինչեւ իր մահը (✝ 1437), որմէ յետոյ
Ագգոյունլուներու և Գարագոյունլուներու միջեւ պայքարը շարունակուեցաւ
մինչեւ 1468, երբ այս երկու իշխանութիւններու միացմամբ վերակազմուեցաւ
պարսկական մեծ պետութիւն մը, որուն սահմաններուն մէջ էր նաև Հայաստան։

## ՉՈՐՍ ԴԱՐՈՒ ՄԷՋ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽԱՂԱՂ ՏԱՐԻՆԵՐԸ

Կեդրոնական Ասիայէն դէպի Արեւմուտք խուժող հրոսներու 1040էն 1468
տեւող ասպատակութեանց այս անիշխանութեան չորս հարիւր տարիներու շըր-
ջանին մէջ, ինչպէս կը տեսնուի, Հայաստան միայն Մելիք Շահի իշխանու-
թեան (1072—1092)՝ 20, Թաթարներու իշխանութեան 1250էն 1340՝ 90 և Շէյխ
Ահմէտի կուսակալութեան (1397—1407) 11 տարիներու, այսինքն ընդամէնը
121 տարիներ, պարբերական ընդհատումներով, մասնակի բայց ոչ բացարձակ,
խաղաղութիւն կը վայելէր, մինչ մնացեալ 307 տարիներուն՝ անօրինակ թըշ-
ուառութիւններու, կոտորածներու, ջարդերու, աւարառութիւններու, գերեվա-
րութիւններու և մանաւորապէս սոսկալի հարկապահանջութիւններու կ'են
թարկուէր։ Պատմական նման եղելութիւններ անխուսափելիօրէն առաջ կը բե-
րեն նման արդիւնքներ։

Արդ, բոլոր այս աղէտները, զորս Ասիական բարբարոսներու արշաւանք-
ները պատճառեցին Հայաստանի, անիկա արդէն անգամ մը կրած էր։ Արա-
բական տիրապետութեան շրջանին գէթ առաջին երեք դարերուն (Է—Թ),
և որոնց հետեւանքը եղած էր Հայերու զունդագունդ հեռացումը իրենց հայրե-
նիքէն, խաղաղութիւն, անդորրութիւն և ապահովութիւն փնտռելու համար
օտար աստղերու տակ, վասնզի Հայաստանի մէջ անոնք շատ հազուագիւտ
դարձած էին։ Հետեւաբար, Սելջուկ-Մոնկոլ-Թաթար արշաւանքներու շրջա-
նին ալ Հայերը նոյնը պիտի ընէին։ Ու այդպէս ալ եղաւ։

Գաղթը դէպի տարաշխարհներ, շարունակուեցաւ աւելի սաստկութեամբ
և աւելի մեծ ծաւալով։

---



Ա.

# ՀԱՅԵՐՈՒ ՑՐՈՒՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ

՝Հայերու, Հայաստանէն աշխարհի զանազան մասերը ցրուելուն պատ-
ճառները բազմազան եղած են միշտ։

Անոնց մէջ կարեւոր դեր մը ունէր մեր երկրին աշխարհագրական դիրքը
և կազմը և անոր հետեւանքով ստեղծուած կարգ մը պայմանները, որոնց
վրայ կրկին պիտի չխօսինք, քանի որ նախապէս արդէն բացատրած ենք հան-
գամանօրէն (տես. ՊՀԳ. Ա. 1—76)։

Մենք տեսանք արդէն թէ, Հայաստան իբրեւ աշխարհագրական տիրա-
պետող դիրք, ինչպէս կռուախնձոր մը եղած էր անցեալին մէջ Պարսիկներու
և Հռոմայեցիներու, Պարթեւներու և Հոռոմներու, Արաբներու և Բիւզանդական
կայսրութեան միջեւ, և պատերազմի կռուադաշտ՝ զօրաւոր բանակներու։

Իր պատմութիւնը մինչեւ ԺԱ. դար, ինչպէս տեսնուեցաւ, շարք մըն
էր ջարդերու, գերեվարութիւններու, բռնագաղթերու, կեղեքումներու և հար-
կապահանջութիւններու, որոնք կը մղէին Հայերը հեռանալու Հայաստանէն։

Պատճառի և արդիւնքի պարզ փոխ-յարաբերութիւն մըն էր ասիկա, որ
նոյնպէս բացատրած ենք, կարելի եղածին չափ սպառիչօրէն (Տես. ՊՀԳ. Ա.
77—100)։ Այնպէս որ՝ եթէ ըսենք թէ նոյն և համանման պատճառներով Հա-
յերու ցրուումը աշխարհի ամէն կողմը, շարունակուած է նաև ԺԱ.էն մինչեւ
ԺԵ. դար, սխալ բան մը ըսած չենք ըլլար, քանի որ իբրեւ հետեւանք ճիշդ
նման պայմաններու՝ Հայերը այս չորս դարերուն ապրած են նախընթաց դա-
րերու դժբախտ կեանքը և գուցէ աւելի դաժան և աւելի անտանելի։

Ասիական բարբարոսներու արշաւանքներուն չորս դարերու շրջանին, ո՛չ
Հայաստանի բնական նկարագիրը փոխուած էր՝ հրաշքով մը և ոչ ալ աշխար-
հագրական ազդակին հետեւանք՝ երկրին քաղաքական դժբախտ վիճակը բար-
ւոքած. ուստի չէր կրնար կասիլ կամաւոր և բռնի գաղթը, որ շարունակուած
է աւելի սաստկութեամբ, վասնզի այդ չորս դարերու շրջանին, ոչ միայն չէին
մեղմացած բոլոր այն չարիքները, որոնց անցեալին ենթարկուած էր Հայաս-
տան, այլ շատ աւելի սաստիկ խռովայոյզ վիճակ մը ստեղծուած էր երկրին
մէջ, ուր աւելի անապահովութիւն կը տիրէր և պատերազմները իրենց բոլոր
հետեւանքներով աւելի յաճախադէպ էին, ինչպէս գերեվարութիւնները և բռնա-
գաղթերը աւելի անգթօրէն և հարստահարութիւնները, կեղեքումները, աւա-
րառութիւնները և խիստ հարկապահանջութիւնները շատ աւելի անողոք կեր-
պով կը գործադրուէին։

Հետեւաբար, շատ բնական էր որ այս չարիքները, որոնք երկրին դա-
տարկացման պատճառ էին ԺԱ. դարէն առաջ, այդ դարէն մինչեւ ԺԵ. դար,
նոյն և աւելի աստիճաններով Հայաստանի համար սովորական վիճակ մը դառ-
նային և առաջ բերէին նոյն արդիւնքը, Հայաստանի դատարկացումը։

Այս հրոսակային նկարագիրով ժողովուրդները, որոնք Արեւելքէն կու գային և ամէնէն առաջ Արեւելեան երկիրները տակնուվրայ կ'ընէին, իրենց անմիջական թափին ենթարկուած Հայ ժողովուրդին կեանքին վրայ մեծ ներգործութիւն ունեցան և գլխաւոր պատճառը հանդիսացան Հայ ժողովուրդին զանգուածային տեղափոխութեան, մանաւորապէս դէպի Արեւմուտք, ուր արդէն լեցուած էին հին ատենէ ի վեր բազմաթիւ Հայեր, նոյնիսկ այնքան հոծ բազմութեամբ, որ Հայաստան նկատուիլ սկսած էին Պոնտոսի կարգ մը մասերը, Փոքր Հայքը, Կապադովկիան, Կոմագենէն և Եփրատացիք, ինչպէս տեսնուեցաւ։

Եւ որովհետեւ այդ բարբարոսները եղաւ ժամանակ որ հիմնեցին մեծ կայսրութիւններ, որ Իրանէն մինչեւ Չինաստան կը տարածուէին, Հայերը այս չորս դարերու ընթացքին, կամայ կամ ակամայ յարաբերութիւններ ունեցան Ասիական ընդարձակ երկիրներու հետ, հոն վարուելով իբրև գերի, իբրև տարագրեալ, իբրև առևտրական ևայլն։

Այնպէս որ Հայերը, Ասիական բարբարոսներու երեք հեղեղներուն պատճառով սկսան յարաբերութեան մտնել այնպիսի երկիրներու հետ, որոնք մինչև ԺԱ. դար, բոլորովին անծանօթ էին իրենց։ Այս տեղափոխութիւնները նպաստեցին հայուն տարածականութեան սովորոյթ մը դառնալուն։ Ասիական երկիրներու մէջ, Հայերու բուն բնակավայրէն դուրս, Պարսկաստան, Փոքր Ասիա, Ասորիք և Միջագետք՝ արդէն արաբական տիրապետութեան շրջանին, հայ գաղութներ ունէինք, երբ Պարսկաստանի Սելջուկները։ զորս երբեմն Ելամացի և երբեմն Սկիւթացի և յաճախ Պարսիկ սխալ անուններով կը յիշեն մեր պատմագիրները, ԺԱ. և ԺԲ. դարուն ողողեցին ոչ միայն Հայաստանը, այլ նաև դրացի երկիրները։ Հայերը, ինչպէս իրենց վիճակակից Ասորիները և Նեստորականները, հպատակ ժողովուրդներու յատուկ հոգեբանութեամբ՝ տէր փոխելու ցանկութիւնը ունեցած են, և նպաստած են Սելջուկներու տիրապետութեան, վասնզի դառնացած էին Ռոմանոս Դ.ի տրամադրութիւններով լեցուած կայսրերու իշխանութեան դէմ, և իրենց նոր տիրապետներէն իրենց վիճակի բարւոքումը կ'ակնկալէին և ասոր համար սիրով կը համակերպէին և կը նպաստէին նոր տիրապետողներուն (Հ. Գելցեր, 286, տես նաև վերը՝ 43)։

Եթէ Արեւելեան այս ոչ-Քաղքեդոնական ժողովուրդները համակերպութեան ոգին ցոյց տուած չըլլային, թերևս իրենց վիճակը աւելի տոկալի պիտի ըլլար, վասնզի Սելջուկ առաջնորդները՝ ինչպէս Տուղրիլ և Ալփասլան անողոք կերպով պատժած են բոլոր անոնք որ իրենց ահեղ զօրութեան դէմ մարտնչիլ ուզած են։ Անոնք, հին Արեւելեան բոլոր ազգերուն նման՝ իրենց գործած ահռելի աւերներու շարքին, իբրև պատերազմական պայքարի միջոց, գործածած են նաև գերառութեամբ երկիրները դատարկացնելու վայրագ դրութիւնը։

Հետևաբար, Հայաստանէն շարունակ վերցուած են անհամար թիւով գերիներ, ինչպէս կը յիշատակեն Հայ և օտար պատմագիրները։

Նոյնպէս ասիական յետամնաց և տակաւին վայրենի ժողովուրդները, թերևս օրինակ ունենալով իրենց առջև Արաբները, իրենց պատերազմական



նպատակներուն առաջինը ըրած են, իրենց արշաւանքներուն միջոցին, աւարառութիւնը և կողոպուտը, մանաւանդ մինչև այն ատեն՝ որ Հայաստանի մէջ առանց տեղաւորուելու և բնակութիւն հաստատելու, ամէն տարի կու գային արշաւել մեր հայրենիքը, ձմեռը անկէ հեռանալու պայմանով։

Իսկ Հայաստանի մէջ իրենց հաստատուելէն յետոյ, հետևելով արաբական դրութեան, որ կը ձգտէր տուրքերու ծանրութեան տակ ընկճելով ժողովուրդը՝ զայն անկարող դարձնելու ապստամբութեան, Ծայրագոյն և Կեդրոնական Ասիոյ տափաստաններէն դէպի Մերձաւոր Ասիոյ շէն և բարգաւաճ երկիրները արշաւող այս վաչկատուն ժողովուրդներն ալ հարկապահանջութիւնը և անհատներէ գանձուած օրինական և ապօրէն տուրքերուն քանակը, անհամեմատ և աննախընթաց չափերու հասցուցին, և վճարելու անկարողները՝ սաստիկ խոշտանգումներու, չարչարանքներու և վայրագ պատիժներու ենթարկեցին, ինչպէս տեսնուեցաւ։ Այնպէս որ, շատեր նախընտրեցին տուն, տեղ, արտ ու այգի և գոյք լքելով, հեռանալ երկիրէն՝ ազատելու համար այս անտանելի հարկերուն լուծէն։

Պատերազմներու իբրև պարզ և բնական հետեւանք, սովերը և համաճարակներն ալ նուազ չնպաստեցին երկիրին դատարկացման և շատերու փախուստին և հեռանալուն։

Աւելցուցէք ասոնց վրայ բնական աղէտները, մանաւորապէս Հայաստանի շատ յաճախադէպ երկրաշարժները և դուք կրնաք երեւակայել ընդհանուր պատկերը այն ողբալի վիճակին, որուն ենթարկուած էր Հայաստան։

Բարբարոսներու այն երեք գլխաւոր հեղեղները, որոնց քանդիչ և փըշրող հարուածներուն ենթարկուեցաւ Հայաստան, ամէնքն ալ գրեթէ միևնոյն նկարագիրը ունէին, աւելի կամ նուազ երանգաւորումներով կամ տարբերութիւններով, որոնք բոլորովին զուրկ չէին նշանակութենէ կամ արժէքէ և երեք բարբարոսական հեղեղներուն իւրաքանչիւրին կու տային առանձնայատուկ դրոշմ մը։

Առաջինը այդ բարբարոսներուն՝ Սելջուկներն էին, որոնց յաջորդող Մոնկոլները աւելի վայրագ էին, իսկ երրորդը՝ Լօզպէք Թաթարները՝ կը գերազանցէին նախորդ երկուքը։

Հետևաբար, Հայաստանի մէջ բարբարոսներու պատճառած չարիքները, այս չորս դարերու շրջանին առաջատուական զարգացում մը ունեցած են, համաձայն իրենց վայրենի նկարագիրին և գազանային հակումի աստիճանին, ինչպէս պիտի տեսնուի, երբ քննենք այս երեք շրջաններուն՝ Հայերուն ինչո՞ւ և ի՞նչպէս գաղթելը։

---

## Ա.

# ՍԵԼՋՈՒԿԵԱՆ ՇՐՋԱՆ

## (1048—1064—1220) [1]

Սելջուկ Թուրքերը կեդր. Ասիոյ տափաստաններէն դէպի Արեւմուտք արշաւի ճամբուն վրայ գտնուած բազմաթիւ ուրիշ ժողովուրդները քշեցին իրենց առջեւէն եւ զանոնք ալ դէպի Արեւմուտք շարժելու ստիպեցին։

Այնպէս որ՝ իրենց Հայաստան հասնելէն բաւական առաջ արդէն զանազան ժողովուրդներ, ապահովաբար Արեւելքէ առաջացող մարդկային մեծ զանգուածներու պատճառած տակնուվրայութեան հետեւանօք՝ Թափառիկ ու ասպատակ դարձած, կանխած էին Սելջուկ Թուրքերը եւ անոնց յառաջապահները եղած ու Հայ ժողովուրդը անհանգիստ ընել սկսած էին եւ կ'սպառնային Հայերն ալ իրարու վրայ ինկող ասիական ժողովուրդներէն մէկը դարձնելով՝ զայն ալ իր երկիրէն վանել։

Տեսանք արդէն թէ ինչպէս Սելջուկները տակաւին նոր մտած Ղազնէվիներու երկիրը, Հայաստան կրեց Ասիոյ կեդրոնը կատարուած ազգերու տեղափոխութեան ալիքներուն ազդեցութիւնը եւ 1018—1021 թուականներուն, Վասպուրական եւ Սիւնիք կրեցին «խուժադուժ» ազգերու հարուածները (վերը՝ 27), որոնց հետեւանքով, Հայկական առաջին զանգուածային տեղափոխութիւնը կատարուեցաւ Վասպուրականէն դէպի Սեբաստիա, Սենեքերիմ Արծրունի Թագաւորին գլխաւորութեամբ (ՊՀԳ. Ա. 233), առաջ քան Սելջուկներու Հայաստան մուտքը, որ յապաղեցաւ մինչեւ 1047—1048 թուականները, ու Իբրահիմ Նիյալի արշաւանքը, դէպի կեդրոնական Հայաստան, դէպի Սեւ ծով եւ դէպի Եփրատ (վերը՝ 34), ճիշդ այն մասերը Հայաստանի, որոնք կը գտնուէին Բիւզանդական տիրապետութեան տակ։

Այդ թուականէն (1048), յետոյ՝ Սելջուկները շարունակ Հայաստանի վրայ յարձակեցան, զայն կողոպտեցին, աւարի տուին, բնակիչներէն մաս մը ջարդեցին եւ մէկ մաս ալ գերի տարին։

Այսպէս, բացին նոր էջ մը Հայոց Պատմութեան մէջ, ցաւի եւ հեծութեան, որ չորս երկար դարեր տեւեց։

Այդ վայրենի եւ արիւնարբու եւ գրեթէ բոլորովին անքաղաքակիրթ ազգերուն ամէնէն սիրած արարքներէն մէկն էր՝ իրենց արշաւած երկիրներուն մէջ, իրենց մղած պատերազմներուն միջոցին, գերեվարութիւնը, զոր գրեթէ տա-

[1] Ինչպէս յայտնի է, Սելջուկեան տիրապետութիւնը Հայաստանի վրայ տեւած է 1064էն 1220, (տես. վերը՝ 45—67), սակայն նկատելով թէ իրենց յարձակումները եւ պատճառած պատերազմական արհաւիրքները կ'սկսին 1048 թուականէն (տես. վերը 33), 1048—1064 շըրջանն ալ միասին առնել յարմար դատեցի։



կանօրէն գործադրած են Սելջուկներն ա՛լ, Մոնկոլներն ա՛լ, Լէզպէք Թաթարներն ալ։

Արդ, միայն Սելջուկեանց ժամանակամիջոցին վրայ խօսելով, պիտի տեսնենք թէ 1047—1220 շրջանին, անոնց ամէնէն սիրական մեթոտներէն մին էր բնակչութեան գերեվարութիւնը եւ երբեմն ալ բռնագաղթը։

### ՍԵԼՋՈՒԿ ԳԵՐԵՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ ԻԲՐԱՀԻՄ ՆԻՅԱԼԻԻ ԿՈՂՄԷ

Ինչպէս վերը (էջ 34) բացատրեցինք, առաջին անգամ 1047ին, Իբրահիմ Նիյալիի եւ Սիւլէյման Գութթուլմշի հրամանատարութեամբ եւ Տուղրիլ Պէկի հրամանով՝ Սելջուկները մտան Հայաստան, Վասպուրականի կողմէն, եւ առաջացան մինչեւ Բասեն եւ Վաղարշաւան (Լաստիվերցի, 44 եւ վերը 34) «հանդեալ» ապականելով «զաւառս հան եւ չորս, սրով եւ հրով եւ ԳԵՐՈՒԹԵԱՄԲ» (Լաստ., 44) ինչպէս նաեւ 1048ին — Լաստիվերտցիի որակումով «երկրորդ ամ գերութեան մերոյ» — երբ Սելջուկները մտան Բասենի եւ Կարնոյ ընդարձակ դաշտը, տակն ու վրայ ըրին Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուած Խաղդեաց գաւառը, Սպերը՝ մինչեւ «յամուրս Տայոց եւ Արշարունեաց», Տարօնը «մինչեւ ի գաւառսն Հաշտենից, մինչեւ յանտառն Խորձենոյ» (Լաստ., 46—7, վերը՝ 36)։ Անոնք՝ ոչ միայն ջարդեցին խաղաղ բնակչութիւնը, չխնայելով նոյնիսկ կիներուն եւ երախաներուն, ոչ միայն կողոպտեցին խաղաղ երկիրին հարստութիւնները, այլ ամէն ինչ այրեցին եւ ոչնչացուցին (Յակոբ Մանանդեան, Քննական Տեսութիւն, հտ. Գ., 40)։ Ժամանակակից պատմիչին բառերով «խուժադուժ ազգն հեթանոսաց... մարդակոտոր սատակմամբ ապականեցին զգաւառս բազումս եւ ԱՌ ԵՒ ԳԵՐԻ ԲԱԶՈՒՄ ԱՌԵԱԼ իջին յաշխարհն իւրեանց» (Լաստ., 47 եւ վերը՝ 34)։

Այս երկրորդ արշաւանքի ընթացքին՝ Թրքական հրոսակները սոսկալի ջարդ եւ աւերածութիւն կատարեցին, մանաւանդ Մանանաղի գաւառի Սմբատաբերդ կոչուող լերան վրայ, ուր ապաւինած էր անթիւ բազմութիւն մը, իրենց ինչքերովը։

Սելջուկները յաջողեցան քանդել ամրութիւնները եւ խուժել Սմբատաբերդ աւանէն ներս, եւ սուրէ անցնել կամ ԳԵՐԻ ՎԱՐԵԼ բոլոր փախստականները։ (Լաստի., էջ 50—52, Յ. Մանանդեան, նոյն, 41, 44 եւ վերը՝ 34)։

Սելջուկներու անլուր անգթութիւնները եւ անհամար գերիներ առնելով Հայաստանէն հեռանալը կը հաստատեն նաեւ Կենդրոնոս եւ Զոնարաս յոյն պատմիչները։

Նոյն 1048 թուականին՝ Սելջուկ հրոսները կը յարձակին նաեւ Հայաստանի ամէնէն ճոխ քաղաքներէն՝ Արծնի վրայ, որ Թէոդոսուպոլիսի (Կարին) մօտ, այս շրջանին ամենահարուստ եւ առեւտրական ամենախոշոր քաղաքն էր, ըստ Լաստիվերտցիի (էջ 53)։ Այն տեղեկութիւնները, զորս պատմիչները կու տան Արծն քաղաքին բնակչութեան եւ կողոպտուած ժողովուրդին թիւին մասին, Յակոբ Մանանդեան (նոյն, 41), անհաւատալի կը գտնէ։

Արդարեւ, այդ տեղեկութիւններուն համաձայն՝ Արծն քաղաքը ունեցած է մօ-

տաւորապէս 300,000 բնակիչ, իսկ սպանուած և այրած բնակիչներուն թիւը Կեդրենոս (Բ. 377), կը ներկայացնէ 140,000 և Մատթէոս Ուռհայեցի (էջ 120—121), 150,000։

Իսկ Արիստակէս Լաստիվերտցի, որ ականատես եղած է այս անհարկու կոտորածին, կը պատմէ թէ «թիւ քահանայից, որք ի սուր եւ ի հուր վախճանեցան՝ գտաք աւելի քան զհարիւր յիսուն, որք ի վիճակի տեարք էին եւ եկեղեցւոյ» (Լաստ., 57):

Սելջուկները այդ 800 եկեղեցիներ ունեցող փառաւոր քաղաքը, որուն ճոխութիւնը և հարստութիւնը պատմագիրները կը գովեն, հիմնայատակ կործանեցին։ բնակիչները սուրէ անցուցին և «եւ այսպիսի դառն կոտորածիւ եւ չարաչար մահուամբս որով անցաւ վայելուչ եւ փառաւոր քաղաքն Արծն, եւ կամ որպէս լալով ասացից՝ զանցումն իշխանացն եւ զքահանայիցն որք անթաղք կերակուր գազանաց լեալ, եւ փառաւոր կանայք հանդերձ տղայովքն ՎԱՐԵՑԱՆ Ի ԳԵՐՈՒԹԻՒՆ ՅԱՇԽԱՐՀՆ ՊԱՐՍԻՑ յանգին ծառայութիւն» (Ուռհայեցի, 121, *վերը*, 35—36)։

Այս աղէտին ականատես պատմագիր, յատկապէս կը շեշտէ թէ գրած է միայն այն բաները, որոնք տեսած է, այնպէս որ դիւրին է մակաբերել թէ Հայաստանի ուրիշ կողմերն ալ գործուած են նոյն արարքները։

Սելջուկեան այս արշաւանքներուն ժամանակ, Վասպուրականի կուսակալն էր Ահարոն Պուլկարը, իսկ Անիի կամ «Տանն Հայոց իշխանը» Գատագալոն Կեկոմենոս (Հայ պատմիչներու Կամենաս) որ իբրև Բիւզանդական մոլեռանդութեան ներկայացուցիչը՝ Հայոց եկեղեցին կը հալածէր (H. Gelzer, Ansgewahite Kleine Schriften- Leipzig, 1907, 134 և Յ. Մանանդեան ՔՆՆ. Տես., 44), առանց անդրադառնալու թէ կայսրութեան հիմերը կը պեղէր, քանի որ Հայերու ատելութիւնը կը գրգռէր։

Այս անխորհուրդ քաղաքականութիւնը շատ աւելի աղէտալի պիտի ըլլար եթէ յոյները չուշաբերէին և չզգային թէ իրենք պէտք ունէին Հայերու և Վրացիներու գործակցութեան, կասեցնելու համար Սելջուկ արշաւանքները։

Հետեւաբար, ինչպէս տեսնուեցաւ (վերը, 36), Բիւզանդացիները օգնութեան կոչեցին Հայ Պահլաւունի մեծ տան պետը՝ Գրիգոր Մագիստրոսը և Վրաց մեծ իշխանը՝ Լիպարիտը, որոնց օգնութեամբ Կատակալոնը և Ահարոնը ուզեցին վանել փորձել Սելջուկները, սակայն չարաչար պարտուեցան (վերը՝ 37), վասնզի բոլոր հրամանատարները իրարու հետ անհամաձայն էին (1)։

Ընդհարումը տեղի ունեցաւ 1048 Սեպտ. 18ին, Բասենի մեծ դաշտին մէջ՝ Կապուտրու բերդին մօտ, որ կը գտնուէր Արջովիտի մէջ (Լաստ., 59 և Ուռհայեցի, 125)։

Սելջուկ զօրքը այս անգամ ալ դարձաւ իր երկիրը, իր հետ տանելով անչափ հարստութիւն և անհագին բազմութիւն մը գերիներու, որոնց մէջ էր

---

(1) Այս պատմութեան մասին Արիստակէս Լաստիվերտցի ընդարձակ գրած է (տես. էջ 51—60)։ Անոր պատմածները կը հաստատէ Իպն էլ Ասիր արաբ պատմագիրը, որուն ռուսերէն թարգմանութենէն Յակոբ Մանանդեան թարգմանած է այս մասին անոր գրածը (տես. ՔՆՆ. Տես. Գ., էջ 45—46)



նաև Վրաց իշխան Լիպարիտը (Իպն էլ Ասիր Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես., Գ. 44)։ Իպն էլ Ասիրի խօսքերէն կը հասկցուի որ Կապուտրու բերդին յաղթութենէն վերջ՝ Իպրահիմ Նիյալ, Անդրկասպեան երկիրներէն իրեն դիմող բազմաթիւ Ուզերը թելադրած է Բիւզանդական երկիրները մտնել և աւար առնել։

Ուզերը համակերպելով արշաւած են մինչեւ Մանազկերտ, Արզն, Կարին, Տրապիզոն եայլն։

Անոնց դէմ 50,000 Յոյն և Ափխազ զօրք ղրկուեցաւ։ Երբեմն մէկ կողմը և երբեմն միւս կողմը կը յաղթէին։ Բայց ինչպէս Իպն էլ Ասիր կը հաստատէ՝ «վերջ ի վերջոյ յաղթեցին իսլամները, որոնք ջարդեցին շատ հռոմներ (*իմա՛ բիւզանդացի*), զանոնք փախուստի մատնեցին, եւ գերի առին մեծ թիւով անոնց պատրիկներէն»:

Արաբ պատմիչը կ'արձանագրէ որ, Իպրահիմ Նիյալ շարունակած է աւերել և կողոպտել այդ երկիրները մինչև 15 օրուան հեռաւորութիւն Կ. Պոլիսէն։

Պատմիչը կ'աւելցնէ՝ թէ «իսլամները այդ շրջանները գրաւեցին, կողոպտեցին, անոնց ամէն ինչը առին եւ ԳԵՐԻ ՏԱՐԻՆ ԱՒԵԼԻ ՔԱՆ 100,000 ՄԱՐԴ: Անոնք առած էին այնքան մեծ քանակութեամբ գրաստներ, ջորիներ, աւար եւ գոյք, զորս հաշուի առնել անկարելի էր: Կ'ըսուի որ աւարը տարեր էին 10,000 սայլով եւ աւարին այս թիւին մէջ էին նաեւ 19,000 վահաններ» (Յ. Մանանդեան, Նոյն, 46)։

Այս 100.000 գերիներու մէջ անխուսափելի է որ մեծ թիւով Հայեր ալ ըլլային, վասնզի նշանակուած շրջաններուն մեծ թիւով Հայեր կը բնակէին և նոյնիսկ Հայաստանի մաս կը կազմէին անոնք։

Իպրահիմ Նիյալ, այս յաջողութիւններէն քաջալերուած, ըմբոստացաւ իր եղբօր Տուղրիլ պէկի դէմ և չէր ուզեր անոր գերիշխանութեան ենթարկուիլ։ Տուղրիլ իր հեղինակութիւնը պահելու համար գրաւեց հարաւային Հայաստանը Իպրահիմ Նիյալէն առնելով։ Երկու եղբօր յարաբերութիւնները այնքան ձըգտըեալ վիճակ ստացան որ անոնք իրարու դէմ պատերազմիլ սկսան՝ հայ հողին վրայ (վերը՝ 37) մինչեւ որ 1050ին Իպրահիմ գերի ինկաւ և խեղդուեցաւ (վերը 37), իսկ Տուղրիլ և Չագըր պէկ՝ Սելջուկ պետութեան միւս մասերուն մէջ ծագած ըմբոստութիւններով զբաղեցան և Հայաստան, որ կիսովին քանդուած և աւերուած էր, մօտաւորապէս 4—5 տարի զերծ մնաց ասպատակային արշաւներէն։

Այս առժամեայ հանդարտութեան ժամանակամիջոցին՝ միայն 1053/1054ին՝ Արիստակէս Լաստիվերտցի (էջ 61—62 կամ վերը՝ 38) կը յիշատակէ Սելջուկ հրոսներու (1) մէկ յանկարծական յարձակումը՝ Ծննդեան տօնին օրը (6 Յունուար)՝ Կարս քաղաքին վրայ, և բնակչութեան կոտորածը։ Քաղաքացիներէն փրկուած էին միայն անո՛նք, որոնք ապաստանած էին միջնաբերդին մէջ։

Ինչպէս տեսնուեցաւ (վերը՝ 38) այս առթիւ ալ «առեալ զգերի եւ զկապուտ քաղաքին գնացին յաշխարհն իւրեանց» (Լաստ. 62)։

---

(1) Յակոբ Մանանդեան, կ'ըսէ թէ, ըստ երեւոյթին, այս աւազակները ո՛չ թէ Սելջուկեան Թուրքերու զօրքը, այլ հարեւան երկիրներու հրոսները կատարած են։ Անհաւանական չէ, սակայն փաստը կը պակսի եւ դժուարութիւններ կան համոզում գոյացնելու այս մասին։

## ՏՈՒՂՐԻԼԻ ԿԱՏԱՐԱԾ ԳԻՐԵՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1054ին Տուղրիլ պէկ անթիւ զօրքով անձամբ երեւցաւ Հայաստանի սահմաններուն վրայ և մտաւ Վասպուրական և առաջացաւ Բերկրի և հոն ապաստանած հայ իշխանները գերի առաւ (Ուռհ. 140 և վերը 38) և յետոյ Վանի լիճին հիւսիսային կողմէն մտաւ Տուրուբերան և պաշարեց Մանազկերտը, զոր չյաջողեցաւ գրաւել։

Այստեղէն անոր զօրքերը երկիրին զանազան մասերը ասպատակ սփռելով՝ կոտորածներ և գերառութիւններ ըրին, որոնց մանրամասն նկարագիրը տուած են Ուռհայեցի և Լաստիվերտցի (Լաստիվերցի էջ 62—63, Ուռհայեցի 140—142, վերը՝ 38—41)։ Ինչպէս կ'երեւի, եղած են տեղեր, ուր քանիցս արշաւած են անոր համար Լաստիվերտցի (63) կ'ըսէ. «ապականեցին զաշխարհ մեր, ո՛չ միանգամ այլ երիցս անգամ մի ի միոյ վերայ դարձ արարեալ՝ մինչեւ առհասարակ հասաւ երկիրս ի բնակչաց եւ բարձաւ կառաչ անասնոց» (տես վերը 38—39)։

Տուղրիլի այս արշաւաւանքին ժամանակ, ինչպէս կը տեսնուի ամէնէն շատ կը տուժեն, ինչպէս Իպրահիմ Նիյալի ատեն, Հայաստանի Հարաւային և Արեւմտեան շրջանները։

Երբ ասպատակող զօրամասերը կը դառնան ամէն կողմէն մեծ աւարով, Տուղրիլ կը պաշարէ Մանազկերտը բաբաններով։ Քաղաքին կառավարիչը՝ Վասիլ իշխան՝ հերոսաբար կը պաշտպանէ զայն և Սելջուկ զօրքը վհատած ետ կը քաշուի, Պարսկաստան դառնալու համար, ճամբուն վրայ աւերելով Արծկէն և ուրիշ մերձակայ քաղաքները և սուրէ անցընելով բնակիչները։ Պատմագիրը՝ Լաստիվերտցի (71), որ նկարագրած է Արծկէի գրաւումը յատուկ կերպով, (տես վերը՝ 40), կ'ըսէ թէ Սելջուկները «մտին ի քաղաքն եւ առեալ ԶԳԵՐԻՆ եւ զկապուտ քաղաքին, ելին ի տեղւոջէն»։

Մանազկերտի առջեւ կրած ձախողուածին նման անյաջողութիւն մըն ալ Կարսի առջեւ ունեցաւ, վասնզի տակաւին Վանանդի մէջ տիրող Բագրատունի Գագիկ Աբասեան թագաւորը իր իշխաններուն և ազատներուն օգնութեամբ դիմադրեց Սելջուկ զօրքերուն (վերը 40)։

Տուղրիլ ասկէ յետոյ պահ մը Հայաստանով չզբաղեցաւ և իր արշաւանքները ուղղեց Միջագետքի և Պարսկաստանի Հարաւային կողմերը։ (Լաստիվերտցի 78)։

## ՆԵՐՔԻՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆՆԵՐ

Սակայն Տուղրիլի Հայաստանէն հեռանալէն յետոյ՝ նորանոր աւազակային հրոսախումբեր գրեթէ անընդհատ շարունակեցին մտնել Հայաստանի կիսաւեր դարձած շրջանները և կողոպտեցին ու ջարդեցին բնակչութեան մնացորդները, որոնք ռեւէ կերպով կրցած էին ազատուիլ Թրքական սուրէն և առջի աւերածութիւններէն։ Այս յարձակողները մասնաւորապէս Հայաստանի դրացի երկիրներու բախտախնդիր տարրերն էին, որոնք կուգային թալանելու անտէր ժողովուրդը, ինչպէս տեսնուեցաւ (վերը 40)։ Ասոնք ըստ ժամանակակից պատ-



մագիր Լաստիվերտցիի (78—79) ամառ ձմեռ չդադրեցան Հայոց աշխարհը ապականել և զանազան չարիքներ հասցնելէ, թալանելէ, կործանելէ և վերջապէս առնք ընելէ վերջ ԱՌԵԱԼ ԶԱՌ ԵՒ ԶԳԵՐՐ ՑԱՇԽԱՐՀՆ ԻՒՐԵԱՆՑ ԴԱՌՆԱՑԻՆ» (Լաստ. 77—79)։

Եւ ասիկա ամէն տարի շարունակաբար կը կատարէին՝ 1054էն 1057 (վերը՝ 40—41)։ Այսպէս, 1054ին Ապուսուար՝ Դուինի և Գանձակի ամիրան Անիի վրայ կը յարձակի և «առեալ ԶԱՌ ԵՒ ԶԳԵՐԻ» կը մեկնի (Լաստ. 73 վերը 41)։

Նոյնպէս տեսանք (վերը 41) որ Տարօնի իշխան Թէոտորոսի (որդի Ահարոնի) վրայ կը յարձակին և զայն պատերազմին մէջ կը մեռցնեն (Լաստ.73-74)։

1056 Յունուար 6ին Մանկանգոմը կը կողոպտեն և «առեալ ԶԳԵՐԻ ԵՒ ԶԱՒԱՐ» Արածանիէն անցնիլ կ'ուզեն և գետամոյն կ'ըլլան (վերը 41)։ Նոյն օրը նման աղէտի մը կ'ենթարկուի Բասենի Օկոմի (այժմ Հասան-Գալէ) հաւաստ քաղաքը (տես վերը 42), որուն բնակիչներն ալ ջարդուեցան ամբողջ և անասունները տարուեցան (Լաւս. 79)։ Այս խառնաշփոթ օրերուն, նախ 1054ին և ապա 1057ին, ինչպէս տեսնուեցաւ (վերը 43), Երզնկան և Եկեղեաց գաւառը այս տեսակ անակնկալ յարձակումներու ենթարկուեցան և հրոսները «ԱՌԵԱԼ ԶԳԵՐԻ ԵՒ ԶԿԱՊՈՒՏ ԳԱՒԱՌԻՆ դարձան անդրէն» (վերը 43) հմմտ. Յ. Քիւրտեան Երիզա եւ Եկեղեաց գաւառ. Ա. 82—83)։

Հրոսակներու խումբ մըն ալ Կարնոյ Բլուր գիւղը արշաւեց։ Բլուր պարսպապատ ըլլալով՝ հոն ապաստանած էին յայսկոյս Եփրատի գիւղերուն և Արզն աւանին բնակիչները։ Սակայն Բլուր չկրցաւ տոկալ և ապաստանողները անօրինակ կոտորածի մը ենթարկուեցան (Լաւս. 85 և վերը 43) և այսպէս, ինչպէս արդէն պատմուած է (վերը 43) Հայաստանի շատ մը վայրերը, ինչպէս Հանձիթ, Խորձեան, Հարաւ կամ Հատաւ, Բաղէշ, մինչեւ Մելիտինէ և Կոզոնիա աւարի և կոտորածին ենթարկուեցան (Լաւս. 87—95. Ուռ. 153—5)։

Սելջուկ Թուրքերու և Հայաստանի դրացի ամիրաներու յարձակումներուն առաջին զոհերը եղան Հայկական Բարձրաւանդակին դաշտային անպաշտպան շրջանները։ Հայաստանի Հարաւային և Արեւմտեան աւերուած ու կողոպտուած շրջաններուն մէջ Հայերը միայն տեղ տեղ կրցած էին ազատիլ բնաջնջուելէ, պատսպարուելով անմատչելի ամրութիւններով պաշտպանուած լեռնային շրջանները։ Այսպէս, համեմատաբար անդորր մնացած էին Վանի լիճին արեւելքը և հարաւը, Ամուկը, Աղթամարը, Ուշտունիքը, և Մոկքը, իսկ հարաւ-արեւմուտքը՝ Սասունը։

Ամուկի և Աղթամարի մէջ տակաւին կը շարունակէին իշխել Արծրունիներու սերունդները, որոնք մնացեր էին երկիրին մէջ և չէին գաղթեր Սեբաստիա։

Մոկքի մէջ ևս կը տոկային ազնուական հին իշխող տոհմերու մնացորդները։

Իսկ Սասունի մէջ՝ կ'իշխէր Տայքի Զօրտուանէլ իշխանի տոհմը (1), որ

(1) J. Markmarth մէկ ուսումնասիրութեան համաձայն, (Sudarmen ien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 317—330. Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տեւ. Գ. էջ 51):

խնամիական կապերով միացած էր Մամիկոնեաններու և Պահլաւունիներու իշխանական տուներուն հետ, և անոնց ազգական եղած էր (հմմտ. Յ. Մանանդեան, Նոյն, 51)։

1058ին երբ Սելջուկ Թուրքերը ասպատակութենէ կը դառնային դէպի Պարսկաստան, Վանի լիճի կողմերէն և ունէին իրենց հետ Մելիտինէ քաղաքէն առնուած աւարը և գերիները, Սասունի Թոռնիկ իշխանը (որդի Մուշեղի) կը յաջողի Սելջուկները պարտութեան մատնել և մասնաւորապէս Մելիտինէէն վերցուած գերիները ազատել և զանոնք իրենց տեղերը դարձնել (վերը, 44)։

## ՍՈՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

*Ինչպէս տեսնուեցաւ (վերը 44), Սելջուկները թէեւ Հայաստանի սառնաշունչ կլիմայէն նեղուած և Սասունցիներէն ծանր հարուած կրած, 1058ին Հայաստանը ճեղքած էին Արեւելքէն Արեւմուտք, և գրեթէ բովանդակ երկիրը տակնուվրայ ըրած։*

*Այս շարունակական ասպատակային արշաւները, որոնք տարիներով շարունակուեցան, արգելք կ'ըլլային երկրագործական աշխատանքներուն և երկիրը՝ սովի կը մատնէին, հետեւաբար՝ մարդիկ և անասունները ուտելիք չէին գտներ։*

*Ուռհայեցի նկարագրած է այս աղէտը։*

**«Ցայն ամին (=1050) եղեւ անցումն ամենայն չորքոտանեաց, անասնոց եւ գազանաց եւ թռչնոց, եւ ի սաստիկ բարկութենէն ոչ գտանէին կերակուր իւրեանց, ի ձէն առ հասարակ դէմ արարեալ նոցա, եւ յիւրեանց բնամիսն ապաւինէին: Եւ յայնժամ անխնայ ամենայն ոք կոտորէր զնոսա անողորմաբար, զի անասունքն ջոլիր ջոլիր լինէին, եւ թռչունքն երամ երամ ի փողոցս եւ ի տունս մտանէին եւ անդ էր տեսանել զահաւոր կատարածն ի վերայ անասնոց եւ թռչնոց վասն մեղաց որդւոց մարդկան. իսկ որ ողորմածքն էին՝ ի տունս իւրեանց կերակրէին զնոսա զամենայն աւուրս ձմերանն եւ արձակէին զնոսա խաղաղութեամբ եւ առ հասարակ ամենայն ոք ի գութ ողորմութեան դառնային ի վերայ անասնոցն: Եւ մեծ ամիրայն Նսըրտոլ որ նստէր ի քաղաքն Մուֆարկին, քառասուն քուռ ցորենոյ եւ գարւոյ, կորեկոյ եւ զայլ ամենայն ընդոց ցանել հրամայեաց ընդ դաշտս եւ ընդ լերինս վասն թռչնոցն եւ խոտ եւ յարդ անչափ յաղագս անասնոցս, եւ այսպիսի օրինակաւ բազում անասունք եւ թռչունք ապրեցան ի բարկութենէ անտի»** (*Մատթ. Ուռհայեցի*, 157—158)։

*Անասուններէն զատ մարդիկն ալ նոյն տագնապին մատնուեցան, վասնզի* **«յայսմ ամի եղեւ սով սաստիկ ընդ ամենայն երկիր, եւ բազումք մեռան չարաչար եւ դառն մահուամբ յերեսաց սովոյն, վասնզի ի սաստկութենէ ձեանն անձրեւ ոչ եկն յերկիր եւ վասակ ոչ եղեւ եւ բազում պտղաբերք չորացան, եւ եղեւ ի փոխել միւս այլ տարւոյն՝ եղեւ լիութիւն եւ առատութիւն ամենայն կերակրոց, վասնզի մէկ մօրն հարիւր վասակեաց»** (Ուռհայեցի, 158—159):



## ԱԼՓԱՍԼԱՆԻ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ

*Տակաւին Տուղրիլ գահուն վրայ էր՝ երբ 1060ին, իր հրամանով Արեւմուտք ղրկուեցաւ հսկայ բանակ մը, որուն հրամանատարներէն մէկն էր Ալփասլան՝ եղբօրորդին Տուղրիլի (վերը 46)։ Այդ բանակը ուղղակի Հայաստան չէ մտած, այլ արշաւած է նախ Միջագետք եւ աւերած Եդեսիոյ շրջակայքը. անկէ անցած է Փոքր Ասիա և սոսկալի խժդժութիւններ գործադրած է Սեբաստիոյ մէջ։*

**«Անողորմ եւ անխնայ»** *կոտորելով* **«զայնքան բազմութիւն քաղաքին եւ անթիւ եւ անհամար աւարաւ եւ գերութեամբ արանց եւ կանանց, մանկունս եւ աղջկունս վարէին ի գերութիւն եւ այնչափ գանձս ոսկւոյ եւ արծաթոյ՝ ականց եւ մարգարտաց եւ տիպականց յափշտակեալ հանին ի Սեբաստիոյ»:** *Դարձեալ* **«Բազում կոյսք եւ հարսունք եւ փառաւոր տիկնայք վարեցան ի գերութիւն յաշխարհն Պարսից»** *կ'ըսէ Ուռհայեցի* (*էջ* 161)։ *Յետոյ կ'անցնին Գ. Հայքի Պաղին գաւառը ուր է Արղն և ամբողջ գաւառը* 1061 *Մարտ* 12*ին կը ջարդեն* (Ու. 166, *վերը* 46)։

*Ամիթի Նսըրտոլ ամիրային որդին՝ Ամիր Սայիտ, որ հօրը յաջորդած էր, կը խնդրէ գերիները իր երկիրին մէջ ծախել և ժողովուրդին կը հրամայէ զանոնք գնել, ինչ որ կը կատարուի* (Ու. 167—8 *և վերը* 46)։

*Ինչպէս տեսնուեցաւ* (*վերը* 46) *այս գերիներէն մաս մը Նահատակուած է Ամիթի բերդին առջեւ և մաս մըն ալ տարուած Պարսկաստան* (Ու. 169)։

*Այս պատերազմը, որուն խառնուեցան Բիւզանդացիք, (տես վերը* 47—48), *պատճառ կ'ըլլայ որ Թլխմոյ գաւառը անապատ դառնայ։ Յուսուֆ ամիրան* **«արար անթիւ աւար եւ քափեաց *ԱՆԹԻՒ ԳԵՐՈՒԹԻՒՆ*»** (Ու. 173):

*Տուղրիլի նման անոր յաջորդը Ալփասլան՝* (1063-1072) *նոյն բանը ըրաւ իր գահակալութեան օրէն սկսեալ։ Ինչպէս տեսնուեցաւ (վերը* 48—59), *երբ Նախ Աղուանից երկիրը մտաւ՝* **«մատնեաց զնոսա ի սուր եւ ի ԳԵՐՈՒԹԻՒՆ» եւ «Շանտի յարուցեալ Սուլտանն ահագին բազմութեամբ իւրով մտաւ յաշխարհն Վրաց (1064 *Յունիս*) եւ մեծաւ տրտմութեամբ մատնեաց զնոսա ի սուր եւ ի ԳԵՐՈՒԹԻՒՆ եւ իջեալ բանակեցաւ ի գաւառն որ կոչի Ջաւալխս (*Ջաւախ*) եւ պատերազմաւ մեծաւ պատեաց զքաղաքն որ կոչի Ախալ (*Ախալքալէ*), եւ ուժգին զօրութեամբն առաւ Ախալ քաղաքն եւ առ հասարակ զամենայն քաղաքն սրով կոտորեաց զայր եւ զկին անողորմ եւ զամենայն քահանայսն եւ զկրօնաւորսն եւ զիշխանսն սրախողխող արարեալ եւ լցաւ ամենայն քաղաքն արեամբ եւ ԱՆՀԱՄԱՐ ՄԱՆԿՈՒՆՍ ԵՒ ԱՂՋԿՈՒՆՍ ՏԱՐԱՆ Ի ՊԱՐՍԻԿՍ Ի ԳԵՐՈՒԹԻՒՆ եւ գանձս ոսկւոյ եւ արծաթոյ ականց եւ մարգարտացն, որ ոչ գոյ թիւ» (Ուռհայեցի 174-5, *հմմտ.* Լաստ. 101—110, Սմբատ Գունդստապլ 76—77, Վարդան 101, Կիրակոս 52, Սամուէլ Անեցի 105—112, Թովմա Արծրունի 346, Յովհաննէս Սկիլիցէս 815 եւ Ջամ. Բ. 983, Յ. Մանանդեան, ՔՆ. տես. Գ. 53):** *Իպն էլ Ասիր կը գրէ թէ դէպի Վրաստան և Աղուանք գրեթէ միաժամանակ կատարուած արշաւանքի միջոցին* **«Շատերը ընդունեցին մահմեդականութիւնը եւ կոտորածէն ազատեցան»** *ինչ որ*

*նշանակելի յայտնութիւն մըն է։ Ախալքաղաք* (1064 *Յունիս*) *ոչ միայն ջարդուած այլ նաև գերեվարութեան ենթարկուած է։*

*Ալփասլան յետոյ առաւ Անին** 15 *Օգոստոս* 1065*ին* (*վերը* 49—51) *և ամէնէն սոսկալի վայրագութիւնները գործեց հոն։ Բացի կոտորածներէ՝* «ամենայն մեծամեծ իշխանքն Հայոց եւ դասք ազատացն երկաթի կապանօք կային առաջի Սուլտանին եւ կանայք գեղեցիկք եւ անարկուք ի փառաւոր տանէն, վարեցան ի Պարսիկս ի գերութիւն, եւ անհամար մանկունք լուսատեսիլս, վայելուչս, աղջկունս տարան զհետ մարգն» (Ուռհայեցի. Նոյն): *Բոլոր պատմագիրներն ալ* (*տես. վերը՝* 50—51), *որ խօսած են Անիի գրաւման վրայ՝ կը հաստատեն կատարուած գերեվարութիւնը, իսկ Սամուէլ Անեցի* (109), *կը խօսի նաև գլպի Բիւզանդական երկիրները Հայերու գաղթին վրայ* (*տես. վերը* 50)։

*Իպն Ասիր պատմագիրը, քաղաքին գրաւումը նկարագրած ատեն, կ'ըսէ* «կոտորեցին անթիւ քանակութեամբ բնակչութիւն, այնքան շատ, որ մուսլիմաններէն շատերը չկրցան քաղաքէն ներս խուժել, սպաննուածներուն բազմութեան պատճառով: Եւ անոնք գերի տարին գրեթէ նոյնքան, ինչքան որ սպաննուած էին» (*Յ. Մանանդեան*, Նոյն, 60):

*Այս յուսահատական կացութիւնը բնաւ քաջալերական չէր Հայաստանի զանազան վայրերուն մէջ կղզեակներու նման քաշքշուող հայ իշխանութիւններուն, ինչպէս և Կարսի, Գագիկ Աբասեան Թագաւորին համար, որ խոհեմութիւն համարեց նախ Տուղրիլի գթութեան ապաստանիլ և իր գոյութիւնը փրկել և ապա անցնիլ Բիւզանդական երկիրներ, և իրեն տրուած Ծամնդաւի մէջ շարունակել իր Թագաւորութիւնը։* (*Տես. վերը,* 51)։ *Ինչպէս Յակոբ Մանանդեան,* (ՔՆՆ. Տես., Գ. 62), *դիտել կու տայ, շատ հաւանական է որ այս ժամանակամիջոցին, Փոքր Ասիա գաղթած ըլլան ուրիշ հայ խումբեր ևս, որոնք մասնաւորապէս Տաւրոսեան լեռներուն կողմերը և կատարները հաստատուած և այնտեղ պզտիկ իշխանութիւններ կերտած էին, քիչ վերջը անոնց միութեամբ կազմելու համար Ռուբինեանց Հայ Թագաւորութիւնը։* (*Յ. Մանանդեան*, Նոյն, 63 *և* 73)։

*Մինչ Կիլիկիոյ մէջ այս իշխանութիւնները կ'ստեղծուէին շնորհիւ Հայերու կենսունակութեան, Մեծ Հայքի մէջ Հայերը կը կորսնցնէին իրենց ուժը և շատ քիչ քաղաքներ կամ բերդեր կրնային զերծ մնալ կոտորածէ և գերեվարութենէ, շնորհիւ իրենց անառիկ դիրքին, ինչպէս Ամուկ ամրոցը և Աղթամար կղզին* (Թովմա Արծրունի, 346—7)։

*Այս բացառիկ վայրերէն մէկն էր նաև Թլխմոյ բերդը, զոր* 1066*ին Ալփասլան չի կրնար գրաւել* (Ուռ. 187, *վերը՝* 52)։

*Ալփասլան ասկէ յետոյ է որ կ'արշաւէ Բիւզանդական երկիրներ, Միջագետք և Եդեսիա գաւառը և Սևերակ բերդը, որոնք Ֆրանգներէն կը պաշտպանուէին։ Սելջուկները Սևերակը և Նիզիպը գրաւելով, կը ջարդեն բընակիչները և* «զկանայս նոցա եւ զորդիսն ՎԱՐԵՑԻՆ Ի ԳԵՐՈՒԹԻՒՆ» (Ուռ. 188, *վերը,* 52)։

*Ալփասլան իր սովորական ձևովը կը գործէր Միջագետքի և Սիւրիոյ մէջ* (*վերը,* 52) *և իր ստորադասները, իրենց կարգին կը ձեռնարկէին աւ-*



*պատակութիւններու, կողոպուտներու և գերեվարութիւններու։*

*Այսպէս, կը յիշուի թէ* 1067*ին, իր զօրականներէն Օշին և Գիւմիշ Դեկին* (*ըստ* Ուռհայեցիի՝ 224 *Գոմէշ Տիկին*), *Ամանոս կամ Սև լեռներու շրջանակը կը մտնեն, ինչպէս նաև Միջագետք, Եդեսիա և Հասան-Մսուր* (*Հիւսնի-Մանսուր*) *և այդ վայրերը կ'աւրշտկեն։* «Որպէս զկարկուտ հրացայտ փայլատակմամբ հասանէր ի վերայ ամենայն բնակչաց երկրին սոսկալի կոտորածով եւ հրով այրէին եւ զամենայն իշխանսն գաւառին եւ սրով եւ մահու խոցմամբ սատակէին եւ զփառաւոր կանայսն ... զվայելուչ որդիսն նոցա հանդերձ դստերօքն ի ԳԵՐՈՒԹԻՒՆ ՎԱՐԷԻՆ» (Ուռ., 225):

*Արդէն բացատրուած է թէ Օշին և Կիւմիւշ Դեկին* (= *Գոմէշ Տիկին*) *ինչ գործունէութիւն ունեցան Հայաստանէն դուրս այդ շրջանին մէջ։ Ուռհայեցի մասնաւոր կերպով կը յիշէ* (225—7) *որ ԳՈՄԷՇ ԴԵԿԻՆ* ... բազում գերութեամբ... գնաց յաշխարհն Պարսից, եւ մատուցեալ առաջի Սուլտանին ծառայս գեղեցիկս, մանկունս եւ աղջկունս, իբրեւ երկու հազար»:

*Ալփասլան, ինչպէս տեսանք* (*վերը՝* 53), *իր իշխանութիւնը կը տարածէ մինչև Սիւրիա, նոյնիսկ Պաղեստին* (*վերը՝* 53), *մեծագոյն հարուածը կու տայ Բիւզանդական Կայսրութեան՝ Մանազկերտի մէջ* 1071*ին* (*վերը* 54—55), *որմէ յետոյ կը գրաւուին նաև Ամիթ և Թլխում* (= *Արկն*)։

*Այս վերջին վայրը երկար կը տոկայ, սակայն ի վերջոյ նենգութեամբ կը գրաւուի և իր բնակիչներէն մէկ մասը կը ջարդուի և անկէ «ԱՆԹԻՒ ԳԵՐՈՒԹԻՆՆ» կը վերցուի* (Ուռ., 233, *վերը,* 55)։

*Բոլոր այս արշաւանքները, կոտորածները, աւարառութիւնները և գերեվարութիւնները անկազմակերպ իշխանութեան մը գործերն էին և արարքները՝ Թափառական, արշաւող, կիսավայրենի ցեղախումբերու, որոնք հուժկու առաջնորդներու ձեռքին տակ, աշխարհի տիրապետութեան ձեռնարկած էին։*

*Տուղրիլ և Ալփասլան Սելջուկ ցեղին երկու ահեղ առաջնորդները հանդիսացան, որոնք տիեզերական տիրակալութեան կը ցանկային կարծես, ջարդուփշուր ընելով աշխարհը։*

*Այս հսկայ կայսրութիւնը, զոր անոնք հիմներ էին՝ Չինաստանի և Աֆղանիստանի սահմաններէն կը տարածուէր մինչև Միջերկրական ծով, մինչև Եգիպտոս ու գրեթէ մինչև Տարտանէլ և Վոսփոր, և Սև ծովէն ու Կովկասէն մինչև Եմէն և Հնդկական ովկիանոս։ Բայց քանդուած և աւերուած էին այս ընդարձակ երկիրները, մասնաւորապէս Հայաստան և Փոքր Ասիա, թէև պետութեան միւս մասերն ալ զերծ մնացած չըլլային այդ քանդումէն։*

## ՄԵԼԻՔՇԱՀԻ ՕՐԵՐՈՒՆ ՀԱՆԴԱՐՏՈՒԹԻՒՆԸ

*Ալփասլանի մահէն յետոյ, իրեն յաջորդեց իր որդին Մելիք Շահ* (1072—1092), *որուն վէզիրը եղաւ Ալփասլանի ժամանակ պաշտօնի կոչուած Հասան Իպն Ալի, Խորասանի Թուս քաղաքէն Պարսիկ նշանաւոր և հանդուն պետական դէմքը, որուն իբրև տիտղոս տրուած էր Նիզամ էլ Միւլք* (= *տէրութեան կանոն*) *տիտղոսը։*

*Պետական այս մեծ դէմքը գրած է* Սիասա-Նամէ (*քաղաքականութեան*

գիրք) գործը, որուն մէջ կ՚երեւին պետական մարդու իր ըմբռնումները։ Ան համոզուած էր թէ Սելջուկ լայնածաւալ նոր պետութիւնը, որ մեծ մասամբ աւերուած և թալանուած էր, այդ վիճակին մէջ չէր կրնար ապրիլ և պահել իր գոյութիւնը. ուստի Մելիք Շահը համոզեց՝ որ իր պետութեան իրական շահերուն համար իսկ, միջոց տալ նուաճուած ժողովուրդներուն վերստին կազմակերպելու, իրենց քայքայուած երկիրները և տնտեսական կեանքը։ Քաջալերուեցաւ գիւղերու և քաղաքներու վերաշինութիւնը՝ եթէ բնակիչները չէին հեռացած երկիրէն։ Կանոնաւորուեցան ճամբաները, առեւտուրի ազատութիւնը կաշկանդող մաքսերը թեթեւցան, շինուեցան ամէն կողմ Քէրվանսարայներ և կամուրջներ։

Մելիք Շահ և իր վէզիրը, ինչպէս տեսնուեցաւ (վերը՝ 60), կազմակերպեցին պետութիւնը, և նոր աղէտներու չենթարկելու համար երկիրը՝ զգուշացան պատերազմներէ։

Մելիք Շահի իշխանութեան միջոցին (1072—1092), Հայաստան ալ կատարեալ անդորրութիւն վայելեց, ինչպէս կը վկայեն բոլոր ժամանակակից պատմագիրները. «եղեւ այր բարի եւ ողորմած եւ յոյժ քաղցր ի վերայ հաւատացելոցն Քրիստոսի». կ՚ըսէ Ուռհայեցի (247) և կ՚աւելցնէ թէ «աջողեցաւ թագաւորութիւնն նորա յԱստուծոյ. եւ սա տիրելով տիրեաց ամենայն երկրի եւ արար խաղաղութիւն ամենայն աշխարհին Հայոց» (Նոյն):

Միայն Բիւզանդացիներու դէմ պատերազմած է Սիւլէյման Իպն Գութուլմիշի միջոցով, որ իր պետութիւնը մինչև Միջերկրական տարածած էր և հիմը դրած Ռումի Սելջուկներու իշխանութեան, ինչպէս տեսնուեցաւ (վերը 60)։ Իր ընդարձակածաւալ պետութիւնը վարելու համար՝ Մելիք Շահ, զանազան գաւառներու վրայ գործակալներ դրաւ, որոնք խիստ հարկապահանջութեամբ նեղեցին հպատակները, որով շատեր ստիպուեցան երկիրէն մեկնիլ: Այդ առթիւ, Բարսեղ Անեցի Կաթողիկոսը, 1090ին Սպահան գնաց Մելիք Շահի գթութեանը ապաւինելու համար։ Մելիք Շահ, Հայերու այս խնդիրքը նկատի առաւ, և խաղաղասէր ու աշխարհաշէն անձ մը կուսակալ կարգեց։

## ՄԵԼԻՔ ՇԱՀԻ ՅԱՋՈՐԴՆԵՐՈՒ ԱՏԵՆ

Իր մահէն յետոյ, իր կազմակերպած պետական կանոնաւոր վարչութիւնը խանգարուեցաւ ներքին երկպառակութիւններով և երկիրը երկու մասի բաժնուեցաւ, որոնցմէ մէկ ճիւղը Փոքր Ասիայի և միւսը՝ Հայաստանի և Պարսկաստանի իշխեց։ Պարսկաստան, ինչպէս նաև Հայաստան, վիճակեցան Պարկիարուխի՝ Մելիք Շահի զաւակին, սակայն պետութեան քայքայումը հետզհետէ չեշտուեցաւ, վասնզի կուսակալներ — Աթաբէկեր — աւատական դրութեամբ քիչ քիչ իրենց վարչութեան յանձնուած երկիրներուն տէր դարձան և ինքնագլուխ ըլլալու ձգտում ցոյց տուին։ (Տես. վերը 62—67)։

Այնպէս որ, նոյնիսկ Պարկիարուխի (1092—1104) կենդանութեանը ԺԲ. դարուն սկիզբը, կը կազմուի Դանիշմանի իշխանութիւնը՝ Սեբաստիոյ շրջակայքը, ինչպէս նաև Միջագետքի և Կիլիկիոյ մէջ կը կազմուին Հայ իշխանութիւններ, որոնք Սանճարի (1117—1156) (յաջորդ Պարկիարուխի), օրով բո-



լորովին ինքնագլուխ կը դառնան։ Խաչակրաց արշաւանքները բոլորովին կը տկարացնեն Սելջուկ պետութեան Արեւմտեան սահմանագլուխը, ուր Լատին իշխանութիւններ կ՚ստեղծուին։

Նոյնը կը պատահի նաև Ատրպատականի և Պարսկաստանի շրջանակին մէջ, ուր կարճ միջոցի մէջ կը կազմակերպուին անկախ եւ կիսանկախ իշխանութիւններ — ինչպէս տեսնուեցաւ (վերը, 62—67)՝ ամէնքն ալ իրարու մրցակից. այնպէս որ՝ ԺԲ. դարուն սկիզբը, խիստ խառնակ վիճակ մը կը ներկայացնէր Սելջուկեան պետութիւնը. քայքայուած էր անոր ներքին միութիւնը։

Իսկ Հայաստանի մէջ մնացած էին միայն ցիրուցան քանի մը Հայ իշխանութիւններ, տկար ուժերով և շրջապատուած՝ բազմաթիւ իսլամ իշխանութիւններով, որոնք շարունակ կը մաքառէին իրարու հետ։ Այս շրջանին այսինքն 1014—1220՝ Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող իշխանութիւններու մասին, տեսնել Ա. Ալպօյաճեանի Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները, էջ 66—70, 257—324 և Յակոբ Մանանդեանի Քննական Տեսութիւն Հայ Ժողովուրդի Պատմութեան, Գ. հտ. 72—177)։

Սելջուկ հզօր և հսկայ պետութիւնը այլեւս գոյութիւն չունէր։

Պետութեան Արեւմտեան մասերը բոլորովին խառնակ վիճակ մը կը ներկայացնէին։

Խաչակրաց արշաւանքները, մասնաւորապէս Կիլիկիոյ, Հիւսիսային Սուրիոյ և Եփրատացւոց շրջանին մէջ անհանդարտ ու վրդով կացութիւն մը առաջ բերած էին։ Մուսուլի, Հալէպի, Մարտինի և այլ Եփրատամերձ շրջաններու կիսանկախ մահմետական էմիրները՝ շարունակ կռիւի մէջ էին Եդեսիոյ և Անտիոքի Լատին դուքսերուն և երբեմն նոյնիսկ Կիլիկիոյ Հայ իշխանութիւններուն հետ — ինչպէս 1110ին —, և շարունակ հաւասար սաստկութեամբ կոտորածներ և գերեվարութիւններ կը գործադրէին։

Մելիք Շահի մահէն (1092) ետքը, բաժան բաժան եղած Սելջուկ կեդրոնական իշխանութիւնը, Պարկիարուխի յաջորդին՝ Տափարի մահէն (1118) վերջ կրկին կ՚ստորաբաժանուէր որով ա՛լ աւելի շփոթ վիճակ մը կ՚առնէր Արեւելքը։ Ատրպատականի իշխանութեան հայաբնակ մասը, որուն մայրաքաղաքն էր Դավրէժ, երկիրին այնքան մօտ գտնուելով հանդերձ, 1128ին անկարող էր արգելք ըլլալու կազմութեանը Շահի Արմէններու իշխանութեան, որ հիմնուած էր Հայաստանի սիրտին վրայ, և ուրիշ փոքրիկ իշխանութիւններու, որոնք Սելջուկեանց մեծ պետութեան քայքայումը կը պատրաստէին։

Միւս կողմէն, Արեւելքի քրիստոնեայ ժողովուրդներու գլխաւոր յոյսը եղող Լատին իշխանութիւնները՝ իսլամներու շարունակական յարձակումներէն կը տկարանային, մանաւանդ որ Արեւմուտքէն ճամբայ ելած բանակներ այլեւս չէին կրնար հասնիլ մինչեւ այդ սահմանները և Բիւզանդական Կայսրերը, որոնք կանխաւ եղած համաձայնութեան մը համեմատ, աւատապետներն էին այդ Լատին ճորտ իշխանութիւններուն, միայն իրենց աւատապետական իրաւունքը կը պահանջէին, առանց զանոնք պաշտպանելու պարտականութեան ուշադիր ըլլալու։

Եդեսիոյ գրաւումը 1144ին՝ Հալէպի Զանգի Ամիրային ձեռքով, վճռական հարուած մըն էր, որուն հետեւանքով այդ Լատին իշխանութիւններուն ճակատագիրը՝ իսլամներու ձեռքը կը մատնուէր։

Աւելի հիւսիս՝ Կովկասի ստորոտը՝ Մուհամմէտի և Քրիստոսի հետեւողներուն պայքարը կը վարէին Վրացիք և Շահի Արմէններու պետութիւնը, որոնց գլխաւոր աշխատութիւնը եղաւ բազմաճոխ և շքեղ Անին՝ Բագրատունեաց այդ հոյակապ մայրաքաղաքը, իրարու ձեռքէ կորզել, զայն քիչ քիչ աւերելու անխուսափելիութեամբ։

1161ին, Շահի Արմէնին և 1163ին՝ Վրաց զօրքերը անհամար գերիներ կը վերցնէին բազմամարդ Անիէն, սակայն ասոնք բնական է թէ հեռու չէին տարուեր, քանի որ երկու իշխանութիւններն ալ Հայաստանի սահմաններուն մէջն էին

Սելջուկներու և Հայաստանի տեղական իշխանութիւններու տկարութենէն օգտուելով՝ Վրաստան կը վերակազմուէր, իր չուրջ հաւաքելով Հայերը, Աղուանները և Հիւսիսային Կովկասի Լեռնականները։

Վրաստան շուտով իր անկախութիւնը վերստին ձեռք կը բերէր և հետզհետէ կը զօրանար, շնորհիւ Զաքարեաններու գործակցութեան, մինչ Կիլիկիոյ, Սուրիոյ և այլ հայաբնակ վայրերու մէջ ալ իսլամ և քրիստոնեայ պայքարը սաստկութեամբ կը շարունակուէր ԺԲ. դարուն վերջերը և ԺԳ. դարուն սկիզբները, Խաչակրութիւններու առթիւ, որոնք կը շարունակուէին, և միւս կողմէն Էյուպեան Սալայէտտինի սպառնացող զօրութեամբ։

Այնպէս որ Մերձաւոր Արեւելքի երկիրները դժբախտ վիճակի մը կը մատնուէին, ինչպէս նաև այդ շրջանները ապրող Հայերը, ինչպէս կը հաստատուի հայ ձեռագիրներու յիշատակարաններէն։

Այսպէս, 1192 թուականին Կիլիկիոյ Մաշկևորի վանքը գրուած Ճաշոցին գրիչը՝ Վարդան կրօնաւոր իր յիշատակարանին մէջ կը ներկայացնէ Խաչակիրներու ձախողութիւնները, յիշելով՝ որ «ի թուականիս ՈԼԶ (=1187) առաւ Երուսաղէմ(1) եւ խաւարեցաւ արեգակն եւ ՈԼԹ (=1190) ամի Փռանկն (2) ել, Ալամանն (3) եւ մեռաւ եւ ի ՈԽ (=1191) Ընկլեզ թագաւորն (4) ել եւ առ զԿիպրոս կղզի եւ զԱքայ եւ զԱսխալան, եւ ՍՈՎ ԵՂԵՒ այս երկու տարիս խիստ, եւ ՈԽԱ (=1192) գրեցաւ գիրքս այս» (Գարեգին Ա. Կաթողիկոս. Յիշատակարանք Ձեռագրաց Ա. 560):

Հայ աշխարհն ալ ազատ չէր այդ քրիստոնեայ-իսլամ պայքարէն, վասնզի ճիշդ այդ շրջանին է որ Վրաստան, Վրացի, Հայ և Աղուան քրիստոնեաներու գլուխը անցած՝ կը մաքառէր իսլամներու դէմ և Հայաստանի որոշ մասերը կ'ենթարկուէին աւերածութիւններու և տեսակ տեսակ թշուառու-

(1) Սալահէտտին կը գրաւէ Երուսաղէմը 1187 Հոկտ. 3ին:

(2) Ըստ Գարեգին Կաթողիկոսի, Ֆրանսայի Փիլիպպոս Օգոստոս թագաւորին կ'ակնարկէ:

(3) Ակնարկութիւն Ֆրետերիկ Պարպրոսի (Շիկամօրուս), որ խեղդուեցաւ Կալիգակնէս գետին մէջ:

(4) Ակնարկութիւն Ռիքարտոս Առիւծասիրտ թագաւորին:



թիւններու, ինչպէս կը տեսնուի 1200ին գրուած Թանկարժէք Աւետարանի (1) մը յիշատակարանէն, որուն գրիչը՝ Վարդան կրօնաւոր (1) Երզնկա, Աւագ վանք՝ «Փլերինա Սեպուհ»՝ գրած է ձեռագիրը, «ի նուազեալ եւ ի դառն ժամանակի, որ ուր բուս ուրէ ԱՒԱՐՈՒՄՆ, ՍՈՎ ԵՒ ՍՐԱՄՈՒԹԻՒՆ անէ յամենայն տեղիս···» (Գարեգին Ա. Կաթողիկոս, Յիշատակարանք Ձեռագրաց Ա. 646—7): Ասոր նման 1204ին Հռոմկլայ գրուած ձեռագիրի մը գրիչը՝ Գրիգոր Դպիր, իր յիշատակարանին մէջ կ'ըսէ. «ի չար եւ ի դառն ժամանակի, յորում յամենայն տեղիս ամենայն ուրեք ազգք քրիստոնէից այրեցեալք եղեն որպէս փուշք յագարակի՝ յայլասեռիցս բազմադիմի նեղութեանց եւ ի զզուանաց. քան զի յոյժ զօրացեալ եղեն կասաղի եւ անաւրէն ազգ աղախնազաւակ որդոցն Հագարու եւ բռնակալեալ նուաճեցին զամենայն աշխարհս յինքեանս. գրաւեալ, մնացեալ միայն ի միջի սոցա բարեպաշտ թագաւորն Հայոց Լեւոն իբրեւ ճանանչ լուսո[յ] ի մէջ ստուերամած խաւարի» (Յիշատակարանք Ձեռագրաց Ա. 696—7):

Յայտնի է ուրեմն, որ ԺԳ. դարուն սկիզբը մոլեռանդութեանց ժամանակաշրջան մըն է և երկու կրօնքներուն հետեւողներուն ատելութիւնը սաստիկ։ Նոյն այդ 1204 թուականին՝ Մուշի Ս. Ղազարու կամ Առաքելոց վանքի Տօնականը, որ նշանաւոր ձեռագիր մըն է՝ իր թէ՛ պատմական և թէ՛ գեղարուեստական արժէքովը, ունի յիշատակարան մը՝ ուր տեղեկութիւններ կը տրուին Ռումի Սելջուկ Սուլթանին դէպի Հայաստան և Վրաստան փորձած արշաւանքին մասին, նպատակ ցոյց տալով անոր «յաւարի առնուլ զաշխարհս ամենայն» (Յիշատակարանք, Ա. 712)։ Ու կը պատմէ թէ ինչպէս Վրաց զօրքը և Մեծն Զաքարէ և Իւանէ եղբայրները վրայ կը հասնին և անխնայ կը կոտորեն Տաճիկ զօրքը և մնացեալը կը փախցնեն։ Նոյնպէս կը պատմէ նահատակութիւնը Ալատին ամիրայէն Բաբերդոյ Ռայիս Աստուածատուրի սպանութիւնը և անոր ինչքերուն յափշտակութիւնը (տես. Նոյն, 712)։

Ասոնք բոլորը ցոյց կու տան թէ Հայաստանի մէջ թէև ոչ զանգուածային կերպով՝ սակայն լիակատար խաղաղութիւն չկար և քրիստոնեաները միշտ կը հալածուէին, և հետեւաբար գաղթը կը շարունակուէր անընդհատ։

Եւ որովհետև Վրաստանի թագաւորները մեծ բարեացակամութեամբ կը վարուէին Հայերու հետ և կը հովանաւորէին հայ իշխանները որ իրենց աւատապետութեան տակ իշխանութիւններ կազմեն, Հայերը մեծ թիւով գաղթել սկսան դէպի Հիւսիսային Հայաստան, և դէպի Վրաստան (Յ. Մանանդեան, Նոյն, էջ 96), ուր յատուկ քաղաքներ և աւաններ յատկացուց անոնց՝ Դաւիթ Վերանորոգող կամ Շինող (✝ 1125) թագաւորը։

Այս մօտաւորութիւնը, որ ցոյց կու տային Հայերը՝ հանդէպ Վրաստանի՝ կը վրդովէր իսլամ էմիրները, որոնք անշուշտ հաճոյքով չէին դիտեր եղածը։

Բայց յաջողութիւնը Հայ-Վրական միութեան կողմն էր, և ապահովաբար պիտի պսակուէր լաւ արդիւնքով մը, եթէ նոր փոթորիկ մը, անգամ մը եւ

(1) Այս Աւետարանը Կ. Պոլսոյ Ազգ. Մատենադարանի թ. 6 ձեռագիրն է, որ գողցուած է եւ հիմա դարձած է Նիւ Եորք Յ. Գէորգեանի սեփականութիւն:

(2) Այս Վարդան կրօնաւորը վերոյիշեալ Մաշկեւորի վանքին նոյն անուն գրիչը չէ:

Ծայրագոյն Արեւելքէն չծագէր և նոր աղէտները չմատնէր մեր երկիրը։ Մինչև այդ հրոսակային նոր արշաւը, Հայաստան 1072էն մինչեւ 1221 թուականը վայելեց համեմատական հանդարտութիւն մը, և ջարդեր և գերութիւններ տեղի չունեցան, վասնզի թէև կռիւներ կը պատահէին իսկ Հայաստանի մէջ ապրող իսլամ և քրիստոնեայ իշխանութիւններու միջև, սակայն գոնէ գերիներ չէին տարուեր հեռաւոր աշխարհներ։

Այսպէս, Մխիթար Գոշ, ԺԲ. դարուն վերջերը, Ելտկուզի մասին խօսելով, կ'ըսէ թէ անիկա «խաղաղացոյց զխռովութիւն աշխարհին Առանայ եւ վայրենամիտ ազգն Իսմայելացւոց ընտանացուցան, եւ կապուտ կողոպուտն դադարեց ի նոցանէ, զոր առնէին յաճախ աշխարհիս Աղուանից», (Հայապատում, 388—389):

Պատրանք՝ որ կարճ տեւած է, քանի որ աւելի մեծ խռովութիւններ և տակնուվրայութիւններ պիտի յաջորդէին այս առերեւոյթ խաղաղութեան և անդորրութեան։

## ԲՆԱԿԱՆ ԱՂԷՏՆԵՐ

Հայերը այս շրջանին ալ գաղթականութեան մղող պատճառներու շարքին մոռնալու չենք նաեւ բնական աղէտները։ Յիշենք այդ աղէտներէն քանի մը հատ։

Այսպէս, 1039ին Երզնկա քաղաքը ողողուած է և միայն մէկ տուն և Ս. Կիրակոսի վանքը փրկուած են աղէտէն, ըստ Միքայէլ Ասորիի եւ Ապու-Ֆարաճի (1)։

1045ին Եկեղեաց գաւառին եւ Շիրակի մէջ, պատահած է սաստիկ երկրաշարժ մը, որ ամիսներ տեւած է, Մատթէոս Ուռհայեցիի (114—5) նկարագրութեան համաձայն։

1114 Մայիս 19ին կը յիշուի զօրաւոր երկրաշարժ մը Տարօնի եւ Միջագետքի մէջ, ինչպէս 1131ին Անիի երկրաշարժը եւ 1166ին Երզնկայի երկրաշարժները։ (Վարդան, 128)։

1168ին Եկեղեաց գաւառին մէջ պատահած է մեծ երկրաշարժ մը, (Յ. Քիւրտեան, Երիզա, էջ 86) որուն զոհ գացած են 12.000 անձեր։

Իսկ 1219ին ուրիշ երկրաշարժ մը Հայաստանի զանազան մասերուն մէջ զգալի եղած է եւ ժողովուրդը խուճապի մատնած է։

Այս յիշուածներուն քով կան անշուշտ չյիշուածները։

Իրողութիւնն այն է՝ որ բարբարոսներու պատճառած չարիքին հետ՝ նաև բնութիւնը կարծես Հայերը կը հալածէր ճակատագրականօրէն։ Ու անոնք, փախչելով իրենց մայր երկրին դժուարին պայմաններէն, հանգիստ և բարօրութիւն կ'որոնէին Հայաստանէն դուրս, դրացի երկիրներու մէջ կամ հեռաւոր ափերու վրայ։

(1) Ապուլ Ֆարաճ՝ 1045 թուականով կը յիշէ նոյն դէպքը, որ ըստ Յ. Քիւրտեանի՝ շփոթութեան հետեւանք է:



# Բ.

# ՄՈՆԿՈԼԱԿԱՆ ՇՐՋԱՆ

## (1220—1385)

1194ին Մոնկոլ ցեղեր վերջ կու տան Սելջուկեանց պարսկական ճիւղին և հետզհետէ նուաճելով շրջակայ Ամիրաները՝ 1220ին կ'երեւան Հայաստանի սահմաններուն վրայ և վերստին կը վրդովեն երկրին խաղաղութիւնը, զայն բարբարոսական և վանտալական արշաւանքներու հանդիսավայր դարձնելով։

Ինչպէս արդէն դիտել տուած եմ (վերը՝ 68), Մոնկոլները իրենց տիրապետած բոլոր երկիրներուն մէջ ջնջած են մշակոյթի և քաղաքակրթութեան այն մնացորդները, որոնք Սելջուկներու բարբարոսութիւններէն փրկուած էին։ Կեդրոնական և Մերձաւոր Ասիան տխուր աւերակներու շեղջակոյտերու վերածուած և Արեւելքը ամայացած էր, վասնզի իր վաճառականական հարուստ և շքեղ շահաստանները կողոպտուած էին։

Աշխարհիս այս ընդարձակագոյն պետութեան մէկ մասը կազմող Հայաստանն ալ տարբեր վիճակ մը չէր ներկայացներ, նոյնքան թշուառ էր։

Մոնկոլական տիրապետութիւնը, որ Հայաստանի վրայ 150 տարի տեւեց մօտաւորապէս, մինչև Լէնկ Թիմուրի երեւան գալը, ինչպէս տեսնուեցաւ՝ կատարեալ թոհուբոհի, իրարանցումներու, գաղթաշարժերու և ազգերու մեծ տեղափոխութիւններու ժամանակաշրջան մը եղած է։

## ՑԵՂԱՅԻՆ ԲԱՂԿԱՑՈՒԹԵԱՆ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

Այդ 150 տարիներու ընթացքին ամէնէն կարեւոր իրողութիւնը բովանդակ Մերձաւոր Ասիոյ բնակչութեան ցեղային կազմին այլափոխութիւն է, վասնզի Ասիոյ խորերէն տեղաշարժ ընող զանգուածներ այդ շրջանակին մէջ հաստատուած են։

ԺԳ. դարուն առաջին կէսին, արդէն նոր նուաճողներու և Մոնկոլ-Թուրք խաշնարած և թափառիկ ցեղերու տեղափոխութիւնը դէպի Արեւմուտք, որոշ փոփոխութիւններու ենթարկած էր Մերձաւոր Ասիոյ ցեղագրական բաղկացութիւնը։

Իրենք Մոնկոլները, բանակին մէջ մեծ թիւ մը չունէին և զօրքերու մեծամասնութիւնը կը կազմէին Թուրքերը։ Այս պատճառով՝ նոր եկուորներուն խօսակցութեան լեզուն մանաւանդ Թրքերէնն էր։

Թուրք ցեղերու շարժումը դէպի Արեւմուտք շարունակուեցաւ նաև ԺԳ. դարու երկրորդ կէսին և Իլխանեան Արղունի (1284—1291) ժամանակ և յաջորդ դարուն, երբ Կեդրոնական Ասիայէն գաղթեցին Հիւսիսային Միջագետք և Հարաւային Հայաստան, խաշնարած և վաչկատուն Թուրքերը. որոնք մերձաւոր

ցեղակիցներն էին Սելջուկ Թուրքերու, ինչպէս Սիւլէյման Շահի տոհմը՝ որ ինչպէս տեսնուեցաւ՝ ծագումով Թուրք էր և գաղթեր էր Հայաստան, Խլաթի և Երզնկայի կողմերը, Ջինկիզ Խանի արշաւանքներու առեն՝ ԺԳ. դարու քսանական թուականներուն։

Մասնաւորելով մեր խօսքը Հայաստանի վրայ, ինչպէս յայտնի է՝ նոյնիսկ արաբական տիրապետութեան շրջանին (ՊՀԳ. Ա. 207—406) Պարսիկներ և Արաբներ հաստատուն բնակութիւն ունեցած էին Դուինի կողմերը և Վանի լիճին շուրջը գտնուող գաւառներուն մէջ։

Սելջուկեան արշաւանքներէն յետոյ, Թուրք և Պարսիկ եկուոր ցեղեր, շարունակեցին հաստատուիլ Հայաստանի զանազան կողմերը։

Իսկ Մոնկոլական տիրապետութեան այս 150ամեայ շրջանին՝ Կեդրոնական Ասիայէն եկած խաշնարած Թաթարիկ ցեղերը տարածուեցան ամէն տեղ, թէ՛ Ատրպատականի ու Հայաստանի և թէ՛ ամբողջ Արեւմտեան Ասիոյ մէջ (Ց. Մանանդեան, Քնն. Տես. Գ. 336—337)։

Այսպէս, Լէնկ Թիմուրի արշաւանքներէն առաջ, Թուրք գաղթականներ, իբրև եկուոր հաստատուած էին Մերձաւոր Ասիոյ գրեթէ բոլոր երկիրներուն նուաղած և նօսրացած պարսիկ, ատրպատականցի, հայ, քիւրտ, արաբ և յոյն բնակչութեանց միջև (հմմտ. Ց. Մանանդեան, Նոյն, 337)։

Ինչպէս բոլոր Ասիական երկիրներու, նոյնպէս Հայաստանի ցեղային դիմագծութիւնը այլափոխուեցաւ ու Հայերու համար դժնդակ և ծանր վիճակ մը ստեղծուեցաւ, իրենց բնիկ երկիրին մէջ իսկ, այլևս տիրապետող ըլլալէ և մեծամասնութիւն կազմելու առաւելութենէն զրկուելով։

Սելջուկ տիրապետութեան բերած բոլոր դժբախտութիւնները դեռ կը շարունակուէին աւելի վայրագօրէն և աւելի սաստկութեամբ, ինչպէս տեսնուեցաւ (վերը, 68—193)

## ԵՐԿԻՐԻՆ ԱՒԵՐՈՒՄԸ ՃԷԼԱԼԷՏՏԻՆԷ ԵՒ ՈՍԿԷ ՀՈՐԴԱՅԻ ՎԻՇԱՊԵՏՆԵՐԷՆ

Մոնկոլները, թէև ուղղակի Հայերու դէմ կռիւ գրեթէ չեն մղած, վասնզի Հայերը շատ շուտով ըմբռնելով այս անհարկու ուժին դիմադրելու իրենց անկարողութիւնը՝ կանուխէն համակերպած և հնազանդութիւն յայտնած էին Մոնկոլներուն. բայց առով հանդերձ, կրկին չարաչար տուժած էին, վասնզի իրենց դէմ եթէ կռիւ չէր մղուած, իրենց երկիրին մէջ պատերազմներ կատարուած էին։ Այսպէս, Ճէլալէտտին՝ Խուարէզմի Շահը (1220—1231 +) պատճառ եղած է որ անընդհատ տասնմէկ տարի, Ջինկիզի բանակները Հայաստանը ոտնակոխ ընեն, մեր երկիրը ապաստանած այդ յանդուգն պատերազմիկին դէմ կռուելու համար։ Մեր երկիրը տակն ու վրայ եղած է և մեծ վնասներու ենթարկուած (տես. վերը, 138—142)։

Նոյն պատճառով՝ Ճէլալէտտին ալ տասնեակ մը տարիներ աւեր ու սարսափ սփռած է Հայաստանի ամէն կողմը, մինչև որ 1231ին, սպաննուելով՝ երկիրը փրկուած է իր առաջացուցած աղէտներէն։

Իսկ շատ աւելի երկար տարիներ, մօտաւորապէս դար մը, Հայաստանի հիւսիսային կողմերը ոտնակոխ եղած են Ոսկէ Հորդայի Հիւսիսի Խաներու



բանակներէն, որոնք եթէ ամբողջ երկիրը չաւերեցին, գէթ շատ երկար ատեն երկիրին մէկ մասին մեծ չարիքներ հասցուցին, վասնզի Իլխանեաններու պետութեան կազմակերպութենէն գրեթէ անմիջապէս ետք՝ Հուլաղուի պետութեան դէմ մաքառեցան և եթէ ոչ զայն ամբողջութեամբ, գէթ անոր հիւսիսային մասը՝ Ատրպատականը,— ուրկէ կ'անցնէր Մեծախի ճանապարհը — գրաւելու համար՝ Վրաստան և Հիւսիսային Հայաստան արշաւեցին քանիցս (տես. վերը, 118)։

Բերքա (1), Կասպից ծովին հիւսիսային կողմի երկիրներուն տէրը, կը պահանջէր Մեծ Խաքանէն անկախ դարձած Հուլաղուէն, որ իրեն հպատակէր կամ գէթ իրեն տար Ատրպատականը։

Այս պահանջը պատճառ եղաւ — ինչպէս տեսնուեցաւ (վերը, 118) — որ Մոնկոլ կայսրութեան երկու մեծ հատուածներուն միջև 1262էն սկսեալ պատերազմ ծագի, որ գրեթէ անընդհատ շարունակուած է մինչև ԺԴ. դարուն կէսերը։

1262 Օգոստոսին, Ղփչախները գրաւեցին Ղազուինը և Շամախին, սակայն Հուլաղու յաջողեցաւ զանոնք վանել և գրաւել Տերպենտը և անցնիլ Թերեք գետը, ուր Բերքա հազիւ կրցաւ կանգ առնել տալ Հուլաղուի բանակը, և նոյնիսկ ստիպեց նահանջել (1263 Յունուար)։ Եւ ինչպէս տեսնուեցաւ (վերը 118), Հուլաղուի բանակը ջրամոյն եղաւ Թերեքի ջուրերուն մէջ։ Նահանջող այդ բանակին մէջ կը գտնուէին նաև Հայ և Վրացի զօրքեր (վերը՝ 118)։

Կռիւը կը շարունակուէր տակաւին 1265ին, երբ Ապաղա ձեռք կ'առնէր Իլխանեաններու իշխանութիւնը և կը յաջողէր վանել Բերքայի Նողա զօրավարը, որ հարաւ արշաւած էր, Ատրպատականը, Վրաստանը և Հիւսիսային Հայաստանը գրաւելու համար (վերը՝ 121)։

Բերքա մեռաւ 1265ին,, սակայն կռիւը չընդհատուեցաւ։

Իր յաջորդը, Մանգու-Թիմուր (1266—1280), պատերազմը շարունակեց մինչև որ չարաչար պարտուեցաւ։

Բայց Արղունի ատեն (1284—1291), 1289ին, երբ իր ամենազօր պաշտօնեան Ջինքսան (= իշխանաց իշխան) Բուղա Ջելայիրեանը կը փորձէ գահը յափշտակել (տես. վերը՝ 124) և դաւը երևան կ'ելլէ և բազմաթիւ զօրապետներ և Նոյիներ կ'սպաննուին. այս ներքին տագնապէն օգտուելով՝ 1290ի գարնան՝ Մանգու-Թիմուրի յաջորդը՝ Տոխտա Խան (1290—1312), նորէն կը փորձէ Տերպենտէն անցնելով, խուժել Հայաստան, (տես. վերը՝ 125) սակայն Արղուն Խան կը յաղթէ անոնց և ետ կը մղէ։ Բայց հակառակութիւնը կը տեւէ մինչև Ղազան Մահմուտ Խանի (1295—1304) ատեն, երբ Մոնկոլները կ'իսլամանան և Ղազան Խան վարել կ'սկսի իսլամ պետութեանց հետ համա-

---

(1) Ջինկիզ Խանի որդին, Ջուջի Խան, նուաճած էր Կասպից եւ Սեւ ծովերու հիւսիսային տափաստանները եւ Վոլկայի հարկատու հողերը (տես. վերը, 87 եւ 98–99)։
Իր որդին՝ Բաթու Խան, մականուանեալ Սային Խան (1236–1256 +), հիմնած էր Ոսկի Հորդայի պետութիւնը։ Իսկ Բաթուի որդին, Սարդախ կարճ իշխանութիւն մը ունեցած է. Անոր յաջորդն էր Բերքա

գործակցելու քաղաքականութիւն մը, և, ինչպէս Եգիպտոսի Մեմլուքներու, նոյնպէս և Ոսկի Հորդայի վեհապետին հետ կը բարեկամանայ (տես. վերը, 127)։ Մինչև այդ թուականը՝ երկու Մոնկոլ պետութիւններուն՝ Իլխանեաններու և Հիւսիսի Ջուչեաններու միջև հակառակութեան կարևոր պատճառներէն մէկն ալ կրօնը եղած էր, վասնզի Ոսկէ Հորդայի վեհապետները վաղուց իսլամութեան յարած էին։ Բարեկամական յարաբերութիւնները, զորս Ղազան Խան մշակեց, գէթ ժամանակաւորապէս, դադար տուին քառասուն տարիէ ի վեր տևող պայքարին։

Կարճ տևեց այս խաղաղութիւնը, վասնզի շուտով վերարծարծուեցաւ հին վէճը։ Ոսկէ Հորդա կամ Հիւսիսի Խանը՝ Ուզբէկ Խան (1317—1340), նորէն սկսաւ հին պայքարը և փորձեց նուաճել Ատրպատականը և Հայաստանը, ու 1319ին անցաւ Տերպենտէն և իջաւ մինչև Կուր գետը, սակայն Ջօպան՝ Ապու Սայիտի զօրավարը, զայն փախուստի մատնեց։ Ուզբէկ Խան, 1325ին և 1335ին, Ապու Սայիտի մահէն ետքը, նորէն յարձակում գործեց, բայց չյաջողեցաւ։

Ապու Սայիտի մահէն (1335) ետք, երբ Իլխանեան պետութեան միութիւնը կարելի չեղաւ պահել և զօրապետներ և ցեղապետներ ձեռք առին իշխանութիւնը և Հայաստան մատնուեցաւ անիշխանութեան, 1357ին Ոսկի Հորդայի բանակները դարձեալ Հայաստան կը մտնէին, այս անգամ նոյնիսկ բնակչութեան փափաքով և կը տիրէին Ատրպատականի, վասնզի Ջօպանեան Մելիք Աշրաֆ, բռնակալը տիրակալած էր Դավրէժի (Ց. Մանանդեան ՔՏՏ. stu. Գ։ 333) և այնպիսի նախճիրներ կը գործէր, որ մանաւորապէս իր իսլամ հպատակները չհանդուրժելով իր չարագործութեանց՝ դիմեցին Ջուչեան տոհմէն Ջանիբեկ խանին (1340—1357) և ուզեցին երկիրը յանձնել Ոսկէ Հորդայի այս խանին, որ իբրև ազատարար ընդունուած է Ջօպանեան Մելիք Աշրաֆի հպատակներէն, ինչպէս կը հաստատեն Երևանի Մատենադարանին Թ. 5332 և 2087 երկու ձեռագիրները, 1357 և 1358 թուականներով (տես Լ. Ս. Խաչիկեան, «ԺԴ. Դարի հայերեն ձեռագրերի յիշատակարաններ էջ 425 և 438)։ Ըստ 1358ի յիշատակարանի գրիչին՝ «յորժամ զչար իշխանն [էր] եւ զաւերումն աշխարհաց, զարբանեակն սատանայի, որոյ անուն Աշրաւ կոչիւր, ի խնամոցն Աստուծոյ եկն թագաւորն Հիւսիսայինն, որոյ անուն Ջանիբէկ կոչիւր եւ եբարձ զԿարապետ Նեռինն ի կենաց, եւ եղեւ դադարումն չարեաց նորա»։

Արդարև, 1357ի սկիզբները, Ջանիբէկ մեծ զօրքով կ'անցնի Կովկասեան լեռները և առանց դժուարութեան կը տիրէ Դաւրէժի, որուն բնակչութիւնը զայն սիրով կ'ընդունի։ Մելիք Աշրաֆը, որ գերի ինկած էր, կ'սպաննուի և Ատրպատականի կուսակալ կը նշանակուի Ջանիբէկի մեծ որդին՝ Բերդիբեկը, և այս կերպով իրենց հարիւր տարուան երազը գոնէ պահ մը կ'իրագործուի։

Ոսկի Հորդայի տիրապետութիւնը Ատրպատականի վրայ շատ կարճ կը տևէ, հազիւ քանի մը ամիս։

Երբ Ջանիբէկ Դաւրէժէն կը դառնար Դեշտ-ի-Քիփչաղ, ճամբան կը հիւանդանայ և ինչպէս կը վկայէ պարսիկ պատմագիրը՝ Մուինէտտին Նատանզի



1357ին կ'սպաննուի իր մեծ վեզիր և զօրապետ Տուղլու-Պայի և անոր մարդերուն ձեռքով՝ իր զաւակին Բերդիբէկի գրգռումով, որ Դաւրէժէն կուգայ հիւանդ հօրը մօտ և կը մասնակցի անոր սպանութեան։

Ջանիբէկի սպանութենէն յետոյ՝ Բերդիբէկի իշխանութեան ժամանակ (1357—1359) որ ժառանգած էր իր հօր գահը, Ոսկէ Հորդայի մէջ սկսած ներքին խռովութիւններ և Ջուչեաններու տիրապետութիւնը Կովկաս լեռներու հարաւակողմը ի սպառ կը լքուի։

## ԵՐԿԱՐԱՏԵՒ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՈՒՆ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

Հայաստանի հողին վրայ, կամ անոր շատ մօտ, մղուած այս երկարատև կռիւներէն զատ, Հայաստանի տիրապետող Իլխանեան Մոնկոլ խաները. ինչպէս տեսնուեցաւ, պատրաստուած էին երկարատև և չարունակական կռիւներ մղել Հայաստանէն հեռու, հարաւի մէջ, նախ ընդդէմ Արաբներուն և ապա Եգիպտացիներուն, և Արևմուտքի կողմը՝ Սելջուկ Իկոնիոյ Սուլթաններուն դէմ։ Այս մօտաւոր և հեռաւոր պատերազմները, հաւասարապէս ծանր հետևանքներ ունեցան Հայերուն համար, որոնք այդ պատերազմներուն իրենց մասնակցութիւնը բերին, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, միայն Հայերու հնազանդութեան արտայայտութեամբ չէին գոհանար Մոնկոլները, այլ իբրև հաւատիք և ապացոյց հաւատարմութեան՝ կը պահանջէին որ հայ իշխանները իրենց զօրքերով մասնակցէին Մոնկոլ արշաւանքներուն։

Հետևաբար, Հայերը իրենց երկիրէն հեռու վայրերու մէջ կը կռուէին Մոնկոլ բանակին առաջին գիծերուն վրայ և կը զոհուէին մեծ թիւով։ Այսպէս, ժողովուրդին ամէնէն կենսունակ, առոյգ և գործօն մէկ մասը կը մահանար և երկիրը կը տուժէր չարաչար, և այս կերպով հայ բնակչութիւնը կը պակսէր ու Հայերը չէին կրնար խաղաղ և շինարար աշխատութեան նուիրուիլ։

## ՋԱՐԴԵՐ՝ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ՊԱԿԱՍԵՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Մոնկոլները, ինչպէս բացատրուած է վերը, կիրարկած են բոլոր այն միջոցները, որոնք Ասիական բարբարոսներու կողմէ կը գործադրուէին, իրենց տիրապետած երկիրներու բնակչութեան ուժը ջլատելու համար։ Անոնցմէ մէկն ալ բնակչութեան թիւը պակսեցնելն էր՝ կոտորածներով և ջարդերով, որպէսզի թուական գերակշռութիւն չունենային և չփորձէին կռուիլ իրենց դէմ։ Հետևաբար, Մոնկոլներն ալ գործադրեցին բնակչութիւնը ջարդելու վայրագ մեթոտը, յաճախ առանց որևէ պատճառի և գրգռութեան։

Իրենց նպատակն էր ահաբեկել (տես. վերը, 90) և նուաճուած ժողովուրդները սարսափի տակ պահել ու ապստամբութեան փորձ կատարելու համարձակութիւնը չտալ անոնց։

Հակառակ անոր որ Մոնկոլները մեծ ընդդիմութեան մը հանդիպած չէին Հայերուն կողմէ և իրենք Հայաստանը նուաճելով չհագրգռուած չէին 1220-էն 1236, այլ Հայաստանը իրենց յենարան ընող Ճէլալէտտինը և նմանները

ընկճելու համար, մեր երկիրը մտած էին, այս առաջին շրջանին և մինչև Հայաստանի ամբողջական նուաճումը՝ այսինքն մինչև 1240, ոչ նուազ նախճիրներ գործած են Հայ աշխարհին մէջ։

Իսկ 1240էն յետոյ, երբ երկիրը ինկաւ իրենց իշխանութեան տակ, այլևս երկիրին կարգաւորութեամբը և բարեկարգութեամբը զբաղեցան և հաստատուն կառավարութեան մը հիմը դրին, դժբախտաբար առանց տեւականութեան, վասնզի արտաքին պատերազմներ կ'ընդհատէին Մոնկոլ պետութեան զարգացման կանոնաւոր ուղին։

ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԱՋԱԿՑՈՒԹԻՒՆ

Հայաստանի տիրապետելով, Մոնկոլ պետութիւնը սահմանակից եղաւ Իկոնիոյ Սելջուկ Սուլթանութեան, որ Հայաստանի Արեւմուտքը, մինչև Բարձր Հայքի (= Կարինի շրջակայք) կողմերը իր տիրապետութեան ենթարկած էր։

Մոնկոլները՝ Հայաստանի տիրապետութիւնը կատարեալ ընելու համար, 1242ին յարձակեցան Կարինի վրայ և զայն գրաւեցին (Տես վերը, 150)։

Այս պատերազմին մէջ իրենք ալ՝ նման Սելջուկներուն՝ բազմաթիւ գերիներ առին, սակայն հայ իշխաններէն ոմանք, զանոնք դրամով գնելով ազատեցին։

Ցետոյ Իկոնիոյ Սելջուկ Սուլթանութեան վերաբերող, Կեսարիա, Սեբաստիա, Երզնկա, Տիվրիկ և Խարբերդ քաղաքները գրաւեցին. (տես. վերը՝ 151-3)։

Այս տեղերէն ալ բազմաթիւ հայ գերիներ առին, զորս Հայաստանի մէջ ծախեցին (Կիրակոս, 164—167 և վերը՝ 151)։

Այս նոր աշխարհակալութիւններով Մոնկոլները հասան Կիլիկիոյ Հայոց Թագաւորութեան սահմանները, առանց տիրապետած ըլլալու տակաւին Հարաւային կամ նոյնիսկ Կեդրոնական Հայաստանի (Վասպուրական և Տուրուբերանը) որ այդ Թուականէն յետոյ նուաճուած է։

Ասկէ զատ ասպատակ սփռեալ ընդ կողմանս կողմանս ի Միջագետս Հայոց յԱմիթ, յՈւռհա, ի Մծբին եւ ի Շամբին (Շամի?) երկիրն եւ այլ բազում գաւառս դարձան ունայն, վասնզի տեղւոյ կլիման, Սիպերական սառնաշունչ կլիմային վարժ այս ասպատակները, խորշակահար կը մեռնէին։ Թուցէ հայ զինուորներն ալ նոյն վիճակին ենթարկուած են։ Ամէն պարագայի մէջ, որոշ է որ բանակին մէջ բաւական ստուարաթիւ հայ զինուորներ կային, Հայ իշխաններու հրամանին տակ։ Ասոնք կռուած են հաւատարմութեամբ և զոհուած են Մոնկոլներուն համար։

Եւ այս զոհաբերութիւնը ոչ միայն Հայաստանի Հայերը կատարած են, այլ նաև Կիլիկիոյ Հայերը, որոնք նոյնպէս զոհեր տուած են Մոնկոլներուն, իրենց ընծայած օգնութեան պատճառով, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, Մոնկոլ բանակներու դէպի Արևմուտք յառաջացումը, հարկադրեց Հեթում Թագաւորը (1224—1269), որ Մոնկոլներուն հնազանդութիւն յայտնէ և նորա դառնայ Մեծ Մոնկոլին կամ անոր Արեւմուտքի ներկայացուցիչին՝ Հուլաղուի, որուն արշաւանքներուն մասնակցեցան Կիլիկիոյ Թագաւորութեան բանակները (տես. վերը, 103, 112—114)։



Հեթում, խոհականութեամբ, պէտք տեսած էր այս զոհողութիւնը ընելու և շնորհիւ անոր էր որ կրցած է ողոքել Մոնկոլները և Կիլիկիոյ հայ Թագաւորութեան կեանքը երկարաձգել, Արևելքի մէջ Խաչակիրներէն հաստատուած բոլոր Լատին Թագաւորութիւններու, դքսութիւններու, կոմսութիւններու, Գահիրէի Սուլթաններուն կողմէ գրաւուելէն և ջնջուելէն ետքն ալ՝ բաւական երկար ատեն։

Կիլիկիոյ հայ Թագաւորները, որքան ատեն որ Հեթում Ա.ի քաղաքականութիւնը շարունակեցին, Կիլիկիա և Մեծ Հայք համեմատաբար խաղաղութիւն վայելեցին, բացի այն ժամանակամիջոցներէն՝ երբ Եգիպտոսի Մեմլուքները, անակնկալ յարձակումներով կ'սպառնային Կիլիկիոյ Հայոց Թագաւորութեան, որ յաճախ շնորհիւ Մոնկոլներուն՝ կը յաջողէր զանոնք վանել։

Նոյնպէս, այս շրջանին Մեծ Հայքը մէկ դար գրեթէ վայելեց առերևոյթ խաղաղութիւն մը։

Ապաղայի (1265—1282 Ապրիլ 1 +) յաջորդները, իրենց մայրաքաղաքը փոխադրեցին Պաղտատ՝ Խալիֆաներու մայրաքաղաքը, որ աւելի մօտ էր այն ռազմադաշտերուն, որոնց մէջ Մոնկոլ և Մեմլուք բանակները իրարու հետ կը մաքառէին։

Այս պատերազմներուն մէջ մոնկոլ բանակներուն գլխաւոր աջակիցներն էին Մեծ Հայքի հայ իշխաններուն և Կիլիկիոյ Հայոց Թագաւորին բանակները, որոնք կը մասնակցէին գրեթէ միշտ այս կռիւներուն և արեան տուրք կուտային իրենց կորուստներովը։

ՀԱՐԿԱՊԱՀԱՆՋՈՒԹԻՒՆ

Այս արեան զոհաբերութիւնը զոր Հայերը կ'ընէին Մոնկոլներուն, դժբախտաբար անոնք բաւարար չէին նկատեր և տնտեսապէս ալ կ'ուզէին խուզել սաստիկ հարկապահանջութեամբ և չարաչար հարստահարելով։ Եւ տեսնըւեցաւ (վերը 153—162) որ տուրքերով կեղեքումը մեծ էր մոնկոլ ընդարձակ կայսրութեան մէջ։

Պետութեան օրինաւոր և պաշտօնական հարկերէն զատ՝ բռնակալ կառավարիչներ՝ քմահաճ, ապօրէն տուրքեր կը գանձէին ժողովուրդէն, որ կը հիւծէր այս անվերջ կեղեքումներէն, որոնք այնպիսի համեմատութիւններու հասած էին, որ ժողովուրդը գունդ առ գունդ կը հեռանար երկիրէն, վախ պատճառելով նոյնիսկ տիրապետողներուն, որոնք այլեւս տուրք վճարողներ չգտնելու հեռապատկերէն ահաբեկ, ի վերջոյ իմաստութիւնը ունեցան ապօրէն տուրքերու դէմ մաքառիլ և երբեմն նոյնիսկ օրինական տուրքերը զեղչելու փորձեր ըրին, սակայն դժբախտաբար պետութեան քայքայումին Թումբ կանգնելու համար ուշ մնացած էին։ Այս ուղղութեամբ որոշ չափով օգտակար եղած ըլլալ կը Թուի Հեթում Ա. (1226—1269), որ Մեծ Հայքի կեղեքուող Հայերուն դառն վիճակը բարւոքեց, իր երկար տաժանելի ուղևորութեան (1255) ատեն կատարած դիմումով (տես վերը 103—106), բայց ժամանակաւոր կերպով։ Հեթում գոնէ ժամանակի մը համար մեղմացուց Թաթարներու խստութիւնը, և յաջողեցաւ չափաւորելու այն խիստ հարկապահանջութիւնը որ Մոն-

գոյի գահակալութենէն անմիջապէս ետքը գործադրուիլ սկսած էր (Կիր. 219)։

Կիներէն, ծերերէն և տասնամեայ տղաքներէն և եկեղեցականներէն զատ աշխատելու կարող բոլոր այրերէն ծանր տուրքեր կ'առնէին, ինչ որ սովկալի խեղճութեան և կարօտութեան կը մատնէր երկիրը, մանաւանդ որ սովեր ալ կը պատահէին մորախի և աւարառութեանց պատճառով։ Հետեւաբար բոլոր Թաթար տիրապետութեան շրջանին գաղթը անխուսափելիօրէն շարունակուած է, մինչեւ որ Լէնկ Թիմուր մտած է Հայաստան։

Հեթում Բ.ի եւ Աղթամարի Զաքարիա Սէյֆէտինեան կաթողիկոսի կատարած դիմումներն ալ, ինչպէս նաև հայ իշխանաւորներէ ոմանց երբեմն բողոքները, և երբեմն խնդրանքները իրենց դերը խաղացած են։

Բայց տուրքի խնդիրը առաջնակարգ կարեւորութեամբ հետապնդուած է Մոնկոլներէն, որոնք մարդահամարներ կը կատարէին յաջորդաբար՝ հարկատուներու, ինչպէս նաև զինուորցուներու թիւը շատցնելու համար (տես. վերը 167–8)։

Անողոք հարկապահանջութեամբ կարծես թէ Մոնկոլները կը փափաքէին նուաճուած ժողովուրդներուն տնտեսութեան քայքայումը եւ աղքատացումը։

Կիրակոս Գանձակեցի (210) կը վկայէ թէ «զամենայն արուեստագէտս եթէ ի քաղաքս եթէ ի գիւղս՝ զամենայն ի հարկի կացուցին, այլ եւ զծովակս եւ զլինս ձկնորսաց, եւ զերկաթահանս, զդարբինս եւ զներկարարս, եւ զի՞ պիտոյ է մանրամասնաբար ասել, զամենայն դուռն շահից հասին ի մարդկանէ, եւ ինքեանք միայն շահէին, եւ զամենայն աղահանս առին, որ ի Կողբ, եւ որ այլ կողմանս: Նաեւ ի վաճառականացն բազում ինչս ունեալ եւ շահեալ, կուտեցին բազում գանձս սաստիկս ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատուականաց, եւ այսպէս զամենեսեան աղացուցեալ, վայրի եւ աշխարհով լցեալ զաշխարհս, թողին չար ոստիկանս ի վերայ աշխարհացս զնոյն պահանջել յամենայն ամի, նովին համարով եւ գրով»:

Ուրեմն տուրքերով կը ծանրաբեռնէին արհեստաւորները և վաճառականները, ծովակներու եւ լիճերու ձկնորսները, երկաթահանքերու տէրերը, դարբինները, ներկարարները, եւայլն։

Մոնկոլները արգելք կ'ըլլային բնակչութեան շահուն եւ միայն իրենք կը շահէին. գրաւուած էին Կողբի և այլ ...եղերու աղահանքերը և կողոպտուած վաճառականները իրենց հարստութիւններէն, ոսկիէն, արծաթէն և թանկագին քարերէն, որոնք կը կուտակուէին Մոնկոլ իշխանաւորներու ձեռքը։

Այսպէս, կ'աղքատացնէին ամէնը եւ երկիրը կը թշուառացնէին, ամէն տարի նոյն կերպով, կեղեքելու համար պաշտօնեաներ նշանակելով։

Մոնկոլ ծանր հարկերը եւ հարկահաններուն զեղծումները, անտանելի կը դարձնէին իրենց նուաճած երկիրներուն կեանքը։

Տարօնի մէջ, 1378ին գրուած Աստուածատուրենցի գրիչը, ասիկա կը հաստատէ գրելով թէ «յաստմանէ չարին, վասն ծովացեալ մեղաց մերոց, ի հարկապահանջութենէ այլասեռիցն աւերեցաւ երկիրս Տարօնոյ, նաեւ սուրբ ուխտս Ղազարու, զոր եւ կրօնաւորք տարաշխարհիկ լինէին՝ անցանելով յայլ գաւառս»: (ԺԴ. Դարի Հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, էջ 255):



Ոչ միայն վանականներ, այլ մանաւանդ գիւղացիներ կը փախչէին եւ կը ձգէին իրենց հողերը եւ կալուածները, կը սնանկանային եւ իրենց անշարժ գոյքերը կը ծախէին չնչին գիներով (Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ. էջ 265)։ Հայերը կ'աղքատանային եւ տնտեսապէս կը յետադիմէին Իլխանեան կառավարութեան աւերիչ դրութեան եւ իր պաշտօնէութեան կեղեքումներուն եւ հարստահարութիւններուն հետեւանքով (Նոյն, 288)։

## ԱՂՔԱՏԱՑՈՒՄ ԵՒ ԱՆՇՔԱՑՈՒՄ

Մոնկոլները կարծես անկարող էին ըմբռնելու թէ տուրքերու քանակը աւելնալու համար ժողովուրդին բարեկեցիկութիւնը պէտք էր ապահովուած ըլլար և օրէ օր աճէր։ Մինչ ընդհակառակն, Մոնկոլներու տիրապետութեան շրջանին՝ Հայաստանի առեւտուրը և քաղաքները անշքացան, մինչ Մոնկոլներէն առաջ Հայաստանի քաղաքները Միջազգային առեւտուրի և ճարտարարուեստի մեծ կեդրոններ էին, որոնք սակայն մեծ հարուածներ կրեցին։

Այսպէս, 1221ին Ճէլալէտտին Սուլթանը հազիւ Հայաստան մտած աւերուեցաւ Աղուանից Բայլական քաղաքը, որ այլեւս չվերականգնեցաւ բնաւ։

1231—2ին հիմնայատակ կործանեցաւ Գանձակ, որ Մոնկոլներու թոյլտուութեամբ վերաշինուեցաւ չորս տարի ետքը 1235—6ին (Յ. Մանանդեան ՔՆՆ. տես. Գ. 258)։

1236ին Զարմաղան աւերեց Անին և Կարսը և 1242—3ին Բաչու աւերեց Կարինը։ Երզնկան և Խլաթը։ (Յ. Մանանդեան, Նոյն, 258)։

Հայաստանի տնտեսական անկման եւ երկիրին ամայացման մեծ չափով նպաստեց նաեւ ԺԳ. և ԺԴ. դարերու Թափառական խաշնարած ցեղերու նոր գաղթը դէպի Միջին Ասիա։ Այս Թափառական ցեղերէն մասնաւորաբար Թուրքը — գլխաւոր տարրը Մոնկոլ բանակներուն, — մեծ հարուած տուաւ տեղական բնակչութեան մշակման յատուկ հողի բարձր եւ զարգացած մշակութիւնը զոհելով իրենց համար արօտավայրեր ունենալու պահանջներուն և երկրագործութեան ու հողային արդիւնաբերութեան վնասելով։ ԺԴ. դարուն Հայերու տնտեսական անկումը աղէտի մը երեւոյթը առաւ։ Հայ ժողովուրդին վիճակը այնքան վատթարացաւ ծանր հարկերու եւ անլուր հարստահարութիւններու պատճառով, որ մեծ թիւով Հայեր հարկադրուեցան լքել իրենց հայրենի հողը և գաղթել օտար երկիրներ։ (Հմմտ. Յ. Մանանդեան ՔՆՆ. տես. Գ. 289 – 290)։

## ԳԵՐԵՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Այս շրջանին Հայաստանի բնակչութեան թիւին պակսելուն և տնտեսական քայքայումին պատճառ եղած են նաև գերեվարութիւնները, զորս Մոնկոլներն ալ գործադրեցին, նման Սելջուկներու, որոնք իրենց արշաւանքի միջոցին այնքան յաճախակի գերեվարութիւն կատարեցին, քաղաքներու անզէն բնակչութիւնը, կանայք, տղայք և այլ բռնի տանելով հեռաւոր երկիրներ (տես վերը 41—44)։

Զինուորականներէն դուրս քաղաքային բնակչութիւնը գերի վարելու և

իր բնիկ երկիրէն հեռացնելու սովորութիւնը — որ հին դարերուն կը կիրարկուէր,— Ասիական այս բարբարոսներն ալ գործադրեցին գրեթէ միշտ։

Սելջուկները, ինչպէս տեսնուեցաւ, Հայաստանէն շատ գերիներ առին և տարին իրենց երկիրը։

Մոնկոլները նոյնը ըրին, սակայն որովհետև Հայերը շատ տկար դիմադրութիւն ցոյց տուին և շուտով հնազանդեցան Մոնկոլներուն տիրապետութեան, գերեվարութիւններ գործադրելու պատեհութիւն քիչ ունեցան։

Արդարև Մոնկոլները շատ գերիներ չեն տարած քաղաքային բնակչութենէն կամ գոնէ ուրեք յիշատակուած է։

Բայց Մոնկոլ տիրապետութեան շրջանին Հայաստան բոլորովին զերծ չէ մնացած այդ պատուհասէն ալ։

Նախ գերեվարութիւն կատարած են իրենց հակառակորդ բանակները, Մոնկոլներու դէմ կռուած ատեն։

Այսպէս, տակաւին Մոնկոլները Հայաստանի չտիրած, ինչպէս տեսնուեցաւ, ծանր պայքար մղեցին Խուարէզմի Ճելալէտտին Սուլթանին դէմ († 1231), մօտաւորապէս 10 տարի։ Այս քաջ ռազմիկը, Հայաստան ապաստանած, անկէ կը կռուէր զինքն հալածող Մոնկոլներուն դէմ։ Շատ հաւանական է որ, պատերազմական այս վայրագ միջոցը, ան կիրարկած է շատ մը տեղեր, սակայն պատմութիւնը միայն կը յիշատակէ 1228ին իր դէպի Խլաթ, Մշոյ Դաշտը, Տողատափ և Ճապաղջուր արշաւանքի միջոցին, կատարած կողոպուտը, աւերը և կոտորածները, որոնց զոհ կ՚երթային այրերը, իսկ գերի կը տարուէին կիներ եւ մանուկներ, (տես. վերը, 140—141)։ Նոյնպէս Սելջուկ Ռումի Սուլթանները, որոնց դէմ Մոնկոլները մաքառած են, գերիներ վերցուցած են Հայաստանէն։

Այսպէս, Կարսի աւարառութենէն, կոտորածէն և գերեվարութենէն յետոյ երբ Մոնկոլները կը հեռանան, Կիրակոս (էջ 140), կը պատմէ «եկեալ զօրք Սուլտանին Հոռոմոց՝ զերծեալն ի Թաթարէն, մատնեցին ի ԳԵՐՈՒԹԻՒՆ եւ ի սուր անողորմաբար, ըստ գրեցելումն, թէ ահ, սուր եւ որոգայթ ի վերայ ձեր՝ բնակիչք երկրի եւ որ փախիցէ յահէն անկցի ի սուրն եւ որ ելանիցէ ի գբէն՝ անկցի յորոգայթ եւ որ փախիցէ յայնմանէ՝ հարցէ զնա օձն, այսպէս եղեւ տառապելոյ բնակչացն Կարսայ»։

Մեծ հաւանականութիւն կայ որ մանաւորապէս Ոսկէ Հորդայի Մոնկոլ վեհապետները, որոնք 1262էն 1356, գրեթէ շարունակ պատերազմեցան Իլխանեան հարստութեան վեհապետներուն դէմ, ամէն անգամ որ Տերպէնտէն անցնելով դէպի հարաւ կը խուժէին և Հայաստան կը մտնէին, իրենց նահանջին ատենը, հայ քաղաքային բնակչութենէն մաս մը իրենց հետ կը տանէին, վասնզի Ղպչաք երկրին մէջ այդ դարերուն կը հանդիպինք հայ գաղութներու, որոնց մէկ մասը եթէ ինքնաբերաբար, Հայաստանէն այդ կողմերը գացող Հայերէ կը բաղկանար, մէկ մասն ալ — թերևս մեծամասնութիւնը — անոնց տարած գերիներն էին։

Գալով Մոնկոլներուն, անպատճառ անոնք ալ գործադրած են պատերազմելու այս հնօրեայ անմարդ եղանակը, բայց մեր պատմագիրները կա՛մ



շատ քիչ կարևորութիւն տուած են, կա՛մ իբրև շատ բնական բան մը՝ չեն արձանագրած։

Կիրակոս Վրդ. Գանձակեցի, որ Թաթարներու մասին թանկագին տեղեկութիւններ տուած է, 1236/37ին, Հայկական Բարձրաւանդակը գրաւելու համար, անոնց Հայաստան խուժումը և երկիրին ամէն կողմերը ասպատակելը և աւերելը նկարագրած է (տես. վերը, 144—145 կամ Կիրակոս, էջ 126—7), իր այդ նկարագրութեան մէջ, շատ աննշան ակնարկ մը ունի այս մասին։ Անոնց հասցուցած չարիքներու կարգին, կը յիշատակէ «կուսանք գեղեցիկք խայտառակեալք եւ գերեալք», ինչ որ բաւական նշանակելի է։

Այդ թուականներուն համար, նման կողմնակի տեղեկութիւններ ունի դարձեալ Կիրակոս որ Չարմաղանի արշաւանքին վրայ խօսելով, առանց մանաւորելու թէ խօսքը ո՞ր աշխարհին վրայ է, ընդհանուր կերպով կ՚ըսէ թէ «զօրացն երթեալք ընդ կողմանս կողմանս աշխարհին՝ աւերէին զաշխարհս եւ զգաւառս, եւ բռնային զիշխանութիւնս ազգաց, առնուին զինչս եւ զստացուածս, ԶԿԱՆԱՅՍ ՆՈՐԱՀԱՍԱԿՍ, ԵՒ ԶՄԱՆԿՈՒՆՍ ՆՈՑԱ ԳԵՐԻ ԱՌԵԱԼ Ի ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆ ՍՏՐԿՈՒԹԵԱՆ. եւ զոր առաքէին հեռու յաշխարհս իւրեանց, առ իշխանսն թագաւոր իւրեանց եւ զոր առ իւրեանց կալեալ ի պէտս ծառայութեան ախից իւրեանց» (Կիր., 123)։

Իսկ յատկապէս Հայաստանէն գերի տարուած կը յիշատակուի Վանական Վարդապետը՝ իր աշակերտներով (Թաթարաց պատմութիւն, 17 և Կիրակոս, 129), ինչպէս նաև 1236—1240ին՝ Հայաստանի նուաճման ժամանակամիջոցին գործադրուած աւերներու կարգին՝ կը յիշուի հազարաւոր գերիներ ալ առնըւած ըլլալը (տես վերը 149), Արևելեան ու Արևմտեան Վրաստանէն և Արևելեան Հայաստանէն, մանաւորապէս Անիէն և Կարսէն (վերը՝ 147 և 176)։

Այսպէս, Մոնկոլ տիրապետութեան շրջանին գերեվարութիւններ թէև շատ լայն ծաւալ չեն ունեցած, սակայն բոլորովին ալ զանց չեն առնուած։ Նշանակելի է որ Մոնկոլներէն գերի տարուողները շատ հեռու տեղեր չեն քըշուած, մանաւորապէս Իլխանեան իշխանութեան կազմութենէն (1256) ետք, վասնզի անոր մայրաքաղաքները, Մուղան, Դաւրէժ, Պաղտատ և Սուլթանիյէ, Հայաստանէն շատ հեռու չէին։ Որչափ ալ իրենց տարուած վայրերը հեռու տեղեր չըլլային, նահանգէ մը ուրիշ նահանգ տեղափոխութիւն մը անգամ անհետևանք չէր կրնար մնալ, գոնէ իր պատճառած տնտեսական քայքայումով։

Թէ ի՞նչ կը հետապնդէին Սելջուկները և Մոնկոլները գերիներ վերցնելով իրենց նուաճած երկիրներէն, պէտք է ընդունիլ թէ այդ սովորութիւնը ըստ Տիրայր Արքեպս.ի (Ֆրիկ Դիւան, էջ 45—46) քմահաճ և պատահականօրէն չէր գործադրուէր, այլ Մոնկոլ-Թաթար տիրապետութեան ներքին վարչութեան հիմնագիծերէն մէկն էր, իբրև պետական պահանջ և երկու գլխաւոր նպատակներու կը ձգտէր։

Նախ «իրենց հեռաւոր աշխարհն էին ուղարկում, որպէսզի իրենց յետեւից աւեր ու կործան, անմարդաբնակ դարձած աշխարհը կրկին լցնեն բազմութեամբ՝ երկիրը շէնցնող նոր ուժեր բերելով, վաճառականութեան

զարկ տալով, երկիրին մեռած կեանքը վերակենդանացնելով եւ օտար երկիրներու մօտակայքը, այդ օտար երկիրներից իսկ բերած թարմ ուժեր պատրաստեն այդ ընդարձակ անապատին մէջ, հետզհետէ կանգնող նոր քաղաքների՝ բնակչութիւն մատակարարելով:

Երկրորդ,— Մոնկոլ-Թաթարական ժողովուրդն ինքնին մեծ քանակութիւն չէր ներկայացնում եւ այն վայրագ արշաւանքները, կատաղի կռիւները, որ Թաթարները մղում էին, պատերազմող ուժերն անխնայ սպառելով — Մոնկոլ-Թաթարական բուն ցեղերն ու ազգութիւնն *անկարող* էին այնքան արագօրէն լցնել, որքան անխնայ եւ արագօրէն սպառում էր: Պատերազմող պետերին սպառելու քանակը շատ աւելի մեծ էր, քան արտադրող ոյժի տուածը։ Հետեւաբար *անհրաժեշտ* էր նոր բազմութիւն, մի քանի տարիներից յետոյ՝ գալիք նոր պատերազմների համար:

Այդպիսի բազմութեան բնական աղբիւրը՝ նուաճուած երկիրները դատարկելու քաղաքականութիւնն էր — գերիներու այն անծայր, անվերջ հոսանքը, որ դիմում էր Միջին Ասիայից դէպի Ծայրագոյն Արեւելքի սահմանները, Հայաստանից, Վրաստանից, Պարսկաստանից, Ասորիքից, Լեհաստանից, Ռուսաստանից դէպի այդ կլանող անապատը:

Քաղաքականութեան այս երկրորդ գիծը, մէկ հարուածով երկու նպատակների էր հասնում: Մի կողմից նուաճուած երկիրների երիտասարդ, առոյգ ուժերն արտահանելով՝ երկրի դիմադիր կարողութիւնն էին ջլատում, երիտասարդութիւնը եւ մանուկները դուրս հանելով. առաջիններին անմիջապէս գործի լծելով, իբրեւ աշխատաւորներ, եւ երկրորդներին՝ պահելով իբրեւ ապագայ ռազմական ոյժերի պաշար, մի քանի տարիներից յետոյ, երբ իրենց բուն էութիւնը մոռացած կը լինէին, իբր օտար ազգութիւններ:

Երկրի բնական պաշտպանողական ոյժերից զրկելով, նուաճած երկրամասը, երկիրը ինքնին մնում էր նուաճուած մնալու չար բախտի հարուածի տակ, որով տիրապետողներն այլեւս կարիք չունէին սեփական ուժեր պահել նուաճած երկիրների մէջ»:»

ԳԻՐԵՎԱՃԱՌՈՒԹԻՒՆ

---

*Տիրայր Արքեպս. անշուշտ մոռացութեամբ՝ չէ յիշած թէ այս գերեվաճառութիւնները նաև զօրապետներուն համար շահու աղբիւրներ էին, վասնզի ինչպէս ինչ ինչ յիշատակութիւններէ կը հասկցուի, գերիները վաճառելով կ'ազատագրուէին, ինչպէս Վանական վարդապետը, որուն* «երկիրն ամէն ի միասին ցաւակից լեալ, ետուն բազում գանձս եւ ոսկիս, եւ գնեցին զվարդապետն իւրեանց աշակերտօքն» (Պատմ. Թաթարաց, էջ 17):

*Նոյնպէս 1242ին Ռումի Սելջուկներէն Հայ զինուորներուն օգնութեամբ Կարնոյ գրաւումը մանրամասն նկարագրած ատեն, Կիրակոս* (152—3) *բացորոշ կը հաստատէ նոյնը, երբ կը գրէ թէ* «ի գերելոց անտի զբազումս գնէին զարս եւ զկանայս եւ զմանկտի, եւ զեպիսկոպոսունս եւ զքահանայս եւ զսարկաւագունս՝ որքան հնար էր գնեցին իշխանքն քրիստոնեայք, Աւագն եւ Շահնշահն եւ Աղպուղայն՝ որդին Վահրամայ, եւ Գրիգոր Խաչենեցի՝



Դուփին որդին, որ էր այր երկիւղած ի Տեառնէ, եւ զօրք նոցին. որոնց վարձահատոյց նոցա Քրիստոս եղիցի, եւ զամենեսեան ազատ արձակեցին, թողլով ի կամս անձանց ուր եւ կայցեն»:

*Այսպէս, հայ իշխանները և զօրքերը բարերար դեր կատարած և գերեվարութեան չարիքները մասամբ սահմանափակած են։*

*Բայց, ինչպէս տեսնուեցաւ, գերեվարութիւնները սակաւ եղած են մասնաւորաբար Մոնկոլական շրջանին՝ քանի Հայերու բարեացակամ Իլխանեանները կը կառավարէին երկիրը։*

*Սակայն անոնց իշխանութեան տկարացումէն և քայքայումէն յետոյ, երբ երկիրը տեսակ մը անիշխանութեան մատնուեցաւ և անոր զանազան մասերուն մէջ գոյութիւն առած պզտիկ իշխանութիւնները իրարու դէմ կռուիլ և իրար բզկտել կ'աշխատէին, անոնք ալ գերեվարութիւն գործադրած են իրար տկարացնելու համար։*

*Այսպէս, կը յիշուի թէ Ապու Սայիտի* (1316—1335) *տկարացած իշխանութեան ատեն,* 1319*ին, ապստամբած է Ղուռումչի, և այս պատճառով, մանաւորապէս* 1319—1320 *թուականներուն, Գեղարքունիքի մէջ կողոպտուած են եկեղեցիները և* գերեվարուած են *երեխաները և ծերերը, իսկ միւս բնակիչները լքելով իրենց գոյքը, ծուարած են քարանձաւներու մէջ։* (Յիշատակարան Յովհաննէս գրչի, *տես Գարեգին կաթ. Յովսէփեան,* Խաղբակեանք 205 *հմմտ. Նաև Երեւանի Թանգարանի Թ.* 88 *ձեռագիրը,* Սամուէլ Անեցի *էջ* 167, *Ց. Մանանդեան* ՔՆՆ. Տես. Գ. 320)։

*Նոյն այդ անիշխանութեան շրջանին պէտք է գիրի առնուած ըլլայ ըստ Յ. Մանանդեանի* (ՔՆՆ. տես. 332), *Դաւիթ անուն գրիչէ մը, Թեղենեաց վանքը գրուած այն յիշատակարանը՝ որ նոյնքան տխուր գոյներով կը ներկայացնէ իր ժամանակը, գրելով թէ.*

«Ի ժամանակիս խառնիճաղանճ ազգիս Նետողաց... ով ոք կարէ պատմել զաղէտս տառապանաց, որ ոչ աշխարհ եւ ոչ քաղաք եւ ոչ ագարակ եւ ոչ սրբակրաւն վանորայք զխաղաղութիւն գտեալ, այլ համակ ի նեղութիւնս եւ ի խիստ հարկապահանջողաց աւերեալ լինէր աշխարհս քան(զի) ոչ գոյր թագաւոր եւ ոչ իշխան եւ ոչ այցելու, այլ յամենայն կողմանց խռովութիւն եւ աղմուկ»: (*Գարեգին կաթ. Յովսէփեան,* Խաղբակեանք *Ա.* 228)։

*Իսկ որոշապէս Ապու Սայիտի* (+1335) *մահէն յետոյ, Հայաստանի անիշխանութեան մատնուած շրջանին, գերիներ առնուած են։ Երեւանի Մատենադարանին ձեռագիր Աւետարանին* (*Թ.* 1338) *յիշատակարանին մէջ, գրիչը կը հաստատէ թէ այդ Աւետարանը գրչագրուած է* «Ի թուականիս Հայոց ՉՁԷ (= 1338), ի ժամանակս որ ոչ գահ կայր եւ ոչ Սուլտան, եւ աշխարհս էր իբրեւ զնաւ յերերման, եւ քրիստոնեայք էին հալածական եւ փախստական»: (ԺԴ. Դարի Հայերէ Ձեռագրերի Յիշատակարաններ, էջ 306, *հմմտ. Նաեւ* նոյն, 314, 1334 *թուականի «Արծկոյ վանքին մէջ գրուած Աւետարանի յիշատակարանը*)։

Իսկ 1357ին երբ անիշխանութիւնը իր սաստկագոյն վիճակին հասած էր, Անի և Շիրակ կ'ենթարկուին յարձակման և ինչպէս կեռան Թագուհիին Աւետարանին յիշատակարանը կը վկայէ, աղեխարշ խժդժութիւններ կը գործադրուէին Հայաստանի մէջ։

«Սատակեցին առաջի ծնողաց զտղայսն եւ առաջի տղայոց զծնողսն, եւ զորս ըմբռնեալ տանէին գերիս, բանեցին եւ տանջանաց մատնեալ եւ բարեբարն Աստուած տեսեալ եւ անտես առնէր վասն անբաւ չարեաց մերոց: Որոց գլուխ Աքաբակ եւ մեծ Սպասալար Շահնշահ, որ հազիւ կարաց զերծանիլ ի ձեռաց թշնամեացն» (Գարեգին Կաթ. Յովսէփեան, Խաղբակեանք, 15, առնուած Մայր Ցուցակէն Էջմիածինի, Թ. 1804)։

Նոյն այդ իշխանութեան շրջանին և նոյն այդ 1357 թուականին ինչպէս տեսնուեցաւ (վերը 248) Ոսկի Հորդայի Ջանիբէկ խանը արշաւեց Ատրպատական և գրաւեց Դաւրէժը, իսկ յաջորդ տարին (1358ին) Զաքարեան Շահնշահ Գ.ը վերագրաւեց Բջնին, և մեծ Հասանի որդին՝ Ջելայիրեան Սուլթան Ուվէյսը, գրաւեց վերստին Դաւրէժը։

Ասոնք շատ գերիներ առին։

Հետևաբար, Մոնկոլական շրջանին ևս գերեվարութիւններ կատարուած են, սակայն քիչ չափով։

Առնուած գերիներն ալ, ինչպէս տեսնուեցաւ, առհասարակ եղած են կիներ և տղաք, կամ երեխաներ և արհեստաւորներ (տես վերը՝ 147)։

## ԿՐՕՆԱԿԱՆ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐ

Մոնկոլական շրջանին գոյութիւն ունեցած է նաև կրօնական հալածանքներու փորձանքը Հայաստանի մէջ, պարբերաբար և ոչ տեւականօրէն։ Եւ ասիկա այն պատճառով՝ որ Մոնկոլները մինչև ԺԴ. դարուն սկիզբը որոշ կրօնքի մը յարած չէին, և պատճառ մը չունէին այս կամ այն կրօնքին դէմ հալածանք բանալու։ Արդարև, իրենց Հայաստան մուտքէն յետոյ, երկար ատեն անոնք կրօնական որեւէ հալածանք չեն գործադրած։

ԺԴ. դարուն սկիզբը՝ Ղազան խանի իսլամութիւնը վերջնապէս ընդունելէն ետքն է որ կրօնական հալածանքներ սկսած են։

Սակայն իրենց պատճառով կրօնական հալածանք գործադրուած է Հայաստանի մէջ, վասնզի իրենցմէ հալածուած Խուարէզմի մոլեռանդ Սուլթանը Ճելալէտտին, որ փախստական ապաստանած էր Հայաստան, նախ ինք սկսած է Քրիստոնէից դէմ հալածանքը։

Տեսանք (վերը 139—140) թէ Ճելալէտտին, որ աննկուն ռազմիկ մը եղած էր, 1225ին Դուինի մէջ սուրէ անցուցած էր քաղաքին քրիստոնեայ բնակիչները և 9 Մարտ 1226ին Վրաստանի մայրաքաղաքը՝ Թիֆլիսը գրաւելէ ետք, ջարդ և աւարառութիւն գործադրելէն զատ՝ քաղաքին քրիստոնեայ բնակչութիւնը բռնադատած էր Իսլամութիւնը ընդունելու։

Նոյնպէս հալածանք բացած են Դաւրէժի և Նախիջևանի մէջ (տես վերը 139, Վարդան 143—4 և Կիրակոս 118)։

Թագաւոր՝ Ապաղայի եղբայրը, որ իր քրիստոնէական Նիկոլա անունը մէկ կողմ թողլով իսլամութեան յարած էր՝ Ահմէտ կամ Մուհամմէտ անունը առնելով (տես վերը, 123), իր իշխանութեան ժամանակամիջոցին (1282—1284) աշխատած է իր հպատակները բռնի իսլամացնել և Կիլիկիոյ ու Վրաստանի թագաւորները հրաւիրած է Իսլամութեան յարելու, (տես. վերը 123—4)։ Ինչպէս յիշուեցաւ, ան բարեկամացած է Եգիպտոսի Մէմլուքներուն հետ (նոյն), իբրև կրօնակից և զանոնք մղած է ոչ-իսլամներու դէմ։ Բարեբախտաբար կարճ տևեց իր իշխանութիւնը, վասնզի սպաննուեցաւ։ Տասը տարիներու կրօնական ազատութեան որոշ շրջանէ մը ետք, Ղազան Մահմուտ խան (1295—1304) արտօնութիւն տուաւ իսլամներուն՝ հալածելու քրիստոնեաները և հրեաները (տես. վերը 126)։ Ասոր համար՝ Հեթում Բ. իրեն այցելեց և բարեխօսեց ի նպաստ Քրիստոնէից ու կրցաւ զայն բարեկամ դարձնել քրիստոնէից և հալածանքը դադրեցնել տալ,— ինչպէս կը հաստատէ Հեթում պատմիչ (60) (վերը 127)։ Ղազան Խանի մահէն (1304) յետոյ իսլամութիւնը աւելի տարածուեցաւ և մահմետականները սաստիկ մեծամասնութիւն կազմեցին։ Ընչաքաղցներ կրօնքը չահագործեցին։ զայն պատրուակ ընելով կողոպտելու և կեղեքելու համար, տրուած ըլլալով որ կեդրոնական իշխանութիւնը քայքայուած էր և երկիրը անիշխանութեան մատնուած։ Այդ պատճառով՝ հալածանքը՝ սաստկացաւ։ 1307ին ձեռագիրի մը (Թ. 1303 ձեռագիր Երուսաղէմի) յիշատակագիրը, կ'ըսէ թէ այդ տարին «սուգ մեծ ժամանեաց ազգիս Հայոց վասնզի ի յորդորմանէ Պարսից եւ Տաճկաց որ զառաջնորդութիւն ունէին ազգին Նետողաց որ կոչի խարպանտուղղու, հալածանս յարոյց քրիստոնէից յաշխարհն արեւելից եւ որ ընդ իշխանութեամբ նորա են»:

Նոյն 1307 թուականին ուրիշ գրիչ մը՝ Խաչեր քհ. կը գրէ. (Աւետարան մը Բերկրի մէջ)։ «ի թագաւորութեան ազգին Նետողաց», «ի ժամանակին, յոր եւ եդին զնշանս ի վերայ քրիստոնեական հաւատին,..»։ Անշուշտ ասով կ'ակնարկէ այն որոշումին, որով կը հրահանգուէր որ քրիստոնեաները իսլամներէն զատուելու համար յատուկ նշան մը կրէին իրենց վրայ։ (Ցուց. Ձեռ. Վասպուրականի, 151 - 152)։

Այդ սոսկալի օրերուն կը գործադրուէր ամէն տեսակ հալածանքներ, որոնց կարգին նաև կրօնական հալածանքը, ինչպէս կը հաստատէ 1314ին Թէոդոսուպոլիս գրուած Գործք Առաքելոցի ձեռագիրին գրիչը, որ կը ներկայացնէ Հայերու դժբախտ վիճակը՝ գծելով պատկեր մը շուարումի։

«Չկայ յոյս ապաւինի եւ ոչ տեղի ապաստանի, եւ էր աշխարհս յամենայն ի տառապանս եւ ի հարկապահանջութիւն եւ իսպառ նուաղեալ էր ազգս Հայոց, եւ ի քաղաքիս յայսմիկ [Թէոդոսուպոլիս = Կարին], քակեցին եկեղեցիս բազում եւ ոմանս, թողեալ զհաւատս որ ի Քրիստոս, եւ զնացեալ զհետ անօրինաց Իսմայելացոց ազգի եւ այլք՝ վաճառեցին զտղայս իւրեանց եւ ինքեանք փախուցեալք յայլեւայլ տեղիս, եւ ոչ ուրեք գտանէր տեղի ապաւինի» (Լ. Ս. Խաչիկեան, ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, Երևան, 1950, էջ 101—102):

Կրօնական մոլեռանդութիւնը հետզհետէ աւելի սաստկացաւ, այնպէս որ Ղազան Խանէն ետքը, հազիւ 30 տարի անցած էր, երբ նոյնիսկ քրիստոնեայ

վեհապետի մը՝ Արփա Խանի (1335—1336), իշխանութեան չհանդուրժելով՝ սպաննեցին զայն և անոր յաջորդներուն ժամանակ քրիստոնեաները հալածանքի ենթարկեցին (վերը, 131), ինչպէս Բարսեղ անուն գրիչ մը, նոյն այդ Թուականին (1336), իր Բասենի մէջ գրած Աւետարանի յիշատակարանին մէջ, կը հաստատէ՝

«Ի դառն եւ ի նեղ ժամանակիս, որում բռնացաւ ազգ Իսմայելի, ի վերայ ազգիս քրիստոնէից, Թամուր անուն, աւերելով զբազում եկեղեցիս եւ զվանորայս, տարաշխարհիկ լինելով Սբ. կրօնաւորաց, ի յերկիւղէ անօրինաց» (Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի, 190—191):

Այդ Թուականէն երկու տասնեակ տարիներ ետքը, 1355ին, Աղթամար գրուած յիշատակարան մը՝ Գրիգոր գրիչի կողմէ՝ դառնութեամբ կ'ակնարկէ այս հալածանքներուն և կ'ըսէ.

«Գրեցաւ... ի կղզիս Աղթամարայ... յաւուրս անիշխանութեան, յորում բարձեալ էր տէրութիւն հոգեւոր եւ մարմնաւոր՝ ազգիս Հայկազեան, զի բռնացեալ կալան զՄիջերկրեայս ամենայն, ազգատոհմ կարապետի Նեռինն ասացեալ եւ նեղեն յոյժ զազգս քրիստոնէից՝ մինչեւ յելս ոգւոց մերոց: Արդ, յայսպիսի դառն, ի նեղ եւ ի նուրբ ժամանակիս, յանձն առեալ աշխատութեամբ գրեցի զսա...» (տես. Ցուցակ Վասպուրականի, էջ 203-204):

## ԲՆԱԿԱՆ ԱՂԷՏՆԵՐ

Մոնկոլ տիրապետութեան շրջանին ևս՝ Հայաստան ինչպէս յաճախ, բնական աղէտներէ, ինչպէս երկրաշարժներէ, սովերէ, մարախի արշաւներէ և համաճարակներէ զերծ մնացած չէ։

Այսպէս, 1236ին, Եկեղեաց գաւառին մէջ երկրաշարժ մը կը պատահի և եկեղեցի մը կը փլչի (Դարանաղցի, 4. Բնաշխ. Բառար., 657, Դաւրիժեցի, 624, Տաշեան, Մայր Ցուցակ, 871, Գարեգին Կաթ., Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 207, Երուսաղէմ Թ. 819 ձեռագիրը և Յ. Քիւրտեան, Երիզա եւ Եկեղեաց գաւառ, Ա, 105):

1246ին ալ կը յիշուի երկրաշարժ մը, որուն միջոցին եկեղեցի մը կը փլչի։ Յ. Քիւրտեան, իրաւամբ կը կասկածի որ շփոթութիւն մը կայ (տես. 105 և 111). Թէ երկու դէպքերը նոյնն են։

Կ. Կոստանեանց կը յիշէ ուրիշ երկրաշարժ մը՝ 1351ին, (Շարժի Տարեգրութիւնը Հայոց մէջ, էջ 6—7), դարձեալ Երիզա պատահած, որ ուրիշ տեղ յիշուած չէ, ըստ Յ. Քիւրտեանի (տես. Երիզա, 113)։ 1254ին, դարձեալ Երիզա, շարժ կը պատահի և 16,000 մարդ կը մեռնի. (Կամախեցի, Սամուէլ Անեցի, Դաւրիժեցի, Տաշեան, ևայլն՝ կը յիշեն ասիկա, տես. Յ. Քիւրտեան, Երզնկա, Ա. 113)։ Ուիլիամ Ռուպրուք (Rubrouk) 1255ին ցոյց կուտայ մեծ երկրաշարժ մը, որ միայն Երզնկայի մէջ «կորսնցուցած էր 10,000 հանչցուած անձեր, առանց հաշուելու խեղճերը»: Գաղափար մը տալու համար Թէ ինչ սաստկութիւն ունեցած է այս աղէտը, կ'արժէ յիշել Ռուպրուքի սա տողերը. «Երէք օր, միշտ ձիերով ընթանալով, մենք հանդի-



պեցանք հողի պատռուածքներու, որոնք կազմուած էին երկրաշարժէն. մենք տեսանք հողի եւ քարի մեծ կոյտեր, որոնք լեռնէն փրթելով, ծածկեր էին հովիտները եւ եթէ երկրաշարժը քիչ մը աւելի սաստիկ ըլլար, տառացիօրէն պիտի կատարուէր Եսայեայ ըսածը. «Ամենայն ձորք լցցին, եւ ամենայն բլուրք խոնարհեսցին» (տես. Երիզա, Ա. 113):

Իսկ 1368ին, դարձեալ նոյն շրջանակին մէջ, կը պատահի երկրաշարժ մը, որուն զոհ կ'երթան 15,000 մարդիկ (Տաշեան, Մայր Ցուցակ, 571, Դաւրիժեցի, 624, Զմմառի, Թ. 99 ձեռագիրը, Կոստանեանց, Շարժի Տարեգրութիւնը, 67, Բնշ. Բառարան, 657, Յ. Քիւրտեան, Երիզա, 119)։ Ալիշան 1269ին ալ կը յիշատակէ շարժ մը Կիլիկիոյ մէջ պատահած, յիշատակագիրէ մը և Կիլիկիոյ պատմիչէն առնելով, սակայն Հայաստանէն դուրս ըլլալուն համար, անցողակի յիշելով կը բաւականանանք։ Հոս կը ներկայացնենք 1275—6ի Խլաթի և Արճէշի երկրաշարժը՝ առնելով Ալիշանէն (Հայապատում Բ. հտ. 548)։

«Տրտմալի աղէտս որ ի յԱստուծոյ եղեւ վասն մեղաց իմոց, քանզի ի սոյն ամի (1275—6) շարժեաց Աստուած մասն ինչ ի յերկրէ եւ անդնդասոյզ արար զԽլաթ եւ զԱրճէշ եւ ոչ գիտեմք որչափ մարդոց վախճան եղեւ, եւ բաւական ամ մի շարժի երկիր, եւ զկատարածն Աստուած գիտէ, որ զամենայն շարժէ եւ ինքն յումեքէ ոչ շարժի եւ թէ շարժի ինքն ըստ ինքեան շարժի ի խնամս մարդկան»: Սամուէլ Անեցի, (էջ 162)՝ 1278 Թուականին «շարժն զԽաւարն ի վայր տարաւ» կ'ըսէ, ինչ որ բացատրութեան կը կարօտի։

1281ին, դարձեալ շարժ մը եղած է Երզնկա, առանց մեծ պատճառելու (Բնաշխ. Բառարան, 657, Զմմառի Թ. 99 ձեռագիր, Դաւրիժեցի, 624 և Յ. Քիւրտեան, Երիզա 138)։

Սամուէլ Անեցի (162) կը վկայէ Թէ 1282 Թուականին «Շարժն անցոյց զԱրճէշ եւ զԽլաթ»: Ու կը հաստատէ որ այս երկու տեղերը կործանելու պատճառ վնասուած են։

1287 Մայիս 6ին* դարձեալ եղած է սաստիկ շարժ մը, միշտ Երզնկա, և շատեր մեռած են։ Այս երկրաշարժը շարունակուած է մինչև 1290, ինչպէս Յ. Քիւրտեան (Երիզա, 142—4), կը հաստատէ զանազան աղբիւրներով։

Այդ աղէտին 10,000 մարդիկ զոհ գացած են։ Սամուէլ Անեցի (167) կ'ըսէ՝ «շարժմամբ կործանեցաւ Երզնկան» 1289ին։ 1308ին երկրաշարժէ մը կը կործանի Արտազի վանքը և 65 հոգի կը մեռնի (Սամուէլ Անեցի Շար. 165), որ նոյնը պիտի ըլլայ Թուականի շփոթութեամբ, Սամուէլ Անեցիի (էջ 157), ՌՅԻ (= 1320) ի ՉԿԸ (= 768+551=1319), Թուականին տակ գրածին հետ «եղեւ ահագին շարժ եւ յարեւելս եւ զԹադէոս Առաքելոյն վանքն եւ զեկեղեցին կործանեաց եւ զտունսն փլոյց եւ ՀԵ (75) ոգին եսպան:

Նոյն տարին, «ի Գեղարքունի ընկղմեաց զբազում գեղս հանդերձ արամբք եւ կանամբք»:

Նոյն տարին (1319—1320) Արարատեան դաշտն ալ ենթարկուած է երկրաշարժի։

Նոյնպէս Սամուէլ կը յիշէ (էջ 169) 1363 Թուականին տակ. «Արեգակն խաւարեցաւ եւ շարժն զՄուղու երկիրն տարաւ եւ զվանորայքն խախտեաց»:

Աւելորդ է ըսել Թէ, ասոնք մեր պատմագիրներէն պատահօրէն յիշատակուածներն են։

Հաւանօրէն պէտք է պատահած ըլլան սաստիկ և թեթև ուրիշ երկրաշարժներ, վասնզի Հայաստան շատ ենթակայ էր այս աղէտին։

Բնութեան այս քանդող խաղերը, յաճախ պատճառ եղած են յուսահատութիւն պատճառելու և բնակչութիւնը մղելու այլուր, բնական այս աղէտէն զերծ վայրեր։

Երկրաշարժներէն զատ պէտք է յիշել սովերը, որոնք միշտ կը պատահէին, մասնակի կերպով, զանազան գաւառներու մէջ, առանց մեծ ծաւալ գտնելու, բացի մի քանի պարագաներէ, երբ ամբողջ երկիրը մատնուած էր սաստիկ սովի։

Այսպէս, Ճէլալէտտինի կռիւներուն ժամանակ՝ 1225ին պատահած է սաստիկ սով, զոր նկարագրած է Ստեփանոս Օրբէլեան (Բ. 146)։

Ան կը գրէ թէ «զանազան դիպուածովք ապականեալ եղեւ աշխարհս ամենայն, զի գտեալ խորազմիկքն(1) զաշխարհս անտերունչ՝ անխնայ կոտորեցին եւ գերեցին եւ հրդեհեցին զամենայն շինուածս տանց եւ յարկաց քաղաքաց, գիւղից եւ վանօրէից, այրեցին եւ զվաստակս ամենայն, եւ հարին զայգիս եւ զծառս, վասն որոյ սով սաստիկ տիրեաց առ հասարակ: Եկն եւ օձ թանձրագին որ եռայր յամանս եւ յանկողինս ի տուէ եւ ի գիշերի: Եկեր եւ մարախն մեծ մինչ ի ծովն Ովկիանոս եւ կած սով առհասարակ մարդոց եւ անասնոց: Եւ ամենեքեան առ հասարակ տապաստ անկեալ լինէին, լերանց եւ դաշտից եւ ձորոց, սակս որոյ եւ անկաւ գայլ մարդակեր եւ զմնացեալսն ի սրոյն, յօձէն, ի սովոյն եւ ի մահուանէն նորա գիշատեալ սատակէին:

Եւ այս երկու պատճառաւ. մի՛ զի սովորեալ էին յուտել զմեռեալսն եւ մի զի՛ մարդիկն ներգեւեալ եւ նքողեալ էին ի սովոյն: Եւ ահա այս պատուհաս տիրէ աշխարհիս ամս եօթն»:

Ուրիշ սով մըն ալ, 1348—1351ին պատահած, կը յիշատակուի Սամուէլ Անեցիէ, որ կ'ըսէ թէ «եղեւ սով սաստիկ ի վերայ Հայոց աշխարհիս, զամս Գ եւ զայլք յարձակեցան ի մարդիկ եւ ապա անկաւ մահ տարաժամըն եւ անապատ արար զբազմամարդ երկիրս Հայոց եւ շատոց գերեզմանք փոր գազանացն եղեն: Շատք անթաղ մնացին՝ եւ անձնունդ ժամանակի»: (Սամուէլ Անեցի, 169):

1375ին, դարձեալ Սամուէլին շարունակողը (էջ 170), կը հաստատէ թէ Հիւսիսային Միջագետք «սովն սաստիկ էր»:

Ուրիշ աղէտ մըն ալ, որ երկրագործական երկիրներու համար ծանր պատուհաս մըն է և սովին նախակարապետը՝ մարախն էր։ Սամուէլ Անեցիի ժամանակագրութեան շարունակողը (էջ 166), կ'արձանագրէ թէ 1317ին, «Մորեխին ԻԱ օր արար մեծ վնաս», առանց որևէ մանրամասնութիւն տալու։

Իսկ Վարդան պատմիչ (148), կ'ըսէ, 1352ին «մարախ եկն ի վերին աշխարհս Հայոց, եւ արար վնաս յոլովից գաւառաց»: Կիրակոս Վրդ. Գանձակեցի, այս միևնոյն թուականին մարախին վրայ խօսելով, աւելի մանրամասնութիւններ կու տայ։ Ան կ'ըսէ թէ «եկն մարախ սաստիկ այնքան՝ մինչ զի ի վերանալըն ստուեր գործէր եւ նուազէր լոյս արեգական եւ եկեալ ի կողմանցն

(1) Կ'ակնարկէ Ճէլալէտտինի բանակներուն:



Պարսից եկեր զաշխարհս Հայոց, ոչ միայն զբոյսս դալարոյ՝ այլ եւ զհող երկրի եւ զաղբս լափէր, եւ մտանէր ի տունս ընդ երդս եւ ընդ դրունս, թէ պատահէր ի բաց. եւ զանի հարաւ երկիր, եւ եղեւ սղութիւն հացի, եւ հառեալ ի ձմերան եղանակ՝ արկ ձուս յերկիր, եւ մեռան եւ նեխեցաւ երկիր ի հոտոյն եւ 'ի գալ գարնան յեօթն հարիւր եւ երկու թուին (Քր. ի 1353) բուսոյց երկիր զձագս մարախոյն յոյժ թանձրութեամբ, մինչ զի ծածկեցաւ հող եւ քարինք երկրի եւ ի ժամ երեկոյին կուտէին ի վերայ միմեանց բլրաձեւ եւ սկսան ուտել զդալարի եւ զխոտ եւ զհող եւ խորհեցան մարդիկ թողուլ զբնակութիւնս իւրեանց եւ ԵՐԹԱԼ ՕՏԱՐՈՒԹԻՒՆ, ուր եւ գտցեն կերակուր եւ զի յառաջագոյն կերեալ էր զշրջակայ գաւառսն սկսեալ ի Սպանիոյ (?) եւ Ասիոյ եւ ի Պարսից, եւ ի Միջագետաց, վասն այնորիկ տարակուսեալք՝ ոչ գիտէին զինչ գործեսցեն»: (Կիրակոս, էջ 208—9):

Այս աղէտներէն զատ, համաճարակներն ալ Հայաստանը պատուհասած են երբեմն։

Մոնկոլական շրջանին վերջերը, Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 169), 1365 թուականին տակ, կ'արձանագրէ թէ «եկն մահ տարաժամ սաստիկ եւ աւեր արար Հայոց աշխարհիս»: Նոյնպէս 1373ին «Յաղագս եօթն մահացու մեղաց» գործը, Թուլկուրանի (Միջագետք) մէջ գրչագրող՝ Կարապետ քհ., այդ թուականը «ի յամին մահ տարաժամին եւ ի նեղութեան Հայոց ազգիս» (Թ. 1292 ձեռագիր Երուսաղէմի վանքին) կը կոչէ։

## ՀԱՅԵՐՈՒ ԿԵԱՆՔԸ ՄՈՆԿՈԼԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ

Վերոգրեալ բոլոր տեղեկութիւնները, որոնք Հայերու կեանքը կը ներկայացնեն Հայաստանի մէջ, Մոնկոլական շրջանին, ցոյց կու տան որ այդ 150 տարիներու ժամանակամիջոցը, շնորհիւ Հայ իշխաններու խոհականութեան և երկու Հեթումներու քաղաքագիտութեան, քիչ շատ մեղմացումներ տեսած է, և Հայերը տևական հալածանքի առարկայ չեն եղած. սակայն, ինչպէս կը թուի, միշտ վշտալի կեանք մը անցուցած են, ինչպէս ժամանակակից պատմիչները, Վարդան, Կիրակոս և Ստեփանոս Օրբէլեան, Սամուէլ Անեցի ևայլն կը հաստատեն։ Նոյնպէս բազմաթիւ ձեռագիրներու, յիշատակարաններու գրիչները յաճախ իրենց ապրած ժամանակը «չար, անբարի, դառն» ածականներով որակած են, ինչպէս կը տեսնուէր պատմագիրներէն և ձեռագիրներու յիշատակարաններէն, վերը՝ մեր մէջ բերած կոչումներէն։

Ասոնցմէ զատ, կան ուրիշ բազմաթիւ յիշատակարաններ, որոնք նոյնպէս դառն, վշտալի և դժբախտ ժամանակի մը յիշատակութիւնը կ'ընեն և տխուր տպաւորութեան մը տակ կը թողուն մեզ։

Ասոնցմէ մի քանին, — ոմանք արդէն տպուած և ոմանք անտիպ — պիտի ներկայացնեմ, իբրև ամէնէն ստուգապատում վաւերագիրները, ժամանակին վրայ գաղափար տուող, ԺԳ. և ԺԻ. դարերուն վրայ բաժնուած։

## ԺԳ. ԴԱՐՈՒ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

«Եղեւ աստուածասաստ բարկութիւնն յաշխարհն արեւելից եւ յարեւու ազգ մի գազանաբարոյ եւ անողորմ եւ ննեղ բազում արիւն ու ... բնական անուն նորա Խարաթաթար: ... Ոչ կարեմ պատմել զանցս չարչարանացըս որ ետ ըմպել զբաժակն բարկութեան Այրարատեան գաւառին եւ Անոյ եւս առաւել, զոր իմ է տեսեալ զանհնարին ողբն...» (Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի Մխիթարեանց Ա. 400)։

1244*ին, Կիրակոս գրիչ, Հռոմկլայի մէջ իր գրած մէկ ձեռագիրին յիշատակարանին մէջ կ'ըսէ թէ* «գրեալ եղեւ ի դառն եւ ի խուճապուս եւ ի կականման ժամանակի, յորժամ ել ազգն խուժադուժ որ կոչի Տաթար եւ սպառեաց զամենայն հասակ յերկրէ» (Վենետիկի Ձեռ. Ցուցակ, 651)։

1280*ին, ձեռագիրի մը գրիչը, յիշատակարանի մը մէջ կը շեշտէ՝* «Ի ԲՌՆԱԿԱԼՈՒԹԵԱՆ ազգին Նետողաց» *գրուած ըլլալը,* (*Ե. Լալայեանց*, Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի, 103·

1295*ին Թեղենեաց անապատին մէջ, Դաւիթ գրիչ կ'ըսէ թէ* «Ի յաւուրս Նետողաց ազգի որ բռնացեալ ունէր զամենայն աշխարհս Հայոց եւ զայլս բազումս որում չեմ բաւական պատմել, զդառնութիւն եւ զանիրաւութիւն աշխարհիս որ իբրեւ զծով խռովեալ մրրկանին ալեօք զերեքալեանն բերելով զնմանութիւն ո՞ւր, ո՛չ երկիր եւ ո՛չ քաղաք եւ ո՛չ գեաւղ եւ ո՛չ աւանք եւ ո՛չ հրաշագան վանօրայք զխաղաղութիւն գտեալ» (Լոնտոնի Բրիտանական Թանգարանի Թ. 2263 ձեռագիրը).

*Իսկ* 1296*ին, Սուրմալի գրուած Աւետարանի գրիչը Ծերուն՝ կը յայտնէ թէ* «յաւուրս բռնակալութեան ազգին Նետողական» *գրուած է ան և կը պատմէ թէ երեք խաներ,* (*Քեղաթուն, Բայտուն և Ղազան*), *ինչպէս իրարու յաջորդած են և իրարու դէմ կռուած* (*տես վերը* 125—6) *և* ետուն վճիռ քակել եկեղեցիս Քրիստոսի ... ի բազում տեղիս» (*տես.* Ցուցակ Հայ Ձեռ. Վասպուրականի, 120—1)։

*Ուրիշ մը, Սիմէոն գրիչ,* 1297*ին, Արճէշի մէջ գրած իր Աւետարանին մէջ, իր ժամանակը կ'որակէ* «դառն եւ վշտաբեր», (Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի, 123—4)։ *Վահրամ Սարկաւագ,* 1298*ին Փիլոն Եբրայեցիի* Գիրք Մեկնութեան Ծննդոց *ձեռագիրին յիշատակարանին մէջ կ'ըսէ.*

«Եւ վասն ժամանակիս անհանդուրժելի վրդովմանցս եւ խուճապ տագնապիս, զոր եհաս ի վերայ մեր յազգ Իսմայելացւոց եւ յափշտակեաց զյուռթի եւ զպարարտ մասն երկրիս մերոյ, ի թուականիս Հայոց ՉԽԷ (= 1298), որում եղեւ զրաւ գրոցս, եւ բազումք անկան ի սուր սուսերի եւ *ի գերութիւն,* վասն խրատելոյ զմեզ Տեառն եւ մեք ոչ խրատեալք, այլ հաւատք պակասեալք եւ ամբարշտութիւն զաւրացեալ, արդարութիւն հեռացեալ եւ անաւրէնութիւն բազմացեալ, սէր եղծեալ եւ անգթութիւն ծաղկեալ, բարիք զօսացեալ եւ չար արմատացեալ, Աստուած վաճառեալ եւ ագահութիւն թագաւորեալ, եկեղեցիք փակեալք եւ քահանայք խողխողեալք, վանօրայք ապականեալ եւ միանձունք ցրուեալք, մանկունք գերեալք եւ



աղջկունք վաճառեալք ի ձեռաց անաւրինաց: Արդ, զորպիսի չարաշուք եւ բազմավրդով ծանր աղետի աւուրս, ես ունայնացեալ եւ յոյժ խաւարաժառանգս եւ պարապնդեալս մեղաւքս Վահրամս Սարկաւագս, մարթացից ճառել զթշուառութիւնս...» (ՀԱ. 1926, 131, *և Երուսաղէմ, Ձեռ. Թ*, 257 *և* 333 *Նաև Նորայր Եպս. Պողարեան*, Մայր Ցուցակ Ձեռագրաց Սրբոց Յակոբեանց *Բ. հտ.* 71—72)։

## ԺԴ. ԴԱՐՈՒՆ ԳՐՈՒԱԾ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

1316*ին Ստեփանոս Երկայն կոչուած ծանօթ գրիչ մը, որ ուրիշ ձեռագիրներ ալ գրած է Երուսաղէմի մէջ, կը գրէ Ճաշոց մը.* «ի դառն եւ յանբարի ժամանակս, զի չէ կար ումեք ըստ գրով արկանել զազգի ազգի վիշտս եւ զնեղութիւն որ հասեալ է ընդհանուր, ի վերայ ամենայն քրիստոնէից, յանօրէն եւ յանաստուած պիղծ եւ զարշելի ազգէն Իսմայէլի, որ ամենեսեան մաշեցին ի սուր սուսերի եւ մնացեալսն ի գերութիւն վարեցին, որ եւ ի նոյն ամին զմեծանուն մայրաքաղաքն Մելիտինի Հայոց առին յաւար եւ ի գերութիւն եւ զայլ բազում քաղաքս եւ զգաւառս եւ զանմաշելի ամրոցս հիմնիվեր տապալեցին...» (Թ. 229, Ձեռագիր Երուսաղէմի Մատենադարանին)։

1318*ին Նոյն Ստեփաննոս Երկայն գրիչէն Դրագարկ գրչագրեալ* Ճառընտիրը, *որ Երուսաղէմի վանքին համար գրած է, թէև Կիլիկիոյ ձեռագիր մըն է, բայց գրիչը ընդհանուր կերպով կը խօսի ժամանակին դառնութեանը վրայ ընդհանուր կերպով և Կիլիկիոյ մասին ալ առանձին, արտայայտուելով։*

*Ան կ'ըսէ թէ* «վասն դառն եւ անբարի ժամանակիս չէ կար ումեք ըստ գրով արկանել, զի իբրեւ զխռովեալ եւ զտատանեալ ծով միշտ յալեկոծութեան կան ազգ քրիստոնէից, *ի գերութիւն* եւ *ի հարկապահանջութիւն*, անաստուած եւ զարշելի ազգին Իսմայելի՝ մանաւանդ երկիրս Կիլիկիոյ որ գրաւեալ է ըստ հարկապահանջութեամբ նոցա եւ կայ ի մեծ նեղութիւն եւ տառապանք այնքան՝ զի հարք զորդիս վաճառեն եւ այլք ի բանտի եւ ի կախաղան վճարեցին զկեանս իւրեանց, քանզի յամենայն կողմանց պատեալ ու պաշարեալ է նեղութիւն...:» (*Արտաւազդ Արք. Սիւրմէեան* «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի Սրբոց Յակոբեանց վանքին, Ա. հտ. *էջ* 202—3)։

1321*ին Կիւրեղ անուն գրիչը կը խօսի Գլաձորի համբաւաւոր Համալսարանէն, իր գրած մէկ ձեռագիրին յիշատակարանին մէջ և իր ժամանակը կը ներկայացնէ* «դառն եւ անբարի» *վասնզի* «ունէր զբռնակալութեան բոլոր աշխարհի Հայոց եւ Վրաց ազգէն Նետողաց» *հակառակ անոր որ Բուրթել և Ամիր Հասան կ'իշխէին գաւառին և Գլաձորի վանքը իբրև ուսումնավայր կը փայլէր։* (Frederik Cornwallis Connbeare. Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, London, 1913, *Թ. Ձեռագիրի* 14 (15411)։

1326*ին Կարապետ անուն քահանայ մը, Իգնատիոս վրդ.ի* Մեկնութիւն

Աւետարանի Ղուկասու *գործին օրինակողը* (*Ձեռ. Երուսաղէմի Թ.* 453 *Սաւալեանի ցուցակի*), *որ* «ունէր սա զբնակութիւն ի մեծ մայրաքաղաքին Անի, արդ վասն աւերման աշխարհին իւրեանց եւ առաւել վասն մայրաքաղաքին Անւոյ եկեալ բնակէր ի տեղիս յայս» *այսինքն, ինչպէս կը հասկցուի յիշատակարանին շարունակութենէն՝* «ի նորաշէն եւ յարքայանիստ քաղաքի Սուլթանիոյ ի թագաւորութեան Նետողաց ազգին Բուսայիտ Սուլթանին...»:

1331*ին Ներսէս Կրակցի* (*Թ.* 282 *ձեռագիր Երուսաղէմի*) *Ս. Յակոբեանց վանքին մէջ գրած է* Ճառընտիր *մը, որուն յիշատակարանին մէջ կ'աղաչէ՝* «չլինել մեղադիր սխալանաց եւ անյարմարութեան գրչութեանս զի կար մեր այս էր, նաեւ տեղիս յորում պանդխտիմ բազմադիմի ունելով, զվիշտս զաղմուկս զի ոչ քթել մի ական խաղաղի յաղմկէ եւ այլ որ քանի ի գրել սկսայ նա էառ դող եւ տաքութիւն եւ այլ բռնեցին թէ փախած ծառայ ես Սուլտանայ եւ հազար նորով խալըսեցայ» (*Տես Յիշատակարանին ամբողջութիւնը*, Սիոն, 1933 *էջ* 418—419)։

1336*ին վերոյիշեալ* (*էջ* 260) *Բասենի Աւետարանի գրիչը, որ ինչպէս տեսանք, կ'ըսէ թէ* «ի դառն եւ ի նեղ ժամանակի» *գրուած է*

1338*ին Գրիգոր քհ. կը գրչագրէ* «Մեկնութիւն կաթողիկեաց» *գիրքը* «ի դառն եւ յանբարի ժամանակիս ի դարս վերջին, յորում դադարեալ լինէր, ամենայն բարեգործութիւն ի մարդկային բնութիւնս, եւ ո՛չ գոյր սէր ընթեռնուլ զգիրս սուրբ կամ ի միտ առնուլ»: (*Արտ. Արք. Սիւրմէեան*, Մայր ցուցակ Երուսաղէմի, Ա. *էջ* 51)։ *Ընդարձակ յիշատակարանին շարունակութեան մէջ կան նաեւ սա նշանակելի տողերը.* «ի վրդովմանց ժամանակի» նեղ եւ ի դառն վայրկենի, ի յաւերման բազմաւինի, ի գերութեան մերում ցեղի, ամանակաց դառն անբարի եւ պաշարման խումբ խաւարի, յորում զրաւէ գործ բարի, ի փորձութեանց բազմադիմի եւ ո՛չ ոք է յազգս ուղղակի, որ ակամբ յուսով նայի, զի ամենից կամք հոլովի, հակամիտ է ընդ խաւարի, զի երկ եւ գործ համայն սեռի, ի պանարանս առաւրէի, ի նազումն խումբ ախի, եւ ի չգոյէ հիւթանիւթի, զի քան զկար եւս աւելի, դժրանք փորձից ազգի ազգի, զի սով եւ սուր սեռ ըստ սեռի եւս եւ խունայ Պարթեւ տոհմի եւ այս յաւետ գործ յիրաւի, եղեռնագործ ջուառի, զի պատաբաշի բարւոյն նախկի, բիւրապատիկ չար հատուցի, ըստ կամս աւարտման բելիարի...» (նոյն, *էջ* 52):

1340*ին Երզնկա ընդօրինակուած «Ճառընտիրի» գրիչը կը յայտնէ որ* «ի դառն եւ ի յանհանգիստ ժամանակիս գրեցաւ, զի վասն ծովացեալ մեղաց մերոց զաւրացեալ են ազգն Նետողաց ի վերայ քրիստոնէից, եւ ի սուր սուսերի մաշեն, եւ յաւարի հարկանեն, *և ի գերութիւն* վարեն զբազում գաւառս, եւ բազում եւ անիրաւ *հարկապահանջութեամբ* դատեն զամենեսեան, եւ այլ բազում չարիս լինի ի ժամանակիս մերում, զոր ոչ է կար մի ըստ միոջէ պատմել կամ ընդ գրով արկանել: Իսկ մեք ոչ ունելով հանգիստ, այսըր անդր շրջելով եւ փախստական լինելով, էաք որպէս զառինս ի մէջ գայլոց... (*Լ. Ս. Խաչիկեան*, ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, *Երևան*, 1950, *էջ* 323)։



1341*ին, Տայքի Վարդնչեն գիւղին մէջ գրուած* Աւետարանի *գրիչը, կը վկայէ որ.* «Եղեւ փախուստ ամենայն գաւառին, նա եւս քաղաքին միահամուռ՝ Քրիստոնէից եւ Իսմայելաց[ոց] եւ ամենայն բնակչացն ի ձեռաց Բ. իշխանաց, որոց ոչ է պարտ գրել զանուն նոցա: Եւ ամենայն ոք փախաւ եւ չուեցին յերկիր աւտար» (ԺԴ. Դարի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, էջ 327):

1343 *Թուականով* Ճարակնոցին *գրիչը, որ Երզնկայի Ս. Յակոբ Կապոսի վանքը ապրած է, կ'ըսէ թէ* «ի դառն ժամանակի էաք» *վասնզի* «երեկ Սուլէյմանն Շահն եւ գնաց ի Թաթարնին վերայ ի Սեբաստիայ, նայ Ասուծով յաղթեց Թաթարնան ու փախստեայ արար զնոսայ...»:

1346*ին, Բաբերդ գրուած* Աւետարանի *մը գրիչը, որուն ձեռագիրը նորոգուած է, կը յայտնէ.* «ի նեղ եւ ի դառն ժամանակիս, յորում մեր մայրաքաղաքն Թէոդուպոլիս անապատ եղեւ ի մարդոյ եւ յանասնոյ ի յազգէն Հագարու եւ Իսմայելացոցն: Նախ արեւելեանքն ամենայն, տուն Վրաց, որ յոլովք ի սուր սուսերի մաշեցան եւ այլք ի սովոյ մեռանէին, որ ոչ ոք կարէ պատմել զանցս աղէտիցս, զոր եկն ի վերայ ազգիս քրիստոնէից, եւ այն վասն առաւել յաճախ մեղաց մերոց: Որ բազում տանուտեարք եւ քահանայքս մուրողք տարաշխարհիկ շրջէին ի հայրենի գաւառաց» (ԺԴ. Դարերի Հայերէն Ձեռագրերի Յիշատակարաններ, էջ 346, Յ. *Մանանդեան*, 391)։

1352*ին, Աղբակ գաւառը՝ Խաշնոց գիւղը գրուած Աւետարանի մը յիշատակարանին գրիչը, իր ժամանակը կ'որակէ՝*

«Ի դառն եւ չար ժամանակիս,
Ի զօրանալ այլասեռ ազգիս
Ի փախստեան ժամանակիս»:

(*ՀԱ.* 1906, *էջ* 177 *կամ* Ցուցակ Ձեռագրաց Թաւրիզու, էջ 56):

*Դիտել կու տամ թէ այս ձեռագիրները միայն Մեծ Հայաստանի վիճակին մասին ակնարկներ պարունակող յիշատակարաններ ունեցողներն են։ Կան նաև նոյնքան և թերևս՝ աւելի մեծ թուով Կիլիկիոյ մէջ գրուած վկայութիւններ այս աշխարհամասին վրայ։*

*Այդ ձեռագիրները կը խօսին նաև դէպի Կիլիկիա, Մեմլուքներու արշաւանքներուն մասին։*

*Իլխանեանք տկարացած տեւական պատերազմներէ, ԺԴ. դարուն երկրորդ կէսին, ոչ միայն չկրցան պաշտպանել Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը, այլ նոյնիսկ չկրցան պահել իրենց իշխանութեան միութիւնը և պետութիւնը կազմալուծուեցաւ ու Հայաստանի զանազան մասերուն մէջ փոքրիկ իշխանութիւններ ծնունդ առին՝ Քուրդ և Թուրքմէն պէկերու իշխանութեան տակ։*

*Իսկ Փոքր Ասիոյ մէջ, նշանակելի դիրքի տիրացան Մոնկոլներու ցեղակից Թուրք Օսմանցիները, երբ Հայաստանի լեռնադաշտը բոլորովին անտէր վիճակ մը ունէր։*

*Այս քայքայումի օրերուն էր որ Լէնկ Թիմուր, Ասիական բարբարոսներու երրորդ հեղեղին՝ Եօզպէք Թաթարներու գլուխը անցած արշաւեց Արեւմուտք և տակն ու վրայ ըրաւ Մերձաւոր Արեւելքը։*

Գ.

# ԷՕՋՊԷՔ ԹԱԹԱՐՆԵՐՈՒ ՇՐՋԱՆ

## (1385 – 1468)

*Ասիական բարբարոսներու երրորդ մեծ հեղեղն ալ, ինչպէս տեսնուեցաւ, Հայաստանէն անցաւ, առաջին երկուքէն աւելի մեծ նախճիրներ գործելով։*

*Հայաստանի վրայ Մոնկոլներու տիրակալութիւնը վերջ գտած էր ԺԴ. դարու կէսերէն սկսեալ, երբ արդէն Հայ Բարձրաւանդակի վրայ կազմուած էին զանազան իշխանութիւններ, Թուրքմէն, Քիւրտ և այլ։ Անոնցմէ զօրաւորագոյնն ըլլալ կը թուի Ջելայիրեան Շէյխ Օվէյս Պահատուրի* (1356—1382) (*տես. վերը* 132) *իշխանութիւնը որ Արեւելեան Հայաստանի կը տիրէր և* 1358*ին Դաւրէժ քաղաքին տիրանալով, զայն մայրաքաղաք դարձուցած էր։*

### ՈՍԿԷ ՀՈՐԴԱՅԻ ՆՈՐ ԱՐՇԱՒԱՆՔԸ

*Մենք տեսանք թէ Դաւրէժը նպատակակէտ մըն էր Հիւսիսի Մոնկոլներուն, Ոսկէ Հորդայի վեհապետներուն համար, որոնք* 1262*էն սկսեալ Հարաւի Մոնկոլներէն Դաւրէժը և Ատրպատականը գրաւել փորձած էին, երկարատև պատերազմներով և ձախողած։*

*Իլխանեան պետութեան, Հայաստանը կորսնցնելէն ետք,* 1385*ին վերջին փորձ մըն ալ ըրաւ Ոսկէ Հորդայի վեհապետը՝ Թոխթամիշ, որ խիստ զօրացած էր* 1380*ին Մամայի յաղթանակով և* 1382*ին Մոսկուայի գրաւումով։ Այս նպատակով ան* 90,000 *զօրքով Տէրպէնտի և Շիրվանի ճամբով կը մտնէ Ատրպատական և պարտութեան կը մատնէ Ջէլայիրեան Ղայասէտտին Ահմէտ Պահատուր Վէլի Ամիրան,* (1382—1385 *և* 1404— 1409) *և կ'առաջանայ մինչև Դաւրէժ և կը պաշարէ Ջէլայիրեաններու հարուստ և ճոխ մայրաքաղաքը,* 1385 *Յունուար ամսուան սկիզբը։*

*Պարսիկ պատմիչ, Ջէյնէտտին, որդի Համտալլայի, կ'ըսէ թէ Ոսկէ Հորդայի բանակին հրամանատարները, Դաւրէժի Ամիրային իմացուցին որ իրենք պատրաստ են պաշարումը վերցնելու եթէ քաղաքացիները իբրև փրկանք վճարեն* 250 *ոսկի թուման։ Սակայն այս բանակցութիւններուն նպատակն էր քաղաքին պաշտպանները խաբխբել և թուլցնել անոնց դիմադրական ոգին։*

*Թոխթամիշի զօրքերը անակնկալ յարձակումով մը* 6 *Յունուար* 1385*ին քաղաք մտան և ութը օր անխնայ կոտորեցին՝ ԳԵՐԵՑԻՆ և թալանեցին քաղաքին անպաշտպան բնակչութիւնը։*

*Ոսկէ Հորդայի բանակներուն այս արշաւանքին ժամանակ, աւերածութեան ենթարկուեցան Դաւրէժէն զատ նաև Մարաղա, Մարանդ և Նախիջեւան քաղաքները իրենց շրջականերով և Սիւնեաց նահանգը։ Երկու հայ պատմագիրներ կը նկարագրեն այս արշաւանքը, մին՝ համառօտ և միւսը՝ քիչ մը աւելի ընդարձակ։*



*Առաջինը՝ Սամուէլ Անեցիի շարունակողը* (171), *կը գրէ թէ* «ի սոյն ամին (1386). Թոխամիշ խանն Ղրիմին՝ առաքեաց զօրս ի Պարսիկս, որ եկեալ մտին ի Թաւրէզ՝ Ցայտնութեան Ճրագալուցին, աւերեցին եւ գերեցին աւելի քան զի (= 20) բիւր (1) զայր եւ զկին, եւ անցին ընդ Նախճաւան եւ ընդ Սիւնիս եւ գնացին յաշխարհն իւրեանց»:

*Իսկ երկրորդը՝ Թովմա Մեծոփեցի* (13—14) *աւելի յստակ կերպով կ'ըսէ թէ* «Նախ քան զգալ Թամուրին ի յաշխարհս մեր, ի 885 (= 1386 Քր.ի) թուականին, թագաւորն հիւսիսոյ Թախթամիշ անուն՝ տէրն Ռուսաց եւ Ազախի, որ նստէր ի Սարայ, մերձ ի Ղրիմն, առաքեաց դեսպան առ Ղանն Թաւրիզու, Սուլտան Ահմատ (2) անուն՝ որդի Օւիսին (3) վասն սիրոյ եւ խաղաղութեան. իսկ նա չար եւ պիղծ գործովն խայտառակեաց զնա: Եւ դեսպանն գնացեալ առ նա՝ պատառեաց զօձիսն իւր առաջի նորա: Եւ նա բարկութեամբ լցեալ առ ինքն կոչեաց զիշխան մի Ճանիբէկ անուն եւ ետ բազում զօրս ի ձեռն նորա: Եւ նա դրամբն Ալանաց եւ Դարբանդի, եկեալ ի վերայ նորա: Եւ նա խոյս ետ ի նմանէ եւ եկն յՌստան, եւ անտի գնացեալ ի Պաղտատ: Եւ զօրքն հիւսիսոյ պաշարեցին զԹաւրէզ, եւ աւուրս եօթն պատերազմեալ առին զԹաւրէզ, զբազումս սպանին, զբազումս կողոպտեցին եւ յաւարի առին զամենայն գաւառս նորին: Եւ անտի չուեալ ի Նախճաւան քաղաք եւ զամենայն երկիրն Սիւնեաց՝ երկոտասան գաւառս աւերեցին, զբազումս սպանին եւ ԳԵՐԵՑԻՆ: Եւ էին յաւուրս ձմերայնոյ: Իսկ ի հրամանէն Աստուծոյ, յանկարծակի ձիւն սաստիկ եկն ի վերայ նոցա յաւուր Ցայտնութեան Տեառն մերոյ, եւ *բազումք զերծան ի գերութենէ նոցին։* Եւ զբազում մասն աւարին ի բաց ընկեցեալ՝ գնացին յաշխարհն իւրեանց նոյն ճանապարհաւն, ուստի եկեալ էին անասնաբարոյ ազգքն Թաթարաց որ Տօրտօղան կոչէին՝ խաղաղութիւն արարեալ երկրին Շամախւոյ, վասնզի բացին զդուռն Ալանաց խաղաղութեամբ ընդդէմ նոցին»:

*Ինչպէս կը տեսնուի՝ Թոխթամիշի զօրքերը Ատրպատականէն ԳԵՐԻ ՎԱՐԱԾ ԵՆ ԱՒԵԼԻ ՔԱՆ* 200,000 *ՀՈԳԻ, Սամուէլ Անեցիի շարունակողին նշանակած թիւով* (4), *ինչ որ կը հաստատէ նաև պարսիկ պատմագիր Ջէյնէտտինը։*

*Ոսկէ Հորդայի զօրքերը, բազմաթիւ քաղաքներ աւերելէ և բիւրաւոր բնակչութիւն ջարդելէ ետք, դաշտային Ղարապաղէն վերցուցած էին մեծ թիւով գերիներ։ Վրայ հասած Նախախնամական սաստիկ ցուրտի մը և ձիւնի մը շնորհիւ՝ այս գերիները մեծ մասով փրկուեցան և միայն սահմանը չանցած* (*հմմտ.* Թովմա Մեծոփեցի, 14 *և* Սամուէլ Անեցի Շար., 171, *Օրմանեան,* Ազգապատում, 1968, *Ց. Մանանդեան,* ՔՆՆ. Տես. Գ, 335—6)։

(1) Այսինքն 200,000 հոգի:

(2) Ջէլայիրեան Սուլթան Հիւսէյինի (1374—1382) յաջորդը, որ գահակալած է 1382էն 1410՝ ընդհատումով (1385—1404):

(3) Աւելի ծանօթ Ովէյս կամ Վէյի անունով (+ 1374):

(4) Դիւրահասկնալի է անշուշտ, որ այս գերիներու մեծամասնութիւնը ամբողջ Հայեր չէին, այլ կային նաեւ Պարսիկներ, Վրացիք, Աղուանք եւ իսլամ կարգ մը ցեղեր մարդիկ:

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎՐԱՅ

Ծիշդ Թախթամիշի արշաւանքի օրերուն (1386)՝ Հայաստանի սահմանները կը հասնէր Լէնկ Թիմուր, որ Ջինկիզի մեծ կայսրութիւնը վերականգնելու ձեռնարկած էր և կեդր. Ասիան և այլ ընդարձակ տարածութեամբ երկիրներ գրաւելէ և Պարսկաստանը նուաճելէ ետք, Հայաստան հասած էր նոյն 1386ին և անոր սահմաններէն ներս խուժած՝ ահարկու բանակով մը։ Գրաւուած առաջին վայրերէն մէկը եղաւ՝ Դաւրէժը՝ Հայաստանի և Վրաստանի վրայ գործադրած իր երեք արշաւանքներէն առաջինին իսկ ընթացքին, երբ ինչպէս տեսնուեցաւ, (վերը, 195), իր զօրքերը կը գրաւեն նաև Երնջակի և Շահապօնքի ամրոցները և կ'աւերեն Այրարատեան նահանգին արևելեան մասերը, մինչև Կարբի, Բջնի, Գառնի, Սուրմալի և Կողբ 1386ի աշնան, (Սամուէլ Անեցի, 171)։

Նոյն տարւոյ Նոյեմբեր 21ին Լէնկ Թիմուր կը գրաւէ նաև Վրաստանի մայրաքաղաքը՝ Թիֆլիսը և «կալեալ զթագաւորն Բագրատ տաճկացոյց եւ գնացեալ ձմերեաց ի Մուղան եւ ի գալ տարւոյն՝ յաւուրս Աւագ Զատկին (1337 գարուն) եկ ի Սիւնիս եւ սփռեալ տարածեցաւ» (Սամուէլ, 171)։ Լէնկ Թիմուր, Թախթամիշը պատուհասելու համար կ'անցնի նաև Կովկասեան լեռները և կ'արշաւէ Հիւսիսի Ղփչաքներու երկիրը և Հիւսիսային Կովկասը, Աժտերխանը և Ոսկէ Հորդայի խաներու մայրաքաղաքը՝ Սարայը եւս կը գրաւէ (1393)։ Յիշատակագիր մը կ'ըսէ թէ «ած եւս արար շատ աւեր եւ գերութիւն եւ յաղթեաց նոցա: Բայց եւ ինքն տկարացաւ զաւրաւքն ի սովոյ եւ անթիւ պակասեցան ի զաւրաց գոռոզին այնմիկ» (Երևանի Մատենադարանի 1401 թուականով, թ 5435, Մեկնութիւն Կաթողիկեից Թղթոց Սարգիս Շնորհալւոյ ձեռագիրը)։ Իր ահարկու ուժովը ահաբեկելէ ետք Ղփչաքները, Պարսկաստանի մէջ ծագած ապստամբութիւն մը զսպելու համար կը դառնայ ետ։

1394ին, ինչպէս յիշուեցաւ, առաւ Պաղտատը, ուր անլուր անգթութեան արարքներ գործեց և վերջ տուաւ Հուլաղուի հիմնած պետութեան, հետզհետէ տիրելէ ետք Պասրայի, Մուսուլի, Մերտինի և Ուրֆայի։ Լէնկ Թիմուր իր Բ. արշաւանքը կատարեց Հայաստանի վրայ, հիւսիսային Միջագետքէն, հոն մըտնելով Աղձնեաց նահանգէն և գրաւելով Ամիթը (= Տիարպէքիր), Մծբինը, Երզնկան, Աւնիկը և Կարսը (1394), վարուելով բոլոր այս տեղերուն հետ կատաղի վայրենիութեամբ։

Յաջորդ տարին (1395), կրկին Տերպենտէն անցաւ Կովկասի լեռները և կրկին մտաւ Ղփչաքի երկիրը ու անցաւ Տօն գետը և յառաջացաւ մինչև Մոսկուա, հետապնդելով Թախթամիշը, զոր Թերեք գետին մօտ (1395 Ապրիլ) մեծ պարտութեան մը մատնեց (վերը 201)։

Լէնկ Թիմուր 1396ին Սմրղանդ կը դառնայ, Հայաստանին և շրջակայ երկիրներուն կուսակալ նշանակելով իր որդին՝ Միրանշահը, որ նոյն տարին իսկ կ'արշաւէ Գարա Եուսուֆի դէմ և զայն կը հարկադրէ հեռանալ Հայաստանէն և ապաստանիլ Եգիպտոս։



Միրանշահ 1397ին Վանայ լիճի շրջակայքին կուսակալ կը նշանակէ Զաղատա Շէյխ Ահմէտը, որ առնուազն տասը տարի այդ շրջանակին խաղաղութիւնը ապահովեց։

Այս միջոցին Լէնկ Թիմուր Հնդկաստան կ'արշաւէր (1398) և կը դառնար Սմրղանդ (1399), ուրկէ նորէն կը սուրար Արևմուտք, վասնզի Օսմանցիք գրաւած էին Սեբաստիան, Մալաթիան և Երզնկան։ 1399—1400ին Լէնկ Թիմուր երրորդ արշաւն ըրաւ Հայաստան ու Վրաստան և ամէն կողմ աւարի ու աւերի մատնեց։

1400ին գրաւեց Սեբաստիան, Հալէպը և Դամասկոսը, և առաջ խաղաց մինչև Պաղեստին։

1401ին Մերտինը և Պաղտատը սուրի և հուրի մատնեց՝ իբրև ապըստամբ։

1402ին Օսմանեան իշխանութեան հետ պատերազմի բռնուեցաւ և Սեբաստիան գրաւելէն յետոյ՝ Անկիւրիոյ մէջ ճակատեցաւ Եըլտըրըմ Պայազիտի հետ և զայն գերի բռնեց։ 1403ին անգամ մըն ալ արշաւեց Վրաստան, որուն Արևմտեան մասերը և Ափխազիան ալ ենթարկուեցան իր սարսափներուն։

Վրաց Գէորգ Է. թագաւորը (1393—1407) ստիպուեցաւ գլուխ ծռել իր առջև և հաշտութիւն կնքել։

Այսպէս, հին աշխարհը իր ոտքերուն տակ սասանեցնելէ և ապա սարսափի մատնելէ ետք՝ Լէնկ Թիմուր մեռաւ 1405ին, թողլով ահարկու անուն մը։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

Մեր պատմագիրներէն Թովմա Մեծոբեցի, որ ժամանակակից էր Լէնկ Թիմուրի, արժանահաւատ է և անոր մասին իր տուած բոլոր տեղեկութիւնները շատ քիչ տարբերութիւն ունին արտաքին պատմիչներէն։ Մանաւանդ որպէս Հայաստանի մէջ Լէնկ Թիմուրի կատարած խժդժութեանց նկարագրութիւնը, զոր ան կու տայ, վաւերական է, քանի որ ան ականատես էր իր պատմածներուն.

Հայաստանի մէջ Լէնկ Թիմուրի կատարած սոսկալի կոտորածներուն, վայրագ սպանութիւններուն և գազանային ու անասնական արարքներուն շատ սեղմ մէկ պատկերը, որ վերը (էջ 193—209) ներկայացուած է, բաւական է ցոյց տալու համար թէ Չօղպէք-Թաթարներու այս կատաղի առաջնորդին կատարած նուաճումը և իր հրոսներու տիրակալութիւնը թէև բաղդատաբար կարճ եղած է տևողութեամբ, սակայն իր հետևանքներովը հանդիսացած է ամէնէն ծանրը և ամէնէն աղէտալին։

Լէնկ Թիմուր Հայաստանի մէջ ուղղակի և իր անմիջական հակակշռին տակ սարսափի իշխանութիւն մը ունեցաւ, որ հազիւ երկու տասնեակ տարիներ տևեց, սակայն իր կատարած քանդումները և անօրինակ վայրագութիւնները, դժբախտաբար, ընդօրինակուեցան իր մահէն վերջ Հայաստանի մէջ ծնունդ առնող եկուոր և բնիկ իշխանութիւններու կողմէ, որոնց ամէնէն նշանաւորն էր Իսկէնտէր (տես. վերը 216)։

Այնպէս որ, իր և իր յաջորդներուն իշխանութիւնը, որ կը տևէր մօտաւորապէս ութսուն տարի (1385—1468), նոյնքան և աւելի դժբախտ շրջան մը եղաւ Հայաստանի համար, որքան եղած էին Սելջուկներու և Մոնկոլներու տիրապետութեան շրջանները։

Այս շրջանին ալ մեր երկիրին մէջ կը տիրէին նոյն այն դժբախտ պայմանները և անտանելի տառապանքները, որոնք Հայերը կը հարկադրէին հեռանալու գունդագունդ իրենց հայրենի երկիրներէն և երթալ հաստատուելու օտար աշխարհներ։ Իսկ անոնք որ կը մնային իրենց հայրենի երկիրին կապուած, անոնք մասամբ կ'այլասերէին և իրենց ազգութենէն կը հեռանային։

## ՀԱՅԵՐՈՒ ՔՐԴԱՑՈՒՄԸ

Այսպէս, Լէնկ Թիմուրի մահուան յաջորդող խառնակութեան շրջանին, երբ աղէտալի սով մը պատահեցաւ (1431) և «մեռանէին ամենայն մարդիկք բնիկք եւ օտարականք» (Թով. Մեծ., 95), բնակիչներէն «ոմանք զձիս իւրեանց» առնելով «դիմեալ գնացին ի հեռաւոր աշխարհս ի յԵրզնկայն եւ ի Խարբերդ եւ ի յԱմիթ եւ ի յԱրղնի եւ ի Չմշկածագ» (Նոյն):

Եւ տեսնելով որ անոնք որ «անտէրունջ մնային՝ մեռանէին ի սաստկութենէ սովոյն եւ ոմանք գնացեալ խառնեցան ի Քուրդն Բաղիշոյ, Մշոյ եւ Սասնոյ, վասն աղքատութեան եւ սովոյն դառնութեան եղեալ ի հաւատոց դարձան յանհաւատութիւն աւելի քան զ500 ոգի եւ տրտմութիւն մեծ եղեւ Աստուծոյ եւ հրեշտակաց եւ մարդկան» (Նոյն):

Ասիկա եղաւ անշուշտ գէշ նախընթաց մը վասնզի եթէ արդէն իսկ նմանողութիւն մը չէր, այդ ակարհօգի Հայերը տագնապի դիմակալելու արիութիւնը չեն ունեցած և գացած միացած էին Քիւրդերուն, իսլամանալով, և այսպէս իրենց համար ապահովելով շարք մը առաւելութիւններ, որոնց մէջ գլխաւորն զէնք կրելու առաւելութիւնն էր։

Այսպէս, մեծ թիւով Հայեր քրիստոնէութենէն հրաժարելով կ'ստուարացնէին այլակրօն ուրիշ ժողովուրդ մը և Հայերու թիւը կը պակսեցնէին Հայաստանի մէջ։

Նշանակելի է նաև որ այս շրջանին, Քիւրդերը՝ որոնց բնակավայրը Հայաստանի հարաւակողմը Կորդուաց նահանգին մէջ էր, կը թափանցէին դէպի հիւսիս և իբրև ռազմիկ ժողովուրդ՝ տիրապետող դիրք կը գրաւէին և իշխանութիւններ կը կազմէին։

Անոնք՝ որպէս մշակոյթով աւելի ստորին աստիճանի վրայ գտնուող ժողովուրդները, խաղաղ աշխատանքի քիչ սէր ունէին՝ և Մեծն Տիգրանի օրերէն սկսեալ՝ մասնաւորապէս աւազակութեամբ և կողոպուտով կ'ապրէին։ Հայաստանի մէջ տարածուելով, իրենց բնական այս ունակութիւններով նեղեցին Հայերը, որոնք կը տառապէին անոնց դրացնութենէն և կը հեռանային։



## ՕՏԱՐ ՑԵՂԵՐՈՒ ՆԵՐԳԱՂԹԸ

Հայաստանի բնակչութեան զուտ հայեցի և քրիստոնեայ նկարագիրը խաթարեցին նաև, ինչպէս Մոնկոլներու շրջանին, նոյնպէս նաև Էօզպէք-Թաթարներու տիրապետութեան ատեն, այն գաղթաշարժերը՝ զորս կը կատարէին կեդր. Ասիոյ խաշնարած ցեղերը։ Ասոնք մասնաւորապէս արօտատեղիներ կ'որոնէին իրենց արջառներուն և գրաստներուն համար, և Հայաստանի մէջ կը գտնէին անոնց ընտրելագոյնները։

Հետևաբար այս շրջանին ևս, ինչպէս յիշատակուեցաւ, շարունակ այլացեղ ժողովուրդներ (վերը, 193) մեծ մասամբ ծագումով Կեդրոնական Ասիոյ Թուրքերէն եկած հաստատուած էին Հայաստանի մէջ։

Այսպէս, Հայերէն դատարկացած Հայաստանի Արևելեան մասը տեղաւորուած էին Պարսիկները և Արևմտեան կողմը՝ Թուրքմէնները։

Էօզպէք-Թաթարներու արշաւանքին ութսունամեայ (1385—1468) շրջանին այս ներգաղթող բարբարոսները ոտնակոխ և տակնուվրայ ըրին երկիրը, և անհանգիստ՝ խաղաղ բնակչութիւնը։

Լէնկ Թիմուրի Հայաստանի վրայ գործադրած երեք աղէտալի արշաւանքներէն ետք, ստեղծուած սոսկալի խառնակութիւնը երկիրը բոլորովին դժբախտ կացութեան մը մատնեց։

Էօզպէք-Թաթարները, հակառակ անոր որ իրենց ցեղակից Սելջուկները և Մոնկոլները ըրած էին ինչ որ պէտք էր Հայերու թիւը նուազեցնելու համար և արդէն հասած էին իրենց նպատակին, քրիստոնեայ բնակչութիւնը ա՛լ աւելի պակսեցնելու համար՝ իրենց նախորդներուն կիրարկած մեթոտները իրենք ևս շարունակեցին։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ԶԳԱԼԱՊԷՍ ՆՈՒԱԶՈՒՄԸ

Մասնաւորապէս Հայաստանի Հայ բնակչութեան նուազումը Թոխթամիշի և Լէնկ Թիմուրի արշաւանքներէն (1385—1386) և աւերածութիւններէն յետոյ կը հաստատէ Կլավիխոյ իր Ուղեգրութեան մէջ։ Ան իբրև դեսպան Սպանիոյ Հենրի Գ. թագաւորին՝ Սմրղանդ գացած է 1404ին՝ և այս առթիւ անցած՝ Հայաստանէն, Տրապիզոն-Երզնկա-Կարին-Սուրմալու-Պայազիտ-Մակու-Խոյ ուղեգիծով Դաւրէժ երթալով և դարձին Խոյ-Ալաշկերտ-Աւնիկ-Թորթում-Սպեր գիծով հասնելով Տրապիզոնի նաւահանգիստը։

Կլավիխոյի վկայութեամբ «Սուրմարիի բնակչութեան ստուար մեծամասնութիւնը նախապէս եղեր են Հայեր...: Բայց վերջին տարիներս շատ քրիստոնեաներ տեղահանուած են այս տեղէն եւ իսլամներն եկած հաստատուած են անոնց տեղը... Սուրմարիի մէջ տակաւին կը տեսնուին կարգ մը աչքառու եւ գեղեցիկ շէնքեր» (Ուղեգրութիւններ, հտ. Ա. 109):

Նոյն դեսպանը կը հաստատէ թէ տեսած է որ Թոխթամիշ երբ հասած է Ատրպատական և գրաւած Դաւրէժը, և Վերին Հայաստանի բոլոր շրջանները,

*կողոպտած է շատ մը քաղաքներ, աւերած՝ բազում բերդեր և իր բանակները քարուքանդ ըրած են գիւղեր, ինչպէս տեսած են ինքն եւ իրեն ընկերացողները երբ եկած են Սուրմարի քաղաքը։ Նոյն վիճակին մատնուած էին Սիւնիքի շրջանին գլխաւոր քաղաքը, ինչպէս նաեւ Հայաստանի միւս մասերը* (Ուղեգրութիւն, Ա. 154)։

*Ան կը պատմէ նաեւ թէ անցած են երկու օրեր* «բոլորովին անբնակ երկիրներէ»։ *Հայաստանի այս մասին մէջ, որ Խոյէն Ալաշկերտ կը տարածուի,* «բնակչութեան բացակայութեան պատճառն այն է, որ քրիստոնեաները կոտորուած են իրենց իշխանութիւնը ամբողջ Մեծ Հայաստանի մէջ. քաղաքացիական կռիւներու հետեւանքով, որ վերջերս տեղի ունեցած է արքայական եղբայրներու միջեւ» (Նոյն, էջ 138):

*Եւ ինչպէս Կլավիխօ կը բացատրէ երեւոյթը՝* «իսլամները եկեր եւ գրաւեր էին ամբողջ Հայաստանը, որովհետեւ երբ անոնք տիրապետեր էին քաղաքներուն, մեռցուցեր էին մեծ մասով քրիստոնեայ Հայերը, որոնք բնիկներ էին, եւ յետոյ գրաւեր էին անոնց տեղերը» (Ուղեգրութիւններ, Ա. հտ. 139):

*Այսպէս, Լէնկ Թիմուրի շրջանին, Հայաստանի մէջ, Հայ ժողովուրդին համեմատութիւնը այլացեղ և այլակրօն ժողովուրդներու հետ, մեծապէս կը փոխուէր և Հայերը փոքրամասնութիւն կը դառնային, ոչ թէ միայն Հայերու հաւատափոխութեամբ, որ ըստ արեւելեան ըմբռնումներու, նաև ազգափոխութեան կը վերածուէր,— քանի հայը իսլամանալով կը դադրէր հայ ըլլալէ և կը դառնար Թուրք կամ Քիւրդ։ Այս կերպով կը փոխուէր բնակչութեան բաղկացութիւնը։*

ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ ՏԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ

*Ուրիշ կերպով ալ այս փոփոխութիւնը կը չեչտուէր, վասնզի Լէնկ Թիմուրի արշաւանքներուն ժամանակ, Հայաստանի բնակչութեան բաղկացուցիչ տարրերուն կազմութեան մէջ տեղի կ'ունենային նոր փոփոխութիւններ, իբրև հետեւանք Էօզպէք Թաթարներու կիրարկած մէկ ուրիշ միջոցին, որ էր բնակչութեան զանգուածային տեղափոխութիւնը տեղէ տեղ։*

*Ինչպէս ծանօթ է, Էօզպէք Թաթարները անթիւ և անհամար գերիներ տարած են Կեդր. Ասիա և մասնաւորապէս Սմրղանդ։*

*Իսկ անոնց տեղ միեւնոյն ժամանակ տեղափոխած են Թուրք ցեղեր, Խորասանէն՝ Ղարապաղ ուր վերաշինած են — երբեմն կործանած — Բայլական քաղաքը* (Յ. *Մանանդեան,* ՔՆՆ. Տես., Գ. 359)։ *Ըստ Իպն Արաբշահի, Լէնկ Թիմուրի սովորութիւնն էր փոխել զօրքին և ժողովուրդին բնակութեան վայրերը* (Յ. *Մանանդեան,* Նոյն)։

*Իպն Արաբշահ կ'ըսէ թէ* «երբ ան կը տիրէր որեւէ քաղաքի մը՝ անպատճառ զօրքին մէկ մասը հոն կը հաստատէր եւ այդ երկիրին մէջ կը թողուր, իսկ այդ աշխարհի մարդոց մէկ մասը կը փոխադրէր եւ կը բնակեցնէր ուրիշ երկրի մէջ, արեւելեան բնակիչները կը տանէր արեւմուտք, եւ արեւմտեան ժողովուրդները՝ արեւելք, հարաւայինները՝ հիւսիս եւ հիւսիսայինները՝ հարաւ» (Իպն Արաբշահ, էջ 189, Յ *Մանանդեան,* ՔՆՆ. Տես., Գ. 359—360)։



ՀԵՌՈՒՆ ՏԱՐՈՒԱԾ ԳԵՐԻՆԵՐ

*Այս տեղափոխութեանց մաս կը կազմէին նաև գերեվարութիւնները, զորս այս ասիական բարբարոս ժողովուրդները կը գործադրէին նուաճուած երկիրներու բնակչութիւնը իբրեւ պատերազմի աւար գերի տանելով իրենց հեռաւոր երկիրները։*

*Այսպէս, շրջանին սկիզբը, Էօզպէք Թաթարներու Կեդր. Ասիայէն Հայաստան համնելէն առաջ, Մոնկոլ կայսրութեան հեռաւոր հիւսիսի ճիւղէն, Ոսկէ Հորդայի վեհապետը՝ Թոխթամիշ Խան, երբ 1385ին Հայաստան արշաւեց հիւսիսէն և գրաւեց Դաւրէժը, աւերեց Մարաղան, Մարանդ և Նախիջեւան քաղաքները և Սիւնեաց նահանգը, իր մոնկոլածին զօրքերը* «զբազումս սպանին եւ ԳԵՐԵՑԻՆ» (Թովմ. Մեծ. 14):

*Սակայն, ինչպէս յիշուեցաւ, սստտկաշունչ ձմեռուան շնորհիւ այդ* 200,000 *գերիներուն եթէ ոչ ամբողջը, գէթ մեծագոյն մասը փրկուեցաւ։*

*Նոյն տարին* (1386), *Լէնկ Թիմուր իր առաջին արշաւանքը կը կատարէ դէպի Ատրպատական և կը գրաւէ Դաւրէժը և անկէ կ'անցնի Վրաստան, կ'առաջանայ մինչև Թիֆլիս, ի մէջ այլոց կը գրաւէ Սիւնիքի Երնջակ և Շահապօնք ամրոցները և կ'աւերէ Այրարատեան նահանգին արեւմտեան կողմերը, մինչեւ Կարբի, Բջնի, Գառնի, Սուրմարի և Կողբ։*

*Իսկ Վրաստանի մայրաքաղաքը, Թիֆլիս կը գրաւուի* 21 *Նոյեմ.* 1386*ին* (*վերը,* 196—7)։ *Անտարակուսելի է գրեթէ, որ Լէնկ Թիմուրի զօրքերը, բոլոր այս վայրերուն մէջ գերիներ առած են, ինչպէս Թովմա Մեծոփեցի* (17—18), *Սուրմալիի գրաւման առթիւ որոշապէս կ'ըսէ.* «ԳԵՐԵԱՑ զքաղաքն եւ զամենայն երջակայ գեղորայսն»:

*Նոյնպէս Այրարատեան նահանգին Կարբի և Կոտայք գաւառներու նուաճումը պատմած ատեն կ'ըսէ թէ.* «խսարեալ [= *պաշարեալ*] զամուրն Բջնոյն եառ զնա եւ սպան զեպիսկոպոս աշխարհին Տէր Վանական...: Եւ զայլ ամենայն բազմութիւն հաւատացելոց չարչարէին տանջանօք, սովով, սրով, ԳԵՐՈՒԹԵԱՄԲ անտանելի չարչարանօք եւ անագոյն բարուք, անմարդաձայն արարին զամենայն գաւառն Հայոց» (Թով. Մեծ. 13—14): ... Եւ առեալ զառ եւ զաւար եւ զԳԵՐԻՆ անթիւ, զոր ոչ ոք կարէ ճառել զաղէտն եւ դառնութիւն մերոյ ազգին»: (Թովմա Մեծոփեցի, 18—19):

*Իսկ Թիֆլիսի գրաւումին վրայ խօսած ատեն կ'ըսէ թէ* «եառ զնա եւ գերեաց անթիւ եւ անհամար» (Թով. Մեծ, 19), *ջարդածներէն զատ, որոնք աւելի էին քան ողջ մնացողները* (*վերը,* 197)։

*Վրաց Բագարատ թագաւորը կ'իսլամացնէ և իր հետը կը տանի Մուղան։*

*Գրիգոր Խլաթեցիի համաձայն* (*վերը* 198)՝ *Հայաստանի իշխաններէն շատերն ալ գերի տարած է։*

1387 *Սեպտեմբեր 5ին երբ Վանը գրաւեց,* «հրաման եղեւ ի չար բռնաւորէն զկանայս եւ զմանկունս առնուլ ի ԳԵՐՈՒԹԻՒՆ եւ զհաւատացեալս եւ զանհաւատս ի բերդէն ի վայր ընկենուլ» (*Թովմա Մեծ.* 30)։

*Թովմա Մեծոփեցի Հայաստանի վրայ Լէնկ Թիմուրի առաջին արշաւին պատմութիւնը կը վերջացնէ գրելով թէ* «երթեալ դարձեալ ուստի եկեալ էր

գերութեամբ եւ աւարաւ» (*վերը՝* 199-200) *և կ'աւաղէ երկիրին աւերումը՝ գոչելով.* «Աւա՜ղ եւ եղուկ ամենայն Հայոցս զի աւերեցաւ ամենայն երկիրս...» չարչարանօք, սպանմամբ եւ ԳԵՐՈՒԹԵԱՄԲ» (*Թով. Մեծ.* 32 *և վերը* 200)։

1395*ին իր Բ. արշաւանքին ատեն Լէնկ Թիմուրի զօրքերը գրաւեցին Հիւսիսային Միջագետքը և Ամիթը (Տիարպէքիր) և* «մեծամեծսն հրով եւ սրով անասելի եւ անպատմելի չարչարանօք սպանին եւ զփոքունսն զայր եւ զկին ԳԵՐԵՑԻՆ զամենայն յաշխարհս իւրեանց» (Թով. Մեծոփեցի 45) *և աւերեց Մերտինը,* «աւերեաց զքաղաքն եւ հնգետասան գիւղ ուղղափառ եւ ճշմարիտ քրիստոնեայս ԳԵՐԵԱՑ 3000 ՏՈՒՆ ԵՒ ԱՅԼՔՆ ԱՄԵՆԱՅՆ 7500 ԱՄԵՆԵՔԵԱՆ ԳԵՐԵՑԱՆ.....» (Թովմա Մեծոփեցի 45)։

*Ասոնց հետ նաև Մերտինի մերձաւոր չորս գիւղերը*(1) *Արևորդի կուապաշտներու՝ հաւանօրէն հայազգի, կործանեց և գերի տարաւ (վերը* 201)։ *Թովմա Մեծոփեցի ապա նկարագրած է Երզնկայի, Բասենի, Անիկ ամրոցի, Սուրմարիի, Կողբի, Արճէշի մէջ Լէնկ Թիմուրին նախճիրները, բայց գերեվարութեան խօսք չ'ըներ, այլ ընդհակառակը,* «Ողորմութեամբն Աստուծոյ գերին ազատեցաւ ի ձեռանց նոցին» *կը գրէ, առանց ըսելու թէ ի՞նչպէս։*

*Միայն, ինչպէս վերը* (201) *պատմուեցաւ, Լէնկ Թիմուրի բացակայութեան երբ Գարագոյունլու Գարա Եուսուֆ և Բաղէշի Իպրահիմ Ամիրա զինակցաբար կը յարձակին Լէնկ Թիմուրի Արճէշի Սահանդ իշխանին և Ոստանի Եզտին Քուրդ Ամիրային վրայ և Եզտին կը համակերպի հաշտութիւն կնքելու, Աթալմիշ Բասենի Թաթար իշխանը* «ԳԵՐԵԱՑ ԶԳԻՒՂՆ Աղի ի մուտս արեւուն, եւ դարձաւ ի բնակութիւն իւր» (Թ. Մեծ., 48)։

*Տեղական այդ խլրտող իշխանները սանձուեցան, երբ* 1396*ին Լէնկ Թիմուր վերերեւցաւ Հայաստանի մէջ։ Մեծոփեցի կ'ըսէ (էջ* 48), *թէ* «աստ էր տեսանել զաղէտս տարակուսանաց եւ զահ եւ զերկիւղ անօրինաց, զի 15,000 մարդ յԵրիշատ գեղ հասեալ, մեր փախուցեալ՝ ի լեառն եւ ի ձորս դիմեցաք։ Եւ գիտացեալ անօրինացն՝ 12 օր զլեառն շրջապատեալ իբրեւ զանասունս երէոց որսացին եւ կալան զամենեսին. զոմանս սպանին, զոմանս ԳԵՐԵՑԻՆ եւ զաշխարհս մեր հրոյ ճարակ եսուն»։

1399*ին, Վրաստանի վրայ արշաւած ատեն, առած է աւելի քան* 60,000 *գերիներ, (վերը,* 203—4), *որոնք անշուշտ միայն Վրացիներ չէին, վասնզի Վրաստանի մէջ կ'ապրէին մեծ թիւով Հայեր ալ։ Տեսանք (էջ* 204) *որ յիշատակագիրը կ'ըսէր թէ* «արս կոտորեաց, ԶՈՐՈՑ ԶԿԱՆԱՅՍ ԵՒ ԶՏՂԱՅՍ ԳԵՐԻ ԽԱՂԱՑՈՅՑ, ԱՆԹԻՒՍ ԵՒ ԱՆՀԱՄԱՐՍ»։ *Ասոնք* «հետիոտն տանէին» (*վերը,* 204)։

1400*ին, երբ Սուլթան Պայազիտի դէմ պատերազմի սկսաւ, առաջին վայրը որ գրաւեց՝ Սեբաստիան էր (վերը՝* 204), *ուր իր ուրիշ անողորմ անգըթութեանց կարգին* «հրամանն» *տայ* «զօրաց իւրոց զի ԶԱՂՔԱՏՍՆ ԳԵՐԻ առցին եւ զմեծատունսն չարչարեսցին եւ զթագուն գանձս նոցա առցին...»։ (Թ. Մեծ., 65)։

(1) Թովմա Մեծոփեցի (45) անուններ կու տայ այդ գիւղերուն, որոնք են Շօլ, Շըմռախ, Սաճարի եւ Մառաօփ։ Պատմագիրը կ'ըսէ թէ այդ արեւորդիները «պարծեալ Սատանայի հնարիւք բազմացեալ ի Մերտին եւ ի Ամիթ»։



1402*ին, երբ Էնկիւրիի ճակատամարտը շահեցաւ, կոխոտեց բոլոր Փոքր Ասիան և* «ԳԵՐԻ ԷԱՌ անթիւ քան զաստեղս երկնից եւ քան զաւազ ծովու, մինչ զի 60,000 տուն Ղարա Թաթար անուն տամբ եւ որդւովք ի Խորասան ԳԵՐԻ գնաց» (Թ. Մեծ, էջ 66 *կամ վերը,* 205)։

*Նոյնը ըրաւ* 1405*ին նաև Վասպուրականի մէջ, ուր* «յղեաց զօրս բազումս, ի վերին կողմանէ եւ ըմբռնեալ առին զամենայն բազմութիւն քրիստոնէական զնդին, զմեծամեծսն սպանանէին եւ զփոքունսն ԳԵՐԻ ԱՌԵԱԼ ՏԱՆԷԻՆ ԱՒԵԼԻ ՔԱՆ զ60,000 ոգի»։ *Վրաստանը հուրի, սուրի և աւերումի մատնելէ վերջ՝* «զգերիսն առեալ հասուցին յաշխարհս մեր մերկ եւ բոկիկ, քաղցած եւ ծարաւած, ամէն հինգ Զաղաթայ 20 գերի ունելով» (Թով. Մեծ., 67)։

*Մեծոփեցի այս առթիւ կ'ըսէ թէ* «բազում այն էր որ ի ճանապարհին մեռանէին, եւ նոքա քար առեալ ջախջախէին զգլուխս նոցա, զի մի կենդանի մնասցեն եւ ինքեանք թողեալ գնացին ի ճանապարհն իւրեանց։ Զոր տեսաք աչօք մերովք եւ լուաք եւ վայ եւ եղուկն բարձրացաւ ի վերայ քրիստոնէից ազգիս, տեսանէաք ԶԳԵՐԻՍՆ եւ օգնել ոչ կարէաք, այլ հեղձամրղձուկ լեալ՝ ողբով եւ լալով խոյս տուեալ փախչէաք ի նոցանէ» (Թ. Մեծոփեցի, 67)։

*Եւ ի վերջոյ կ'աւելցնէ թէ* «առեալ գնացին ի Խորասան» (Թովմա Մեծոփեցի, 67 *և վերը՝* 205)։

## ԼԷՆԿ ԹԻՄՈՒՐԷՆ ԵՏՔ ԳԵՐԵՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Լէնկ Թիմուրի մահէն* (1405) *ետք, Հայաստանի մէջ ստեղծուեցաւ տարբեր կացութիւն։ Հօզպէք Թաթար աշխարհակալին ուժին առջեւ ընկճուած իշխանաւորները ամէնքն ալ վերստին իրենց կորսուած երկիրներուն վերատիրանալու փորձ ըրին։*

*Ասոնցմէ ամէնէն երևելին Գարա Եուսուֆ քիւրտը, որ Հայաստանէն փախած և Եգիպտոս ապաստանած էր, յաջողեցաւ վերականգնել իր պետութիւնը եւ կրկին տիրապետել Հայաստանի մեծագոյն մասին, ինչպէս նաեւ Հիւսիսային Միջագետքի, Ատրպատականի եւ Իրաքի։*

*Ան պարտաւորուեցաւ սակայն պայքարիլ Լէնկ Թիմուրի որդւոյն եւ յաջորդին Շահ-Ռուխի դէմ. մանաւորապէս Եուսուֆի որդին՝ Իսկէնտէր, որ* «Շահի Արմէն» *տիտղոսը կը գործածէր,* 1421*էն* 1437, 17 *տարի կռուած է անընկճելի կորովով մը, ո՛չ միայն Շահ-Ռուխի, այլ նաեւ Ագգոյունլու Օսմանի կամ Օթմանի դէմ։*

*Այս երկարատեւ ու վայրագ պատերազմներուն միջոցին, բազմաթիւ Հայեր հեռացած են Հայաստանէն՝ չկրնալով տոկալ շարունակուող աղէտներուն, որոնցմէ մէկն ալ գերեվարութիւնն էր։ Այսպէս, կը յիշուի* (Թ. Մեծ., 91) *որ Շահ-Ռուխ իր հօրը պէս* գերիներ *տարած է Հայաստանէն՝* Խորասան *թերեւս նոյն այն նպատակով որ իր հօրն ալ էր։*

*Բայց իր հակառակորդը՝ Գարա Եուսուֆ* 1416*ին՝ կը տեսնենք որ Վրաստանի վրայ կը յարձակի եւ ինքն ալ գերիներ կ'առնէ։ Եւ որովհետեւ Եուսուֆ իր առած գերիները ուրիշ տեղ փոխադրելու մէջ իրեն ի նպաստ նպա-*

*տակ մը չէր կրնար հետապնդել, ուստի գերեվարութիւնը միջոց մը կ'ընէ դրամ հայթայթելու կամ կողոպուտի:*

*Երբ կը տեսնէ որ Քրիստոնեաները փութաջան են իրենց հաւատակից գերիները ազատելու, փրկանք տալով՝ Վրաստան* «զամենայն աշխարհն զերի առեալ զկին եւ զտղայ՝ զերութեամբ լցին զամենայն աշխարհն Հայկազեան սեռի» (Թով. Մեծ., 75): *Հայերը անոնց ողբագին վիճակը,* «զկսկիծ լալոյ եւ ողբոյ հարցն եւ մարցն, որդւոցն եւ դստերացն» *տեսնելով, կը յուզուէին, եւ զանոնք ազատելու համար ամէն զոհողութիւն կ'ընէին, վասնզի* «տեսանողքն ոչ կարէին ժուժկալել, կանայք զզարդարանս իւրեանց կողոպտէին, արք՝ զանասունս, քահանայք եւ կրօնաւորք զաղքատութիւնս իւրեանց ցուցին ում ոչխարիկ եւ ում տուարիկ կայր՝ տային եւ գնէին: Եւ տեսեալ անօրհնացն զյօժարութիւն նոցին՝ զամեն զերին հանեցին ի 10 000 եւ ի 20,000. մինչ զի քահանայի միոջ յԱրճէշ եւ յԱրծկէ երկերիւր երեսուն հազար դահեկան գնէին» (Թով. Մեծ., 78):

*Ուրեմն գերիները կը շահագործուէին եւ դրամ ձեռք բերելու իբրեւ միջոց կը ծառայէին:*

*Ապահովաբար, նոյն չարաշահութեան նպատակով մեծ թիւով ԳԵՐԻՆԵՐ վերցուցած է Արծկէէն եւ Վանէն՝* 1430 *Մայիսին՝ Իսկէնտէր, Եուսուֆի որդին* (Թով. Մեծ. 93): *Չէ յիշատակուած թէ Իսկէնտէր ո՞ւր տարած է զանոնք:*

*Իսկ արեւմուտքէն, այսինքն Սեբաստիայէն, Տիվրիկէն եւ Խարբերդէն վերցուցած իր բազմաթիւ գերիները փոխադրած է Այրարատ եւ Սիւնիք,* (Թով. Մեծ. 104), *թերեւս իր հպատակներուն թիւը շատցնելու համար, կամ թերեւս անոնց ազատագրութեան համար փրկագին վճարողներ ակնկալելով:*

*Գերեվարութիւնը իբրև տեսակ մը հարկապահանջութիւն, գործադրուած են Իսկէնտէրի և Շահ-Ռուխի պատերազմներուն միջոցին տեղացի բռնակալ տիրապետներէն ևս: Այս մարզին մէջ նշանաւոր են Ամուկի տէր Փիր Ալի և իր մարդիկը, որոնց անզգամութիւնները թուած ատեն՝ Թովմա Մեծոփեցի* (111) *կ'ըսէ թէ* «զամենայն գաւառս այնքան կողոպտեցին եւ ի յընչից մերկացուցին մինչ զի ամենայն քրիստոնեայք որ այժմ կան մեծամեծք եւ փոքունք խոտին զինքեանս եւ ոչ ինչ համարին, առանց ամօթոյ խոտով ծածկեն զինքեանս, եւ մերկ եւ բոկիկ շրջին իբրեւ զանասունս:

Եւ զկանայս հաւատացելոցն որք մեռեալ էին ի կղզին Լիմն կոչեցեալ, աւելի քան զերկու եւ զերեք հարիւր թանկաց վաճառեաց ի վերայ աղքատացն մերոց որ մին դրամի տէր ոչ գոյր: Եւ այն իշխանն որ կործանեաց զաշխարհս մեր՝ այժմ տէր եւ իշխան է կարգեալ ի վերայ աշխարհիս մեր, վասն մեղաց մերոց պատուհասի եւ ի բարկութենէն Աստուծոյ. եւ այժմ ձգեալ է զամենայն հաւատացեալս ի ներքոյ հարկապահանջութեան՝ մինչ զի ամենայն մարդագլուխ 40 թանկայ առնուն թո՛ղ, զբահրայ(1) եւ զչարեք(2) ի ծերոց եւ ի տղայոց, յորբոց եւ յայրեաց, ի կուրաց, յաղքատաց եւ ի

(1) Արմտեաց տասանորդը այսպէս կը կոչուէր ըստ Տահճազարեանի: (Թ: Մեծ. 134):

(2) Չորրորդ մասն երկիրին բերքերուն:



տնանկաց: Եւ ամենեքեան կենդանի մեռեալք եւ սովեալ կան»: (Թ. Մեծ. 111):

*Այս մշտատեւ կռիւի և կողոպուտներու ու կեղեքումներու աղէտալի ժամանակամիջոցը վերջ կը գտնէ Իսկէնտէրի մահով* (1435):

## ՋԻՀԱՆ ՇԱՀԻ ԳԵՐԻՎԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Իր որդին Ջիհան Շահ* (1437—1467) *կը շարունակէ իր հօրը նախճիրները, մինչեւ որ կը ճանչնայ Շահ-Ռուխի գերիշխանութիւնը և Շահ-Ռուխ փոխադարձաբար կը ճանչնայ անոր իշխանութիւնը իբրև Հայոց թագաւոր (Շահի Արմէն) և աւատապետ բազմաթիւ ամիրաներու, որոնք Հայաստանի մէջ հաստատուած էին:*

*Այս ժամանակամիջոցին* (1440) *Ջիհան Շահ ալ գործադրած է գերեվարութիւն մը* (Թովմա Մեծոփեցի, 122), *որ գուցէ նոյնպէս դրամ հայթայթելու նպատակով կատարած է:*

*Պատմագիրը դառնութեամբ կը յայտնէ թէ* «Երկիր եւ աշխարհ ամենայն լցաւ գերեօք, լալով, սգով եւ կոծով, մանաւանդ միջասահման գաւառս մեր հայրենի, զի ամենեքեան փախուցեալք էին եւ անդ երթեալք, այնպիսի փորձանաց եւ որոգայթից դիպեցան»:

*Եւ քիչ յետոյ կը յարէ* «ի քաղաքիս մեր տեսաք զի ամենայն զերին ի 1000 թանկայ վաճառէին եւ այնքան յաղքատութիւն անկեալ կային ամենայն ազգս, քաղաք եւ գիւղ, վանք եւ ագարակ զի մին քաղաք եւ մին գիւղ զերի գնել ոչ կարէ վասն դառն աղքատութեան տառապանաց այլ սուգ եւ ողբ ի բերան առեալ՝ աղիողորմ դառնութեամբ եւ լալագին հեծեծանօք լամք եւ ողբամք զկորուստ մեր...» (Թ. Մեծոփեցի, էջ 122):

*Բարեբախտաբար Ջիհան Շահ — Շահ Ռուխ հաշտեցողութիւնը գէթ ժամանակաւոր կերպով վերջ կու տար պատերազմներուն և գերեվարութիւններուն, որոնք կը լեցնեն այս ասիական բարբարոսներու շրջանը:*

## ՏՈՒՐՔԵՐ ԵՒ ՀԱՐԿԵՐ

*Խօզպէք Թաթարները՝ ինչպէս կը տեսնուի՝ իբրեւ չարագործ ոչինչով պակաս են զիրենք կանխող Սելջուկներէն և Մոնկոլներէն: Անոնք ևս գործադրած են բոլոր կեղեքումները և չարիքները, զորս նախորդները հասցուցած էին Հայերուն, բացի մէկէն: Որքան որ կարելի է հետեւցնել ժամանակակից պատմիչներու գրածներէն՝ Խօզպէք Թաթարները «արեան տուրք» չեն պահանջած Հայերէն, զինուորական աջակցութեան անուան տակ:*

*Տեսանք քիչ վերը որ Թաթարները, ինչպէս և իրենց ստորադասները, թէ՛ տասանորդը և թէ՛ քառորդը տուրք կը ստանային, ո՛վ գիտէ ի՛նչ եղանակով և ի՛նչ կեղեքումներով, ինչպէս կ'ակնարկէ Թովմա Մեծոփեցի* (111): *վասնզի, ինչպէս յայտնի է, հարկապահանջութիւնը իրենց համար խիստ կենսական էր և անկէ բնաւ չէին կրնար հրաժարիլ: Եւ ի գործ կը դնէին զայն՝ ապահովաբար աւելի գէշ պայմաններու մէջ, առանց որեւէ օրէնքի, քմահաճօրէն: Եւ ինչպէս ըսի* (վերը՝ 207), *յիշատակարաններ կը վկայեն թէ*

տուրքերով չափազանց կեղեքուած էր Հայաստանի բնակչութիւնը, նոյնքան և աւելի սաստիկ քան Մոնկոլներու շրջանին, ուր գոնէ օրէնք մը և մարդահամար մը կամ վիճակագրութիւն մը, աւելի կամ նուազ խղճմտութեամբ նկատի առնուելով, հիմ կը ծառայէր հարկապահանջութեան։

Թովմա Մեծոփեցի (73) կը պատմէ թէ Ջելայիրեան Ղայասէտտին Ահմէտ Պահատուր (1382-1386 և 1404—1409), Ատրպատականի Սուլթանը, Լէնկ Թիմուրի մահէն վերջ, երկրորդ անգամ իշխանութեան գալէն ետք, «եղեւ ի նոյն ժամանակս խաղաղութիւն խնամօքն Աստուծոյ ամենայն աշխարհիս Վրաց եւ Աղվանից, եւ շինութիւն ամենայն աշխարհիս, մինչ զի յԱրճիշու մինչ ի գաւառն Այրարատեան մարդիկ ի յաւեր ոչ բնակէին, այլ ի շէնս բնակէին եւ ԹԷՊԷՏ ՀԱՐԿԱՊԱՀԱՆՋՈՒԹԻՒՆՆ ԲԱԶՈՒՄ էր, սակայն խաղաղութիւնն առաւել խնդութեան էր։ Եւ ծաղկեալ էին եկեղեցիք քահանայիւք եւ սարկաւագօք, եւ մարդիկ որք յաւուրս Չաղաթային ի հաւատոյ ուրացեալք էին, եկին ի հաւատս...»

1449ին «ի թագաւորութեան Ջհանշին, որ էր որդի Ուսուֆին եւ եղբայր Սքանտարին՝ որ տիրեաց երկու թագաւորութեան Հայոց եւ Ասորոց եւ էր խաղաղասէր, բայց ՀԱՐԿԱՊԱՀԱՆՋՈՒԹԻՒՆ ԲՈՒՌՆ ԷՐ ի վերայ քրիստոնէից» (*Մայր Ցուցակ Վեննետիկի Մխիթարեանց, էջ* 691)։

*Ուրեմն, որքան ալ կացութիւնը երբեմն բարելաւուէր և տանելի պայմաններ ստեղծուէին, դարձեալ հարկապահանջութիւնը կը մնար «բազում» և «բռուն»։*

## ԱՒԵՐԱԾՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԱՆԼՈՒՐ ԱՆԳԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*Իսկ աւերածութիւնները, զորս այնքան սաստկութեամբ գործադրած էին Մոնկոլները, շարունակուած են նաև Լէնկ Թիմուրի երեք արշաւանքներուն ատեն, ինչպէս նաև անոր յաջորդող ժամանակաշրջանին (վերը,* 199—200)։ *Ցագուրդ տալով իրենց բնազդին, այս ասիական բարբարոսները իրենց ոտք կոխած տեղը քանդելու մղուած են։*

*Թովմա Մեծոփեցիի և Սամուէլ Անեցիի շարունակողին տուած տեղեկութիւններէն զատ կան բազմաթիւ հայ ձեռագիրներու յիշատակարանները, որոնք կը հաստատեն այս հրէշին գործած աւերածութիւնները։ Ուշագրաւ են մասնաւորապէս Երևանի Մատենադարանին (թիւ* 5135) *և Երուսաղէմի վանքին (թ.* 1801) *ձեռագիրները (վերջինը անտիպ), որոնք բաւական յաւելուածական տեղեկութիւններ կու տան։ Առաջին ձեռագիրէն գրիչը կ'ըսէ թէ Լէնկ Թիմուր* 1385*ին*, «ել ի վերայ Պարսից աշխարհին եւ աւերեալ գերեաց զՊարոկասան եւ Հայաստան զամս Բ (2), մինչեւ ի յաւուրս ՊԼԶ (=1387) ամի, յորում եղեն շատ աւերք, արեանց բազմաց հեղումն, եւ սովք եւ սասանութիւնք անթիւք: Եւ դարձեալ ի ՊԽԲ (=1393), ամին եկ եւ էջ ի Բաբելոն եւ աւերեալ զամենայն Ասորեստան, եկ յերկիրս Հայոց, կրկին աւերմամբ եւ գերելով անց ընդ Պահակն Հոնաց եւ գնաց բարկութեամբ ի վերայ



արքային Հոնաց եւ անդ եւս արար շատ աւեր եւ գերութիւն եւ յաղթեաց նոցա:

*Յիշատակարանը Լէնկ Թիմուրի դէպի ուրիշ վայրեր արշաւանքները պատմելէ յետոյ կ'ըսէ՝* «դարձեալ եկ երրորդ անգամ անթիւ զաւրաւք բազմութեամբ, առաւել քան զառաջինն եւ զերկրորդն» *և կը պատմէ թէ ճիշդ եօթն ամիս* «առեալ բազում ամրոցս, եւ սպան զբազումս ի նոցանէ, մինչ գրեթէ զամենայն արս կոտորեաց, զորոց զկանայսն եւ զտղայս գերի խաղացոյց, անթիւս եւ անհամարս: Որոց տեսողքն աղիողորմս աղէտիցն, ոչ միայն քրիստոնէից, այլ՝ եւս յայլասեռից, որք տեսանէին զայսպիսի անմեղ զառինսն մատնեալ ի ձեռն արիւնախանձ եւ մարդադէմ գազանացն, որ ոչ կանանցն խղճային եւ ոչ տղայոցն ողորմէին, ոչ ի հիւանդսն գթային եւ ոչ ի կարիսն նայէին, ոչ ի յալեւորսն հարկէին եւ ոչ ի մատաղ մանկունս խնայէին, այլ անողորմաբար հետիոտս տանէին՝ մերկ, բոկոտն եւ գլուխ ի բաց: Եւ որք ոչ կարէին գնալ՝ քարամբք սպանանէին եւ անցեալ գնային: Եւ որք զայսպիսի կսկիծսն տեսանէին, ասէին լերանց, թէ անկերուք ի վերայ մեր, եւ բլրոցն, թէ ծածկեցէք զմեզ...»

*Իսկ Երուսաղէմի ձեռագիրի յիշատակարանին մէջ գրիչը Վանի բերդէն վար նետուած անձերուն թիւը* 7,000 *կը նշանակէ, իսկ Պաղտատի գրաւումէն ետք* «մարդու գլխով Զ (6) մինարէ շինեց» *կ'ըսէ։*

*Վրաստանի վրայ արշաւանքին առթիւ* «վնաս արար սով, հրով եւ գերութեամբ քակեաց զմեծամեծ եկեղեցիս ի Տփխիս, եւ անտի էջ ի Շամատուն եւ գնաց մօտեցօ յԵրուսաղեմայ: Բայց անդ ոչ եմուտ եւ դարձաւ բազում օտարօ (= *աւարաւ*) եւ գնաց ի թախտն եւ ի միւսում տարին գնաց ի Հոռոմանց տունն եւ էառ զԿամախ եւ զայլ բազում տեղիս: Եկն ի Սեբաստիայ եւ բազում կենդանիս թաղեց աւելի քան զԲՌ (= 2000) եւ դարձ ի տեղի իւր: Եւ ի միւս այլ տարին դարձ ի Հոռոմս եւ զԸլտրումն խանն կալօ, որուն էր անթիւ... եւ անհամար զաւրս ցրուեաց եւ գերեաց զամսն թվին ՊԾԲ (= 1403)...»:

*Լէնկ Թիմուրի գազանային արարքները կարծես թէ օրինակ են իր ժամանակակիցներուն և յաջորդներուն։ Իր մահուան տարին* (1415) Սաղմոսի Մեկնութեան Քաղուածոյքի *մը գրիչը՝ Գրիգոր, իր օրերը կ'որակէ* «ի նեղ եւ ստորասուզեալ ժամանակի, յորում բռնակալն Թամուր՝ թոյլտուութեամբ վերին խնամոցն, տիրեալ էր բազում աշխարհի եւ ԱՒԵՐԵԱԼ: Եւ կործանեցաւ յայսմ ամի ՊԾԴ (= 1405) թուին: (*Տես. Ստեփան Կանայեան*, Ցուցակ Հայ. Ձեռագրերի Թիֆլիզի Ներսիսեան Հոգեւոր Դպրանոցի... 1893, *Թիֆլիս*, էջ 39)։

*Ասկէ քիչ յետոյ, Հայաստան հուրի և սուրի կը մատնուի և մեծ աւերածութիւններ կը գործադրուին, մասնաւորապէս Շահ Ռուխի և Իսկէնտէր Պէկի կռիւներու միջոցին, ինչպէս կը վկայեն բազմաթիւ հայ ձեռագիրներու յիշատակարանները։*

*Այսպէս,* 1421*ին գրուած Ճաշոցի մը ձեռագիրին (պահուած Դաւրէժի Աստուածածին եկեղեցին), յիշատակարանը կը հաստատէ թէ Շահ Ռուխի եղբայրը Սպանդիար* «լիբք, անզգամ, յիմար», *կը քանդէ Արծկէն, Արճէշը, Բաղէնը և Անիկը և կ'աւերէ Կարինը* (ՀԱ. 1908, 240)։

1425ին, Աղթամար գրուած Աւետարանի մը գրիչը՝ Թումա կը յայտնէ թէ այդ «չար եւ ի նեղութեան ժամանակիս» «յորում ամի բոլոր աշխարհս Հայոց՝ ի յառ եւ ի յաւարի, ի սուր եւ ի գերութիւն մատնեցաւ ... ի ձեռն անաւրէն եւ անիծեալ ազգին Նետողաց, վասնզի այս բոլոր տարի մ'է, որ չար բռնաւորն Ամիրզա Սքանդարն՝ տէրն Թաւրիզոյ, ազգաւ թուրք, զամիրապետն Ոստան քաղաքի՝ զՍուլտան Ահմատն՝ ըմբռնեալ է եւ երկաթի կապանաւք ի յՄլրնջոյ բերդն ի բանտի է եղեալ խնդրելով ի նմանէ զանառիկ ամրոցս նորա: Եւ զերկիրս Հայոց, զԱղբակ եւ զԿարպան եւ զՈստանայ երկիրս՝ մինչ ի Բաղէշ, անմարդաբնակ արարեալ եւ բնակիչք աշխարհիս, մերկ եւ բոկ եւ սովալլլուկ տարաշխարհիկ եղեալ, եւ ոմանք յաստուածախնամ կըղզիս անկեալ... ազատեցան ի գերութենէ չար բռնաւորին:

Դարձեալ պատմեցից եւ այլ եւս աղէտ եւ կսկիծ, արժանի արտասուաց, որ եկն եհաս ազգիս քրիստոնէից, վասնզի Աւթման Բէկն, տէրն Ամթայ, ջատագով եղեալ մերոյ իշխանացս, եւ եկեալ բազում զաւրաւք, եւ զերկիրն Արճիշոյ եւ զԱրծկոյ, բնաջինջ գերի վարեալ եւ սրոյ ճարակ արարեալ... Աւա՜ղ եւ Ռ (= 1000) աւա՜ղ դառնութեան ժամանակիս, որ մեք պատահեցաք: Վասնզի աշխարհս մեր աւերակ, եւ սեղանք եւ դրունք եկեղեցեաց մերոց տապալեալ եւ սպասք սրբութեանց գերի վարեալ, աւհներգութիւնքն Աստուծոյ լռեալ ի բոլոր երկիրս մեր: Միայն խոյակապ Սուրբ Խաչըս է մնացեալ, իբր նշաւր թագաւոր անսասան եւ անպարտելի»... (Ե. Լալայեան, Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի, էջ 353):

*Բայց դժբախտ Թումա գրիչը՝ ականատես կ'ըլլայ միակ ապաստանարան մնացած Աղթամարի գրաւումին ալ՝ «անօրէն» Փիրի Բէկէն և կը փախի Ուրանց գիւղը՝* 1433ին (*տես.* Ցուցակ Վասպուրականի, էջ 365): *Այնտեղ,* 1418*ին, իր գրած մէկ Աւետարանին* (*տես.* նոյն, *էջ* 310) *մէջ՝ Բ. յիշատակարան մը աւելցնելով կը գրէ թէ* «անհնարին աղէտ եւ մեծ կսկիծ դիպեցաւ աշխարհիս մերում, վասնզի Ամիր Փերի Բէկն, ազգաւ քուրդ, թոռն Ամիր Եզդնին, էառ զաստուածապահ եւ զանառիկ կղզին Աղթամար, որ տեղի էր ապաստանի ամենայն աշխարհացս եւ յառ եւ աւար գերութեան վարեաց զսպասս եւ զզարդս եկեղեցեաց տաճարին եւ զբոլոր ծովեզեր[ե]այս վանորայից եւ գեղորայիցս. զաստուածառունչ մատեանս եւ զայլ անաւթս սրբութեանցն եւ ցանուցրիւ ըրդ ամենայն աշխարհ տարածեաց»: *Անոնցմէ մին էր այս Աւետարանը։* (*տես.* Ցուցակ Վասպուրականի, *էջ* 312)։

*Այսպիսի ողբական ոճով բազմաթիւ ձեռագիրներու յիշատակարանները պատմած են Լէնկ Թիմուրի և յաջորդներուն անհանդուրժելի արարքները, որոնք պատճառ եղած են որ Հայերը խումբ առ խումբ հեռանան իրենց հայրենիքէն։*



ԿՐՕՆԱԿԱՆ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐ

*Նոյնպէս Եօզպէք Թաթարները զանց չառին կրօնական հալածանքները։*

*Երբ Լէնկ Թիմուր ձեռնարկեց իր արշաւանքներուն, անոնք արդէն մոլեռանդ իսլամներ էին և իսլամական կրօնի պատուէրին համաձայն՝ ամէն մահմետական պարտաւոր էր, բոլոր անհաւատները հրաւիրել Մարգարէին կրօնքին։ Հետևաբար աշխատած են իսլամութիւնը տարածելու. մինչ Սելջուկները նուազ մոլեռանդ էին, իսկ Մոնկոլները մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը անտարբեր էին, և որևէ կրօնքի նախապատուութիւն չէին տուած։ Ուստի Եօզպէք Թաթարներու տիրապետութեան շրջանին, բաւական սաստկութեամբ կրօնական հալածանքներ գործադրուած են, ինչ որ աւելի կը դառնացնէր քրիստոնեաներու կեանքը։*

*Օրմանեան* (Ազգապատում, *էջ* 2010—2014 *և* 2052—60)՝ *քաղելով ժամանակակից պատմագիրներէն և վկայաբանութիւններէն* (1), *այս շրջանէն կը յիշատակէ մեծ թիւ մը դէմքերու, որոնք նահատակուած են վասն հաւատոյ, չհամակերպելով կրօնափոխ ըլլալու։ Այսպէս կը յիշուին՝*

| | | |
|---|---|---|
| 1395 | | *Ստեփան Ամիւկցի Առաջ. Արճէշի* |
| — | | *Մուսէֆիր Արճիշեցի* |
| 1396 | *Ապրիլ* 24 | *Թամար Գոհար Մոկացի* |
| 1403 | *Յուլիս* 10 | *Մելքիսեդ Վանեցի* |
| — | » 11 | *Կարապետ »* |
| — | *Սեպտ.* 10 | *Յովհաննէս քհ. Զմշկածակցի* |
| 1418 | *Փետրուար* 3 | *Ցիմար Վանեցի* |
| 1420 | | *Արծկէցի Վաղին Մուրատշահ* |
| — | | *» Զաքարիա Տանուտէր* |
| — | | *Մկրտիչ Ջեռնաւոր ընտանեօք* |
| — | | *Յովհաննէս » Ասպիսնակցի* |
| — | | *Արիստակէս Քաջբերունի* |
| 1421 | *Յունուար* 4 | *Վարդան Բաղիշեցի (Դատուանցի)* |
| — | | *Երկու Հայպէշ քհ.ք (Խիզան)* |
| — | | *Թովմաս Վրդ. Գուտլիկցի* |
| 1424 | *Յունիս* 2 | *Ստեփանոս Վրդ. Ցեկուայ վանքէն* |
| — | » 2 | *Պետրոս Քհ. Խիզանի* |
| — | » 11 | *Ստեփան Սորբեցի* |
| 1425 | *Մայիս* 19 | *Գրիգոր Վրդ. Խլաթեցի Ծերենց* |
| 1428 | | *Յակոբ Ովսաննացի Վրդ.* |
| — | | *Ղազար Բաղիշեցի »* |
| — | | *Սիմէոն Այրիվանեցի* |
| — | *Մայիս* 9 | *Վարդենի կամ Վարդենիկ* |

---

(1) Մասնաւորապէս Հ. Անառեանի եւ Յ. Մանանդեանի կազմած հատորը՝ «Հայոց Նոր Վկաները. 1135–1843», գիտական հրատարակութիւն, տպուած Էջմիածին, 1905ին:

Անշուշտ այս յատուկ կերպով յիշատակուածներուն քով, կային գրիչներու հասողութենէ հեռու բազմաթիւ ուրիշներ, որոնք հալածանքներու ենթարկուած են և մահացած կամ փրկուած են փախուստով կամ ծուարելով տեղ մը։

Տիրողներուն անհանդուրժողութիւնը քրիստոնեաները նկուն ըրած էր և պատահօրէն կը յիշատակուի որ Ծննդեան Ջրօրհնէնքի արարողութիւնը, որ հին ատենները գետերու կամ լիճերու վրայ կը կատարուէր, այդ շրջանին արգիլուած էր (Թով. Մեծ. 110 և Ազգապատում, 2055)։

Նոյնպէս անցողակի կը յիշուի թէ ԺԵ. դարուն սկիզբը, Բաղէշի Իպրահիմ Ամիրան, որ եղբօրը՝ Շարաֆի յաջորդած է, «կապուտ արկ ի քաղաքին եւ յոյժ դառնացան քրիստոնեայքն» (Մեծ. 60) (1)։ Միրանշահ, Լէնկ Թիմուրի որդին, զայրանալով սպաննել տուած է Իպրահիմը և անոր տեղը որդին՝ Շամշատինը նշանակած է (Ազգ. 2012)։

## ԲՆԱԿԱՆ ԱՂԷՏՆԵՐ

Այս անհանդուրժելի և անտանելի պայմաններուն մէջ ապրող բնակչութիւնը, իսլամ և առաւելապէս քրիստոնեայ, հաւասարապէս կը տառապէր (վերը, 207)։

Դժբախտաբար, կարծես բնութիւնն ալ զինակից եղած էր այս բարբարոսներուն. անոնց պակաս թողածը լրացնելու բնական աղէտներով և պատուհասներով։ Պակաս չեն եղած համաճարակները, սովերը և երկրաշարժները։

Այսպէս, 1395ին Ծպատ անապատ գրուած Աւետարանի մը յիշատակարանին գրիչը՝ Մարտիրոս կ՚ըսէ թէ գրած է «ի դառն եւ ի նեղ ժամանակիս, [որ] է գերութիւն եւ սպանումն, Թամուր Ղարին, եւ է մահսարաժամ, որ անմեղ տղայքն թալալին ի գիրկս մարցն եւ աւանդեն զմաքուր հոգիս իւրեանց՝ ձեռս հրեշտակացն, հայրքն եւ մայրքն՝ անմխիթար ողբով կոծին յայս բազմախաբ յաշխարհիս»... (Ե. Լալայեան, Ցուցակ Հայ. Ձեռ. Վասպուրականի, 234)։

Նոյնպէս, Էօզպէք-Թաթարներու տիրապետութեան շրջանին կը յիշուին 1441ին Վանի և Ախլաթի շրջանակին և 1458ին Երզնկայի գարհուրելի երկրաշարժերը, որոնցմէ վերջինին զոհ գացած են 32.000 անձեր։

Այս շրջանին միայուն դարձած պատերազմական գործողութեանց մէջ, անկարելի դարձած են երկրագործական աշխատանքները և այդ պատճառով՝ սովեր պատահած են։

1387ին Լէնկ Թիմուրի առաջին արշաւանքէն ետք՝ Թովմա Մեծոփեցի կը յիշէ որ մեծ սով տիրած է։ Ան կ՚ըսէ թէ «յետ գնալոյ նորա [Լէնկ Թիմուրի] յաշխարհէս մերմէ եկն սով սաստիկ յաշխարհս մեր եւ տարածեցաւ յամենայն

(1) Երուսաղէմի վանքին թ. 1198 ձեռագիրին (Գրիգոր Տաթեւացիի, Հարցմանց գիրք) յիշատակարանին մէջ, որ ետս մը մանրամասնութիւններ ունի Չիհանկիրի եւ Չիհանշահի կռիւներուն եւ ի վերջոյ հաշտութեան մասին, ի մէջ այլոց 1451ի Մերօփի, Թուրխան Օղլուէն կողոպուտը կը նկարագրէ եւ այդ առթիւ կը գրէ՝ «կապուտ նոյն եղեւ ի վերայ քրիստոնէիցն»



տեղիս զի կերան զսունս եւ զկատուս, խորովէին զուստերս եւ դստերս, այր՝ զկինն եւ կին՝ զայրն սպանանէին զմիմեանս եւ ուտէին եւ ոչ յագենային եւ յետոյ ինքեանք մեռանէին: Զի ոչ կարեմ պատմել զդառնութիւնս մեր զոր տեսաք աչօք եւ լուաք ականջօք, զի ջնջեցաւ մարդկութիւնս, մանաւանդ Հայկազեան գաւառիս» (Թովմա Մեծոփեցի, 32)։ Սովը յաջորդ երկու տարիներուն (1388 և 1389) շարունակուեցաւ, ընդհանուր խեղճութեան մատնելով երկիրը։

Նոյնպէս սով տիրեց Լէնկ Թիմուրի երկրորդ արշաւանքին ժամանակ, 1395ին, երբ Այրարատի և Վասպուրականի նահանգները կոխոտուեցան։

Ինչպէս Մեծոփեցի կ՚ըսէ՝ «սով մեծ եղեւ ընդ ամենայն երկիր». վանքի դաշտերը կ՚աւերուէին ու քաղաքները կը կողոպտուէին (Թովմա Մեծոփեցի, 46—47)։

Նոյնպէս Լէնկ Թիմուրի մահէն ետք, տիրող խառնակութեանց միջոցին (1431)՝ դարձեալ «սով սաստիկ եղեւ յաշխարհս մեր հաւատացելոց եւ անհաւատից, զի կերան զսուն եւ զկատուս եւ զմեռելոտի, զձի եւ զջորի, զէշ եւ զուղտ: Եւ պարապեալ պակասեցաւ անասունն, եւ դիմեցին ի յուստերս եւ ի դստերս իւրեանց մինչ զի ի Թաւրէզ քաղաքն կերեալ էին 1000 ոգի զաղտնի եւ յայտնի եւ աւերեալ վերին եւ ներքին կողմանքն»: (Թ. Մեծ, 94)։

Ըստ Մեծոփեցիի՝ Դաւրէժէն (94), Հեր, Զարեւանդ, Օշնի և Աղբակ եկած էին անձեր, որոնք Բաջբերունիք գացած էին և հոն մնալով մեռած էին. Առեստ աւանը գացողները ձուկով և բանջարով կ՚ապրէին։

«Իսկ զազանքն որ սովորեալ էին ուտել զմեռելոտիս, դիմեցին ի վերայ կենդանեացն, որք յերկիրս մեր կային: Մտանէր զայլն յԱրճէշ եւ յամենայն գաւառս մեր. զորդին ի մօր գրկացն առեալ պատառէր եւ ուտէր, թէ ի դաշտի դիպեալ յառնէր ի վերայ մեծաց եւ փոքունց եւ առժամայն պատառէր: Եւ աւելի քան զ100 ոգիս ի յԱրճէշ գաւառի զայլն եկեր թո՛ղ զաղքատս որ ի վերայ գետոյն Առեստու եւ Մարմետու կային» (Թ. Մեծ. 94)։

Ականատես Թովմա Մեծոփեցի կը պատմէ թէ Այրարատէն ձմեռուան եղանակին Վրաստան գացողներ եղան, բայց եղանակին խստութենէն մեռան և անոնց թիւը ճշդել կարելի չեղաւ (Նոյն, 94)։

«Մօր ցորեանն աւելի հանէր քան զ60 թանկաց ի պազարին Արճիշոյ: Եւ մեռանէին ամենայն մարդիկք բնիկք եւ օտարականք»: (Թովմա Մեծոփեցի, 95)։ Այնպէս որ ոմանք հեռաւոր տեղեր կը գաղթէին և ոմանք Քիւրդերու կ՚ապաստանէին և անոնց կը խառնուէին և կ՚իսլամանային (տես. վերը, 272)։

Մեծոփեցի այս ծանր վիճակը եօթը տարի ցոյց կու տայ։

«Եւ այս եօթն ամք են որ ի ներքոյ դառն պատուհասի կամք, զի սուրն կոտորէ, սովն սպան, գերին պակասեաց, գազանք կերան զմարդիկ, թռչունք կերան զվաստակս, զորտն եւ մկունք ապականեցին զանդաստանս աւելի պատուհաս քան զԹաքելացւոցն յաւուրս Աբրահամու եւ դառնագոյն քան զպատիժ Եբրայեցւոցն եւ Եգիպտացւոց» (Թ. Մեծ., 96)։

Եւ հաւատացեալ եկեղեցականը երկիրին հասած այս աղէտները կը վերագրէ մարդոց անհաւատութեան և մեղքերուն։

Այս բոլորը որ թուեցինք՝ պէտք է համոզեն մեզ թէ Խօզպէք Թաթարներու շրջանը աւելի դժբախտ շրջան մը եղած է Ասիական բարբարոսներուն երկու նախընթաց շրջաններէն։ Հաստատելու համար՝ կը բաւէ այդ շրջանին գրուած հայերէն ձեռագիրներու յիշատակարաններուն վրայ ակնարկ մը նետել։ Պիտի տեսնենք որ անոնց գրիչները իրենց ժամանակը կը ներկայացնեն շատ աննպաստ և սեւ գոյներով։

Այսպէս, 1400ին՝ «դառն եւ չար ժամանակ» (Երեւանի Մատենադարան, Թ. 5435 ձեռագիր), 1435ին՝ «ի դառն եւ վշտաշատ ժամանակ» (Ցուցակ Վասպուրականի, էջ 369), 1437ին՝ «ի դառնացեալ ժամանակիս» (Ցուցակ Վասպուրականին, 375), 1439ին «դառն ժամանակ», 1444ին՝ «ի դառն եւ ի չար ժամանակի յորում տառապեցուցանեն ու նեղեն զազգս քրիստոնէին ազգի ազգի կեղեքմամբ եւ անողորմ հարկապահանջութեամբ եւ յաշխարհէ յաշխարհ վտարմամբ իբր գերի տամբ եւ ընտանեօք» (Ցուցակ Վասպուրականի, 387), 1451ին, գրիչ մը «դառնաշունչ» (Ցուցակ Վասպուրականի, 411), և ուրիշ գրիչ մը՝ «ի դառն եւ նեղ ժամանակիս» (Երուսաղէմ, Թ. 119 ձեռագիր), 1452ին «դառն եւ վշտալից ժամանակ» (Ցուցակ Վասպուրականի, 414), և 1458ին «անհանգիստ եւ դժուարին եւ տարտամեալ աւուրք» (Ցուցակ Վասպուրականի, 427) կը ներկայացնեն իրենց ժամանակը՝ այդ թուականներով գրուած ձեռագիրներուն գրիչները։

Իսկ ժամանակակից պատմագիրը Թովմա Մեծոփեցի. բոլորովին սրտաբեկ, կը մորմոքի ըսելով՝ «ո՞վ կարէ պատմել զբոց տառապանաց եւ զկսկիծ մորմոքման տառապեալ Հայկազեան սեռիս: Ստեղծողն եւ Արարիչն Աստուած միայն կարէ գիտել որ ստեղծ զնոսա. զի հայրն աղաղակէր առ որդին, վա՜յ որդի եւ որդին առ հայրն գոչէր լալագին պաղատանօք, վա՜յ զիս հա՜յր՝ մայրն առ դուստրն հայէր եւ զարտասուսն զեսօրէն իջուցանէր: Եւ երկիր եւ աշխարհ ամենայն լցաւ գերեօք լալով, սգով եւ կոծով, մանաւանդ միջասահման գաւառս մեր հայրենի, զի ամենեքեան փախուցեալք էին եւ անդ երթեալք, այնպիսի փորձանաց եւ որոգայթից դիպեցան:

Այլ ի Մուր եւ ի Խորասան, ի Պաղտաս եւ ի Տանկաստան եւ յամենայն երկիր ցրուեալ ցնդեցան աղերս յղելով եւ զգերին ծանր գնոց վաճառելով», (Թովմա Մեծոփեցի, 121):

Ահա այսպէս՝ Հայ զանգուածները իրենց դարաւոր հայրենիքէն կը հեռանային, իրենց տունն ու տեղը, արտն ու այգին ձգելով, աւազակաբարոյ տարրերու հալածանքին հետեւանքով։ Բարբարոսները կու գային վայելել չինարար Հայուն ճակատին քրտինքովը շահուած արդիւնքները, զանոնք սպանելու, չպահելու պայմանով, որովհետեւ անընդունակ էին շինելու կամ ստեղծագործելու։



Բ.

# ՀԱՅԵՐՈՒ ԳԱՂԹԱԾ ՎԱՅՐԵՐԸ

Տրուած ըլլալով որ ծանօթ են Հայերու ի՛նչ պայմաններու մէջ ապրած ըլլալը՝ Ասիական բարբարոսներու չորս դարեր տեւող յաջորդական արշաւանքներու շրջանին, և յայտնի՝ թէ ի՛նչպէս անոնք հարկադրուած էին մեկնիլ Հայաստանէն կամաւորապէս կամ բռնադատեալ, կը մնայ հետեւիլ հայ գաղթականներու հետքերուն, տեսնելու համար, որ Հայաստանէն հեռացող Հայերը ո՞ւր գացած և ի՞նչ կեանք ու վախճան ունեցած են։

Անշուշտ աւելորդ է ըսել, թէ միակ ուղղութեամբ մը և միակ վայր մը չէ որ գացած էին Հայերը, այլ ամէն ուղղութեամբ՝ Արեւելք, Արեւմուտք, Հիւսիս և Հարաւ, երբեմն խուճապահար փախստական և երբեմն ոչխարի հօտերու պէս քշուած, տիրապետող բռնակալներու քմահաճոյքով։

Այս չորս դարերու աղետալի ժամանակամիջոցին՝ Հայաստան իր արեւելեան սահմաններէն ներս խուժող և իսկապէս Արեւելքէն ծագում առած ու տիրակալող հանգամանքով վայրենի ցեղերու նպատակաւոր և աննպատակ ձեռնարկներուն ենթարկուած է. իսկ հայ ժողովուրդը յատկապէս դէպի Արեւելք քշելու փորձերը անպակաս եղած են։

Այս պարագան նկատի առնելով, նախ պիտի խօսինք Հայերու դէպի Արեւելք ակամայ և կամաւոր շարժերուն մասին, յետոյ՝ կարգով՝ տարբեր ուղղութեամբ մեկնողներով զբաղելու համար։

### Ա.
### ԴԷՊԻ «ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿՈՂՄ ԱՇԽԱՐՀԻՍ»

Հայաստանի Արեւելեան կողմի դրացի Պարսկաստանի մէջ հայ գաղութներ շատ հին ժամանակներէն սկսեալ գոյութիւն առած են։ (Տես ՊՀԳ հտ. Ա. էջ 191—207 և 366—7)։ Երկու ազգերը ոչ միայն իբրև դրացի, այլ իբրև ցեղակից ունեցած են շատ սերտ յարաբերութիւններ և իրարու զուգորդուած պատմութիւն մը։ Հայերը՝ իբրև հպատակներ Պարսիկներու՝ մասնակցած են անոնց երկարատեւ պայքարին՝ Թուրանի դէմ՝ Թուրքեստանի Անապատին եզերքը. ոմանք հաստատուած են այնտեղ և իրենց գոյութիւնը պահած՝ մինչեւ ԺԱ. դար, Ասիական բարբարոսներու Ծայրագոյն Արեւելքէն դէպի Արեւմուտք գաղթաշարժ-արշաւներու ձեռնարկելը։

Այդ գաղութները, արդիւնք գլխաւորապէս բանի տեղափոխութիւններու և պատերազմներու, երկիրին մէջ կատարուած բազմաթիւ յեղաշրջութիւններու եւ զանազան քաղաքական ու կրօնական շրջափոխութիւններու, ենթարկուած են զանազան հարուածներու եւ դարերու ընթացքին, գրեթէ ամբողջովին կորսուած են պարսիկ մեծ զանգուածին մէջ, մասնաւորապէս Հա-

յաստանէն հեռու վայրերու մէջ։ Ասով հանդերձ, նկատելի է որ հայ նոր գաղթականներ Հայաստանէն դէպի Արեւելք, միշտ դիմած են եւ հայ գաղութներ գոյութիւն ունեցած են, նոյնիսկ Պարսկաստանի ամէնէն հեռաւոր անկիւններուն մէջ։ Եւ որպէսզի որոշ գաղափար մը ունենանք Հայերու մինչեւ ո՞ւր տեղերը տարածուած ըլլալուն մասին, պէտք է գիտնալ թէ հին Պարսկաստան կը տարածուէր Ինդոս գետէն մինչեւ Եփրատ եւ Արալ լիճէն մինչեւ Պարսից ծոց։

Այս ընդարձակ երկիրին մէջ, բացի Հայաստանէն՝ որ մեր բնագաւառն է, Հայաստանի անմիջական դրացի պարսկական հողերը Հայերով լեցուն էին, և այնքան շատ էին Հայերը՝ որ այդ երկիրները Հայաստանի մաս նկատողներ գտնուած են։ Բացի Հայաստանի սահմանակից այս երկիրներէն, ուր բազմաթիւ Հայեր կ'ապրէին, Պարսկաստանի միւս մասերուն մէջ ալ, նոյն իսկ անոր հեռաւոր անկիւններուն մէջ, ամենահին ժամանակներէն սկսեալ, Հայ գաղութներ գոյութիւն ունեցած են, վասնզի Հայերը՝ Պարսիկներուն ընտանի էին, եւ լաւ ծանօթ՝ անոնց վարքուբարքին,

Պարսիկները։ իսլամութեան յարելէն ետքն ալ, Հայ եւ Պարսիկ դրացիական յարաբերութիւնները տեւած են, թէեւ մթագնած՝ մոլեռանդ քարոզիչներու գրգռութիւններէն։

Պարսիկները եւ Հայերը՝ երբ Արաբ Խալիֆայութեան քայքայումէն օգտուելով կազմեցին ինքնավար ու կէս անկախ իշխանութիւններ, Թ.—Ժ. դարերուն (տես. վերը, 14—22), իբրեւ միեւնոյն ձգտումները ունեցող բախտակից ազգեր, կրկին մօտեցան իրարու եւ դէմ կեցան հասարակաց թշնամիին՝ Արաբին։

Վիճակակից մնացին նաեւ երբ Թուրանի տափաստաններէն՝ ասիական բարբարոսները խուժեցին Իրան եւ անկէ անցան Հայաստան եւ երկու երկիրները ենթարկուեցան արեւելեան բարբարոս ժողովուրդներու տիրապետութեան։

Ասիական հրոսներու արշաւանքները դէպի արեւմուտք՝ պատճառ եղան որ Հայերը նոր շփումներ ունենան Արեւելքի հետ, եւ այս անգամ աւելի հեռու, Կեդրոնական Ասիոյ եւ նոյնիսկ մինչեւ Խաղաղական ովկիանոսի եզերքները տարածուեցան։ Այդ Հայերը, որոնք կը հաստատուէին այդքան ընդարձակ եւ հեռաւոր վայրերու մէջ, երկու որոշ դասերու կը բաժնուէին. Ա. Բռնի այդ հեռաւոր երկիրները փոխադրուողներ եւ Բ. իրենց կամքով, զանազան հաշիւներով, մանաւորապէս շահու համար հոն տեղերը հաստատուողներ։

Թէ՛ ակամայ կամ բռնի եւ թէ՛ կամաւոր կամ ինքնաբերաբար այդ հեռաւոր երկիրները գացողները, պէտք է ըսել թէ բաւականէն աւելի ճկուն եղած են այդ վայրենի տիրապետողներուն հետ վարուելու եղանակ մը գտնելու եւ հնարաւոր եղածին չափ իրենց սպառնացող չարիքները սահմանափակելու համար։

Տեսանք որ այդ բարբարոսներուն առաջին հոսուածը՝ Սելջուկները, հիմնած էին ընդարձակ պետութիւն մը, որ իր տարածութեամբ հին Պարսիկ պետութենէն աւելի ծաւալուն չէր, վասնզի դէպի Արեւելք, մինչեւ Խաղաղական ովկիանոս չէր հասնէր. մինչ անոնց յաջորդող երկու միւս ցեղերուն՝ Մոնկոլներուն եւ Ոսկէ Հորդայի Թաթարներուն, այսինքն Չինկիզի եւ Լէնկ Թիմուրի հիմնած երկու պետութիւնները, տարապայման կերպով ընդարձակ էին,



վասնզի Խաղաղական Ովկիանոսէն մինչեւ Միջերկրական, Սիպերիայէն մինչեւ Հնդկաց Ովկիանոս եւ Մաղքթոց կամ Հոնաց երկիրէն մինչեւ Չինաստան, այդ լայնածաւալ պետութիւններուն մաս կը կազմէին։

Տուղրիլի, Ալփասլանի, Չինկիզի եւ Լէնկ Թիմուրի նկարագիրները իբրեւ աշխարհակալներ, մեծ գիծերու մէջ իրարու շատ կը նմանէին, այնպէս որ իրենց հիմնած մեծ պետութիւններն ալ կազմակերպուած եւ կազմալուծուած են գրեթէ համանման պայմաններու մէջ եւ մեծ նմանութիւններ ունին իրարու հետ, անշուշտ առանձնայատուկ մի քանի պարագաներու տարբերութեամբ։

Այս հսկայ պետութիւններուն մէկ ծայրագաւառն էր Հայաստան և Հայերը շատ չնչին թիւ մըն էին այդ մեծ ամբողջութեան մէջ, որ նուաճուած բազմաթիւ ժողովուրդներէն կազմուած էր։ Սակայն Հայաստան իբրեւ ճամբու վրայ ինկող երկիր և իբրեւ ասիական բարբարոսներու դէպի Արեւմուտք արշաւին պողոտան, ամէնէն աւելի ծանր կերպով զգացած է այս վայրենի ցեղերուն լուծը, որ մէկէ աւելի նշանակելի և առանձնայատուկ հանգամանքներ ունէր։

Տեսանք որ այդ բարբարոսները առաջին անգամ ինչ սոսկալի անգթութիւններ գործեցին, ահ ու սարսափ պատճառելու համար, իսկ երբ իրենց տիրապետութիւնը ամրապնդեցին, այլեւս մեղմութեամբ վարուեցան, միշտ ծանր պահելով տուրքերը, ապստամբութեան վրայ խորհելու միջոց չտալու համար։

Ասիական բարբարոսներու երեք ալիքներն ալ, իրենց նուաճողական արշաւներուն ատեն, ինչպէս տեսնուեցաւ, հաւասարապէս գործադրած են գերեվարութիւններ և Հայաստանէն իբրեւ գերի մեծ թիւով Հայեր հեռացուցած և տարած են բնակեցնելու ուրիշ վայրեր։ Ասոնք կը կազմեն ակամայ տեղափոխուողները կամ բռնագաղթի ենթարկուողները, որոնց Հայաստանէն իբրեւ գերի վերցուելէ ետք՝ ո՛ւր տարուած ըլլալուն մասին շատ քիչ բան գիտենք։ Մեր պատմագիրները առ հասարակ ընդհանուր և տարտամ բացատրութիւններ ունին։ Անոնք առ հասարակ «վարեցան ի գերութիւն» բառերը կը գործածեն, առանց ըսելու թէ ո՞ւր տարուած են (տեսնել վերը մանաւորապէս 231—244, 253—258 և 274—279, ուր մի առ մի թուած ենք երեք շրջաններուն կատարուած գերեվարութիւնները)։

Բայց նկատելով որ այս բարբարոսները ասիական ժողովուրդներ էին, որոնք Կեդրոնական Ասիայէն կու գային Հայաստան, հաւանաբար իրենց առած գերիները կը տանէին Արեւելք, դէպի իրենց տափաստանները, լեցնելու համար պատերազմներու պատճառով իրենց ցեղէն պակսածներուն տեղը, ինչպէս ենթադրուած է (տես. վերը, 255—256)։

Բայց բնաւ որոշ ըսուած չէ թէ ո՞ւր կը վարէին իրենց առած գերիները։

Շատ հազուադիպօրէն և պատահաբար կը յիշուի որ գերիները տարուած են «յաշխարհն Պարսից» կամ «ի Պարսիկս», որ նոյնպէս անորոշ և տարտամ բացատրութիւն մըն է ու ոչինչ կը լուսաբանէ, նկատելով որ աշ-

խարհագրական Իրանը կամ այն ատենուան Պարսկաստանը շատ ընդարձակ երկիր մըն էր և կը տարածուէր Ինդոս գետէն մինչև Եփրատ։

Հետևաբար պարտաւորուած ենք ենթադրութիւններ ընելու և որոնելու հաւանական վայրերը՝ ուր առաջնորդուած և հաստատուած են գերինները։

Այդ վաչկատուն ժողովուրդները, որոնք իրենց սկզբնական բնակավայրին մէջ քաղաքներ չունէին և վրաններու փոքր համախմբումներով միայն գիւղեր կազմած էին, շփում ունենալով Արեւելքի մեծ կեդրոններուն հետ, իրենք ալ քաղաքներու կեանքը լուրացնել փորձեցին և քաղաքներ շինեցին և իրենց տիրապետութեան ենթարկուած մեծ քաղաքներէն մէկը իրենց մայրաքաղաք ըրին։

Տեսանք արդէն, թէ առաջին Մեծ Սելջուկները իրենց մայրաքաղաք ունէին, մինչև 1118, Կեդրոնական Պարսկաստանի Սպահան քաղաքը։ Հետևաբար, հաւանական է որ Սելջուկեան շրջանին Հայաստանէն առնուած գերինները տարուած ըլլան Սպահանի շրջակայքը, թերևս զարկ տալու համար երկիրին տնտեսական կեանքին։

Սակայն նոյնիսկ այդ թուականէն առաջ երբ Հայաստան՝ Ատրպատականի կուսակալին հեղինակութեան կ'ենթարկուէր, (տես. վերը՝ 66), Հայաստանէն վերցուած գերինները բնական է որ Ատրպատական մնային։

Մոնկոլ տիրապետութեան շրջանին՝ սկիզբները պետութեան մայրաքաղաքները եղան Գարա–Գորում և Բեքին, և երբ Մոնկոլ կայսրութիւնը Ուլուսներու բաժնուեցաւ և Հայաստան մաս կազմեց Իլխանեան պետութեան, այդ իշխանութեան իբրև մայրաքաղաք ծառայեցին յաջորդաբար Մուղան, Դաւրէժ, Պաղտատ և Սուլթանիյէ։

Սակայն այս շրջանին Հայաստանի տիրապետութեան համար Իլխանեաններու դէմ զօրաւոր մրցակից մըն ալ կար,— Ոսկէ Հորդայի Ուլուսը, որ 1262էն սկսեալ աւելի քան հարիւր քսան տարիներ շարունակ՝ Տերպենտէն անցնելով Հայաստան արշաւած է։

Այս ընդարձակ պետութեան մայրաքաղաքը երբեմն Գազան, երբեմն Սարայ և այլն եղած է։ Հետևաբար պէտք է որ Ջինկիզի և իր յաջորդներու շրջանին, Մոնկոլները իրենց գերինները վարած ըլլան հեռաւոր երկիրներ մէկ կողմէն մինչեւ Չինաստան, Մոնկոլիա, Կեդր. Ասիա (= Ջաղադա) և միւս կողմէն՝ Կովկասեան լեռներէն անդին, մինչև Վոլկայի հովիտը և Հարաւային Ռուսաստանի տափաստանները (Գիփչաքներու երկիրը) և ամէնէն մօտ Պարսկաստան և Խորասան։

Ուստի կարելի է խորհիլ թէ հայ գերիներ բոլոր այս տեղերը վարուած են։

Այս շրջանին Հեթում Ա.ի ուղևորութիւնը պետութեան կեդրոնին որչափ հեռու ըլլալը, բնաւ տարակոյսի տակ չի թողուր։

Իսկ Լէօզպէք Թաթարներու անհարկու պետը՝ Լէնկ Թիմուր, իր պետութեան մայրաքաղաքը ըրած էր Սմրղանդը։

Թովմա Մեծոփեցի, Թիմուրեան շրջանի միակ պատմագիրը, թէև շատ անգամ Սելջուկ և Մոնկոլ շրջաններու պատմագիրներուն պէս զանց առած է որոշել Լէնկ Թիմուրի ժամանակ առնուած գերիներուն ղրկուած վայրերը, սա-



կայն պատահաբար քանի մը անգամ միայն կը յիշատակէ անոնց Խորասան ղրկուած ըլլալը (տես. վերը, 205 և 277 և Թ. Մեծ., 67) և մէկ անգամ ալ (տես. Թովմաս Մեծ., 68) որոշապէս կը սահմանէ գերիներու բնակավայրը Սմրղանդ, Լէօզպէք Թաթարներու մայրաքաղաքը։ Բայց որոշ և յստակ տեղեկութիւն մը չունինք այս մասին։

1234ին, 1238ին և 1239ին Գանձակի, Շամքորի, Լօռիի և Վրաց վրայ՝ Ուխտայի (1227 – 1241) հրամանով կատարուած յարձակումներու ատեն առնուած գերինները, ինչպէս Ջարմաղանի կողմէ 1239ին Անիի և Կարսի գրաւումներէն ետք, գերի վարուած բնակիչները (որոնց մէջ էին Վանական Վարդապետ և իր աշակերտը՝ Կիրակոս Վրդ. Գանձակեցի՝ պատմիչը այս անցքերուն), որոշ չէ թէ ո՞ւր տարած են. բայց ինչպէս կը մակաբերուի Կիրակոսի պատմութեան զանազան տեղերէն, անոնք Հայաստանէն շատ հեռու տարուած չեն, այլ դէպի Աղուանից աշխարհ, կամ Մուղան և կամ Ատրպատական, ուր և էր այս իշխանութեան մայրաքաղաքը։

Գալով տարուած գերիներու հանգամանքին, դիտելի է որ առհասարակ այրերը ջարդուած և կիները ու տղաքը գերի տարուած են, երբեմն բացառաբար այրերէն որոշ մարդիկ ալ միասին գերի տարուելով։

Այսպէս, օրինակի համար, Անին խաբէութեամբ անձնատուր ընել տալէ ետք, քաղաքին բնակիչները իրենց միջեւ բաժնած են և «սուր ի վերայ եդեալ» կոտորած են «առ հասարակ սակաւ կանանց եւ մանկունս թողեալ եւ այլս արուեստաւորս, ԶՈՐ ՎԱՐԵՑԻՆ Ի ԳԵՐՈՒԹԻՒՆ» (Կիրակոս, 152): Իսկ Կարսը անշքացուցին «Կոտորմամբ բնակչացն, եւ աւերմամբ քաղաքին... եւ գերի վարեալ զբնակիչս նորա (նոյն, 153)

Ուրեմն բացորոշ է որ այս վաչկատուն ցեղերը մասնաւոր կարևորութիւն կու տային արհեստաւորներուն, որոնք իրենց երկիրները շէնցնելու կրնային ծառայել կամ վաճառուելու աւելի դիւրութիւն կ'ընծայէին։

Մենք տեսանք թէ գերեվարութիւնը տեսակ մը պատերազմական տուգանք էր — արդի ըմբռնումով — վասնզի այդ խաղաղ և անզէն ժողովուրդը, զոր նուաճողը իր տիրապետած երկիրներէն կը վերցնէր՝ կը կազմէր յաղթական զօրապետներուն աւարին մէկ մասը, որ կը վաճառուէր, ինչպէս տեսնուեցաւ։ Ասոր համար է որ շատ անգամ պատերազմներէն յետոյ, զօրապետները և զինուորները գերինները իրենց միջեւ կը բաժնէին։ Եւ իբրեւ ապրանք կամ վաճառելի տարր, կինը, մանուկը և արհեստաւորը բնական է թէ աւելի մեծ դիւրութեամբ կրնային վաճառուիլ։

Այս պատճառով է որ անշուշտ, արհեստաւորներու հետ գերի տարած են կիներ և մանուկներ, այրերը ջարդելէ վերջ։ Մեր պատմագիրները, Հայաստանէն՝ Սելջուկներու կողմէ կատարուած գերեվարութիւններուն միջոցին, մասնաւոր կերպով կը շեշտեն կիներու և մանուկներու գերի տարուիլը։ (Տես. վերը, 51–53), բայց չեն ըսեր թէ այդ կիները և տղաքը ի՞նչ եղած են։

Արդ, տրուած ըլլալով որ Սելջուկները և Մոնկոլները, մինչեւ իրենց Փոքր Ասիա առաջանալը, պէտք եղածին պէս իսլամացած չէին և մոլեռանդ չէին, որոշ է որ ինչպէս իրենց հպատակները հաւատափոխ ընելու հետամուտ

չեն եղած, նոյնպէս նաև գերիները չեն հարկադրած կրօնափոխութեան։

Մոնկոլները մանաւորապէս, ինչպէս յաճախ առիթ եղաւ ըսելու, Քրիստոնէութեան համակիր եղած են և ունեցած են իրենց մէջ քրիստոնեայ եղողներ և նոյնիսկ Քրիստոնէութեան յարած վեհապետներ և իշխաններ։

Մասնաւորապէս յիշատակուած են բազմաթիւ քրիստոնեայ թագուհիներ, որոնք ինչպէս կ'երևի, նշանակելի ազդեցութիւն մը ունեցած են այն պահերուն՝ երբ վեհապետներուն անչափահասութեան պատճառով այդ կիներուն վիճակած է խնամակալուհիի դեր կատարել։

Դժբախտաբար ոչ մէկ պատմական վաւերագիր և պատմիչի վկայութիւն ունինք այդ կիներուն Հայ ըլլալուն մասին։ Առհասարակ անոնք Նեստորականներ նկատուած են, թէև կարելի է որ Հայեր ալ կային, որոնք՝ իբրև քրիստոնեայ՝ Նեստորական կղերին ներկայութենէն օգտուած են և անոնց հետ հոգևոր հաղորդակցութեան մէջ եղած են և իրենց կրօնքը պահած են։

Այս կիները, որոնք Մոնկոլ արքունիքին և իշխանական ապարանքներուն մէջ կ'ապրէին, կարելի է ենթադրել, որ Հայաստանէն, Միջագետքէն և Մերձաւոր Ասիոյ քրիստոնեայ շրջանակներէն առնուած իշխանազուն կիներ էին, որ այդ պալատական կանանոցներու մէջ մեծ Սելջուկներու կամ Մոնկոլ խաներու փառքը աւելցնելու կոչուած էին։

Հետևաբար, աւելորդ է որոնել թէ ինչ եղած են այն հազարաւոր կիները եւ տղաք, որ գերի տարուած են վերը նշանակուած պատերազմներուն և արշաւներուն միջոցին։

Իսկ իսլամութեան ասիական այս բարբարոսներուն մէջ արմատանալէ ետոյ, շատ պարզ է թէ անոնք ի՜նչպէս կորսուած են, քանի որ գիտենք, թէ բովանդակ իսլամ աշխարհին մէջ սովորութիւն էր — ինչպէս կը հաստատեն ժամանակակից բոլոր պատմագիրներ և որոշ կերպով կը յիշատակեն — գերիները անասնական պղծութեանց ենթարկել՝ զանոնք դրամով գնելէ ետք։ (Մատթ. Ուռհայեցի, 167)։

Մանուկները իսլամացուցած են և կիները իբրև իսլամներու գերիներ իսլամ նկատուած են, վասնզի ըստ իսլամական ըմբռնումներու՝ կինը կրօնք չունի, որու որ ծառայէ անոր կրօնքը կ'առնէ։

Եթէ անոնք համոզմամբ գաղտնի քրիստոնեայ ալ մնացած էին, սերունդ մը միայն կրնային տոկալ։

Անկէ ետք անոնք Հայութեան համար գոյութիւն ունենալէ դադրած էին և խառնուած՝ իսլամական մեծ զանգուածին։ Հետևաբար, ընդունելով իսկ թէ գերիները այս ընդարձակ պետութիւններուն մայրաքաղաքները տարուած ըլլան, որոշ է որ անոնք հոն տեղերը չեն հաստատուած անպատճառ, քանի որ իբրև վաճառք ասոր անոր կը յանձնուէին և ապահովաբար երկրին զանազան մասերը կը ցրուէին։

Եւ երկիրը այնքան ընդարձակ էր, որ այդ փոքր մանուկները և կիները կը կորսուէին այդ տարածութեան մէջ, իբրև աննշան փոքրամասնութիւն մը, հակառակ անոր որ հայ պատմագիրներ կը վկայեն թէ մեծ թիւով գերիներ տարուած են Սելջուկներու և անոնց յաջորդող Մոնկոլներու և Էօզպէք Թաթարներու արշաւանքներուն առենները։



Դժբախտաբար, ինչպէս արդէն դիտել տուի, շատ կցկտուր, պակասաւոր և պատահական տեղեկութիւններ կու տան անոնց վրայ մեր պատմիչները. այնպէս որ ինչպէս որ անոնց ո՞ւր տեղերը տարուած ըլլալը շատ քիչ ծանօթ է, այնպէս ալ գրեթէ ոչինչ լսուած է անոնց կեանքին և վախճանին մասին. շատ քիչ բան գիտենք իրենց գերեվարութեան յաջորդող կեանքին մասին։

Շատ հաւանական է որ այդ գերիները հաւատափոխ եղած են և իսլամանալով՝ ձուլուած այդ ընդարձակ տարածութիւններուն տիրակալող ցեղերու այլատարազ և այլալեզու հպատակներու խառնուրդին մէջ։

Տեսանք արդէն, որ ասիական այդ բարբարոսները, Հայաստանի տիրելով՝ հոն ստեղծած էին այնպիսի վիճակ մը, որուն տոկալ շատ դժուար էր։ Այդ պատճառով, բացի իբրև գերի բռնի և ակամայ տեղափոխուած բնակչութենէն, Հայաստանէն հեռացած են ուրիշ Հայեր ալ՝ իբրև գաղթականներ, դիմելով թէ դէպի Արևելք և թէ դէպի Արևմուտք, աւելի կանուխ գացած Հայ գաղթականներու մօտ և կամ նոր վայրեր, վասնզի Հայերը այս բարբարոսներու արշաւանքներուն հետևանքով՝ զանազան առիթներով կը յարաբերէին մինչև այն ատեն իրենց բոլորովին անծանօթ կամ շատ քիչ ծանօթ երկիրներու հետ, որոնց նոր նոր կը ծանօթանային։ Արդարև, Հայերը այդ շրջանին է որ գաղափար կը կազմեն հիւսիսային հեռաւոր երկիրներու վրայ, որոնք այնքան հեռու էին մինչև այդ ժամանակ Հայերուն ծանօթ հիւսիսային երկիրներէն և ինչպէս նաև այնքան հեռաւոր Ծայրագոյն Արևելքի վրայ, որուն մասին մինչև այն ատեն, արևելեան հազուագիւտ և թանկարժէք ապրանքներ հայթայթել ձեռնարկելու առթիւ՝ բաւական գաղափար ունէին։

Այսպէս, բնակչութեան բռնի տեղափոխութիւններով և գերեվարութիւններով ուրեմն՝ Հայերու առջև կը բացուէր նոր հորիզոններ և այնպիսի վայրեր, ուր մինչև այն ատենները Հայեր բնաւ հաստատուած չէին։

* * *

Ակամայ և բռնի Հայաստանէն՝ Ասիոյ խորերը փոխադրուած առաւելապէս կիներէ, մանուկներէ և մաս մըն ալ արհեստաւորներէ բաղկացած հայութեան հետ, բարբարոսներու հիմնած ընդարձակածաւալ կայսրութիւններուն մէջ հաստատուած են նաև ուրիշ Հայեր, որոնց մէկ կարևոր մասը ինքնաբերաբար և իրենց ազատ կամքով գացած է դէպի Հայոց աշխարհին արևելեան կողմը տարածուող անսահման տարածութեամբ երկիրները, մինչև Խաղաղական Ովկիանոս, որ ծանօթ աշխարհի վերջին սահմանն ընդունուած էր այն ատեն, երբ տակաւին Ամերիկայի գիւտը կատարուած չէր։

Ասիական ցամաքամասին այդ անհուն տարածութիւնները Թուրք բարբարոսներու դէպի արևմուտք արշաւելէն շատ առաջ, արդէն ծանօթ էին Հայերուն։ Մանաւանդ Հայաստանի անմիջական դրացի Պարսկական ընդարձակ պետութիւնը լաւ կը ճանչնային Հայերը, իսկ անոր արևելեան սահմաններէն՝ կեդրոնական Ասիայէն մինչև Խաղաղական տարածուած երկիրներն քիչ շատ Հայերու ծանօթ էին։

Հայերը, նոյնիսկ Արշակունեաց կործանումէն (Քրէ. յետոյ 428) առաջ, Պարսկաստանի հետ բազմապիսի յարաբերութիւններ ունեցած էին ու Պարսկաստանի և Հայաստանի միջև անընդհատ երթևեկ գոյութիւն ունեցած էր (ՊՀԳ. Ա. 134). միւս կողմէն՝ իբրև գերի Պարսկաստան տեղափոխուած Հայեր եւս գտնուած էին (ՊՀԳ. Ա. 133), ինչպէս նաեւ Հայ զինուորներ՝ որոնք Հայ նախարարներու հրամանին տակ Թուրանի դէմ Իրանի սահմանները պաշտպանելու համար կռուած էին (ՊՀԳ Ա. 134)։

Նոյնպէս գիտենք թէ Հայերը Հնդկաստանի հետ ալ յարաբերութիւններ ունէին և հնդկական ապրանքներ Արևմուտք կը փոխադրէին (ՊՀԳ. Ա. 138–140)։

Իսկ Արշակունեաց կործանումէն մինչև Բագրատունեաց կործանումը, այսինքն Քր.է 428էն մինչև 1040 հայեպարսիկ յարաբերութիւնները շարունակուած են և ինչպէս տեսնուեցաւ՝ Պարսիկ մեծ պետութեան զանազան մասերուն մէջ, ինչպէս Ասորեստանի, Խուժաստանի, Վրկանքի և Սագաստանի մէջ, նաև Կեդր. Ասիոյ մէջ՝ հայ բաւական հոծ գաղութներ հաստատուած էին և կ'զբաղէին գլխաւորապէս վաճառականութեամբ, մասամբ երկրագործութեամբ և երբեմն ալ կրօնական առաքելութիւններով, (տես ՊՀԳ. Ա. 191—193, 202, 207, 366—7)։

Անուրանալի ճշմարտութիւն մըն է թէ ամենահին ժամանակներէն սկսեալ Հայերը Ասիոյ ցամաքային վաճառականութեան գլխաւոր ռահվիրաները եղած են։

Քր.է չորս դար առաջ իսկ, ըստ Քսենոփոնի, Հնդկաստանի ճամբան անծանօթ չէր Հայոց (ՊՀԳ, Ա. 101—2)։ Իսկ Ստրաբոն, Պլինոս և ուրիշ հին պատմիչներ կը հաստատեն որ Հայ վաճառականներ կ'երթային Հնդկաստան, Թուրքեստան, Բակտրիա և Արևելեան Ասիոյ ուրիշ կողմերը (հմմտ. Ց. Քիւրտեան, Հում մետաքսի վաճառականութիւնը եւ Հայերը, էջ 4)։

Զ. դարուն Պրոկոպիոս կը վկայէ թէ Հնդկաստանէն Դուին՝ Հայաստանի մայրաքաղաքը ապրանքներ կուգային, (ՊՀԳ, Ա. 69)։

Հնդկաստանի և Չինաստանի ապրանքները Ոքսոս գետով կը բերուէին Կասպից Ծով, ուրկէ Կուրի ընթացքով կը տարուէին դէպի Սև ծով և կը տարածուէին (ՊՀԳ. Ա. 85)։

Քր.է հազիւ կէս դար առաջ, Տիգրան Մեծի օրերէն սկսեալ՝ Հայաստան համաշխարհային առևտուրի մէջ դեր կը կատարէր և Հայաստանի վաճառականութիւնը կը բարգաւաճէր և Արտաշատի և Դուինի պէս մեծ քաղաքներ երևան կուգային (ՊՀԳ, Ա. 21–22 և 69)։

Հայաստան կը ծառայէր գլխաւորաբար իբրև տարանցիկ (տրանզիտ) առևտուրի ճամբայ մը։

Արշակունեաց շրջանին տարանցիկ առևտուրի Հիւսիսային գիծը Հայաստանէն կ'անցնէր (ՊՀԳ Ա. 68) և Հայաստանի ճամբով էր որ Սև ծովի նաւահանգիստները կը ղրկուէին չինական մետաքսը և ուրիշ արևելեան թանկագին արտադրութիւնները, որոնք Չինաստանէն, Կեդր. Ասիայէն և Հիւսիսային Հնդկաստանէն, կ'արտածուէին դէպի Արևմուտք* (հմմտ. ՊՀԳ. Ա. 22)։ Փոխադարձաբար, Արևմուտքի մէջ գործուած ապրանքները, Հին աշխարհի առևտրական ամենամեծ բազկերակը և հաղորդակցութեան մեծ ուղին հանդիսացող Միջերկրականի միջոցով կը բերուէին ասիական եզերքները և այն տեղէն կը տարուէին կարաւաններով՝ Կովկասի և Հայաստանի ճամբով դէպի Պարսից ծոց, Հնդկաստան և Չինաստան։



Ասիական բարբարոսներու արշաւանքներու շրջանին ալ Հայաստանէն կ'անցնէր տարանցիկ առևտուրի Հիւսիսային գիծը, և հետևաբար ասիական ապրանքներու առևտուրին մէջ Հայաստան կը պահէր իր դերը՝ մինչև ԺԵ. դար, երբ Հնդկաստանի և Չինաստանի առևտուրը ծովով կատարուիլ սկսաւ և Հայաստան կորսնցուց իր դիրքը իբրև տարանցիկ առևտուրի միջնորդ (ՊՀԳ. Ա. 75)։

Ասիոյ խորերէն դէպի Արևմուտք շարժող առաջին Սելջուկեան ցեղախումբերը կազմուած պետութիւն մը չունէին, այլ խորագոյն Ասիոյ ժողովուրդներու տեղաշարժին հետևանօք իրենց բնակավայրերէն վանուած և Արևմուտք շարժած էին և Ղազնէվիներու երկիրը թափանցելով (վերը, 87), կեդրոնական Ասիայէն մինչև Փոքր Ասիա տարածուող պետութիւն մը կազմած էին, որ քիչ շատ կարգաւորեալ պետութիւն մը եղած էր։

Իսկ Մոնկոլները՝ ամէն ինչ տակնուվրայ ու քարուքանդ ըրին Արևելքի մէջ։

Չինկիզ, Մոնկոլ կայսրութեան հիմնադիրը, տակաւին աշխարհակալութեանց չձեռնարկած, իր աճող բանակներուն համար պէտք ունէր Դամասկեան զէնքեր ստանալու Արևմուտքէն՝ Մետաքսի ճանապարհով, ինչպէս յիշուեցաւ (վերը, 81), շատ սուղ վճարելով, վասնզի այդ ճանապարհը Պարսկաստանէն մինչեւ իր տէրութեան սահմանը կ'անցնէր Գարախիթայէն (= Սեւ Չինաստան), որուն բնակիչներուն համար աւելի շահաւէտ էր կարաւաններէն գանձուած տարանցիկ առևտուրի (տրանզիտ) տուրքը, քան իրենց դաշտերը մշակելը։ Այս խոշոր տուրքէն փրկուելու համար՝ տեսանք թէ Չինկիզ ինչպէս առանց վաճառականութիւնը պաշտպանելու պատրուակով գրաւեց Գարախիթան և դրացի դարձաւ Խուարէզմի Սուլթան Ալա–Ուտ–Տին Մահմուտ Շահին (1172—1220), (տես. վերը, 82), որուն հետ դաշինք կնքեց որ Մոնկոլ առևտրական կարաւանները ազատօրէն անցնին Խուարէզմէն դէպի Արևմուտք երթալու համար (տես. վերը, 85)։

Սակայն Ոքսոսի եզերքը գտնուող Իւթրարի կամ Օթրարի քաղաքին կառավարիչը անկէ անցնող Մոնկոլ վաճառականներու խումբ մը սպաննեց և անոնց ունեցածը, ապրանք և դրամ, գրաւեց և առով գեղեցիկ պատրուակ մը ընծայեց Չինկիզի, որ ինչպէս տեսանք (վերը, 85—86), չարաչար պատժեց Շահ Մահմուտը և անոր երկիրը գրաւեց։

Չինկիզ, ինչպէս կը թուի, հետամուտ էր զարկ տալու իր երկրին առևտրական զարգացման։ Այնպէս որ, համատարած աւերումէ մը վերջ, Մոնկոլ կայսրութեան մէջ քիչ քիչ վերակազմուեցան տեղական և կարաւանային առևտուրները, ինչպէս նաև արհեստներու և արդիւնագործութեան կեդրոնները։ (Հմմտ. Ց. Մանանդեան, ՔԵԵ. Տես. Գ. 258)։

Մոնկոլ ընդարձակ կայսրութեան սահմաններուն մէջ համապարփակուած էին Ծայրագոյն և Մերձաւոր Արևելքի բարգաւաճ երկիրները, ինչպէս նաև Դեշդի Քիփչաքը և Ռուսաստանը։ Այս ընդարձակ տարածութիւնները և մանաւանդ անոնց այն բարգաւաճ մասերը, որոնք այնքան զարգացած վաճառականութիւն և հաղորդակցութիւններ ունեցած էին անցեալին մէջ, չէին կրնար բարբարոսներու արշաւանքներուն պատճառով լքել իրենց առևտրական բոլոր գործառնութիւնները և հրաժարիլ այն ապրանքներէն, որոնք կարաւաններով կը բերուէին հեռաւոր Արևելքէն։ Հետևաբար առևտրականներ նոր հնարքներ և նոր ճամբաներ որոնեցին, ստանալու համար այդ ապրանքները։

Այսպէս, աշխարհի առևտրական կեանքին մէջ մեծ փոփոխութիւն մը առաջ եկաւ։

Հայաստան ալ նոյնպէս իր առեւտրական կեանքին մէջ մեծ փոփոխութեան ենթարկուեցաւ։

Սելջուկ, Մոնկոլ և Թաթար արշաւանքները չքացուցած էին հայկական մեղրի, ջորիներու, աղած ձուկի, գորգի կամ ուրիշ հիւսուածեղէններու շահաբեր և տարածեալ առևտուրը, այնքան բարգաւաճ Թ. Ժ. և նոյնիսկ ԺԱ. դարերուն, սակայն անոնց տեղ հայ վաճառականութիւնը նոր կեանք և մեծ զարկ տուած էր համեմի, մանաւանդ հում մետաքսի մեծապէս զարգացած առևտուրին (Յ. Քիւրտեան, Հում մետաքսի վաճառականութիւնը եւ Հայերը, էջ 7)։

Պէտք չէ մոռնալ նաև ժամանակին փոփոխեալ պայմանները։ Խաչակրութիւններու հետևանքով Եւրոպացիք յարաբերութիւն մշակել սկսան Մոնկոլներու հետ և աշխատեցան զանոնք իսլամութեան դէմ իրենց զինակից ունենալ, գուցէ աւելի տնտեսական հաշիւներով քան թէ կրօնական։ Արաբական տիրապետութիւնը ձեռնտու չէր բնաւ քրիստոնեայ Եւրոպացիներու ազատ վաճառականութեան, ուստի Երուսաղէմի փրկութիւնը գեղեցիկ պատրուակ մըն էր, Արաբները ընկճելու և առեւտուրի ազատութիւնը ապահովելու համար։

Առաջին Խաչակրութիւնները արեւմտեան ազգերու առջեւ առևտրական շահագործութեան նոր հրապարակներ բացած էին, որոնք սակայն վտանգուած էին Արաբներու կրկին զօրանալովը և Չինկիզ Խանի յաջորդներուն խուժումովը դէպի Արեւմուտք։ Մոնկոլները ոչ միայն տիրած էին Փոքր Ասիոյ և Ռուսաստանի, այլև կ'սպառնային Հունգարիոյ և Արևմտեան Եւրոպայի։

Հետևաբար՝ Հռոմի պապը, Գերմանիոյ կայսրը, Ֆրանսայի, Անգլիոյ և Սպանիոյ թագաւորները երբ մէկ կողմէն Խաչակրաց արշաւանքները կը կազմակերպէին տիրելու համար Երուսաղէմի կամ Կ. Պոլսոյ տիրապետութեամբ Պաղեստինի և Սուրիոյ առևտրական ճամբաներուն, միւս կողմէն պատուիրակութիւններ կը ղրկէին Մոնկոլ թագաւորներուն և զօրավարներուն, անոնց հետ բանակցելու և դաշնակցութիւններ կնքելու և միևնոյն ժամանակ Արևելքի տնտեսական ու քաղաքական կացութիւնը ուսումնասիրելու համար (Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւններ հտ. Ա. ԺԳ.—ԺԶ. դարք, 1932, Երևան, էջ 1—2)։



Առաջին առաքելութիւնները, որոնք ղրկուած էին 1245—1247ին Իննովկենդ Դ. Պապէն, կը բաղկանային Ֆրանչիսկեան միաբաններէ և նպատակ ունէին դիմելու այն Մոնկոլ զօրավարներուն, որոնք Ռուսաստան և Հայաստան կը գտնուէին, վասնզի ուղղակի անոնցմով կը շահագրգռուէին իբրև իրենց նպատակին ձեռնտու ուժեր։

Ռուսաստան ղրկուած պատուիրակութեան պետն էր Յովհաննէս Տը Պիանօ Կարպին, (John de Piano Carpini) և Հայաստանի պատուիրակութեան գլուխն էր Լորենսօ Փորթուկալցի (Նոյն, 2—3)

Նոյն Պապը 1247ին երկրորդ պատուիրակութիւն մը ղրկեց Փոքր Ասիա՝ գլխաւորութեամբ Դոմինիկեան միաբան Anscelinի կամ Ascelmի, երբ արդէն Մոնկոլները ուշադրութիւն դարձնել սկսած էին Եւրոպացիներու խնդրանքին՝ հաւաքական ուժերով Արաբները քշելու համար, վասնզի Արաբները իրենց դէմ կը մաքառէին Սուրիոյ և Միջագետքի մէջ և արգելք կ'ըլլային իրենց առաջացման։ Հետևաբար իրենք ալ կը ձեռնարկէին բանակցութիւններու։ Այս նպատակով 1248ին Պարսկաստանի Մոնկոլ բանակի հրամանատարը Իլչիկատայ Խան իր կողմէն Կիպրոս՝ Ֆրանսայի Լուի Թ. թագաւորին ղրկած էր Սապետտին Մոոլֆաթ Դաւիթ անուն անձ մը, որ կ'երևի թէ սպասաւորութիւն գործելու և Ֆրանսայի թագաւորը սիրաշահելու համար, սուտը իրաւին խառնած է (տես Ուղեգրութիւնք Ա. 3—4)։

Ֆրանսայի թագաւորը, որ մեր Հեթում Ա. թագաւորին քաղաքականութիւնը ընդգրկած էր և կ'ուզէր Մոնկոլներուն հետ զինակցիլ, որոշեց փոխադարձաբար պատուիրակութիւն մը ղրկել ոչ միայն Իլչիկատային, այլ Մեծ Խանին՝ Քիուկին։

Այս պատուիրակութեան գլուխն էր Եղբայր Անդրէաս։ Իսկ անոր մաս կը կազմէին Անդրէասի եղբայրը, ուրիշ վանական մը և չորս աշխարհականներ և Մոնկոլ զօրավարին կողմէ ղրկուած Դաւիթը (Նոյն, 4)։

Պատուիրակութիւնը 1249 Փետրուարին ճամբայ ելաւ, իր հետ տանելով Լուի Թ. թագաւորին նամակը և ճոխ նուէրներ։ Ասոնք մինչև որ հասան Գարագորում Քիուք՝ Խան մեռած էր և իշխանութիւնը կը վարէր իբրև խնամակալ՝ Օղուլ Կըսթմիշ կայսրուհին, որ ի նպաստ իրեն շահագործեց այս պատուիրակութեան ժամանումը, յայտնելով թէ Ֆրանսայի թագաւորը իրեն հնազանդած էր և պատրաստ՝ իր թշնամիներուն դէմ իրեն օգնական կանգնելու։

1251ին պատուիրակները դարձան Պաղեստին, ուր կը գտնուէր Լուի թագաւոր։

Իսկ 1253—1255ին, իբր թէ անպաշտօն, Մոնկոլիա այցելեց Ֆրանչիսկեան Ուիլիամ Ռուբրուք, (William Rubruck) որ Լուի Թ. թագաւորին յանձնարարականներով ճամբայ ելաւ նախ Ոսկէ Հորդայի Սարտաղին և ապա Մոնկոլ կայսեր ներկայանալու համար։ Աքիայէն ճամբայ ելաւ ան՝ 1252ի գարնան և յաջորդ տարին (1253) Մայիսին՝ գնաց Մոնկոլիա՝ Սարտաղի յանձնարարականով (Նոյն, 5—6)։

Մանգոյ Խանի օրտուին (բանակատեղի) մէջ ան կը հանդիպի հայ վանականի մը, կեղծ կրօնաւոր, Սարգիս անունով, որ կ'առաջարկուի դեսպան

ղրկել Պալին, սակայն Ռուբրուք կը մերժէ այս առաջարկը, կասկածելով որ Սարգիս լրտեսելու համար Եւրոպա կը ղրկուի (նոյն, 7—8)։

Ինչպէս կը տեսնուի, քաղաքական գործակալներ կը վխտային Մոնկոլ արքունիքին մէջ և դեր կը կատարէին։

Ամէնէն կարեւոր դերը այն էր որ անոնք երկու կողմերու մերձեցման տրամադրութիւնները կ'օգտագործէին։

Այսպէս, իսկական պատուիրակներու հետ բախտախնդիրներ ալ կային — ինչպէս վերոյիշեալ Սարգիսը — ինչպէս նաև շահախնդիր կամ դրամասէր մարդիկ, որոնք առևտրական շահարկութիւններ կը հետապնդէին։

Ինչպէս առաջին Խաչակիրներուն յաջորդեցին առեւտրականներու խումբերը, Արեւելքի բարիքները շահագործելու համար, նոյնպէս ալ Մոնկոլ արքունիքը թափանցող այս անձերուն իբր ստուեր հետեւան եկան Ասիոյ խորերէն ապրանքներ ստանալու հնարաւորութիւններ որոնող առեւտուրի մարդիկը։ Այսպէս, կամաց կամաց սկսան առեւտրականներու թափանցումը դէպի Մոնկոլիա և հնարաւորութեան սահմանին մէջ միջազգային առեւտուրի գոյառութիւնը։

Բարբարոսները՝ չափազանց ընչաքաղց, պիտի չհակառակէին այս շարժումին, որ իրենց պիտի ապահովէր նիւթական առաւելութիւններ, մաքսի, տուրքի, անցքի անունով առնուած հարկերով։ Հետեւաբար քաջալերեցին առեւտրական կարաւաններու երթեւեկը որ գուցէ ընդհատումներ ունեցած է պատերազմներու թոհուբոհին մէջ, այլ սակայն միշտ վերսկսած է եւ շարունակուած։

Մոնկոլ Խաները միշտ օգտակար եւ շահաւէտ նկատած են վաճառականութեան քաջալերանքը եւ Չինացի, Արաբ, Պարսիկ վաճառականներ՝ այս քաղաքականութենէն խրախուսուած, Չինկիզ Խանի (1206-1227) իշխանութենէն ալ առաջ, երթեւեկած են Մոնկոլիա, եւ երբեմն երկար ժամանակ բնակած են Մոնկոլ Խաներու եւ մեծ աւատապետներու հրամանով եւ ջանքերով կերտուած նոր քաղաքներուն մէջ։

Այդ առեւտրականները կամ միջնորդները, ինչպէս նաեւ վաճառականները, իրենց կարաւաններով կը բերէին ոչ միայն ապրանքներ այլ Մոնկոլիա կը ներմուծէին մշակոյթ եւ ճարտարարուեստ, միեւնոյն ատեն Մոնկոլներուն հայթայթելով տարաշխարհներու մասին ռազմական եւ քաղաքական ու տնտեսական կարեւոր տեղեկութիւններ։

Կիրակոս Գանձակեցի (151) պատմիչը կը վկայէ որ Մոնկոլ Խաները կը պաշտպանէին վաճառականները եւ անոնց առանձնաշնորհումներ տուած էին նոյնիսկ Չարմաղանի արշաւանքին ատեն։

Գանձակեցի, խօսելով Ասորի Սիմէոն անուն կրօնաւորի մը վրայ, կը պատմէ թէ ի՛նչպէս ան մեծ ազդեցութիւն ձեռք բերած էր Մոնկոլ Խանին վրայ եւ կը կոչուէր Ռաբան Աթա, այսինքն Վարդապետ Հայր։ Խանին յանձնարարականով ան կը յաջողի մասնաւորապէս Դաւրէժի եւ Նախճուանի մէջ գործադրուած քրիստոնէից ջարդը դադրեցնելու եւ քրիստոնեաներու կրօնական ազատութիւնը ապահովելու։

Գանձակեցի կը գրէ. «մարդիկ նորա վաճառականք՝ որք ունէին զսամ-



ղա նորա, այսինքն զնշան եւ զգիր՝ համարձակ շրջէին ընդ ամենայն աշխարհ, եւ ոչ ոք իշխէր մերձենալ առ նոսա»: (151):

Հայաստան և Վրաստան, որ աղքատացած և տնտեսապէս մեծապէս վնասուած և յետադիմած էին, իբրև հետեւանք իշխանութեանց աւերիչ դրութեան և կառավարական պաշտօնէութեան կեղեքումներուն և հարստահարութիւններուն (տես Յ. Մանանդեան ՔՆՆ. Տես. Գ. 288) — բան մը որուն համար կը գանգատին ժամանակակից բոլոր Հայ, Վրացի և Պարսիկ ժամանակագիրները — հետզհետէ վերստին կը ճլտորին և իրենց մէջքը կը շտկեն, շնորհիւ ճարպիկ առևտրականներու, որոնց մէջ ապահովաբար Հայերու թիւը աննշան չէր։

Միւս կողմէն՝ առևտրական կեանքին զարգացումը ընչաքաղց Մոնկոլ Խաներու ախորժակը կը գրգռէր. այնպէս որ, Ղազան Խան կ'աշխատի բարեկամական յարաբերութիւններ պահել Ոսկէ Հորդայի հետ, ուր կ'իշխէր այն ժամանակ Տոխտա Խան (1290—1312)։

Վասաֆ պատմագիրը կ'ըսէ.

«Երբ Մանգու-Թիմուրի թագաւորութեան ժառանգը դարձաւ, Տոխտան դեսպաններու պարբերական ժամանման եւ յաճախակի յարաբերութիւններուն շնորհիւ ճանապարհը նորէն բացուեր էր առեւտրականներու եւ օրթաղներուն համար ու միջոցներ ձեռք առնուած էին ճանապարհորդներու անվտանգութեան եւ անդորրութեան համար: Առանի երկիրը կ'ալեկոծուէր երթեւեկող սայլերու, ստրուկներու, ձիերու եւ ոչխարներու բազմութեան պատճառով: Այդ երկիրներու ապրանքներն ու հազուագիւտ իրերը, որոնք այնքան տարիներու ընթացքին չէին արտահանուած, նորէն դրուեցան շրջանառութեան մէջ»: (Յ. Մանանդեան ՔՆՆ. տես. Գ. 305)։

Այսպէս, զարգանալ կ'սկսէր Միջազգային առևտուրը. և անոր մասնակից կ'ըլլային Պարսկաստան, Փոքր Ասիա, Հայաստան և Վրաստան, Դեշդի Քիփչաք, Ռուսաստան, Միջին Ասիա, Չինաստան, ինչպէս նաև իտալական ծովային Հանրապետութիւններու միջնորդութեամբ Միջերկրականի և Սև ծովի շուրջ գտնուող երկիրները՝ Իտալիա և Արևմտեան Եւրոպա։

Յայտնի է որ Մոնկոլներու ատեն մեծ կարեւորութիւն ունէին ոչ թէ Հարաւային, այլ երկու Հիւսիսային գլխաւոր ճանապարհները՝ որոնցմէ մէկը Թուրքեստանի՝ Խուարէզմի և Ոսկէ Հորդայի քաղաքներուն ուղիով դէպի Պալթիկ ծով կամ Սև ծովու Հիւսիսային եզերքներու նաւահանգիստները, իսկ միւսը Պարսկաստանի, Ատրպատականի և Հայաստանի ճամբով դէպի Տրապիզոն կամ Փոքր Ասիա՝ գլխաւորապէս Կիլիկիոյ Հայ նաւահանգիստները կը յանգէր։

Հարաւային ճանապարհները այն ատեն մեծ դեր չէին կատարեր, որովհետև Մոնկոլները, հակառակ անոր որ փորձած էին նուաճել Սուրիան և գրաւել նաև հարաւի կարաւանային մեծ ճամբաները, բայց չէին յաջողած։

Տարանցիկ առեւտուրի ճամբաներուն տեղափոխութիւնը Հարաւէն Հիւսիս՝ պատճառ եղաւ որ խոշոր քաղաքներ հիմնուին այդ պողոտային վրայ։

ԺԳ. դարուն երկրորդ կէսին, Հիւսիսային Պարսկաստանի առեւտրական

գլխաւոր քաղաքն էր Դաւրէժ, զոր խնայած էին ասիական հորդաները, վասնզի քաղաքը անձնատուր եղած էր ինքնակամօրէն։ Դաւրէժ յետոյ եղաւ միանգամայն թէ՛ մայրաքաղաք և թէ առեւտրական ճարտարարուեստական առաջնակարգ կեդրոն մը, թէեւ արուեստական կեդրոն մը, վասնզի հոն հաստատուած վաճառականները ստիպուած էին բնակիլ իրենց վեհապետներուն կողմէ, բայց միշտ յաջողած էին (տես Revue du Monde Musulman, 1921 Volume XLVI. Essai sur les rapports de la Perse avec d'Europe, de l'Antiquité au commencement du XIX siècle L. Bouvat էջ 38)։

Ղազան Խան (1295—1304) ընդարձակեց այդ քաղաքը, հիմնելով հին քաղաքին քով Ղազանիյէ կոչուած նոր քաղաք մը, հինին հարաւային արեւելեան կողմը։ Ղազան Խան շինել տուած էր Դաւրէժի մէջ հոյակապ մզկիթ մը, շքեղ դամբարան մը, նաեւ բազմաթիւ դպրոցներ և մատենադարաններ, ինչպէս նաեւ հիւանդանոց մը և դիտարան մը (Ֆրիկ, 565)։

Մանաւորապէս դամբարանին շինութեան աշխատած են շատ Հայ վարպետներ և բանուորներ (Կ. Պիտեան, Պարսկահայ Օրացոյց 1921, էջ 140)։

Ղազան Խան, Դաւրէժ հաւաքեց այդ հաստատութիւնները վարելու և անոնց վրայ հսկելու համար գիտուն և կարող անձեր, որոնք խոշոր թոշակներ կ'ստանային։ Պետական գանձատունը հարուստ էր բաւական, որպէսզի կարող լինէր այդ բոլորը գլուխ հանել, պահել այդ հաստատութիւնները և նպաստել ուսանողներուն, որոնց թիւը հազարաւոր էր։ Ղազան Խան, Իլխանեանց մեծագոյն պետական անձն է (Ֆրիկ, 565)։ Իր յաջորդը, Խուտապէնտէ (1304—1306) շինել տուաւ կայսերական նոր բնակավայր մը՝ որ Սուլթանիյէ կոչուեցաւ, (Z. Bouvat, Նոյն) (1) և որ նշանաւոր եղաւ ետքը։

Այս շրջանին Դաւրէժի մէջ կը գործուէին յոյժ գնահատուած գորգեր։ Հոն կը ծախուէին նաեւ ոչ նուազ գնահատուած մետաքսեղէններ և դիպակներ, տեղական վաճառականութեան մասնագիտութիւններէն մին եղող թանկագին քարեր և հին աշխարհի ամէն կողմերէն, ըլլայ Պաղտատէն և Մուսուլէն, ըլլայ Պարսից ծոցէն ու Հնդկաստանէն եկած ամէն տեսակ ապրանքներ։ Իլխանեանց ժամանակ իսկ, Վենետիկէն եւ Ճենովայէն վաճառականներու թոյլ տրուած էր Դաւրէժի մէջ գրասենեակներ հաստատել (Յ. Մանանդեան. ՔՆՆ. տես. Գ. 262)։ Այսպէս Եւրոպացիներ եւս հոն կը հաստատուէին եւ ցամաքային առեւտուրին խառնուելու կ'աշխատէին։

Պահուած է անոնցմէ մէկուն կտակը, որ գրուած է այդ քաղաքին մէջ 1264 Դեկտ. 10ին։ Կ'երեւայ որ առեւտրական յանձնակատար մըն էր, որ ի մէջ այլոց, Վենետիկի, Լոմպարտիոյ, Գերմանիոյ եւ Ֆլանտրի հետ չուխայի առեւտուր կ'ընէր։ 20—25 տարի ետքը, Դաւրէժի մէջ կը գտնուէր Բիզացի մը, Ժոլիւս կամ Զոլուս (?) անուն, որ քրիստոնէական քարոզութիւններ կ'ընէր։ Այն ատենուան վեհապետը, Արղուն Խան (1284—1291), բարեկամ քը-

(1) Ըստ այլոց՝ Արղունի (1284—1291) ատեն սկսած էր այն քաղաքին շինութիւնը ԺԳ. դարուն վերջերը եւ ԺԴ. դարուն սկիզբները, Զինջանի եւ Ղազվինի միջեւ (տես. Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես. Գ. 262):



րիստոնեաներու, միւս կողմէն կը քաջալերէր Ճենովացիներուն այն ծրագիրը, որուն համաձայն պիտի աշխատէին Կարմիր ծովին վաճառականութիւնը ուղղել դէպի Պարսից ծոցին կողմը — ուր նաւահանգիստ մը շինուած էր — քանի որ ծովահէններու պատճառով, առեւտրական նաւեր արգելքի կը հանդիպէին։ Կէլֆեանց եւ Կիպելեանց մրցակցութիւնը արգելք եղաւ այս ծրագիրը իրագործելու, բայց Ճենովացիք միշտ բազմաթիւ եւ ազդեցիկ մնացին Դաւրէժի մէջ (տես. Նոյն): Այս իրողութիւնը կը հաստատէ Մարքոյ Բօլոյ (տես. W. Heyd, Histoire du Commerce du Levant au Moyen Age թրգ. Furey Raynaud T. II. p. 107—111)։

Քիչ ետքը անոնք ունեցան հոն հիւպատոս մը, որուն կը գործակցէր 24 անդամներէ բաղկացեալ ժողով մը։ Վենետիկցիներն ալ ունէին ուրիշ հիւպատոս մը կամ աւելի գաղթականութեան պետ մը, masor, որ չորս խորհրդականներով հոգ կը տանէր իր հայրենակիցներու շահերուն։

Մինչեւ 1320, յոյժ ծաղկեալ էր առեւտուրը. այդ ժամանակամիջոցին՝ «Վենետիկէն մինչեւ Դաւրէժ ուղեւորութիւն մը, Տրապիզոնի ճամբով, ոչ մէկուն արտասովոր իրողութիւն մը կը թուէր» (Նոյն, 130), սակայն Սուլթան Ապու Սայիտի (1316—1335) մահէն վերջ արագաբար ինկաւ անոնց վաճառականութիւնը։

Մոնկոլներու շրջանին հիւսուածեղէնի ճարտարարուեստը կը պահէր իր վաղեմի համբաւը. Պարսկաստանի մէջ գրեթէ չկար քաղաք մը, ուր զարգացած չըլլար անիկա։ Եզդ, որուն մասնագիտութիւնը այդ էր, տիեզերական համբաւ մը ունէր։ Անկէ յետոյ կուգային Նիշապուր, Մերվ, Սպահան, Շուլթէր և Շիրազ, որոնք ամէնէն համբաւաւոր կեդրոններն են։ Այս քաղաքները իրենց արտադրութիւնները օտար երկիրներ կ'արտածէին։ Թաֆթան — որ արեւմտեան լեզուներուն մէջ իր պարսիկ անունը պահած է — կուգար Պարսկաստանէն, ուր կը շինուէին նաեւ ճոխ կերպասներ՝ զարդարուած և ոսկեճամուկ։ Մարքոյ Բօլոյ կը վկայէ թէ Դաւրէժի բնակիչները «բազմաթիւ տեսակ և մեծ արժէքով ոսկեայ և մետաքսեայ դիպակներ կը պատրաստէին»։

Այս քառադարեան (1040—1468) ժամանակամիջոցին մէջ «մէկ միլիոնէն աւելի բնակիչ ունէր Դաւրէժ, ուր Հիւսիսի եւ Հարաւի առեւտուրը կը խաչաձեւէր Խորասանի ճամբան: Եւ (Լէնկ Թիմուրի) Դաւրէժէն ունեցած եկամուտը աւելի էր քան Ֆրանսայի թագաւորին տարեկան բոլոր եկամուտը: Ձեռքի տակ եղող բոլոր վկայութիւնները կը ցուցնեն, որ Դաւրէժ այդ ժամանակ աշխարհի ամենամեծ քաղաքն էր, Չինաստանը չհաշուած: Սմրղանդ, Դամասկոս եւ Պաղտատ աւելի պզտիկ էին եւ կը գերազանցէին Հռոմը եւ Վենետիկը իրենց մեծութեամբ եւ ճոխութեամբ, ԺԴ. դարուն վերջաւորութեան:

Յայտնապէս այսպիսի քաղաքի մը մէջ բնակիչները գլխահարկ չէին վճարեր, բայց քաղաքին խորհուրդը տարեկան գումար մը կը վճարէր Լէնկ Թիմուրի կառավարիչին: Տուրք մըն էր այս, բայց գործը կը վճարէր, քաղաքը զերծ էր նեղութենէ...: Լէնկ Թիմուրի օրով Դաւրէժը մթերանոց մըն էր ամբողջ աշխարհի առեւտուրին համար. Խորասանի մեծ ճամբան հոն կը

միանար Հարաւային ճամբուն՝ դէպի Պաղտաս, Պարսկաստան եւ Պարսից ծոց...: Մարքոյ Բօլոյ 1270ին կ'ըսէ. «Դաւրէժը մեծ եւ ազնուական քաղաք մըն է եւ այնպիսի դիրք մը ունի որ առեւտուրը հոն կու գայ Պաղտասէն, Հնդկաստանէն եւ տաք երկիրներէն: Այստեղ կը բնակին Հայեր, Նեստորականներ, Յակոբիկեաններ, Վրացիներ, Պարսիկներ եւ վերջապէս քաղաքին բնիկները՝ որ մահմետական են:

Դիմելով Վենետիկեան դիւանաթուղթերու, կը գտնենք որ 1341ին Ճենովացիները հոն գործատուն մը ունէին, քսանըչորս վաճառականներու խորհուրդի մը ձեռքին տակ: Հոս գործատուն բառը առնելու է մթերանոցի իմաստով եւ ոչ թէ շինութեան գործատեղիի իմաստով:

Պարսիկ նշանաւոր պատմաբան Րաշիտէտտին, որ կ'ապրէր 1300ին, կ'ըսէ. «Դաւրէժի մէջ հաւաքուած էին՝ Իսլամ կայսեր աչքին տակ՝ փիլիսոփաներ, աստղագէտներ, գիտուններ, պատմաբաններ բոլոր կրօններու ու աղանդներու: Հոն էին մարդիկ Խաթայէն (Չինաստան), Հնդկաստանէն, Քաշմիրէն, Թիպէթէն, Ույղուրէն եւ ուրիշ թրքական ազգերէն, Արաբներէն եւ Ֆրանքներէն (եւրոպացի)»:

Իսկ Սէյիտէն եւ Մոսթավֆիէն կ'իմանանք որ իր արուարձաններով միասին Դաւրէժի արտաքին պատը 25000 քայլաչափ (մէկ քայլաչափը 3.5 ոտք) էր, թէ իր հանրային շէնքերը, մզկիթները, ակադեմիաները եւ հիւանդանոցները դուրսէն պատած էին փայլուն կղմինտրներով, յաճախ մարմարով եւ կրաքարով: Անիկա ունէր 200000 տուներ, պանդոկներն եւ ճամբորդներու օթեւաններէն զատ, ինչ որ կը նշանակէ միլիոն մը եւ քառորդ բնակչութիւն: Կը խօսուի թէ միակ երկրաշարժի մը առթիւ 40,000ի չափ մարդ մեռած է:

Իբն Պաթութա կը յիշէ թէ նոյնիսկ մուշկ եւ յամբար ծախողները առանձին շուկաներ ունէին, եւ թէ երբ անցաւ ոսկերիչներու շուկայէն, իր աչքերը կը շլանային այն թանկագին քարերէն, զորս կը ներկայացնէին թաթար կիներուն՝ ճոխօրէն զգեստաւորուած գերիներ:

Եւ Ֆրա Օտէրիկ, գրելով նոյն ատենները՝ կ'ըսէր. «Ձեզ կ'ըսեմ որ այս քաղաքը աշխարհի ամենալաւն է առեւտուրի համար: Հոս ամէն առարկայ կը գտնուի առատութեամբ: Այնչափ հրաշալի է որ մարդ հազիւ կը հաւատայ ամէն բանի, եթէ աչքովը չտեսնէ: Այստեղի քրիստոնեաները կ'ըսեն թէ քաղաքին վճարած տուրքը իր կայսեր, աւելի է քան ամբողջ Ֆրանսայի վճարած տարեկան տուրքը իր թագաւորին:

Երկրախոյզ Շարտէն՝ տասնեօթերորդ դարուն՝ անոր բնակչութիւնը, որ տեւականօրէն նուազած էր, կ'ենթադրէր 532,000:

Դաւրէժ աւելի մեծ էր քան Սմրզանդ, որուն շրջապատը առանց իր արուարձաններուն 10,000 քայլաչափ էր: Կլավիխօ, Քասթիլիոյ (Սպանիա) թագաւորին սենեկապետը, անցաւ Դաւրէժէն եւ լիակատար նկարագրութիւն մը տուաւ:

Անոր նկարագրութիւնը կարեւոր է, այն պատճառով որ կը ցուցնէ՝ թէ Լէնկ Թիմուր ընդունակ էր պահելու եւ բարեկարգելու գրաւած մայրաքաղաք մը: Եւրոպացի պատմագիրներ յիշած են մասնաւոր քանի մը շէնքեր, որ իբր թէ ան վառած ըլլայ ու որոնց քարերը անաղարտ մնացած են մին-



չեւ այսօր, առանց կրակի հետքի մը: Թէեւ սոսկալի էր անոր արշաւանքին պատճառած աւերածութիւնը, բայց պէտք է յիշուի նաեւ թէ ան ձեռք չէր դպցներ այն քաղաքներուն, որոնք կը յանձնուէին առանց դիմադրութեան» (*Հարոլտ Լէմ. Թրգ. Գ. Ալան, Ալիք օրաթերթ, Թիւ* 86 (4565) 1954):

*ԺԴ. դարուն առեւտրական երկու մեծ ուղիներ Դաւրէժ կը յանգէին: Առաջինը, որուն կը հետեւէին ընդհանրապէս Պարսիկները, ըստ Բեկօլէտտիի, կը մեկնէր Այասէն և կ'անցնէր Սեբաստիայէն, Երզնկայէն և Էրզրումէն: Երկրորդը՝ կարաւաններու հետեւած ուղին էր և կը մեկնէր Տրապիզոնէն: Ուրիշ ճամբայ մը, դժուարին և վտանգաւոր, Դաւրէժէն կ'երկարէր դէպի Պարսից Ծոց, Քէշանի, Եզդի և Քիրմանի ճամբով:*

*Միջին Դարուն, Պարսկաստան՝ թէ՛ Արեւելք և թէ՛ Եւրոպա կ'արտածէր չերամի բոժոժներէն հանուած մետաքս* (soie grège), *զոր Ճենովացիք և Վենետիկցիք ԺԴ. և ԺԴ դարերուն մէջ Կասպեան Նահանգները կամ Շիրուան կ'երթային գնելու, մեծաքանակ կ'արտածէին նաև բամպակ, լեղակ, մանանայ կամ* — գազպէն *զոր պարսիկները կը կոչէին* թէր էնկուպին (= *հեղուկ մեղր*) —, *մոմիա* (մումիյյա = *սեւ մեղրամոմ*), *այսինքն կպրաձիւթ* (pissasphate), *որուն ամենայարգի տեսակը կը հայթայթուէր Տարաճպէրկի հանքէն, քրքում* (զաֆրան), *մետաքս, զինկոյ հանածոյ* — *որ* թութիա *անունով ծանօթ էր,* — *ձի ևայլն:*

*Մարգարիտները Հիւրմիւզի մէջ կը ծախուէին և անոնց գլխաւոր շուկաներն էին Դաւրէժ, Սուլթանիյէ, Սմրղանդ և Պաղտատ:*

*Պատաքճանի սուտակը և լաջուարթը հռչակաւոր էին: Գալով փիրուզակին, միշտ Պարսկաստանն էր որ զայն հայթայթած է աշխարհի:*

*Վերջապէս, այս շրջանին Պարսկաստան տարանցիկ* (թրանզիթ) *առեւտուր կը կատարէր Չինական մետաքսեղէններուն, ճենապակիներու և խաւարծիլի* (րավէնտ), *գորշագոյն սաթի և հնդկական կարգ մը ապրանքներու.* (Histoire des Arabes T. II. p. 80—93): *Ասիոյ արտադրութիւններուն մեծագոյն մասը Դամասկոս կը հասնէր, ոչ թէ Մեքքէի կարաւաններուն ճամբով կամ բոլորովին ցամաքի վրայով, Պարսկաստանի և Միջագետքի ուղղութեամբ (տես.* Heyd, Նոյն t. II. 61):

*Այս առեւտրական ոգեւորեալ շարժումին, որուն հանդիսավայր կ'ըլլար Պարսկաստան, անմասն և անհաղորդ չէին Հայերը, որ առեւտրական այս բոլոր ուղիներուն ծանօթութիւնը ունէին կամ արդէն անոնց վրայ կը գտնուէին:*

*Անոնք արդէն յարաբերութեան մէջ էին Վենետիկի և Ճենովայի հետ և Տրապիզոն, Կարին, Երզնկա իրենց բնիկ երկիրներն էին, ինչպէս նաև Դաւրէժ ու շրջակայքը:*

*Ֆլորենցի Պեկոլոտտի (ԺԴ. դարուն սկիզբը) կը յիշէ կարաւանի այն ճանապարհը, որ Կիլիկիոյ Այաս նաւահանգիստէն դէպի Դաւրէժ կ'երթար՝ Կեօքսիւէն անցնելով Սեբաստիա և ապա Երզնկայէն անցնելով Կարին՝ որ իբրեւ ճանապարհներու միացման կէտ՝ միջազգային առեւտրական յարաբերութիւններու համար կարեւոր վայր մըն էր, վասնզի կապուած էր ոչ միայն Փոքր Ասիոյ և Կիլիկիոյ, այլև Տրապիզոնի հետ, որ մեծագոյն կեդրոնն էր Արեւելեան Սեւ Ծովի առեւտուրին:*

*Այասէն և Տրապիզոնէն եկող կարաւանի պողոտաները, Էրզրումէն կ'անցնէին և կամ Ալաշկերտի դաշտին կամ Մանազկերտի ճամբով կը յանգէին Դուրէժ, առևտրական մեծ կեդրոնը։*

*Առաջին ճամբան մանրամասն նկարագրած է Բալտուչչի Պեկոլոտտի ԺԴ. դարու սկիզբը։ Այս ճամբան Էրզրումէն կ'երթայ Դուրէժ, Բոլորապահակ* (1) *– Քեփրիքէի* (2), *Բագաւանի – Ուչքիլիսէի* (3), *Ղարաքիլիսէի* (4) *և հիմակուան Տայ Ջաւար դաշտի* (5) *ճամբով դէպի Կարմիր գետ* (6) *(Կըզըլ Չայ) և արդի Խոյէն անցնելով հարաւ արեւելք (տես. Յ. Մանանդեան,* Հին Հայաստանի գլխաւոր ճանապարհները *և* ՔՆՆ. Տես. *Գ.* 262–3, *հմմտ.* W. Heyd, Histoire du Commerce du Levant II. 213—117)։

*Ասկէ զատ Դուրէժէն մինչեւ Էրզրում ուրիշ ճամբայ մըն ալ կար, որ յիշած են Մարքոյ Բոլոյ, Լանգելէցի և Համտալլահ Ղազվինի։ Այս գիծը Խոյէն կ'երթար ոչ թէ դէպի Բագաւան, այլ դէպի Արճէշ, և ապա կու գար Էրզրում, Մանազկերտի և Խնուսի ճամբով։ Հայտի* (W. Heyd) *կարծիքով, Հայաստանէն անցնելով դէպի Տրապիզոն և Այաս գացող կարաւանային ճանապարհներու նշանակութիւնը, ինչպէս նաև Դուրէժի առևտրական կարեւորութիւնը խիստ չեշտուեցաւ Պաղտատի Խալիֆայութեան և Պաղտատի կործանումէն* (1258) *ետք, վասնզի մինչեւ այդ թուականը Պաղտատ առաջին տեղը կը գրաւէր։ Անկէ յետոյ, Դուրէժ և քիչ յետոյ Սուլթանիյէ գրաւեցին Պաղտատի տեղը, Մերձաւոր Արեւելքի մէջ (հմմ. Յ. Մանանդեան,* ՔՆՆ. Տես. *Գ.* 263)։

*Մոնկալ տիրապետութեան շրջանին, միջազգային առևտուրի համար ստեղծուեր էին, ինչպէս տեսնուեցաւ, նպաստաւոր պայմաններ, սակայն նոյն շրջանին, Արեւելեան Հայաստանը և անոր մեծ քաղաքները, Դուինը, Անին և Կարսը՝ առևտրական իրենց նախկին մեծ դերը հարկադրուած էին զիջիլ կարաւանային բանուկ ճանապարհներու վրայ գտնուող պատմական Հայաստանի հարաւային քաղաքներուն՝ Արճէշին, Մանազկերտին և Խլաթին։*

*Հայաստանի հիւսիսային քաղաքներուն իրենց առաջնակարգ դիրքը կորսնցուցած ըլլալը յայտնի կը տեսնուի, վասնզի Հայաստանէն անցնելով Դուրէժ գացող եւրոպական ճանապարհորդները իրենց Ուղեգրութիւններուն մէջ՝ իբրեւ ճարտարարուեստական կեդրոններ՝ կը յիշատակեն հարաւի կարաւանային պողոտաներուն վրայ ծաղկող և զարգացող քաղաքները (Յ. Մանանդեան,* ՔՆՆ. Տես., *Գ.* 264)։

*Միջազգային առևտրական յարաբերութիւնները՝ Մոնկոլներու ատեն՝ Հայաստանի ճամբով տեղի կ'ունենային Հարաւային ուղեգիծով։ Ասիկա անուղղակի կերպով կը հաստատուի սա իրողութենէն որ Հայ աղբիւրներու մէջ յիշատակուած հարուստ վաճառականները, ինչպէս Ումեկ և իր ազգականները, Մանազկերտէն էին և Կարինի մէջ մեծ առևտրականներ էին (տես.* Կիրակոս 210, *հմմտ.* Վարդան 147, Անանունի ժամանակագրութիւն 21, Վիմական Տարեգրութիւն 111, 122, 124, *Մանանդեան* ՔՆՆ. տես. *Գ.* 264)։

*Թէ ի՞նչպէս մեծ հարստութիւններ ունեցած են միջազգային առևտուրի հետ կապ ունեցող Հայ վաճառականներ, անիկա կ'երեւի Ումեկի որդիին 1283ի Գօշավանքի արձանագրութիւններէն, որոնց համաձայն իր հայրը այս վանքը գնած է մեծ գումարով մը։*

*Այս արձանագրութիւններէն մէկուն մէջ ան ըսած է.* «իմ հայրն Ումեկ գնեալ էր զԳետիկ ի քառասուն հազար կարմիր տուգատի: Ես Ճարս գնեցի զՀովս իւր ամէն սահմանաւքն ի դառն ժամանակի, որ հայրենիքն արժան էր եւ ոսկին թանկ, ի Դ Ռ (4000) կարմիր տուկատ...»:

*Այս պզտիկ արձանագրութիւնը պերճախօս վկայութիւն մըն էր, ինչպէս դիտել կու տայ Մանանդեան, թէ ԺԳ. դարուն երկրորդ քառորդին, անշարժ գոյքը աւելի արժէք ունէր և ոսկին անհամեմատ աւելի աժան էր քան անոր որդւոյն Ճարի ժամանակ՝ ԺԳ. դարու 80ական թուականներուն (տես. Յ. Մանանդեան* ՔՆՆ. տես. *Գ.* 265)։

*Ասոր պատճառը այն է որ Մոնկոլներու ծանր տուրքերուն պատճառով՝ գիւղացիները կը փախչէին և կը ձգէին իրենց հողերը և կալուածատէրերը կը սնանկանային, և իրենց անշարժ գոյքերը ծախելով ջնջին գիներով։ (Յ. Մանանդեան,* Նոյն, 265)։

*Նոյնպէս նշանակելի է, որ արձանագրութեան մէջ դրամները իտալական են, և որոնք ապահովաբար Հայաստանի մէջ կը շրջաբերէին։ Կ'երեւի, այս շրջանին, մեծ առևտրականները կամ հարուստները պաշտօններ ձեռք կը բերէին և դիրքի կը տիրանային։*

*Մասնաւորապէս և յաճախ՝ անոնք կապալով կ'առանձնէին պետական տուրքերու գանձումը և իշխաններէն և կալուածատէրերէն ստէպ կը գնէին ոչ միայն գիւղեր և կալուածներ, այլ ամբողջ գաւառներ և քաղաքներ (Յ. Մանանդեան,* Նոյն, 265)։

*Իլխանեան պետութեան ամենազօր վեզիրը՝ Մուհամմէտ Շէմսէտտին Սահիպ Դիւանը, որ 1269ին ամուսնացած էր Օրբէլեան Սմբատ իշխանին խնամակալութեան յանձնուած Աւագի աղջկան Խաշաքի հետ,* (Օրբէլեան, Բ. 165, Օրբէլեանի ժամանակագրութիւն, 27) *իրեն հետ գործակից ունէր երկու Հայեր Սահմադինը և Քարիմադինը, որոնք կ'երեւի անոր հետ ընկերովի կապալառութեան գործեր ըրած են։ Շէմսէտտին Սահիպ Դիւանը իր ձեռքին մէջ ունէր Իլխանեան պետութիւնը և անոր հրամանը ամենազօր էր։*

*Ան գնած էր շատ մը երկիրներ և Մեծ Խաները անոր նուիրեր էին Կարսը (*Վրաց Աղբիւրներ, Բ. 65, *Յ. Մանանդեան,* Նոյն, 266)։

1263 *թուականին Անիի մէկ արձանագրութեան համաձայն, Սահիպ Դի-*

(1) *Polorbecch* բաց իր ուղղագրութեան:
(2) Հաւանօրէն Քէօփրիւքէօյ
(3) *Tre Chiese* բաց իր գրութեան:
(4) *Scaracanti* նշանակուած:
(5) *Piana di Falconiri* նշանակուած:
(6) *Piana dei Fiume rosso* »
(7) *Condro* »

ւանը և Սահմադինը եւ Քարիմադինը (1) կապալով առած էին Անիի հարկերը։
Ահա այդ արձանագրութիւնը.

«Մենք տաղմանիս, վասն երկար կենդանութեան եւ վասն պարտուց մերոց Սահիպ Դիւանին եւ Սահմադին[ին] եւ Քարիմադինին բարձաք ի յԱնո իրիցանուս զբաժն, զոր ի սկզբանէ ազատ էր, մեք վերոտին այլ հաստատեցաք. չունի ոք իշխանութիւն բաժ ուզելու, ոչ ինչ ազգ, ով իցէ որ կապել որ լինի...» (Վիմական Տարեգիրք, էջ 106)։

Սահմադինը և Ումեկը նշանաւոր առեւտրականներ էին և մեծահարուստ, ինչ որ կը հաստատուի Մրենի 1261 թուականով արձանագրութեամբ (2) որմէ կը հասկցուի թէ Զաքարեան Շահնշահի Արտաշիր որդիէն գնած է Մրենի և հոն, Ապաղայի խանութեան ժամանակ (1265—1282), շինած է իրեն համար ամարանոց և պալատ, որոնց համար ծախսեր է 40.000 տուկատ դահեկան (Ն. Մառ, նաև Յ. Մանանդեան, ՔՆՆ. տես. Գ. 267)։

Իլխանեան վեհապետները կը հովանաւորէին Հայ մեծատունները, անշուշտ նկատի ունենալով իրենց գանձարանին եկամուտները և կը մղէին զանոնք նետուելու միջազգային շուկաները։

Այս խրախոյսը կը հաստատուի Հուլաղուի մէկ ձեռնարկովը։ Ան Հարաւային Հայաստանի մէջ Դաւրէժէն Տրապիզոնէն Այաս գացող կարաւանային ճանապարհներու մօտ, հիմնեց ամառանոց մը և ընդարձակ քաղաք մը, որ պիտի ըլլար Իլխանեան իշխանութեան առեւտրական կեդրոններէն մէկը։ Այս նոր քաղաքը, հաստատուած էր Բագաւանի և Տիատինի հարաւային կողմը, Նպատ լերան կամ Ալատաղի ստորոտը։ Դառան կամ Դառն դաշտին մէջ և կը կոչուէր Ալատաղ (Պատմ. Թաթարաց էջ 45 )։ Անոր շինութեան աշխատանքները կատարուած է, մասնաւորապէս հպատակ ազգերու պարտադիր և տաժանակիր աշխատանքովը, ինչպէս կը նկարագրէ Կիրակոս Վրդ. Գանձակեցի (233). որ կ՚ըսէ թէ «սկսաւ Մեծ Հուլաւու շինել քաղաք բազմատար եւ բազմամարդ ի դաշտին Դառնոյ, եւ եդ հարկս ի վերայ ամենայն հնազանդելոցն՝ բազմութիւն փայտից բերել յամենայն կողմանց ի պէտս շինուածոյ տանց եւ ապարանից քաղաքին, զոր շինէր ի տեղի հովոցացն իւրոց յաւուրս ամարանոյ, եւ տառապէին մարդ եւ անասուն ի խիստ եւ ի դառն վերակացուացն՝ որ դառնագոյնք էին քան զՓարաւոնին ի վերայ որդւոցն Իսրայէլի, քանզի լուծ հարիւր եզանց լծէին ի փայտ մի յամենայն կողմանց, եւ ոչ կարէին շարժել՝ վասն մեծութեան եւ հաստութեան փայտիցն, եւ հեռաւորութեան եւ դժուարութեան ճանապարհին, ընդ գետս եւ ընդ լերինս եւ յանխնայ հարկանելոյ մեռանէին մարդիկ եւ անասունք: Այլ եւ տունս մեծամեծս կռոցն շինեաց, անդ զումարեալ զամենայն արուեստաւորս քաղաքաց եւ փայտից եւ նկարուց եւ այլ»:

Իսկ ինչ որ ամէնէն նշանակելին է, Հուլաղու այս քաղաքին մէջ բնակեցուցած է վաճառականներ (W. Heyd, Histoire du Commèrce du Levant, էջ 108)

(1) Ասիկա հաւանօրէն Ումեկի որդին էր (Ալիշան, Հայապատում, 512):
(2) Հրատարակուած Փրոֆ. Ն. Մառէն:



Ալատաղի բարգաւաճումը երկար չտեւեց, վասնզի Իլխանեանները ինկան և առեւտուրը նուազեցաւ։

Ոսկէ Հորդայի հետ պատերազմը, որ տնտեսական շարժառիթներ ունէր, ծանր հարուած տուաւ հիւսիսի հետ առեւտուրին, ինչ որ կը հաստատէ Վասաֆ Պարսիկ պատմագիրը, ցոյց տալով Հուլաղուի վրէժխնդրական արարքները։ Ան կ՚ըսէ թէ Հուլաղու «հրամայեց մահապատիժի ենթարկել բոլոր վաճառականները, որոնք առեւտուրով և առեւտրական գործառնութիւններով կը զբաղէին Դաւրէժի մէջ և ունէին անհաշիւ և անչափ գոյք. և կարգադրեց յարքունիս, գրաւել անոնց ինչքը, ինչ որ գտնեն։ Այդ մարդոց մէջ կային մեծ թիւով այնպիսիներ, որոնք Դաւրէժի ականաւոր անձերուն վստահեր էին իրենց դրամագլուխները և ապրանքները։ Անոնց սպանութենէն ետք, այդ ինչքերը մնացին ձեռքը այդ մարդոց, որոնց յանձնուած էր։ Վրէժ լուծելով՝ Բերքէ Սուլթանը եւս սպաննեց այն վաճառականները, որոնք Իլխանեան երկիրներէն էին և սկսաւ նոյն ձեւով վարուիլ անոնց հետ։ Այսպէս, առեւտրականներու երթեւեկութիւնը և ճանապարհորդութիւնը, որ խելացի մարդերու գործ էր, անմիջապէս խափանուեցաւ եւ ժամանակին անօթին մէջէն դուրս թռան խառնակութեան շէյթանները» (Յ. Մանանդեան Թրգ. ռուսերէն թարգմանութենէն, տես. ՔՆՆ. Տես. Գ. 268)։

Ջուջիեաններու և Հուլաղուեաններու այս պատերազմը գրեթէ տեւական բնոյթ ստացաւ եւ մէկ դարէն աւելի տեւեց, և մեծ վնաս պատճառեց Հիւսիսային Հայաստանի։

Հակառակ այս արիւնալի պայքարին, զոր երկու Ուլուսները մղեցին իրարու դէմ՝ որքան զինուորական նոյնքան տնտեսական մարզին մէջ, Հայաստանի մշակութային կեանքի վերելքը, որ Զաքարեաններու իշխանութեան օրով սկսած էր, շարունակուեցաւ որոշ չափով նաեւ Մոնկոլ տիրապետութեան շրջանին, յատկապէս ԺԳ. դարուն։ Այդ շրջանին եւս երկիրին զանազան կողմերը կը կառուցուին հարուստ և մեծածախս շինութիւններ (Կ. Կոստանդեան, Վիմական Տարեգր. էջ 88, 90, 92, 124), որոնց մէջ մասնաւորապէս յիշատակութեան արժանի են Պռօշեանց կառուցած Գեղարդի վանքը, Գանձասարը (1240ին կ՚աւարտի), Հաղբատի վանքին զանգակատունը (1245), շատ մը եկեղեցիներու գաւիթները (մանաւանդ Հաղբատի տաճարինը), որոնք պատուոյ տեղ կը գրաւեն Հայ Ճարտարապետութեան Պատմութեան մէջ։

Նիւթական բարգաւաճման իբրեւ ապացոյց կարելի է յիշել Խորանաշատը և Գլաձորի կամ Գայլաձորի Համալսարանը, որոնց ուսուցիչներն էին Վանական և Եսայի Նչեցի վարդապետները։

Այս նիւթական բարեկեցութեան մէկ ուրիշ նշանն էր այն զարկը, որ ԺԳ. և ԺԴ. դարերուն, մանրանկարչութեան և որմնանկարչութեան տրուած է։

Նոյնպէս կ՚արժէ յիշատակել, հակառակ շատ մը աննպաստ պայմաններուն, թէ արհեստները գրեթէ նորինորոյ վերահաստատուած են, մասնաւորապէս մանածագործութիւնը, մետաղագործութիւնը և կտաւագործութիւնը, զոր Հայերը իրենց երկիրէն դուրս ուրիշ վայրերու մէջ ալ կը մշակէին։ Մարքօյ Բօլօյ, կը հաւաստէ թէ Թորգոմանիոյ մէջ (այսինքն Գոնիայի, Սեբաստիոյ և

Երզնկայի շրջան), կը պատրաստուէին «ամենաշքեղ եւ նոր մետաքսեայ կերպասներ, թէ՛ մութ կարմրագոյն եւ թէ՛ ուրիշ գոյն», որոնց հիւսողները ըստ աշխարհահռչակ ուղեգիրի մը, Հայեր և Ցոյներ էին. (Burchard of Mt. Sion. Trans. by Aubrey Stewart, London 1896, էջ 16)։

Բոլոր այս տեղեկութիւնները ցոյց կու տան թէ բարբարոս ժողովուրդներու արշաւանքներուն քառադարեան ժամանակամիջոցը՝ թէև Հայաստանի համար դառնագոյն և դժբախտ շրջան մը եղած էր, սակայն առևտրական տեսակէտէն նշանակելի էր, իր ստեղծած տնտեսական յարաբերութիւններով՝ անծայրածիր Ասիոյ մէջ, հովանաւորութեամբ խաներու, որոնք իրենց գանձին շահերուն համար, մեծապէս քաջալերած են վաճառականութիւնը։

Հայերը, վաղեմի ռահվիրաները Ասիոյ ցամաքային առևտուրին,, չէին կրնար արտաքեր մնալ և իրենց մասնակցութիւնը չբերել այդ շարժումին, որ իրենց երկիրի սահմաններուն մօտը և մէջը կը կատարուէր այնքան եռանդով, նոյնիսկ երկիրին վեհապետներուն հովանաւորութեամբ և քաջալերութեամբ։ Մասնաւորապէս, ինչպէս տեսնուեցաւ առևտրական ամէնէն մեծ կայանը՝ Ատրպատականի նահանգը և անոր գլխաւոր քաղաքը՝ Դաւրէժն էր որ Հայաստանի սահմանակից էր, և ամենահին դարերէն սկսեալ ստուարաթիւ Հայ բնակչութիւն ունեցած էր. այնպէս որ շատեր կարծած են թէ անիկա Հայաստանի մաս կը կազմէր։ Եւ ասիկա՝ շատ վերջերն իսկ, վասնզի շատ կանուխէն Հայ վաճառականութիւնը, Պարսկաստանի իր առևտրական միջնաբերդը ըրած էր Դաւրէժը։ John Fryer անգլիացի ուղեգիր բժիշկը, (1672—81) որ Դաւրէժը կը ներկայացնէ այդ կողմերուն մեծագոյն վաճառանոցը, և 1551ին, Ֆրանսացի Nicholas Nichalay Daulphinoir, (հրատ. անգլ. T. Osborn — London, 1745, Vol. I., էջ 61), Հայաստանի մէջ կը համարեն Դաւրէժը։ Ասիկա ճիշդ չէր, բայց անուրանալի էր որ այդ քաղաքը Հայերուն համար շատ ծանօթ և ընտանի բնակավայր մըն էր և հոն Հայերը ստուար թիւ մը ունէին, նոյնիսկ անյիշատակ ժամանակներէ սկսեալ։ Եւ ինչպէս յայտնի է, երբեմն քաղաքականապէս ալ հայկական տիրապետութեան ենթարկուած ըլլալով, մասնաւորապէս նահանգին այն մասերը՝ որոնք Ուրմիոյ լիճին արեւմըտեան կողմը կը գտնուին, ինչպէս նաև Արաքսի հարաւային ափերը, Մուղանէն մինչեւ Մակու և Մակուէն մինչեւ Սովուճ-Պուղագ, որքան պարսիկ Ատրպատականի, նոյնքան ալ Հայաստանի մասերը համարուած էին։ Իրապէս Հայաստանի արեւելեան սահմանը չունէր որոշ սահմանագիծ մը՝ ոչ աշխարհագրական և ոչ ցեղագրական, զինքը Պարսկաստանէն բաժնող։

Հայաստանի արեւելեան կողմի նահանգները, հիւսիսէն հարաւ, Փայտակարան, Սիւնիք, Վասպուրական և Պարսկահայք, հնագոյն ժամանակներու մէջ, Մարերու երկիրին մաս կազմած ըլլալ կը թուին և մինչեւ վերջը պահած էին իրենց կէս-հայկական նկարագիրը։ Ասոնցմէ մասնաւորապէս Փայտակարան և Պարսկահայք (1) բնաւ լիովին հայացած չեն, իսկ Սիւնիք ծանօթ

(1) Փայտակարան եւ մանաւանդ Պարսկահայք նահանգներ հաւասարապէս Հայաստանի եւ Պարսկաստանի մաս կը կազմէին, իրենց բնակչութեան խառն հանգամանքով:



է միշտ իր անջատողական ձգտումներով. անիկա իբրև «զեզերբ հայկական խօսիցն»՝ կը պահէր իր առանձնայատուկ դիրքը, իր բնակչութիւնը ազգ կոչուելու աստիճան, որոշ գիծերով տարբերելով հայ մեծ զանգուածէն։

Իսկ Վասպուրական, աւելի կամ նուազ Սիւնիք մըն էր և ամէնէն շատ պարսիկ ազդեցութեան ենթարկուած նահանգ մը, որուն անունն իսկ հայեցի չէր։

Այսպէս, Հայաստանի Արեւելեան սահմանին վրայ, Հայ-Իրանեան ցեղերու իրարու խառնուրդը, որոշ կ'երեւէր, վասնզի իրանական տարրեր շատ զգալի էին այդ չորս նահանգներուն մէջ։ Փոխադարձաբար, Հայաստանի դրացի Պարսկական Ատրպատականն ալ Արմենական ազդեցութիւնը կրած էր, և իր քաղաքները՝ Դաւրէժ Մարանդ, Ուրմիա, Խոյ, Մարաղա, Սալմաստ, Սուլթանիյէ պատմութեան մէջ ծանօթ են իբրեւ հայաշատ քաղաքներ։ Նոյնիսկ հայկական աւանդութիւն մը, Հայոց Խոսրով թագաւորին կը վերագրէ Դաւրէժի հիմնարկութիւնը։ Հետեւաբար անուրանալի է որ Սելջուկներու արշաւանքէն շատ առաջ, Ատրպատականի մէջ մեծ թիւով Հայեր կային. այդ նահանգին մէջ եղած էին շրջաններ, որոնք կիսովին հայացած էին։

ԺԱ. դարուն սկիզբն իսկ, երբ տակաւին նոր երեւան կու գային Սելջուկ հորդաները, Ատրպատականի մէջ Հայերը ունէին եպիսկոպոսական մէկ երկու աթոռներ և բազմաթիւ հայ վանքեր։ Կային քաղաքներ, որոնց բնակիչներուն կէսը գոնէ Հայեր էին։

Թովմա Մեծոփեցի կը վկայէ թէ ԺԵ. դարուն,՝ Լէնկ Թիմուրի արշաւանքէն ետքը, երբ Ատրպատականի մէջ Եուսուֆ հիմնեց պետութիւն մը և սոսկալի անգթութիւններ գործեց հոն, բազմաթիւ Հայեր սպաննեց։ Ասիկա կը հաստատէ Ատրպատականի մէջ ստուարաթիւ Հայերու գոյութիւնը։ Իրողութիւն մը, որ աւելի բացայայտօրէն կը հաստատուի դարձեալ Թովմա Մեծոփեցիէն. երբ 1245ին Իսկէնտէր (Եուսուֆի որդին) կը գրաւէ Ուրմի քաղաքը, կը կոտորէ բոլոր Հայերը, բացի մանուկներէն և աղջիկներէն։ Պատմագիրը յստակապէս կը շեշտէ թէ քաղաքին բնակիչներուն կէսէն աւելին Հայ էին (Թովմա Մեծոփեցի 85)։

Պարսկաստանի արեւմտեան սահմանագլուխին վրայ Հայերու այս բազմութիւնը, անշուշտ արդիւնք Հայաստանի արեւելեան նահանգներու սահմանակցութեան, շատ բնական էր և ոչ մէկ բացատրութեան կարօտ։

Ատրպատականի այս սերտ կապը Հայաստանի հետ և հայկական երկիր մը համարուելու չափ հայաշատ հողամաս մը ըլլալը նոյնքան բացայայտ կ'երեւի, երբ դիտուի որ ասիական բարբարոսներու արշաւանքներուն և այդ վայրենի ժողովուրդներուն այնքան վայրագութիւններուն հակառակ՝ անիկա միշտ ունեցած է տեւականօրէն Հայ բնակչութիւն մը, շնորհիւ իր այն հանգամանքին որ անիկա առևտրական կարեւոր կայան մըն էր, ուր միշտ դիմած են Հայերը, շահու և վաստակի համար, հակառակ անոր որ իբրեւ ասիական յետադէմ ազգերու տիրապետութեան ենթարկուած երկիր՝ հրապոյր մը չունէր, Հայ գաղթականները իրեն քաշելու համար, նոյնիսկ Արաբական տիրակալութեան օրերէն սկսեալ, ինչպէս նաև անոր յաջորդող բազմաթիւ մանր իշխանութիւններուն ժամանակ, և վերջապէս Սելջուկ, Մոնկոլ և Թաթար ասիական բարբարոսներու խուժումէն ետք։

*Ցուցմունքներ կան, որ կը հաստատեն այս իրողութիւնը։ Անոնց մէկ կարեւորն է ԺԲ. դարուն Ատրպատականի մէջ եպիսկոպոսական նոր աթոռի մը յիշատակութիւնը՝ Հեր և Զարեւանդի վաղեմի եպիսկոպոսութենէն անջատ, գրեթէ նոյն սահմաններուն մէջ։*

*Այդ նոր աթոռը ունի խորհրդաւոր տիտղոս մը, իբրեւ եպիսկոպոս* «Սալմաստայ եւ Դրանն Պարսից»:

*Հետաքրքրական է որ այս աթոռին եպիսկոպոսը՝ Ստեփանոս, 1179ին Հռոմկլայի ժողովին կը մասնակցի միասին Հերայ և Զարեւանդայ Ղազար եպս.ին* (Զամչ. Գ. 132), *ինչ որ կը հաստատէ թէ երկու աթոռները անջատ էին։*

*Այս* «Դրանն Պարսից» (1) *բացատրութիւնը մեզի խորհիլ կու տայ թէ այս եպիսկոպոսը ներկայացուցչական հանգամանք մը ունէր Սելջուկ խաներու հանդէպ, և Ատրպատականի խաները շատ հայ հպատակներ ունէին, զորս ներկայացնելու և յանուն անոնց խնդրանքներ մատուցանելու պաշտօն ունէր այս եպիսկոպոսութիւնը։*

*Հայերը, առաւելապէս Ատրպատականի մէջ էր որ մեծ թիւ մը կը ներկայացնէին և բնակչութեան մէկ շատ կարեւոր մասը կը կազմէին. աւոր մէկ ուրիշ փաստն այն է որ բարբարոս տիրակալներ կը հարկադրէին զանոնք՝ հո՛ն բնակիլ։ Եւ Հայերը յաճախ ակամայ հոն կը հաստատուէին եւ ապա կը հանդիսանային երկիրին տնտեսական զարգացման թէ՛ նպաստողները եւ թէ՛ նպաստաւորուողները։*

*Հայերը, որոնք եւս հինէն ի վեր Ասիոյ ցամաքին վրայ կարաւաններով կ'երթեւեկէին եւ Մետաքսի Ճանապարհին եւ ուրիշ առեւտրական բոլոր ուղիներուն ծանօթ էին։ Արեւելքէն արշաւող այս ժողովուրդներու պետերուն բարեացակամութիւնը կրցան ապահովել եւ առաջանալ մինչեւ Ասիոյ խորերը եւ այնտեղէն ապրանքները փոխադրել արեւմուտք։*

*Առեւտրական այս ուղիներուն վրայ գտնուած քաղաքներուն եթէ ամէնէն գլխաւորը չէր՝ գոնէ շատ նշանաւորներէն մին էր Դաւրէժը կամ ըստ մեր պատմագիրներուն՝ Գանձակ Շահաստանը, որ լեցուն էր Հայերով, որոնք ազդեցիկ էին եւ կարեւոր դեր կը կատարէին հոն։*

*Վաղուց հայաբնակ Դաւրէժի եւ մի քանի հնուց ի վեր հայաբնակ Ատրպատականեան քաղաքներու Հայ բնակչութեան տարապայման աճումը, ինչպէս նաեւ Մոնկոլ վեհապետներու Հայաստանի արեւելեան սահմանին վրայ հիմնարկած մի քանի քաղաքներուն, ինչպէս Ալատաղի եւ Սուլթանիյէի մէջ մեծ թիւով Հայ բնակիչներու գոյութիւնը, կարելի չէ բացատրել գերեվարութիւններով, քանի որ գիտենք թէ գերիներուն մեծ մասը կիներ եւ տղաքներ էին, որոնք չէին կրնար գործօն դեր մը կատարել, ժամանակի մտայնութեանը բերմամբ։*

*Իսկ արհեստաւորները, մեծ հաւանականութեամբ արդիւնաւոր դեր մը կատարած պէտք է ըլլան. սակայն անոնք ալ տասնեակ քաղաքներ լեցնելու չափ մեծ թիւ մը չէին կրնար կազմել։*

(1) Սելջուկները յաճախ Պարսիկ նկատուած են։ Այս պարագային ալ այնպէս է:



*Հետեւաբար, վաճառականներ եւ ուրիշ առեւտրականներ պէտք է եղած ըլլային այդ տեղերը հաստատուած Հայերը։*

*Մեր պատմագիրները այս մասին լուռ են, սակայն ունինք Հայերու եւ օտարներու կողմէ պատահական ցուցմունքներ, որոնք կը հաստատեն թէ վաճառականներ, — որոնց մէջ հաւանօրէն կային նաեւ Հայեր — Դաւրէժ, ինչպէս ինչպէս նաեւ ուրիշ մի քանի քաղաքներ հաստատուած են՝ նոյնիսկ Մոնկոլ վեհապետներուն հրամանով եւ կարգադրութեամբ։*

*Այսպէս, տեսնուեցաւ թէ Հուլաղու՝ Ալատաղ քաղաքը իբրև իր ամառնային բնակավայր հիմնած ու շէնցուցած ատեն,* (տես. վեր 306) *արուեստականօրէն ստեղծել փորձած է առեւտրական և արհեստագիտական կեդրոն մը հոն տանելով արհեստաւորներ և առեւտրականներ, որոնք նախ քաղաքին կերտումին աշխատեցան, վերջն ալ անշուշտ անոր տնտեսական բարգաւաճման, աշխատելու համար* (հմմտ. W. Hegd, 118, *վերը*, 306)։

*Տեսանք նոյնպէս որ Մոնկոլ վեհապետներ հարկադրած էին վաճառականները բնակելու Դաւրէժ, ինչպէս կը վկայէր* W. Heyd (տես. վերը 306), *անշուշտ հիմնուելով պարսիկ աղբիւրներէն քաղուած տեղեկութիւններու վրայ։*

*Նոյն բռնադատութիւնը ապահովաբար կատարած պէտք է ըլլան նաեւ Ղազան Մահմուտ* (1295—1304) *կամ Խուտապէնտէ կամ* (1304— (1316) *խաները, ինչպէս կը մակաբերուի Երուսաղէմ պահուած* (Թ. 453) *հայ ձեռագիրի մը յիշատակարանէն* (տես վերը 265—6)։ 1326*ին գրուած այդ ձեռագիրին գրիչը՝ Կարապետ քհ. կը հաստատէ թէ ինքն Անի մայրաքաղաքին բնակիչ էր և* «վասն աւերման աշխարհին իւրեանց եւ առաւել վասն մայրաքաղաքին Անւոյ եկեալ բնակեի... ի նորաշէն եւ յարքայանիստ քաղաքի Սուլթանիոյ» (1) *Օրտու Բազար։*

*Կարապետ քհն., որուն գովեստներ կը շռայլուի իբրեւ* «առն ընթերցասիրի» *և կը ներկայացուի* «հմուտ հին եւ նոր կտակարանաց եւ կրողի ի բանս իմաստութեան, աստուածային զօրութեամբս յաղթահարէր ի դարձուած բանից գդաստ այլասեռից» *իր յիշատակարանին մէջ կը յիշատակէ Սուլթանիյէի առաջնորդը Սարգիս Քորեպիսկոպոսը,* «ընդ հովանեաւ Սրբուհւոյ Աստուածածնիս եւ այլ սրբոցս...»:

*Այս տեղեկութիւններէն շատ պարզ կերպով կը մակաբերուի թէ Կարապետ Քհն.՝ Անիի արժանաւոր քահանաներէն մին՝ տեղափոխուած է Սուլթանիյէ ուր այնքան Հայեր կային, որ կը կազմէին առաջնորդութիւն մը՝ քորեպիսկոպոսով մը և ունէին Ս. Աստուածածին և Ս. Սարգիս անունով երկու եկեղեցիներ, որոնք կառուցուած պէտք է ըլլան Ղազան և Խուտապէնտէ խաներու պէս մոլեռանդ իսլամ վեհապետներու ատեն։*

*Ասիկա ինքնին փաստ մըն է թէ Հայերը — ի մասնաւորի առեւտրական·*

(1) Կարապետ քհ.էն զատ, Սուլթանիէյի մէջ կը հանդիպինք Անեցի ուրիշ գրիչներու եւ մանրանկարիչներու, որոնք 1326—1357 հոն գործած են: Գարեգին Կաթ. Յովսէփեան, կը յիշէ հինգ ձեռագիրներ, 1329, 1332—36, 1337, 1338, 1357 թուականներով (տես. Հաւաք սա-րեզիրք, Ա. 192 - 219), իսկ Քարամեանի եւ Հ. Բարսեղ Վրդ., Սարգիսեանի ծանօթ են 1337 եւ 1341 թուականով երկու ձեռագրեր: Իսկ Կարապետ քհ.ի յիշատակարանը, որչափ ծանօթ է ինծի, անտիպ է:

ները — այդ արքայանիստ քաղաքին մէջ առանձնաշնորհեալ դիրք ունէին։

Իսկ այս աթոռը հաւանական է որ հաստատուած ըլլայ ԺԳ. դարուն վերջերը եւ ԺԴ. դարուն սկիզբները, Սուլթանիյէի հիմնարկութենէ ետք։ Ես կը կարծեմ թէ անիկա շարունակութիւնը պէտք է եղած ըլլայ կերպով մը՝ 1179ին յիշատակուած «Դռանն Պարսից» եպիսկոպոսութեան, վասնզի ուրիշ ձեռագիրի մը մէջ (տես. Ցուցակ Վենետիկի Ա. 94), կը յիշուի թէ ձեռագիրը գրուած է 1341ին «ի քաղաքն Սուլթանիայ 'ի քորեպիսկոպոսութեան Օրտուի Տէր Սարգսի եւ եպիսկոպոսութեան Տէր Գրիգորի»:

Տարակոյս չի վերցներ որ հոս յիշուած Սարգիս քորեպիսկոպոսը նոյնն է 1326ին յիշուած նոյն անունով եւ նոյն տիտղոսով եպիսկոպոսին հետ, որուն Օրտուին, այսինքն բանակատեղիին կամ այլ բացատրութեամբ մայրաքաղաքին Առաջնորդը ըլլալու հանգամանքը, զինքը կը դարձնէ պաշտօնական ներկայացուցիչ, այսինքն «Դրանն Պարսից» եպիսկոպոս։

Ասկէ կը հասկցուի թէ Հայ եկեղեցւոյ պետերը, Հայ հպատակներ ունեցող վեհապետներու եւ կառավարութեանց քով Հայ եպիսկոպոս մը կարգելու սովորութիւնը շատ վաղուց ունեցած են։

Դիտելի է որ Մոնկոլ խաները իրենց շինած նոր քաղաքներուն մէջ կը ջանային յատուկ կերպով արհեստաւորներ եւ առեւտրականներ բնակեցնել, կը մակաբերուի մասնաւորապէս Ալատաղի շինութեան պարագային ըսուածներէն (վերը, 306)։

Ուրեմն, այդ դասակարգերը կը քաջալերուէին եւ այն քաղաքները զորս առեւտրական կեդրոններու վերածել կը ձգտէին Մոնկոլ խաները, շնորհիւ այդ դասակարգերուն, բարգաւաճ եւ ճոխ քաղաքներու կը վերածուէին։

Այս պարագան, բնական է պիտի մղէր Հայ առեւտրականները, որ այդ տեղերը հաստատուէին եւ ապահովութեան մէջ ապրէին, եւ վաճառականութեան եւ արհեստներու իրենց ընդունակութիւններովը իրենց տնտեսութիւնը ապահովէին։

Հետեւաբար իրենց տնտեսական բարգաւաճումով եւ ապահովութիւնով, Ատրպատականի մայրաքաղաքը Դաւրէժ եւ միւս քաղաքները հրապուրած են Հայերը հոն գաղթելու եւ հաստատուելու համար։

Շատ հաւանական է որ մասնաւորաբար Դաւրէժի մէջ եղած են տեղեր՝ ուր Հայերը թիւի առաւելութիւն ալ ունեցան, վասնզի Դաւրէժի բնակիչները առանձնաշնորհներ ունէին։ Անոնք գլխահարկ չէին վճարեր բայց քաղաքին խորհուրդը տարեկան գումար մը կը վճարէր Լէնկ Թիմուրի տան՝ անոր կառավարիչին։

Ասիկա տուրք մըն էր, որ որքան ատեն որ վճարուէր, քաղաքը զերծ էր նեղութենէ (Հարոլտ Լէմ), եւ բնակչութիւնը անվրդով իր գործին կրնար նայիլ։

Մարքոյ Փոլոյ, որ 1270ին այցելած է հոն, կ'ըսէ թէ «Դաւրէժը մեծ եւ ազնուական քաղաք մըն է եւ այնպիսի դիրք մը ունի, որ առեւտուրը հոն կու գայ Պաղտատէն, Հնդկաստանէն եւ տաք երկիրներէ: Հոն կը բնակին Հայերը (1), Նեստորականները, Յակոբիկեանները (2), Վրացիները, Պարսիկ-

(1) Շատ ճանաչելի է որ Մարքոյ Փոլոյ ամէնէն առաջ Հայերը կը յիշէ՝ հաւանօրէն կարեւորութեան կարգը պահելու համար.

(2) Այսինքն՝ Ասորիները:



ները եւ վերջապէս քաղաքին բնիկները, որոնք մահմետական են»:

Ինչպէս կը տեսնուի, Դաւրէժ Իլխանեանց ժամանակ միջազգային շտեմարան մըն էր եւ անոր ամէնէն փայլուն եւ առաջադէմ տարրը Հայն էր։

Իսկ Լէնկ Թիմուրի տեեն, Դաւրէժ մթերանոց մըն էր ամբողջ աշխարհի առեւտուրին համար, (Հարոլտ Լէմ)։

ԺԴ. դարուն՝ Հայերու Դաւրէժի մէջ թուական գերակշռութիւն ունենալը յայտնի է անկէ՝ որ Հռոմի Պապերը երբ հաւատածաւալ քարոզիչներ կը ղրկեն Հայերը կաթոլիկ դարձնելու համար, անոնք իրենց քարոզչական առաքելութեան կեդրոն կ'ընեն Դաւրէժը, Մարաղան եւ Սուլթանիյէն։

Հռոմ, 1330ին նոյնիսկ Արքեպիսկոպոսութիւն մը հաստատեց Սուլթանիյէի մէջ, ուր այսօր մէկ Հայ չկայ եւ առաջին Արքեպիսկոպոսը կ'ըլլայ Յովհաննէս Կոր (Jean de Cor)։

Նոյն այդ օրերուն, (1333 թուականին)՝ Յովհան Քռնեցի վարդապետը կը հաստատէր Ունիթոռներու կարգը եւ այն վարդապետները, որոնք Հայոց մէջ քարոզութիւններ պիտի ընէին, իրենց կեդրոն ընտրած էին Դաւրէժ, Մաքարոզութիւն, Սուլթանիյէ քաղաքները, ինչպէս նաեւ Ատրպատականի սահմանակից Սիւնեաց նահանգին Նախիջեւան քաղաքը։

Ատրպատականի մէջ Հայերու գրուած կարեւոր գիրքին եւ իրենց թուական գերակշռութեան ապացոյցները բազմաթիւ են. զանոնք բոլորը ներկայացնել աւելորդ կը դատեմ։

Անժխտելի է որ այդ դժխեմ եւ դառն ժամանակամիջոցին իսկ, մասնաւորապէս Դաւրէժի եւ ընդհանրապէս Ատրպատականի բարգաւաճ ու ծաղկեալ վաճառականութիւնը եւ վաճառականներու եւ արհեստաւորներու ընծայուած պաշտպանութիւնը, այս նահանգին մէջ համախմբած էին ստուար Հայութիւն մը, որ զարհուրելի խառնակութիւններէ յետոյ ալ տակաւին պատկառելի կը մնար, վասնզի Դաւրէժ քաղաքը դեռ ԺԶ. դարուն, 7,000 տուն Հայ բնակիչ ունէր, 12 եկեղեցիներով։ Այսօր այդ եկեղեցիները գոյութիւն չունին, վասնզի Դաւրէժ հայկական միայն երկու եկեղեցի ունի։ Միւսները կամ քանդուած են կամ գրաւուած։ Արդարեւ քաղաքին մեծագոյն մզկիթը՝ «Սահաբել-Զէման» եղած է երբեմն Հայերու Մայր Եկեղեցին, Ս. Յովհաննէս անունով։ Դեռ մինչեւ վերջերը՝ այնտեղ կ'երեւէր Խորանին տեղը։

Ոչ սակաւ Հայեր կային նաեւ Ատրպատականի սահմանէն դուրս, աւելի դէպի Արեւելք՝ հռչակաւոր Ռէյ քաղաքին մէջ — Թէհրանի շատ մօտ,— որ կործանած էր ԺԲ. դարուն Մոնկոլներէն եւ ուր՝ ըստ պատմագիրներուն՝ 400 քրիստոնեայ եկեղեցիներ կային, եթէ այս թիւը չափազանցութիւն մը չէ։

Սակայն, դժբախտաբար տեւական խաղաղութեան մը բարիքները վայելելու բախտը չեն ունեցած Ասիոյ այս մասին բնակիչները, իրենց բոլոր կարողութիւնները եւ ձիրքերը ցոյց տալու եւ իրենց շինարար ու քաղաքակրթիչ դերը լիովին կատարելու համար։

Ընդհակառակը, իրարու յաջորդող քաղաքական վերիվայրումներ և պատերազմական խառնակութիւններ, անապահով եւ տաժանելի դարձուցած են յաճախ կեանքը եւ հարկադրած Հայերը որ տեղէ տեղ խոյս տան եւ նորանոր

*ջանքերով իրենց գոյութիւնը պահպանեն եւ նոր ճիւղեր ընեն, կամ զոհ երթան արիւնարբու բռնաւորներու եւ վայրենի հորդաներու սուրին։*

*Ասով հանդերձ՝ Հայերը անօրինակ տոկունութիւն ցոյց տուած են, վասնզի ամէն մէկ տագնապէ յետոյ՝ դարձեալ յաջողած են վերակազմել իրենց տնտեսութիւնը և գործը։ Ասոր համար է որ մինչև Պարսկաստան առաջացող Եւրոպական — յատկապէս Ճենովացի և Վենետիկցի — գաղութներ, շուտով տեղի տուած և աննետացած են, մինչ Հայերը տոկացած են, և ինչպէս կը տեսնուի ԺԴ. դարէն յետոյ ԺԶ. դարուն կրկին առևտրական բարգաւաճումի և յաջողութեան նշաններ ցոյց տուած են, աւելի ուշ բոլորովին կորսնցնելու համար իրենց նշանակութիւնը։*

* * *

*Ինչպէս արդէն ըսուեցաւ (վերը էջ 288) բացի Ատրպատականէն՝ Պարսկաստանի միւս մասերուն մէջ մինչև անոր հեռաւոր անկիւնները, հին ժամանակներէ սկսեալ հայ գաղութներ գոյութիւն ունեցած են, որոնց մասին մեր ծանօթութիւնները դժբախտաբար շատ քիչ են, մասնաւորապէս ասիական բարբարոս հորդաներու դէպի Արևմուտք խուժելէ և Ասիան ամբողջ խառնակութեան մատնելէ ետք։ Այդ շրջանին մեր պատմագիրները բնագաւառին աղէտալի կեանքը նկարագրելու այնքան առատ նիւթ ունէին որ մոռացութեան տուած են այդ հեռաւոր Հայերը և անոնց մասին ոչինչ խօսած են, մինչ Ատրպատականէն դուրս Պարսկաստանի միւս մասերուն մէջ, ուր երբեմն գաղութներ գոյութիւն ունենալը գիտենք (տես. ՊՀԳ. Ա. 202—3, 366—7), դարձեալ պէտք է գոյութիւն ունեցած ըլլային և ապահովաբար ունէին Հայ գաղութներ, որոնց բարբարոսներու շրջանի կեանքին վրայ գրեթէ ոչինչ գիտենք, բացի մի քանի շատ աննշան և պատահական տեղեկութիւններէ, որոնք տրուած են Հայ պատմիչներէ։*

*Ամէն պարագայի մէջ՝ շատ հաւանական է որ ընդարձակ երկիրի մը մէջ պզտիկ խումբերով ապրող Հայերը այս խառնակութեան ժամանակամիջոցին ցրուած կամ հաւատափոխ ձուլուած ըլլան տեղացի ժողովուրդին մէջ, վասնզի հակառակ անոր որ Սելջուկները և Մոնկոլները կրօնական հալածանքներ չեն կատարած, Պարսիկները շատոնց իսլամացած էին և աւիթը ներկայացած ատեն իրենց ոչ–իսլամ դրացիներուն վրայ կը յարձակէին, զանոնք կը հալածէին իբրև անհաւատ և անկրօն։*

*Մոնկոլներն ալ՝ տեսանք արդէն թէ իրենց տիրապետութեան առաջին շրջանին, այսինքն Ջինկիզ, Ուխաթա, Գիուկ և Մանգոյ Խաներու աշխարհակալութիւններու շրջանին, անոնց նուաճող բանակները՝ նոր տիրապետուած երկիրներու բնակչութիւնը ջարդած և կեղեքած են անխնայ, առանց պատճառի։*

*Կիրակոս Վրդ. Գանձակեցի, այդ շրջանին գլխաւոր Հայ պատմագիրը, ունի գլուխ մը՝ նուիրուած* «վասն ռաբանին Ասորւոյ» (150 – 152), *ուր կը տեսնուի որ Սիմէոն անուն Ասորի եկեղեցական մը, որ Ռաբան Աթա կը կոչուէր Մոնկոլներէն և մեծ ազդեցութիւն ունէր Ուխաթա Խանի* (1227—1241)



*և Ջարմաղան զօրավարի կնոջ՝ Ելթինա Խաթունի վրայ, իր ամուսինին իշխանութիւնը կը վարէր անոր համբանալէն յետոյ 1241էն 1246, իմանալով որ Մոնկոլ զօրքերը անխնայ կը կոտորեն քրիստոնեաները,* «մատուցեալ առ Ղանն խնդրեաց ի նմանէ թուղթ առ զօրսն իւր, զի մի այնպէս առ հասարակ կոտորեսցեն զամենայն մարդիկ, որք ոչ պատերազմին ընդ նոսա» (Կիրակոս 150):

*Խանը նոյն ինքն այդ Ասորի Սիմէոն Ռաբանը կը ղրկէ* «մեծ եւ երեւելի օրով, գրեալ հրովարտակ առ զօրագլուխն իւր, զի ամենեքեան անսասցեն հրամանի նորա, եւ նա եկեալ բազում ինչ նպաստ եղեւ քրիստոնէից, թափելով ի մահուանէ եւ ի գերութենէ, շինեաց եւ եկեղեցիս ի քաղաքս Տաճկաց, ուր ոչ իշխէին զՔրիստոսի անուանել, եւս առաւել ի Թաւրէժ եւ ի Նախճաւան, ուր առաւել թշնամիք էին Քրիստոնէից, զի ոչ իշխէին յայտնի երեւիլ կամ երթալ քրիստոնէայքս, թող թէ եկեղեցիս շինել կամ խաչ կանգնել, իսկ նորա կանգնեալ խաչ եւ եկեղեցիս, եւ ժամահար հնչեցուցանել ի տիւ եւ ի գիշերի, եւ յայտնապէս տանել զմեռեալս ի թաղումն՝ խաչիւք, աւետարանաւ եւ մոմեղինօք եւ պաշտամամբ, որպէս օրէնն է քրիստոնէից, եւ զընդդիմացեալսն՝ մահու վախճանէր եւ ոչ ոք իշխէր հակառակ կալ հրամանին նորա, այլ եւ ամենայն զօրք Թաթարին պատուէին զնա որպէս զհայրն իւրեանց եւ առանց նորա ոչ ինչ խորհէին կամ առնէին» (Կիրակոս 151):

*Այսպէս, տեսանք (վերը 298—9) թէ այս եկեղեցականին տուած կնքեալ թուղթերով վաճառականներ ազատօրէն կը շրջէին ամէն կողմ և ոչ ոք անոնց արգելք կ'ըլլար։*

*Այս շահեկան տողերէն կը հասկցուի թէ այդ եկեղեցականը իր ունեցած ազդեցութիւնը գործածած է քրիստոնեաներու դէմ գործադրուած հալածանքին, հաւանօրէն մասնաւորապէս Ատրպատականի մէջ, ինչպէս կը մակաբերուի Կիրակոսի գրածէն, բայց երկիրին ամէն կողմերը դժուար է թէ շըրջած ըլլայ այս Ասորի կրօնաւորը։ Եւ հաւանական է Պարսկաստանի զանազան վայրերուն մէջ փոքրաթիւ գաղութները ջնջուած և անչքացած ըլլան՝ հոգածութեան և պաշտպանութեան պակասի հետևանքով։*

*Այնպէս որ՝ պէտք չկարենանք Պարսկաստանի այլ վայրերուն մէջ երբեմն գոյութիւն ունեցող գաղութներուն — ինչպէս Սագաստանի (= Խորասան), Վրկանքի (= Մազանդարան) և Խուժաստանի (Պարսկաստանի Շօշ տարածուած հողերը) հայ գաղութներուն վրայ լիակատար տեղեկութիւններ տալ, և պէտք բաւականանանք այն դոյզն յիշատակութիւններով, զորս կու տան մեր պատմիչները և օտար աղբիւրներ։*

*ԺԱ. դարուն, սկիզբը Սելջուկեանց արշաւանքին, տակաւին իրենց գոյութիւնը կը պահէին հին Պարսկաստանի արևելեան սահմանագլուխին վրայ, հին ժամանակներէ ի վեր, հաստատուած Հայ գաղութները, հակառակ անոր որ Հայաստանէն այնքան հեռու վայրի մը մէջ, մայրենի խարիսխին հետ յարաբերութիւններ չունէին, Արևելքը յուզող տակնուվրայութեանց հետևանքով։ ԺԱ. դարուն՝ երբ Սելջուկները իրենց բնակավայր տափաստան-*

ներէն դէպի Արեւմուտք շարժիլ սկսան, իրենց ճամբուն վրայ՝ Կեդրոնական Ասիոյ մէջ, Թուրքեստանի և Դեհստանի սահմանին, ինչպէս նաև Սագաստանի մէջ գտան այս Հայ գաղութները, որո՛նք քանի մը հարիւր տարիներէ ի վեր կը տոկային Պարսիկ տիրապետութեան տակ, բայց այս վաչկատուն ցեղերու տիրապետութեան օրով, պիտի անհետանային, կ'ենթադրուի՝ արդուելով կամ փախչելով։

ԺԳ. դարուն, Կիրակոս Գանձակեցի պատմագիրը, որ Վրկանքի Հայ գաղութին վրայ Սեբէոսի (Է. դար), Յովհաննէս Կաթ. (Ժ. դար) և Ասողիկի (ԺԱ. դար) տեղեկութիւնները գրեթէ կը կրկնէ, չ'ըսեր թէ ինչպէս ըսած են Յովհաննէս Կաթ. և Ասողիկ, որ այդ Հայերը «կան մինչեւ ցայսօր վիճակ սրբոյն Գրիգորի», այսինքն իրենց ատեն (Ժ. և ԺԱ. դարերուն) գոյութիւն ունէին։

Այս զանցառութիւնը երկու կերպով կրնայ բացատրուիլ։ Կամ Կիրակոս այդքան հեռու ապրող Հայերուն վրայ գաղափար չէ կրցած առնել և հետեւաբար իր անգիտութեան համար չի կրնար տալ այդ հաւաստիքը թէ տակաւին անոնք Հայ կը մնային և կամ անոր համար որ ջնջուած էին անոնք՝ որոնց մինչեւ ԺԱ. դարուն սկիզբը մնացած ըլլալը կը հաստատէր Ասողիկ։

Յաջորդ յիշատակութիւնները և մինչեւ ԺԴ. դար պահուած գաղութի մը գոյութիւնը Սագաստանի (= Խորասան = Թրքաստան) մէջ, կը մղէ զմեզ սա եզրակացութեան թէ Կիրակոսի ժամանակ թէեւ անոնք պահած էին իրենց գոյութիւնը, սակայն աւելի այլասերած և Ասորի Նեստորական ազդեցութեան ենթարկուած էին։

Այս հին գաղութները, որոնք պահած էին իրենց գոյութիւնը, ինչպէս կ'ըսէ Ասողիկ, իրենց կղզիացման հետեւանօք անշուշտ բաւական այլասերած եւ հայութենէ հեռացած էին։ Ասողիկ կը հաստատէ թէ 200 տարիներու շրջանի մը մէջ՝ մինչեւ իսկ իրենց լեզուն մոռցած էին (տես. վերը, ՊՀԳ. Ա. 366)։

Այս ուծացման նպաստած են նաեւ քաղաքական պարագաները, այսինքն Սելջուկներու, Մոնկոլներու, Թաթարներու արշաւանքները, որոնք այդ երկիրները տակն ու վրայ ըրած են։

Սելջուկները երբ Պարսկաստան հաստատուեցան, Թաթարները տիրապետեցին այդ շրջանին եւ յետոյ 1194ին մտան Պարսկաստան եւ զայն ալ իրենց տիրապետութեան ենթարկեցին։

Այս շփոթութեանց միջոցին, որոնց ազդեցութիւնը Հայաստան եւս կը կրէր, այս հեռաւոր գաղութը մոռացութեան տրուած էր, եւ ասոր համար թերեւս Կիրակոս Գանձակեցի չէ կրցած հաստատօրէն գիտնալ թէ Հայերը հո՛ն պահա՞ծ էին թէ ոչ իրենց գոյութիւնը, մինչդեռ օտարազգի պատմիչներ եւ վաւերական արձանագրութիւններ ցոյց կու տան թէ ԺԳ. եւ ԺԴ դարերուն տակաւին Թաթարիստանի շրջանակին մէջ, թէ՛ Հայերը եւ թէ՛ Ասորիները կը պահէին իրենց գոյութիւնը։

Մանաւանդ Ասորիներու թիւը շատ աւելի և միւս քրիստոնեաներուն իրենց ազդեցութեան ենթակայ ըլլալը — ինչպէս եւ Հայերու՝ — յայտնապէս կ'երեւի յիշատակարաններէ։ Այսպէս, յաճախ Ասորի անունով կը յիշուին բոլոր այդ կողմերը գտնուած Հայերը։ Ասով հանդերձ վճռական կերպով կարելի չէ ըսել թէ այդ գաղթականները հիներու սերունդներն էին, վասնզի Ջինկիզ



Խանի արշաւանքներուն ատեն, Հայեր եւ Ասորիներ կրնան կրկին այդ կողմերը փոխադրուած ըլլալ, թէեւ այս մասին շատ աղօտ յիշատակութիւններ կան մնացած։ Այսպէս, 1239ին Անիի գրաւումէն ետք ոմանք կը կարծեն թէ գերի առնուած արհեստաւորները (Կիրակոս, 152) Թաթարիստան տարուած են. սակայն աւելի հաւանական է կարծել թէ անոնք դէպի հիւսիսային երկիրներ տարագրուած են։

Իսկ աւելի ուշ՝ Լէնկ Թիմուր, իրաւ է թէ բազմաթիւ գերիներ տեղափոխած է Սմրղանդ եւ Թաթարիստանի այլեւայլ կեդրոնները, սակայն արդէն քրիստոնեաներու գոյութիւնը, շատ աւելի կանուխ յիշատակուած ըլլալով, հարկ կ'ըլլայ ընդունիլ թէ հին Սագաստանի և Վրկանքի քրիստոնեաները իրենց գոյութիւնը պահած էին մինչև ԺԳ. դար։

Այսպէս, կը յիշատակուի թէ Թաթարներու խանը որ Գարագորում կը նստէր, 1243ին Հեթումի դեսպան ղրկած է Սիմէոն Ասորի երէցը (Սիսուան, 554), որ անշուշտ իր երկիրին բնիկներէն էր։ 1245ին՝ լատին կրօնաւորներ — քարոզչութեան համար դէպի Չինաստան և Թաթարիստան իրենց ճամբու ընթացքին, հաստատած են Նեստորականներու գոյութիւնը։ Անոնց հետ Հայերու ներկայութիւնն ալ անժխտելի է, վասնզի գտնուած է նոյնիսկ աւելի հեռու՝ Պալքաշ լիճին հարաւային կողմը՝ Չին պետութեան սահմանագլուխը Sémiriétchensk կամ Sémiriétchenskaïa Oblast ռուսական նահանգին (Province des Sept Rivières = Եօթնգետից նահանգ) մէջ Պիշպէքի Նեստորական գերեզմանատան մէջ տապանաքար մը՝ Ասորերէն և Հայերէն երկլեզուեան արձանագրութեամբ, ուր կը կարդացուի, «Տէր Յովանն Հայոց եպիսկոպոս իթվ Հայոց ՆՃՀԲ գրեցաւ յիշատակարանս» բառերը։ Ասով կ'ապացուցուի թէ Քրիստոսի 1323 թուականին, Թաթարիստանի հեռաւոր մէջ անկիւնը, ոչ միայն դիպուածով հայրենիքէն հեռու ինկած անհատ մը գտնուած է, այլ նաև գտնուած է առաւել կամ նուազ կարեւոր գաղթականութիւն մը՝ որուն եպիսկոպոսն էր այդ Յովհաննէսը (տես. ՀԱ. 1895, 34)։

Այս իրողութեան հաւաստիքը կու տան նաև քանի մը արձանագրութիւններ՝ Ասորատառ, սակայն հայկական հնչումով անուններով (1)։

Շատ հետաքրքրական է նաև Խվոլսոնի այն դիտողութիւնը թէ «1375 տարւոյ Կատալոնեան ատլասին վրայ Իսսիկ Կոլի հարաւակողմը նշանակուած է ՀԱՅԿԱԿԱՆ վանք մը, Ս. Մատթէոսի», (Խվոլսոն, նոյն, 152), զոր ինքը Նեստորականներու սեփականութիւնը կը կարծէ, սակայն Փրոֆ. Ն. Մառ՝ «Հայոց Եպիսկոպոսի տապանաքարին գիւտէն յետոյ՝ պատճառ մը չի տեսներ Հայերու սեփականութիւնը չհամարելու։ (ՀԱ. 1895, 36)։

Այս իրողութիւնը կը հաստատէ Վարդանի վերագրուած աշխարհագրու-

(1) Տես. ՀԱ. 1895, 35. իսկ իսկականները Արեւելեան Հնութիւններ, Աշխատութիւնք Արեւելեան Յանձնաժողովին Մոսկուայի Կայսերական Հնագիտական Ընկերութեան, Մոսկուա, 1889, 12 եւ 14 թիւ արձանագրութիւնները: Ռուս Գիտական Ոլուցկիյ (անդ 59) կը հաստատէ այս կարծիքը: Այս տեսակ հայկական ձեւեր կարելի է ցոյց տալ նաեւ Խվոլսոնի հրատարակած տապանագիրներուն մէջ. տես. *Syrloch-Nestor Grabinschriften au Sémirjétschie, Mémoire de l'Academie de Se. VII Serie T. XXXVII No. 8 S. Peters. 1890.*

թիւնը, որ Միջին Ասիոյ վրայ խօսած ատեն՝ կ'ըսէ թէ «Իսկ ի կողմանէ Պարսից սկսեալ յարեւելից նախ Չին ու Մաչին եւ Խաթա քաղաքն եւ աշխարհն, որ է գին բոլոր աշխարհին եւ են ուղղափառ քրիստոնեայք եւ ունին թագաւորութիւն եւ քահանայութիւն, ունին արդար դատաստան եւ ճըշմարտութեան, ոչ որբն լայ եւ ոչ այրին ոգւոց հանէ, եւ ունեն գիրք միայն զՄատթէոս — գլուխ Աւետարանն եւ պարարտ է աշխարհն, բարեխառն եւ բարելի, մի անգամ սերմանեն եւ Դ տարի հաց լինի, քանզի մօտ է դրախտին, անդի գայ ամբարն եւ անուշահոտ ծաղկունքն՝ դեղ զանազան ցաւոցն»:

Հետեւաբար որոշ չափով կը բացատրուի այս մասնաւոր պատճառը, որով Հայք և Ասորիք կրցած են պահել իրենց գոյութիւնը։

Այդ հին գաղթականներուն վրայ աւելցած են Լէնկ Թիմուրի արշաւանքներուն ատեն առնուած գերիները, որոնց ղրկուած վայրերը զանց կ'առնէ յաճախ յիշել ժամանակակից պատմագիրը՝ Թովմա Մեծոփեցի, ինչպէս դիտել տուի. սակայն պատահաբար քանի մը անգամ կը յիշատակէ անոնց Խորասան ղրկուած ըլլալը։

Մասնաւորապէս յիշատակելի է իր մէկ վկայութիւնը, որ ա՛լ աւելի որոշապէս կը սահմանէ գերիներու բնակավայրը, Էօզպէք Թաթարներու մայրաքաղաքը Սմրղանդ, ուր հաւանական է որ նոյնիսկ Լէնկ Թիմուրի ատեն, մասնաւորապէս փոխադրուած Հայ գերիներով, Հայ գաղութ մը ծագում առած ըլլայ, վասնզի այդ ահարկու բռնակալը իր մայրաքաղաքը շէնցնելու և հարստացնելու աշխատած է և ինչպէս Հարոլտ Լէմ կը հաւաստէ, իր աշխարհակալած երկիրներուն մէջ արժէքաւոր ինչ որ կը գտնէր՝ կը փոխադրէր Սմրղանդ։

Գլավիխոյ, Սպանիոյ Թագաւորին դեսպանը 1403—1406ին, Լէնկ Թիմուրի տուած իր այցելութեան առթիւ, նկարագրած է Սմրղանդը հետեւեալ կերպով.

«Աջ կողմի բլուրներէն գետ մը կ'իջնէ դէպի քաղաք եւ կը բաժնուի շատ մը ճիւղերու, որոնք կը հոսին փողոցներէն: Փողոցները շատ կանոնաւոր են, շատ խոշոր շէնքերով, որոնք շատ մը դռներ ունին եւ որոնց մէջի խանութները պաշտպանուած են պահակներով: Հոս շատ մը բաներ կը ծախեն, կերպասեղէն, մետաքս, բամպակ եւ ուրիշ ապրանքներ, եւ այս քաղաքը մեծ առեւտուր ունի:

Տեղ մը անուշահոտութիւններ եւ ներկեր կը ծախեն, կիներու համար եւ կիները հոն կ'երթան ներկուելու եւ օծուելու: Այս կիները կը պտտին ծածկուած ճերմակ սաւանով մը եւ ձիու մազէ ցանցակերպ հիւսք մը իրենց աչքերուն վրայ կախուած:

Այս քաղաքին փողոցներուն եւ հրապարակներուն մէջ շատ մը աղբիւրներ կան. ամրան կը լեցնեն զանոնք սառի կտորներով, եւ կը դնեն անոնց մօտ արոյրէ կամ պղնձէ ամաններ, որպէսզի ժողովուրդը գայ ու խմէ: Հոն կան շքեղ եւ փարթամ մզկիթներ, ու կարծեմ աշխարհի ամենալաւ բաղնիքները»: (տես. Ալիք օրաթերթ, թ. 4565)։

Այս նկարագրութիւնը ցոյց կու տայ որ Էօզպէք Թաթար բռնակալը իր մայրաքաղաքը շահաստանի մը վերածած էր, ուր Հայեր հաստատուած էին, քանի որ անոնք հոն տարուած էին իբրեւ գերի։



Սմրղանդի մէջ Հայերուն գոյութիւնը կը հաստատուի Թովմա Մեծոփեցիի տուած մէկ շատ շահեկան տեղեկութեամբը։

Ան կը պատմէ թէ Արծկէի պաշարումէն առաջ, Թաթարները կը բռնեն Ջուղայեցի Կարապետ անուն Աբեղայ մը, որ Երուսաղէմէն ուխտագնացութենէ կը դառնար և զայն կապելով կը տանին իրենց հետ։

Թովմա Մեծոփեցի (28), այս առթիւ կը յաւելու թէ «գերեալ քրիստոնէիցն հաստատութիւն եղեւ հաւատոյ ի Սմրղանդ քաղաքի»:

Այս թանկագին վկայութենէն յետոյ, կը յաւելու թէ «Եւ եղեւ եպիսկոպոս յետ ժամանակի եւ ոչ հասաւ յաշխարհն յայն, այլ մեռաւ ի Սուլթանիա եւ քրիստոնէութիւնն կորեաւ անդ, զի յաւուրս որդւոյ Թամուրին, Շահ-Ռուխ (Շահ-Ռուխ 1408—1446) անուն, յորժամ թագաւորեաց ի Հրէ քաղաք՝ զորդի իւր Ուլուխ պէկ եդ ի Սմրղանդ թագաւոր նստաւ»:

Ասիկա Ասորի Նեստորականի մը գործած մէկ պղծութեան համար զայրանալով «հրամայեաց զամենայն քրիստոնեայսն հանել ի հաւատոյ եւ կամ մեռանել: Ոմանք զմահ յանձն առին, սակաւունք եւ բազումք ի հաւատոցն ելին: Եւ գնացեալ եպիսկոպոսն մեր Յովհաննէս մականուն Ձանկի, վասն գերելոց՝ գրեաց եւ զայս բօթ դառնութեան եբեր մեզ» (էջ 29)։

Շատ որոշ է ուրեմն թէ մինչեւ ԺԵ. դարուն կէսերը, քրիստոնեաներ — Ասորի, Նեստորական, Յոյն և Հայ — թիւով բաւական շատ եղած են Սմրղանդի և շրջակայից մէջ։

Մանաւանդ Հայոց բազմութիւնը անով կը հաստատուի որ յատուկ եպիսկոպոս կ'ունենան և յատուկ նուիրակներ կը ղրկուին իրենց։

Ասոնցմէ մէկ մասը, Թիմուրի որդիին՝ Ուլուխ Բէկի հրամանով՝ բռնի կրօնափոխութեամբ, հայութեան համար կորսուած են, սակայն շատերը կըրցած են պահել իրենց գոյութիւնը, վասնզի Պարսկաստան բաժնուած էր անուանական կերպով Լէնկ Թիմուրի յաջորդին՝ Շահ-Ռուխի հնազանդող բազմաթիւ աւատապետներու՝ միջեւ, որոնք միևնոյն կերպով չէին վարուեր իրենց քրիստոնեայ հպատակներուն հետ։

Անոնմէ ոմանք չափազանց բարեացակամ եղած են քրիստոնեաներու նկատմամբ, ինչպէս Ուզուն Հասան, այն որ վերակազմեց Պարսիկ մեծ պետութիւնը 1468ին և իր յաջորդը՝ Եաղուպ (1479—1485), որոնք Հայերու բարեկամ եղած են։

Միրաս կամ Միրաք Դաւրիժեցի Հայ հարուստ վաճառականը, Ուզուն Հասանի կողմէ, 1469ին Վենետիկի հասարակապետութեան մօտ իբրև պարսիկ դեսպան ղրկուած է, և այդ պահուն յատուկ առաքելութեամբ Հռոմ գացած՝ ներկայանալու համար Պօղոս Բ. Պապին։

Միրաք յետոյ կը դառնայ Դաւրէժ, ուր Հայոց աւագի պաշտօնը կը վարէ։ Ունէր մեծ ազդեցութիւն Եաղուպի արքունիքին մէջ և դիզած էր մեծ հարստութիւն։

Հետեւաբար, Պարսկաստանի բոլոր Հայերը չեն ջնջուած, շնորհիւ այս բարեացակամ իշխողներուն, բայց հաւանօրէն Ուլուխ Բէկի հալածանքը ջընջած է Կեդրոնական Ասիոյ, Սմրղանդ և Խորասանի շրջանակին մէջ հաստատ-

ուած Հայերը և անկէ յետոյ այդ շրջանակին մէջ Հայերը գոյութիւն ունե-
նալէ կը դադրին երկար ատեն, մինչ այս հալածանքէն առաջ, նոյնիսկ Լէնկ
Թիմուրի աշխարհակալութիւններէն առաջ, Թաթարիստանի և Չինաստանի
մէջ քրիստոնեայ Նեստորականներու, Ասորիներու և Հայերու գոյութիւնը և
Թաթարներու կրօնքի համար անոնց տուած ազատութիւնները խիստ նշանա-
կելի էին։
Եթէ կարելի է հաւատք ընծայել աւանդութիւններու և ոմանց կարծիքին
Աֆղանիստանի մէջ բնակող Ղըլղայիններու ցեղը հայածին կը համարեն։
Անոնք ԺԹ. դարուն գլխաւորապէս 10.000 հոգի էին։ Եւ եթէ ճիշդ է
այս կարծիքը՝ այս Ուլուխ Պէկի ատեն իսլամացած Հայերէն կամ Ասորիներէն
պէտք է համարել զանոնք, թէև այս ենթադրութիւնը շատ վերապահութեամբ
պէտք է ընդունիլ։

∴

Իսկ թէ Հայերը Խորասանէն և Թուրքեստանի տափաստաններէն ալ ան-
դին անցած են, որքան որ ալ ոմանց տարակուսելի թուի, ուրիշներ հաստատ-
ուած իրողութիւն կը համարեն։
Պատմական փաստեր կան որ հայ վաճառականներ ամենահին ժամա-
նակներէն սկսեալ՝ Չինաստան կ'երթևեկէին։
Քսենոփոն իր Կիւրամարչին մէջ, Քր.է չորս դար առաջ, կը հաստատէ
Հայերու յարաբերութիւնները Չինաստանի և Արևելքի այլ երկիրներուն հետ.
ու կը պատմէ թէ իր վէպին հերոսը՝ Կիւրոս, Հայ ուղեցոյցներ ուզած է այդ
երկիրներուն համար, ինչ որ ցոյց կու տայ թէ Հայերը այն ատենն իսկ առև-
տրական յարաբերութիւններ ունէին այդ հեռաւոր երկիրներուն հետ։
Նոյնպէս Արտաշէսի մահէն (164 Քր.է առաջ) քանի մը տարի ետք յիշ-
ուած են Չինաստանի մէջ Հայ վաճառականներ, որոնք մետաքս, լայքա և
ուրիշ չինական ապրանքներ գնելով զանոնք արևմտեան ազգերուն կը ծախէ-
ին։ (Գեղամ Խանամիրեան, Ֆրանս-Հայ յարաբերութիւններ, «Պայքար» բա-
ցառիկ, 1953, էջ 16)։
Գրեթէ նոյն ժամանակները Չինական Հան (Han) տան մեծագոյն ինք-
նակալին՝ Վան-Դիի (Wu-Ti) ատեն (Քր.է առաջ 140—80) Հայերը մտած
էին կեդրոնական Չինաստան կամ Արևելեան Թուրքեստան, ուրկէ Հոները
բոլորովին Հիւսիս քշուած և կամ հպատակած էին և Թարիմ գետին հունը
լեցուած էր Չին գաղթականներով։ Հայերը անկէ կը բերէին մետաքս, լայքա
ճէյտ(1)։ Լայքան՝ շիկափոկի համար՝ վաղուց Հայերը Արևելքէն Արևմուտք կը
բերէին։
Ց. Ճ. Ուէլս, որ Չինական այդ վկայութիւնը յառաջ կը բերէ, կը յարէ
թէ Հայերը այդ ապրանքը կը փոխանակէին Հայաստանի և Հռոմի ոսկիով,
այսինքն հայ կարաւաններ չինուհրական այդ ապրանքները Քր.է դար ու կէս
առաջ կը հասցնէին Հռոմի շուկաները։ (Հմմտ. H. G. Wells, The Outline
of History, էջ 475, տես. Ց. Քիւրտեանի Հռոմ Մետաքսի Վաճառականու-
թիւնը եւ Հայերը, 3—4), ինչպէս նոյն հեղինակէն, Հայրենիք ամսաթերթ,
ԺԹ. տարի, Թիւ 10, էջ 139)։

(1) Չինական թանկագին քար՝ կարմրագոյն կամ կանանչ, ըստ Յարութիւն Քիւրտեանի։



Չինաստան-Հռոմ ճամբան, համաշխարհային առևտուրի պատմութեան
հռչակաւոր Մետաքսի ճանապարհը, կ'անցնէր Միջագետքէն Պարսկաստան,
Բակտրիա, Քաշկար, ուր իրարու կը հանդիպէին չինացի առևտրականներ և
Արևմուտքէն եկող միջնորդներ։
Չինացիները փորձած են իրենց ապրանքները առանց միջնորդի իրենք
ծախել։ Այս նպատակով՝ Քր.է 126 տարի առաջ, Չին կայսեր պաշտօնեայ
Զանցիան, դէպի Արևմուտք դիմած և գտած է Պուխարան և Ֆէրկանան։
Յետոյ Չինացիք յառաջացան մինչև Կասպից ծով՝ որպէսզի ապահովեն
Մետաքսի Ճանապարհը ջնջելով վաչկատուն ցեղերը։ Քր.է առաջ 98ին, չի-
նացի մը հասաւ Պարսկաստան, Հռոմ երթալու համար, սակայն Պարթևները
արգիլեցին ճամբան շարունակել (Խորէն Գաբիկեան, Մարքոյ Փոլոյ, ԱԵԳ),
թերևս տարանցիկ այդ առևտուրին շահէն չզրկուելու համար։
Պատճառ մը չկայ ենթադրելու թէ այս վաղեմի յարաբերութիւնները
ընդհատուած են, քանի որ Մետաքսի Ճանապարհին վրայ միշտ յիշուած է
որ Հայերը երթևեկած են իրենց կարաւաններով, ինչպէս այն ատեն, նոյն-
պէս և Ասիական բարբարոսներու արշաւանքներու չորս դարերու տևողու-
թեան։ Նշաններ կան որ Հայ վաճառականին հետ, Հայ կրօնաւորներ ալ՝ իբ-
րև քրիստոնէութիւնը տարածող՝ մինչև Չինաստան թափանցած են։ Արդա-
րև, քրիստոնէութիւնը Չինաց մէջ ամէնէն առաջ Է. դարէն սկսեալ քարոզ-
ուած պէտք է ըլլայ։
Նեստորականները Քր.ի 600 թուականին Աւետարանի քարոզութեան
սկսած էին Ասիոյ խորերը (Սողոմոն Բայնախ, Կրօններու Պատմութիւն) և
քրիստոնէութեան քարոզիչներ եղած էին Թուրք ցեղերէ խաներու ընտա-
նիքներու մէջ։
Լատին քարոզիչները, ինչպէս կ'երևի, գործել փորձած են առանձին,
վանքի ինչպէս յիշուեցաւ, Իննովկենտ Դ. Պապին կողմէ 1245—1247 թուա-
կաններուն, կրօնական առաքելութիւններ ղրկուած են Մոնկոլներու մօտ,
(վերը, 296) և Մոնկոլներէն պատուիրակներ եկած են, Պապին և Եւրոպա-
յի վեհապետներուն (վերը 297)։
Այս պատուիրակներէն մէկը՝ Ռիւպրիւք, Մանգոյ Խանի Օրտուին և ա-
նոր մայրաքաղաք Գարագորումի մէջ, որ շատ հեռու չէր գտնուեր, Հայեր
կը գտնէր (Ց. Ցակոբեան, Ուղեգրութիւններ, Ա. 7)։
Ան կը գրէ թէ «Մեծ բազմութեամբ քրիստոնեաներ կային՝ Հունգարներ,
Ալանները, Ռուսներ, Վրացիներ եւ ՀԱՅԵՐ, որոնք ամէնքն ալ հաղոր-
դութիւն չէին առած իրենց գերի բռնուելէն ի վեր, որովհետեւ Նեստորա-
կանները թոյլ չէին տար անոնց իրենց եկեղեցին մտնել, բացի այն պարա-
գային որ անոնք իրենցմէ մկրտուէին» (տես. Ց. Քիւրտեան, Հայրենիք ամ-
սաթերթ ԺԲ. տարի Թ. 2, Դեկտ. 1933)։
Ռիւպրիւքի այս տողերը ցոյց կու տան թէ Մոնկոլները իրենց առած
գերիները — որոնց մէջ Հայեր ալ գտնուած են — տարած են Գարագորում,
Չինական սահմանագլուխը և Մոնկոլիա։

Այս գերիներուն, որոնք հոն հաստատուած էին, հաւանական է որ ազատ մարդիկ ալ հետեւած էին, շահու եւ ապրուստի համար, եւ հոն դիրքերու հասած։ Այսպէս, Ալիշան կը գրէ թէ 1284ին, Քուպլայ Խանի ժամանակ, (1259 –1291 +) Մոնկոլ խանին Զարպխանէն կամ Տարպխանէն (1) պահողը Հայեր էին (Սիսական, 84)։

Ռուպրուք կը յիշէ թէ իր Գարակորում գտնուած օրերուն, Հայաստանէն եկած էր Հայ մը՝ որ կ'ըսէր թէ քահանայի որդի է եւ նուէր կը բերէր Մանգոյ Խանին գոհարազարդ արծաթեայ խաչ մը, եւ անոր կ'իմացնէր թէ Արաբները քանդած էին իր եկեղեցին։ Երբ Մանգոյ Խան կը հարցնէ թէ ի՛նչ գումարի պէտք ունի վերաշինելու համար այդ եկեղեցին, Հայը 200 իասկոտի (iascot) հաշիւ մը կը հանէ, որ կը համապատասխանէր 2000 ոսկի մարքի։

Մանգոյ Խան կը հրամայէ որ նամակներ տրուին այդ Հայուն, որպէսզի Պարսկաստանի եւ Մեծ Հայքի հարկերէն արծաթ դրամով վճարուի այդ գումարը (Նոյն)։

Ինչպէս տեսնուեցաւ, որչափ ատեն ու Մոնկոլները իսլամութիւնը ընդունած չէին, շատ համակիր էին քրիստոնեաներուն. Չինաստանի մէջ ապրող քրիստոնեաները եւ եկեղեցիները նոյնպէս շատ ապահով էին։ (Հմմտ. Ժ. Լապուր, Քրիստոնէութիւն ի Պարսկաստան)։

ԺԱ. դարուն, երբ Ասիական բարբարոսները դէպի Արեւմուտք կ'արշաւէին, Նեստորականներու կաթողիկոսը, իրեն ենթակայ 25 մետրապոլիտ եւ 150 եպիսկոպոս ունէր։ Թաթար արշաւանքներու ատեն, Նեստորականները բաժնուեցան զանազան խումբերու, բայց պահեցին իրենց գոյութիւնը եւ աշխատեցան օգտակար ըլլալ։ Անոնք մեծ ծառայութիւններ կը մատուցանէին Մոնկոլներուն, իբրեւ քաղաքակրթիչ եւ լուսաւորող։

Անոնք նոյնիսկ քաղաքական ծառայութիւններ կը մատուցանէին Մոնկոլներուն։ Անոնք երբ տեսան ԺԳ. դարուն վերջերը, Քրիստոնէութեան պետը ըլլալ յաւակնող Հռոմի Պապերուն, եւ Խաչակրութեանց ղեկավար թագաւորներուն Մոնկոլներու մօտենալու ջանքերը, նպաստելու համար այս շարժումին յանուն ընդհանուր Քրիստոնէութեան շահերուն, աշխատեցան ներդաշնակ համագործակցութեան մը նախաձեռնարկ ըլլալ, կասեցնելու համար Իսլամութեան առաջխաղացութիւնները եւ նուաճումները, որոնք կ'սպառնային բոլորովին փճացնելու Խաչակիրներու գործը, անոնցմէ հիմնուած քրիստոնեայ կոմսութիւնները եւ դքսութիւնները եւ Հայոց Կիլիկիոյ թագաւորութիւնը ջնջելով։

Այս սպառնալից կացութեան առջեւ Նեստորականներու Եապալահա կաթողիկոսը, որ Չինացի էր, Մոնկոլներու եւ Ֆրանքներու միջեւ դաշնակցութիւն մը հաստատելու համար, պատգամաւորութիւն մը կը ղրկէ 1288ին, Հռոմ, Իլխանեան Արղուն Խանի (1281 – 1291) անունով, Իսլամութեան յաղթական արշաւը կասեցնելու նպատակով զինակցելու համար, վասնզի Իլխանեանք Պաղտատը գրաւելով իսլամները իրենց դէմ գրգռեցին եւ ստիպուեցան մաքառիլ Մէմլուքներու դէմ։

(1) Ալիշան, արքունեաց գանձ կը թարգմանէ, սակայն փողերանոց՝ դրամ հատանելու վայր իմաստով ալ գործածուած է։



Դժբախտաբար այս իրատես ծրագիրին, որուն Հայոց Հեթում Ա. թագաւորն ալ աշխատած էր աւելի առաջ, Հռոմի Պապերը կարեւորութիւն չընծայեցին եւ Նեստորական կաթողիկոսին կոչը անպատասխանի մնաց։ Մինչդեռ եթէ ուշադրութեան առնուէր եւ միացեալ ճակատ կազմէին Մոնկոլները եւ Եւրոպացիք, աշխարհի համար թերեւս ամենամեծ բարիքը պիտի ըլլար։

Լատին կրօնաւորներ, որ 1245էն սկսեալ այցելած են Չինաստան եւ Մոնկոլիա, քարոզութեան համար հոն գտած են բազմաթիւ Նեստորական կրօնաւորներ, որոնց հետ եթէ իմաստութիւնը ունենային գործակցելու, թերեւս կարենային Մոնկոլները քրիստոնեայ դարձնել եւ անոնց վայրենի բնազդները մեղմացնել եւ բարքերը ազնուացնել։

Դժբախտաբար անոնք մենատիրական ձգտումներով խաչաձեւեցին Նեստորականներուն գործը եւ վնասեցին Քրիստոնէութեան զարգացման Չինաստանի մէջ։

ԺԴ. դարէն սկսեալ շարունակ Չինաստան եւ Թաթարիստան այցելող կաթոլիկ կրօնաւորները ամէնքն ալ այդ տեղերու մէջ Նեստորականներու հանդիպած ըլլալնին կը յիշատակեն։

Եւ որովհետեւ, ինչպէս տեսնուեցաւ, անոնցմէ ոմանք հաստատած էին թէ Նեստորականներուն հետ Հայեր ալ կը գտնուէին, կրնանք հետեւցնել թէ ԺԳ. եւ ԺԴ. դարերուն ալ Հայ կրօնաւորներ կային այդ երկիրներուն մէջ։

Այդ կաթոլիկ կրօնաւորներէն մին Անդրէաս Պերուճիացի, որ մէկն էր 1307ին Կղեմէս Ե. Պապին (1305 – 1314) կողմէ ղրկուած եօթը քարոզիչ եպիսկոպոսներէն(1), — որոնցմէ միայն երեքը ողջամբ հասած էին Չինաստան — կը վկայէ թէ հայազգի հարուստ կին Թանգար մը իր ծախքով՝ ԺԳ. դարուն վերջը կամ ԺԴ. դարուն սկիզբը Քանթոնի(2) մէջ կառուցած էր մեծ եւ գեղեցիկ եկեղեցի մը(3), որ իր մահուան ատեն յանձնեց լատին Փրանչիսկեան Կերարտոս (Gerardus) կամ Ժերար Արքեպիսկոպոսին, ինչպէս կը հաստատէ, այս արքեպիսկոպոսին երկրորդ յաջորդը, յիշեալ Անդրէաս, 1326ին՝ իր Պերուճիայի հայրենակիցներուն գրած մէկ նամակին մէջ։

Քիչ ետքը կը ծանուցուէր որ, հոն կային երեք Ֆրանչիսկեաններու եկեղեցիներ եւ վաճառականներու Սնտուկ։

Թէ ո՞ր աստիճան ստոյգ է մեծահարուստ Հայ կնոջ մը գոյութիւնը՝ ոչ ոք կրնայ երաշխաւորել, սակայն նկատի առնելով որ վկայութիւններ կան որ հոն կը բնակէին Արաբներ, Պարսիկներ եւ ՀԱՅԵՐ եւ ականատես մը կը հաստատէ այդ Հայ կնոջ գոյութիւնը, հարկ է ընդունիլ թէ արդարեւ Մոնկոլական

(1) Այդ թուականին Պապը հաստատած էր Փեքինի Արքեպիսկոպոսութիւնը, որուն ենթակայ էին վեց եպիսկոպոսներ (տես. վերը, էջ 77)։

(2) Քանթոն՝ նշանաւոր նաւահանգիստ էր։ Արաբները զայն կը կոչէին Զայթուն *(Zaytun)*. իսկ եւրոպացի ճանապարհորդներ *Saiton* կամ *Cayton*, եւ Չինացիք *Tsuen-Tcheou -Fou* եւ հին ատեն *Tsé-Thoug*։

(3) Ճիովաննի տը Մոնթէ Քորվինօ կամ այլ ընթերցմամբ Յովհաննէս տը Մոնթէքորվինօ (տես. վերը, 77), (1247—1388) որ վերջէն 1307ին Կղեմէս Ե. Պապէն, Փեքինի Արքեպիսկոպոս նշանակուեցաւ, երբ 1292ին, Փեքինի մէջ արդէն եկեղեցի մը շինած էր։

տիրապետութեան ամէնէն հեռաւոր վայրերուն մէջ՝ Հայերը սփռուած և հաստատուած էին։

Մարքոյ Բոլոյ, Հեթում պատմիչ եւ Կիրակոս կը հաստատեն թէ Հեթում Թագաւոր և Սմբատ Գունդստապլ պաշտօնապէս Գարագորում Խաքանին այցելած են։ Հոն Հայերու հանդիպած էր Ռուպրուք, հետեւաբար գոնէ երթեւեկ ունէին Հայերը, և հաւանօրէն ինչպէս Ալիշան կ'ենթադրէ՝ Ռուբինեան թագաւորներ և Օրբելեանք, ինչպէս նաև ուրիշ իշխաններ գացած են Խաքաններուն, յաճախ շատ մը ուղեկիցներով և անխուսափելի վաճառականներով, որոնք մետաքս գնելու և Արեւմուտք փոխադրելու համար հոն կը դիմէին։

Երբ Թաթարները իսլամացան, (1304) Մահմետական մոլլաներու յարատեւ և միահամուռ ջանքերով, տկարացաւ Նեստորական եկեղեցին, որ իր միսիոնարական գործունէութեամբ աշխարհի ամենամեծ ծառայութիւնը մատուցած պիտի ըլլար՝ եթէ յաջողէր քրիստոնեայ դարձնել Մոնկոլները և Թաթարները։

Ընդհակառակն, Մոնկոլները քրիստոնէացնելու փորձը բոլորովին ձախողեցաւ, և երբ 1369ին Չինացիք իրենց անկախութիւնը ձեռք բերին և Թաթարները երկիրէն վանեցին, անոնց հետ տարագրեցին նաև բոլոր օտար քրիստոնեաները, որոնց մէջ դարձեալ Նեստորականներու թուական առաւելութիւնը յատկապէս չեշտուած էր։

Այդ Նեստորական նկատուած քրիստոնեաներուն մէջ Հայեր ալ պէտք է գտնուած ըլլան։

Հայ եկեղեցին առանց երբեք Նեստորական դաւանանքը ընդունած ըլլալու, միշտ համակիր վերաբերում մը ունեցած է հանդէպ այս եկեղեցիին. գրեթէ համանման պայմաններու մէջ գտնուած ըլլալով։

Ֆրանսական Հնախօսական Յանձնաժողովին Նախագահը՝ Պոնիյէ, որ նշանաւոր արեւելագէտ և քրիստոնէական հնախօս մըն էր և որ անձամբ պտտած է Կեդրոնական Ասիան, կը հաստատէ թէ «Նեստորական քարոզիչներու հետ եղած են նաեւ բազմաթիւ Հայեր, Մոնկոլներ, Չինաստանի սահման Սինենգի եւ Տուպա Չինգ պարսպապատ քաղաքին մէջ»։ Մինչև վերջին տարիները հոն կային, Հայ գաղթականներ, ինչպէս վկայած է Ամերիկացի ճանապարհորդ մը, բայց տեղացի իսլամները խռովութիւն հանելով՝ ոչնչացուցած են Հայերը և յափշտակած անոնց հաստատութիւնները։

Պոնիյէ կը հաստատէ նաև թէ Հայերը նոյնիսկ Է. և Ը. դարէն սկսեալ ունեցած են Իսսիկկուլ կամ Սույկէօլ լիճին (1) (Թուրքեստանի և Չինաստանի սահմանին վրայ) Հիւսիսային կողմը շատ նշանաւոր վանք մը, ուր ըստ աւանդութեան կը գտնուէր Մատթէոս Առաքեալին մարմինը (տես. վերը, 317)։

Իսլամութիւնը բնաջնջեց քրիստոնէական քարոզութեան այս կայանները։

Հայերը անապատային այդ վայրերուն մէջ այս հանգրուանը կանգնած պէտք է ըլլան Հայ վաճառականներուն համար։

Այս Հայ վանքը թերեւս հաստատուած էր Թաթարներու աշխարհակալութեան սկիզբը, վասնզի ԺԳ. դարուն կը յիշուի Ռուպրուքէն, իսկ ԺԹ. դարուն Հումբոլտ՝ իր Asie Centrale գիրքին և Մըրշիսըն՝ իր մէկ բանախօսութեան մէջ (զոր ըրած է 1870ին Լոնտոնի Աշխարհագրական Ընկերութեան մէկ նիստին) յիշած են անոր աւերակները։ Ալիշան, հիմնուելով ասոր վրայ, կը խորհի թէ կարելի է որ Հայեր հաստատած էին հանգրուաններ կամ կարաւանի կայաններ իրենց վաճառականական երկարաձիգ ճամբուն վրայ և զարմանալի չէ բնաւ եթէ Չինական Թուրքեստանի բոլոր գլխաւոր քաղաքներուն մէջ և անոնց դրացի Արեւմտեան նահանգներուն մէջ բնակութիւն հաստատած և կամ հոն երթեւեկած ըլլան։

(1) Այս լիճը կը գտնուէր Պուխարայէն եւ Սմրղանդէն արեւելք. Պայքալ լիճին հարաւակողմը։



Մանաւորապէս Արեւմտեան Չինաստան (1) և Պուխարա երթեւեկող Հայ վաճառականներու գոյութիւնը անժխտելի կերպով կը հաստատուի նաև գրաւոր վաւերագիրներով։

Ասիկա որոշապէս կը տեսնուի, օրինակի համար, Գրիգորիս Աղթամարցի կաթողիկոսի՝ Խթայեցի Աստուածատուրի նահատակութեան (1519ին կատարուած) առթիւ մէկ գրութեան մէջ։ Աղթամարցի կը գրէ.

«Վաճառական մի հայ եւ յոյժ ճարտասան,
Մխիթար Բաղիշեցի եւ աստուածածան,
Գնայ նա ի սահմանս Ատրպատական,
Ի Ղում եւ յԻրագ եւ ի Խորասան,
Եհաս ի Սամարխանդ եւ ի Պուխարա,
Եմուտ ի Հինդիստան եւ անտի գնաց
Ի մեծ հռչակաւոր քաղաքն Խըթա,
Ուր մուշկն է պատուական երկոյ նաֆա
Խթա մեծ սահմանաց Չինումաչինայ,
Եւ անդ լինի ռաւանդ, չնաղ չինին գայ
Անդ է նահատակեալ առաքեալն Թովմա
Հարեալ ի Մզդիհէ, այսպէս գրեալ կայ»

Այս տաղին մէջ Գրիգորիս Աղթամարցի կը շեշտէ թէ «Խաթայու աշխարհն» կռապաշտ էր։ Մխիթար հոնկէ որդեգրած է Աստուածատուրը և բերած Բաղէշ և քրիստոնեայ մեծցուցած, բայց իբրև դաւակ Թուրքի նահատակուած է (Տես. Կ. Կոստանեանց «Գրիգորիս Աղթամարցին եւ իւր տաղերը». 1898, Թիֆլիս, 88—91, հմմտ. նաև Հ. Աճառեան և Յ. Մանանդեան. Նոր վկաներ, 355—358, Օրմանեան, Ազգապատում 2222—3)։

Ուրեմն՝ մինչև հեռաւոր Չինաստան շրջած և ի հարկին գաղթած են Հայերը և մինչև 1369ը գացած են հոն, իրենց կրօնքը պահելով և քարոզելով զայն։

Նոյնպէս, մեծ հաւանականութեամբ, Հայեր, իրենց ձեռներէց առեւտրականի բնազդովը, Չինաստանի հարուստ արդիւնաբերութիւնները և

(1) Այդ երկիրը Եւրոպացիք *Catai* կը կոչէին։ Նոյնը կը հաստատէ Հեթում Պատմիչ։ Իսկ Կիրակոս Գանձակեցի այդ վայրերուն բնակիչները Ղասացիք կը կոչէ, բայց նաեւ Խարախըտայ, այսինքն Գարախիթայ, որ յատկապէս փոքր Պուխարա կը նշանակէ, ըստ Ալիշանի։ Մեր պատմիչները յիշած են Խիթայի կամ Խթայի երկիրը։

մանաւորապէս մետաքսը, որ վաղուց ծանօթ էր Հայաստանի և հոն կը գործուէր, Արևմուտք փոխադրող ասիական կարաւաններու կազմութեան մէջ մասնակցութիւն ունեցած են Ժ. և ԺԱ. դարերուն։

Ասողիկ (էջ 147) Աշոտ Ա. Բագրատունի թագաւորին իշխանութեան ժամանակ, (885-890) Հայաստանի տնտեսական բարգաւաճման և բարեկեցիկութեան վրայ գաղափար տալու համար կ'ըսէ թէ նոյնիսկ հովիւները և անդէորդները մետաքսեայ պատմուճաններ — այն ատեն այնքան սուղ և պերճանք նկատուած — կը հագնէին, ինչ որ այդ դարերու մետաքսի երկիրին՝ Չինաստանի հետ Հայերու յարաբերութիւնները կը փաստէ։

Մոնկոլ տիրապետութեան շրջանին, երբ Նեստորականներ ազատ երթևեկ ունէին ընդարձակ կայսրութեան մէջ և ազատ մուտք՝ Մոնկոլ մեծ ու փոքր Խաներու վրան-պալատները և ապարանքները, հաւանաբար էին նաև քրիստոնեայ վաճառականները, ինչպէս Ռաբան Աթայի մասին Կիրակոսի գրածներէն (տես. վերը՝ 298) կրնայ մակաբերուիլ թէ Հայ վաճառականներն ալ այս առանձնաշնորհէն աներկբայ օգտուած պիտի ըլլան, քանի որ Հայ և Նեստորական յարաբերութիւնները լաւ էին և Նեստորական եկեղեցականներ, ինչպէս նաև Հայ, Ասորի և Յոյն վաճառականներ, իրարու հետ կը գործակցէին։

Բոլոր այս կիսկատար և պակասաւոր յիշատակութիւնները իրարու քով բերելով կարելի է գոնէ հասնիլ սա եզրակացութեան թէ բարբարոս Ասիական ժողովուրդներու արշաւանքներուն և Սելճուկ, Մոնկոլ և Թաթար իրարու յաջորդող տիրապետութիւններուն հետևանքներէն մէկը եղած է Հայերու մինչև Ծ. Արևելք իբրև գաղթական առաջանալը։

Այս գաղթականները դժբախտաբար հազիւ մինչև ԺԴ. դար կեանք կրցած են ունենալ Չինական երկիրներու և մինչև ԺԸ. դար Թաթարիստանի և Սմրղանդի շրջանակներուն մէջ։

Դէպի Արևելք Հայ գաղթականներու համար բացուած ուղին անել ճամբայ մը հանդիսացաւ և որևէ օգուտ կամ քաղաքակրթական բարիք չապահովեց Հայերուն, բացի նիւթականէ։

Արդէն Արևելք, մանաւանդ խորագոյն Արևելք, քանդիչ ոյժ մը կը ներկայացնէր քան թէ ծաղկեցնող և զարգացնող, մինչ ընդհակառակը, Արևմուտքը՝ մտաւորական և քաղաքակրթական լայն հորիզոն մը կը ներկայացնէր, ուր Հայերու մուտքը իր նշանակութիւնը և ազդեցութիւնը պիտի ունենար Հայոց ճակատագիրին վրայ։

Թաթարները մասամբ այդ ճամբան ալ յարդարեցին, իրենց Հիւսիսային ճիւղովը, Կովկասի լեռներէն անդին Հայ գաղթականներուն համար նոր աշխարհներ բանալով։

∴

Արևելքի հետ՝ Հայերու առևտրական վաղեմի յարաբերութիւններուն վրայ խօսած ատեն՝ ոչ-Հայ պատմագիրներու 1) վկայութեան վրայ հիմնուելով

(1) Այդ պատմիչներն են Պրոկոպիոս հիներէն եւ *Le Croze, d'Anville* եւ *E. Gibbon* նորերէն. առանց հաշուելու մերիններէն Արքահայր Սեփեանոս, Աղոնց Գիւլէր, Ալիշան եւ Մեսրոպ Սեթ. ինչպէս նաեւ Կալկաթայի Համալսարանին ուսուցչապետներէն մին:



իբրև աւելի կամ նուազ վաւերական իրողութիւն՝ ներկայացուցած եմ արդէն Հայաստանի երկու գլխաւոր քաղաքներուն և միջազգային առևտուրի յայտնի կայանի հռչակ հանած Արտաշատի և Դուինի շուկաներուն մէջ, Հնդկական ապրանքներու վաճառումը, ինչպէս նաեւ Հնդկաստանի ապրանքներ Արեւմուտք բերող Հայ վաճառականներու յիշատակութիւնը և վերջապէս Հնդկաստանի մէջ քրիստոնէութեան քարոզութեամբ նոյնիսկ Դ. դարերուն Հայեր գտնուած ըլլալուն ենթադրեալ իրողութիւնը (տես. ՊՀԳ. Ա. 139—143)։ Ասիկա ենթադրել կու տայ թէ Հայերը առեւտրական յարաբերութիւններ եւ գաղթականներ ունեցած են նոյնիսկ շատ հին ատեն, Հնդկաստանի մէջ։ Հաւանօրէն այս յարաբերութիւնները շարունակուած են Բագրատունեաց բարգաւաճ շրջանին, պատմական յիշատակութեան մը համաձայն (ՊՀԳ. Ա. 375)։

Այս յարաբերութիւնները՝ չեմ կարծեր որ ընդհատուած ըլլան, հակառակ բարբարոսներու Ասիոյ պատճառած քանդումներուն և տակնուվրայութեանց։

Այս մասին վկայութիւններ ունին միայն օտար պատմիչներ (տես. վերը 294—5) մինչդեռ Հայ պատմիչներ և յիշատակարաններ լուռ են։

Մասնաւորապէս ԺԶ. դարուն սկիզբը՝ Հայերու գոյութիւնը Հնդկաստանի Banglella և Pego քաղաքներուն մէջ, յիշուած է Ludovico Di Narthema ճանապարհորդէն, որ 1502—1508ին Արևելք շրջած է։ Ասիկա կարևոր փաստ մը կրնայ նկատուիլ նոյն և աւելի կանուխ ժամանակամիջոցներուն Հնդկաստան Հայեր գտնուելուն և Յ. Քիւրտեանի այն տարակոյսը թէ խօսքը Նեստորականներու մասին էր և անոնք շփոթուած են Հայերու հետ (ՀԱՅՐԵՆԻՔ, ԺԲ. տարի Թ. 8, Յունիս 1934 էջ 129), շատ ընդունելի կարծիք մը չէ։

Հ. Ալիշան ունի նաև մի քանի վկայութիւնները ուրիշ Եւրոպացիներու, որոնք չեն կրնար բոլորն ալ Նեստորականը և Հայը շփոթած ըլլալ իրարու հետ։ Անոնցմէ մին է՝ Պարպոզա Փորթուկալցին (+ 1521), որ ԺԵ. դարուն վերջերը և ԺԶ. դարուն սկիզբները Հնդկաստան գտնուած է։ Ան կը պատմէ թէ Հայ եպիսկոպոս մը և ապա Հայ քահանաներ եկած են Մալապարի Գուլամ քաղաքը և քարոզած ու քրիստոնեայ մկրտած են շատ տեղացիներ։

Այս Փորթուկալցին* իբրև հետաքրքրական իրողութիւն՝ կը յայտնէ որ գինիի չգոյութեան պատճառով՝ Հայ եկեղեցականները չամիչը կը թրջէին և անոր ջուրով Պատարագ կը մատուցանէին (Ալիշան, Սիսական, 475)։

Կէս դար յետոյ՝ 1567ին՝ կը յիշուի Գոչինի մէջ Հայ եպիսկոպոս մը որ կը վիճաբանէր Լատիններու կամ Յիսուսեաններու հետ և 1589ին Գրիգոր անուն Հայ Սարկաւագ մը, որ ծանօթ էր Էքպէր շահի արքունիքին ի Լահոռ, կու գար Կոա՝ խնդրելու Փորթուկալի փոխ-արքայէն Յիսուսեան քարոզիչներ (Ալիշան այս տեղեկութիւնները առած է Յիսուսեաններէն, Սիսական էջ 475)։

Թէև ժամանակով Ասիական հրոսներու շրջանէն աւելի ուշ են Յիսուսեաններու այս երկու վերջին վկայութիւնները, սակայն անոնք փաստեր կու տան մեզի աւելի հին Հայ գաղութներու մասին, քանի որ կը յիշատակեն Հնդկաստան ապրող և գործող Հայ եպիսկոպոսներ, որոնք անշուշտ Հայ հաւատացեալ գաղութներուն հետ կապուած էին։ Դժբախտաբար Հայ յիշատակարաններ անտեսած են զանոնք և մեզի որևէ տեղեկութիւն չեն տուած այս

շրջանին Հնդկաստան ապրող Հայերու մասին, թէև աներկբայ ենք որ Հնդկաստանի մէջ ապրած են քիչ թիւով Հայեր, որոնք պահած են Հայկական ձեռներէցութեան ոգին և կարողութիւնը և հակառակ բազմապիսի դժուարութիւններուն և արգելքներուն՝ անոնք միջոցը և հնարքը գտած են միշտ, Հնդկաստանի հարստութիւններէն որոշ չափով օգտուելու համար գէթ։

Բ.

## ԴԷՊԻ «ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄՆ ԱՇԽԱՐՀԻՍ»

Հայաստանի Հիւսիսային սահմանները դժուար է Արևելեանին պէս աշխարհագրական որոշ գիծով մը անջատել, թէև ընդհանրապէս սովորութիւն եղած է Կուր գետը նկատել Հիւսիսային սահմանագլուխ Հայաստանի։

Հայերու Հիւսիսային երկու գլխաւոր դրացիներն էին Վրացիք և Աղուանք․ բայց շատ հին ժամանակներէ սկսած՝ Հայաստանի Հիւսիսային կողմը կը բնակէին նաև բազմաթիւ ուրիշ ազգեր, ինչպէս Գուգարացիներ, Եգերացիներ, Ուտէացիներ եւայլն. կային գաւառներ, որոնց ո՞ր երկրին և ցեղին պատկանիլը վէճի առարկայ եղած էր միշտ (տես. ՊՀԳ Ա. 136 և Պատմ. Հայաստանի սահմանները էջ 15—16)։

Մինչև Ասիական բարբարոսներու ասպարէզ գալը, Հայաստանի Հիւսիսային երկու գլխաւոր դրացիները, հանդէպ Հայերու, մասնաւոր դիրք մը ունէին։

Այս երկու քրիստոնեայ ազգերը բնական է շատ աւելի մօտ էին Հայերուն և կրօնական, մշակութային և քաղաքական սերտ շփումներ ունէին (ՊՀԳ. Ա. 137) և երեք ազգերն ալ Դ. դարուն Քրիստոնէութեան յարած էին և հաւատակից մնացած էին իրենց պետ և առաջնորդ ունենալով Հայ եկեղեցին։

Իսկ Ե. դարուն երեք ազգերն ալ ունեցած էին իրենց գիրը և գրականութիւնը՝ Հայերու հետ միաժամանակ և Հայոց իսկ ձեռքով։

Հայերու ազդեցութիւնը մեծ էր անոնց վրայ և ընդհանուր միութիւն մը կար երեք ազգերուն միջեւ։ Աղուանք՝ Հայոց քաղաքակրթութեան և մշակութային ազդեցութեան տակ՝ արդէն ԺԱ. դարուն գրեթէ բոլորովին հայացած էին և իրենց երկիրը այլեւս Հայաստան կը նկատուէր։ Իսկ Վրացիք իբրև Հայոց դաւանակիցներ, նոյնիսկ Ե. դարուն կրօնական պատերազմներու ատեն՝ Հայերու հետ նոյն հաւատքին համար մարտնչելէ ետք, Է. դարուն սկիզբը, 608ին, Քաղքեդոնականութեան յարեցան, Բիւզանդական կայսրութեան ապաւինելով՝ թերևս Հայերու հետ ձուլման վտանգին դիմագրաւելու համար։

Այս թուականէն յետոյ երկու ազգերը, Բիւզանդիոնի կղերին ներշնչած կրօնական ատելութեամբ վառուած՝ նկատի չկրցան ունենալ այն բոլոր ազդակները, որոնք զիրենք կը հարկադրէին գործակցիլ իրարու։



Հակառակ երկու ցեղերուն միջև այս ցրտացման որ կրօնական դաւանանքի պատճառով ստեղծուեցաւ, աշխարհագրական միևնոյն շրջանակին մէջ ապրող այս ազգերը տևական շփման մէջ էին իրարու հետ, եւ մերթ բարեկամական և մերթ թշնամական յարաբերութիւններու եւ միջադէպերու պատմութեամբ լի են երկու ազգերու տարեգրութիւններն ալ։

Այնպէս որ, ինչպէս ըսած եմ (ՊՀԳ. Ա. 136) աներկբայ և վստահօրէն կրնանք ըսել թէ Հայերը շատ հին ժամանակներէ սկսեալ նաև այս դրացի երկիրը երթևեկած և հոն հաստատուած պէտք է ըլլան։

Վրաստանի ամէնէն զուտ Վրական վայրերն էին Մցխէթա՝ հին մայրաքաղաքը և Թիֆլիս՝ նոր մայրաքաղաքը, որոնք Գուգարքի սահմաններուն այնքան մօտ են որ կրնանք ապահովաբար ըսել թէ անյիշատակ դարերէ սկսեալ Հայ բնակիչներ ունեցած են (ՊՀԳ. Ա. էջ 137 և 265)։

Ըստ Փրոֆ. Ալեքսանդր Խախանոֆի (1), Հայերու գաղթը դէպի Վրաստան սկսած է Ե. դարուն և շարունակուած է մինչև մեր օրերը (տես. Journal Asiatique. 1898 II. էջ 337—344)։

Թիֆլիսի հնաշէն Կաթողիկէ անունով եկեղեցին, որուն հիմնարկութիւնը Քրիստոսի 600 թուականին եղած է (Հ. Մինաս Վրդ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն դէպի Լեհաստան, 412) ինչպէս և ուրիշ յիշատակարաններ, կը հաստատեն Հայերու վաղնջական բնակութիւնը ի Վրաստան։ Վրաստանի աշխարհագրական սահմաններուն մէջ կային վայրեր, ուր Հայերը այնքան մեծ թիւ կը կազմէին որ գոնէ օտարներէն Հայաստան կը նկատուէին։

Բացի Սոմխեթի անուանակոչութենէն, որ կը նշանակէ Հայաստան, Վրացիներու ժամանակագրութիւնն ալ (Վրաստանի Կեանք = Քարթլէ Ցխովրեբա) կը վկայէ՝ որ Արաբները Հայաստան կը համարէին նոյնիսկ Թիֆլիսը՝ Վրաստանի մայրաքաղաքը, այն պատճառով որ Հայաստանի Գուգարք գաւառը սահմանակից էր Թիֆլիսի, ուր ինչպէս նաև Քարթալինիայի և Կախեթայի, այսինքն Արևելեան Վրաստանի հարաւային մասերուն մէջ, կար հայկական հոծ բնակչութիւն (Ց. Զաւրեան, Ուրուագիծ Վրաստանի պատմութեան)։ Բայց Փրոֆ. Խախանոֆ (տես. Նոյն) կը կարծէ թէ երկրին այդ շրջանը Վրացիք Սոմխեթի (Սոմեխի = Հայ) կոչեր էին, անոր բնակիչներուն մեծամասնութիւնը Հայ ըլլալուն պատճառով։

Արաբական տիրապետութեան շրջանին, մասնաւորապէս 861էն ետք, երբ Վրաստան իր անկախութիւնը վերագտած էր, Հայոց թիւը շատ աճած է Վրաստանի մէջ։

Տարբեր չէր վիճակը բարբարոսներու արշաւանքին սկիզբը, այսինքն ԺԱ. դարուն՝ երբ Հայաստանի վրայէն կ'անցնէին Ասիական բարբարոսներու աւերող, քանդող և խամրեցնող մրրիկները, որոնք իբրև խորշակներ թառամեցուցին հայկական բարձրաւանդակին զանազան հողաբաժիններուն մէջ տակաւին ապրող Բագրատունի, Սիւնի, Արծրունի և Աղուան թագաւորութիւն-

(1) Վրացի. եւ Մոսկուայի կայսերական Համալսարանին մէջ դասախօս եղած է։

ներու բնկորներէն կազմուած «գիւղական» Թագաւորութիւնները և Տարօնի
Մամիկոնեան իշխանութեան վերջին շառաւիղները, որոնք տակաւին կը սոն-
քային Բիւզանդական կայսրերէն շնորհուած տիտղոսներով։

Որչափ ատեն որ Բիւզանդիոնի բանակները Հայաստան կը մնային, այ-
սինքն մինչև ԺԱ. դարուն կէսերը, Վրացիք անոնց օգնութեան վրայ յոյս
դնելով, իրենք զիրենք զօրաւոր կը համարէին և կ'արհամարհէին Հայերը։
Բայց երբ ԺԱ. դարու առաջին քառորդին Սելջուկները դէպի Արեւմուտք խու-
ժեցին և մտան Հայաստան, Բիւզանդացիք, թէև անոնց անարկու ուժին դի-
մադրել փորձեցին, Հայերու և Վրացիներու օգնութեամբ, սակայն չյաջողե-
ցան, և յաջորդական պարտութիւններով հեռացան Հայաստանի և Վրաստանի
սահմաններէն։

Մասնաւորապէս Ալփասլանի արշաւանքը դէպի Հայաստան և Վրաստան,
և 1071ի Մանազկերտի Բիւզանդական պարտութիւնը և Ռոմանոս Դ.ի գերի
 իյնալը, վճռական նշանակութիւն ունեցան Հայերու և Վրացիներու համար,
որոնք Բիւզանդական բանակներու վանուելէն ետք, առանձին մնացին բար-
բարոսներու հորդաներուն դիմացը և իրարու մօտեցան պարտադրաբար՝ մոռ-
նալով օտարներէն ներշնչուած այն ատելութիւնը, որ արուեստական կերպով
ստեղծուած էր։ Հայ և Վրացի ազգերը, ձեռք ձեռքի, հասարակաց սպառնա-
ցող վտանգը դիմագրաւել ջանացին, ճակատելով ասիական բարբարոսներու
արշաւանքին։

Այս քառադարեան պայքարին մէջ, զոր Վրացիք մղած են, իրենց հետ
ունեցած են Հայերը, որ Վրաստանի մէջ, ինչպէս տեսանք, շատ մեծ թիւ
կը կազմէին և երկիրին մէկ կարևոր տարրը կը ներկայացնէին՝ այլև իբրև
բնիկներ։ Հայերը կռուած են թշնամիին դէմ՝ իրենց այս հանքամանքովն իսկ։

Երբ Սելջուկները ասպարէզ եկան, Վրաստան արդէն կիսովին հայացած
երկիր մը եղած էր։ Նոյնիսկ երկիրին թագաւորները Հայեր էին, վասնզի
Վրաստանի կ'իշխէր Հայ Բագրատունիներու մէկ ճիւղը, և 1024էն մինչև Վը-
րաստանի Թագաւորութեան կործանումը (1801)՝ շարունակած է մնալ գահուն
վրայ։

Հայերը, նոյնպէս, Վրաստանի մէջ հողատէր ճորտեր ունէին և երկիրին
կառավարութեան մէջ մեծ դեր կը խաղային։

Ակնարկ մը Վրաստանի այդ չորս դարերու պատմութեան վրայ, պիտի
ցոյց տայ թէ, երկիրին ամէնէն ազգեցիկ և գործունեայ տարրը Հայն էր,
և Վրաստանի պատմութիւնը նոյնքան Հայոց պատմութիւն մըն էր, որքան Վրաց։

Արդարև, կը տեսնենք թէ Բագրատունիներու նոր հարստութիւնը մօ-
տաւորապէս դար մը ամբողջ կռուեցաւ հողատէր ճորտերու դէմ, որոնց մէջ
գլխաւոր տեղը կը գրաւէին Օրբէլեանք, որոնք Հայ էին իրենց ծագումով,
աւանդութիւններով և համակրանքով և գրեթէ Բագրատունիներու չափ ուժ
կը ներկայացնէին երկիրին մէջ։

Երբ Գէորգի Ա. փորձեց իրեն հնազանդեցնել Կախեթիան, անոր տէրե-
րը՝ Դոնաուրի իշխանները՝ դիմեցին Լոռի և հարաւային գաւառներու Հայ
Բագրատունիներուն։ Անոնց միացան նաև Օրբէլեան իշխանները։



Գէորգի Ա. իր կարգին, օգնութիւն խնդրեց Վասպուրականի Սենեքե-
րիմ Արծրունի Թագաւորէն, որուն Մարիամ աղջկան հետ ամուսնացած էր (Յ.
Ջաւրեան, Ուռուագիծ Վրաստանի պատմութեան ՑՈՒՍԱԲԵՐ 1940, թ. 196)։

Այդ ժամանակ, սակայն, երկու կողմերուն ալ սկսաւ սպառնալ Վասիլ
Բ. Բիւզանդիոնի կայսրը, որ նոր փայլ մը կուտար իր կայսրութեան։

Նոյն օրերուն (1018—1021) Սելջուկ Թուրքերը եւ երեւցան Հայաստանի
արեւելեան սահմաններուն վրայ, և Վասպուրականի Սենեքերիմ Թագաւորը՝
ահաբեկ՝ իր երկիրը տուաւ Վասիլ Բ. կայսեր, և ինքն փոխադրուեցաւ Սե-
բաստիա, ինչպէս ծանօթ է։ Ասկէ յետոյ Վասիլ Բ. սկսաւ սպառնալ Անիի և
Կարսի և ջարդեց Գէորգի Ա.ի բանակը 1021ին, բայց թոյլ տուաւ որ ան իշ-
խէ Վրաստանի վրայ։ Գէորգի Ա. Թագաւորին օրով Բիւզանդական բարքերը
կը ներմուծուէին երկիրին մէջ, վասնզի անիկա ամուսնացաւ 1017ին Բիւզան-
դական արքունիքէն իշխանուհիի մը հետ.

Գէորգի Ա. (+1027) յաջորդեց իր իննամեայ անչափահաս որդին՝ Բագ-
րատ Դ.ը, իր մօրը՝ Մարիամ Արծրունիի խնամակալութեան տակ։ Այս հրա-
նալի և շատ խելացի կինը Վրաստանը կառավարեց նախ իբրև խնամակալ և
ապա՝ իր որդւոյն չափահասութենէն յետոյ, իբրև խորհրդական իր թոյլ և կա-
մազուրկ զաւակին։

Բագրատ Դ.ի (1027—1072+) երկարամեայ իշխանութեան ժամանակ
տեղի ունեցան կարգ մը ընդհարումներ խոշոր ճորտերու հետ։ Ասկէ զատ Սել-
ջուկները երկու անգամ արշաւեցին Վրաստան։

1034ին Բագրատ Դ. միանալով Կախեթիայի Կիւրիկէ Թագաւորին և
Սիւնեաց Դաւիթ իշխանին, ջարդեց Առանի իշխող Փադլունեանց կամ Ղա-
տաւիկեանց բանակը։ Յետոյ Կախեթիայի նոյն Թագաւորին հետ դաշնակցած՝
փորձեց գրաւել Թիֆլիսը բայց չյաջողեցաւ։ Բագրատ Դ. 1052ին ստիպուեցաւ
անձամբ Բիւզանդիոն երթալ պաշտպանութիւն խնդրելու համար իր ներքին և
արտաքին թշնամիներուն դէմ։ Հոն զինքն երեք տարի վար դրին։ 1055ին
Վրաստան դառնալով պատժեց իր գլխաւոր հակառակորդը՝ մեծ ճորտ հողա-
տէր Լիպարիտ Օրբելեանը և իր Թագաւորութեան միացուց Կախեթիան և Հե-
րեթի գաւառը։ Նոյն տարին Ալփասլան աւարի կը մատնէր Տայքը և Կղարջքը
(Կլարջէթիա) և կը մտնէր Կուրի հովիտը և անկէ Քարթալինիա։

Մանազկերտի վճռական մեծ ճակատամարտին յաջորդող տարին, Բագ-
րատ Դ.ի կը յաջորդէր իր որդին Գէորգի Բ.ը (1072—1089), որ 1080ին
ստիպուեցաւ երթալ Մելիք Շահին (1072—1092), և ընդունիլ Սելջուկներու
հպատակութիւնը։ Մելիք Շահ պահեց Գէորգի Բ.ը որպէս Վրաստանի կառա-
վարիչ և հարկ (խարաջ) դրաւ երկիրին վրայ (Յ. Ջաւրեան, նոյն)։

Վրաստանի Բագրատունիները ամփոփուած Իմէրէթի մէջ՝ Քութայիսի
շուրջը, Հայ իշխանութիւններուն պէս, իրենց գոյութիւնը կը քաշքշէին,
վերածուած աննշան ոստերու, որոնք ալեկոծ ծովուն վրայ կը տատանին։ Թէ՛
Հայ և թէ՛ Վրացի իշխանութիւնները բոլորովին կորսուելու դատապարտուած պի-
տի ըլլային, եթէ Սելջուկեան մեծ պետութիւնը կարենար իր միութիւնը պա-
հել և բաժան բաժան չըլլար։

Բայց կացութիւնը փոխուեցաւ Մելիք Շահի մահէն (1092) ետք, վասնզի ինչպէս մեծ աշխարհակալ պետութիւններու համար պատահած էր, Սելջուկ մեծ պետութիւնն ալ քայքայուեցաւ բաժան բաժան ըլլալով։ Ճիշդ նոյն ժամանակամիջոցին էր որ Խաչակրութիւնները կ'սկսէին, ինչ որ կը հարկադրէր Սելջուկները, իրենց ուշադրութիւնը կեդրոնացնելու Եւրոպայէն Փոքր Ասիա արշաւող մարդկային զանգուածեղ բազմութիւններու դէմ կռուելու։

Գէորգի Բ. (1072—1089) օգտուեցաւ այս առիթէն և կրցաւ վերակազմել Վրաստանը և փորձեց մահմետականները հեռացնել Կովկասի ստորոտէն և կազմել իր գերիշխանութեան տակ Հայ-Վրական պետութեան մը, կամ աւատական դրութեամբ պզտիկ պետութիւններու համադաշնակցութիւն մը, ինչպէս էր երբեմն մեր Բագրատունեաց Թագաւորութիւնը, որուն դերը կը փոխանցուէր Վրաստանի Բագրատունի տան։

Իսկ Հայերը՝ նոյն պայմաններէն օգտուելով, կը հիմնէին Տաւրոսի շուրջը Հայկական Նոր Թագաւորութիւն մը, որ ապա ամբողջ Կիլիկիոյ տէր պիտի դառնար։

Գէորգի Բ. (1072—1089) յաջողեցաւ զօրացնել և ընդարձակել Վրաստանը՝ ամէնէն առաջ գրաւելով Հայաստանի այն մասերը, զորս Մանազկերտի պարտութենէն (1071) վերջ Բիւզանդացիք ստիպուեր էին լքել։

Մելիք Շահ (1072—1092), չհանդուրժելով Վրաստանի այս զարգացման՝ յարձակեցաւ Վրաստանի վրայ և գրաւեց Թիֆլիսը և Շամշուլդէնը և տուաւ Սրահանգ Ամիրային։

Վրացիք պայքարը շարունակեցին և Սրահանգը վանեցին (1073—74), սակայն Սելջուկները շարունակեցին պարբերաբար աւերել Վրաստանը, որ տագնապալի օրեր ունեցաւ։

Մելիք Շահի մահէն (1092) ետք, Սելջուկ պետութիւնը, ինչպէս տեսանք, բաժան բաժան եղաւ և վերածուեցաւ մեծ և փոքր իրարմէ անկախ իշխանութիւններու, որոնք անընդհատ իրարու դէմ կը մաքառէին։

Բացի Հայաստանի հիւսիս—արեւելեան և հարաւային մի քանի շրջաններէն, գրեթէ ամբողջ Հայկական լեռնաշխարհը անցեր էր նոր ամիրայութիւններու ձեռքը։ Այս իշխանութիւնները յաճախ կ'ընդհարուէին իրարու հետ, վասնզի ուժով միութիւն մը չէին կազմեր։ Այս հանգամանքը մեծապէս նպաստաւոր եղաւ Վրաց և Հայոց հիւսիսային իշխանութիւններուն համար, որոնք պատմական դառն փորձերէն խրատուած՝ կը գործէին հիմա աւելի համերաշխ և միաբան, քան Բիւզանդական և Արաբական բռնութիւններուն ժամանակ։

Այս համերաշխութիւնը պէտք է ամենամեծ չափով վերագրել այն մեծ յաղթութիւններուն, որ Վրաստան տարաւ ո՛չ միայն պատմական Հայաստանի մէջ, այլ նաև Ատրպատականի։ Այս յաջողութիւնները մեծապէս նպաստեցին նաև Հայաստանի վերականգման՝ Այրարատի և դրացի շրջաններու մէջ, աս կերպով ապահովելով նաև պաշտպանութիւնը Վրաստանի հարաւային սահմաններուն։

Այս յաջող շրջանին՝ քաղաքական վերածնութեան հետ զուգընթաց՝ Հա-



յաստանի և Վրաստանի մշակութային վերածնութիւնն ալ կը դարբնուէր,

Վրաստան, Գէորգի Բ.ի ժամանակ, ինչպէս տեսանք, հարկատու էր դարձեր Սելջուկեան Սուլթանութեան, բայց ԺԲ. դարու առաջին քառորդին, յաջողեցաւ ո՛չ միայն թօթափել Սելջուկ լուծը, այլև մեծամեծ յաղթանակներ տարաւ և հետզհետէ տիրեց գրեթէ ամբողջ կովկասեան լեռնաշղթային հարաւը տարածուող երկիրներուն։

Վրաստան, նման Հայաստանի, աւատական դրութեամբ կառավարուած երկիր մը եղած էր, ուստի, երբ Վրացիք յաջողեցան, պարագաներէն օգտուելով, գրաւել Հայաստանի զանազան մասերը, այդ հողերը կառավարեցին նոյն դրութեամբ, կազմելով նորա իշխանութիւններ, իրենց ստորադաս կամ ենթակայ ու հպատակ, սակայն բաւական ազատ և անկախ, և կառավարուած Հայերէ։ Այնպէս որ՝ Վրաստան դարձաւ հայ-վրական միացեալ պետութիւն մը, որուն կազմութիւնը իրագործուեցաւ Վրացի և Հայ վարիչներու իրատեսութեամբ (մանրամասնութիւնները տեսնել Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմաններ, էջ 281—296):

Ասոր համար լուրջ աշխատանք կատարած էին թէ՛ Վրացիք և թէ Հայերը, որոնք գործակցաբար կը ձգտէին քրիստոնեայ պետութիւն մը կազմել Կովկասի ստորոտը, ասիական այլակրօն բարբարոսները վանելով։

Վրացիք Հայաստանէն գրաւուած գաւառներուն վրայ Հայ իշխաններ կը նշանակէին իբրև կառավարիչ։

Այսպէս, կը կազմուի Հայ և Վրացի իշխանութիւններու մեծ համադաշնակցութիւն մը, որուն գլուխն է Վրաստանի Հայ ծագումով Թագաւորը, զոր շրջապատող աւագ պաշտօնատարները և զինուորական կարող դէմքերը գրեթէ բոլորն ալ Հայ էին։

Այս դրութիւնը երկու ազգերուն համար ալ նպաստաւոր և արդիւնաւոր եղաւ։

Գէորգի Բ.ի յաջորդեց Դաւիթ Բ.ը (1089—1125+), որ ստացաւ Աղմաշենեբելի (=Շինող կամ Վերանորոգող) մականունը։ Ան կրցաւ հիանալի կերպով օգտագործել Սելջուկ իշխաններու միջև գոյութիւն ունեցող երկպառակութիւնները, և առաջին անգամ քաղաքականապէս միութիւն ստեղծեց Վրաստանի մէջ, վասնզի մինչև այդ թուականը՝ որքան ալ Վրաստան Բիւզանդիոնի և Պարսկաստանի դէմ մղած իր պայքարներէն յաղթական դուրս եկած ըլլար, չէր կրցած քաղաքական միութիւն մը կազմել, քանի որ բաժնուած էր անկախ զանազան իշխանապետութեանց։

Այդ միութիւնը չէր կրցած իրագործուիլ հակառակ անոր որ Վրաստանը միացնելու համար Բագրատունի թագաւորները — որոնց ցեղը ծագում կ'առնէր Տայք-Կղարջքէն (Tao— Klardjéthi) — Արաբական տիրապետութեան դէմ է. դարէն մինչև ԺԲ. դար տևող պայքար մը մղած էին։

Դաւիթ Շինող ո՛չ միայն կասեցուց Թուրքերու յաղթական առաջխաղացումը, այլ նաև կրցաւ ետ մղել զանոնք և տէր դառնալ գրեթէ ամբողջ Հարաւային Կովկասի։

Իր թագաւորութեան առաջին տարիներուն Դաւիթ Շինող հարկ կը վճա-

րէր Սելջուկ Սուլթանութեան, ինչպէս իր հայրը՝ Գէորգի Բ.ը։ Սակայն ԺԱ. դարուն վերջերը երբ Մելիք Շահի որդիներուն միջև սկսան ներքին պառակտումները, Դաւիթ Շինող Վրաստանը անկախ հռչակեց և դադրեցուց հարկին վճարումը։ Դաւիթ Վրաստանի միութեան նուիրագործումը լրականացուց 1221—22ին՝ Թիֆլիսի վերագրաւումով։

Դաւիթ Անիի տեղակալ նշանակեց Աբուլէթ իշխանը և անոր որդին Իվանէն։ Վրաստան, շնորհիւ Դաւիթի ընդգրկած քաղաքականութեան, յաջողեցաւ Հայ զօրքերու և զօրապետներու աջակցութեամբ գրաւել Հայաստանի մի քանի նահանգները, որոնք մօտաւորապէս դար մը (1124—1227) մնացին Վրաստանի գերիշխանութեան ենթարկուած։ Շնորհիւ այս քաղաքականութեան՝ ընդարձակուեցան Վրաստանի սահմանները և սարսափ տիրեց մահմետականներուն։

Օրբէլեանք մեծ նպաստ բերին Վրաստանի ընդարձակումին, քանի մը անգամ մինչև Շիրակ (Անի), Դուին և Գանձակ առաջանալով և ընկրկելով,ապա նորէն առաջանալով։

Դաւիթ՝ Վրաստանի գերիշխանութիւնը տարածեց նաև Շիրվանի վրայ (1124) և այսպէս՝ Վրաստանի սահմանները տարածեց Սև Ծովէն մինչև Կասպից ծով և Կովկասեան լեռներէն մինչև Շիրակ և մինչև Կարսի ու Կարնոյ ամիրայութիւններու շրջանները։

Պատերազմական իր փայլուն յաջողութիւններուն համընթաց՝ Դաւիթ աշխատեցաւ բարեկարգել երկիրը և մեծ չափով աջակցեցաւ աւերուած շրջաններու վերաշինութեան։

Վերանորոգուեցան աւերուած եկեղեցիները, վանքերը, պալատները և հանրային շէնքերը, կառուցուեցան հանրօգուտ նոր հիմնարկութիւններ, վերաշինուեցան նաեւ ճամբաները և ջրանցքները։ Դաւիթ Շինող ամէն կերպով նպաստեց նաև գիտութեան և գրականութեան զարգացման։

Դէպի Հայութիւն, Դաւիթ Շինող ունեցաւ բարեացակամ ու հոգատար վերաբերմունք։ Հայոց և Վրաց եկեղեցիներու կրօնադաւանաբանական տարբերութիւնը որևէ ազդեցութիւն չունեցաւ անոր այդ բարենաճ քաղաքականութեան վրայ։ Անիկա ո՛չ միայն կը հովանաւորէր Հայերը, այլ կ'աջակցէր աւերուած Հայ եկեղեցիներու ու վանքերու վերաշինութեան և նուիրատուութիւններ կ'ընէր ի նպաստ այդ հիմնարկութիւններուն (Կ. Կոստանեանց, Վիմական Տարեգիրք, 28)։

Անոր բարեացակամ վերաբերմունքը խոր տպաւորութիւն ձգած էր Հայերու վրայ և Վարդան մասնաւոր կերպով կը շեշտէր որ «ոչ էր նա երկմիտ եկեղեցւոյ եւ յաղօթից մերոց. վասն որոյ բազում անգամ դնէր զգլուխ իւր ի ներքոյ ձեռաց մերոցն՝ խնդրելով օրհնութիւն»: (հմմտ. Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես., Գ., 95—6):

Վրաստանի զօրեղացման պատճառով և շնորհիւ Դաւիթ Շինողի, Հայերու հանդէպ վարած այս նպաստաւոր քաղաքականութեան՝ մեծ չափեր ստացաւ Հայերու գաղթը դէպի Հայաստանի Հիւսիսային կողմերը և դէպի Վրաստան։

Իսկ ԺԲ. դարու սկիզբէն չարունակ կռուեցաւ դրացի իշխանութիւններու



ու ամիրայութիւններու դէմ և աշխատեցաւ ընդարձակել իր պետութեան սահմանները թէ՛ դէպի Արևելք, թէ Հիւսիսային և հարաւ-արևմտեան ուղղութեամբ, և մի շարք յաղթութիւններով (1) ընդարձակեց Վրաստանը և կազմեց զօրաւոր պետութիւն մը։ Իր յաղթութիւնները հասարակաց թշնամիին դէմ՝ Վրաստանի սահմանակից հայաբնակ շրջաններուն մէջ առաջ բերին ոգևորութիւն և յոյս ներշնչեցին Հայերուն, որ Վրաստանի օգնութեամբ իրենք ևս կրնան ոտքի կանգնիլ և ազատիլ օտար տիրապետութենէն։

Այս պատճառով, 1123 Օգոստոս 20ին, Վրաց թագաւորին դիմեցին Անիի աւագներէն պատգամաւորներ և յայտնեցին որ քաղաքացիները կը փափաքին քաղաքը յանձնել իրեն (Մելիքսէթ բէկ, Վրաց աղբիւրները Ա.218)։ Դաւիթ թագաւոր իսկոյն գնաց Անի և քաղաքը գրաւեց առանց պատերազմի։

«Տարակուսեալ տառապեալ բնակիչք քաղաքիս Անւոյ եւ Շիրակ գաւառի՝ խորհեցան ելս գտանել մրրկին ձեռն տալով յարքայն Վրաց ի Դաւիթ, նեղեցին ամիրային Աբլսուարայ՝ որդւոյ Մանուչէի, որ տիրէր քաղաքին յետ հօրն մահու, առնելով, զքաղաքն ի ներքս՝ բանալով զդրունս քաղաքին, որ ընդ մտանելն առ ժամայն, եղեւ վնաս արեան եւ ոչ միոյ ընչոյ»: (Սամուէլ Անեցի էջ 125—126, հմմտ. Վարդան էջ 119, Մատ. Ուռհայեցի, 359, Մխիթար Այրիվ. 62, Ջուանշէր էջ 121 եայլ.) Դաւիթ Շինող առաւելապէս տնտեսական նկատումներով՝ երբ 1124ին Անին և Հայաստանի զանազան մասերը գրաւեց, Հայերը աւերուած գաւառներէն փոխադրեց Վրաստանի անմարդաբնակ վայրերը կամ նոր հիմնուած քաղաքները (փրոֆ. Խախանոֆ, նոյն)։ Այս գաղթականութեան համար Վրաստանի թագաւորը յատկացուց յատուկ քաղաքավայրեր ու աւաններ։

Դաւիթ Հայոց տուաւ բնակութեան տեղեր, Գոռայ կամ Գոռանայ քաղաքը շինեց և Հայոց յատուկ եկեղեցիներ, վանքեր կառոյց։

Վրական տարեգիրքերը և նոյնիսկ Հայ պատմիչները կը հաստատեն թէ Դաւիթ թագաւոր կը սիրէր Հայերը և այնչափ թոյլատու էր անոնց կրօնքին մասին՝ որ Հայոց եկեղեցին կը մտնէր և Հայ քահանաներու օրհնութիւնը կ'ընդունէր (փրոֆ. Խախանոֆ. նոյն)։

Ան այսպէս քաջալերած է Հայոց գաղթը դէպի Վրաստան։ Դաւիթի անխտրականութեամբ և լայնախոհութեամբ Վրաց եկեղեցիներուն հետ կառուցուած կամ վերաշինուած մեծ թիւով Հայ եկեղեցիներու գոյութիւնը կը հաստատէ թէ հոծ Հայութիւն մը կ'ապրէր Վրաստանի ամէն կողմը։ Ինչպէս կ'երևի՝ Դաւիթ կը գնահատէր Հայերուն ձիրքերը և մեծ կարևորութիւն կուտար անոնց և իր Հայ և Վրացի հպատակներուն միջև բնաւ տարբերութիւն չէր դնէր։

Իր կեանքի վերջին տարիներուն՝ ան ստեղծեց տեսակ մը Կովկասեան քրիստոնեայ միապետութիւն մը, Թիֆլիս մայրաքաղաքով։ Բացի Վրացիներէն և Հայերէն, անոր կը հպատակէին նաև Մահմետականներ։ Ան յաջողե-

(1) Նոյն կռիւներուն մանրամասնութիւնները տես Յ. Մանանդեան, ՔՆՆ. Տես., Գ. էջ 89—93:

ցաւ իր իշխանութեան տակ առնել մեծագոյն մասը Հայկական այն հողերուն, որոնք Անիի թագաւորութեան մաս կը կազմէին։

Այս բոլորը ձեռք բերաւ ան՝ ոչ այնքան իր յաջող պատերազմներովը, որքան իր վարած հեռատես և իմաստուն քաղաքականութեամբը։ Անիկա չէր միջամտեր ճորտ իշխաններու ներքին գործերուն, չէր սահմանափակեր անոնց կրօնական ազատութիւնը։ Կը պաշտպանէր իր կողմը անցած ճորտերը պահանջելով անոնցմէ միայն որ անոնք իրենց կարգին մասնակցէին երկիրին պաշտպանութեան։ Այս ձևով ան կրցաւ միացնել այս ժողովուրդները, որոնք կապուած էին իրեն հետ աշխարհագրական դիրքով (Ցոյն)։

Դաւիթ Շինող մեռաւ 1125 Յունուար 24ին և իրեն յաջորդեց իր որդին՝ Դիմիտրիյ կամ Դեմետրէ Ա. (1125—1155), ծնած Հայ մօրմէ։ Դեմետրէ կրցաւ աւելի կամ նուազ չափով պահպանել հօրը նուաճումները և 1154ին վանք մը քաշուեցաւ գահը ձգելով իր որդւոյն՝ Դաւիթ Գ.ի, որ թագաւորեց միայն վեց ամիս։

Դաւիթ Գ.ի մահէն ետք գահը պէտք է ժառանգէր իր անչափահաս տղան Դեմնան, բայց անոր անչափահասութիւնը պատրուակելով իշխանութիւնը ձեռք առաւ իր հօրեղբայրը և Դաւիթ Գ.ի եղբայրը՝ Գէորգի Գ. (1158—1184), որ չուզելով գահը թողուլ իր եղբօրորդիին՝ սպաննեց Դեմնան և 1174ին սկսաւ սուրէ անցնել անոր կողմնակից Օրբելեան իշխանական տան անդամները։

Պայքարելով հին ճորտերու դէմ, Գէորգի բարձր ազնուականութեան կարգին դասեց նոր և աննշան ճորտեր, որոնք այսպէս ամբողջ անոր պարտական էին իրենց գրաւած դիրքերը (Յ. Ջաւրեան, Ցոյն):

Գէորգի Գ. թագաւոր (1158—1184), 1161ին անգամ մը Անին վերագրաւելէ ետք, առաջացաւ մինչեւ Դուին, սակայն ստիպուեցաւ տեղի տալ Սելջուկներու ճնշման առջեւ։ Բայց 1174ին, վերջապէս երրորդ և վերջին անգամ կը տիրէր Անիին, և հոն կառավարիչ կը դնէր Իւանէ Օրբէլեանը, անոր օգնական տալով Սարգիս Զաքարեանը։

1178ին երբ վերապրող Օրբէլեան Իւանէ սպասալար և Լիպարիտ եղբայրը, իրենց որդիներով և ազգականներով կ'ապստամբին և Գիորգի կ'արչաւէ անոնց դէմ. Օրբէլեանի գործակիցներէն ոմանք կը լքեն զայն և կ'անցնին Գիորգիի կողմը։

Ասոնցմէ մէկն էր Սարգիս Զաքարեան, որ իր զաւակներուն և եղբայրներուն հետ կը բաժնուէր Օրբէլեաններէն և կը միանար Գէորգի թագաւորին, որ սիրով կ'ընդունի իր կողմը անցնողները «զամենայն հայրենիս եւ փառքամութիւնս Օրբէլեանց խոստանայի տալ նոցա»:

Ապստամբութիւնը վերջացաւ Օրբէլեաններու կատարեալ պարտութեամբը։ Գէորգի բնաջինջ ըրաւ Օրբէլեան տունը (1183—84)։

Գէորգի այսպէս, Վրաստանի գահուն վրայ իր գոյութիւնը ապահովելէ ետք, ուզեց նաև զայն իր սերունդին համար ապահովել։ Իր մահէն վերջ, Վրաց գահը իր աղջկան՝ Թամարի սեփականելու և անոր գահաժառանգութեան շուրջ, հաւանական վէճերէ ազատելու համար, Գէորգի Գ., իր կենդանութեան, 1178ին, իրեն գահակից առաւ իր աղջիկը՝ Թամարը, զոր իր



մահէն վերջ, իր ստեղծած ազնուական հողատէրերու և եկեղեցականներու ժողովը 1184ին Վրաստանի թագուհի հռչակեց։ Բայց այս գահակալութիւնը մեծ դժգոհութիւններ առաջ բերաւ հին ճորտերու դասին մէջ, որոնք թէեւ անշքացած՝ դեռ կը պահէին իրենց ուժն ու ազդեցութիւնը։

Թամար ստիպուեցաւ շնորհներ բաշխել իր հօր ձեռքով սպաննուած Դեմնայի նախկին կուսակիցներուն եւ յենուլ իր գործունէութեան ընթացքին իր հօր կողմնակիցներուն վրայ, որոնցմէ մասնաւորապէս առաջ քաշեց նոր միայն բարձր աստիճանի հասած Մխարգրձելի (1) Հայ իշխանական տոհմը։ Թամար թագուհին 1186ին անոնցմէ Սարգիս Զաքարեանը նշանակեց Ամիրսպասալար Հայոց և Վրաց և անոր որդիներուն բարձր պաշտօններ տուաւ Վրաց արքայական պալատին մէջ, իբրև հողատիրութիւն անոր շնորհելով իր խոստումին համաձայն Օրբէլեանց Լոռի գաւառը։

Այս կերպով Մխարգրձելինները կամ Զաքարեանք դարձան կարեւոր դէմքերը Վրաստանի թագաւորութեան և սերունդներ ամբողջ շատ նշանակելի ծառայութիւններ մատուցին այդ երկիրին և Հայութեան, երկու ազգերու շահերու միութիւնը քաջ ըմբռնելով։

Մասնաւորապէս Թամարի իշխանութեան ժամանակամիջոցին (1184-1212 Յունուար 12+)։ Պրոսսէ (Histoire de la Géorgie Additons SPB 1851, 266)՝ կը գրէ՝ թէ «Թամարի թագաւորութեան պատմութիւնը իրականութեան մեջ, պատմութիւնն է Մխարգրձելիներու յաջողութիւններուն»։

Առանց մանրամասնութիւններուն մէջ մտնելու Վրական պատմութեան, ճշմարիտ է շատ մը պատմագիրներու այն տեսութիւնը թէ Թամարի փառաւոր իշխանութեան երկու սիւներն էին Սարգիս Զաքարեանի երկու որդիները, Զաքարէ Սպասալար և Իւանէ Աթաբէկ, որոնք երկիրը փրկեցին Թամարի առաջին ամուսին՝ իշխան Իւրիյի (որդի ռուս մեծ իշխան Անդրէ Բոգոլիւբսկի) փորձած քանի քանի յարձակումներէն և 1193ին դժգոհ ճորտ հողատէրերու ապստամբութենէն։

Այս ճորտերու ուշադրութիւնը պետական ներքին գործերէն հեռացնելու նպատակով՝ Թամար թագուհին Զաքարէ Սպասալարի խորհուրդով ձեռնարկեց կարգ մը յարձակողական պատերազմներու Կովկասի Մահմետական նահանգներուն դէմ։ Այդ արշաւանքները զօրս կը վարէր Զաքարէ Սպասալար, պսակուեցան փայլուն յաջողութեամբ և Վրաստան տիրացաւ Շամախի, Գանձակ, Դուին և ապա Կարս քաղաքներուն։ Թամար, որպէսզի կարենայ այս նոր գրաւումները իր ձեռքը պահել, անոնց ինքնավարութիւն շնորհեց և իրենց իշխանութեան մէջ պահեց Մահմետական հողատէր ճորտ ամիրաները և Հայաստանի իշխանները։

Այսպէս, Թամարի թագաւորութեան ժամանակ կազմակերպուեցաւ ասա

(1) Մխարգրձելի (տառական թարգմանութիւնը Երկայնբազուկներ), բայց Հայերը բաժ են Երկայնաբազուկ, հիմնուելով աւանդութեան մը վրայ, որ յիշեալ տոհմը սերած կը նկատէր Արտաշէս Երկարաբազուկէն։

տապետական կարգերով, Կովկասեան մեծ պետութիւն մը, որ կը գտնուէր Վրաստանի Թագուհիին ղեկավարութեան և Հայ զինուորական ազնուապետութեան իշխանութեան տակ։

Այս վերջիններու շարքին մէջ կը գտնուէին ոչ միայն Վրացիներ, այլ նաև բաւական խոշոր ու կարևոր տարրը Հայ ազնուականութեան, ինչպէս նաև որոշ թիւով Մահմետական ճորտ հողատէրեր։

1241ին մեռաւ Զաքարէ Սպասալար և Վրաստանի քաղաքական ղեկավարութիւնը անցաւ Իւանէ Աթաբէկին ու այս վերջինին որդւոյն՝ Վահրամին։

Թամարի առեն Վրաստան հասաւ իր թէ քաղաքական և թէ մշակութային ծաղկման ու զարգացման գագաթնակէտին և այս փառքին մէջ նուազ կարևոր դեր չկատարեցին Թամարի իշխանութեան երկու սիւները՝ Իւանէ և Զաքարէ։

Թամար, 1191էն քիչ յետոյ, Զաքարէն (+ 1214) Ամիր Սպասալար (=Սպարապետ) և Իւանէն Աթաբէկ (պալատական զօրքերու հրամանատար) նշանակեց։ Երկու եղբայրները, իրենց Հայ զօրքերով, միանալով Վրական բանակին մեծ ծառայութիւններ մատուցին Վրաստանին, անոր թշնամիներուն դէմ քաջաբար կռուելով։

Վրաստանի սահմանները բաւական հեռուները կը տարածուէին և Հայաստանի հիւսիս-արևելեան գաւառները, ինչպէս նաև կեդրոնական նահանգներուն մեծագոյն մասը, որոնք ազատագրուած էին Սելջուկ և Արաբ էմիրութիւններէն, Թամար Թագուհին յանձնեց Զաքարեաններու։

Այսպէս, կազմակերպուեցաւ Հայաստանի մէջ Զաքարեանց իշխանութիւնը, որուն սկիզբը կրնանք համարել 1184—1185 թուականը, երբ Օրբէլեանց ստացուածքները, Լոռի և շրջակայքը, տրուեցան իրենց։

Զաքարեանք, անգամ մը Հայաստանի մի քանի գաւառներուն տէր դառնալէ ետք, իրենց իշխանութիւնը աւելի ընդարձակեցին և աշխատեցան տիրել ամբողջ Հայաստանի՝ աշխարհակալութիւններով ( տես. Կիրակոս 79 և Վարդան 138)։

Անոնք գրաւեցին Սևանի լիճին շրջակաները, Լոռիի շրջակայքը 1191-92ին, Այրարատեան նահանգէն Շիրակը, և 1199ին Անին, 1201ին Բջնին Նիգի մէջ, 1203ին Դուին Ոստանը, 1196ին Անբերդը Արագածոտն գաւառի Կարբի վիճակին մէջ, 1206ին Կարսը (Վանանդի կեդրոնը) այսինքն այս ընդարձակ նահանգին արևմտեան և արևելեան հիւսիսային մասերը, Սիւնեաց նահանգը գրեթէ ամբողջ, ինչպէս նաև Ուտի նահանգէն մասեր գրաւած էին և մինչև Մանանդ և Արտաւիլ յաղթական արշաւ կատարած։

1202ին հարկատու ըրին Կարինի Սուլթանը և դէպի Վան և Խլաթ արշաւանք կատարեցին։

Թամար՝ Մահմետականներէն գրաւած այս հողերուն մեծ մասը Զաքարեաններուն շնորհած էր՝ ի վարձ բարւոք ծառայութեան։

Այսպէս, Հայաստանի մեծագոյն մասը, Վրաց անուանական գերիշխանութեան տակ, ինկաւ երկու Հայ եղբայրներուն ձեռքը։

Երկու եղբայրներէն Իւանէ «խաբեալ ի թագուհւոյն Թամարայ տկարացաւ ի հաւատոյն», այսինքն Վրաց պէս Քաղկեդոնական եղաւ, իսկ Զաքարէ «մնաց ի սեփական հաւատն» (Վարդան էջ 138)։



Երկու եղբայրները իրենց յաջող գործունէութեամբ զօրաւոր թումբ մը կանգնեցին, — գոնէ ժամանակաւոր կերպով — Ասիոյ խորերէն Արևմուտք փոխադրուող վայրենի ժողովուրդներուն դէմ։

Անոնք փորձեցին Հայաստանի հողէն 1208ին վանել Եգիպտոսի Էյուպեանները, որոնք Հայոց երկիրին սիրտին՝ Խլաթի և Մանազկերտի կը տիրէին, սակայն չյաջողեցան և ստիպուեցան հաշտութեան դաշինք կնքել։

Զաքարէ մեռաւ 1214ին և եղբայրը Իւանէ շարունակեց անոր գործը, ստանձնելով աթաբէկութեան աստիճանը, իսկ ամիր սպասալարութիւնը յանձնուեցաւ Զաքարի որդւոյն՝ Շահնշահի, իսկ Իւանէի նախկին պաշտօնը՝ պալատական զօրքերու հրամանատարութիւնը տրուեցաւ միւս Զաքարէի (Բլու կոչուած որդի Վահրամին), որ Գագայ իշխանն էր։

Հայ-Վրացի այս գործակցութիւնը և համերաշխ գործունէութիւնը, որ երկու ազգերը այնքան սերտօրէն իրարու կը կապէր, պատճառ եղաւ որ Հայոց թիւը շատ բազմանայ Վրաստանի մէջ։

Ասոր անժխտելի ապացոյց կրնայ համարուիլ 1179ին յիշատակութիւնը Թիֆլիսի Հայոց Բասիլիկոս եպս.ին — որ Հռոմկլայի ժողովին մասնակցող 33 եպիսկոպոսներէն մէկն էր — և բնաւ հաւանական չէ կարծել թէ ինքը եղած ըլլայ առաջին Հայոց եպիսկոպոսը Վրաստանի, ուր Հայերը այնքան հին առեններէն ի վեր հաստատուած էին, մեծ բազմութեամբ։

Ալիշան (Հայապատում էջ 382—3) կը յիշէ նաև Անանիան (1195) և աւելի յետոյ Յովհաննէսը՝ եպիսկոպոսներ Թիֆլիսի. կը յիշուի նաև Յովհաննէս եպս.ը՝ 1284ին (Զամ. Գ. 272), որուն անընդմիջաբար ուրիշներ յաջորդած են։

Ոչ միայն Հայերու կրօնական ազատութիւնը որևէ սեղմումի չէր ենթարկուած, այլ նոյնիսկ քաղաքական ամէն տեսակ իրաւունքներ կը վայելէին անոնք։ Մասնաւոր հոգածութիւն ցոյց կու տար կառավարութիւնը հանդէպ Հայերու, որոնք գիւղերու մէջ Վրացիներու հետ խառնուած էին, իսկ քաղաքներու մէջ տեսակ մը ինքնավարութիւն և առանձնաշնորհներ կը վայելէին՝ բաղդատմամբ ուրիշ օտարականներու։ Այսպէս, օրինակի համար՝ դատարաններու մէջ՝ հայ մարդիկ կը դատուէին Մխիթար Գօշի (ԺԲ. դար) դատաստանագիրքին Հայկական օրէնքներով, որոնք Վրացերէնի թարգմանուած էին և աւելի ետքը՝ Վախթանկ Զ. թագաւորի օրինագիրքին մէջ անցած (փրոֆ. Ա. Խախանով, նոյն)։ Զինուորական և վարչական կարևորագոյն պաշտօններ — ինչպէս Թամար Թագուհիին առեն — Հայերու կը վստահուէին։

Սոմխէթիի մէջ օրինակի համար փոխարքայի պաշտօնը միմիայն Հայկական ընտանիքի մը անդամներուն տրուած էր.

Փրոֆ. Խախանով կը վկայէ թէ «Զաքարիա Մխարգձելի հայազգի՝ արքունեաց ամենայն նախամեծար խորհրդատուն եղաւ, իրեն յանձնուած էր «երկնային» կոչուած մեծ թագուհւոյն առեն՝ Փոքր Ասիոյ եւ Պարսկաստանի դէմ անընդհատ մղուած յաղթական պատերազմներու հրամանատարութիւնը»:

Իր անձնական գործերուն համար օտար երկիրներ յաճախ ճամբորդող Թիֆլիսցի հարուստ Հայ վաճառականի մը թախանձանքներուն վրայ էր որ նախարարներուն խորհուրդը որոշեց խնդրել դեռատի Թամար թագուհիէն — որ իր հօրը՝ Գէորգի Գ.ի մահէն ետքը գահ բարձրացած էր — ամուսնանալ ռուս իշխանի մը հետ՝ որ նոյն միջոցին Poloves (?) Խանին քով կը գտնուէր։ Ռուս պատմագիր Քառամզի կը կարծէ որ այս իշխանն էր Գէորգի Անդրէ Բոգոլիւբսկիի տղան։ Ամուսնութիւնը տեղի ունեցաւ, բայց յետոյ թիւրիմացութիւններ ծագեցան և Վրաստանի մէջ քիչ մը ժամանակ մնալէ ետքը Ռուս իշխանը Ցունաստան աքսորուեցաւ (փրոֆ. Ա. Խախանով)։

Թամար թագուհիին յաջորդեց իր որդին՝ Գէորգի Դ. Լաշա (1214–1223) որ զօրաւոր կամքի տէր և շատ քաջ մարդ մըն էր։ Իր իշխանութեան առաջին տարիներուն, Իւանէ Զաքարեան Վրաստանի առաջին մարդն էր և իրապէս թագաւորին անուանական իշխանութեան տակ՝ ինք կը կառավարէր Վրաստանը։ Գէորգի Դ թագաւոր շատ հաշտ յարաբերութիւններ չունէր իր մօր խորհրդականներուն ու բարձր հոգեւորականութեան հետ։ Բայց այս անհամաձայնութիւնները բացորոշ ընդհարումներու չվերածուեցան բոլոր ճորտ իշխաններու հետ, որովհետև մեծ տագնապ մը առաջ եկաւ, որ մոռցնել տուաւ ամէն ինչ։

1220 աշնան սկիզբը Գէորգիի եկաւ Իւանէ Աթաբէկի և Վահրամի կողմէն սուրհանդակ մը և յայտնեց, որ «եկած է անծանօթ ժողովուրդ մը որ կը խօսի անհասկնալի լեզուով և կ'ասպատակէ Հայաստանը»։

Այս առաջին գոյժն էր Մոնկոլներու արշաւանքին, որ արդէն ոտնակոխ ըրած էր եւ աւերի տուած Խուարէզմը (= Խիվա), Հիւսիսային Պարսկաստանը ու Ատրպատականը եւ անցնելով նաեւ Հայաստանի մէջէն կանգնած էր ձմեռելու համար Մուղանի դաշտը։

Գէորգի Դ. 90.000 զօրքով գնաց անոնց դէմ, բայց չարաչար պարտըւեցաւ։ Երկու տարի յետոյ, Մոնկոլները աւերեցին Սոմխէթին (= Հայք) նահանգը, Թիֆլիսի հարաւը եւ Շիրուանը։

Գէորգի Լաշայի յաջորդեց իր քոյրը՝ Ռուսուտան թագուհին (1223–1245) որ Մահմետական պատմիչներէն կը կոչուէր Գյզ Մելիք (= աղջիկ թագաւոր)։ Իր իշխանութեան շրջանին Մոնկոլները աստիճանաբար տիրեցին Կովկասի գաւառներուն։ 1225ին անոնք գրաւեցին Խլաթը, Դուրէժը եւ Կովկասի Արեւելեան գաւառները, մինչեւ Տերբենդ։ Անոնք տիրեցին նաեւ ամբողջ Արեւելեան Վրաստանին։

Ռուսուտան թագուհին փախաւ ու ապաստանեցաւ Քութայիս, որովհետեւ Մոնկոլներ խուժեցին նաեւ Արեւմտեան Վրաստան։

Արեւելեան Վրաստանի բոլոր ճորտական տուները անմիջապէս հպատակութիւն յայտնեցին Մոնկոլներուն։ Վրաստանի հողատէր իշխաններէն առաջինններն եղան Հայերը, որ համաձայնութեան եկան Մոնկոլներուն հետ։ Անոնց առաջինը եղաւ Աւագ Զաքարեան (տես, վերը 147), որուն հետեւեցան իր մօտիկ ազգականները եւ ապա իր հեռաւոր ազգականը՝ փիլիսոփայ ու բանաստեղծ Սարգիս Թմոգվելին եւ անկէ յետոյ միայն Վրացի իշխանները,



Աւագ համոզեց նաեւ Ռուսուտան թագուհին որ հպատակի Մոնկոլներուն, որուն փոխարէն Մոնկոլները խոստացան Արեւելեան Վրաստանի գահը, Թիֆլիս մայրաքաղաքով, յանձնել թագուհիին որդւոյն Դաւիթ Դ. Նարինին (մոնկոլերէն կը նշանակէ իմաստուն), որ գնաց Բաթու Խանին մօտ, անոր ձեռքէն իր իշխանութիւնը ստանալու համար։ Անոր հետեւեցաւ եւ նոյն նպատակով գնաց նաեւ Գէորգի Լաշայի որդին՝ Դաւիթ Ե.։ Երկու իշխաններն ալ Քիուք Խանէն (1246—1248) իրաւունք ստացան բարձրանալու Վրաստանի գահը եւ թագաւորեցին միասին։

Զաքարիայի եւ Իւանէի ընդարձակած պետութիւնը կրցաւ խաղաղ բարգաւաճում մը ունենալ մինչեւ Մոնկոլներու-Թաթարներու արշաւանքը։ Ջինկիզ Խան եւ Լէնկթիմուր ԺԳ. եւ ԺԴ. դարերուն աւերեցին Վրաստանը եւ զայն սահմանափակեցին նեղ շրջագիծի մը մէջ, ուր եթէ կրցաւ պահել իր անկախութիւնը՝ ատիկա եղաւ շնորհիւ իր լեռնային նպաստաւոր դիրքին։

Ասով հանդերձ, 1220—21ին սկսած Մոնկոլական արշաւանքները անհետեւանք չմնացին, վասնզի Վրաստան անոնցմէ բոլորովին զերծ չմնաց։

Այս բարբարոսները քանդեցին ամէն ինչ որ Վրացիք ստեղծած էին՝ Քրիստոնէութեան Վրաստան մուտքէն սկսեալ մինչեւ իրենց պատմութեան ոսկեդարուն վախճանը։ Կործանեցաւ Վրաստանի քաղաքական անկախութիւնը, կորսուեցաւ անոր սեփական մշակոյթը, իր գրականութիւնը եւ անչքացան ու լքուեցան արուեստները։

Անխնայ ջարդուեցան ոչ միայն ընտրանին, այլ նաեւ բնակչութեան ամէն խաւերէն մարդիկ եւ աւերուեցաւ երկիրը տնտեսապէս եւ բարոյապէս։

Բարբարոսներու տիրապետութիւնը տեւեց մէկ դարէն աւելի եւ Մոնկոլներու տիրապետութենէն վերջ հին Վրաստանի ստուերն էր որ միայն ապրեցաւ։

Երկիրը քաղաքականապէս բաժնուեցաւ մանր ու տկար իշխանութեանց և իջաւ ընդհանուր քաղաքակրթութեան չափանիշը։ Իսկ Վրաստանի գերիշխանութեան տակ գտնուող Հայ իշխանապետութիւնները, որոնք ուղղակի յարաբերել սկսած էին Մոնկոլներուն հետ, իրենց կապերը գրեթէ խզեցին Վրաստանի հետ և եղան անկախ։ (հմմտ. Պատմ. Հայաստանի Սահմաններ, 340)։

Ասիական բարբարոսներու արշաւանքներու շրջանին, անուրանալի իրողութիւն մըն է որ Հայ և Վրացի ազգերը գրեթէ միեւնոյն պատմութիւնն ունեցած են և մէկուն կեանքը հաւասարապէս միւսին ալ եղած է։

ԺԴ. դարուն առաջին քառորդէն սկսեալ, Իլխանեան Մոնկոլ իշխանութիւնը երբ սկսաւ տկարանալ Պարսկաստանի մէջ, Միջերկրականի եւ Կովկասեան լեռներու միջեւ տարածուող երկիրներուն մէջ նոր իշխանութիւններ երեւան եկան։

Օսմանցի Թուրքերը Փոքր Ասիոյ արեւմտեան կողմը հիմնեցին նոր պետութիւն մը՝ Բիւզանդական Կայսրութեան փլատակներուն վրայ. Հայերը զօրացան Կիլիկիոյ մէջ, իսկ Յոյները և Վրացիները Սեւ ծովի հարաւային և արեւելեան ափերուն վրայ։

Մոնկոլներու տկարանալը շատ լաւ օգտագործեց (1318—1346) Գէորգի

Ե. Թագաւորը՝ (1330—1346) մականուանեալն Փայլուն (Բռծինվալէ, կամ աւելի ճիշդ Բածգինվալէ), որ կրցաւ միացնել ամբողջ Վրաստանը, Սամխէթին, Սամծխէն, ինչպէս նաեւ Իմերեթիան, Գուրիան և Սվանեթիան։ Ան զօրացուց Թագաւորական իշխանութեան նշանակութիւնը, ջարդելով աննազանդ բոլոր ճորտերը իր գումարած խորհրդակցութեան ժամանակ։

Գէորգի Ե.ի յաջորդներուն ժամանակ եւս Վրաստան պահեց իր գրաւած ամուր դիրքը՝ մինչեւ ԺԴ. դարուն վերջին քառորդը, երբ 1386—87ին Լէնկ Թիմուրի (1336—1405) բանակները մտան Վրաստան և գրաւեցին Թիֆլիսը եւ գերի վարեցին Բագրատ Ե. Թագաւորը (1369—1395)։ 1393ին Լէնկ Թիմուր կրկին արշաւեց Վրաստան եւ բռնութեամբ մահմետականացուց ժողովուրդը եւ քարուքանդ ըրաւ վանքերը եւ եկեղեցիները։ Բագրատ Ե. եւս ընդունեց Մահմետականութիւնը, բայց շուտով ապստամբեցաւ Թաթարներուն դէմ։ Թիմուրի զօրքերը ասպատակեցին Վրաստանը, պատժելու համար այս ըմբոստութիւնը։

1395ին Բագրատի որդին՝ Գէորգի Է. օգտուելով Թիմուրի Բիփչաքներու երկիրը կատարած արշաւէն, ապստամբութիւն մը կազմակերպեց անոր որդւոյն Միրան Շահի դէմ։ Թիմուր երբ վերադարձաւ՝ յարձակեցաւ Վրաստանի վրայ, աւերեց երկիրը, վանեց Գէորգին և Թիֆլիսի մէջ պահակազօրք դրաւ։ 1403ին Պաղտատի Սուլթանին յաղթելէ ետք, հուրի եւ սուրի մատնեց Վրաստանը եւ մեկնեցաւ Պայլական (Աղուանից աշխարհ) եւ անկէ գնաց Սմրղանդ ուր մեռաւ 1405ին։

Թիմուրէն ետք Վրաստան եկան Գարագոյունլու Թուրքմէնները եւ բոլորովին կողոպտեցին երկիրը (1411 1444), սակայն Էօզպէք Թաթարներու պետութեան քայքայումէն վերջ՝ Վրացիք կրցան իրենց պետութիւնը վերականգնել և պահեցին իրենց անկախութիւնը։

Ասիկա մասնաւոր պատճառ մը եղաւ որ նոր Հայ գաղութներ կազմուին Վրաստանի զանազան քաղաքներուն մէջ։ Այս իրողութիւնը կը չեշտուի ԺԳ. ԺԴ. և ԺԶ. դարերու թուականներով բազմաթիւ նոր արձանագրութիւններով։ Թէ գերեզմանաքարեր, թէ եկեղեցիներու շինութեան արձանագրութիւններ կը բազմանան գրեթէ Վրաստանի ամէն կողմերը։

Այդ թուականներուն՝ Վրաստանի մէջ Հայերու մեծ թիւ մը ունենալը կը հաստատէ նաեւ Յովհաննէս կրօնաւորի ժամանակագրութիւնը, իր գրած Աւետարանին սկիզբը։

Ան կը գրէ թէ «ի ՊՁԹ (= 1440) թուականին Ջհան Շայ Ամիրզէն ի Վրաց տուն մտաւ եւ շատ աւեր արար եւ զեկեղեցին քակեց եւ քան զտասն երկու հազար աւելի ի Հայոցս, զոմս սպան եւ զոմս գերի վարեաց» (Դիւան Պատմ. Ժ. էջ 17)։

Թովմա Մեծոփեցի ևս Ջիհան Շահի աւերը և չարիքը նկարագրած է. տեղ մը ունի՝ որ Վրացիներէն կրած Հայոց յուսախաբութիւնը կ'արտայայտէ։ «Մեր հանապազ յոյս ի Վրացիսն ունելով պարծէաք ի մէջ անօրինաց. յայնմանէ յուսահատեալ՝ առաջի անօրինաց ափիբերան եղաք» կատարեցաք զբան մարգարէին որ ասէ «անիծեալ մարդ, որ դիցէ զյոյս իւր ի մարդ», «եւ



մի յուսայք յիշխանս զի ոչ գոյ փրկութիւն»։ Եւ այլ օգնական ոչ գոյ մեր բայց միայն Տէր Յիսուս...» (Թովմա Մեծոփեցի էջ 123)։

Այս իրապէս ողբալի վիճակը այդ թուականէն յետոյ երկու ազգերուն համար տեւական եղաւ և անիկա, դժբախտաբար, հետեւանքներէն մէկն էր երկու ազգերու անհասկացողութեան։

Վրաստանի յաջողութիւնը և զօրութիւնը Հայերու համար նպաստաւոր էր եւ երկու ազգերու գործակցութեամբ կարելի էր երկուքին ալ վիճակը բարուքել։ Սակայն երկու ազգերն ալ չհասկցան իրենց իրական շահերը եւ յաճախ իրարու դէմ ելան՝ երկրորդական պատճառներով։

Ասով հանդերձ, իբրեւ գաղթավայր միայն նկատի ունենալով Վրաստանը, մեր գաղթականութեան պատմութեան մէջ իրեն պարտինք յատկացնել փառաւոր էջ մը, վասնզի հոն Հայերը ապրած են երկիրին տէրերուն պէս եւ ոչ թէ իբրեւ ստրուկ կամ նուաստ գաղթական։

Անոնք ձեռքի վրայ բռնուած տարրը եւ երկիրին ուժը կազմած են։

Նկատեցէք որ երկիրին մայրաքաղաքին՝ Թիֆլիսի մէջ Հայերը մեծամասնութիւն էին գրեթէ միշտ։ Հոն Վրացիք պատահական և առժամեայ բնակիչներ էին, մինչ Հայերը կը կազմէին քաղաքին մշտնջենական բնակիչները։ Ասոր համար Վրացիք կը կոչէին մոքալաքի (քաղաքացիք)։ Թիֆլիսի մէջ Հայոց վաղեմի և մշտնջենական բնակութեան գլխաւոր փաստը սա էր՝ որ անոնք կը բնակէին նախապէս քաղաքին բերդին մէջ, ուր էր իրենց Կաթողիկէ անունով եկեղեցին, 600 թուականին շինուած (1)։

Հայերու գրաւած դիրքին կարեւորութիւնը Վրաստանի մէջ, կը յայտնուէր նաեւ ժառանգական պաշտօններու, ազնուականութեան և իշխանական տիտղոսներու պարգեւատրութեամբ։

Հայերը կը ծառայէին բանակին մէջ, կը պաշտպանէին գահը և թագաւութիւնը, բայց իրենց կարեւորութիւնը Վրաստանի թագաւորութեան մէջ չէր սահմանափակուէր զինուորական և վարչական պաշտօններու մէջ, զորս իշխող տարրին հետ հաւասար կը վայելէին։

Հայերը գործունէութեան մասնաւոր շրջանակ մը եւս ունէին. իրենք կը կազմէին՝ Վրաստանի մէջ, քաղաքացի դասակարգը, որուն Վրացիներու միայն մէկ փոքր մասը կը պատկանէր։ Վրաստանի Հայ գիւղացիները, Վրացի գիւղացիներուն պէս, երկրագործութեամբ կ'զբաղէին, կամ հողագործ էին, կամ այգեգործ, իսկ քաղքենիները՝ Թիֆլիսի կառավարչութեան մէջ կը կազմէին արուեստագէտ, վաճառականներու դասը։

Վրացիներու բարձր դասակարգը կ'զբաղէր միայն վարչական գործերով։ Իսկ ժողովուրդը այն կարճ միջոցներուն՝ ուր պատերազմները դադար կ'առնէին,

---

(1) Սիմէոն Երեւանցի կաթողիկոս կը վկայէ 1765ին՝ թէ այս եկեղեցին մզկիթի վերածուած էր, երբ Շահ-Աբբասի տիրապետութենէն յետոյ, անձկաբնակ եղած էր քաղաքը (տես. Ջամբռ 48—49)։ Սակայն նոյն անունով եկեղեցիի մը գոյութիւնը Հ. Մինաս Բժշկեան հաստատած ըլլալով 1830ին, (Ճանապարհորդութիւն ի Լեհաստան. 412), հաւանական է կարծել թէ Ռուսաց տիրապետութենէն յետոյ, անիկա ետ առնուած է։

սուրը կը ձգէր և արօրին կը վազէր։ Ասով հանդերձ, պետութեան յարաճուն պէտքերը, որոնց չէին բաւեր երկիրին արտադրութիւնները, կ'ստիպէին ժողովուրդին մէկ մասը առևտուրով զբաղելու և շահագործելու երկիրին բնական հարստութիւնները, որով մարդիկ կը զօրանային նիւթապէս, ի հարկին թագաւորին իսկ օգնելու աստիճան։ Ահա այդ դասը Հայերն էին, որոնք վաճառականութեամբ կը շահագրգռուէին մասնաւորապէս և քաղաքին մելիքին իրաւասութեան ենթարկուած էին։

Մելիքը իրաւարարն էր վաճառականներու և արհեստաւորներու դատերուն։

Մելիքներէն ոմանք՝ աւելի մեծ իշխանութիւն ունէին և կը կրէին Մելիք Մամասախմա տիտղոսը, այսինքն քաղաքի հրամանատարութիւն։

Շնորհիւ իրենց կորովին, իրենց յարատեւութեան և մրցակից Վրացիներու չգոյութեան, Հայերը կրցան շատ մեծ բարօրութեան հասնիլ Թիֆլիս, Գորի, Սեգնա, Թելաւ և Ախալցխա քաղաքներուն մէջ, ուր կեդրոնացած էր ամբողջ երկիրին տնտեսական շարժումը։

Թագաւորէն կարգուած Մելիքը կերպով մը Հայոց ազգային պետն էր և քաղաքին գլխաւոր անձնաւորութիւնը։

Այսպէս կ'երևի թէ Մելիքի իշխանութիւնը միայն քաղաքին մէջ չէր ամփոփուած. ԺԵ. և ԺԶ դարերու Վրական արձանագրութիւններէն յայտնի է որ այդ իշխանութիւնը կը տարածուէր նաև քաղաքէն դուրս գտնուած շրջակայ գիւղերուն վրայ։

Հայերը ունէին համքարութիւններ (արհեստապետութիւններ) և ուրիշ առանձնաշնորհներ։ Քրէական յանցանքի համար Հայերը մահուան պատիժի չէին ենթարկուէր, այլ միայն դրամական տուգանք կու տային։

Վախթանգ Թագաւորի օրէնքներուն համաձայն՝ Հայերու և Վրաց երկրորդ կարգի ազնուականներու արեան գինը նոյնն էր։ Հայերը կը վճարէին որոշ տուրք (մախթու) և կարող էին պետական պաշտօնի կոչուիլ և նոյնիսկ կարգ մը պաշտօններու համար իրենց նախապատուութիւն կը տրուէր։

Մէկ խօսքով, Հայերը Վրաստանի մէջ բացառիկ և առանձնաշնորհեալ դիրք մը ունէին։

*  
* *

Վրաստանի Հիւսիսային սահմանագիծը կը կազմեն Կովկասեան լեռները, որոնք երբեմն անանցանելի պատուար մը կը նկատուէին Վրացիներէն և Հայերէն։ Հայերը գիտէին թէ այդ լեռներուն հիւսիսակողմը կ'ապրէին բազմաթիւ ժողովուրդներ (1) որոնք երբեմն Կովկասեան լեռնաշղթայի անցքերէն կը խուժէին Վրաստան և անկէ ալ հարաւ՝ Հայաստան և երկու երկիրները աւերի և սուրի մատնելէ յետոյ՝ ետ կը դառնային նոյն անցքերէն, երթալու համար այն անսահման տափաստանները, որոնք կը տարածուէին Կովկասեան

(1) Խորենացիին վերագրուած, այլ սակայն Անանիա Շիրակացիէն խմբագրուած Աշխարհագրութիւնը կը բաւէ 50ի չափ ծանօթ եւ անծանօթ անուններով ժողովուրդներ, «խառնաղանճ բազմութիւններ», եւ «վաչկատուն զօրութիւններ», ըստ Փաւստոսի (տես. ՊՀԳ. Ա. 392—3):



լեռնաշղթային հիւսիսային կողմը, Կասպից և Սեւ ծովերուն, Վոլկա գետին և Ուրալ լեռներուն միջեւ (1)։

Այդ ասպատակային արշաւներու ատեն, զօրս կատարած են դէպի հարաւ, աւարին և աւերին հետ՝ գերեվարութիւններ ալ կատարած են (տես. ՊՀԳ. Ա. 400—406) և մարդկային բազմութիւններ փոխադրած են հին աշխարհին համար անծանօթ նկատուած այն երկիրները, զորս Հայերը, Հիւսիսայնոց կամ Սարմատացւոց աշխարհ ընդհանուր անունով կը ճանչնային։

Այս գերիները, ինչպէս տեսնուեցաւ, (ՊՀԳ. Ա., 403), իբրեւ քաղաքակիրթ ու քրիստոնէութեամբ լուսաւորուած ժողովուրդի մը զաւակները, կրօնատարած գործունէութիւն և քաղաքակրթիչ դեր մը ունեցած են, Քրիստոնէութիւնը քարոզելով և ուսուցանելով նստակեաց, հաստատուն բնակութիւն և տեղծագործական կեանք ունենալու բարիքները (ՊՀԳ. Ա. 206 և 403)։

Նոյնպէս, յայտնի է որ Հայերը յարաբերութիւն ունեցած են Կովկասեան լեռներու հիւսիսակողմը ապրող ժողովուրդներէն Հոններու հետ՝ Ե. դարէն սկսեալ (ՊՀԳ. 205—6), վասնզի, ինչպէս կը հաստատուի, Ե. դարուն, կրօնական պատերազմներու ատեն, Հոնք՝ Հայոց դաշնակիցներուն մէջ էին և կռուեցան Պարսիկներուն դէմ։

Զ. դարուն, երբ Հայերը հալածուեցան Պարսիկներէն, ոմանք հաւանօրէն անցան Կովկասը և միացան Հոնաց թագաւորներու բանակին (ՊՀԳ. Ա. 206)։

Անոնք քրիստոնէութիւնը աւելի ամրապնդեցին Հոնաց մէջ, որոնց երկիրը Կովկասի լեռներուն հիւսիսային ստորոտին մօտ ըլլալ կը թուի։ Մեր պատմիչները, կը յիշատակեն թէ Աղուանից աշխարհէն քարոզիչներ ալ գացած են Հոնաց երկիրը և հովուած քրիստոնեաները։

Այս յարաբերութիւնները կը շարունակուին մինչեւ Ը. դար (ՊՀԳ. Ա. 394—397), և Հոններու հետ բնակակից ուրիշ ժողովուրդներ ալ շփումներ կ'ունենան Հայերու հետ։

Հին ատեններէն, նոյնիսկ քրիստոնէութենէն առաջ, Հայերը իբրեւ վաճառականներ հաստատուած էին Կասպից ծովու արեւմտեան և հիւսիսային եզերքները, ինչպէս նաև Սեւ Ծովու ափերը, և ապրանքներ կը փոխանակէին (ՊՀԳ. Ա. 337—9)։

Արդէն տեսանք թէ Էթիլ (= Վոլկա) և Քամի գետերուն իրարու խառնուած տեղւոյն վրայ հաստատուած Պուլկարներու (2) հին մայրաքաղաքին ա-

(1) Խազրաց, Հոնաց, Թեսալացւոց արշաւանքներու վրայ խօսած ենք (տես. ՊՀԳ. Ա. 393—395):

(2) Պուլկարները ցեղով Ուրալ-Ալթայեան են եւ Քր.ի Ա. դարուն հաստատուած են Վոլկայի վրայ, արդի Ղազան քաղաքին շուրջ, Մեծ Պուլկարիոյ մէջ, ուր հասած են որոշ բարգաւաճման: Թաթարներու արշաւանքին ատեն, իրենցմէ անոնք որ մնացած էին իրենց այդ նախկին հայրենիքը, ենթարկուեցան Թաթարներու ազդեցութեան եւ ընդգրկեցին Թաթար լեզուն եւ ձուլուեցան: Իսկ անոնք որ Դ.—Ե. դարերուն Անդրդանուբէն եկած էին՝ Աւարներու եւ այլ ցեղերու ազդեցութիւնը կրեցին եւ զօրակցելով անոնց, 559ին եւ 623ին, սպառնացան Բիւզանդիոնին, 626ին անկախ եղան Բիւզանդիոնի պաշտպանութեամբ, 679ին Դանուբը անցան եւ խնամութիւն հաստատեցին եւ անկախ թագաւորութիւն մը հիմնեցին Վառնայի մէջ եւ անզգալաբար սլաւացան:

ւերակներու մէջ գտնուած էին Հայ արձանագրութիւններով տապանաքարեր, Ջ. Թ. և ԺԱ. դարերու թուականներով, (տես. ՊՀԳ. Ա. 207)։

Հայերը հոն կ'երթային ապահովաբար արաբական շրջաններէն, այսինքն Է. դարէն սկսեալ, Տերպենտէն անցնելով, ինչպէս կը մակաբերուի Էթ-Թապարիի խօսքերէն, (ՊՀԳ. Ա. 403)։ Անհաւանական չէ նաև ենթադրել թէ անոնք Վոլկա գետին հոսանքն ի վեր նաւարկելով դէպի Հիւսիս-առաջացած և զանազան վայրերու մէջ հաստատուած են նաւարկելի այս մեծ գետին եզերքներուն վրայ, մինչև Հին Պուլկարիոյ մայրաքաղաքին մօտերը։

Ասիկա կը հաստատուէր, ինչպէս տեսնուեցաւ, հայերէն տապանագիրներով,— որոնք անսուտ յիշատակարաններ կը կազմեն։ Կան նաև ուրիշ վկայութիւններ։

Այսպէս, 1579ին անգլիացի վաճառականներ, որոնք Պարսկաստան կ'երթային, Վոլկա գետին Արևմտեան եզերքը, Ղազանի և Աստրախանի միջև կը գտնեն շատ գեղեցիկ քարէ բերդ մը Օվիք անունով, և անոր կից քաղաք մը, որ Ռուսերը Սոդոմ կը կոչէին։ Քաղաքը և բերդին մէկ մասը, ռուս աղբիւրներու համաձայն, հողը կուլ տուած է Աստուածային տնօրինութեամբ, ի պատիժ քաղաքի բնակիչներուն մեղքերուն։ Այդ թուականին տակաւին կը մնար բերդի աւերակներուն մէկ մասը և գերեզմանաքար մը, որ ինչպէս կը տեսնուի, կը պատկանէր մեծանուն անձի մը, որովհետև գերեզմանաքարին վրայ կարելի էր տեսնել ձիու վրայ նստած մարդու պատկերը, ձեռքը աղեղ մը և կուշտին կապարճակ մը։

Քարի մը վրայ ալ կար վահանիկի մը կտորը, որ նշանագիրեր ունէր քանդակուած իր վրայ։

Անոր մէկ մասը դարերու ընթացքին եղծուած էր և մնացեալը անհասկընալի կը մնար։ Սակայն մնացորդներու ձևերէն Անգլիացի վաճառականները հետևցուցած են որ անոնք հայերէն նշանագիրեր էին։

Ուրիշ նշանագիրեր քանդակուած էին նաև տարբեր տապանաքարի մը վրայ (Hakeluyt's Voyages Vol, II 174)։

Թանկագին է այս վկայութիւնը Վոլկայի աւազանին մէջ գտնուող Հայ գաղութներու, քաղաքներու և հաւանաբար բերդերու վրայ, որոնց միջոցով Հայերը անշուշտ Հայաստանէն Ղրիմի և մասնաւորապէս անոր Քէֆէ քաղաքին և Լեհաստանի հետ հաղորդակցութիւն կը պահէին։

Անգլիացի վաճառականներու 1579ին տուած այս վկայութենէն գրեթէ երեք դար ետքը, ուրիշ Անգլիացի մը՝ Էտուարդ Դրասի Դուրնէրէլլի, իր ճանապարհորդական երկհատոր մէկ գործին մէջ (Russia on the Borders of Asie, Kazan. London, 1854. II) կը գրէ այս աւերակներուն մասին և ի մէջ այլոց կը յիշէ, որ եկեղեցիի մը պատին մէջ ագուցուած տեսած է շատ մը արձանագրութիւններ՝ Արաբ, Թաթար և Հայ լեզուներով (Նոյն, 221)։ Հայերէն արձանագրութիւնները 984 տարեթիւը կը կրէին և հատ մըն ալ 557 տարիէն և կ'ապացուցանեն որ Պուլկարները շատ ընդարձակ վաճառականութիւն կ'ընէին (Նոյն 224)։

Տրուած տարեթիւերը շատ բնականաբար Հայոց թուական ըլլալով, ուրեմն այդ արձանագրութիւններուն համաձայն Վոլկայի այդ ուղեգիծին վրայ 1108էն (=557 Հայոց թուական) մինչև 1535 (=984 Հայոց թուական) Հայ գաղութներ կային։ (Ց. Բիւրտեան. Հայրենիք ամսաթերթ ԺԹ. տարի, Թ. 10, 131—132)։



Այս հնօրեայ գաղութը կարելի չէ պնդել թէ իր գոյութիւնը պահած է մինչև ԺԳ. դար, Թաթարներու արշաւանքը, երբ անոնք ողողեցին արևելեան Եւրոպան, Ռուսիան և Փոքր Ասիան, Հայաստանը և դրացի երկիրները։

Վոլկայի վերին ընթացքին վրայ հայկական վաղեմի գաղութներուն հաստատումին հետ միաժամանակ, Տնիեբերի ափերուն վրայ, ուր յոյները վաղուց երթևեկած էին, Հայեր ալ կը հաստատուէին՝ թերևս Բիւզանդացիներու հետ։ Անոնք Սև ծովու հիւսիսային եզերքները ապրանք կը տանէին և կը փոխանակէին տեղական արտադրութեանց հետ։

Վաճառականներու ոտքի հետքերուն հետևեցան Կ. Պոլսոյ Օրթոտոքս եկեղեցիին կրօնածաւալ քարոզիչները, որոնք հաւատացեալներու թիւը աւելցնելու աշխատած են այս երկիրներուն մէջ (ՊՀԳ, Ա. 276)։

Հայերու Անդրկովկասի (1) մէջ կատարած առաջին փորձերէն մօտաւորապէս 300 տարի յետոյ (տես. Նոյն, 404), երբ այդ ընդարձակ երկիրներուն մէջ բնակիլ սկսած էին Միջին դարու բարբարոսներու արշաւանքին հետևանքով զանազան ցեղէ ժողովուրդներ։

ԺԱ. դարուն երբ Ասիական հորդաներու առաջին մեծ զանգուածը՝ Սելջուկները ասպարէզ կուգային Կովկասեան լեռներէն անդին տարածուող աշխարհներու մէջ Հայերը կը ճանչնային բազմաթիւ ժողովուրդներ, այլազան անուններով, ինչպէս Խազիրք, Հոնք, Մասկութք, Ծեղպք, Լփնիք, Հեփթաղք և այլն և այլն. (ՊՀԳ. Ա. 392–398) որոնց հետ գործ ունեցած էին Է.էն մինչև ԺԱ. դար, վասնզի Արաբները զիրենք բռնադատած էին իրենց հետ Տերպէնտէն անցնելով նուաճելու այդ ժողովուրդները, որպէսզի չհամարձակին անցնիլ Կովկասեան անցքերէն և արշաւել հարաւ, իրենց տիրապետութեան ենթարկուած երկիրները։

Այդ արշաւանքները զորս Արաբ, Հայ, Վրացի, Աղուան և այլն զօրքերը կը կատարէին, նպաստած էին այս երկիրներու հետ յարաբերութիւններու ընդարձակման, վասնզի առևտրականներ ինչպէս յաճախ, բանակներու ետևէն կ'երթային և նոր ծանօթութիւններ ձեռք կը բերէին և իրենց համար շուկայ և շահաստան կ'ստեղծէին։

ԺԱ. դարուն արդէն Հայերը թափանցած էին ոչ միայն Կովկասեան լեռներու հիւսիսակողման երկիրները, այլ նաև աւելի հեռուները։

---

(*) Արեւելահայերը՝ Ռուսներուն հետեւելով՝ Կովկասեան լեռնաշղթային հարաւային կողմը կը կոչեն Անդրկովկաս, մինչ հիւսիսային կողմը Կովկաս, մինչդեռ իբրեւ Հայ մտածելով եւ Հայաստանի դիրքին նայելով՝ յայնկոյս Կովկասու կամ Այսրկովկաս են այն երկիրները, որոնք այդ լեռնաշղթային հարաւային կողմն են եւ յայնկոյս կամ Անդրկովկասեան են անոնք, որոնք հիւսիսային կողմն են։ Հայ բանասէրներ պարբերաբար յարուցած են Այսրկովկասի եւ Անդրկովկասի հարցերը, առանց վերջնական եզրակացութեան յանգելու։

Ն. Քարամզին ռուս նշանաւոր պատմիչը կը հաստատէ թէ Հայերը Վոլկայի վրայ նաւարկութեամբ կ'երթային մինչև Ղազան և հոն ռուսական մորթերու և կաշիի հետ կը փոխանակէին պարսկական և այլ ասիական ապրանքներ։

Եւ ինչպէս բացատրած եմ (ՊՀԳ. Ա. 337), Հայեր կ'ապրէին Ռուսական տափաստաններու մէջ եկուոր բայց հոն հաստատուած և քրիստոնէութեան յարած երկու ազգերու՝ Ռուսերու և Բոլոնիացիներու կազմած իշխանութիւններուն մէջ։

Վոլկայի եզերքներէն մինչև Տնիեբերի հովիտը Հայեր հաստատուած էին մանաւորապէս Ռուսերու քրիստոնեայ դառնալէ յետոյ։

Իրենց բնակութիւնը հոն քաջալերուած էր Ռուս իշխաններուն կողմէ, որոնց մայրաքաղաքը Թ. դարու երկրորդ կէսին Նովկորոտէն Քիեւ փոխադրուած էր Ռուրիքի տան հարստութեան հիմնադիր Ռուրիք Ա. (862—879) իշխանին օրով։

Անոր յաջորդներէն Վլատիմիր Մեծ-Դուքսին (972—1015) իշխանութեան ատեն էր որ Քրիստոնէութիւնը կը մտնէր Ռուսերու մէջ և Վլատիմիր ինքն կը մկրտուէր Բիւզանդական արքունիքին պատկանող Աննա Հայ իշխանուհիին (+1011) հետ ամուսնանալու համար (տես. ՊՀԳ. Ա. 343)։ Աննայի ծագումը թերևս մեծ խթան մը եղած էր Հայերուն այն տեղերը հաստատուելուն։

Սելջուկեանց կեղեքումներէն դժգոհ տարրերուն համար, հետևաբար, Կովկասեան լեռներէն անդին տարածուած ընդարձակ երկիրները տեղի ապաստանի հանդիսացած են, և հաւանօրէն Բիւզանդական երկիրներ ապաստանող Հայերուն հետ գտնուած են Սև ծովու Հիւսիսային եզերքներէն մինչև Տնիեբեր տարածուող հողերուն վրայ հաստատուած Հայեր ալ։

Այդ Հայերը կրցած են մօտաւորապէս դար մը հոն բարօր կեանք մը ունենալ՝ այդ շրջանները ազատ մնացած ըլլալով Ասիական բարբարոսներու արշաւանքէն։

Եւ իբրև քրիստոնեայ պզտիկ իշխանութեան տակ մնացած ազատ երկիրներ, Հայերու համար իբրև բաղձալի վայրեր, մեծ թիւով Հայ գաղթականներ հիւրընկալած են։

Բազմաթիւ վաւերագիրներ՝ ԺԴ., ԺԵ., ԺԶ. դարերուն՝ Հայերու և Ռուսերու ունեցած առևտրական յարաբերութիւններուն վրայ տեղեկութիւններ կու տան (ՀԱ. 1902 էջ 30, Ալ. Երիցեանի Մոսկուայի կայսերական բնագիտական ընկերութեան Կովկասի ճիւղին Բ. նիստին ներկայացուցած զեկոյցը):

Հայերը ոչ միայն առևտրական յարաբերութիւններ հաստատեր էին Ռուսերու հետ, այլ ինչպէս գտնուած արձանագրութիւնները կ'ապացուցանեն, քանի մը տեղ եկեղեցի և մատուռ ալ կառուցեր են (Նոյն)։ Արխանգելսկի առևտրական ճամբան նոյնիսկ Արմէնսկի անունով յայտնի էր, (Նոյն): Ըստ Ալ. Երիցեանի մինչև այսօր Ռուսիոյ հիւսիս-արևելեան նահանգներուն մէջ գոյութիւն ունեցող քանի մը Ռուս եկեղեցիներու ճարտարապետական ոճը Հայկական կամ Հայ-Վրացական հետքեր կը կրէ։ Կան Ռուս հնագէտներ որ կը



կարծեն թէ Քրիստոնէութիւնը Ռուսաստանի մէջ քարոզուած էր Վլատիմիրէն առաջ, և թերևս Կովկասի գաղթականներէն ներմուծուած (Ալ. Երիցեան Նոյն)։ Նոյնիսկ Ռուս գիտուններ (Երիցեանի զեկոյցը կարդացած նիստին ներկայ եղողներէն) կան, որոնք հաւաստած են թէ Ռուսիոյ Հիւսիսային նահանգներու քանի մը գիւղերուն մէջ՝ արևելեան դիպ ունեցող մարդիկ կան, որոնց Հայ կամ Վրացի ծագում ունենալը անմիջապէս աչքի կը զարնէ։ Այս գիւղացիները թէև իրենց ծագման մասին բան մը չեն գիտեր, սակայն ինչ ինչ նկարներ առիթ կու տան ենթադրելու թէ անոնք Կովկասէն եկուորներ էին (տես. ՀԱ. 1902, 30)։ Միայն խնդրական է գիտնալ թէ ո՞ր դարուն հոն գացած էին և ի՞նչ թիւով։

Սակայն 1579էն շատ առաջ, նոյնիսկ ԺԲ. դարուն հոն գտնուած արձանագրութիւնները ցոյց կու տան թէ ինչպէս Արևելեան բարբարոս ցեղերու դէպի Արևմուտք տեղաշարժին սկզբնաւորութենէն մինչև Միջին դարուն վախճանը (1453), մանաւորապէս Թաթարական ընդարձակածաւալ պետութեան Ասիական աշխարհին և Արևմտեան Եւրոպայի տիրակալած շրջանին Հայեր ապրած են այդ կողմերը։

Ասիական բարբարոսներու դէպի Հայաստան իրարու յաջորդող արշաւանքները՝ գաղթականութեան հոսանք ստեղծեցին և Հայերը սկսան հեռանալ Հայաստանէն և ցրուիլ, ինչպէս տեսանք։

Ոմանք կը կարծեն թէ նոյնիսկ Բագրատունեաց թագաւորութեան վախճանէն (1041) անմիջապէս ետքը սկսած է Հայերու զանգուածային գաղթը։ Նոյնպէս կը կարծուի թէ երբ 1060ին Անին օտար տիրապետութեան ենթարկուեցաւ, բազմաթիւ Անեցիներ և շրջակայ գաւառին բնակիչները՝ հեռացած են Հայաստանէն (տես. Հ. Մինաս վրդ. Բժշկեանց. Ճանապարհորդութիւն ի Լեհաստան 1830, Վենետիկ, 83) դէպի Մոլտավիա և Լեհաստան։

Իսկ 1065ին երբ Ալփասլան կը գրաւէ Անին և աւարի կու տայ զայն, բնակիչներէն մաս մը կը հետևի առաջին գաղթականներուն և կ'երթայ կը հաստատուի նոյնպէս Մոլտավիա և Լեհաստան (Նոյն), բայց դժբախտաբար այս գաղթերու մասին պատմական հաստատուն տուեալներ չունինք, թէև անհաւանական չէ քանի որ այդ շրջանները ազատ մնացած էին Սելջուկ արշաւանքներէն։ Սակայն Ասիական բարբարոսներու երկրորդ մեծ հատուածն էր Մոնկոլականը, որ աւելի ահեղ և ընդարձակ պետութիւն մը հիմնեց, ԺԳ. դարուն սկիզբը։ Մոնկոլ ահարկու բանակները, առաջին անգամ 1221ին առաջացան, Շիրուանը և Շամախին գրաւեցին և ապա անցան Կովկասի լեռներէն և աւերեցին Ալաններու և Քիփչաքներու երկիրները, ուր 16 Յունիս 1223ին յաղթեցին Ռուս և Քիփչաք միացեալ ուժերուն Կալկայի ճակատամարտին մէջ (վերը, 136)։

Մոնկոլները տիրացան անծայրածիր տափաստաններու և իրենց իշխանութեան ենթարկեցին ընդարձակ երկիրներ։

1224ին Ջինկիզի որդին Բաթու Խան Կասպից ծովու Հիւսիսային կողմէն գալով անցաւ Վոլկան և Հարաւային Ռուսիան նուաճեց և հիմնեց Քիփչաքի

կայսրութիւնը, Սարայ քաղաքը մայրաքաղաք ընելով։

Այս կայսրութիւնը կը կոչուէր Ոսկէ Հորդայ կամ Ոսկի-Զոկատի կայսրութիւն, ինչպէս տեսանք։ Անոր պետը՝ Բաթու Խան, որ Սային Խան (= Լաւ Խան) կը կոչուէր իբրեւ երիցագոյն անդամը Չինկիզի ընտանիքին, գերազդեցիկ էր և 1241էն 1251 երկու անգամ Մեծ Խանին տեղակալութիւնը (1241—1246 և 1248—1251) վարեց (վերը 115 և 163—164)։

Այս երկիրները, այդ շրջանին, ընդունեցին կամաւոր և ակամայ այս վայրերը ապաստանած Հայ գաղթականները։

Այսպէս, 1239ին, երբ Չարմաղան Մոնկոլ զօրավարը կը գրաւէ Անին, անոր բնակչութեան մէկ մասը կը ջարդէ ու մաս մըն ալ գերի կը տանի։

Այս մեծ աղէտէն փրկուած Հայեր, ինչպէս նաև Հայաստանի ուրիշ գաւառներու բնակիչներէն մօտ 40,000 անձ, մայր երկիրէն կը փոխադրուին և կը հաստատուին Կովկասեան լեռներու հիւսիսային կողմը՝ Բաթուի երկիրները։

Բաթու, որ մեծ բարեացակամութիւն ցոյց տուած էր Հայերուն նկատմամբ, զանոնք կը բնակեցնէ Սարայ քաղաքը (ընդմէջ Ղազան և Աժտէրխան քաղաքներուն), ինչպէս նաև Ղազան և Աժտէրխան։

Մինչդ այդ օրերուն, 1240ին, Բաթու, որ որդին էր Թուշիի և թոռը Չինկիզի, կը գրաւէր Քիեւը և հարկատու կը դարձնէր հիւսիսային ռուս իշխանները, որոնք Վոլկայի արևմտեան կողմը կը գտնուէին, բացի Մոսկուայի իշխանէն՝ որ ազատ կը մնար։

Հետեւաբար, Հին Պուլկարիոյ մայրաքաղաքը և Վոլկայի վրայ հաստատուած վաղեմի հայ գաղութները եթէ նոյնիսկ անհետացած էին, այս ձեւով վերակազմուեցան։

Քիփչաք կայսրութիւնը, իր գրաւած հողերուն վրայ կանուխէն հաստատուած Հայերը չնեղեց։ Իր տիրապետութեան առաջին տարիներուն, կատարելապէս լայնախոհ ուղղութիւն ունեցաւ։

Մասնաւորապէս Բաթու Խան (1236—1256 +) և իր որդին և յաջորդը՝ Սարտախ, շատ բարեացակամ վերաբերում ունեցած են Հայերու նկատմամբ։

Այս երկու վեհապետները, որոնց համար գովեստներ շռայլած են մեր պատմագիրները, արդարեւ յատուկ ուշադրութիւն ընծայած են Հայերուն։ Ռուբրուք իր աշխատութեան մէջ կը հաստատէ որ, Սարտախի բանակատեղիին մէջ հանդիպած է Հայ եկեղեցականներու և կ'ըսէ թէ «այստեղ կային Հայ քահանաներ, որոնք գիտէին թուրքերէն և արաբերէն» (Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, էջ 5)։ Սարտախի քով և Օրտուին մէջ ուրիշ Հայեր ալ կային (Նոյն, էջ 6)։

Բաթու և Սարտախ առանձնաշնորհումներ տուած են Հայերուն, ինչպէս և այլազան թոյլտուութիւններ և կրօնական ազատութիւն։ Մեր պատմագիրները կը չեշտեն նոյնիսկ՝ որ Սարտախ «սնաւ քրիստոնեայ դայեկօք» և «ի չափ հասեալ, հաւատաց ի Քրիստոս եւ մկրտեցաւ ի յԱսորոց, որք սնուցին զնա» (Կիրակոս, 207, հմմտ. Վարդան, 150)։ Որչափ որ անոր մկրտուիլը շատ տարակուսական ըլլայ, նոյնքան հաւանական է անոր քրիստոնեաներու ազդեցութեան տակ ըլլալը. վասնզի, ինչպէս տեսնուեցաւ, Մոնկոլ Խաներու



հարէմը քրիստոնեայ կիներով լեցուած էր այդ դարուն մէջ, որոնք որքան որ հաւատափոխներ կը նկատուէին, իրենց հաստատ համոզումովը կը մեռնէին։

Անոնք, իրենց ազդեցութիւնը ի նպաստ քրիստոնեաներուն գործադրած են և այդ պատճառով է որ քրիստոնեաները համարձակ իրենց կրօնքը կըրցած են պաշտել և քիչ շատ վայելել հանգիստ և բարօրութիւն։ Այսպէս, անոնց կը վերագրուի մեծ արդարամտութիւն, զի «սկսան երթալ առ նա, (Բաթու) թագաւորք եւ թագաւորազունք եւ իշխանք եւ վաճառականք եւ ամենայն վշտացեալք, որք զրկեալ էին ի հայրենեաց իւրեանց, եւ նա ԱՐԴԱՐ ԴԱՏԱՍՏԱՆԱՒ տայր զիւրաքանչիւր գաւառսն եւ զհայրենիս եւ զիշխանութիւնս ամենայն ումեք երթողացն առ նա, եւ զիրս նշանաւորս, եւ ոչ ոք իշխէր ընդդէմ դառնալ հրամանաց նորա» (Կիրակոս Գանձակեցի 207)։ Նոյնպէս կը չեշտուի, որ Սարտախ «բազում դիւրութիւն արար եկեղեցեաց եւ քրիստոնէից եւ կամաւ հօր իւրոյ գրեաց գիր ազատութեան քահանայից եւ եկեղեցւոյ եւ առաքեաց ամենայն կողմանց սպառնալիս եւ մահ եւ եթէ ոք հարկ առնու յեկեղեցւոյ կամ ի նորին պաշտօնէից, զինչ ազգ եւ իցեն»։ (Անդ)։ Եւ պատմիչը կ'աւելցնէ թէ «Աստուստ ապա համարձակութիւն առեալ, չոգան առ նա վարդապետք եւ եպիսկոպոսունք եւ երիցունք եւ նա սիրով ընդունէր զամենեսին եւ կատարէր զխնդրուածս նոցա։ ... Ընդ որս չոգաւ առ նա եւ եւ մեծ իշխանս Խաչենոյ եւ կողմանցն Արցախու Հասան որ Ջալալն կոչէին զգուանօք, այր աստուածապաշտ եւ երկիւղած. եւ մեծարանօք ընկալաւ զնա, եւ զորս ընդ նմա էին զիշխանն Գրիգոր, զոր սովորութեամբ Տղայն կոչէին եւ էր ծեր յայնժամ եւ զԴեսում իշխանն պարկեշտ պատանի եւ զվարդապետն Մարկոս եւ զեպիսկոպոսն Գրիգոր» (207)։

Ասոնցմէ, Խաչէնի իշխանը վերահաստատուած իր իշխանութեան մէջ կը դառնայ իր երկիրը, սակայն յետոյ, «նեղեալ ի հարկապահանջացն եւ յԱրղունէն, գնաց առ Մանկու Ղան» (208)։

Այս բոլորը ցոյց կու տան թէ ԺԳ. դարուն մէջ, քրիստոնեաները նոյնքան հանգիստ և դիւրութիւն կը գտնէին Վոլկայի շուրջը՝ որ կամաւորապէս կը ձգէին իրենց երկիրները և այդ կողմերը կը հաստատուէին, հաւանօրէն՝ հազիւ կէս դարու տեւողութեան ընթացքին՝ նշանակելի թիւ մը հասնելով։

Ուշագրաւ է որ մեծ թիւով Հայ արհեստաւորներ կային ԺԲ. դարուն նաև Հայաստանէն դուրս՝ ոչ միայն Փոքր Ասիոյ և Սեւ Ծովի եզերքները գտնուող քաղաքներուն մէջը, այլ Ոսկէ Հորդայի և հարաւային Ռուսաստանի մեծ քաղաքներուն մէջ, օրինակ՝ Սուտաղ (Սուրբխաչ), Սարայ և Բուլղար (տես. 250) Մոնկոլները Հայ նոր գաղթականներէն, ինչպէս իրենց սովորութիւնն էր, Հայկական գունդեր կազմելով, իրենց բանակներուն կցած էին, ինչպէս Ռուսները, որոնցմէ ևս զօրագունդեր կազմած էին։

Քիփչաք կայսրութեան մէջ Հայերու բազմանալուն պատճառ եղած են երկարատեւ պատերազմները, որոնք Սարտախի յաջորդ՝ Բարկայի կամ Բերքայի ատեն տեղի ունեցան, Ոսկէ Հորդայի Ուլուսին և Հուլաղուի հիմնած Իլխանեան պետութեան միջև։ Ինչպէս տեսանք (վերը, 117 և 247), 1262ին,

Բերքա պոհանջեց որ Հուլաղու իրեն հպատակէր և կամ իրեն հողային գի-
ջումներ ընէր և Ատրպատականը տար, որպէսզի ինքը տիրանայ Մետաքսի
ճանապարհին, որ Դաւրէժէն կ'անցնէր և կարգ մը ուրիշ ոչ նուազ կարևոր
պատճառներ, զորս բացատրած եմ արդէն (վերը, 118)։ Սակայն անոնց մէջ
առաջին տեղը տնտեսականը ըլլալը կը հաստատուի որոշապէս, վասնզի Հու-
լաղու և Բերքա, ըստ Վասաֆ Պարսիկ պատմագիրին վկայութեան, վաճառա-
կանները քաւութեան նոխազ ըրած են։ Հուլաղու սպաննած է հիւսիսի Ու-
լուսէն եկող վաճառականները և անոնց ինչքերը գրաւած։ Իսկ Բերքա՝ փո-
խադարձաբար, մահացուցած էր Իլխանեան երկիրներէն իր երկիրները եկող
վաճառականները (տես. վերը. 307)։

Երկու Ուլուսները իրարու հետ պատերազմիլ սկսան։ 1262 Օգոստոսին՝
Բերքայի Նօղա զօրավարը, որ մինչեւ Ղազուին և Շամախի առաջացած էր,
պարտուեցաւ և Հուլաղուի զօրքերը գրաւեցին Տերպենտը և անցան Թերեք
գետը և աշխատեցան գրաւել Բերքայի ձմեռանոցը, բայց յաղթուած ստիպուե-
ցաւ նահանջել (1263 Յունուար) (տես. վերը, 118 և 247)։

1265ին Ապաղա — Հուլաղուի յաջորդը — յաջողեցաւ Նօղա զօրավարին
դէպի Ատրպատական նոր արշաւը կասեցնել և անոր յաջորդը Մանգու Թիմու-
րը (1266—1280 պարտուեցաւ հաշտութիւն խնդրելու (վերը՝ 121)։

Իլխանեան Ղազան Խան (1295—1304), Հիւսիսի խաներուն դէմ մղուած
կռիւին վերջ տուաւ՝ բարեկամանալով Մանգու Թիմուրի յաջորդին՝ Տոխտա
Խանին (1280—1310) հետ (վերը 127)։ Սակայն իր յաջորդը՝ նորէն կռիւի
սկսաւ և փորձեց նուաճել Ատրպատականը և Հայաստանը, ուրկէ կ'անցնէր
Եւրոպայի և Փոքր Ասիոյ միջազգային առեւտուրի ճամբան։

Ուստի Ուզբեկ Խան, (1317—1340) 1319ին կ'անցնի Տերպենտը և կը
մտնէ Շիրուան և կառաջանայ մինչեւ Կուր գետ։ Վերջին Իլխանեանին՝ Ապու
Սայիտի զօրավարը՝ զայն փախուստի կը մատնէ։

Ուզբէկ Խան առանց ընկճուելու՝ 1325ին և 1335ին, երկու անգամ ևս կը
փորձէ գրաւել Ատրպատականը բայց չի յաջողիր (տես. վերը, 130)։

Ապու Սայիտի մահէն (1315) ետք, երբ Իլխանեան պետութիւնը քայ-
քայուեցաւ և Հայաստան անիշխանութեան մատնուեցաւ, Ոսկէ Հորդայի վե-
հապետը՝ Ջանի Բէկ Խանի (1340 1359) բանակները՝ 1357ին Հայաստան կը
մտնեն, նոյնիսկ բնակչութեան խնդրանքով և կը տիրեն Ատրպատականի,
վասնզի Ջօպանեան Մելիք Աշրաֆ բռնակալը տիրակալած էր Դաւրէժի (տես.
վերը՝ 248) և նախճիրներ կը գործէր։ Ջանի Բէկ ստուար զօրքով Կովկասեան
լեռները անցաւ և տիրեց Դաւրէժի, որուն բնակիչները իբրեւ ազատարար ըն-
դունեցին զինքը։ Սակայն Ջանի Բեկի տիրապետութիւնը շատ կարճ կը տեւէ
Ատրպատականի վրայ, ինչպէս տեսնուեցաւ (վերը, 248) և իր յաջորդին Բեր-
գի Բէկի (1357—1359) ատեն, Ոսկէ Հորդայի մէջ կ'սկսին ներքին պառակ-
տումներ և այս կայսրութիւնն ալ կը տկարանայ։ Ասով հանդերձ, Եօզպէք
Թաթարներու վայրագ առաջնորդին դէպի Անդրկովկաս արշաւէն առաջ, Թոխ-
Թամիշ, որ 1380ի Մամայի յաղթանակով և 1382ին՝ Մոսկուայի գրաւումով
զօրացած, 1385ին, 90,000 զօրքով Տերպենտի և Շիրուանի ճամբով կը



մտնէ Ատրպատական և պարտութեան կը մատնէ Ջէլայիրեան Ղայասէտտին.
Ահմէտ Պահատուր Վելի ամիրան (1382—1385 և 1404—1409) և կ'առաջա-
նայ մինչև Դաւրէժ և զայն կը յաջողի գրաւել 6 Յունուար 1385ին։

Ինչպէս արդէն տեսնուեցաւ, Թոխթամիշ կը փորձէ 200,000 անձ տա-
նիլ իբրև գերի իր երկիրը բայց մեծ մասը կը պարտաւորուի լքել սաստկա-
շունչ ցուրտի մը նախախնամական պատահարով, ինչպէս նկարագրուած է։ (Տես.
վերը 269 հմմտ, Սամուէլ Անեցի. 171 և Թովմա Մեծոփեցի 13—14)։

Սակայն, ինչպէս ըսի (վերը 254) շատ հաւանական էր որ Ոսկէ Հորդայի
Խաները, որոնք մօտաւորապէս հարիւր տարի կռուած են Հայաստանի տիրող
Իլխանեաններու դէմ, ամէն անգամ ալ որ Տերպենտէն անցնելով դէպի Հայաս-
տան առաջացած են, իրենց նահանջի միջոցին՝ պատերազմական գերիներէ
զատ՝ քաղաքային բնակչութենէն ալ մաս մը իրենց հետ տարած են, և Թոխ-
Թամիշ չէր առաջին Խանը որ կ'ընէր ասիկա։ Այդ ժամանակներուն համար
սովորական միջոց մըն էր ասիկա, զոր պատերազմիկ ազգեր իրարու դէմ կը
գործադրէին։

Ասկէ զատ պէտք չէ մոռնալ թէ Հայերը՝ ըլլալով ճարպիկ առևտրական-
ներ, հաւանական է որ հետևած են հիւսիսէն հարաւ արշաւող Կիփչաք բա-
նակները հետապնդող Իլխանեան զօրքերուն և նահանջող բանակներուն՝ իբրև
հայթայթիչ և մատակարար, և նոյնիսկ իբրև ուղեցոյց կամ լրատու, անոնց
հետ Կովկասի հիւսիսը անցած և շահու և վաստակի հետամուտ եղած ըլլան։

Այսպէս, Հայաստանի և Կովկասեան լեռներու հիւսիսը տարածուող հողե-
րուն յարաբերութիւնները գաղթականութեան տեսակէտէն, Մոնկոլ տիրապե-
տութեան ատեն զարգացած են, վասնզի, ինչպէս տեսնուեցաւ, Կիփչաքնե-
րու իշխանութիւնը որ Կովկասէն մինչև Վոլկայի աղբերակները և Ուրալ
լեռներէն մինչև Մոլտավիա և Լեհաստան կը տարածուէր, ոչ միայն իր հաս-
տատութենէն առաջ այդ երկիրներուն մէջ գտնուող Հայերը իր իշխանու-
թեան տակ ունեցաւ, այլ նաև նոր գաղթականութիւններ Հայաստանէն հոն
փոխադրեց։

Հայերը այդ երկիրներուն մէջ կարևոր տեղ մը գրաւեցին՝ ինչպէս ուրիշ
տեղերու մէջ նոյնպէս նաև հոդ ծառայելով Թաթարներու և նպաստելով եր-
կիրին բարօրութեանը։

Անոնցմէ կազմուած գունդերը Թաթար բանակներու մէջ մասնաւոր տեղ
մը բռնեցին մանաւանդ և ասով ալ աւելի արժանացան Թաթարներու բարե-
կամութեան։

Հայերը որ Թաթարական տիրապետութեան ենթարկուած ընդարձակա-
ծաւալ երկիրներուն գրեթէ ամէն կողմերը հաստատուած էին, այդ երկիրնե-
րուն մէջ առաւելապէս վաճառականութեամբ զբաղեցան, վաղուց իրենց ծա-
նօթ Վոլկա գետի ճամբով (1)։

---

(1) Այս այն ճամբան էր ուսկից, ետքը, Անգլիացիք Արխանգելսկի գիծով Մոսկուա մտան:

Կովկասեան լեռներու հիւսիսային կողմը և անկէ շատ աւելի Հիւսիս՝ այսպէս՝ Հայերը հաստատուեցան և բարգաւաճեցան։

Սակայն այս բարօր և նպաստաւոր վիճակը տեւական չեղաւ, վասնզի Մոնկոլական անդադար հարստահարութիւնները, կրօնական հալածանքները և մանաւանդ ծանր հարկերը, բռնադատեցին Հայերը, հետագայ դարերուն, գաղտնի բանակցութիւններ ընել Ճենովացիներու հետ, որոնք եկած Ղրիմի ծովեզերքին վրայ, ոտքի կռուան ստեղծած էին, առեւտրի պատրուակով ծովեզերքներ գրաւելով և չահաստաններ հաստատելով։ Այսպէս, Անիի գաղթականները, հարիւր տարի Սարայ և շրջակայքը բնակելէ ետք, 1299ին պատգամաւորներ կը ղրկեն Ճենովացւոց՝ անոնց հողերը փոխադրուելու համար և անոնց հաւանութեամբ՝ 1330ին՝ բազմութեամբ ոտքի կ'ելլեն, զինու զօրութեամբ կ'անցնին Ռուսաստանի հարաւային նահանգներէն՝ շարունակ պատերազմելով Մոնկոլներու հետ, և վերջապէս կը հասնին Ղրիմ, ուր ԺԱ. դարէն սկսեալ արդէն իրենց ազգականները կը բնակէին՝ Հայաստանէն և Պուլկարիայէն գաղթած (Քէֆէ պահուած Ցայսմաւուրքի մը յիշատակարանին համաձայն. Հ. Մինաս վրդ. Բժշկեան, Ճոյն, 83)։

Հոն մեծ բարգաւաճումի հասաւ հայ գաղթականութիւնը եւ անկէ տարածուեցաւ՝ կամաց կամաց՝ նաև Լեհաստան, Հունգարիա և այլ աշխարհներ։

Արդէն, ինչպէս յիշուած է, 1060ին, ԺԱ. դարու Քիեւի ռուս իշխանին երկիրին մէջ, Հայեր հաստատուած էին, նոյնինքն Քիեւցիներու հրաւէրով։

Ռուս իշխանները յաջորդաբար, իրենց պետութեան ընդարձակման շրջանին՝ չզլացին Հայերու կարեւորութիւն տալէ և շարունակ քաջալերեցին անոնց՝ իրենց երկիրը հաստատուիլը. սակայն անոնց իշխանութիւններուն բնական զարգացումը, ի վերջոյ խանգարուած է Մոնկոլական արշաւանքով։ Մոնկոլները եկան գրաւել անոնց երկիրներուն մեծ մասը, ուր բնակութիւն հաստատած էին Ռուս, Բոլոնիացի, Ուկրանացի և Բոդոլիացի և այլ քրիստոնեայ ազգեր։

Մոնկոլները՝ մանաւորապէս այդ տիրապետեալ ժողովուրդներէն, Ռուսերը 1240էն 1389, խիստ կերպով ճնշեցին։ Ռուսերուն համար աւելի ծանր աղէտ մը եղաւ Ասիական բարբարոսներու երրորդ արշաւը, զոր կատարեց Լէնկ Թիմուր, Խօզպէք Թաթարներու այս ահարկու պետը, որ աշխարհի տիրապետութեան ձեռնարկած էր և հակառակ էր նաև Մոնկոլ իշխանութիւններուն։ Թիմուր, ինքն ալ մտաւ հարաւային Ռուսիա և առաջանալով մինչև Ազոֆ, կողոպտեց այս հարուստ քաղաքը։ Լէնկ Թիմուրի այս հարուածը տկարացուց Ոսկէ Հորդայի կայսրութիւնը, ինչ որ նպաստեց որ Ռուսերը զօրանան։

1328ին, Մոսկուայի իշխանը, ստացաւ մեծ իշխան տիտղոսը և իր դիրքը ամրացուց, օգտուելով Թաթարներու ներքին կռիւներէն, վասնզի այս միջոցին թաթարական զօրաւոր իշխանութիւններ և խանութիւններ հաստատուած էին Վոլկայի ափերուն վրայ, Ղազանի, Աստրախանի, Աժտէրխանի, ինչպէս նաև Սեւ Ծովի հիւսիսային ափերուն՝ Ղրիմի և Ազովի մէջ։

Ասոնք իրարու հետ մաքառելով՝ զիրար տկարացուցին։ Ասկէ օգտուեցան Ռուսերը, որոնք 1247էն մինչեւ 1480, աւելի քան երկու դար Թաթար լուծի տակ մնալէ ետք՝ թօթափեցին զայն։



Մեծն Իվան Գ. (1462—1505) իշխանը, կրցաւ խորտակել թաթարական զօրութիւնը և Մոսկուան ազատեց անոնց ձեռքէն 1481ին և ստանալ Զար (թագաւոր) տիտղոսը, ճիշդ այն պահուն, երբ Թաթարներու Խանը կ'սպաննուէր։

Այդ թուականէն վերջ Ռուսերը գլխաւոր ուժը եղան այդ կողմերը և հետզհետէ վանեցին և ընկճեցին Թաթարները, ինչպէս պիտի տեսնուի յաջորդ շրջանին մէջ։ Քաղաքական այս վերիվայրումներու և զինուորական-ռազմական գործողութիւններու ընթացքին՝ այդ հողերուն վրայ կազմուած Հայկական գաղութները տկարացած կամ ցրուած են, վերակազմուելու համար անմիջապէս որ տանելի պայմաններ և քիչ մը խաղաղութիւն ստեղծուէին։

⁂

Դէպի Հիւսիս, Կովկասեան լեռներէն անդին գաղթող Հայերը — որոնց մէջ Անեցիք մեծ թիւ մը կը կազմէին — ինչպէս տեսնուեցաւ, իրենց առաջին կայաններէն, Սարայէն, Աժտէրխանէն և այլէն, 1330ին մեծ թիւով և տափաստաններ ճեղքելով անցան Ղրիմ (1) կամ Տաւրիա, որ այսպէս ունեցաւ Հայ ստուար գաղութ մը, որուն պատմութիւնը ամէնէն փառաւոր էջերէն մէկը կը կազմէ Հայ գաղթականութեան պատմութեան, դժբախտաբար առանց պէտք եղածին պէս ուսումնասիրուած ըլլալու։

Սեւ ծովի Հիւսիսային եզերքները, Ղրիմն ալ միասին, Ժ. դարէն սկսեալ սակ վաճառականներէ բաղկացած Հայ պզտիկ գաղութներ ունէին արդէն (տես. ՊՀԳ. Ա. 337) բաւական առաջ քան Ասիական բարբարոսներու դէպի Արեւմուտք արշաւանքները, որոնք ԺԱ. դարուն սկիզբը սկսան և պատճառ եղան Հայերու զանգուածային հեռացման իրենց Մայր Հայրենիքէն։

Հին գաղթականները, որոնք Ղրիմի մէջ ոտքի կռուան մը ստեղծած էին, Հայաստանէն և Պուլկարիայէն գաղթած էին Ղրիմ (տես. ՊՀԳ. Ա.337), այսինքն թէ՛ Սեւ ծովի Հիւսիսային եզերքէն և թէ Պոլիս–Դանուբ գիծով հոն եկած էին, մէկիկ մէկիկ կամ պզտիկ խումբերով։ Գիտենք թէ Հայաստան ԺԱ. դարուն սկսաւ դատարկուիլ իր բնակչութենէն, մեկնումովը մեծ թիւով գաղթականներու, որոնք գացին աւելնալ այլապէս ստուար թիւով և վաղուց դէպի Բիւզանդական կայսրութեան ասիական մասը մեկնած և հոդ ապրող Հայերու վրայ։ Բայց ասոնցմէ հատուածներ մշտապէս չմնացին հոն, վասնզի մէկ կողմէն Յոյն մոլեռանդ կղերը կը նեղէր զիրենք և միւս կողմէն Սելջուկները հետզհետէ աւելի կ'առաջանային դէպի Արեւմուտք և կը գրաւէին Փոքր Հայքը և Փոքր Ասիան։

Հայերը մանաւորապէս սարսափած բարբարոսներու արշաւանքէն և չկարենալով գիտնալ թէ ուր կանգ պիտի առնէր անիկա, կը հեռանային Փոքր Ասիայէն ապահով կարծուած վայրեր։ Այդ գաղթականներէն մաս մը Սեւ Ծովը անցնելով կ'երթայ Ղրիմի թերակղզիին Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուած մասերը, ուր չէին կրնար մտածել թէ օր մը իրենց նուէն

---

(1) Ղրիմ, կը գրուի նաեւ Խրիմ.

պիտի հասնէին Թաթարները, որոնց երկիւղէն իրենք կը փախչէին Փոքր Ասիայէն։

Անշուշտ այս փախստական Հայերէն՝ պէտք է նկատի ունենալ թէ Սեւ Ծովի ասիական եզերքին և Ղրիմի նաւահանգիստներուն միջեւ յարաբերութիւններ մինչ կային շատ հինէն և Հայերը իբր վաճառական հոն կ'երթեւեկէին, այնպէս որ 1330ի Անիի գաղթականներու մեծ խումբին Ղրիմ հասնելէն և Թէոդոսիա, (Կաֆա կամ Քէֆէ ևս կոչուած) տեղաւորուելէն առաջ՝ Հայերը Ղրիմի Թերակղզիին մէջ հաստատուած էին, երբ ասիական բարբարոսներ իրենց նախնական որթրաններէն նոր կը շարժէին և Ծայրագոյն Արեւելքէն մինչև Փոքր Ասիա, ազգեր ազգերու վրայ կ'իյնային, Ասիան խառնակութեան մատնելով։

ԺԱ. դարը, որ այդ համատարած շփոթութիւններու և ազգերու տեղափոխութեան շրջանն է, Ղրիմի բնակչութիւնն ալ այլափոխեց, վասնզի այդ օրերուն, հոն մտան Փէչէնէկները և Կումանները, որոնց տիրապետութեան շրջանին իսկ գտնուած են հայկական հետքեր Ղրիմի մէջ, ինչպէս 1027 թուականով խաչքար մը, որ կը պահուէր Թէոդոսիայի հնութեանց թանգարանին մէջ (1)։

1042ին Քիփչաքները (2) մտան Ղրիմ և Ճենովացիներուն, Քէֆէի մէջ որոշ առանձնաշնորհումներ տուին (3)։

Յաջորդ ԺԲ. դարուն, Հայերը հաւանօրէն աւելի մեծ թիւով, գաղթած են Ղրիմ, վասնզի ոչ միայն Բագրատունի Հայ թագաւորութիւններու հողերը, այլ նաև անոնց չափ հայաշատ Բիւզանդական Փոքր Ասիան Սելջուկներէն աւերուած էր և Հայերը ո՛չ միայն Սելջուկներէն՝ այլ օրթոտոքս եկեղեցիէն ևս կը հալածուէին՝ Պոլսոյ Բիւզանդական եկեղեցիին չհնազանդելու իրենց յամառութեանը համար։

Հետեւաբար, եթէ ոչ ԺԱ. դարէն, գէթ ԺԲ. և մանաւանդ ԺԳ. դարերէն սկսեալ, Հայերը պէտք է ապաստանած ըլլան, ինչպէս զանազան այլ վայրեր, նոյնպէս նաև Ղրիմ, ուր արդէն իրենցմէ առաջ ուրիշ Հայեր հաստատուած էին։ Հետեւաբար, 1330էն առաջ, Ռայնալտիի (Rainaldi, Annal Eccles. a. a. 1318) տուած տեղեկութիւնը թէ Ղրիմի Հայերը Փոքր Ասիայէն եկած էին «Սարակինոսներէն հալածուած իրենց տուներէն՝ Տաւրիկեան Քերսոնեսի մէջ կը մնային» (Հ. Ք. Վրդ. Քուշներեան, Պատմ. Գաղթ. Խրիմու, 100) կատարելապէս ճիշդ է։

Այդ Հայերը, ԺԱ. դարէն սկսեալ, երբ Ճենովայի, Վենետիկի և Բիզայի նաւերը երթեւեկել սկսան Ղրիմի եզերքները, անշուշտ անոնց հետ յարաբերութեան մտան, հակառակ անոր որ Ասիան մեծ խառնակութեան ենթարկուած էր և Ղրիմի մէջ հաստատուն իշխանութիւն մը գոյութիւն չունէր, և կը գտնուէր Մոնկոլ արշաւանքի սպառնալիքին տակ։

Ջուչի, Չինկիզ Խանի անդրանիկ զաւակը, տիրած էր մինչեւ Տնիեբեր գետը, բայց Ղրիմի թերակղզին չէր կրցած մտնել, երբ 1226ին մեռաւ, իր հօրը՝ Չինկիզի մահէն վեց ամիս առաջ, իր նստոցը ընելով Գազան քաղաքին մէջ։ Իր որդին, Բաթու Խան, տակաւին իր մեծ հայրը՝ Չինկիզ ողջ էր, երբ 1224ին, Վոլկա գետը անցնելով, նուաճեց Սեւ Ծովի հիւսիսային կողմի ընդարձակ տափաստանները։ Բաթու, իր մեծ հօրը մահէն (1226) ետք, իրեն պահեց հօրը և իր նուաճած երկիրները և հիմնեց Ոսկէ Հորդա մեծ պետութիւնը, որ երկիրին բնիկներուն անունով Քիփչաք կայսրութիւն ալ կոչուած է։ Բաթու (1227—1256), իր իշխանութեան միջոցին, նուաճեց՝ բացի Մոսկուայի իշխանութենէն, միւս բոլոր Ռուս իշխանութիւնները. (հմմտ. վերը, 87) Լեհաստանը և Հունգարիան և նոյնիսկ հպատակեցուց Ֆինլանտիան, (վերը, 96)։

Մեր պատմիչները, Բաթուի իշխանութեան շրջանակը նկատի ունենալով, զայն կը կոչեն «մեծ զօրավարն... որ ի կողմանս հիւսիսոյ» կամ «կուսակալ հիւսիսոյ» (տես. վերը, 163) և կը հաստատէ թէ ան՝ իբրեւ Չինկիզի ընտանիքին երիցագոյն անդամը՝ գերազդեցիկ դիրք մը ունեցած է Մոնկոլ մեծ կայսրութեան մէջ, հրաժարելով «Մեծ Խան»ի իշխանութենէն և երկու անգամ թոյլ տալով որ ուրիշներ ընտրուին իր հաւանութեամբ, միջանկեալ տեղակալելով այդ պաշտօնին երկու անգամ (1241—1246 և 1248—1251) (տես. վերը, 163—166)։

Այս զօրաւոր և ազդեցիկ խանը, Բաթու, որուն Մոնկոլները Սային Խան (= Լաւ Խան) տիտղոսը կու տային, (վերը, 105), 1244ին մտաւ նաև Ղրիմ և հալածեց Փէչէնէկները և Կումանները, և Ղրիմի մէջ հաստատեց վարչութիւն մը, որուն կեդրոնը եղաւ Թէոդոսիոյ (Քէֆէ = Կաֆա) մօտ, Սոլտայա (այժմ Սուտաղ) քաղաքը։

Ղրիմ 22 տարի (1244—1266), ամբողջութեամբ մնաց Ոսկէ Հորդայի պետութեան տիրապետութեան տակ։ 1266ին Ճենովացիք վերստին գրաւեցին Թէոդոսիան և մի քանի ուրիշ ծովեզերեայ վայրեր, բայց չկրցան թերակղզիէն վանել ո՛չ Մոնկոլները և ո՛չ ալ Քիփչաքները, որոնք կը տիրապետէին Ղրիմի հիւսիսային մասին։

Բաթու Խանի մահէն (1256) ետք, իրեն յաջորդեց որդին Սարդախ, որ շատ սակաւակեաց եղաւ. և Բաթուի միւս որդին Բերքա (1256—1265) և ապա թոռը՝ Մանգու-Թիմուր (1266—1280) յաջորդեցին իրարու (տես. վերը, 117—8 և 247)։ Մանգու Թիմուր՝ Ոսկէ Հորդայի ընդարձակ կայսրութիւնը 1266ին

---

(1) Անոր արձանագրութիւնն էր «Բարեխաւս է Սուրբ Նշանս Գրիգորին եւ իւր զաւակին» եւ խաչին վերի կողմը փորագրուած էր ՆՀԶ (= 1027) թուականը: (Հ. Ք. Վրդ. Քուշներեան, 104):

(2) Այս բառը ուղղագրուած է նաեւ Խիպչախ, Քիպչախ, Կապճակ եւ այլ ձեւերով: Գործիս մէջ փափաքած եմ միօրինակութիւնը պահել, բայց երբեմն միւս ձեւերն ալ գործածուած են:

(3) Ճենովացիներ, Ղրիմի կամ աւելի Քէֆէի մէջ ո՞րի կռուան ե՞րբ հաստատուած են. յայտնի չէ. սակայն Թաթարներու իշխանութեան միջոցին, առաջին անգամ հոն ցամաք ելած են: Փեթրուպուրկի (այսօր Լէնինկրատ) համալսարանին ուսուցչապետներէն հնագէտ Իւրեւիչ կ'ենթադրէ թէ լատին խաչակիրներու 1204ին Պոլիսը գրաւելէն ետք. անոնցմէ մաս մը եկած է Քէֆէ: Գտնուած է յիշատակարան մը, որ ցոյց կու տայ թէ ԺԳ. դարուն սկիզբը Ռանանով անուն իշխան մը, Քէֆէի մէջ արտօնութիւն շնորհած է Ղրիմի քաղաքներուն մէջ անմաքս վաճառականութիւն ընելու: Այդ իշխանին ինչ ազգի պատկանիլը յայտնի չէ, սակայն կա՛մ Ճենովացի կա՛մ Վենետիկցի պէտք է ըլլայ, քանի որ անոնց նաւերն էին որ Սեւ Ծովի նաւահանգիստները կ'երթեւեկէին:

բաժնեց իր որդիներուն միջեւ։ Ղրիմի թերակղզին վիճակուեցաւ Օրան-Տէմիրի, որ իր մայրաքաղաքը ըրաւ Սուրխաթ քաղաքը, որուն անունը փոխեց Ղրիմի։

Սակայն, Ոսկէ Հորդայի կայսրութեան բաժան բաժար վիճակը և անոր կոտորակեալ մասերուն իրարու դէմ մղած կռիւները, քաջալերեցին Քիեւի Վլատիմիր Բ. Ռուս իշխանը՝ որ կարենայ մտնել Ղրիմ և առաջանալ մինչեւ Կաֆա ու գրաւել քաղաքին շրջակայքը։

Օրան-Տէմիր, Ռուսերուն դէմ, Ճենովացիներու օգնութեան ապաւինեցաւ և այս առթիւ անոնց տուաւ Կաֆա կամ Թէֆէ քաղաքը իր ծովածոցովը, 1267ին յատուկ պայմանագրութեամբ մը, որուն համաձայն. Ա. Ճենովացիք պէտք է մաքս վճարէին Խանին՝ Կաֆա մտած և ելած ապրանքներուն համար. Բ. Խանը պէտք է շտեմարաններ և տուներ շինելու համար, հողեր տար Ճենովացիներուն, որպէսզի անոնք՝ պարիսպով շրջապատելով՝ կարենային ապահովել իրենց ապրանքները. Գ. Ամէն ազգի նաւերուն առջեւ բաց և ազատ պիտի ըլլար Կաֆայի նաւահանգիստը, Ճենովական նաւերու հեռաւոր աշխարհներէն բերած ապրանքները ամէն կողմ արտածելու համար։ Ուրեմն, Ճենովացիք՝ իբրեւ բարեկամ Քիփչաքներու՝ կը հաստատուէին Ղրիմի մէջ և կը պաշտպանէին զայն։ Այս կերպով համաձայնութիւն մը կը գոյանար Քիփչաքներու և Ճենովացիներու միջեւ, ընդդէմ Ռուսերուն, և Ճենովացիք ազատօրէն կը գործէին Ղրիմի մէջ, զոր չէնցնելու համար իրենք կը հրաւիրէին օտարները (Մուրզաքեւիչ, Ճենովական գաղթականութիւններ Ղրիմի մէջ, ի Քուշներեան, 95)։

Այս հրաւիրեալ գաղթականներուն մէջ ապահովաբար կային նաև Հայեր, որոնք նեղուած բարբարոսներէն, որոնք Հայաստանի մէջ սաստիկ հարկապահանջութեամբ կը նեղէին ժողովուրդը, կը հեռանային Փոքր Ասիայէն և Սեւ Ծովը անցնելով, կը դիմէին հանդիպակաց եզերքը ուր կ՚զբաղէին վաճառականութեամբ։

Տաւրիկեան կամ Ղրիմի թերակղզին Սև ծովի Հիւսիսը տարածուած ընդարձակ ներքնաշխարհի մը դուռն էր, և հետևաբար կը ներկայացնէր արտածումի և ներածումի կարեւոր կայան մը, որ չէր կրնար Միջերկրականի ծովային առեւտուրը իրենց սեփականող Ճենովայի, Վենետիկի և Բիզայի հասարակապետութիւնները անտարբեր թողուլ։

Շատ բնական էր, որ անոնց նաւերը սկսէին հանդիպիլ Սև ծովի Հիւսիսային եզերքները, ուր Հայերը արդէն գիրենք կանխած էին, Հայ վաճառականներէ կազմուած պզտիկ գաղութներով, ինչպէս յիշուեցաւ։

Այդ գաղութները առեւտրական ոգևորուած շարժումի մը իրենց մասնակցութիւնը բերին, մանաւանդ իբրև հետեւանք ազգերու տեղաշարժին, երբ Հարաւային Ռուսիոյ տափաստանները լեցուեցան նոր ժողովուրդներով, որոնցմէ էին Փէչէնէկները, Կումանները, Քիփչաքները եւայլն, մինչև որ անոնք Բաթու Խանին (1227—1256) մականին տակ Ոսկէ Հորդայի կայսրութիւնը կազմեցին։ Այս պատճառով Ազախի ծովին շուրջ վաճառականութիւնը սկսաւ արագօրէն զարգանալ։



Հայերը, ինչպէս այլուր, հոս ևս իրենց սեփական գործը ըրին ներքնաշխարհի արտադրութիւններու դէպի ծովեզերք փոխադրութիւնը, յանձնելու համար իտալական — մանաւանդ Ճենովական, Վենետիկեան և Բիզայի — նաւերուն և անոնցմէ առնելու՝ այդ նաւերուն բերած Արևմտեան ապրանքները, զանոնք իրենց կարաւաններով փոխադրելու համար Ասիոյ խորերը։

Առաջին կայանները, ուր Հայերը հաստատուեցան Խազարներու երկիրին կամ Կումանիոյ մէջ, ապահովաբար Քիփչաքներու երկիրին երկու գլխաւոր շահաստանները, Տանա (հին անունը Ազախի) (1) և Սուտաղ քաղաքներն էին, որոնց հետ Ճենովացիք ալ այդ շրջանին յարաբերութեան մէջ մտած էին։ Արդարև, ԺԳ. դարուն սկիզբը Ճենովացիք կը տիրէին Ազախի ծովին Ազախ քաղաքին, մինչև Թաթարներուն երևումը այնտեղ։ Հ. Ք. վրդ։ Քուշներեան կը հաւաստէ թէ ԺԲ. դարուն Ճենովացիք տիրակալած էին այս ծովին և շրջակայ աշխարհին և իրենց հետքերը ձգած էին գեղեցկաշէն աշտարակներով (Պատմ. Գաղթականութեան Խրիմու Հայոց, 1895 Վենետիկ, 12) Հ. Ք. վրդ. Քուշներեան դժբախտաբար չէ ճշդած թէ «շրջակայ աշխարհը» մինչև ո՛ւր կը տարածուէր։ Ամէն պարագայի մէջ ներքնաշխարհին դուռն էր Ազախ քաղաքը։ Իսկ Սուտաղը, իբրև Ղրիմի Խանութեան մայրաքաղաքը, նշանաւոր էր։ Հայերը հաւանօրէն հոն հրաւիրուած էին նոյնինքն երկիրին իշխողներէն, որոնք իրենց վաճառականութիւնը զարգացնելու մտահոգութիւն ունէին, մաքս և տուրք առնելու համար։

Հայերը թէ՛ Ազախի և թէ՛ Սուտաղի մէջ հաստատուած պէտք է ըլլան ամէնէն ուշ ԺԳ. դարուն, նոյնիսկ Անիի կործանումէն և Ճենովացիներու այդ կողմերը երևալէն առաջ։

Սուտաղի մէջ շատ Հայեր հաստատուած ըլլալը կ՚ապացուցուի յունարէն ձեռագիր Յայսմաւուրքի յիշատակարանով, ուր 1292ին Ծռազատիկը առթիւ Հայերը կը մեղադրուին։

Ինչպէս Քուշներեան դիտել կուտայ, եթէ անոնք աննշան թիւ մը ունեցած ըլլային, անոնցմով Յայսմաւուրքին գրիչը պիտի չզբաղէր։

Նոյնպէս Հայերը, վաղուց Կաֆա ալ բնակած պէտք է ըլլան, զի Ճենովական կանոնագրութիւններ (Réglemant) կը յիշեն 1316ին հին հայ եկեղեցիներ, որոնցմէ մէկը խարխուլ վիճակի մէջ, և Թեմին Արքեպիսկոպոսը, որուն աթոռանիստ կեդրոնն էր այդ հնօրեայ խարխուլ եկեղեցին, արդէն կաթոլիկութեան յարած էր (Rainaldi, ad. annum. 1318, n. 13, 1321 n. 13)։

1316ին, եկեղեցիի մը շէնքը, որ սովորաբար ամրաշէն կ՚ըլլայ, «հին» և «խարխուլ» նկատուելու համար, բաւական առաջ պէտք էր շինուած ըլլար։ Եւ եկեղեցի մը կառուցանելու համար, ժողովուրդ մը գոյութիւն պէտք է ունեցած ըլլայ ի Կաֆա, գոնէ 60—70 տարի առաջ, եթէ ոչ մի քանի հարիւր տարի, ինչպէս կ՚ենթադրէ Քուշներեան, (նոյն, 102)։

---

(1) **Ազախ** կամ **Ազագ** եւ ռուս եւրոպացիներու *Azof*, կը գտնուէր Տոն գետին բերանը եւ Ազախի ծովուն հիւսիս-արեւելեան անկիւնը: Հին ժամանակներուն իսկ վաճառականութեամբ ծաղկած նշանաւոր եւ ամուր քաղաք մըն էր:

Նոյնպէս Ֆրանսայի Թագաւորին կողմէ 1253ին իբրեւ դեսպան, Մոնկոլ Խանին ղրկուած Ռիւպրիւք — որ եկեղեցական էր — կը յիշէ թէ զինքը հիւրընկալած է Սուտաղի մէջ եպիսկոպոս մը, զոր ինքն յոյն կը կարծէ, սակայն Հայ պիտի ըլլայ(1), քանի որ Յոյները սաստիկ կ'ատէին կաթոլիկները և անկարելի էր որ եկեղեցի տրամադրած ըլլային (Քուշներեան, նոյն. 101), (2)։

Նկատելի է նոյնպէս թէ Ռիւպրիւքը հիւրընկալող եպիսկոպոսը եթէ Հայ էր, չէր կրնար կաթոլիկ եղած ըլլալ, քանի որ գիտենք թէ Հայ կաթոլիկներ չկային այդ թուականներուն (1253—54) Ղրիմի մէջ ուր կաթոլիկութեան քարոզութիւնը 1267ի Ճենովական գրաւումէն ետքն է որ ազատօրէն կատարուած և յաջողութիւն գտած կրնայ ըլլալ տիրողներու պաշտպանութեամբ, և միայն 13 տարի առաջ Ունեցիններու գաղթէն (1330) հայ կաթոլիկներ կը յիշուին Ղրիմի մէջ, ուր Յովհաննէս ԻԲ. պապը (1316—1334) 1316ին ղրկած էր Դոմինիկեան Պէրուգցի Ֆրա-Ֆրանքօ եպիսկոպոսը և 1318ին Աւինիոնէն գրած է նամակ մը, որուն մէջ կ'ըսէ թէ Հայերը Երեմիա եպիսկոպոսի միջոցով կաթոլիկ եղած են (Ռայնալտ, 1318. 8—12 կամ Հ. Գր. Վրդ. Գալէմքեարեան ՀԱ. 1911, 450)։

Նոյնպէս յայտնի է, որ նոյն Պապը՝ 1328ին հաստատած էր Միաբանողներու (Ունիթոռ) միաբանութիւնը, և Պարսկաստանէն մինչև Ղրիմ Հայ-կաթոլիկ հինգ եպիսկոպոսական աթոռներ սահմանած էր, որոնց երրորդն էր Քէֆէինը։

Նշանակելի է նաև սա իրողութիւնը թէ Ճենովական տիրապետութեան տակ գտնուող Քէֆէի Լատին վիճակաւորը յաճախ Հայազգի Դոմինիկեան մը կ'ըլլար, նախընտրաբար։

Ասիկա, այլապէս կը հաստատէ սա կարևոր իրողութիւնը թէ 1330էն առաջ բաւական թիւով Հայեր արդէն կային Ղրիմի մէջ, և անոնցմէ մաս մը կաթոլիկութեան յարած էր և յատուկ եպիսկոպոսութիւն մը կազմելու չափ թիւ ունէր։

Եւ եթէ բաժանեալ այդ հատուածը այդքան խոշոր թիւ ունէր, ապա հայադաւանները ո՞րքան շատ էին։

Նոյնպէս, ԺԴ. դարէն առաջ Ղրիմի մէջ բաւական կարեւոր Հայ գաղութի մը գոյութիւն ունենալուն փաստ մը ևս կրնանք համարել Կաֆայի մերձակայ Սուրղաթ քաղաքին մօտակայ անտառին մէջ գտնուող Ս. Խաչ կամ Ս. Նշան վանքին շինութենէն (կատարուած 1338ին) առաջ նոյն անտառին խորերը ուրիշ հայկական վանքի մը գոյութիւնը։ Քուշներեան կը հաստատէ այս հին վանքին հիմերուն մնացած ըլլալը մինչև մեր օրերը (նոյն 102)։

Հ. Ք. Վրդ. Քուշներեան, բաւական դրական փաստերով կ'ապացուցանէ թէ Քէֆէ քաղաքին կեդրոնը գտնուող Հայոց Ս. Սարգիս եկեղեցին ևս 1330 թուականէն բաւական առաջ շինուած պէտք է ըլլայ (նոյն, 103), ինչ որ զօրաւոր փաստ մըն է՝ Հայերու ԺԴ. դարէն առաջ Ղրիմի թերակղզիին մէջ հաստատուած ըլլալուն։

Նաեւ ստոյգ իրողութիւն է ԺԴ. դարուն Կաֆայի մէջ Հայերու հաստատուիլը, որ անսուտ վաւերագիրներով կ'ապացուցուի։

Այսպէս, Ս. Վենետիկի Մխիթարեանց վանքը պահուած է 1305ին գրուած Ձեռագիր Տօնական կամ Ճառընտիրի մը (տես. Ցուցակ Վենետիկի Մխիթարեան Վանուց, էջ 511—512), որուն յիշատակարանին մէջ կը խօսուի այսպէս.

«...Վարդապետն զԱւետիք Խոտանաբակն եւ զհոգեւոր երկամբք ծնեալ որդին իւր որ... եղեն կրօնաւորք եւ ետուն զինչս իւրեանց ի տէր վարդապետն եւ նա Թորոս վարդապետին ձեռամբ ետ շինել զՍուրբ Երրորդութիւնն յաստուածապահ քաղաքն Կաֆա եւ եդ անդ զՏօնական գիրքս...»

Այս տողերէն որոշ կ'երևի թէ բաւական թուով եկեղեցականներ կային այնտեղ։ Կար եկեղեցական մը, որ հասցուցած էր աշակերտներ, որոնք կրօնաւորներ եղած էին՝ հրաժարելով իրենց ինչքերէն, որոնցմով շինուած էր Կաֆայի մէջ Ս. Երրորդութիւն անուն եկեղեցի մը։

Ասոնք ցոյց կուտան թէ Կաֆայի մէջ կ'ապրէին այս Տօնականին գրութենէն, այսինքն 1305էն բաւական առաջ Հայեր։ Արդ, նոյն յիշատակարանին շարունակութեան մէջ գրուած է թէ «Աւետիք վարդապետ որ յորդորեաց զբազումս ի բարեգործութիւն եւ զարդարեաց զեկեղեցին սուրբ, շինեաց զեկեղեցի գմբէթ եւ յանուն Ս. Աստուածածնի ի Գամճակ վանքն եւ մի եկեղեցի յաստուածապահ քաղաքն Կաֆա, եւ ետ գրել Տօնական երկու, զմինն եդ ի Գամճակն եւ զմիւսն ի Կաֆային եկեղեցին՝ ի Սուրբ Երրորդութիւնն. Եւ ետ աւրհնութիւն զի խնամով պահեսցեն, եւ մի ոք ձեռնամուխ լիցի: Զի սոքա որ ազնեցին ի գին սորա Վասիլ երէցն եւ Յովհաննէս երէցն եւ Միխայլն ասացին թէ անէծք գրեցէք որ ի մեր ազգականացն որ ձեռնամուխ լիցի. Նա չկամեցաւ վարդապետն, թէ աւրհնութիւն լաւ է քան զանէծք, Գրեցաւ գիրս ի Քրիստոսի մարդեղութեանն ՌԳՃԾ. (1305) ամէն» (1):

Ուրեմն՝ 1305ին Կաֆա ունէր նաեւ վանք մը, զոր շինած էր «Խոտանաբակ» կոչուած Աւետիք անուն վարդապետ մը, որ աշակերտութիւն հասցուցած էր ապահովաբար իր հաստատած Գամճակի վանքին մէջ, որուն, ինչպէս նաեւ Կաֆա քաղաքին Ս. Երրորդութիւն եկեղեցիին հիմնարկութիւնները եթէ նոյնիսկ 1305ին կատարուած ըլլային, պէտք էր բաւական տարիներ ա-

(1) 1253 թուականին տակաւին կաթոլիկութիւնը տարածուած չէր, ուրեմն Իննովկենտ Դ. Պապէն (1243—1254) նոյն թուականին Կումաններու երկիրը ղրկուած առաքելութեան անդամներէն մէկը կրնայ եղած ըլլալ: Կաթոլիկ քարոզիչներ 1298ին միայն գործել սկսած են Ղրիմի Հայերուն մէջ:

(2) Հ. Ք. Վրդ. Քուշներեան, իր այս ապացոյցները քաղած է Բեդերսպուրկի Գիտութեանց Ակադեմիայի անդամ Փիլիպ Բրունի գիրքէն, որ կը կոչուի **Պատմական եւ Տեղագրական Ծանօթութիւններ Ղազարներու աշխարհին մէջ Իտալական Գաղթականութեանց վրայ**, 1866, Բեդերսպուրկ. ինչպէս նաեւ Բոզուե Մեսարեյիւիչ կաթոլիկ Մետրոպոլիտին գրած **Տաւրիոյ պատմութենէն** եւ Բրոնիսկիին **«Թաթարաց Պատմութենէն»** եւ Մ. Իւրսեւիչի աշխատութենէն:

(1) Հ. Բարսեղ Վրդ. Սարգիսեան, **Ցուցակ Ձեռագրաց Մխիթարեան Վանուց**, էջ 512), կը գրէ թէ յուսանցքին վրայ կայ բոլորգիրով, **«ՉՁԳ. Հայոց թուին գրեալ»**: Այս թուականը (783 + 552 = 1334), չի համապատասխաներ յիշատակարանի թուականին եւ 25 տարի ուշ է:

ռաջ որոշ թիւով Հայութիւն մը հաստատուած ըլլար հոն՝ եկեղեցիի եւ վանքի պէտք ունենալու համար:

Իսկ եթէ Ս. Երրորդութիւն եկեղեցին Ս. Սարգիսէն ետք կառուցուած է, ինչ որ գրեթէ ստոյգ իրողութիւն է(1), ուրեմն Հայերը մէկ եկեղեցին անբաւական կը համարէին եւ ուրիշ եկեղեցի մըն ալ կը կառուցանէին։

Բ) Նոյնպէս Փարիզի Ֆրանս. Ազգ. Մատենադարանին մէջ կը պահուին երեք տարբեր գրիչներէ(2) ընդօրինակուած երեք հատոր Տօնականներ եւ վկայաբանութիւններ, որոնք գրուած են վերագրեալ 1305ին գրուած ձեռագիրի մէջ յիշատակուած Աւետիք «Խոստաճարակ» վրդ.ի հրամանով, իր հիմնած վանքին մէջ գործածուելու համար։ Այս երեք ձեռագիրները 1307էն 1334ի միջոցին գրուած ըլլալով, կը հաստատուի թէ 1330էն առաջ Կաֆայի մէջ բաւական ստուար թուով Հայեր կային։

Գ) Կայ նաեւ 1316ին Ղրիմ գրուած Յայսմաւուրք մը, նոյնպէս Փարիզի Ազգ. Մատենադարանին մէջ պահուած (թիւ 180/86), որ ոչ-նուազ զօրաւոր փաստ մըն է 1330էն առաջ Հայերու գոյութեանը Ղրիմի մէջ։

Ուրեմն Հայերը՝ եթէ ոչ մեծ բայց գոնէ բաւական թուով, արդէն Ղրիմի թերակղզիին մէջ հաստատուած էին եւ ինչպէս կ՚երեւի՝ իշխանութիւններէն կը գտնէին պաշտպանութիւն եւ գոհ էին իրենց վիճակէն։

Ղրիմի այս հին Հայերը, որոնք հաստատուած էին ամէնէն ուշ ԺԲ. դարուն վերջերը եւ ԺԳ. դարուն սկիզբները, ԺԴ. դարուն ստուարացան, նորեկներով, որոնք Անեցիներէ կը բաղկանային, մինչ հին գաղութները զանազան վայրերէ եկած էին։

Տեսանք թէ 1236ին երբ Մոնկոլ Չարմաղան Խանը (+1242) գրաւեց և աւերեց Անին, հսկայ բազմութիւն մը, մօտ 40,000 հոգի, լքեցին իրենց հայրենիքը եւ դիմեցին դէպի Հիւսիս եւ հաստատուեցան Ախսարայ, Աժտէրխան եւ ուրիշ քաղաքներ. բայց Մոնկոլները իրենց ետեւէն չուելով հասան այդ կողմերը, ինչպէս վերը (350) բացատրուեցաւ։

Ջուջի և Բաթու, որոնք տակաւին իսլամութիւնը չէին ընդունած, արհեստները և վաճառականութիւնը զարգացնելու համար լաւ վարուեցան Հայերուն հետ, սակայն Բաթու Խանի եղբայրը՝ Պէրէք Խան, երբ մահմետականութիւնը ընդունեց, քրիստոնեաներու նկատմամբ իր բարեացակամ տրամադրութիւնները փոխուեցան և այնքան գէշ վերաբերում ունեցաւ, որ Հայերը ոչոչեցին Մոնկոլներու տիրապետած երկիրներէն հեռանալ և երթալ հաստատուիլ Ճենովացիներէն առեւտրական Շահաստանի վերածուած Ազախ (Ազօֆ) քաղաքը և անկէ անցնիլ Ղրիմի Ճենովական իշխանութեան տակ գտնուած վայրերը։

Ախսարայ հաստատուած Հայերը իբրեւ յաջողակ վաճառականներ, հաւանական է որ մօտակայ առեւտրական այդ կարեւոր կայանին հետ արդէն իսկ

(1) Տես. վերը, 1316ին՝ անոր հին եւ խարխուլ ըլլալու փաստը:

(2) Այդ գրիչներն են՝ 1. Սիմէոն Բաբերդցի, 2. Գրիգոր որդի Սուքիասի եւ Նազխաթունի եւ 3. Աւագ որդի Մխիթարի:



յարաբերութիւն հաստատած էին ԺԳ. դարուն երկրորդ կիսուն, երբ Ասիա բոլորովին մոնկոլական տիրապետութեան տակ ինկած էր և Եւրոպացի առեւտրականներ, Ասիական ապրանքները ստանալու համար պարտաւորուած էին Մոնկոլներու տիրապետութեան ենթարկուած ընդարձակ տարածութեամբ երկիրներու ծովային ելքերը դիմել, ասիական ապրանքներ ստանալու համար։ Ազախ, այդ տեսակէտով կը ներկայացնէր մեծ շահագրգռութիւն, վասնզի ծովը հոն կարծես թէ մզուած էր Թաթար աշխարհէն ներս։

Ճենովացիք հոն հանդիպած էին Հայ վաճառականներու, որոնք մօտակայ Ախսարայէն հոն եկած էին անշուշտ իբրեւ ասիական ցամաքային առեւտուրին գլխաւոր գործիչները։

Շատ հաւանական է որ Հայերը այս պատճառով իսկ հաստատուած էին Ազախ, (հին Տանա) բաւական կանուխ, թէև այդ ժամանակը ճշդող վաւերագիրներ չկան։ Սակայն 1341—2 թուականներուն, հոն հայկական եկեղեցիի մը գոյութիւնը կարելի է նկատել փաստ մը, գոնէ մէկ երկու տասնեակ տարիներ առաջ հաստատուած Հայ գաղութի մը գոյութեանը համար։

Արդարեւ, 1341ին կը յիշուի թէ Աֆէնտի՝ դուստր Նասխաթունի երկու սոմ (somme = 5 ոսկինոց ֆլորին) դրամով կը գնէ Աւետարան մը և կը նուիրէ «ի Ս. Գրիգոր յԱզախ քաղաքին եկեղեցին...», Տէր Մանուէլի ձեռքով, ի յիշատակ իրեն և Սիրպէկ որդիին (Սիսական, 440)։

Ախսարայի Հայերը, երբ գաղթել փափաքեցան, բնական է որ առաջին անգամ իբրև նոր բնակավայր՝ խորհեցան մօտակայ Ազախի և Ղրիմի այն մասերուն վրայ, որոնք արդէն հայաբնակ էին։

Գաղթելէ առաջ ուզեցին առնել Ճենովացիներու հաւանութիւնը, ինչ որ ստացան 1299ին, վասնզի Ճենովացիք գիտէին թէ Հայերը ո՛րքան կրնային օգտակար ըլլալ իրենց։

Միւս կողմէն, Թաթարները, որոնք նոյնպէս գնահատած էին Հայերու ընդունակութիւնները և կարողութիւնները (1), ընդդիմացան Հայերու գաղթին։

Հայերը, ստիպուեցան զէնքով ճամբայ բանալ Թաթարներու մէջէն, Ախսարայէն մինչեւ Ճենովական Ազախ (Ազաք = Ազով) քաղաքը, ուրկէ անցան՝ 1330ին՝ թերեւս ծովի ճամբով Ղրիմ, այդ թերակղզիին մէջ Ճենովական իշխանութեան տակ գտնուող Քէֆէի շրջակայքը հաստատուելու համար։

Ըստ Հ. Մինաս Վրդ. Բժշկեանի, (Ճանապարհորդութիւն, 329), անոնք նախ կանգ առած են Քէֆէի մօտ Նախչիվան «անուանի» «վայելչադիր» և «աղբիւր բարեջուր և լճակ սակս անասնոց» ունեցող գիւղը, որուն վայրին գեղեցկութեան շատ հաւնելով, կոչած են Նախիջեւան։

(1) Այս գնահատութեան մէկ ապացոյցը կը յիշէ Ալիշան, (Սիսական, 440): Ան կը պատմէ թէ 1355–8ին Ազախ գացող Հայ վաճառականներ գերի ինկած են Վենետիկցիներու ձեռքը եւ խնդրած են այդ կողմերուն իշխող Պէրտի Խանէն, որ գոնէ իրենց կողոպտուած ապրանքներուն մէկ մասը դարձուի իրենց: Թայտուլա Խաթուն, կինը Ոսկէ Հորդայի վեհապետ Ջանի Բէկի (1340–1357, վերը էջ 248). որ անձնական գանձէն կը վճարէ անոնց վնասին մեծ մասը, ինչ որ ցոյց կու տայ թէ Հայերու առեւտրական ծիրերը որ աստիճան կը գնահատուէին եւ իշխանութիւնները ինչպէս հոգածու էին, որ անոնք իրենց առեւտրական յարաբերութիւնները չդադրեցնէին իրենց երկիրին հետ:

Նոյնպէս անոնք կը հաստատուէին Քէֆէի մօտակայ Կազարաթ գիւղաքաղաքը և Քէֆէէն 36 մղոն հարաւ ծովեզերեայ Սուտաղ կամ Սոլտայա քաղաքը։ Սակայն անոնք մեծ բազմութեամբ հաստատուեցան Քէֆէ, որ Ճենովական տիրապետութեան տակ էր։ Լ. Մազերեանց, (Արաքս, 1889, Գիրք Ա. էջ 126-7), փաստելու համար թէ որքան խիտ կ'ապրէին Հայերը Կաֆայի մէջ, կ'ըսէ թէ Թէոդոսիայի արդի մաքսատան տեղին մէջ, այն հրապարակին վրայ որ հազիւ 150 քառակուսի սաժէն է, մինչեւ 1889 մնացած էին կանգուն հինգ փոքր եկեղեցիներ, որոնցմէ մէկը կը ներկայացնէր հին հայ քանդակագործութեան գեղեցիկ յիշատակարան մը, տասներու առաքեալներու խորաքանդակ պատկերներով կաթողիկէին վրայ. Թերեւս անիկա մայր եկեղեցին եղած ըլլայ (յետոյ ռուսական եկեղեցի եղած)։ Մնացեալ չորս եկեղեցիները կը ծառայէին իբրեւ մթերանոցներ։

Ասոնցմէ զատ Քէֆէի մէջ կային ուրիշ շատ հայ եկեղեցիներ (1) որոնցմէ գէթ երկուքը, Ս. Հրեշտակապետ և Ս. Սարգիս, նշանաւոր էին իրենց փառաւոր շէնքերով և հին հայկական ճարտարապետութեամբ։ Այս երկու եկեղեցիները շինուած էին ԺԲ. դարուն (Տես. Արաքս, 1889, Ա. 127)։

Հայերը կը յուսային Ճենովական հովանիին տակ հանգիստ գտնել և ապահով ապրիլ։

Դժբախտաբար, զիրենք նեղող բարբարոսները, հոն ալ հասան։ Մոնկոլները, Հայերէն ետք, իրե՛նք ալ մտան Ղրիմի թերակղզին 1344ին և առաջացան մինչեւ Սուտաղ. և ապա պաշարեցին Քէֆէն (2), բայց չկրցան գրաւել նաւահանգիստները և բերդաքաղաքները՝ մինչև 1454։

Ճենովացիք, որոնք իրենց կողմնակից ունէին Հայերը, ամրացուցին Սուտաղը ինչպէս նաև Քէֆէն, որուն բերդէն դուրս բնակող Հայերը, իրենց ծախքով, Ճենովական բերդին կից նոր բերդ մը (Ֆռէնկ Հիսար) շինեցին և ընդարձակեցին Քէֆէի բերդը (Հ. Մինաս Վրդ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն, 332—333)։ Հայոց ընծայած օժանդակութեանը համար, Ճենովացիք երախտապարտ մնացած են, վասնզի 1455 Սեպտ. 6ին կառավարական սա որոշումը արձանագրած են.

«Այս երկիրը մեծ մասամբ բնակուած է Հայերով, որոնք մեր հաւատարիմ եւ ազնիւ վաճառականներն են» (Տես. Արարատ, 1911, էջ 880)։ Արդարեւ Հայերը մեծ օժանդակ մը եղած են Ղրիմի Ճենովական ստացուածքներուն պաշտպանութեան համար։ Անոնք, Հայերը, որպէս քրիստոնեաներ, մեծ նեցուկներ կը նկատէին իրենց տեւական մաքառումին մէջ, ընդդէմ Խանե-րու (Լ. Մաչերեանց, Արաքս, 1889, Ա. 127)։ Ճենովացիք, Մոնկոլական վըտանգին առաջքը առնելու համար, խոհեմութիւն համարեցին տարեկան տուրք մը տալ անոնց և պահել իրենց տիրած հողերը։

(1) Ատեն մը անոնց թիւը 30ի բարձրացած էր։ Յետոյ իջած էր 4ի։

(2) Կաֆայի մէջ գրուած Աւետարանի մը յիշատակարանին գրիչը կ'ըսէ թէ «**եղեւ գրեալ գրչութեամբ սորա ի թուաբերութեան Հայոց ՉՂԳ (1344) եւ դառն ժամանակիս, ի պաշարմանն ԿԱՖԱՅԻՆ...**» (ՀԱ. 1926, 237, տես. նաեւ Տաշեան, էջ 680)։



Հայերը, մանաւորապէս Քիփչաք-Ճենովական բարւոք յարաբերութիւնները որքան տեւեցին, քիչ շատ անդորրութիւն ունեցան և Ճենովական քաղաքներու, մանաւանդ Սուրխաթի, Կաֆայի, Կալաբաթի մէջ ապրեցան բարօր, տարածուեցան Ղրիմի թերակղզիին ներսերը և հաստատուեցան Ճենովացիներու տիրապետութենէն դուրս գտնուող Ղրիմի զանազան քաղաքներուն մէջ։

ԺԴ. դարուն Ղրիմ կը հասնի իր բարգաւաճման գագաթնակէտին, և թերակղզիին ամէն կողմերը կը տարածուին Հայերը՝ գլխաւոր կեդրոն ունենալով Քէֆէն։

Այդ շրջանին Հայերու թիւը կը հասնէր կէս միլիոնի, «իշխանք և ազնիւք և հասարակ ժողովուրդք» միասին (Քուշներեան, 82)։

1330էն 1456ի շրջանի, Ղրիմի Հայերը կ'ապրէին իրենց ոսկեդարը։

1330ին Անիէն հոն գաղթողները, որ մեծ բազմութեամբ եկած էին, որոշ է որ աւելի բազմաթիւ էին քան անկէ առաջ հոն հաստատուողները։

Ասոր անժխտելի փաստը այն է, որ անոնք կրօնական դաւանութեամբ ենթարկուած էին Սխսարայի, Աժտէրխանի և Կովկասեան լեռներէն անդին գտնուող Հայերու հոգեւոր պետերուն, ինչպէս կը հաստատուի 1330էն ետքը գրուած բազմաթիւ ձեռագիրներու յիշատակարաններով, որոնց մէջ օրուան կաթողիկոսին հետ կը յիշատակուի անունը «արհի վերադիտողի ամենայն հիւսիսական կողմանց» եպիսկոպոսի մը «օրհնեալ քահանայապետ» կոչումով (1)։

Հայերը, Թաթարներու հետ վարուելու վարժ առեւտրականներ անշուշտ նաև Ճենովացիներէն քաջալերուած, մղուեցան ծովեզերքէն դէպի ներս թերակղզիին ներքին մասերը թափանցելու, և Քէֆէէն դուրս տարածուեցան մինչև Ղարապազար (= Խարասու), Սուրխաթ (=Էսկի Ղրիմ), Կազարաթ և հաստատուեցան մեծ բազմութեամբ՝ Ճենովացիներու Սոլտայան (= Սուղտա = Soldaja) քաղաքը և փոքր խումբերով ալ Եւպատորիա (Կէօզլաւ), Օր (1) եայլն։

Նոյնպէս հայաբնակ եղան Քէֆէի մօտաւոր բազմաթիւ գիւղօրայք,

(1) Ստեփանոս անուն եպիսկոպոս մը կը յիշուի այս տիտղոսով՝ 1347էն 1400 շրջանին գրուած 6—7 ձեռագիրներու մէջ, իրեն հետ իբրեւ «աթոռակալ» կամ «աթոռապահ» յիշատակուելով, Պետրոս (1347—8) եւ Յովհաննէս (1350) անուն կրօնաւորներ, որոնք Ղրիմի շըրջանակը կը նկատուէին իբրեւ փոխ-առաջնորդներ կամ կաթողիկոսական նուիրակ կամ Ճենովացիներու քով՝ կաթողիկոսի ներկայացուցիչ, ըստ Հ. Ներսէս Վրդ. Ակինեանի (ՀԱ. 1935, 35)։
1416ին իբրեւ «Արհի եպիսկոպոս ամենայն Հիւսիսայնոց» կը յիշուի Կիւրեղ (**Նոտարք**, 48—49) եւ տասը տարի ետք (1426—8), առանց այս տիտղոսին, իբրեւ եպիսկոպոս կը յիշուին Յովսէփ Անկիւրացի եւ իբրեւ նուիրակ եւ եպիսկոպոս Կարապետ (1428—30 եւ Մաղաքիա (1439—48)։ Պէտք է նկատի ունենալ թէ այս հայադաւան եպիսկոպոսներէն անջատ էին 1328ին Յովհաննէս ԻԲ. Պապէն հաստատուած Հայ Կաթոլիկ եպիսկոպոսութիւնը, ենթակայ Նախիջեւանի Հայ Կաթոլիկներու կամ Միաբանողներու Արքեպիսկոպոսութեան, որ ԺԴ. դարուն առաջին քառորդէն հաստատուած ըլլալ կը թուի, վասնզի կը յիշուին՝ 1323ին Թադէոս Եպս. Վրացի, 1334—1357 Օգոստոս 23 +, Թադէոս Եպս. Կաֆացի եւ ուրիշներ։

(2) Օր. = տիւ նշանակութեամբ հայկական կոչումով վայր մըն էր՝ ըստ Քուշներեանի (107), որ հայանուն **Ջուրջուր** փոքր ջրվէժ մըն ալ կը յիշատակէ (նոյն)։

ինչպէս Կէօք Թէփէ, Սուլթան-Սալա, Նախիջեւան (յետոյ Քարնիչքա), Օրթալու կամ Օրդալան, Թօփլու, Ղզլու, Սովուք-Սու։

Այսպէս, Քէֆէէն դուրս շրջակայ բլուրներու վրայ և հովիտներու մէջ, մինչև Սուրխաթ և Սուրխաթէն մինչև Ղարապազար (Խարասու) ընդարձակ տարածութիւն մը ծաղկեցուցին։

Անոնք շինեցին 100.000 տուներ, բազմաթիւ եկեղեցիներ և վանքեր։

Եկեղեցիներու թիւը մինչև 1000ի կը հասցնէ հին յիշատակարան մը (Բուշներեան, 83) (1)։ Իսկ վանքերուն թիւը (2) գոնէ տասնեակի մը կը հասնէր։

Հին Ղրիմի մէջ գրուած Յայսմաւուրքին յիշատակարանին մէջ՝ անոր գրիչը գաղութին բարգաւաճման վրայ գաղափար մը տալու համար կ՚ըսէ՝ թէ «Յայնժամ զօրացաք մեք եւ բազմացաք, եւ շինեցաք զգիւղն եւ զգաւառս՝ իշխանք եւ ազնուականք, ի Ղարապազարէն սկսեալ մինչեւ ի Սուրխաթ եւ ի Թէոդոսեայ, ի լերինս եւ ի դաշտս լի արարին վանօրէիւք եւ եկեղեցիւք եւ շինեցաք տունք 100,000 եւ զեկեղեցիս հազար, եւ ի անէ հոնականաց պարսպեցին ի քաղաքն Թէոդոսիա»:

Կաֆայի (կամ Քէֆէի) հարաւակողմը, դէպի սարաւանդները կազմուեցաւ նոր քաղաք մը՝ Սուրխաթը՝ բիւրաւոր Հայ բնակիչներով, գրեթէ զուտ Հայկական, զոր օտարները կը կոչէին Ծովային Հայաստան (Armenia Maritima)։

Հոն այդ օրերուն (1338) կը վերակառուցուէր Ս. Խաչ անունով երբեմնի Ս. Նշան վանքը, որ աւերուած էր։ Յովհաննէս վրդ. Սեբաստացի զայն կը վերածէր ճեմարանի, կամ ուսումնավայրի մը՝ որուն շուրջը խցիկներու մէջ կամ ձեռագիրներուն բացատրութեամբ «ի հողատներս վերին» կրօնաւորներ կը գրչագրէին և կ՚օրինակէին ձեռագիրներ։ Այդ գրչագրութիւններէն բաւական քանակութեամբ փրկուած և մեզի հասած են։

Անիի գաղթականներուն Ղրիմ հասնելէն և Ս. Խաչ վանքին վերաշինութենէն ետք, անտարակուսելի է որ հոն ուսումնական շարժում մը սկսած է այդ և ուրիշ վանքերու մէջ։ Այդ վանքերը ունէին վարդապետներ, որոնք կը դասախօսէին քանի մը տղոց, ինքնապաշտպանութեան բնազդով, վանքի

(1) Միայն Թէոդոսիայի կամ Քէֆէի մէջ Հայերու թիւը ատեն մը 100,000ի բարձրացած է ըսուած է: Իսկ 1475ին երբ Քէֆէն գրաւուեցաւ Թուրքերէն, ընդհանուր բնակչութեան թիւը 70,000ի իջած էր, որոնցմէ 30,000 միայն Հայեր: Քէֆէ, որ անշքանալ սկսած էր, այդ շրջանին ունէր 24 եկեղեցիներ. մինչ առաջ՝ մինչեւ 45ի բարձրացած էր անոր եկեղեցիներուն թիւը (Բուշներեան, Նոյն, 138—141):

(2) Կը յիշուին, ԺԴ. դարուն, Ս. Յովհաննէսի կամ Պետրոսի, Ս. Լուսաւորիչի, Կամենակի Ս. Աստուածածին, Խզլու գիւղի Մողկան Ս. Ստեփանոսի, Ս. Անտոնի, Ս. Փրկիչի, Ս. Գէորգի, Ս. Խաչի (Ս- Նշան), Հռիփսիմէի եւ այլն վանքերը:

Հայ Կաթոլիկներն ալ Ղրիմի մէջ ունէին հայադաւաններէն յափշտակուած Վարդաւանի Տիրամօր վանքը, որ հայկական ծագում ունէր, եւ Հայ Միաբանողներ՝ երեք վանքեր — Ս. Նիկողոս, Ս. Պետրոս-Պօղոս եւ Ս. Յակոբ (Արշակ Ալպօյաճեան, Պատմ. Հայ Գաղթ. Ա. 302.:



Հռոմ և իր սպասարկուները, որոնք Ղրիմի մէջ ոտք դրած էին, ոչ միայն վանքեր ունէին, այլ նաև ընդհանուր ուսումնարաններ, (Mortrier. ՀԱ. 1909 324) և կրնային օգնութիւն ստանալ Եւրոպայի իշխաններէն, վասնզի ԺԴ. դարու կէսերուն՝ Կաֆայի Պանդուխտ Եղբարց վանքը Յունաստանի գաւառական մեծաւորին կը յանձնուէր և թերեւս ասոր իբրև հետեւանք՝ Վոնիֆակ Թ. Պապը 1398 Յունիս 1, ինչպէս 1399 Ապրիլ 28 կոնդակներով, Ղրիմի կաթոլիկ վանքերը Հայաստանի գաւառահօր իշխանութենէն հանելով՝ ուղղակի Հռոմի ընդհանուր մեծաւորութեան կ՚ենթարկէր (Ազգապատում, 2016)։

Հայերը պարտաւորուած էին իրենց ուժերը ամփոփել և զօրաւոր յարձակողականի մը դիմակալել։

Ասոր համար՝ իրենց կարելին ըրած են իրենց տկար ուժերովը վանքերու մէջ ուսուցման աշխատելով։

Նոյնպէս կը յիշուին վարժապետ քահանաներ,— ինչպէս Սուրխաթի մէջ գտնուած են — որոնք եկեղեցւոյ մանկանց ուսում կու տային։

Բայց որչափ ատեն որ Ճենովացիք զօրաւոր էին, Հայերը անզօր էին։ Երբ անոնք տկարացան և կաթոլիկները Ղրիմէն հեռանալ սկսան, այն ատեն Հայերու մէջ ոգեւորութիւն տեսնուեցաւ։ Սարգիս Վրդ. անուն Կաֆացի վանական մը, ԺԵ. դարուն Ա. կէսին կը նորոգէ Ս. Անտոնի հնաւուրց վանքը, և կը հաւաքէ նոր միաբաններ, կը բանայ դասարան և կ՚ուսուցանէ։ Այս դպրոցը, 1425էն 1450 և թերեւ մինչեւ 1475՝ Օսմանեան գրաւումը և գաղութին անշքացումը, շարունակուած է։

Այսպէս, գաղութին նիւթական բարեկեցիկութեան և կաթոլիկ կրօնական հաւատածաւալ գործունէութիւնը, խթան եղած են մտաւորական գործունէութեան, երբ գաղութը կ՚ապրէր ճոխութեան մէջ։

Ս. Խաչ վանքը, որուն շուրջը հաւաքուած էին Հայերը, իր անունը տուաւ շրջակայ հայաբնակ վայրին և նոր կազմուած քաղաքին, որ Սուրխաթ կոչուած է Ճենովացիներէն՝ աղաւաղելով Հայերու Սուրբ Խաչ բառերը, ինչպէս կը կարծէ Փրոֆ Սմիրնով (Հ. Բ. Վրդ. Բուշներեան, Պատմ. Գաղթականութեան Խրիմի Հայոց, 107), մինչ Թաթարները նոյնիսկ 1266ին, երբ այս քաղաքը Օրան-Տէմիրի ժառանգութիւնը կը կազմէր, Ղրիմ (= Քռիմ = Էսկի Ղրիմ) կը կոչէին և իրենց մայրաքաղաքը ըրած էին։

Սուրխաթի մէջ, զոր հայ գրչագիրներու յիշատակարանները ԺԴ. դարու կէսերէն սկսեալ «մեծ և հոյակապ» և երբեմն նաև «հռչակաւոր քաղաք» (1) կամ «մայրաքաղաք» կը կոչեն, Հայերը շատ բարգաւաճ և ճոխ կեանք մը ունեցած են։

Սուրխաթի, Չարխափան Ս. Աստուածածին եկեղեցիին աւերակները, համանուն կամուրջին մօտ, և շատ մը բաղնիքներու և մզկիթներու աւերակները և ստորերկրեայ լայն քարուկիր անցքերը, ցոյց կու տան արդարեւ քաղաքին երբեմն հոյակապ ըլլալը։

Իսկ Սուտաղ, իր բազմամարդ հայութեամբ «Մեծ Հայաստան» կոչուած

1) Թաթարներն ալ նոյն ածականը կու տային՝ «Սէրայ» կոչելով այս քաղաքը:

*է օտարներէն, անշուշտ տեսակ մը անգիտութեամբ, ինչպէս կը տեսնուի՝* 1432 *թուականով Եւգինէոս Դ. Պապին մէկ կոնդակէն, ուր կ՚ըսէ թէ* «In partibus Armeniæ majoris, in quibus Soldajensis ecclesia sita est», (*ի կողմանըս Մեծին Հայաստանու, ուր է եկեղեցին Սոլտայեցւոց*). (*տես. Բրիւն,* 58, *ի Քուշներեան,* նոյն, 121)։

*Քէֆէի մէջ, որ Հայերու կեդրոնավայրն էր, անոնք իրենց ճարտարութեամբ և առևտուրի ընդունակութեամբ սիրելի կը դառնան Ճենովացիներուն և* նախարար, պարոն *և* իշխան *տիտղոսներով կը պատուուին,* (*հմմտ. Հ. Մինաս Վրդ. Բժշկեան,* Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, 332 *և Հ. Ք. Քուշներեան,* Պատմ. Դաղթականութեան Խրիմու Հայոց, 120)։

*Ճենովացիք Հայերուն կը շնորհեն առանձին հայկական զինուորներ և քաղաքապահ ոստիկաններ* (gendarmerie) *ունենալու իրաւունք։ Այդ զինեալ խումբերը իրենց զօրագլուխով պատուար կը կանգնին Թաթարներու յարձակումներուն* (*Քուշներեան,* նոյն, 120)։

*Այս տեսակ առանձնաշնորհի մը յիշատակութեան կը հանդիպինք նաև Պալըգլավայի մէջ, որ* 200 *մղոն հեռու էր Քէֆէէն, և կը գտնուէր Ղրիմի արևմտեան եզերքին վրայ։ Ճենովացիք, անոր տիրելէ ետք, ամրացուցած էին քաղաքը, շինելով բերդ մը, զոր կը կարծուի թէ տուած են Հայերուն, պաշտպանելու համար նաւահանգիստը, որ մինչև վերջը իրենց ձեռքը մնաց։*

*Ճենովացիք, նոյնպէս, Հայ կողմնապահ կամ կուսակալ իշխան մը նըստեցուցած են Գազարաթ գիւղաքաղաքը, որ զուտ հայաբնակ էր երբեմն։ Այդ Հայ իշխանը՝ Մուղալենց տոհմէն, Ճենովացիներու ձեռքին տակ կը պահպանէր իր զօրքով աւանը և Սուրխաթը թաթարական յարձակումներուն դէմ, ինչպէս կը տեսնուի այն յիշատակարանէն, որ կը ներկայացնէ Հ. Մ. Վ. Բժշկեան,* (Ճանապարհորդութիւն, 318)։

*Այս տեսակ շնորհներ թերևս Հայք ուրիշ տեղեր ալ կը վայելէին, բան մը որ կը քաջալերէր Հայերը Քիփչախներու երկիրէն անցնելով, գալու Ղըրիմ, և լեցնելու այս երկիրը, որ բաւական ստուար հայ բնակչութիւն մը ունեցաւ այդ շրջանին։*

*Անոնք այդ արգաւանդ և բարեբեր երկիրին և անոր վաճառականական կայան բանուկ նաւահանգիստներուն և անոնց անմիջական մօտերը գտնուող շրջաններուն մէջ տեղաւորուեցան և վայելեցին շատ մը առաւելութիւններ և դիւրութիւններ։*

*Անոնք մեծ կարևորութիւն ստացան և պատկառանք ներշնչեցին և Ճենովացիք ամէն ջանք ըրին զանոնք սիրաշահելու և պաշտպանելու համար։*

*Ասոր իբրև փաստ կը բաւէ յիշել թէ Ճենովացիք իրենց պաշտօնական թուղթերու մէջ կը յանձնարարէին* «առ անուանեալ ՊԱՇՏՕՆԱՐԱՆ ԽԱԶՐԱՑ (Officium Gazariax) պաշկառ կալ եւ չանգիտել ի Հայոց, զի մի յայլազգիս ձեռնտուեալ ընկճեսցին զինքեանս»:

*Սակայն այս ճոխութեան և բարգաւաճման շրջանն ալ տևական չեղաւ։*

*Երբ Լէնկ Թիմուրի առաջնորդութեամբ, Եօզպէք Թաթարները Ասիոյ մէջ կը զօրանան և արևմուտք կ՚արշաւեն Ասիոյ խորերէն, Ղրիմ դարձեալ տակնուվրայ կ՚ըլլայ։*



1391*ին, Թաթարները կը հալածեն Քիփչաքները և կը տիրեն Ղրիմի մեծագոյն մասին և հոն կը հաստատեն իրենց հպատակ և ենթակայ խանութիւն մը, սակայն Ճենովացիներուն տիրած վայրերը յափշտակել չեն փորձեր, հաւանօրէն դիւանագիտութեամբ, անոնց կարևորութիւնը զգալով, և կը բարեկամանան անոնց հետ, և թոյլ կու տան որ անոնք մինչև* 1468 *մնան իրենց շահաստաններուն մէջ։ Իսկ Եօզպէք Թաթարներու հիմնած Ղրիմի անկախ խանութիւնը, որուն վեհապետները «Քէրէյ» տիտղոսը կը կրէին, լաւ վարուած են Հայերու հետ, այնպէս որ ԺԴ. դարուն վերջերը և ԺԵ. դարուն սկիզբները, Լէնկ Թիմուրի արշաւանքներուն առեն ևս, Վոլկայի ափերէն ուրիշ Հայեր եկած են ստուարացնել Ղրիմի հայ գաղութը, ապաստանելով իրենց ազգակիցներուն քով։*

*Քէրէյներու խանութիւնը շարունակուեցաւ մինչև ԺԵ. դարուն կէսերը։ Այս Թաթար խաները մինչև* 1454 *չկրցան ամբողջովին հնազանդեցնել Ղրիմի Քիփչաքները, որոնք Ճենովացիներու օգնութեամբ դիմադրեցին անոնց և չթողուցին որ անոնք տիրեն ամբողջ Ղրիմի։ Սակայն* 1434*ին Քիփչաքները զօրացան և Հաճի Քէրէյ Խան* (1448—1475) *տիրեց հիւսիսային Ղրիմի։ Իր մահէն վերջ իր վեց զաւակները գահուն յաջորդութեան համար, իրարու դէմ կռիւ մղեցին և վեցերորդը՝ Մէնկլի Քէրէյ՝ յաջորդեց իր հօրը, Ճենովացիներու օգնութեամբ,* 1448*ին։*

*Քիփչաքները, Հայտար Քէրէյն ըրին խան, և Քիփչաքներու իշխանութիւնը բաժնուեցաւ երեք խանութիւններու, որոնք էին Ղրիմ, Աժտէրխան և Ղազան։*

*Այս շրջանին, որ* 1391*էն* 1468 *կը տևէ, մասնաւորապէս Ճենովական տիրապետութեան ծիրէն դուրս ապրող Հայերը նեղութիւններու կ՚ենթարկուին, ինչպէս նաև Ճենովացիները՝ որոնց հողերը հետզհետէ կը սեղմուին և կը պզտիկնան։*

*Հայերը՝ ամէն կերպով զօրավիգ և նեցուկ կը հանդիսանան Ճենովացիներուն։*

*Ասով հանդերձ՝ մեծ թիւով Հայեր, անապահով զգալով իրենք զիրենք, կը հեռանան Ղրիմէն։ Մէկ մասը կ՚անցնի Պոլսի Ճենովական թաղը՝ Ղալաթիա և ուրիշներ, մասնաւորապէս այն Հայերը, որոնք Ճենովացիներուն հաճելի ըլլալու համար, կաթոլիկութեան յարած էին՝ ԺԵ. դարու առաջին քառորդին իսկ, կը գաղթեն կաթոլիկ երկիրներ և կաթոլիկութիւնը կ՚անհետանայ Ղրիմի մէջ* (*Հ. Գր. Վրդ. Գալէմքեարեան, ՀԱ.* 1911, 453)։

*Այնպէս որ* 1433*ին, Ղրիմի Հայերը Հռոմի հետ որևէ կապ չունէին այլևս,* (նոյն)։

*Տիրող անապահովութիւնը պատճառ կ՚ըլլայ որ հետզհետէ պակսի Հայերու թիւը, վասնզի* 1468*ին, Քիփչաք-Ճենովական յարաբերութիւնները թշնամական երևոյթ կ՚առնեն. իրենց նախընտրած Մէնկլի Քէրէյը, Քիփչաքները կը հրաժարեցնեն և Հայտար Քէրէյը խան կ՚ընեն։ Ասոր որդին կը փեսայա-*

նայ Շիրին Միրզայի, որ զայն խաբէութեամբ զինքը հովանաւորող Ճենովացիներուն կը յանձնէ։

Ասկէ զայրացած՝ Հայտար Քէրէյն Խան կը դիմէ Ֆաթհի Սուլթան Մուհամմէտի օգնութեան։

Օսմանեան Սուլթանը Կէտիկ Ահմէտ փաշա ծովակալը կը ղրկէ Քէֆէ 1475ին։ Թուրք ծովակալը կը պաշարէ քաղաքը և 20,000 ոսկի կ'առնէ անկէ իբրեւ տուգանք և չորս Ճենովացի իշխանաւորներ և Մէնկլին կը ղրկէ Պոլիս։

Հայերը, որոնք Քէֆէն պաշտպանած էին մեծ եռանդով, իրենց կեանքին համար ապահովութիւն ստանալէ ետք, քաղաքը յանձնեցին Թուրքերուն՝ 1475ին։ Թուրքերը իրենց երդումը դրժելով՝ ջարդեցին Հայերու մէկ կարեւոր մասը և մեծ թիւով ալ Կ. Պոլիս փոխադրեցին։

Այս աղէտէն փրկուողներէն կարեւոր մաս մըն ալ անցաւ Լեհաստան։

Մէնկլի Քէրէյ յանձն առաւ որ Օսմանեան Սուլթանին հովանաւորութեան ենթարկուի Ղրիմ և անոր հաւանութեամբ միայն գահակալեն Ղրիմի խաները եւ այս պայմանով դարձաւ Ղրիմ, ուր իր յաջորդներն ալ միեւնոյն պայմաններով իշխեցին մինչեւ ԺԸ. դարուն վերջերը, երբ արդէն անչքացած եւ մեծ մասամբ ցրուած էր Հայ գաղութը։

⁂

Յիշուեցաւ որ Ղրիմի Հայ գաղթականները կամաց կամաց տարածուած են նաև դէպի Հիւսիս-Արեւմուտք, Տնիեբերի հովիտը և անկէ ալ անդին։

Արդարև, ԺԱ. դարուն Հայերը թափանցած էին Կարմիր Ռուսիա, Լեհաստան, Թրանսիլվանիա, Հունգարիա և Խրուաթիա (տես. ՊՀԳ. Ա.336-37) բայց ամէնէն առաջ աշխարհագրական կարգով Բոտոլիա կամ Ուկրանիա, մանաւորապէս անոր գլխաւոր քաղաքը Քիեւ հաստատուած են, վասնզի այս քաղաքը մաս կը կազմէր ԺԱ. դարուն Կարմիր Ռուսիոյ (արդի Կալիցիոյ արեւելեան մասը) որուն իշխանները իրենց տիրապետութիւնը տարածած էին մինչև Սև Ծովի եզերքները (ՊՀԳ. Ա. 338), ուր փոքրիկ Հայ գաղութներ կային արդէն (նոյն), ինչպէս կը հաստատեն 967 թուականով արձանագրութիւններ, որոնք գտնուած են Աքքերմանի (= Չէթաթէ-Ալպա) մէջ (Արազ Տարեգիրք, 1933, էջ 162 Գրիգոր Կոլլաւի (Gr. Gollaw) Bisericlle Armeno de prin Turile Romane. 1912. Bucaresti գործը էջ 3)։

Աքքերման, առաջին հանգրուանն է Բոտոլիա և Լեհաստան գացող Հայերուն, որոնք հոն եկած էին Փոքր Ասիայէն և Կ. Պոլիսէն և անոր դրացի վայրերէն (Լ. Մ. Մելքիսէթ-Բէկով Աքքերմանի Հայերը․ ԱՐԱՐԱՏ, 1911․879)։

Ինչպէս քանիցս յիշատակուեցաւ գիրքիս բազմաթիւ էջերուն մէջ, իրարու յաջորդող աղէտներ — Սելջուկներու Հայաստան հասնիլը և Բագրատունեաց իշխանութիւնը ընկճելով՝ զայն իրենց տիրապետութեան ենթարկելը (1045) Անիի գրաւումը Ալփասլանի կողմէ (1065) և Մանազկերտի պարտութիւնը (1071) — պատճառ եղան որ բազմաթիւ Հայեր հեռանան Հայաստանէն և



երթան ստուարացնելու նախապէս հաստատուած Հայկական գաղութները կամ նոր գաղութներ հաստատելու։ Այս արշաւանքին հետեւանքով գտնուած են Հայեր, որ Տերպենտի դուռնէն անցնելով առաջացած են մինչև Վոլկայի ստորին աւազանը, Հարաւային Ռուսիոյ դաշտերը և Ղրիմ (Յ. Զաւրեան, նոյն, 79)։

Նոյնպէս այդ տեղերը Հայեր երևցած են՝ Թրակիոյ և Պուլկարիոյ ճամբով, վասնզի Բիւզանդիոնի կայսրերը կը շարունակէին Հայերը մղել դէպի Հիւսիս, իրենց սահմանները պաշտպանելու համար Կեդրոնական Եւրոպայէն Հարաւ խուժող բարբարոսներու դէմ, որով Հայերը Հարաւէն կը մօտենային Հարաւ-Արեւմտեան Ռուսիոյ և Ղրիմի։ Անոնք այնտեղ այնքան բազմացած էին որ այդ վայրը կոչուիլ սկսաւ ինչպէս տեսանք՝ — Armenia Meritima (= Ծովային Հայաստան)։

Հարաւէն, Բիւզանդական երկիրներէն եկող այս Հայերը, զուցէ օրթոտոքսացած կամ Քաղքեդոնական էին։

Սելջուկ արշաւանքին յաջորդող Մոնկոլական արշաւանքները, որ ԺԲ. դարուն սկսան, Հայաստանէն և Փոքր Ասիայէն դարձեալ մեծ թիւով Հայերու հեռանալուն պատճառ եղան։ Այս անգամ մեկնողներուն մէկ մասը անցաւ Սև Ծովէն և Փոքր Ասիոյ հանդիպակաց նոյն ծովին Հիւսիսային եզերքները ապաստանեցաւ։

Այս գաղթականներուն համախմբման գլխաւոր կեդրոնները եղան Աքքերման, Թէոդոսիա և Սուլտաղ (Լ. Մ. Մելքիսէթ-Բէկով. նոյն)։

Այդ ծովեզերքները ունէին ներքնաշխարհ մը, ուր այդ ԺԱ.—ԺԳ. երեք դարերուն կը խմորուէին շարժումներ, և կը կազմակերպուէին տէրութիւններ, որոնց հետ Հայերը առնչութիւններ ունենալ սկսած էին, ինչպէս բացատրուած է (ՊՀԳ. Ա. 336—7)։

Աւելորդ է կարծեմ ըսել թէ Ռուս ազգը, ինչպէս շատ մը ազգեր, զանազան ձեւափոխութիւններէ անցած է մինչև որ այսօրուան դիմագիծը առած է։

Ա. դարուն Տնիեբէրի աւազանին մէջ հաստատուած են Սլաւներ, որոնք ենթարկուած են Կոթերու և Հոներու գերիշխանութեան և կրած՝ Ռուս անուանով ճանչցուած Սքանտինաւեան ցեղախումբերու ազդեցութիւնը։ Ասոնք Արեւելեան Եւրոպայի անծայրածիր տափաստանները ճեղքող գետերէն և առեւտրական ճամբաներէն օգտուած և իրենց ազդեցութիւնը տարածած են։ Սքանտինաւեան ծագումով այս ցեղերու պետերէն մէկն էր Ռուրիք (տես. վերը 348) որ իշխանութիւն մը հաստատած էր։ Անոր ազգականներէն Օլէկ (կամ Հէլկի) իշխանութիւնը ձեռք առնելէ յետոյ տիրած էր Սմոլէնսքի և Քիեւի ու արշաւած՝ նոյնիսկ դէպի Կ. Պոլիս և ինքզինքը պարտադրած էր Բիւզանդական կայսրութեան և զայն ստիպած էր նկատի առնել իր ուժը մանաւանդ որ յաջողած էր Սլաւ ցեղախումբերը իրեն ենթարկել։ Օլեկի յաջորդը՝ Իկոր (912—945) «Մեծ Իշխան» տիտղոսը կ'առնէ և երկու անգամ Բիւզանդիոնի դէմ պատերազմելէ ետք՝ Սլաւ ցեղախումբի մը դէմ մղած կռիւի մը մէջ կ'սպաննուի։

Իր կինը՝ Օլկա, կը յաջողի գէթ փրկել Քիեւը իր շրջականերով։

Սքանտինաւեան Ռուսերը հետզհետէ կը ձուլուին Սլաւներու հետ և զօրանալով կը դիմեն դէպի Սև ծով։

Օլկա, որ ինչպէս իր ամուսինին սպաննութենէն ետք փրկած էր անոր իշխանութիւնը, երկրորդ անգամ փրկեց տէրութիւնը իր որդւոյն սպաննութենէն վերջ։ Սև ծով հասնելէն ետք անխուսափելի էր որ Ռուսերը յարաբերութեան պիտի մտնէին Բիւզանդիոնի հետ. որուն կղերը այդ հեթանոսներուն մէջ քրիստոնէութիւն տարածել կը փորձէր և յաջողութիւններ ձեռք կը բերէր։ Օլկա իշխանուհին ինչպէս կը յիշուի (ՊՀԳ. Ա. 332) 955ին Պոլիս կ'երթայ և կը մկրտուի։ Իսկ Նովկորոտի Վլատիմիր իշխանը (972—1015) որ Քիեւ հաստատուած էր, այս ուղղութեամբ մեծ քայլ մը կ'առնէ ամուսնանալով Բիւզանդիոնի Վասիլ Ա. Հայ կայսեր քրոջ հայածին Աննայի(1) հետ (988)։ Այս առթիւ Կ. Պոլսոյ Օրթոտոքս Տիեզերական Պատրիարքը, արտօնութիւն տալու համար պայման կը դնէր որ Վլատիմիր ընդունէր քրիստոնէութիւնը և մկրտուէր։ Վլատիմիր համակերպած և Քերսոնի մէջ մկրտուած էր։ Ասիկա պատճառ եղաւ որ Բիւզանդական պալատական բարքերը ներմուծուէին Ռուս այս իշխանին արքունիքը, որ կը փայլէր այն ատեն։

Կ. Պոլսոյ և Քիեւի յարաբերութիւններուն անմիջական մէկ հետեւանքն ալ այն եղաւ որ Յոյն վաճառականներ հաստատուեցան Սև ծովի Հիւսիսային եզերքը, նաեւ Քիեւ և Կ. Պոլսոյ հետ առեւտրական յարաբերութիւններ մշակեցին ու նպաստեցին երկիրին զարգացման։

Անհաւանական չէ որ նոյն շրջանին Հայ վաճառականներ ալ Յոյներու հետեւած ըլլան, դիմելով այդ կողմերը, ինչպէս նաև Հայ Պաւլիկեաններ փորձած ըլլան՝ իրենց կարգին՝ իրենց աղանդը տարածել այդ կողմերը (տես. ՊՀԳ. Ա. 337)։

Օլկա քրիստոնէութեան տարածումը քաջալերած է իր երկիրին մէջ. իսկ Վլատիմիրի մկրտութենէն յետոյ, երկիրին քրիստոնէացումը կատարուած իրողութիւն մը կը դառնար։ Ասկէ քաջալերուած՝ Յոյներ և Հայեր կը փութան հաստատուիլ անոր իշխանութեան հողերուն վրայ։

Այսպէս, յարաբերութիւնները սերտացան եւ զարգացան Սեւ ծովի Ասիական եւ Եւրոպական եզերքներուն վրայ հաստատուած նաւահանգիստներուն միջեւ եւ Հայերը աւելի բազմացան Եւրոպական մասին մէջ։

Հայ վաճառականները չեն գոհացած միայն ծովեզերքը հաստատուելով, այլեւ դէպի ներքնաշխարհն ալ թափանցած են, ինչպէս կը հաստատեն քանդակուած յիշատակարաններ եւ գրաւոր վաւերագիրներ (Քուշներեան, Պատմ. Գաղթ. Խրիմու Հայոց, 82 եւ Խ. Յովհաննիսեան, ՀԱ. 1895, 204։ եւ ՊՀԳ. Ա. 338)։

Հայերը մասնաւորապէս Սեւ Ծովու եզերքը և անոր կռնակը գտնուող ներքնաշխարհին քրիստոնեայ տիրապետութեան տակ գտնուած մասերը աւելի ազատօրէն յաճախել սկսան՝ երբ Մեծն Վլատիմիր Կ. Պոլսոյ հետ գժտեցաւ եւ Բիւզանդական կայսրութեան դէմ կռուեցաւ՝ Թրակիոյ ճամբով Պոլսոյ վրայ արշաւանք մը կատարելով։

(1) Աննա՝ Ռոմանոս Բ. Հայ կայսեր աղջիկը եւ Կոստանդին Ծիրանածին կայսեր թոռնուհին էր (տես. ՊՀԳ. Ա. 343)։



Ռուսները, Բիւզանդիոնի դէմ զէնք վերցնելով, չանգոսնեցին սակայն բիւզանդական մշակոյթը եւ քրիստոնեայ կրօնքը, որոնք Ռուս ազգը կերտեցին՝ դիւրացնելով Սքանտինաւ Ռուսներու եւ բնակակից Սլաւ ցեղախումբերու միաձուլումը։

Մշակութային կապը օր մը պիտի առաջնորդէր նաեւ Ռուս ազգին քաղաքական միութեան, ինչ որ տակաւին իրագործուած չէր այդ շրջանին, վասնզի իրարմէ անկախ եւ իրարու մրցակից բազմաթիւ իշխանութիւններ կազմուած էին Ուրալ լեռներէն արեւմուտք, մինչեւ Պալթիկ ծով։ Անոնք շարունակ իրարու հետ կը կռուէին եւ զօրաւոր ձեռք մը զանոնք չէր կրցած միացնել, թէեւ ձեռներէց իշխաններ փորձեր ըրած էին, ինչպէս Վլատիմիր իշխանը (975—1015), որ Քիեւ հաստատուելէն ետք Լեհերը եւ Սլաւները իրեն հնազանդեցուց։ Եարոսլաւ, իր յաջորդը, որուն «Իմաստուն» տիտղոսը տրըւած էր, երկիրը աւելի ընդարձակեց։

Այս շրջանին Ռուս գաղութներ հաստատուեցան նաեւ Պալթիկի եւ Վոլկայի ափերուն վրայ և Ռուս ազգը տարածուիլ սկսաւ դէպի հիւսիս և արեւելք։ Այս Քիեւեան իշխանութեան վերջին ուժեղ վեհապետը եղաւ Եարոսլաւի թոռը՝ Վլատիմիր Մոնոմախ (1113—1125) որմէ ետք այս իշխանութիւնը բաժան բաժան եղաւ և կազմալուծուեցաւ։

Քիեւի իշխանութիւնը երբ Լեհաստանէն մինչև Սեւ Ծով տարածուեցաւ, արդէն իր սահմաններուն մէջ բաւական թիւով Հայեր ունէր, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, 1009 թուականին Ռուս ցեղապետներ, Հայեր հրաւիրած էին Քիեւ, Լեհաստանի խրոխտ Բոռիսլաւ թագաւորին դէմ, որ իրենց երկիրը ոտնակոխ կ'ընէր (Ն. Քարամզին և Հ. Ք. Քուշներեան, Պատմ. Գաղթ. Խրիմու Հայոց, 187)։

Այս Հայ գաղթականներու առաջին խումբերը, որոնք Սև Ծովի հիւսիսային եզերքները և Քիեւ հաստատուած էին, սովորաբար Բիւզանդիոնի ճամբով հասած էին այդ կողմերը, զի Կովկասի լեռներէն անդին միշտ պէտք է ըսել թէ Հայերուն համար խաւարակուռ աշխարհ մըն էր, որուն միայն մէկ մասը՝ Կասպից Ծովուն Հիւսիսային եզերքը և Վոլկայի ափերը ծանօթ էին սակաւաթիւ Հայերու։ Նշանակելի է որ այս Հայերը բնաւ յարաբերութիւններ չեն ունեցած Ղրիմի, Հարաւային Ռուսիոյ, Լեհաստանի և Մոլտավիոյ գաղթականներուն հետ, որոնք խիստ մեծ հաւանականութեամբ Բիւզանդիոնի ճամբով կը ցրուէին այդ կողմերը։

Ըստ հայ և օտար պատմագիրներու՝ 1062ին, Կարմիր Ռուսիոյ Թէոտոր կամ Ֆէոտոր իշխանը (1) (Դեմետրի որդի = Տիմթրիևիչ), Հայերու դիմած էր (ՊՀԳ. Ա. 388) Բոլովցիներու (2) (Polowzer, որ են Rumaneu = Româ-

(1) Տեմետր Տան (*Demeter Dan*), Ռուբէն Ֆահանան իր «Արեւելեան Հայք ի Պուքովինա» գործին մէջ՝ այս հրաւէրը Անիի Հայոց ուղղող կը ներկայացնէ Ռուսիոյ Իզասլաւ (*Izaslaw*) իշխանը (ՀԱ. 1891, 18)։

(2) Քուշներեան (118) «ընդդէմ Փոլոկցի» իշխանաց կ'ըսէ, Յ. Զաւրեան, (Հայրենիք թ. 5, էջ 76,) «Թաթարներու դէմ» գրած է, ինչ որ սխալ է, վասնզի 1062ին Թաթարները տակաւին շատ հեռու էին Քիեւէն եւ այդ կողմերը չէին հասած,

ռեն) դէմ կռուելու համար և ըստ Տեմեդր Տանի՝ Անիէն եկող այդ 20,000 Հայերը — որոնք ամուր թիկունք եղած էին — իրենց հայրենիքը չեն դարձած, այլ հաստատուած են ի Քիեւ (ՀԱ. 1891, 18)՝ Թէոդոր իշխանի արտօնութեամբ, վասնզի առաջուց պայման դրած էին երեք տարի ծառայելէ ետք՝ անոր երկիրին մէջ իրենց ուզած տեղը բնակելու։

Այս 20,000 Հայ զինուորները կ՚ըսուի թէ՝ իրենց վրայ իբրեւ խորհրդանըշան կը կրէին խաչ ու այս պատճառով կը կոչուէին «Կլիժակ» (Խաչակիր) (1)։

Յ. Զաւրեան, այս պատմութիւնը սուտ աւանդութիւն մը կը նկատէ և ոչ ստոյգ իրողութիւն, ինչպէս ոմանք կարծած են 1062ի կեղծ հրովարտակին վրայ հիմնուելով, վասնզի Անին՝ 1065ին միայն գրաւուած էր Ալփասլանէն և անկէ առաջ անոնք այսքան ստուար թիւով բանակ կազմած՝ չէին կրնար Քիեւ գացած ըլլալ, և ուրկէ՞ անցնելով։

Անդրագոյն թուականի մը, այսինքն 1330/31ին պատահած իրադարձութեան մը հե՞տ չփոթուած է արդեօք այդ գաղթը։

Ասով հանդերձ, կրնայ ըլլալ որ Թէոդոր կամ Իզասլաւ իշխանները, քաջալերելու համար Հայոց գաղթը դէպի իրենց երկիրը, մասնաւոր արտօնութիւններ տուած ըլլայ անոնց (Վ. Բալաչեան, Հայ եւ Ռուս ժողովուրդների Դարաւոր Բարեկամութեան Պատմութիւնից, ԱՅՍՕՐ օրաթերթ, թ. 536, Քուչներեան, նոյն, 188 և Շ. Յարութիւնեան (2), «Ուկրաինական եւ Հայ ժողովուրդների Դարաւոր Բարեկամութիւնը», Ս. Հայաստան, 6 Մայիս 1954)։

1062ին, Թէոդոր իշխանին տուած հրովարտակը, որուն հայ և օտար պատմագիրներ հաւատացած են (ՊՀԳ. Ա. 338), կասկածելի է, ինչպէս իրաւամբ դիտել կու տայ Յ. Զաւրեան, (Հայրենիք ամսաթերթ, Է. տարի, թ. 5, 76), վասնզի Զախարիասեւիչ եպիսկոպոսը, որ վերջին տեսնողը եղած է այժմ կորսուած այդ հրովարտակին, կը հաւաստէ թէ անոր ռուսերէն բնագիրին մէջ թուական չկար, իսկ լատիներէն թարգմանութեան մէջ նշանակուած 1062 թուականը, իր կարծիքով, թարգմանութեան թուականն է, հայկական տոմարով, այսինքն 1062 + 551 = 1613 (3)։

Յ. Զաւրեան, աւելի առաջ երթալով՝ բոլորովին կասկածելի կը դարձնէ հրովարտակին գոյութիւնը, յայտնելով թէ ոչ Թէոդոր կամ Ֆէոդոր Դիմիդըրեւիչ անունով Ռուս իշխան գոյութիւն ունեցած է և ոչ ալ հրովարտակին չնորհները հաստատուած են այժմ (Հայրենիք, նոյն, 76)։

Այս հրովարտակը, որ 1641ին հաստատուած է նաև Լեհ Վլատիսլաւ Դ. թագաւորէն, կրնայ կեղծուած ըլլալ, բայց կասկածելի չէ բնաւ ԺԱ. դարու կէսերուն, Հայերու ներկայութիւնը Կալիցիայէն մինչեւ Սեւ Ծով տարածուած

(1) Ռուսիոյ մէջ հաստատուած առաջին գաղթականներու սերունդները 1340ին Ռուս եւ Լեհ թագաւորութեան միանալէն ետք, Լեհաստանի մէջ ալ ինքզինքնին կլիժակ կը կոչէին՝ ըստ Զաւրեանի, (Հայրենիք ամսաթերթ, նոյն 76—77) եւ վերէն կը նային եղեր այն Հայերուն վրայ, որոնք հետագային ամէն կողմէն գաղթեցին Լեհաստան (Նոյն):

(2) Շ. Յարութիւնեան, Թէոդորի անունը չէ տուած, այլ Քիեւի իշխանը ըսելով անցած է:

(3) Սերժէ Գլինքա (*Serge Glinka*) Ռուս պատմագիրը կը գրէ թէ Թէոդորի հրովարտակը եղծուած էր եւ միայն թարգմանութիւնները մնացած էին:



Կարմիր Ռուսիոյ սահմաններուն մէջ, եթէ տարակուսելի է Թ. և Ժ. դարերէն, Հայերու հաստատութիւնը այնտեղ։

Վաւերագրեալ իրողութիւն մըն է որ այդ դարուն՝ մէկ կողմէն Հունգարիայէն և Պալքաններէն և միւս կողմէն՝ Սև ծովի Հարաւային եզերքներէն, ծովի ճամբով Տաւրիա (=Ղրիմ), Բոտոլիա, Ուկրանիա, Լեհաստան տարածուած և հաստատուած էին Հայերը (ՊՀԳ. Ա. 339)։

Այդ ԺԱ. դարուն Հայերը որպէս վաճառականներ աւելի շատ կ՚այցելէին Ռուս իշխաններու երկիրները, յատկապէս Քիեւ, որուն համբաւը արդէն տարածուած էր Արևելքի և Արևմուտքի մէջ։ Այդ ժամանակ Հայաստանէն հեռաւոր Ռուսական երկիրներ կ՚արտածուէին գլխաւորապէս մետաքսեայ գործուածքներ և այլազան գորգեր։ Արաբ ուղևոր Իպն Ֆատլուն (Ժ. դար.) այցելած է Սլաւոն իշխաններէն մէկուն, որուն վրանը իր հաւաստումովը «Նաս մեծ էր, կրնար պարունակել հազար հոգի եւ յատակը ծածկած էր առաւելապէս Հայկական գորգերով» (Վ. Բալաչեան, նոյն, Այսօր, օրաթերթ, Թ. 536)։

Խիստ հաւանական է որ Քիեւեան Ռուսիա հաստատուող Հայերուն մէջ թէ՛ զինուորականներ և թէ վաճառականներ կային և այս երկու դասակարգերը խառն կը բնակէին։

Այս նկատողութիւնները մասամբ կ՚որոշեն նաև այդ գաղթականներուն նախնական բնակավայրը։ ԺԱ. դարու առաջին կէսին մէջ տակաւին Հայկական թագաւորութիւնները իրենց անկախութիւնը կը պահէին։ Հաւանական չէ ենթադրել թէ Բագրատունեաց զինուորական ուժերը ցրուած և Քիեւ գացած ըլլան այնպիսի առեն մը, երբ Հայրենիքը ամէնէն աւելի պէտք ունէր իր մարտական ուժերուն։

Հետևաբար, աւելի կը միտիմ ենթադրելու թէ Բիւզանդեան կայսրութեան բանակներուն մէջ, ինչպէս նաև Պուլկարներու երկիրին մէջ ծառայող զինուորականներ անցած են Դանուբը և հաստատուած Տնիեբերի եզերքները։ Ռուսերը իրենց Բիւզանդիոնի հետ ունեցած յարաբերութիւններուն շնորհիւ ծանօթ Հայ զօրքերուն առաւելութիւններուն, օգտուիլ ուզած պիտի ըլլան այդ տեղափոխութենէն և հրաւիրած Հայերը իրենց բանակին մէջ ծառայելու։

Այս գաղութը բնաւ չէր կրնար ստուարանալ՝ եթէ նոր գաղթողներ չերթային այդ տեղերը։

Ալփասլանի արշաւանքներուն պատճառով Հայաստանէն հեռացող գաղթականները, մասնաւորապէս 1065ին Անիի գրաւումէն ետքը, աստ անդ խոյս տուողները՝ դէպի Արևմուտք Բիւզանդական կայսրութեան երկիրները ապաստանած են, վասնզի տակաւին Հայերը տխմարօրէն Բիւզանդիոնէն կը յուսային իրենց փրկութիւնը։

Հետևաբար, անոնք գունդ առ գունդ անցած են Բիւզանդական երկիրներ, ուր իրենց ետևէն շուտով հասան Սելջուկ հրոսակները և տէր դարձան Փոքր Ասիոյ մեծ մասին։

Սելջուկները հոն հիմնեցին անջատ պետութիւն մը՝ Իկոնիոյ Սուլթանութիւնը (1080—1309), որ իր կարգին Մոնկոլ արշաւանքներուն բոլոր խառնութեանց ենթարկուեցաւ և ստնակոխ եղաւ։

Հայերը, որոնք ի սկզբան հոն հանգիստ գտած ըլլալ կը կարծէին, եր-
կիրին վրդովուած կացութենէն ազատելու համար զանազան քրիստոնեայ եր-
կիրներ ապաստանեցան։ Անոնցմէ մեծ մասը անցաւ Պալքանեան թերակղզ-
կիրներ ապաստանեցան։ Անոնցմէ մեծ մասը անցաւ Պալքանեան թերակղզ-
գին, Մոլտավիա և Ղրիմ, ինչպէս նաև Վենետիկի, Ճենովայի և Բիզայի տի-
րապետութեան տակ գտնուող Արևելքի (Levant) կալուածները, որոնք Հայե-
րով լեցուեցան ԺԲ. և ԺԳ. դարերուն, ինչպէս կ'երևի վաւերական յիշատա-
կարաններէ։ Անոնցմէ, մաս մըն ալ իբրև առևտրական կամ իբրև վարձա-
կան զինուոր պէտք է անցած ըլլայ Սև ծովը, հաստատուելու համար անոր
հիւսիսային եզերքները և անոր կռնակը տարածուող քրիստոնեայ Ռուսերու
իշխանութեան տակ գտնուող հողերուն վրայ։

Կը թուի թէ Քիեւեան Ռուսիա գացող Հայ վաճառականներու և զին-
ուորներու ընկերացած են նաև բժիշկներ, նկարիչներ, գիտուններ, արհեստա-
ւորներ, կրօնական քարոզիչներ եւայլն։ Շատ մը նշաններ կան, որ Հայերը
Հարաւ-Արևմտեան Ռուսիոյ ցամաքամասին մէջ ամէնէն առաջ Քիեւ և իր
շրջակայքը հաստատուած են (Հայրենիք, Նոյն 82) և ԺԱ. դարու կէսերուն հոն
ունէին նշանակելի գաղութ մը, որ կարճ կեանք մը ունեցած է և ապա կո-
րած։

Եթէ ԺԱ. դարուն Քիեւի մէջ՝ իրենց դաւանութեան ամուր փարած բա-
ւական թիւով Հայեր գոյութիւն ունեցած չըլլային, այդ դարուն ապրող Երա-
նելի Թէոդոսիոս Պեչորացիի վարքին մէջ յիշատակագրուած պիտի չըլլային
անոր ունեցած դաւանաբանական վէճերը Քիեւի Հայերուն հետ։

Նոյնպէս նշանակելի է որ Քիեւ՝ Պեչորայի վանքին Հարանց վարքին(1)
մէջ (Հայրենիք, Նոյն, 78) տեղեկութիւններ կան Հայ բազմահմուտ բժիշկի մը
վրայ, որ կ'ապրէր ԺԲ. դարուն Քիեւի մէջ՝ նշանաւոր Վլատէմիր Բ. Մոնո-
մախ (1113—1126) իշխանի ժամանակ և պալատական բժիշկ էր։ Ան բժշկա-
կած էր նոյնինքն իշխանը և փորձած էր բժշկական օգնութիւն ընծայել Երա-
նելի Ագապետին։

Միևնոյնատեն յիշատակելի է, որ այդ Հայերէն առաջ ոչ ոք այգպիսի
հմտութիւն ցոյց տուած էր բժշկական գործին մէջ (Յ. Զաւրեան, Նոյն 78)։

Ինչպէս կը տեսնուի, առաջին զինուորական գաղթականներուն յաջոր-
դած են — Բագրատունեաց կործանումէն ետք, որ կատարուած իրողութիւն
մըն էր ԺԱ. դարուն վերջերը — ուրիշ բազմաթիւ գաղթականներ. վասնզի
Հայերու թիւը բազմացած էր այդ կողմերը հազիւ կէս դար ետքը՝ յաջորդ
դարուն մէջ։

Այնպէս որ՝ ԺԲ. դարուն սկիզբները Հայերը բաւական նշանակելի թիւ
ունէին Քիեւի մէջ։ Անոնք ունէին քարաշէն եկեղեցի մը, որ կառուցուած էր
Վլատիմիր Բ. Մոնոմախ իշխանին (1113—1126)ատեն, ինչպէս կը վկայէ
Քարամզին՝ իր «Ռուսական պետութեան պատմութիւնը» գործին մէջ (հմմտ.

---

(1) Յ. Զաւրեան Հարանց վանք բառն է, Քալաշեան Վանքին Տարեգրութիւն, ինչ որ շատ պարզ է համաձայնեցնել: Վանքին վանահայրերուն կենսագրութիւնները, վանքին տարեգրութիւնն էին անոնք:



Ալիշան, Սիսական, 464)։ Եկեղեցիի մը գոյութիւնը համայնքի մը կազմու-
թեան առաջին հիմնաքարն էր։

Ռուս նշանաւոր պատմաբան, Ակադեմիկոս Բ. Գրեկով, իր «Քիեւեան
Ռուսիա» աշխատութեան մէջ, կու տայ շարք մը տեղեկութիւններ Հայ-Ռու-
սական հնօրեայ յարաբերութիւններուն մասին և կը նշէ թէ հայկական ճար-
տարապետութիւնը և կառուցողական արուեստը իր ազդեցութիւնը ունեցած է
Ռոստով-Սուզտալեան իշխանութեան մէջ շինուած Ռուս վանքերուն վրայ
(Քալաշեան, Նոյն)։

Նոյնպէս յիշատակելի են գոյութիւնը յայտնի մշակութային կապերուն,
որոնք սկիզբ առին ԺԱ. և ԺԲ. դարերուն Ռուսիոյ Հայ գաղթականներուն և
Հայաստանի մերձ վայրերու, ինչպէս Կիլիկիոյ մէջ ապրող Հայերուն միջև։

Հայկական Յայսմաւուրքի մը մէջ, որ հաւանօրէն կազմուած էր Կիլիկիոյ
մէջ, տրուած է Ռուս սուրբերէն Պորիսի և Գլէբի վարքերը, որոնց մէջ պահ-
ուած էին անձերու և տեղանուններու ռուսականները, անշուշտ աղաւաղուած
(հմմտ. Վ. Քալաշեան, Նոյն):

Այս Յայսմաւուրքը 1172ին Դաւիթի և Ռոմանոսի վկայաբանութիւնները
պատմելէ ետք, կը խօսի անոնց հրաշագործութեան վրայ, «որոց բազումք ի
մերում աշխարհէ տեսողք եղեալ պատմեն մեզ» կ'ըսէ (Պատմութիւն Սրբոց
Դաւթի եւ Ռոմանոսի տես Գիրք որ կոչի Յայսմաւուրք տպ. Կ. Պոլիս, 1730
էջ ՋձԽԶ. (=646) հմմտ. Ալիշան Սիսական 464)։

Ասկէ կը հասկցուի թէ Հայեր Ռուսիոյ մէջ կ'ապրէին կամ առևտրապէս
կ'երթևեկէին այդ կողմերը։

Այդ տողերը հաւաստիք մըն են նաև որ ԺԲ.—ԺԳ. դարերուն Հայ և
Ռուս եկեղեցիներու միջև յարաբերութիւններ կային և մատենագրական որոշ
երկերու թարգմանութիւնները կը կատարուէին հայերէնէ ռուսերէն և փոխա-
դարձաբար, ինչպէս Գրիգոր Պարթեւի վարքը:

Ըստ Վ. Քալաշեանի՝ դիտելի է որ այդ յարաբերութիւնները կը հաստատ-
ուէին ճիշդ այն ժամանակ, երբ Ռուսական եկեղեցին Բիւզանդական ստըն-
ձգութիւններու դէմ, իսկ Հայ եկեղեցին կենաց և մահու պայքար կը մղէր
կաթոլիկութեան դէմ։

Գրիգոր Տուտէորդին ԺԱ. դարու վերջերուն, Գրիգոր Տղայ կաթողիկո-
սին (1173—1193) ուղղած նամակներէն մէկուն մէջ, անոր ուշադրութեան կը
յանձնէ Քրիստոնէութեան պատուար մեծափառ Ռուս եկեղեցին, (Վ. Քալաշեան)։

Ուրեմն Ժ.—ԺԴ. դարուն, Հայ և Ռուս ժողովուրդներուն միջև տնտեսա-
կան և մշակութային շփումներ կային, թէև անձուկ և պատահական։

Դժբախտաբար Ռուս Քիեւեան փոքրիկ իշխանութիւնը, որ Վլատիմիր Ա.ի
(972—1015) շրջանին ընդարձակ երկիր մը եղած էր, Պալթիկէն մինչեւ Սեւ
Ծով տարածուելով, ներքին պառակտումներով ջլատուած էր, ուստի Թաթար
արշաւանքին դէմ տկար հանդիսացաւ և նուաճուեցաւ (Պրոֆ Վ. Տոտոմեանց,
Հայոց դերը Համաշխարհային Մշակոյթին մէջ), և Հայ գաղութը ստիպուեցաւ
աւելի ներս՝ Կալիցիա ապաստանիլ, ազատ մնալու համար մոնկոլական ճըն-
շումէն։

*
* *

Հայերու դէպի Կալիցիա և Լեհաստան, դէպի Պալթիկ ծով տարածումին և Քիեւի Հայ գաղութին անչքացման պատճառը Ջինկիզեան արշաւանքն էր, որ ինչպէս աշխարհի ուրիշ մասերուն՝ նոյնպէս և Վոլկայի Արևմտեան կողմը տարածուած ընդարձակ տարածութեամբ երկիրներուն ճակատագիրին վրայ մեծ ազդեցութիւն մը ունեցաւ, ինչպէս տեսնուեցաւ (վերը 96—97, 117, 163—4) Ոսկէ Հորդայի կայսրութեան կազմութեամբ։

Մոնկոլները առաջին անգամ Ռուսիա կը մտնեն 1224ին և կը հասնին Վոլկայի եզերքները։

Ռուսերը զանոնք կը կասեցնեն Kalka գետին եզերքը։

1236ին երկրորդ անգամ կ'արշաւեն անոնք և յաջորդաբար կ'ընկճեն Սուզտալի, Վրատիմիրի, Մոսկուայի, Pérraslaw-ի, Ceznickrowի և Քիեւի գլխաւոր իշխանապետութիւնները, գրաւելով գրեթէ ամբողջ ռուս ցեղերու բնակած շրջանը՝ բացի Նովկորոտի ճախճախուտքէն։ Մոնկոլները 1238ին կը յաղթեն Վլատիմիրի իշխանին և կ'սպաննեն Նովկորոտի, զոր կը յաջողին աւերել։ 1241ին Թաթարները առաջին անգամ ճեղքելով Կարմիր Ռուսիան, կ'ընկճեն Sandomieszի և Գրագովիայի Պալատինեան իշխանութիւնները և կը հասնին Լեհաստան։ Լեհ ասպետները՝ Սիլեզիոյ Հանրի Բ. «Բարեպաշտ» իշխանի հրամանատարութեամբ, կը կասեցնեն բարբարոսները Lignicaի մէջ, ուր և կ'սպաննուի իշխանը։ Բայց Թաթարները յոգնած էին ու չկրցան աւելի առաջանալով Գերմանիա մտնել և Մորաւիայէն և Հունգարիայէն ետ դարձան իրենց մեկնակէտը։ Ջինկիզ Խանի բանակները տեղաւորուեցան Տոնի և Վոլկայի վրայ՝ ամէն կողմ աւեր սփռելով և, ինչպէս տեսնուեցաւ, իրենց տիրապետութիւնը ամրապնդեցին այս ընդարձակ տարածութիւններուն վրայ՝ Սարայ մայրաքաղաքով Ոսկի Հորդայի կայսրութիւնը հիմնելով ու հարկատու դարձնելով բոլոր մերձակայ նահանգները

1243ին Մոսկուայի և 1252ին Հալիցի և Վլատիմիրի իշխաններն ալ Թաթարներու հպատակեցան։

1258ին Թաթարները յարձակում կը գործեն Լեհաստանի վրայ, երբ Լէնպէրկի տեղը գղեակ մը գոյութիւն ունէր, որուն շինութիւնը (1250) կը վերագրուի Ռուս Լէօն (Lew) Հալիցներու իշխանին, որուն անունով ալ կոչուած էր գղեակը, որ յետոյ կրիգը պիտի ըլլար Լէօփոլ = Լվով = Լէնպէրկ քաղաքին։

1280ին Թաթարները Գ. փորձ մըն ալ ըրին Լեհաստանը գրաւելու, սակայն չյաջողեցան։

Շուրջ 1350ին Լիթուանացիները արշաւեցին և աւերեցին Լվովը, որ ԺԴ. դարուն կէսին, վերաշինուեցաւ Մեծն Գազիմիրէն։

Անոնք տիրած էին Սև և Կասպից ծովերու եզերքներուն, բայց պահած

(1) Այս գետը Ազախու ծովը կը թափի:



էին Ռուս իշխանութեան ինքնավարութիւնը՝ քաղաքներուն մէջ զինուորներ զետեղելով, որպէսզի կարենան կանոնաւորապէս տուրք գանձել։

1295ին կը հիմնուի Մոսկուայի իշխանութիւնը Ալեքսանտր Նէվսկիի որդի Դանիէլ Ռոմանովիչ իշխանին կողմէ և շատ չանցած այդ իշխանութիւնը կարեւոր դերք կը գրաւէ ու ԺԴ. դարուն կը մնայ Քիեւեան իշխանութեան։

Մոսկուայի իշխանութեան հիմնարկութենէն քիչ յետոյ, առաջին անգամ Ռութէնիոյ արևմտեան նահանգները կը փորձեն թօթափել Մոնկոլ լուծը, Դանիէլ Ռոմանովիչ իշխանը ինքը նոյն նպատակով արևմուտքէն օժանդակութիւն կը խնդրէ։ Իննովկենտ Գ. Պապը զայն թագաւոր կը հռչակէ, բայց դրական օգնութիւն չի կրնար հասցնել։ Դանիէլ կ'ստիպուի կռիւ մղել Թաթարներուն դէմ։ Իր զաւակը՝ Լէոն Դանիէլովիչ, հիմնադիրը Լվովի (= Լէնպէրկ), շարունակեց պայքարը, բայց ընկճուեցաւ և իր երկիրը ամբողջութեամբ գրաւուեցաւ Մոնկոլներէն։

ԺԴ. դարուն Նիէմէնի հովիտին մէջ նոր ուժ մը սկսաւ ծնունդ առնել։ Ատիկա էր Լիթուանիան, որուն մեծ իշխանին՝ Կէտիմինասի (1315—1340) ենթարկուեցան Սպիտակ Ռուսիոյ և Ռութէնիոյ իշխանները և պոյարները։ Կէտիմինասի իշխանութիւնը հետզհետէ դարձաւ պատկառելի։ Անոր որդին Օլկիրտ, աւելի տարածեց երկիրին սահմանները դէպի Արևելք։ Լիթուանիա եղաւ բարեկարգ երկիր մը, որ յարգեց իր Ռուս հպատակներուն սովորութիւնները, հաստատութիւնները և կրօնքը։

Մեծն Գազիմիր (1310—1349) Լեհաստանի թագաւորը, Կալիցիան և արևմտեան Բոտոլիան իբրեւ ժառանգութիւն ձեռք ձգած էր, երբ անդին Վլատիմիրի մեծ իշխան Իվան Ա. 1340ին Մոսկուա գիւղը բաւական մեծցած ըլլալով, զայն իր նոր պետութեան կեդրոն կը դարձնէր և կը կոչուէր «Մոսկուայի մեծ իշխան»։ Իսկ Լիթուանիոյ մեծ իշխաններէն Լատիսլաւոս Եակէլլոն (Ladislas Yayellon) կամ Վլատիսլաւ Ե. (1386—1434), որ 1377ին ժառանգած էր Լիթուանիոյ իշխանութիւնը, Լեհաստանի Հետուիկ (Hedwige) իշխանուհիին (1) հետ ամուսնանալու համար կաթոլիկութեան յարեցաւ և 1386ին ստացաւ նաև Լեհաստանի թագաւորութիւնը (2)։ Ան Pacta Conventaներով միացուց Լիթուանիան և Լեհաստանը և կերտեց Լեհաստանի միութիւնը։

Բայց Եակէլլոն իշխանութիւնը թողուց իր զարմիկին՝ Վիթոլտի, որ 1399-ին Մոնկոլներէն պարտուելով հանդերձ, ամբողջ Սպիտակ Ռուսիան և Ռութէնիան կը յաջողէր իր գահուն ներքեւ պահել։

1410 Յուլիս 15ին, Կրիւնվալտի մէջ, Գերման ասպետներու պարտութեան մէջ կարևոր դեր կը կատարեն Ռուս բանակները, ինչ որ Մոսկուայի իշխանութեան դիրքը շատ կը զօրացնէ. այնպէս որ դրացի նահանգները հետզհետէ կ'ենթարկուին Մոսկուայի, որուն Մեծն Իվան Գ. (1469—1505) իշխանը կը գրաւէր ընդարձակ տարածութիւններ, ինչպէս Թվէր, Վիաթքա, Նովկորոտ, Ռոստով և Եարոսլաւ ու իր յաղթական գնացքը կը շարունակէր մինչեւ Պալթիկ՝ Լիթուանիա, զոր կը յաջողէր Մոնկոլ լուծէն ազատել։

(1) Ասիկա Հունգարիոյ Լուի թագաւորին աղջիկն էր:

(2) Վլատիսլաւ Ե.ի, 1420ին եւ 1420ին երկու անգամ ընծայուած էր նաեւ Պոհեմիոյ թագը, բայց ան խոհեմաբար չէր ընդունած:

*Մեծն Իվան, դարձաւ «Մեծ Իշխան համայն Ռուսիոյ» և հիմը դրաւ Ռուս մեծ կայսրութեան, որ Նոր ժամանակներու աշխարհի պատմութեան մեծ դերակատարներէն մէկը պիտի հանդիսանար։ Բայց այս իրադարձութեանց ընթացքին, երբ Բիւզանդ իշխանութիւնը կ'անհետանար, Տնիեբրի և Տնիեսթերի հովիտներուն մէջ ապրող Հայերը կ'անշքանային և թերևս նոյնիսկ անհետացած ենթադրուելու չափ կը պակսէին, ետքը վերստին հոն բազմանալու համար Ռուսական տիրապետութեան այդ կողմերը զօրանալէն և Մոնկոլները վանելէ վերջ։*

Guillbert de Lannoy, *Ֆրանսական դեսպանը* (1399—1450), *իր յիշատակներուն մէջ* (*Փ. հտ.* 438) *կը գրէ. «Մանկասարսի կամ Բերդատագի (Աքքերմանի հին անունները) մէջ կ'ապրէին Ճենովացիք, Վալախներ և ՀԱՅԵՐ» և* 1421*ին Աքքերմանի մէջ կար Հայ եկեղեցի մը, ինչ որ կը հաստատէ թէ Հայերը հին ատենէն ի վեր հոն կը բնակէին* (Արարատ, 1911, 879—81) *Հայերը այնտեղ* ... *ա-*

*Հայերը հին ատենէն ի վեր հոն կը բնակէին* (Արարատ, 1911, 879—81) *ապահովաբար ունէին բարգաւաճ վիճակ, վասնզի* 1459—1460 *թուականին նոյն քաղաքին մէջ կը յիշատակուի Նիկողոս անուն եպիսկոպոս մը, որ ճառընտիր մը գրչագրած է, իրեն հետ օգնականներով, որոնցմէ կը յիշէ* «զՅակոբ աբեղայն» *որ* «զքուրքն կոխեց, զՅակոբ երէց, որ զձողն խաբեց, զՍտեփաննոս աբեղան, որ ծաղկելուն ընկերեց» *եայլն։*

*Այս ճաշոցը գրուած էր Կիւրեղ անուն անձի մը ցանկութեամբ Եաշի Ս. Աստուածածին եկեղեցիին համար* (*ԷՋՄԻԱԾԻՆ ամսաթերթ*, 1948, *թ.* 10—12 *էջ* 61—62)։ *Ասիկա ցոյց կու տայ թէ Աքքերմանի Հայ գաղութին մէջ կ'ապրէին եպիսկոպոս մը և աբեղաներ, որոնք ոչ միայն տեղւոյն համար, այլ ուրիշ վայրերու համար ձեռագիրներ գրելով կ'զբաղէին, ինչ որ նմանապէս փաստ մըն է հոն տիրող բարեկեցութեան։*

*Բացի ուրիշ ապացոյցներէ, Աքքերմանի Հայ եկեղեցիին հարաւային որմին վրայ կար արձանագրութիւն մը* 1446 *թուականով և բազմաթիւ տապանաքարեր ԺԵ. դարէն, որոնք ցոյց կու տային թէ Աքքերմանի մէջ բազմաթիւ Հայ վաճառականներ կային, ինչպէս ապահովաբար կային նաև անոր ներքնաշխարհը, դէպի Լեհաստան տարածուող երկիրներուն, մանաւորապէս Կալիցիոյ մէջ։*

*Արդարև Հայերը՝ Քիեւի իշխանութեան անմիջական դրացի Բոտոլիա* (*Կալիցիոյ արևելեան մասը*) *ապաստանած ըլլալ կը թուին ոչ շատ սակաւ թիւով, այլ մեծ բազմութեամբ, վասնզի Տոքթ. Անտոնի Ռոլլին, հեղինակը՝* «Բոտոլիոյ պատմութիւն»*ին, կը մատնանշէ որ Կամենիցի շրջակայքը բաւական ընդարձակ տարածութեան վրայ չկար ազնուական ընտանիք մը, որուն երակներուն մէջ Հայ արիւն չհոսէր* (*տես.* Dr. Antoni «Nowe Opowiadunia Historiezne» Wartebet, *էջ* 153 *կամ* Հայրենիք, *Է. տարի թ.* 6, *էջ* 127)։

*Եւ շատ հաւանական է որ Հայերը հոն եկած էին շատ կանուխէն, թերևս առաջ շատ աննշան թիւով, բայց ամէն պարագայի մէջ՝ շատ առաջ, քան Կալիցիոյ գրաւումը Լեհերէն, որ տեղի ունեցած է* 1340*ին Գազիմիր մեծ թագաւորին օրով։*

*Մեծն Գազիմիր ԺԴ. դարու կիսուն վերաշինեց Լվով = Լէնպէրկ քաղա-*



*քը և մեծապէս քաջալերած է Հայերը որ իր երկիրը բնակին։ Հայերը առաջ հաստատուած էին Լէնպէրկ քաղաքէն դուրս յատուկ վայր մը և ստացած էին շատ մը արտօնութիւններ և ունէին եկեղեցի մը իրենց թաղին մէջ։*

*Հայերը հետզհետէ հոն համախմբուեցան և իրենց թիւը բազմացաւ։ Լեհ պատմագիրներ կը հաստատեն թէ Հայ զօրապետներ իրենց զօրքերով կու գային Կալիցիոյ և Քիեւի իշխաններուն ու Լեհ թագաւորներուն քով և կ'օգնէին անոնց մղած պատերազմներուն մէջ* (*Լ. Մազլըեանց*, Արարատ, 1889 *Ա.* 128)։

*Հայերը, Լէնպէրկէն դուրս, իրենց յատկացուած արուարձանին մէջ ապրեցան բաւական երկար ատեն։ Հոն շինեցին երեք եկեղեցիներ, Ս. Աննա, Ս. Յակոբ Մծբնայ և Ս. Խաչ անուններով* (*Հ. Մինաս Վրդ Բժշկեան*, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, 92)։ *Այս երեք եկեղեցիներէն առաջին երկուքը ետքը քանդուած, իսկ երրորդը փոխանակուած է Ս. Ստայլզէր եկեղեցիին հետ* (Արեւելք, 1932, *Օգոստ* 15)։ *Իսկ երբ Հայերը արտօնուեցան քաղաքին մէջ ալ բնակիլ, շինեցին հոն փայտաշէն եկեղեցի մը,* 1182*ին* (*Ալիշան*, Կամենից, 4), *Ս. Աստուածածինը*(1) , *Հ. Բժշկեանի տեսած մէկ յիշատակարանին համաձայն։*

*Սակայն Ա. Յ.* (Բազմավէպ, 1898, 388), *«խիստ երկրայական է» ասիկա կ'ըսէ, մինչ Տոքթորուհի Բէօփրիւլեան* (*ծնեալ Վուլլիգըիմ*), *իր* «Լեհահայերու Պատմութիւնը» *յօդուածին* (Փալանճեան ով Սմէկոմս (= Բանբեր Ս. Գրիգորի *հանդէսին մէջ*) (1931 *Հոկտ.-Նոյեմ. միացեալ թիւ*) *կը հաստատէ թէ* 1183*ին Հայերը Լվովի մէջ շինած էին Ս. Աննա անունով փայտաշէն եկեղեցի մը,* (Արեւելք, 15 *Օգոստ.* 1932), *որուն տեղւոյն վրայ ետքը՝* 1363*ին կառուցուած է քարաշէն եկեղեցի մը* (*Հ. Բժշկեան*, Ճանապարհ.՝ 104, *Ալիշան*, Կամենից, 4)։ *Այս եկեղեցին շինած են Յակոբ Շահնշահ Կաֆացի և պր. Ստեփան Փանոսեան Սըբահամենց* «ի Վայսուրի Նաղաքէ» (*Հ. Բժշկեան*, Նոյն, 104)։

*Հայերը ունեցած են Լէնպէրկի մէջ երկու մատուռներ ևս, որոնցմէ մին կը պատկանէր Պենետիկեան Հայ վանականներու* (Արեւելք, 15 *Օգոստ.*, 1932)։

*Անեցի Հայերը, Լէնպէրկի հետ միաժամանակ հաստատուած են նաև Կամենից, ուր հաւանօրէն ԺԲ. դարուն, Լէնպէրկի նման պէտք է կառուցած ըլլան գէթ փայտաշէն եկեղեցի մը, որ Հ. Մինաս Վրդ. Բժշկեան Ս. Աստուածածին անունով կը ներկայացնէ։ Արդարև, առհասարակ դիտուած երևոյթ է որ Հայերը ուր որ գացած են՝ իրենց առաջին մտահոգութիւնը եղած է աղօթարան մը ունենալ։*

*Կամենից-Պոտոլսկիի առաջին եկեղեցին ե'րբ կառուցուած ըլլալը չենք գիտեր, միայն* 1398*ին՝ բարերարութեամբ Սինան Խութլու Բէյի՝ կառուցուած է Ս. Նիկողոս եկեղեցին* (2), *որ մատուռի ձև ունէր* (*ՀԱ.* 1896, 249, 316

---

(1) Ըստ Տաղբարունի Քէօփրիւլեանի՝ Լէմպէրկի Ս. Կոյսի Վերափոխման եկեղեցիին հիմնարկութիւնը կատարուած է 1370ին (Յ. Մարքեան, **Արեւելք**, 15 Օգոստոս, 1932)։ Եկեղեցիին շրջափակին մէջ կը գտնուէին բազմաթիւ տապանաքարեր, հնագոյնը ԺԴ. դարէն (Նոյն)։

(2) Անոր պատկերը տես. **Արարատ**, 1889, Ա. գիրք 128։ Այս եկեղեցիին մէջ կը գրս-

և 1897, 20 և Արաքս, Բեթերպուրկ, 1889, Ա. 128), հաւանօրէն առաջին աղօթավայրը չէր Հայերուն, վասնզի 1060էն 1398, անկարելի է որ Հայերը գոնէ մատուռ մը ունեցած չըլլային։

Հ. Մինաս Բժշկեան, (Ճանապարհ., 137), կը հաւաստէ թէ ինք տեսած է հին Ցայմաւուրքի մը յիշատակարանին մէջ, երեք եկեղեցիներու անունները, այսպէս գրուած՝ «Ընդ հովանեաւ Սրբուհւոյ ամենաւհնեալ Աստուածածնին եւ Սբ. Նիկողայոս Սքանչելագործ հայրապետին, եւ Սբ. Աւետման Աստուածածնին»:

Աստուածածինին նուիրուած երկու եկեղեցիներէն մին, ըստ Հ. Բժշկեանի, աւելի հին էր քան Ս. Նիկողոսը (Ճանապարհ., էջ 148) և միւսը՝ Կամէնիցի Հայոց հնագոյն եկեղեցին էր, որ նախապէս փայտէ կառուցուած էր «վաղուց եւ հին ժամանակից» և յետոյ «եր յոյժ բլբլակ, մինչ մեծ եր բլել» (Ճանապարհ., 152): Ասոր տեղ նորը կառուցուած էր քարաշէն (Նոյն, 152)։ Այս երեք եկեղեցիներն ալ,— որոնց վրայ պէտք է աւելցնել չորրորդ մը՝ Ս. Լուսաւորիչը — իրարու մօտ էին։

Ս. Նիկողոս եկեղեցիին մէջ կը պահուէր Տիրամօր պատկեր մը (O. Maria, Mater Dei Christi), որ ըստ աւանդութեան, Անիէն՝ Սեւաստաբոլ և անկէ 1331ին Ուկրանիա փոխադրած էին Կամենից եկող Հայ գաղթականները։

Հրաշագործի համբաւով այս պատկերը զետեղուած էր նախ Ս. Նիկողոս և ապա Ս. Աստուածածին եկեղեցին, որ ԺԵ. դարու շինութիւն կը համարուի (Ղ. Մաղերեանց, Արաքս, 1889, Ա. 129)։ Արդ՝ եթէ այս պատկերը Անիէն՝ Սեւաստաբոլ և անկէ Կամէնից բերուած էր 1330ին, առիկա փաստ մըն է թէ 1398ին կառուցուած Ս. Նիկողոսէն աւելի հին եկեղեցի մը անպատճառ գոյութիւն պէտք է ունեցած ըլլար և հոն դրուած՝ այս հրաշագործ պատկերը։

Շատ զարմանալի պիտի ըլլար հակառակը, վասնզի աւանդապաշտ Հայերու այնքան արտօնութիւններ և առանձնաշնորհումներ տրուած ատեն՝ կարելի չէր որ զլացուած ըլլար Լէմպէրկի և Կամէնիցի մէջ Հայ եկեղեցիներ ունենալու իրաւունքը։

1373ին երբ Կալիցիա և Բիւեւեան կարգ մը գաւառներ Լեհաստանի կցուեցան, Լեհերը վերահաստատեցին Հայերու առանձնաշնորհումները (Փիղի Կարմելեան և Անտոնի՛ 'ի Բուշներեան, Նոյն, 188)։

Այս արտօնութիւններուն ամէնէն կարեւորը՝ Հայոց համար իրենց կրօնքի ազատութիւնն էր, զոր անշուշտ տուած էին Լեհերը, եթէ ոչ Հայերը պիտի խուսափէին և հոն պիտի չդիմէին։ Մինչ ընդհակառակը, պատահած է և միշտ նոր գաղթականներ դիմած են դէպի հոն։ Մանաւանդ 1239ին Մոնկոլներու Անին գրաւելէն վերջ։ Ասոր համար է որ Բոտոլիոյ, Կալիցիոյ և Լեհաստանի գաղութները, ամէնքն ալ ծագումով Անեցի կը նկատուին, վասնզի

Նուէր Մելքիսեդեկ Գառնեցի կաթողիկոսին (1593—1628 Ապրիլ 5 +) գերեզմանը, որուն տապանաքարին վրայ քանդակուած յստակ կ'երեւէր իր խորաքանդակ պատկերը, կաթողիկոսական զգեստաւորութեամբ: Մելքիսեդեկ Գառնեցի, որ շատ մեծ պատասխանատուութիւն ունի Լեհահայ գաղութին կորուստին մէջ, մեր կաթողիկոսներուն ամէնէն սեւ դէմքերէն մէկն է:



Անիի աղէտէն վերջ, ինչպէս տեսանք, իրենց կեանքը մաղապուրծ ազատող Հայերը փախան զանազան երկիրներ, ի մէջ այլոց Սեւ Ծովի եզերքները և անկէ անոր ներքնաշխարհը։ Մեր պատմութեան մէջ յատկապէս կը յիշուի որ 40,000 տուն Հայեր (1) Կովկասեան լեռներէն անդին կը տարուէին և կը հաստատուէին Ախսարայ և Աժտէրխան։ Սակայն երբ Մոնկոլները իրենց ետեւէն կը հասնէին և Սեւ Ծովու հիւսիսային տափաստաններէն դէպի Կեդրոնական Եւրոպա կը խոյանային, նուաճելով Մոսկուայի իշխանութեան գրեթէ բոլոր հողերը, ինչպէս Քիեւի դքսութիւնը և կ'սպառնային ծովեզերքներուն իշխող Ճենովացիներուն, Հայերը, խոյս կու տային դէպի Ղրիմ (տես. վերը 354), ինչպէս նաև Սլաւական կամ Ռուս իշխանութեանց չնուաճուած մասերը, ինչպէս էր Կալիցիան, որուն երկու գլխաւոր քաղաքներուն, Լէմպէրկի և Կամէնիցի մէջ Հայեր հաստատուած էին և կազմած գաղութներ՝ հոգեւոր վարչութիւններով

Ասոնց վրայ աւելցան ԺԴ. դարուն, Կիլիկեան Թագաւորութեան կործանումէն (1375) յետոյ, Սիսէն հեռացող ստուար գաղթականներէն մաս մը, Պոնտոսի ափերէն պարբերաբար ուղղուեցան դէպի Սարմաթացոց ասպնջական երկիրը՝ Լեհաստան։

Սիսէն՝ Լեհաստան տեղափոխուած Հայերու գոյութիւնը կը հաստատէ յիշատակագիր մը, որ երբեմն Լէմպէրկի մէջ գտնուած 1500 ձեռագիրներուն կ'ակնարկէ.

«Աւետարանք ոսկով գրած,
Արծաթապատ կողքով պատած,
Անգիւտ գրեանք որ Լվով կային,
Սոյ խազնիցն ելեալ էին»:

Պէտք է ըսել թէ այդքան հեռուներէն եկող այս հիւրերը կը նկատուէին որպէս «երկիրին աղը» և «ազնուական ազգ» մը, և իբրև վերջին ծայր բաղձալի տարր մը։ Հայերը գլխաւորաբար հաստատուած են քաղաքներու մէջ և ինչպէս Փրոֆ. Վ. Տոռոմեանց կը վկայէ, շատ տեղերու մէջ անոնք Լեհական քաղքենի դասակարգին կորիզը եղած են։ Լէմպէրկ մեծ մասամբ Հայ գաղթականներուն կը պարտի իր փայլը։ Կամէնից-Պոտոլսք, Նշանաւորագոյնը՝ լեհական հին ամրոցներուն, իր համբաւը կը պարտի Հայերուն, որոնք հոն հաստատուեցան (հմմտ. Վ. Տոռոմեանց)։

ԺԳ. դարուն կէսերը, Դանիէլ Ռոմանովիչ և անոր որդին՝ Լեոն Դանի-

(1) J. Morgan, Histoire du peuple Arménlen (1919) գործին մէջ, Լեհ հեղինակի մը խօսքին վրայ հիմնուելով, այս 40.000ը ամբողջութեամբ Լեհաստան կը փոխադրէ. ինչ որ տարակուսելի կը թուի: Ահա այդ տողերը. «Հայկական թագաւորութեան (1375) Թամիրզանի ձեռքը իյնալէն շա՛տ առաջ. Հայերը Լեհաստանի մէջ երեւցան՝ Գալիցիոյ իշխան Դանիէլի կողմէ հրաւիրուելով, Հայաստանի առաջին բաժանումը յառաջ բերաւ զօրաւոր գաղթականութիւն մը: Հայ գաղթականները, ափ մը իրենց հայրենի հողէն, կերպասի կտորի մը մէջ դրած, սփռուեցան հարաւային Ռուսիա, Կովկաս, Քազաքներու երկիրը եւ անոնցմէ 40,000 հոգի եկան Լեհաստան»:

ելովիչ (1) Կալիցքի, մասնաւորապէս Հայերը օգնութեան կոչած են, ընդդէմ
դրացի ազգերուն․
Լէոն Դանիէլովիչ իշխանը 1280ին իր երկիրը պաշտպանելու համար՝ հայ
և Թաթար զօրքերով գունդեր կազմած է։
Հայերը այս կռիւներուն մէջ մեծ նեցուկ մը եղած են Լէոն Դանիէլովի-
չի, որ պատերազմէն ետքը Հայերուն ծառայութիւնը վարձատրած է հողեր
շնորհելով անոնց (Քուշներեան, Նոյն, 189)։
Այս Լէոն Դանիէլովիչ իշխանն է որ Լէմպէրկի հիմնարկութեան ժամա-
նակ՝ անոր հիւսիսային մասը Հայերու բնակութեան կը սահմանէ (Ա. Ց. Հայք
Գուքերայ, ԲԱԶՄԱՎԷՊ, 1898, էջ 388), ինչ որ աներկբայելի և արժանա-
հաւատ կը նկատուի, (Նոյն)։
Իբրև վարձատրութիւն հողեր շնորհք ստացող Հայերէն մաս մըն ալ հաս-
տատուած է գարձեալ Կալիցիոյ մէջ՝ Կամէնից քաղաքէն 10 վեստ հեռու, եր-
կու նոր գիւղերու մէջ, որոնք մինչև այսօր Արմեանե (Ormiany) և Արմեան-
քի (Ormianki) (երկուքն ալ Հայք նշանակութեամբ) կոչուած են (Քուշներեան,
Նոյն)։ Դ. Իլովայսկի կ'ըսէ թէ այդ օրերուն Հայեր կ'ապրէին Կալիցիոյ մէջ
բայց հաւանօրէն շատ ստուար թիւ մը չունէին։ Անոնց թիւը ստուարացաւ
երբ Հայերու նոր գաղթականութիւն մը եկաւ Լեհաստան (Քուշներեան, Նոյն)
1330—1331ին, մասնաւորապէս երբ Ախսարայի և Աժտէրխանի Հայերը, Թա-
թարներէն նեղուած, Ղրիմ անցան, զէնքով իրենց ճամբան բանալով Մոն-
կոլներուն մէջէն։ Անոնցմէ մաս մըն ալ հաստատուեցաւ Քիեւի Ռուս իշխանին
պատկանող Կալիցիոյ մէջ, ինչպէս տեսանք։
Հայերը հոն Կորիաթովիչ իշխաններու բանակին մէջ կը մտնեն և Թա-
թարներու դէմ կը կռուին և հալածելով Թաթարները, կը հաստատուին Կա-
մէնիցի մէջ, և հետզհետէ զինուորականութենէ հեռանալով, վաճառականու-
թեան կը նուիրուին ու մեծապէս կը նպաստեն Կամէնից քաղաքին զարգաց-
ման։ Կորիաթովիչ իշխաններուն ալ մի՛այն ասիկա հարկաւոր էր, որ Թաթար-
ներէն մաքրագործուած երկիրը կրկին չէնար, ուստի Հայերուն կը շնորհէին
մեծ արտօնութիւններ։ Գէորգ Կորիաթովիչ իշխանին Կամէնիցի Հայերուն
տուած պարգևագիրին տակ ստորագրած էին նաև Հայերը, ըստ Ռուս քահա-
նայ Դորասովիչ Հայք ’ի Բոտոյիա գործին (Քուշներեան, Նոյն, 190)։ Ստորա-
գրող այդ Հայերը հաւանօրէն հին գաղթականներէն էին (Քուշներեան, 190)։
Հայերը Կամէնիցի մէջ կը բարգաւաճին և կը բազմանան և քաղաքը կը
զեղազարդեն մեծամեծ շէնքերով, կ'ամրացնեն բերդերով, կ'ունենան առան-
ձին ազգային դատարան և վաճառականական հաղորդակցութեան պողոտայ
մը կ'ստեղծեն Հայաստանի և Պալթիկ ծովին միջև։
Նոյն բարգաւաճումը ունեցած են նաև Լէմպէրկ հաստատուող Հայերը,
որոնք նախապէս քաղաքէն դուրս հաստատուած էին, բայց յետոյ արտօնուե-
ցան նոյնիսկ քաղաքին կեդրոնը թաղ մը ունենալու իրենց համար. այնպէս

(1) Լէոն Դանիէլովիչ հիմնադիրն է Լէմպէրկի, որ ի պատիւ իրեն Լէոբոլի եւս կոչ-
ուած է:



որ՝ Մեծն Գազիմիր Գ. (1330 — 1370), երբ 1356ին Մակտէնպուրկեան իրա-
ւունք տուաւ Լէմպէրկ քաղաքին (Բազմավէպ, 1898, 388), Հայք արդէն հոն
կը բնակէին և տուներ ունէին նոյնիսկ քաղաքին մէջ (ՀԱ 1890, 6)։
Հայերը օգտուած են հաւասարապէս Գազիմիր Գ.ի (1333 — 1370) բար-
եացակամութենէն, և այս թագաւորին իր Կալիցիան շէնցնելու համար բոլոր
ազգերուն ուղղած հրաւէրէն՝ որ հոն բնակին. վասնզի այս նահանգը 1373ին
միացած էր Լեհաստանի, աւերուած վիճակին մէջ։ Այս հրաւէրին պատասխա-
նեցին ուրիշ ազգերու հետ՝ Հայեր ևս, որոնք ինչպէս տեսնուեցաւ, արդէն
աւելի առաջ հաստատուած էին Կալիցիոյ, Լէմպէրկ և Կամենից գլխաւոր քա-
ղաքները և ուրիշ երկրորդական քաղաքներու մէջ։ Նոյնիսկ Կամենից, կը
հաւաստուի թէ շինուած է Անեցի գաղթականաց ձեռքով, հին Պետրիդաւրոսի
աւերակներուն վրայ (Քուշներեան, 170)։
Արդարև, 1340ին Ռուսիոյ և Լեհաստանի միացման ատեն՝ Հայերը ար-
դէն զօրաւոր գաղութներ ունէին Կալիցիոյ շարք մը քաղաքներուն մէջ ինչ-
պէս Լուցկ, Կամենից-Պոտոլսկ, Գոտից, Եարոսլաւ և մանաւանդ Լէմպէրկ,
ուր, ինչպէս նաև Կամենից, մեծ թիւ մը կը կազմէին և ուշքի զարնող դեր
կը կատարէին (հմմտ. Ց. Զաւրեան, Հայրենիք. Նոյն 78)։
Գազիմիր Գ, մասնաւոր խնամք և հոգածութիւն ցոյց տուած է Հայե-
րուն։ Ան էր որ 1344ին Կամինից-Պոտոլսկի և 1356ին Լէնպէրկի
Հայերուն շնորհեց իրաւունքը, ազգային խորհուրդ մը կազմելու որ մի
միայն Հայերէ պիտի բաղկանար՝ Վոյթ կոչուած ազգապետին նախագահու-
թեան տակ 12 դատաւորներէ և Հայոց դատերովը պիտի զբաղէր (Տոքթո-
րուհի Բէօփփիւլեան, Փոլոնիէց օվ Աժենստ. 1931 Հոկտ.-Նոյեմբեր)։
Այդ իրաւունքը ապահովաբար կիրարկուած է Կամենիցի մէջ, զոնէ
1350ին, վասնզի նոյն թուականով ձեռագիրի մը մէջ գրուած է, թէ «Հայք
Կամենիցցիք յայսմ ամի սկսան ի ձեռն Բրիվելեկիանց (Privilege) քաղա-
ւորացն Լեհաց զդատաստանս առնել մինչ զի կարող եղեն եւ զմահապարտսն
մեռուցանել, առանց հրամանք կամ բոլյտուութեան Լեհաց» (Հ. Ցակոբոս
վրդ. Տաշեան, Մայր ցուցակ, 680, Ալիշան Կամենից, 131)։
Այս բացառիկ իրաւունքը քանի մը տարի ետքը տրուեցաւ նաև Լէմ-
պէրկի Հայերուն, ինչպէս նաև հետզհետէ Լեհաստանի ուրիշ հայաբնակ քա-
ղաքներուն, որոնք ունեցան իրենց Վոյթերը (ազգապետները) իրենց խորհըր-
դական 12էն 4 դատաւորներով կամ տանուտէրներով։
Գազիմիրի տուած այս արտօնութիւնները «Վէմ անկեան» դարձան, և
նոյնպէս Լեհաստանի Հայերը ունեցան ինքնավար Հայ համայնքներ (Ն. Լէն-
նիշինկօ, Լեհաստանի եւ Արեւմտեան Հարաւային Ռուսիոյ Հայերը. Թրգ. Ն.
Յովհաննէսեան ՀԱ. 1895, 204—5)։
Ասիկա իրենց շնորհուած առանձնաշնորհումներուն ամէնէն կարեւորն էր։
Հայերը միշտ աշխատած են իրենց առանձնաշնորհումները պահպանել
և վերանորոգել կամ հաստատել տալ Գազիմիր Գ.ի յաջորդներուն։
Այսպէս, անոնք ստացան 1379ին Եղիսաբէթ թագուհիէն և 1380ին՝ Լուի

թագաւորէն(1) (+1382) իրենց առանձնաշնորհեալ դիրքը հաստատող և վերանորոգող հրամանագիրները։

Հայերը այս իրաւունքները ստացան անոր համար որ սատարեցին Լեհաստանի մեծութեան և փառքին, թէ՛ պատերազմելով անոր թշնամիներուն դէմ և թէ ծառայելով երկիրին տնտեսական բարգաւաճումին։

Հայերը, որ կ'ապրէին Լեհական պետութեան մասնաւորապէս Փոտոլիոյ կամ Ուկրանիոյ մասին մէջ, իրենց առաջին գործը ըրին 1379ին Եղիսաբէթ թագուհիէն և 1380ին Լուի թագաւորէն իրենց ստացած առանձնաշնորհումները վաւերացնել տալ Լեհաստանի առաջին թագաւորին՝ Լատիսլաւ կամ Վլատիսլաւ Ե. Եանկէլլոյի (Բուշնէրեան. Նոյն 196 և Լաւրենտ Մարչինըսքի Աշխարհագրական, Տեղագրական եւ պատմական տեղեկութիւններ):

Վլատիսլաւ իր թագաւորութեան երկրորդ տարին իսկ (1387ին) կը թուի թէ սիրայօժար կերպով վերահաստատեց Հայերու համայնքային առանձնաշնորհումները, վասնզի պէտք ունէր կուռող ուժերու, քանի որ պարտաւորուած էր տեւապէս ճակատելու իրեն դէմ մաքառող Տեւտոն ասպետներուն։

Ահա այս կռիւներուն մէջ, որոնք Լեհաստանի անկախութեան և մեծութեան համար կը մղուէին, Վլատիսլաւ թագաւորը իրեն աջակից ունեցած է Հայերը։

Գնդ. Ճոն Դէմբլ Կրէվս (Col. John Temple Graves), խմբագրապետ The New York American-ի, 1910ին Armenia-ի մէջ «Հայոց դերը քաղաքակրթութեան մէջ» խորագրուած իր մէկ յօդուածով հաստատած է որ 1410ին Հայ ազնուականութիւնը կռուած է Լատիսլաւ Եակէլլոյի բանակներուն մէջ և անոր յաղթութեան սատարած՝ Կրիւնվալտի (15 Յուլիս 1410) ճակատամարտին մէջ։

Եթէ ճիշդ է ասիկա՝ միայն այդ ճակատամարտին մէջ չէ, այլ ուրիշ պատերազմներու մէջ ալ Հայերը պէտք է կռուած ըլլան Լեհաստանի բանակներու կողքին, ինչպէս կը վկայէ նոյն հեղինակը, հաւաստելով դարձեալ որ Հայերը իբրեւ Լեհ բանակի զինուոր մասնակցած են նաեւ 1444ի Վառնայի ճակատամարտին։ (Հ. Բժշկեան, էջ 156)։

1402ին և 1415ին Լեհաստանի թագաւորը երկու անգամ Հայերուն տուած է տէրութեան բոլոր մասերուն մէջ առեւտուր ընելու արտօնութիւն, որպէսզի կերպով մը փոխարինուի անոնց վնասները, զորս ունեցան Թաթարիստանի հետ առեւտրական յարաբերութեանց ընդհատումով (ՀԱ. 1890. 6)։ Վլատիսլաւ Եակէլլօ նոյնպէս Լէմպէրկ քաղաքի կեդրոնին մէջ Հայերուն տուած է յատուկ թաղ մը (Ա. Ց. Հայք Գութերայ, ԲԱԶՄԱՎԷՊ 1898. 388)։ Անկէ կը մեկնէին «մեծ, լաւ կազմուած եւ լաւ զինուած կարաւաններ, երթալու համար Արեւելք առաջնորդութեամբ Կարաւան-բաշայի, հզօրագոյն եւ խոհեմ մարդ մը, որ այս վտանգալից վաճառականութիւնը իբրեւ արուեստ կը կատարէր: Անտի կը դառնային տուն «Արեւելից ամենայն մեծապայծառ եւ շքեղափայլ, երփներանգ պերճութեամբք նախապէս բեռնաւորեալ, հոն կը վաճառէին փերեզակութեամբ երկնակապոյտ անթաւ թաւիշներ, կանանչ տամասկեան կերպասներ, բոսորագոյն ոսկեհիւս դիպակներ, մետաքսեայ գեղանկար մուքատիմ-զօտիներ, տանկական շալեր եւ սեկեր եւ այծենի մորթեր — եւ այս ամէնը նոր եւ փայլուն, արեւելեան երանգոց եւ բուրմանց յատուկ քաղցր հոտով: Զարմանք չէ, որ նոր հասած Հայ կարաւան մը՛ Լէմպերկի ազնուական տիկնայց համար, քաղաքային դէպք մը եւ գործ կը համարուէր, խնայող քաղաքացեաց համար ելեւմտական շտեմարան մը: Այս՝ պատճառ մը աւելի կրնար ըլլալ Հայոց դէմ չարակամութեան, որոց վրայ արդէն ռամիկը երկար ժամանակէ ի վեր ծուռ աչքով կը նայէր: Վասնզի Հայք թագաւորին եւ կառավարութեան առջեւ, պատիւ եւ յարգ ունէին, զոր գիտցան գործածել իրենց նպաստաւոր արտօնութիւններ հայթայթելու, եւ շատ խնդիրներու մէջ (զորս ունեցան Լէմպերկի քաղաքապետութեան հետ), նոյնիսկ ի նպաստ իրենց վճիռներ կորզելու: 1505ին ձեռք բերին նաեւ լիովին ազատութիւն ի մաքսէն ոչ միայն արեւելեան, այլ նաեւ Լիթուանիոյ, Ռուսիոյ եւ Ծլէզիոյ վաճառուց համար: Այժմ կը գտնուին Հայ արուեստաւորաց ժողովատեղիներու մէջ արեւելից գանձերու քով նաեւ Ռուսիական սաք, Հունգարական դանակներու եւ զերանդիներու քով՝ Վենետիկեան ոսկերչական գործեր: Այնչափ աւելի կարեւոր անդամ մ'եղան Հայք ընկերական կազմակերպութեան մէջ, որչափ աւելի, շնորհիւ իրենց ճարտար կենցաղավարութեան եւ քաջաբան լեզուագիտութեան, ունեցան գերազանց կերպով ամենայն պահանջուած յատկութիւնները իբր թարգման, գործակատար, վաճառականու, միջնորդ եւ «գործակալ»:» (Ա. Ց. Նոյն, ԲԱԶՄԱՎԷՊ, 1898 էջ 388—9):

(1) Լուի Հունգարիոյ եւ Լեհաստանի թագաւոր էր, որուն մահուընէն յետոյ խառնակութիւններ պատահեցան Լեհաստանի մէջ եւ շատեր ջանացին կորզել Լեհաստանի թագը, մինչեւ որ զայն տուին Հետուիկի՝ Լուի թագաւորի աղջկան (Կամէնից, 217)։



Այսպէս, Հայերու դիրքը և ազդեցութիւնը հետզհետէ աւելի զօրացաւ։ Մասնաւորապէս անոնք ստուարացան նոր ճիւղաւորումներով և Լեհաստանի ընդարձակուելուն հետեւանօք՝ հայաբնակ ուրիշ վայրերու ալ Լեհաստանին կցուելովը։ Այսպէս, Սուչովա (Պուքովինա), որ Մոլդաւայի Հայ գաղութին մաս կը կազմէր, 1445ին կցուեցաւ Լեհաստանի (Պատմ. Պուքովինայի եւ Մոլդաւիոյ Հայ գաղթականութեան: ՀԱ. 1891. 19 նաեւ ՀԱ. 1906 160—72) և ստուարացուց Լեհաստանի Հայ գաղութին թիւը, որ կը հասնէր 200,000ի, թէեւ պնդողներ չատ կան թէ 400—500 հազարէն պակաս չէր։

Այն քաջալերանքը, զոր Լեհաստանի թագաւորները ընծայեցին զինուոր Հայերուն, ցոյց տուած են նաև առեւտրական և արհեստաւոր Հայերուն, որովհետև տնտեսական մարզին մէջ ալ մեծ էր անոնց ծառայութիւնը։

Գազիմիր Գ. թագաւոր (1447—1492) ասոր համար 1462ին հաստատեց և ընդարձակեց 1402ին տրուած առեւտրական հրամանը և արտօնեց Հայերուն որ ծովէն և օտար երկիրներէն բերած իրենց ապրանքները ծախեն Լեհերուն (ՀԱ. 1890, 7)։ Այս իրաւունքը 1465ին վերահաստատեց և 1486ին նոյնիսկ զինի ծախելու իրաւունք տուաւ (Նոյն)։

Հայերը, շնորհիւ այս պաշտպանութեան, վաճառականական ընդարձակ

*ձեռնարկներ ըրին և ծառայեցին երկրին տնտեսական զարգացման և բարգաւաճութեան, իրենք ալ օգտուելով փոխադարձաբար։*

*Լէմպէրկի մէջ կարեւորութեան տեսակէտէն քաղաքին բնակչութիւնը այսպէս կը դասաւորուէր. Լեհերը, Հայերը, Ռութէնները և Հրեաները։ Հայերը հռչակուած էին իրենց քաջութեամբ և ճարպիկութեամբ։*

*Հայերը Լեհաստանի մէջ իբրեւ վաճառական, իբրեւ հողագործ և իբրեւ կալուածատէր մեծ դիրք և կարեւորութիւն ստացան և անգամ մը եւս ապացուցին թէ յարմար միջավայրի մը մէջ՝ աշխարհաշէն ու շինարար մարդիկ են և մշակութային, կեանքի, վաճառականութեան և արուեստներու գերազանց ընդունակութիւն ունին։*

*Լէնկ Թիմուր ԺԴ. դարուն վերջերը՝ երբ անապատի և համատարած գերեզմանատան մը վերածեց բովանդակ Ասիան և Սեւ ծովի Հիւսիսային եզերքներու ներքնաշխարհը, այս աւերէն զերծ մնացին միայն Կեդրոնական Եւրոպան, ուր հաստատուած Հայերը կրցան քիչ ու շատ նշանակելի դեր մը կատարել. մինչ երբեմն Հայոց միակ գաղթավայր հանդիսացող Բիւզանդիոնը օրէ օր դէպի կործանում դիմեց Թաթարական ցեղերու մէկ ճիւղին՝ Օսմանեան Թուրքերու կողմէ, որոնք մինչեւ Դանուբ, նոյնիսկ մինչեւ Ղրիմ տարածեցին իրենց իշխանութիւնը։ Հայերը, ինչպէս տեսանք, Ղրիմի մէջ մեծ բարգաւաճման հասած էին. երբ Թուրքերը Ճենովացիներու ձեռքէն կորզեցին Ղրիմը, Հայերը սկսան կրկին գաղթել։*

*Ղրիմահայերէն մաս մը Մոլտաւիա և Վալաքիա, Հունգարիա և Թրանսիլվանիա, և մաս մըն ալ Մոզիլէվ (Տնիեստեր գետին վրայ) ժմանեց աւանը, Կամէնից-Պոտոլսկ, Կալիցիա և Լեհաստան անցան և զօրացուցին այդ վայրերու Հայ գաղութները։*

*Այսպէս, ԺԱ–ԺԴ դարերու ընթացքին՝ Լեհաստանի, մասնաւորապէս անոր Կալիցիա նահանգին մէջ, ստեղծուեցաւ Հայ ազդեցիկ և առանձնաշնորհեալ գաղութ մը, որ ԺԴ. դարուն, յատկապէս 1367էն ետքը, ստուարթիւ անդամներ ունեցաւ։*

*Հայերը եղան շատ սիրելի թէ՛ տէրութեան աւագանիին և թէ ժողովուրդին։*

*Գազիմիր Գ. իր սահմանած զանազան նոր առանձնաշնորհումներու կարգին, ինչպէս տեսանք, ոչ բոլորովին անկաշկանդ և լիակատար, շնորհեց ազատութիւն անարգել պարապելու վաճառականութեամբ և արհեստներով։*

*Ըստ ոմանց՝* 1364*ին և ըստ ուրիշներու* 1367*ին Գազիմիր Գ. Հայոց տուաւ նաեւ կրօնական պաշտամունքի ազատութիւն* (Բազմավէպ 1898. 388 *և ՀԱ.* 1890, 6), *ինչպէս նաեւ Գրիգոր Հայ եպիսկոպոսին արտօնեց որ իր աթոռը Լէմպէրկ հաստատէ* (*ՀԱ.* 1896. 6 *և Ց. Մարթանեան*, Արեւելք, 12 *Օգոստոս* 1932)։

*Հայոց առաջին արքեպիսկոպոսը՝ Գրիգոր, պաշտօնավարեց* 1363*էն* 1388։ *Մեսրոպ Արտազեցի կաթողիկոսին* (1359–1372) *կողմէ իրեն տրուած կոնդակը,* 1364 *թուականով, Լէմպէրկի առաջնորդութեան սահմանին մէջ կ'առնէ Լաւվ, Աւլատիմիր* (1), *Լուցկա քաղաքները։ Ուրեմն այդ եպիսկոպո-*

(1) Աւլատիմիրս՝ Վլատիմիր քաղաքն է։



*սին իրաւասութեան ենթարկուած էր, պզտիկ շրջանակ մը որուն ետքը,* 15 *Յունուար* 1375*ին, Կոստանդին Դ. կաթողիկոսի կոնդակը նոյն սահմանը կը գծէ, բայց* 1384*ին Մոլտավիոյ Փէթրէ Մուշաթ* (1378—1393) *իշխանը կ'արտօնէ Լէմպէրկի Հայ արքեպիսկոպոսին իրաւասութեան ենթարկել նաեւ Մոլտավիոյ Հայերը, որովհետեւ անոնք դեռ բաւականաչափ թիւ մը չէին կազմեր սեփական եպիսկոպոսութիւն ունենալու համար* (Gr. Goilaw, *վերոյիշեալ գործը. էջ* 5)։

*Մոլտավիոյ իշխանին այս հրամանին վրայ՝ Թէոդորոս կաթողիկոս* (1377—1392) 1390*ին Յովհաննէս Արքեպիսկոպոսին տուած է կոնդակ մը, որ շատ հետաքրքրական վաւերագիր մըն է, վասնզի իբրեւ թեմ և վիճակ՝ Լէմպէրկի եպիսկոպոսին կը յիշէ* «Լով, Լուցկա, Մանկրման (= *Աքքերման*) Սերաթ, Չեչով (=*Սուչաւա*), Կամենից, Աւլատմուր (*Վլատիմիր*), Վլախաց երկիր, Պոհն *և* Ընկիռաւաց (?)»։ *Այս կոնդակը բացորոշ կերպով ցոյց կու տայ թէ Լեհաստանի Հայերուն ծագումը և անոնց այդ երկիրը մտնելու ճամբան ինչպէս կապուած է Սեւ Ծովի եզերքի Հայ գաղթականներուն, ինչպէս նաեւ Մոլտավիայի և Վալաքիայի Հայ գաղութներուն, իբրեւ անոնց ճիւղաւորումները* (1)։

*Ասիկա աւելի բացորոշ կ'երեւի* 1398*ին գրուած ձեռագիրի մը մէջ, ուր Յովհաննէս Արքեպիսկոպոսին տիտղոս տրուած է* «Արքեպիսկոպոս Ռուզաց (*կարդա Ռուսաց, անշուշտ իր Բիւզական ծագումին համար*) *և* Օլախաց աշխարհի (*այսինքն՝ Վալաքիոյ*) *և* հոգեւոր առաջնորդի Լեհաստանի»(2)։

*Այս տիտղոսը խիստ յատկանշական է և շատ յստակ ցոյց կու տայ թէ ինչպէս Հայերը որ Ռուս զանազան մանր իշխաններէն Կիեւի իշխաններու հողերուն և անոնց մաս կազմող Լվով մայրաքաղաքով Կալիցիոյ հողամասը հաստատուած էին։ Կալիցիոյ Լեհաստանի կցումով կազմուեցաւ Լեհահայ գաղութին կորիզը, որ Գազիմիր Գ.ի շնորհուած առանձնաշնորհումներուն ամուր կառչած՝ հետզհետէ կը զօրանար և կը տարածուէր երկիրին մէջ, ինչպէս ցոյց կու տային Հայ առաջնորդներուն իբրեւ իրաւասութեան սահման նշանակուած վայրերը։*

*Շնորհիւ այդ իբրեւ բացառիկ շնորհ տրուած իրաւունքներուն՝ Լեհաստա-*

(1) Այս կապակցութիւնը կը հաստատէ 25 Յունիս 1410ին, Յակոբ Գ. Սսեցի Կաթողիկոսի (1408—1411 +) Յովհաննէս եպս.ին տրուած կոնդակին մէջ, որ իբրեւ վիճակ կը նշանակէ «Լովն եւ յամենայն վիճակին իւր բոլորովին, Սերեթն, Չեչովն, Կամենից Լուցկա, Ալյատմուր, Մանկրման, Վլախաց երկիրն եւ Պոտոլն եւ Ընկիռաւացն եւ այլն ամենայն ընդ իւր իշխանութեամբ», եւ 1457ին Արիստակէս կաթողիկոսի (1448—1470) կոնդակը, որ իբրեւ վիճակ Լեհաստանի Առաջնորդին կը յիշէ «Ամենայն ազգի մայրաքաղաքն Լով կոչեցեալ, Սեչովն, Կամենեցն, Սերեթն, Պոդհայցն, Մանկերմանն, Պեյզան»:

(2) Կամենիցի ամսագրէն Ս. Ստեփանեանի ժամանակագրութեան մէջ նոյն 1398 թըւականով կը յիշատակուի նոյն եպիսկոպոսը այսպէս. «Տէր Յովհաննէս արքեպիսկոպոս Լեհաստանի Հայոց... առ ոչ միայն Լեհաց այլեւ Պողտանաց (= Մոլտավա) երկրի Հայոց առաջնորդ էր» (Ալիշան, Կամենից, 180)

նի Հայ գաղութը ԺԵ. և ԺԶ. դարերուն ունեցաւ բարգաւաճման փայլուն շրջան մը և փառքի օրեր, նախ Պուքովինայի և Կալիցիոյ մէջ առաջնակարգ դեր գրաւելով քաղաքական և ընկերային կեանքի, ինչպէս նաև ճարտարարուեստի և մտաւորական շարժման մէջ և ապա ամբողջ Լեհաստանի և անոր նոր մայրաքաղաքին՝ Վարշաւայի մէջ (1), ուր Հայերը նշանաւոր հանդիսացան բոլոր ասպարէզներուն մէջ։

Գ.

## ԴԷՊԻ «ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿՈՂՄՆ ԱՇԽԱՐՀԻՍ»

Հայկական Բարձրաւանդակին հարաւային կողմը կը տարածուի դաշտային ընդարձակ տարածութիւն մը, որ անապատ մը պիտի ըլլար, արաբականին նման, եթէ Հայաստանէն ծագում առնող երկու մեծ գետեր, Տիգրիսը և Եփրատը, զայն չոռոգէին, երկու տարբեր ուղղութեամբ դիմելով դէպի հարաւ, ուր իրարու միացած՝ կը թափին Պարսից Ծոց։

Այս երկու մեծ գետերը՝ իբրև մայր երակներ՝ Հայաստանը յարաբերութեան մէջ կը դնէին Հայկական լեռնադաշտին հարաւակողմը տարածուած երկիրներուն հետ և ասիկա՝ շատ հին ժամանակներէ սկսեալ, ինչպէս կը նկարագրէ Հերոդոտոս (Ա. 194)։ Ան մանրամասն ցոյց կու տայ այն կերպը, որով Հայերը Տիգրիսի միջոցով Բաբելոն կը փոխադրէին Հայաստանի արտադրութիւնները, մասնաւորապէս գինին (ՊՀԳ. Ա. 47 - 48)։

Հայկական Բարձրաւանդակը, որ զառիվեր վայրէջք մը ունի դէպի Միջագետք, ունի և շատ դիւրաւ անցանելի տեղեր, որոնք կը դիւրացնէին Հայաստանի յարաբերութիւնները Միջագետքի հետ։ Այդ դիւրաւ անցանելի վայրերն էին՝ արևելեան կողմը Զաբի և Բոթան Սուի մէջտեղը, իսկ արևմտեան կողմը՝ Տիարպէքիրի և Խարբերդի միջև գտնուող հողամասը։

Այս երկու վայրերը, որոնք կը կազմէին նաև կերպով մը Տիգրիսի և Եփրատի ճամբան, կը ծառայէին որպէս վաճառականական ուղիներ և անցքեր։

Մասնաւորապէս Տիգրիս՝ նշանաւոր դեր մը կատարած է Միջագետքի քաղաքական կեանքին մէջ, իբրև սահման Բիւզանդական և Պարսկական պետութիւններուն։

Դարա սահմանագլուխի համբաւաւոր ամրոցը, Մծբինէն քիչ անդին, շատ քիչ հեռու կը գտնուէր Տիգրիսէն։

Հետևաբար Տիգրիս՝ աւելի արիւնալի դրուագներու թատերավայր եղած է, բայց իբրև հաղորդակցութեան ուղի՝ սահմանափակ դեր մը կատարած է Հայաստանը՝ Ասորեստանի և Հնդկական Ովկիանոսի հետ յարաբերութեան դը-

(1) Վարշաւան գոյութիւն ունի 1224էն: Սիկիզմունդ Գ. Լեհ թագաւորը Կրակովէն Վարշավա փոխադրած է իր մայրաքաղաքը:



նելով. մինչ Եփրատ՝ Արևելքը հաղորդակցութեան կը դնէր Արևմուտքի հետ և աւելի ընդարձակ վաճառականութեան կը ծառայէր, հիւսիսային Սուրիոյ մէջ շատ մօտենալով Միջերկրական Ծովին։

Եւ գիտելի է թէ Հայերը, որոնք մասնաւորապէս Արևելքի արտադրութիւնները դէպի Արևմուտք փոխադրելու աշխատած են, աւելի Եփրատէն կ'օգտուէին քան թէ Տիգրիսէն։ Նաև պէտք չէ մոռնալ թէ լաստերով կարելի էր միայն հոսանքն ի վար նաւարկել և ոչ թէ դէպի վեր։ Տիգրիս դէպի հարաւ աւելի արտադրող վայրեր կը տանէր զիրենք, սակայն ապրանքի փոխադրութեան չէր օգներ։

Հայ այն գաղթականները, որոնք դէպի հարաւ դիմած են, առ հասարակ այս երկու մայր երակներուն ուղղութեամբ շարժած են երբեմն ակամայ՝ բռնադատեալ և երբեմն կամաւոր կերպով՝ հացի և ապրուստի համար։

Անոնք որ Տիգրիսի ընթացքին հետևած են, անոր եզերքները և անոր հարկատու հողամասին շուրջը հաստատուած են, և այդ ուղղութեամբ հասած են մինչև Պարսից Ծոցը, իսկ անոնք որ Եփրատի ընթացքին հետևած են, անոր դէպի Միջերկրականի մօտեցող արմուկովը յարաբերած են այդ ծովուն հետ։

Այս պատճառով՝ մեծ թիւով հայեր շատ հինէն հաստատուած են Եփրատի երկու կողմերը՝ Ասորիքի (= Հիւսիսային Սուրիոյ) և հիւսիսային Միջագետքի արգաւանդ մասերուն մէջ (ՊՀԳ. Ա. 250—252 և 362)։

Բայց այս երկիրներուն՝ քրիստոնեայ Բիւզանդիոնի տիրապետութեան տակ գտնուած ըլլալն ալ դեր մը կատարած է, վասնզի ինչպէս յայտնի է, Հայերը միշտ նախամեծար համարած են գաղթել քրիստոնեայ երկիրներ։

Տիգրիս, արաբական տիրապետութեան տևողութեան, մեծ մասամբ քրիստոնեայ աշխարհէն հեռու մնացած էր, մանաւանդ այն թուականներէն սկսեալ, երբ Քիւրդերը խուժած են և Տիգրիսի հարկատու Կորդուաց լեռնային վայրերուն մէջ ամրացած և Հայերուն համար անհրապոյր միջավայր մը ստեղծած էին։ Ապա նոյնքան նշանակելի է որ Տիգրիս իբրև հաղորդակցութեան ճանապարհ՝ այնքան ընդարձակ շահաստաններու հետ յարաբերութեան չէր կրնար դնել որքան Եփրատը։

Ասով հանդերձ՝ նկատի առնելով Մեծն Տիգրանի աշխարհակալութեան սահմանները, ինչպէս նաև Հայաստանի սահմաններէն դուրս հարաւակողմը, Հայաստանի տիրապետութեան ենթարկուած եօթը շրջաններու (1) գոյութիւնը զորս միայն Հայ պատմագիրները կը յիշատակեն, (տես. Փաւստոս, Գ. ծ և Ե.

(1) Այդ եօթն շրջանակներն էին 1. Նոշիրական կամ Նորշիրական. 2. Նենուրական, 3, Մահկերտուն. 4. Դասն, 5. Ծաւդէք, 6. Արզնարզիւն, 7, Ռէեմիսա:

Առնենք **Նոշիրական, Մահկերտուն** (Ճէզիրէի շրջակայքը). **Ծաւդէք** եւ **Դասն** որոնք կը գտնէին Միջագետքի հիւսիսային արեւելեան մասը. Հռոմայեցիք **Միգդոնիա** կը կոչէին եւ որ կը պատկանէր աւելի Տիգրիսի ափին քան Եփրատի: Եւ կ'երկարէր մինչեւ արաբական աշխարհ: Այս շրջանակը՝ հակառակ Հայաստանի աշխարհագրական սահմաններէ դուրս ինկած ըլլալուն՝ հաւանական է որ երկար ատեն մաս կազմած է Արշակունի Հայ Թագաւորութեան հողերուն: Հոն էր **Մծբին** (Մծբուն, Մծբն = Նիզիպին), Միջագետքի առեւտրական նշանաւոր կեդրոնը:

Թ և Աշտարանջեղոս, էջ 628 և 650), քրիստոնէութեան առաջին դարերուն, ցոյց կու տան թէ Տիգրիսի արևելեան կողմը, երբեմն Հայերը շատ մեծ թիւ մը կը ներկայացնէին, մանաւանդ Մեծն Տիգրանէն ետք, որ երկիրին հարաւային սահմանագլուխին վրայ հաստատեց իր Տիգրանակերտ (= Մուֆարգին) մայրաքաղաքը։ Հետագային Տիգրանակերտ առևտրական մեծ կեդրոն մը դարձաւ։

Հայերը այդ սահմանագլուխէն անդին արդէն հաստատուած էին, ինչպէս կը տեսնուի Կրասոսի արշաւանքին պատմութենէն, քանի որ Խառանէն ոչ շատ հեռու, դէպի հիւսիս գտնուող բլրաշարքերը արդէն հայաբնակ գիւղերով և աւաններով լեցուած էին (Ե. Տիչեան, Կոչնակ, 1939, էջ 737)։ Ասիկա կը հաստատուի նաև Տիանացի Ապողոնիոսի 44ին (Բր. է ետք) Միջագետքի դաշտային մասին մէջ կատարած ճամբորդութեան նկարագրութենէն, վասնզի ան բազմաթիւ հայաբնակ գիւղեր կը գտնէր արաբական վաչկատուն ցեղերուն մէջ (Gutshmid, Kleine Schriften III, 64)։

Նոյնպէս կարելի չէ անտեսել վկայութիւնը Ասողիկի (էջ 182), որ կը հաւաստէ թէ Ժ. դարուն, Արաբներուն Նփրկերտէն վանուելէն ետք՝ հոն Հայեր և Ասորիներ կը բնակէին։

Հայերը, որ զինուորականապէս մինչև Մծբինի մօտերը գրաւած էին, անկարելի է որ այդ տեղերը հաստատուած չըլլային։ Պ. Վարդան Մելքոնեան կը գրէ (Հայրենիք ամսագիր, ԻԴ. տարի, Թ. 4) որ կ'ըսուի թէ նախ քան 640ական թուականները, մէկ միլիոնէն աւելի Հայեր կային Իրաքի մէջ, որոնք մեծ մասամբ Տիզբոն կը բնակէին, բայց յետոյ հալածանքներէն փախած՝ հետզհետէ գացին դէպի Պարսից Ծոց և Հնդկաստան, ուր շատեր մահցան և մնացեալները տեղացիներու հետ խառնուեցան։

Թերևս Հայերու թիւը չափազանցուած է այստեղ, սակայն բոլորովին ալ անհիմն չէ Է. դարէն առաջ այդ շրջանակին մէջ որոշ թիւով Հայերու գոյութիւնը։

Է. դարէն ետք, երբ իսլամ կրօնին միջնաբերդը կը հաստատուէր այս շրջանակին մէջ, Հայերու կեանքը հոն կը դժուարանար, վասնզի երկիրը բնակավայրը կ'ըլլար իսլամ մեծ զանգուածի մը, որ աններող ատելութեամբ հալածանքի կը մատնէր ոչ-իսլամները, որով Հայերը, չէին կրնար ապահովել և նոյնիսկ պահպանել իրենց գոյութիւնը։

Այնպէս որ Ե. դարուն Պարսիկներէն հոն տարագրուած (ՊՀԳ. Ա. 290—1) և Է. դարէն սկսեալ Արաբներէն դէպի Սամարա և Պաղտատ գերի տարուած (ՊՀԳ. Ա. 348—9 և 352) Հայերէն — որոնցմէ ոմանք իսլամանալով մեծ ծառայութիւններ մատուցած էին Աբբասեան Խալիֆայութեան — գրեթէ հետք չէր մնացած ԺԱ. դարուն, երբ Կեդրոնական Ասիայէն դէպի արևմուտք բարբարոսներու արշաւանքները սկսան։

Այն ատեն այնքան աննշան էր իրենց թիւը, որ իրենց հոգևոր մատակարարութիւնը դաւանակից Ասորիներու ձեռքով կը կատարուէր (ՊՀԳ. Ա. 352)։

Արաբական այս շրջաններուն մէջ ապրող Հայերը՝ մանաւանդ վաճառականներ էին, եթէ սոսկ փերեզակներ չէին։ Իրենց համար ուրիշ ապաբէզ չկար, վասնզի իրենց քրիստոնեայ կրօնքը արգելք էր անոնց պետութեան ծառայելու թէ՛ իբրև քաղաքային և թէ՛ իբրև զինուորական. ամիրապետներուն վստահութիւնը գրաւելու առաջին պայմանը իսլամանալն էր։ Առանց կրօնափոխութեան դժուար էր պաշտօն և աստիճան առնել։ Հետևաբար, անոնք՝ որոնց մէջ ազգային գիտակցութիւն չկար կամ տկար էր և որոնք փառքի և իշխանութեան կը տենչային, կ'իսլամանային և կը խառնուէին մեծ զանգուածին և կը կորսուէին հայութեան համար։



Շատ հազուագիւտ կերպով և պատահաբար՝ անոնցմէ ոմանց յիշատակութիւնը պահուած է (ՊՀԳ. Ա. 356—358), և միւսները բոլորովին մոռցուած են։

Հետևաբար, Աբբասեան Խալիֆայութեան շրջանին, տարակուսելի է որ իբրև քրիստոնեայ՝ Հայերը Միջագետքի հողին վրայ, Խալիֆաներու անմիջական տիրապետութեան շրջանակին մէջ կրցած ըլլան ապրիլ, բացի անոնցմէ՝ որոնք բանագնացի, խնդրարկուի և կալանաւորի հանգամանքով գացած են Սամարա ու Պաղտատ և մնայուն բնակութիւն չեն ունեցած։

Նոյնիսկ հոն հաստատուն բնակութիւն չեն ունեցած այն Հայ վաճառականները, որոնք Հայաստանի ցորենը մինչև Պաղտատ կը տանէին։ Հայերու անչքացումը կը հաստատուի անով որ, Պաղտատի մէջ կամ Միջագետքի ուրիշ վայրերը, Հայերը կրօնական-եկեղեցական կազմակերպութիւն չունէին բնաւ, և Ասորի եկեղեցականներ կը հոգային զիրենք։ Ասիկա ըսել չէ թէ բացարձակապէս Հայեր չկային Արաբ երկիրներու մէջ։

Ընդհակառակն, Բիւզանդական հալածանքներէն խոյս տուող և Արաբ երկիրներ ապաստանող Հայեր պէտք է գտնուած ըլլան, մանաւանդ կրօնական հանդուրժողութիւն ցոյց տրուած շրջաններուն մէջ, որոնք քիչ չեն եղած։

Թիւրիմացաբար մեր պատմագիրները շատ գէշ ներկայացուցած են արաբ տիրապետութիւնը,(1) սակայն Արաբները իրենց հպատակներու կրօնքին, նիստուկացին ու մանաւանդ տնտեսական մարզերու մէջ ձեռք բերած յաջողութիւններուն հակառակ չէին, միայն չէին վստահեր ոչ-իսլամներուն, զինուորական և վարչական պաշտօններ, զանոնք իսլամներու մենաշնորհը նկատելով։

Այս պատճառով պատմութիւնը այնքան քիչ ունի յիշատակութիւնը Արաբ նուաճման տակ եղած երկիրներուն մէջ երևելի հանդիսացող Հայ դէմքերու։

Թերևս Բիւզանդական սահմանէն հեռու մնացած այս հողերը չեն կրցած նոր գաղութներ ընդունիլ և հին գաղութները իրենք իրենց մէջ հիւծած ու սպառած են։ Ասով միայն կը մեկնուի անոնց բնաւ յիշուած չըլլալը։

Բայց քանի որ Աբբասեան Խալիֆաները իրական և երբեմն ալ անուանական տիրապետներն էին Հայաստանի, անտարակուսելի է որ յարաբերութիւններ ունէին Հայոց աշխարհին հետ և Պաղտատի, Սամարայի և թերևս ուրիշ քաղաքներու մէջ, Հայեր ապրած են մինչև Աբբասեանց կործանումը։

Ասիկա կը հաստատուի քանի մը յիշատակութիւններով, որոնց գլխաւորն

(1) Բազմաթիւ Հայ երեւելիներ լքած են Բիւզանդացիները եւ օգնած են Արաբներուն (ՊՀԳ. Ա. 360—1)

է 1258ին Թաթարներու կողմէ Պաղտատի գրաւման և Խալիֆայութեան բարձրաձման առթիւ Վարդան և Կիրակոս պատմագիրներու գրածները, որոնք կը հաստատեն թէ Պաղտատի մէջ վերջին Խալիֆային առեն տակաւին կ'ապրէին քրիստոնեաներ, որոնց մէկ մասը շատ հաւանաբար Հայեր էին։

Ահա թէ ի՛նչ կը գրեն այդ երկու պատմագիրները։ Վարդան (էջ 150) Պաղտատի գրաւումը նկարագրելէ յետոյ, կ'ըսէ՝ «սպան եւ զխալիֆայն իւրով իսկ ձեռօքն Հուլաւու, որում անուն էր Մուսթասր» և անմիջապէս կը յարէ՝ «եւ ապրեցան քրիստոնեայք որ կային անդ, կամօք եւ բարեխօսութեամբ Տօղուզ մեծի թագուհւոյն»։

Իսկ Կիրակոս Գանձակեցի, մանրամասնօրէն, պատմելէ ետք Պաղտատի գրաւումը, կ'աւելցնէ թէ ինչպէս Հուլաղու մաս մաս անձնատուր եղող քաղաքին բնակիչները ծածուկ ջարդած է և ինչպէս ի վերջոյ սպաննած է Խալիֆան և իր երկու զաւակները, ու իր զօրքին քաղաք մտնելէն յետոյ՝ անձնատուր չեղող քաղաքացիները 40 օր մինչև վերջը անընդհատ ջարդել տուած է։ Այս բոլորէն ետքը, Կիրակոս կը յարէ. «Բայց կին Հոլաւուին աւագ խաթունն քրիստոնեայ էր, որ կոչէր Տօխուզ խաթուն, սա խնդրեաց զքրիստոնեայսն՝ որք էին ի Պաղտատ, Նեստորական աղանդով եւ թէ յայլ ազգաց եւ եթող զնոսա ընչիւք եւ ստացուածովք, զի խնդրեաց յառնէն իւրմէ ոչ սպանանել զնոսա» (Կիրակոս 223–4)։

Այս տողերէն որոշապէս յայտնի է որ Պաղտատի քրիստոնեաները, որոնց մեծամասնութիւնը Նեստորական էին, ընդհանուր կոտորածէն փրկուած են, Հուլաղուի կնոջ քրիստոնեայ Տօքուզ Խաթունի բարեխօսութեամբ։

Այդ ԱՑԼ քրիստոնեաներու մէջ որոշ թիւով կային անշուշտ Հայեր, նկատի ունենալով որ Պաղտատ՝ Հայերու համար բոլորովին անկոխ գետին մը չէր, և Հայերը, իբրև ոչ-Բաղքեդոնական, արեւելեան ուրիշ ազգերու հետ կը ներկայացնէին մէկը այն ժողովուրդներէն, որոնք Արաբները իբրև ազատարարներ ընդունած էին, քանի որ անոնք կու գային փրկել զիրենք Պաղտատի Խալիֆաներէն ոմանց մոլեռանդութենէն և Ռոմանոս Դ.ի մտայնութեամբ Բիւզանդիոնի կայսրերուն ատելութենէն։

Ասիկա սովորական երեւոյթ մըն է սորուկ ժողովուրդներուն համար, որ նոր տէրերէն նպաստաւոր բան մը կը յուսան։

Հայերն ալ այս փոփոխամտութիւնը ունեցած են և սիրով համակերպած են Սելջուկ տիրապետութեան, և նոյնիսկ անոր օժանդակած են լինչ ինչ պարագաներու մէջ։ Սակայն Սելջուկեանք, մասնաւորապէս Տուղրիլ և Ալփասլան, անգթութեամբ վարուած են քրիստոնեաներու հետ, մանաւանդ երբ անոնք վախնալով, իրենց հին տէրերուն դէմ դաւած չէին և անոնց հետ Սելջուկներու դէմ կռուած։

Սելջուկեաններու գործած անգթութիւններու շարքին, ականատես պատմիչներ, ինչպէս Լաստիվերտցի, Ուռհայեցի, Կեդրենոս և Զոնարաս, կը վկայեն թէ անոնք Հայաստանէն առած են անհամար գերիներ, մինչեւ որ Մելիք Շահի (1072–1092) բարեկարգ վարչութեան տակ երկիրը խաղաղած է։

Սելջուկեանք, որոնք Պաղտատի և շրջակայից, կամ մէկ խօսքով, Ի-



րաք Արապիի և Իրաք Աճէմիի միանգամայն տիրած էին և իրենց մայրաքաղաք դարձուցած Իսպահանը, անշուշտ հոն գտած են նախապէս այդ շրջանները հաստատուած Հայեր, որոնց մասին դժբախտաբար չունինք վաւերական տեղեկութիւններ։

Կարելի է մտածել թէ այդ Հայերէն մաս մը արշաւող այս հրոսներուն առջեւէն փախչող զանգուածներուն հետ փախուստ տուած է կամ անոնց խառնուած՝ կրօնափոխութեամբ, վասնզի պէտք է ըսել թէ Սելջուկները մոլեռանդ էին։

Ամէն պարագայի մէջ Սելջուկ տիրապետութեան շրջանին Միջագետքի Հայերուն վիճակը բնաւ փայլուն եղած չի կրնար ըլլալ։

Հայ գերիները, զորս անոնք Հայաստանէն առած են, դժբախտաբար յայտնի չէ թէ ո՛ւր տարած են (տես. վերը 286)։

Մեր պատմագիրները — ինչպէս տեսնուեցաւ — շատ տարտամ բառեր կը գործածեն, ընդհանուր կերպով ըսելով՝ «վարեցան ի գերութիւն» և պատահաբար անոնց կը կցեն նաեւ «յաշխարհն Պարսից» կամ «ի Պարսիկս», ոչ նուազ անորոշ և տարտամ բառերը։

Գիտնալով որ մինչեւ 1118 Սելջուկ մեծատարած պետութեան մայրաքաղաքն էր Սպահան, հաւանական է ենթադրել թէ Հայաստանէն առնուած մանուկ և կին գերիները (Ուռհայեցի էջ 167) մինչեւ այնտեղ քշուած են (տես. վերը 290)։

Սակայն այդ թուականէն ետք, երբ Հայաստան Պարսկաստանի Սելջուկ Սուլթանին իշխանութեան ենթարկուած էր, Հայերէն վերցուած գերիները կը տարուէին այս պետութեան զանազան մասերը։

Թէ Հայաստանէն առնուած գերիներէն մաս մըն ալ Իրաքի կողմերը տարուա՞ծ են, ասիկա կը մնայ խնդրական և կասկածելի. միայն թէ Սպահանի կողմը տարուածներէն մաս մըն ալ Իրաքի բաժին ինկած ըլլալը հաւանականութիւն մըն է։ Ինչպէս անոնց իսլամ զանգուածին խառնուած ըլլալը՝ իբրև անխուսափելի հետեւանք իսլամ աշխարհին մէջ տիրող մտայնութեան (տես. վերը, 283)։

Հետեւաբար, Սելջուկ տիրապետութեան տակ նոր գաղութներու կազմութեան դժուար է համոզուիլ, երբ Սելջուկները կը գրաւէին բոլոր Խալիֆայութեան երկիրները — որոնց մէջ էր Իրաք — և իրենք կը կառավարէին զանոնք յանուն իսլամաց խալիֆային, որուն լիազօր ներկայացուցչութիւնը ձեռք բերած էին, գրեթէ մէկուսացնելով զայն։

Մոնկոլները, որոնք ԺԳ. Դարուն սկիզբը եկան Սելջուկներուն ձեռքէն յափշտակելու անոնց տիրակալած երկիրները, աւելի թոյլ իսլամներ էին, սակայն նուազ անգութ չէին, այնպէս որ՝ երբ 1194ին Սելջուկ Պարսկաստանը ընճուեցաւ Մոնկոլներէն, որոնք իրենց կարգին արեւմուտք կ'արշաւէին, կըրկնուեցան դարձեալ այն վայրագութիւնները, որոնք Տուղրիլի և Ալփասլանի ատեն գործուած էին։

Անոնք ալ, ինչպէս տեսանք (տես. վերը, 253–6), գործեցին գերառութիւններ յայտնի պատճառներով, նախապատուութիւն տալով (տես. վերը,

147) արհեստաւորներու — ինչպէս եղած էր 1281ին, Անիի գրաւման առթիւ։

*Մոնկոլները, ինչպէս դիտուած է, որչափ ատեն որ Հայաստանը նուաճելու զբաղած են, անգութ եղած են, կարծես ահուսարսափ ազդելու համար։ Իսկ երբ իրենց տիրապետութիւնը ամրապնդած են, այլեւս մեղմութեամբ վարուած են, մինչ հարկերը և տուրքերը ծանր պահելով, ապստամբութեան վրայ խորհելու միջոց չտալու համար ժողովուրդին։ Միակ առաւելութիւնը զոր ունեցած են՝ այն է որ անոնք կրօնական հալածանք գրեթէ չեն գործադրած։ Ընդհակառակն քրիստոնէութեան համակիր եղած են, վասնզի՝ ինչպէս յայտնի է՝ Մոնկոլները բաւական ատեն տատանած են Քրիստոնէութեան և Մահմետականութեան միջեւ։ Անոնք ունէին վեհապետներ, որոնք քրիստոնեայ էին կամ քրիստոնեայ կիներ ունէին։*

*Մոնկոլներուն քրիստոնէութեան նկատմամբ ցոյց տուած հակումը, կերպով մը քաջալերած է մասնաւորապէս Նեստորականները և Ասորիները և որոշ չափով ալ Հայերը, որ եռանդով լծուին քրիստոնէական հաւատածաւալ գործունէութեան, որուն դէմ ոչ մէկ արգելք կը յարուցանէին անոնք։ Այսպէս, Քրիստոնէութիւնը տարածուեցաւ Մոնկոլ տիրապետութեան ենթարկուած բոլոր երկիրներուն մէջ և մինչեւ Չինաստանի սահմանները քրիստոնեայ համայնքներ կազմուեցան։ Յայտնի է որ Քրիստոնեաները Մոնկոլ իշխանութեան տակ շնորհ գտած և տարածուած են և նոյնիսկ — ինչպէս տեսնուեցաւ — Մոնկոլ խաներու մօտ, անոնց արքունիքին մէջ կ'ապրէին Նեստորական քահանաներ, ինչպէս նաեւ Հայ, Ասորի և Յոյն եկեղեցականներ։*

*Անոնք ազատօրէն կը քարոզէին և նոյնիսկ կը յաջողէին որոշ թիւով հաւատացեալներ շահիլ Մոնկոլներէն։*

*Այսպէս, օրինակի համար, կը յիշուի թէ Քրիստոնէութիւնը շատոնց մուտք գտած էր Պասրայի մէջ, որ եպիսկոպոսանիստ քաղաք էր։ 1222ին Պասրայի թեմակալն էր* Հայաստանցի Սողոմոն եպիսկոպոս *(Վարդան Մելքոնեանի տեղեկութիւն, քաղուած* Historial Mesopotamia *անուն գիրքէն, տպուած 1922ին Պասրա)։*

*ԺԴ. դարուն հեղինակային գրագէտներ Պասրան կը կոչէին Պէյթ Մէյղան, որ արամայերէն է և կը նշանակէ «քաղաք անտառի» և կամ «քաղաք փայտի» (Վարդան Մելքոնեան)։*

*Միայն հետաքրքրական է գիտնալ թէ* Հայաստանցի Սողոմոն եպիսկոպոս *Հա՞յ էր թէ Հայաստան ծնած Ասորի մը կամ Նեստորական մը, և թէ Հայո՞ց եպիսկոպոսն էր թէ ուրիշ համայնքի մը։*

*Եթէ Հայ համայնքին եպիսկոպոսն էր, ուրեմն Պասրայի մէջ կար բաւական թիւով Հայ գաղութ մը, որ իր սեփական եպիսկոպոսը ունէր։*

*Իսկ եթէ Պասրայի մէջ իրապէս Հայ գաղութ մը կար, պէտք է ընդունիլ թէ Սելջուկ պետութեան այս մասերուն շատ մը քաղաքներուն մէջ հինէն հաստատուած կամ նոր տեղափոխուած քրիստոնեաներ կ'ապրէին ԺԲ. և ԺԳ. դարերուն:*

*Շատ հաւանական է որ Հայերն ալ օգտուած ըլլան Մոնկոլներու բարեացակամութենէն, մասնաւորապէս Մանգոյ Խանի ատեն* (1251—1259), *որ Հայերուն հանդէպ յատուկ բարեացակամութիւն ունեցաւ և Աւագ իշխանի գլխաւորութեամբ՝ նոյնիսկ ինքնավարութիւն մը տուաւ։ Հայերն ալ փոխադարձաբար, ցոյց տուին անձնուիրութիւն և Մոնկոլներուն կողքին կռուեցան անոնց թշնամիներուն դէմ, Աւագ իշխանին, Օրբէլեան Շահնշահին, Վահրամին և որդին Ապուղային, Ջալալի և Հասան Գրիգոր Տուփին և Խաչէնցի իշխաններու և ուրիշներու հրամանին տակ* (Կիրակոս, *էջ* 153, *և* 155 *և վերը* 150—1) *և քրիստոնեաներու օգտակար եղան գերիները գնելով, ինչպէս նաեւ գողցուած կամ կողոպտուած գրչագիրներ փրկագնելով։ Տեսնուեցաւ թէ Հուլագու* (125—1265), *որ իր քրիստոնեայ կնոջ՝ Տօղուզի ազդեցութեան տակ էր, ինչպէս Պաղտատի քրիստոնեաները ազատեց կոտորածէ և միշտ բարեկամ եղաւ Հայերուն։*



*Իր յաջորդները՝ Ապաղա* (1265—1282) *և Խուտապէնտէ կամ Խարբանտա* (1304—1316) *նոյնպէս Հայերուն բարեկամ եղած են։*

*Ապուսայիտ կամ Պուսայիտ* (1316—1335), *որ գինակիցն էր Կիլիկիոյ Լեւոն Դ. թագաւորին, նոյնպէս բարեկամ էր Հայերուն։*

*Մոնկոլներու տիրապետութեան շրջանին, անոնց ընդարձակ կայսրութեան մէջ — որ բովանդակ Ասիոյ վրայ կը տարածուէր — Հայերը ազատ երթեւեկ ունէին և առեւտուր կ'ընէին, և կայսրութեան զանազան վայրերը հաստատուած էին, ինչպէս տեսանք*

*Չինկիզի պետութիւնը որ արտակարգ կերպով ընդարձակ էր, Հայերը հաղորդակցութեան մէջ դրաւ այնպիսի վայրերու հետ, որոնք շատ ծանօթ չէին Հայերուն և կապ չունէին անոնց հետ այդքան սերտօրէն։*

*Մասնաւորապէս Հուլագուի նուաճումներէն և Պաղտատի գրաւումէն* (1258) *ետք, երբ Պարսկաստանի մէջ Իլխանեան հարստութիւնը տիրակալեց, այս բարգաւաճ և մեծ կայսրութեան մէջ, Հայերը նպաստաւորուեցան և անոր մայրաքաղաքներուն՝ Թաւրէժի և Սուլթանիյէի մէջ փայլուն դիրք ունեցան իբրեւ վաճառականներ և մեծ բազմութեամբ ապրեցան այդ քաղաքներուն մէջ, ինչպէս տեսնուեցաւ (վերը* 310—1)։

*Սուլթանիյէի մէջ, ինչպէս տեսնուեցաւ (վերը,* 312), *Հայերը ունէին Եպիսկոպոս Առաջնորդ մը, որ իրեն հետ ունէր քահանաներ, նաեւ ուրիշ Եպիսկոպոսութիւն մը,* 1354 *Սեպտ.* 25*ին* «ի մայրաքաղաքս Բաղդադ», *դարձեալ իրեն հետ ունենալով քահանաներ։*

*Ասկէ որոշ կը հասկցուի թէ, ինչպէս կառավարութեան կեդրոնին՝ Սուլթանիյէի, նաեւ Պաղտատի մէջ Հայ եպիսկոպոս հոգեւոր պետեր կային։*

*Անոնք կը հաստատեն թէ ԺԴ. դարու կէսին, հակառակ անոր որ Իլխանեան պետութիւնը խառնակութիւններու հետեւանօք անիշխանութեան մատնուած էր Ապու Սայիտէն* (1316—1335) *յետոյ, տակաւին Հայեր կ'ապրէին Սուլթանիյէի և Պաղտատի՝ երկիրին երկու մայրաքաղաքներուն մէջ, որոնք հայ բնակիչներ ունեցած էին այս պետութեան ծաղկման օրերուն։ Հաւանական է որ այդ շրջանին Իրաքի այլ քաղաքներուն մէջ ևս Հայեր կային, ինչպէս Հայեր կային բովանդակ Մոնկոլ պետութեան մէջէն անցնող առեւտրական ուղիներուն վրայ գտնուող քաղաքներուն մէջ, մինչեւ Չինաստան։*

*Դժբախտաբար Մոնկոլներու դէպի քրիստոնեաները ունեցած բարեացակամ տրամադրութիւնը փոխուելէն վերջ, այս գաղութները անհետացած և ջնջուած են և իրենց եկեղեցիները մզկիթի վերածուած և իրենք ալ իսլամացած կամ հեռացած են։*

*Արդարև, յիշատակութիւններ ունինք Տիգրիսի հարկատու հողամասերուն մէջ ապրող Հայերու, նոյնիսկ իսլամ նշանաւոր քաղաքներու մէջ։ Այսպէս, Մուսուլ, որ ըստ Արաբ աշխարհագիր Եաքութի, «Իրաքի դուռը, Խորասանի բանալին և Ատրպատականի հաղորդակցութեան ճամբան» կը կազմէր և մեծ քաղաք մըն էր, Տիգրիսի վրայ կառուցուած, Թաթարական տիրապետութեան շրջանին ունեցած է հայկական գաղութ մը, ինչպէս իրաքեան ուրիշ քաղաքներ։*

*Ասոր գլխաւոր ապացոյցն է Սամուէլ Անեցիի վրդովումը այն վճիռին (հիւքմ) մասին, որ տրուած էր* 1336*ին՝ Մուսուլի եկեղեցիները փլցնելու համար։ Այդ եկեղեցիներէն գոնէ մէկը հայկական էր, քանի որ* 1352 *Թուականէն հոն կար Քարոզգիրք մը,* «գրեալ ի քաղաք Մուսուլի, ի Մանուէլ քահանայէ» *(Ձեռագիրը պահուած է Էջմիածին, Թ.* 2206, *Կարինեան)։*

*Ասիկա կ՚ապացուցանէ Թէ ԺԴ. դարուն, Մուսուլի մէջ ոչ միայն Հայեր կային, այլ անոնք ունէին քահանայ, հոգեւոր հովիւ և հետևաբար և եկեղեցի, որ անհետացած էր և ժամանակ մը յետոյ, հոն նոր եկեղեցի մը շինուած էր։*

*Մուսուլի մօտ, Արբելայի մէջ՝ նոյնպէս ԺԴ. դարուն կը յիշուի Հայ եկեղեցի մը (քաղաքին պարիսպէն դուրս), զոր նոյն դարուն սկիզբները քանդեցին այլազգիները, Նեստորականներու՝ երկու և Յակոբիկեան Ասորիներու՝ մէկ եկեղեցիներուն հետ,* 1336*ի* հիւքմին *հետևանօք։ Հաւանօրէն աւելի յետոյ Հայերը ցրուած էին։*

*ԺԴ. դարուն, Մուսուլի մօտ Բարամլէս անուն գիւղաքաղաքին մէջ կար Հայ համայնք մը, սեփական քահանաներով և տիրացուներով (տես.* Աւետիք 1945, *էջ* 55)։

*Նոյնպէս ԺԴ. դարուն հայաբնակ էր Մերտին քաղաքը, որ վաղեմի հայաբնակութիւն մը կրնայ ունեցած ըլլալ, ինչպէս կը կարծուի (տես. Տ. Վ. Ալեքսանդրեան,* Բազմավէպ, 1907, *էջ* 502)*. սակայն չունինք վաւերագրութիւն, ինչպէս ունինք ԺԴ. դարուն համար ուր կը հանդիպինք Մերտինի մօտ հիմնուած վանքի մը, Թաֆին կամ Թըվին անուն։*

*Վարդ անուն գրիչ մը* 1356*ին,* «ի մայրաքաղաքս Մերտին եւ ի մենաստանիս Թըվին, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս եւ Ս. Յովհաննիսի» *գրած է ձեռագիր մը Ուխտին Առաջնորդ Աբրահամ Արքեպիսկոպոսի ատեն, երբ* «Հայր վանացն» *էր* «Մովսէս Կրաւնաւոր»*. Թէ* «ի Տէր Ղազարու ժամանակի շինեցաւ Ս. Յովաննու պարիս[պս] Յովսէփ Սարկաւագն որ եղաւ պատճառ վանուց շինելուն, որ իւր մերն եփեր է կերակուրն կուսին, յիշեցէք իբր Աստուած» (Ցուցակ Վենետիկի *Ա.* 186—7–8):

*Հազիւ երկու տասնեակ տարիներ ետք,* «ի թվականի» հայոց *ՊԻԶ* (= 1372) *յիշատակագիր մը կ՚ըսէ՝* «ես Մուղսասի Հասան հանդիպեցայ գրոցս



որ էր գրեալ եւ բերեալ ի Մերտին քաղաք, գնեցի ի գերողէն եւ եսուն ի Ս. Ուխտն ի Ս. Աստուածածին եւ Ս. Յովհաննէս որ մականուն Թվին կոչի»։ *Յիշել կը խնդրուի* «ընդամին եւ ինձ Յակոբ եպիսկոպոսի որ զյիշատակարանս գրեցի եւ էի տեղւոյս վերատեսուչ» (Նոյն *Բ. հտ.* 65—66):

1426*ին տակաւին այս վանքը գոյութիւն ունէր, որովհետեւ այս ձեռագիրին մէջ տեղ մը գրիչ մը կ՚ըսէ՝* «եկի Ս. Ովանէս վանքն ի թվ. Հայոց ՊՀԵ (= 1426) ի ապրելի Զ. ուրբաթ աւր աւետեաց Աստուածածնի»:

*Նոյն Թուականին գրուած Աւետարանի մը գրիչը կը յիշէ Մերտինի Ս. Գէորգ եկեղեցին և տեղւոյն Աբրահամ եպս. առաջնորդը* (Նոտարք 81)։

*Ինչպէս կը տեսնուի՝ Մերտինի մէջ Հայերը կրցած չէին ԺԴ. դարէն յետոյ անընդհատ ապրիլ։*

*Այնպէս որ միայն հետքեր մնացած են այս օրերէն, ոչ զուրկ նշանակութենէ։*

*Սակայն քանի իսլամութիւնը տարածուեցաւ և արմատացաւ՝ Մոնկոլներու մէջ տրամադրութիւնները փոխուեցան, տագնապներ իրարու յաջորդեցին և Հայերը դժուարութիւններու մատնուեցան։ Այդ օրերը լի են սաստիկ հարկապահանջութեան և կեղեքումի յիշատակութիւններով։ Արդարեւ Խարբանտայի (*1304—1316*) և Ալի փաշային վեցամսեայ (*1336*) իշխանութեան շրջանները անօրինակ դժբախտութիւններու շրջան մը բացին քրիստոնէից համար, որոնք իրենց տարազով կը նուաստանային կամ սարսափի կը մատնուէին Մուսուլէն մինչեւ Խլաթ և Սալմաստ իրենց եկեղեցիներու քանդումը տեսնելով (տես. վերը* 188—189)։ *Զաքարիա Սէֆէնտինեան, Աղթամարի կաթողիկոսը (*1296—1336), *հազիւ կրցաւ ետ առնել տալ եկեղեցիները քանդելու* հիւքմը *(վճիռը) և խափանել հարկերը և խարաճները, որոնք դրուած էին վանքերու և կրօնաւորներու վրայ։*

*Ասիկա սկիզբն էր երկանց։ Հալածանքը սկսած էր, թէեւ ինչպէս կ՚երեւի ժամանակաւոր ու պատահական և անցոծ՝ խնդրանքներով և դիմումներով, նման փոթորիկներու, որոնք երբեմն կը պայթին։ Այսպէս է որ Քրիստոնէութիւնը տոկացած է այս ընդարձակածաւալ կայսրութեան մէջ։*

*Մինչեւ ԺԵ. դարուն սկիզբը, այսինքն մինչեւ Լէնկթիմուրի շրջանը Քրիստոնեաներու, ընդ որս և Հայերու որոշ չափով կրօնական ազատութիւն վայելելուն փաստերը կան, սակայն ասիկա տեւական չէ եղած. ինչպէս տեսնուեցաւ, Սմրղանդի Հայերը ջարդուած են (տես. վերը,* 319)։

*Ինչ որ Կեդրոնական Ասիոյ մէջ պատահած է, հաւանօրէն եղած է նաև Միջագետքի մէջ, և Հայերը ջնջուած են։ Մասնաւորապէս Պաղտատի Հայ գաղութը ջնջուած պէտք է ըլլայ, քանի որ Լէնկ Թիմուր այս քաղաքը հիմնայատակ կործանած է։*

*Մուսուլի եկեղեցիները, զորս անգամ մը Ալի փաշա (տես. վերը,* 398), 1336*ին քանդել փորձած էր, ապահովաբար Լէնկ Թիմուրէ վերջն անհետացած էին Հայ գաղութին հետ, մինչ ինչպէս տեսնուեցաւ,* 1352*ին հոն եկեղեցի ունէին Հայերը։*

*Այս շրջանակին մէջ Հայերու անհետացումը կատարուած իրողութիւն մը*

եղաւ, երբ Մոնկոլ կայսրութիւնը ԺԴ. դարուն կազմալուծուեցաւ և տատանական կազմակերպութիւն մը ստացաւ, առաւել կամ պակաս հնազանդ կեդրոնական իշխանութեան։

Այդ շրջանին Միջագետք ալ բաժնուեցաւ զանազան իշխանութեանց միջև։

Մի քանի քաղաքներու մէջ կը նստէին ամիրաներ, որոնք գրեթէ ինքնիշխան էին։ Հարաւային Հայաստանի և Հիւսիսային Միջագետքի կը տիրէին Գարագոյունլուներու ընտանիքը և Ամիթի (Տիարպէքիր) մէջ հաստատուած էր Ագգոյունլուներու իշխանութիւնը, որոնք բազմաթիւ փոքրիկ իշխանութիւններու համամիութիւններ էին, գերիշխան պետի մը գլխաւորութեամբ։

Իսկ Պաղտատի մէջ կ'իշխէր Հուլաղուի ընտանիքին ժառանգը։

Այս էր իրերու վիճակը, երբ ԺԴ. դարու վերջին քառորդին մէջ ասպարէզ եկաւ Ճօզպէք Թաթարներու առաջնորդը՝ Լէնկ Թիմուր, որ վայրենի հրոսներու գլուխը անցած, Չինկիզ Խանի պետութիւնը վերակազմելու ծրագիրով արևմուտք արշաւեց և ինչպէս վերը (տես 194—5) բացատրուեցաւ, Պարսկաստանը գրաւելէն ետքը, առաւ Ատրպատականը, Հայաստանը, ինչպէս նաև Իրաքը։

1399ին Պաղտատը ինկաւ Լէնկ Թիմուրի ձեռքը և վերջ գտաւ Հուլաղուի հիմնած պետութիւնը։

Լէնկ Թիմուր գրաւեց նաև Պասրան, Մուսուլը, Տիարպէքիրը, Մերտինը ևայլն։

Ճօզպէք Թաթարներու առաջնորդ Լէնկ Թիմուրի ատեն ևս կրկնուեցան բնակչութեան տեղափոխութիւնները և Հայաստանէն կրկին շատեր գերի տարուեցան։

Սակայն ո՞ւր տարուած են առնուած գերիները և Միջագետք ալ տարուողներ կա՞ն, հարցումներ են, որոնց վաւերագրեալ պատասխաններ տալ դժուար է, վասնզի այս մասին յիշատակութիւններ չունինք։

Մեծոփեցի միայն կը յիշէ Սմրղանդ տարուած գերիները (վերը, էջ 276)։

Լէնկ Թիմուրի մահէն (1406 Փետր. 18) ետք, իր զօրութեան առջեւ ընկճուած բոլոր իշխանութիւնները կը վերակազմուին։

Անոնց ամէնէն գլխաւորն էր Գարագոյունլուներու պետը՝ Եուսուֆ, որ վերականգնեց իր պետութիւնը և գրաւեց նաև Իրաքի մէկ մասը։

Իսկ Պաղտատի մէջ իբրև տեղւոյն ամիրան՝ կը տիրապետէր Ահմէտ։

Դաւրէժի տիրապետութեան համար, այս երկու վեհապետները իրարու հետ պատերազմեցան և Եուսուֆ յաղթական դուրս գալով՝ գրաւեց Պաղտատը և տէր եղաւ ամբողջ Իրաքի։

Իր որդին՝ Իսկէնտէր, որ անընդհատ 17 տարի (1421—1437) կռուած է Լէնկ Թիմուրի յաջորդներուն դէմ, իրեն մայրաքաղաք ըրած էր Պաղտատը և անկէ կը վարէր պատերազմը։ Իսկէնտէր պահ մը Պաղտատը թողուց իր եղբօր՝ Շահ Մահմուտի, որմէ զայն յափշտակեց միւս եղբայրը՝ Ասպահան, որ նաև աւերեց Մուսուլը, Անջարը, Ճէզիրէն, Մերտինը։

Միւս կողմէն կռիւը կը շարունակուէր Իսկէնտէրի, Օթմանի, Շահռուխի, Ջանկայի և այլոց միջև (տես. վերը, 211) մինչև որ Միջագետքի մէջ



կը զօրանար Ճիհանկիր Թուրքմէն իշխանը՝ Օթմանի թոռը, որ իրեն մայրաքաղաք կ'ընէր Ամիթը։

Իր որդին՝ Ուզուն Հասան, կը միացնէր Գարագոյունլուներու և Ագգոյունլուներու երկու իշխանութիւնները և ամբողջ Պարսկաստանն ալ հպատակեցնելով՝ կը վերակազմէր 1468ին Պարսիկ մեծ կայսրութիւնը։

Այս մօտաւորապէս հարիւրամեայ շրջանին, ուր ամբողջ Միջագետք ռազմադաշտի վերածուած էր և անընդհատ խռովութեան մէջ, չենք գիտեր թէ Միջագետքի զանազան վայրերուն մէջ գտնուող Հայերը ի՛նչ եղած են։

Տեսակ մը անիշխանութեան այս շրջանէն որևէ յիշատակ մեզի հասած չէ Միջագետքի Հայոց մասին։ Հայերը հաւանօրէն ցրուած են և Հայ գաղութները բոլորովին ջնջուած են, ինչպէս ինչ ինչ երևոյթներէ կը մակաբերուի, վասնզի հաստատուն կառավարութիւն մը և առևտուր ու վաճառականութիւն գոյութիւն ունենալէ դադրած էին։

⁂

Հայկական լեռնաշղթային հարաւակողմը՝ երկու անցքեր են Տիգրիս և Եփրատ գետերը և անոնց եզերքներուն հիմնուած էին, ժամանակի ընթացքին, հայկական գաղութներ։ Ասոնցմէ անոնք, որոնք Տիգրիսի շուրջն էին, իսլամական զանգուածին մէջտեղ մեկուսացած ըլլալով, ինչպէս տեսանք հետըզհետէ նօսրացան և անչքացան. մինչ ընդհակառակն, Եփրատի եզերքները հաստատուած գաղութները, այդ ժամանակամիջոցին, աւելի աճեցան։

Այդ շրջանակները, իրենց քրիստոնէական յիշատակարաններու առատութեամբը, աւելի ընտանի էին Հայերուն, և նոյնիսկ՝ աւանդաբար՝ հայկական կը նկատուէին, ինչպէս Փաւստոս՝ Պապ թագաւորի բերնով՝ կ'ուզէ հաստատել, թէ «Ուռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց» (Փաւստոս Բիւզանդացի, Ե. լբ.)։

Յովսեփոս (Հնախօսութիւն Հրէից, ԺԲ. 8) և Տակիտոս, (Տարեգրութիւն Բ. 3, ԺԳ. 34, ԺԴ. 26, ԺԵ. 1) կը հաստատեն որ հայկական էին Եդեսիա և ամբողջ Միջագետք և Երուանդ թագաւորը զանոնք թողած էր Հռոմայեցիներուն։

Եթէ նոյնիսկ ասոնք առասպել ալ եղած ըլլան, անուրանալի է որ Հայերը շատ վաղեմի յարաբերութիւններ ունեցած են Եփրատի արմուկին և անոր Միջագետքի դաշտերուն մէջէն անցնող մասերուն եզերքը գտնուող հողերուն հետ։ Ոչ մէկ տարակոյս՝ որ Սելեւկեանց շրջանին՝ Անտիոք և շրջակայքը (ՊՀԳ. Ա. 105), Արշակունեաց շրջանին՝ Կոմմագենէի մէջ (Նոյն, 103) Հայ գաղութներ կային, որոնք միշտ նոր գաղթականներով ստուարացած են, ինչպէս Եփրատէն արևմուտք գտնուող բոլոր երկիրներուն, նոյնպէս և այդ շրջանակին, այսինքն Սիւրիոյ հիւսիսային երկրամասին մէջ։ Երբ Մեծն Տիգրան գրաւեց Հիւսիսային Միջագետքի երկու ծաղկեալ նահանգները՝ Միգդոնիա (= Մծբին = Նիզիպին) և Օսրոյենայ (Ուռհայաստան = Եդեսիա = Ուրֆա), ինչպէս և Սիւրիան՝ մինչեւ Հրէաստանի սահմանները (ՊՀԳ. Ա.

107—108), Հայերը յարաբերութիւններ սկսան ունենալ այս նահանգներուն հետ։ Քիչ յետոյ, առաջին դարերուն՝ Եդեսիա և Անտիոք, իբրև եկեղեցական երկու կարեւոր աթոռներ, յարաբերութեան մէջ եղած են Հայերու հետ (ՊՀԳ. Ա. 110—111) և իբրև Բիւզանդական քաղաքներ, ինչպէս կայսրութեան բոլոր ուրիշ վայրերը, իրենք ալ ընդունած են Հայ գաղթականներ։

Է. դարուն Սիւրիա և Միջագետք ենթարկուեցան Արաբական տիրապետութեան, և Դամասկոս եղաւ Իումմեանց մայրաքաղաքը և Հայերը՝ այս անգամ իբրև հպատակներ՝ կապեր և երթևեկ ունեցան Խալիֆայութեան կեդրոնին հետ։

Արաբները, ոչ բոլորովին անվրդով, մօտաւորապէս երեք դար տիրեցին Սիւրիոյ և Միջագետքի, ուր արդէն Հայ գաղթականներ կային և նորեր ալ կ'աւելնային. Նոր գաղթականները կը բաղկանային Հայաստանէն վերցուած գերիներէ և Բիւզանդական իշխանութենէն դժգոհ Հայերէ, որոնք կ'անցնէին Արաբ Խալիֆաներու երկիրները (տես. ՊՀԳ. Ա. 345—347), գլխաւորապէս Դամասկոս, Ուրֆա, Խառան ևայլ (ՊՀԳ. Ա. 357—8)։

Յատկապէս իբրև կարեւոր և անժխտելի վաւերագիր՝ մեծ կարեւորութեամբ պէտք է նկատի ունենալ Ամիթի Ասորի մետրոպոլիտ Մար Դիոնիսիոս Յակոբ Բար Սալիբի (+ 1176) վկայութիւնը, որ կը հաստատէ թէ Ը. դարէն սկսեալ Հայերը մտած են Սիւրիա մեծ թիւով և տիրապետած են Ասորի վանքերու և գիւղերու ու շատ բազմացած են (ՊՀԳ. Ա. 362)։

Անոնք այս շրջանակին մէջ ունէին իրենց հոգեւոր հովիւները և կրօնական ուսուցման՝ համար իրենց վանքը։ Ինչպէս ըսած եմ (ՊՀԳ. Ա. 363), հաւանական է որ այս շրջանէն են Որոնդէսի երկայնքը ցարդ տեսնուած աւերակները և հայկական գիւղերը, որոնք շատ հին շրջաններու դրոշմը կը կրեն։ Մասնաւորապէս Արամօ գիւղին շրջանները, որուն մօտ կ'իյնային Լաւոդիկէն (Լաթաքիա), Անտիոք և շրջակայքը, Շուղուր, Եազուպիյէ, այս ժամանակամիջոցին հայաբնակ դարձած ըլլալ կը թուին, ինչպէս նաև հաւանաբար Ասորւոց ծովեզերքները (ՊՀԳ. Ա. 375)։

Սակայն Հայերը՝ բոլորովին իսլամներով լեցուած այս երկիրներուն մէջ՝ աննշան խլեակներ էին, մինչ դրացի բիւզանդական հողերուն վրայ անոնք թիւ մը կը ներկայացնէին։

Ժ. դարուն՝ երբ Բիւզանդացիք առաջացան դէպի Եդեսիա և Անտիոք, մահմետական բնակչութեան մէկ մասը ինքնին հեռացաւ՝ Խալիֆաներու բանակին ընկերանալով, իսկ մնացեալ մասն ալ, Նիկեփոր կայսրը (963—969)՝ Անատոլեան բանակի զօրավար Չմշկիկի խորհուրդով՝ բռնի տեղափոխեց կայսրութեան ուրիշ կողմերը, զանոնք յունացնելու համար։

Բիւզանդիոն նոր գրաւուած երկիրներուն, ինչպէս Կիլիկիոյ, Եփրատացիներու և Ասորիքի մէջ, արգիլած էր մահմետականներու բնակութիւնը և Չըմըշկիկ մահմետականներէն դատարկացած այս վայրերուն մէջ կը բնակեցնէր իր զօրականները, որոնց մեծամասնութիւնը Հայեր էին։

Սահմանագլուխներուն վրայ կազմուեցան զինուորական գաղութներ, որոնց վարչութիւնը յանձնուեցաւ սահմանապահ իշխաններու (Akrits)։ Անոնք



ժառանգական տէրերն էին այդ երկիրներուն, որոնց բնակիչները մշտնջենական զինուորներ էին։

Այսպիսի գաղութներ ունեցան Եդեսիա, Մամբիճ, Տլուք և Եփրատացւոց շրջանակին մէջ գտնուող այն ամրոցները, որոնք Արաբներէն առնուած էին (A. H. Sayce, Les Héteens. Histoire d'un Empire oublié, Paris, 1891, էջ 250, Բաբգէն Ծվրդ. Կիւլէսէրեան, Ծովքի Կաթողիկոսարանը, եւ ՊՀԳ. Ա. 250—1)։

Այս նոր գաղթականները օրթոտոքս կղերէն հալածուեցան, բայց հաւատարիմ մնացին ազգային եկեղեցիին եւ Խաչիկ Կաթողիկոս (971—992), Անտիոքի Հայոց համար եպիսկոպոս մը ձեռնադրեց (ՊՀԳ. Ա. 251), վասնզի հոն խիստ մեծ թիւով Հայեր կ'ապրէին, նոյնիսկ այդ դարէն սկսեալ (Schlumberger, l'Épopée Byzantin, Ա. 410—417) եւ Սքելերոսի ապստամբութեան ատեն՝ Սամուէլ անուն հայու մը առաջնորդութեամբ, յեղափոխութիւն մը յարուցած էին (նոյն)։

ԺԱ. դարուն, բարբարոսներու արշաւանքին սկզբնաւորութեան, Հայերը կը գրաւէին ոչ միայն կայսրութեան արեւելեան նահանգները, այլ կը կազմէին բնակչութեան գրեթէ ամբողջութիւնը՝ հիւսիսային Եփրատի հովիտին եւ Միջագետքի կամ հարաւային Եփրատի թեմերուն մէջ, որոնք զուտ հայ երկիրներ էին։ Հայերը գրաւած էին Տաւրոսը, Մելիտինէն, Սեբաստիան, Կեսարիան, Տարօնը, Հիւսիսային Սիւրիոյ եւ Եդեսիոյ մէջտեղի հողերը, եւ բացարձակ տէրը դարձած էին այս երկրին (Laurent, Byzance et les Turcs Seldjoucides dans l'Asie Occidentale jusq'en 1081, Paris, 1914, 67 եւ ՊՀԳ. Ա. 251—2)։

Բիւզանդիոն կազմեց Հայ «թագաւոր»ութիւններ Փոքր Ասիոյ մուտքին վրայ, Եփրատի Արեւմուտքը, իբրեւ իր ճորտերը. իսկ Հիւսիսային Սիւրիոյ (Ասորիք) եւ Ուռհայաստանի (Միջագետքի հիւսիսային արեւմուտք) համար նշանակած էր զինուորական կառավարիչներ եւ հաստատած հողատիրութիւններ, որոնք վերագրաւուած եւ մեծ մասամբ անապատ ու աւերակ դարձած երկիրները թէ՛ պիտի շէնցնէին եւ թէ՛ պիտի պաշտպանէին։ Այսպէս, Արեւմտեան Տաւրոսի երկու զառիթափները, Կիլիկիան, Տարօնը եւ Եդեսիան, գրեթէ բոլորովին հայացած էին։ Հայ գաղթականներ թափանցած էին նոյնիսկ մինչեւ Անտիոք եւ Որոնդէսի ճամբով մինչեւ Սիւրիական Կեսարիա։

Տաւրոսի, Սիւրիոյ եւ Միջերկրականի միջեւ գտնուած հողամասին վրայ երեւան եկած էին հայ բերդատէրեր, (ՊՀԳ. Ա. 286), որոնք կ'իշխէին՝ Բիւզանդիոնի հաւանութեամբ՝ կարգ մը հողերու վրայ։

Բիւզանդիոն, նոյնիսկ սիրաշահելու համար զանոնք, իր կողմէն նշանակած էր Հայ կառավարիչներ, որպէսզի՝ տեղացի հայ բնակիչներուն կողքին՝ սրտանց կռուին թշնամիին դէմ։

Այնպէս որ՝ այդ տեղերը եղան Հայերու համար նոր հայրենիք մը, ուր անոնք շարունակեցին՝ Բիւզանդիոնի կայսեր վեհապետութեան տակ, նաեւ իրենց քաղաքական գոյութիւնը, որ այլեւս անհնար դարձած էր իրենց ցեղին հնադարեան բնակավայրին մէջ, (հմմտ. Laurentի մէկ ուրիշ գործին մէջ,

L'Arménie entre Byzance et l'Islam depuis le Conquête Arabe jusqu'an 886, Paris, 1919, էջ 4–5)։

ԺԱ. դարուն սկիզբները, երբ Ասիական բարբարոս ժողովուրդներ Հայաստան մտան, Հայերը ընկճուած այդ ահարկու հրոսներէն՝ մեծ թիւերով հեռացան Հայաստանէն։

Ոչ միայն Հայ անհատներ կը գաղթէին շարունակ, այլ կը տեղափոխուէին նաև իշխանական տուներ, իրենց հպատակ ժողովուրդին հետ և կ'ստանային ճորտ իշխանութիւններ կամ աւատներ (fief) Բիւզանդիոնէն։ Հայերը կը համախմբուէին իրենց նախկին իշխաններուն կամ յանդուգն ու յաջողակ զինուորականներուն շուրջ (հմմտ. Laurent, նոյն, էջ 6)։

Բիւզանդիոն անոնցմէ օգտուելու հեռապատկերը ունէր, իբրեւ սահմանապահներ, և ասոր համար յաճախ կը համակերպէր որ անոնք բոլորովին ազատօրէն գործէին։

Այսպէս, Ասորիքի և Միջագետքի վերագրաւումէն յետոյ, այդ շրջանակին մէջ՝ օրինաւոր և ապօրէն եղանակով, այսինքն երբեմն Բիւզանդացիներու պարգեւատուութեամբ և երբեմն տիրող անիշխանութենէն օգտուելով, Հայ յելուզակներու կողմէ կազմուած են պզտիկ իշխանութիւններ։

Սակայն դժբախտաբար՝ բարբարոսները ոտնակոխ ըրին նաև այդ Հայ ճորտերը։ ԺԱ. դարուն վերջին քառորդին, հիւսիսային Սուրիոյ և Տաւրոսեան լեռնագաւառներու մէջ, կայսրութեան ուժը խորտակուած էր, ոչ միայն արտաքին յարձակումներով, այլ նաև ներքին ապստամբութիւններով։ Սելջուկները աժան յաղթանակներ ձեռք բերին, վասնզի Բիւզանդիոն իր կրօնական սխալ քաղաքականութեամբ ատելի եղած էր իր բնակչութեան մէկ կարեւոր մասին, ինչպէս Հայերուն, որոնք իբրև ոչ-քաղքեդոնականներ կ'ատէին Յոյները, որոնք զիրենք կը հալածէին կրօնական պատճառներով։

Կային նաև տնտեսական պատճառներ — մասնաւորապէս տուրքերու ծանրութիւնը և մեծ կալուածատիրութիւններու պատճառած զրկանքները — որոնք կը մղէին կայսրութեան բնակիչները որ Սելջուկները իբրև ազատարար ընդունին։

Սելջուկները, Մանազկերտի յաղթութեամբ (19 Օգոստոս 1071), ոչ միայն տիրացան Հայաստանի և Կապադովկիոյ, որոնք իբրև գերազանցապէս զինուորական գաւառներ՝ Բիւզանդական կայսրութեան ողնասիւնը կը կազմէին, այլ անիշխանութեան մատնեցին Կիլիկիան և Եփրատի դրացի Ասորիքը, վասնզի կայսրութեան արևելեան սահմանագլուխը քաշուած էր Եփրատ և Ալիս գետերուն միջեւ գտնուած հողամասերը և Կ. Պոլսոյ այլ շրջաններուն հետ հաղորդակցութեան ճամբան խզուած էր։

Այնպէս որ՝ Սելջուկները շատ քիչ ժամանակ ետքը՝ տիրեցին նաև Սուրիոյ և Պաղեստինի (1078), Անտիոքի (1085) և Միջագետքի։

Բոլոր այս վայրերը, ինչպէս տեսնուեցաւ, Հայերով բնակուած էին արդէն, երբ իբրև հետևանք բարբարոսներու այս արշաւանքին, Հայաստանէն հեռացող Հայեր ապաստանեցան այս վայրերը։ Նախընտրելով երթալ այն տեղերը, որոնց պետերը կամ կառավարիչները Հայեր էին։



⁂

Վայրենի հրոսներու արշաւանքին յաջորդող 1079—1080ի մեծ սովը գաղթային այս հոսանքին մեծ ծաւալ տուաւ, և ինչպէս նկարագրած է Մատթէոս Ուռհայեցի երբ «անմարդ եղեւ բազում գաւառք եւ փակեցաւ տունն ԱՐԵՒԵԼԵԱՅՑ եւ եղեւ աւերակ աշխարհ Հոռոմոց», ուրիշ ամէն տեղերէ աւելի, գաղթականները ապաստանեցան «յՈւռհայ եւ յամենայն սահմանսն նորա: Եւ Անտիոք եւ ամենայն աշխարհն Կիլիկեայ եւ մինչեւ ի Տարսոն, եւ ամենայն աշխարհն Մարաշայ, ի Տլուք, եւ յամենայն սահմանս աշխարհաց այնոցիկ», ուր հասնողներու թիւը որոշելու համար, պատմագիրը «հազարս առ հազարս եւ բիւրս առ բիւրս» բառերը կը գործածէ և Մովսէսի Կարմիր Ծովը անցուցած բազմութեան եօթն անգամէն աւելի կը հաշուէ (Ուռհայեցի, ՀԱ–2)։

Այսպէս ստուարացան Մեծ Հայքէն՝ Կապադովկիոյ և Սղձնիքի ճամբով եկած Հայերով, մասնաւորապէս Հիւսիսային Միջագետքի մէջ, ինչպէս նաև Եփրատացիներու երկիրին, Ասորիքի (հիւսիսային Սուրիոյ), Տաւրոսի և այլ մերձակայ վայրերու մէջ։

Մասնաւորապէս Եդեսիա և անոր շրջակայքը՝ այդ գաղթականներուն գալէն յետոյ բաւական մեծ հայկական կեդրոն մը հանդիսացան իրենց ստուար թիւով Հայ բնակիչներովը և իրենց Հայ իշխաններովը։

Եդեսիոյ հայաշատ կեդրոն մը դարձած ըլլալը կը հաստատուի 1081ին Գրիգոր Վկայասէրէն մեզի հասած Ծռազատկի մասին թուղթով՝ ուղղուած Եդեսիոյ Հայերուն և անոնց քահանաներուն (Տաշեան։ Մայր Ցուցակ, 658)։ Եթէ հոն Հայ մեծ գաղութ մը գոյութիւն ունեցած չըլլար, իր հոգեւոր ուրոյն վարչութեամբ, Հայոց Կաթողիկոսը անոնց այս տեսակ թուղթ մը պիտի չգրէր։

Նոյնպէս եթէ հոն ստուար հայ գաղութ մը գոյութիւն ունեցած չըլլար՝ 1104ին Անեցի Բարսեղ կաթողիկոսը, բազմաթիւ եկեղեցականներու և աշխարհականներու հետ պիտի չերթար Եդեսիա, ուր քիչ առաջ (1100ին, հաստատուած էր Լատին դքսութիւն մը։ «Կոմսն Ֆռանկաց Պաղտինն մեծարեաց զնա մեծաւ պատուով որպէս վայել է հայրապետի եւ գիւղս եւ տունս պարգեւէր նմա եւ յոյժ սիրեաց զՀայրապետն Հայոց» (Ուռ., 364):

Եթէ Եդեսիա բազմահայ քաղաք մը եղած չըլլար, հոն Եպիսկոպոսական աթոռ մը գոյութիւն պիտի չունենար. մինչ կը հաստատուի որ 1141—1144ին այնտեղ կը նստէր Անանիա անուն եպիսկոպոս մը, որ 1144ին, քաղաքին գրաւման ատեն Հալէպ գերի տարուած և ծախուած է (Ց. Քիւրտեան, Առաջին եւ երկրորդ խաչակրութիւններ, ըստ Սիւրիացի անանուն ժամանակագրի մը, էջ 27 և 36)։

1179ին Հռոմկլայի ժողովին մասնակցողներուն մէջ նաև Եդեսիոյ Հայոց Ստեփանոս Եպիսկոպոսին ևս (Զամ. Գ. 132 և Տաշեան, Մայր Ցուցակ, 350) գտնուիլը ուրիշ փաստ մըն է, որ հակառակ Սելջուկ տիրապետութեան և քաղաքին 1144ին մատնուած աղէտին, Հայերը հոն չէին դադրած բարգաւաճ գաղութ մը ունենալէ. իսկ հիւսիսային Ասորիքի մեծ և պատմական քաղաքը՝ Անտիոք, որ հնուց ի վեր մեծ կեդրոն մը եղած է (հին ատեն՝ քաղա-

քական և քաղաքակրթական, ու քրիստոնէութեան ծագումէն ետք՝ նաև կրօնական), ԺԱ. դարուն դարձած էր քրիստոնեայ քաղաք մը, ուր «տիրող տարրը կը բաղկանար Յոյներէ եւ Հայերէ: Արդարեւ մոռնալու չէ երբեք որ Անտիոք մնացած էր մինչեւ 1084, այսինքն խաչակրութեան նախօրեակին, Յոյն կղզեակ մը, որ մեծ մասամբ պահած էր այս նկարագիրը, Սելջուկեան կարճ տիրապետութեան տակ եւ զայն կը պահէր տակաւին 1098ին, Ֆրանք գրաւումէն ետք, երբ իր քաղաքապետն ալ Յոյն մըն էր» (*Ռընէ Կրուսէ, Թրգ. տես.* Արեւ, 6133, 3 *Մարտ*, 1939)։

*Բայց պէտք չէ մոռնալ թէ Անտիոք որքան որ շատ հայ բնակիչներ ունեցած էր, խորքին մէջ յոյն քաղաք մըն էր և մոլեռանդութիւն կար հոն։*

*Եւ այս՝ այնպիսի միջոցի մը, որ Բիւզանդական կայսրութիւնն իսկ պատկառելով հայ բնակչութեան մեծամասնութենէն՝ Հայերու վստահած էր Անտիոքի կառավարութիւնը, զայն իսլամական տիրապետութենէն փրկել յաջողելէն ետք։ Հոն՝ իբրև կառավարիչ՝ կ'իշխէր* 1059—1060*ին Աբաս Հայ իշխանը, որ եղբայրն էր Կարսի և Թէոդուպոլիսի հրամանատար Գրիգոր Բագուրիանոսին։ Աբաս՝ Անտիոքի մէջ ունէր կալուածներ և ստացած էր Մագիստրոս կամ Դուքս տիտղոսը։ Հաւանօրէն Անտիոքը իբրև ժառանգական ստացուածք պարգեւ տրուած էր իրեն, սակայն չի գիտցուիր թէ ինչո՞ւ ան Հայ յաջորդ մը ունեցած չէր, այլ Յոյն մը,* 1061*ին, նոյն պաշտօնին կոչուած։ Ասոր ալ ուրիշ Յոյներ յաջորդած են մինչեւ* 1068*, երբ Ռոմանոսի հրամանով, Անտիոքի դուքս կարգուած է Խաչատուր Հայը* (Laurent, Byz. et les Turcs Seldjoucides, 1914/19, *էջ* 41, *ըստ Բիւզանդացի պատմագիրներու տես. վարը,* 407), *մինչ այն բազմաթիւ Հայերէն, որոնք Տաւրոս և շրջակայ երկիրները գաղթած էին* (նոյն, *էջ* 67)։

*Ինչպէս յայտնի է, Ռոմանոս Դիոժէն, այդ Հայերէն շատերը զինուորական հրամանատարներ անուանած էր այս կողմերուն համար։*

*Խաչատուր Անեցի այդ պատիւին արժանացաւ իր քաջութեամբ և իբրև զօրավար՝ իր տաղանդին շնորհիւ։*

1069*ին պարտուեցաւ Թուրքերէն, որոնք նոր աւերած էին Իկոնիոնը* (Lebeau-Brosset, Hist. de Bas-Empire XIV, 483), *կայսրը այն ատեն հրաման րրաւ երթալ հաստատուիլ Մոպոնուեստիա՝ Թուրքերուն նահանջը արգիլելու համար։ Թէև կրցաւ անոնց ձեռքէն ազատել յափշտակուած աւարը, բայց Թուրքերը յաջողեցան իրմէ խուսափիլ. և Սարբանտիկոս (Սարաւանդիքար)* (1) *լեռան կիրճերէն անցնելով, հասնիլ Հալէպ* (Ատտալիատէս, 136—38, Սկիլիցէս, 684, Ղոնարաս, Գ. 694):

*Այս իրարու յաջորդող հայ և յոյն դուքսերուն մէջ՝ Յոյներու պաշտօնավարութեան ատեն է որ պատահած են մոլեռանդական դէպքերը, վասնզի, Կոստանդին Ժ. Դուկաս կայսրը* (1059—1066), *Հայերը յունադաւան դարձնելու անխորհուրդ ձեռնարկն րրաւ և Յոյները ասկէ քաջալերուած՝ սկսան նախատել Հայերը յունաբնակ քաղաքներու մէջ և Հայերը չկրցան համարձակ շրջիլ։*

(1) Այս լեռը Ամանոսի հիւսիսային մէկ մասն է, *Ramzay, Asia Minor*, էջ 385:



*Այդ ժամանակամիջոցին պէտք է պատահած ըլլան Անտիոքի մէջ անախորժ դէպքեր, արդիւնք՝ գրգռուած այդ մոլեռանդութեան։*

*Այսպէս, Անտիոքի մէջ նախատուեցաւ և մօրուքը գերծուելով քաղաքէն դուրս հանուեցաւ Գէորգ Անեցի — հաւանօրէն ազդեցիկ մարդ մը — որ սաստիկ զայրացած,* 500 *կորովի Թուրքեր վարձեց և Անտիոքի գաւառին մէջ ասպատակութիւններ գործեց և աւերեց բազմաթիւ աւաններ և այրեց Անտիոքի կառավարիչին սեփական* 12 *գիւղերը։*

*Վերջապէս, փախուստ Յոյն բռնեց. Անտիոքի դուռը եկաւ և քաղաքացիներուն ձայն տալով յայտարարեց թէ «ես եմ Անեցի Գէորգը, որուն դուք մօրուքը կտրեցիք, ահա առէք ձեր աշխատութեան վարձքը». և հոն անոնց աչքին առջեւ խողխողեց այդ* 60 *Յոյները և մեկնեցաւ* (*Զամ. Բ.* 971)։

*Նոյնպէս կը պատմուի թէ այդ ժամանակամիջոցին, օր մը Անտիոք կուգայ կարաւան մը՝ եօթանասուն Հայերու, որոնք աղած ձուկ և կաշի կը բերէին։ Այդ Հայերը՝ հրապարակի մը վրայ կանգ առնելով, ուտել-խմելու կը պատրաստուէին, որովհետեւ Բարեկենդանի օրեր էին։*

*Անտիոքցիք սաստիկ կը նախատեն զանոնք։ Ասկէ առաջ կու գայ կռիւ, այդ Հայերուն և քաղաքացիներուն միջեւ և երկու կողմէն շատեր կը մեռնին և մեծ դժուարութեամբ խաղաղութիւնը կը հաստատուի։* (*Զամ. Բ.* 972)։

*Հայերը, ուրեմն գոհ չէին Յոյներէն, երբ Սիւրիա հասան Սելջուկները։*

*Փոխադարձաբար Յոյներն ալ շատ գոհ չէին Հայերէն, որոնք անկախութեան կը ձգտէին ու Տաւրոսի կատարներուն վրայ և Սիւրիոյ ու Միջագետքի մէջ պատկառելի մեծամասնութիւն մը ունէին։ Յոյները պէտք է սիրաշահէին հայ զանգուածը, եթէ չէին ուզեր կորսնցնել Կիլիկիան, Ասորիքը և Միջագետքը։ Հետեւաբար Ռոմանոս Դ. Դիոգինէս կայսրը* (1068—1071), *տէրութեան հարաւային սահմաններուն պաշտպանութեան համար, հայ զինուորական հրամանատարութիւնները շատցուց, ինչպէս կը հաստատեն յունական աղբիւրներ։ Արդարև, Ռոմանոսն էր որ Հիէրապոլսոյ (Բամպուք Գալէսի՝ Կոռիկոսի կամ Լաւօդիկէի մօտ) մէջ հաստատեց Ապուքապը, որ արդէն տէր էր Եդեսիոյ* (Ատտալիատէս, 116), *Անտիոք ղրկեց Խաչատուր Անեցին և վերջապէս ինքն էր որ Վերին Ասորիքի հրամանատարութիւնը* (1) *յանձնեց Փիլարտոս Հայ զօրավարին, որ նշանաւոր պիտի հանդիսանար Ռոմանոս կայսեր* 19 *Օգոստոս* 1071*ի Մանազկերտի պարտութենէն ետքը։*

*Փիլարտոս որ պաշտօն ստացած էր Ռոմանուբոլիսէն (= Բալու) մինչև Մելիտինէ և Անտիոք երկարող ռազմական գիծը պաշտպանելու* (Սկիլիցէս, 866, Զոնարաս, *ԺԸ.* 12 *և* Ալեքսիաս, *գ*) *Մանազկերտի պարտութենէն վերջ՝ աւատական կազմով անկախ հայ պետութիւն մը կազմելու մեծ ծրագիրը յղացաւ, յոյս դնելով հիւսիսային Միջագետքի, Ասորիքի, Կոմագենէի, Եփրատացւոց և Տաւրոսի շուրջը և Կիլիկիոյ մէջ համախմբուած և մեծամասնութիւն կազմած հայ բնակչութեան վրայ։*

*Իր այս ծրագիրին գործադրութեան դէմ մեծ արգելքի մը չհանդիպեցաւ*

(1) Ըստ ոմանց՝ Արեւելքի կամ Կոմմագինէի եւ Դ. Հայքի բանակներուն հրամանատարն էր:

առաջ, վասնզի Բիւզանդիոն այդ օրերուն անկարող էր իրեն հետ մաքառելու։ Փիլարտոս ալ կատարեալ ազատութիւնով գործելով հանդերձ, խորամանկութեամբ, գէթ անուանապէս ինքզինքն Բիւզանդիոնի պաշտօնատար մը ցոյց կու տար։

Ասոր համար՝ Միքայէլ Պարապինաս կայսրը (1071—1078) չհակառակեցաւ Հայու մը այդ կողմերը տիրական դիրք գրաւելուն և դէպի անկախութիւն ձգտող քայլերուն, վասնզի Յոյները շատ աղէկ գիտէին այդ շրջաններու բնակչութեան մեծամասնութիւնը կազմող Հայերուն տրամադրութիւնը, իրենց անխորհուրդ ընթացքին պատճառով։ Կայսրը գոհ էր որ Փիլարտոս, Սելջուկներու դէպի Կիլիկիա և Կապադովկիա յառաջխաղացման ճամբան կը փակէր։ Նոյնիսկ պատմագիր Միքայէլ Ասորի կը հաւաստէ թէ «Հոռոմները իշխան կարգեցին Փիլարտոսը Կիլիկիոյ վրայ, որպէսզի դիմադրէ Թուրքերուն, որովհետեւ Փիլարտոս ռազմիկի համբաւ ունէր» (Chronique de Michel le Syrien, Patriarch de Yacobit d'Antioche (1166—1199) թրգ. J. B. Chabot, Գ. հտ. 187—188)

Փիլարտոս ոչ միայն ռազմիկ մը կամ զօրավար մըն էր, այլ հեռատես կազմակերպիչ մը, որ պատեհապաշտ քաղաքականութեամբ մը, նոյնիսկ Սատանային հետ զինակցելով, իր նպատակին կը դիմէր։

Ան իր զինուորական ուժը աւելցնելու համար՝ ապաստան տուաւ Արծրունի և Բագրատունի մնացորդներուն, երբ անոնք հալածուեցան Կեդրոնական Փոքր Ասիայէն և իր շուրջ հաւաքեց նաև Անիի գրաւումէն ետք, արեւելեան Հայաստանէն արտագաղթող Հայ իշխանները, որոնք իրենց զօրքով կու գային։ Փիլարտոս մեծապէս օժանդակեց անոնց և զանոնք տեղաւորեց զանազան վայրեր, այսպէս ստուարացնելով Հայերու թիւը՝ իր տիրապետութեան ենթակայ հողամասերուն վրայ։

Ապա Փոքր Ասիոյ, Կիլիկիոյ և Հիւսիսային Սուրիոյ (Ասորիք) մէջ հաստատեց Մալաթիոյ, Քեսունի, Անդրիունի (Մարաշի մօտ), Ծովքի, Պիրի, Աբուլնտանի և Կարկառի ճորտ իշխանութիւնները կամ հողատիրութիւնները, իր հովանաւորութեան տակ, կազմելով Փոքր Ասիոյ և հիւսիսային Սուրիոյ մէջ մեծ աւատապետութիւն մը՝ բազմաթիւ ճորտերով։

Իսկ Կիլիկիոյ մէջ հաստատեց, ինչպէս ըսինք, արեւելեան Հայաստանէն իր երկիրը ապաստանող իշխաններուն մէկ մասը, Քեսունէն դէպի արեւմուտք՝ պաշտպանելու համար Կիլիկեան անցքերը։

Հայ իշխանապետին կալուածները, որոնք շրջապատուած էին հիւսիս-արեւելքէն և հարաւ-արեւելքէն Մեծ Սելջուկին և հիւսիս-արեւմուտքէն Դանիշմէնտի հողերով, երկրորդական աւաններէ զատ, կը բովանդակէին իրենց մէջ նաև խիստ կարեւոր և բազմամարդ քաղաքներ, ինչպէս Խարբերդ, Մալաթիա, Մարաշ և Անտիոք, որոնք իրենց շուրջի հողերով, մեծ մասամբ հայաբնակ դարձած էին, Յոյներու և Ասորիներու չափաւոր խառնուրդով մը, իսկ Իսլամները շատ ցանցառ էին (Կոմմագենացի (1), Փիլարտոս Հայը էջ 61)։

(1) Կեղծ անունը Գաս. Խ. Քասունիի, որ հեղինակն է այս ծաւալով շատ փոքր եւ արժէքով շատ բարձր ուսումնասիրութեան:



Փիլարտոս, ինչպէս ըսի, կը յենուր հայ բնակչութեան վրայ և եթէ կարենար իր Հայ ստորադասներով դիմագրաւել Սելջուկ ընդհանուր յարձակողականին, զոր բարբարոսները ի գործ դրին Սեւ Ծովէն մինչեւ Միջերկրական, իր ծրագիրը յաջողած պիտի ըլլար։ Փիլարտոս դժբախտաբար յաջողեցաւ միայն դիմադրել հիւսիսային Սուրիոյ, այսինքն Հալէպի կողմէն դէպի Ասորիք, (Անտիոք), Եփրատացիք եւ մինչեւ Տլուք, Մարաշ եւ Տարսոն կատարուած յարձակումներուն, եւ կրցաւ յաջողութեամբ ետ մղել զանոնք, պահելով Անտիոքը եւ Կոմմագենէն։

Բայց երբ Սելջուկները գրաւեցին Փոքր Ասիան, Փիլարտոս դժուարին դիրքի մը մէջ գտաւ ինքզինքը, քանի որ բարբարոսները անկարելի էր որ այս հայ իշխանութիւնն ալ չընկճէին։

Ուստի ան աշխատեցաւ ամրապնդել իր իշխանութիւնը, իր պետութեան դաշնակցային կազմը զօրացնելով, և թող չտալով որ պզտիկ իշխանութիւններ դաշնակցութենէն բաժնուին։

Ասոր համար նախապէս այս շրջանակին մէջ գտնուող հայ կամ այլ ծագումով, Բիւզանդական պաշտօնակալները, երբ կամովին հպատակեցան ու գործակցեցան իրեն, հաստատեց և պահպանեց զանոնք իրենց իշխանութիւններուն մէջ, իսկ անոնք որ իր ծրագիրին հակառակեցան, անոնք ալ ընկճել, հնազանդեցնել կամ մէջտեղէն վերցնել աշխատեցաւ։

Այսպէս, իրեն հնազանդեցուց Եդեսիան, ուր Բիւզանդիոնի կայսրը 1031ին հաստատած էր իշխանութիւն մը՝ Հայ կառավարիչով մը, որ էր Ապուքապ, «որ յառաջ վրանապահ էր լեալ Դաւիթի Կիւրապաղատին Վրաց», (Ուռ., 65) և որ 1030ին, Ռոմանոս Գ. կայսեր (1028—1034) բանակին մէջ էր, երբ անիկա կը մաքառէր Սուրիան վերագրաւելու համար։

Ապուքապ ստորակարգեալն էր Գէորգ Մանիակէս (1) «պատերազմական հերոս»ին (Ep. Byz., Գ. 194), որ 1030ին երբ Ռոմանոս Գ., Ասորիք եկաւ, անոր բանակին մէջ էր։

Մանիակէս, փոքր կռիւներու մէջ յաջողութիւններ ունենալով, ստացաւ «Ստորին Մարաստանի» հրամանատարութիւնը՝ Սամոսատ կեդրոնով և 1032ին յանդգնօրէն մինչեւ Եդեսիա առաջացաւ և հոն գտնուող սրբութիւնները և նշխարները Կ. Պոլիս ղրկեց (Գելցեր, 272)։

Հալէպի պարտութեան նախօրեակին, Ապուքապ «ազդ արարեալ բազաւորին զնենգութիւն զօրացն» (Ուռհ., 64) — Ռոմանոսը պիտի մատնէին թշնամիին — մեծ ծառայութիւն մատոյց անոր, և ասոր համար ի վարձատրութիւն ստացաւ Եդեսիոյ Կառավարչութիւնը (2)։

(1) Ըստ *Lonis Bréhier*ի Մանիակ կամ Մանիակէս բնօրինակը հաւանօրէն կը պատկանէր մէկուն, կեդր. Ասիոյ Թուրանեան ցեղերուն, որոնք իրենց տափաստաններէն կը մեկնէին փնտռելու համար եթէ ոչ բախտ ու փառք՝ գոնէ ապրելու միջոց մը, Բիւզանդական կամ Արաբ կայսրութիւններուն մէջ, այսպէս ըստ բախտին միեւնոյն ցեղէն առաջ կու գային արկածախնդիրներ, մոլեռանդ մահմետական կամ քրիստոնեայ (*Ep. Byz.*, Գ. 89):

(2) Կեդրենոս (Բ. 512) Մանիակի յաջորդ ցոյց կու տայ Լեւոն Լերանդոփոսը, զոր կը յիշէ նաեւ Ուռհայեցի (260), Լեւոն «եղբայր Դուասանոսի» ձեւով: Ան կը պատմէ թէ խաւ-

1038ին, Եդեսիոյ կառավարիչ եղած է (Զամ. Բ. 917—8), Գէորգ Վարազվաղէ հօրը կողմէ Հայ և մօրը կողմէ՝ Վրացի, որ 1031ին Թէոդորա կայսրուհիէն, երբ թէ ընդդէմ իր քրոջը՝ Զոյէի սարքուած դաւադրութեան մը մասնակից՝ աքսորուած բազմաթիւ անձնաւորութիւններէն մէկն էր (տես. ՊՀԳ. Ա. 318)։

Գէորգ Վարազվաղէ (Բարազբաղէ), որ հիմնադիրն էր մեծ և հռչակաւոր Աթոսի Վրացիներու վանքին (Schlumberger, Ep. Byz. Գ. 102, Կեդրենոս, Բ. 520). յայտնի չէ թէ ի՞նչ կերպով ստացած է այս պաշտօնը։

Ապուքապի յաջորդներէն մին է նաև իր որդին պատրիկ Վասիլ Ափոքափիս (Basile Abokapis), որ Վրացի մօրմէ ծնած էր (Ուռհ., էջ 140), և Մանազկերտը, Տուղրիլէ պաշարուած ատեն (1054 Մարտ 8—6 Մարտ 1055) մեծ քաջութիւն ցոյց տուած էր (նոյն) և ատոր համար Եդեսիոյ դուքս նշանակուած էր (Ep. Byz. III. 600—610)։ Ուռհայեցի մեծ գովեստով կը խօսի իր մասին, իբրեւ «այր բարի եւ աստուածասէր, ողորմած որբոց եւ այրեաց եւ խաղաղար եւ շինող աշխարհի» (Ուռհ., 259 եւ 268)։ Ռոմանոս Դ. (1068—1071), զինուորական արժանիքներ ունեցող այս անձին յանձնած էր նաև Հիէրոպոլսոյ (Փամպուք Գալէսիի) զինուորական հրամանատարութիւնը։

Իրեն դէմ ելած է Առջակ անուն իշխան մը (հաւանօրէն նոյնպէս Հայ), որ յաջողելու համար, Փիլարտոսի դիմած է։ Փիլարտոս այս առիթը բարեպատեհ համարած է Եդեսիան իրեն ստորադասելու համար և պատժած դաւաճանը մահով։ Իսկ Վասիլ սպաննուած է Յոյներէն 1083ին՝ դաւաճանութեամբ։

Իր մահէն վերջ, ինչպէս կ'երեւի, Եդեսիոյ և Բիւզանդիոնի յարաբերութիւնները, ընդհատուած և Եդեսիա իր ճակատագրին լքուած էր, վասնզի քաղաքացիք ժողովով անոր յաջորդ ընտրած են՝ իբրև դուքս Սմբատ անուն Հայը, որ քաջութիւն ցոյց տուած էր Սելջուկ արշաւանքին ատեն։ Սմբատ հազիւ վեց ամիս կը պաշտօնավարէ, վասնզի քաղաքին երեւելիներէն մէկը — Առջքթոք ցեղէն իշխան մը — կը ջանայ դքսութեան աթոռը Հայերէն առնել։

Իր ծրագիրին հակառակ այս արարքը՝ Փիլարտոս պատժեց քաղաքը գրաւելով և անոր իշխան կարգեց (1083) իր Վարսամ որդին։ 1084ին Վարսամ (ըստ Շլիւմպերժէի, Վահրամ), թշնամացաւ հօրը հետ եւ անկէ կորզել ուզեց Անտիոքը եւ Իկոնիոյ Սուլթանին՝ Սիւլէյմանի հետ զինակցելով, յարձակեցաւ Անտիոքի վրայ եւ գրաւեց զայն։ Վարսամ, Եդեսիոյ դուքսը 1087ին սպաննուեցաւ քաղաքին գրաւման ատեն, իր ցոյց տուած անհոգութեան համար (Զամ., Գ. 12)։

Իսկ Անտիոքի իշխանութիւնը, զոր Խաչատուր Անեցի կը վարէր 1071ին, կը տրուի Գրիգոր Մագիստրոսի որդիին՝ Վասակ Պահլաւունիի (1), որ կ'սպաննուի 2 Մարտ 1078ին։ Այս սպաննութիւնը գեղեցիկ պատրուակ մը կ'ըլլայ Փիլարտոսի համար, Անտիոքն ալ իրեն ստորադասելու՝ առանց կռիւի, վասնզի Վասակի մահէն վերջ՝ «ազատազունդն Վասակայ կոչեցին զՓիլարտոսն եւ տան զԱնտիոք ի ձեռն նորա» (Ուռհ., 256)։

Այսպէս, Անտիոք կը հպատակի Փիլարտոսի, որ կը պատժէ իշխանը ըսպաննողները, 700 հոգի ջարդելով և Անտիոքը կցելով իր երկիրներուն (հմմտ. Իպն էլ Աթիր, Աննա Կոմնենոս, Դ. 360, Michel le Syrien, Դ. 173)։

Փիլարտոս՝ Անտիոքի գրաւումէն յետոյ կ'սկսի գործածել «Դուքս Անտիոքի» տիտղոսը (Ուռհ., 257)։

Փիլարտոս, այս իշխանութիւնները միացուցած ատեն, կազմեց նաև իրեն ճորտ նոր իշխանութիւններ, Սեբաստիոյ, Պիզուի և Ծամնդաւի հայ արքունիքներուն վերջին մնացորդները և անոնց ստորադաս Հայ իշխանական տուներէն իրեն դիմողները ընդունելով և իւրաքանչիւրին առանձին կալուածներ յատկացնելով։

Միքայէլ Ասորիի համաձայն, երբ Յոյները լսեցին որ Փիլարտոս և իր ճորտերը յաջողած էին գրաւել Կիլիկիոյ կարեւոր մասը, Մարաշը, Քեսունը, Ապլասթանը (Ալպիստան) և Մելիտինէն, նաև Ուռհան — Եփրատի միւս կողմը — և ուրիշ շատ մը տեղեր, պատիւ ըրին Փիլարտոսի և տուին Սեւաստոս տիտղոսը։ Այսպէս, Փիլարտոս և իր ճորտերը օգտուեցան Բիւզանդական և Սելջուկ կայսրութիւնները շրջապատող դժուարութիւններէն՝ ընդարձակելու համար իրենց ստացուածքները Յոյներէն և Իսլամներէն հողեր գրաւելով (հմմտ. F. Chalandon, Jean II. Comnèna et Manuel Comnène, էջ 103) և հարթեցին անկախութեան ճամբան և հաւանօրէն պիտի յաջողէին իրագործել իշխանապետին առաջադրութիւնը, եթէ 1084ին, Սելջուկ Սիւլէյման Իպն Գութուլմիշ անակնկալ կերպով չգրաւէր Անտիոքը և չտիրէր Կիլիկիոյ, Փիլարտոսի դաւաճան որդին՝ Եդեսիոյ դուքս Վարսամի կամ Պարսամի մեղսակցութեամբ։

Նոյն ժամանակամիջոցին, հաւանօրէն Դանիշմէնտի զօրավարներէն Պոլտաճի Ամիրան ալ գրաւեց Ջահան գաւառը (Ալպիստան և Կէօքսիւ)։

Սիւլէյման և Դանիշմէնտ զինակցաբար, Փիլարտոսի երկիրներուն կէսը յափշտակեցին և թերևս միւս կէսն ալ պիտի գրաւէին՝ եթէ իրարու չթշնամանային։ Դդուշ, Ալփասլանի որդին և Մելիք Շահի եղբայրը և Սիւլէյման իրարու դէմ ելան, վասնզի Դդուշ՝ Անտիոքը և Հալէպը կը պահանջէր։ Փիլարտոս հազիւ կրցաւ ճողոպրիլ Սիւլէյմանի ձեռքէն և երթալ Մարաշ, որուն

---

ժանը ըմբոստացած է անոր դէմ եւ զայն հարկադրած է փախուստի, իսկ Պռոխիմոսը սպաննուած է եւ անկէ յետոյ է որ Ապուքապի որդին՝ Վասիլ անցած է իշխանութեան գլուխը: Այս խառնակութիւնը թերեւս կարելի ըլլայ լուծել «Սեւորին Մարասանի» հրամանատարութիւնը եւ Եդեսիոյ իշխանութիւնը իրարմէ անջատ նկատելով:

(1) Կարգ մը երեւոյթներ կան, որ ցոյց կու տան թէ Պահլաւունիք եկած հաստատուած էին Հայաստանի առեւմտեան կողմը եւ Եփրատի արեւմտեան ափին վրայ: Իսկ Գրիգոր Պահլաւունի (+ 1058), որ տէր էր Այրարատեան նահանգին մէջ Բջնի, Կայեն եւ Կայծոն բերդերուն. 1045ին այդ բերդերը ինքնաբերաբար թողած էր Վասիլ Բ.ի եւ անոնց փոխարէն ստացած Միջագետքի մէջ գիւղեր եւ քաղաքներ, եւ անոնց տոհմական ժառանգական իրաւունքը հաստատող հրովարտակ, միեւնոյն ատեն նաեւ Մագիստրոսի աստիճան: Գրիգոր Մագիստրոս, մնալով տէրը իբրեւ փախարինութիւն ստացած կալուածներուն, ուր եւ հաստատուած էին հաւանօրէն իր ընտանիքին անդամները եւ զանոնք աւելի ընդարձակած, վարած է զանազան պաշտօններ, իբրեւ Բիւզանդական պետութեան պաշտօնատար: Իր մահէն վերջ, Պահլաւունիք ունէին բազում տանուտիրութիւններ, հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ: Անոնց պատմութիւնը պէտք եղածին չափ լուսաբանուած չէ տակաւին:

*բնակչութեան մեծ մասը Հայ էր և օգտուելով Սելջուկներու ներքին պառակտումէն՝ ուզեց վերակազմել իր պետութիւնը։*

*Սիւլէյման սպաննուեցաւ* (1086) *և յաղթանակը մնաց Դգուշի, և Փիլարտոսի կացութիւնը տագնապալի դարձաւ, վասնզի Դգուշ նոյնքան թշնամի էր Փիլարտոսի և անոր իշխանութեան զոր ջնջեց, վասնզի ան մնացած էր անձնեցուկ՝ կորսնցուցած ըլլալով իրեն զինակից Մարտինի և Մուֆարգինի երկու իսլամ ամիրաները։*

1086*ին վերջ գտաւ Փիլարտոսի իշխանութիւնը։ Հայ իշխանապետին պատմութեան ասպարէզէն անհետանալէն վերջ, իր ստորադաս Հայ ճորտ իշխաններէն շատերը, ստեղծուած կացութեան համակերպեցան, ըստ Բասունիի՝ նոյնիսկ Փիլարտոսի յանձնարարութեամբ* (Ակօս, *Իթ.* 108), *և ջանացին առանձին առանձին կառավարել իրենց երկիրները, բարի վեհապետի համբաւով և քրիստոնէից պաշտպան ու բարեկամ Մեծ Սելջուկին՝ Մելիք Շահի* (1072—1092), *իբրև հարկատու հողատիրութիւններ։*

*Բայց Մելիք Շահ մեռաւ* (1092) *և իր կայսրութիւնը բաժան բաժան եղաւ, Տաւրոսի կողերուն վրայ և Կիլիկիոյ, Ամանոսի ձորամէջերը, Եփրատացւոց, Կոմագենէի, Հիւսիսային Սուրիոյ և Հայկական Միջագետքի մէջ տեղաւորուած Հայ գաղթականները և իրենց Հայ իշխանները, դժուարին դիրքի մը ենթարկուեցան։*

*Անոնք ի զուր փորձեցին Բիւզանդական կայսեր գերիշխանութիւնը ճանչնալով իրենց հողատիրութիւնները ամրապնդել։ Բիւզանդիոնի կայսրը չգնահատեց այդ Հայ իշխաններուն օգտակարութիւնը և չօգնեց որ անոնք համագործակցութեամբ կարենային կազմել արգելակ պետութիւն մը* (état tampon) *մը, Սելջուկ և Բիւզանդական կայսրութիւններու միջեւ։*

*Ասիկա մեծ նպաստ մը պիտի ըլլար, ինչպէս Փիլարտոս եղած էր, պաշտպանելու քրիստոնեայ կայսրութիւնը արեւելեան հրոսներու դէմ։ Բիւզանդացիք չեն կրցած ըմբռնել կացութիւնը։ Հակառակ անոր որ իրենք ԺԱ. դարուն վերջերը գրեթէ բոլորովին վանուած էին Կոմմագենէէն և Ասորիքէն, չէին հրաժարած զանոնք վերագրաւելու երազէն և փոխանակ օգնելու Հայ իշխանութիւններուն, անոնց դէմ կը դաւէին։*

*Հետեւաբար, այդ Հայ իշխանութիւնները ստիպուած էին կռուիլ երկու ճակատի վրայ, թէ՛ Բիւզանդացիներու և թէ՛ Սելջուկներու դէմ։ Մինչ եթէ Կ. Պոլսոյ կայսրը հանդուրժէր անոնց զօրութեան և զանոնք քաջալերէր, Հայերը միայն Սելջուկներու հետ գործ պիտի ունենային և մէկ ճակատի վրայ պիտի կռուէին։ Եւ անհաւանական չէր որ կարելի ըլլար իրագործել Փիլարտոսի իմաստուն ծրագիրը, քանի որ Մելիք Շահի մահէն* (1092) *ետք, Սելջուկները այլեւս միակ վեհապետի մը, Մեծ Սելջուկին իշխանութեան տակ, մեծ պետութիւն մը չէին կազմեր, այլ բաժնուած էին զանազան մասերու, որոնք իրարու հետ կը պատերազմէին և կը տկարացնէին Սելճուկ ուժը։*

*Հայերը եթէ Բիւզանդիոնի գերիշխանութիւնը չճանչնային, թերեւս Սելջուկները, ինչպէս Մելիք Շահ և ապա Դգուշ ըրած էին, պահէին Հայ իշխանները իբրեւ ճորտ* (vassal) *և այսպէս ստեղծուէր Հայ–Սելջուկ համակցողութիւն*



*մը և տեւականային Հայ իշխանութիւնները։ Դժբախտաբար Հայ իշխանութիւնները մէկիկ մէկիկ նուաճուեցան հաւասարապէս իսլամներէն և քրիստոնեաներէն, Փիլարտոսէն յետոյ՝ քանի մը ուրիշ պետերու իշխանութեան ներքեւ վաղանցիկ փայլ ունենալէ ետքը։*

*Այսպէս, ընկճուեցան բացի մէկէն — Ռուբէնի իշխանութենէն — Կիլիկիոյ, Եփրատացւոց, Կոմագենէի, Հայկական Միջագետքի և Հիւսիսային Սուրիոյ մէջ կազմուած Հայ իշխանութիւնները, որոնք թերեւս կարենային ապրելու եղանակ* (modus vivendi) *մը գտնել երկու ուժերու (Բիւզանդականին և Սելջուկեանին) միջեւ, եթէ երրորդ ուժ մը երեւան չգար՝ Փիլարտոսի իշխանութեան կործանումէն* (1086) *հազիւ տասը տարի ետքը։*

*Այդ երրորդ ուժը Խաչակիրներն էին, որոնք եկան խառնուիլ այս աշխարհամասի գործերուն և Հայ ազգին ճակատագիրին վրայ ունեցան թէ՛ դրական և թէ՛ ժխտական ազդեցութիւններ։*

*Խաչակրութիւնները, ինչպէս յայտնի է, համաշխարհային պատմութեան մէջ կարեւոր դրուագ մը կը կազմեն* (1) *և խորքին մէջ ունին այլազան շարժառիթներ, երեւութապէս Երուսաղէմը իսլամներու ձեռքէն ազատագրելու եւ Ս. Երկիր գացող ուխտաւորներուն ազատ եւ անվտանգ երթեւեկը ապահովելու պարզ նպատակով, որ կրօնասիրական եռանդի մը արգասիքն էր եւ որ, ինչպէս ուրիշ ժողովուրդներու, նոյնպէս եւ մեր ազգի կեանքին վրայ ազդեցութիւն ունեցաւ եւ ճակատագրական դեր մը կատարեց Կիլիկեան Հայ թագաւորութեան եւ Հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հիմնուած Հայ իշխանութիւններու կեանքին մէջ։*

*Արդարեւ, Հայերը, իսլամներու պառակտումէն օգուտ քաղելով կրցած էին գէթ մասամբ Փիլարտոսի մեծ երազը իրականացնել և իրենց կալուածները ընդարձակել՝ բռնելով երկրամաս մը, զոր Խաչակիրները* Arménia *կը կոչէին։ Անոնք կու գային հեռաւոր աշխարհներէ զինեալ ու անզէն և իրենց ուսին վրայ խաչ մը ունէին։*

*Հայերը, հազիւ սկսան կազմաւորել իրենց իշխանութիւնները՝ երբ բազմահազար թիւով այս Խաչակիրները եկան հոն։*

*Հայոց հիմնած հողատիրութիւններուն գլխաւորներն էին՝*

*Ա. ՄԱՐԱՇԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, որ Փիլարտոս ինքն իսկ հիմնած էր։* 1086*ին իր իշխանութիւնը կորսնցնելէ ետք։ Մինչեւ* 1098 *իսլամներու տիրա-*

---

(1) Խաչակրութիւններուն շարժառիթները, անոնց էութիւնը եւ հետեւանքները ներկայացնել, մեր նպատակէն դուրս է, թէեւ շահեկան, մանաւանդ Եւրոպայի մէջ ԺԱ—ԺԳ դարերու ժամանակամիջոցին տիրող կացութիւնը լուսաբանելու համար: Հետաքրքիրները պատմական այս շատ շահեկան անցքին մասին, որ աշխարհի պատմութեան վրայ խոշոր հետք մը ձգած է, կրնան գաղափար մը կազմել Միջին Դարու պատմութեան դասագիրքով մը իսկ, ի բաց թողլով այն ընդարձակ ուսումնասիրութիւնները, որոնք խաչակիրներու մասին գրուած են նշանաւոր պատմագիրներու կողմէ, որոնք յաճախ իրարմէ տարբեր տեսութիւններ յայտնած են պատմական այս մեծ անցքը դիտելով տարբեր ուղղութեամբ եւ տեսակէտներով: Հայոց համար մէկէ աւելի շահեկանութիւն կը ներկայացնէ յայտնի պատմաբան Ռընէ Կրուսէի գիրքը խաչակիրներու մասին գրուած:

պետութեան տակ մնալէ յետոյ, Խաչակիրները Մարաշը գրաւեցին և տուին Աղէքս Ա. կայսեր (Ուռհ., 332), որ ըստ F. Chalandon-ի՝ հաւանօրէն տուաւ զայն 1098ին, Թաթուլ Հայ իշխանին։ Թաթուլ իբրև յաջորդ Փիլարտոսի «զօրապետն Հոռոմոց» և «իշխանաց իշխան» կը ճանչցուի։

Թաթուլ, որ էր «այր քաջ եւ պատերազմող «ընդ ձեռամբ Յունաց թագաւորին Աղէքսին», (Ուռհ., 331), իր իշխանութիւնը պահեց հազիւ մինչև 1101, Սելջուկներուն դիմադրելով, երբ միևնոյն Խաչակիրներուն ձեռքով, որոնք վեհանձնօրէն հիւրասիրուած էին իր քով 1098ին, վտնտուեցաւ իր իշխանութենէն և Ֆրանկները գրաւեցին՝ հակառակ իրենց պայմանադրութեան՝ ամբողջ Ջահանի գաւառը, Անաւարզայէն մինչև Ալպիսթան։

Ալեքս Կոմնէն կայսրը՝ Մարաշ ղրկեց Բուտումիտ զօրավարը, որ նըւաճեց քաղաքը և Թաթուլը վերահաստատեց իր իշխանութեան մէջ՝ իբրև Բիւզանդական կուսակալ (1103)։ Սակայն Յոյները հազիւ տարի մը կրցան պահել Մարաշը, վասնզի 1104ին քաղաքը գրաւուեցաւ Անտիոքի Լատին իշխանին և Թլպաշարի Ժօսլին Կոմսին կողմէն, ինչպէս կը պատմէ Ուռհայեցի (332—3), գրելով թէ՝ «յարուցեալ մեծ կոմսն Ֆռանկաց Պեմունդն եւ Ռիչարդն, քուերորդին նորա արար ժողով զզօրսն Ֆռանկաց եւ գային ի վերա քաղաքին Մարաշոյ, եւ պատերազմեալ ի վերայ իշխանաց իշխանին, որ ասէին նմա Թաթուլ եւ խնդրէր ի նմանէ զքաղաքն Մարաշ, եւ բանակեալ բազում պատերազմաւ ի վերայ նորա: Իսկ իշխանաց իշխանն առ ոչինչ համարելով զամենայն պատերազմն նորա» ... եւ Պեմունդն կայր բանակեալ ի դաշտն Մարաշ եւ հաւանեցոյց զգաւառն իւր»:

Պոհեմունտ կ'անուանուի Կոմս Մարաշի, որ վերջապէս «ի բաց վարեաց զմեծ իշխանն Հոռոմոց, զիշխանաց իշխանն որ բնակեալ էր ի Մարաշ քաղաք» (Ուռհ., 424):

Թաթուլ՝ Տիրամօր պատկերը, որ Մարաշի մէջ կը յարգուէր, կը ծախէ «ընդ բազում գինս ոսկւոյ, մեծ իշխանին Հայոց Թորոսի՝ որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենեայ եւ ինքն գնաց ի Կոստանդինուպոլիս»։ (Ուռհ., 370, Վարդան, 113, Սիսուան, 49, Ազգ. 1327, Փիլարտոս Հայր, 87—88):

Այսպէս, Թաթուլի իշխանութիւնը զոհ գնաց Լատին խարդաւանանքներու։

Բ. ՄԵԼԻՏԻՆԷԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, որուն տէրն էր Գաբրիէլ Հայ-Հոռոմ, որ Թաթուլի տեղ ինքն կ'ուզէր Փիլարտոսի դերը կատարել։ Գաբրիէլ իշխան, որ յելուզակութենէ առաջ եկած էր և իր կեանքով շատ կը յիշեցնէր Փիլարտոսը, որ զայն «կացուցեալ էր» Մալաթիոյ իշխան (Միք. Ասորի, 406)։ Գաբրիէլ աներն էր Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին, (Ուռհ., 306 և 333)։ Գաբրիէլ «Յոյն»՝ 1086էն 1092, իրեն փեսին, Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին հետ՝ չվարանեցաւ նոյնիսկ Դանիշմենտի հովանաւորութեան տակ մտնելու, իր գոյութիւնը պահելու համար և անոնց շնորհիւ եղաւ բոլորովին անկախ (Ա. Ալպօյաճեան, Պատմ. Եւդոկիոյ Հայոց (196—7)։

Սելջուկները, Փոքր Ասիոյ մէջ ունէին արդէն երկու իշխանութիւններ, Գոնիայի Ռումի Սուլթանութիւնը և Նիկսար մայրաքաղաքով Դանիշմէնտեան Էմիրութիւնը, որոնք վտանգ կ'սպառնային Մալաթիոյ և Եդեսիոյ իբրարու



բարիկամ կամ զինակից երկու հայ իշխանութիւններուն. բայց Մելիք Շահի մահէն (1092) վերջ՝ Ռումի Սուլթանութեան և Դանիշմէնտներու միջև մըրցակցութիւն սկսած էր (Ա. Ալպօյաճեան, Պատմ. Եւդոկիոյ Հայոց, էջ 196)։ Դանիշմէնտեանք, իրենց դաշնակից կը նկատէին Տաւրոսի և Հիւսիսային Սուրիոյ քրիստոնեայ պզտիկ իշխանութիւնները, ինչպէս նաև իրենց դրացի Մելիտինէի Գաբրիէլ և Եդեսիոյ Թորոս իշխանները, որով կը կռթնէին այդ շրջանակներու մէջ ապրող Հայերուն, զորս սիրաշահիլ կ'աշխատէին։ Երբ Մելիք Շահ մեռաւ (1092) և իր որդին Պարկիարուխ յաջորդեց իրեն, ըստ Միքայէլ Ասորի պատմագիր Պատրիարքին, յաջողեցաւ նոյնիսկ Խալիֆայէն իշխանութիւն ստանալ։ (Michel le Syrien, Գ. 179—181)։

Դանիշմէնտ Ահմէտ Կիւմիւշթէկին, Խաչակիրներու այս կողմերը գալուստէն, այսինքն 1097էն առաջ՝ իբրեւ իր ճորտերը կամ հովանաւորեալները՝ կը պաշտպանէր Մալաթիոյ Գաբրիէլ եւ Եդեսիոյ Թորոս իշխանները, Իկոնիոյ Սելջուկեան Սուլթանին պահանջներուն եւ ասպատակներուն դէմ։

1097ին Խաչակիրները Նիկիա կը հասնին եւ անկէ կ'անցնին Փոքր Ասիա։ Խաչակիրներու բանակին դէմ երկու հակառակորդները, Ռումի Սուլթանը եւ Դանիշմէնտ Էմիրը առանձին առանձին կը ճակատին եւ երկուքն ալ կը պարտուին։ Այն ատեն իսլամ երկու վեհապետները կը միանան եւ սերտօրէն կը գործակցին՝ կռուելու համար իսլամութեան թշնամիներուն դէմ։

1098ին Պարկիարուխ, Սելջուկ վեհապետը ևս մեծ բանակով մը իր սպարապետը՝ Կերպողան՝ կը ղրկէ արեւմուտք, Ֆրէնկներուն դէմ։ Ան կը գրաւէ Անտիոքը, ուր իբրեւ Ամիրայ կը նստի Կերպողայի որդին՝ Աղիսիան (1)։

Ֆրանկները, 8—9 ամիսներու պաշարումէ մը յետոյ՝ Անտիոքը կը վերագրաւեն՝ քաղաքին քրիստոնեայ բնակիչներուն մատնութեամբ։

Աղիսիան ամիրայ «փախեաւ ի քաղաքէն եւ սպանաւ ի գեղացեացն մանկաղաւ հատեալ, զգլուխ նորա» (Ուռհ., 321)։

Մալաթիոյ Գաբրիէլ «Յոյն իշխան» իբրեւ քրիստոնեայ, իսլամներու ատելութեան առարկայ եղած էր, ուստի յարեցաւ քրիստոնեաներու, նման Տաւրոսի եւ Հիւսիսային Սուրիոյ քրիստոնեայ Փոքր իշխաններուն եւ Խաչակիրներուն հետ սիրով վարուեցաւ (Guillaume de Tyr = Գուլիէլմոս Տիւրացի, Թ. 21) և աշխատեցաւ իր դիրքը ապահովել։ Ասիկա պատճառ եղաւ որ երկու իսլամ զինակից պետերը գրաւելու աշխատին Մալաթիան, որ իբրեւ կամրջագլուխ կարեւոր դիրք մըն էր։

Գիլճ Ասլան, որ Խաչակիրներէն պարտուած Դանիշմէնտ Ահմէտ Ղազի Կիւմիւշթէկինի քով ապաստանած էր, անոր թելադրութեամբ բանակով յառաջացաւ դէպի Մալաթիա։ «Ելից զօրօք առհասարակ զամենայն դաշտսն եւ յարուցանէր սաստիկ պատերազմ ի վերայ քաղաքին Մելտենոյ, եւ եդեալ բաբանս նեղէր զքաղաքն»: Գաբրիէլ «ամենայն քաջութեամբ կացեալ... ամրացուցանէր զքաղաքն», այնպէս որ «կացեալ անդ Սուլտանին զաւուրս բա-

(1) Ըստ Լատինաց, Բագեսիան կամ Ակսիէն, որ ըստ Միշոյի Խաչակիրներու պատմութեան՝ 1097էն մինչեւ 1098 Յունիս իշխած է Անտիոքի

զումս եւ ոչինչ կարաց առնել, դարձաւ ամօթով եւ գնաց յաշխարհն իւր»
(Ուռհ.. 306) կամ ինչպէս Վարդան (110), կը վկայէ, Գաբրիէլ՝ Գըլըճ Աս–
(հմմտ. F. Chalandone, Jean II. Comnène
լանը «դարձոյց ... անարգանօք»:
et Manuel Comnène, էջ 40)։ Գաբրիէլ ուրիշ ապաւէն չունենալով՝ բոլո–
րովին յարեցաւ Խաչակիրներուն, և գրեթէ զինակցեցաւ անոնց, իր աղջիկը՝
Մարփիլը կամ Մորֆին կնութեան տալով Պօտուէն Բ.ի (Boudouin du Burg),
որ Եդեսիոյ կոմսն էր և լաւ յարաբերութիւններ պահեց իր աներոջ հետ։

Սակայն այս նախահոգութիւնները չկրցան Գաբրիէլը փրկել Դանիշմէնտ–
տի հարուածներէն։ Դանիշմենտ, որ գրաւած էր Խարբերդը, երեք տարի յա–
ջորդաբար «եկն ... ի Մելտինի եւ այրեաց ի մուտքն եւ դարձաւ» (Միք.
Ասորի, էջ 406)։ Այնպէս որ՝ Գաբրիէլ, որ միշտ սպառնալիքի տակ էր,
1101ին Մալաթիան Խաչակիրներուն տալու խոստումով օգնութիւն խնդրեց
անոնցմէ։

Ան խնդրեց նախ Անտիոքի իշխան Բոհեմունտի օգնութիւնը (Guillaume
de Tyr, Թ. 21 և Ուռհ. 333—5)։
Բոհեմունտ, իր քեռորդիին ու զօրավարին՝ Ռիչարտի հետ «անմտաբար ան–
պատրաստութեամբ» (Ուռհ., 330), ելաւ Դանիշմէնտի դէմ և չարաչար յաղթուե–
ցաւ և և Ռիչարտի հետ գերի ինկաւ 1100 Յուլիսին (Պատմ. Եւդոկիոյ Հայոց,
էջ 197)։

Գաբրիէլ այնատեն դիմեց Եդեսիոյ Պօտուէն կոմսին, որ օգնութեան
հասաւ իրեն և վանեց խուժերը, սակայն 1102ին, Մալաթիացիք բացին ի–
րենց քաղաքին դուռները Թուրքերուն առջեւ, վասնզի Գաբրիէլ «խստացոյց
նեղէր զքաղաքն քան զարտաքոյսն» (Միք. Ասորի, 406, Վարդան, 148, Ուռհ ,
333—5), հաւանօրէն կրօնական ատելութեամբ (1)։

Այսպէս, 1103ին, Դանիշմէնտ գրաւեց Մելիտինէն։

Օտար աղբիւրներու համաձայն՝ Գաբրիէլ քաղաքին գրաւումէն անմիջա–
պէս յետոյ սպաննուած է։

Երկու տարի ետք (1105), երբ Դանիշմէնտ մեռաւ, Իկոնիոյ Ռումի
Սելջուկ Սուլթանը՝ Գըլըճ Ասլան ինքը գրաւեց Մելիտինէն։

Քասունի այնպէս կը ներկայացնէ թէ Բոհեմունտի և Ռիչարտի գերու–
թենէն յետոյ, Գաբրիէլ ստիպուած էր Մալաթիան յանձնել Դանիշմէնտի և
ինք ընտանիքով Կ. Պոլիս անցնիլ։

Գ. ՔԵՍՈՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, Փիլարտոս տուած էր Գող Վասիլի։
Ասիկա իշխանապետի դիրքին ժառանգորդ կը ներկայանայ Գաբրիէլէն ետքը։
Ան ամէնէն յաջողակը կը հանդիսանար, շնորհիւ իր խոհականութեան, որով՝
կրցաւ իր երկիրը, Ռուբէնի երկիրին պէս բաւական ատեն զերծ պահել ուե–
րումէ։

---

(1) Միքայէլ Ասորի (406) կ'ըսէ թէ «յայսմ ամի եւս Գաբրիէլ Յոյն զՄելիտինի ի Դանիշմանն եւ սպանաց ձեռանգին եւ ոչ եւս ի նոսա ըստ խոստմանն»։ Եթէ այս–պէս է, կ'ենթադրուի թէ Գաբրիէլ դառնացած Լատիններէն, Դանիշմէնտի տուած է քաղաքը՝ հակառակ իր խոստումին:



Ըստ Քասունիի՝ Գող Վասիլ (1) հաւանօրէն որդին էր Գագրիկ անուն
անձի մը, որուն շուրջ՝ 1065ին՝ (Անիի գրաւումէն վերջ), հաւաքուած էին
300ի չափ հայ գողեր, որոնք Մելիտինէի լեռներուն մէջ գտնուող գաւառները
կը կողոպտէին, վանքերը կը թալէին, ինչպէս կը նկարագրէ Բարհեբրէոս
(Աբուլֆարաճ) Ասորի պատմագիրը։

Մելիտինէի կառավարիչները կ'որոշեն անոնց ձգել Գուլոսի և Կղաւտի–
այի անմշակ մնացած հողերը, և Բիւզանդիոնի կայսրէն հրովարտակ բերել
կու տան, անոնց տալու համար չորս գիւղեր՝ այլեւս աւազակութիւն չընելու
պայմանով (Բարհեբրէոս, անգլ. Թրգ., էջ 217 և Michel le Syrien, Գ.
163—5)։

Այս Անիէն փախստական երեք հարիւր Հայերուն մէջ էին, ըստ Քա–
սունիի, Գող Վասիլ և իր եղբայրը՝ Բագրատ և այս վերջինին որդին՝ Սմբատ,
Անեցի Գորգ Շիրակացի և ուրիշներ։ Անոնք կայսերական շնորհի արժանա–
ցան՝ բարեխօսութեամբ Փիլարտոսի և անոր գործակիցներուն, այսինքն Հե–
թումի որդի՝ Թէոդորոսի կամ Թորոսի, Թաթուլի, Գաբրիէլ Յոյնին եւայլի,
որոնք 7—8 տարի առաջ պաշտօնի անցեր էին նմանօրինակ վիճակէ մը (Ա–
կօս, ԻԹ., 105), այսինքն՝ յելուզակութենէ։

Այդ Անեցիները քիչ յետոյ Մելիտինէէն այլուր փոխադրուեցան և հե–
տըզհետէ Ուռհա, Անտիոք, Մարաշ և ուրիշ տեղեր զինուորական բարձր պաշ–
տօններու արժանացան (Քասունի, նոյն)։ Կիրակոս (53) և Սամուէլ (109)
պատմիչները երբ կը խօսին Վանանդի կամ Կարսի թագաւոր՝ Գագիկի 1065ին
Բիւզանդական երկիրներ փոխադրութեան վրայ, կ'ըսեն թէ իր զօրավարնե–
րէն «եկեալ փախստական գնացին առ կայսրն Յունաց... իսկ Յոյնքն գնացե–
լոցն ետուն երկիրս եւ քաղաքս կալուածոյ»:

Ասոնցմէ մէկն ալ Գող Վասիլն էր, որ թերեւս 1068ին Ռոմանոս Դիոգի–
նէս կայսեր, Բիւզանդական կայսրութեան արեւելեան սահմանագլուխին պաշտ–
պանութեան գործը հիմնովին վերակազմելու համար կատարուած կարգադրու–
թիւններէն օգտուած էր, հող մը ստանալով։

Գող Վասիլի մասին, Միքայէլ Ասորի որոշ կերպով կ'ըսէ թէ «Փիլար–
տոսի որեւէն ի վեր» կարգ մը տեղերու իշխող Հայերէն մէկն էր և «կը գրա–
ւէր Քեսունն ու Ռապանը» (Michel le Syrien, Գ. 187, հմմտ. Բարեհեբ–
րէոս, 236): Գող Վասիլ 1075էն 1082 Փիլարտոսի ձեռքին տակ գործած է իբ–
րև զինուորական պետ և 1080ին Փիլարտոս զայն ղրկած է Ռուբէնի հետ,
Անդիտաւրոսի երկիրը։

Իսկ 1082ին անոր տուած է Քեսունը և Ռապանը իբրև ճորտական իշ–

---

(1) Վեր. Եղիա Քասունի՝ ինչպէս Փիլարտոսի նոյնպէս նաեւ Գող Վասիլի մասին ունի շատ արժէքաւոր ուսումնասիրութիւն մը, լի շահեկան մանրամասնութիւններով եւ ուշագրաւ տեսութիւններով: (Տես. Ակօս, ԻԹ., էջ 101 – 112. Լ. էջ 88—101. եւ Երդ. տարի, թ. 1, էջ 114—123):

խանութիւն, իր իշխանութեան կեդրոնական մասին մէջ, ինչպէս որ ցոյց կու տայ Փիլարտոսի՝ Գող Վասիլի վրայ ունեցած մեծ վստահութիւնը։

Փիլարտոսի մահէն վերջ, Գող Վասիլի քով կը հաւաքուին իշխանական տուներ (Ուռհ., 381, 405—6) և իր հրամանին կ'ենթարկուին «ազատագունդ Հայոց», «քաջազունդն Հայոց» «ամենայն զօրքն Հայոց» (Ուռհ., 372, 380, 382, 403)։ Այնպէս որ՝ Փիլարտոս իշխանապետին և այդ մանր իշխանութիւններուն վարիչի դիրքը կը փոխանցուի իր ամէնէն կարող աջակիցին՝ Գող Վասիլի (Ակօս, Իթ. 108)։ Ասիկա լաւ յարաբերութիւններ ունէր Բիւզանդիոնի հետ, որ ճանչցած էր իր իշխանութիւնը, ինչպէս որ կը հաստատուի շնորհուած Սեւաստոս տիտղոսով, որ Ալեքս Կոմնէն կայսրը (1081—1118) տուած էր (Ուռհ., 504)։

Ասկէ կարելի է հետեւցնել որ Գող Վասիլ, պահ մը եղած է ներկայացուցիչը Բիւզանդական կայսրութեան, Եփրատացիներու շրջանակին մէջ և այդ կողմերուն համար գրեթէ կը կատարէր դեր մը՝ յար և նման Օշինի՝ Կիլիկիոյ մէջ կատարածին։

Այսպէս, Գող Վասիլ, Սելջուկեան Մելիք Շահի և Բիւզանդական պետութիւններու սահմանագլուխին վրայ՝ երկուքն ալ սիրաշահելով կ'ամրապնդէր իր իշխանութիւնը։

Վասիլ, որ արդարեւ մեծ կարողութիւններով օժտուած անձ մըն էր, նոյն ուղղութեամբ շարունակեց Փիլարտոսի գործը երեք տասնեակ տարի ևս, անոր աւատապետութեան աւերակներուն վրայ հիմնելով իր իշխանապետութիւնը, որ անոր ընդարձակութիւնը չունէր, վասնզի կարգ մը մասերը գրաւուած էին։

Վասիլ կը տիրէր Մարաշ, Բերդուս, Հաճըն, Ռապան, Թորէզ, Ուրեմն քաղաքներուն, իրենց շրջականերով (Ուռհ., 372, 380—2, 403), Եփրատացիներու շրջանակը, մինչեւ Դ. Հայքի կողմերը, որուն հնօրեայ անկախ իշխանները — որոնք երբեմն Բիւզանդիոնի և երբեմն Պարսիկներուն կը հպատակէին — ճանչցած էին իր հեղինակութիւնը, ինչպէս Պիրի, Արեւընտանի, Կարկառի իշխանութիւնը (Ուռհ., 422—3), որոնք Գող Վասիլի մահէն յետոյ նուաճուեցան Անտիոքի Լատին դուքսերուն կողմէ (1116)։

Գող Վասիլ, Մելիք Շահի մահէն (1092) վերջ, առիթէն օգտուելով՝ դէպի Արեւելք տարածեց իր հողերը և գրաւեց Հռոմկլան ևս (Ակօս. Իթ. 110), ինչպէս և օգնեց Ապլղարիպի և Լիկոսի, որ գրաւեն Թլպաշարը և Պիրը (Ուռհ., 422)։

Գող Վասիլ, մինչև Անտիոքի գրաւումը կրցաւ խոհեմութեամբ վարուիլ և հեռու մնաց Խաչակիրներէն (Ակօս, Լ. 89—90), սակայն յետոյ խառնուեցաւ ակամայ, մասնաւորապէս իր Բագրատ եղբօրը պատճառով, որ Ա. Խաչակրութեան պետերէն՝ Պալտուինը համոզած էր որ Խաչակիրներու բանակէն անջատուելով, արշաւէ դէպի Եփրատացիք և գրաւէ Արեւընտանը և վերադարձնէ իրեն, յետոյ Թլպաշարը, Սրուճը, Եդեսիան եւայլն։

Սակայն ինչպէս իր եղբայրը՝ Բագրատ, նոյնպէս և ինք տեւական կերպով չկրցաւ բարեկամ մնալ Լատիններուն հետ (1), և Կոտրֆուայի և Պալտուինի

(1) Այս մասին Վեր. Ե. Քասունի ունի հետաքրքրական ընդարձակ բացատրութիւններ, որոնք մեր նիւթին հետ կապ չունին: Հետաքրքիրներ կրնան դիմել Ակօսին (տես Լ., էջ 88-91):



յարձակումին դիմադրեց և ակամայ խառնուեցաւ Խաչակիրներու ներքին վէճերուն, բնական դաշնակիցը ըլլալով Պոհեմունտի, որ կը գնահատէր այն օժանդակութիւնը զոր կրնային հայթայթել իրեն երկիրին բնիկները և մանաւանդ Հայ իշխանները, որոնց վրայ կ'ուզէր որ կռթնէր իր իշխանութիւնը։

Արդարեւ, Գող Վասիլ, օգնեց Խաչակիրներուն, կողմնակից դառնալով Պոհեմունտի, իր եղբօրը՝ Բագրատին պէս։ Թէև պատմական փաստեր չկան որ հաստատեն Գող Վասիլ—Պոհեմունտ դաշնակցութիւն մը, սակայն Պոհեմունտի և անոր քեռորդի Ռիջարտի ազատագրութեան համար տրուած փրկանքին իր կողմէն վճարուիլը, անուղղակի կը հաստատէ գոնէ սերտ բարեկամութեան մը գոյութիւնը իրենց միջեւ։

Գող Վասիլ միշտ կասկածով վերաբերուելով հանդերձ Լատիններուն հետ, ուրիշ օգնութիւններ ալ ըրած էր Խաչակիրներուն, որոնք սակայն գէշ վարձատրած են իր ծառայութիւնները։

Գող Վասիլի իշխանութիւնը, որ ուժ մը կը ներկայացնէր, թերեւս կարենար տոկալ, եթէ Ֆրանկները չդաւէին իր գոյութեան դէմ և Լատիններու Արմենիան արեւմուտքէն և արեւելքէն հաւասարապէս յարձակումներուն չենթարկուէր։ Արդարեւ Ուռհայեցի (էջ 379—380) կը պատմէ որ 1108ին, Տաւրոս լեռներէն անցնելով խլամ բանակ մը կը հասնի Անարզաբա և կը կողոպտէ «Ռուբենի որդի Թորոսի ամբողջ երկիրը»։ Ապա կու գայ Մարաշի դաշտը և անթիւ գերիներ առնելով կը հասնի Գող Վասիլի երկիրը, Բերդուս։ Վասիլ, փառաւոր յաղթանակ մը կը տանի անոնց վրայ և ուրախութեամբ կը դառնայ Քեսուն։ Գող Վասիլ 1108—1109ին կը դաշնակցի Պատուին տը Պուրկի, Ճոսլինի և Էմիր Ճաւուքի հետ՝ դիմադրելու համար Tancredeին, որ չէր ուզեր տալ Եդեսիոյ Կոմսին և Ճոսլինի այն հողերը, զորս առած էր անոնց գերութեան ատեն (Ուռհ., 382—4)։

Ցաջորդ տարին (1109), Խլաթի Սուգման էլ Գութպին, Շահի Արմէն վեհապետը, կը յարձակի Հիւսնի Մանսուրի կողմը, և անխնայ կը կոտորէ կամ կը գերէ արտերու մէջ հունձքով զբաղող մշակները և կ'իջնէ մինչեւ Հարթան բերդին առջեւ։ «Այն ատեն Վասիլ 500 ընտիր քաջերով միայն «գողաբար» եկաւ անոնց վրայ, ինքը, իր քեռին Պետրոս, քանամեայ Տղայ Վասիլ, Տարոնեցի Ապլասաթ Տաճատեան և Տիգրան Քաջ, իւրաքանչիւրն 100 մարդով, հինգ կողմերէ միանգամայն Գէդէոնեան ոճով խոյացան թշնամիին վրայ։ Այլազգիք այս անակնկալ յարձակումներէն շուարած, ի փախուստ դարձան, «Քաջազունդն Հայոց... յաղթեցին զօրաց այլազգեացն մեծաւ յաղթութեամբ, եւ արարին սաստիկ կոտորածս զնոսա, եւ կալան զՍուլտանն Հայոց եւ զայլ բազում իշխանս Պարսից (իմա Սելջուկ) եւ Վասիլն ի գերութիւն վարէր զնոսա առաջի իւր»: (Ակօս, Ա. 1, էջ 117, հմմտ. Ուռհ., էջ 380—2 և էջ 572, ծանօթ. 235):

Նոյն տարին (1109), ինչպէս կը պատմէ Ուռհայեցի (382—4), Ֆրանկ իշխաններուն իրարու դէմ մղած մէկ կռիւին՝ Վասիլ. Անտիոքի իշխանին դէմ կողմ բռնած ըլլալով՝ ասիկա վրէժխնդիր կ'ուզէր ըլլալ, բայց անոր ուժէն վախնալով, չէր համարձակեր։ Գող Վասիլ 1111ին օգնեց Լատիններուն՝

Իկոնիոյ Մաքսուտ Սուլթանին դէմ և 1112ին կրկին պայքար բացաւ Անտիոքի իշխանին դէմ։

Տանկրէտ այն ատեն գրաւեց Ռապանը և քալեց Քեսունի վրայ և առաջացաւ մինչև Թիլ։ Գող Վասիլ ստիպուեցաւ թողուլ Ռապանը՝ յաղթողին։

Ֆրանկներու իրարու և իսլամներու դէմ մղած յաջորդական կռիւներէն որքան կարելի է հեռու մնալով՝ մինչև իր մահը (12 Հոկտ. 1112) Գող Վասիլ պահեց իր իշխանութիւնը։

Վասիլ անորդի մեռաւ (Աւետաբեր, 1913, էջ 1196 և 1218) ուստի իրեն յաջորդեց Վասիլ Տղայ, իր քեռորդին՝ (Ուռհ., 405, Վարդան, 114), որ հազիւ հինգ տարի կրցաւ իշխել Քեսունի, Ռապանի, Մարաշի, Հիսնի Մանսուրի և Սամոսատի վրայ։

Վասիլ Տղայ, Եդեսիոյ Կոմսին հետ լաւ յարաբերութիւններ չունէր, ինչպէս նաև Կիլիկիոյ Լեւոն իշխանապետին հետ, թերևս իբրև մրցակից։

Վասիլ Տղայ՝ 1116ին՝ երբ Լեւոն իշխանին տուաւ իր աղջիկը, հարսնիքէն ետք, Լեւոնին եղբօրը՝ Թորոսին նիւթած դաւովը ձերբակալուեցաւ և յանձնուեցաւ Եդեսիոյ Պոտուէն Կոմսին։

Վասիլ Տղայ, իր ազատութիւնը ստանալու համար, ստիպուեցաւ Պոտուէն տը Պուրկի թողուլ իր հողերը (1117) և քաշուիլ նախ իր փեսին՝ Լեւոնի քով և ապա անցնիլ Կ. Պոլիս, ուր կայսրը սիրով ընդունեց զինքն ու իր հաւատարիմները։ (Ազգ., 1317—8, Զամ. Գ. 31)։

Այսպէս վերջ գտաւ այս իշխանութիւնը, որուն սահմաններուն մէջ Ասորիները բազում էին և Հայերը՝ եկուոր յափշտակիչներ կը նկատուէին, ինչպէս կը հասկցուի բնիկ Մարաշցի Դիոնէսիոս Բար-Սալիբիի գրութիւններէն, և ինչպէս Քասունի կը խորհրդածէ, Ասորիները հակառակ էին Հայոց և Ֆրանկներուն համակիր (Ակօս, Թ. 1, էջ 122)։

Վասիլ Տղայի իշխանութիւնը ջնջուելէն քիչ ետք, Հայ իշխանին կողմնակիցներէ մեծագոյն մասը ստիպուեցաւ Եդեսիոյ Կոմսին քովէն խոյս տալ և ապաստանիլ Կ. Պոլիս։

Քանի մը տարի յետոյ, Մանուէլ Կոմնենի շրջանին (1148—1180), Kinnamos կը յիշէ երկու ձեռնարկներ Գող Վասիլի յաջորդներուն դէմ՝ Յոյն բանակին կողմէ, (Kinnamos. Դ. 24, էջ 119 և Զ. 7, էջ 2711)։

Ըստ Քասունիի՝ յայտնի չէ որ այդ իշխաններուն դարձը Յովհաննէս Կոմնենի արշաւանքներէն առա՞ջ էր թէ ետքը։

Գող Վասիլի և Տղայ Վասիլի իշխանապետութիւնը, որ աւատապետական վարչաձև ունէր, իրեն իբրև ճորտ՝ իր հողերուն հարաւային և արևելեան կողմը ունէր մեծ ու պզտիկ Հայ իշխանութիւններ, որոնք կարօտ էին Գող Վասիլի օգնութեան, որպէսզի կարենային իրենց գոյութիւնը պահել թէ՛ Սելջուկ և թէ՛ Բիւզանդական յարձակումներուն դէմ, վասնզի իր իշխանութիւնը շատ ընդարձակուած էր։ Այնպէս կը տեսնուի որ Եփրատէն անդին Եդեսիա և Սեւերեկ, ինչպէս նաև Թլխումի, Արղնիի և Շպղթանի (= Թլկուրան) շրջանները՝ թէև մեծ մասամբ ասորաբնակ, ձեռքն էին Հայ իշխաններուն։

Եփրատի եզերքը և Հիւսիսային Սուրիոյ մէջ ալ, քով քովի կային շարք



մը Հայ իշխանութիւններ, ինչպէս Մարաշի մօտ Տլուքի լեռնային գաւառակը, Ծով գղեակով, Պիրը՝ ուր կը տիրէր Ապլղարիպ Վասակեան, Թլպաշարը՝ որուն տէրն էր Փէր, հաւանօրէն Վրացի իշխողը։

Դ. ԵԴԵՍԻՈՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ. Ինչպէս կը տեսնուի՝ Գող Վասիլի ենթակայ ճորտ իշխանութիւններէն անոնք որոնք Եփրատի արևելեան կողմը կը գտնուէին, յատուկ նշանակութիւն մը ունէին, վասնզի կը կազմէին Եդեսիոյ իշխանութիւնը։ Եդեսիա ամէնէն կանուխ իսլամական տիրապետութեան ենթարկուած վայրերէն մէկն էր, զոր 300 տարի վերջ Զմշկիկի հրամանին տակ գտնուող Բիւզանդական բանակները փրկած էին մահմետական լուծէն։

Ռոմանոս Դ.ի, Մանազկերտի պարտութենէն (1071) ետք, Փիլարտոս Եդեսիան գրաւեց (վերը, 409), և հոն կառավարիչ կարգեց Թորոս անուն Հայը (Միքայէլ Ասորի, 403), որդի Հեթումի (Ուռհ., 300), որ կ'ենթադրուի թէ նախապէս կառավարիչ էր Խարբերդի։

Թորոս, իբրև Փիլարտոսի ճորտը, կը գտնուէր Բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան տակ, վասնզի Բիւզանդիոնի կայսրը՝ հակառակ անոր կասկածելի ծագումին՝ զայն ճանչցած էր և անոր Կիւրապաղատի տիտղոս տուած էր, թերևս Փիլարտոսի բարեխօսութեամբ։ Ասոր համար նաև՝ Ուռհայեցի զայն «իշխան Հոռոմոց» կը կոչէ (300 և 316).

Սելջուկեան յարձակումներուն դէմ, անկարելի էր որ Բիւզանդիոն կարենար օգնութիւն հասցնել Եդեսիոյ, ուստի Թորոս մինակը չկրցաւ պաշտպանել քաղաքը, և պարտուեցաւ ու քշուեցաւ իր զօրքով Մելիտինէի Գաբրիէլ Յոյն իշխանին քով, որ իր աներն էր (Քասունի, Փիլարտոս Հայր, 86)։

Երբ 1094ին, Հալէպի Սուլթանը Դդուշ՝ գրաւեց Եդեսիան, Թորոսը վերահաստատեց իր պաշտօնին մէջ (Ուռհ., 300) անտարակոյս հաշուի առնելով քաղաքին Հայ բնակչութեան գերակշիռ թիւը, թերևս նաև միաբնակ քրիստոնեաները սիրաշահելու կարեւորութիւնը։

Դդուշի սպանութենէն ետքը՝ Թորոս ապաստան տուաւ իր բարերարին տղուն՝ Ռատուանին (Ուռհ., 302) և անոր օգնեց որպէսզի «Նստի Սուլթան ի Հալպ եւ ի սահմանսն նորա» (Վարդան, 108)։

Թորոս, «այր ճարտարասան եւ հնարաւոր յոյժ» (Ուռհ., 302), կ'ուզէ Ռատուանը հիւրընկալած քաղաքին միջնաբերդը գրաւել, վասնզի Սելջուկները զայն կը պահէին Դդուշի դրած Թուրք և Հայ պահապան զօրքով։

Թորոս, հակառակ Սելջուկներու սպառնալիքին, յաջողեցաւ գրաւել բերդը (Ուռհ., 302—323)։

1095ին՝ Յունաց կողմէ պաշտպանեալ Դդուշի ցեղէն ուրիշ մէկը՝ Ալփիլակ անուն, յափշտակեց Հալէպի գահը և եկաւ Ուրֆա և տիրեց քաղաքին։ Թորոս զայն թունաւորելով սպաննեց, վասնզի հակառակ անոր որ ինք քաղաքը անոր հովանաւորութեան տակ դրած էր, որպէսզի «առցի վրէժս ի բրսնամեաց իւրոց», ան չար խորհուրդը ունէր Թորոսը սպաննելու և քաղաքը կողոպտելու (Ուռհ., 305, Վարդան, 108)։

Ալփիլակի զօրքը փախաւ և Թորոս՝ Ալփիլակի 33 օրուան իշխանութենէն վերջ, դարձեալ ձեռք առաւ երկիրին ղեկը (Ուռհ., 305 և Վարդան, 108-109)։

1096ին, Թորոսի վրայ յարձակեցան Թուրք ամիրաներ։ Թորոս յաջողեցաւ պարտութեան մատնել զանոնք. սակայն վախնալով որ ի վերջոյ պիտի ընկճուի, Խաչակիրները հրաւիրեց իր մօտ։ Երբ Պալտուին Կոմսը քալեց Եփրատացիներուն կողմը, Թորոս օգնեց անոր, որ Թլպաշարի տիրանայ և յետոյ Ուռհայի մէջ հիւրասիրեց զայն։ Անոր հետ, իր զօրքերով գնաց Սամոսատի Պալդուխ Ամիրային վրայ 1099 Փետր. 14—28 (Ուռհ., 316)։ Սակայն Սելջուկները սաստիկ դիմադրութիւն ցոյց տուին և Ֆրանկը փախուստի մատնեցին և Սամոսատէն մինչեւ Թիլ՝ սաստիկ ջարդ մը տուին։ Պաղտին ապաստանեցաւ Ուրֆա, ուր «Նենգաւոր և չարախորհուրդ» մարդոց հետ միանալով դաւով և ապերախտութեամբ Թորոսը սպաննեց, գրժելով իր երդումը, ինչպէս մանրամասն նկարագրած է Մատթէոս Ուռհայեցի պատմիչը (316—319)։

Այսպէս, Եդեսիոյ տիրապետութիւնն ալ 1099ին անցաւ Լատիններուն ձեռքը (հմմտ. Փիլարտոս Հայր, 86—87, Ուռհ., 319)։

Եփրատի և Որոնդէսի հովիտներուն միջեւ և Հալէպի շուրջը այդ օրերուն գոյութիւն ունէին նաև ուրիշ մի քանի Հայ իշխանութիւններ, ինչպէս

Ա. ԱՐԵՒԸՆՏԱՆԻ կամ ՌԱՎԱՆՏԱՆԻ (Քիլիսի մօտ) իշխանութիւնը, զոր Փիլարտոս տուած է Գող Վասիլի եղբօր՝ Բագրատի (Ակօս, Լ. 89)։ Բայց կ'երեւի թէ Բիւզանդացիք գրաւած էին անոր հողերը և զինքը բանտարկած։

Խաչակիրները Նիկիոյ առջեւ էին, երբ Բիւզանդական բանտէն խոյս տուող այս Հայ պետին հետ յարաբերութեան մէջ մտան։

Բագրատ, որ լաւ կը ճանչնար այն հողերը ուր արշաւել կ'երթային Խաչակիրները, մեծ ծառայութիւններ մատոյց անոնց՝ Կիլիկիայէն անցած ատեն։

Բագրատ յաջողեցաւ համոզել Ա. Խաչակրութեան պետերէն Պալտուինը, որ անոնց բանակէն անջատուելով արշաւէ դէպի Եփրատացիք և գրաւէ Արեւընտանը՝ իր կալուածը և վերադարձնէ իրեն (Ակօս, Լ. 89, Ուռհ., 383, 423) և յետոյ Թլպաշարը՝ 1115—1120 թուականներուն։

Բագրատ կը թելադրէր Պալտուինը առաջանալ մինչեւ Պաղտատ և վերջ տալ Արաբ Խալիֆաներու իշխանութեան։ Բագրատ չկրցաւ միշտ բարեկամ մնալ Պալտուինի, վասնզի անիկա իրեն դէմ դաւել փորձեց։

Բագրատ իր հին իշխանութեան մէջ վերահաստատուելէն ետքը, իբր թէ կարգ մը յելուզակային արարքներ գործած է, բայց հաւանօրէն այս տեսակ վերագրումներով, Կոտրըֆուա կ'ուզէր պատժել Պոհեմունտի կողմնակիցը, վասնզի Բագրատ անոր բարեկամացած էր, Պատուինի հետ խզուելէն յետոյ։

1110ին Բագրատ կ'օգնէ Լատիններուն ընդդէմ Թուրքերուն, իսկ քանի մը տարի ետք՝ ան կը տիրանայ Հալէպի հիւսիսային լեռներուն մէջ Gourisի մօտ կալուածներու։

Բագրատ դաշնակից իր եղբօրը՝ Գող Վասիլի, անոր պէս կողմնակից եղած է Պոհեմունտի, բայց որովհետեւ Անտիոքի իշխանը չկրցաւ դիմադրել Boudouin du Bourgի, զրկուեցաւ իր իշխանութենէն։ Արեւընտան նոյնպէս գրաւուեցաւ Պաղտինէն (Ուռհ., 316, Laurent ՀԱ. 1927) և անցաւ Լատիններու ձեռքը։

Բ. ԱՆԴՐԻՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, Մարաշի մօտ, 1078—79ին հաստատուած էր Փիլարտոսէն։



«Այս քաջ եւ հզօր պատերազմող, ի տանէն Շիրակայ», «իշխանն Հայոց» Էպեխտի կամ Պեխտի իշխանութեան տակ (Ուռհ., 257, Վարդան, 105)։

Հաւանօրէն այս իշխանը Պահլաւունի մըն էր, վասնզի Անտիոքի իշխան կը յիշուի յետոյ Ներսէս Շնորհալիի մեծ հայրը՝ Ապիրատ իշխան, որ Գր. Մագիստրոսի փեսան էր և տէրը Ծովքի։

Այս Շիրակացի Վեստը, երբ իր քով հիւրընկալուած մոլեռանդ յոյն կրօնաւորի մը դաւով սպաննուեցաւ, Փիլարտոս նոյնպէս այս հակահայ շարժումը զսպեց, Անտիոքի ամրոցը գրաւելով և իր պետութեան կցելով։

Գ. ԾՈՎՔԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, նոյնպէս Մարաշի կամ Տլուքի մօտ, հաստատուած էր 1045ի շուրջ, երբ Գրիգոր Մագիստրոս, (որդի Վասակ Հալումի) այս կողմերը հաստատուած էր։ Ծովքը հաւանօրէն տրուած է Գրիգոր Ապիրատ Մագիստրոսի, ինչպէս կ'ենթադրէ Հ. Ն. Ակինեան (Ակօս, Թ. գիրք 112)։ Անիկա ամուսնացած էր Գրիգոր Մագիստրոսի (+ 1058) քրոջը կամ աղջկան հետ և խառնուած Պահլաւունի ընտանիքին։

Ապլջահապի սերունդը կը պահէր Ծովքը Փիլարտոսի ատեն ալ, անշուշտ անոր հովանիին տակ։

1095ին, հոն կ'իշխէր ի մօրէ Պահլաւունի և Գր. Վկայասէր Կաթողիկոսի քեռորդի Ապիրատ իշխան, որ 1111ին Ծով դղեակի պաշարման ատեն, Հազարացի չինականի մը կողմէ նետով մը կ'սպաննուի։

Իր անդրանիկ որդին Վասիլ[1] կը յաջորդէ իր հօրը։

Ծովքը ի վերջոյ լքուած է, վասնզի դժուար էր պաշտպանել Ծով դղեակը և հոն հաստատուած Պահլաւունիք փոխադրուած են Հռոմկլայ[2]։

Դ. ՊԻՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, նոյնպէս Պահլաւունիք հաստատուած էին Պիրի (= Պիրէճիկ) մէջ, ԺԱ. դարուն կէսերը։ Փիլարտոսի մահէն վերջ՝ Պահլաւունիք շարունակեցին տիրել հոն նաև Գող Վասիլի ժամանակ և անկէ քիչ մը ետքն ալ, վասնզի 1117ին տակաւին հոն կ'իշխէին Ապլղարիպ և Լիկոս Հայ իշխանները, որոնք Պահլաւունի էին և Ներսէս Շնորհալիի հօրեղբայր Վասակ իշխանին որդիները։

Պիրը և շրջակայքը գնած էր Անտիոքի հին դուքսին՝ Վասակի որդին՝ Ապլղարիպ։ Ան քանի մը անգամ օգնած էր Եդեսիոյ Կոմսին՝ մաքառելու համար մահմետականներուն դէմ։ Նախանձախնդիր իր իշխանութեան, Պաղտին զայն հարուածեց և մէկ տարուան պաշարումէ յետոյ, բերդականները ընկճուած՝ զայն յանձնեցին Պաղտինի, իսկ Ապլղարիպ և Լիկոս անցան Կիլիկիա

---

(1) Վասիլի որդին էր Գրիգոր Տղայ կաթողիկոս (1173–1193):

(2) Ծովքի եւ Ծով դղեակի մասին Տոքթ. Յ. Տէր-Ղազարեան խնամեալ ուսումնասիրութիւն մը ունի (տես. Բազմավէպ, 1948, էջ 105–117), ուր կը ջանայ ճշդել փաստերով, Ծով դղեակին եւ Ծովք գաւառին վայրը.: Ծով դղեակը, ըստ Տոքթ. Տէր-Ղազարեանի, այժմ կը կոչուի Քէօրօղլու Գալէսի, Մարաշի արեւելքը, Տլուքի գաւառին մէջ. որ կոչուած է հին ատեն «Երկիրն Ալեքսիա», Խաչակիրներու օրով՝ Անտոնի երկիր. Ճօսլինի երկիր եւ ետքն ալ Մարաշի իշխան Պալտինի, (Պաղտըն) անունով Պաղտինի երկիր: Մինչեւ հիմա ալ այդ երկրամասը, այսինքն Տլուքի գաւառը, Թուրքերը կը կոչեն «Պաղտըն Նահիյէ», (Բազմավէպ, 1948, էջ 110): Գարեգին կաթողիկոս եւ Քասունի համոզուած չեն բուիր Տոքթ. Յ. Տէր Ղազարեանի փաստերուն:

*Թորոս իշխանապետին քով և հաստատուեցան Անարզաբայի մէջ։*

*Ե. ԹԼՊԱՇԱՐԻ (Թիլ Աւետեաց) ՀՈՂԱՏԻՐՈՒԹԻՒՆ, որուն իբրև տէր միայն ծանօթ է Փիր — հաւանօրէն Վրացի — անուն անձը։ Անկէ զայն* 100 *ձիաւորներով յափշտակեց Պաղտին։* 1148*ին Թլպաշարի վրայ կը յարձակի Սելջուկ Ռումի Մազուտ Սուլթանը, զոր Եդեսիոյ Ճոսլին իշխան, կը վանէ Պահլաւունի Վասիլ և Շահան իշխաններուն օգնութեամբ։*

*Ի վերջոյ Հալէպի Նուրէտտին Սուլթանը կը գրաւէ քաղաքը։*

*Զ. ԿԱՐԿԱՌԻ, ԲԵԱԽԹԱՅԻ ԵՒ ԲԷԹ-ԲՈՒՂԱՅԻ հողատիրութիւնը, Սամոսատի մօտ, Եփրատայիններու մէջ։ Կարկառ առաջ ճորտութիւն էր Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին ստորադաս* (Ուռհ., 316—317)։

*Կարկառի, Բեախթայի և Բէթ-Բուղայի մէջ կ'իշխէին Կոստանդին և Միքայէլ ու Յովհաննէս եղբայրները։* (Michel le Syrien, Գ., 199,)։

*Սամոսատի մէջ կ'իշխէր Պալտուխ Թուրքը, զոր Կոստանդին իշխանը* (+ 1117) *Եդեսիոյ Կոմսութեան ենթարկած է։ Կոստանդին օգնած է Պոտուինի որ Եդեսիան գրաւէ։*

*Եդեսիոյ Կոմսին՝ Պոտուին Ա.ի յաջորդներէն՝ Պոտուին Բ.* 1117—8*ին, Կարկառը պաշարեց և կողոպտեց։*

*Լատինները այսպէս դաւեցին նաև Կարկառի դէմ։ Կոստանդին բանտարկուեցաւ Սամոսատի մէջ և հոն մեռաւ* (Ուռհ., 423)։ *Կոստանդինի յաջորդած է իր Միքայէլ որդին։ Սիւրիացի անանուն ժամանակագիր մը, որ Ա. և Բ. Խաչակրութիւններու վրայ խօսած է, զայն կը ներկայացնէ հպարտ երիտասարդ մը որ շատ վնաս հասցուցած է՝ պահելով աւազակներ և զօղեր այս կողմերը։ Մալաթիոյ Պալուխ Ամիրան՝ կ'ազդարարէ Միքայէլի որ սանձէ զօղերը, բայց անիկա չ'անսար։ Պալուխ* 1122*ին կը յարձակի Կարկառի վրայ և աւարի կուտայ երկիրը (տես. Յ. Բիւրտեան,* Նոյն, 13)։ *Երբ Կարկառցիք իրենց խոստումը չյարգեցին՝* 1123*ին բոլորովին պարպեց բերդը իր բնակիչներէն։ Միքայէլ բերդը տուաւ Պոտուին Թագաւորին և ինք այլուր մեկնեցաւ* (Michel le Syrien, Գ. 205—6, 212, *Բաբգէն Կաթ.*, Պատմութիւն Կաթողիկոսաց Կիլիկիոյ, *էջ*, 248—9)։

*Տարիներ ետքը,* 1148*ին, Վասիլ Պահլաւունի* (Գր. Երէց, 501 - 2), *դարձեալ տէր կը դառնայ Կարկառի, անշուշտ իբրև հողատէր-իշխան այդ կողմերու, մինչև որ իսլամները կը զօրանան և վերջնապէս կը գրաւեն Կարկառը։*

*Է. Յիշենք նաև Եդեսիոյ հիւսիսակողմը, ՍԱՄՈՍԱՏԻ մարզին մէջ և Մար Բարսումայի վանքին դրացի լերան Կոստանդին, Դաւթուկ և Քրիստափոր, Սանբելի (ըստ Բասունիի՝ ուղղելի* Հաբելի) *որդիքը, որոնք հայացած Ասորիներ էին և Հայերու յարեցան երբ Կարկառի մէջ Հայերը կ'իշխէին։*

*Ասոնցմէ զատ կային այլ վայրեր, որոնց իշխանները պատահաբար յիշուած են անգամ մը։ Կային թերևս ուրիշներ, որոնք չեն յիշուած իսկ։*

*Այնպէս որ, մեր թուածները ամբողջը չեն, այդ շրջանակին մէջ կազմուած Հայ իշխանութիւններուն։ Բայց անոնց թիւը չէ որ կը շահագրգռէ մեզ, այլ իբրև իրողութիւն սա շատ նշանակելի երևոյթը՝ որ այս իշխանութիւնները, կազմուած՝ Հայաստանէն դուրս հողերու վրայ, կը հիմնուէին այնպիսի*



*Հայերու ձեռքով, որոնք հազիւ քանի մը տասնեակ տարիներ առաջ հեռացած էին իրենց հայրենիքէն։*

*Ուրեմն Հայերը ցոյց կու տային արտասովոր կենսունակութիւն մը, թերևս իր նմանը չունեցող՝ ուրիշ ազգերու պատմութեան մէջ։ Դժբախտաբար՝ Ս. Երկիրը ազատելու Եւրոպայի քրիստոնեայ ազգերու երազային և անխորհուրդ ձեռնարկը, որ իսկութեան մէջ ցնորք մըն էր, դժբախտ հետևանք ունեցաւ Հայ ազգին համար, որ Միջագետքի, Հիւսիսային Սուրիոյ, Կոմմագենէի ևայլնի մէջ իր կազմած մեծ ու պզտիկ Հայ իշխանութիւնները կորսնցուց, մինչ զօրաւոր ու հեղինակաւոր վարիչի մը առաջնորդութեամբ՝ թերևս կրնային միանալ և փրկուիլ։*

*Ֆրանկները, Հայ իշխանութիւններուն մեծ չարիք հասցուցին, մէկ կողմէն ընդդէմ իսլամութեան իրենց պայքարով, մահմետական զանգուածները գրգռելով և միւս կողմէն իրենք ուղղակի դաւելով այս Հայ իշխանութիւններուն դէմ, ընչաքաղցութեամբ, մանաւանդ երբ այլևս Խաչակիրները իրենց նախնական նպատակէն շեղած և ուրիշ նպատակներ հետապնդել սկսած էին։*

*Առաջին անգամ* 1093*ին անոնք ճամբայ ելան Ֆրանսայէն՝ կրօնական միամիտ նպատակով մը, որ զիրենք կ'օգևորէր և անձնազոհութեան կը մղէր։ Անոնք շարունակեցին իրենց ճամբան՝ նոյնիսկ անհամար զոհեր տալէ ետքը։*

*Անոնք ճեղքեցին Փոքր Ասիան, եկան Հիւսիսային Սուրիա և հասան իրենց նպատակակէտը՝ Երուսաղէմ, զոր գրաւեցի և կազմեցին Պաղեստինի մէջ թագաւորութիւն մը։*

*Անոնք սակայն անշահախնդիր և սուրբ առաքելութեան մը բարձրութեան վրայ չկրցան մնալ և աշխարհակալական ծրագիրներու հետամուտ եղան։ Ամենէն առաջ իրենց ճամբուն վրայ գտնուող քրիստոնեայ իշխանութիւնները յափշտակեցին և իրենց սեփականեցին՝ չգոհանալով իսլամներէն գրաւուած վայրերու մէջ իրենց հաստատած իշխանութիւններով։ Տիրակալուած վայրերը աւատապետական կարգերով պիտի կառավարուէին։*

*Անոնք պայմանաւորուած էին Բիւզանդիոնի կայսեր հետ, որ իսլամներէն գրաւուած հողերը, որոնք երբեմն Բիւզանդական կայսրութեան կը պատկանէին, պիտի դարձնէին Կ. Պոլսոյ կայսեր։*

*Այս պայմանը Հայերուն նպաստաւոր չէր, վասնզի հայ փոքր իշխանութիւնները՝ որոնք Խաչակիրներուն ճամբուն վրայ կը գտնուէին՝ կազմուած էին նախկին Բիւզանդական հողերուն վրայ և վերստին պիտի ենթարկուէին Պոլսոյ կայսեր։*

*Հայերը, բնական է ասոր պիտի չհամակերպէին, իսկ Խաչակիրներն ալ յօժար չէին իրենց խոստումը յարգելու, վասնզի ան ըլլայ տիրակալական ոգիէ առաջնորդուած, ըլլայ այն պատճառով որ Հայերը շատ մեծ նպաստ բերած էին Առաջին Խաչակիրներուն և առաջին հերթին, խոհեմութիւն չէր զանոնք վշտացնել։*

*Ուստի՝ խաբեցին Յոյները և իրենց խօսքը չյարգեցին։ Ժամանակակից*

Հայ պատմագիրը՝ Մատթէոս Ուռհայեցի կ՚ըսէ թէ Լատինները «ուրացեալ եղեն եւ զոր խոստացան՝ ոչ արարին» (Ուռհ., 332)։

Խաչակիրները, իրենց գրաւած տեղերը մեծ մասամբ Լատին իշխաններու բաժնեցին և Յոյներուն չտուին (Ուռհ., 316, Լօռան, ՀԱ. 1927, 897)։ Ասիկա պատճառ եղաւ Յոյն և Լատին հակամարտութեան մը որ աղէտալի դեր կատարեց։

Իսկ Տաւրոսի արեւելեան կողմը կազմուած հայ փոքրիկ հողատիրութիւնները, որոնք դժբախտաբար ընդհանուր համաձայնութիւն մը չունէին՝ համակարգուած և ներդաշնակ գործունէութեամբ մը չարժելու համար, երբ Խաչակիրները եկան և իրենց օգնութեան դիմեցին, անշահախնդրօրէն և անձնուիրութեամբ օգնեցին անոնց և նոյնիսկ Խաչակիրներու բանակին զինուորագրուեցան (Ակօս, Զ. տարի, Թ. 1, էջ 116), ինչպէս Անտիոք և Եդեսիա գտնուող ազատ դասակարգէ զինուորական անձեր (Ուռհ., 339), նոյնիսկ Հայ եկեղեցականներ, ինչպէս Անտիոքի՝ Կիպրիանոս և Գերմանիկի՝ Գրիգորիս Հայ եպիսկոպոսները (Ուռհ., 334), որոնք պատերազմին մէջ սպաննուեցան։

Որոշ է որ, Հայերը կը յուսային թէ Խաչակիրներու յաղթանակը իրենց փրկութիւնը պիտի ըլլար։

Բայց յուսախաբութիւնը շատ շուտով հասաւ, վասնզի, ինչպէս ըսինք, Ֆրանկ իշխանները նենգութեամբ վարուեցան և դաւեցին Հայերուն և անոնց հիմնած Հայ իշխանութիւնները յափշտակեցին անուղիղ միջոցներով։

Հայերը չխառնուելով իսլամութեան դէմ մղուած այս պայքարին, թերեւս աւելի նպաստաւորուէին, բայց անոնք հեռուէն եկող Խաչակիրներուն օգնեցին, առանց նկատի առնելու թէ իրենք ամէն կողմէ իսլամներով շրջապատուած էին և անոնց թշնամութիւնը գրգռելու պէտք չունէին անխորհրդաբար, մանաւանդ որ բնաւ ծանօթ չէին Խաչակիրներու մտայնութեան։ Անոնք յարում ցոյց տուին Լատիններուն՝ զգուած Բիւզանդացիներէն, բայց շուտով տեսան թէ Լատինները ևս նուազ նենգ չէին։

Յոյներուն կրօնական մոլեռանդութիւնը, որ այնքան զզուանք պատճառած էր Հայոց, Ֆրանկներն ալ ցոյց տալ սկսան և իրենք ալ եղան ատելի։ (Հմմտ. Ուռհ., 335 և 338, Օրմանեան, Ազգ., 1323)։

Մանաւորապէս 1102ին և 1197ին պատահած երկու Ծռազատիկները, (Ազգ., 1324 և 1531), գէշ փորձաքարեր եղան այնպէս որ Հայերը տեղ տեղ իսլամները նախընտրեցին այս քրիստոնեայ արշաւողներէն։

Կը յիշուի թէ Ալպիստանի և Ջահան գաւառի Հայերը, Ֆրանկներու ճնշումէն ձանձրացած՝ ապստամբեցան և օգնութեան կոչեցին Իկոնիոյ Գըլճ Աւլան Սելջուկ Սուլթանը։ Այս շրջանին Հայ ամէնէն զօրաւոր իշխաններէն մին՝ Գող Վասիլ, որ շատ մը պատճառներ ունեցած էր սրտմտելու, երբ Իկոնիոյ Ռումի Սելջուկ Սուլթանը, Ջահանի Հայերուն օգնութեան հասաւ, ինքն ալ գրաւեց Մարաշը (զոր Խաչակիրները Թաթուլէն յափշտական էին), Հիւսնի Մանսուրը և այլ տեղեր, օրոնք նախապէս Խաչակիրներուն կը պատկանէին։ (Ե. Քասունի, Ակօս., Զ. տարի, Թ. 1, 116)։

Մանաւորապէս Եդեսիոյ Պօտուին կոմսը գրաւեց Թլպաշարը, Կուրիսը, Արեւընտանը եայլն և տուաւ Ճօսլինի, ինչպէս կը հաստատէ Guillaume de Tyrի (Թ. 24)։



Ասոնց նման ապաշնորհ արարքներ մեծ յուսախափութեան պատճառ եղան։

Խաչակրութիւնները, որոնք 1095ին սկսան և մինչև 1270, պարբերաբար ութ անգամ փորձուեցան, հետզհետէ այլասերեցան և շեղեցան իրենց նախնական նպատակէն, շատ հեռուները երթալով և իրենց իշխանութիւնը տարածելով դէպի Արեւելք և Հարաւ-Արեւելք։ Պօտուին Ֆլանտռացին գրաւեց վերին Միջագետքի Եդեսիա քաղաքը և այդ շրջանին մէջ հիմը դրաւ իշխանապետութեան մը՝ որ եղաւ Արեւելքի մէջ Լատին առաջին պետութիւնը, տեսակ մը քրիստոնեայ պատնէշ կազմելով Սելջուկ արշաւանքներուն դէմ։ Այս ինքնիշխան և քմածին ձեռնարկը սակայն լաւ հետեւանքներ չունեցաւ։ Ուրիշներ հետեւեցան իրեն և հետամուտ եղան առանձին իշխանապետութիւններ կազմելու, ինչ որ վերջին ծայր վնասակար պիտի ըլլար։

Սուրիոյ գլխաւոր քաղաքը՝ Անտիոք, երբ Խաչակիրներուն ձեռքը ինկաւ, կատաղի պայքար մը սկսաւ Խաչակիր պետերու միջեւ՝ մինչեւ որ Պոհեմունտ (տը Դարանդ) Անտիոքի իշխան հռչակուեցաւ։ Թէ՛ Եդեսիոյ և թէ Անտիոքի իշխաններուն քով մնաց Խաչակիր բանակներու մեծ մասը, պաշտպանելու համար նորակազմ Լատին տէրութիւնները, այնպէս որ 15 Յուլիս 1099ին Երուսաղէմը,— որ այդ շրջանին Սելջուկներէն անցած էր Եգիպտոսի Ֆաթիմեան Խալիֆաներուն ձեռքը —, գրաւուած է 20—25 հազար յոգնած և պարտասած Խաչակիրներով, որոնք անողոքօրէն կողոպտեցին քաղաքը։ Երուսաղէմի թագաւոր հռչակուեցաւ Կոտֆրուա տը Պույյոն՝ «Ս. Գերեզմանի Պաշտպան» համեստ տիտղոսով։

Այս նոր թագաւորութիւնը կը գրաւէր Սուրիոյ և Պաղեստինի ծովեզերքին վրայ հողաշերտ մը, իսկ Ամանոսէն մինչեւ Երուսաղէմ կազմուած էին կարգ մը Լատին իշխանութիւններ, որոնք անընդհատ կը կռուէին իսլամներուն դէմ, և երբեմն ալ իրարու դէմ։ Այսպէս, Արեւելքի այս աշխարհամասը, այսինքն Սուրիա և Պաղեստին մատնուած էին կատարեալ խառնակութեան։

Այլեւս գոյութիւն չունէր կրօնական հարցը, որ իր տեղը տուած էր ուրիշ տեսակ շահախնդրութիւններու, որոնց յագուրդ տալու համար թէ՛ Բիւզանդիոնի կայսրերը և թէ՛ Խաչակիրները չէին վարաներ նոյնիսկ զինակցելու մահմետական իշխաններու հետ։ Այնպէս որ առաջ եկաւ թոհուբոհ մը, ուր այլեւս կրօնական և բարոյական սկզբունքներուն յարգ չէր տրուէր և ամէնէն այպանելի արարքները կը գործուէին։

Հայ իշխաններու ցոյց տուած անձնուիրութիւնն ալ փոխարինուեցաւ ապերախտութեամբ և Խաչակիրները անոնց իշխանութիւնները զօրացնելու տեղ՝ յափշտակելու հետամուտ եղան։ Այս խառնակութիւններուն մէջ անհետացաւ պզտիկ իշխանութիւններէ կազմուած Խաչակիրներու «Armenia»ն, որուն մասերը մէկիկ մէկիկ նուաճուեցան հաւասարապէս իսլամներէն և քրիստոնեաներէն։ Բիւզանդիոն գոհ էր որ Թուրքերը Փոքր Ասիոյ մէջ տկարացած էին Խաչակիրներուն դէմ կռուելով, բայց կասկածով կը դիտէր Խաչակիրներուն կողմէ Անտիոքի, Եդեսիոյ, Թրիպոլիի մէջ կազմուած Լատին իշխանութիւն-

ներուն զօրանալը և զանոնք իր գոյութեան դէմ սպառնալիք մը կը նկատէր։ Այս անվստահութիւնը այն աստիճան մեծ համեմատութիւն առաւ որ ԺԲ. դարուն, Բիւզանդիոն չվարանեցաւ դաշնակցիլ Թուրքերուն հետ, որոնց զինակցեցան իրենց կարգին Խաչակիրներն ալ, ճիշդ նոյն երկիւղով՝ որ Բիւզանդացիներու զօրանալը իրենց համար վտանգաւոր էր։ Ալեքս Կոմնեն կայսրը առանց խզելու իր յարաբերութիւնները Խաչակիրներուն հետ, դժգոհ ըլլալով հանդերձ անոնցմէ, շարունակեց օգնել անոնց միշտ ի զուր պահանջելով Անտիոքը՝ ըստ իրենց համաձայնութեան։

1104ին, Իսլամները Խառանի մէջ մեծ յաղթանակ մը շահեցան Պոհեմունտի և Միջագետքի իշխող այլ Լատին իշխաններու վրայ, որոնք կորսնցուցին իրենց բոլոր ստացուածքները, մեծ յոյսեր ներշնչելով թէ՛ Ալեքսի և թէ՛ Իսլամներուն։

Պոհեմունտ (+1111) իր փայլուն երազներէն հրաժարեցաւ, և աւելորդ համարեց պայքարը շարունակել իր տկար ուժերով Բիւզանդիոնի և Իսլամներուն դէմ, և Անտիոքը վստահելով իր Տանգրետ զարմիկին, ինք ծովու ճամբով Եւրոպա անցաւ մտադրելով նոր բանակ մը կազմել և ուղղակի Պոլսոյ վրայ յարձակիլ։

Սակայն չյաջողեցաւ և պարտաւորուեցաւ յանձն առնել Անտիոքը դարձնել կայսեր։ Բայց իր զարմիկը Տանկրետ մերժեց գործադրել Պոհեմունտի հրամանը և ճանչնալ Պոլսոյ կայսեր իրաւունքները Անտիոքի վրայ։

Յովհաննէս Բ. Կոմնէն շարունակեց իր հօրը՝ Ալեքսի պայքարը, երկար ատենէ ի վեր կորսուած երկիրները վերստին ենթարկելու համար Բիւզանդիոնի։ Ուստի աշխատեցաւ գրաւել Կիլիկիոյ և Կոմմագենէի Հայ իշխանութիւնները, որոնք Բիւզանդիոնի դէմ ինքզինքնին պաշտպանելու համար, բարեկամացան Արեւելքի Լատին իշխաններուն, որոնք սակայն չպաշտպանեցին զիրենք։

Բիւզանդիոնի կայսրը հասաւ Անտիոք և պարտադրեց անոր բնակիչները որ հաշտութիւն խնդրեն և ճանչնան իր գերիշխանութիւնը։

Յովհաննէս Բ. Կոմնէն՝ քաջալերուած այս յաղթութենէն՝ յաւակնեցաւ նոյնիսկ միջամտել Երուսաղէմի թագաւորութեան գործերուն և փորձեց զայն եւս հպատակեցնել իրեն, իրեն սեփականելու համար Ս. Քաղաքը ազատագրած ըլլալու փառքը, բայց չյաջողեցաւ։

1113ին՝ Թունաւոր նետէ մը վիրաւորուած՝ Կիլիկեան լեռներուն մէջ մեռաւ, իրեն յաջորդ նշանակելով իր կրտսեր որդին՝ Մանուէլը, որ իր ժառանգած ընդարձակ կայսրութիւնը չկրցաւ պահել իր լատինասէր քաղաքականութեան հետեւանօք, որովհետեւ Սելջուկները քրիստոնեաներու միութիւնը վտանգ մը նկատելով՝ շարունակ յարձակեցան Փոքր Ասիա, աւերելով, ջարդելով և գերելով։

Լատին իշխանութիւնները և Բիւզանդական կայսրութիւնը փոխանակ միացեալ ուժերով հասարակաց թշնամիին դէմ կռուելու, իրարու դէմ դաւեցին և կասկածով դիտել սկսան իրենցմէ ոեւէ մէկուն յաջողութիւնը։

Եդեսիոյ, Անտիոքի և Բիւզանդիոնի իրարու դէմ գործած արարքները աղիտաբեր եղան և Իսլամները, որոնք տկարացած էին և հոս մղուած



Խաչակիրներէն, քրիստոնեաներու զիրար տկարացնելէն օգտուելով՝ վերստին գրաւեցին Միջագետքը։

Բիւզանդական կայսրութիւնը, Սելջուկ արշաւանքներու սկիզբը, Միջագետքը կը պաշտպանէր Ֆրանկ վարձկան զօրքերու օժանդակութեամբ։

Ալփասլան, Սելջուկ աշխարհակալը (1063—1072), ինչպէս տեսնուեցաւ (վերը, 52—3 նաև հմմտ. Ուռհ., 187—8), արդէն գրաւած էր Միջագետքը և Հիւսիսային Սուրիան և իր զօրավարներէն Աթսիզ՝ Ֆաթիմեանց ձեռքէն առած՝ Պաղեստինը (վերը, 53), ինչպէս նաև Երուսաղէմը՝ 1073ին և Դամասկոսը՝ 1076ին։ Իր որդին՝ Մելիք-Շահ, տեսանք որ Սուրիան իբրեւ ժառանգական ճորտապետութիւն տուած էր իր եղբօրը՝ Դդուշի, որ Դամասկոս հաստատուեցաւ 1076ին (վերը, 62) իրեն ստորադաս ունենալով, իբրեւ ճորտ, Միջագետքի և Ասորիքի մէջ Ամիրաներ։

Այս իշխանութիւնը, որ կը տիրէր 1084ին նաև Հալէպի (վերը, 63), պահեց իր գոյութիւնը մինչև 1260, երբ ընկճուեցաւ և նուաճուեցաւ Մոնկոլներէն։

Մասնաւորապէս Խաչակիրները դէպի Երուսաղէմ իրենց արշաւանքին ճամբուն վրայ, Սուրիոյ մէջ այս պետութեան Աթապէկներուն հետ է որ գործ ունեցան և շարունակ պարտաւորուեցան անոնց դէմ կռիւ մղել։

Անոնցմէ, Մուսուլի Աթապէկը՝ Զէնկի, գրաւեց Եդեսիան (1144), զոր թէև Ժոսլին շուտով ետ առաւ, բայց Զէնկիի որդին Նուրէտտին, առանց դժուարութեան վերագրաւեց — վասնզի Եդեսիա անօգնական մնացած էր — և անհելի ջարդ, աւեր և գերութիւն սփռեց ու մեծ հարուած մը տուաւ Արեւելքի քրիստոնեաներուն։

Եւրոպա իբր թէ յուզման նշաններ ցոյց տուաւ և նոր Խաչակրութիւններ կազմակերպեց, սակայն անոնք ամէնն ալ ձախող վախճան ունեցան և Իսլամները հետզհետէ զօրացան և վերջապէս յաջողեցան Ֆրանկները հեռացնել Սուրիայէն և Պաղեստինէն։

1187ին, Սալահէտտին Քիւրտ (+ 1193), Նուրէտտինի Եգիպտոսի տեղակալը, յափշտակելով անոր իշխանութիւնը՝ գրաւեց Երուսաղէմը (1187) և վերջ տուաւ Լատիններու հիմնած Երուսաղէմի թագաւորութեան։

Սալահէտտին Էյուպեանի ժառանգները զօրանալով, դէպի հիւսիս տարածած էին իրենց իշխանութիւնը և ինչպէս Կիլիկիոյ (1180ին) նոյնպէս և Մոնկոլ մեծ Կայսրութեան սահմանները հասած էին։ Անխուսափելի էր բախումը երկու ուժերու միջեւ։ Հուլաղու, որ Մանգոյ Խանէն (1251—1259) հրամանատար կարգուած էր Մոնկոլ բանակին, ձեռնարկեց պետութեան արեւմտեան սահմանները ընդլայնել, և ինչպէս տեսնուեցաւ, գրաւեց Սուրիան Էյուպեաններէն (վերը, 102 և 109—110), միահեծան տէր դառնալու համար Ասիոյ քանի որ արդէն Միջագետքը և Պաղեստինը գրաւուած էր։ Հուլաղու ծրագրած էր գրաւել նաև Երուսաղէմը Հայոց Հեթում Ա. թագաւորին հետ, երբ Մանգոյ Խանին մահուան պատճառով, պարտաւորուեցաւ դառնալ Արեւելք՝ Գարագորում երթալու համար (վերը, 102)։

Այդ միջոցին (1259) Սուրիոյ մէջ շատ զօրացած էր Էյուպեան Մելիք

Նասիր Սալահէտտին Եուսուֆը, որ գրեթէ տիրացած էր ամբողջ Սուրիոյ, որուն հարաւակողմը կ'իշխէին Եգիպտոսի Մեմլուքները (վերը, 112)։ Հուլաղու գրաւեց Միջագետքը և առաջացաւ մինչեւ Հալէպ, իրեն հետ ունենալով Հեթում թագաւորը, որ մեծ դեր կատարած էր այս արշաւանքին մէջ. Մոնկոլ և Հայ զօրքերը կը գրաւեն Հալէպը (1260 Յունուար 24) և Դամասկոսը (1260 Մարտ 1) և Մոնկոլ և Հայ զինակից բանակները կ'առաջանան մինչեւ Գազա (տես. վերը, 112—14)՝ Քիթ-Բուղա Նեստորական զօրավարին հրամանատարութեամբ։

Ինչ որ Խաչակիրները չկրցան ընել, ինչպէս տեսնուեցաւ (վերը, 115), Քիթ-Բուղա յաջողեցաւ ընել, Սուրիան քրիստոնեայ երկիրի մը վերածելով (տես. վերը, 115)։

Ապահովաբար, ինչպէս ծրագրուած էր, պիտի գրաւուէր նաև Երուսաղէմը, եթէ Ֆրանկ իշխանները իրենց յիմարութիւններով (տես. վերը, 116) Ֆրանկ-Մոնկոլ բարեկամութիւնը չքանդէին (տես. վերը, 116) և ապարէզ չտային մոլեռանդ Մեմլուքներուն, որոնք Մոնկոլները վանեցին Պաղեստինէն և Սուրիայէն։

Ինչպէս տեսնուեցաւ, Սուրիա և Պաղեստին ԺԱ. դարէն սկսեալ կռուախնձոր եղած էին քանի մը պետութիւններու միջեւ և անոնցմէ իւրաքանչիւրը, անոնց տիրանալու կը ձգտէին, առանց որեւէ համաձայնութեան, բոլորովին երկպառակ ու իրարու դաւող։

Եթէ իսլամները և քրիստոնեաները իրենց մէջ առանց երկպառակած ըլլալու մաքառէին, երկու կողմերէն մէկը վճռական հարուածով մը պիտի տիրանար այս աշխարհամասին, սակայն այդպէս չեղաւ։

Քրիստոնեաները՝ բնաւ սերտ միութիւն մը չկրցան կազմել։

Բիւզանդական կայսրութիւնը իր սահմանները պաշտպանող Հայ իշխանութիւնները ջնջելու կ'աշխատէր, ինչպէս նաև բնաւ փափաքող չէր որ Լատին իշխանութիւնները զօրանային, կայսրութեան համար զանոնք սպառնալիք մը նկատելով։ Տեսանք թէ իսլամներն ալ միութիւն չունէին, և Մեմլուքները ու Մոնկոլները իրարու դէմ կը կռուէին Սուրիոյ տիրապետութեան համար. այսպէս, Սուրիա՝ ինչպէս իբրև բնակավայր այլազան ազգերու և կրօններու խառնարան մը եղած էր, եղաւ նաև քաղաքական հնոց մը, ուր մարդիկ կ'սպաննուէին, կարծես թէ աննպատակ։

ԺԳ. դարուն, վերջապէս Եգիպտացիք, որոնք երկար ատենէ ի վեր կը մաքառէին Մոնկոլներուն դէմ, տէր դարձան այս աշխարհամասին։ Ինչպէս տեսնուեցաւ (վերը, 117), Քօթուզ (Էլ Մելիք էլ Մուզաֆէր) օգտուելով Քիթ-Բուղայի սակաւաթիւ զօրքով մնացած ըլլալէն, մտաւ Պաղեստին 1260ի աշնան և Յորդանանի եզերքը յաղթեց անոր և գերի բռնելով սպաննեց զայն։։ Եգիպտացիք Սուրիոյ տիրեցին։ Քօթուզ յաղթական Եգիպտոս կը դառնար, երբ ճամբան սպաննուեցաւ Պիպարս Ֆունտուխտարէն (1260—1277), Թուրքմէն գերիէ մը, որ Սուլթան հռչակուեցաւ (վերը՝ 117)։ Ասիկա երկրորդ Սալահէտտին մը հանդիսացաւ և ուխտեց քրիստոնեայ իշխանութիւնները ջնջել։ Պիպարս բարեկամացաւ Պոլսոյ Միքայէլ Պալէոլոկ կայսեր հետ, որ Ֆրանկները



դուրս նետած էր Բիւզանդիոնէն և դաշնակցեցաւ Կովկասի իսլամացած Թաթարներուն հետ, որոնք Հուլաղուն կ'զբաղեցնէին։

Ինքն նախ Խաչակիրները տկարացուց, անոնց ձեռքը թողլով միմիայն քանի մը ծովեզերեայ քաղաքներ։ Հուլաղուի Իլխանեան պետութիւնը, որուն կը պատկանէր Սուրիան, ստիպուեցաւ իրեն դէմ կազմուած այս միութեան դէմ մաքառիլ երկու ճակատի վրայ, նպատակ ունենալով փրկել Սուրիան, որ կռուախնձոր եղաւ Մեմլուքներու և Մոնկոլներու միջեւ (վերը, 119), երբ արդէն միայն յետին խլեակները մնացած էին Սուրիոյ և Պաղեստինի Լատին իշխանութիւններուն, անոնց մեծ մասը գրաւուած ըլլալով միառմի։

Եգիպտացիք անողոք ատելութեամբ կը հալածեն թէ՛ Մոնկոլները և թէ անոնց դաշնակից և օգնական Հայերը և Լատինները։ Եւ մեծ խառնակութեան մը կը մատնուէին Սուրիա և Պաղեստին։ Ապաղա (1265—1282) կը պատերազմի Մեմլուքներուն դէմ, մինչ Պիպարս կ'արշաւէ Կիլիկիոյ վրայ և 1268 Մայիսին կը գրաւէ Անտիոքը (տես. վերը, 121) և Կիլիկիոյ Հայ թագաւորութենէն կը յափշտակէ Հիւսիսային Սուրիոյ այն մասերը, որոնք այդ թագաւորթիւնը իրեն կցած էր (վերը, 121)։ Ապաղա՝ Հայոց Լեւոն Գ. թագաւորին հետ, 1281ին կը կռուի Մանսուր Սէյֆէտտին Քելաունի (1279—1290), Եգիպտոսի Սուլթանին դէմ։ Ապաղա Խան 50,000նոց բանակ մը տուաւ իր եղբօրը Մանգու Թիմուրի և 25,000նոց բանակ մըն ալ Հայերը տուին։ Երկու բանակները խմբուեցան Հոմս քաղաքին մօտ, ուր յաղթանակ մը տարին, սակայն Մանգու-Թիմուր դաւաճանեց և ետ քաշուեցաւ, Մեմլուքները այն ատեն յարձակեցան Հայոց և Մոնկոլներու վրայ (1281)։ Ապաղա գլխատել տըւաւ իր դաւաճան եղբայրը և բանակին սպաներուն կնոջ զգեստ հագցուց։

Ապաղայի յաջորդը Թագուտար (1282—1284), համակիր էր իսլամութեան։ Այս պատճառով հաշտուեցաւ Մեմլուքներուն հետ (վերը՝ 125)։ Բայց Ղազան Մահմուտ Խան (1295—1304), հակառակ անոր որ վերջնապէս մահմետականութիւնը ընդունած էր, 1299ին արշաւեց Եգիպտոս՝ Սուրիայէն անցնելով և ամբողջ ճամբուն երկայնքը աւեր սփռեց (տես. վեր, 126)։

Սակայն վերջնական յաղթանակը Մեմլուքները ունեցան, վասնզի 1289ին, Տրիպոլիսը և 1291ին Աքիան գրաւեցին և վերջնապէս Լատին իշխանութիւնները ջնջեցին։ Խաչակիրներու մնացորդները անվերադարձ մեկնեցան, իրենց հետ տանելով իրենց հպատակ և իրենց հաւատարիմ մնացող հազարաւոր ընտանիքներ։

Մելիք Աշրաֆ այդ միջոցին՝ գրաւելու նպատակով յարձակեցաւ Միջագետքի մէջ իբր կղզեակ մը, տակաւին Լատիններէն՝ քրիստոնեայ Հայոց տիրապետութեան ձգուած Հռոմկլայ ամրոցը, զոր Հայերը կաթողիկոսարանի վերածած էին։ Հայերը և Մոնկոլները միասին պաշտպանեցին Հռոմկլան որ գրաւուեցաւ 1292ին և Ստեփանոս կաթողիկոս և բազում ժողովուրդ գերի տարուեցաւ։ Մեմլուքները՝ Հայերն ալ պատժելու համար արշաւեցին նաև Կիլիկիա և գուցէ յաջողէին վերջ տալ Հայոց թագաւորութեան, եթէ Ղազան Մահմուտ Խան, Մոնկոլ վեհապետը, օգնութեան չհասնէր (1298) Հեթում Բ.ի և միասին Հոմսը և Դամասկոսը չգրաւէին (22/23 Դեկտ. 1299) և յաղթական

մինչեւ Գազա չաւաշանային, ինչպէս տեսանք (վերը, 128)։ Որոնդէսի հովիտէն վտարուեցան Մեմլուքները և Սուրիան մեծ մասով Մոնկոլներու ձեռքը ինկաւ. բայց դժբախտաբար Մուսուլի Էմիրը, որուն վստահած էր Ղազան Սուրիան, երկիրը մատնեց Նասր Սուլթանին։

Դժբախտաբար Մոնկոլ Խութլու Շահ զօրավարը 20 Ապրիլ 1303ին, Դամասկոսի հարաւակողմը պարտուեցաւ Մեմլուք բանակէն և քաշուեցաւ Մուսուլ (Միջագետք), (տես. վերը, 128)։

Մոնկոլները վերջնապէս կորսնցուցին Սուրիան և Պաղեստինը, ուր երկու դարեր, անընդհատ իրարու հետ կռուած էին Յոյները, Սելջուկները, Լատինները, Հայերը, Մոնկոլները և Մեմլուքները։

1291ին, Եւրոպացի արշաւողներուն վերջին հատուածները հեռացան այս եզերքներէն և իսլամները տիրապետեցին այս երկիրներուն, ուր երկու դար, ինչպէս ըսինք, ազգեր և կրօններ իրարու դէմ մաքառած էին, ողբալի պատկեր մը ներկայացնելով ազգերու պատմութեան մէջ, քրիստոնէական կրօնքն ալ վարկաբեկելով ուրիշ ազգերու առջեւ (1)։

Սուրիոյ ծովեզերքներուն վրայ նիւթական ու ֆիզիքական այնքան զոհողութիւններով կառուցուած Լատին բերդերուն և դղեակներուն մեծ մասը քանդուեցան, որպէսզի կրկին առքի կռուան չըլլային Ֆրանկներուն, եթէ անոնք փորձէին վերստին Սուրիա արշաւել։

Մեմլուքները նախ Սայտայի ամրոցը սկսան քանդել և ապա աւերեցին Պէյրութի ամրակուռ բերդը և աւերակոյտերու վերածեցին ծովեզերեայ ծաղկեալ քաղաքները։

Երբ 1422ին, Բենիամին Դիւդէլ Հրեայ պատմիչը Եաֆա հասաւ, հոն ո՛չ մէկ բնակիչ գտաւ (Արտաւազդ Արքեպս., Սիւրիա, 989)։

Խաչակիրներուն Սուրիայէն հեռանալը, երկիրին տնտեսական կեանքին վրայ մեծ ազդեցութիւն ունեցաւ, վասնզի առևտրական շարժումը մեծապէս տուժեց և Խաչակիրներու շնորհիւ, Եւրոպայի հետ մշակուած այնքան ծաղկեալ վաճառականութիւնը գրեթէ դադրեցաւ (Արտաւազդ Արքեպս., Սիւրիա, 993)։

Այլեւս անցած էին այն օրերը, ուր Իտալացիք կու գային Սուրիոյ մէջ փնտռել Ասիական բոլոր վաճառքները, և ինչպէս Heyd կ'ըսէ «Արևելքի (Levant) վաճառականութիւնը, Խաչակիրներու արշաւանքին հետ կ'առնէր թռիչք մը, զոր անկարելի էր երազել անկէ քիչ առաջ։ Առաջին անգամն էր որ Արևմուտքի վաճառականները, ոտք կը դնէին Ասիա»։ Անոնք Սուրիայէն մինչեւ Հնդկաց Ովկիանոս և Կեդրոնական Ասիա, Արաբ աշխարհին բոլոր ճամբաները կ'օգտագործէին։ Այնպէս որ, Լատին Արևելքն էր որ ուղղութիւն կու տար իսլամ աշխարհին ներքին վաճառականութեան (հմմտ. René Grousset, Histoire de l'Asie I. l'Orient, 1921, Paris, p. 236)։

(1) Այս երկարատեւ կռիւներու, մասնաւորապէս խաչակրաց արշաւներուն մասին կարդալ Սաւալանեանցի Պատմութիւն Երուսաղէմի գործը (տպ. 1931, Երուսաղէմ, էջ 301—475), ուր բաւական մանրամասնութեամբ պատմուած են խաչակրութեանց շրջանի անցքերը, համադրելով Հայ եւ օտար պատմիչներու տեղեկութիւնները։



Բոլոր կարաւաններու հանգրուանները, Հալէպէն և Դամասկոսէն սկսելով, Որոնդէսի և Յորդանանի հովիտին երկայնքին կը հետեւէին Անտիոքէն մինչև Երուսաղէմ, և անկէ ալ անդին կ'անցնէին Եգիպտոս և Մաղրէպ (Մարոք) և Պաղտատի և Աղեքսանդրիոյ միջեւ գտնուող ճամբաները և Երուսաղէմի Թագաւորութեան հասոյթի աղբիւրներուն գլխաւորը մաքսերն էին, Ֆրանկ Սուրիան կը հանդիսանար նաև նախադուռն Հնդկաստանի վաճառականութեան։ Այնպէս որ Հնդկական Ովկիանոսը կեդրոն կը դառնար բանուկ առևտուրի, վասնզի Արաբ նաւեր (boutre) կ'երթային փնտռել համեմներ և մետաքսեղէններ, ոչ միայն Հնդկաց Ովկիանոսի եզերքները, այլ մինչեւ Քանդոնի եզերքները։

Այս վաճառականութիւնը կատարող նաւերէն մէկ մասը Պարսից Ծոցէն կը բարձրանար մինչեւ Պասրա, ուրկէ ապրանքները կը փոխադրէին կարաւաններ դէպի Պաղտատ, Հալէպ և Անտիոք կամ դէպի Դամասկոս և Աքիա։ Իսկ ուրիշ արաբ նաւեր կու գային Հնդկաստանէն դէպի Կարմիր Ծով և իրենց թանկագին բեռը կը պարպէին Եգիպտոսի եզերքը կամ Հիճազ և Ապառաժ Արաբիա։

Եգիպտոսի յատուկ ապրանքները Աղեքսանդրիա կը փոխադրուէին, և Հիճազ տարուածները կը փոխադրուէին Մեքքէ, ուրկէ կարաւաններով կը փոխադրուէին Դամասկոս և Աքիա։ Իսկ այն ապրանքները, որոնք ցամաք կը հանուէին Աիլահ (Aïlah), Աքապայի ծոցին խորը, կ'ընդունէին ուղղակի Եւրոպայի վաճառականները։ Երուսաղէմի Թագաւորութիւնը որքան ատեն որ տեւեց. Աիլահի և Աքապայի նաւահանգիստները մնացին Ֆրանկներուն իշխանութեան տակ և անոնցմով անոնք յարաբերուեցան ուղղակի Հնդկաց Ովկիանոսին հետ (հմմտ. René Grousset, նոյն, 236—237)։

Աիլահէն, քրիստոնեայ կարաւանները ապրանքի հակերը կը փոխադրէին դէպի Երուսաղէմ և դէպի Աքիա, որ Երուսաղէմի Թագաւորութեան մեծ շահաստանն էր։

Ցամաքային և ծովային ճամբաները գրեթէ բոլորն ալ կը յանգէին Սուրիա։ Պարսկաստանէն եկող կարաւաններ կ'երթային Մուսուլ և Պաղտատ, և Եփրատի ճամբով կը բարձրանային մինչեւ Եդեսիա և Հալէպ, անկէ անցնելու համար Անտիոքի դքսութեան նաւահանգիստները, ինչպէս Լաւոդիկէ (Լաթաքիա) և այլն։

Նոյնպէս Անտիոք կը յանգէին Ծայրագոյն Արևելքէն և Կեդրոնական Ասիայէն եկող կարաւաններու ճամբաները, որոնք Մեծ Հայքէն և Կիլիկիայէն կ'անցնէին։ Կասպից և Սեւ Ծովերու առևտրական ճամբաները Փոքր Ասիայէն և Տաւրոսէն կը յանգէին Ալեքսանտրէտ (Իսկէնտէրուն), Լաթաքիա և այլն։

Այսպէս, Սուրիա ունէր առանձնաշնորհեալ վիճակ մը, և կ'օգտուէր իր աշխարհագրական դիրքէն և Խաչակիրներուն իրեն ընծայած օժանդակութենէն։ Սուրիա-Լիբանան, Խաչակիրներու շնորհիւ անգամ մըն ալ կ'ապրէր Փիւնիկեցիներու և Սելեւկեաններու օրերը։ Արդարեւ երեք դարեր, Մերձ. Արևելքի (Levant) ամբողջ վաճառականութիւնը անցաւ իր նաւահանգիստներէն։ Այդ

ժամանակամիջոցին անիկա եղաւ գլխաւոր կայանը աշխարհի երթեւեկին։

Արեւմտեանները ուրիշ տեղ չէին փնտռեր այլեւս, արաբ աշխարհին եւ Ծայր. Արեւելքի արտադրութիւնները, այլ միայն Աքիա եւ Պէյրութ։

Երբեմն անծանօթ եւ խորհրդաւոր Ասիոյ բոլոր ճոխութիւնները, այդ ժամանակամիջոցին էր որ ընտանի դարձան Վենետիկի, Ճենովայի եւ Բիզայի առեւտրականներուն։

Վենետիկ եւ Աքիա, մշտնջենական յարաբերութեան մէջ էին նաւարկութեան սպասարկութեամբ մը եւ անընդհատ երթեւեկ կար ընդմէջ Ֆրանսայի եւ Իտալիոյ ու Պաղեստինի ուխտագնացներու, ճամբորդներու, գաղթողներու, արկածախնդիրներու եւ չահարկուներու։

Հին քաղաքակրթութիւններու հաղորդակցութեան արգելքները վերցած էին եւ Արեւելք եւ Արեւմուտք իրարու կապուած եւ Ֆրանկ Սուրիան անոնց միացման գիծն եղած էր (հմմտ. Ցոյն. 237—8)։

Քրիստոնեայ աշխարհը Սուրիան կորսնցնելէ ետք, Լատին դրամատէրներ Սուրիոյ հետ իրենց ծովային առեւտուրը կեդրոնացուցին Կիլիկիոյ նաւահանգիստներուն մէջ։ Սուրիացի իսլամները ստիպուեցան իրենց հողին արտադրութիւնները Կիլիկեան նաւահանգիստները բերել, մինչեւ որ 1347ին Այաս ինկաւ Մելիք Էլ Նազիրի ձեռքը (Սիւրիա, 993—4)։

Բայց նկատելի է որ Միջերկրականի արեւելեան աւազանին, մասնաւորաբար ծովային առեւտուրին գլխաւոր դերակատարները մնացին Եւրոպացիք, որոնք շուտով մոռնալով իրենց կրած փորձութիւնները, շահու համար վերստին սկսան առեւտրական յարաբերութիւններ մշակել Սուրիոյ հետ, հակառակ որ անիկա ողբալի վիճակի մը մատնուած էր Մեմլուքներու տիրապետութեան տակ, բաժան բաժան ըլլալով։ Դամասկոս, Հալէպ, Հոմս, Թրիպոլի, Սաֆատ եւ Քերեք կազմեցին իր վարչական բաժանումները՝ բոլորն ալ իրարու հանդէպ անհաշտ, երկիրը անիշխանութեան վերածելու աստիճան։

Դամասկոսի Էմիր Թընկզ (1312—1340), բացառութիւն մըն իր շինարար եւ բարեկարգ իշխանութեամբ։ Ան շինարարութեան կոթողներ թողուց Պէյրութի. Դամասկոսի, Երուսաղէմի եւ Սաֆատի մէջ։ Իր օրով ժողովուրդը ապրեցաւ խաղաղ եւ բարգաւաճ։

Իր եւ իր յաջորդներու շրջանին, ծովային յարձակումները շարունակուեցան, առանց արդիւնք մը ունենալու։

Այս յարձակումներուն գլխաւոր թիրախն էր Այաս, որ Արեւելքի ամէնէն բանուկ եւ վաճառաշահ քաղաքն էր, շատերու նաեւ նախանձին առարկան։

Լէնկ Թիմուրի արշաւանքը Սուրիոյ վրայ ԺԵ. դարուն սկիզբը, անգամ մը ալ Սուրիան տակն ու վրայ ըրաւ, վասնզի Եօզպէք Թաթարներու այս վայրագ առաջնորդը գրաւեց Միջագետքը, Ասորիքը եւ Կիլիկիան, որուն Հայ թագաւորութիւնը քիչ առաջ 1375ին ջնջուած էր արդէն։

1400ին գրաւուեցաւ Հալէպը եւ Դամասկոսը եւ ահռելի կոտորածներ կատարուեցան։ Լէնկ Թիմուր երբ Դամասկոսը գրաւեց՝ հրամայեց իր զօրքերուն որ իւրաքանչիւրը մէկմէկ մարդ սպաննէ եւ անոնց գլուխներով բուրգ մը շինեց (Թովմա Մեծոփեցի, 63)։



Լէնկ Թիմուր աւարի տուաւ Դամասկոսը եւ բնակչութեան արհեստաւոր մասը գերի վարեց ի Սմրղանդ։ Լէնկ Թիմուր Եգիպտոս ալ մտաւ եւ Մեմլուքներու հարստութիւնը կողոպտեց։ Թաթարներուն կիսատ թողածը Պէտէվիները լրացուցին, գրեթէ մոռցնել տալով առաջիններուն պատճառած չարիքները։

Այս միջոցին ժանտախտի համաճարակ մը մեծ աւերներ գործեց, հազարաւոր կեանքեր հնձելով։

Լէնկ Թիմուրի արշաւանքին ատեն, մարախներու արշաւանք մըն ալ ծայր տուաւ, եւ երկիրին թշուառութիւնը կատարեալ եղաւ։

Եգիպտոսի Սուլթան Ֆարաճի հօրը՝ Սուլթան Պարգուգի օրով, քաղաքական ապստամբութիւն մը ծագեցաւ Եգիպտոսի կեդրոնական կառավարութեան մէջ, եւ Սուրիան կրկին ապրեցաւ անիշխանութեան շրջան մը։ Ֆարաճ Սուլթան եօթը անգամ Սուրիան առաւ-տուաւ՝ Լէնկ Թիմուրի հետ իր ընդհարումներուն ատեն։

Մոնկոլներու խուժանալէն ետք, քրիստոնեաները Արեւելքի մէջ տկարացան, ինչպէս գրեթէ ամբողջ Արեւելքի, նոյնպէս եւ Սուրիոյ մէջ ապրիլ սկսաւ ձուլումով կազմուած խառն ժողովուրդ մը, որուն մէջ Պարսիկ, Արաբ, Թուրք, Քիւրտ, Թաթար իրարու եղբայրացած էին կրօնքով։

Ասորիքի, Սուրիոյ, Լիբանանի եւ Պաղեստինի Ասիական բարբարոսներու արշաւանքներու շրջանի պատմութեան վրայ նետուած այս ակնարկը ցոյց կու տայ թէ այս աշխարհամասը՝ ունենալով շատ մը հրապուրիչ կողմեր եւ առաւելութիւններ, իբրեւ արդիւնաբեր եւ վաճառականութեան յարմար վայր, Հայերուն համար նպաստաւոր գաղթավայր մը կը ներկայացնէր։ Սակայն, դժբախտաբար, հակառակ անոր որ Հայաստանի եւ Սուրիոյ յարաբերութիւնները շատ վաղեմի էին եւ Սուրիա արդէն շատոնց հայաբնակ վայր մըն էր (տես. վերը, 403—404) բարբարոսներու արշաւանքներու շրջանին սկիզբը՝ 1079—1080 թուականներուն է որ Մեծ Հայաստանի աղէտալի սովին պատճառով, ինչպէս Կիլիկիա, նոյնպէս եւ Ասորիք եւ Հիւսիսային Միջագետք Հայ ստուար գաղութներ կ'ունենային (տես. վերը, 405)։

Այդ գաղթականները կը շէնցնէին այդ անհարազատ հողերը, մասնաւորապէս Եփրատացւոց երկիրը, Կոմմագենէն եւ Հիւսիսային Միջագետքը, ու շատ աւելի գործօն դեր մը կը կատարէին քան երկիրին բնիկները։

Հայաստանի հարաւային կողմը, եւ անմիջական դրացի մեր երկիրին, կար հողամաս մը Միջագետքի հիւսիսակողմը որ Խորենացիի մէկ առասպելաբանութեան շնորհիւ, կարծուած է թէ Հայոց թագաւորութեան ենթակայ եղած է երբեմն եւ քրիստոնէութեան անդրանիկ օրօրանը։ Հիւսիսային Միջագետքի այս մասը կը ճանչցուէր Ուռհայաստան անունով եւ Եփրատի արեւմտեան կողմը կը տարածուէր։

Հոն կը բնակէին Հայերը շատ վաղեմի ժամանակներէն, բայց Է. դարէն յետոյ, իբրեւ ամէնէն կանուխ իսլամական տիրապետութեան ենթարկուած երկիրներէն մէկը, հակառակ իր քրիստոնէական յիշատակարաններով լեցուն վայր մը ըլլալուն, քրիստոնեայ տարրը կամ գէթ Հայերը շատ տկարացած էին, թերեւս իբրեւ հետեւանք Պաղտատի մօտաւորութեան։ Ժ. դարուն, ինչպէս տեսնուեցաւ, Բիւզանդացիք յաջողեցան վանել Արաբները Ուռհայաստա-

նի և անոր մերձակայ երկիրներու սահմաններէն և Մէմպիճի, Տլուքի և մօտաւոր բերդերու ու քաղաքներու պաշտպանութեան հոգը Հայ զինուորներուն յանձնեցին։ Այդ պատճառով Հայերը վերստին այդ կողմերը բազմացան և ինչպէս Կոմմագենէի, Եփրատացւոց և Ասորիքի, նոյնպէս և Ուռհայաստանի մէջ կէս-անկախ իշխանութիւններ կազմեցին, մանաւորապէս ԺԱ. դարուն, երբ Բիւզանդական բանակները վերջնապէս մահմետականները վանած էին այդ շրջանէն՝ Հայերու օգնութեամբ։

Այդ դարուն, երբ դեռ Խաչակրութիւնները չէին սկսած, ինչպէս տեսնուեցաւ (վերը՝ 410), Բիւզանդիոն ինքզինքը պարտաւոր համարած էր Հայ կառավարիչներ նշանակել Եդեսիոյ։

Ասիկա նշան մըն էր, թէ մեծ էր Հայոց թիւը Եդեսիոյ մէջ, ուր Հայերը հաւանօրէն հաստատուած էին Բիւզանդացիներէն քաջալերուած։

1087ին, քաղաքը Սելջուկներու տիրապետութեան ենթարկուեցաւ Պուղան ամիրայի ձեռքով, Մելիք Շահի (1072—1092) իշխանութեան օրով։

Եդեսիոյ տէրը Վարսամ՝ Փիլարտոսի որդին՝ մեռած է այս պատերազմին ատեն ու Եդեսիա անօգնական մնալով, անձնատուր եղած է Պուղանի։

Քաղաքին գրաւման ականատես Մատթէոս Ուռհայեցի պատմիչը կը հաստատէ որ այդ պահուն հոն շատ Հայեր կային և բազմաթիւ իշխանազուններ, որոնց հետ յարգանօք վարուեցաւ Պուղան։ Քաղաքին յոյն իշխանները նախանձելով՝ չարախօսեցին և Հայերը դաւաճան ներկայացուցին և Պուղան հաւատք ընծայելով անոնց խօսքին՝ 12 Հայ իշխանաւորներ սպաննել տուաւ ու քաղաքին մէջ պահակազօրք ձգելով հեռացաւ Եդեսիայէն։ Մելիք Շահ, ինչպէս յայտնի է, առ հասարակ քրիստոնէից, բայց մանաւանդ Հայոց բարեկամ էր, ինչպէս կը վկայեն Սամուէլ Անեցի, Շնորհալի, Մատթէոս Ուռհայեցի, Վարդան և Կիրակոս վարդապետները։ Հետևաբար Հայերը այս շրջանին ալ շատցած էին։

Բարսեղ Անեցի կաթողիկոս՝ այս շրջանին է (1090) որ այցելեց Եդեսիա հովուական այցելութեամբ և շատ հաւանական է որ Հայոց կաթողիկոսը այդ միջոցին հոն հաստատած է եպիսկոպոս մը և կազմած հոգեւոր վարչութիւն մը, վասնզի իր այցելութենէն հազիւ 30—40 տարի ետքը, կը յիշուին յաջորդաբար Հայ եպիսկոպոսներ Եդեսիոյ աթոռին վրայ։

1092ին, Մելիք Շահի մահէն յետոյ, երբ իր պետութիւնը քայքայուեցաւ, շատ մը բախտախնդիրներ իրենց շուրջը հաւաքելով՝ Բագրատունեաց բանակին զօրականները և ուրիշ կռուող ուժեր՝ զանազան վայրերու տիրեցին։ Թորոս անուն անձ մըն ալ, Եդեսիոյ տիրապետ դարձաւ և Սելջուկները վանելով հիմնեց կէս-անկախ իշխանութիւն մը՝ ինքզինքը Բիւզանդիոնի կայսրութեան ենթարկելով (տես վերը, 421)։ Բիւզանդիոն, Թորոսին տուաւ Կիւրապաղատ տիտղոսը։ Այս Հայ իշխանութիւնը 1099ին, Հայերէն յափշտակեցին Խաչակիրները ապերախտութեամբ։

Հայերը թէ՛ Եդեսիոյ Սելջուկ տիրապետութեան և թէ Հայ իշխանութեան և Լատին կոմսութեան շրջանին, պէտք է բազմացած ըլլան, վասնզի 1081ին Գրիգոր Վկայասէր կաթողիկոս անոնց թուղթ մը ուղղած է Ծռազատիկի մասին (տես, վերը, 405)։



Եդեսիա քաղաքը անփոփոխ պահած էր Բիւզանդական վարչաձեւը։ Լատին գաղութը սակաւաթիւ ըլլալուն համար՝ Յակոբիկեան-Ասորի ժողովուրդով միայն բնակուած էր (E. Rey, Les Colonies Franques de Syrie aux XIIme et XIIIme siècles, Paris 1883, նաև Բաբգէն Կաթ., Պատմութիւն Կաթողիկոսաց Կիլիկիոյ, 247)։

Քիչ յետոյ՝ հոն եկան նոյնքան կարեւոր տեղ մը գրաւել Հայերը։

Եդեսիոյ մէջ Լատիններու աննշան և Հայերու ու Ասորիներու մեծ թիւ մը ունենալուն իբրև ապացոյց պէտք է ըսել թէ հազիւ 30—40 տարի ետք, 1138ին, Եդեսիոյ պաշարման ատեն, գլխաւորապէս Հայերը և Ասորիներն էին որ պաշտպանեցին քաղաքը, վասնզի Փրանկները կամ Ֆրանկները շատ քիչ էին հոն, ինչպէս կը վկայէ Աբուլֆարաճ (Նոյն)։ Առանց Ապուլֆարաճի այս հաւաստումին, այդ թուականին Հայոց պատկառելի թիւ մը ունենալուն ապացոյցը այն է որ ճիշդ այդ թուականներուն, պատմական վաւերագիրներ կը հաստատեն Եդեսիոյ Հայոց եպիսկոպոսներու գոյութիւնը։

Այսպէս, 1138—1141—44 շրջանին, Եդեսիոյ Հայերը ունէին եպիսկոպոս մը Անանիա անունով. որ իսլամներու ձեռքը գերի ինկած է և Հալէպի շուկային մէջ ծախուած է, (տես, վերը, էջ, 405)։

Հռոմկլայի ժողովին, որ քաղաքին 1144ին, Զանկի ամիրային գրաւումէն վերջը գումարուած է 1179ին, կը մասնակցէր Եդեսիոյ Ստեփանոս Եպս.ը, ինչ որ կը հաստատէ թէ գրեթէ կործանելու վիճակին հասած Եդեսիան (Ուրֆա) քաղաքը շատ շուտով վերակազմուած էր և Հայերը չէին մեկնած նոյն քաղաքէն ու կ'ապրէին հոն՝ միշտ նշանակելի թիւ մը ունենալով։

Դիտել տալ աւելորդ չըլլայ թէ միայն Ուռհայաստանի մէջ՝ Եդեսիա քաղաքը չէր որ հոծ թիւով Հայ բնակչութիւն ունէր, այլ նաև իր շուրջը գտնուած վայրերը Հայեր կ'ապրէին։

Եդեսիոյ կոմսութեան ենթակայ գլխաւոր ճորտութիւնները, ինչպէս Անտէպ, Տլուլուք, Կուրիս, Րաւանտալ (= Արեւընտան), Սամոսատ, Պիր (= Պիրեճիկ) և Սրուճ, նոյնպէս հայաբնակ էին (տես. E. Rey և Բաբգէն Կաթողիկոս, Նոյն. 247)։

Իսկ Կամուրջ գիւղ, Ճիպին, Էննէօ, Սեւերէկ, Սրուճ, Պուճակ, Նզիպին, Թուլկուրան, ամէնքն ալ, բացի վերջինէն՝ Եփրատի մօտ, իբրեւ քաղաք կամ բերդ, երբեմն երեւելի վայրեր եղած են և կարեւոր քանակութեամբ Հայ բնակչութիւն ունեցած են, Եդեսիոյ քրիստոնեայ վարչութեան ենթարկուած շրջանին, բայց սակայն վերջէն գրեթէ աննշան քանակի մը վերածուած են։

Կային նաև ուրիշ գիւղեր և քաղաքներ, որոնց մէջ գտնուած հայերէն արձանագրութիւնները ցոյց կու տան թէ ատոնք ալ հայաբնակ վայրեր եղած են։

Այսպէս, կը յիշուին Արահ և Քիֆարան գիւղերը որոնց մէջ հայերէն արձանագրութիւններ գտնուած են (տես. Արաֆօ, 1889, Ա. 36 և Մանուէլ Քասունի, Յուսաբեր, 17 Յունուար 1953)

Երեւոյթները այնպէս ցոյց կու տան թէ Եփրատի արեւելեան ընդարձակ լեռնադաշտերը, դարեր առաջ ծաղկեալ և բազմամարդ բնակչութիւն մը ունէին (Նոյն), Հռոմկլայի սահմաններուն մօտ, ուր Հայերը հաստատուած են ԺԱ. դարէն սկսեալ և կազմած են բարգաւաճ գաղութներ։

Երկիրը օժտուած էր բազմաթիւ բերդերով՝ ապահովելու համար կեանքի և ստացուածքի պաշտպանութիւնը (Նոյն)։

Այդ բերդերուն գլխաւորներն էին, Կարկառ, Բապան կամ Կապան, Խոռոս, Քեաղթէ, Պիր, Թլկուրան, Հռոմկլայ (= Րումգալէ), Հիսնի Մանսուր, Թէլգալատ և այլն (Նոյն)։

Այնպէս որ Հիւսիսային Միջագետքի մէջ, Եդեսիայէն զատ շատ մը հայաբնակ վայրեր գոյութիւն առած էին, ինչ որ կը հաստատուի շարք մը վաւերագիրներով և իրողութիւններով։

Օրինակի համար, նոյնիսկ 1179ին, Հռոմկլայի ժողովին մասնակցող եպիսկոպոսներուն մէջ, Եդեսիոյ Եպիսկոպոսին հետ յիշատակուած են ուրիշ երկու եպիսկոպոսներ, առանց հաշուելու Կաթողիկոսական աթոռանիստ բերդը՝ Հռոմկլան (1), Եփրատի եզերքը շինուած, ուր փոխադրուած էր՝ 1147ին՝ Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը և հոն մնացած էր մինչեւ 1293 բերդին, գրաւումը։

Եդեսիայէն զատ, Ուռհայաստանի մէջ հաստատուած երկու եպիսկոպոսական աթոռներուն գոյութիւնը յայտարար նշան է Հայ բաւական կարեւոր գաղութներու։

Եդեսիայէն զատ, Ուռհայաստանի մէջ հաստատուած այդ երկու եպիսկոպոսութիւններն էին Եփրատացոց մէջ.

Ա. Ապամիա կամ Արամեա-Զիւկմա, որ Պէրճիա եւ Պիր ալ կոչուած է (այժմ Պիրէճիկ) (2)։

Բ. Սամոսատ (3)։

Նկատի չունինք Ուռհայաստանի սահմաններէն հեռու վայրեր, որոնք որքան որ Հիւսիսային Միջագետքի և Փոքր Հայքի միջեւ կը գտնուէին, Հիսնի Մանսուրի կամ Ատըեամանի (4) հետ, բայց եկեղեցական վարչութեան տեսակէտէն կը պատկանէին Եդեսիոյ Արքեպիսկոպոսութեան և անոր ենթակայ երեք Քորեպիսկոպոսութիւններ կը կազմէին (տես. E. Rey, Նոյն)։

Անոնք էին Մելիտինէի (5), Կապանի կամ Բապանի և Կարկառի երեք Քորեպիսկոպոսութիւնները։

Գրաւոր վաւերագիրներ թերեւս քիչ մը չափազանցութեամբ կը հաւաստեն թէ Եդեսիոյ շրջակայքը 361 հայկական եկեղեցիներ կային, որոնց մեծ մասէն հետք անգամ չէ մնացած։

---

(1) Հռոմկլան, Լատինները Հայոց կաթողիկոսին տուած էին իբրեւ սեփական կալուած:

(2) Պիրէճիկի ինծի ծանօթ առաջին եպիսկոպոսը Յովհաննէս Եպս. Պիրոյ կը յիշուի 1307ին (Զամ. Գ. 309)

(3) Սամոսատի ինծի ծանօթ երկու եպիսկոպոսներն են, հաւանօրէն իրարու յաջորդող, 1166ին՝ յիշուած Թորոս Քորեպս.ը (Զամ. Գ. 86–87, Տաշեան, **Մայր Ցուցակ**, 406) եւ 1179ին Գրիգոր Եպս. (Զամ. Գ. 132 եւ Տաշեան, Նոյն, 350)

(4) Ասոր հնագոյն եպիսկոպոսը 1307ին յիշուած է:

(5) Մելիտինէ շատ հին ժամանակներէ ի վեր հայաբնակ եղած է եւ 1179էն սկսեալ ունեցած է իր սեփական եպիսկոպոսները եւ որոշ է որ քաղաքականապէս եւ կրօնապէս Եդեսիոյ ենթարկուած այս քաղաքը, աշխարհագրականապէս Հիւսիսային Միջագետքի մաս չէր կազմեր:



Վերջին ժամանակները, այսինքն Ի. դարուն սկիզբները, քաղաքին մօտաւոր շրջանակին մէջ գտնուած է քաղաքին Մայր Եկեղեցիէն 1–2 քարընկէց հեռու, դէպի արեւելք Ս. Գրիգոր Նարեկացի Եկեղեցիին աւերակները։

Արդարեւ, կ'երեւի թէ ոչ միայն Եդեսիա քաղաքը, այլ շրջակայքն ալ Հայեր հաստատուած էին և կը բնակէին. Նոյնիսկ այդ երկրորդական վայրերու մէջ ունէին երբեմն Հայ իշխաններ ալ, որոնք կը տիրէին դղեակներուն։ Ձեռագիրներու յիշատակարաններ կը հաստատեն ոչ միայն ասիկա, ուրիշ հայաբնակավայրեր մատնանշելով, այլ ցոյց կու տան թէ Եդեսիոյ և շրջանակներուն մէջ մշակութային շարժում մըն ալ կար,

Այսպէս, 1144ին գրուած էր Աւետարան մը «ի գաւառիս Միջագետաց յասուածապահ եւ ի բազմահոչակ քաղաքս Ուռհայ. ձեռամբ» Կարապետ քհն.ի «հրամանաւ Ստեփանոսի սրբազան եւ մաւրափայլ կրաւնաւորի, սպասաւորի Սրբոյ Նշանին, որ է 'ի Ծովուց վանսն. մերձ ի սահմանս աւրոցին, որ կոչի Հռոմկլայ» (Գարեգին Կաթղ., Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 355–358)։

1144ին Եդեսիոյ մէջ մշակութային շարժում մը սկսած էր, քանի որ գրչագրութիւններ կը կատարուէին, և Հռոմկլայի մօտ կար նաև Ծովուց վանք մը, ուր եկեղեցականներ ուսում կ'առնէին, ինչպէս կը հասկցուի յիշատակարանին շարունակութենէն (տես. Նոյն, 357)։

Նոյնպէս մեզի հասած է՝ 1161 թուականով Աւետարան մը, զոր գրած է Վասիլ Ուռհայեցի գրիչը, Քրիստափորի և կնոջը Այգոցի համար տեղւոյն Ս. Աստուածածին անուն եկեղեցիին հովանիին տակ։

Երկիրը կը գտնուէր 1161ին Յունաց տիրապետութեան տակ, վասնզի կը յիշատակէ Գրիգոր Գ. Պահլաւունի (1119—1166) Կաթողիկոսը և Հոռոմներու Մանուէլ թագաւորը։

Հայոց թագաւորը և տեղւոյն առաջնորդը չէ յիշած։ (Գարեգին Ա. Կաթողիկոս, Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 377—379)։

Նշանակելի է որ գրուած է «յամենալաւ աւրինակէ, որ կոչի Կոստանդին Ուռհայեցւոյ», ինչ որ ենթադրել կու տայ թէ Ուռհա ունէր գրչութեան դպրոց մը կամ աւելի կանուխ հոն ձեռագիրներ գրուած էին։

Բայց, դժբախտաբար Ուռհայաստան գտնուելով իսլամ և քրիստոնեայ աշխարհներու բաժման գիծին վրայ, խաղաղ կեանք մը չէ ունեցած և միշտ պատերազմի և այլ աղէտներու վայր մը եղած է։

Նուրէտտինի 1144ի գրաւումէն յետոյ՝ Եդեսիան 1183ին գրաւեց Սալահէտտին, և ապա երբ պետութիւնը բաժնուեցաւ Սալահէտտինի ժառանգորդներուն միջեւ, Եդեսիա ինկաւ իր եղբօրը՝ Մէլիք-էլ-Ատիլի (Սէյֆէտտին Ատիլ), (1193—1218) բաժինին մէջ, Հռոմկլայի հետ միասին, բայց Հայերը կ'երեւի թէ չեն ցրուած և շարունակած են ապրիլ հոն, ինչպէս կը հաստատեն 1200 և 1214 թուականով Ձեռագիրներու մէջ եղած յիշատակութիւնները (տես. ՀԱ. 1905, էջ 315 և Յիշատակարանք ձեռագրաց, Ա. 763—766)։ Բայց, ինչպէս կը տեսնուի, 1200ին հոն կար «սով սաստիկ» և 1231ին Թաթարները եկած և գրաւած էին Եդեսիան և Սամոսատը և ջարդած ու գերի վարած՝ բազմաթիւ Հայեր, նաև բազմաթիւ Թուրքեր, Քուրդեր և քրիստոն-

եանիր, ինչպէս կը հասկցուի նոյն թուականին Հռոմկլայ գրուած Աւետարանի մը յիշատակարանէն (տես Հ. Ց. Վրդ. Մըրեան, Bulletin Arménologiques, 1947-8, էջ 218—221, Հ. Բ. Վրդ. Սարգիսեան, Վենետիկի Ձեռագրաց Ցուցակ, Բ. 1223, Գարեգին Կաթողիկոս, Յիշատակարանք, 877—878),

Նոյնպէս Թուլկարան էր Միջագետքի հայաբնակ վայրերէն մէկը, երբ Միջագետքի մէջ բարգաւաճ հայութիւն մը կար։

Թուլկարան բերդ մըն էր և կը գտնուէր Եդեսիոյ հիւսիս-արևելքը։ Մուտուլի Մամուտ ամիրան 1111—12ին, պատերազմով կը գրաւէ այս բերդը, Եդեսիոյ Փրանկ Կոմսութենէն։ Կը կարծուի թէ Մամուտ Ամիրա Թուլկուրանը գրաւելէ ետք, զայն յանձնած է Առիծ անուն Հայ իշխանի մը, որուն Ներսէս Շնորհալի Թուղթ մը գրած է, իր եղբօր՝ Գրիգոր Կաթողիկոսի (1113—1166) հրամանով՝ «ի խնդրոյ ուրումն աստուածասիրի Առիծ կոչեցեալ իշխանի Թլկուրան աւանի»:

ԺԲ. դարու առաջին կէսին (1136ին)՝ ոչ միայն Հայ բնակչութիւն մը, այլ այնտեղ Հայ իշխանութիւն մըն ալ կար, որ չենք գիտեր թէ ի՛նչ վախճան ունեցած է։ Սակայն գիտենք որ այս շրջանակին մէջ գտնուող Հայերը շարունակած են ապրիլ հոն տակաւին երկար ատեն։ Այն գաւառը, որուն աւաններէն մին էր Թուլկուրան, կը գտնուէր Եդեսիոյ հարաւային կողմը և կը կոչուէր Շպղթան (1), որուն «ճոյակապ եւ ականաւոր գիւղ»ին՝ Ուռիմէլի մէջ, 1214ին երկաթագիր «Քահանայարան Մաշտոց» մը գրուած է՝ Ս. Աստուածածին Եկեղեցիին հովանիին տակ՝ Գրիգոր գրիչէն, Վասիլ քհ.ի օրինակին վրայ, «ի ժամանակի ուրում բռնակալէր անօրինաց ազգին մեծն Սուլտանն Մելիք Աշրաֆին եւ հայկական ազգին մերոյ քրիստոսապսակ թագաւորին Լեւոնի, որ բարեպաշտութեամբ իւրով ընդ ամենայն տիեզերս պայծառացեալ լինին եկեղեցիք եւ կարգ քրիստոնէութեան...» (տես. Տաշեան, Մայր Ցուցակ, 785)։

Այս յիշատակարանին վերջին տողերը Եդեսիոյ մշակութային շարժման Կիլիկիոյ ազդեցութեան տակ ըլլալը կը հաստատեն։

Իսկ ԺԴ. դարուն՝ Թուլկուրանի մէջ 1373 թուականին «ի յամին մահտարաժամի եւ ի նեղութեան Հայոց ազգիս», Կարապետ քհն. գրած է Ջեռագիր մը (Երուսաղէմի Ս. Յակոբեան Մայրավանքին Թ. 1292), ինչ որ ցոյց կու տայ թէ գաղութը կը պահէր իր գոյութիւնը և շարունակած է տոկալ նոյնիսկ Լէնկ Թիմուրի արշաւանքէն յետոյ, վասնզի 1388ին Ստեփանոս Երէց «Երկոտասան Նահապետաց Կտակը» գրչագրած է «ի գիւղաքաղաքն Թուլկուրանի, յԱստուածածին Ս. տաճարիս», (Տաշեան, Մ. Ցուցակ, 13) և շատ աւելի Նոր ժամանակներուն (ԺԷ. դար), կը հանդիպինք Թուլկուրանցիներու։

---

(1) Ճիշդ Շըղպըրթան է: Ապուլֆարաճ եւ ուրիշ Արաբ պատմագիրներ կ'ըսեն թէ Շա՛ Պաքթան կոչուած նահանգը կը տարածուէր Եդեսիոյ հարաւը. Սրուճի պէս՝ որ հռչակաւոր էր իր պտղաբերութեամբ: Այս նահանգը կը տարածուէր մինչեւ Մարտինի կողմերը: Այս նահանգին մէջ էին Պիր, Սրուճ, Ճօմլէն, Էլ-Մօէզզիր կամ Մուարա, Էլ-Քորասի, Սին-Իպն Օթէր (Rey. Colonies, 301, Պատմութիւն Կաթողիկոսաց Կիլիկիոյ, 78—79): Այս նահանգին մէջ էր նաեւ Թուլկուրան, (Պատմ. Կաթ. Կիլիկիոյ, 76-77) որ կը գտնուէր Ամայք նահանգին մէջ:



Թուլկարան սակայն վերջը Հայերէն պարպուած է և Հայերը գաղթած են ԺԵ. դարու կիսուն Սեւերէկ (= Սեւ Աւերակ), ինչպէս կ'երեւի Երուսաղէմ պահուած (Թ. 1198) ձեռագիրին յիշատակարանէն որ գրուած է 1452ին։ Գրիչը կը պատմէ թէ ինչպէս եղաւ Ջիհան Շահ ամիրան «Թաւրիժու տէրն եւ կառ զԵրզնկայ եւ անտի առաքեաց զոմն զաւրագլուխ ի Միջագետս Թրխան Աւղլի անուն եւ նա եկեալ գերեաց զԹլկուրան եւ աւերեաց զնա եւ չարչարեաց զբազում քրիստոնեայս եւ նահատակեաց եւ անտի եկեալ ի Ռասըլէն եւ անտի եկեալ ի Տնիսար ի սահմանս Մերտնայն եւ Մարտնցիքն զարհուրեցան եւ բազումք եղեալ ամրացան յամրոցն Մերտնայ»:

Այս թոհուբոհին մէջ, Թլկուրանցիք՝ հաւանօրէն գաղթած են Սեւերէկ։ Հոն գացած են նաև հիմա Վերան-Շէհիր (= Աւերակ քաղաք) կոչուած քաղաքին տեղը գտնուող քաղաքին Հայ բնակիչները։ Որով Սեւերէկ համեմատաբար Նոր քաղաք է։ Ինչ որ ալ ըլլայ սակայն, անժխտելի է որ Միջագետքի մէջ Հայ բարգաւաճ գաղութ մը կար որ այդ երկիրին մէջ, ուր պատերազմները և անոր հետեւանք աղէտները պակաս չեն եղած, մեծապէս տուժած է։ Հայերը հետզհետէ պակսած են և նոյնիսկ Հայ գիւղեր ամբողջովին անհետացած են, ինչպէս կը հաստատուի 1357ին գրուած Աւետարանի մը յիշատակարանէն, ուր Հռոմկլայի գրաւումէն 60 տարիներ յետոյ՝ նոյն տեղը նորէն եպիսկոպոսարան մը կը գտնենք՝ հաստատուած գաւառին համար, որուն Ծակաղբիւր գիւղին մէջ (որ իր անունով իսկ զուտ հայկական կրնայ ըլլալ), Աւետարան մը կը գրուի (Հ. Բարսեղ Վրդ. Սարգիսեան, Մայր-Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Ա. հտ. 1914, Վենետիկ, 612)։

Վերջերս սակայն (1914էն առաջ) այդ գիւղը և ուրիշներ գոյութիւն չունէին։

Ազգոյուններու և Գարագոյուններու պայքարը ԺԵ. դարուն, Եդեսիան դժբախտութեան մատնեց, ինչպէս կը տեղեկանանք ընդարձակ յիշատակարանէ մը (Երուսաղէմի վանքին Թ. 1198, ձեռագիրին մէջ) ինչպէս նաև Հ. Մկրտիչ Վրդ. Պոտուրեանի մէջբերած 1426, 1449, 1480 և այլ թուականներով յիշատակարաններէն (Հանդէս Ամսօրեայ, էջ 656) կը հասկցուի։

Եդեսիոյ հայութիւնը, պատերազմական տեւական վիճակի մը մէջ ապրած է և հետեւաբար չէ կրցած պէտք եղածին պէս բարգաւաճիլ, հակառակ բնութենէն օժտուած ըլլալու իր առաւելութեան։

***

Հիւսիսային Միջագետքէն անցնելով՝ Եփրատի արևմտեան կողմը Հայ գաղութներ կը գտնենք ոչ միայն Եփրատի հովիտէն մինչեւ Ամանոս լեռնաշղթան տարածուող հողամասին, այլ Յորդանանի հովիտին և Սուրիոյ ու Լիբանանի ծովեզերքներուն վրայ, գրեթէ Միջագետքի մէջ կազմուած Հայ գաղութներուն հետ համանման բնոյթով և հանգամանքներով։

Այս գաղութներն ալ ապրած են նոյնանման պայմաններուն մէջ՝ ծոցը այդ խառնարանին, զոր կը ներկայացնէր այդ աշխարհամասը, ԺԱ. դարէն մինչեւ ԺԵ. դար։

***

*Ինչպէս արդէն տեսնուեցաւ, Կոմմագենէի և Եփրատացիներու երկիրները շատ հին ժամանակէն սկսեալ հայաբնակ եղած էին։*

*Նոյնպէս Հայերը շատ կանուխէն սկսած են յարաբերութիւն ունենալ Անտիոքի հետ և, ինչպէս տեսնուեցաւ, հոն Հայեր ապրած են Բիւզանդական և Արաբական տիրապետութեան շրջաններուն։*

«Հոս, հինցած Ասորի մշակոյթին եւ դէպի անկում դիմող Սարակինոս ու Բիւզանդեան քաղաքակրթութեանց սահմանագլուխին վրայ եւ իր բնակչութենէն մեծապէս պարպուած երկրամասի մը մէջ, Հայերը չէին խեղդուեր եւ կրնային ազգային յատկանիշները պահպանել եւ առանձին մշակոյթը զարգացնել:

Այսպէս, Ամանոսի եւ Արեւելեան Տաւրոսի երկու զառիթափները հոծ Հայութեամբ մը լեցուեցան: Հայ վանքեր, մեղուներու փեթակներուն չափ բազմաթիւ, նոյնքան ծրաշան եւ կենսալից, բեղուն եռանդով կը շէնցնէին Ուլնիոյ, Բերդուսի, Գերմանիկիոյ, Քեսունի եւ Տլուքի շրջանակները, զորս մեր պատմութիւնը ընդհանուր կոչումով «Սեաւ լերինք» կ'անուանէ եւ որ կը տարածուի Եփրատէն մինչեւ Ջահան գետ, Կարմիր Վանք, Շուղր, Ընկազուտ, Արեգին, Յիսուսեանց անապատ եւ ուրիշ մենաստաններ, Գրիգոր Վկայասէրի ջանքերով ու Փիլարտոսի պաշտպանութեամբ. կարճ միջոցի մէջ կրթական գործունէութեան մը կեդրոն դարձան», (*Եղիա Կ. Քասունի*, Պատմութիւն Անթէպի Հայոց, *Ա. հտ.* 217):

*Հմուտ պատմագէտը, Քասունի, կը շեշտէ թէ* «Ե. դարու սկիզբէն, գոնէ Հայ Արշակունեանց թագաւորութեան անկումէն սկսեալ, շարունական արտագաղթի հոսանք մը եղած է բուն Հայաստանէն դէպի հարաւ-արեւմուտք եւ այս հոսանքով Եփրատացւոց երկրին մէջ ալ կազմուած է հետզհետէ հոծ Հայութիւն մը, որ արդէն խաչակրութեանց սկսած ատենը այդ տեղի բնակչութեան մեծամասնութիւնը կազմող ու տիրող տարր դարձած էր» (Նոյն, 187). *Այս գաղթականութեան շատ հին ըլլալուն փաստերը կան, ինչպէս Դիոնեսիոս Բար Սալիբիի վկայութիւնը* (*տես վերը*, 402), *և մանաւանդ անոր մէկ շատ նշանակելի դիտողութիւնը թէ՝* Ասորիք հաստատուող... Հայոց իր օրով (ԺԲ. դարուն), գործածած խօսակցական լեզուն Վերին Հայաստանի լեզուին չէր նմանէր, ՈՐՈՎՀԵՏԵՒ ԱՍՈՐԻՔԻ ՏԵՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԷՆ ԱԶԴՈՒԱԾ ԷՐ» (Անդ, 189):

*Սակայն դժբախտաբար, տուեալներ չունինք այնքան հին ժամանակներուն կատարուած տեղափոխութիւններուն թուականը ճշդելու։ Շատ հաւանական է, որ զանազան հատուածներ տարբեր տարբեր ժամանակներու մէջ մեր Մայր-Հայրենիքէն հոն փոխադրուած են։ Այսպէս, օրինակի համար, Անթէպի Հայութիւնը Մարաշինին չափ հին չէ, ինչպէս կը հաստատէ Քասունի, անոնց բարբառին վրայ հիմնուած* (Նոյն)։

*Որոշ է միայն որ Ե. դարէն յետոյ՝ շարունակաբար՝ բոլոր դարերուն՝ գաղթած են Հայերը, զանգուած առ զանգուած, ինչպէս արդէն բացատրուած է։*

*ԺԱ. դարէն քիչ առաջ՝ տեսնուեցաւ որ Վասիլ Բ. Կայսրը, քրիստոնեայ տիրապետութեան տակ մնալու չհանդուրժող և մեկնող արաբներուն տեղ կը բերէր կը բնակեցնէր Հայ գաղթականներ, Սիւրիական Կեսարիա կամ Շայզար (հին Ապամէա), Որոնդես գետին վրայ (հմմտ. Քասունի,* Նոյն, 197)։



*Նոյնպէս ունինք կարեւոր վկայութիւն մը թէ՝* «այդ դարուն երբ Յոյները Արաբներէն կը գրաւէին Կապադովկիոյ, Փոքր Հայքի եւ Սիւրիոյ մէջ քաղաքներ, Մեծ Հայաստանէն կը քաշէին կը բերէին ժողովրդեան բազմութիւն մը» *և անոնց կու տային հողային ստացուածքներ* (Michel le Syrien III. 198)։

*Արդ կամաւոր կամ բռնադատեալ Հայ գաղթականները ինչպէս Կապադովկիոյ և Կիլիկիոյ՝ նոյնպէս և Հիւսիսային Սիւրիոյ մէջ կը տարածուին և միջոց մը Տաւրոսի լեռնային շրջանը կը դառնայ Հայկական հոծ բնակավայր մը* (*Արտաւազդ Արք.*, Սուրիա, 938—9)։

*Շատ հաւանական է, որ Ալփասլանի յարձակումներէն յետոյ, Փոքր Ասիա գաղթած էին հայութեան նոր հատուածները, Հայաստանի հիւսիսային և արեւելեան կողմերէն։*

*Սելջուկեան այս արշաւանքներուն պատճառով և Բիւզանդական նենգ քաղաքականութեան հետեւանքով, ԺԱ. դարու առաջին քառորդէն սկսած, բուն Հայաստանի Հայ բնակչութեան մէկ ստուար մասը գաղթեց Փոքր Ասիոյ հարաւ-արեւելեան երկիրները։*

*Անոնք, հիւսիս-արեւմտեան Միջագետքի, Կապադովկիոյ, Կիլիկիոյ և Հիւսիսային Ասորիքի մէջ աշխատեցան կազմել նոր հայրենիք մը։*

*Պաշտպանուելով Սելջուկ յարձակումներէն՝ Հայ գաղթականները այս երկիրներուն մէջ հիմնեցին կարգ մը անկախ կամ կէս-անկախ իշխանութիւններ, որոնց մէջ նշանաւոր դարձաւ Կիլիկիոյ Ռուբինեան իշխանութիւնը, որ իր գոյութիւնը պահեց մօտաւորապէս երեք հարիւր տարի, մինչեւ ԺԴ. դարուն վերջերը (հմմտ. Յ. Մանանդեան,* Քննական Տեսութիւն, *Գ. էջ* 62—73)։ *Բայց նախ քան Կիլիկիոյ Հայ իշխանութեան հիմնարկութիւնը, այս գաղթականները աւելի արեւելք բնակած են և ինչպէս կ'ըսէ Քասունի* (Պատմութիւն Անթէպի Հայոց. 198)՝ «Տաւրոսի եւ Ամանոսի ու Եփրատի եւ Միջերկրականի միջեւ տարածուող երկրամասը, Կոմմագենէ կամ Եփրատացիք, յատուկ իմաստով նոր հայրենիք մը եղած է Հայոց համար»:

*Եւ իրաւ ալ՝ տեսանք թէ այդ Հայերը, այդ նոր Հայաստանին մէջ կազմեցին Հայ զանազան իշխանութիւններ,* (*տես. վերը, էջ* 407—410 *և* 412—425), *որոնք կը կռթնէին այդ շրջանին մէջ ապրող Հայերուն վրայ։*

*Քասունի կ'ըսէ թէ* «ԺԱ. դարը Հայոց ազգին, իր գոյութեան գալէն ի վեր, հանդիպած ամենաաւեր ճգնաժամը բերաւ, գրեթէ զայն բնաջնջելու աստիճան, եւ այս մահացու ճգնաժամին մէկ գլխաւոր հետեւանքն եղաւ Ազգին հայրենակարօտ մէկ մասին ՆՈՐ ՀԱՅՐԵՆԻՔ մը հիմնելը Միջերկրականի ջուրերուն աւելի մօտ վայր մը» (*Քասունի*, Նոյն, 211)։

*Արդարեւ,* 1071*ին Մանազկերտի ճակատագրական պարտութենէն ետք՝ Հայերը իրենք զիրենք անպաշտպան գտնելով, զանգուածօրէն և աւելի մեծ չափերով գաղթեցին և եկան հաստատուիլ Ամանոսի և Տաւրոսի լեռնահանգոյցին խորշերուն մէջ։ Փիլարտոս սրատեսութիւնը և իմաստութիւնը ունեցաւ*

թոյլ չտալու որ արտագաղթը պատահէր աննպատակ և ցիրուցան, այլ խտացուց և կեդրոնացուց գլխաւորապէս Իսոսի ծովածոցին բոլորտիքը, ուր այնուհետեւ Հայոց Ծոց կոչուեցաւ (հմմտ. Քասունի, նոյն, 217)

Այս գնահատելի ձեռնարկը, որուն վրայ արդէն խօսուած է (տես. վերը, 407–8 եւայլն), պատճառ եղաւ որ հոծ հայութիւն մը հաւաքուի հոն և դժբախտ պարագաներու բերմամբ երբ Փիլարտոսի գեղեցիկ ծրագիրը վիժեցաւ այդտեղի Հայերէն մաս մը անցաւ Կիլիկիա և միւս մասն ալ՝ Լատին Խաչակիրներու հիմնած իշխանութիւններու երկիրները։

Դժբախտաբար Հայ իշխանութիւնները չապրեցան Սելջուկ բարբարոսներու արշաւանքին հետեւանքով, սակայն Հայ բնակչութիւնը հաստատուն մնաց այդ շրջանակին մէջ, ուր այնքան մեծ թիւ ունէին Հայերը և կը նկատուէին երկիրին բնիկները. Ասորիները կը մնային փոքրամասնութեան մէջ և կարծես թէ օտարական կը նկատուէին։

Հայերը՝ ուրեմն՝ այս շրջաններուն մէջ արտասովոր կերպով աճած էին և ասոր համար էր որ կրցած՝ իշխել իրենց բնակակից և երկիրին բնիկ տարրերուն վրայ։

Հայ տարրը ոչ միայն յենարանը եղաւ Եփրատացւոց, Կոմմագենէի և Հիւսիսային Սուրիոյ և Միջագետքի Հայ իշխաններուն, այլ նաև Խաչակիրներու հիմնած իշխանութիւններուն, վասնզի այս վերջիններուն մարդոց թիւը անբաւական էր խոշոր գաղութներ կազմելու և անոնց կռթնելու։ Եւ որովհետեւ Լատին և Յոյն յարաբերութիւնները լաւ չէին՝ վստահութիւն չունենալով իրարու, Լատին իշխանները աշխատած են սիրաշահիլ Հայերը և Ասորիները, որոնք շատ կարեւոր դեր կատարեցին Խաչակիր իշխաններու հաստատած դքսութիւններուն մէջ։

Լատինները՝ Յոյներուն դէմ կը հանէին Հայերը, վասնզի գիտէին որ ասոնք չէին սիրեր Յոյները քանի որ անոնք կրօնական հալածանք կը գործադրէին, և Կիլիկիոյ լեռնային մասերուն մէջ կազմուած Հայ իշխանութիւնները ջնջելու կ'աշխատէին։

Այսպէս, հասարակաց շահեր ունէին Լատինները եւ Հայերը այդ շրջանին մէջ։

Հաւանօրէն Լատիններէն քաջալերուած՝ Հայերը նախընտրած են այդ քրիստոնեայ տիրապետութեան ենթարկուած վայրերը հաստատուիլ մինչեւ որ Լատիններն ալ ցոյց տալ սկսած են Յոյներուն անհանդուրժողութիւնը՝ կրօնական խնդիրներ յարուցանելով։

Դժբախտաբար այնքան խառնակ է Կոմմագենէի եւ Եփրատացիներու, ինչպէս եւ Հիւսիսային Սուրիոյ պատմութիւնը եւ այնքան քիչ են Հայոց այդ շրջանին մէջ ապրած կեանքին վրայ մեր ունեցած ծանօթութիւնները, եւ իրենց տեղափոխութիւններուն վրայ մեր տեղեկութիւնները այնքան հազուադէպօրէն յիշատակուած են, որ կարելի չէ տալ հայկական այս գաղութներուն շարայարեալ պատմութիւնը եւ ներկայացնել անոնց դերը՝ այդ քաոսին մէջ, զոր այդ հողամասը կը ներկայացնէր Սելջուկ տիրապետութենէն յետոյ, Խաչակիրներու։ Մոնկոլներու եւ Մեմլուքներու ժամանակաշրջանին։



Ինչ որ ակներեւ է սա է՝ որ Հայերը ապրած են այդ շրջանի բոլոր քաղաքներուն եւ գիւղերուն մէջ։

Բազմաթիւ են քաղաքներ եւ գիւղեր, զոր նոյնիսկ Հայերը հիմնած էին, ինչպէս կը հաստատուի իրենց անուններէն եւ ժողովուրդին բերանը պահուած աւանդութիւններուն մէջ (1)։

Ինչ որ հոս պէտք ուզէինք շեշտել այն է՝ որ Կոմմագենէի եւ Եփրատացւոց ոչ այնքան տարածուն հողաշերտին վրայ հոծ Հայութիւն մը ապրած է, նոյնիսկ պատրանքը ունենալով թէ հոն պէտք կարենար ունենալ իր հայկական անկախ իշխանութիւնը, ինչպէս նաեւ իր հոգեւոր նուիրապետութեան աթոռը, Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը հոն հաստատելով։

Հոծ հայութիւն մը հոն՝ ոչ միայն կը լեցնէր քաղաքները, այլ և գիւղերը, ուր ապահովաբար անոնք իբրեւ շինական, երկրագործութեամբ կ'զբաղէին և երկիրին հաստատուն բնակչութիւնը կը ներկայացնէին։

Այս եզրակացութեան կը բերեն մեզ այն ցանուցրիւ յիշատակութիւնները, որոնք պատահաբար գրուեր են մեր պատմագիրներուն եւ յիշատակագիրներուն կողմէ։

Դժբախտաբար չունինք յատուկ վաւերագրութիւններ, որոնք իւրաքանչիւր քաղաքի եւ գիւղի մէջ Հայոց ե՛րբ հաստատուած ըլլալը ցոյց տայ։ Լեզուական ցուցմունքներ եւ ազգագրական հատ ու կտոր տեղեկութիւններ աղօտ լոյս մը կը սփռեն անոնց նախնական բնակավայրին վրայ, առանց ճըշդելու անոնց տեղափոխութեան ժամանակամիջոցը։

Դժբախտաբար նաեւ շատ ճոխ չեն՝ հնութեանց տեսակէտէն՝ եւ քիչ պրպտուած այս վայրերը եւ այսօր գրեթէ անկարելի դարձած է նոր ուսումնասիրութիւններ կատարելը արդի պայմաններուն հետեւանքով։

Անհերքելին եւ վաւերականը՝ հոծ Հայ բնակչութեան մը գոյութիւնն է այդ շրջանակին մէջ, գաղթային պարբերական ալիքներով, հոն եկած հաստատուած Հայաստանէն, եւ հոն, ինչպէս տեսնուեցաւ, կարողացած ստեղծել իր գոյութիւնը ապահովող կացութիւն մը, զոր կարելի եղած չէ տեւականացնել բարբարոս ժողովուրդներու յաջորդական արշաւանքներուն պատճառով։

Սակայն անոնք հայկական տոկունութեամբ ապրած են յաջորդ դարերուն եւ պահած իրենց գոյութիւնը։ Թէեւ անուրանալի է որ ժամանակի ընթացքին շատ նուազած են եւ նոյնիսկ անհետացած. իրենց բնակավայրերուն աւերակները միայն մնացած են եւ կամ անոնց անունները գրաւոր քանի մը

---

(1) Այս մասին շատ արժէքաւոր աշխատութիւններ են Վեր. Ե. Քասունիի, Գրիգոր Հ. Գալուստեանի **Մարաշ կամ Գերմանիկ եւ Հերոս Զէյթուն** (տպ. Նիւ-Եորք 1934) հատորին մէջ **Մարաշի Պատմութիւնը**, 12 մասերէ բաղկացեալ (էջ 193—219) եւ Գէորգ Ա. Սարաֆեանի **Պատմութիւն Անթէպի Հայոց** երկհատոր գործին **Անթէպի եւ շրջանակին պատմութիւնը** գլուխը, մանաւանդ անոր 187—310 էջերը, որոնք շատ գնահատելի աշխատութիւններ են եւ հնարաւորութեան սահմանին մէջ կը լուսաբանեն այդ շրջանին Հայութեան ծագման հարցը:

Ջերմապէս փափաքելի է որ հետաքրքիր բնիկները կարդային այս էջերը՝ գաղափար մը կազմելու համար թէ Հայերը այդ տեղերը ի՛նչպէս հասած եւ ի՛նչպէս ապրած են:

*վաւերագիրներու մէջ հասած են մեզի։* (1) *Եւ ինչպէս «Տէրզօրցի» ստորագրութեամբ հետախոյզ մը կը գրէ* (*տես.* Եփրատ, *Ժ. տարի, Թ.* 999), *Հայ գաղթականները միշտ յաւելում կրած են նորեկներով, բայց միշտ ալ նուազած են։* «Շատ մը Հայերու բնակած տեղերուն ներկայիս անունները կը մնան, բայց անոնց միջոցաւ ետ չենք կրնար ճշդել քանակը, նամանաւանդ երբ ընկատենք թէ Ասորական շատ ու շատ քաղաքներ անհետացան, աւերակներու վերածուեցան, Սուրիական շատ հռչակաւոր վայրեր լքուեցան, աւերուեցան եւ այսպէս հայ գաղթականներ ետ կորսուեցան ընդհուպ:

Այսպէս կորսուեցաւ Նփրկերտ Սուրիոյ քաղաքը, որուն մէջ ըստ պատմագիրին (Ստեփանոս Ասողիկ), «Մինչեւ ոչ մնայ Տաճիկք ի Նփրկերտ, այլ Հայք եւ Ասորիք բնակէին նմա»։ ... Անկասկած Սուրիան, Միջին դարուն ներկայ հայութենէն շատ ու շատ ստուար հայութեան մը ապաստանարան եղած է, որոնց միայն այսօր ողբը կրնանք ունկնդրել, աւերակաց վրայէն փչող ամրան քամիին, գարնան սիւքին եւ ամառուան հովին մէջէն... Երբ կ'այցելենք անոնց: Ուրեմն Սուրիան՝ սկսած հին օրերէն՝ եղած է հայկական ամենամեծ գաղթականութիւններէն մին, որ ունեցած է փայլուն ու փառաւոր օրեր մը եւս, ստեղծելով նոյնիսկ Միջին դարու արժաքէ վերածննունդը» *որ Շուղրի գոյութեամբ կ'ապացուցուի։*

«Որոնդէսի (Նահր էլ Ասի) երկայնքին կը հանդիպինք աւերակներու եւ հայկական գիւղերու, որոնք շատ հին օրերու դրոշմը կը կրեն» (*Տէրզօրցի*, Եփրատ, *Թ.* 999)։

***

*Կոմմագենէի եւ Եփրատացւոց մէջ հաստատուած Հայերը, իրենց իշխանութիւնները երբ յափշտակուեցան, եւ մնացին Իսլամ հրոսներու դէմ անպաշտպան, իջան աւելի հարաւ, դէպի Որոնդէսի հովիտը, մանաւանդ Անտիոքի շրջակայքը, ուր Լատին դքսութիւն մը հաստատուած էր Խաչակիրներու կողմէ։ Հոն Հայերը կը կազմէին բնակչութեան մէկ շատ կարեւոր մասը։*

*Ասոր ապացոյցը կը տեսնուի նոյնիսկ Բիւզանդացիներու կողմէ Անտիոքի վերագրաւումին ատեն, վասնզի հակառակ անոր որ Յոյները գիտէին թէ Հայերը շատ չէին սիրեր զիրենք, իրենց իշխանութիւնը Անտիոքի մէջ ապահովելու համար, Հայերուն վրայ յոյս դրին։*

*Այսպէս, Խաչակիրներու օգնութեամբ Բիւզանդական կայսրութիւնը ամրապնդելու ծրագիրը երբ վիժեցաւ եւ Լատինները Բիւզանդիոնի դէմ ալ դաւեցին, յարաբերութիւնները թշնամական երեւոյթ առին։*

*Յովհաննէս Բ. Կոմնէն* (1118—1143), *նոյնիսկ գրաւեց Անտիոքը Լատիններէն եւ խորհեցաւ վերահաստատել Անտիոքի հին դքսութիւնը եւ անոր կառավարութիւնը վստահիլ իր Մանուէլ որդիին։ Բայց որովհետեւ լատինական օգնութեան վրայ յոյս չէր կրնար դնել, նախընտրեց յենուլ Սուրիացիներու և ՀԱՅԵՐու վրայ, որոնք կը կազմէին բնիկ ժողովուրդին հիմը* (Nikétas Choriates, 52 *եւ* 56)։

*Անտիոքի դիրքը՝ իրապէս անհրաժեշտ էր այն ծրագիրին համար զոր կայսրը կ'ուզէր իրականացնել։ Որքան որ կրնայ մակաբերուիլ, յոյն քրոնիկագիրներու պատմութենէն, Յովհաննէս Կոմնէն ծրագրած էր վերահաստատել կայսերական հեղինակութիւնը Եփրատի հովիտին վրայ եւ այդ նպատակին հասնելու համար, բնիկ ժողովուրդին — Հայերու եւ Սուրիացիներու աջակցութեան կը վստահէր։* (*Տմտ.* F. Chalandon, Jean II. Comnène (1118—1143) et Manuel I. Comnène (1143—1180, *էջ* 185)։

*Յովհաննէս Կոմնէն կը թուի թէ հետամուտ էր օգտագործելու Սուրիացիներու եւ Հայերու ատելութիւնը ընդդէմ Լատին եկեղեցիին* (Նոյն, *էջ* 189)։

*Ինչ ինչ երեւոյթներ ցոյց կու տան թէ Կոմնենեան այս կայսրը նոյնիսկ կը մտածէր յաղթական յառաջանալ մինչեւ Տիգրիս* (Նոյն, 185)։

*Բայց Բիւզանդական կայսեր այս մեծ ծրագիրը ձախողեցաւ եւ Անտիոք վերստին Լատին տիրապետութեան ենթարկուեցաւ։*

*Հայերը՝ Անտիոքի Լատին իշխանութեան հետ, որ դրացի էր Կիլիկիոյ Հայոց թագաւորութեան, շատ սերտ յարաբերութիւններ ունեցած են եւ իբրեւ զինակից կամ նման շահեր ունեցող իշխանութիւններ՝ քաղաքական միեւնոյն ուղղութեամբ գործած են։ Օրինակ, ինչպէս յիշուեցաւ, Հեթում Ա.ի հետ Անտիոքի Պեմունտ Զ. Դուքսը, որ ամուսնացած էր Հեթումի Սիպիլ աղջկան հետ, ինքն ալ իր հպատակութիւնը յայտնած է խոհականօրէն Մոնկոլներու եւ ինքն ալ իր բանակով Հեթում Ա.ի պէս մասնակցած է Մոնկոլներու դէպի Սուրիա եւ Պաղեստին ըրած արշաւանքին* (*տես. վերը,* 111)։

*Այս երկու հասարակաց շահերով իրարու կապուած իշխանութիւններու վեհապետական տուներուն միջեւ խնամութիւններ հաստատուած են եւ նոյնիսկ եղած է ժամանակ որ այս երկու իշխանութիւնները միաձուլելու ձեռնարկներ եղած են* (1)։

*Բայց ամէն ատեն բարեկամական չեն եղած այդ յարաբերութիւնները։ Կիլիկիոյ Հայ թագաւորները քանիցս գրաւած են Անտիոքի Լատին իշխանու*

---

(1) Մարաշի շրջակայքը գտնուած հայանուն գիւղերը, օրինակի համար փաստ են թէ այդ շրջանակին մէջ Հայերը երբեմն շատ աւելի բազմամարդ էին քան յաջորդ դարերուն: Այսպէս հոն կը յիշուէր **Էնկիզէկ** (= Ընկուզէկ լեռ. կամ Ընկուզուտ վանք) **Պերբէզ** (= Բերսու), **Ֆէնկ** (= Վանք) եւ այլ այսպիսի անուններով վայրեր, որոնք Հայ բնակիչներ չունէին: Նոյնպէս Այնթէպի շուրջ կը գտնուէին գիւղեր, որոնք Օսմ. տիրապետութեան տակ կամ աւելի առաջ դատարկացած էին իրենց բնակիչներէն (տես. Պատմ. **Անթէպի**, 74—82): Նազար, (**Նոյն**, էջ 27), իր կարգին կը յիշէ Այնթէպի շրջակայքը հայանուն գիւղեր, ինչպէս **Ներենկին** = Կարենկան. **Մազմախոր** = Բազմախոռ, **Պէտերէնա** = Պետրոսի գիւղ, ինչպէս նաեւ **Քիլիսէնիք, Ճաղուս, Վարդանըս** եւայլն: Նոյնպէս **Սանուր** գետակին վերջին վանքը կրնայ մեկնուիլ ջուրով (տես. **Նոյն**, էջ 27): Յիշենք նաեւ Այնթէպի մօտ **Խորոզ Դալարըն** (նոյնըն **Կիւրիս** բերդաքաղաքը Քիլիսի մօտ, Աժբին գիւղաքաղաքին հիւսիս-արեւմուտքը **Մարաթա** կամ **Այգեկ** գիւղը, ծննդավայր առակագիր Վարդան Այգեկցիի (**Նոյն**, 263—265):

(1) Ռընէ Կռուսէ իր **Խաչակիրներու Պատմութեան** մէջ, գլուխներ յատկացուցած է Անտիոք-Կիլիկիա յարաբերութեանց: Այդ հատուածները թարգմանուած են Ոսկան Մարտիկեանէն (տես. **Արեւ**, թ. 6127, 6133 եւայլն):

*թեան հողերը, ինչպէս օրինակի համար 1276ին Լեւոն Գ. թագաւորի* (1270—1280) *ատեն, երբ Ապաղա Խանին իբրեւ զինակից՝ Հայոց թագաւորը Մոնկոլներուն կը գործակցէր։*

*Նոյն ձեւով Հեթում Բ.* (1289—1307) 1299*ին, իբրեւ Ղազան Խանի զինակիցը, գրաւեց Անտիոքը ու Հայ-Մոնկոլ բանակները միասին կռուեցան Մեմլուքներու դէմ, Սուրիան և Պաղեստինը փրկելու համար անոնց տիրապետութենէն։ Սակայն դժբախտաբար* 1303*ին Հայ-Մոնկոլ բանակները Դամասկոսի մօտ Կապակելա լեռան մօտ պարտուեցան և Հայերը վերջնապէս կորսնցուցին Անտիոքը, որուն բնակչութեան մէջ կարեւոր թիւ մը ունէին անժխտելիօրէն։*

*Մոնկոլներն ալ վանուեցան Սուրիայէն և Մեմլուքները դէմ առ դէմ եկան Լատին իշխաններու հետ, զորս հեռացուցին հետզհետէ բովանդակ Ասորիքէն, Սուրիայէն, Միջագետքէն և Պաղեստինէն։*

*Մեմլուքները չբաւականացան քրիստոնեայ իշխանութիւններու դէմ կռուելով, այլ և պատերազմեցան Սուրիոյ մահմետական իշխողներուն դէմ։*

*Անոնք* 1250*ին Դամասկոսի և* 1260*ին Հալէպի Սուլթանութիւններուն վերջ տուին։ Ապա* 1289*ին ջնջեցին Տրիպոլիսի կոմսութիւնը և Անտիոքի իշխանապետութիւնը և* 1291*ին գրաւեցին Երուսաղէմի թագաւորութեան վերջին ամրոցները (Աքիա, Սուր, Սայտա, Պէյրութ) և վերջ տուին Լատինական տիրապետութեան։*

*Այսպէս, Սուրիա և Պաղեստին ամբողջութեամբ ենթարկուեցան Մահմետականներու տիրապետութեան։*

1375*ին ջնջուեցաւ նաև Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը, որ եղաւ Արեւելքի վերջին քրիստոնեայ պետութիւնը՝ Խաչակիրներու ժամանակէն կազմակերպուած։*

*ԺԵ. դարուն սկսաւ Սուրիոյ և Միջագետքի համար Մահմետական տիրապետութեան նոր շրջան մը, Ու կրկին արիւնահեղութեանց, կոտորածներու և աւարառութեան վայր դարձան անոնք, վասնզի Մեմլուքները չարունակ կը կռուէին ոչ միայն քրիստոնեաներու, այլ և իրենց կրօնակիցներուն դէմ, Սուրիոյ տիրապետութեան համար, զոր վերջապէս ձեռք բերին։*

*Այն Հայերը, որոնք հաստատուած էին Լատին իշխանութիւններուն մէջ և օգտուելով քրիստոնեայ տիրապետութենէն՝ որոշ չափով կազմած էին բարգաւաճ գաղութներ, մեծ մասամբ անչքացան և պակսեցան։ Մեմլուքները իրենց պարբերական յարձակումներուն ժամանակ՝ Կիլիկիայէն կը վերցնէին մեծ թիւով գերիներ։ Հակառակ անոր որ այս գերիները բոլորն ալ Եգիպտոս չեն տարուած, այլ անոնց մէկ մասը բերուած են Սուրիա, սակայն և այնպէս Հայերը չեն կրցած բարգաւաճման հասնիլ հոս։*

*Ասոնցմէ մէկ կարեւոր մասը գաղթած է այլուր, հեռանալով այդ խռովեալ երկիրէն կա՛մ հարկերու ծանրութենէն, կա՛մ պատերազմներէն և կա՛մ սրածութիւններէն վախնալով, որոնք այնքան սովորական էին՝ իշխող տարրին մոլեռանդութեան պատճառով։*

*Նոյն այս պատճառով Սուրիա հաստատուած Հայերէն մաս մըն ալ կրօ-*



*նափոխութեամբ իր հանգիստը ապահովել կարծեց և իսլամացաւ, ինչպէս կ'ենթադրուի ինչ ինչ տուեալներու վրայ հիմնուած, թէև վաւերագրեալ փաստեր չունինք այս մասին։*

*Բայց պարագաներ կան, որոնք չեն կրնար մեկնուիլ առանց այս ենթադրութեան։*

*Անժխտելի իրողութիւնն էր որ՝ ինչպէս Կոմմագենէ և Եփրատացւոց երկիրը և Ուռհայաստան լեցուն էին Հայերով, նոյնիսկ ԺԱ. դարէն առաջ, նոյնպէս Հիւսիսային Սուրիա ունեցած էր բազմահայ բնակչութիւն, մանաւանդ Խաչակրութեանց շրջանին, երբ այդ տեղերը քրիստոնեայ տիրապետութեան տակ էր։*

*Շրջանին մեծագոյն կեդրոնը, ինչպէս տեսնուեցաւ, Անտիոք պատմական քաղաքն էր, ուր կանուխէն Հայեր բնակած էին և այնքան շատ՝ որ* 972*ին Խաչիկ Ա. Կաթողիկոս, Անտիոքի համար եպիսկոպոս մը ձեռնադրած էր։*

*Այս Եպիսկոպոսութիւնը շարունակուած է հաւանօրէն մինչեւ Լատին դքսութեան վախճանը, վասնզի կը յիշուին* 1103*ին՝ Կիպրիանոս,* 1179*ին՝ Գրիգորիս և* 1199*ին՝ Յովսէփ և* 1223—1231*ին՝ Միքայէլ Անտիոքի եպիսկոպոսները և այլեւս ուրիշներ չեն յիշուիր։*

*Վաղեմի հայաբնակութեան մը կեդրոնն էր Յեսուանց վանքը, որուն հնագոյն յիշատակութեան կը հանդիպինք* 1033—1058 *թուականներուն։ (Տես.* Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի Մխիթարեանց Վանքի, էջ 1013)։

*Անտիոքի առաջնորդներուն աթոռանիստ այս վանքը, որ նաև ուսումնավայր մըն էր, «հռչակաւոր» և «մեծանուն» անապատ կոչուած է։*

*Անտիոքի մէջ Հայ ստուարաթիւ բնակչութիւն մը պէտք էր գոյութիւն ունեցած ըլլար, որպէսզի ուսումնավայր վանք մը ստեղծուէր։*

*Հայերը կ'երեւի Անտիոքի մէջ Բիւզանդական տիրապետութեան տակ հանգիստ չեն գտած և հալածուած են Յոյներէն՝ կրօնական պատճառներով և հետեւաբար դժգոհ էին։*

*Խաչակիրները, որոնք Անտիոքը գրաւելու համար, պաշարեցին քաղաքը՝* 1097 *Հոկտ.* 28*էն մինչեւ* 1098 *Յունիս* 3, *պիտի չկրնային գրաւել զայն, եթէ Պիւռոս անուն հայ մը զայն չմատնէր Խաչակիրներուն (Գարեգին Ա. Կաթողիկոս,* Յիշատակարանք Ձեռագրաց, *Ա.* 262)։

*Ուրեմն Հայեր կային հոն և դեր կը կատարէին։ Անտիոքի մէջ դքսութեան մը հաստատութենէն յետոյ Հայերը աւելի աճեցան այդ կողմերը և այս պատճառով հաստատուեցան նաև Անտիոքի իշխանութեան սահմաններուն մէջ։ Ուրիշ Հայ եպիսկոպոսներ ալ կային անկասկած, իբրև հետեւանք Հայոց Թըւական աճումին և անոնց հոգեւոր պէտքերուն գոհացում տալու համար։*

*Այսպէս, բացի ԱՆՏԻՈՔԷՆ, որ Ժ. դարէն սկսեալ իր յատուկ եպիսկոպոսը ունեցած էր, ԼԱՒՈԴԻԿԷ* (1) *և ԱՊԱՄԻԱ* (2) *ալ ունէին իրենց յատուկ*

---

(1) 1179ին այս քաղաքին առաջնորդն էր Սարգիս Եպս.։

(2) Նոյնպէս 1179ին կը յիշուի Ապամիոյ Կոստանդին Եպսը,։ Չշփոթելու համար Միջագետքի Ապամիայի հետ, որ Եփրատի մօտն էր (այժմ Պիրէճիկ), յայտնապէս նշանակուած է **«Ապամիա Ասորւոց»**, որ կը համապատասխանէ Համսի։

եպիսկոպոսները, առանց նկատի ունենալու 1144ին յիշուած Ասորւոց Աթանաս եպիսկոպոսը (Սիսուան, 52), որուն աթոռանիստ վայրը ճշդել կարելի չէ եղած, և Ռապանի կամ Կապանի եպիսկոպոսը (1), որուն նստոցը որոշապէս ճշդուած չէ։

Այս շրջանակները, ինչպէս տեսնուեցաւ, վաղուց հայաբնակ եղած էին և ԺԱ. ու ԺԲ. դարերուն և աւելի ետքը հոն Հայ բնակչութիւնը շատ ստուարացած էր, բայց չէր կրցած իր գոյութիւնը պահել և ժամանակին հետ անչքացած էր, ապա եղած էին ատեններ, ուր մինչեւ իսկ շատ աննշան թիւի մը վերածուած էր։

Անտիոքի դքսութեան ենթակայ վայրերու Հայերէն անունք, որոնք լեռնային գիրքերու վրայ կը գտնուէին, և երկրագործութեամբ կ'զբաղէին, կրցած էին պահել իրենց գոյութիւնը Անտիոքի անչքացումէն ետքն ալ, այնպէս որ մինչեւ մեր օրերը իրենց գոյութիւնը պահած են Սուէյտիոյ հինգ գիւղերը, Պիթիաս (2) (հին Պէսիթէա), Հաճի Հապիպլի, Եողուն Օլուխ, Խըտըրպէկ և Քէպուսի, որոնք իրենց առանձնայատուկ գաւառաբարբառը ունէին։

Նոյնպէս Անտիոքի Ճիսրի Շուղուր գաւառին մէջ մինչեւ վերջերս կային երկու արաբախօս գիւղեր՝ 1. Կընիսեա (Ղընեայ) և 2. Եագուպի և Օրտուի գաւառին մէջ՝ Քեսապ (= Կասիոս)։

Ասոնք որոշ չենք գիտեր թէ ո՞ր դարուն հաստատուած են, սակայն հաւանօրէն կը պատկանին ԺԱ.—ԺԲ. դարերու ժամանակամիջոցին, կամ ըստ երեւոյթին, աւելի ԺԴ. և ԺԵ. դարերուն։

Իսկ վաւերագրեալ լրողութիւններ են ծովեզերեայ Ալեքսանտրէթ և Փայաս քաղաքներու հայաբնակ եղած ըլլալը այդ չորս դարերու ընթացքին։

Այսպէս, 1099ին գրուած է Աւետարան մը «Ահարովն կրաւնաւոր»էն «ի մայրաքաղաքն Աղեքսանդրու, ընդ հովանեաւ Յովհաննես Աւետարանչի», որ ապահովաբար արդի Իսկէնտէրունը պիտի ըլլայ։

Իր Յովհաննէս անուն եղբայրը, Արաբներէն նահատակուած, այս Ահարոնը մանրամասնօրէն կը պատմէ Անտիոքի գրաւումը Խաչակիրներէն (տես. Յիշատակարանք Ձեռագրաց, Ա. 263—266), ինչ որ հաւաստիք մը կրնայ համարուիլ որ Աղեքսանդրու քաղաքը մեզի ծանօթ Ալեքսանտրէթն է, Անտիոքի մօտ։

Գալով Փայաս կամ Պայաս քաղաքին, որ հին Ճկեր գաւառին կեդրոնն էր, ապահովաբար այդ դարերուն հայաբնակ վայր մըն էր, վասնզի հոն գրուած է Մաշթոց մը «ի թուականութեան Հայոց ՈԿԵ (= 1216) ի կաթողիկոսութեան Յովհաննիսի, եւ ի ժամանակս Քրիստոսապսակ թագաւորին Հայոց Լեւոնի, ի ծովեզերս Ովկիանոսի, ի գաւառս որ Ճկեր անուանի, ի գեաւ-

---

(1) 1269էն առաջ յիշուած է Կոստանդին Եպս.ը (տես. Տրդատ Եպս. Պալեան, **Ցուցակ Հայերէն Ձեռագրաց ի Թուրքիա**, 45)։

(2) Պիթիաս կամ Բեթիաս, Ներսէս Լամբրոնացի իր **Մեկնութիւն Յայտնութեան** թարգմանութեան յիշատակարանին մէջ կը յիշէ իբր «Հոռոմոց վանք» «արտաքոյ քաղաքին Անտիոքի «ի սուրբ լեառնն, որ ի հիւսիսոյ կողմ անդր ի մի վանօրէիցն Հոռոմոց», ուր գրուած է յունարէն բնագիրը այս գործին 1179ին (Գար. հայ., **Յիշատակարանք Ձեռագրաց** էջ 474)։ Հայերը հոն հաստատուած պէտք է ըլլան աւելի ուշ բայց չենք գիտեր թէ ե՞րբ։



ղքս որ Պայաս կոչի, ընդ հովանեաւ ամենաօրհնեալ մաւր Լուսոյ Աստուածածնի եւ այլ Սրբոցն, յամս յորում յաղթող թագաւորն Հայոց Լեւոն եառ զԱնտիոք զմեծ մայրաքաղաք Ասորւոց եւ այլն» (տես. Բանասէր, 1905, էջ 277)։

Անտիոքի իսլամ տիրապետութեան ենթարկուելէն վերջ, երբ այլեւս կորսնցուց իր երբեմնի կարեւորութիւնը, իր տեղը գրաւեց դրացի Հալէպը, որուն նաև ե՞րբ հայաբնակ եղած ըլլալուն մասին որոշ տուեալ մը չունինք։

Հալէպ իսլամական տիրապետութեան տակ էր որ ցամաքային վաճառականութեան մեծ կեդրոններէն մէկը դարձաւ և Հայերը միայն անկէ վերջն է որ հաստատուեցան հոն, թերեւս նոյնիսկ Կիլիկեան Հայ թագաւորութեան Մոնկոլներու հետ իրենց մշակած յարաբերութեանց պատճառով, վասնզի 1259ին երբ Հուլաղու խանին եղբայրը, Մանկու Խան, Հալէպ մտաւ, ինքն ալ իր հետեւորդներով հոն եկաւ և հոն մնաց բաւական երկար ատեն։ Արտաւազդ Արքեպ. կը կարծէ թէ աւելի կանուխ, շատ փոքրաթիւ Հայեր գտնուած են Հալէպ և Հեթում Ա.ի հետ, Հալէպի փոքրաթիւ Հայերն ալ մեկնած են։ Ասիկա ենթադրութիւն մըն է, բայց շատ ճշմարտանման, քանի որ Անտիոքի շուրջ գտնուած բոլոր վայրերը առհասարակ Հայերով լեցուած էին և նոյնիսկ ամէնէն աննշանները հայաբնակ եղած էին։

Այսպէս, Անտիոքի և Հալէպի միջեւ գտնուող Հարիմի (Համաթ՝ ըստ Յ. Մանանդեանի) քաղաքը ունէր Հայ բնակիչներ, ինչպէս կը հաստատուի։ Հուլաղու այս քաղաքին բնակիչներուն առաջարկեց անձնատուր ըլլալ եթէ կ'ուզեն իրենց կեանքը ազատել, սակայն պահակազօրքը մերժեց յանձնուիլ պահանջելով որ անոր խօսքին իբրեւ երաշխաւորութիւն իսլամ իշխան մը, այսինքն Հալէպի միջնաբերդին հին հրամանատար Ֆախրէտտինն ալ խոստում տայ։ Հուլաղու կատղեցաւ իրեն եղած նախատինքէն և անոնց անձնատուր ըլլալէն յետոյ՝ ջարդել տուաւ ամբողջ պահակազօրքը, բացի Հայ ոսկերիչէ մը (René Grousset, Խաչակրաց Պատմութիւն)։

Հալէպ՝ Ասորիքի մէջ Անտիոքէն յետոյ դարձաւ մեծ կեդրոն մը, ուր նախ շատ աննշան էր Հայերու թիւը, սակայն ետքը աճեցաւ։ Հեթում Ա.ի յաջորդներուն ատեն՝ երբ Կիլիկիոյ Հայերը Հալէպի հետ յարաբերութիւններ ունեցան, մանաւանդ իբրեւ առեւտրական կեդրոն մը։ (Պատմութիւն Հալէպի Հայոց, Գ., էջ 5)։

«Այս յարաբերութիւններն էին որ ի վերջոյ, ԺԴ. դարու առաջին կիսուն, Հալէպը պիտի վերածէին հայկական կեդրոնի մը, եկեղեցական եւ ազգային ներքին կազմակերպութեամբ» (նոյն, էջ 5)։

Այսպիսի վաւերագիր մըն է 1329 թուականով Հալէպի մէջ գրուած այն ձեռագիրը, որ կը հաստատէ Հալէպի մէջ Հայ գաղութի մը գոյութիւնը՝ իր եկեղեցիովը (Արտաւազդ Արքեպս., Պատմ. Հալէպի Հայոց, Գ. 25—26 և Հալէպի Ձեռագրաց Ցուցակ, էջ 214, հմմտ. նաև Հ. Ներսէս Վրդ. Ակինեան, ՀԱ. 1935, էջ 442 և 1950, էջ 503)։

Հաւանօրէն եթէ Լէնկ Թիմուրի արշաւանքը տակն ու վրայ չընէր Սուրիան, Հայերը աւելի շուտով կազմակերպուած և բարգաւաճած պիտի ըլլային, բայց դժբախտաբար արիւնալի դէպքեր ուշացուցին այդ զարգացումը

մինչեւ ԺԵ. դարուն կէսերը, վասնզի այդ թուականէն յետոյ է որ Հայերը կ'ունենան իրենց համար թէ' տանուտէրներ, ինչպէս 1400ին յիշուած Հալէպի Հայոց տանուտէր Թաւաքալը, և կրօնական առաջնորդները, իրենց ձեռքին տակ ունենալով դատաւորներ և գրչագրական դպրոց։

Իսկ Հալէպէն աւելի հարաւ, Սուրիոյ մէջ, Հայերը տարածուած են՝ մասնաւորապէս հաստատուելով Յորդանանի հովիտին գլխաւոր քաղաքներուն՝ ինչպէս Համայի, Հոմսի և Դամասկոսի մէջ, և մանաւանդ Սուրիական ծովեզերքներուն վրայ գտնուող վաճառաշահ կեդրոններուն մէջ, Լաթաքիայէն զատ նաև Տրիպոլիսի կամ Թրիպոլիի, Պէյրութի, Սայտային, Սուրի և Աքիայի մէջ։ Ինչպէս Հալէպ առևտրական մեծ կեդրոն մըն է և ցամաքային առևտուրի մթերանոց մը, նոյնպէս և Դամասկոս իսլամական մեծ քաղաք մըն էր, որ ունէր իրեն յատուկ ապրանքներու ծաւալուն առևտուր, ինչպէս նաև Ասիական կարգ մը ապրանքներու մթերման կայան էր, (Sir John Mandeville, էջ 60)։ Հոս ալ Հայերը պէտք է կանուխէն հաստատուած ըլլան, սակայն Դամասկոս միշտ իսլամներու տիրապետութեան տակ ըլլալուն՝ եթէ Հայեր հաստատուած ալ են, շատ աննշան թիւ ունեցած են։

1183ին, Սալահէտտին գրաւած է Դամասկոսը և 1214ին անիկա տրրուած է Մելիք Ադիլի. 1244ին Թաթարները զայն գրաւած են, առաջանալով մինչեւ Գազա։ Այս պատերազմները վնասած են քաղաքին վաճառականութեան։

Կլավիխօն, որ իբրեւ Սպանիոյ Հէնրի Կաստիլիայի թագաւորին դեսպանը, Լէնկ Թիմուրին գացած է, 1403—1406 թուականին, կը գրէ թէ' ան «անմիջապէս գրաւեց ԴԱՄԱՍԿՈՍ քաղաքը գրոհով եւ քաղաքն աւարի տուաւ, որից յետոյ Դամասկոսի մէջ մեծ բազմութիւն ժողովեց գլխաւոր վաճառականներէն եւ պահակներու հսկողութեամբ ուղարկեց Սմրղանդ, (որ այն տեղ բնակութիւն հաստատեն եւ տեղական վաճառականական գործը շարունակեն)։ Անոնց հետ միասին Թիմուրն ուղարկեց Ազ-Գոյուն Թուրքերէն բաւական թիւով մարդիկ, ինչպէս նաեւ Սվազ քաղաքէն գերի տարուած բնակչութեան մեծ քանակութիւնը, որոնց մէջ կային նաեւ Հայեր՝ քրիստոնեաներ, Սվազ քաղաքէն եւ շրջակայքէն...» (Clavijo; Embassy to Tamerlane, 1403—1406, 1928, էջ 134, Ֆրիկ, 47)։

Մենք արդէն բացատրեցինք թէ առևտրական ինչ խոշոր դեր մը կը կատարէին այդ քաղաքները, որոնք Արևելքի վաճառականութեան գլխաւոր կայանները կը ներկայացնէին։

Հայերը՝ իբրեւ Ասիոյ հեռաւոր կողմերը երթևեկող առևտրականներ՝ մեծ դեր կատարեցին այս քաղաքներուն մէջ, ուր հաստատուած էին իբրեւ առևտրական և իբրեւ արհեստաւոր. բայց երբ Լատինները Սուրիայէն հեռացան, Հայ գաղութները տկարացան և ցրուեցան և միայն աննշան թիւով Հայեր մնացին։

Հաստատուած իրողութիւն մըն է որ ԺԲ. դարուն, Հայերը գործօն դեր կը կատարէին Սուրիոյ մէջ իբրեւ վաճառականներ և կը վայելէին առանձնաշնորհներ։

Այսպէս, անոնք ազատ մուտք ունէին ի Տիւրոս և այլ տեղեր։ Այս ա-



զատութենէն օգտուելով՝ իշխանասպան Իսմայիլեանք կամ Հաշիշիք, Հայու տարազով ծպտեալ համարձակ մտան Տիւրոս և սպաննեցին քաղաքին իշխանը՝ Գոնրատ Մանֆէրատտոն։

Փաստերը կան որ Միջին դարուն հայերէնը և պարսկերէնը Արևելքի մէջ միջազգային լեզուներ էին, ինչպէս կը հաստատուի Ֆրանչիսկեան կրօնաւոր Օտոսիքօ Ֆոռդենոնէի (+ 1331), յուշերէն, ուր կը յայտնէ ոչ միայն իր հայերէն գիտնալը, այլ մեր լեզուն հարաւային Հնդկաստանի մէջ գործածուած ըլլալը՝ իբրեւ յարաբերութեան միջոց։ Հ. Մատրատ, որ Օդոսիքոյի վրայ հատոր մը հրատարակած է 1932ին, կը խորհի թէ Մարքոյ Փօլոյի պէս հայերէնի և պարսկերէնի տեղեակ էր, ինչպէս Ռընէ Կռուսէ ալ կը հաստատէ։

Հայերէնը անշուշտ Կիլիկիոյ և Սուրիոյ մէջ է որ կը գործածուէր առաւելապէս, որչափ որ կը հասկցուի գրուածներէն, վասնզի Կիլիկիոյ և Սուրիոյ եզերքներն էին ասիական ապրանքներու դէպի արեւմուտք փոխադրութեան վայրերը, (հմմտ. Գեղամ Խանամիրեան, Պայքար բացառիկ, 1954)

Դժբախտաբար չունինք այս շրջաններու մասին դասաւորուած և ընդարձակ տեղեկութիւններ։

Մեզի հասած են մանաւանդ օտար աղբիւրներէ, շատ ցանուցիր տեղեկութիւններ, որոնք եթէ մեզի չեն տար պատմութեան մը ատաղձները, գոնէ ցոյց կու տան Հայ գաղթականներու ոտքին հետքերը։ Այսպէս մենք գիտենք թէ Կիլիկիոյ Այաս նաւահանգիստը առևտուրի մեծ կեդրոն մըն էր, «ուր կը բերուէին ներսերէն ամէն տեսակ համեմներ եւ մետաքսէ եւ ոսկիէ դիպակներ եւ ամէն տեսակ թանկագին ապրանքներ, եւ Վենետիկցի, Ճենովացի եւ այլ երկիրներու վաճառականներ հոն կու գային եւ կը գնէին զանոնք եւ կը տարածէին աշխարհի ամէն կողմը» (Մարքօ Փօլոյի վկայութիւն, ի The Travels — The Viking Press, New-York, 1931, p. 19)։

Այաս վերջին կայանը եղաւ Ասիա-Եւրոպական ապրանքներու փոխանակութեան, մինչ անկէ առաջ նոյն ոգևորութիւնը Սուրիոյ և Պաղեստինի ծովեզերքներուն վրայ կը տեսնուէր, ինչպէս կը հասկցուի Դոմինիկեան կրօնաւոր Burchard of Mount Sionի 1232ի յուշագրութիւններէն։

Անիկա կը վկայէ որ Լիբանանի եզերքը, Իսկէնտէրունէն շատ քիչ հեռու Տրիպոլիսի կամ Թրիփոլիի նաւահանգիստը «լեցուն է բնակչութեամբ, որովհետեւ հոն կը բնակին Յոյներ, Լատիններ, ՀԱՅԵՐ, Մարոնիներ, Նեստորականներ եւ շատ ուրիշներ: Հոն մետաքսի շատ գործ կ'ըլլար: Ես որոշապէս իմացած եմ, որ հոն կայ մետաքսի եւ սալդիմայի եւ նման հիւսուածեղէններու ոստայնանկներ»: (Հայրենիք, ԺԲ. տարի, Թ. 1 Նոյեմ. 1933, հմմտ. Սիսուան, 225։ Եւ Սիոն, 1933 Յունիս։ Նաև Յ. Քիւրտեան, Հում Մետաքսի Վաճառականութիւնը եւ Հայերը, էջ 5—6)։

Կան այսպիսի շատ տեղեկութիւններ, որոնք կը հաստատեն թէ Հայերը իբրեւ ցամաքային կարաւաններու վարպետներ՝ Ասիոյ խորերէն իրենց բեռցուցած ապրանքները կը բերէին՝ ինչպէս Կիլիկիա, նոյնպէս և Սուրիոյ նաւահանգիստները, որքան ատեն որ անոնք Լատին տիրապետութեան տակ էին։

ԺԳ. դարուն վերջերը Ֆրանկները արտաքսուեցան այս երկիրներէն՝ ե-

գիպտոսի Պիպարիս Սուլթանին և անոր յաջորդին կողմէ, որոնք երկիրը աւերեցին և քրիստոնեաները ջարդեցին։

1291 Մայիս 18ին, Խաչակիրներու վերջին ապաւէնը Աքիա (Սէն Ժան տ'Աքրը) ևս ինկաւ և Խաչակիրները Կիպրոս ապաստանեցան։

Ֆրանկ տիրապետութիւնը 192 տարի տեւած էր, ձգելով հետքեր։

Հայերէն զատ, մեծ թիւով Եւրոպական գաղութներ կը գտնուէին Սուրիոյ ծովեզերեայ քաղաքներուն և Երուսաղէմի մէջ։ Այդ գաղութները ամուսնութեամբ ձուլուեցան բնիկ տարրին հետ և մաս մըն ալ խառնուեցան Հայերուն հետ։ Գլխաւոր քաղաքներու մէջ կնքուած խառն ամուսնութիւններէն ծնած լըվանթէններ երեւան եկան, վասնզի ամուսնութեամբ Սուրիացիք կը մտնէին Լատին ազնուականութեան մէջ։

Մանաւանդ Անտիոքի և Եդեսիոյ իշխանապետութեանց մէջ նման խառն ամուսնութիւններ յաճախադէպ էին, մանաւորապէս շատ ազդեցիկ եղող ՀԱՅ այն աւատապետութեանց հետ՝ որոնք Ֆրանկներու քաղաքական և զինուորական կեանքին մէջ լայն մասնակցութիւն ունէին։ (Արտաւազդ Արքեպս. Սիւրմէեան, Սիւրիա, էջ 971)։

Դժբախտաբար մեր տեղեկութիւնները, ինչպէս դիտել կու տայ Արտաւազդ Արքեպս. (Սիւրիա, էջ 988), այս ժամանակամիջոցին Սուրիա ապրող Հայերու և անոնց յարաբերութեանց մասին տիրող Լատին իշխաններուն հետ, շատ քիչ են։

«Բայց հաւանական է որ, բացի Անտիոքի շրջանէն, Հայեր ապրած են Հալէպէն Հիերապոլիս (= Մումպուճ) շրջանին մէջ ալ, ինչպէս նաեւ Սուրիական նաւահանգիստներուն մէջ, և ընդհանրապէս առեւտուրով և ապրանքներու ներածութեամբ զբաղած են, գլխաւորաբար Այաս–Լաւոդիկէ-Թրիպոլի գիծին վրայ, ուր Խաչակիրները ցոյց կու տային իրենց զինուորական գործունէութիւնն ու կը վայելէին Հայերու օժանդակութիւնը»։

Ու երբ Խաչակիրները վերջնապէս թողուցին Սուրիական ծովեզերքները (1291), ու Եգիպտացի Մեմլուքները գրաւեցին անոնց բերդերն ու ամրոցները, Հայերն ալ մասամբ ցրուեցան և մասամբ խառնուեցան բնիկ տարրերուն հետ ու անոնց նախկին բնակավայրերը վերստին գրաւուեցան Կիլիկեան լեռնային գաւառներէն հոն գաղթող Հայերով, որոնց մնացորդներն էին, ըստ Արտաւազդ Արքեպս.ի ենթադրութեան, Անտիոքի լեռներուն վրայ իրենց բնակութիւնը հաստատող Հայ գեղացիները, Պէյլանի կիրճէն մինչեւ Որոնդէսի հովիտը (Արտաւազդ Արքեպս., Սիւրիա, էջ 988)։

Միքայէլ Նաթանեան ևս Սուրիոյ ու Լիբանանի Հայ գաղութին վրայ իր կատարած մէկ հետազօտութեան մէջ, (Կոչնակ, 1947, էջ 150), կը գրէ.

«Եթե պրպտելու լինենք, պիտի տեսնենք որ Պէյրութի, Հալէպի եւ ուրիշ քաղաքաց քրիստոնեայ հասարակութեանց պաշտամունքներուն մէջ, որոշ քանակութեամբ, յայտնի ընտանիքներ կը յիշեն Հայերէ սերած ըլլալ: Տրիպոլիսի մօտիկ Զղարթա գիւղաքաղաքի բնակիչներն Հայ եղած ըլլալ կը խոստովանին: Բայց այս ձուլումը միջավայրի ազդեցութենէն աւելի դաւանանքի փոփոխութեան արդիւնք եղած է»:



Նաթանեան դժբախտաբար փորձ չէ ունեցած փորձելու ճշդել թէ այդ դաւանափոխութիւնը ե՞րբ կատարուած է, և այդ դաւանափոխ Հայերը ո՛րքան հնութիւն ունին այդ բնակավայրին մէջ. այնպէս որ իր տուած տեղեկութիւնը մեծ նպաստ չի բերեր Սուրիոյ գաղութին անցեալ պատմութեան։

***

Հիւսիսային Սուրիոյ (= Ասորիքի) ստուար գաղութը Խաչակիրներու բանակին հետ ինքն ալ դէպի հարաւ տարածուած է հաւանօրէն և այդ շրջաններու մէջ Հայոց թիւը բաւական աճած է։ Այսպէս, մանաւորապէս ԺԲ. դարուն Հայերը իջած են աւելի դէպի հարաւ, դէպի բուն Սուրիա, Լիբանան և Պաղեստին։ Սուրիոյ և Լիբանանի մէկ մասը Հայերու համար բոլորովին անկոխ գետիններ չէին, քանի որ Բիւզանդացի կայսրերէն Նիկեփոր և Զմշկիկ Ժ. դարուն, այդ շրջանին մէջ Հա՛յ գաղթականներ զետեղած էին, բայց շատ հաւանական չէ որ անոնք մինչեւ ԺԱ. դար պահած ըլլան իրենց գոյութիւնը, կամ եթէ պահած ալ են, շատ չնչին թիւ մը միայն ունէին։

Բայց Խաչակիրներու բանակներուն դէպի հարաւ առաջանալէն և Երուսաղէմը գրաւելէն ետք, Հայերն ալ անոնց կազմած Լատին իշխանութիւններուն, մանաւորապէս ծովեզերեայ քաղաքներու վրայ երեւցին որպէս վաճառականներ։

Ուրեմն ասոնք ամէնն ալ ԺԱ. դարուն վերջին քառորդէն յետոյ կազմուած գաղութներ են, բացի Երուսաղէմէն՝ որ ինչպէս յայտնի է (տես. ՊՀԳ. Ա. 138—143 և 377—381) քրիստոնէութեան առաջին դարերէն սկսեալ ունեցած է, մանաւորապէս եկեղեցականներէ բաղկացեալ Հայ գաղութ։

Իսկ երբ 1097ին հաստատուեցաւ Երուսաղէմի թագաւորութիւնը և 1109ին Թրիպոլսոյ կոմսութիւնը՝ Հայերը գրեթէ ամենուրեք էին։

Երուսաղէմի թագաւորութիւնը, որ իրեն ստորադաս և ճորտ ունէր Քեռէքի (Քարաք), Մոնրէալի Շոպէքի, Հիպպինի, Յոպպէի, (= Եաֆա), Ասկալոնի, և Գալիլիայի, տիրութիւնները (Seigneurie) կամ պարոնութիւնները, որոնց պետերը ուղղակի Երուսաղէմի թագաւորը կ'անուանէր։

Այս անբեր երկիրներուն մէջ Հայերը իբրեւ նիզակակիցներ և իբրեւ օգնականներ, ինչպէս նաև նոյնքան բարեպաշտ քրիստոնեաներ հաստատուած են։

Այս շրջանին Պաղեստին ունեցաւ նաև Հայերու թիւ մը, որովհետեւ ինչպէս Սուրիոյ, նոյնպէս նաեւ Պաղեստինի դքսական և կոմսական արքունիքներուն հարս գացած էին Ռուբինեան արքայական տոհմին աղջիկները և այսպէս բոլոր այդ իշխանական տոհմերուն հետ խնամիական կապերով կապուած էին, Ռուբինեանք։

Անշուշտ կային ռամիկ դասակարգէն ալ անձեր, որոնք հոն գացած էին իբրեւ առեւտրական, արհեստաւոր եւայլն։

Մասնաւորապէս, Ս. Երկիրին Լատին թագաւորութեան մայրաքաղաքը՝ Երուսաղէմ ունէր ապահովաբար հայ գաղութ մը, ինչպէս հին դարերուն։

Նոյնիսկ Գրիգոր Վկայասէր Կաթողիկոսի համար, Հայ պատմիչներ կը

վկայեն թէ Երուսաղէմի պաշարման միջոցին, քաղաքին մէջ կը գտնուէր։

Օտար պատմիչներն ալ կը հաստատեն Հայերու գոյութիւնը Երուսաղէմի մէջ, երբ Լատինները հոն կը մտնէին։ Ֆրանկ Թագաւորութեան ամբողջ տեւողութեան միջոցին, Հայերու ստուարաթիւ ըլլալը միշտ կը յիշատակուի (Les Assises de Jerusalem)։

Նոյնիսկ լատինական գրութիւններէ կը հաստատուի Հայերը ԺԲ. դարու կէսերուն Հիւրանոց մը ունէին, ինչպէս նաեւ յատուկ թաղ մը՝ Ruga Armenorum անուն. ծանօթ 1222 թուականէն սկսեալ (Bohmer II., էջ 142)։

Սալահէտտինի Երուսաղէմ մտած ատեն (1187)՝ հոն կը գտնուէին հինգ հարիւր Հայ կրօնաւորներ և հազար տունի չափ Հայ բնակիչներ, ինչ որ բաւական պատկառելի թիւ մըն էր, նկատի ունենալով քաղաքին տարածութիւնը (Աստուածատուր Եպս. Տ. Յովհաննէսեան, Պատմ. Երուսաղէմի, 154)։

Իսկ այս թագաւորութեան ստորադաս ճորտերու հողերուն վրայ թէև շատ հաւանական է ենթադրել հայ բնակչութիւն մը, սակայն մինչեւ հիմա գտնուած յիշատակարաններ միայն քանի մը քաղաքներու մէջ Հայերու գոյութիւը որոշապէս կը հաստատեն։

Այսպէս, Տիւրոս և Սիդոն, որոնց տէրերը Երուսաղէմի թագաւորութեան ճորտերն էին, իբրեւ վաճառականական կեդրոններ շատ հաւանական է որ Հայ բնակիչներ ունեցած ըլլան։

Պատմութիւնը կը յիշատակէ միայն անոնց իշխաններուն Կիլիկիոյ Հայ թագաւորներուն փեսայանալը (Ալիշան. 482)։ Սակայն հոն Հայերու գոյութիւնը վաւերական կրնայ համարուիլ՝ նկատի առնելով սա պարագան, որ մերձակայ կարեւոր քաղաքներու մէջ Հայեր հաստատուած էին։

Այսպէս, Կեսարիա (Պաղեստինի մէջ, այժմ՝ Գազա) հաստատուած էր մեծ կամ պզտիկ Հայ գաղութ մը, որուն յիշատակութեան կը հանդիպինք ԺԲ. դարու կէսերուն (տես. Les Assises de Jérusalem. Bengnot. II. 511 և 528) և Աքիա կամ Պտղոմայիս, ուր կեդրոնացած էին Ֆրանկ ուժերը Սալահէտտինին 1187ին Երուսաղէմը գրաւելէն յետոյ և որ եղած էր վաճառականական կեդրոն մը։ Հոն կը գտնուէր դարձեալ Հայ գաղթականութիւն մը, որ ԺԲ. դարու կէսին ունէր հայկական հիւրանոց մը, Լուսինեան Գուիտոն թագաւորէն շնորհուած 1190ին Տեւտոնեան ասպետներուն։ Հոն տակաւին, ԺԳ. դարու կէսերուն (1249ին)՝ կային բազմաթիւ Հայեր և ունէին Գիսկարդ անուն պալլ մը (Ալիշան, 482)։

Այս ծովեզերեայ և վաճառաշահ քաղաքներուն մէջ Հայերու բնակութիւնը գլխաւոր հաւաստիք մը նկատելու է թէ Հայերը հաստատուած են նաեւ ուրիշ ծովեզերեայ քաղաքներու մէջ, բայց դժբախտաբար վաւերագիրներ չունինք (1)։

Սակայն ամէնէն հետաքրքրականը և ամէնէն շահեկանը, որ միանգամայն գլխաւոր ապացոյցն է այդ Լատին երկիրներուն մէջ հայկական գաղութներու գոյութեան, «Մեռեալ Ծովու Արեւելեան կողմը, Ս. Գիրքին

(1) Գազայի մէջ Հայերուն Ս. Հրեշտակապետ եկեղեցի մը ունենալը կը հաստատեն ոմանք: Հաւանօրէն այս շրջանին պէտք է հաստատուած ըլլայ հին գաղութ մը:



Ամմոնացիներու երկիրին մէջ ալ Հայերու գոյութիւնն է, ինչպէս ցոյց կուտան անսուտ վկայութիւններ և վաւերական յիշատակարաններ։

Երբ Երուսաղէմի թագաւորութիւնը հաստատուեցաւ՝ իր սահմանները մինչեւ Արաբիոյ անապատները ու Կարմիր Ծով կը տարածուէին։

Հոն, այդ երկրամասին մէջ էին Քերեքի կամ Կրակի, Շոպէքի կամ Շոփեկի և Մօնրէալի կոմսութիւնները, որոնց տէրերը Երուսաղէմի Լատին թագաւորները կ'անուանէին։ Կը վկայուի թէ այդ երկիրին մէջ, որ դրացի էր Եգիպտոսի, Արաբիոյ Անապատին և Մեռեալ Ծովուն, գոյութիւն ունէին եօթանասունի չափ բերդեր, որոնց գլխաւորները Ֆրանկներ էին։

Այդ շրջանակին հետ Հայերու յարաբերութիւնները ճշդել թէեւ դիւրին չէ, սակայն քանի մը կարեւոր յիշատակութիւններ բաւական կը լուսաբանեն Հայ գաղութներու այս անապատներուն մերձակայ քաղաքներուն մէջ գոյութիւնը։

Այսպէս, պատմութիւնը կը յիշատակէ թէ Ռուբէն Բ. Կիլիկիոյ իշխանը 1181ին Երուսաղէմ ուխտի կ'երթայ և մեծահանդէս կ'ամուսնանայ Քերէքի Ռընալտ տը Շաթիյեօն իշխանին աղջկան հետ, հաւանօրէն նոյնիսկ այդ քաղաքին մէջ։

Ռընալտ տը Շաթիլեօն այն իշխանն է որ յղացած է յանդուգն գաղափարը, Շփեկի Լատին իշխաններուն հետ նաւատորմիղ մը կազմելու և երթալ գրաւելու արաբական եզերքները և մտնելու Մէքքէ ու Մարգարէին գերեզմանը վերցնելու անկէ, ուխտաւորներու երթեւեկը դադրեցնելու և միանգամ ընդմիշտ ապահովելու համար Լատիններու իշխանութիւնը։

Սակայն անկարելի կ'ըլլայ գործադրել այս ծրագիրը, վասնզի Սալահէտտին կը գրաւէ այդ կողմերը և կ'առաջանայ մինչեւ Երուսաղէմ որ 1187ին նորէն իր դուռները կը բանար իսլամներու առջեւ։

Երուսաղէմի թագաւորութեան միայն ծովեզերքները կը մնան Լատիններուն ձեռքը և միւսները կ'անցնէին իսլամներուն։

Սալահէտտինի մահէն վերջ իր կազմած պետութիւնը իր որդիներուն մէջ բաժնուեցաւ։ Դամասկոսը առաւ Մելիք Աֆտալ, Եգիպտոսը՝ Մելիք Ազիզ, Հալէպը՝ Մելիք Զահր, նոյնպէս նաեւ Քերէքի և Շոպէքի տիրապետեց Մելիք Ատիլ (1191)։

Յաջորդ դարուն մէջ՝ Հուլաղու Թաթար Խանը, Կիլիկիայի Հեթում Ա. թագաւորին հետ, որուն զինակիցն էր Պաղտատը առնելէ ետքը, մտաւ Միջագետք և Ասորիք, առաւ Հալէպը, Դամասկոսը և Երուսաղէմը։

Դամասկոսի և Հալէպի Սուլթանին երկիրները իրեն զինակից Հեթում թագաւորին և անոր փեսան Անտիոքի Պոհեմունտ իշխանին միջեւ բաժնեց, (Վարդան, 151)։ Այն ատեն է որ Հայերը հաստատուեցան Հալէպ, ինչպէս կ'երեւի իրենց եկեղեցիին հիմնադրութեան թուականէն։

Այս պատերազմներուն միջոցին, 1257ին գրաւուեցան նաեւ Քերէքը, Կեսապոնիոն (1), Գերասան (2), Սալթը (3) և տրուեցան Հեթումի, որ եօթը տա-

(1) Արաբները Հիպպէ կը կոչեն եւ Ս. Գիրքին մէջ Հեսբոն մը կոչուի: Երբեմնի Ամմոնացւոց Սեհոն թագաւորը հոն կը նստէր (Գործ Թուոց, ԻԱ. 21–25):

(2) Յունական Յորդանանի Պալգայ լեռներուն մէջ քաղաք մը: Իր մօտերն էին Ջերասա, Ամմոն. Ամման (Յորդանանի թագաւորութեան արդի մայրաքաղաքը):

(3) Կը մնայ մինչեւ հիմա:

-րի զանոնք կառավարեց (1257—1264)։

Վերջը Եգիպտացիք վերստին գրաւեցին և իրենց պետութեան կցեցին զայն։

Հեթում Ա. իր տիրապետութեան ենթարկուած տարին իսկ հոն կը շինէ եկեղեցի մը, որուն հետեւեալ արձանագրութիւնը 1878ին Բերէքի մէջ գտնուեցաւ. «աս եկեղեցին Սուրբ Յակովբ անունով Հեթմոյ թագաւորին ժամանակ շինուեցաւ Երանուհի Տիկնոջ Զապէլին Յեսայոնիօնի պատերազմէն վերջը յաղթական իննալով ՉԶ (= 1257 (1))։

Այս եկեղեցին անշուշտ հոն գտնուող Հայերուն համար շինուած էր, բայց չի գիտցուիր թէ անոնք այդ նոր գրաւուած երկիրին մէջ յանկա՞րծ գոյութիւն առած էին թէ արդէն գոյութիւն ունեցած էին։ Որով հարկ կ'ըլլայ անոնց հաստատութեան թուականը տանիլ հասցնել մինչեւ Լատիններու տիրապետութեան շրջանը։

Մանաւորապէս անոնց հին և հօծ գաղութ մը ըլլալը կը հաստատեն ուրիշ յիշատակարաններ, որոնք գտնուած են նոյնիսկ Բերէքի մէջ կամ անոր մասին մատենագրական տեղեկութիւններ կու տան։ Այսպէս, 1897ին գտնուած է աւերակի մը մէջ՝ պատի մը վրայ մարմարինէ սա արձանագրութիւնը. «Ոչ միայն հացիւ կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ ի բերանոյ Տեառն, ծեփեցաւ... (անընթեռնելի)» ինչպէս գրուած էր, վերի արձանագրութիւնը գտնուածատեն (1878), նոյն տեղը գտած էին սկիհ մը, որուն շրթունքին վրայ գրուած էր՝ «պահեա՛ Տէր. զՀեթում թագաւորն եւ զթագուհի կին նորա Երանիկն»:

Իսկ աւելի շահեկան է Էջմիածինի մէջ պահուած Յայսմաւուրք մը, Դրազարկ գրուած, 1316ին և Լեւոն Դ. թագաւորին կողմէ նուիրուած Բերէքի Ս. Գէորգ եկեղեցիին 1330ին։ (Սիսուան, 482) (2)։

Ասով երեւան կու գայ հաւանականութիւնը երկրորդ եկեղեցիի մը գոյութեան, միեւնոյն քաղաքին մէջ՝ մահմետականներու տիրապետութեան շրջանին, ինչ որ հոն գտնուող Հայերու բազմութեան գլխաւոր ապացոյց կրնայ համարուիլ, անհաւատալի թուելով մէկտեղ, քանի որ վերջին դարերուն մէջ Հայեր չկային այդ կողմերը։

---

(1) Տես. Պատմ. Երուսաղէմի, էջ 187 կամ ՀԱ. 1898, էջ 57: Ոճը աշխարհիկ լեզուի շատ մօտ ըլլալով, կասկածելի է որ հին ըլլայ ընթերցումը, մանաւանդ որ Աստուածատուր Եպս. Յովհաննէսեան կ'ըսէ թէ «վերծանումը եղեւ կարի դժուար»:

(2) Աստուածատուր Եպսկ. Յովհաննէսեան կը յիշէ Յայսմաւուրքի մը գոյութիւնը, առանց ճշանակելու անոր ո՛ւր պահուած ըլլալը. «յիշատակ արարեալ եկեղեցւոյ Բերկայ Լեւոն Դ. արքային Կիլիկիոյ՝ ի թուին Հայոց ՉԿԹ (— 1820), նոյնպէս եւ գիրքն կոչեցեալ Հարանց Վարք»: Իսկ Պետրոս Արք. Սարաճեան, (յետոյ կաթողիկոս Կիլիկիոյ) (ՀԱ 1898, էջ 58) կ'ըսէ. «Լեւոն Դ.... միմիայն յիշատակ մը ունի, այն է ձեռագիր Յայսմաւուրք մը, որոյ վրայ յիշատակարան մը կայ, յայտնող թէ Լեւոն Դ. Բերէքի Ս. Գէորգ եկեղեցւոյն կը նուիրէ այն Յայսմաւուրքը (ՉԿԹ = 1320): Թուականի տարբերութիւնը եւ երկու վերի յիշուած Երուսաղէմի միաբաններուն իրարու համաձայն չըլլալը կասկածելի կը դարձնեն յիշատակարանը:

Էջմիածնի Յայսմաւուրքէն զատ արդեօք կա՞յ նաեւ Երուսաղէմի Յայսմաւուրք մը եւ Հարանց Վարք մը:



∴

Միջագետքէն ետք, Հայերը տարածուած են Պաղեստին, ապա աւելի հարաւ-արեւմուտք, Ափրիկեան ցամաքամասը, Եգիպտոս, նոյն ասիական բարբարոսներու արշաւանքներէն փախչելով։ Եգիպտոսի մէջ կարեւոր հայ գաղութ մը ունեցած ենք, կերպով մը իբրեւ շարունակութիւնը Սուրիոյ և Պաղեստինի Հայ գաղութներուն։

Ժ. դարուն (969ին), Եգիպտոսէն վերջնականապէս վանուած էին Աբբասեանները, Ֆաթիմեաններու կողմէն՝ քանի մը յաջորդական նուաճումներէ և ապստամբութիւններէ ետքը։ Անոնք իրենց սեփականած էին նաև Իսլամներու Խալիֆայութիւնը։

Առաջին Ֆաթիմեան Խալիֆան էլ-Մօէզ լը Տին Իլլահ, որ Գահիրէն կը հիմնէ և հոն կը հաստատուի, իրեն գործակից ունէր Վարդան անուն իսլամացեալ Հայ մը, նախապէս Բիւզանդական բանակին մէջ զօրապետ և անոր համար «Հոռոմ» կոչուած, որ Եգիպտոսի հարկապետ կ'ըլլայ։ Գահիրէի շինութեան ատեն (973), իր անունով կը կոչուի քաղաքին շուկաներէն մէկը (Essai sur l'histoire et sur la Topographie du Caire, d'après Makrisi, par Paul Ravaisse IV, brochure III. tome de Memoires, publiés par les membres de la Mission Archéologique Française au Caire. 1890)։ Անժխտելի է որ Ֆաթիմեաններէն առաջ, Հայեր կային Եգիպտոսի մէջ, թէև սակաւաթիւ (տես. ՊՀԳ. 171—2, 174, 182—190, 376 և 382)։

Անոնց թիւը Ֆաթիմեան Խալիֆաներու ատեն շատցաւ, երբ Պաղեստին և Սուրիա գրեթէ ամբողջութեամբ ենթարկուեցան Եգիպտոսի Խալիֆաներու իշխանութեան։

ԺԱ. և ԺԲ. դարերուն մէջ Ֆաթիմեաններու ներքեւ, Երուսաղէմ հաստատուած բազմաթիւ Հայերու գոյութիւնը ապացուցուած ըլլալով, իրաւունք ունենալ կը կարծենք ենթադրելու թէ Հայերը Սուրիոյ հիւսիսային կողմերէն, Եփրատի եզերքներէն, տեղահանութեամբ բերուած են՝ պատերազմներու պատճառով, կամ ինքնաբերաբար գաղթած են Ֆաթիմեանց պետութեան կեդրոնը աւելի հանգիստ գտնելու յոյսով։

Այս ենթադրութիւնները կ'արդարանան մանաւորապէս սա իրողութեամբ որ Եփրատի մօտակայ հողերը և Սուրիոյ հիւսիսային կողմերը ամէնէն աւելի պատերազմի և փոխադարձ յարձակման վայրեր դարձած էին և այդ տեղերուն խաղաղութիւնը վրդովուած էր։

Հայերը, ուրեմն կ'ապաստանէին Եգիպտոս, ուր Ֆաթիմեանք Ժ. դարէն սկսեալ անսովոր փայլով մը կ'իշխէին։

ԺԱ. դարուն մէջ, երբ Սելջուկները կ'արշաւեն դէպի Արեւմուտք և կը տիրապետեն նաև Սուրիոյ և Պաղեստինի, Ֆաթիմեան Խալիֆաները թէև կը պայքարին անոնց դէմ, սակայն յաջողութիւնը աւելի յաճախ Սելջուկներուն քով կը մնայ, մանաւորապէս ներքին խռովութիւններու պատճառով, զորս կը յարուցանէին Խալիֆաներու անձնապահ գունդերը, որոնք Ասիական զանազան ցեղերէ կը բաղկանային։ Ասոնց մէջ Հայեր ալ կային — ինչպէս տեսնուեցաւ — որոնք մինչեւ վէզիրութեան աստիճան բարձրացած էին։ Սակայն երկիրին ներքին վարչութիւնը քայքայուած էր զինուորական ապստամբու-

*թիւններով, որոնց ամէնէն նշանաւորն էր 1070ինը և որուն զոհ գնաց Գահիրէն՝ հրոյ ճարակ դառնալով։*

*Մօսթանզէր Խալիֆան* (1036—1094), *երկիրին գահավէժ անկման դէմ միջոցներ ձեռք առաւ և Դամասկոսի կուսակալ Պատր Էլ Ճամալիի կամ Էլ Կամալիի հրամայեց Գահիրէ գալ և մայրաքաղաքին ապստամբ զինուորականութիւնը հնազանդեցնել։*

*Ճէմալի կ՚ընդունի Խալիֆային առաջարկը, պայմանով որ իր զինուորները ինք ընտրէ և հետը բերէ և Եգիպտոսի զինուորներէն մէկը չձգէ։ Իրաւ ալ Պատր Էլ Ճէմալի երբ եկաւ՝ սպաննեց պետութեան աւագանին, իրեն համար բանակներ և զօրախումբեր կազմեց ՀԱՅԵՐԷՆ։ Մագրիզի կ՚ըսէ թէ այդատենէն ի վեր բանակին մեծ մասը Հայերէ բաղկացած էր։ Ուրիշ պատմագիրներ կը հաստատեն թէ Հայ զինուորներու թիւը 7000ը կ՚անցնէր* (Ա. Օրագեան, Հայ Ճարտարապետներ Եգիպտոսի մէջ, *ԿԵԱՆՔ ԵՒ ԳԻՐ Տարեգիրք*, 1948, էջ, 155)։

*Պատր Էլ Կամալի ապստամբութիւնը զսպեց Գահիրէի մէջ և պատժեց քաղաքը կողոպտողները։ Ան կարգուեցաւ Վէզիր և միանգամայն Էմիր Էլ Ճիուշ, (բանակներու իշխան, սպարապետ)։ Խալիֆան իրեն տուաւ շատ լայն իրաւասութիւններ* (1070), (Ալիշան, Աբուսաճլ Հայ, *Վենետիկ*, 1895, էջ 16)։ *Իր ազդեցութիւնը այնքան մեծ էր որ գահուն յաջորդութեան կարգը յաջողեցաւ փոխել և ապահովել Ահմէտին, որ Էլ-Մօսթալի Պիլլահ անունով յաջորդեց իր հօրը՝ 1094ին, երբ Պատր Էլ Կամալի՝ իր վեհապետին հետ մեռած էր։*

*Այս վէզիրը Հայ գերի մըն էր, հիւսիսային Սուրիայէն բերուած և* «կը կառավարէր Եգիպտոսը, շնորհիւ Սուլթանին եւ բարեկամ էր ամէն քրիստոնէից, թէ՛ մեծամեծաց, թէ՛ ռամկաց» (Աբուսաճլ, 16)։ *Պատր Էլ Կամալի*, 1070*ին կը նորոգէ Գահիրէն և նոր ու մեծ* Տար-էլ-վէզարան *մը կը շինէ։*

*Տեսնելով որ Գահիրէն «խարխլած երդիքներով աւերակոյտ մը դարձած էր» և որպէսզի Գահիրէն Խալիֆայութեան վայել քաղաքի մը նմանէր, և շուտով քաղաքը կարելի ըլլալ վերաշինել, կ՚արտօնէ «Ասքարիներուն, Մէլլեւիներուն, ՀԱՅԵՐՈՒՆ, և շէնք շինելու կարողութիւն ունեցողներուն, որ Գահիրէի մէջ իրենց ուզած շէնքը կառուցանեն, օգտագործելով Մըսրի Ֆուսթաթին մէջ պարապ մնացած այն տուները, որոնք անտէր էին* (Ա. Օրագեան, Նոյն, 155)։

*Բազմաթիւ այլ շինութիւններու կարգին, ամրացուց Գահիրէն, շրջապատելով երկրորդ պարիսպով մը և շինել տուաւ երեք հոյակապ դուռներ. Պապ Էլ Նասր, Պապ Էլ Ֆութահ և Պապ Էլ Զուէյլա, որոնք ցարդ կը մնան։ Ըստ Մագրիզիի, երեք Եդեսիացի* (1) *եղբայրներ յատկապէս Գահիրէ գալով շինած են այս դուռները, իրենցմէ ամէն մէկը այդ դուռներէն մէկը շինելով, առանձին առանձին յղացումով* (Ա. Օրագեան, Նոյն, 156)։

(1) Այս Եդեսիացի Հայ երեք եղբայրներու փաստ մը եւս կ'ընծայեն մեզի թէ Ֆաթիմեանց շրջանին Եգիպտոս եկող Հայերը Սուրիայէն եւ Միջագետքէն բերուած են:



*Պատր Էլ Կամալիի պաշտօնավարութեան շրջանին*, 1074—5*ին, Գրիգոր Վկայասէր Կաթողիկոս* (1065—1105), *որ հզնաւորական կեանքի մեծ սէր և հակում ունէր, Պոլիս և Երուսաղէմ այցելելէ յետոյ, Եգիպտոսի անապատականներուն կեանքը ուսումնասիրելու համար՝ բազմաթիւ հետեւորդներով — զորս իրմէ առաջ ղրկած էր — Եգիպտոս կու գայ և հոն երկար ատեն կը մնայ։* «Եկեալ յԵգիպտոս շրջեալ ընդ ամենայն անապատսն առաջին Սրբոց Հարցն եւ կատարեաց զամենայն փափաքումն սրտին իւրոյ եւ հաստատեաց անդէն զաթոռ իւր հայրապետութեանն եւ կանգնեալ նորոգեաց անդէն զամենայն կարգ Ս. Եկեղեցւոյ եւ բազում փառք եւ մեծութիւն ընկալաւ Տէր Գրիգորէս, ի թագաւորէն Եգիպտացւոց առաւել քան ի թագաւորէն Հոռոմոց: *Եւ բազումք ժողովեցան Հայոց յԵգիպտոս իբրեւ երեսուն հազարաց* եւ Տէր Գրիգորէս զկնի ժամանակաց ձեռնադրեաց կաթողիկոս զՏէր Գրիգոր զքեռորդին իւր, եւ ինքն ելեալ գայր յաշխարհն Հայոց» (Ուռհ., 253—4) (1): *Պատր Էլ Կամալի իր ամբողջ ազդեցութիւնը ի գործ դրած է Վկայասէրը Եգիպտոս պահելու համար* (Սափերէ, ԺԴ.), *վասնզի ԵգիպտոսիՀայ գաղութը կարեւոր թիւ մը ունէր, ինչ որ շատ տարօրինակ պիտի ըլլար եթէ նախապէս Հայեր չգտնուէին, սակայն Հայեր կային։ Արդարեւ ԺԱ. դարու վերջին քառորդին մէջ* 30,000 *Հայեր, ինչպէս կը վկայէ Ուռհայեցի և* 10,000 *տուն գոնէ, ինչպէս Շնորհալիի կենսագիրը կը հաշուէ, Պատր Էլ Կամալի կը բերէ Եգիպտոս* (Սափերէ, *ԺԴ. և Ալիշան*, Շնորհալի եւ պարագայ իւր, 162—3)։ *Բայց Վկայասէր չէ ուզած մնալ Եգիպտոս և բաւականացած է հոս հաւաքուած Հայերուն համար եպիսկոպոս կամ պատրիարք մը ձեռնադրել և մեկնիլ։*

*Կաթողիկոսին այս կարգադրութիւնը և այլ ինչ ինչ իրողութիւններ կը հաստատեն որ Ֆաթիմեանք ոչ իսլամ տարրերու հանդէպ ազատախոհ եղած են և ցոյց տուած են մեծ բարեացակամութիւն և անոնց մէջէն իրական արժանիք ունեցողները բարձրացուցած են մեծ պաշտօններու։*

*Այդ բարձր պաշտօնատարներու շարքին կը յիշուին նաև Հայեր։ Մասնաւորապէս շրջան մը, ԺԱ. դարու վերջին կէսէն սկսեալ, եղաւ բաւական երկար ժամանակամիջոց մը, ուր Հայերը յաջորդաբար վարեցին երկիրը։ Այնպէս որ՝ Կասթոն Վիէթ* (Gaston Viet) *Եգիպտոսի պատմութեան այդ շրջանը կոչած է* հայկական շրջան (2)։

(1) Վարդան (102) գրեթէ նոյնը կը պատմէ ըսելով «գնաց ի Կ. Պոլիս, ի թարգմանութիւն եւ առեալ զգրեանն՝ կամեցաւ գնալ յԵրուսաղէմ եւ նաւին առեալ զնա տանին ի Մսր եւ մեծարեցաւ յոյժ ի Սուլտանէն եւ շինեաց վանս Հայոց, եւ ձեռնադրեալ զեղբօրորդի իւր ՙԳրիգորէս՚ եպիսկոպոս»:

Աւելի մանրամասն կը պատմէ նոյն իրողութիւնը ուրիշ գիր մը, դարձեալ առանց ճշդելու Սուլթանին կամ թագաւորին ո՞վ ըլլալը. (Սափերէ, ԺԴ. 16):

(2) Տես. Մահմետական Եգիպտոս, արաբական տիրապետութենէն մինչեւ Օսմանեան տիրապետութիւն խորագիրով այն մասը, որ տեղ կը գրաւէ այն չորս մեծ հատորներու մէջ, որոնք 1942ին Փարիզ հրատարակուեցան Ֆրանսայի երբեմնի արտաքին գործոց

*Ըստ Կասթոն Վիեթի, ոչ միայն այս շրջանին՝ այլ Մահմետական Եգիպտոսի պետական ամենամեծ դէմքերէն մին կը նկատէ Հայ նշանաւոր վէզիր Պատր Էլ Կամալին, մինչ Եգիպտոսի պատմութիւնը ուսումնասիրած ուրիշ պատմագիր մը զայն կը կոչէ* «մեծագոյնը Ֆաթիմեան բոլոր վէզիրներուն»: (Renouf's General Hislory, 201)։

*Պատր Էլ Կամալի և իր անմիջական յաջորդ Հայ վէզիրներու մասին ընդարձակ տեղեկութիւններ տուած են արաբ և օտար պատմիչներ, որոնց հեղինակաւոր վկայութիւններուն համաձայն, Եգիպտոսը կառավարած են՝ իբրև վէզիր և իբրև լիազօր փոխանորդ Խալիֆային՝ կարգով հետեւեալները.*

1. Պատր Էլ Կամալի՝ 1070էն 1094։

1. Շահնշահ Էլ Աֆտալ՝ 1094էն 1121, *առաջինին որդին, որ գահուն խնամակալ ալ եղած է, Խալիֆան անչափահաս ըլլալով։ Իր օգնականն էր եղբայրը Ճաֆար Ալ Մուզաֆֆար կամ Ճա'աֆար Էս Սատըգ կամ Ապու Մուհամմէտ Ճա'աֆար, որ սպաննուած է 1120ին։ Եգիպտոսի փառքին աշխատած և անոր համար կռուած են նաև Շապան և Ավհատ անուն եղբայրները։*

3. Ապուլ Ալի Ահմէտ Իպն Էմիր Ալ Ծիուշի կամ Քութայֆաթ, *Աֆտալի որդին, որ* 1130էն 1131 *բացարձակ վեհապետական իրաւասութիւններով կառավարած է երկիրը և նոյնիսկ իր անունով դրամ հատանել տուած է։*

4. Եանիս՝ *Հայ գաղթականի մը սերունդէն, որ* 1132էն 1134 *կառավարեց Եգիպտոսը։ Ունէր Լայոն կամ Լեւոն անուն եղբայր մը։*

5. Պեհրամ Էլ Էրմենի (*Վահրամ Պահլաւունի*)՝ *զինուորական մը, որ առանց կրօնափոխ ըլլալու* 1135*ին վէզիրութեան կոչուեցաւ* «Թակ Էլ Տօուլէ» (*տէրութեան Թագ*) *տիտղոսով։ Կը հրաժարի* 1137*ին, բայց* 1139*ին Խալիֆային խորհրդական կ'ըլլայ պալատին մէջ։ Վահրամ կը մեռնի* 1141*ին։*

*Իր եղբայրը* Նասիր (*Վասակ*) *կը վարէր Գուսի կուսակալութիւնը։ Իսկ Պասիլ (Վասիլ) և Զարդան (Շահան) իր եղբօրորդիները Եգիպտական բանակին մէջ ծառայած են իր ատենը։*

6. Թալայը Պին Րուզզիք՝ *զաւակը Հայաստանէն գաղթած աղքատ Հայու մը, Աշմունիյէի (Մինիա) կուսակալութենէն* 1154*ին վէզիրութեան կոչուեցաւ, տագնապալի պահու մը, և իմաստութեամբ ու քաջութեամբ կառավարեց երկիրը, մինչեւ* 1161, *երբ դաւադրութեան մը զոհ եղաւ։ Իր եղբայրն էր* Պերի, *որ* Ֆարիս Իւլ Միւսլիմին (*Հաւատացեալներու Ասպետ*) *պատուանունը առաւ։*

7. Իպն Րուզզիք Ատիլ (*Արդար*)՝ *իր զաւակը յաջորդեց հօրը* 1161*ին և մինչև* 1163 *կառավարեց։ Ասիկա եղաւ Ֆաթիմեանց շրջանին Հայ վերջին վէզիրը։ Ֆաթիմեանց իշխանութեան շրջանին, որ Եգիպտոսի բարգաւաճման և ծաղկման շրջաններէն մին է, Հայերու թիւը այսպէս կ'աճի Եգիպտոս մէջ*

---

Նախարար եւ Ակադեմական Կապրիէլ Հանոթոյի հսկողութեան տակ, պատմագէտներու եւ հնախօսներու աշխատակցութեամբ: Անոնցմէ մէկն էր Գ. Վիթ. որ եղած է Գահիրէի արաբական թանգարանին տնօրէն եւ արաբական գեղարուեստի բարձրագոյն հեղինակութիւնը կը համարուի:



*և անոնք մեծ ու կարեւոր դեր կը կատարեն, ինչ որ կը հաստատեն թէ՛ Հայ և թէ օտար պատմիչներ։*

Gaston Viet*ի հայկական շրջան կոչած ժամանակամիջոցին, Եգիպտոս ունէր օրինակելի կարգ և կանոն ու հասած էր չլսուած ու չտեսնուած բարգաւաճումի։ Արհեստները, ճարտարարուեստը, գեղարուեստները, երկրագործութիւնը զարգացած էին. կարեւոր շէնքեր, մզկիթներ եայլն կառուցուած էին* (Gaston Viet)։

*Եգիպտոսի Հայ գաղութին, ինչպէս նաև Հայ զինուորներուն թիւը բազմացած և Հայերը իրենց ոսկեդարը ապրած են Եգիպտոսը մէջ։ Բայց ոմանց նախանձը գրգռած և այս պատճառով ալ զրպարտուած են և կողոպուտներու ենթարկուած։*

*Վկայասէրի այցելութենէն հազիւ հարիւր տարի ետք Հայ Ապու Սալէհ պատմագիրը կը թուէ երեսունի չափ Հայ եկեղեցիներ և վանքեր, որոնց մէկ կարեւոր մասը Ֆաթիմեանց շրջանին շինուած էին։*

*Այդ շրջանէն կանգուն կը մնայ միայն Սոհակի «Սպիտակ վանքը»* (Տէյր-Էլ-Ապիատ), *որ խպտիականացած է և նուիրուած Ս. Շնուտայի անուան, և որ նկարազարդուած է հայկական ոճով և ունի երեք հայերէն արձանագրութիւններ, որոնց մէջ կը յիշուի նկարիչին անունը և Գրիգոր Վկայասէր կաթողիկոսին և անոր ձեռնադրած Եղիպտոսի Հայոց առաջին առաջնորդին անունները։*

*Շատ նշանակելի է որ Հայ նկարիչը՝ Թէոդորոս՝ Քեսունցի մըն է, ինչ որ փաստ մըն է թէ Եգիպտոսի Հայերը եկած էին Կոմմագենէէն կամ Եփրատացւոց, Ասորիքի և Սիւրիոյ շրջանէն։*

*Այդ արձանագրութիւնը կը վկայէ թէ, այդ շրջանակին Հայերը կ'աշխատէին քարահանքերու մէջ։*

*Մագրիզի կը հաստատէ որ ԺԲ. դարուն մեծ թիւով Հայեր կային Գահիրէի մէջ, մանաւորապէս Պասատիներու (հին Գահիրէի հարաւակողմը), Հարէթ Զուէյլայի (Պէյն Էլ Սուրէնի կողմը), Հարէթ Հիւսէնիէի և Գասարիէ Գուրաշիայի մէջ։*

*Միայն Հարէթ Հիւսէնիէի Հայերուն թիւը* 7000*էն աւելի էր։ Բնական է որ այսքան բազմամարդ և ճոխ գաղութի մը մէջ վաճառականներ և արհեստաւորներ ալ կային։*

*Այս Հայերուն բազմութիւնը Եգիպտոս լեցուած էր ապահովաբար Սելջուկեան արշաւանքներուն հետեւանքով։ Հաւանօրէն երբ Ֆաթիմեանք խոյս տուած են՝ թերեւս պարպած են Սիւրիան և բնակիչները տարած են Եգիպտոս՝ զայն չէնցնելու համար։*

*Պատրի Ասորիքէն ըլլալն իսկ բաւական է համոզուելու՝ թէ Հայերը Ասորիքի և Սիւրիոյ ճանապարհով միշտ Եգիպտոս մտած են և հաւանական է որ Պատր Էլ Կամալին և իր որդին Էլ Մելիք Էլ Աֆտալ, որոնք Եգիպտոսի Ֆաթիմեաններու անկումը յապաղեցուցին, (Գատըըմէր,* Յիշատակութիւնք ի վերա Եգիպտոսի), *Սիւրիոյ մէջ պատերազմած ատեննին՝ զանոնք փոխադրած են Եգիպտոս։ Այդ պատերամներուն յիշատակութիւնը կը պահէ միայն*

Սիւրիական և Միջագետքի իրերուն քաջատեղեակ Հայոց պատմագիրը՝ Մատթէոս Ուռհայեցի, որ «Ամիր Էլ Ճիւյիւշ» զօրապետական տիտղոսը՝ Հայազգի վէզիրին՝ «Ամր Ճօշ» կը կարդայ (Ուռհ., 280) և յայտնապէս կը վկայէ թէ Ասորւոց երկիրէն է ան և Հայոց ազգէն։

Թէև ոչ շատ ճշգրտութեամբ, սակայն վերի վերոյ՝ Ուռհայեցի կը բացատրէ թէ ինչպէս Դամասկոսի Ամիրան Ախսիս = Ազիզ կ՚ապստամբի և Պատրը Էլ Կամալի զայն նեղը կը ձգէ։ Ազիզ օգնութիւն կը խնդրէ Դդուշէն — Սելջուկ Սուլթանէն և Սելջուկեան Մելիք Շահի եղբօրմէն—, որ թէև Եգիպտական զօրքը կը վանէ, սակայն դաւով Ազիզը սպաննելով՝ անոր երկիրներուն կը տիրանայ (Տըկենեը, Պատմ. Հոնաց, Գ. 215)։

Ուռհայեցի սոյնը կը պատմէ անուններու շփոթութեամբ կամ դէպքերու ետ առաջ շրջումով։ Այսպէս կ՚ըսէ։ «Ախսիս Թուրք էր եւ էր այր քաջ եւ պատերազմող, ու յաղթեաց Մսրայ եւ ծերացեալ զթագաւորն Եգիպտոսի զԱզիզն (1) եւ եհան զնա յայնմ գաւառէն եւ սա էառ ի Մսրայ զսուրբ քաղաքն Երուսաղէմ» ու կ՚աւելցնէ «սա զարհուրեցոյց զամենայն տունն Մսրայ, մինչեւ յարեաւ ընդդէմ նորա ծառայն Ազիզին (2), թագաւորին Մսրայ, զորս բերին նմա զնա ծառայ ի Հայոց ազգէն եւ նա անուանեաց զնա Ամր Ճօշ (= Ամիր Ալ Ճիւյիւշ): Սորա վառեալ գունդ զօրաց ընդդէմ Ախսիսին ի ՀԱՅՈՑ ԶՕՐԱԿԱՆԱՑՆ, եւ եկաց պատերազմաւ ընդդէմ նորա եւ ապա եղեւ խաղաղութիւն տանն Մսրայ» (Ուռհ., 280): Այս տողերէն կարելի է հետեւցնել թէ Սիւրիան էր հաւանօրէն այն վայրը, ուրկէ կ՚առնէր այդ զօրքերը Ամիրապետին Հայ զօրապետը։

Իր որդին նոյնպէս 1096ին յաջողած է վերստին արշաւել Պաղեստին և գրաւել Երուսաղէմը Նէճմէտտինի ձեռքէն և այս առթիւ հաւանական է կարծել թէ Հայեր կրկին փոխադրուած են Եգիպտոս, որուն Սիւրիոյ վրայ գերիշխանութեան վերջ կու տային Խաչակիրները 1099ին, երբ այլեւս ստուար հայութիւն մը արդէն գոյութիւն առած էր Եգիպտոսի մէջ և կը ծառայէր երկրին բարգաւաճման և բարւոք կառավարութեան։

Ֆաթիմեաններու ատեն Հայ պաշտօնատարներու թիւը այնքան մեծ էր, որ Հայ վէզիրներ կ՚ամբաստանուէին թէ շնորհուկ կ՚ընեն Հայերուն։

Դժբախտաբար շատ քիչերուն անունները մեզի հասած են, ան ալ իբրև Հայ վէզիրներու ազգականներ։ Պիտի չյիշեմ անոնցմէ ծանօթներուն անունը (3) և պիտի բաւականանամ ըսելով թէ խիստ շատ էին հայկական ծագում ունեցող մեմլուքներ կամ իշխաններ և բարձրաստիճան անձեր։

Առանց սոր, Վահրամ Պահլաւունի պիտի չմեղադրուէր թէ բոլոր պաշտօնները Հայոց սեփականել կ՚ուզէ։ Անժխտելի է որ Եգիպտոս այդ շրջանին ունէր պատկառելի Հայ գաղութ մը որ Եգիպտոսի մէկ ծայրէն միւսը տարածուած էր, ինչպէս կը մակաբերուի բազմաթիւ Հայ եկեղեցիներու և Պապ Էլ Արմէններու (1) (Հայկական դուռ) գոյութենէն և այլ զանազան յիշատակութիւններէ։ Դժբախտաբար Հայերու նպաստաւոր այս կացութիւնը տեւական չեղաւ։ Նախ Եգիպտոսի միութիւնը կը քայքայուէր, վասնզի Պաղեստինի Լատին թագաւորութիւնը Սիւրիան կը բաժնէր Եգիպտոսէն և հոն Նուրէտտին առիթ կը գտնէր ամրանալու և անկախ Սուլթանութիւն մը կազմելու։

(1) Մունդանսէր պէտք է ըլլայ:

(2) Նոյնպէս սխալ:

(3) Այս տողերը գրողը պատրաստ ունի Եգիպտոսի Հայ գաղութին պատմութիւնը, որմէ միայն քաղուած մը ըրած եմ սոյնտեղ, այդ գործին հրատարակութեան վերապահելով շատ կարեւոր մանրամասնութիւնները:



Երբ Ֆաթիմեանք օրէ օր կը տկարանան և Երուսաղէմի թագաւորութիւնը վերջ կը գտնէ, Նուրէտտին առիթէն օգուտ կը քաղէ և Սալահէտտին զօրավարը Եգիպտոս կը ղրկէ, ուր Էմիր Իւլ Ճիւյիւշ կը դառնայ և քաղաքական իշխանութիւնը ամբողջովին ձեռք կ՚առնէ։

Ֆաթիմեան վերջին Սուլթանը՝ Ատէտ Իպն Եուսուֆի (1160—1171) վրայ կը մնայ միայն կրօնական հեղինակութիւն մը, զոր իր մահէն յետոյ Նուրէտտին կը ջնջէ և Եգիպտոսն ալ Աբբասեանց ամիրապետներուն ազդեցութեան կ՚ենթարկէ։

Սալահէտտին՝ Նուրէտտինի մահէն յետոյ, Եգիպտոսի մէջ ինքնագլուխ կ՚ըլլայ (1171) և կը հիմնէ իր հօրը անունով կոչուած Էյուպեան հարստութիւնը, որ իրեն միացնելով նաեւ Սիւրիոյ Սուլթանութիւնը, կը կազմէ ընդարձակ պետութիւն, որ մինչեւ Հայաստան կը տարածուի։

Իշխող տան այս փոփոխութենէն յետոյ՝ Հայերը սկսան ապրիլ անապահովութեան մէջ և վրդովուեցաւ իրենց հանգիստը, մանաւորապէս անոնց դէպի Ֆաթիմեանները ցոյց տուած անձնուիրութեան պատճառով։

Սուլթան Սալահէտտինի առաջին գործը եղաւ ցրուել Հայկական բանակը, որ կարեւոր տարր մը կը կազմէր երկիրին զինուորական ուժին մէջ։

Մագրիզի կը գրէ թէ «Հասաբ Պօն Մեմաքիի ձեռագիրին մէջ կարդացի, թէ Րուզզիք Պին Սալեհի (2) օրով Ֆաթիմեաններու իշխանութեան անկման շրջանին եգիպտական բանակին թիւն էր 40,000 ձիաւոր եւ 30,000 հետեւակ: Ուրիշ մը այս թիւին վրայ կ՚աւելցնէ 10,000 ռազմիկ պարունակող 10 գռկանաւեր: Երբ որ յետեւալ իշխանութիւնը անհետացաւ Սուլթան Սալահէտտինի ձեռքով, այս վերջինը հեռացուց սեւամորթ գերիներէ, եգիպտացի էմիրներէ, պետերէ, ՀԱՅԵՐԷ եւ ուրիշ տարրերէ բաղկացած Եգիպտական բանակը եւ նոր բանակը կազմեց մասնաւորաբար Քուրդերէ եւ Թուրքերէ» (Մագրիզի, Ա. հտ., էջ 152)։

Սալահէտտին, ծագումով Քիւրտ, Հայաստանի Դուին քաղաքէն, բնաւ պատճառ մը չունէր հակահայ ոգի ցոյց տալու՝ եթէ Հայերը դէմ գործած չըլլային, իբրև Ֆաթիմեաններէն երախտաւորեալներ, մասնակցելով եգիպտացիներու յաջորդական ապստամբութիւններուն։ (Տես. Սիոն, 1928, 336—341 կամ Ապու Շամաթի Քիթապ էլ Ռօտաթէյն)։ Մագրիզի կը պատմէ թէ Սալա-

(1) Վերին Եգիպտոս, Ասիութ քաղաքն իսկ ունէր այս անունով դուռ մը:

(2) Ֆաթիմեանց վերջին Հայ վէզիրը (տես. վերը, էջ 462):

հէտտինի զինուորները երբ Գահիրէ կը մտնէին՝ մեծ ապարանքի մը մէջ գտնուող Հայ զինուորներ բուռն կռիւով կը դիմադրեն, սակայն պարտուելով ապստամբներէն, որոնք շատ աւելի բազմաթիւ էին, հրոյ ճարակ կ՚ըլլան։

Նոյնպէս 1192ին մեծ ապստամբութիւն մը Հայերը մասնակցած են (Աբու Շամաթ Քիթապ էլ Ռօսաթէյն), ինչ որ Սալահէտտինի բուռն առելութիւնը գրգռած է և Հայերը ենթարկուած են ջարդերու, և իրենց վանքերը ու կալուածները գրաւուած են և հարստութիւնը կողոպտուած։ Սալահէտտին, Հայերու տրամադրութիւնը և Ֆաթիմեանց կողմը ըլլալը գիտնալով հանդերձ, մնաց Հայերու բարեկամ, վասնզի Երուսաղէմը գրաւած առեն (1187 Հոկտեմբեր 2) բացառիկ շնորհներ ըրաւ Հայերուն, անոնց Ս. Տեղեաց մէջ ունեցած իրաւունքները անխախտ և անաղարտ պահելով և հրովարտակներով զօրացնելով, ինչպէս կը հաստատէ իր կենսագիրը Պէհաէտտին (The Life of Saladin, by Beha-ed-Dine, C. W. Wilsonէն անգլիերէնի թարգմանուած տպ. 1897, London)։

Սալահէտտին այս շնորհները ըրած է անոր համար որ Հայոց Կաթողիկոսը Գրիգոր Տղայ (1173—1193), իրեն ծառայած էր՝ հաղորդելով տեղեկութիւններ Խաչակիրներու ուժին, Գերմանիոյ Ֆրետերիկ Կայսեր մահուան պարագաներուն և Խաչակիր արշաւող բանակին նիւթական ու բարոյական վիճակին վրայ։

Նոյնպէս եթէ Եգիպտոսի Հայերուն ընթացքին համար զանոնք շնորհազուրկ ըրաւ և հալածեց, սակայն իր ծառայութեան մէջ ունեցաւ Հայեր, որոնք իրենց անձնական արժանիքով և հաւատարմութեամբ կրցան գիրքի հասնիլ իր օրով ալ։ Այսպէս, կը յիշուի Պէհաէտտին Գարագուշ մեծագործ ճարտարապետը, որ շինած էր Կիզէի փակոցը և այլ շէնքեր և բերդեր։ Ասիկա Սալահէտտին Սուլթանին շինութիւններուն պետն էր, այսօրուան բացատրութեամբ՝ հանրօգուտ շինութեանց նախարարը։

Իրեն ժամանակակից նշանաւոր Հայ մըն էր նաև Հիսամէտտին Լուլու Էլ Հաճիպ կամ Հակէպ, որ Ֆաթիմեան բանակի զինուորականներէն էր և անոնց անկումէն յետոյ քաշուած կեանք մը կ՚անցնէր. բայց երբ Սալահէտտին իրեն դիմում ըրաւ՝ սիրով ընդունեց եղած առաջարկը և 1174ին եղաւ Եգիպտական Նաւատորմիղին պետը, և նշանաւոր յաղթանակներ տարաւ Խաչակիրներուն դէմ, Կարմիր Ծովին վրայ նաւատորմիղ մը սպառազինելով։

Երբ տարիքը յառաջացաւ՝ քաշուեցաւ գործօն կեանքէ և գթութեան գործերու նուիրուեց ինքզինքը։ Մեռաւ 1200ին (Մագրիզի, Գ. հտ., էջ 138)։

Սալահէտտինի ծառայութեան մէջ էր նաև Հայ մը, որ իբրև գերի Եգիպտոս բերուած էր և բարձրանալով մինչև զօրավարութեան հասած էր։ Այս արիասիրտ անձը՝ Շէրէֆէտտին Գօրգարըշ Էրմէնի Իւլ Ասլ, Սալահէտտին ղրկած է գրաւելու Ափրիկեան Տրիպոլսոյ ընդարձակ երկիրը, որուն անհանդարտ բնակիչները ապստամբած էին։

Բայց անխոհեմ Հայերու ֆաթիմեաններու կուսակից ըլլալը պատճառ եղաւ որ Հայերը, ինչպէս տեսանք հալածուին, և ցիրուցան ըլլան մեծ մասամբ և իրենց թիւը ջարդով, կրօնափոխութեամբ և փախուստով պակսի Եգիպտոսի մէջ։



Այս շրջանին կը գրաւուին Հայերու շատ մը եկեղեցիները, և այլևս չեն յիշուիր հայ եկեղեցիներ և վանքեր, Գահիրէէն դուրս, վասնզի Հայեր չէին մնացած։

1183—1184 Կիլիկիոյ Հայ իշխանապետը՝ Ռուբէն Բ. (1175—1196) և Կաթողիկոսը՝ Գրիգոր Տղայ (1173—1193) բանակցութիւններ կը կատարեն գոնէ Գահիրէի Հայ եկեղեցիները փրկելու, սակայն մասամբ միայն կը յաջողին։

Ասոնք ցոյց կուտան թէ գաղութը անշքացած և իր գոյութիւնը վտանգուած էր, և Հայերը կը կրէին նախորդ փայլուն օրերուն հակահարուածը, կորսնցնելով շատ բան, ամէնէն առաջ իրենց թիւը, որ շատ կը պակսէր։

Էյուպեանք ալ չկրցան միութիւնը պահել և ստորաբաժանուեցան անջատ ճիւղերու։ Դամասկոսի (1174—1250) և Հալէպի (1193—1260) մէջ կազմուեցան երկու Սուլթանութիւններ, որոնք իրենց անկախութիւնը պաշտպանելու համար շարունակ պատերազմի մէջ էին ընդդէմ Մոնկոլներուն և չկրցան չարիք հասցնել Հայերուն, մանաւանդ որ նախ Մոնկոլները Ռուբինեաններու հետ զինակից էին և հետևաբար պատկառելի, և երկրորդ՝ երեքի բաժնուած ըլլալով՝ առանձին առանձին մեծ ուժ մը չէին ներկայացներ։ Սակայն երբ նորադարձ քրիստոնեաներէ կազմուած Մեմլուք զօրքը, որոնք Էյուպեան Եգիպտոսի Սուլթաններուն անձնապահ բանակը կը ներկայացնէին — Թուրք Եէնիչէրիներու պէս — այնքան զօրացաւ որ խորտակեց Էյուպեան իշխանութիւնը և այս տան վերջին Սուլթանը խեղդամահ ընելով անոր տեղը իշխանութեան գլուխ անցուց Մելիք Էս-Սալեհի գերուհիներէն Շաճարէթ-էլ-Տորրը (1250)։ Այս թուականէն սկսեալ Եգիպտոս ենթարկուեցաւ Մեմլուքներու տիրապետութեան, որ տևեց մինչև 1517, Օսմ. տիրապետութիւն։ Հազիւ իշխանութիւնը գրաւած Մեմլուքները մտան Սուրիա և վերջ տուին նախ Դամասկոսի (1250) և ապա Հալէպի (1260) Սուլթանութեանց և հասան Կիլիկիոյ սահմանները, բայց երբ լսեցին թէ Հուլաղու, Հայերու Մոնկոլ դաշնակիցը, մեռած է, առաջին անգամ 1265ին մտան Կիլիկիա և մինչև Սիս մայրաքաղաքը առաջացան։ Կոստանդինի որդին՝ Լևոն գերի ինկաւ Եգիպտացիներուն ձեռքը, որոնք զանազան տեղեր ապստակներ սփռելով բազմաթիւ գերիներ ևս հաւաքեցին — 40,000ի կը բարձրացնեն անոնց թիւը Հայ պատմագիրները — և մեկնեցան երկիրէն։

Այս առաջին հարուածը վերջինը չեղաւ դժբախտաբար և 1274ին (Լևոն Գ.ի առեն՝ 1270-1289) նորէն միևնոյն տեսարանները կրկնուեցան Կիլիկիոյ մէջ։

Եգիպտացիք 1293ին Հռոմկլան գրաւեցին և Ստեփանոս Կաթողիկոսը, ինչպէս նաև բազմաթիւ գերիներ առին նոյն քաղաքէն, յետոյ մտան Կիլիկիա և հոն ալ բազմաթիւ աւերումներ ի գործ դրին, ինչպէս կը վկայեն Ցոյն պատմագիրները։

Ցովհաննէս Վիլլանոս Լատին՝ 1322ին և Հայ գրչագիրի մը յիշատակարանը՝ 1323ին նոյն աղէտներուն կրկնուիլը կը յիշատակեն (1) (Չամ. Գ. 321—

(1) Չամիչեան այս երկու թուականներուն մէջ զատ զատ յարձակումներ պատահած կը համարէ, բայց այնպէս կը թուի թէ Լատին պատմագիրին եւ Հայ գրչագիրին պատմածները կը պատկանին միակ յարձակումի մը:

323): Նոյնիսկ Լատին գրիչը տարուած գերիներուն թիւը կը սահմանէ Անտանայի գրաւումէն յետոյ՝ նշանակելով յայտնապէս թէ 20,000ը կ'անցնէր: Հուսկ ուրեմն 1375ին՝ Լևոն Ե.ի իշխանութեան վերջ կը տրուի: Ամբողջ տարի մը Կիլիկիան սուրի և գերութեան մատնուելէ յետոյ, ինչպէս կը վկայեն միահամուռ Մարտիրոս վրդ., Կիլիկեան անանուն պատմիչը և Ռինալտ Լատինը (Զամ. Գ. 360):

Լևոն Ե. իր ընտանիքով գերի կ'իյնայ Եգիպտացիներուն ձեռքը, որոնք զինքը Եգիպտոս կը փոխադրեն և կը բնակեցնեն ըստ ոմանց Մանսուրայի մօտ տեղ մը բայց աւելի հաւանօրէն Գահիրէ:

Ասով վերջ կը գտնէ Հայոց Թագաւորութիւնը, որ ուղղակի զոհը եղած է լատինական խարդաւանանքներու:

Խաչակիրներուն ձախողութիւններէն յետոյ, Հռոմի Պապերուն գլխաւոր մտահոգութիւններէն մէկը եղաւ Երուսաղէմի և Արևելքի քրիստոնեաներուն փրկութիւնը, որ իրենց համար սքանչելի պատրուակ մըն էր Արևելքի քրիստոնեաները Հռոմի պապերուն հնազանդեցնելու համար: Սակայն ինչպէս Յոյները՝ Հայերը միայն կրօնական միութեան ստիպած էին, առանց իրական օգնութիւն մը ընծայելու. Հռոմի պապերը, նոյնպէս, միշտ ու հանապազ իրենց հնազանդութեան հրաւէրներուն մէջ խոստումներով բաւականացած էին և ինչպէս Հայոց Թագաւորութեան նոյնպէս և Բիւզանդական Կայսրութեան ջնջումին պատճառ եղած էին, իրենց այդ խոստումներովը գրգռելով Մահմետականները, մանաւանդ Մեմլուքները, որոնց դէմ միայն կրնար կազմակերպուիլ ծրագրուած Խաչակրութիւնները:

Կիլիկիոյ Հայոց Թագաւորութիւնը, որ Իսլամական աշխարհին մէջ իր գոյութիւնը կը պահէր, իր յուսահատ դրութեան մէջ միշտ աչքը Արևմուտք դարձուցած էր, ուրկէ կ'սպասէր իր փրկութիւնը:

Պապերը միշտ խոստումներ միայն կու տային դժբախտաբար, խոստումներ, որոնք Իսլամները Հայոց դէմ զինելէ զատ ուրիշ օգուտ մը չունէին: Ասոր ապացոյցն ալ սա է որ Լևոն Դ. երբ խոհեմութիւն ունեցաւ 1337ին հաշտութիւն խնդրելու Եգիպտացիներէն, անոնք միակ պայման մը դրին՝ որ էր խոստում երդմամբ բնաւ յարաբերութիւն չմշակելու Հռոմայ պապերուն հետ (Զամ. Գ. 337), ինչ որ խոստացաւ Հայ Թագաւորը, սակայն յետոյ դրժեց, պարզապէս անոր համար որ Հռոմ յոյս կը ներշնչէր անգամ մը ևս և միշտ ընդունայն:

Եւ վերջապէս՝ այնպէս եղաւ որ Կիլիկիոյ Թագաւորութիւնը կործանեցաւ առանց այդ օգնութեան երեսը տեսնելու:

Մեմլուքներու իշխանութիւնը անսովոր փայլէ մը ետք, նուաղեցաւ: Այդ իշխանութիւնը En Nasir Mohammedի ատեն (1293—1341) իր տիրապետութեան տակ ունէր Թունուզէն Պաղտատ տարածուող ընդարձակ երկիրները: Բայց ներքին պառակտումներ, որոնց գլխաւոր պատճառը Մեմլուքներու կազմակերպութիւնն էր, տկարացուցին այս պետութիւնը և պատճառ եղան իր կործանումին:

Մեմլուքներուն մէջ կային Թուրքեր, Քիւրտեր, Թաթարներ, Չէրքէզներ, ՀԱՅԵՐ, Յոյներ, Վրացիներ և այլ կովկասեան տարրեր, մեծ մասամբ քախտախնդիրներ, որոնք զինուորագրուած էին Եգիպտական բանակին: Հայերը այս խառնուրդին մէջ ոչ արհամարհելի թիւ մը ունէին, բայց դժբախտաբար անյիշատակ մնացած են, վասնզի անոնք ծածկած են իրենց ծագումը և ինքզինքնին ի ծնէ մահմետական ցոյց տալ ուզած են:

Ըստ Մագրիզիի՝ 1290ին, Մէմլուք Էշրէֆ Խալիլի իշխանութեան սկիզբը, 10,000 սուլթանական Մեմլուքներէն 3700ը ՀԱՅԵՐԷ և Չէրքէզներէ կը բաղկանար: Հաւանօրէն անոնց թիւը աճած է, վասնզի Նախ Հայաստանի և Կիլիկիոյ մէջ տիրող դժբախտ կացութեան պատճառով, գերեվաճառները պատեհութիւն ունեցած են գերիներ հաւաքելու այդ շրջաններէն և երկրորդ՝ Կիլիկիայէն Եգիպտական բանակները բազմաթիւ գերիներ վերցուցած են:

Դժբախտաբար շատ քիչ բան գիտենք Հայ Մեմլուքներու մասին, բայց այդ քիչը բաւական յատկանշական է:

Նոյնիսկ, Մեմլուքներու շրջանին բացումը — ինչպէս տեսնուեցաւ — 1250ին կը կատարէ թագուհի մը, որ հայուհի մը ըլլալ կը կարծուի (1): Զայն գնած է Մելիք Սալեհ իբրև գերի 1223ին՝ Սիւրիոյ մէջ, Եգիպտոսի գահը բարձրանալէ առաջ և յետոյ զայն կին առած էր: Իր ամուսինին մահէն (1249 Նոյեմ. 21) ետք, Շաճարէթ-էլ-Տորր երեք ամիս կը կառավարէ երկիրը, երբ Լուի Թ.ի գլխաւորութեամբ Խաչակիրները 1249 Յունիս 6ին Տամիէթ մտած էին և գերի բռնած Եգիպտացի սպարապետը, որուն տեղ Թագուհին կը նշանակէ Բիբարս (2) Մեմլուք զօրավարը, ծագումով Քիփչաք, և գերազանցապէս ռազմիկ, որ պարտութեան կը մատնէ Խաչակիրները և Լուի Թ.ը գերի կը բռնէ (6 Ապրիլ 1250):

Շաճարէթ-էլ-Տորր երբ կը զգայ թէ անհնար պիտի ըլլար իր իշխանութիւնը շարունակել, ամուսնացաւ Իզզէտտին Այբէք կամ Իբէք Աթաբեկին հետ և անոր փոխանցեց վեհապետութիւնը, և այսպէս Էյուպեաններէն իշխանութիւնը Մեմլուքներուն անցաւ:

Շաճարէթ-էլ-Տորր երբ տեսաւ որ Իբէք կ'ուզէ ձերբազատուիլ իրմէն, զայն բաղնիքին մէջ սպաննել տուաւ:

Ասիկա պատճառ եղաւ անսանձ ըմբոստութիւններու, որոնց մէջ սպաննուեցաւ նաև ինքն (1250 Հոկտ. 7ին):

Անգամ մը որ Մեմլուքները տիրացան Եգիպտոսի, ծայրահեղութիւններու գիմեցին և հակառակորդ եղան քրիստոնեաներուն, ինչպէս Հայերուն, որոնց համար այս շրջանը չեղաւ բարօրութեան ժամանակ մը:

Այս շրջանին Կիլիկիայէն և Սիւրիայէն բերուած Հայ հազարաւոր գերիներուն թիւը ճշդել կարելի չէ, ինչպէս կարելի չէ զանոնք նկատել պաղթա-

---

(1) *Alain de Mérionec* եւ *Stanley Lasse Poel* **Եգիպտոսի Պատմութիւնը Միջին Դարուն** գիրքին մէջ, անոր Հայ ըլլալը կը հաստատեն: Նոյնպէս կարծեն Զամանիրի եւ *Nouveau Larousse Illustré* համաձայն են: Արաբ պատմիչներ զայն Թուրք կը ներկայացնեն, միայն Էլ-Աէխաուի պատմիչն է՝ որ կ'ըսէ թէ ոմանք կը կարծեն թէ ան Հայ էր:

(2) Բիբարս կամ Պիպարս էլ Պոնտուգտար Մեմլուքը որ մեր պատմութեան մէջ Փնտուխտար անունով յիշուած է եւ Կիլիկիոյ մեր թագաւորութեան մեծ չարիքներ հասուցած է:

կաններ, վասնզի անոնց մեծ մասը իբրեւ Հայեր չեն ապրած Եգիպտոսի մէջ։

Մանուկները՝ իսլամանալով Մեմլուքներու շարքերը և կիները՝ մեծամեծներու հարէմները լեցուցած են, իսկ չափահասները ստրկութեան մատնուած են, եթէ կրօնափոխ ըլլալու չեն ստիպուած

Այս դառն պայմաններուն մէջ Հայը՝ ինչպէս այլուր՝ նոյնպէս Եգիպտոսի մէջ կրցած է տոկալ և ապրիլ և մասամբ ալ մշակութային աշխատանքներ կատարել, անապատականի վիճակին մէջ գրչագրութիւններ կատարելով։ Այնպէս որ Մեմլուքներու շրջանին Հայ անապատականներ կ'ապրին Սկիտէյի (Scetė) վանքերուն մէջ և նոյնիսկ հայ գրչութեան կը ծառայեն։

Երուսաղէմի Հայոց վանքին մէջ ցարդ կը պահուի Սկիտէ գրուած ձեռագիր մը 1353 թուականով (Մկրտիչ Արքեպս. Աղաւնունի, Տաթեւ տարեցոյց 1929, էջ 39—50):

Նոյն ԺԴ. դարուն Սկիտէ գրուած հինգ լեզուեայ (Հայերէն, Ասորերէն, Ղպտիերէն, Արաբերէն և Հայերէն) ձեռագիրի մը մասերն ալ կը գտնուին Վատիկանի, Միլանի Ամբրոսիոսեան մատենադարաններուն և Լոնտոնի Բրիտանական թանգարանին մէջ (Revue Biblique, 1914, էջ 265—286):

Յովհաննէս Դարդելի Լատին կրօնաւորը, որ Լեւոն Ե.ի խոստովանահայրն էր և անոր հետ գտնուած է Գահիրէ, կը հաւաստէ որ այդ շրջանին Եգիպտոսի բանակին մէջ բազմաթիւ իսլամացած Հայեր կային իբրև խորհրդական։ Անիկա կը յիշէ Հայոց Կոստանդին Ե. թագաւորին կնոջ եղբայրը՝ Աշոտը՝ որդի Պարոն Օշին Նղրեցիի, որ փախած էր Գահիրէ և հաւատափոխ եղած։

Դարդելի կուտայ նաև փաստ մը թէ Գահիրէի մէջ այն ատեն տակաւին իր գոյութիւնը կը պահէր Հայ գաղութը, վասնզի երբ Լեւոն Ե. 9 Յուլիս 1375ին Գահիրէ կը հասնի և կը խնդրէ ազատ բնակութիւն քաղաքին մէջ, Սուլթանը կը կանչէ «մեծամեծները և պատուաւորները Հայոց, որոնք հնուց ի վեր կը բնակէին ի Գահիրէ եւ Սուլթանին հպատակներն էին» և անոնց երաշխաւորութիւնը կը պահանջէ (էջ 153), ինչ որ Հայերը կու տան և Լեւոն Ե.ի բնակութեան տուն մը կը յատկացնեն (նոյն, 153)։

Նոյն պատմիչը (155) դարձեալ Գահիրէի մէջ գտնուող Հայ քահանաներու և Հայ բնակիչներու յիշատակութիւնը կ'ընէ, ինչ որ որոշապէս ցոյց կու տայ թէ Հայերը իրենց գոյութիւնը կը պահէին և նոր բերուած գերիներէն անոնք որոնք կը հանդուրժէին գրկանքներու և հալածանքի և չէին իսլամանար, գաղութին թիւը կը շատցնէին։ Կիլիկիայէն Եգիպտոս փոխադրուած Հայ գերիները հաւանօրէն կը բնակեցուէին մասնաւոր վայրերու մէջ։ Անոնցմէ մէկը ըլլալ կը թուի Մարմինայի գերեզմանատան բարձրադիր մասը, որ կը ճանչցուէր Գոմ էլ Արմէն (Հայոց Բլուր) անունով։

Շատ հաւանական է որ Ղպտիները արգահատելով իրենց դաւանակից այդ Հայերուն տրամադրած են իրենց Ս. Մինաս անուամբ եկեղեցիին մէկ թեւը և անոր պարտէզէն մաս մը իբրև գերեզմանատուն ծառայած է։

Մագրիզի, որ ԺԵ. դարուն (1441—2) գրած է իր Գահիրէի Տեղագրութիւնը, կը յիշէ այս Ս. Մինաս եկեղեցին՝ Գահիրէի ճամբուն վրայ, «ընդ



մէջ Ջրմուղին և հողակոյտերուն», որ երեք եկեղեցի էր իրարու կից, մէկը Յակոբիկեանց, միւսը Ասորիներու և երրորդը Հայերուն յատկացուած։ Յակոբիկեանները և Ասորիները իրարմէ զանազանելը սխալ մըն է, ուստի պէտք է անոնցմէ մէկը նկատել Ղպտիներու սեփական։

Ասորիները՝ նոյնպէս դաւանակից Ղպտիներու և վիճակակից Հայերու և հաւանօրէն անոնց պէս Կիլիկիայէն և Սուրիայէն տեղափոխուած, պարզ է որ իրենք ալ ստացած պիտի ըլլան այս եկեղեցիին երեք տաճարներէն մին։

Եգիպտոսի Հայ գաղութին գոյութիւնը պահուած ըլլալուն մէկ փաստը 1402ին Միսրայ Եպս.ի մը «բազմութեամբ ժողովրդոց» Մելիք Էշրէֆի Սէյֆի Սուլթանին ներկայանալն է (Աստուածատուր Եպսկ. Տ. Յովհաննէսեան, Պատմութիւն Երուսաղէմի)։

1441 թուականով խաչքար մը որ ցարդ կը մնայ, ցոյց կու տայ թէ ԺԵ. դարուն սկիզբը Հայեր կային Եգիպտոս, հաւանօրէն Կիլիկիայէն բերուած գերիներով ստուարացած։

Մագրիզի կը յիշատակէ (Գ. հտ. էջ103—5) հայ ծագումով Մուֆրզէտտին Ապուլ Ֆարաճը, որ վէզիրը եղած է էլ Մելիք էլ Զահեր Պարգուգի, որ 1393—4ին Դամասկոսի տեսուչ կարգուեցաւ և 1390ին պաշտօնանկ եղաւ, բայց քիչ յետոյ վերահաստատուեցաւ իր պաշտօնին մէջ։ Անոր որդին՝ Թաճէտտին Ապտէլ Րազզագ եղած է էմիր, վէզիր և Ուսթատար, իսկ անոր որդին էր Ֆախրէտտին Ապտէլ Ղանի, որ էմիր, վէզիր, Մուշիր և Ուսթատար տիտղոսները կը կրէր։ (Մագրիզի Գ. հտ., էջ 138): Մեռած է 1419ին։

Անոր եղբայրն էր Գատի Եահեա Զէյնէտտին կամ էլ-Զէյնի էմիր, որ ԺԵ. դարուն գիրք գրուած էր։ Անիկա Ուսթատարն (պալատական կառավարիչ) էր Սուլթան Էր-Զահեր Ջագմաքի և անոր խորհրդականը և մտերիմը։

1453էն ետք, Օսման երբ կը յաջորդէ իր հօրը Ջագմաքի, կողոպտուի և անլուր չարչարանքներու կ'ենթարկուի և ի վերջոյ ծեծի տակ կը մեռնի։

Այս իսլամացած Հայը կանգնած էր բազմաթիւ մզկիթներ, ուսումնարաններ ևայլն։

Մեմլուքներու շրջանին, քրիստոնեաներուն կեանքը այս մեծ Հայուն կեանքին նման ելևէջներու առարկայ եղած և աննշան դէպքեր մեծ համեմատութիւններ առած և ջարդերու պատճառ եղած են։

Բազմաթիւ այս տեսակ դէպքերէն ամէնէն նշանակելիներն են 1342ի Եգիպտոսի զանազան կողմերը կարգ մը եկեղեցիներու քանդումը և շատ մը քրիստոնեաներու ջարդը (Մագրիզի, 425—428) և 1389ին պատահած ջարդը, որ Գահիրէի մզկիթներէն մէկուն հրկիզումին հեղինակը Ղպտի քահանաները կարծուելուն հետևանքով կատարուած է։

Քրիստոնեաները անխտիր ջարդուած են և քանի մը ամիսներու անտավոր հալածանքէն յետոյ՝ Սուլթանը հրաման հանած է որ Քրիստոնեայք ձի և ջորի չնստին և իսլամներու գլխանոցին նման գլխարկ չդնեն։

Անոնք ցոյց կու տան թէ ինչ դառն օրեր ապրած են Հայերը այդ շրջանին։

*
* *

Եգիպտոսէն աւելի հարաւ, Եթովպիա կամ Հապէշիստան, Հայաստանի հետ յարաբերութիւն ունեցած է Զ. դարէն սկսեալ, եթէ ոչ աւելի կանուխ (տես. ՊՀԳ., Ա. 386)։ Նոյնպէս Հայ և Եթովպական եկեղեցիներու միջեւ յարաբերութիւնը պահուած է միշտ և Եթովպիայի կրօնաւորներ Հայաստան և Հայ եկեղեցականներ Հապէշիստան գացած են։ Եւ ինչպէս յիշուած է այս այցելութիւններուն յիշատակը պատահօրէն պահուած է տարեգրութիւններու մէջ, (տես. ՊՀԳ. Ա., էջ 386—7)

ԺԱ. դարէն յետոյ ալ այս յարաբերութիւնները պահուած ըլլալ կը թըւին։ Մասնաւորապէս Երուսաղէմի մէջ՝ Հայերու հովանիին ապաստանած են Հապէշները, հաւանօրէն իբրև դաւանակից Հայերու, համարուած ըլլալով Խաչակիրներէն որպէս ոչ-Քաղքեդոնական։ Այս յարաբերութիւնները ԺԱ.—ԺԵ. դարերուն ալ շարունակուած են։

Այսպէս, ԺԲ. դարուն կը յիշուին Եւստաթիոս անուն Հայ Եպիսկոպոս մը, որ իր աշակերտներուն հետ այցելած է Եթովպիա՝ կրօնական առաքելութեամբ (Ց. Նալպանտեան, Արեւ, 15 Փետր. 1935) և 1421ին Հապէշ երկու քահանաներ, որոնք Խիզանի մէջ կը նահատակուին և կը թաղուին Խիզանի Բարեձորոյ վանքը որ է Եօթնխորան Ս. Աստուածածին վանքը (Հ. Աճառեան և Ց. Մանանդեան, Հայոց Նոր վկաները, 244, Օրմանեան, Ազգապատում, 2056):

Հապէշները իրենք կը հաւաստեն թէ 1440ին, Հապէշիստանի մէջ կ'ապրէր Հայ ծագումով Աբբա Գէորգ անուն կրօնաւոր մը, որ շարադրած էր Ս. Կոյսի Երգեհոն անուն շարական մը, որ պատուոյ տեղ կը գրաւէր Հապէշ եկեղեցին մէջ (Թորգոմ Եպս. Գուշակեան, Արեւ, թ. 1269, 23 Ապրիլ 1923 և Ց. Նալպանտեան, Արեւ, 16 Փետր. 1935)։

Այս Հայ ծագումով եկեղեցականին ժամանակակից կը յիշուի Եթովպիոյ Տէսէն քաղաքին մօտ Հայկական ճարտարապետական ոճով կառուցուած վանք մը «Հայք» կոչուած տեղացիներէն։ Թերևս այդ աղէտալի թուականներուն, քրիստոնեայ Հապէշիստան հաստատուած Հայերէն կազմուած էր ան։ Հայերը կը թուի թէ փորձած են օգտուիլ այս քրիստոնեայ ազգէն՝ զայն ալ մասնակից ընելով Խաչակրութիւններու։

Հեթում Պատմիչ Թաթարաց, որ Կոռիկոսի տէրն էր, Հռոմի Պապին ԺԳ. դարուն վերջերը կամ ԺԴ. դարուն սկիզբները յանձնարարած է յորդորական գիր մը գրել Եթովպացիներու թագաւորին՝ Խաչակրութեան մը ձեռնարկելու մահմետականներուն դէմ, և միանգամայն յանձնարարած է այդ թուղթը ղըրկել Հայոց թագաւորին, որ թարգմանել տալով Եթովպացիներու լեզուին՝ այնպէս ղրկէ կամ տանի թագաւորին։

Ասկէ դիւրին է մակաբերել թէ Կիլիկիա և Հապէշիստան յարաբերութիւններ ունէին իրարու հետ և Հայոց թագաւորին արքունիքին մէջ Հապէշ լեզուին ծանօթ մարդիկ կային։

Այս յարաբերութեան պատճառը կը կարծուի ըլլալ փղոսկրը զոր Հայ վաճառականներ կը տանէին մինչև Հնդկաստան և Չինաստան, Եգիպտոսի



ճամբով, Կիլիկիա և անկէ ցամաքի կարաւաններով՝ Ասիոյ ներսերը տանելով։

Այսպէս, Ասիական բարբարոսներու շրջանին, որ չորս դար տևած է, Հայ և Հապէշ յարաբերութիւնները՝ որոնք շատ կանուխէն կ'սկսէին՝ շարունակուած են քիչ շատ։

Ց. Նալպանտեան (Արեւ, 16 Փետր. 1935), կ'ենթադրէ թէ Սուրիոյ և Կիլիկիոյ վերջնական գրաւումէն յետոյ, երբ քրիստոնեաներու վիճակը տագնապալի եղած է Եգիպտոսի մէջ, բազմաթիւ Խպտիներ Հապէշիստան գաղթած են իբրև քրիստոնեայ երկիր։ Այս Խպտիներուն հետ ԺԴ. դարուն սկիզբները կը կարծուի թէ Հայեր ալ անցած են Հապէշիստան։

Այսպէս, այդ երկիրին մէջ, որ աշխարհի վերջին ծայրը կը նկատուէր այդ դարուն, երբ տակաւին Ամերիկան գտնուած չէր և Հնդկաստանի ծովային ճանապարհը ծանօթ չէր մարդոց, Հայեր գացած են և գործած, ինչ որ կը յատկանշէ Հայերուն նախաձեռնութեան ոգին և յանդգնութիւնը։

## Դ.

## ԴԷՊԻ «ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿՈՂՄՆ ԱՇԽԱՐՀԻՍ»

Հայերը, հնագոյն ժամանակներէն սկսեալ, մանաւանդ քրիստոնէութեան Հայաստան մուտքէն ետք, երբ որ երկիրը խառնակութեան մատնուած կամ արշաւանքի մը ենթարկուած է, ապաստանած են մանաւանդ Հայաստանի արեւմտեան կողմը գտնուող հողերը, ուր՝ ինչպէս գիտենք՝ արդէն բազմաթիւ էին Հայերը, մասնաւորապէս Բիւզանդական տիրապետութեան շրջանին, և լեցուցած էին ընդարձակ տարածութեամբ երկիրներ, ինչպէս շատ գեղեցկօրէն բացատրած է J. Laurent (տես. L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête Arabe jusq'en 886, 1919 Paris, էջ 4—6 կամ ՊՀԳ. Ա., 252—254)։

Բոլոր այն պատճառները, որոնք Հայերը ԺԱ. դարէն առաջ մղած են դէպի օտար երկիրներ, գոյութիւն ունէին ԺԱ. դարէն յետոյ ևս, առաւելապէս և իբրև հետևանք այդ դժոխային պայմաններուն, որոնց մէջ կ'ապրէր Հայաստան, դարձեալ անընդհատ Հայաստան կը դատարկանար գաղթերով, Ասիական բարբարոսներու յաջորդական արշաւանքներու շրջանին, որոնք չորս դարեր տևած են, ԺԱ. դարէն մինչեւ ԺԵ. դար, Հայաստանի վիճակը չէր բարելաւուած և իբրև հետևանք այդ դժբախտ կացութեան՝ Հայերու դէպի արեւմուտք տեղափոխութիւնը չէր դադրած։ Ընդհակառակն պէտք է ըսել թէ Հայաստանի վիճակը շատ աւելի վատթարացած էր, վասնզի Հայ երկիրին մէջ ապաստակող ուժերը կարգաւորեալ պետութիւններ չէին, այլ անշնորհք հրոսակներ։ Բարբարոսներու հեղեղանման հոսանքը և վայրենի խուժանը, գազանային վայրագութեամբ և ընչաքաղցութեամբ, արհաւիրքի կը մատնէր

ժողովուրդը, որ քրիստոնեայ Բիւզանդիոնի երկիրները ապաստանելով, կը յուսար աւլող փոթորիկի մը ճամբուն վրայէն խուսափիլ և ազատիլ։

Հետևաբար, հակառակ Բիւզանդացիներու օրէ օր սաստկացած կրօնական միութեան ջանքերուն և մոլեռանդական արարքներուն, գունդագունդ Հայ ժողովուրդը դարձեալ կը դիմէր Հայաստանի արևմտեան կողմը գտնուող անմիջական դրացի երկիրները։

Սակայն, դժբախտաբար Բիւզանդական կայսրութիւնը այլևս չունէր նախկին զօրութիւնը։ Պետութեան արևելեան սահմանները վտանգուած էին և կայսրութիւնը ապահովութիւն չունէր։

Ներքին և արտաքին թշնամիները հիւծած ու տկարացուցած էին Արևմըտեան քաղաքակրթութեան ախոյեան և Արևելքի գազանական յարձակումներուն դէմ կանգնող այն հսկան, որուն զինուորական մշտավառ և ստեղծագործ ոգիին տեղ՝ հիմա կը տիրապետէր պալատական խարդաւանանքներու, թոյն-դաշունաբոյր դաւերու և նենգութիւններու, ճոռոմ հռետորութեան, մակաբոյծ ազնուականութեան, գիտական և աստուածաբանական ճեմարանական և մեղկացուցիչ վէճերու, դիւրատար կեանքի մեղկութիւններով և հեշտութիւններով լեցուն մթնոլորտը, որ Յուստինիանոսի և Հերակլի կայսրութեան օրերուն փառաւորութիւնը և մեծութիւնը կորսուած անցեալի մը վերածած էր։

Ըսինք նախապէս որ Սելջուկներու Հայաստանի մէջ երևումը փոխանակ սթափեցնելու Յոյները, որոնք պէտք էր Արևելքի սահմանները ամրացնէին տեղական ուժերու գործակցութեամբ, կարծես աւելի մղեց զիրենք ընդգրկելու այնպիսի քաղաքականութիւն մը, որ իրականութեան մէջ անուղղակի օժանդակութիւն էր իրենց թշնամիներուն և հակառակ՝ իրենց շահերուն։ Այսպէս, երբ Սելջուկեանները կը յարձակէին Հայաստանի վրայ՝ Բիւզանդացիք փոխանակ իրենց սահմանագլուխին պաշտպանութեան այս առաջին գիծը ամրապնդելու և հասարակաց թշնամիին դէմ կռուելու, զայն վատաբար անպաշտպան թողուցին։ Ապա անոնք քաջալերեցին Հայերու գաղթը և անոնց իրենց երկիրին մէջ տեղեր յատկացուցին և Օրթոտոքսացնելով և Բիւզանդացի դարձնելով, զանոնք իրենց մէջ ձուլելու յարմար առիթը գտած ըլլալ կարծեցին։ Ասիկա ինքնասպանութեան մը սկզբնաւորութիւնն էր. Հայերէ Հայաստանը դատարկեցնելը՝ Բիւզանդացիներուն համար քաղաքականութիւն մըն էր, զոր Վասիլ Բ.էն (+ 1025) մինչև Ռոմանոս Դիոգինէս (+ 1071) սահող յիսնամեայ ժամանակամիջոցին գործադրեցին անոնք, երբ հետզհետէ աւելի սպառնալից կը դառնային ասիական բարբարոսները։

Հայերը որքան կամաւորապէս, նոյնքան ալ ակամայ, գաղթեցին շարունակ, չորս դար անընդհատ։

Դարձեալ, անոնք իբրև քրիստոնեայ երկիր, նախընտրեցին դիմել արևմուտք, դէպի Պոնտոս, Փոքր Հայք, Կապադովկիա, Կոմմագենէ և փոքր մաս մըն ալ Ասորիք, հիւսիսային Միջագետք, ուր տեղերը արդէն շատ հին ատեններէն հաստատուած էին Հայեր և այդ երկիրներուն մէջ կարևոր դեր դեր մը կը կատարէին։

Այդ անմիջական դրացի երկիրները, որոնք այնքան հոծ Հայ բնակչութեան մը ապաստանավայր եղած էին, գլխաւորաբար Եփրատի արևմտեան եզերքին վրայ հաստատուած, գրեթէ իրարու վիճակակից երկիրներ եղած էին, քաղաքական միևնոյն պայմաններուն տակ ապրելով, վասնզի ասիական բարբարոսները Եփրատի արևմուտքը անցնող Հայերուն ետևէն հասած են և այդ վայրերը իրենց տիրապետութեան ենթարկած են, անդրԵփրատեան այս երկիրները բաժնելով Բիւզանդական Կայսրութենէն։ Արշաւանքներու դարեր տևող շրջանի մեծ մասի ընթացքին, Սև Ծովէն մինչև Միջերկրական, Փոքր Ասիոյ Թերակղզիին պարանոցին երկու ծայրերը միայն կըրցած են գերծ մնալ բարբարոսներուն ոտնակոխ ըլլալէ. մինչ այդ պարանոցին կեդրոնէն՝ վայրենիները կրցած են խուժել ներս և մինչև Պոլսոյ պարիսպներուն առջև կանգնիլ։ Այդ աննուաճ և մասամբ անկոխ երկիրները կը ներկայացնէին Փոքր Ասիոյ հարաւակողմը՝ Կիլիկիան, որ շնորհիւ Հայերու և Հիւսիսային կողմը՝ Պոնտոս, շնորհիւ օրթոտոքսացած կամ Հոռոմ դարձած Եզերացիներու կամ Լազերու, տոկացին և մեծ ճիգերով կրցան պահել քրիստոնեայ երկիրի մը հանգամանքը, մինչ միւս վայրերը կը դառնային իսլամ երկիրներ։



* * *

Իր քրիստոնեայ դրոշմը պահող այս երկիրներէն հիւսիսայինը՝ Պոնտոս, սահմանակից էր Հայաստանի և Փոքր Հայքի և սահմանուած էր անոնց ծովային հաղորդակցութեան ուղին ըլլալու։ Պոնտոս նաև իբրև հայաբնակ գաւառ, երբեմն վարչականօրէն խառնուած է Բիւզանդական Հայաստանի հետ, վասնզի 536ին Փոքր Հայքի մէկ մասը, Հռոմէական Բարձր Հայքը և ծովեզերքը՝ Կիրասոն և Տրապիզոն միացեալ կազմած էին Առաջին Հայք կամ Ներքին Հայք նահանգը, որ Մօրիկ Կայսեր (582—602) նոր բաժանման ատեն, նոյն ծաւալը ունէր՝ միայն անուան փոփոխութեամբ «Մեծ Հայք» կոչուելով (Հ. Յակոբոս Վրդ Տաշեան, Հայ բնակչութիւնը Սև Ծովէն մինչև Կարին 1921, Վիեննա, 15 և Ա. Ալպօյաճեան, Հայաստանի Սահմանները, 20)։

Այս շրջանը շատ հին դարերէ ի վեր եղած է հայաբնակ (տես. ՊՀԳ. Ա. 103 և 107) և ինչպէս Հ. Տաշեան կը գրէ՝ «Հայ ցեղն հնուց իսկ անհրաժեշտաբար աղերս ունենալու էր Հայաստանի սահմաններէն քիչ մը հեռու Սև Ծովու ափանց հետ։ Արդ նեղիւ այն ծովափը ուր կը գտնուի Հայ Համշէն, կը վերաբերէր Հայաստանի, նոյնիսկ երբ ասի պատմութեան մէջ կ'երեւայ առաջին անգամ Armenia ձեւով», (նոյն, էջ 9)։ Պոնտոս ժամանակ մը եղած է օրօրանը թագաւորութեան մը, որ իւրացուցած է նոյնիսկ Փոքր Հայքը, (ՊՀԳ. Ա., 106) և գրեթէ անոր խառնուած և եղած է ստուար Հայ բնակչութեամբ երկիր մը (ՊՀԳ. Ա., 249)։

Մանաւորապէս Տրապիզոն, այս երկիրին գլխաւոր քաղաքը, Է. դարէն նշանաւոր էր որպէս Բիւզանդական Կայսրութեան Արևելքի տնտեսական, ռազմական ու մշակութային նշանաւոր կեդրոնը՝ առևտրական հանգուցակէտ հանդիսանալով մէկ կողմէն Պարսկաստանի, Հայաստանի, Վրաստանի և Կողքիսի, միւս կողմէն Եւրոպական երկիրներու միջև։ Պատմագիրներու վկա-

յութեամբ, Տրապիզոն վաղուց ճանչցուած էր իբրեւ «աշխարհի ամենաթանկագին մարգարիտը» (հմմտ. Գիտական Նիւթերու Ժողովածու, թիւ 1, Երեւան 1941, էջ 11—12)։

Հայաստան ապահովաբար սերտ յարաբերութեան մէջ էր Արաբական տիրապետութեան շրջանին ալ միշտ, քրիստոնեայ Բիւզանդիոնի տիրապետութեան տակ պահուած Պոնտոսի և անոր գլխաւոր քաղաքին՝ Տրապիզոնի հետ, ուր ապաստանած են նաև Հայեր՝ որոնք արաբ հարկապահանջութիւններէն կը նեղուէին։ Արդարեւ, ինչպէս տեսնուեցաւ Ը. դարուն նոյն պատճառով Պոնտոս ապաստանած են Շապուհ Ամատունի և իր որդին Համամ՝ 12,000 հետեւորդներով և Եգերացւոց երկիրին մէջ հիմնած են Համամաշէնը (այսօր Համշէն), որուն բնակիչները ետքը պիտի տարածուէին ամբողջ Սեւ Ծովի Ասիական եզերքները։

Հայերու թիւը Պոնտոսի մէջ այնքան շատ էր, որ Յոյն պատմագիրը Կենդրենոս — ինչպէս յիշեցի (ՊՀԳ. Ա., 249) — «Հայաստան» (Arménia) բառը գործածած է Պոնտոսի համար, վասնզի իրապէս Պոնտոս և Կողոնիա բոլորովին հայացած էին Ժ. դարուն (տես. ՊՀԳ. Ա., 249)։ Այդ դարուն Պոնտոս ոչ միայն ունէր Հայ կառավարիչ, այլ հոն ապրող Հայերը փորձած են ապստամբութիւն մը՝ զոր Յովհաննէս Գուրգէն զօրավարը ընկճած է (նոյն)։

Այսպէս, վաղեմի ժամանակներէն սկսեալ Պոնտոս հաստատուած ստուար Հայերը հայացուցած էին երկիրը, որ իբրեւ Հայաստանի ծովային ելքերէն մին, Հայ վաճառականներու անընդհատ երթեւեկի վայրերէն էր, (ՊՀԳ. Ա., էջ 375)։

Է. դարէն մինչեւ ԺԱ. դար, Հայեր գաղթած էին Պոնտոս և ինչպէս կ'երեւի՝ կրցած էին պահել իրենց դաւանութիւնը, վասնզի 1022ին ունէին յատուկ աղօթատեղի (ՊՀԳ. Ա., 375)՝ երբ Պետրոս Գետադարձ Կաթողիկոս հոն կ'այցելէր։ Այս երկիրին մէկ մասը Փոքր Հայքի պէս բուն իսկ հայկական երկիրին մէկ մասը նկատողներ գտնուած են, զայն Տայքի հետ նոյնացնելով, բայց աւելի բանաւոր է Կողքիսը համարել Պոնտոսի այն մասը՝ որ անոր ամէնէն արեւելեան մասը կը գրաւէ և այսօր Լազիստան կը կոչուի։

Այս երկիրին մէջ, ուր Հայերը երբեմն այնքան շատցած են, զարմանալի կերպով տեղականացած են և երկիրին բնիկներուն նկարագիրը ստացած են, ինչպէս Համշէնցիք, որոնք այնքան նմանիլ սկսած են երկիրին բնիկներուն — Եգերացիներուն և Կողքիսացիներուն — որ կարծես Հայ մշակոյթին ազդեցութեամբ հայացած են։ Արդարեւ, եթէ իրենց ընտիր լեզուն և պատմական որոշ տեղեկութիւններ չհաստատէին անոնց Հայաստանէն գաղթած Հայերու սերունդ ըլլալը, անոնք Լազ պիտի նկատուէին։

Աւելի արեւմուտքը՝ բուն Պոնտոսը, նոյնպէս Հայաստանի սահմաններուն մօտ և միշտ հաղորդակցութեան մէջ եղած է Հայ երկիրին հետ և անյիշատակ ժամանակներէ սկսեալ ունեցած է Հայ բնակիչներ, մանաւանդ իր կեդրոնը՝ Տրապիզոն, որ Հելլէնական մշակոյթին ազդեցութեամբ յունացած քաղաք մըն էր և ուր Հայերը հաւանօրէն լիակատար ազատութիւն չէին վայլեր կրօնապէս։



Այս լեռնային և ծովեզերեայ նպաստաւոր դիրքով երկիրը մասամբ զերծ մնացած է բարբարոս ժողովուրդներու արշաւանքներէն, առանց սակայն երկարատեւ խաղաղութիւն մը վայելելու։

Մասնաւորապէս Լազերը անջատողական տրամադրութիւններ ցոյց տուած են և նոյնիսկ 1063ին Տրապիզոնի մէջ կազմած են առանձին թագաւորութիւն մը՝ Իսահակ և Էմմանուէլ Կոմնեններով, անուանապէս կապուած Բիւզանդիոնի, ուր կը տիրակալէր Դուկաս (Հայերու Տուքիծք) կամ Կոմնենեան ընտանիքը, 1057էն ի վեր, Իսահակ Ա. Կոմնենոսի գահակալութեամբ։

Այդ օրերուն էր որ կը պատահէր Անիի գրաւումը Ալփասլանէ (1065) և անոր բնակիչները կամ կը կոտորուէին և կամ կը ցրուէին։ Անոնցմէ մաս մը թերեւս գաղթած ըլլան Տրապիզոն, թէև այս մասին ոչ մէկ վաւերագրութիւն ունինք։ Եւ շատ ալ հաւանական չէ, քանի որ Ալփասլանի զօրքերը հասած էին մինչև Պոնտոս և կողոպտած երկիրը։ Ռոմանոս Դ. 1068ին հազիւ կրցած էր բարբարոսները հեռացնել Պոնտոսէն (Հ. Գելցեր, 30)։ Ասով հանդերձ բոլորովին անհաւանական չէ որ Անեցիներէն Տրապիզոն գացողներ եղած ըլլան, քանի որ արդէն հոն Հայ հին և հոծ գաղութ մը կար, ինչպէս բովանդակ Փոքր Ասիան, որուն բնակչութեան մեծամասնութիւնը ծագումով Հայ էր, թէև կրօնքով Հոռոմ դարձած։ ԺԱ. դարուն, Պոնտոսի մէջ Հայերը նշանակելի թիւ մը ունէին, ասիկա անժխտելի է նաև անոր համար որ, կը հաւաստուի թէ խումբ մը վանականներ այդ դարուն Հայաստանէն Պոնտոս ապաստանած են և հոն վանքեր հաստատած են։

Տրդատ Եպս. Պալեան (Հայ վանօրայք, էջ 179—198) կը յիշատակէ որ Տրապիզոնի մէջ և շուրջը կային տասնէ աւելի վանքեր, որոնցմէ դուրս ուրիշ վանքեր ալ յիշուած են, դժբախտաբար առանց պատմական տեղեկութիւններու, բայց գոնէ մէկը՝ Ամենափրկչեանը գիտենք թէ գոյութիւն ունէր ԺԱ. դարէն սկսեալ, ստուար գաղթականութեամբ (տես. Հ. Մինաս Վրդ. Բժշկեան, Պատմ. Պոնտոսի, 79—80 և Բազմավէպ, 1901, էջ 273)։

Իբրեւ ուրիշ փաստ մը՝ թէ Տրապիզոն լի էր կայսրութեան հաւատարիմ Հայերով, կարելի է յիշել որ Ալեքս Ա. Կոմնեն կայսրը (1081—1118) նոյն դարուն «Տրապիզոնի Դուքս» կարգած է Գրիգոր Տարօնեցին, կրտսեր եղբայրը կայսեր յոյժ ազդեցիկ մէկ պաշտօնատարին՝ Եպարքոս և Դատաւոր Յովհաննէս Տարօնեցիի։

Գրիգոր Տարօնեցի քիչ յետոյ ապստամբեցաւ և շատ զբաղեցուց Բիւզանդացիները (F. Chalandon, Jean II. Comnène et Manuel I. Comnène. էջ 20 կամ Alexiade XII, է. հտ., II 162)։ Կարելի է ենթադրել թէ այս ապստամբութիւնը Գրիգոր Տարօնեցի Պոնտոս բնակող ստուար Հայերու օգնութեամբ յարուցած է։

Ալէքս Ա. Կայսրը անոր վրայ ղրկեց իր իսկ քեռայրին՝ Միքայէլ Տարօնեցիի միւս որդին՝ Յովհաննէս Տարօնեցին, որ ձերբակալեց Գրիգորը և բանտարկեց Անէմասի բերդին մէջ (F. Chalandon, Alexis I. Comnène, 241–2)։

Իբրեւ «Տրապիզոնի դուքս» Գրիգորին յաջորդեց Կոստանդին Կապրաս, 1119ին։ Զայն Տրապիզոն ղրկած էր Ալէքս Ա.ի յաջորդող Յովհաննէս Բ. Ծիրանածին (Պէրփիւռուժէն) Կոմնենեան կայսրը (1118—1143)։

կապրաս եւ 1120ին ապստամբեցաւ և Տրապիզոնը ոտնակոխ ըրաւ մին-
չեւ որ Կոնծառ Տրապիզոնցին առանձին թագաւոր եղաւ Ղաղխտանի, մինչ
միւս կողմէն Յովհաննէս Տարօնեցի միջնորդեց և բանտէն հանեց Գրիգոր Տա-
րօնեցին և վերահաստատեց զայն իր նախկին աստիճանին մէջ։ Թէոփիլակտոս
Եպիսկոպոս՝ իր Թուղթերուն մէջ (Դ. ԻՋ. և ԼԷ.) մեծ գովեստով կը յիշատա-
կէ Միքայէլի որդի Յովհաննէս Տարօնեցին և կ'ըսէ թէ քաջութեան մեծամեծ
և երեւելի գործեր ըրած է Եգերացիներու և Պոնտոսի կողմերը (Զամ. Գ. 11)։

Այսպէս, ԺԱ. դարուն եկեղեցական հաստատութիւններու և Հայ պաշտօ-
նատարներու գոյութիւնը և այլ անցուդարձեր բաւական են ցոյց տալու հա-
մար որ Պոնտոս թէեւ Յոյն կամ Հռոմ շրջան մըն էր, բայց Հայերը հոն դիմած
էին այն յոյսով որ հոն անդորրութիւն և բարօրութիւն պիտի գտնէին և հոն
հաստատուելով հիմնած էին եկեղեցիներ և ուսումնավայր-վանքեր (հմմտ. Ար-
շակ Ալպօյաճեան, Պատմ. Հայ Դպրոցի, 357—9 ։

ԺԲ. դարուն, Պոնտոս կ'ունենայ իր սեփական իշխանութիւնը, իբրեւ
մէկ մասը Բիւզանդական Կայսրութեան։

Ասիկա ծագում կ'առնէր Անդրոնիկոս Ա. Կոմնեն (1183—1185) Պոլսոյ
կայսեր դժբախտ վախճանէն ետքը, երբ իր ամբողջ տունը ջնջուեցաւ, բացի
Մանուէլ իշխանին շատ դեռատի որդիներէն, զորս մի քանի հաւատարիմներ
յաջողած էին փախցնել Վրաստան, իրենց մօրաքրոջ Թամարա մեծ թագու-
հիին (1184—1212) քով, որ դէմ ըլլալով Ալէքսիս Գ. Կայսեր (1195—1203)՝
օգնեց իր քեռորդիներու որ Բիւզանդական Կայսրութեան արեւելեան մասե-
րուն մէջ և Վրաստանի արեւմտեան կողմը անկախ պետութիւն մը ստեղծեն։

Երկու Կոմնեններէն անդրանիկը՝ Ալեքսիոս Ա. իր զինուորներէն կայսր
հռչակուեցան և 1204ին մտաւ Տրապիզոն, ուր հաստատեց իր աթոռը. մինչ
Լատինները կը մտնէին Կ. Պոլիս և Լատին կայսրութիւն մը կը հիմնէին։ Ալեք-
սիոս առաւ «Մեծ Կոմնեն» անունը, մինչ իր եղբայրը՝ Դաւիթ յաղթական
առաջացաւ մինչեւ Պափլագոնիա։ Երկու եղբայրները գրաւեցին ժողովուրդին
սիրտը։ Միայն Ամիսոսի, (Սամսոնի) Սաբբա իշխանն էր, որ իրենց դէմ ե-
լաւ, բայց զսպուեցաւ։

Երկու եղբայրները չկրցան աւելի ընդարձակել իրենց հողերը, վասնզի
Նիկիոյ Կայսրը՝ Թէոդորոս Լասկարիս միացաւ Սելջուկներուն՝ ընդդէմ իրենց,
այնպէս որ Դաւիթ սեղմուեցաւ Սինոպի շրջանակին մէջ, որ սակայն չկրցաւ
պաշտպանել, վասնզի 1214ին գրաւուեցաւ Սինոպը, ուր Դաւիթ քաջաբար
կռուելով մեռաւ։

Եղբայրը Ալէքսիոս (1204—1222) Վրաց օգնութեամբ կրցաւ պահել Տրա-
պիզոնը, հարկ տալով Գոնիայի Ռումի Սուլթանին։

Այսպէս, իր ձեռքը մնաց ծովեզերքին վրայ փոքր տարածութիւն մը (Վ.
Հէնդի, Բազմավէպ, 1919, 182), որ իր մէջ կը պարունակէր Պոլեմոնեան
Պոնտոսը և կը հասնէր դէպի արեւելք մինչեւ Փազիս (Հ. Գեյցեր)։

Թաթարներու արշաւանքը փրկեց այս փոքր մասը Իկոնիոյ Սուլթաննե-
րուն ձեռքէն, սակայն Տրապիզոն հարկատու եղաւ Թաթարներուն (Բազմա-
վէպ, 1919, 182)։ Թաթարներու շրջանին Տրապիզոնի առեւտուրը աւելի զար-



գացաւ, իբրեւ արեւելքի եւ արեւմուտքի յարաբերութեան ուղի, մանաւանդ
Դաւրէժի Թաթարներու մայրաքաղաքը դառնալէն ետքը (Նոյն):

Այս շրջանին հոն կը հաստատուի Ճենովական գաղութ մը (Նոյն., 183),
որուն կը յաջորդէ Վենետիկեան գաղութ մը՝ միեւնոյն առանձնաշնորհումնե-
րով (Նոյն, 253)։

ԺԴ. դարուն սկիզբը (1300) Վենետիկցիք և Ճենովացիք առանձին թա-
ղեր ունէին և իրարու հետ կը մրցէին։ Երկու ծովային հասարակապետութիւն-
ներէն Ճենովա թէ՛ Վենետիկի և թէ՛ Տրապիզոնի կայսրերուն դէմ կռուե-
ցաւ (Բազմավէպ, 1919, էջ 253 և 287). մինչ Վենետիկցիք աւելի քաղա-
քագիտութեամբ վարուեցան (Նոյն, 287) և բարեկամ մնացին։ Սակայն 1453ին
երբ Պոլիսը գրաւուեցաւ՝ իրենց յարաբերութիւնները դժուարացան, վասնզի
Տրապիզոնի ճամբան փակուեցաւ։

Ալեքսիոս Ա.ի (1204 - 1222) իշխանութիւնը կը ներկայացնէ Պոնտոսի
Կայսրութեան ամէնէն փայլուն շրջանը։ Իր մահէն վերջ կ'սկսի անկումը (1).
Աւատականութիւնը իր կոխներով անկարելի կը դարձնէր կարգաւորեալ պե-
տութեան մը հաստատութիւնը (Հ. Գեյցեր, 423)։ Հոն ալ կային Բիւզանդական
ներքին կռիւները, մինչ Սելջուկները, Մոնկոլները և Պալէոլոկները շարու-
նակ կը հարուածէին տէրութիւնը։

1282ին Յովհաննէս Բ. Կոմնեն խաղաղութիւն հաստատեց Պալէոլոկներու
հետ եւ լքեց «Հռոմայեցւոց Կայսր» տիտղոսը և ինքզինքը կոչեց «Արեւելքի,
Վրաստանի եւ յայնկոյս ծովի կայսր»:

Երեւութապէս երկիրը խաղաղեցաւ։ Ալեքսիոս Բ. (1297—1330), Կոմնեն-
ներու մէջ լաւագոյններէն մէկը, զէնքի ուժով կրցաւ ճենովական դաւերու
եւ պահանջներու դիմակալել։

Ահա թաթարական վայրագ յարձակումներու միջոցին է որ Հայերը կը
խռնուին Տրապիզոնի շուրջը։ Այսպէս որ։ Անիի 1239ի գրաւումէն եւ 1219ի
երկրաշարժէն կործանումէն վերջ՝ երբ Անիէն մեծ գաղթականութիւններ տա-
րածուեցան զանազան երկիրներ, յայտնի է թէ անոնցմէ մաս մըն ալ գաղ-
թեց Խաղտիք, Համշէն և Տրապիզոն, ուր անոնք բնակութեան վայր, եկե-
ղեցիներ ու վանքեր ստացած են (Հ. Մինաս Վրդ. Բժշկեան, Պատմ Պոնտոսի,
էջ 79—81 և 96 և Աբէլ Վրդ. Մխիթարեանց, Վէպ Գաղթականութեան Հա-
յոց Տրապիզոնու, 1857, էջ 23—24)։

Այսպէս, Տրապիզոն, ուր արդէն նախապէս ապաստանող բազմաթիւ Հա-
յեր կային — որոնք գուցէ արդէն մասամբ Հռոմ դարձած էին — կ'ընդու-
նէր նոր բազմութիւն մը Հայերու, որոնք հոն կ'ունենային բարգաւաճ կեանք,
շնորհիւ իրենց վաճառականական ընդունակութիւններուն և Ճենովայի ու Վե-
նետիկի նաւերուն երթեւեկին

Բայց դժբախտաբար՝ Ալեքսիոս Բ.ի (1297—1330) մահէն վերջ, երկիրը

(1) Տրապիզոնի կայսրութեան համառօտ պատմութիւնը տեսնել Հ. Գեյցերի գործին մէջ (էջ 420—426):

անտանելի խռովութիւններու և սոսկալի ապականութիւններու ենթարկուեցաւ և ներքին գժբախտ կռիւներով բնակիչները գիրար ջարդեցին։

Տիարպէքիրի Թաթարները կ'ասպատակեն մինչեւ քաղաքին դուռները և կ'այրեն արուարձանները և կը կողոպտեն օտար վաճառականներու գրասենեակները։ Հետեւաբար առեւտուրը և վաճառականութիւնը կը փճանան։

Այս խառնակ վիճակը բնաւ քաջալերական չէր Հայ գաղթականներուն համար, բայց զարմանալի է որ անոնք կը կազմակերպուէին և կ'ունենեան իրենց յատուկ հոգեւոր իշխանութիւն մը, որ ի սկզբան կը թուի կապուած ըլլալ Կամախի՝ ինչ որ նշանակելի է և ցոյց կու տայ թէ Տրապիզոնի Հայերը մաս կը համարուէին Հայկական Թեմի մը։

1342ին առաջին անգամ կը յիշուի Տրապիզոնի յատուկ Հայ Եպիսկոպոս մը։

Նոյնպէս ԺԴ. դարէն, օրինակի համար՝ 1388 թուականով գտնուած են Նոյնպէս անուսա վաւերագիրներ, ձեռագիր-տապանաքարեր, (Աբէլ Վրդ., Ցոյց, 27) անուսա վաւերագիրներ, ձեռագիրներու յիշատակարաններ և վիմագրական արձանագրութիւններ (1), նախ քան Օսմանցիներու կողմէն Տրապիզոնի գրաւումը (1461)։

Այս անկախ երկիրին մէջ, Հայերը առաւելապէս իբրեւ վաճառական կարեւոր դեր կատարած են այդ շրջանին։

1363ին՝ Տրապիզոնի մէջ ծագած ժանտախտ մը մեծ վնաս կը հասցնէ Տրապիզոն քաղաքին. շատեր կը փախչին անկէ։ Անոնց մէջ ապահովաբար Հայեր ալ կային։

Այդ թուականին (1363) Սեւ Ծովու Հայ եպիսկոպոսներէն մին (հաւանօրէն Տրապիզոնի եպիսկոպոսը) անձամբ Վենետիկ երթալով՝ 1 Յուլիս 1363 թուականով խնդրագիր մը կը ներկայացնէ Վենետիկի Տօժին, Կրետէի Դուքսին և իր խորհրդականներուն, յանձնարարական նամակներով, ու կը յայտնէ թէ 2000 Հայեր կը փափաքին Կրետէ գաղթել, եթէ հաստատուելու համար վայր մը և վենետիկեան հպատակութիւն տրուի իրենց. (տես. La Réforme Ավայր մը և վենետիկեան հպատակութիւն տրուի իրենց. (տես. La Réforme Ալեքսանդրիա 1932 Հոկտ 3 կամ Հայկ Պէրպէրեան, Կրետէ գաղթի հայկական ծրագիր մը ԺԴ. դարուն, ԱՊԱԳԱՅ, ԺԴ. տարի Թ. 23 Նոյեմ. 1932):

Այս Հայերը յայտնի չէ թէ ինչո՞ւ կ'ուզէին և ուրկէ՞ կ'ուզէին հեռանալ և Կրետէ երթալ։

Արդեօք ժանտախտի՞ն թէ Փոքր Ասիոյ Հայերուն կրած հարստահարութիւններուն պատճառով է որ կ'ուզէին հեռանալ։

Աւելի հաւանական է երկրորդը, վասնզի անշուշտ այս որոշումը և դիմումը հապճեպ արարք մը չէր կրնար ըլլալ և բաւական ժամանակ պէտք էր առած ըլլար մինչեւ ձեւաւորուիլը։

Հետեւաբար բնաւ հաւանական չէ որ այդ դիմումին պատճառը ժանտախտը եղած ըլլայ, այլ Թրքական հարստահարութիւնները։

Եւ գաղթողները հաւանօրէն Հայաստանէն պիտի գային և Տրապիզոնէն պիտի անցնէին, և Տրապիզոնի բնակիչներ չէին, քանի որ հոն իշխող կոմնենները չէին հարստահարեր երկիրը։

---

(1) 1414, 1422, 1431 թուականներով (տես. Պատմ. Պոնտոսի, 79—81):



Հայերը 1363էն վերջ ալ հոն մնացին և ինչպէս կը հաստատուի 1369—1373ին կը յիշուին Տրապիզոն բնակող Պարսկաստանցի վաճառականներ, որոնք պէտք է Հայ եղած ըլլան և որոնք Վենետիկեան Նաւերու վաճառքները Դաւրէժ կը փոխադրէին (Ալիշան, (Հայ Վենետ., 66)

Քաղաքը այդ միջոցին ունէր բազմահայ բնակչութիւն մը, վասնզի 1404ին, երբ Գասթիլլիոյ Հէնրի Դ. թագաւորին դեսպանը Clavijo Տրապիզոնէն կ'անցնէր, հոն գտաւ Հայ գաղութ մը որ ունէր իր եկեղեցին և իր եպիսկոպոսը, որ իր լեզուով ժամերգութիւն կը կատարէր։

Կլավիխոյ, իբրեւ մոլեռանդ կաթոլիկ, հաստատելէ ետք թէ հայ արարողութիւնները շատ չեն տարբերիր Կաթոլիկականներէն, չարախօսութիւն մըն ալ սպրդեցնելու համար, կ'ըսէ թէ Հայերը շատ սիրուած չեն այս կողմերը, առանց ինչո՞ւն և ի՞նչպէսը բացատրելու։ (Տես. Արեւ 13 Մարտ 1944):

Իսկ այս թուականէն տասը տարի ետքը՝ 1414ին, որ Տրապիզոնի Հայ գաղութին բարգաւաճման և նիւթական ճոխութեան լաւագոյն ժամանակամիջոցներէն մէկը ըլլալ կը թուի, (վասնզի անհատներ հայ եկեղեցիները կը նորոգեն այդ և յաջորդ տարիներուն), հոն կ'ապրէր ստոյգ Վենետիկի քաղաքացի համարուած Տրապիզոնի Վենետիկցիներու ամբոցը բնակող Աբրահամ Աներուն (Abraynus Aneron) անուն Հայը, որ Վենետիկի Ծերակոյտին կը մատուցանէ խնդրագիր մը, որով կ'առաջարկէր Հայ գաղթականութիւն մը հաստատել՝ Վենետիկի տիրապետութեան տակ գտնուող Կրետէ և Նեկրոպոնտ (Եւրիպօզ) կղզիներուն մէջ, աւելի քան 80 հայ ընտանիքով, Տրապիզոնի և Սեբաստիոյ կողմերէն։ Այս գաղթականները կ'ուզէին երթալ այդ կղզիները և կը խնդրէին պաշտպանութիւն, դիւրութիւն և մաքսի թեթեւութիւն։

Ծերակոյտը այս խնդրանքը կ'ընդունի 1414 Փետրուար 10ին (տես. Ալիշան, Հայ Վենետ., էջ 176—177) և հաւանօրէն այդ կղզիները կը տեղափոխուին Հայեր։

Թերեւս Հայերու այս տեղափոխման մէջ դեր ունի Թրքական տիրապետութեան մը վերահաս վտանգին նախատեսութիւնը, որ իրականացաւ 1453 Մայիս 29ին Կ. Պոլսոյ գրաւումէն ետքը, վասնզի Տրապիզոնի Յոյն Կայսրութիւնը չկրցաւ պահպանել իր գոյութիւնը։

Ան կը դիմէր իր վախճանին։

Յովհաննէս Դ. ստիպուեցաւ սկսիլ Բ. Դրան հարկ տալ և իր աղջիկը Կատարինան (Dozpina Katon) Ագգոյունլու Ուզուն Հասանին կնութեան տալով իր գոյութիւնը ապահովել աշխատեցաւ։

1458ին երբ մեռաւ, եղբայրը՝ Դաւիթ գահը յաջորդեց։

1461ին, Թուրքերը վերջ տուին այս կայսրութեան, գրաւելով Տրապիզոնը 32 օրուան պաշարումէ մը յետոյ և Դաւիթը տարին Պոլիս, ուր սպաննեցին։

Այսպէս, վերջ գտաւ Տրապիզոնի Կայսրութիւնը և Տրապիզոն դարձաւ շուտով Թրքական քաղաք ու բոլորովին անշքացաւ։ Սուլթանը քաղաքին ազ-

նուականութիւնը և երեւելիները Պոլիս տարաւ։ Անոնց տուները և ինչքերը
իր զինուորները իրենց միջեւ բաժնեցին։
Ասիական բարբարոսներու հրոսակային արշաւանքներու (1065—1468)
շրջանին, Տրապիզոն տեւականապէս մնացած է Բիւզանդական տիրապետու-
թեան տակ և շնորհիւ իր ծովեզերեայ հանգամանքին և ներքնաշխարհի կող-
մէն Պարխար լեռներու պատուարին, զերծ մնացած է ասպատակութիւններէ
և համեմատաբար անդորր կեանք մը ունեցած է, և իբրեւ ասիական վաճա-
ռականութեան դուռներէն մէկը, միշտ Հայերու բնակավայր եղած է։ Սակայն
Թուրք տիրապետութենէն վերջ՝ չատեր պէտք է հեռացած ըլլան
Նշանակելի է որ Հայերը կեդրոնացած էին, ինչպէս կը թուի, մասնա-
ւորապէս Տրապիզոն քաղաքին մէջ ուր Հայաստանի ամէն կողմերէն գաղթա-
կաններ եկած էին. քաղաքէն դուրս գիւղերու մէջ հայեր չէին հաստատուած,
վասնզի ըստ Թումայեանց քհ.ի տեղեկագիրին (Պոնտոսի Հայերը ԼՈՒՄԱՑ
1899, Բ. Գիրք, 144—192) «նոյն դարերում մեջ Տրապիզոնի շուրջը ցրեա-
կան հայ գտնուելուն վրայ, ցարդ բնաւ յիշատակութիւն մը պատահած» չէ։
Թումայեանց քհ. անմիջապէս կը յարէ թէ «եթէ կային ալ նե՝ Ֆեթիհի
ժամանակ իբրեւ լեռնցի պատերազմիկ ժողովուրդ ապստամբ համարուելով
կամ բոլորովին ջնջուեր եւ կամ կրօնափոխութեան ստիպուեր ու իսլամու-
թիւնը ընդունելով անյայտացեր են». (ԼՈՒՄԱՑ, նոյն, 174)։
Սակայն ճիշդ չեն այս մտածումները քանի որ Համշէնցիք, որ Պոնտոսի
միւս կողմերն տարածուած էին, շինականներ էին և հիմնած՝ պզտիկ գիւղեր,
որոնք հաւանօրէն Օսմանեան տիրապետութեան շրջանին թիւով չատցան և
ստուարացան նոր գաղթականութիւններով։ Հետեւաբար Պոնտոսի գիւղերը հա-
յաբնակ եղած են հաւանօրէն Օսմանեան տիրապետութենէն վերջը։
Հայերը՝ առաւելապէս Տրապիզոնը ծառայեցուցած են իբրև ելքի դուռ
մը և չատ Հայեր անկէ անցած են ուրիշ տեղեր երթալու համար։
Տրապիզոն միջազգային առեւտրական շարժման կարեւոր հանգրուաննե-
րէն մին էր ԺԱ.—ԺԴ. դարերուն և ըստ արաբ պատմիչ Մասուտիի՝ հոն
ամէն տարի կը կազմակերպուէր տօնավաճառ, ուր կու գային Մահմետական,
Յոյն, և Հայ վաճառականներ։
Տրապիզոնի միջազգային կեդրոն և առեւտրական քաղաք ըլլալուն մասին,
արաբ աշխարհագիր Իս-
թաւական կարեւոր տեղեկութիւններ կու տայ նաև
տախտին, որ կը հաւաստէ թէ Բիւզանդական ապրանքներ Տիապիզոնէն կը
փոխադրէին Հայաստանի ճամբով դէպի արեւելեան երկիրները (հմմտ. Վ. Աբ-
րահամեան, Արհեստները եւ համքարական կազմակերպութիւնները Հայաս-
տանում IX — XIII դարերում, էջ 10)։ Տրապիզոնի այդ հանգամանքը պատ-
ճառ եղած է որ միշտ Հայեր հոն բնակին, նոյնիսկ դժնդակ պայմաններու մէջ։



∴

Ինչպէս բացատրուեցաւ (վերը, 475), Փոքր Ասիոյ Թերակղզիին դէմ
կատարուած ասիական բարբարոսներու արշաւանքներէն մասամբ զերծ մնա-
ցած են Պոնտոս և Կիլիկիա, առաջինը պաշտպանուած ըլլալով Պարխար և
երկրորդը՝ Ամանոսի և Տաւրոսի լեռներով, թէև ի վերջոյ այս երկու երկրա-
մասերն ալ բարբարոսներու խուժումին ենթարկուած են՝ բաւական երկարատև
և տոկուն դիմադրութենէ ետք։
Ինչպէս Պոնտոսի, նոյնպէս Կիլիկիոյ ծովեզերքներուն վրայ Հայերու բը-
նակութիւնը անյիշատակ ժամանակներէն կ'սկսի։ Նոյնիսկ մեծ հաւանակա-
նութեամբ Դարեհ Վշտասպեանի օրերուն Հայեր ապրած են Կիլիկիոյ մէջ,
(ՊՀԳ. Ա., 105), իսկ Արշակունեաց կործանումէն (428) ետք՝ երբ Հայերը
սկսան գունդագունդ հեռանալ իրենց հայրենիքէն և լեցնել մասնաւորապէս
Փոքր Հայքը, Կապադովկիան, Պոնտոսը, Ասորիքը և Փոքր Ասիան մինչեւ
Բիւզանդիոն, Հայեր հաստատուած են նաև Կիլիկիա (ՊՀԳ. Ա., 251)։
Արդարեւ, նոյնիսկ Ե. դարուն Յովհաննէս Ոսկեբերան, որուն ուսուցիչն
էր Անտիոքի հայազգի Մելիտոս Մելիտինեցի Եպիսկոպոսը, իր Կիլիկիոյ Կո-
կիսոն աքսորավայրէն կը գրէր թէ «Հայեր և ուրիշ ազգեր վրաս գթալով մեծ
մարդասիրութիւն կը ցուցնեն ինծ»։ (Թակուրան, (= Վահան Քիւրքճեան) Մի տե-
սութիւն Կիլիկիոյ Հայկական Իշխանութեան վրայ», Նիկոսիա, 1904, էջ 154)։
Իսկ 404ին առ Ողիմպիադա Սարկաւագուհիին գրած նամակին մէջ կը յիշա-
տակէ «Սոպատրոս Հայ իշխանը, հայաբնակ Կոկիսոնի մէջ» (նոյն)։
Դէպի Բիւզանդական երկիրներ գաղթային հոսանքը երբ արաբական շըր-
ջանին աւելի սաստկացաւ, Կիլիկիոյ մէջ Հայերու թիւը աւելի չատցաւ։ Կը
յիշուի թէ 809ին առաջին անգամ Հայերը հաստատուած են Սիսի մէջ (ՊՀԳ.
Ա., 375), ուր տեղափոխուած էին «իրենց գեղակերտ Խալալ քաղաքէն» (Ա-
լիշան, Սիսուան, 213, Թակուրան, նոյն, 154 և Մ. Քէլէշեան, Սիս-Մատ-
եան, 1949, Պէյրութ, էջ 122)։ Այդ շրջանին, Բիւզանդական կայսրերը բա-
նակին վեթերան Հայ իշխանները Կիլիկիա կը հաստատէին, ինչպէս նաև հոն
հող ու կալուած կու տային և հաստատուն կերպով կը բնակեցնէին այն սահ-
մանապահ զինուորները՝ որոնք ընտանիքով կու գային (հմմտ. Դոկտ. Յ. Աս-
տուրեան, Պատմութիւն Հայոց, 1947, Պուէնոս-Այրէս 235)։ Կարգ մը կայ-
սրրեր, ինչպէս յայտնի է, բազմաթիւ Հայեր բերած և նստեցուցած էին ինչ-
պէս Բիւզանդական Կայսրութեան զանազան մասերը, նոյնպէս նաև Կիլիկիա,
(նոյն)։
Մասնաւորապէս Ժ. դարուն, վաղուց հայաբնակ Կիլիկիան նորէն կ'ըն-
դունէր ստուար թիւով Հայեր (տես. ՊՀԳ. Ա., 251—3)։
ԺԱ. դարուն նոր զանգուածներ Հայերու, ռամիկ և տոհմական, ժողո-
վուրդ և իշխան, նոյնիսկ դէպի արևմուտք կը տեղափոխուէին, և Կիլիկիոյ
Հայերուն թիւը կը բազմանար զինուորականութենէ դուրս հասարակ ժողո-
վուրդի անհատներով, որոնք այս կողմերը ապաստանած էին, 1079—1080ին
պատահած Մեծ Հայքի աղէտալի և մեծ սովին հետեւանքով, վասնզի այդ

ժամանակամիջոցին շատ Հայեր իրենց հայրենիքը լքելով հեռացած էին։

Եւ ինչպէս կ'երեւի, անոնց թիւը աննշան չէր, քանի որ անոնք նախ Հայաստանէն դուրս Տաւրոսի և Ամանոսի հիւսիսային կողմը և ապա այդ լեռներուն հարաւային և արեւմտեան կողմը Հայ այնքան ստուար բնակչութիւն մը կը կազմէին որ Արմենիա անունը կը տրուէր անոնց այն օտարներէն, որոնք այդ շրջաններուն հետ շփման մէջ կը մտնէին։

Մատթէոս Ուռհայեցի իրական գոյներով կը նկարագրէ այս նշանաւոր գաղթականութիւնը, որ բուն իսկ Ռուբինեանց հարստութեան ներքին ուժը եղած է։

«Ոչ մնաց գաւառ ի խաղաղութեան, այլ կայր մատնեալ ամենայն տունն քրիստոնէից ի սուր եւ ի գերութիւն, եւ արգելաւ վաստակ հողագործութեան յերկրէ, եւ հատաւ կերակուր հացի, եւ սրով եւ գերութեամբ հատան մշակք եւ վաստակաւորք, եւ տարածեցաւ սով առհասարակ ընդ ամենայն աշխարհ: Եւ անմարդ եղեն բազում գաւառք եւ քակեցաւ *տունն արեւելեայց* եւ եղեն աւերակ աշխարհն Հոռոմոց եւ ոչ ուրեք գտանէին կերակուր հացի եւ կամ դադար հանգստեան մարդոյ, *բայց 'ի յՈւռհայ և յամենայն սահմանս նորա։ Եւ Անտիոք և ամենայն աշխարհն Կիլկիոյ և մինչեւ ի Տարսոն և ամենայն աշխարհն Մարաշայ, ի Տլուք և յամենայն սահմանս աշխարհաց այսոցիկ* ոչ գտանէին հանգիստ դադարման մարդոյ, եւ փախեալ եկանէին միահամուռ ամենայն արարածք եւ գային յաշխարհս այսորիկ անթիւ բազմութեամբ, հազարս առ հազարս եւ բիւրս առ բիւրս, ծփայր մարդ ի վերայ երկրի եւ ծածկեցաւ աշխարհս այս, եւ որպէս զմարախ ի բազմութենէ նոցա ծածկէր երկիր, առաւել ունիմ ասել քան զեւթնապատիկ զժողովուրդն զոր Մովսէս ընդ ծովն անցուցանէր, նա եւ քան զլորամարգն յանապատին Սինայ: Եւ այնպիսի անհագին բազմութեամբ լցաւ երկիր, եւ արք մեծամեծք եւ փառաւորք, ազատք եւ իշխանք եւ կանայք մեծաշուք շրջեալ մուրանային: եւ զայս ամենայն աչք մեր տեսանէին, եւ յերեսաց սովոյն եւ ի պանդխտութենէ կենացն մահ անկանէր ի նոսա ընդ ամենայն երկիր եւ յագեցան առ ի թաղել զնոսա» (*Ուռհայեցի*, 261)։

Աղէտալի սովի մը հետեւանքով, Հայաստանէն հեռացող այս Հայերու մեծազանգուած բազմութիւնը, որ առաջինները չէին այն Հայերուն, որոնք անյիշատակ ժամանակներէ սկսեալ շարունակ հեռացած են Հայաստանէն, չեղան նաև վերջինները, նոյնիսկ նկատի ունենալով սոսկ Կեդրոնական Ասիոյ հրոսներու ասպատակութիւններուն շրջանը (1040—1468), քանի որ այս մեծ գաղթականութիւնը կանխող և անոր յաջորդող ժամանակամիջոցներուն բնաւ չէ դադրած Հայերու մեկնումը իրենց հայրենիքէն։

Անոնցմէ զինուորական և ազնուական դասակարգը կազմեց փոքրիկ հողատէր–տանուտիրութիւններ, որոնք Խաչակիրներէն օգտուելով, ընդարձակ յարաբերութիւններ մշակեցին անոնց հետ։

Ու թէև եղան առեններ որ Յոյներէն ընկճուեցան, սակայն ի վերջոյ մէկ մականի տակ միանալով և Տաւրոսի ստորոտը Ճահանի (= Ճիհան = Պիրամիս) և Սեհունի (= Սարոս) գետահովիտներուն մէջ տարածուելով կազմեցին պատկառելի իշխանութիւն մը, որուն վեհապետները քիչ ետքը թագա-



ւոր պիտի ճանչցուէին թէ՛ Եւրոպական պետութիւններէն և թէ՛ Բիւզանդական կայսրերու կողմէն (1185) (1)։

Տեսնուեցաւ թէ (վերը, 402-3) Բիւզանդիոն ինչ նկատումներով աշխատած էր Հայերը հաստատել իր հարաւ–արեւելեան սահմանագլուխին վրայ և ինչպէս Եփրատացւոց կամ Կոմմագենէի, և հիւսիսային Սիւրիոյ, նոյնպէս և Կիլիկիոյ շրջանին մէջ կազմած էր հայ ճորտ իշխանութիւններ, Ռուբինեաններէն մօտաւորապէս երկու դար առաջ։

Ժ. դարուն սկիզբը (900—901), մինչ Սասունցի յիսուն իշխաններ կը գաղթէին Կիլիկիա, հոն կ'իշխէր իբրև կայսերական ճորտ (vassal)՝ Գէորգ Մլեհ, որ «պռոտոսպաթար եւ տեսուչ Մամեստիոյ, Անարզաբայ եւ Ծամանդայի» տիտղոսը կը կրէր (Ալիշան, Սիսուան և Բակուրան, Նոյն, 154 և Միսաք Քէլէշեան, Սիս–Մատեան, 1949 Պէյրութ, էջ 120)։

ԺԱ. դարուն, Ասիական բարբարոսներու արշաւանքներուն սկիզբը, երբ Սելջուկները Անին և Վանը առին, Հայեր, մասնաւորապէս Նախարարական ընտանիքներ զանգուածային կերպով գաղթեցին ի մէջ այլոց Կիլիկիա (հմմտ. Դոկտ Յ. Ասատուրեան, Պատմ. Հայոց, 235), որ այդ միջոցին կը տարուբերէր զանազան ուժերու միջեւ և գրեթէ անիշխանութեան մատնուած էր, այնպէս որ բազմաթիւ Հայ և օտար բախտախնդիրներ մէկ մէկ բերդի տիրանալով, իշխանութիւններ կազմած էին։ Բոլոր այս Հայ իշխանները աւելի կամ նուազ անկախ Բիւզանդական կայսրութենէն և յաճախ անուանապէս միայն անոր հպատակ, կը կռթնէին իրենց հողերուն վրայ ապրող հոծ հայութեան վրայ, որ թէև գաղթական՝ սակայն բնակչութեան ամէնէն զօրաւոր տարրը կազմած էր, ոչ միայն իբրև բնակչութեան մեծամասնութիւնը, այլ կարծես իբրեւ բնիկ հարազատ ժողովուրդը երկիրին։ Ասոնց մէջ էին նաև Հայ արքայական տուները, որոնք եկած հաստատուած էին Բիւզանդական հողերու վրայ, Փոքր Ասիոյ արեւելեան կողմը, Եփրատի արեւմուտքը և ճորտ դարձած էին Բիւզանդական կայսեր։

Այս իշխանութիւնները համադաշնակցութեամբ կամ աւատական դրութեամբ միացնելով հայկական անկախութիւն մը ստեղծագործելու հանճարեղ գաղափարը յղացաւ, Փիլարտոս, որ ինչպէս տեսնուեցաւ, Ռոմանոս Դ. Դիոգինէսի (1068—1071), Ասիական բանակին հրամանատարն էր և 1071ին՝ Մանազկերտի պարտութենէն վերջ՝ ըրաւ փորձ մը կազմակերպելու Հայկական աւատական իշխա-

(1) Կիլիկեան Հայ թագաւորութեան պատմութիւնը կ'ենթադրեմ ծանօթ եզր մը, ուստի անոր պիտի չանդրադառնամ: Մեր պատմութեան ամէնէն շատ եւ ամէնէն լաւ ուսումնասիրուած շրջանն է ասիկա: Հետաքրքիրներ կրնան կարդալ Ալիշանի **Սիսուանը**, Վահան Քիւրքճեանի (Բակուրան) **Մի տեսութիւն Կիլիկիոյ Հայկական իշխանութեան վրայ** երկը, Չամիչեանի Հայոց պատմութենէն սկսեալ բոլոր Հայ պատմութեան գիրքերը, (անոնց մէջ ուշագրաւ է Դոկտ. Յ. Ասատուրեանի **«Պատմութիւն Հայոց»**ը իր նոր տեսութիւններով) եւ վերջապէս Կոմմագենացիի (Վեր. Ե. Քասունիի) **Փիլարտոս Հայը** շատ արժէքաւոր ուսումնասիրութիւնը, որ մեծապէս կը լուսաբանէ Կիլիկիոյ Ռուբինեան հարստութեան հիմնարկութեան պարագաները, եւայլն եւայլն:

*նապետութիւն մը Հայաստանի արեւմտեան սահմանին վրայ, գլխաւորապէս Եփրատի հովիտին մէջ։*

*Այս իշխանապետութիւնը՝ միա՛յն անուանական կերպով Բիւզանդական գերիշխանութիւնը կը ճանչնար, քանի որ Փիլարտոս ինքզինքն Բիւզանդական պաշտօնատար մը կը համարէր, և ինչպէս յիշուեցաւ, Միքայէլ Պարապինոս կայսրը (1071—1078), չէր հակառակիր անոր, վասնզի այլապէս վարուելու համար պէտք եղած ուժը չունէր։*

*Հետեւաբար, Փիլարտոս ճիշդ յարմար պահը, ինչպէս նաեւ տեղը, ընտրած էր Հայ իշխանութիւն մը հիմնելու համար, և յաջողեցաւ իր ծրագիրին մէջ, եթէ ոչ ամբողջովին իր նախատեսութեան համաձայն, գէթ անոր շատ մօտ արդիւնքով մը։*

*Իրագործուեցաւ Հայ անկախ իշխանութեան մը գաղափարը եթէ ոչ իր ծրագրածին պէս Փոքր Ասիոյ արեւելեան մուտքին վրայ՝ Եփրատէն մինչեւ Ալիսի հովիտը տարածուած հողերուն վրայ, գէթ Ամանոսէն արեւմուտք՝ Կիլիկիոյ բարձունքներուն վրայ։*

*Շատ իրաւամբ իր շատ արժէքաւոր ուսումնասիրութեան իբրեւ եզրակացութիւն. Վեր. Ե. Պոասէի կը յայտարարէ թէ* «ՓԻԼԱՐՏՈՍ ԷՐ ԿԻԼԻԿԻՈՅ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԲՈՒՆ ՀԻՄՆԱԴԻՐԸ, *վասնզի Ա.* «անիկա 15—20 տարի կանխեցուց Սելջուկեան հեղեղը եւ ժամանակ տանեցուց որ Հայութեան մնացորդը գայ կեդրոնանայ Կոմմագենէի եւ Կիլիկիոյ մէջ, *Բ.* Հայոց դէպի այս երկիրներու ներգաղթին մէջ, Փիլարտոս մեծ դեր ունեցած է՝ կրկնակ եղանակներով. նախ՝ անուղղակի դեր մը, այսինքն Սելջուկեան հարստահարութիւններէն համեմատաբար զերծ, ապահով եւ խաղաղ ապաստանարան մը ընծայերէն անոնց եւ երկրորդ՝ ուղղակի դեր մը՝ որն է այդ ներգաղթը քաջալերել ու կազմակերպել: Եթէ Փիլարտոսի միջոցով գետինը պատրաստուած եւ Տաւրոսի այդ կողմերը արդէն կարեւոր հայութիւն մը ապահովուած չըլլար. անկարելի էր որ Ռուբինեան իշխանութիւնը այնքան շուտ ծաւալէր ու զօրանար»: Սամուէլ Անեցի իսկ (էջ 115), այս իրողութիւնը կը վաւերացնէ՝ աւանդելով թէ Ռուբէնի ձեռքով Կոռոմոզոլ, Բարձրբերդ եւ Կոպիտառ ամրանալէն քանի մը տարի առաջ, այդ կողմերն «էին բնակեալ բազում յազգէն Հայոց», *Գ)* Փիլարտոս իր ձեռքով հաստատեց եւ տեւն մըն ալ պահպանեց Ռուբինեան իշխանութիւնը (*տես. Կոմմագենացի,* Փիլարտոս Հայը, էջ 81—82)։

*Եթէ Փիլարտոս իշխանապետը չկրցաւ լրիւ իրագործել իր ծրագիրը՝ անոր համար էր որ անիկա սեղմուած էր երկու ուժերու միջեւ։ Արեւելքէն Սելջուկները և Արեւմուտքէն Յոյները կը նեղէին զինքը, Սելջուկներու դէմ, ինչպէս տեսնուեցաւ, ան պաշտպանութեան գիծ մը կազմեց, իր իշխանապետութեան արեւելեան սահմանին վրայ հիւսիսէն հարաւ, Հայաստանէն նոր գաղթած արքայական և իշխանական տուներու ճորտական իշխանութիւններով, բայց դժբախտաբար չկրցաւ պաշտպանել Փոքր Հայքի Հայ «թագաւորութիւն»ները, որոնք աւլուեցան 1080ին Սելջուկեան գրոհով մը։*

*Իսկ Փիլարտոսի ծրագրած հայկական մեծ աւատապետութեան կամ դաշնակցային անկախ իշխանապետութեան մաս կազմելու սահմանուած միաւորները, որոնք Կիլիկիոյ մէջ ծնունդ առած էին, շարունակեցին ապրիլ։*



*Տեսանք արդէն թէ ԺԱ. դարուն Կիլիկիոյ մէջ գոյութիւն ունէին Հայ տանուտէրներ* (Seigneur), *որոնք որոշ շրջաններու մէջ հաստատուած էին, իբրեւ հողատէր իշխաններ, նման փոքր Հայքի, Կապադովկիոյ, Կոմմագենէի և հիւսիսային Սուրիոյ մէջ հաստատուածներուն։*

*Այսպէս, կը յիշատակուին Կիլիկիոյ մէջ հաստատուած հայ իշխանութիւններ կամ ճորտական հողատիրութիւններ, առաւել կամ նուազ երկարատեւ կեանքով և նշանակելի գործունէութեամբ։*

*Ասոնց երկու գլխաւորները, որոնք իբրեւ իշխանապետութիւններ կարեւոր դեր կատարեցին, են.*

1) *ՕՇԻՆԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ.— ԺԱ. դարուն, Գագիկ Բագրատունիի Փոքր Ասիոյ մէջ ճորտական իշխանութիւն մը ունեցած ատեն* (1045—1079) *Կ. Պոլսոյ հպատակ հայ իշխան մը՝ Ապլղարիպ Արծրունի* «ի ցանէ Վասպուրականի» *և բնիկ Անեցի Վեստ Խուլ Խաչիկի Թոռը և Հասանի որդին, կ'իշխէր Կիլիկիոյ Տարսոնի* (Ուռհ., 263 *և* Սամուէլ Անեցի, 453). *ան իր իշխանութեան տակ ունէր նաև Մամեստիա (= Մսիս) և Ատանա քաղաքները և Լամբրոն և Պապեռոն բերդերը* (Վարդան, 106)։

*Ապլղարիպ իշխան, Բիւզանդիոնի կայսեր բարեացակամութեամբ կը հաստատուի Տաւրոսի ստորոտը և Տարսոն քաղաքին վերեւ կը գտնէ «երկու անմատոյց դղեակներ»՝ Լամբրոն և Պապեռոն, գեղերով և աւաններով։ Ասոնցմէ Պապեռոնը «գանձուց շտեմարանը» կ'ըլլայ իշխանին, որ մեծ եկեղեցի մը կը շինէ հոն, իբրեւ «դամբարան հանգստեան... իւր և իւրոցն»։*

*Անհաւանական չէ որ 1071ին, Մանազկերտի ճակատամարտէն վերջ, Ապլղարիպն ալ ինքնակոչ* (1) *կերպով տիրացած ըլլայ այս շրջանակին և Բիւզանդացիք աչք գոցած և զայն իրենց պաշտօնատարը նկատելու խոհեմութիւնը ունեցած ըլլան, ինչպէս ըրած էին Փիլարտոսի համար։*

*Ապլղարիպ կը նորոգէ Լամբրոնի ամրոցը և Պապեռոնի բերդաքաղաքը, ուր կը բնակի։*

1073*ին կը հաստատուի նաև Լամբրոնի և Պապեռոնի իշխանութիւն, զոր Յոյն կայսրէն կ'ստանար Արցախի մէկ մասին իշխող Օշին ասպետ, որ տէրն էր Գանձակի Մայրեաց Ջուրք բերդին և* 1087—88*ի Պուզանի Գանձակի դէմ ըրած յարձակման հետեւանքով* (Ուռհ., 286) *գաղթած էր իր Հալկամ եղբօրը հետ* (Սամուէլ, 117) *և ամբողջ տունով ու ազատազունդ իշխաններով եկած էր Կիլիկիա, ուր ան* «գրաւեց Սարակինոսներէն Լամբրոնի ամուր բերդը» *կամ ուրիշ պատմութեան մը համաձայն — որ աւելի հաւանական է* (2) —

(1) Թէեւ ըսուած է որ Ապլղարիպ Պոլիս գացած եւ կայսրէն ստացած է Տարսոն քաղաքին եւ գաւառին իշխանութիւնը: Կարելի է ենթադրել թէ Պոլիսէն իշխանութիւնը առնելէ յետոյ, օգտուած ըլլայ անկէ անկախ ըլլալու, երբ Բիւզանդական կայսրութիւնը քայքայուած էր Ռոմանոս Դ.ի պարտութեամբ:

(2) Վասնզի Օշին եւ Հալկամ, Կիլիկիոյ մէջ Արաբներուն դէմ չէին կրնար կռուիլ, քանի որ Կիլիկիա Բիւզանդացիներու կամ Փիլարտոսի ձեռքն էր:

փեսայացաւ Տարսոնի Ապլղարիպ իշխանին և իր եղբօր հետ ստացաւ անկէ Լամբրոն և Պապեռոն բերդերը (1)՝ շրջակայ գիւղերով։ Թէև ըսուած է որ Փիլարտոսի ժամանակ և թերեւս իր իսկ քաջալերութեամբ 1073ին հաստատուած է այս իշխանութիւնը (2), սակայն ասիկա հաստատող որևէ նշան չկայ։

Բ. ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, որ 1080ին հաստատուած է Ռուբէն իշխանի կողմէ, որ «արիւնառու Գագկայ» Աշոտեանի, (Սամուէլ, 116), կամ «յազգականութենէ Գագկայ» (Կիրակոս, 62) կամ «ի զաւակացն Գագկայ» (Ուռհ., 400) էր (3)։

Ռուբէն, Գագիկի սպանութենէն վերջ գլուխ կը կանգնի անոր մարտիկներուն և զօրքերուն և այլեւս չվստահելով Պիզուի իշխանութիւնը պահել, կը քաշուի Տաւրոսի լեռնաշղթային հիւսիսահայեաց կողմերը, ուր կը գտնուէին Կոպիտառ և Բարձրբերդ և Կոռմոզոլ (այժմ Կէօրիւմճէ գիւղ) ամուր բերդերը և ուր առաջուց ալ «էին բնակեալ բազումք յազգէն Հայոց» և «զհոռոմսն անցի ի բաց մերժեալ, եւ զնոցա տեղիսն առեալ» (Սամուէլ, 116), Նոր իշխանութեան մը հիմնադիրը կ՚ըլլայ (Ազգ. 1317)։ Թէեւ շատ հաստատ աղբիւրներ չկան, Վեր. Ե. Քասունի կը կարծէ թէ Փիլարտոս ինքը 1080ին ղըրկած ըլլայ Ռուբէն իշխանը հաստատուելու համար Տաւրոսեան լեռներու արևմուտքը, անոր ընկերացնելով Գող Վասիլը, ինչպէս յիշուեցաւ (Փիլարտոս Հայր էջ 57)։

Թէեւ բոլորովին անհաւանական չէ որ Ռուբէն Փիլարտոսէն օգնութիւն ստացած ըլլայ՝ գրաւելու համար հող մը հոն հաստատուելու համար, բայց որևէ վաւերական ապացոյց չունինք։

Այսպէս կամ այնպէս՝ Տաւրոսեան լեռնաշղթային կատարներուն վրայ Ռուբէն կրցաւ հաստատել իր իշխանութիւնը, Կոռմոզոլը, Բարձրբերդը և Կոպիտառը ունենալով իր տիրակալութեան տակ։

Ռուբէնի իշխանութիւնը՝ շնորհիւ իր աշխարհագրական դիրքին և ժամանակին ու պարագաներուն (4) աւելի տեւական կեանք ունեցած է քան

(1) Ուրիշ պատմութեան մը համաձայն՝ Օշին իշխան թշնամիներուն ձեռքէն ազատելու համար ընտանեօք եւ հետեւորդներով Պոլիս գացած է եւ անկէ առանձին Տարսոն՝ իր բարեկամին Ապլղարիպի քով։ Բիւզանդիոնի կայսր կը հրամայէ Լամբրոնի դղեակը անոր յանձնել իբրեւ բնակավայր։ Օշին հոն կը փոխադրուի։ Օշին կը շինէ Լամբրոնի Ս. Պետրոս եկեղեցին։ Ըստ հայկական աղբիւրներու՝ Լամբրոնը նուիրած է Ապլղարիպը։

(2) Իբրեւ թէ Փիլարտոս որպէս Բիւզանդացի պաշտօնատար, ինքն կարգադրած ըլլայ անոնց բնակութիւնը ի Կիլիկիա եւ թերեւս նաեւ անոնց իբրեւ օժիտ (պարգեւ) Լամբրոնի եւ Պապեռոնի սեպհականութիւնը տուած, սակայն զօրաւոր փաստեր չկան։

(3) Իր ինքնութիւնը կը մնայ անծանօթ եւ քօղարկեալ։ Կարծիքները կը տարբերին։ Մանաւանդ որպէս Ն. Ադոնց զայն կը նոյնացնէ Բիւզանդական պաշտօնատարի մը հետ, որուն վրայ պիտի խօսուի ի ստորեւ։ Որևէ կռուան այս նոյնացման համար դժուարութիւններ կը տեսնէ։ Ե. Քասունի զայն կը նկատէ Կիլիկիա գաղթող արքայազուններէն մին (**Փիլարտոս Հայր**, 56) եւ Յ. Ասպուրեան Արծրունի Սենեքերիմի ազգական **Սասունցի** իշխան մը (**Պատմութիւն Հայոց**, 241)։

(4) Այս ժամանակին եւ պարագաներուն քննական ոգիով մօտեցած են Վահան Քիւրքճեան = Բակուրան, Քասունի եւ Տոքթ. Յ. Ասպուրեան, որոնց գործերուն ընթերցումը կը լուսաբանէ շատ բան։



Գող Վասիլի իշխանութիւնը, որ արեւելքէն և արեւմուտքէն կատարուած յարձակումներէն ճնշուեցաւ և ընկճուեցաւ։

Եթէ Փիլարտոսի ծրագիրը յաջողէր, Կիլիկիան ալ մէջը ըլլալով, պիտի հիմնուէր Հայկական մեծ պետութիւն մը, որ արգելակ տէրութեան մը դերը պիտի կատարէր ընդմէջ Բիւզանդական և Սելջուկեան Կայսրութիւններուն, և թերեւս պիտի փրկէր Արեւելեան Հռոմէական Կայսրութիւնը։

Դժբախտաբար Փիլարտոսի հեռատեսութիւնը չգնահատուեցաւ Բիւզանդացիներէն, որոնք դրական օգնութիւն մը չընծայեցին իրեն և իրեն յաջորդիլ յաւակնող Մարաշի՝ Թորոս և Քեսունի՝ Գող Վասիլ իշխաններուն, այնպէս որ Մելիք Շահի մահէն և Խաչակիրներու գալուստէն ոչ շատ յետոյ, Եփրատայեաց և հիւսիսային Ասորիքի ու Միջագետքի մէջ կազմուած բոլոր իշխանութիւնները նուաճուեցան։ Սակայն մինչ այն Մելիք Շահի տիրապետութենէն ետքը երբ Սելջուկները ծանր հարկապահանջութեամբ նեղեցին և կեղեքեցին Հայերը, անոնք թողուցին երկիրը և ապաստանեցան Կիլիկեան սահմանները, այն իշխանութիւններուն երկիրները, որոնք տակաւին նոր կազմակերպուած էին Սելջուկեան Տուղրիլ Պէկի արշաւանքներէն քիչ յետոյ, օգտուելով այն ընդհանուր վհատութենէն և թուլութենէն, որ Բիւզանդացիներուն վրայ այնքան յանկարծական կերպով տիրապետած էր։

Բիւզանդիոն այնքան ընկճուած ու նուաստացած էր, որ սահմանները իսլամներուն դէմ պաշտպանելու համար Արեւմուտքի առջեւ կը խոնարհէր եւ անցք կու տար այն բանակներուն, որ Երուսաղէմը — Ս. Քաղաքը — փրկելու կ՚երթային անհաւատներու ձեռքէն։

Քրիստոսի վերաբերեալ իրերու նախանձախնդրութեամբ լեցուած այս բանակը Արեւելքի իսլամական լուծին ներքեւ ճնշուած քրիստոնեաները չէր կրնար աննկատ թողուլ։

Արեւելքը ոգեւորող այս ուժը կը խրախուսէ նաեւ Հայերը, որոնք օգտուելով Խաչակիրներու արշաւանքէն՝ միացան եւ կազմեցին միակ պետութիւն մը, որ քաղաքական յարաբերութիւններու շնորհիւ կրցաւ ինքզինքն պատկառելի ընծայել եւ իբրեւ զօրաւոր իշխանութիւն մը՝ գաղթական Հայերու ապաւէնի եւ յոյսի վայրը ըլլալ։

Այսպէս, Մելիք Շահի մահէն (1092) յետոյ ծագած երկպառակութիւններու միջոցին երբ Մահմետական ապստամբ կուսակալներ իրարու դէմ կը կռուէին եւ խեղճ ժողովուրդը անլուր տառապանքներու կ՚ենթարկէին, Հայերը ճարահատ դարձեալ կը լքէին իրենց հայրենի երկիրները, կ՚երթային անդորր կեանք փնտռելու ինչպէս Ասորիք, Եփրատացիներու երկիրը, Կոմմագենէ, նոյնպէս նաև Կիլիկիա, որուն բնակչութիւնը հետզհետէ կը շատնար։

Այս գաղթի շարժումը հետզհետէ սկսաւ աւելի մեծ համեմատութիւն առնել, Ռուբէնի որդւոյն Կոստանդինի ժամանակ (1095—1100) եւ Քեսունի իշխան Գող Վասիլի ատեն (1082—1112), երբ բաւական զօրաւոր էին Կիլիկեան այս երկու Հայ իշխանութիւնները։

Մանաւանդ երբ Գող Վասիլ 1107ին Սելջուկներուն կը յաղթէ Բերդուսի մօտ (Ուռհ., 379—380), այն ատեն աւելի պատկառելի կ՚ըլլայ իր իշխա-

նութիւնը եւ բազմաթիւ Հայեր, մանաւանդ Բագրատունիներու Սպարապետական Տան՝ Պահլաւունիներու վերջին յիշատակները, ինչպէս նաև իրենց հըրամաններուն ներքև գտնուող հին զինուորականները կու գան կը խտանան քաջանուն Գող Վասիլի երկիրներուն մէջ (Սռհ , 370—371) և Կիլիկեան իշխանութեանց զինուորական վերակազմութեան գործին կը նպաստեն։

Այդ միևնոյն շարժառիթներով բազմաթիւ Թափառական կրօնականներ և վանականներ ևս եկան ու Վասիլի երկիրները ապաստանեցան և Հայ եկեղեցական յիշատակարաններով — եկեղեցիներով, վանքերով և ապաստանարաններով — լեցուեցաւ Կիլիկիա աշխարհը։

Ուռհայեցի (464), Գող Վասիլի մահուան վրայ խօսելով կը ներկայացնէ անոր տէրութեան վիճակը, գրելով թէ «եղեւ սուգ սաստիկ ամենայն տան Հայոց, վասն առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց եւ ամենայն զօրքն Բագրատունեաց եւ Պահլաւունեացն, եւ որդիք թագաւորացն Հայոց հանդերձ ազատագունդ զօրօքն առ նա կային հանգուցեալ մեծաւ փառաւորութեամբ, եւ աթոռ հայրապետութեան Հայոց աշխարհին աստ եղաւ, վասնզի սիրեալ էր բազում գաւառաց իւրով զօրութեամբն եւ ամենայն երամք կրօնաւորաց, եպիսկոպոսաց, հարց եւ վարդապետաց առ սա ժողովեցան եւ առ հասարակ կային մեծաւ ուրախութեամբ»:

Հայ բնակչութեան Կիլիկիա և անոր շուրջը հաւաքումը և խտացումը կը հաստատեն նաև եկեղեցական վիճակներու բաժանումները, որոնք կը բազմանան և կը շատնան, բնական է ժողովուրդին թիւին աճման համեմատութեամբ։

Ժ. դարուն Խաչիկ Արշարունի Կաթողիկոսէն (972—992) հաստատուած 1—2 եպիսկոպոսական աթոռներուն (ՊՀԳ. Ա. 251), թիւը ԺԲ. դարուն մօտաւորապէս քսանի հասած էր Կիլիկիոյ մէջ։

Ինչպէս Փիլարտոսի և Գող Վասիլի շուրջ հաւաքուած էին բազմաթիւ հայ իշխաններ, որոնք իրենց զօրքով և հետեւորդներով եկած հաստատուած էին Եփրատացիներու և Հիւսիսային Սուրիոյ հողմերը ու Միջագետք, այնպէս ալ Ռուբէնէն և Օշինէն տիրակալուած հողերը և կալուածները հիւրընկալեցին և պատսպարեցին կարգ մը Հայ իշխաններ, որոնք կու գային Մեծ Հայքէն կամ Փիլարտոսի և Գող Վասիլի երկիրներէն, երբ անոնք Սելջուկ տիրապետութեան կ' երթարկուէին։

Այսպէս, այս երկու մեծ իշխանութիւնները, համաձայն ժամանակին սովորութեան և այդ դարերուն ընդունուած կարգերուն. ունեցան աւատապետական կազմակերպութիւն և իրենց իշխանապետութեան ենթակայ հողատէր-իշխաններ, որոնք իբրեւ ճորտ կ'իշխէին այս երկու մեծ իշխանապետութիւններուն զանազան մասերուն։

Դժբախտաբար, անոնցմէ շատ քիչերուն յիշատակութեանը կը հանդիպինք պատմութեան մէջ։ Ծանօթ են միայն իբրեւ Օշինեանց ճորտ՝

1. ԼԱՄԲՐՈՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, (տես, աւոր պատմութիւնը Հ. Ներսէս Ակինեան, ՀԱ. 1954, 48—54)։

2. ՊԱՊԵՌՈՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ, (տես. նոյն, 54—79)։ Օշինեանք բա-



ւական ատեն Կիլիկիան պահած են փեռեկտուած և անբաղձալի դեր մը կատարած են, վասնզի միշտ Կիլիկիոյ մէջ իբր յունասէրներ և անոնց յարում ունեցողներ ճանչցուած են։ Այսպէս հիմնադիր Օշին Ա.ի զաւակն էր Հեթում Ա. (1072—1143) որ Սեւաստոս տիտղոսը ունէր։ Իրեն յաջորդեց իր որդին՝ Օշին Բ. (1143—1173 +) հայրը՝ Ներսէս Լամբրոնացիի որ նոյնպէս Սեւաստոս էր։ Օշին Բ. օգնեց Անդրոնիկոսի, ընդդէմ Թորոս Բ. Իշխանապետին, որ Մամեստիոյ ճակատամարտին մէջ զինքն գերի բռնեց և փրկանքով ու անդրդամիկ որդին պատանդ առնելով, ազատ արձակեց։

1164ին Ռուբինեան և Օշինեան տուները հաշտուեցան, սակայն 1169ին Հեթում Բ. թշնամացաւ Թորոսի հետ։ Մլեհ պաշարեց Լամբրոնը որ 1177ին կրկին պաշարուեցաւ Ռուբէն Բ.էն։ Լամբրոն կ'ազատի Անտիոքի Լատին իշխանին օգնութեամբ։ Երբ Կոստանդին Մողոն (որդի Վասակի), Պապեռոնի տէրը, Կիլիկիոյ Զապէլ Թագուհիին խնամակալ եղաւ և պայլ կոչուեցաւ, ասիկա իր որդին Հեթումը ամուսնացուց Զապէլի հետ և ինքն դարձաւ «Թագաւորահայր»։ Այսպէս, երկու տուները միացան և երկու իշխանութիւնները միաձուլուեցան։

Օշինեան տան այս ճորտերուն ժամանակակից կը յիշուին նաև Ռուբինեանց ճորտերը, որոնցմէ թուենք՝

1. ԲԱՐՁՐԲԵՐԴԻ իշխան Վասիլ և իր եղբայրը Տիգրան։

2. ՄԻՍԻՍԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, զոր ստացած է Սասունի Վասիլ–Հեթում իշխանը, որ իր եղբայրը՝ Թոռնիկի հետ անցած էր Կիլիկիա և փեսայացած էր Ռուբինեանց, և ստացած Միսիսը և իր շրջակայքը։

Վասիլ–Հեթում մեռած է 1193ին։

3. ՍԵԼԵՒԿԻՈՅ ՎԻՃԱԿ, որ տրուած էր Ռուբինեանց կողմէ վերոյիշեալ Վասիլ–Հեթումի եղբօր և անոր հետ Կիլիկիա գաղթող Թոռնիկ-Շահնշահի, որ նոյնպէս Ռուբինեան իշխանուհիի մը հետ ամուսնացած էր։

Թոռնիկ–Շահնշահ եւս իր եղբօրը հետ նոյն տարին մեռած է (1193)։

Այս ճորտ հողատէր–իշխաններէն զատ՝ կը թուի թէ ԺԱ. դարուն վերջին քառորդին Օշինի և Ռուբէնի իշխանութիւններուն շուրջ հաստատուած կային Հայ ծագումով բազմաթիւ ուրիշ իշխաններ, Բիւզանդացիներու ճորտ կամ Ռուբէնի պէս բոլորովին անկախ և ապստամբ։

Այսպէս, Խաչակիրներու պատմիչներէն ըստ Գուիբեռոս, Albert d'Aixի Taphouz և ըստ Գուլէլմոս Տիւրացիի (Guillaume de Tyrի) Tafroc անուն իշխան մը և իր եղբայրը Կոստանդին, Խաչակիրներու Տաւրոսեան լեռները հասած ատեն, ամուր տեղեր ունէին Տաւրոսի մէջ։ Taphouz, Tafroc կամ Տափնոս — ինչպոս տառադարձած է Սաւալանեանց, (Պատմ. Երուսաղէմի, էջ 1193) — իր աղջիկը կնութեան տուած էր Կոտըրֆուայի եղբօրը՝ Պօտուինի, որուն կինը մեռած էր Խաչակիրներու Մարաշի առջեւ գտնուած ատեն։ Ըստ այդ Լատին պատմիչներուն՝ Տափնոս հայ իշխանը հալածուեցաւ իր անգութ փեսայէն և վախնալով իր կեանքին և ինչքին համար՝ գնաց լեռներու մէջ իր դղեակներէն մին ապաստանիլ։ Սաւալանեանց, որ այս դէպքը կը պատմէ, Լատին պատմիչներէն օգտուելով, նոյնութիւն մը կը տեսնէ Տափնոսի և Ռու-

բէնի որդւոյն Կոստանդինի միջեւ, ինչ որ բոլորովին անհաւանական չէ, քանի որ Տափնոսի եղբօրը անունը Կոստանդին կը նշանակուի F. Chalandonէ։

Գուցէ երկու եղբայրները իրարու հետ շփոթուած են։ Եթէ վայրերու ճշգրիտ նոյնութիւն մըն ալ տեսնուած ըլլար, անվարան պիտի նոյնացնէինք, սակայն քանի որ ատիկա չկայ, կը վարանինք և կը միտինք ընդունելու թէ ատիկա ուրիշ իշխան մըն էր։

Վահան Քիւրքճեան (Ցոյց, 154), կը յիշէ մի քանի ուրիշ իշխանութիւններ եւս, ինչպէս Նաթանիլեանք՝ Ասկուռս բերդին մէջ։ Սիմէոնի՝ հիւսիսային Կիլիկիոյ մէջ, Ճնճղուկի՝ Լաւոդիկէի մէջ և Շմաւոնի՝ Ալփէի մէջ։

Հետեւաբար, կարելի է մտածել որ թերեւս Ամանոսէն արեւմուտք, Տաւրոսի ստորոտը գտնուող Լամբրոնի, Պապեռոնի, Բարձրբերդի և այլ բազմաթիւ բերդերու մէջ հաստատուած էին Հայ իշխաններ, որոնք եթէ Փիլարտոսէն չէին ստացած իրենց բերդերը, գոնէ անոր հակառակութեան չէին հանդիպած։ Փիլարտոս թոյլ տուած էր որ անոնք զօրանան։ Բայց Գող Վասիլ, որ անկէ յետոյ կոչուած էր իր դերը կատարելու իբրև իշխանապետ, նոյն ոգին չպահեց և ինչ ինչ ցուցումներու համաձայն՝ նոյնիսկ նախանձ և ատելութիւն ցոյց տուաւ և չկրցաւ համերաշխ գործել Ռուբէնի և անոր յաջորդներուն հետ։ Երեւոյթը հասարակաց էր և ընդհանուր համաձայնութիւն մը գոյութիւն չունէր և բոլոր Հայ իշխանները նոյնիսկ իրենց Կիլիկիա հաստատուած օրէն ինքնագլուխ գործել սկսած են։ Այսպէս, Գագիկ Բագրատունի, որ մոլեռանդ հայադաւան մըն էր և ատոր համար գուցէ համակիր չէր յունադաւան Փիլարտոսի, ինքն ալ իր կարգին փորձած է կազմել Հայկական իշխանապետութիւն մը Կիլիկիոյ մէջ։ անշուշտ նախատեսելով իր նորա «Թագաւորութեան անխուսափելի վախճանը։ Ատոր համար կ'երեւի թէ ինքն ալ ուշադրութիւն դարձուցած էր Ամանոսէն արեւմուտք, Փոքր Հայքի հարաւակողմը բնական պատուարով մը — Տաւրոսեան լեռներով — անջատուած այն շրջանին վրայ, որ Կիլիկիան էր և որ ամէն կերպով աւելի յարմար վայր մըն էր քան Եփրատի արեւմուտքը տարածուած բաց և անպաշտպան այն դաշտերը, ուր զետեղուած էին Յոյներուն կողմէ Հայաստանէն փոխադրուած Հայ թագաւորները։ Արդարեւ, Գագիկ ինքն ալ կը փորձէ օգտագործել Տաւրոսեան լեռները, անոնց արեւելեան կողմը թողլով Փիլարտոսի և ինքն գրաւելով այդ լեռներուն արեւմուտքը, Ռոմանոս Դ.ի ձախողութենէն օգտուելով։ Ան կ'աշխատի Ապլղարիպի հետ գործակցիլ, ուստի խնամութիւն հաստատելու համար անոր հետ 1079ին կու գայ Տարսոն՝ կնութեան առնելու համար Ապլղարիպի աղջիկը, իր Դաւիթ որդիին։ Սակայն ինչպէս կ'երեւի՝ Ապլղարիպ չի համակերպիր Գագիկի ծրագիրին։

Ուռհայեցի (263), կ'ըսէ թէ «վառեալ զգունդն զօրաց իւրոց» և իջնելով «ի Տարսոն քաղաք, առ Ապլղարիպ իշխանն Հայոց՝ ... առն քաջի, ի Վասպուրականն գաւառէ: Սա (Գագիկ) գնացեալ առ Ապլղարիպն սիրոյ աղագաւ, զոր վասն խնամութեան կոչեալ էր զԳագիկ՝ Ապլղարիպայ եւ յաղագս պատճառի ինչ ոչ եղեւ գործ խնամութեանն»:

Այս խնամութեան գործը զինակցութենէն կամ գործակցութենէն տարբեր



բանով կարելի չէ մեկնել, մանաւանդ նկատի ունենալով Գագիկի իր երկիրը դառնալէն յետոյ Յունաց վրայ բրած յարձակումը, որուն ինք ալ զոհ գնաց (1079ին)։

Ապլղարիպ որոշ է որ Գագիկի առաջարկը չէ ընդունած, իբրեւ հաւատարիմ ճորտ Բիւզանդական Կայսրութեան և մերժած է ապստամբիլ։ Ըստ Վարդանի (105)՝ Դաւիթ իր աներոջմէն թունաւորուելով սպաննուեցաւ Գագիկի դիմումէն ետքը. թերեւս վախնալով որ Գագիկի թելադրութեամբ. անոր որդին կը դաւէ իրեն, իր ծրագիրին համակերպած չըլլալուն համար։

Գագիկի մահէն (1079) մինչեւ Փիլարտոսի ձախողութիւնը և իր իշխանապետութեան կործանումը (1086), անցնող եօթը տարիներու համեմատաբար կարճ ժամանակին մէջ՝ Հայ իշխանապետը չկրցաւ տիրել Կիլիկիոյ, վասնզի Բիւզանդիոն կասկածով կը դիտէր իր գործունէութիւնը և ամէն ջանք կ'ընէր սիրաշահելու համար Կիլիկիոյ Հայ տանուտէրները, որպէսզի Փիլարտոս հոն ալ չտիրակալէր։

Այսպէս, Հայերը անհեռատեսութեամբ չմիացան իրարու և միակամ պետութիւն մը չկրցան կազմել, իսկ Յոյները յաջողեցան Գագիկի ձախողած փորձէն ետք, Կիլիկիոյ հայ իշխանութիւնները Բիւզանդական Կայսրութեան հաւատարիմ պահել, ինչպէս կը մակաբերուի մասնաւորապէս Օշինի Բիւզանդիոնի հետ ունեցած յարաբերութիւններէն։

Կիլիկիոյ մէջ կազմուած բոլոր Հայ իշխանութիւնները դժբախտաբար չեն կրցած հաստատուն ուղեգիծ մը ունենալ և պատեհապաշտ եղած են։ Անոնց ամէնէն բարեբախտը եղած է Ռուբէնի տունը, որուն զօրանալուն նպաստած է Փիլարտոս։ Ռուբէն կրցած է ոտքի կռուան ունենալ Կիլիկիոյ մէջ, վասնզի Ալեքս Ա. Կայսրը Նորմաններուն դէմ ծանր պատերազմի բռնուած էր և Սելջուկները ներքին վէճերով և Բիւզանդական Կայսրութեան ճոխ գաւառները գրաւելու զբաղած էին։ Կայսրը չուզեց այդ փափուկ շրջանին Ռուբէնի աննըշան իշխանութեամբը զբաղիլ, եթէ ոչ անկարելի էր որ Ռուբէն կարենար տոկալ Բիւզանդական ուժին դէմ։ Չմոռնալ որ Ռուբէնի իշխանութիւնը կարգաւորեալ տէրութիւն մը չէր. Ռուբէն կը գործէր անծրագիր։

Ասով հանդերձ կարելի չէ F. Chalandonի, (տես. Jean II. Comnène et Manuel II. Comnène, էջ 102—104) հետ համաձայն ըլլալ, թէ Խաչակիրները հաստատուն կարգեր հաստատած են աշխարհի այդ մասին մէջ. իրականութեան մէջ անոնք եկան քրիստոնէութեան անունով յափշտակութիւններ և անիրաւութիւններ գործելու հոն՝ տեղական իշխանութիւններուն դէմ, յաճախ նոյնիսկ ջնջելով զանոնք։

F. Chalandon, (Ցոյց) կը սխալի Ռուբինեան իշխանական տունը օժտուած տեսնելով քաղաքական հասունութեամբ, այն պատճառով որ ան հասկացողութեան եկած էր Լատիններուն հետ։

Ընդհակառակն, անոնց ուժը իրենց դիմադրական կարողութեան մէջ էր և Փոքր Ասիան ճեղքելով, Խաչակիրներու Կիլիկիա համնիլը՝ Հայերուն համար վնասակար եղած է, ինչպէս տեսնուեցաւ։

Ռուբէն, որ շուրջ 1080ին հաստատուած էր Կորոմոզոլ, Բարձրբերդ, Կո-

պիտառ, Տաւրոսեան լեռնաշղթային մէջ, Mopsuestreի արեւմուտքը, Տաւրոսի մէկ մասին վրայ, Ջէյթունի մօտ, ձգեց տղայ մը՝ Կոստանդին անուն, որ տարածեց իր իշխանութիւնը՝ գրաւելով Տաւրոսի մեծ մասը՝ Թուրքերէն եւ վահկան՝ Յոյներէն։

Կոստանդին բռնած էր Տաւրոսի անցքերը եւ մասնաւորապէս տէրն էր Անարզաբա-Կեսարիա ճամբուն։ Խաչակիրները անոր օգնութեան պէտք ունէին կարենալ անցնելու համար Տաւրոսը։ Կոստանդին աննախանձաբար եւ քրիստոնէական խանդավառութեամբ անոնց ազատ անցք տուաւ եւ պաշար հայթայթեց Անտիոքի պաշարման ատեն։

Լատինները իրեն տուին «Պարոն» տիտղոսը 'ի փոխարէն իր մատուցած ծառայութիւններուն (հմմտ. F. Chalandon, Jean II. Comnêne et Manuel I. Comnène, 107)։

Լատինները ուրեմն սիրաշահիլ կը փորձէին Հայերը, մինչ դժբախտաբար Յոյները կը պահէին դեռ իրենց կրօնական ծթռած մոլեռանդութիւնը։ Այնպէս որ ԺԱ. դարուն վերջերը եւ ԺԲ. դարուն առաջին կէսին, պահ մը Հայերուն դէմ կրօնական հալածանքը դադրեցնելէ ետք, վերստին սկսած են նեղել Հայերը, կրօնական պատճառներով, փոխանակ լայնախոհութեամբ զանոնք սիրաշահելու։ Հակառակ անոր որ Յովհաննէս Բ. Կոմնենոս կայսրը (մականուանեալն Կալօժան կամ Բալէովհան Պերփիւռուժէն (1118—1143) որ բարեբարոյ անձ մըն էր եւ կրօնամոլութիւն չունէր, Յոյները նեղել սկսան Հայերը (հմմտ. Մ. Ուռհայեցի, Սամուէլ Անեցի, Վարդան Գանձակեցի) եւ բռնադատեցին ընդունիլ իրենց ծէսերը։

Շատերը տկարացան եւ յարեցան Յունադաւանութեան։ Ժամանակ մը ետքը սակայն, երբ Հայերէն ոմանք աղաչեցին կայսեր եւ նուէրներով զայն ողոքեցին, ան հրամայեց այլեւս չնեղել Հայերը և թողուլ իրենց կամքին։

Ասով կը խորհէր անոնց հաւատարիմ հպատակութիւնը շահիլ եւ հնարքով մը կ'ուզէր Ռուբէնի որդին Թորոսը (1099—1129) եւ անոր իշխանութեան ներքեւ գտնուող Հայերն ալ հպատակեցնել (Չամ. Գ., 92)։

Ան կը փափաքէր Կայսրութեան հին ուժը եւ սահմանը վերահաստատել, եւ ատոր համար Արեւելքի միաբնակ ժողովուրդներու համակրանքը շահիլ կ'ուզէր։ Եւ թերեւս հաւատալով որ կրցած էր շահիլ, Յովհ. Բ. Կոմնենոս դէպի Արեւելք արշաւանք մը ըրաւ եւ յաղթեց Գոնիայի Ռումի Սուլթանին։ Ապա յարձակեցաւ Լատիններուն վրայ, որոնք Երուսաղէմի թագաւորին գլխաւորութեամբ Պաղեստինի եւ Սուրիոյ մէջ կազմած էին աւատապետութիւն մը, որուն մէկ միաւորը կը նկատուէր Կիլիկիոյ Լեւոն Ա. իշխանը, (1129—1137 — 1141 +) որ իբրեւ Լատիններու դաշնակից կռուած էր Յոյներուն դէմ եւ Իսաւրիոյ մէջ բազմաթիւ քաղաքներ գրաւած էր (1137), ինչ որ նորէն գրգռած էր Յոյները Հայերուն դէմ։ Ատոր վրայ Յովհ. Բ. կայսրը յատկապէս Հայոց դէմ արշաւանք մը կազմակերպեց, Կիլիկիոյ Հայ իշխանապետութիւնը բոլորովին ջնջելու համար եւ մտաւ Կիլիկիա եւ աւերեց Մամեստիան, Տարսոնը, Ատանան եւ վերջապէս անառիկ Անարզաբան։

Լեւոն նոյնիսկ գերի ինկաւ (1137)։ Հալածանքը Հայոց դէմ շարունակ-



ուեցաւ եւ Կայսրութեան ամէն մասերուն մէջ հայածին եւ հայածէս տարրերը գրեթէ իրենց նշանակութիւնը կորուսին, Յոյն զանգուածին մէջ ձուլուելով։

Փոքր Ասիոյ, Թրակիոյ, Կ. Պոլսոյ Հայ հոծ եւ բարգաւաճ գաղութները այլեւս չէին յիշուիր, Արմէնիաքներու յիշատակութիւնն իսկ կը դադրի։ Հայ-Հոռոմներ ամէն կողմ գոյութիւն կ'առնեն Նաթանիլեան անունին տակ։

Անոնք կը տարածուին նոյնիսկ Կիլիկիոյ մէջ։ Այնպէս որ երբ Կիռ Մանուէլ կայսրը (1143—1180) 1152ին Կիլիկիոյ Թորոս Բ. իշխանապետին (1145—1169) հետ պատերազմի բռնուեցաւ եւ Անդրոնիկոս զօրավարին հրահանգ տուաւ Թորոսը պատժելու, օգնութեան կոչեց նաեւ Լամբրոնի տէր Օշին Բ. իշխանը (հայրը Ներսէս Լամբրոնացիի եւ թոռը Օշին Գանձակեցիի) որ Ռուբինեան տան ոսոխ էր, ինչպէս եւ Նաթանիլեանները, որոնք կը բնակէին Ասկուռ։

Այս Նաթանիլեանները ազգութեամբ Հայ էին, սակայն Յոյն ծէսերով կը վարէին իրենց կրօնական պաշտամունքը եւ ատոր համար թշնամացած էին Հայոց հետ եւ Յոյն կայսեր կը ծառայէին իբրեւ զինուոր։

Մանուէլ Կոմնենոս (1143—1180) եւս 1159ին աշխատեցաւ Թորոսի երկիրները խլել, բայց երբ տեսաւ իր զօրավարներուն անյաջողութիւնը, անձամբ եկաւ Կիլիկիա։ Թորոս այն ատեն տկարացաւ եւ Լատին իշխաններու միջամտութեամբ Կայսեր հետ հաշտութիւն կնքեց, Անարզաբան եւ Մամեստիան Յոյներուն դարձնելով։ Եւ Կիլիկիոյ միւս մասերուն վրայ պահելով իր իշխանութիւնը՝ ընդունեց Յունական գերիշխանութիւնը։

Կիլիկիոյ իշխանապետներուն գերագահութիւնը ուրիշ Հայ պետերու վրայ, որոնք մինչեւ այն ատեն հաւատարիմ մնացած էին Յոյներուն, նուիրագործեց Թորոս իշխանին յաղթանակը Mopsuestreի առջեւ, Կիռ Մանուէլ կայսեր ներկայացուցիչ Սրսոյ եւ Մլոխի իշխան Անդրոնիկէի դէմ (Ուռհ., 507)։ Կարգ մը Հայ աւատապետներ, որոնք կը ծառայէին Բիւզանդական բանակին շարքերուն մէջ, մեռան պատերազմի դաշտին վրայ։ Անոնցմէ կը յիշուին Սմբատ՝ Պապեռոնի տէրը, Վասիլ՝ Բարձրբերդի տէրը, եւ իր եղբայրը Տիգրան եւ Տէրին (Dérin)։

Իսկ իշխաններէն մէկ մասը ինկան իշխանութենէ յաղթականին կողմէ։ Անոնց մէջ ամէնէն կարեւորն էր Օշին՝ Լամբրոնի տէրը, նոյն տեղւոյն համանուն առաջին տիրոջ թոռը, որ նման դեր մը խաղաց առաջին Խաչակիրներուն Անտիոքը պաշարած ատեն (F. Chalandon, նոյն, 428)։

Երբ Բիւզանդիոն զիջաւ ճանչնալ Թորոսի հանգամանքը իբրեւ իշխանապետ Կիլիկիոյ, գոյացած հաշտութեան հետեւանքով, երկու Հայ իշխանութիւններ ստեղծուեցան Կիլիկիոյ մէջ, իրարու դրացի, իրարմէ անկախ, երկուքն ալ Յունական գերիշխանութեան տակ եւ իբրեւ կայսերական ներկայացուցիչ Յոյներէն Սեւաստոս ճանչցուած իշխաններու վարչութեան տակ, ներքին ինքնավարութեամբ։

Այս երկուքէն մին Կիլիկիոյ իշխանապետը՝ Թորոսն էր, իսկ միւսը Լամբրոնի իշխան՝ Օշինը։ Լամբրոնի իշխաններուն քաղաքականութիւնը եղած էր՝ կապակցութիւն Յունական շահերուն եւ հաւատարմութիւն Յունական քաղաքա-

կանութեան, այնպէս որ մինչեւ իսկ պատերազմած են Յունաց հետ Թորոսի դէմ։ Օշին գերի ինկած է Թորոսի ձեռքը, սակայն ան վեհանձնութեամբ արձակած է։

Մամեստիա կամ Մսիս կը նստէր Կայսերական Դուքսը, որ ամէն տարի կը փոխուէր։ Այս Հայ ճորտ երկու իշխանապետութեանց մէջ, որոնք Յունական ազդեցութեան ենթարկուած էին, թափանցած էր օրթոտոքսութիւնը և նոյնիսկ ԺԲ. դարուն այնքան մտատանջութիւն կը պատճառէր Հայ Եկեղեցին, որ իր վարիչները, միութեան ձեռնարկներով կարծես վտանգը սահմանափակել և Օրթոտոքս կղերին ուժգին ճնշումը նուազեցնել կ'ուզէին։

Այսպէս, Ներսէս Շնորհալի 1165ին հարկ կը դատէ Մանուէլ Կայսեր (1143—1180) ներկայացնելու Մամեստիա նստող այդ տարուան «Կայսերական Դուքս» Ալեքս Թագազարմ իշխանին և Կայսերական փեսին (1) միջոցաւ գիր մը՝ փաստող Հայերու ուղղափառութիւնը։

Մանուէլ, ինչպէս տեսնուեցաւ, Շնորհալին Պոլիս կը հրաւիրէ և Շնորհալին՝ Կայսրը Արեւելք։ Երկուքն ալ չեն կրնար, սակայն բանակցութիւնները կը շարունակուին, որոնց իրենց մասնակցութիւնը կը բերեն արդէն իսկ յունածէս դարձած Հայ համայնքներու վարիչները և հոգեւոր առաջնորդները։

Այսպէս բանակցութիւններ կատարուեցան առանց դրական արդիւնքի։

Հայերը՝ իրենք զիրենք Տիեզերական Եկեղեցիէն անբաժան և կատարեալ Ուղղափառ ցոյց տալով՝ վարպետ միջոցի մը կը դիմէին, որպէսզի հալածանքը դադրէր, մանաւանդ Կիլիկիայէն դուրս, Բիւզանդական Կայսրութեան սահմաններուն մէջ ապրող Հայերուն դէմ։ Մասնաւորապէս հալածանքը սաստկացաւ 1175—1179 թուականներուն։ Ժամանակին Կաթողիկոսը՝ Գրիգոր Տղայ, ծանր դրութեան մէջ էր, որովհետեւ իրեն վիճակուած էր պատասխանել Կայսեր միութեան պահանջներուն։ Հետեւաբար բանակցութիւններով ժամանակ կը շահէր։ Արեւելեանները, ինչպէս կը թուի կը վրդովուէին։

Գրիգոր Տղայ, միութենական այս ձեռնարկներու մասին ընդդիմադիր Արեւելեաններուն գրած ատեն, (1178ին) կ'ըսէ թէ «զոն յոլովս ընդ իշխանութեամբ նոցա ի մերային ազգէն քրիստոնեայս», որոնք նեղութիւն կը կրեն այս անհամաձայնութեան երեսէն, որ «թէեւ փոքր ինչ թեթեւացաւ այժմ» Մանուէլի մշակած միութեան առաջարկով, «բայց կատարեալ ոչ է բարձեալ» և լաւ գործ մը ըրած կ'ըլլանք, եթէ անոնց օգնեմք» (տես. Ընդհանրական Ներսէս Շնորհալիի, Երուս., 1871, 329)։ Իսկ Սանահին ապրող ժամանակին գլխաւոր դէմքերէն Գրիգոր Տուտէորդիին ուղղած նամակին մէջ կը գրէ. «Հրաժարեցաք, ի բաց լքաք զամենայն խնդիր, որ ի նոցանէ և վասն այսօրիկ սաստկացաւ մարս պատերազմի ի վերայ մերոյն...», որով կ'ուզէ հասկցնել թէ բացարձակ մերժում մը աղէտալի պիտի ըլլայ։

Գրիգոր Տղայ միևնոյն ատեն հալածուած Հայերու մասին ալ կը խօսի և կ'ըսէ թէ «նորա յարաժամ բողոքեն՝ օգնել նոցա», այսինքն կը խնդրեն փրկել զիրենք դժուար կացութենէ։ Գրիգոր Տղայ կը խնդրէ որ իրեն ըսեն

---

(1) Ալեքս ունէր պռօտոստրատորի աստիճան, այսինքն հեծելազօրաց սպարապետի:



թէ ի՞նչ ընելու և ի՞նչպէս վարուելու է։ Գրիգոր Տուտէորդին, խորհրդակցելով արեւելեան կղերին գլխաւոր դէմքերուն՝ Մխիթար Գոշի և ուրիշներու հետ, երկար նամակներով, խորհուրդներ կու տայ և կը պահանջէ որ որեւէ կերպով չզիջիլ Յոյներուն և բողոքել անոնց բռնութիւններուն դէմ, դիմելով «առ... քրիստոնէութեամբ պատուեալ մեծափառ եկեղեցիս բռուզաց. խնդրեալ զպատասխանս ի նոցանէ»։ Ձեռ. Թիւ 2966, Երեւանի Մատենադարանին, համմտ. նաև Արարատ, 1893, և Աս. Մնացականեան, Հնագոյն վկայութիւններ Հայ եւ Ռուս ժողովուրդների բարեկամական յարաբերութիւնների մասին. ԼՐԱԲԵՐ լրագիր, Ժ. տարի, Թ. 143, 29 Յունիս 1948)։

Ասիկա ցոյց կու տայ թէ որքան սաստիկ էր հալածանքը, որ Հայերը այնքան հեռուները կը պտտցնեն իրենց աչքերը։

Հակառակ այս հալածանքներուն, որոնց նմանները Փրանկ ժողովուրդներն ալ կը գործէին, ինչպէս նաև հակառակ իսլամական յաջորդական գրոհներուն՝ որոնց ենթարկուեցաւ Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը, անիկա երեք ուժերու մէջ տարուբեր, կրցաւ իրեն համար տեսակ մը հաւասարակշռութիւն ստեղծել և տոկալ, ապացոյցը տալով Հայկական ձեռներիցութեան։

Թորոսի յաջորդները աւելի ամրապնդեցին իրենց իշխանութիւնը և հիմնեցին պետութիւն մը, որ երեք հարիւր տարիներու կեանք մը ունեցաւ (1080—1375) և իր վեհապետները դար մը յետոյ (1196ին) ճանչցուեցան իբրեւ թագաւոր թէ՛ Եւրոպական պետութիւններէն և թէ՛ Բիւզանդական Կայսրերուն կողմէ (1198)։

Կիլիկիա Թագաւորութեան վերածուելէ ետք՝ անոր շրջանակը աւելի ընդարձակուեցաւ։ Բացի Կիլիկիայէն, Իսաւրիա, Լիկայոնիա և Եփրատացիք, ինչպէս նաև Դ. Հայոց մէկ մասը հնազանդեցան Լեւոնի, և անոր պետութեան մաս կազմեցին։

Երկիրին զարգացումը և յառաջդիմութիւնը, մանաւանդ ապահով սահմանները պատճառ եղան գաղթական Հայոց դէպի Կիլիկիա յամր տեղափոխութեան։ Մանաւանդ 1220—1240 շրջանին՝ նոյնիսկ հեռաւոր տեղեր բնակող Հայերէն, Թաթարներու արշաւանքներէն հալածուածներէն շատերը, եկան Կիլիկիա և հոն հաստատուեցան, հայկական պետութեան մը սահմաններուն մէջ իրենք զիրենք ապահով ըլլալ կարծելով։ Մասնաւորապէս Թաթարական արշաւանքին հետեւանքով շատեր ապաստանած են Կիլիկիա, ինչպէս կը վկայէ Կիրակոս պատմիչ (95), «լցաւ երկիրն բազմութեամբ մարդկան՝ անարուեստից եւ արուեստաւորաց», որոնք Հայաստանի ներքին գաւառներէն կը խուժէին դէպի Արեւմուտք՝ «փախուցեալք յաւերմանէ Թաթարին»։ Սակայն դժբախտաբար, Խաչակիրներու հիմնած իշխանութիւնները, Եգիպտոսի Ֆաթիմեան Սուլթաններուն կողմէ հետզհետէ ջնջուեցան։ Եգիպտացիք իրենց իշխանութեան ենթարկեցին Սուրիան և հասան Կիլիկիոյ սահմանները։

Այդ օրէն Կիլիկիոյ բախտը վճռուած էր։ Ամէն կողմէ իսլամ իշխանութիւններէ շրջապատուած այս քրիստոնեայ պետութիւնը, որ իսլամ աշխար-

*հին դէմ բացուած պատերազմի մը՝ Խաչակրաց արշաւանքներուն օգնած ըլլալու մեղքն ալ գործած էր, չէր կրնար կեանք ունենալ։*

*Ջուր տեղը Հայերը արեւմտեան երկիրներու օգնութեան վրայ յոյս դրին, զուր տեղը Թախանձագին օգնութիւն հայցեցին։ Անդառնալի վճիռը գործադրուեցաւ և Հայ անկախութեան այս վերջին որորանն ալ Հայերէ կառավարուելէ դադրեցաւ։*

*Դէպի անկում դիմող այդ շրջանին մէջ, որ* 100—150 *տարի տեւած է, բնաւ չի յիշուիր որ գաղթականներ հաստատուած ըլլան Կիլիկիոյ սահմաններուն մէջ, որոնք բնաւ ապահովութիւն մը չէին ներշնչեր նոր գաղթականներ ընդունելու համար։*

*Ընդհակառակն, Հայերը գունդագունդ կը մեկնէին այն երկիրներէն զորս չէնցուցած և ծաղկեցուցած էին։*

*Այսպէս, Կիլիկեան Թագաւորութեան սահմաններէն՝ այս Թագաւորութեան վերջալոյսին՝ բազմաթիւ Հայեր հեռացած են, ոչ միայն շրջակայ երկիրներ, այլ ծովերէն անդին տեղափոխուելով։*

*Օրմանեան,* (Ազգապատում, 1825) *Լատիններու հետ յարաբերութիւններու և բարեկամութիւններու հետեւանք կը նկատէ Կիլիկիայէն աշխարհականներու ԺԴ. դարուն սկիզբները վաճառականութեան և եկեղեցականներուն՝ Հայ եկեղեցիներ և վանքեր հիմնելու համար Իտալիա երթալը, թէեւ ասոնք զանգուածային գաղթի հանգամանք չունէին։*

*Լեւոն Ե. Թագաւորին* 1375*ին գերի իյնալէն ետքը, թէև Եգիպտացիք Կիլիկիոյ վրայ կուսակալ մը դրին, սակայն երկիրը չկրցան բոլորովին նուաճել, վասնզի Հայերը չհամակերպեցան և չհնազանդեցան Եգիպտացիներուն մէկ անգամէն։ Կարգ մը իշխաններ Տաւրոսի և Ամանոսի լեռներուն կատարները, ամուր վայրերու մէջ ազատ իշխանութիւններ հիմնեցին, որոնք առաւել կամ նուազ տեւականութիւն մը ունեցան։*

*Նոյնիսկ Սիսի մէջ կամ անոր մօտերը երեւան եկաւ Կոստանդին անուն անձ մը, որ Թագաւոր տիտղոսը առաւ և* 1376*էն մինչեւ* 1424, *քառասունըութը տարի իշխանութիւն վարեց* (Սամուէլ Անեցի, 170)։

*Ասոր իշխանութեան շրջանին՝* 1403*ին կամ* 1404*ին Սիսեցիները ձանձրանալով այն նեղութիւններէն, զորս կը պատճառէին Ռամազանեանք՝ Լէնկ Թիմուրի դէպի Արեւելք մեկնելէն ետք, իրենք զիրենք անկարող զգալով դիմադրելու, կ'որոշեն քաղաքը լքել և մեկնիլ։*

*Գաղթականութեան առաջին խումբը կը մեկնի գլխաւորութեամբ Պարոն Կարապետի, որ Թոռ էր Կոստանդին Թագաւորին և երկրորդ խումբը առաջնորդութեամբ Պարոն Ասըլպէկի և Յովհաննէս, Վահան, Գրիգոր և Ստեփանոս քահանաներուն։ Սիս կը մնան միայն աղքատները, որոնք քաղաքը* 1404 *Յունիս* 6*ին յանձնեցին Եգիպտացւոց։*

*Մեկնողները, ըստ ժամանակագիրի մը,* 30,000 *տուն էին, սակայն այս թիւը հաւանօրէն չափազանցութիւն էր* (Ազգապատում, 2007)։

*Գաղթականները կը հեռանան ծովու ճամբով, և հաւանօրէն անոնց կարեւոր մէկ մասը Կիպրոս կ'անցնի, ուր քրիստոնեայ իշխան մը՝ Յովհաննէս Բ. Թագաւորը կը տիրէր։*



*Անոնցմէ կարեւոր մաս մըն ալ պէտք է աւելի հեռուն գացած ըլլայ, շատ հաւանաբար Իտալիա, կամ Վենետիկեան և Ճենովական գաղութներ, որոնք «յայնկոյս ծովուն» կը գտնուէին։ Այս Թուականէն վերջ տեղ մը կը կարդանք թէ* «յետ բառնալոյ թագաւորութեան Հայոց ի Սսոյ *ի* ՊԿԲ (= 1413) թուին, ժողովեցան թագաւորազունքն եւ իշխանքն Հայոց, եւ բազումք ի ժողովրդոյ, մտեալ ի նաւ գնացին ի Ֆռանգս 30.000 տուն քրիստոնեայք Հայ ազգաւ» (1)։ *Իսկ* 1424*ին ուրիշ յիշատակագիր մը կը գրէ թէ՝* «թագաւորն ի Կիպրոս անցաւ, եւ ընդ նմին բազում իշխանք, իւրաքանչիւր տոհմականօք հանդերձ»։ *Գաղթականներուն թիւը կրկին* 30,000 *նշանակուած է* (Ազգ. 2049), *ինչ որ կասկած կը ներշնչէ թէ* 1404*ի,* 1414*ի և* 1424*ի այս գաղթականներէն գոնէ մէկը աւելադրութիւն մըն է, և տարեթիւի սխալի հետեւանք։ Հաստատուն իրողութիւն է սակայն՝ Կոստանդինի քառասունըութը տարի* (1376—1426) *«Թագաւոր» տիտղոսով Կիլիկիոյ մէջ տոկալը, և ապահովաբար իր իշխանութեան շրջանին* 1404 *կամ* 1414 *Թուականով խոշոր թիւով գաղթականներու Կիլիկիայէն հեռանալը և քսան կամ տասը տարիներ ևս իր իշխանութիւնը շարունակելէ ետք՝ իր ալ* 1424*ին կամ* 1426*ին վերջնապէս Կիլիկիան լքելն ու Կիպրոս անցնիլը, իր աւագանիով։ Ամէն տարակոյսէ վեր է ուրեմն որ Կիլիկեան Թագաւորութեան վախճանին՝ մեծ թիւով Հայեր, ծովերէն անդին հեռաւոր երկիրներ գաղթած՝ և ապահով վայրերու մէջ ցոյց տուած են իրենց կարողութիւնը, ձեռք բերելով որոշ յաջողութիւններ։*

*Այսպէս իրապէս* 1424*ին է որ վերջ գտած է Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը, որուն ինչպէս տեսնուեցաւ՝ ծնունդ տուին Լեռնային Կիլիկիոյ բարձունքները ապաստանող քանի մը Հայ իշխաններ և զինուորականներ։ Կիլիկիոյ Ռուբինեան Թագաւորութիւնը փաստը տուած է աշխարհի պատմութեան հայկական անօրինակ ձեռներէցութեան և քաղաքակրթական մեծ ընդունակութեան, վասնզի շատ դժուար է համոզուիլ թէ ազգ մը կրնայ գաղթել իր բնագաւառէն դուրս ուրիշ երկիր մը և իր կենսունակութեամբն ու ուժովը տիրել այդ երկիրին՝ թէ՛ զէնքով և թէ՛ հոգեպէս, և հոն ունենալ քաղաքակրթական գեղեցիկ գործունէութիւն մը։*

*Իրենց հայրենի հողէն դուրս, օտար միջավայրի մէջ և օտար երկինքի տակ, պարագաներէն օգտուելով, անկախ իշխանութիւն մը կազմակերպելու չափ ընդունակ գաղթական ժողովուրդ մը, բացառութիւն մը միայն կրնայ համարուիլ։*

*Եւ Հայերը այդ բացառութիւնը կրցան ըլլալ Հայաստանի բնական սահմաններէն դուրս, տարբեր երկիրի մը մէջ կազմակերպելով Թագաւորութիւն մը, որ նոյնիսկ միջազգային դեր մը կատարած է աշխարհի պատմութեան մէջ, զինակից դառնալով Եւրոպական քրիստոնեայ պետութիւններու, որոնց-*

---

(1) Մաղաքիա Դպիր Ճէվահիրճեան կը կրկնէ բառ առ բառ այս տողերը, 1413ի տեղ 1402 նշանակելով թուականը եւ զանց կ'ընէ գաղթականներու թիւը, եւ կ'աւելցնէ անմիջապէս՝ **«ի Անգուրիա գոն բազումք զերեզմանաւորք հայ գրով խորագրեցեալք, որք երեւին մինչեւ ցայսօր, որ եմք ՌՃԾ (= 1701)»:**

մէ Հայերը կրցան դոյզն օգուտ քաղել, զի կարճ միջոց մը միայն հեռու մնացին ուղղակի մուսլիմաններու հետ սահմանակից կամ անոնց դէմ բոլորովին անպաշտպան գտնուելէ։

Հետեւաբար, մինչեւ շրջակայ Լատին իշխանութեանց անկումը, Կիլիկիա բոլորեց խաղաղ բարգաւաճման հիանալի շրջան մը, ուր այս անդրերկրեայ Հայոց Թագաւորութիւնը հասաւ քաղաքակրթական այնպիսի աստիճանի մը, որ կրնար իրեն ժամանակակից ամէնէն կարգաւորեալ և ընտիր պետութեանց հետ, առանց որեւէ վարանման բաղդատուիլ և համեմատուիլ։

Կիլիկեան Հայ պետութիւնը իր վարչական, զինուորական, դատական կազմակերպութեամբ կը ներկայացնէր կանոնաւոր վիճակ մը, ինչպէս նաև վաճառականութիւնը, արուեստները և երկրագործութիւնը հասած էին այնպիսի բարձրութեան մը, որուն Հայերը մինչեւ այն ատեն տակաւին չէին հասած իրենց բնիկ երկիրին մէջ։

Մասնաւորապէս դիրքի այն մեծ առաւելութիւնը, որ Կիլիկիա ունէր իբրեւ արգաւանդ և բարեբեր երկիր, իբրեւ ծովեզերեայ — այն ալ ազատ ծովու վրայ իշխող — շահաստան, իբրեւ ներքին հաղորդակցութեան ընտիր ուղի՝ զինքը կը դարձնէին վաճառականութեան ատակ երկիր մը։

Այս մեծ յարմարութիւնը պատճառ եղաւ որ ընդարձակ յարաբերութիւններ մշակուին Արեւմուտքի հետ։ Նաւագնացութեամբ, վաճառքներու փոխանակութեամբ և յարատեւ երթեւեկութիւններով, որոնք մէկ կողմէն Հայ միտքը յարաբերութեան մէջ դրին Արեւմուտքի քաղաքակրթութեան հետ, միւս կողմէն Հայոց վաճառականական ձեռներէցութեան առջեւ բացին նոր ասպարէզներ և շահաստաններ, որոնք ուղղակի նպաստեցին Կիլիկեան Հայ Թագաւորութեան քաղաքական բարգաւաճման և խաղաղ զարգացման։

Դժբախտաբար բարբարոս ուժեր հոս ալ եկան հասան և յաջորդական հարուածներով վերջնապէս կործանեցին Կիլիկիոյ Հայոց Թագաւորութիւնը, 1375ին։ (Հմմտ. Ա. Ալպօյաճեան, Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմանները, էջ 106)։

Այս բարգաւաճ երկիրին մէջ Հայերուն թիւը շատցաւ ինքն իր մէջ բազմածնութեամբ, իբրեւ բնական հետեւանք երկիրին բարօրութեան և դուրսէն՝ Մեծ Հայաստանէն, Փոքր Հայքէն և Կոմմագենէէն ասիական հրոսներու արշաւանքներէն իրենց հանգիստը կորսնցնող բազմաթիւ գաղթական Հայերով։

Այսպէս, բարբարոսներու արշաւանքին չորս դարերուն, դարձեալ Հայերը շարունակեցին դէպի Արեւմուտք տեղափոխուիլ, և կարեւոր թիւ մը հասնիլ մինչեւ ԺԴ. դար և իրենց քանակով, ինչպէս նաեւ իրենց որակով կարեւոր դիրք մը ունենալ Կիլիկիոյ և անոր շուրջ գտնուող Լատին գրաւման ենթակայ Ասորիքի, Սուրիոյ, հիւսիսային Միջագետքի և նոյնիսկ Պամփիւլիոյ, Կապադովկիոյ և Գամրաց մէջ։

* * *

Պոնտոսի և Կիլիկիոյ բնական պատուարներով պատսպարուած երկու երկրամասերուն միջեւ կը գտնուէր հողաշերտ մը, որ գրեթէ անպաշտպանելի



էր, առանց Հայաստանի լեռնադաշտին տիրապետութեան։

Ասոր համար էր որ Բիւզանդացիք Փոքր Ասիոյ և Միջագետքի և նոյնիսկ Սուրիոյ պաշտպանութեան համար պէտք ունէին Հայաստանը իրենց ձեռքին տակ ունենալու, կա՛մ գրաւելով զայն և կա՛մ հոն իրենց բարեկամ կամ զինակից իշխանութեան մը գոյութեան օժանդակելով։

Դժբախտաբար Բիւզանդիոն իր անխորհուրդ քաղաքականութեամբ չկրցաւ այդ բաղձալի վիճակը ստեղծել, կրօնական ատելութիւն գրգռելով և դառնացնելով ոչ-Քաղկեդոնական քրիստոնեաները, որոնք կ'ապրէին պետութեան ասիական մասին մէջ։

Մասնաւորելով մեր խօսքը Հայերու մասին՝ ըսենք որ ԺԱ. դարուն սկիզբը, երբ ասիական բարբարոսները իրենց գոյութիւնը զգալի կ'ընէին Հայաստանի արեւելեան սահմանագլուխին վրայ, Բիւզանդական Կայսրութեան ասիական մասին մէջ բազմահազար Հայեր կային, հին ժամանակներէն հաստատուած և դարերու ընթացքին հետզհետէ ստուարացած, Հայերու դէպի Արեւմուտք շարունակական տեղափոխութիւններովը։

ԺԱ. դարուն սկիզբը, Հայերը բնակչութեան մեծամասնութիւնը կը կազմէին ոչ միայն դրացի Փոքր Հայքի և Կապադովկիոյ մէջ, այլ նաև տարածուած էին բովանդակ Փոքր Ասիոյ, Պոնտոսի և Կիլիկիոյ մէջ, նոյն իսկ Կ. Պոլիս, ուր հաւաքուած էին բաւական մեծ թիւով Հայեր։

Այդ մեծ թիւով հայացեղ բնակչութեան մէկ մասը, դարերու ընթացքին օրթոտոքսանալով, Բիւզանդացի դարձած և նոյն իսկ մոռցած էր իր ծագումը՝ դաւանական և մշակութային ճամբով միաձուլուած ըլլալով բնիկ տարրերու հետ։ Սակայն Բագրատունեաց Թագաւորութեան ընկճուելէն ետք՝ այդ վայրերը տեղափոխուող Հայերը, որոնք այնքան կարեւոր դեր մը կը կատարէին Բիւզանդական պետութեան ասիական բաժինին մէջ, ամուր կը պահէին իրենց դաւանանքը և բազմաթիւ քաղաքներու մէջ, որոնք ստուարաթիւ Հայ բնակիչներ ունէին, հաստատուած էին հայադաւան եպիսկոպոսներ։ Բայց ասոնք առանց դժուարութիւններու չէ որ կ'ապրէին ու կը գործէին, վասնզի Բիւզանդացիք չէին դադրած ոչ-Օրթոտոքսները հալածելէ, բիւզանդական դաւանութեան մէջ ձուլելու համար զանոնք։ (Հմմտ. ՊՀԳ. Ա, 251—254)։

Բիւզանդական Կայսրութեան ներքին քաղաքականութեան հիմնական ուղղութիւնը, զոր քաղաքացիները և կրօնական իշխանութիւնները հաւասարապէս և միաժամանակ կը հետապնդէին, բնական է վնասակար եղաւ պետութեան համար, վասնզի հալածուող ոչ-Քաղկեդոնական ժողովուրդները թշնամի դարձան և յաճախ Կայսրութեան թշնամիներուն հետ գործակցեցան՝ իրենց կրած դառնութեանց պատճառով և անոնցմէ ազատուելու յոյսով։

Բիւզանդացիք որեւէ ատեն չկրցան օգտուիլ անցեալի փորձառութենէն և գործեցին նոյն սխալը՝ զոր նախապէս ալ գործած էին։

Այսպէս, Միքայէլ Դ. Պափլագոնացի (1034—1041) կայսրը՝ առանց նկատի առնելու բարբարոսներէն իր Կայսրութեան սպառնացող վտանգը և Հայերու օժանդակութեան կարեւորութիւնը, ուզեց վերջնապէս ուրացնել Հայաստանը։ Բիւզանդական զօրքը պաշարեց Անին, սակայն կայսեր դէմ ծագած ապստամբութիւն մը ստիպեց զինքը ետ դառնալ 1041ին։

Բիւզանդացիներու այս ձեռնարկը սրեց Հայ և Յոյն ատելութիւնը։ Իր յաջորդը՝ Կոստանդին Թ. Մոնոմախոս (1042—1053), շարունակեց նոյն անմիտ քաղաքականութիւնը՝ ձգտելով վերջ տալ Հայաստանի բնիկ իշխանութիւններուն։ Ան, ինչպէս յայտնի է, օգտուեցաւ Յովհաննէս Սմբատի մահէն ետք գահուն շուրջը ծագած սովորական կռիւներէն և նենգութիւնով վերջ տալ ուզեց Հայ թագաւորութեան։

Հայերէն անոնք՝ որ Յոյն քաղաքականութեան գործիք եղած էին, և անոնք՝ որ անոնց կը հակառակէին, իրարու դէմ պայքարեցան տեսակ մը քաղաքային պատերազմ մղելով։

Հայրենասէրներ կը մաքառէին Անիի պաշտպանութեան և քաղաքական անկախութեան համար, մինչ կային ուրիշներ՝ որոնք երկիրին Բիւզանդական տիրապետութեան ենթարկուիլը կը ցանկային։

Հայ մեծամեծները միացան և թագաւոր կարգեցին 18 տարեկան Գագիկը, որ ազգային կուսակցութեան պետերէն՝ Գրիգոր Մագիստրոս զօրավարին հետ՝ յաջողութեամբ կռուեցաւ Սելջուկներուն դէմ։ Սակայն Մագիստրոս՝ Վեստ Սարգիսի քսութեանց պատճառով գժտուեցաւ Գագիկի հետ և գնաց Տարօն՝ Բիւզանդական հովանաւորութեան տակ գտնուող հողաբաժինը։ Կոստանդին երբ ամրացաւ գահուն վրայ, Կայսրութեան կցեց բոլոր Հայ մանր իշխանութիւնները։ 1044ին նենգութեամբ Գագիկ Բագրատունին հրաւիրուեցաւ Կ. Պոլիս և տարի մը յետոյ Յոյները Անին առին։

«Երբ Հայաստանի մէջ կային մարդիկ, որոնք կը կարծէին թէ Յունական կառավարութիւնը զօրեղ պաշտպանութիւն ցոյց կու տայ Հայերու քրիստոնէական կրօնքին, հիմնովին զգացին իրենց սխալը՝ երբ խումբ մը Յոյն սովլլուկ հոգեւորականներ, Հայոց հարուստ վիճակներուն եւ վանահայրութիւններուն գլուխը անցան: Ուղղափառ միաբանականներու կրօնական հալածանքներուն վերջը չկար: Պետրոս Կաթողիկոսը (✝ 1056), կանչեցին մայրաքաղաքն երբ անոր յաջորդը մեռաւ, արգելք դարձան նոր կաթողիկոսին ընտրութեան: Է. դարուն բոլոր ծանր փորձերը անհետեւանք մնացեր էին Յոյն եպիսկոպոսներու համար, որոնք ոչինչ չէին սորվեր եւ ոչինչ չէին ներեր: Նշանակելի է որ դեռ Ռոմանոս Դիոգինէս ձախողութեան կայսրը որ իր արշաւանքին ժամանակ երդում բրած էր վերադարձին ջնջել Հայ դաւանութիւնը: Հայ վարդապետները կ'աղերսէին առ Աստուած որ անիկա բոլորովին խորտակուի» (Հ. Գելցեր, 285—286):

Հայաստանի լեռնային փոքրիկ պետութիւնները անխոհեմաբար ջնջելէ անմիջապէս յետոյ, Բիւզանդիոն այլեւս ստիպուած էր ուղղակի դիմադրելու Սելջուկեանց որոնք Տուղրիլ Բէկի առաջնորդութեամբ պատկառելի ուժ մը դարձած էին Ասիոյ մէջ, մինչ Յոյները սխալ ըմբռնումով մը, բոլորովին քանդած էին Հայկական Բարձրաւանդակի գեղեցիկ պատուարը, կրօնական հալածանքներով և ծանր հարկերով Հայ ժողովուրդին ատելութիւնը գրգռելէ զատ, խնայողութեան անունով արձակելով 50,000 Հայ և Վրացի զինուորներ (Հ. Գելցեր, էջ 287)։

Գագիկ՝ Բագրատունի վերջին թագաւորը, երբ Մոնոմախոսի կարգադրութիւնով, Պիզուի ճորտ դարձաւ, Հայկական ուժերը ջլատուեցան և բնիկ Հայ իշխաններն ալ հետզհետէ հեռացան։



Գրիգոր Մագիստրոս, Գագիկի երբեմնի աջակիցը, Հայոց թագաւորէն հեռանալէն ետք՝ 1045ին՝ Արարատեան նահանգին մէջ գտնուող իր Բջնի, Կայեան և Կարծոն բերդերը ինքնաբերաբար տուաւ Կայսեր և փոխարէն ունեցաւ Միջագետքի մէջ քաղաքներ և գիւղեր և անոնց տոհմական ժառանգական իրաւունքը հաստատող հրովարտակ, միևնոյն ատեն նաև Մագիստրոսի (Մաժիստրան) աստիճանին արժանանալով։

Յետոյ նոյն պաշտօնով փոխադրուեցաւ Տարօն և 1049ին մասնակցեցաւ այն պատերազմին, զոր Մոնոմախոս Կայսեր ատեն Կոմնենոս՝ Անիի և Արարատի, Ահարոն Բուլղար՝ Վասպուրականի կուսակալները և Լիպարիտ Օրբէլեան՝ Վրաց գունդերուն զօրավարը, մղեցին Տուղրիլի դէմ։

Եթէ Հայ իշխանաւորներ ուժ գտնէի Բիւզանդական Կայսրութենէն, թերևս յաջողէին տոկալ և հեռացնել վտանգը, սակայն Բիւզանդացիք չըմբռնեցին ասիկա։ Անոնք, ընդհակառակը, նախ Հայաստանը և ապա Փոքր Հայքը և Փոքր Ասիան դատարկացուցին իրենց քրիստոնեայ բնակիչներէն և տեղ պատրաստեցին վաչկատուն ժողովուրդներուն, որոնք եկան անոնց դատարկ ձգած բնակավայրերը գրաւելու։

Այս անխորհուրդ քաղաքականութեան աղէտալի հետևանքները նախատեսող հեռատես մարդիկ գտնուած են, ինչպէս նաև կարճամիտներ, որոնք պարսաւի և դատապարտութեան արժանի այս արարքը իբրև գովեստի արժանի գործ մը յիշատակած են։ Միքայէլ Ասորի (395–6), խօսելով Միքայէլ Զ. Ստրատոնիկոս Կայսեր (1056) մասին, զայն կը գովէ իբրև «այր սուրբ եւ պահող», որ «ոչ ուտէր զայլոց վաստակ, այլ ձեռօք իւրովք առնէր տրգալն եւ վաճառէր եւ անդէն ուտէր», ինչ որ արդարեւ առաքինի արարք մըն էր մանաւանդ Բիւզանդացի վեհապետի մը համար։ Սակայն երբ կարգը կու գայ անոր Սելջուկներու դէմ վարած քաղաքականութեան՝ իր գնահատութիւնը բոլորովին կը դառնայ անհեթեթ։ Կ'ըսէ թէ «սա յորժամ ետես թէ զօրանայ Թուրքն, եհան զքրիստոնեայսն՝ որ յայսմ կողմէ ծովուն եւ անցոյց յայնկոյս, եւ եկեալ Թուրքն եգիտ զերկիրն անմարդ եւ բնակեցան զտեղին»: Ինչպէս կ'երեւի, կը փորձէ պաշտպանել իրաւամբ զայն դատապարտողներուն դէմ, ըսելով թէ «բազումք մեղս դրին նմա, բայց նա մարդասիրութիւն արար»:

Այս սխալ ըմբռնուած մարդասիրութիւնը, կը քանդէր կայսրութեան սահմանագլուխներուն ամրութիւնները, ինչպէս անուղիղ կրօնական եռանդը խորշանք և ատելութիւն կը սերմանէր Հայաստանի քրիստոնեայ բնակչութեան մէջ։

Բիւզանդացիք մէկիկ մէկիկ կ'անհետացնեն մնացեալ Հայկական փոքր իշխանութիւնները։ Ոչ միայն զանոնք իրենց հպատակեցնել կը ջանային, այլ Հայոց նեղ դրութիւնը կ'օգտագործէին, դաւելու համար Հայոց կրօնական անկախութեան դէմ, որ իրենց համար մղձաւանջ մը եղած էր։

Ասոնք Սելջուկեան արշաւանքէն օգտուեցան, Հայերը և մանաւանդ Հայ

իշխանութիւնները տեղափոխելով Փոքր Հայք և Փոքր Ասիա և զանոնք իրենց հովանաւորութեան տակ առին, ըստ կամս անոնց հետ վարուելու համար։ Սակայն՝ ասով Բիւզանդացիք Հայաստանի Սելջուկ տիրապետութեան արագ ենթարկումին նպաստեցին և իրենք Հայաստանին վրայ իրենց տիրապետութեան կարճատեւ փառքը միայն վայելելէ ետք, իրենք զիրենք ուղղակի դէմ առ դէմ գտան զօրաւոր թշնամիի մը դէմ, որ անարգել խուժեց Բիւզանդական երկիրներէն ներս և ամէն ինչ «ի հուր և ի սուր» մատնեց և տուաւ վճռական ու անդարմանելի հարուած մը։ Իրենց նենգութիւնով գրաւած Հայաստանին մէկ կարեւոր մասը կորսնցնելէ յետոյ իսկ՝ անոնք դեռ չկրցան գնահատել Հայերու դերը և կարեւորութիւնը։

Ռոմանոս Դիոգինէս, որ մտադրած էր բարբարոսները Բիւզանդական հողերէն վանել, քաջալերած է Հայ իշխաններու տեղափոխութիւնը։ Յոյները, ինչպէս նոյնինքը կայսրը, ինչպէս ըսինք, կրօնական մոլեռանդութիւնով, կասկածով և ատելութիւնով կը վարուէին Հայերու հետ և կը ջանային քաջալերել տեղափոխութիւնները պարգեւատուութիւններով։

Լաստիվերտցի (171), Ռոմանոսի վրայ խօսելով կ'ըսէ թէ «սէր անդէպս ցուցանէր եւ պարգեւս անձեռնարկելիս խոստանայր», ինչ որ կը նշանակէ թէ ան Հայոց տուած էր «անձեռնմխելի պարգեւներ» կամ «կալուածներ», իբրեւ ճորտական ստացուածք։ Բայց դժբախտաբար չի ճշդեր թէ որո՞նք էին այդ պարգեւատուները։ Միայն կարգ մը յիշատակութիւններէն կը հասկցուի թէ անոնք բազմաթիւ էին։

Այս ողբալի վիճակը շատ լաւ կը ներկայացնէ Մատթէոս Ուռհայեցի պատմիչը գրելով թէ.—

«Ո՞վ կարասցէ մի ըստ միոջէ պատմել զկորուստ բարկութեանն եւ զլաց ապաշաւանաց տանս Հայոց, զոր յանպարտութենէ զօրացն Թուրքաց կրեաց, յանտիրութենէն, *ի սուտ պահապանացն, ի տկար և ի թուլամորթ վատ ազգին Յունաց*, վասնզի մի առ մի քակեալ հանին զզօրականսն ի տանէն Հայոց, զոր հանին յարկաց եւ ի գաւառաց, եւ բարձեալ խափանեցին զաթոռ թագաւորութեանն Հայոց, քակեցին զցանկ պահպանութեան զօրացն եւ զօրավարացն, եւ ազգն Հոռոմոց իւրեանց անուն քաջութեան զանդարձ փախչելն արարին պարծանք. Նմանեցան վատ հովուացն, զի յորժամ զգայլն տեսանէ՝ փախչի: Սակայն Հոռոմք ոչ առին հանգիստ մինչեւ զպարիսպ ամրութեանն տանս Հայոց քակեալ կործանեցին զլանջս արիական որդւոց իւրոց (1) եւ զՊարսիկք ի վերայ դարձեալ յարձակեցին սրով եւ զամենայն յաղթութիւն՝ իւրեանց համարեցին եւ ինքեանք անպատսպարելի երեսօք կուրտ զօրավարօք եւ ներքին զօրօք զՀայս պահել ջանային, մինչեւ Պարսիկք անտէր տեսին զամենայն արեւելք, եւ յայնժամ մեծաւ զօրութեամբ զօրացան այլազգիքն, որ ի մէկ տարւոյ հասին մինչեւ ի դուռն Կոստանդինուպոլսի, եւ առին զամենայն աշխարհն Հոռոմոց, զքաղաքս ծովեզերեաց եւ զկղզիս նոցա, եւ արարին

(1) Այս նախադասութիւնը Ֆրանսերէն թարգմանութեան բնագիրէն համաձայն առնուած է, իմաստի աւելի բացորոշութիւն ունենալուն համար:



զազգն Յունաց որպէս զբանտարկեալս ի ներս ի Կոստանդինուպոլիս: *Եւ յորժամ առաւ Հայք ի Յունաց, արգելաւ ամենայն չարութիւնն Հոռոմոց, յազգէն Հայոց, Եւ զկնի այսորիկ հնարեցան այլ կերպիւ պատերազմ յարուցանել ընդ ազգն Հայոց, և նստան ի քննութիւն Հայոց և այսու ատեալ անարգեցին զըհանդէս պատերազմի և զօր մարտի, և զկռիւս և զաղմուկս յեկեղեցի Աստուծոյ կարգեալ հաստատեցին։*

Ի Պարսից պատերազմէն յօժարութեամբ փախչէին եւ զամենայն նեմարիտ հաւատացեալս Քրիստոսի ի հաւատոյն ջանան խափանել եւ խախտել: Վասնզի յորժամ այր քաջ եւ զօրաւոր գտանէին զաչսն խաւարեցուցանէին եւ կամ ի ծով ձգեալ խեղդամահ սատակէին. *և այն էր փոյթ յօժարութեանց նոցա, որպէս զամենայն իշխանսն Հայոց և զքաջ զզօրականսն հանին յարեւելից և բերին բնակեցուցին ի Յոյնք և յայնժամ ինքեանք զմանկութիւնս արութեանն ի կուրտս փոխարկեցին և փոխանակ լեկուր գրեհացն զոր քաջք զգենուին*, նոքա զծոց հանդերձիցն լայն եւ երկայն արարին, եւ փոխանակ պողովատ սաղաւարտին, պէլեւտառ եդին, եւ փոխանակ երկաթապատ թիկանցն՝ զփողպատն ի վերայ ուսոցն լայն արարին եւ որպէս զկանայս հեզ եւ ծածուկ խօսին, քաջ եւ մանուկ, հանապազ կորուստ խորհին, որ եւ ի ձեռաց սոցա ամենայն հաւատացեալք մատնեցան ի ծառայութիւն յաշխարհն Պարսից», (*տպ. Երուսաղէմի, էջ* 162—164)։

Բիւզանդիոն, արդէն անգամ մը օգտագործած էր Հայերը՝ Արաբ արշաւանքներուն ժամանակ, Ժ. դարուն, պետութեան ասիական բաժինին սահմանագլուխին երկայնքին՝ Պոնտոսէն մինչեւ Կիլիկիա կազմելով Ակրիտեան թեմեր կամ զինուորական գաղութներ, որոնց կարեւորներուն իշխանները Հայեր էին, ինչպէս Տայքի, Ճահանի կամ Լիւկանդիոյ, Լոգանիոյ, Միջագետքի և Կապադովկիոյ իշխանները (*տես. ՊՀԳ. Ա.* 239 *և* 286—7)։

Այսպէս, Բիւզանդիոն տկարացուցած էր Հայերը իրենց բնիկ երկիրին մէջ, բան մը զոր կրկնեց բարբարոսներու արշաւանքը սկսելէն ետքն ալ։

Մանազկերտի ահաւոր պարտութիւնը (1071 Օգոստոս 19), Բիւզանդական Կայսրութեան մահավճիռն էր։ Այլեւս Կայսրութիւնը դատապարտուած էր քայքայուելու, վասնզի Արեւելք կը մատնուէր իրական անիշխանութեան, Սելջուկ Սուլթանութեան և Բիւզանդական Կայսրութեան խառնակ կացութեան պատճառով։

Սելջուկեան տիրապետութեան շրջանին (1064—1220) սկիզբն իսկ, Հայերը այնքան տկարացած և Հայաստան այնքան բաժան բաժան եղած էր մանր ու տկար իշխանութիւններու միջեւ, որ կարելի չէր այս կացութենէն օգուտ քաղել և Հայաստանի անկախութիւնը վերականգնել։

Կային Բագրատունի և Սիւնեաց թագաւորութիւններուն բեկորները, Տաշիրքի, Կախէթի կամ Ձորագետքի, Տաւուշի, Մածնաբերդի և Ծանարաց, Բաղաց կամ Կապանի մէջ, որոնց պետերը «թագաւոր» տիտղոսը կը կրէին (1) և Արծրունեաց, Մամիկոնեանց և Աղուանից աննշան յաջորդները և Պահլաւունի հողատիրութիւնները, որոնք սակայն բնաւ մեծ ուժ մը չէին ներկայա-

(1) Լէօ զանոնք «գիւղական թագաւորներ» կը կոչէ:

ցընէր (1)։ Առնցմէ մի քանին իրենց նպաստաւոր դիրքին շնորհիւ, արժէք մը կը ներկայացնէին, ինչպէս Սասունի Մամիկոնեան իշխանութիւնը, որուն տէրն էր Թոռնիկ Մուշեղեան, Գր. Վկայասէր Կաթողիկոսին քեռայրը։ Ան ունէր բաւական ընդարձակ և զօրաւոր իշխանութիւն մը։ 1058ին ան քաջութեամբ և խիզախ յանդգնութեամբ կռուեցաւ Սելջուկներու դէմ, Սասունցի լեռնականներու գլուխը անցած և յաջողեցաւ զանոնք փախուստի մատնել և անոնց ձեռքէն ազատել այն ամէն գերիները, զորս անոնք առած էին զանազան տեղերէ, մանաւանդ Մէլիտինէէն, և դարձնել զանոնք իրենց տեղերը. իսկ մեռեալներուն կապուտը առած դարձաւ իր նստոցը՝ Աշմուշատ։

Թոռնիկ սակայն չկրցաւ ըմբռնել համագործակցութեան պէտքը, իր երկիրին արեւմտեան կողմը կազմուած Հայ իշխանութիւններու հետ և զոհուեցաւ։

Հաւանօրէն միւս իշխաններն ալ, իրեն պէս, միակամ չէին իրարու հետ գործակցելու համար, կամ կ'զգային, իրենց տկարութիւնը հանդէպ զիրենք շրջապատող մահմետական զօրաւոր իշխանութիւններուն, որոնցմէ ոմանք նոյնիսկ արաբական շրջանէն կազմուած և ոմանք ալ՝ նոր ստեղծուած էին։

Այսպէս, Արաբական շրջանէն կազմուած էին՝ Գանձակի, Անիի և Դուինի Փատլուեանք (2) և նոր կազմուած էին՝ Սելջուկեան փոխարքայութիւնը (3) և մի քանի կէս անկախ Սելջուկ-Թուրքմէն էմիրութիւնները (4)։

Հետեւաբար Հայաստանի մէջ մնացող Հայ իշխաններու դիրքը խիստ անկայուն էր։ Անոնք բնական է շուտ պիտի ընկճուէին, վասնզի դժուար էր տոկալ Բիւզանդական բանակներու խպառ հեռանալէն և Սելջուկներու Հայաստանի մէջ ամրանալէն ետքը, երբ Բիւզանդիոն, անոնցմով զօրաւոր միութիւն մը կազմելու տեղ՝ կը քանդէր Հայերու քաղաքական իշխանութիւնները, զանոնք արմատախիլ այլուր փոխադրելով։

ԺԱ. դարուն սկիզբն իսկ, երբ որ կ'սկսէին Սելջուկ արշաւանքները, օգտուելով բարբարոսներու Հայաստանի վրայ գործադրած ճնշումէն, Բիւզանդիոն հրապուրեց և քաջալերեց Հայերը, իրենց բնագաւառէն տեղափոխուիլ դէպի Փոքր Ասիոյ արեւելեան մուտքին վրայ գտնուող երկիրները, որոնք Փոքր Հայքը կը ներկայացնէին (տես, ՊՀԳ. Ա. 243 - 245)։

Այս տեղափոխութիւններուն միջոցին՝ Թագաւորներու հետեւած են՝ զանգուածային կերպով ազատներ և ժողովուրդ։

Բիւզանդիոն՝ Հայաստանէն գաղթած Հայ տանուտէրներուն և իշխաններուն, ինչպէս նաև անոնց հետեւորդներուն տուաւ ընդարձակ հողեր, որոնց վրայ պիտի իշխէին Հայ իշխաններ և նախկին թագաւորներ, իբրեւ ճորտեր կայսրութեան, կրելով նոյնիսկ «թագաւոր»ի տիտղոսը։

Այսպէս, կազմուեցան Հայ երեք «թագաւորութիւն»ներ Փոքր Հայքի մէջ։

(1) Ընդհանուր գաղափար մը կազմելու համար՝ դիմել Ա. Ալպօյաճեանի **Պատմական Հայաստանի Արտաքին եւ Ներքին Սահմանները** գործին (էջ 257—277), ուր բացատրուած է այս իշխանութիւններէն ամէն մէկուն կեանքը համառօտ կերպով:

(2) Տես. **Պատմական Հայաստանի սահմանները** (էջ 296—299):

(3) » » « » (էջ 302—305):

(4) » » » » (էջ 308—324)



*Ա. ՍԵԲԱՍՏԻՈՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ.* առաջին ճորտ իշխանութիւնն էր, որ կազմուած է Սենեքերիմ Արծրունի Վասպուրականի թագաւորին (1003—1026 +) տեղափոխութեամբ (1016—1020)։ Սենեքերիմ փոխադրուած էր 400,000 հպատակներով, Վասիլ Բ.ի թողլով 10 քաղաք, 73 բերդ՝ ըստ Կեդրենոսի, կամ 8 քաղաք, 72 բերդ և 4000 գիւղ կամ 12 բերդ և 4400 գիւղ՝ ըստ Հայ պատմիչներու (Սզգապատում, 1198)։ Սեբաստիայէն զատ իր սահմաններուն մէջ ունէր Լառիսան, Աւարան և ուրիշ քաղաքներ։

Իր արեւելեան սահմանը հաւանօրէն մինչեւ Եփրատ կը հասնէր և Տիվրիկ, Ակն և Արաբկիր քաղաքներն ալ իր մէջ կը պարունակէր. արեւմուտքէն՝ մինչեւ Սեբաստիոյ հարաւ-արեւմուտքը՝ Ուզուն Եայլա կը տարածուէր. իսկ դէպի հիւսիս՝ մինչեւ Պոնտական լեռները։

Բիւզանդական ծրագիրն էր, ինչպէս կը տեսնուի, ստեղծել Փոքր Ասիոյ բերանը, Սենեքերիմի աւատապետութեան տակ Հայ ուժ մը, որպէսզի ան միութիւն մը կազմէր թէ՛ Միջագետքի և Հայաստանի հեռաւոր ճորտերուն հետ և թէ՛ իր մէջ ընդունէր Հայաստանէն գաղթող նորանոր տանուտէրները և դառնար զօրաւոր պատուար մը բարբարոսներուն դէմ, քանի որ անոնք հետզհետէ կը յառաջանային։

Յոյներէն իրեն տրուած «Պատրիկ եւ զօրավար Կապադովկիոյ» կամ «Դուքս Միջագետաց եւ Ստրադիկոս Կապադովկիոյ» տիտղոսները, հակառակ Հայերու կողմէ «Հայոց Թագաւոր» ճանչցուելուն, յատկանշական են և կերպով մը ցոյց կու տան Բիւզանդացիներուն իսկական նպատակը։

Աւատապետութեան սահմաններուն մէջ իբրեւ ճորտեր հաստատուած ըլլալ կը թուին 1045ին Անիի Գագիկ Բագրատունի և 1065ին Կարսի Գագիկ Աբասեան թագաւորները։

Սենեքերիմի մահէն վերջ, իրեն յաջորդեց Դաւիթ (1026—1035), որ աւելի ընդարձակեց իր կալուածները, և 1025ին՝ ի վարձ իր յոյժ կարեւոր մէկ ծառայութեան՝ իբրեւ օժիտ կամ բայառիկ նուէր ստացաւ որոշ կալուածներ, որոնք ետքը՝ 1065ին, Կարսի թագաւորին շնորհուեցան։

Դաւիթի յաջորդեցին իր երկու եղբայրները՝ Ատոմ և Աբուսահլ (1035—1079), որոնք գործակցաբար և միասին վարեցին իրենց իշխանութիւնը՝ Սեբաստիա և շրջակայքը և պատմութենէն անհետացան հաւանօրէն 1080ին գործադրուած Սելջուկ գրոհին մէջ (հմմտ. Ա. Ալպօյաճեան, Պատմական Հայաստանի Սահմանները, 1950, Գահիրէ, էջ 97)։

*Բ. ՊԻԶՈՒԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ.* Սենեքերիմի տեղափոխութենէն ետք, երբ Բիւզանդիոն նենգութեամբ տիրեց Անիի (1045), Գագիկ Բագրատունի թագաւորին — որուն նախապէս Մէլիտինէն խոստացուած էր Անիի փոխարէն և ինքը մերժած էր — տրուեցաւ Մագիստրոսի տիտղոս և թոշակ, Պոլսոյ մէջ պալատ մը և հողեր՝ Կապադովկիոյ, Ղարսիանի, Լիկանտոսի, Կոլոնպաղատի և Պիզուի մէջ (1)։ Այնպէս որ կը կարծուի թէ Կիւրին, Աշոտի, Տարէնտէ քա-

(1) Կեդրենոս Յոյն պատմագիրը միայն Խարձենի եւ Լիկանտոսի (Խարբերդի շուրջը) գաւառներուն խօսքը կ'ընէ:

ղաքները Գագիկի սահմաններուն մէջ էին, արեւելեան կողմէն, իսկ Պիզու էր Գագիկի միայուն ոստանը մերձակայ Կաղոնպաղատ դղեակով (հմմտ. Ցոյն, 97)։ Գագիկ Ցոյներէն դաւաճանուած ըլլալով, իրեն համար որոշեալ սահմաններուն մէջ չարաչար հալածեց Ցոյները, միշտ ասպատակային կռիւներով և ճորտի մը դիրքը գրաւելէ աւելի ապստամբի մը դերը կատարեց։ Կեսարիոյ Մետրոպոլիտին նկատմամբ իր բռնած դիրքը ասոր գլխաւոր ապացոյցն է։

Գագիկ Բագրատունի, այս ճորտ իշխանութիւնը շարունակուած է դարձեալ մինչեւ 1079՝ իր եղերական վախճանը։

**Գ. ԾԱՄՆԴԱՒԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ.** Գագիկ Բագրատունիի տեղափոխութենէն ետք, Ցոյները չլատուեցան և բնիկ Հայ իշխաններէն շատեր հետզհետէ հեռացան։

Այսպէս, Կարսի թագաւորը՝ Գագիկ Աբասեան զգալով իր տկարութիւնը Ալփասլանի բարբարոս ահեղ արշաւանքին առջեւ, ինքն ալ իր տէրութիւնը տուաւ Ցոյներուն և փոխարէնը առաւ Ծամնդաւ (= Ջամանթի) և Լառիսա (1) քաղաքները (1065) և շարունակեց իր իշխանութիւնը դարձեալ մինչեւ 1079—1080 (հմմտ. Ցոյն, 97)։

Բիւզանդական երկիրներ դիմող Հայ տանուտէրներու և մեծ թիւով ազատ Հայերու հետ, որոնք բնակութեան տեղեր կ'ստանային Խարամանիոյ կողմերը. գաղթեցին նաև մեծ թիւով վանականներ իրենց վանքերուն գոյքերով։ Ասոնք 1020—1028ին խտացան մասնաւորապէս Սեւ կամ Ամանոս լերան (այսօր Կեավուր Տաղ) կողմերը, և ամուր վայրերու մէջ բոյն դրին (Լաստիվերտցի, Է., Ը., Ժ.), այսպէս Սեւ Ծովէն մինչեւ Հայոց (Իսկէնտէրունի) Ծոց լեցուեցաւ Հայերու մեծ բազմութիւնով մը, որ ունէր իր «թագաւոր» իշխողները և իր քաղաքային ու եկեղեցական իշխանաւորները։

Ցոյները, Խաչիկ Բ. Կաթողիկոսն (1058—1065) ալ փոխադրեցին Ջահան գաւառին մէջ Թաւբլուր աւանը՝ Կոկիսոնի մօտ, ուր անոր բնակութեան տեղեր տուին և սեփական վանքեր։

Տեղափոխուած երեք Հայ թագաւորներուն մէջ ամէնէն մեծ բարոյական հեղինակութիւնը կը վայելէր Գագիկ Բագրատունի, որ կեդրոնական ընդդիմադիր ուժ մը և տեսակ մը գերիշխան վարիչը հանդիսացաւ միւս երկու թագաւորներուն մէջ (Ուռհ., 263)՝ Ցոյներու կրօնական ձուլման փորձերուն դէմ։

Գագիկ Բագրատունի ատելութիւնով լեցուած, կ'ուզէր Ցոյներէն վրէժ լուծել և եթէ պարագաները օգնէին՝ թերեւս յաջողէր միւս Հայ թագաւորներուն և իշխաններուն հետ գործակցաբար վերականգնել Հայ անկախ թագաւորութիւն մը Տաւրոսի լեռնաշղթային վրայ, որուն ապահով վայրերը կուգային ապաստանիլ հետզհետէ Մայր Հայրենիքէն փախստական գաղթականներ, զորս Սոյները սիրայօժար կ'ընդունէին, զանոնք իրենց մէջ ձուլելու ժամը հասած կարծելով։

Այս երեք Հայ թագաւորութիւնները, որոնք Բիւզանդական ատենաւորներու տիտղոսներ ստացած էին, ինչպէս կարգ մը երեւոյթներ ցոյց կու

---

(1) Սմբատ Գունդստաբլը Կեսարիան եւս այս իշխանութեան մաս ցոյց կու տայ, սակայն կ'երեւի թէ Գագիկ Բագրատունիի իշխանութեան ներքեւ էր այս քաղաքը:



տան, իրարու հետ կապակցութիւն մը ունէին և դաշնակցութիւն մը կը կազմէին, Բիւզանդական կայսեր հովանաւորութեան տակ, և կը ներկայացնէին աւատապետութիւններ, որովհետեւ անոնք Բիւզանդական հողերու վրայ հաստատուած էին ոչ թէ առանձին, այլ բազմաթիւ Հայ իշխաններով, որոնք իբրեւ անոնց ստորադաս ճորտեր՝ այդ թագաւորներուն կապուած էին։

Դժբախտաբար ասոնցմէ շատ քիչերը յիշուած են։ Ծանօթ է Սենեքերիմի ստորադաս իրեն ազգական Գագիկ Մուտառասունի (Կէմէրէկի մօտ) իշխանը՝ որդի Գուրգէնի (Ուռ. 217), որ իր տեսակին մէջ միակը չէր և կային ուրիշներ, որոնք Հայաստանէն դէպի Արեւմուտք Փոքր Ասիա, Միջագետք, Ասորիք փոխադրուած և Պոլսոյ կառավարութեան կարգադրութեամբ հողեր ստացած էին և իբրեւ ճորտեր Բիւզանդիոնի, իշխած կամ արդէն գոյութիւն ունեցող ճորտի մը ստորադասուած էին։

Այս տեղափոխուած հողատէր իշխաններուն մէջ էին Պահլաւունի մեծ և ազդեցիկ ընտանիքին պատկանող կարգ մը իշխաններ, որոնց ամէնէն ազդեցիկ և Բիւզանդական կայսրութենէն սիրուած մէկ անդամը՝ Գրիգոր Մագիստրոս, ինչպէս տեսնուեցաւ, Մոնոմախոսէն կալուածներ ստացած էր՝ Սեբաստիայէն Արեւելք և Եփրատի Արեւմուտքը։

Գրիգոր Մագիստրոս իր ընտանիքին անդամները իր ստացած այս կալուածներուն մէջ հաստատեց և յետոյ զանոնք աւելի ընդարձակեց։ Իսկ ինք իբրեւ Բիւզանդական կայսրութեան պետական պաշտօնեայ վարեց Հայաստանի մէկ մասին կառավարութիւնը կամ կուսակալութիւնը, ստանալով Դուքս կամ Բդեշխ տիտղոսը, իր իսկ բառերով՝ «Վասպուրականի եւ Տարօնոյ եւ Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրի, Մրջագետաց տէր, Մոնոմախին Մագիստրոս, վեստ եւ տուկ»: Մագիստրոս մեռաւ 1058ին, սակայն իր ճորտ իշխանութիւնը շարունակուեցաւ։ Իր առաջին յաջորդը եղաւ իր որդին Վահրամ, որ 1063ին կաթողիկոս եղաւ Գրիգոր անունով և «Վկայասէր» կոչուեցաւ։

Իսկ ընտանիքին միւս անդամները մնացին իրենց կալուածներուն վրայ, մինչեւ որ Սելջուկները եկան աւերել այդ հողերը և պարտաւորել Պահլաւունիները ցրուելու ուրիշ վայրեր։ Ուրեմն այդ շրջանին մէջ իրենց ունեցած կալուածներէն անոնք ալ զրկուեցան 1080 թուականներուն, Հայ ճորտ թագաւորներուն պէս։

Պահլաւունիներուն նման ուրիշ շատ մը իշխանական տուներ ալ հեռացան Հայաստանէն, երբ Բագրատունի, Արծրունի և Սիւնեաց թագաւորութիւններու քայքայումէն յետոյ (ճիշդ ինչպէս պատահած էր Արշակունեաց կործանումէն վերջ) Հայաստանէն սկսաւ արտագաղթ մը, որ շարունակուեցաւ մինչեւ Սելջուկներու Փոքր Ասիա տեղաւորուիլը և Բիւզանդական պետութեան քայքայումը՝ հետեւանք մասնաւորապէս Կ. Պոլսոյ վարիչներուն կրօնական քաղաքականութեան, որմէ չհրաժարեցան նոյնիսկ պետութեան անկումը տեսնելէ վերջ։

Այս պատճառով Փոքր Ասիոյ արեւելքը հաստատուած Հայերը, մանաւանդ Հայ ճորտ «թագաւոր»ութիւնները, հակառակ անոր որ կը գտնուէին Սելջուկեան արշաւանքին անմիջական վտանգին տակ, նախընտրելի վայրեր

եղան Հայ գաղթականներուն համար, վասնզի հոն կրնային մասամբ զերծ մնալ կրօնական հալածանքներէ, մինչ կայսրութեան ուրիշ մասերուն մէջ անկարելի էր կրօնական ազատութիւն վայելել,

Դժբախտաբար այդ հայ իշխանութիւնները այնքան տկար էին, որ օրերու խնդիր էր անոնց Սելջուկ հրոսներու առջեւ ընկճուիլը, ինչ որ իբրեւ անխուսափելին՝ կատարուեցաւ, շուրջ 1080ին, երբ միանգամընդմիշտ Սելջուկ զրոհին զոհ գացին անոնք՝ հազիւ 50—60 տարիներու կեանք մը ունենալէ վերջ։ Ասիկա պատահեցաւ մասնաւորաբար անոր համար որ Ալփասլան՝ Մանազկերտի ճակատամարտէն անմիջապէս յետոյ՝ բրած էր կարգ մը կարգադրութիւններ, որոնք սպառնալիքի տակ կը դնէին, Փոքր Ասիոյ մուտքին յատկապէս Փոքր Հայքի մէջ կազմուած Հայ ճորտ թագաւորութիւնները և իշխանութիւնները։

Ալփասլան Հայաստանի փոխարքայ նշանակած էր Սիւլէյման Իպն Գութլմիշ իր քեռորդին, Էրզրումը տուած էր Սալտուկ անունով Թուրքմէն ամիրայի մը և Երզնկան՝ Մանկուճակի։ Իսկ Երզնկայէն մինչեւ Ալիսի բերանը տարածուող հողերն ալ — որոնք դեռ նուաճուած չէին Թուրքերէն — բաշխեց Դանիշմենտ անուն մէկու մը, արտօնելով զանոնք, որ իրենց նուաճած երկիրներուն վրայ ապահարկ իշխեն, պայմանով որ միաբան գործեն և ջանան հետզհետէ տկարացնել քրիստոնեայ իշխանութիւնները և ժողովուրդը ընտելացնեն իսլամներու տիրապետութեան։

Դանիշմենտ, որ դեռ նոր պիտի նուաճէր իրեն սահմանուած երկիրը, 1071ին գործի ձեռնարկեց, և նախ գրաւեց Նիկսարը, ապա առաւ Ամասիան, Թոգատը, Մարզուանը և Զորումը և անխուսափելիօրէն նաեւ մերձակայ երկիրները, մասնաւորապէս Սեբաստիան, Կեսարիան եայլն։

Այսպէս, Գագիկ Բագրատունիի սպանութենէն (1079) վերջ, կամ նոյն օրերուն իսկ, կը գրաւուէին Հայ փոքր թագաւորութիւններուն հողերը՝ Դանիշմենտի կողմէ։ Ուռհայեցի (261) իրաւամբ կ'ըսէ թէ «ազգն Թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երկիր», հաւանօրէն 1079—1080 թուականներուն կատարուած ընդհանուր յարձակողականով մը։ Յարձակման նախաձեռնարկն էր ապահովաբար Դանիշմենտ, որ մինչեւ Ալիս առաջացած էր արդէն և Ալփասլանի պատուէրին համաձայն՝ բարեկամ և զինակից մնացած էր դրացի մահմետական ամիրաներուն, մանաւանդ Երզնկայի, Կամախի և Կողոնիայի (= Շապին Գարահիսար) տէր Մանկուճակի և կը թուի թէ անոր գործակցութեամբ գրաւած էր Սեբաստիոյ և Ծամնդաւի Հայ թագաւորութիւններուն երկիրները և առած զանոնք 1080ին։

«Աստանօր դադարեալ եղեւ թագաւորութիւնն ի տանէն Հայոց» (Ուռհայեցի. 265):

Արդարեւ, Հայ գէթ անուանապէս անկախ իշխանութիւնները, վերջ կը գտնէին և վերստին Հայերը այս շրջաններուն մէջ, այսինքն Փոքր Հայքի և անոր դրացի գաւառներուն, ինչպէս Կապադովկիոյ, Պոնտոսի, այսինքն Բիւզանդացիներէն իբրեւ Արմենիակոն բանակաթեմ հռչակուած շրջանակին մէջ, կ'ազատէին Բիւզանդական պետութեան վարիչներուն հալածանքէն։



Բիւզանդիոն, որ այնքան ճիգեր գործադրած էր օրթոտոքսացնելու համար Հայ տարրը, առանց իր նպատակին լիովին հասնելու, Հայերը կը թողուր իսլամ տիրապետութեան տակ։ Հայերը, Բիւզանդական երկարատեւ տիրապետութեան շրջանին, տոկացած էին բաւական յաջողութեամբ և միշտ հայադաւան տարրը հանդէպ Հայ-Հոռոմին կամ Արմենիակոնին՝ պահած էր իր գոյութիւնը, հակառակ բացորոշ հալածանքներուն, զոր Օրթոտոքս-Բիւզանդական կղերը և պետութիւնը շարունակ ի գործ կը դնէին աւելի կամ նուազ յաջողութեամբ։

Այսպէս, Տաւրոսի լեռները, Ջահանի շրջակայքը. Մալաթիա և մանաւանդ Սեբաստիա՝ իբրեւ Հայ բնակիչներով լի վայրեր, յաճախ յիշուած են թէ՛ Յոյն և թէ Հայ պատմագիրներէ։

Նոյնիսկ Բիւզանդական տիրապետութեան տակ Ժ. դարէն Սեբաստիա և Լարիսա՝ Հայ եպիսկոպոսական թեմեր էին, անշուշտ բազմահայ թեմականներով, որոնց դէմ Ժ. դարուն սկիզբը Սեբաստիոյ Յոյն մետրոպոլիտը այնքան սաստիկ հալածանք բացաւ (տես. ՊՀԳ. Ա. 250)։ Ասոնց վրայ, ինչպէս տեսնուեցաւ, 1018–21 թուականին աւելցան Վասպուրականէն գաղթող ստուարաթիւ Հայերը, որոնք ոչ միայն Սեբաստիոյ՝ այլ նաեւ շրջակայից մէջ հաստատուեցան և գիւղեր ու քաղաքներ շինեցին։ Ակն և Արաբկիր պարզապէս Վասպուրականի Հայ գաղթականներուն հիմնած կամ զարգացուցած քաղաքներն են։

Կարսի թագաւորը և իրեն հետեւորդներն ալ Ամասիոյ, Կոմանայի և մերձաւոր շրջանակներու մէջ Հայերու բնակչութիւնը աճեցուցին, ինչպէս նաև քիչ յետոյ՝ Տաւրոսի լեռնային մասերուն մէջ Հայեր գոյութիւն առին, երբ այս երկրամասը ենթարկուեցաւ նախ Դանիշմենտներու և ապա Սելջուկեան Ռումի Սուլթանութեան։

Փոքր Հայքի և Եփրատի արեւմտեան եզերքներէն մինչեւ Ալիս տարածուած երկիրներուն Բիւզանդական տիրապետութեան օրերէն մնացած Հայերը, բարբարոսական արշաւանքներու միջոցին չարաչար կոտորածներով և վայրենական արարքներով սրակոտոր և սովամահ կորսուած և բոլորովին նուազած էին։ Ռումիներու պետութեան կազմակերպիչ Սիւլէյման Իպն Գութուլմիշի (1072–1086) կարգադրութիւններէն ետք թէ՛ Հայաստանէն և թէ՛ Բիւզանդական պետութեան զանազան մասերէն փախստական Հայերով վերստին Եփրատի և Ալիսի շրջանը ծաղկեալ և բարգաւաճ Հայութեան մը բնակավայրը դարձաւ։

Թուական այդ աճումին անմիջական հետեւանքը զգալի է նաեւ եկեղեցական յիշատակներով, վասնզի թեմերու թիւը կը հաստատէ բնակչութեան աճումը։ Բիւզանդական տիրապետութեան ատեն բովանդակ Փոքր Հայքի մէջ միայն երկու եպիսկոպոսական Աթոռներ գոյութիւն ունէին։

Ա. Սեբաստիա

Բ. Լարիսա,

Մինչ այս շրջանին այդ երկու աթոռներէն զատ կը յիշուին նաեւ

Զմշկածագ առաջին անգամ 1179ին

Մալաթիա » » 1179ին

| | | | |
|---|---|---|---|
| Նեոկեսարիա | առաջին | անգամ | 1179ին |
| Կեսարիա | » | » | 1179ին |
| Տիվրիկ | » | » | ԺԴ. դարուն |
| Եւդոկիա | » | » | 1307ին |
| Ամասիա | » | » | 1307ին |
| Ծամնդաւ | » | » | 1307ին |
| Հիւսնի Մանսուր | » | » | 1307ին |
| Նիկոպոլիս-Կողոնիա | » | » | 1316ին |

Այս խտացման և աճման գլխաւոր պատճառներէն մէկը կրնայ համարուիլ կրօնական այն ազատութիւնը, զոր Հայերը կը վայելէին Սելջուկ իսլամ տիրապետութեան տակ, մինչ Յոյները, բոլորովին հակառակ էին Հայերու կրօնական ազատութեան և կ'ուզէին զանոնք ձուլել՝ կրօնապէս իրենց միացնելով։ Դրութիւն մը որ շատ յաջողութեամբ կիրարկած էին Փոքր Հայքի մէջ, ուր ետքը իբրեւ Յոյն ներկայացող բնակչութեան մեծամասնութեան նախահայրերը Հայեր եղած էին։ Նոյնիսկ իրենց տիրապետութեան վերջին ժամանակներու բռնութեանց հետքերն են Հայ-Հոռոմները, որոնք մինչեւ 1915 բաւական ստուար թիւ մը կը կազմէին, մանաւորապէս Ակնայ շրջակայ գիւղերուն մէջ, որոնց հայկական անունները մանաւանդ խիստ նշանակելի են (Թորոս Աղբար, Ա. հտ., էջ 251, Ակն եւ Ակնցիք, Մ. Պարսամեան, 121—127)։

∴

Բիւզանդական տիրապետութիւնը մինչեւ Ալիս վանող իսլամ, սակայն ծագումով հաւանօրէն Հայ, առաջին իշխանութիւնը եղած է Դանիշմենտեան էմիրութիւնը (1) (1071—1175), որ գիտակ այն դժգոհութեանց զորս Հայերը ունէին Բիւզանդական մոլեռանդութենէն, գոնէ իր տիրակալութեան սկիզբը լաւ վարուած է Հայերու հետ, և նոյնիսկ Հայերու չարիք չէ հասցուցած երբ անոնք միամտաբար Դանիշմենտի երկիրը մտնող Առաջին Խաչակիրներուն օգնած են, (Պատմ. Եւդոկիոյ Հայոց, էջ 219)։ Դանիշմենտները իրենց բանակին մէջ Հայեր ունեցած են (Նոյն, 220) և Հայերը այնքան յարած են անոնց որ 1102ին Մալաթիան անոնց յանձնած են, վասնզի քաղաքին Հայ-Հոռոմ իշխանը՝ Գաբրիէլ զիրենք կը նեղէր (Նոյն, 220)։ Որոշ է որ Հայերը Դանիշմենտ իշխանութեան տակ, ինչպէս նաև անոր յաջորդող Սելջուկ Ռումի Սուլթաններու տիրապետութեան (2) շրջանին (1069—1300) քիչ շատ վայելած են անդորրութիւն և բարօրութիւն Փոքր Հայքի մէջ, իսլամ տիրապետութեան տակ, մինչ տակաւին Փոքր Ասիա չէր ենթարկուած Սելջուկ-իսլամ պետութիւններու իշխանութեան և կը շարունակէր Բիւզանդական նուազելու մօտ կայսրութեան տիրակալութիւնը այդ հողամասին վրայ, ուր նաև Հայեր կը բնակէին մեծ թիւով։

(1) Դանիշմենտեանց իշխանութեան ընդարձակ եւ փաստագրեալ պատմութիւնը տեսնել Արշակ Ալպօյաճեան, **Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց**, 188—224։

(2) Այս Սուլթանութեան պատմութիւնը տեսնել **Պատմութիւն Հայ Կեսարիոյ**, էջ 503—522։



Արդարեւ, մինչեւ Սելջուկեաններու պատմութեան ասպարէզ գալը՝ Բիւզանդական կայսրութեան թէ՛ Ասիական և թէ՛ Եւրոպական բաժինները լեցուն էին Հայերով, բայց մանաւանդ Հայ ծագումով Օրթոտոքս բիւզանդացիներով, որոնց կողքին կ'ապրէին նաեւ իրենց եկեղեցիին հաւատարիմ մնացող Հայեր կամ Հայաստանէն նոր եկած գաղթականներ, որոնք բնական է — գոնէ ժամանակի մը համար — կը պահէին իրենց ազգային կրօնքը։

Այդ նոր գաղթականներէն մէկ մասը Սելջուկեան արշաւանքներու և մէկ ուրիշ մասն ալ Բագրատունիներու վերջին օրերուն Հայ ազգային և յունասէր կուսակցութիւններու պայքարին հետեւանօք իրենց երկիրը ձգելով մեկնած անձերէն կը բաղկանային։

Անոնք առ հասարակ, ինչպէս տեսնուեցաւ, Եփրատի Արեւմտեան կողմը հաստատուած էին՝ Հայ ճորտ իշխանութիւններու հողերուն վրայ, կամ Միջագետք. սակայն կային նաեւ մինչեւ Բիւզանդիոն՝ պետութեան կեդրոնը գացողներ։

Անոնց գլխաւորներէն մէկն էր Գրիգոր Մագիստրոս, որ Կոստանդին Թ. Մոնոմախոս կայսեր (1042—1055) ատեն փոխադրուած էր Միջագետք կամ հիւսիսային Սուրիա։ Իրեն նման ապահովաբար կային ուրիշ իշխաններ ալ, որ իրենց հողերը ձգելով մեկնած և Բիւզանդական ծառայութեան մէջ մտած են։ Այս դասակարգին պատկանող Հայ իշխաններէն կը յիշուին Թոռնեանի Անեցի Վեստ Խաչիկ իշխանին երկու զաւակները Հասան և Ճնճղուկ, որոնք 1042ին իրենց զօրքերով գացած էին Պոլիս և կայսեր ծառայութեան մտած։ Անոնք ժամանակ մը ետքը դարձան իրենց երկիրը և հաւատարմութեամբ ծառայեցին Բիւզանդական կայսրութեան։

Ինչպէս ԺԱ. դարէն առաջ, նոյնպէս և անկէ ետքը, Հասանի և Ճնճղուկի պէս շատեր կային, որոնք միշտ Բիւզանդական կայսրութեան երկիրները ապաստան գտած ու հոն ալ ապրած են, եթէ ոչ նոյն քանակութեամբ, որ Է., Ը. և Թ. դարերուն գացած են, այլ թերեւս անկէ քիչ մը նուազ, բայց միշտ Հայեր կային հոն և դեր մը կը կատարէին, ինչպէս կը հասկցուի ինչ ինչ յիշատակութիւններէ։ Այսպէս, ԺԱ. դարուն կէսերը, 1044 Մարտ 9ին, կը յիշատակուի որ ժողովրդային յեղափոխութիւն մը կը ծագի Պոլսոյ մէջ և այս պատճառով ազդու միջոցներ ձեռք կ'առնուին և օտարներ «Հրեաները, Իսլամները եւ ՀԱՅԵՐԸ» Կ. Պոլիսէն դուրս կը հանուին (Abbé Albert Vogt C. M. Hist. Դ., 109)։ Այդ Հայերը օրթոտոքսացած չէին կրնար ըլլալ, քանի որ Հրեաներուն և Իսլամներուն հետ կը յիշուին իբրեւ օտար կամ աւելի ճիշդ այլակրօններ։

Ասիկա նշան մըն էր թէ Բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքին մէջ Հայերու կարեւոր գաղութ մը կար։

Նոյնպէս, եթէ այդ դարուն հոն հայ գաղութ գոյութիւն ունեցած չըլլար, Սենեքերիմ Արծրունիի գաղթէն (1018—20) ետք, Սեբաստիա հաստատուած Գրիգոր Քհ. Ակոռեցիի հայրը՝ Անանիա Քհ., մինչեւ իր մահը, հինգ

տարի (1066—1071) պիտի չմնար Կ. Պոլիս (Գարեգին Կաթ., Յիշատակարանք Ձեռագրաց, էջ 249—255, և Արարատ, 1910, էջ 77—87, 245—260)։

1095—1099ին, Պոլսոյ մէջ կ'ապրէր Ժաւոժ անուն քահանայ մը, «ըստ Նիկեական հաւատոյն», այսինքն ոչ-Քաղքեդոնական, որ կը թարգմանէր Գրիգոր վանականին խնդրանքով, Ստեփանոս Ուլնեցիի վկայաբանութիւնները (Յիշատ. Ձեռագրաց, 257—8)։

Այսպէս, հակառակ կրօնական հալածանքներուն, Հայերը կ'ապրէին Բիւզանդական Կայսրութեան մէջ, մայրաքաղաքը և գաւառները։

Անհաւանական չէ մտածել թէ երբ Սելջուկեանց յարձակումները սկսան Հայաստանի վրայ, Հայերը մեծ թիւով դարձեալ Բիւզանդական Կայսրութեան հողերը ապաստանեցան, մանաւանդ որ Հայ թագաւորներ կը նախընտրէին Եփրատի արեւմտեան կողմը անցնիլ և ճորտ դառնալ Բիւզանդական Կայսրութեան։

Դժբախտաբար Սելջուկ հրոսները շուտով անցան Եփրատը և այդ տկար իշխանութիւններուն վերջ տուին 1080ին, ինչպէս տեսանք։

Բիւզանդական Կայսրութիւնը այդ թուականէն սկսեալ դիմել սկսաւ դէպի անկում՝ հսկայական քայլերով, և շատ կծկուեցան իր սահմանները Արեւելքի կողմէն, վասնզի իսպառ կորսուեցաւ Կայսրութեան երկիրներուն մէկ կարեւոր մասը, մասնաւորապէս հայկական (Արմենական) թեմը, որ անցաւ Սելջուկ, Թաթար և այլ յելուզակային ցեղերու տիրապետութեան և Կայսրութեան որքան Արեւմուտքի, նոյնքան և Արեւելքի ստացուածքները վերածուեցան աննշան բեկորներու, որոնք ստուերներն էին նախկին փառաւոր և ընդարձակ Կայսրութեան։ Այնպէս որ Հայերու ամէնէն շատ խտացած վայրերը Կայսրութենէն բաժնուած էին։

Բիւզանդական Կայսրութիւնը այլեւս սեղմուած էր անձուկ և անապահով շրջանակին մը, մէջ, իսկ այն վայրերը՝ որոնք Սելջուկ տիրապետութեան անցած էին, կը պահէին իրենց Հայ բնակչութիւնը, զի Սելջուկեանք գիտնալով այն դժգոհութիւնները, որոնք տուրքերու ծանրութենէն և ստրկութենէն ծագում կ'առնէին՝ բարձան և միայն գլխահարկ գանձելով ազատ կացուցին իրենց հպատակները։ Այս իսկ պատճառով ոչ-օրթոտոքս քրիստոնեաները, որոնք Բիւզանդական պետութեան սահմաններուն մէջ կը գտնուէին, հետզհետէ իսլամ տիրապետութեան տակ գտնուող երկիրներ տեղափոխուիլը նախամեծար համարեցին։

Երկիրը ներքին ապստամբութիւններով և Խաչակրաց դաւերով ընկճուած, պատրաստ որս մըն էր — ինչպէս Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը — իսլամ պետութիւններու համար։ Այսպիսի տխուր դրութեան ենթարկուած երկրի մը մէջ, բնական թէ Հայերը չէին կրնար ապահովութիւն գտնել, մանաւանդ որ ուղղակի Հայոց երկիրներու սահմանակից ըլլալէ դադրած էին Բիւզանդական երկիրները և մահմետական կարգ մը իշխանութիւններու երկիրներէն անցնիլ հարկ էր՝ հասնելու համար այդ խռովեալ կայսրութեան երկիրները, ուր կղերական մոլեռանդութիւնը վերջին ճիգերը կ'ընէր ազնուականութեան ուժերուն վրայ յեցած՝ ոչ-օրթոտոքս տարրերը ձուլելու համար։

Ինչ որ բոլորովին կ'ուծացնէր Արեւելքը Բիւզանդիոնէն, մասնաւորապէս



Հայերը կը հեռացնէր Բիւզանդեան Կայսրութենէն՝ ուր արաբական շրջանին գունդագունդ դիմած էին, կրօնական հալածանքներն էին միայն։

Բիւզանդական Կայսրութեան վարիչները շատ վաղուց ընդգրկած էին ձուլումի քաղաքականութիւնը՝ մէկ կրօնքով և մէկ ազգութեամբ պետութիւն մը կազմելու համար։

Անոնք թէեւ բաւական դժուարութեամբ, սակայն գէթ նշանակելի յաջողութեամբ կրցած էին կարգ մը ազգեր — որոնք Փոքր Ասիոյ մէջ կ'ապրէին — Բիւզանդականութեան մէջ ընկղմել և այսպէս բազմաթիւ ազգեր ի մի ձուլել։

Սակայն պետութեան ամէն մասերուն մէջ միեւնոյն յաջողութիւնը չէին ունեցած։

Մասնաւորապէս ծայրագաւառներու մէջ դժուար եղած էր ձուլումը։ Հայաստան որ Բիւզանդական Կայսրութեան մէկ ծայրագաւառն էր, հակառակ թափուած այնքան ջանքերուն, չէր հնազանդած բնաւ Կ. Պոլսոյ տիեզերական պատրիարքներուն։

Հայերը իրենց եկեղեցիին անկախութեան չափազանց նախանձախնդիր բնաւ չէին համակերպած յունադաւանութեան և միշտ մաքառած էին Բիւզանդիոնի դէմ, որ անզգաստ, բնաւ չըմբռնեց իր կրօնական միարարութեան աղէտալի հետեւանքները և Արեւելքի մէջ Կայսրութեան ոտքին կռուանը կորսնցնելը։

Բիւզանդացիք փոխանակ կրօնական հալածանքէ հրաժարելու, հետզհետէ աւելի խստացուցին իրենց հալածանքները և նոր կերպերով Հայերը որսալ աշխատեցան։ Բիւզանդիոն կարծես աւելի մտահոգուած էր Հայերը կրօնափոխ ընելու, քան թէ Կայսրութեան տեւականութիւնը ապահովելու գործով։

Պետրոս Գետադարձ (1019—1054) և իր յաջորդին՝ Խաչիկ Կաթողիկոսներու նկատմամբ Բիւզանդացիներու ընթացքը ակներեւ ցոյց կու տայ թէ Բիւզանդացիք ինչպէս թշնամական ոգիով լեցուած էին Հայ Եկեղեցիին և Հայադաւաններուն հանդէպ։ Այս պատճառով Բիւզանդացւոց ատելութիւնը, ինչպէս նաև Հայերու ընդդիմութիւնը և միանալու չհամակերպելու համար կատարած ջանքերը ուշագրաւ են։

Սակայն ինչ որ ալ ըլլար՝ կարելի չէր շատ երկար ատեն տոկալ և հակառակ այն մեծ ջանքերուն, զորս Հայերը ըրած են, մեծ թիւով Հայեր ձուլուած են Բիւզանդականութեան մէջ։

Ու ասիկա բնական էր, քանի որ Հայ գաղթականներ ցրուած էին իրենցմէ շատ աւելի ստուարաթիւ և մշակոյթով բարձր ժողովուրդի մը մէջ, որ տիրող ցեղ ըլլալու առաւելութիւնն ալ ունէր։ Ուրեմն մեծ թիւով Հայեր կորսուած են Հայ ազգութեան համար։

Այսպէս, Է. դարէն մինչև Ժ. դար, Փոքր Ասիոյ Հայ գաղութները ուծացած են և ընկլուզուած Բիւզանդական մեծ զանգուածին մէջ։

Մասնաւորապէս Փոքր Ասիոյ Արեւմտեան մասերուն Հայ գաղութները ԺԱ. դարուն՝ ողորմելի վիճակի մը ենթարկուած էին, վասնզի Մահմետական ուժին առաջ ընկճուած բիւզանդական պետութիւնը, որ պերճանքի,

չքեղութեան և ազնուապետութեան շռայլութիւններուն մէջ, մեղկութեան, ցոփութեան, զեխութեան և հեշտանքի մեծածախս շրջան մը կը բոլորէր, այդ ամենուն հասնելու համար գիւղացի դասակարգը կ'ընկճէր տուրքերու ծանրութեան, ստրկութեան և պատերազմական աւարառութեան ներքեւ, որոնք բոլորովին կը նսեմացնէին հայ գաղութները Փոքր Ասիոյ մէջ։

Ոչ նուազ չարիք պատճառած են կրօնական հալածանքները, որոնք Բագրատունի թագաւորութեան կործանումէն վերջ գործադրուեցան Հայերու դէմ։

Ասոնք միեւնոյն ատեն ցոյց կուտան թէ Բիւզանդական սահմանափակուած և անշքացած կայսրութեան մէջ Հայերը տակաւին թիւ մը կը ներկայացնէին և բոլորովին արհամարհելի տարր մը չէին։

Այսպէս, կը յիշուի թէ 1162ին, երբ Գրիգոր Վկայասէրի ատեն (1065—1105) Տռազատիկ պատահեցաւ, Հայերը հալածելու բացառիկ առիթ մը նկատուեցաւ ատիկա։

Մատթէոս Ուռհայեցի կ'ըսէ թէ «Վասն այսր պատճառի մեծ մախանումն եղեւ ընդ Յոյնս եւ ընդ Հայս, սակայն ազգն Ֆռանկաց ոչ ինչ ունէին հոգս շփոթանալ ընդ Հայս, բայց միայն Յոյնք ունէին մեծ վէճ եւ մախանումն ընդ Հայս վասն Ս. Զատկին: Եւ Անտիոք եւ ամենայն Կիլիկէ եւ Ուռհայ ունէին սաստիկ պատերազմ ընդ Յոյնս վասն հաւատոյ, զի ջանային դարձուցանել յիւրեանց անհաստատ տոմարն զՀայս, եւ այսպիսի ջանիւք եւ աշխատութեամբ վիշտս հասուցանէին ազգին Հայոց եւ ոչ կարացին շարժել զնոսա» (Ուռհայեցի 354)

Այս առթիւ, ինչպէս կը հասկցուի Լամբրոնացիի առ Ոսկան Ծգնաւոր և Ներսէս Շնորհալիի առ Պօղոս Տարօնացի գրած թուղթերէն, շատերը յունադաւանութեան յարելու ստիպուած էին՝ չկրնալով տոկալ հալածանքներու։

Ասով հանդերձ շատ դիւրին չէ եղած պետութեան զանազան մասերուն մէջ միեւնոյն յաջողութիւնը ունենալ։ Շատ տեղեր Հայերը յայտնապէս ընդդիմութիւն ցոյց տուած են, և նոյնիսկ վրէժխնդիր դառնալով՝ Բիւզանդացիներու թշնամիներուն նպաստած են։ Օրինակի համար 1190ին Բ. Խաչակրութեան միջոցին երբ Լատինները Ֆրետերիք Շիկամօրուս կայսեր առաջնորդութեամբ Թրակիա և Մակեդոնիա մտան՝ Բիւզանդացիք ուզեցին նենգութեամբ արգելք հանդիսանալ այս արշաւանքին, որով հարկ եղաւ պատերազմիլ անոնց դէմ և գրաւել քանի մը քաղաքներ։

Այդ պատերազմներուն մէջ Հայերը Լատիններուն աջակցեցան և Յոյներուն պարտութիւնով մասամբ իրենց վրդովուած դրութիւնը դարմանեցին (Վարդան, 135, Հ. Գելցեր, 385) Սակայն Իսահակ Անգելոս (1185—1195) կայսրը կ'երեւի այս պատահարէն գրգռուած՝ իրեն համար նպատակ ըրաւ իր տէրութեան մէջ բնակող Հայերը աւելի հալածել (Վարդան, 135) իսկ իր յաջորդը Ալեքսիոս Գ. Անգելոս (1195-1207) իր նախորդին ընթացքը շարունակեց, մանաւանդ 1197ին պատահած Տռազատիկը առիթ բռնելով, և ստիպեց Հայերը ընդունելու օրթոտոքս եկեղեցիին ծէսերը, տօները և արարողութիւնները, ինչպէս նաեւ բռնացաւ կրկին մկրտութեան, դրոշմուելու և կրկին ձեռնադրուելու։



Այս առթիւ ծանր հալածանքներ գործադրուեցաւ, Բիւզանդական կայսրութեան վերջին բեկորներուն, Պոլսոյ, Թրակիոյ, Մակեդոնիոյ և Արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ մնացած սահմանափակ թուով Հայերու վրայ։ Ասոր համար Գրիգոր Ապիրատ (1194—1203) Ներսէս Լամբրոնացին կը ղրկէ Պոլիս՝ խնդրելով կայսրէն որ չնեղէ Հայերը։ Սակայն այդ պատգամաւորութիւնը արդիւնք մը չունենար և Յոյները կը շարունակեն իրենց հալածանքները և կը յաջողին բռնի յունադաւան ընել մաս մը Հայեր եւս, և չհամակերպողները արտաքսել երկիրէն իբրեւ անկնունք և անհաւատ։

Հետեւաբար, ԺԹ. և յաջորդ դարերու ընթացքին, մանաւանդ Բիւզանդական կայսրութեան արեւմտեան սահմաններուն մէջ, ուր Հայերը մեկուսացած էին և ամէն յարաբերութենէ զրկուած, հետզհետէ պակսեցան Հայ գաղթականները՝ այլուր փոխադրուելով և կամ յունադաւանութեան յարելու բռնադատուելով։

Ոչ նուազ նշանակելի իրողութիւն մըն է թէ իբրեւ հետեւանք Բիւզանդական մոլեռանդութեան՝ ԺԲ. և ԺԳ. դարերու ընթացքին մանաւանդ դէպի Բիւզանդական երկիրներ հայկական նոր գաղթեր շատ քիչ յիշուած են։

Մեծ թիւով Հայերու յունադաւանութեան յարիլը և այսպէս այլեւս Բիւզանդացի նկատուիլը կը հաստատուի նաեւ սա իրողութեամբ որ Բիւզանդական երկիրներու, մանաւանդ արեւմտեան գաւառներուն մէջ Հայոց գործունէութեան յիշատակութեան շատ քիչ կը հանդիպինք, մինչ Հայերը նախապէս ամբողջ պետութիւնը իրենց ձեռքերուն մէջ ունէին թէ իրենց որակով և թէ իրենց քանակով, մինչ Պալէոլոկներու իշխանութեան գլուխ անցած ատեն Հայերը բոլորովին անշքացած էին, և Բիւզանդական պետութեան անձուկ սահմաններուն մէջ — գրեթէ Կ. Պոլիսը և իր անմիջական շրջապատը — շատ քիչ թիւով Հայեր կը գտնուէին։

Այլեւս Հայ զինուորականութիւնը — որ երբեմն այս պետութեան ուժը կը ներկայացնէր — տկարացած էր և հայկական տարրին յաջորդած էին Սլաւները։

Այնպէս որ, այս չորս դարերուն՝ այլեւս Բիւզանդական կայսրութեան պատմութեան չեն խառնուիր անունները նշանաւոր հայ զօրավարներու, որոնք մինչեւ կայսրութեան բարձրացան, ինչպէս նաեւ ուրիշ նշանաւոր անձերու, եկեղեցական և աշխարհական, որոնք Բիւզանդական կայսրութեան ընտրանին կը ներկայացնէին։

ԺԱ. դարու սկիզբէն մինչեւ կայսրութեան կործանումը՝ Կ. Պոլսոյ գրաւումով (1453) շատ քիչ կը հանդիպինք հայ անուններու, որոնք Բիւզանդական կայսրութեան մէջ դեր մը կատարած ըլլան կամ յիշատակելի անուն մը թողած։ Բայց միշտ կը յիշուին Հայեր, ոչ այնքան մեծ թիւով։

Այսպէս, կը յիշուին Վասիլ Բ. Բուլկարասպան, երբ 1018ին Աթէնք երթալու համար կ'անցնի այն պատերազմի դաշտէն, ուր 995ին Նիկեփորոս Ուրանոս Մագիստրոս այնքան անողոք եղած էր Սամուէլ Զարի բանակին հանդէպ՝ զայն անխնայ ջարդելով, կայսրը տեսնելով Բուլկարներու ոսկորակոյտերը՝ կը հպարտանայ Հռոմ զինուորներու քաջութեանը համար, «բայց, կը

չարունակէ ժամանակագիրը՝ Սկիլիտէս «ինչ որ իրեն հիացում պատճառեց իրաւամբ եղաւ տեսարանը այն պատին որ կառուցուած էր Ռուբէն Հայէն, որ մէկն էր ապահովաբար իր տեղակալներէն: Այս պատը բարձրացած էր Թերմոփիլէի նեղանցքի կիրճին լայնքին՝ փակելու համար Պուլկարներու անցքը եւ արգիլելու համար որ անոնք ամէն ատեն կրկնեն իրենց աւերող արշաւանքները բուն Յունաստանի թեմերուն մէջ»։ Ռուբէն, հաւանօրէն ԺԱ. դարուն, Stratigosն էր Հելլադայի Թեմին, երբ աւարտեց այդ հսկայական գործը, որուն յիշատակութիւնը ուրիշ տեղ չկայ՝ Բիւզանդական աղբիւրներուն մէջ եւ որ այնքան մեծ հիացում և հպարտանք պատճառեց կայսեր (Wassiliewsky. Conseils et Reccits. 116)։

Սքիլիտէս և Կեդրենոս, Ռուբէն բառը տեղի անուն կարծած են (նոյն) և կ'ըսեն թէ այդ պատը կը կոչուէր Skélos (= երկար պատ) (Ep. Byz. Բ. 398—399), տես Ն. Ադոնց, Հայ Բիւզանդական Յուշագիր, Տ. Ա. Ե, Հայրենիք, ամսաթերթ, ԺԵ. տարի, Թ. 5)։

Այն կարծիքը թէ այս Ռուբէնը հաւանօրէն նոյն այն հռչակաւոր ընտանիքէն է, որ եղաւ հիմնադիրը Կիլիկիոյ Թագաւորութեան, շատ թէական է, բայց շահագրգռական է սա պարագան որ Ռուբէն անուն Հայ մը Ժ. դարուն վերջերը զինուորական հրամանատարն էր Հելլադայի պէս կարեւոր Թեմի մը։

Ասիկա կ'ապացուցանէ թէ այդ դարուն դեռ Հայերը Կայսրութեան մէջ պաշտօններ կը վարէին, սակայն ոչ նոյն ծաւալով ու հեղինակութեամբ զոր ունէին երբեմն։

Այլեւս անոնց անունը շատ քիչ կը յիշուի գահակալական պայքարներուն մէջ, որոնք սակայն կը շարունակուէին։

Ռոմանոս Դ.ի պարտութենէն (1071) վերջ՝ Բիւզանդական կայսր հռչակուած Միքայէլ Պարապինոս (1072—1078) երբ կամովին հրաժարեցաւ և վանք քաշուեցաւ, Պոթոնիատ (= Վարոնիատ = Botaniat) զօրավարը Նիկեփոր Գ. անունով Կայսր հռչակուեցաւ (1078—1081)՝ Թագուհիին հետ ամուսնանալով, բայց ճիշդ միեւնոյն պահուն Լիւրիկէի մէջ Կայսր հռչակուեցաւ Բրիէնոս, նոյնպէս Նիկեփոր Գ. անունով։ Պոթոնիատ, շնորհիւ Ալեքս Կոմնենոսի, յաջողեցաւ նուաճել և կուրցնել Բրիէնոսը, սակայն Ալէքս Կոմնենոս՝ յետոյ իր դէմ դարձաւ և զայն արգելափակեց վանքի մը մէջ և ինք Կայսր եղաւ։

Այնպէս որ Հայեր շատ քիչ կը յիշուին Բիւզանդիոնի մէջ։ Այդ քիչերէն մէկն է Բակուրան Հայը,

Այս գահընկեցութեան կը մասնակցին Բակուրան Հայը, որ նշանաւոր արկածախնդիր Humbgrtopoulos, քեռորդին Robert Gius Carlի, Գէորգ Պալէոլոգի եայլն (IB. 212)։

Բակուրան, որ Հայ նախարարական ցեղէ էր (1)։ Ալէքս Կայսեր (1081—1118) Արքունիքին մէջ կարեւոր դեր մը կատարած է։ Բակուրան ճարտար անձ մըն էր և օգնած Ալէքսի՝ անոր Կայսր ըլլալէն առաջ և սիրելի եղած էր։

(1) Շլումպերժէ իր *Sigilographie de l'Empire Byzantine, Paris,* կը յիշատակէ ԺԲ—ԺԳ դարուն մէջ Բակուրանեա Վլասոս անուն Հայ մը: Ծանօթ է նաեւ ԺԱ. դարուն Թէոպոլսոյ հրամանատար Գրիգոր Բակուրանիոս մը որուն կրնան նոյն ընտանիքին անդամները ըլլալ:



Ալէքս անոր խոստացած էր մեծ պատիւի հասցնել զինքը՝ եթէ Կայսր դառնար և արդարեւ կայսր դառնալէ ետք զայն վարձատրած էր։

Երբ Սելջուկեանք կը յարձակին Բիւզանդական կայսրութեան վրայ, Ալեքս կայսրը Բակուրանի քաջութիւնը և խոհականութիւնը նկատի ունենալով, անոր կուտայ բանակ մը և զինակից ուրիշ Հայ իշխան մը՝ Վարազ, որ կորովի երիտասարդ մըն էր։

Եւ որովհետեւ թշնամիին թիւը մեծ էր, Բակուրան խոհեմութիւն չի համարեր ուղղակի յարձակիլ, այլ կ'ուզէ հնարքով մը յաղթել, բայց Վարազ իր եռանդով անհամբեր, իր գունդը առաջ կը մղէ, որով Բակուրան ալ կ'ընտիպէ պատերազմի մտնելու իր զօրքերով։ Թէեւ երկուքն ալ մեծ քաջութեամբ կը կռուին և ծանր հարուածներ կուտան թշնամիին, սակայն ի վերջոյ երկուքն ալ կ'իյնան կռիւին մէջ (Ալեքսիաս. գիրք Բ. և Զ.)։

Ալեքս Ա.ի գործակիցներուն մէջ է նաեւ Կիլիկիոյ Լամբրոնի տէրը՝ Օշին զոր Ասպիէտէս կը կոչէ Աննա Կոմնեն իր Ալեքսիասին մէջ։

Ասիկա 1081ին Ալէքսի բանակին մէջ էր երբ ան Լոնգոյբարտիոյ Ռոբերդ Գիսկարտի դէմ կ'արշաւէր Իլլէրիա։ Օշին կը հրամայէր Հայ հեծելազօրքի այն գունդին, որ մաս կը կազմէր անշուշտ այն զօրքերուն, զորս կայսրութեան մէջ հաստատուած Հայերը պարտաւոր էին հայթայթել (տես. F. Chalandon. Jean II Comnène et Manuel I Comnène 107)։

Ալեքսիաս «Ասպետ» կը կոչէ Օշինը, որ մեծ քաջութիւն և անձնուիրութիւն ցոյց կուտայ ըստ Աննա Կոմնենի, որ պարծանօք կը խօսի անոր վրայ։ Ի վարձատրութիւն՝ ան կ'անուանուի Ստրոդոպետարքոս (Stretopétarque) և կը կարգուի ճորտ իշխան Տարսոնի և շրջակայ գաւառներու, կայսեր մեռած փեսին(1) տեղ։ Կայսրը անոր կուտայ անկախ իշխանութիւն՝ զայն կոչելով Սեբաստա կամ Սեւաստոս ։ Կայսրը կը պատուէր նաեւ Օշինի Հալկամ եղբայրը։

Օշինի նստոցն էր Լամբրոն (հիմա Նէմրուն Գալէսի կամ Պէլգէսի = Հովոց), որ կը գտնուէր Տաւրոսի մէկ ժայռոտ գահաւանդին վրայ, չորս կողմէն մեկուսացած քարաբլուրի մը վրայ, Պապեռոնի հիւսիս—արեւելքը։ Այս բերդը վերաշինած էր Օշին։

Խաչակրութեան ատեն, Լամբրոնի տէրը Օշին, կը հրամայէր Տաւրոսի անցքերէն մէկուն և խիստ հաւանօրէն նոյնը ըլլալով Raoul de Cænէ և Albert d'Aixէն յիշուած Հայ Ursinusի հետ, (Chalnndon, Les Comnênes II. 105)։ կ'աշխատի առնել Mamistraն, Ալեքսի և Տանգրետի (Tancrede) մինչեւ պատերազմին ատեն։ Օշին Ալեքսէն պաշտօն առաւ Մոնաստրասի (Monastras) մեկնումէն յետոյ, 1095ին պաշտպանել Կիլիկիան, Պոհմոնտի (Bohémond) քեռորդիին դէմ։

(1) Չամչեան (Բ. 1005, Գ. 10), այս փեսան կը կոչէ Սահակ, երեւակայական անուն մը: Ալիշան, Սիսուան, 71 եւ Աճառեան. Անձնանուններու Բառարան, Դ, 363, 100)՝ Չամիչեանէն առնելով իրենք ալ այս անունը կու տան. Հ. Ներսէս Վրդ. Ակինեան այս անունը «հնարուած» կ'որակէ (ՀԱ. 1964, էջ 51): Միւս կողմէն կայ նաեւ ուրիշ լուծելի հարց մը: Ըստ Հայ աղբիւրներու՝ Ապլղարիպի, որ անզաւակ մեռած էր, յաջորդած էր այդ եղբայրեայ Սահակը, որ կայսրութեան մեծամեծներուն մէկն էր, եւ փեսան էր ոչ թէ կայսեր, այլ Օշինեան տոհմին նախահայր Օշինի:

Օշին ձախողեցաւ իր պաշտօնին մէջ և Կայսեր վստահութիւնը կորոյս (Աննա Կոմնեն)։ Կը թուի թէ ամբաստանուած է վատութեամբ, քան թէ մատնութեամբ։ Թերևս իրաւացի է ենթադրել թէ Օշին, ինքնինքն անպաշտպան մնացած կարծելով Բիւզանդական գունդերէն, վախցաւ իր դիրքերը ցոյց տալ Տանգրետի և մերժեց բոլոր ուժովը կռիւի մտներ։ Անոր համար Կիլիկիան առնուեցաւ իրմէ։

Ալեքս Կայսեր ժամանակակից կը յիշատակուի նաև Արեւ անուն զօրավար մը, որ Աքրիտոսի ղղեակը պաշտպանեց ընդդէմ Լատիններու և 1091ին Ալեքս Կայսեր դէմ դաւադրութիւն մը սարքած ըլլալով, աքսորուեցաւ (Շլումպերժէի Sigillographie de l'Empire Byzantin, 622)։

Նոյնպէս 1093ին կը յիշուի Հայ զօրավար մը՝ Յովհաննէս Տարօնեցի Կիւրապաղատ (Նոյն, էջ 706) և նոյն դարուն մէջ վեստ և զօրավար տիտղոսներով Դեմետր Վահրամ անուն Հայ մը (Նոյն, 714), տարբեր ուրիշ Վահրամ իշխանէ մը, որ նոյնպէս ԺԱ. դարուն ապրած է, ինչպէս իր կնիքէն կը հասկցուի (Նոյն, 714)։

Նոյնպէս ԺԱ. դարուն ապրած է Թովմաս Արտաւան Պատրիկ, որուն գործունէութիւնը անծանօթ կը մնայ (Նոյն, 622), ինչպէս Կոմնեններու ժամանակակից ուրիշ Հայու մը Եպիփան Արտաւազդեանի, որ վեստ տիտղոսը կը կրէ, (Նոյն, 623)։

Ալեքս Ա. Կայսեր ծառայութեան մէջ էր նաև Միքայէլ Տարօնեցի իշխանը, որդի Գրիգոր Տարօնեցիի, որ այնքան հաճոյացաւ կայսեր, որ զայն փեսայացուց իրեն՝ իր Մարիամ Կոմնենոս քոյրը կնութեան տալով անոր և մեծ պատիւներու արժանացնելով (Du Cunge, Familles d'Outre-Mer, 1807, Paris, 172)։

Կայսրը զայն անուանեց Պռոտոսեբաստոս և Պռոտովեստիարոս (Protivestiaire = հանդերձապետ) և ապա նաև պանիփերսեբաստոս (panuphypersibest) (ԻԲ., էջ 221)։

Միքայէլ Տարօնեցի ունէր երկու զաւակներ՝ Յովհան և Գրիգոր, որ Ալեքսի յաջորդներուն ժամանակ փայլեցան և կարևոր դեր կատարեցին Կայսրութեան մէջ։

Յովհան հօրը մահէն յետոյ կարգուեցաւ պռոտոսեբաստոս և Գրիգոր եղբայրը եղաւ պռոտովեստիարոս և Ալեքս Ա. Կայսեր որդւոյն Յովհաննէս Պերփիւռուժէն Կայսրէն կարգուեցաւ արքունի հազարապետ, ինչպէս կը վկայեն նոյնիսկ Յոյն պատմիչները (Ալեքսիաս Ժ., ԺԲ. և ԺԳ., Սկիլիցէս, 747, Նիկիտաս, Յովհաննէս Կոմնէն և այլ. տես նաև Զամ., Գ. 10 և Ferdinand Chalandon, Jean II. Comnène (1118—1143 (et Manuel I. Comnène (1143—1180), էջ 20։

Այս երկու եղբայրներուն ժամանակակից և քիչ մը աւելի առաջ են՝ իրենց ազգական, համանուն ուրիշ զոյգ մը, նոյնպէս Տարօնեցի, Յովհան և Գրիգոր անուններով։

Այս երկրորդ զոյգէն, Յովհան Տարօնեցի կարգուած է Սեբաստոս (1) և

(1) Այս տիտղոսը հին ժամանակ կը տրուէր միայն կայսերական ընտանիքի անդամներուն, սակայն յաջորդ դարերուն, մասնաւորապէս Ալեքս Կոմնենոսէն ետք՝ կը ճանաչէր պաշտօնեաներու բարձրագոյն կարգը Siklograpkie, 587)։



1145ին Մանուէլ Ա. Կոմնենոս (1143—1180) կայսեր նախագահութեան տակ գումարուած ժողովի մը մէջ կայսեր քով նստած է իբրև նախապատիւ պաշտօնատար։

Մանուէլ կայսրը իբրև իր եղբօր կուսակից ամբաստանելով՝ Կոզմա Պատրիարքը դատարանի ենթարկեց։ 1147 Փետրուար 20ին Պլաքերեան պալատի սրահներէն մէկուն մէջ գումարուեցաւ այն ժողովը, որ պիտի դատէր Կոզման։ Կայսրը անձամբ կը նախագահէր։

Այս ժողովին կը մասնակցէր նաև Եպարքոս (eparque) և դատաւոր Յովհաննէս Տարօնեցի, թերևս սերունդէն Միքայէլ Տարօնեցիի, որ ամուսնացած էր Ալեքս Ա.ի քրոջը՝ Մարիայի հետ (F. Chalandon, Jean II. Comnène (1118—1143) et Manuel I. Comnène (1143—1180) էջ 638)։

Ասիկա ցոյց կուտայ թէ Յովհան ինչ կարևոր դիրք մը ունէր կառավարութեան մէջ։ Հոս կրկին պիտի չյիշեմ Պոնտոսի մէջ գործող Գրիգոր Տարօնեցին և անոր դէմ ղրկուած Յովհաննէս (որդի Միքայէլի) Տարօնեցին (անոնց մասին տես. վերը՝ 477—8)։

Նոյն ժամանակներուն կը յիշատակուին նաև արքունեաց Հայ պաշտօնատարներ։ Այսպէս, կը յիշուի որ երբ 1166ին Ալեքս դուքսը Շնորհալիի նամակը կը տանի Մանուէլ Ա. Կոմնենոս կայսեր (Կիրմանուէլ ալ կոչուած, (1143—1180) և Միքայէլ Պատրիարքին, կայսրը շուտով կը ղրկէ իր ներքիններէն Սմբատ Հայը և ծառայ մը Արուխ անուն, յանձնարարելու համար որ Ներսէս Շնորհալի Կ. Պոլիս ղրկուի կրօնական միութեան շուրջ բանակցելու համար։

Սմբատ կ'երթայ մինչև Հռոմկլայ, սակայն մինչև իր հոն հասնիլը՝ Գրիգոր Գ. Պահլաւունի (1113—1116) կաթողիկոս կը մեռնի և Շնորհալի կը յաջորդէ, ինչ որ պատճառ կ'ըլլայ որ կայսեր փափաքը կարելի չըլլայ գործադրել։

Նոյն շրջանին՝ Հայ ազնուական տուներ հաւանօրէն շատ մը նահանգներու մէջ իրենց հարստութեամբ և հողային կալուածներով ճոխացած ազնուական հողատէրներու դասակարգին մաս կը կազմէին, սակայն անոնց յիշատակութիւնը կը պակսի մեզի։ Այսուհանդերձ երևոյթներ կան, որոնք այժ կուտան այս ենթադրութեան։ Այսպէս, Ալեքսիոս Գ. Անկելոսի (1195—1205) թոյլ իշխանութեան ժամանակ, երբ բազմաթիւ նահանգներու մէջ ծնունդ առած էին բռնակալներ, որոնք իբրև տեսպոտ, ինքնիշխան կը կառավարէին զանազան նահանգներ, կը յիշատակուի նաև հայկական՝ տուն մը Գաբրաս անունով և ծագումով Տարօնի հին իշխաններէն, որ «իբրև Խաղդիացի հերձողներ» կէս անկախ կերպով կը կառավարէին Հելլադայի մէկ կարևոր հողամասը (Հ. Գելցեր, 382)։

Փայլուն անցեալի այս մնացորդը անշուշտ միակը չէր և ուրիշ Հայ տուներ ալ, իրենց հարստութեամբ և ստացուածքներով երբեմն այնքան ճոխ այդ շրջանին կը դառնային ճորտեր, երբ պետութիւնը կ'ստանար աւատական կազմ։ Սակայն դժբախտաբար անոնց ծագումը կը մնար անյայտ և անոնց հայութենէն նշոյլ չէր մնացած։

Երբեմնի ստուար մեծամասնութիւնը աննշան փոքրամասնութեան մը

վերածուած էր և Բիւզանդացի զանգուածին մէջ Հայ տարրը իր նախկին գերակշռութիւնը կորսուած էր, վասնզի Բիւզանդացի կոչումով Օրթոտոքս բընակչութիւնն ալ, որ իսկական խառնածին մըն էր, ծնունդ բազմաթիւ ցեղերու միախառնումին՝ կրօնական միութեամբ, այս դարերու ընթացքին իր վրայ կրած էր զանազան տարբեր ցեղերու պատուաստը։

Այնպէս որ, Բիւզանդական Կայսրութիւնը, որ «հիմնուած էր Ասիոյ եւ Եւրոպայի սահմաններուն վրայ եւ ներփակուած պարսկական եւ արաբական Արեւելքին ու բոլոր հիւսիսային դրացիներու թափանցումին կամ ներխուժումին (infiltration), առաւելապէս աշխարհաքաղաքացի (cosmopolite) միջավայր մըն էր: Հոն Սլաւներ, Թրակիացիներ, Հայեր, Կովկասցիներ, Իտալացիներ, Արաբներ իրարու կը հանդիպէին եւ իրարու կը խառնուէին: Կարգ մը ցեղեր, ինչպէս Սլաւները եւ Հայերը, որոշ շրջաններ գերազանց ազդեցութիւն մը ունեցան» (CMH t. IV գլ. ԻԳ. Բիւզանդական Կայսրութեան կառավարութիւնը եւ վարչութիւնը, Շառլ Տիլ, 773—4)։ Արդարեւ Վասիլ Բ. Պուլկարասպանի Պուլկարներու դէմ տարած վճռական յաղթանակներէն ետք՝ մանաւորապէս մայրաքաղաքի ազնուականութեան Հայ-Անատոլեան ծագումով մեծամասնութեան քով գոյութիւն առաւ Սլաւ-Պուլկար ծագումով նոր ազնուականութիւն մը, որ օրէ օր աւելի ստուարացաւ նոր փոխադրութիւններով, մինչդեռ առաջինը կ'անչքանար իր մայր երկիրէն անջատուած ըլլալով։

Բիւզանդական այս խառնարանին մէջ եկան ձուլուիլ նաև բազմաթիւ Գերման, Ռումէն, Սլաւ, Ֆրանք և այլ Եւրոպական ցեղերու պատկանող անհատներ։

Կ. Պոլիս իրեն կը քաշէր նաև Թաթար ծագումով բազմաթիւ անձեր, որոնք քրիստոնեայ կրօնքին յարելով կը խառնուէին Բիւզանդացիներուն։

Պատմութիւնը կը յիշէ Յովհաննէս Բ. Կոմնենի (1118—1143) երիտասարդութեան ընկերը և իր շրջանին ամէնէն գործունեայ նախարարը եղող Աքսուխոս Թաթարը, որ անշուշտ իր տեսակին մէջ միակը չէր և իրեն պէս ուրիշ շատեր կային, որոնք Թաթար ծագում ունէին, սակայն իբրև Բիւզանդացի կ'ապրէին մայրաքաղաքին և գաւառներուն մէջ։ Ասոնցմէ ամէնքն ալ քրիստոնեայ չէին դարձած և իսլամ մնացողներ ալ կային։

Այնպէս որ, ի զուր չէր որ երբ Իսահակ Անգելոս Կայսրը (1185—1195) Բիւզանդական նենգամտութեամբ իր շահուն համապատասխան գտաւ բարեկամութեան ձեռք երկարել Իկոնիոյ Սելճուկ Սուլթանին, այդ բարեկամութեան իբրև նշան Պոլսոյ մէջ թոյլ տուաւ մզկիթ մը կառուցանել։

Կ. Պոլիս իսկապէս համաշխարհային քաղաք մը դարձած էր այն չորս դարերու շրջանին (1040—1468), զորս Կեդրոնական Ասիոյ հրոսներու ասպատակութեանց շրջան կոչեցի, վասնզի այդ շրջանին Ասիական բարբարոս ժողովուրդներ՝ իրարու յաջորդող ալիքներով դէպի Արևմուտք արշաւեցին և չորս դար շարունակ կռուեցան Հռոմ Կայսրութեան դէմ, մանաւանդ Մահմետականութիւնը ընդունելէ յետոյ՝ կրօնական ատելութեամբ ալ լեցուած։

Բիւզանդական Կայսրութիւնը, որ շրջանին սկիզբը՝ ԺԱ. դարուն՝ վե-



րստին տիրապետելով Հայաստանի՝ պահ մը նախ քան Արաբական տիրապետութիւնը ունեցած փայլը վերստանալու պատրանքը տուած էր Արևելքի քրիստոնեաներուն, յաջորդող չորս դարերու ընթացքին, հետզհետէ անկումէ անկում գլորելով, վերջապէս ջնջուեցաւ Օսմանեան Թուրք Իսլամ պետութեան կողմէ 1453ին։

Բայց մինչև այս վերջնական ջախջախումը, աւանդօրէն կարծես Հայ գաղթականներ, ինչպէս նախընթաց շրջաններուն, դարձեալ ապաստանեցան անոր հողերը։

Դէպի արևմուտք այս տեղաշարժը, որ նոյնիսկ Դ. և Ե. դարերէն սկսած էր, և որ Հայ գաղթականութեան պատմութեան ամէնէն նշանակելի ձգտումը եղած էր, շարունակուած է նաև այս շրջանին, մինչև այն ատեն, ուր պետութիւնը դէպի անկում հսկայական քայլերով դիմել սկսած է և շատ մը հողամասեր, որոնց մէջ Հայերը ամէնէն շատ խտացած էին, Բիւզանդական ստացուածք ըլլալէ դադրած են։ Այն պզտիկ տարածութեան մէջ որ այս շրջանին վերջերը ունէր Բիւզանդիոն, կարելի չէր ունենալ մեծ թիւ մը Հայերու, հետևաբար իրենց կարևորութիւնը կը կորսնցնէին։

Մանաւորապէս այս չորս դարերու ընթացքին, զինուորական դասակարգին տեղ, ազնուականութեան և պալատական դիւանագէտներու ազդեցութիւնը յաջորդելը, բոլորովին կ'անչքացնէր Հայերու դերը Բիւզանդիոնի մէջ, որ առաջուց ի վեր աւելի զինուորական եղած է։

Երկիրին անապահով դրութիւնը և տնտեսական շատ անկեալ կացութիւնը աւելցնելով այս խեղճ վիճակին վրայ, պիտի կարենանք լիուլի համոզում գոյացնել թէ Հայերը՝ ինչպէս նախընթաց շրջաններուն՝ նոյնպէս և այս շրջանի սկիզբը, որչափ որ ոգևորութեամբ Բիւզանդական երկիրներ ապաստանած են, այնքան ալ այս շրջանի վերջերը, անկէ հեռացած և հեռաւոր աշխարհներ գաղթած են։

Ասոր պատճառը մանաւորապէս այն հալածանքներն էին, զորս Բիւզանդացիք ընդհանուր կերպով կը գործադրէին ոչ-Քաղկեդոնականներու կամ միաբնակներու դէմ, ինչպէս մանրամասնօրէն բացատրեցինք նախորդ գլուխին մէջ։

Այս ընդհանուր հալածանքէն, որ Փոքր Ասիոյ հնօրեայ գաղութը կ'սպառէր, միայն զերծ մնաց Կիլիկիոյ Հայ գաղթականութիւնը, որ Թ. դարուն Ջմշկիկի յաղթութիւններէն յետոյ, նշանակելի դիրք մը առած էր, շարունակ Բիւզանդական պետութեան հովանաւորութեան ներքև աւատական պատուար իշխանութիւններու կազմութեամբ։

Ասոնք, միանալով Ա. Խաչակրութենէն քիչ յետոյ, ծնունդ տուին, ինչպէս տեսանք, Կիլիկիոյ Ռուբինեան թագաւորութեան, որ թէ՛ Փոքր Ասիոյ հին գաղութներուն և թէ՛ Մեծ և Փոքր Հայքի Հայ բնակչութեան ապաստանի վայր մը հանդիսացաւ և պահեց հին գաղթականութեան յաջորդութիւնը։

Հետևաբար, Փոքր Ասիոյ մէջ, Կիլիկիա՝ իբրև Բիւզանդական պետութեան շրջանէն կամ անյիշատակ դարերէ սկսեալ Հայ գաղութներ ընդունող և մինչև 1920 անընդհատ Հայ բնակչութեամբ լի երկիր մը, որ միանգա-

մայն անկախ Հայ Թագաւորութեան մը վայր եղած է, բացառիկ տեղ մը կը գրաւէ։

Կրօնական հալածանքէն փրկուած են նաև այն Հայերը, որոնք Թէպէտև նախկին Բիւզանդական երկիրներու մէջ կ'ապրէին, սակայն օտար տիրապետութեան ներքև կը գտնուէին։

∴

Այսպէս, իրենց գոյութիւնը պահեցին կամ Թերևս ուրիշ տեղերէ հաւաքուելով նոր գաղութներ կազմեցին Հայերը՝ Պոլսոյ և Թեսաղոնիկէի մէջ, երբ այդ քաղաքները Լատին տիրապետութեան ենթարկուեցան 1204ին։

Այդ Թուականին արդէն Բիւզանդական Կայսրութիւնը հասած էր մահուան դուռը և բաժան բաժան եղած էր, Թէև բոլովին ընկճուած չէր։

Լատինները որոնք բռնատիրեցին Կ. Պոլսոյ, հոն հիմնեցին Կայսրութիւն մը, որ հազիւ կէս դար (1204—1261) տեւեց, վասնզի իրենց հիմնած Կայսրութիւնը աւատական պետութիւններու կազմը ունէր, որուն անխուսափելիօրէն միացած էր բազմիշխանութիւնը և զինուորական ուժերու բաժան բաժան ըլլալը։ Այնպէս որ՝ միացեալ գործունէութիւն չունէին և կեդրոնանալ չէին կրնար։

Հետևաբար տկարացան Յոյներուն առջև, որ անվհատ կը մաքառէին իրենց դէմ։

Յոյները Բիւզանդական Կայսրութեան բեկորներէն նոր պետութիւններ կազմեցին, ինչպէս՝

1. Միքայէլ Անգելոս Կոմնեն, Անգելներու անհարազատ հօրեղբօրորդին, 1204ին Եպիրոսի մէջ կազմեց տէրութիւն մը, որ Ադրիականի բոլոր արևելեան ծովափը իր իշխանութեան տակ առած էր.

2. Թէոդորոս Լասկարիս, Ալեքսիոս Գ.ի փեսան անցած էր Բիւթանիա և փորձած էր ազատել Ասիան.

3. Թէոտոր Մանկափաս Ֆիլատելֆիոյ (= Ալաշէհիր).

4. Լեոն Գաբալաս՝ Հռոդոսի,

5. Մանուէլ Մանարողոմէոս՝ Մէանդրի հովիտին մէջ.

6. Դաւիթ Կոմնեն՝ Կոմնեններու հայրենիքին՝ Պափլագոնիոյ մէջ.

7. Վերջապէս Ալեքսիս Ա. Կոմնեն՝ Պոնտոսի մէջ.

Ասոնք իրենք զիրենք Կայսր հռչակած էին։

1204ին միայն Փոքր Ասիան բաժնուած էր չորս տարբեր ազգութեանց պատկանող տասը զանազան իշխանաւորներու միջև (Cambridge Medival History IV. էջ 479, Նիկոյ Կայսրութիւնը եւ Կ. Պոլսոյ վերագրաւումը, William Miller (1)։

Փոքր Ասիոյ մեծագոյն մասը կը պատկանէր Իկոնիոյ Սուլթաններուն։ Հարաւային մասը գրաւած էր Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը և միւս մասերուն կը տիրէին Յոյն եօթը Կայսրեր և Լատին իշխաններ։

---

(1) *William Miller*, Օքսֆորդի Հարվորդ Գոլէճի դասախօս եւ պատուակալ անդամ Յունաստանի Ազգային Համալսարանին:



Այս խառնակ դրութեան մէջ, բնական է որ Յոյներու ատելութիւնը հանդէպ Հայերու, կրօնական պատճառներով, չէր դադրած, սակայն կացութիւնը նպաստաւոր չէր մեթոտաւոր կերպով գործելու։

1197ի Տռազատիկի առթիւ գործադրուած հալածանքներուն յիշատակը տակաւին շատ նոր ըլլալով, բնաւ զարմանալի պէտք չէ թուի որ Հայերը նախընտրած են Կ. Պոլսոյ Լատին Կայսրութեան հողերը։ Լատինները՝ Խաչակրութիւններու ատեն Հայերէն օգտուած ըլլալով՝ բարեկամական տրամադրութիւններ ունէին հանդէպ Հայերու, որոնք Կ. Պոլսոյ Լատին Կայսրութեան հողերը, մանաւորապէս Կ. Պոլիս, ազատ ելեւմուտք ունէին։ Արդէն՝ Լատինական Կայսրութեան Ասիական բաժինը հազիւ երիզ մըն էր Մարմարայի եզերքը, և միակ կարևոր վայրը Կ. Պոլիսն էր, որ ամէնէն աւելի վաճառականութեան յարմարութիւններ ընծայող քաղաքն էր։

Կ. Պոլիսէն զատ, կը յիշուի նաև Տրովադա և շրջակայքը (CMH. IV. 479), այսինքն արդի Պիղայի սանճագը, Տարտանելի նեղուցէն ոչ շատ հեռու, որ ունէր Հայերու ստուար գաղութ մը։

Ասոնք անշուշտ ի հեճուկս Յունաց՝ Կ. Պոլսոյ Օրթոտոքս դաւանանքը չընդունելու համար, հաւանօրէն Կաթոլիկ կրօնին յարած էին, վասնզի երբ 1204ին Խաչակիրները Պաղեստինէն դարձող 10,000 ուխտաւորներով զօրացած, մեծ պատրաստութիւններ կը տեսնէին Փոքր Ասիոյ ալ տիրելու, կը յիշուի թէ Կ. Պոլսոյ Լատին Կայսեր եղբօրը՝ Հենրիկոսի հրամանին տակ գտնուող զօրամաս մը հրաւէր կ'ստանայ Տրովադա բնակող Հայերէն, որոնք ըստ William Millerի «հաւանաբար կը պատկանէին Լատին հաւատքին» (CMH. IV., 481)։

Այս Կաթոլիկութեան յարող Հայերու գոյութիւնը կը պարտինք հաւանօրէն Յոյներու և Հայերու փոխադարձ ատելութեան, որ իր սաստկութիւնը կը պահէր դեռ այդ ժամանակ, որովհետև տակաւին քիչ առաջ, 1197ին, Հայերը ենթարկուած էին կրօնական ծանր հալածանքներու, որոնց առաջքը առնելու համար նոյնիսկ Գրիգոր Ապիրատ Կաթողիկոսը (1203) դիմած էր Պոլսոյ Կառավարութեան, Ներսէս Լամբրոնացին ղրկելով, սակայն և այնպէս անօգուտ եղած էր։

Երբ Յոյները վանեցին Լատինները Պոլիսէն, ինչպէս տեսանք, Բիւզանդացիք կազմեցին Նիկիոյ Կայսրութիւնը, որ ամէնէն աւելի պէտք ունէր հըպատակներու սիրտը շահելու։ Յոյները արդէն ընկճուած՝ առիթ չունեցան կրօնական խնդիրներով զբաղելու։ Լատինները փորձեցին Փոքր Ասիոյ տիրող Նիկիոյ Կայսրութեան ալ տիրակալել, և անոր վրայ յարձակեցան։

Թէոտոր Լասկարիս անոնց դիմադրելու համար, միացաւ Իկոնիոյ Սելջուկ Սուլթանին և Թէոտոր Մանկափաս Ֆիլատելֆիոյ Կայսեր։ Լատինները յաղթեցին և նոյնիսկ Մանկափասը գերի առին։ Կացութիւնը յուսահատական էր, և կարծես Բիւզանդական կայսրութեան վախճանը հասած էր, եթէ Լատիններու գրգռուած ատելութիւնը իրենց դէմ չհանէր Պուլկարները, Ռումէնները, Կումանները։

Մանաւորապէս Պուլկարներու յարձակումը ստիպեց Լատին Կայսրը, իր եղբայրը և Լատին ասպետները ետ քաշել Փոքր Ասիայէն, Պուլկարներուն դի-

մադրելու համար։ Պուլկարները, մանաւորապէս Պաղտուին Կայսրը (1204—1205) գերի առնելով, միջոց տուին Բիւզանդական Փոքր Ասիոյ վերակազմութեան։ Թէոտոր Լասկարիս Կայսր ընտրուեցաւ Նիկիոյ մէջ, որ Յոյն ազգայնականութեան և հոգևորականութեան հաւաքավայրն էր և 1206ին հանդիսաւորապէս օծուեցաւ։

Լասկարիս յաջորդաբար զինակցելով Սելջուկներուն հետ՝ ընկճեց Դաւիթ Կոմնենի ըմբոստութիւնը՝ Սինոպի շուրջ և Պուլկարներու հետ դաշնակցելով Լատինները հարկադրեց խաղաղութիւն կնքելու։

Լատին ամբողջ գրաւումներէն միայն Պիղան (Pegæ) պահուեցաւ, որպէս զինուորական և ծովային խարիսխ Հելլեսպոնտոսի (Տարտանէլ) վրայ։

Բայց Լատիններու հետ, Տրովադայի Հայ գաղութը Եւրոպայի կողմը անցաւ, Յունական վրէժխնդրութենէն վախնալով (CMH. IV. 481)։

Թէոտոր Լասկարիսի զօրաւոր օգնական մը եղաւ Յովհաննէս Դուկաս Վատացէսը, որ իրեն սենեկապետը և փեսան էր միանգամայն։

Յովհաննէս Վատացէս (Vatatzes) այնքան առաջացաւ որ գրաւեց Նիմակուան Կէպզէն և Թուզլան, որ Կ. Պոլսոյ հանդիպակաց ասիական եզերքին վրայ գտնուող Քաղքեդոնի (Գատըգիւղ) արուարձաններն էին։ Յոյն սահմանագլուխը այսպէս Կայսերական քաղաքէն քսան մղոնէն քիչ մը աւելի հեռու էր։

Բայց պարտութիւնը Յոյն Նաւատորմին, որուն նաւազները նորեկներ էին և կը գտնուէին անփորձ ՀԱՅՈՒ մը — որուն անունը դժբախտաբար չի տրուիր — հրամանատարութեան տակ, արգելք եղաւ աւելի յառաջանալու։ (Byzantinische Zeitschrift XIV. 220 և Cambridge Medival History, Դ. հտ., էջ 490, William Millerի Նիկիոյ Կայսրութիւնը եւ Կ. Պոլսոյ վերագրաւումը):

Թէոտոր Լասկարիս, երբ 1222ին մեռաւ, արդէն յաջողած էր իր մականին տակ առնել ամբողջ արևմտեան Փոքր Ասիան, բացի Բիւթանիոյ մէկ փոքր մասէն, որ Ֆրանքներու ձեռքն էր։

Իր մահէն յետոյ գահ բարձրացաւ Յովհաննէս Դուկաս Վատացէսը (1222—1254), որ թէ՛ ընտիր զօրապետ էր և թէ՛ հմուտ վարիչ։

Ասոր ժամանակ Յունական Փոքր Ասիան հիմնովին վերակենդանացաւ Անգելներու անարգ կառավարութենէն վերջ։ Յոյն ժողովուրդին ազգային նուաստացումը և Լատին լուծին ամօթը նորէն ի յայտ բերաւ իր թաքուն կամ կորսուած կարծուած շարք մը գեղեցիկ ձիրքերը, որոնք մինչև այն ատեն կաշկանդուած էին։

Ժողովուրդը ցոյց տուաւ թէ դեռ ինչպիսի ընտիր տաղանդներ ունէր իր մէջ։

Յոյները կրցան միացնել Կայսրութեան բեկորները և վերագրաւել 1261 Յուլիս 25ին Կ. Պոլիսը, ուրկէ Պաղտուին Բ. Կայսրը (1228—1261) գրեթէ առանց կռիւի վենետիկեան նաւով մը խոյս տուաւ դէպի Եւբէա կղզին։

Լատիններու Կ. Պոլսոյ Կայսրութեան շրջանին (1204—1261), Հայերը խտացան մանաւորապէս Կ. Պոլսոյ մէջ, մինչդեռ Բիւզանդական Կայսրութեան բեկորներուն, ի մասնաւորի Նիկիական Կայսրութեան մէջ, Հայ գաղութները կը հիւծէին և իրենցմէ միայն աննշան հետքեր կը մնային։

Նիկիոյ Կայսրութեան մայրաքաղաքը Նիկիա էր, սակայն վաճառականա-



կան կեդրոնը Զմիւռնիա էր, ուր Հայերը այդ շրջանին կը հաստատուէին։ Հոն կ'զբաղէին վաճառականութեամբ, ինչպէս որոշապէս կը յիշուի Ճենովացիներու և Միքայէլ Պալէոլոկ Կայսեր միջև 1261 Մարտ 13ին կնքուած առևտրական դաշնագիրին մէջ (Bonaventure F. Slears, Etudé sur Smyrne 1868)։ Այս վաճառական գաղթականները հաւանօրէն ուղղակի արևելեան նշանաւոր վաճառականներու երկիրներէն, Ջուղայէն, Նախիջևանէն և Ագուլիսէն եկած էին և իրենց ազգակիցներու Ասիոյ խորերէն կարաւաններով Զմիւռնիա ուղարկած ապրանքները Ճենովայի և Վենետիկի նաւերը բեռցնելու պաշտօնը ունէին։

1261ին Պալէոլոկները, Լատինները Արևելեան Կայսրութեան մայրաքաղաքէն վանելէ ետք, այլևս հալածանքը կը դադրեցնեն և Հայերը այս պատճառով վերստին Բիւզանդական մայրաքաղաքին մէջ ստուարանալ կ'սկսին, քանի որ արդէն Լատիններու շրջանին, շատ տեղերէ Կ. Պոլիս Հայեր ապաստանած էին, Յունական մոլեռանդութենէն ազատ մնալու համար։

Ասիկա կը հաստատուի William de Ruhriqueի կողմէ, որ 1253ին, երբ դեռ Կ. Պոլիս Լատին տիրապետութեան տակ էր, Պոլիս այցելած է։ Անոր Ուղեգրութենէն կը հասկցուի որ ան Պոլսոյ մէջ հանդիպած է Հայերու, որոնք իր վկայութեամբ հոն կը մնային, այսինքն հոն կը բնակէին (տես. Հայրենիք ամսագիր ԺԲ. տարի, Թ. 2)։

Յայտնի չէ թէ այդ Հայերը 1261ի Բիւզանդական գրաւումէն վերջը հոն մնացա՞ծ են թէ հեռացած են։ Միայն ծանօթ է որ 1261ին՝ երբ Պալէոլոգները վերահաստատուեցան Կ. Պոլսոյ մէջ, չնորոգեցին այն հալածանքները զորս Կոմնենեանք և Անգելոսեանք գործադրած էին երբեմն։

Պալէոլոգները ինչպէս տեսնուեցաւ, այնքան զբաղած էին արտաքին թշնամիներու դէմ երկիրը պաշտպանելու, որ ալ չշարունակեցին ներքին կրօնական հալածանքը ընդդէմ ոչ-օրթոտոքս տարրերու, որոնցմէ մէկն ալ Հայն էր։

Միայն անցողակի հալածանքներ եղած են. ինչպէս Յովհաննէս Դուկաս Վատացես Կայսրը (1253), ժամանակակից Յոյն պատրիարքին հետ համախորհուրդ, իր իշխանութեան տակ գտնուող Հայերը նեղած է իբրև Եւտիքեան։

Կոստանդին Կաթողիկոս և Հեթում Թագաւոր՝ Յակոբ Վրդ. Կլայեցին Նիկիա ղրկեցին (1254ին), որպէսզի Յոյները լուսաբանէ և հալածանքը դադրի։ Կ'ըսուի թէ յաջողած են։

Նոյնպէս կը յիշուի, որ Անտիոքի Յոյն պատրիարքը՝ Եւթիմէոս պահ մը 1276) չարաչար նեղած է այդ քաղաքին Հայերը, և յաւակնած է իր իշխանութեան ենթարկել Հայոց Կաթողիկոսը։ Լեւոն Թագաւոր սաստիկ զայրացած, կ'աքսորէ զայն անմարդաբնակ կղզի մը, ուրկէ ան խոյս տալով կ'երթայ Պոլիս և Միքայէլ Պալէոլոգ Կայսեր կը դիմէ, սակայն Կայսրը շատ չի քաջալերեր զինքը և ասոր համար խնդիր չ'ըներ. (տես. Գէորգ Պախումերոս Յոյն պատմիչ, Զաւ. Գ. 270)։

Միքայէլի յաջորդին՝ Անդրոնիկոսի ատեն ալ, նոյն պատմիչը կը յիշէ Անտիոքի Արսինիոս Պատրիարքը, որ կը միաբանէր Հայոց հետ եկեղեցականապէս. Յոյները ասկէ սաստիկ զայրանալով՝ զինքը կը ձերբակալեն և կ'աքսորեն։

*Հետեւաբար, Հայերը վերստին բազմանալ սկսած են Կ. Պոլսոյ մէջ,* ինչպէս Անսիոֆի սուրջ:

*Բայց այն հին ժամանակներու Հայերը, որոնք ամէն կողմ զգալի կը դարձնէին իրենց գոյութիւնը, որոնք Կայսրութեան գահը, պալատը, զինուորականութիւնը և պաշտօնակալութիւնը կը գրաւէին, որոնք գիտութեան և արուեստներու մէջ գերազանց կը հանդիսանային, և որոնք առեւտուրի ու վաճառականութեան մէջ գերազանց էին միշտ, այլեւս մատի վրայ կը համրուէին։*

*Պալէոլոգներու շրջանին Բիւզանդական արքունիքը խնամութիւն կը հաստատէ Կիլիկիոյ Ռուբինեան արքայական տան հետ։*

*Միքայէլ Թ.* (1295—1320) *կ'ամուսնանայ 1296ին Հեթում Թագաւորին քրոջ՝ Ռիթայի հետ* (+ 1333) (Սմբատ, 120) *կամ ըստ ոմանց Մարիամի հետ։ Ասոնց զաւակն էր Անդրոնիկոս Գ.* (1328—1341), *որով այս շրջանին ալ հայածին կայսր մը կը բազմէր Բիւզանդական Կայսրութեան գահը։*

*Ռիթայի Պոլիս գացած պահուն՝ անոր կ'ընկերանայ իր քոյրը՝ Մարիամ, որ ճամբան կը մեռնի։*

*Ռիթայի քրոջը՝ Զապէլի զաւակն էր Գուիտոն կամ Գիւտոն, որ Կիպրոսի Թագաւորին եղբօրորդին էր, որ Կ. Պոլիս կը բերուի նոյնիսկ իր մօրաքըրոջ կողմէ։ Գուիտոն, երիտասարդ և առոյգ, Անդրոնիկոս Գ.ի* (1328—1341) *կարգադրութեամբ կ'ամուսնանայ 1329ին Պատրիկի մը աղջկան հետ, որ շուտով կը մեռնի։ Բ. անգամ կ'ամուսնանայ Սիւրգիանոս անուն երեւելիի մը աղջկան հետ և անկէ կ'առնէ Գուիտոն Սիւրգէս անունը։ Անդրոնիկոս կայսրը զայն ապա կը կարգէ իշխան և վերակացու Աքայիոյ, Պիրէոնէն մինչև Քրիստուպոլիս գտնուող երկրամասին։ Գուիտոն հոն կը տիրէ զօրութեամբ և իմաստութեամբ, իր ձեռքին տակ ունենալով Յոյն և Հայ զօրագունդեր.* (Կանդակուզէն, Պատմ. Գ. 31, Նիկեփորոս, Գրիգոր ԺԲ. 15, Ջամիչեան Գ. հտ., էջ 325)։

1341*ին երբ Յովհաննէս Դ. իր հօրը Անդրոնիկոսի կը յաջորդէ, անչափահաս ըլլալով, իրեն խնամակալ կը կարգուի Յովհաննէս Կանդակուզէն իշխան։ 1342ին Յովհաննէս Կանդակուզէն երբ կը վանուի չարախօսութեամբ, Յովհաննէս ինքզինքը Կայսր կը հռչակէ և Թեսալիոյ, Թեսաղոնիկէի և Աքայիոյ իշխաններու դեսպան կը ղրկէ որ իրեն հնազանդին։ Գուիտոն Սիւրգէս, որուն աղջիկը նշանուած էր Կանդակուզէնի տղուն, հակառակ անոր դէմ ելլաւ անոր, վասնզի անիկա զինքը արհամարհած էր և յաղթեց անոր* (Ջամ. Գ. 347)։

*Ասկէ կը հասկցուի՝ որ ԺԴ. դարուն սկիզբները դեռ Հայ զինուորականութեան մը տկար բեկորները կը մնային։*

*Ռիթայի իբրև Կայսրուհի՝ Բիւզանդական Արքունիքի մէջ գտնուած պահուն է որ Կ. Պոլսոյ մէջ առաջին անգամ կը տեսնուի Հայ գաղթականութիւն մը, որ կրօնական պաշտամունքի մէջ լիակատար ազատութիւն կը վայելէ, քանի որ իր գլուխն ունէր եպիսկոպոս հովիւ մը, Յուսիկ* «եպիսկոպոս Սեփնպոլոյ Հայոց», *ինչպէս կը հասկցուի Սիսի Ս. Սոփիա Եկեղեցիին մէջ* 1307 *Մարտ 19ին գումարուած ժողովին արձանագրութիւններէն* (Հ. *Աղեքսանդր Պալճեան,* Պատմութիւն Կաթողիկէ Վարդապետութեան ի Հայս, 281)։



*Նոյնքան նշանակելի է որ Ռիթայի և իր ամուսնին՝ Միքայէլ Թ. Կայսեր* (1295—1320) *սովորական բնակավայրը՝ Թեսաղոնիկէ եւս, Հայ հաւաքավայր մը եղած էր այդ օրերուն, և հաւանօրէն լատինական վաղանցուկ տիրապետութեան շրջանին մասնաւորապէս ստուարացած, Հայ գաղութ մը գոյութիւն ունեցած է այնտեղ։*

*Միայն ասով կրնայ մեկնուիլ Թեսաղոնիկէի Եսայի եպս.ին, Սիսի յիշեալ ժողովին մասնակցութիւնը՝ որ նոյնպէս անժխտելի փաստ մըն է թէ այդ քաղաքին մէջ ալ, ԺԴ. դարուն սկիզբը, կը գտնուէր Հայ գաղութ մը, որ ունէր՝ ուրեմն՝ իր սեփական եպիսկոպոսը և կրօնական ազատ պաշտամունք կը կատարէր ազգային ծէսով և սովորութիւններով։*

*Թէ՛ Կ. Պոլսոյ և թէ՛ Թեսաղոնիկէի Հայերը որոշ է որ նոր գաղթականներէ կը բաղկանային, վասնզի հինները արդէն վաղուց կորած էին Օրթոտոքսութեան մէջ և չատոնց դադրած էին Հայ եկեղեցիին հպատակելէ։*

*Մասնաւորապէս ԺԴ. դարուն սկիզբէն Կ. Պոլսոյ Հայ գաղութը ստուարացած և ունեցած էր իր եկեղեցիները և հոգեւոր մասնաւոր վարչութիւնը և նոյնիսկ՝ թերեւս շատ համեստ պայմաններով, ուսուցողական ձեռնարկ մը, Ղալաթիոյ Ճենովական թաղին մէջ հաստատուած Ս. Սարգիս անուն եկեղեցիի մը շուրջը, վասնզի 1360—61 տարիներուն հոն կը գրուին երկու ձեռագիրներ, երկուքն ալ Գլաձորի դպրոցին մեծ ուսուցիչին և դարուն ամէնէն համբաւաւոր վարդապետին՝ Եսայի վրդ. Նչեցիի* Քերականութիւն եւ Մեկնութիւն Քերականի գործերը (*հմմտ. Ալպօյաճեան,* Պատմ. Հայ Դպրոցի, 372):

*Բիւզանդական այս ոստանին մէջ հաստատուած Հայերէն կը յիշուի գիտական միտք մը, ականաւոր մաթեմատիկոս մը, ԺԴ. դարուն* (*Ն. Ադոնց,* Հայրենիք, *Թ. տարի, Թ.* 3, 75), *Նիկողոս Արտաւազդ Ռաբդաս կամ Ռաւտաս (Նոր արտասանութեամբ) Զմիւռնիացի, որ կ'ապրէր Անդրոնիկ Գ. Պալէոլոգ Կայսեր* (1328— 1341) *ժամանակ և ողջ էր 1341ին։ Փարիզի Ազգ. Մատենադարանին մէջ կը պահուի իր մէկ ձեռագիրը* (*Թ.* 2428), *որ գրուած է պալատական պաշտօնեայ Գէորգ Խաչիկի և Կլազոմենցի Թէոտոր Զաւուշի խնդրանքով։*

*Շատ հետաքրքրական է սա իրողութիւնը. հակառակ անոր որ քառակուսի արմատ հանելու եղանակը Գերման Գիւնթեր գիտնականը կը վերագրէ նոր ժամանակուան մաթեմատիկոսներուն՝ Օպպէրմանին և Ալեքսիեւին, իրականութեան մէջ անիկա կը պատկանի Արտաւազդին* (P. Tannery. Manuel Moshopoulos et Nicolas Rhabdas, Bulletin des Sciences Mathematiques, 2 serie, 8, 1884)։

*Արտաւազդ ունեցած է նաև երկրաչափական աշխատութիւն մը, Փարիզ պահուած, ուրիշ Յոյն ձեռագիրի մը մէջ* (Cod. Suppl Grec, 628)։

*Առաջին ձեռագիրին մէջ յիշուած Գէորգ Խաչիկը և Թէոտոր Զավուշը, ինչպէս Արտաւազդ Ռաբդասը, Ադոնց կը հարցնէ թէ արդեօ՞ք այն անձերը չէին, որոնք ուղեկցած էին Հայ արքայադստեր դէպի Կայսերական մայրաքաղաք։*

*Ասոնք նոր գաղութին կը պատկանէին, վասնզի իրենց անունները տա-*

կաւին չէին կորսնցուցած, ինչ որ նշան էր որ Արեւելքէն նոր եկած էին։ (Ն. Ադոնց, նոյն)։

Ն. Ադոնց կը կարծէ թէ ասոնք պալատականներ էին։ Հայերը այն ատեն Բիւզանդիոնը առաւելապէս զբաղեցնող կրօնական հարցերուն ալ կը խառնուէին։

Ըստ հռչակաւոր բիւզանդագէտ Հ. Գելցերի (433), ԺԴ. դարուն՝ մինչդեռ ներքին պատերազմը կ'սպառէր Բիւզանդական հինաւուրց զառամեալ պետութեան վերջին ոյժերը, միեւնոյն ժամանակ տէրութեան մտածող դասակարգին մէջ առաջ կու գայ կրօնական բանավէճ մը, որ կը նկատուի ամէն ժամանակներու ամենազարմանալի և քաղաքակրթութեան պատմութեան ամենահետաքրքրական և արտասովոր երեւոյթներէն մին, որ գուցէ պէտք եղածին պէս չէ ուսումնասիրուած և միայն իբրև ծաղրանքի առարկայ դիտուած է, մինչ այդ կրօնական վէճերը արդիւնքն էին վանական կեանքի և մենակեացներու խուցերուն մէջ մտածողութեան նուիրուած մարդոց ստեղծած տեսակ մը աստուածային իմաստութեան ուսումին (Théosophie), որ իր միսթիքականութեամբը շատ կը յիշեցնէր պարսկական սուֆիական փիլիսոփայութիւնը։ Անոնց գլխաւոր կեդրոնը հանդիսացաւ Աթոսի լեռը, ուր Ժ. դարէն սկսեալ Օրթոտոքս ամէն ազգի հաւատացեալներ կը համախմբուէին, իրենք զիրենք ճգնողութեան և հայեցողութեան նուիրուելով։

Աթոսի այդ վանքերուն մէջ Հայ վանականներ ալ գտնուած են, ինչպէս յիշուեցան Սքլերոսի ապստամբութեան ատեն, երբ Յովհաննէս և Թոռնիկ, որոնք Աթոսը ձգելով եկան իրենց ծառայութիւնը իսպաս դրին Վասիլ կայսեր։ (Տես ՊՀԳ. Ա., էջ 322)։

Անոնք քաջաբար կռուեցան Բանկալիոյ մէջ 979ին և այն աւարով. զոր Թոռնիկ ձեռք բերաւ, Աթոս լերան վրայ շինեց Ivironի համբաւաւոր վանքը, զոր Վասիլ Բ. 980ին իր ոսկեայ հրովարտակով բաւականէն աւելի ճոխացուց։ (Տես. Abbé Albert Vogt. CMH Դ. հտ., 90)։

Նշանակելի է որ Հայ ծագումով Բիւզանդացի եկեղեցականներ, ինչպէս Դ. դարէն մինչև Ժ. դար, Յովհաննէս Ոսկեբերանի Կ. Պոլսոյ պատրիարքական աթոռը գրաւած էին պարբերաբար. ԺԲ. դարուն ալ երկու Հայ-Հոռոմ եկեղեցականներ բարձրացած են այդ աթոռը և միտքերը յուզող կրօնական խնդիրներու մէջ դիրք բռնած են։ Այս երկու եկեղեցականներն էին Միքայէլ Բ. Գուրգուաս (Օքիտէս), Գուրգէնեան Հայ ընտանիքի շառաւիղ անձը, որ 1143—1146ին պաշտօնավարած է, և Թէոդոսիոս կամ Թէոտոս Ա. Հայ կամ Borodlotz, որ 1178—1183 գահակալած է իբրև Տիեզերական Պատրիարք Կ. Պոլսոյ։

Ասոնք բոլորը ցոյց կու տան որ ԺԱ. էն ԺԵ. դար՝ ամէն կողմէն մկրատուած Բիւզանդական կայսրութեան մէջ — մասնաւորապէս անոր մայրաքաղաքին՝ Կ. Պոլսոյ մէջ — կ'ապրէին դարձեալ Հայեր, որոնք դեռ ամէն ասպարէզի մէջ կը գործէին, միայն երկրորդական դերերով։

Գաղութը իր առջի նկարագիրը կը փոխէր, վասնզի այս դարերուն մէջ Բիւզանդական երկիրները ապաստանողները ընդհանրապէս ոչ զինուորականներ են և ոչ ալ երկրագործներ, ոչ պետական պաշտօնեայ և ոչ ալ կալուածատէր-ազնուական, ինչպէս երբեմն էին։



Այս նոր գաղթականները սոսկ առեւտրականներ են։ Կայսրութեան այդ անապահով և չփոթ երկիրներուն մէջ իրենց հաստատուելուն գլխաւոր պատճառը այն առեւտրական շարժումն է, որուն Արևելք ականատես կ'ըլլայ շնորհիւ Վենետիկի և Ճենովայի ծովային վաճառականութեան։

Հայերը, Արեւելքի ցամաքային վաճառականութեան գրեթէ մենաշնորհը ունէին հինէն ի վեր. իրենց կարաւանները, ինչպէս տեսանք, մինչև Հնդկաստան և Չինաստան կ'երթային և անկէ կ'առնէին Ասիական ապրանքներ, զորս կը փոխադրէին ծովեզերեայ քաղաքներ՝ բեռցնելու համար Վենետիկի, Ճենովայի և Բիզայի նաւերը։

⁂

Բիւզանդական Կայսրութեան երկիրներու Հայերը, ինչպէս տեսնուեցաւ, դժբախտ շրջան մը կը բոլորեն արշաւող ժողովուրդներու ասպատակութեանց միջոցին, կորսնցնելով իրենց նախկին փայլը և կարեւոր դերը։ Եւ ասիկա իբրև ուղղակի և անմիջական հետեւանք զիրենք հովանաւորող քրիստոնեայ Բիւզանդեան պետութեան հետզհետէ քայքայման և ի վերջոյ կործանման։

Բնական է, աւերումի, կոտորածներու և շարունակական արշաւանքներու ենթակայ երկիր մը, որպիսին էր Բիւզանդական Կայսրութիւնը, բնաւ նպաստաւոր չէր կատարելու որեւէ նշանակելի դեր և դիւրութիւն ընծայելու անոնց, որոնք օտար երկիրներէ հոն կ'ապաստանէին։

Ինչ որ նախապէս Հայաստանի ճակատագիրն էր, ի վերջոյ եղաւ նաև Բիւզանդական Կայսրութեան ճակատագիրը, զի Հայոց երկիրը այլեւս այդ բարբարոսներուն իբրեւ ոտքի հաստատուն կռուան ծառայեց և իրենց բաց ասպարէզ եղաւ Բիւզանդական Կայսրութիւնը։

Այն ուժը որ Բիւզանդական հողերը կը գրաւէր հետզհետէ, Ասիական բարբարոս ժողովուրդներն էին, որոնք, ինչպէս տեսանք, ԺԱ. դարէն սկըսեալ հետզհետէ յառաջացան դէպի Արեւմուտք և գրաւեցին Բիւզանդական Կայսրութեան Անատոլեան հողերը — որոնք լի էին Հայերով — և անոնց վրայ հաստատեցին՝ նոյնիսկ ԺԱ. դարուն՝ Դանիշմենտեան Էմիրութիւնը և Սելջուկներու Իկոնիոյ Ռումի Սուլթանութիւնը։

Բարբարոսներէն կերտուած այս երկու իսլամ պետութիւնները՝ Փոքր Ասիոյ մէջ կը տիրակալէին այնպիսի հողամասերու, որոնց վրայ Հայեր կ'ապրէին անյիշատակ ժամանակներէ ի վեր, ինչպէս ծանօթ է արդէն (տես. ՊՀԳ. Ա. 105—6, 125—6, 128—9, 173, 242—3, 250, 261)։

Արաբական շրջանին՝ այլակրօն ազգի մը տիրապետութիւնը չափազանց սուղ արժած էր և սարսափ պատճառած հաւատացեալ Հայերուն, որոնք չափազանց վնասուած էին Հայաստանի և Փոքր Ասիոյ մէջ Մահմետականներու տիրապետած հողերուն վրայ. այս սարսափէն մղուած՝ անոնք դէպի Արեւմուտք դիմած էին, և այսպէս անընդհատ Հայ ազգը տեղափոխուած էր Արեւմուտք, քրիստոնեայ երկիրներ։

Սելջուկները, գիտենք որ բաւական մոլեռանդ էին և իրենց նոր տիրապետած երկիրներու բնակիչները կ'ահաբեկէին անողոք խստութեամբ՝ երբ ա-

*նոնք կը դիմադրէին, ինչ որ անխուսափելիօրէն պատճառ պիտի ըլլար նոր տեղշարժի մը, որ գուցէ մեծ թափով պիտի շարունակուէր, եթէ Սելջուկները — Տուղրիլի և Ալփասլանի հրոսները — չփոխէին իրենց վայրագ ու արիւնարբու վերաբերմունքը, զոր Հայաստանի հանդէպ ցոյց տուին։*

*Արեւելքի պատմութեան դարձակէտերէն մին հանդիսացող Մանազկերտի ճակատամարտէն* (1071) *ետքը, Սելջուկները Աւատապետական կարգերով մեծ պետութեան մը վերածուեցան ժամանակի ընթացքին։*

*Ալփասլան, Էրզրումը տուաւ Սուլթուկ Թուրքմէն Ամիրային, Երզնկան Մունկուճակին և անկէ դէպի Արեւմուտք մինչեւ Ալիսի բերանը, շնորհեց Դանիշմենտի և արտօնեց որ անոնք իրենց նուաճած երկիրներուն վրայ ապահարկ իշխեն, միայն յանձնարարեց որ միաբան գործեն և ջանան տկարացնել քրիստոնեայ իշխանութիւնները և ժողովուրդը ընտելացնել իսլամական տիրապետութեան* (*հմմտ. Կոմմագենացի*, Փիլարտոս Հայր, 20—21)։

*Սուլթուկի և Մանկուճակի տրուած հողերը արդէն նուաճուած էին, բայց Դանիշմենտ, նոր պիտի նուաճէր իրեն սահմանուած երկիրները։ Ուրեմն* 1071*ին կը հիմնուէր տեսականապէս Դանիշմենտի իշխանութիւնը, որ* 1071*էն մինչեւ* 1175 *տիրած է, երբեմն Բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող Անատոլուի մէկ մասին* (1), *և իր մէջ ունէր Սեբաստիա, Ամասիա, Մարսըվան, Թոգատ, Նիքսար, Չորում, Ալպիստան և Մալաթիա քաղաքները, որոնց վրայ ժամանակաւորապէս աւելցած էին ետքը Կեսարիա, Չանկըրը, Գասթէմունի և այլ քաղաքները* (*հմմտ.* Պատմ. Եւդոկիոյ Հայոց, 191—192)։

*Դանիշմենտ Ահմէտ Տայլուի այս իշխանութիւնը հիմնարկած օրերուն* (1074*ին*) *Ալփասլանի որդին և յաջորդը Մելիք Շահ, Արեւմուտքի ընդհանուր հրամանատար կը կարգէր իր եղբօրորդին՝ Սիւլէյման Իպն Գութուլմիշը* (✝ 1086) *և անոր արտօնութիւն կու տար աշխարհակալութիւններ ընելու և ժառանգական իշխանութիւն մը հիմնելու Ալիսէն մինչեւ Կ. Պոլիս և անկէ բոլոր ծանօթ և անծանօթ երկիրներու վրայ* (Gibbon, VI., 258 Finlay, «Byzantine Empire», 521, *հտ*, 1 Nicéphore, Bryenn, 25, *Կոմմագենացի*, Նոյն, 42 *և* 33, Հայ Կեսարիա, 483 *և* Պատմ. Եւդոկիոյ, 193) *Սիւլէյման իր շուրջը կը հաւաքէ, ըստ աւանդութեան*, 100,000 *Թուրքմէններ, որոնք իր բանակին պիտի հետեւէին, որպէսզի նուաճուած վայրերը բնակութիւն հաստատէին.* (Պատմ. Եւդոկիոյ, 193)։

*Մելիք Շահի հրամանով, Դանիշմենտ, Սիւլէյման Իպն Գութուլմիշի և իր Թուրքմէններուն թոյլ տուաւ որ իր հողերէն անցնին և Ալիս գետին արեւմտեան կողմը հաստատուին* (Պատմ. Հայ Կեսարիոյ, 484), *քովը Դանիշմենտ էմիրութեան։ Այսպէս, Փոքր Ասիոյ մէջ հիմնուեցան ուրիշ իսլամ իշխանութիւններ — ինչպէս Իզմիրի, Նիկիոյ, Պոնտոսի և այլ էմիրութիւնները։*

*Առնցմէ Դանիշմենտեանը այսպէս ամէնէն եղերական դերը կատարեց Փոքր Ասիոյ պատմութեան մէջ, նպաստելով Սելջուկներու ներխուժումին դէպի Փոքր Ասիա։ Անոնք էին որ վերջ տուին նաև քրիստոնեայ տիրապետութեան վերջին ստուերներուն, Կապադովկիոյ մէջ և հոն հիմնեցին պետութիւն մը, որ ո՛չ միայն աւելի հին էր քան Ռումի Սուլթանութիւնը, այլ թէ՛ առաջ և թէ՛ վերջն ալ երկար ատեն անկէ շատ զօրաւոր և կարեւոր եղած է։* «Սելջուկեան պետութիւնը փոքր եւ անշան էր եւ չհասաւ կարեւորութեան մինչեւ որ... Կլըճ Ասլան Բ. (1176) ջնջեց Դանիշմենտները եւ խլեց անոնց սեփականութիւնները» (Prof. M. T. Houtsma, Encycl. Britanica, 9th ed. Vol, XXI. 636, *Կոմմագենացի*, Փիլարտոս, 52):

*Եթէ Դանիշմենտեան իշխանութիւնը նախապէս կազմուած չըլլար և ժամանակ մը ձեռնտու և պաշտպան չկանգնէր Ռումի Սուլթանութեան, անիկա երբեք պիտի չկարենար ոչ հաստատուիլ և ոչ ալ պաշտպանել իր գոյութիւնը* (Պատմ. Եւդոկիոյ, 194)։

*Արդարեւ Դանիշմենտ Ահմէտ Տայլու ոչ միայն անցք տուաւ Սիւլէյմանի և անոր Թուրքմէններուն, այլ իր յաջորդը՝ Մուհամմէտ Իպն Իսմայիլ Կիւմիւշթէկին* (1084—1106) — *երբ ան սպաննուած էր* 1086*ին Դղուշին դէմ կռուած ատեն — ապաստան տուաւ անոր որդւոյն՝ Գլըճ Ասլանի* (1092—1107) *և նպաստեց որ ան իր հօրը պետութիւնը վերահաստատէ։*

*Փոքր Ասիոյ մէջ այս ձեւով կազմուեցան իրարու դրացի և ի սկզբան բարեկամ, երկու իսլամ պետութիւններ, որոնք կը թուի թէ իրենց տիրապետութեան ենթարկուած քրիստոնեաները սիրաշահող քաղաքականութեան մը հետեւած են։ Մատթէոս Ուռհայեցի* (568—9) *և Վարդան Պատմիչ* (112—3), *գրեթէ նոյն բառերով կ'ողբան Դանիշմենտի մահը.* «Մեռաւ Դանիշմանն մեծ Ամիրայն Հոռոմոց աշխարհին որ լեալ (էր) յազգէն Հայոց. այր բարի եւ շինող աշխարհի եւ էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, եւ եղեւ սուգ մեծ ի վերայ քրիստոնէից որք էին ընդ ձեռամբ նորա»: *Երկու Հայ պատմագիրներուն այս արտայայտութիւնը ցոյց կու տայ թէ Հայերը գոհ էին անոր իշխանութենէն։*

*Գալով Սիւլէյմանին, որ յաջողած էր Գոնիան մայրաքաղաք դարձնելով բաւական կանոնաւոր պետութիւն մը հիմնել Փոքր Ասիոյ սիրտին վրայ, կըրցաւ սիրաշահիլ իր տիրապետած երկիրներուն մեծ մասամբ քրիստոնեայ — Յոյն, Հայ և Ասորի — բնակչութիւնը և չամայացնել Փոքր Ասիան։*

*Արդէն բացատրուեցաւ (վերը, էջ* 61) *թէ այս պետութեան հիմնադիրը՝ Սիւլէյման Իպն Գութուլմիշ, ի՛նչ վարպետ քաղաքականութիւն մը ընդգըրկեց՝ կրօնական ազատութիւն տալով ամէնուն և վերջ դրաւ Օրթոտոքսներու բացած հալածանքներուն։ Ան ընտրեց նաև տնտեսական նոր ուղղութիւն մը, որովհետև ապահարկ ըրաւ երկրագործները և ջնջեց ստրկութիւնը ու միայն գլխահարկ առաւ։*

*Այսպէս, չահեցաւ բնակչութեան համակրութիւնը և նպաստեց տէրութեան նիւթական բարօրութեան, ինչպէս նաև բարգաւաճումին։ Այս պատճառով՝ Ռումիներու պետութեան բնիկները իսլամական լուծին համակերպեցան և շէն ու ծաղկեալ Փոքր Ասիան իր վիճակին մէջ գրեթէ անցաւ Դանիշմենտ էմիրներու և Սուլթաններու տիրապետութեան։*

---

(1) Այս իշխանութեան պատմութիւնը՝ որքան կրցած եմ՝ մանրամասն տուած եմ այլուր (տես. Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց, Գահիրէ 1952, էջ 188—217) Հայ եւ օտար բազմաթիւ աղբիւրներու համեմատութեամբ:

Որչափ ատեն որ այս երկու իսլամ պետութիւնները իրարու բարեկամ էին և նոյն եղանակով կը վարուէին իրենց Հայ հպատակներուն հետ՝ Հայերը չէին կրնար որևէ դժգոհութիւն ունեցած ըլլալ։ Բայց երբ այս երկու իշխանութիւններուն հասարակաց թշնամի դարձան Խաչակիրները, — որոնց դէմ անոնք մաքառեցան և մեծ չարիք հասցուցին (մանրամասնութիւնք տես. Պատմ. Եւդոկիոյ, էջ 196—8). գանգատելու պատճառ մը չունէին քրիստոնեաները, հակառակ անոր որ քրիստոնեայ Խաչակիրները կը կռուէին իսլամներուն հետ և Հայերը միամտաբար անոնց կը գործակցէին, նոյնիսկ իրենց կրօնական պետերով. այս երկու իսլամ իշխանութիւնները Հայոց չարիք չհասցուցին (Պատմ. Հայ Կեսարիոյ, 497)։

Այս երկու պետութիւնները սակայն, մինչեւ վերջը չկրցան համաձայն գործել և եկաւ ատեն մը որ իրարու թշնամացան և իրարու դէմ մաքառեցան, նոյնիսկ քրիստոնեաներու հետ զինակցելով։ Այս պայքարը պատճառ եղաւ որ Դանիշմենտեանք բաժան բաժան ըլլան և տկարանան (Պատմ. Եւդոկիոյ, 202—217) և ի վերջոյ Սելջուկ Ռումի Կայսրութեան ենթարկուին 1175ին։

Այդ թուականէն յետոյ Փոքր Ասիոյ միակ տիրապետները եղան Իկոնիոյ Ռումի Սուլթանները(1), որոնք շարունակեցին մինչև 1307 տեւել և դիմակալել Մոնկոլ հարուածները և որևէ կերպով պահել իրենց գոյութիւնը Թաթար գերիշխանութեան տակ, մինչև որ Օսմանեան պետութեան ենթարկուեցան։

Մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը իր գոյութիւնը պահող Սուլթանութեան ջնջումը՝ Հայերը չլքեցին անոր հողերը և աւելի հեռու վայրեր չգացին։ Ընդհակառակն, նոյնիսկ նոր գաղթականներ եկան հաստատուիլ Ռումի Սուլթանին հողերուն վրայ, որովհետեւ Սիւլէյմանի յաջորդները տեղացիներուն համակրութիւնը շահելու քաղաքականութիւնը շարունակեցին և իրենց իշխանութիւնը ամրապնդեցին, մինչ Բիւզանդական կայսրութիւնը օրէ օր աւելի կը քայքայուէր, և նոյնիսկ բաժան բաժան ըլլալու վտանգին տակ էր։ Օրինակի համար 1090ին կազմուած էր ուրիշ Հռոմ կայսրութիւն մը Յոնիականի ափերուն վրայ, Զմիւռնիա մայրաքաղաքով, որ թերեւս տեւականանար եթէ երեք տարուան կարճ միջոցին մէջ զոհ չերթար Բիւզանդական նենգութեան։

Հակառակ Բիւզանդական կայսրերու ճիգերուն՝ Իկոնիոյ Սուլթանութեան ալ դաւելու և այս յարատեւ պայքարին, որուն կ'աջակցէին երբեմն Խաչակիրներն ալ, ան իր գոյութիւնը պահեց մինչեւ 1308։

Ռումի Սուլթանները իբրեւ յաջորդ Հռոմ կայսրերուն, որոնց տիտղոսը կը կրէին, իրենց պետութեան կազմակերպութիւնը ընդօրինակեցին Բիւզանդական կայսրութենէն և շինութիւններով օժտեցին երկիրը։ Անոնք իրենց երկիրը զարգացնելու համար կը կարօտէին քաղաքակրթութեան աւելի ընդունակ ազգերու օժանդակութեանը, հետեւաբար հողագործութիւնը կազմակերպելու և վաճառականութեան ու արուեստներու զարկ տալու համար շարունակ քրիստոնեայ ազգեր հրաւիրեցին իրենց երկիրները։

(1) Անոնց պատմութիւնը (տես. Պատմութիւն Հայ Կեսարիոյ, էջ 503–522)։



ԺԳ. դարուն սկիզբը Ղայասէտին Կայ Խոսրով Սուլթանը 1204—1210) Բիւզանդական կայսրութեան հպատակները զանազան խոստումներով հրապուրած և իր երկիրը շէնցուցած է (Գելցեր, 381)։

Մասնաւորապէս Ալաէտտինի (1220—1235) իշխանութեան շրջանը՝ այս պետութեան փառքի շրջանն է, ուր Սելջուկեանց կարծես թէ միայն կոտորելու, փճացնելու և քանդելու սահմանուած ցեղը կ'արտադրէ Բիւզանդացիներու և Պարսիկներու նմանութիւնով հրաշակերտներ, զորս բնական է կը յղանար ոչ թէ Սելջուկ, այլ Յոյն, Հայ և ասորի միտքը։ Իկոնիոյ Սուլթանները քրիստոնեայ տաղանդը գնահատելու ուշիմութիւնը ունեցած են։

Արդէն իրենց պետութեան սահմանները լի էին Հայերով, զի Փոքր Հայքի մեծ մասը։ մանաւանդ Սեբաստիան իր հայաշատ բնակչութեամբը և հայաբնակ շրջականներովը, ինչպէս նաեւ Բիւզանդական կայսրութեան Արմենիական թեմին մեծագոյն մասը, այս երկիրին սահմաններուն մէջ էին։

Տրուած արտօնութիւնները, ընծայուած պատիւը իբրեւ ճարտար ձեռքերու և ճարպիկ վաճառականներու, աւելի բազմացուցին Հայերու թիւը այդ շրջանակներուն մէջ։

Այս նոր գաղթականներուն մէջ ոչ նուազ կարեւոր թիւ մը կը կազմէին Հայերը, որոնք Տաւրոսի կիրճերէն անցնելով մերձակայ երկիրներուն մէջ կը հաստատուէին։ Այսպէս, Կեսարիոյ, Տիանայի (Նիկտէ և Պօրի կողմերը, Լարանտայի (Գարամանի), Իկոնիոյ (Գոնիայի) և այլ մերձաւոր շրջանակներու մէջ Հայեր կը հաստատուէին և ապրելու ու գործելու դիւրութիւններ կը գտնէին։

Ինչպէս ըսինք՝ Սելջուկ պետութիւնը պէտք ունէր գործօն ձեռքերու, ճարտար և հնարամիտ ժարդոց և մանաւանդ ժրաջան երկրագործներու, որոնք կը պակսէին այդ վաչկատուն ժողովրդեան։

Հայերու քաղաքացիական և երկրագործական աշխատութեանց միտումը և յարմարութիւնը՝ արդէն ուրիշ վայրերու մէջ փորձուած՝ անուշադիր չմնաց Սելջուկ Ռումի Սուլթաններէն, որոնք մեծ յարգ և լաւ ասպնջականութիւն ընծայեցին Հայոց։ Անոնք մասնաւոր ջանքեր ալ ըրին Հայոց թիւը շատցնելու իրենց երկիրին մէջ։ Այնպէս որ բաւական ստուարաթիւ Հայ բնակչութիւն մը Փոքր Հայքի և Փոքր Ասիոյ՝ Կիլիկիոյ մերձակայ վայրերուն մէջ գոյութիւն առաւ՝ Իկոնիոյ Սուլթանութեան հիմնարկութենէն քիչ ետք։

ԺԲ. դարուն վերջերը կը տեսնենք որ Սելջուկ Սուլթաններու և Դանիշմենտ էմիրներու տիրապետած Հայկական գաւառներու մօտ վայրերը լեցուած են Հայերով, որոնք երկիրին տնտեսական կեանքին վերելքին մէջ կարեւոր դեր մը կը կատարեն։

Այս երկիրներուն մէջ, ուր կրօնական մոլեռանդութեան երեսէն նոյնիսկ եկեղեցիին ժամաձայնը արգիլելու փորձեր ըրած էին Բիւզանդացիները — ինչպէս Վասիլ Բ.ի ատեն (տես ՊՀԳ. Ա. 250) — Սելջուկ տիրապետութեան ժամանակ Հայ եպիսկոպոսական աթոռներ գոյութիւն կ'առնէին։ Սենեքերիմի օրերէն հաստատեալ Սեբաստիոյ առաջնորդական աթոռէն անջատ, նոյնիսկ Սեբաստիոյ աթոռակալները իրենց հնութեան և նախապատուութեան իրաւունքովը կը նկրտէին Ռումի Սուլթանին

երկիրներուն կաթողիկոսը դառնալ, ինչպէս Անանիա Սեբաստացի (+1208),
որ 1197էն սկսեալ Առաջնորդութիւն կ'ընէր ու 1202ին ինքզինքը կաթողիկոս
հռչակեց (Կիրակոս, 70), անշուշտ օգտագործելով Սելջուկ Սուլթանին Հայե-
րու նկատմամբ ունեցած բարեհաճակամութիւնը։ Ասով միայն կրնայ մեկնուիլ,
Սելջուկ Ռումի Սուլթանութեան ընդարձակ հողերուն վրայ — որոնք կը հաս-
նէին Եփրատէն դէպի արեւմուտք, մինչեւ Յոնիական և Վոսփոր, Միջերկրա-
կան Ատալիոյ կողմէն և մօտեցան՝ Մարմարայի եզերքներուն Նիկիոյ կողմէն՝
Սաքարիայի հովիտին տիրապետութեամբ, ինչպէս նաև Սև ծովի, Գաստէմու-
նիի և Սամսոնի կողմէն՝ այնքան շատ թիւով քրիստոնեաներու գոյութիւնը։
Արդարև, «անոնց երկիրին մէջ տասը մարդերէն մէկը Սարակինոս (իմա մահ-
մետական) է, գրեթէ ամբողջութեամբ Հայեր են եւ Յոյներ», ինչպէս ԺԳ.
դարուն (1253—1259)) անկէ իբրեւ պատուիրակ անցնող Ուիլեամ Ռուբրուք
կը վկայէ (Յովհ. Յակոբեան, Ուղեգրութիւն, Ա. 30)։ Բնակչութեան բաղ-
կացուցիչ տարրերու այս համեմատութիւնը եթէ մէկ կողմէ արդիւնքն էր
այս մահմետական իշխանութեան հանդուրժողութեան, միւս կողմէն անիկա
կարեւոր ազդակ մըն էր հարկադրելու համար զանոնք՝ որ ընդգրկէին սիրա-
շահող քաղաքականութիւն մը հանդէպ քրիստոնէից, որոնց մէջ Հայերը մե-
ծամասնութիւն կը կազմէին, քանի որ ոչ միայն անցեալ միտքով առնուած
Փոքր Հայքը և Կապադովկիան Հայերով լեցուն էին, այլ նաեւ իր լաւագոյն
սահմաններով Հայկական բանակաթեմին բովանդակ տարածութիւնը, ուր հայ-
կական ծագումով բնակչութեան մը գոյութիւնը կը կանխէր դարերով Սել-
ջուկ տիրապետութիւնը։

Բնական է՝ Հայերը մեծապէս օգտուած են այս առաւելութիւններէն,
զորս այս պետութեան Սուլթանները կ'ընծայէին իրենց հպատակներուն։ Ա-
նոնք մեծ յարում և անձնուիրութիւն ունեցած են հանդէպ այս պետութեան,
որ փոխադարձաբար մեծ վստահութիւն ցոյց տուած է Հայոց, որոնք եկուոր
էին և Յոյներու պէս երկիրին տէրերը ըլլալու յաւակնութիւնը չունէին։ Ուս-
տի, Հայերը գրեթէ առանձնաշնորհեալ դիրք մը ունէին (տես. Պատմ. Հայ
Կեսարիոյ, 523—524)։ Նոյնիսկ Հայերուն մասնաւոր շնորհներ եղած են և
յունական եկեղեցիներ ու վանքեր անոնց տրամադրուած են (տես. Պատմ.
Հայ Կեսարիոյ, 526 և Պատմ Եւդոկիոյ Հայոց, 241)։

Նոյնպէս, բոլորովին բացառիկ երեւոյթ մը ըլլալով, այս մահմետական
երկիրին մէջ քրիստոնեաները զինուորական ծառայութիւն ըրած են։ Սմբատ
(112) և (Հեթում 38 - 39) կը վկայեն թէ «յամենայն ազգաց քրիստոնէից» —
լատիններն ալ մէջը ըլլալով — վարձկան զինուորներ առնուած են։ Անոնց
մեծ մասը Հայեր էին ապահովաբար, քանի որ այս պետութեան համար, որ
Բիւզանդական կայսրութեան դէմ կը մաքառէր ընդհանրապէս Հոռոմները
վստահելի չէին կրնար ըլլալ։

Կիրակոս Գանձակեցի (120) կը հաստատէ Մուհամմէտ Ճելալէտտինի դէմ
երեք խալամ վեհապետներու մղած պատերազմին մէջ Հայ և Լատին զինուոր-
ներու գոյութիւնը, և միամտութեամբ կ'ըսէ թէ «Սուլտանն զի առ բարե-
պաշտ էին, ոչ ապերախտ լինէին զօրուն քրիստոնէից զի գիտացին թէ ի ձեռն
նոցա ես սոր զյաղթութիւնս» (նոյն)։



Խալիլ Էտհէմ, Թուրք պատմիչը (Գայսերի շեհրի 79) կը հաստատէ Կոյ
Խոսրովի 1243ին Մոնկոլներու դէմ մղած պատերազմին Հայերու և Ֆրանկ-
ներու բերած աջակցութիւնը. իսկ Բրիտանական համայնագիտարանը՝ կ'արձա-
նագրէ Սուլթաններուն վստահութիւնը իրենց քրիստոնեայ զունդերուն վրայ
առաւել քան Թուրք զինուորներուն, որոնք շատ օգտակար չէին կանոնաւոր
պատերազմի մը մէջ (տես. Պաs. Հայ Կեսարիոյ. 526)։ Նոյնպէս բացորոշ է
որ քրիստոնեաները կարեւոր պաշտօններ կը վարէին։ Յիշենք Քրիստափոր
«դպրապետ» կոչուած պաշտօնատարը (Միխայէլ Ասորի 444), որ 1162ին գնաց
Բիւզանդիոն, զինակցութեան առաջարկ ներկայացնելու Կայսեր և յաջողեցաւ
Մանուէլ Կայսեր ու Գլըճ Ասլանի միջև տեսակցութիւն մը կարգադրել։

Այս տեսակ բազմաթիւ փաստեր կան, որոնք կը հաստատեն թէ քրիստոն-
եաները ստրուկ և անարգուած տարր մը չէին նկատուած, այլ կը վայելէին որոշ
չափով և ժամանակին ըմբռնումներովը բոլոր թոյլատրելի իրաւունքները և
ազատութիւնները իբրև քաղաքացի, մանաւանդ տնտեսական և կրօնական մար-
զերուն մէջ։ Իրողութիւններ կան, որոնք ցոյց կու տան Ռումի Սուլթաննե-
րու լայնախոհութիւնը (տես. Հայ Կեսարիա, 526—527), ոչ միայն իրենց
քրիստոնեայ բնիկ հպատակներուն, այլ նաև եկւոր Եւրոպացի վաճառական-
ներու և Լատին կրօնաւորներու հանդէպ։ Այս մասին դեր մը կատարած կը-
նան ըլլալ Յոյն, Հայ և Վրացի սուլթանուհիները (Պատմ. Հայ Կեսարիոյ,
527), որոնք անշուշտ իբրեւ ամուսին և մայր Սուլթաններու, ազդեցութիւն
ունեցած են։ Որոշ տուեալներ կան, որոնք կը հաստատեն թէ քրիստոնեաները
նպաստաւորուած էին այս պետութեան մէջ և աներկբայ կարելի է ըսել թէ
Հայերը ապահով կեանք կը վարէին, իբրեւ ժրաջան և աշխատասէր երկրա-
գործ, յաջողակ արհեստաւոր և գործունեայ ու ճարպիկ առեւտրական։ Ասոր
համար՝ Հայերը չեն շարժած իրենց տեղերէն և նոյնիսկ ուրիշ վայրերէ Հա-
յեր գացած հաստատուած են այս պետութեան սահմաններուն մէջ, ատ անդ,
վասնզի տեսած են Սուլթաններու քրիստոնէից հանդէպ ունեցած համակրու-
թիւնը — որոնց փաստերը շատ են, ինչպէս ըսինք — բացի քանի մը վեհա-
պետներու(1) պատահական թշնամութենէն (Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց 220)։

Սուլթաններու այս բարեհաճակամութիւնը խայծ մը եղած է հրապուրելու
ուրիշ Հայեր որ աշխատութեան, վաճառականութեան և շահու համար Դանիշ-
մենտ Էմիրներու և Ռումի Սուլթաններուն երկիրները գաղթեն, մանաւանդ որ
հակառակ անոր որ քրիստոնեաներու թիւը չափազանց շատ էր — բնակչու-
թեան 10էն 9ը — Սուլթանները սիրով ընդունած են դրացի երկիրներու քրիս-
տոնեաները։ Սուլթանները զանոնք կը հրաւիրէին մեղմութեամբ և երբեմն ալ
բռնական միջոցներով։

Այսպէս, ԺԲ. դարու ամբողջ տեւողութեան, բոլոր Ռումի Սուլթանները
և Դանիշմենտ Էմիրները աշխատած են իրենց երկիրին մէջ քրիստոնեաներու
թիւը շատցնել, նոյնիսկ իրարմէ կորզելով Հայերը։

---

(1) Ինչպէս Դանիշմենտ Մելիք Մուհամմէտ Իպն Կիւմիւշթէքին (1136—1143) որ հա-
կառակ էր քրիստոնեաներուն (Ուռհ., 463)։

Այն մրցակցական պայքարին մէջ, զոր Սելջուկ Ռումի Սուլթանները մղեցին Դանիշմէնտ Էմիրներու դէմ և որ ի վերջոյ յանգեցաւ Դանիշմէնտեան իշխանութեան հողերուն Իկոնիոյ Սուլթաններուն կողմէ գրաւման և այս իշխանութեան ջնջումին, Հայերու կարողութեանց հանդէպ գնահատանքը բացորոշ կը տեսնուի։

Փոքր Ասիոյ մէջ հաստատուած այս երկու իսլամ իշխանութիւնները, ինչպէս կը տեսնուի, միշտ աշխատած են իրենց Հայ հպատակները պահել և նոյնիսկ աւելցնել, և ատոր համար, ինչպէս վերը յիշեցինք, անոնց տուած են առանձնաշնորհումներ, որոնցմէ մէկը և գլխաւորն էր կրօնքի ազատութիւնը և եկեղեցական նուիրապետութեան մը հաստատումը Դանիշմէնտ իշխանութեան մայրաքաղաքին՝ Նիքսարի մէջ՝ կազմութեամբ Հայ եպիսկոպոսութեան մը (Պատ. Եւդոկիոյ Հայոց 225 և 622), հաւանօրէն իբրեւ ներկայացուցիչ Հայ համայնքին և առաջնորդ (Նոյն) և Իկոնիոյ Սելջուկ պետութեան մէջ շատ մը Հայ եպիսկոպոսութիւններու ստեղծումովը (Հայ Կեսարիան, 535—541)։

Ասոնք բոլորը կը հաստատեն որ Դանիշմէնտ Էմիրութեան և Սելջուկ Ռումի կայսրութեան մէջ Հայերը որոշ չափով վայելած են անդորրութիւն և բարօրութիւն։ Սակայն Դանիշմէնտի իշխանութիւնը հազիւ դար մը (1071—1175) տեւած է, որովհետեւ Եաղուպ Ասլանի մահէն (+1165) ետք անիկա մատնուած է անապահովութեան և ներքին խռովութիւններու, երկուքի բաժնուած ըլլալով։ Հետեւաբար թէ՛ ներքին և թէ՛ արտաքին պատերազմներու հետեւանօք՝ վերջ գտաւ անիկա Հալէպի Նուրէտտին Սուլթանին մահէն ետք, երբ «բազում գործակալք յարեան ի վերայ իւրեանց եւ կոտորեցին զմիմեանս եւ եղեւ յոլով վնաս եւ պակասութիւն քրիստոնէից վասն շփոթոյ իւրեանց այնոցիկ» (Միք. Ասորի 468)։

Այս փոխանցման խառնակ շրջանը բարեբախտաբար հազիւ տասը տարի տեւած է և Դանիշմէնտներու երկիրը կցուած է Սելջուկ Ռումի կայսրութեան, որ քրիստոնեաներու նկատմամբ, ինչպէս արդէն բացատրուեցաւ, նոյն բարեացակամ տրամադրութիւնը ունէր։

Եւ այս ոչ բոլորովին աննպաստ և պատահական կերպով։ Սելջուկ իշխողները համոզուած էին որ իրենց ցեղակիցները անբարեյոյս էին և անընդունակ, երկրին երկրագործութիւնը, արհեստները և վաճառականութիւնը վարելու։ Այս վիճակը շատ լաւ բացատրած են Հեթում պատմիչ (19) և Մարքոյ Փոլոյ (Պատ. Եւդոկիոյ Հայոց, 246)։

Հետեւաբար, ինչ որ ըրին Դանիշմէնտները, նոյնը ըրին Ռումի Սելջուկները և Հայերուն թիւը ստուարացուցին Անատոլուի մէջ, զանոնք հոն բերելով իբրեւ գերի կամ իբրեւ գաղթական։

Այսպէս, պատմութենէն գիտենք որ Իկոնիոյ Մասուտ (1116—1156), Ասէտտին Գըլըճ Ասլան Բ. (1156—1197), Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1191—1193 և 1204—1211), Ասէտտին Կայ Քաւուս Ա. (1211—1220) և Ալաէտտին Կայ Խուպատ Ա. (1220—1246) Սուլթանները յաջորդաբար մասնաւոր ջանք ու ճիգ թափած են իրենց երկիրին մէջ քրիստոնեաներու — յատկապէս Հայերու — թիւը բազմացնելու։ Առաջինը՝ Մասուտ, չէ՛ վարանած բռնական միջոցներու ալ դիմելու, այնպէս որ՝ երբ Մարաշի վրայ յարձակեցաւ, Ճոսլին Լատին իշխանը ապաստանեցաւ ամրոց մը, երկիրը անպաշտպան ձգելով։ Մասուտ ուրիշ կերպով վնաս չկարենալով հասցնել՝ «հրոյ ճարակ արարեալ զօրս եգիտ յաշխարհին եւ բազում այն էր, որ խաբէութեամբ երդնուին յանուն Մեծին Աստուծոյ եւ իջուցանէին յամրոցաց զՔրիստոնեայսն ԳԵՐԻ ՎԱՐԵԱԼ ԶԱՄԵՆԵՍԵԱՆ» դարձուց «անդրէն զերեսս իւր տանելով զառեալ գերեալսն յաշխարհն իւր» (Գրիգոր Երէց 501)։ Ճոսլին զայն հետապնդելու պաշտօն տուաւ Հայոց Գրիգոր Տղայ կաթողիկոսին (1113—1166) եղբօրը և Կարկառի տէր (Ծորտ-Իշխան) Վասիլ Պահլաւունիի, սակայն Սուլթանին զօրապետը՝ Խարա-Արսլան, որ Խարբերդի կողմերուն կուսակալն էր՝ «ի վերայ անկեալ զօրացն քրիստոնէից եւ ձերբակալս արարեալ զամենեսեան իբրեւ ոգիս չորս հարիւր, ըմբռնեալ եւ զՎասիլն... եւ տարեալ առաջի մեծի դղեկին Կառկառայ — քանզի անդ էին կինն եւ որդիք Վասիլին — եւ առեալ երդումն հաւատարիմ յամիրայէն վասն կալեալ քրիստոնէից զօրաց զոր ըմբռնեցին, ԶԻ ՏԱՐՑԵՆ ԶՆՈՍԱ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՄԲ ՑԵՐԿԻՐՆ ԻՒՐԵԱՆՑ ԱՌԱՆՑ ԴԱՒԻ ԻՆՉ ԳՈՐԾԵԼՈՑ ՆՈՑԱ։ Զոր բռնաւորն յաղագս սիրոյ մեծի աւանին ոչինչ յապաղեաց նմա, եւ երդմամբ զամենեսեան ի ձեռն հաւատարիմ զօրաց իւրոց առաքեաց մինչեւ ի Սամոսատ։ ԵՒ ԶԻՇԽԱՆ ԶՎԱՍԻԼ ԸՆԴ ԻՒՐ ՑԱՐԵԱԼ ՑԵՐԿԻՐ ԻՒՐ ՄԵԾԱՒ ՓԱՌԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՏՈՒԵԱԼ ԵՐԿԻՐ ՈՐՊԷՍ ՍԻՐԵԼԻ ԵՂԲՕՐ ԻՒՐ» (Նոյն)։



Մասուտի յաջորդը և իր որդին Ասէտտին Գըլըճ Ասլան Բ. (1156—1193) իր հօրը ուղղութիւնը շարունակեց և մեղմութեամբ և բարեացակամութեամբ վարուեցաւ Հայերու հետ, հակառակ անոր որ ինքը արիւնկզակ ջարդարար մըն էր, վասնզի հազիւ գահակալած, սպաննեց իր երկու եղբայրներէն մին և միւսը Անկիւրիոյ և Ջանկըրի կողմերը փախչելով կըցաւ իր անձը ազատել։ Գըլըճ Ասլան, յաջորդաբար սպաննեց նաև երկրին մեծամեծները և ամիրաները, կամ կուսակալները, ինչպէս նաև իր հօրը գլխաւոր պաշտօնատարը (մեծ Ամիրան = Վէզիրը) և Գատըն (դատաւորը)։ Ասիկա տեսնելով Եաղուպ Ասլան «մեծ ամիրան, որ տէր էր Սեբաստիոյ եւ Գամիրաց աշխարհին» «ոչ հաւանեալ նմա, զօրաժողով արարեալ զբազմութիւն հեծելոց, եկն յերկիրն Լիկանդոնին եւ տարեալ զքրիստոնեայս յերկիր իւր եւ զամուրն Լառիս եւ զայն եւս էառ»։

Գըլըճ Ասլան պատերազմի պատրաստուեցաւ, սակայն առանց ճակատելու երկու ոսոխները խաղաղութիւն կնքեցին։ Սակայն Եաղուպ-Ասլան երկու ամիս յետոյ «եկն գաղտագողի յերկիրն Ջահնայ ի մայրաքաղաքն Ապլաստա եւ որպէս միտք մարդոյ հաստատեալ է ի խնամս չարեաց ի մանկութենէ, մոռացեալ էր զգութ հայրենի սիրութեան Սուլտանին»։

Ասիկա լսելով Սուլթանը փութաց Եաղուպ Ասլանի դէմ երթալ վրէժ լուծելու համար։ «Եաղուպ Ասլան իմացեալ զգալուստ նորա, առեալ զերկիրն ամենայն ոգիս իբրեւ երկոտասան հազար, տարեալ յերկիր ՈՉ ԳԵՐՈՒԹԵԱՄԲ։ Եւ Սուլտանն ոչ ժամանեալ նմա յերկիր իւր, քանզի ընդ մոլար ճանապարհ գնաց, տանելով ԶՔՐԻՍՏՈՆԵԱՅՍՆ եւ Սուլտանն մտեալ յերկիրն Լիկանդոնին եւ նոքա ձանձրացեալ յաճառոր եւ ի մեծ դժարէն նորա, եւ

յօժարութեամբ զհետ Սուլտանին՝ երդմամբ ընկալեալ զնոսա ոչ տանելով յետս զոր գնացին զհետ նորա: Եւ Եաղուպ Ասլան ամրացուցեալ զտարեալսն յերկիր իւր, եկն բանակեցաւ ընդդէմ Սուլտանին ճակատ առ ճակատ» (*տես. Գրիգոր Երէց* 519) *կրկին միջնորդութիւններ եղան և երկու անգամ ևս արգիլուեցաւ Սուլթանը իր ապստամբ պաշտօնեան պատժելէ և համաձայնեցան իրարու հետ.* «սէր առնելով գլուխ առ գլուխ» *և* «ոչ դարձուցանելով զտարեալ քրիստոնեայ սըն» (*Գր. Երէց*, 520)։

*Այս քրիստոնեաներուն մէջ անտարակուսելի է որ Հայերը փոքրամասնութիւն չէին կազմեր, վասնզի մասնաւորապէս Ճահան գաւառը վաղուց հայաբնակ էր։*

*Այս տողերը ամբողջ դրութեան մը պատկերացումն է, զի այդ* ոչ-գերութեամբ *տանիլը, կամ քրիստոնեաները իրենց ստացուածքներուն վրայ բնակեցնելը Ռումի Սելջուկներուն ուղղութիւնը և մեթոտը եղած է։ Ապաուրեմն, բնաւ կասկած չկայ որ Հայերը այդ երկիրներուն մէջ, Բիւզանդիոնի տիրապետութեան ժամանակ վայելած բարօրութեան չափ հանգիստ և ապահովութիւն գտած և աճած ու նշանակելի դեր կատարած են։*

*Ասոր գլխաւոր փաստն է Գրիգոր Երէցի վկայութիւնը* (522)՝ *թէ Գըլըճ Ասլան Բ. ամէն կողմ իր պաշտօնատարներուն հրամայած էր* «քաղցր կամօք» *վարուիլ քրիստոնէից հետ։*

*Գըլըճ Ասլան Բ. ինչպէս կ'երեւի՝ առանց արհամարհելու բռնական միջոցները, սիրաշահող կերպեր ալ գործադրած է քրիստոնեաները իրեն կապելու համար։*

*Գրիգոր Երէց կը վկայէ որ Մազուտ և Գըլըճ Ասլան Բ. Սուլթանները իրենց յանձնուած քրիստոնեաներուն վնաս չեն հասուցած։ Գըլըճ Ասլան երբ* 1157*ին Պեհեսնիի անարժան տէրը* «ելեալ ի խրատուէ Սուլտանին իւրոյ, *որ* վասն քաղցր կամօք նայելոյ ի Քրիստոնեայս, նա առաւել եղեւ ի պատուհաս արկանել նախ զպատուական քահանայս եւ սարկաւագունս եւ զպիտանի տանուտէրս եւ զայլ հասարակաց քրիստոնեայս միապէս չարչարէր եւ ծանուցուցանէր զհարկակից բնակչաց անուանի Պեհեսնոյ» (Գրիգոր Երէց, 522)։ *Պեհեսնեցիք* «զանձինս ի մահ եդեալ» *օգնութիւն խնդրեցին Ստեփանէէն՝ յուսալով որ* «թերեւս կարասցեն դաւ գործել չարայուէ բռնաւորին», *սակայն քրիստոնեայ մատնիչի մը սխալ տեղեկատուութիւնը աւելի անտանելի դարձուց իրենց վիճակը և դիմեցին Թշնամի բանակին, որ եկած էր բերդին դէմ։*

*Զօրավարը* «առեալ ... զամենեսեան զարս եւ զկանայս, զծերս եւ զըտղայս, թողլով իւրեանց յօժարութեամբ զինչս եւ զստացուածս հայրենի ժառանգութեանս յոր ի հին եւ յերկար ժամանակաց ծնեալ եւ սնեալ էին եւ ի բարեպաշտ ինչանաց պահեալ իբրեւ որդի սիրելի, տարեալ զհովանունդ եւ զփափկասէր արս յանախորժ եւ յանհանգիստ երկրի բնակեցուցանէր, մինչեւ զմտաւ ածեալ Սուլտանին զաւերումն աստուածապահ բերդին Պեհեսնոյ, զտառապանս քրիստոնէից, ըստ իմաստութեան իւրոյ հնարիւք զաւերումն ի յաւանէն» (Գր. Երէց, 523—524), *արգահատանք ցոյց տուած է և արտօնութիւն՝ դառնալու իրենց տեղերը, այնպէս որ* «սկսան մի ըստ միոջէ գալ բնակիչք տեղւոյն ի քաղցրութենէ Սուլտանին եւ լցաւ քաղաքն ամենայն՝ բարիք եւ ունայն ի գոյից իւրոց» (Նոյն, 524)։



*Յաջորդ պատերազմներուն ընթացքին, հաւանօրէն այս տեղահանութիւնները շարունակուած են և քրիստոնեայ բնակիչները իբրև ցանկալի և շահաբեր որսեր՝ իրարու ձեռքէ յափշտակած են նոյնիսկ ճորտ էմիրները։ Ինչպէս* «Խարասլան տէրն Խարբերդոյ առնէր բազում ընտունելութիւն փախստականացն ի գաւառէն Մելտինոյ» (Միխ. Ասորի, 444), *մինչ Եաղուպ Ասլան կը կը վերցնէ իր երկիրը տանելու համար Ջմշկածագի կողմերէն* 100,000 *անձեր, մեծ մասը հաւանօրէն Ասորի և երկու եպիսկոպոսներ* (Միխ. Ասորի, 448), *Իգնատիոս և Դիոնեսիոս, որոնք* «յետոյ զերծան կենդանի» (Նոյն, 448)։

*Ասոնց նման բարեացակամութեան ուրիշ ապացոյցներ կը տեսնուին Գըլըճ Ասլան Բ.ի* (1156—1193) *կողմէ, ինչպէս կը յիշէ Գրիգոր Երէց* (*տես.* 524—525 *կամ* Հայ Կեսարիա, 532—3), *և Սելջուկ Սուլթաններուն ամէնէն երկրաշէնը՝ Ալայէտտին չափազանց մեծ կարեւորութիւն տուած է քրիստոնեաներուն, հակառակ մոլեռանդներու ընդդիմութեան* (Հայ-Կեսարիա, 533)։ *Յատկապէս վաճառականներու և մշակներու մասին բոլոր իսլամ վեհապետներու հոգածութիւնը կը հաստատուի 7 Մայիս* 1285*ին Կիլիկիոյ Լեւոն Գ. Թագաւորին* (1270—1289) *և Մեմլուք Գալաւուն էլ Մելիք Մանսուրի* (1279—1290) *միջեւ կընքուած դաշնագիրով* (*տես. Թարգմանութիւնը*՝ Բանասէր, 1902, 69—79)։ *Լեւոն Գ. յանձն կ'առնէր ազատ անցք տալ իսլամ երկիրներ երթեւեկող վաճառականներուն և* «իր երկրին մէջ» *գտնուող* «Ռումի երկրին եւ Սուլթանին պետութեան պատկանող մշակներն ... դրկել... Սուլթանին երկիրը» (Նոյն, 77)։ *Լեւոն թէև շատ դժկամակած է բայց ի վերջոյ համակերպած պէտք է ըլլայ* (Պատմ. Հայ Կեսարիոյ, 534) *այս պահանջը գործադրելու։*

*Սելջուկները տնտեսական նկատումներով էր որ Հայերը կը հովանաւորէին և անոնց նախապատուութիւն տուած էին։*

*Դանիշմէնտները և Սելջուկները, որոնք առաջիններն եղած են դէպի Արեւմուտք շարժող ասիական բարբարոսներուն, կը գտնուէին զարգացման նախնական աստիճանին վրայ և գրեթէ վրանաբնակի կեանք ունէին և նոր կը վարժուէին նստակեաց կեանքի։ Հետեւաբար պէտք ունէին երկրագործներու, առեւտրականներու, շինութեանց գործաւորներուն, զորս իրենք չունէին։ Բնիկներէն Հոռոմները անշուշտ ամէնէն ընդունակն էին այս գործերուն համար, սակայն կասկածելի էին, քանի որ չէին հանդուրժեր իսլամ տիրապետութեան։ Հայերը և Ասորիները, գոնէ այն ապահովութիւնը կ'ընծայէին, որ հակառակորդներ էին Հոռոմներուն, որոնցմէ կը հալածուէին յանուն «ուղիղ» հաւատքին և այսպէս զզուած էին Հոռոմ տիրապետութենէն։*

*Ասոր համար, երբ հանդուրժողութիւն գտան, իրենց ծառայութիւնը սիրով տրամադրեցին այս կիսավայրենի ժողովուրդներուն, որ փոխանցման շըրջանի մը մէջ էին, վաչկատուն և թափառիկ վիճակէն՝ հաստատուն բնակութիւն ունենալու մակարդակին հասնելով։*

*Հայերը գաղթած են անոնց երկիրները* (Պատմ. Եւդոկիոյ, 247) *և կազմած՝ քաղաքներու բնակչութիւնը, ինչպէս կը հաստատէ Մարքոյ Փօլոյ և զբաղած են արհեստներով և առեւտուրով* (Նոյն), *և երկիրին բարգաւաճման ծառայած են։ Ասոր համար է որ իբրև իրենց պետութեան ազը՝ Դանիշմէնտ և Սելջուկ*

վեհապետներ գնահատած են զիրենք, երբ մանաւանդ Հռոմէական կայսրերու — որոնց տիտղոսը կը կրէին — նմանութեամբ ուզեցին իրենց երկիրը մեծագործութիւններով ճոխացնել։ Այս տեսակէտէն համբաւաւոր եղաւ Ալայէտտին Կայ Խոպադ Ա. (1220-1236) «այր իմաստուն եւ աստղաբաշխ» (Սմբատ Գունդստաբլ, 118), որուն իշխանութեան շրջանը, այս Կայսրութեան փառահեղութեան շրջանն է։ Անոր իշխանութեան շրջանին կը կառուցուին հրաշակերտներ, որոնք բնական է թէ Սելջուկը չէր որ կը յղանար, այլ Յոյն, Հայ և Ասորի միտքը։ Ղայասէտտին Կայ Խոսրով Ա. (1191-1193 և 1204—1211) որ Պոլիս՝ ապրած էր տասը տարի, իր երկիրը զարդարելու համար, Բիւզանդական Կայսրութեան հպատակները կը հրապուրէ զանազան խոստումներով և իր երկիրը կը հրաւիրէ. (Գելցեր, 381)։ Իր երկու զաւակները, Ասէտտին Կայ Քաւուս Ա. (1211-1220) և Ալայէտտին Կայ Խոպադ Ա. կը շարունակեն իրենց հօրը ուղղութիւնը։

Ալայէտտին շինած է Ալայա և Ալաճա քաղաքները, շինած է Քերվանսարայներ, հիւանդանոցներ, մզկիթներ և մէտրէսներ, աղբիւրներ և ազուգաններ (տես. Հայ Կեսարիա էջ 549)։ Գելցեր (295) կը հաստատէ որ այս շինութիւնները ինքնուրոյն ոճ չունին, այլ փոխառութիւններ են։ Նոյնը կը հաստատէ A. Saladin (Manuel d'Art Musulman. էջ 438-441), մասնաւորապէս շեշտելով Հայ ճարտարապետութեան ազդեցութիւնը, զոր վեր կ'առնէ նաեւ Թորամանեան (Անահիտ, 1911), որ նմանութեան եզրեր կը գտնէ Ախլաթի, Արճէշի և այլ վայրերու և Սելջուկեան ճարտարապետական յիշատակարաններուն միջեւ(1)։

A. Saladin (446) կ'ըսէ թէ «Այն օրէն որ Գոնիա հաստատուեցան Սելջուկեանք, իրենց թագաւորութեան բարգաւաճումը ապահովաբար իրենց քաշեց ուշադրութիւնը Սուրիոյ եւ Հայաստանի արուեստագէտներուն, որոնք եկան խառնուեցան Միջագետքի եւ Պարսկաստանի արուեստագէտներուն», որ զիրենք կը կանխէին հոն։ Այսպէս Հայ արհեստաւորներ կը ծառայէին ամէն կողմ։ Հայ ճարտարապետական ոճով կառուցուած են՝ 1228ին Տիվրիկի մեծ մզկիթը, 1251ին Գոնիայի Ինճէ Մինարէլի մետրէսէն և Լարանտայի մզկիթը, երկուքն ալ գործը՝ Քելուք կամ Գալուստ (2) անուն դաւանափոխ Հայ ճարտարապետի մը (Mak Van Berchan, Խալիլ Էտհէմ և A. Saladin. 456)։

Հայեր էին անկասկած՝ կառուցողները Սեբաստիոյ Կէօք Մէտրէսէին և Պուրճիյէ-Մէտրէսէի, որոնք շինուած էին 1270ին և 1271ին (տես. Հայ Կեսարիա 555—556)։

---

(1) G. Higeon, Manuel d'Art Musulman հտ. Բ., 120 եւ Թ. Թորամանեան (Անահիտ, 1911, 21) կը կարծեն թէ Գոնիայի Ալայէտտինի հռչակաւոր մզկիթին ճարտարապետն էր Ախլաթցի դաւանափոխ Հայ մը. (ըստ A. Saladinի, Zizani անուն), որ 1155 կամ 1158ին Մէքքէէն վերադարձին շինած է այս հոյակապ յիշատակարանը:

(2) Ան ինքզինք կ'անուանէ «Գալուստ որդի Ապտալլահի», (A. Saladin, 456): «Որդի Ապտալլահի» բացատրութիւնը մղած է M. M. Huartը, որ Տիվրիկի եւ Սեբաստիոյ մզկիթները ուսումնասիրած է, հետեւցնելու թէ հաւանօրէն այս Հայը որդին է Իսլամացողի մը, վասնզի ընդհանրապէս իսլամութիւնը ընդունողներուն կը տրուէր Ապտալլահ անունը: Թէեւ պատմութեան մէջ, Ապտալլահ անունով քրիստոնեաներու ալ կը հանդիպինք:



Ասոնք բոլորը կը մեկնեն Ռումի Սուլթաններու բարեացակամ տրամադրութիւնները և Հայերու ասկէ քաջալերուած՝ հաստատուիլը Ռումի Սուլթաններու երկիրները, Փոքր Ասիոյ ներքնաշխարհը, հոն կքադելու համար երկրագործութեամբ, արհեստներով, արուեստներով ու մանր առեւտուրով, մինչ ուրիշներ կը բնակէին Փոքր Ասիոյ ծովային գլխաւոր ելքերը, ինչպէս Այաշ, Պոլիս, Զմիւռնիա և Տրապիզոն, ծովեզերեայ վաճառաշահ քաղաքները և ներքնաշխարհին բերքերը կ'արտածէին դէպի օտար երկիրներ։

Հայ գաղթականներ հաստատուած են պետութեան զանազան մասերուն մէջ, բայց մասնաւորապէս անոր կեդրոնը և երկու գլխաւոր քաղաքները՝ Գոնիա և Կեսարիա ու անոնց շրջակայքը։ Արդարեւ Ռումի Սուլթանութեան տիրապետութեան տակ է որ բաւական թիւով Հայեր կը հաստատուին Կեսարիա, Տիանա (Նիկտէի և Պօռի կողմերը) (Սիսուան, 174—176), Լարանտա (= Գարամանի) (Նոյն, 292—296), Գոնիա (Արեւելք, Թ. 4219 և 4274, Մանզումէ Թ. 1722, Բնաշխարհիկ բառարան 523) և այլ մերձաւոր շրջաններ։

Ռուբինեան Թագաւորութեան սահմանակից այս հողերուն մէջ հաստատուած Հայերէն մէկ մասը ինքնաբերաբար Տաւրոսի կիրճերէն անցնելով եկած է Կիլիկիայէն, մասնաւորապէս այն շրջանին՝ երբ Լեւոն իր իշխանութեան ենթարկած էր Լարանտայի, Տիանայի, Պամփիւլիոյ և Իսաւրիայի շրջանները։ Բայց այդ Հայերուն մեծագոյն մասը «ոչ-գերութեամբ», այլ սակայն բռնի, Մարաշէն, Սամոսատէն, Ալպիստանէն, Ճահանէն և այլ տեղերէ փոխադրուած Հայերն էին։

Այս տեսութեան ուժ կուտայ մասնաւորապէս Գոնիայի Հայոց մէջ ապրող աւանդութիւն մը, որուն համաձայն անոնք գաղթած էին ԺԲ. դարուն Մարաշի և Սամոսատի կողմերէն։

Նոյնպէս աւանդութիւններ՝ Կիլիկեան ծագում կու տան Արգէոսի հարաւային ստորոտը հաստատուած Հայ գիւղերուն, ինչպէս Էվէրէկի, Ֆէնէսէի և այլն. Թերեւս խաղաղութեան երկարատեւ շրջան մը մահմետական այս քիչ շատ քաղաքակրթուած տէրութեան հովանաւորութեան ապաստանող աւելի մեծ թիւով Հայեր պիտի գտնուէին և աւելի բարձր զարգացման պիտի հասնէին, գոնէ տնտեսապէս և պիտի նպաստէին այդ երկիրին բարգաւաճման։

Դժբախտաբար Մոնկոլ հեղեղը կուգար անծանօթ Ասիոյ խորերէն՝ տակնուվրայ ընելու աշխարհը, ինչպէս նաեւ Սելջուկ պետութիւնը և Կիլիկեան Հայ Թագաւորութիւնը, որոնք պիտի ենթարկուէին այս ուժին։

Մասնաւորապէս Կեսարիա, Սեբաստիա, Երզնկա, Տիվրիկ, Խարբերդ, Հայաշատ քաղաքները կը գրաւուէին և բազմաթիւ գերիներ կը տարուէին Հայաստան, ուր կը ծախուէին (Կիրակոս. 164—167)։

Մոնկոլ արշաւանքները, ինչպէս իր նախորդները, իբրեւ անխուսափելի հետեւանք ունեցան դարձեալ Հայ զանգուածներու դէպի Արեւմուտք տեղաշարժը և խուճապներ։

Մոնկոլները երբ Մեծ Հայքի կը տիրէին, այս խառնակութեան և տակն ու վրայութեան մէջ, անոնց գազանային արարքներէն ահաբեկ շատեր հեռա-

ցան, մանաւանդ հիւսիս-արեւելեան Հայաստանէն, որ աւելի ոտնակոխ եղած էր։ Այսպէս, բազմաթիւ Հայեր՝ կարծելով թէ Ռումի Սուլթաններու երկիրը աւելի ապահով էր, ապաստանած էին այնտեղ, ինչպէս Վարդան պատմագիր կը հաստատէ, գրելով որ 1258ին «Եկն Հուլաւոյն եղբայր Մանկու Ղանին անթիւ զօրօք, եւ մեծաաաս իշխանութեամբ ի վերայ Պարսից, Ասորեստանեաց, Հայոց, Վրաց եւ Աղուանից, եւ հրաման ետ նախ եկեալ զօրուն՝ ամենայն ախիւն իւրեանց գնալ յաշխարհն Հոռոմոց: Յորմէ ահէ թողին զվերին աշխարհն(1) եւ գնացին ի հարկէ, եւ կալան զամենայն միջերկրեայս մինչեւ ի ծովն, տիրելով աշխարհացն՝ որ ընդ իշխանութեամբ սուլտանացն Հոռոմոց կոչեցեալ» (Վարդան, 149):

Այս գաղթականներէն հաւանական է որ մաս մը, խուճապահար փախուստի ընթացքին, առաջացած է մինչև Փոքր Ասիոյ արևմտեան ծայրը, Յոնիականի եզերքը Զմիւռնիա, որուն Հայ գաղութին հաստատութիւնը կը կարծուի ժամանակակից է Զարմաղան Թաթար զօրապետին Հայաստանի նուաճման թուականին, այսինքն 1236ին։

Մոնկոլներու պատճառած առաջին խուճապէն յետոյ, ինչպէս տեսնուեցաւ, Հայերը քիչ շատ ապահովուեցան, երբ անոնք սիրաշահիլ սկսան՝ տեսնելով որ Հայերը իրենց պահանջածին պէս անձնատուր եղան և հնազանդեցան իրենց և նոյնիսկ Հայ իշխաններ գործակցեցան Մոնկոլներու հետ, անոնց արշաւանքներուն մասնակցելով, իրենց Հայ զօրքերով (տես. վերը, 154)։

Նոյնպէս Հեթում Ա.ի անոնց հնազանդիլը և իր բանակովը մասնակցիլը Հուլաղու Խանի դէպի Սուրիա, Միջագետք և Պաղեստին արշաւանքներուն՝ բարերար արդիւնք ունեցաւ, վասնզի Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան կեանքը երկարաձգեց։ Բայց Թաթարներու 1270—80ի միջոցներուն մինչեւ Փոքր Ասիա առաջանալը վրդովեց այդ տեղերը հաստատուած, ինչպէս նաեւ Կիլիկեան պետութեան հովանաւորութեան ներքեւ գտնուող Հայերու կեանքը։ Ասոր անմիջական հետեւանքը եղաւ, Հայերու կրկին փախուստը այդ բարբարոսներուն առջեւէն։

Իրենց նախասիրած վայրերը սովորաբար Լատինական երկիրներն էին, վասնզի Հայոց ուշադրութիւնը — ինչպէս Կիլիկեան ամբողջ շրջանին յատկանիշը եղած է — Լատիններու կողմը դարձած էր Խաչակրութիւններէն սկսեալ։

Իկոնիոյ Սուլթանութեան մէջ հաստատուած Հայերը, երբ այս տէրութիւնը սկսաւ քայքայուիլ ներքին պառակտումներու և արտաքին յարձակումներու պատճառով,, դարձեալ սկսան գաղթել և ապաստանիլ քրիստոնեայ տիրապետութեան տակ մնացած երկիրներ։

Ասոնցմէ մէկն էր Գաղատիա կամ Էնկիւրիւ, զոր Խաչակիրները կորզած են Սելջուկներէն։

Հոն տասնութը տարի իշխած է Անտիոքի Պոհեմոնդ Գ. իշխանը (1163 1187), Ֆրետերիկ Գերման կայսրը (+ 1190), Անգլիոյ Ռիչարդ և Ֆրանսայի Փիլիպպոս Բ. Օգոստոս թագաւորներուն հետ Խաչակրութեան ձեռնարկած էր։

(1) Մեծ Հայքը բսել կ'ուզէ։



Պոհեմոնդ կը նորոգէ Անկիւրիոյ Միջնաբերդը և կը շինէ Ս. Կղեմէսի եկեղեցին այդ միջնաբերդին մէջ և շատ մը եկեղեցիներ քաղաքին մէջ և շուրջը, երբ Թաթարները Փոքր Հայքը և Կիլիկիան կ'ասպատակէին։ Հաւանօրէն այդ շրջանէն սկսեալ, Հայերը հոն հաստատուիլ սկսած են, մանաւորապէս Կիլիկիայէն հոն անցնելով։

ԺԴ. դարու վերջին քառորդին, Էնկիւրիւ (Գաղատիա) և մերձակայ Սթանոզ, Գալէճիկ, Պօլու և այլ քաղաքները Կիլիկեան շրջանակէն գաղութներ ընդունած ըլլալը վաւերագրեալ իրողութիւն մըն է, որուն ապացոյցները կը հայթայթեն Գաղատիոյ (Էնկիւրիւ) վիճակին մէջ գտնուած 60էն աւելի ձեռագիրները, որոնք մեծ մասամբ Կիլիկեան վանքերու մէջ գիրի առնուած էին (տես. Բիւրակն 1900 էջ 101)։

Նոյնը կը հաստատէ նաեւ Գալէճիկի մէջ պահուած Աւետարանը՝ 1277 թուականով, որ կը նկարագրէ Եգիպտացւոց 1277 և 1282ի արշաւանքները ի Կիլիկիա (տես. Հայ Կեսարիա, էջ 1844—1845)։

Կեդրոնական և Արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ՝ ԺԴ. դարուն վերջերը Հայերու բաւական նշանակելի թիւի մը հասած ըլլալը կը հաստատուի նաեւ 1316 թուականէն սկսեալ Անկիւրիոյ մէջ Հայ եպիսկոպոսութեան մը հաստատութեամբ։ Այս նոր եպիսկոպոսութեան հաստատութեամբ Ռումի Սուլթանութեան սահմաններուն մէջ Հայ եպիսկոպոսական աթոռներու թիւը կը բարձրանար չորսի, Կեսարիա, Տիանա, Իկոնիա և Անկիւրիա, ինչ որ աշխարհագրապէս ալ Հայ գաղթականութիւններու յառաջացման ուղին ցոյց կու տայ՝ դէպի Արեւմուտք։

Յաջորդ դարուն, դէպքերը ալ աւելի գահավէժ ընթացք առին և Կիլիկիոյ Թագաւորութիւնը կորսնցուց իր ապահովութիւնը։ Ուստի նոր գաղթականութիւններ մեկնեցան Կիլիկիայէն և ապաստանեցան Փոքր Ասիա, վասնզի այս անգամ ալ Մամլուքները կը նեղէին զիրենք։

Կիլիկիա, Արեւելքի մէջ միակ քրիստոնեայ պետութիւնը մնացած էր, որ իր յոյսը Արեւմուտքի վրայ դրած էր։

Արեւմուտքի միջամտութիւններուն վերջ տալու համար պէտք էր ջնջել Արեւելքի մէջ Արեւմուտքի միջամտութիւնը հրաւիրող այս պետութիւնը, ինչ որ բոլոր իսլամ իշխանութիւններուն ձգտումը եղաւ։

Հետեւաբար, ԺԴ. դարուն մէջ շարունակ հարուածներ կրեց Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը և երկիրը՝ քանիցս մատնուեցաւ սոսկալի աւերներու. կոտորածներու և գերառութիւններու։ Բնակիչները այս սոսկալի խժդժութիւններէն ազատելու համար՝ թողուցին իրենց երկիրները և հեռաւոր տեղեր ապաստանեցան (տես. վերը, 498—500)։

Անոնցմէ շատեր քրիստոնեայ Արեւմուտքի ճամբան բռնեցին և ոմանք ապաստանեցան Լատին ապետներու տիրապետութեան ներքեւ գտնուող քաղաքները։

* * *

Շատ հին ժամանակներէն սկսեալ՝ ամէնէն շատ Հայ գաղթականներ ընդունած աշխարհամասը եղած է Փոքր Ասիոյ թերակղզին և բարբարոսներու արշաւներու շրջանին ալ, ինչպէս տեսնուեցաւ, անոր վրայ, միշտ ապաւէնի տեղ մը եղած է Հայերուն համար։

ԺԵ. դարուն սկիզբը, Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը (կործանած 1375ին կամ աւելի ճիշդը 1424ին), Տրապիզոնի Յոյն կայսրութիւնը (1461ին ջնջուած), Բիւզանդական կայսրութիւնը վերջացած 1453ին) ինչպէս Ռումի Սելջուկներու Սուլթանութիւնը (վերջ գտած 1309ին), ամէնքն ալ կը պահէին իրենց գոյութիւնը, բայց ամէնքն ալ տկարացած և հոգեվարքի մէջ էին։

Փոքր Ասիա — մանաւանդ անոր կեդրոնական մասը — ինչպէս տեսնուեցաւ,— ասիական բարբարոսներու շրջանին, քանի մը անգամ տէր փոխած է։

Այդ փոփոխութիւններէն վերջինը և ամէնէն նշանակելին, Օսմանեանն էր, որուն հետեւանքով Փոքր Ասիոյ մէջ պիտի հաստատուէր ԺԳ. դարուն սկիզբը, տեւական իշխանութիւն մը, որուն նմանը մինչեւ այն ատեն չէր ունեցած այս աշխարհամասը։

Այս փոփոխութիւնը որքան կարեւոր Փոքր Ասիոյ պատմութեան համար, նոյնքան կարեւոր էր Հայ գաղթականութեան պատմութեան տեսակէտէն։

Մենք տեսանք (վերը էջ 223–224) թէ Սիւլէյման Շահի գլխաւորութեամբ. ստուարաթիւ ցեղախումբ մը եկած էր Հայաստան և հաստատուած Եկեղեաց գաւառէն մինչեւ Ախլաթ տարածուող երկրամասին մէջ։ Սիւլէյման 1231ին Եփրատէն անցած ատեն խեղդուած էր և իր որդիներէն Տունտար և Էրթողրուլ մտած էին Գոնիայի Սելջուկեան Ալաէտտին Ա. Սուլթանի (1297—1327) հովանաւորութեան տակ։ Ասոնցմէ Էրթողրուլ անցած էր Հայաստանէն Փոքր Ասիա, Իկոնիոյ Սուլթանութեան արեւմտեան սահմաններուն վրայ, և ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ 224) Բիւզանդական երկիրներէն մաս մը գրաւելով, Պիլէճիկի կողմերը հիմնած աւատ (fief) մը, զոր Էրթողրուլի մահէն (1288) ետք իր որդին Օսման — որ ծնած է 1258ին — աւելի զօրացուց։ Օսման 1299ին եղաւ բոլորովին անկախ։ 1324ին գրաւեց Պրուսան և զայն իր մայրաքաղաքը ըրաւ ու Բիւզանդական պետութիւնը սահմանափակեց՝ Կ. Պոլսոյ շուրջբոլորը։

Օսման՝ նկատելով որ կրօնական համոզումներով իրարմէ տարանջատուած Թուրք ցեղախումբերէն կարելի պիտի չըլլար զօրաւոր ազգ մը և բանակ մը կազմել և միւս կողմէն տեսնելով որ Էսկիշէհիրի մօտ Իթպուրունի բնակող Շէյխ Էտէպալին կը մերժէ իրեն իբրեւ «անհաւատի», կնութեան տալ իր Մալ-Խաթուն աղջիկը, կ'որոշէ իսլամութիւնը ընդունիլ իր ժողովուրդին հետ և իր կրօնքը պարտադրել Սելջուկ, Թիւրքմէն և այլ բազմաթիւ ցեղախումբերու։ Այսպէս՝ իսլամ կրօնքով միաձուլուած ցեղերէն բանակներ կազմակերպեց և սկսաւ իր յարձակումները Խաչակիրներու կողմէ քայքայուած Բիւզանդական կայսրութեան և իշխանութիւններու բեկորներուն դէմ։ Իսլամութեամբ իրարու միացած այդ մարդկային զանգուածը, որ արուեստական ազգ



մըն էր, իր անունով կոչուեցաւ Օսմանլը (Մ. Սերոբեան, «Մեր Պայքար» 5—6)։

Օսման իրականին մէջ պարզ գիւղապետ մըն էր՝ 400 պատերազմիկներով Սէօկիւտի մէջ։ Մինչ իր մահուան օրը (1326)՝ նոյն Սէօկիւտի Խանութիւնը կը տարածուէր Մարմարայէն մինչեւ Սեւ Ծով և արդէն իսկ ունէր 4000-նոց բանակ մը (Նոյն)։

Օսմանի հիմնած այս տէրութեան պետերը իրենց համար նպաստաւոր համարած էին օգտագործել քրիստոնեաները։ Օսման իրմէ առաջուան վեհապետներուն ուղղութիւնը ընդգրկած էր և կը քաջալերէր քրիստոնեաները, հակառակ անոր որ ինքը նոր իսլամացած, բուռն թափով նուիրուած էր հաւատածաւալման գործին։ Ան իր բանակը ստուարացուց քրիստոնեաները բռնի կամ կամաւոր իսլամացնելով։ Թուրքերը հետզհետէ նախընտրեցին ամուսնանալ իսլամացած ամենազգի քրիստոնեաներու հետ, զորս ձեռք կը ձգէին առեւանգումով կամ գնելով։ Այս արիւնախառնութիւնը խորապէս այլափոխեց Օսմանի ցեղախումբին մոնկոլական նկարագիրը։ Սիւլէյմանի կիներէն մին էր Ռուս Ռոկսանան և Սուլթան Մուրատ Գ.ի կինը և Մուհամմէտ Գ.ի մայրը, Սոֆիա անուն Վենետկուհի մըն էր։ Փոքր Ասիոյ և Պալքանեան բոլոր ցեղերու արիւնը խառնուած էր Թուրք պալատականներուն ու գիւղացիներուն և ատոր հետեւանքով Թուրքերուն մէջէն գրեթէ անյայտացած էր Մոնկոլ-Թաթարական դիմագիծը։

1480ին Իտալացի նկարիչ Պիլինին նկարեց Սուլթան Մուրատ Բ.ի դիմանկարը։ Այդ նկարէն օրինակուած մետալ մը, որ կը գտնուի Բրիտանական Թանգարանին մէջ, ցոյց կու տայ Սուլթանին հայկական արծուեռունգն քիթը, որ բնաւ նմանութիւն չունի մոնկոլեան տափակ քիթին հետ և ցոյց կու տայ հայկական արիւնախառնում մը Սուլթանական գերդաստանին մէջ, և արդէն գիտենք, թէ Սուլթան Մուրատ Բ.ի մայրը գերի մըն էր, հաւանաբար հայուհի։

Օսմանի նշանաւոր զօրավարներէն մէկը եղաւ Քէօսէ Միխալ անունով իսլամացած Յոյնը, որուն սերունդին յանձնուեցաւ միշտ Օսմ. անկանոն բանակին հրամանատարութիւն։

Առաջին եկեղեցին, որ Օսմանի ձեռքով մզկիթի վերածուեցաւ Գարաճա Հիսարի եկեղեցին էր, ուր Օսման, Սելջուկեան Սուլթանէն ստացաւ դրօշակ մը, մեծ թմբուկ մը և ձիու պոչ մը։ (Մ. Սերոբեան, Նոյն, 7)։

Առանց Օսմանեան պետութեան այս նախնական շրջանի պատմութեան ծալքերուն մէջ մտնելու՝ ըսեմ թէ Օսմանեան Թուրքերու տիրապետութիւնը իր բոլոր մանրամասնութիւններուն մէջ, մեծ տարբերութիւն մը չէր ներկայացներ Փոքր Ասիոյ Դանիշմենտի և Սիւլէյման Իպն Գութուլմիշի հիմնած երկու իշխանութիւններէն։ Ինչպէս անոնք օգտուած էին տեղական հանգամանքներէն, նոյնպէս նաև Օսմանեան Սուլթանները օգտուեցան այդ պայմաններէն և ինչպէս Սելջուկեան շրջանին արեւելեան միաբնակ ազգերը Ռումիներու Սուլթաններուն շնորհիւ Բիւզանդական կրօնական հալածանքներէն ազատած էին, այս անգամ ալ Յոյները ապաստանեցան Օսմանացիներու եր-

կիրները, Հռոմի կրօնական հալածանքներէն փրկուելու համար։ Այսպէս, Պոլսոյ գրաւումէն առաջ, Թրքասէրներու կուսակցութիւն մը արդէն գոյութիւն առած էր այդ հոյակապ քաղաքին մոլեռանդ ամբոխին մէջ, երբ Կոստանդին Կայսրը անխոհեմութիւն ունեցաւ հակայ Կայսրութեան վերջին բեկորները պաշտպանելու համար, կրօնական հնազանդութիւն խոստանալ Հռոմի Պապերուն, որոնք աւելի փոյթ ունեցած էին Ս. Սոփիայի եկեղեցիին մէջ Լատին ծէսով պատարագ մատուցանելու, քան թէ իրապէս քրիստոնեայ աշխարհի պահակը հանդիսացող այդ պետութիւնը փրկելու։ Օսմանցիք տիրեցին Պոլսոյ (1453) և անկէ յետոյ միայն հասկցան Թրքասէրները թէ ինչ դառն յուսախաբութիւն մը կ'սպասէր իրենց։

Եթէ մայրաքաղաքը մեղկութեան, ցոփութեան և թուլամորթութեան կեդրոնավայր մը հանդիսացած էր, սակայն լեռնային վայրերու մէջ, պալքանեան լեռնցի ժողովուրդներ, ինչպէս Սլաւոններ և այլ ցեղեր կը պահէին անկախութեան ոգին և միշտ յոյս ունէին այն փրկութեան որ Արևմուտքէն պիտի գար ազատութիւն տալու Արևելեան ազգերուն։ Օսմանցիք գիտակ Յոյներու այս տրամադրութեան՝ շատ կասկածով կը վարուէին անոնց հետ, մինչ իրապէս պէտք ունէին վաճառական և գործունեայ տարրերու, քանի որ իրենք իբրև նուաճող և զինուորական, ընդունակ չէին ոչ վաճառականութեան և ոչ ալ արուեստներու։ Հետևաբար Հայերը — որոնք երկիրին բնիկները չէին և օժտուած էին այդ յատկութիւններով — պետութեան հիմնադրութենէն մինչեւ Պոլսոյ առումը, մեծ առանձնաշնորհումներ վայելեցին և գրեթէ Յոյներէն նախապատիւ դիրք ստացան իբրև բարեյոյս տարր մը, և սիրով հրաւիրուեցան ու դիւրութիւններ վայելեցին։ Ասոր անմիջական հետևանքը եղաւ 1299էն 1453 մէկուկէս դարու տեւողութեան՝ Հայերու աճումը Օսմանեան երկիրներու մէջ։

Մանաւորապէս Կիլիկեցի Հայեր, իրենց գտած ընդունելութենէն քաջալերուած, ինչպէս Արևմտեան զանազան երկիրներ, նոյնպէս և Օսմ. երկիրներ ապաստանեցան։

Պրուսա, Քէօթահիա, Թաւշանլը, Ասարլըգ և Պիլէճիկ և այլ քանի մը քաղաքներ և գիւղեր Հայ բնակիչներ հաստատուեցան և մզկիթներու և պալատներու շինութեան գործին մէջ իբրև վարպետ (գալֆա) և բանուոր մասնակցեցան և արուեստներու ու վաճառականութեան հետամուտ եղան։

Կիլիկեան հին և նոր գաղութները մինչև 1375 Ռուբինեան թագաւորութեան կործանումը և անոր յաջորդող շրջանին կը ճոխանան և կը բազմանան նորանոր գաղութներով, որոնք մանաւորապէս Կիլիկիայէն կու գային։

Հազիւ թէ Մեմլուքները Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը ջնջած էին (1375), երբ 1387ին Լէնկ Թիմուր Հայաստան մտաւ և անլուր կոտորածներ ու սոսկալի խժդժութիւններ գործադրեց և առաջացաւ մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը՝ Էնկիւրիւ (1404)։

Թէ՛ իր ահարկու ասպատակութիւններու շրջանին և թէ՛ իր մահէն (1405) ետքը — երբ իր պետութիւնը քայքայուեցաւ ներքին պատերազմներով — Հայաստան անտանելի դրութեան ենթարկուեցաւ։ Մանաւորապէս Արարատեան և Սիւնիք ենթարկուեցան մեծ աղէտներու։



Բնակչութիւնը չարունակ թողուց երկիրը և փախաւ։

Այդ փախստականներու մէկ մասը եկաւ և հաստատուեցաւ Օսմ. երկիրներ, ուր Կիլիկեան գաղթականներ լաւ ընդունելութիւն գտած էին։

ԺԴ. դարուն վերջին քառորդէն մինչեւ ԺԵ. դարուն առաջին քառորդին վերջերը, (1375 - 1425), Արևելեան Հայաստանէն գաղթականներ, մանաւորապէս Ագուլիսցի, Ցղնացի, Երևանցի, Նախիջևանցի, Ջուղացի կու գան և կը հաստատուին նախապէս հայաբնակ Անկիւրիա, Սթանոզ, Պրուսա և այլ քաղաքներ և բոլորովին նոր հայաբնակ կ'ըլլան Սիվրի Հիսար, Մուրատչայ, Բայապազար, Աք-Շէհիր և շրջակայ քաղաքները, որոնք Օսմանեան տիրապետութեան տակ էին արդէն։

Թովմա Մեծոբեցի, որ իր պատմութիւնը կը հասցնէ մինչեւ 1450 թուականը, իր վերջաբանին մէջ կ'ըսէ թէ Հայերը, «ի Մսր եւ ի Խորասան, ի Պաղտատ եւ ի Տաճակստան եւ յամենայն երկիր ցրուեալ ցնդեցան» (էջ 121) Լէնկ Թիմուրի արշաւանքներուն և անոր յաջորդող անիշխանութեան և խառնակութեան օրերուն։

Այդ բոլոր երկիրներու շարքին էր անշուշտ, նաև Հայոց վաղածանօթ Անատոլուն, ուր հաստատուած էր Օսմ. նոր պետութիւնը, որ բարեացակամ վերաբերում ցոյց կու տար Հայերուն նկատմամբ։

Հետևաբար, շատ բնական է որ Հայեր հաստատուած են այս պետութեան նախնական օրրանը հանդիսացող շրջանակին մէջ, որուն մաս կը կազմէին Կուտինա (= Քէօթահիա), Աք-Շէհիր, Պուրտուր, Ասարլըգ, Թաւշանլը, Պրուսա, Էնկիւրիւ. Սթանոզ և Սիվրի-Հիսար և ուր ԺԳ. և ԺԴ. դարերու ընթացքին, ստուարացան նախնական կորիզները։ Այս գաղթականութիւններէն ոմանց ծագումը Արևելեան Հայաստանէն էր և ոմանցը՝ Կիլիկիայէն, մանաւորաբար Սիս քաղաքէն, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, 1404ին անոնք Ռամազանեանց անձնատուր ըլլալէն ետք՝ իբր թէ 30,000 տուն գաղթած էին (տես. վերը, էջ 498), այլեւայլ տեղեր։

Օսմանի հիմնած պետութեան մէջ՝ հազիւ հարիւր տարուան ընթացքին Հայերուն թուական արագ աճումը և բաւական ստուար թիւով Հայերու գոյութիւնը կը հաստատուի սա իրողութեամբ, որ Բիւզանդական Կայսրութեան վերջին բեկորին Պոլսոյ մէջ առնուազն 1307էն ի վեր, — կամ հաւանօրէն աւելի կանուխէն — գոյութիւն ունեցող Հայ եպիսկոպոսներ՝ անշուշտ Ամենայն Հայոց Կաթողիկոսներու կարգադրութեամբ, եթէ ոչ աւելի կանուխ, ապահովաբար գէթ ԺԵ. դարէն սկսեալ կը հովուէին նաև Արևմտեան Փոքր Ասիոյ, ինչպէս Պրուսայի և Կուտինայի մէջ և շուրջը հաստատուած Հայերը (1) և 1316-էն ի վեր Էնկիւրիւի մէջ հաստատուած Հայոց Առաջնորդութիւնը իր գոյութիւնը կը պահէր։

Սակայն Հայերու բարբարոսներէն կրած ծանր չարչարանքները և հարստահարութիւնները այնքան խորունկ կերպով տպաւորուած էր ժողովուր-

(1) Այս մասին տես. Արշակ Ալպօյաճեանի **Սեամալօյի եւ շրջականերու Հայոց հաղեար վարչութեան սկզբնաւորութիւնը** յօդուածը. Տաղակար, 1952, բ. 11–12, էջ 270–277։

դին մէջ, որ հակառակ իրենց Օսմ. Պետութեան մէջ վայելած քիչ շատ առաւելութիւններուն՝ իրենց ամբողջ ուշադրութիւնը կեդրոնացուցած էին դէպի Արեւմուտք, Եւրոպական քրիստոնեայ երկիրներ կամ անոնց Արեւելքի մէջ գրաւած շահաստան-կայանները, ինչպէս էին Փոքր Ասիոյ չորս դուռները, Տրապիզոն, Ղալաթիա, (Պոլսոյ մէկ թաղամասը), Զմիւռնիա և Այաս, որոնք ԺԳ. և ԺԴ. դարերուն ենթարկուած էին Ճենովայի և Վենետիկի հասարակապետութիւններու իշխանութեան և առևտրական մեծ կայաններ կը ներկայացնէին, ուր Հայերը — իբր Արևելքի վաճառականութեան մեծ վարպետները — կը խառնուէին առևտրական շարժման։

Այս շարժումը արդէն ծնունդ կ'առնէր արշաւող ժողովուրդներու շրջանին սկզբնաւորութեանը, երբ իրարու հետ հաղորդակցութեան կը մտնէին Արևելք և Արևմուտք, այն խիզախ ծրագիրով, զոր Հռոմ կը յղանար և քրիստոնեայ Արեւմուտք ութը Խաչակրական արշաւանքներով գործադրել կը ջանար, առանց սակայն կարենալ իրագործելու։

Կ. Պոլսոյ գրաւումէն (1453) ետքը Օսմանեան պետութիւնը ա՛լ աւելի մեծ քաջալերութիւն ընծայեց Հայերուն, իր մայրաքաղաքը հայ գաղթականներ հրաւիրելով, պարպուած գործունեայ Յոյն բնակչութեան տեղը լեցնելու մտօք, և զանոնք սիրաշահելու համար՝ 1461ին հաստատեց յատուկ Պատրիարքութիւն անոնց և արեւելեան ոչ-քաղքեդոնական ազգերու համար։

Այդ թուականէն յետոյ երբ Օսմ. Կայսրութիւնը Հայաստանի ալ կը տիրանայ, երկիրին ամէն կողմերը, ինչպէս և Փոքր Ասիա կամ Թուրքերու Անատոլուն, ամէն կողմ Հայեր կը հաստատուին, ճիշդ Բիւզանդական Կայսրութեան ժամանակին պէս, և Օսմ, Կայսրութեան ամէնէն օգտակար տարրերէն մէկը կը հանդիսանան։

***

Ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 498—499) Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան կործանումէն ետք (1375) 1404ին և 1424ին Կիլիկիայէն անգամ մը 30,000 տուն և ուրիշ անգամ մը դարձեալ 30.000 անձ 1) հեռացած են և անցած են հանդիպակաց Կիպրոս կղզին, որ կը գտնուէր քրիստոնեաներու տիրապետութեան տակ։

Կիպրոս, արդէն անբաժան էր Կիլիկիայէն և կարծես արուեստականօրէն բաժնուած էր անկէ ծովով։ Ուստի Հայերը երբ խուճապով կը հեռանային Կիլիկիայէն, նախ կ'ապաստանէին Կիպրոս՝ որ մասնաւորապէս Կիլիկիոյ և անոր մերձակայ Փոքր Ասիական աշխարհամասերուն ապաստանի վայրը եղած էր ինչպէս Ղրիմ — որ շատ հեռու էր բաղդատմամբ Կիպրոսի — Պոնտոսի և Փոքր Ասիոյ Սեւ ծովի եզերքը գտնուող մասերուն, ինչպէս տեսնուեցաւ (վերը 355)։

Կիպրոս պատսպարեալ էր ծովով և իբրեւ կղզի՝ ունէր դժուար մատչելի

(1) Այս թիւերը չափազանցեալ կրնան ըլլալ ինչպէս կ'ենթադրէ Օրմանեան (Ազգապատում, 2007) եւ ինչպէս ես ալ դիտել տուի (վերը՝ 498)։



դիրք, և այս պատճառով մասամբ Ասիական բարբարոս հրոսներու յարձակումէն զերծ մնացած էր։

Հայերը հոն շատ հին ժամանակներէն սկսեալ ունեցած են գաղութ մը՝ բաղկացած մեծ մասամբ Բիւզանդացիներէն աքսորուած Հայերէ։

Արդէն գիտենք, որ Մօրիկ կայսրը (582—502) Պարսից Խոսրով Ապարուէզ (579—628) արքային հետ երբ որոշեց Հայաստանը Հայերէն դատարկացնել, շատ մը Հայեր Թրակիա փոխադրելէ զատ՝ 577ին Կիպրոս ալ Հայեր տարաւ և բռնի կողոպտեց գիւղերը, (Սեբէոս, Զ., Յովհաննէս Եփեսացի Դ. ժե. 34 հմմտ. Նաև Դր. Արշակ Տէր Միքայէլեան. Հայաստանեայց եկեղեցին եւ Բիւզանդական ժողովոց պարագայք. Մոսկուա, 1892 111)։

Ասկէ զատ կը յիշուին Հայեր, որոնք Կիպրոսի համար պատմական դերեր կատարած են ։ Ինչպէս կղզին արաբական գրաւումէ փրկած էր 868ին, Վասիլ Արշակունիի իշխանութեան տակ, Ալեքսիս զօրավարը և եօթը տարի սարսափի մատնած թշնամիները, որոնք սակայն չէին հրաժարած Կիպրոսէն, և յաջողած էին կրկին գրաւել կղզին, զոր 958ին կրկին Հայ մը, Վասիլ Հայկազն զօրավարը խլած է Արաբներէն։

965ին հոն իբրեւ կառավարիչ «դուքս» տիտղոսով կը գտնենք Վրախամիոս կամ Վահրամ Հայը։

Կիլիկեան իշխանապետութեան հաստատութենէն (1080) ետք, Կիպրոսի հետ Հայերու յարաբերութիւնները աւելի սերտացած են։

Թորոս Բ. իր Մլեհ եղբօր և Անտիոքի Պայլ Ռենալտի հետ, իրենց եղբօր Ստեփանէի սպանութեան վրէժը լուծելու համար Կիպրոսի դէմ 1157ին արշաւանք մը կատարած են։

Փիլարտոս Հայուն թոռը և անոր Վահրամ անարժան տղուն զաւակը, Ելփիտիոս Վասխամիս (=Վահրամ)՝ իբրեւ «կիւրապաղատ և դուքս Կիպրոսի»՝ կղզին կառավարած է ԺԱ. դարուն վերջերը կամ ԺԲ.ի սկիզբները (Շլումպերժէ. Sigillographie de l'Empire Byzantin. 714)։

Հոն ապահովաբար Բիւզանդական տիրապետութեան այս ժամանակամիջոցին կը գտնուէին բաւական մեծ թիւով Հայեր, որոնք ունէին գոնէ 1179ին Թադէոս անուն եպիսկոպոս մը, որ մասնակցած էր Հռոմկլայի ժողովին։ (Արշակ Ալպօյաճեան Կիպրահայ գաղութը, 1927ի Թէոդիկի Ամենուն տարեցոյցը էջ 242)։ Այնպէս որ նոյնիսկ Լուսինեան թագաւորութեան հաստատութենէն (1192—1193) առաջ՝ Կիպրոսի մէջ Հայերու բազմութիւն մը կը գտնուէր, ցրուած կղզիին զանազան քաղաքներուն և գիւղերուն մէջ (հմմտ. Mas Latrie. Histoire de l'Ile de Chypre etc. II. 75 և III. 592)։

Բազմաթիւ են փաստերը Հայերու նշանակելի թիւ մը ունենալուն՝ կղզիին մէջ։

1191ին՝ երբ Առիւծասիրտ Ռիքարտոս Ա. Անգլիոյ թագաւորը կը յարձակի Կիպրոսի վրայ, Բիւզանդացի կառավարիչը Կոմնենոս կը հրամայէ քակել Լիմասոլի Հայ և Յոյն տուներուն դուռները, պատնէշ կանգնելու համար անոնցմով։ Ռիքարտոս կը հալածէ Կոմնենոս կուսակալը կղզիին ներսերը։ Ան Լիմասոլ դարձին կը տեսնէ թէ Յոյները և Հայերը փախեր էին և քաղաքը դատարկացեր էր, ինչ որ ցոյց կուտայ թէ Հայերն ալ Յոյներու հետ մէկ

գիծի վրայ կը նկատուէին, ինչ որ կարեւոր պարագայ մըն է (տես. Cestu Regis Henrici II և Recardi I. հեղինակ Benedict of Peterborough աբբայ)։

Նոյն կռիւին, Կոմնենոսի ձերբակալումէն ետք՝ երբ անգլ. զինուորներ կղզիին ներսերը կ'արշաւեն, «քաղաքներու, դղեակներու եւ մթերքներու պահապան Յոյներ եւ Հայեր լեռները կը փախուին» (Նոյն)։

Ժամանակագիրը կը վկայէ դարձեալ թէ երբ Րիքարտոս կղզիէն կը հեռանայ, իրարու հետ դեռ եւս անհաշտ Յոյներ և Հայեր, Կոմնենոսի ազգականներէն կրօնաւոր մը կ'ընտրեն «Կիպրոսի կայսր», որ սակայն կը բռնուի անգլ. դատաւորէն և կը կախուի։

Լուսինեան տիրապետութեան սկիզբները՝ հակառակ իրենց բազմութեան Հայերը նախանձելի վիճակ մը չունէին։ Տիրող տարրը Փրանկներն էին միայն և «Յոյներ ու Հայեր անոնց կը հնազանդէին իբրեւ հողագործ-մշակ, ամէնքն ալ ստրկութեան ենթարկուած՝ հարկ կը վճարէին», ինչպէս կը վկայէ Վիլպրան տ'Օլտէնպուրկ։ Բայց շատ չանցած՝ երբ Կիլիկիոյ Հայ արքունիքին հետ Կիպրոսի խնամութիւնը և քաղաքական յարաբերութիւնները սերտացան, Հայերու վիճակն ալ բարւոքեցաւ։ Եկաւ ատեն մը, ուր Հայերը «բնիկներուն ամէնէն աւելի յարգուած ու նշանաւորուած մասը եղան, ինչ որ արդար փոխարինութիւնն էր այն դաշնակցութեան, զոր Ֆրանկաց հետ կազմեր էին՝ անդրծովեայ պատերազմներու սկիզբէն ի վեր կնքելով զայն իրենց արեամբ», ըստ վկայութեան Մաս Լատրիի։

Հայերը այդ շրջանին յաջողած են նիւթապէս բարգաւաճիլ և բարձր պաշտօններ ձեռք բերել, հաւատարմութեան ու անձնուիրութեան ամենամեծ ապացոյցները տալով։

Անոնք կը յիշատակուին իբրեւ թիկնապահ և դռնապան (Macheras-Chronique 143), և բոլոր գլխաւոր քաղաքներուն մէջ ունէին վանքեր և եկեղեցիներ, և երկու Հայ եպիսկոպոսներ, որոնցմէ մին Նիկոսիա կը նստէր, միւսն ալ Ֆամագուստա (Նոյն, 245—6)։ Հայերու ձեռքն էր կղզիի վաճառականութիւնը. անոնք Լիմասոլի, Պաֆոսի և Ֆամագուստայի մէջ ընդարձակ ամբարանոցներ ունէին, իսկ մշակութեամբ պարապողները աւելի բարձրաւանդակներու վրայ և Կերինեան լեռներու ստորոտը կը բնակէին։

Այդ շրջանէն կը յիշուին բազմաթիւ հայաբնակ գիւղեր և թաղեր և պատմութիւնը կ'արձանագրէ Հայ զինուորականներ և զինուորներ (տես. մանրամասնութիւն Թէոդիկ. Ամենուն Տարեցոյցը, 1927, էջ 214—215)։ Այդ շրջանին անոնք կ'ունենան նաեւ մշակութային շարժում։ ԺԴ. դարուն սկիզբը կը տեսնենք որ Կիպրոսի Հայ գաղութը այնքան հիմնաւորուած է, որ հոն Ֆամագուսթայի Մաղուսայի Հայ վանքին մէջ ձեռագիրներ կը գրչագրուին Լամբրոնի Սկեւռայ վանքէն հոն փոխադրուած գրիչներու ձեռքով։ Այսպէս, 1305-ին, մասամբ Մաղուսա, մասամբ Լամբրոն եւ 1308ին հոն՝ գրուած են երկու Աստուածաշունչեր. (առաջինը Յովհաննէս գրիչէ տես Վենետիկի Մխիթարեանց Ձեռագրաց Ցուցակը, Բ., էջ 1181 եւ Թ. 1926 ձեռագիր Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի) եւ Ստեփանոս Գոյն Երիցանց, «իբր թէ ի քաղաքէն Հռոմոց փոխեցեալ» Կիպրոս; հոն խնամք կը տանէ Ստեփանոս Գորգանց ա-



նուն Այասցիէն եւ անոր ընտանիքէն եւ Յակոբ անուն առաքինի անձէ մը եւ կը գրէ 1310ին Գէորգ Սկեւռացիի մէկ գործը եւ 1314ին Սաղմոս մը, որ գրած է, հրամանաւ Հայոց Տամալիծ Կիպրոսի Սենեկալին, որ Լամբրոնի տէր պարոն Հեթումի աղջիկը եւ Հայոց Օշին թագաւորին մօրաքոյրն էր. (Թ. 265 ձեռագիրն նոյն վանքին) եւ ուրիշ ձեռագիրներ 1318ին (տես. Կարինեան Ցուցակ, էջ 328) եւ 1341ին (1337 Թ. Երուսաղէմի) եւայլն։ Իսկ Ռուբինեանց կործանումէն վերջ՝ Կիպրոսի Լուսինեան թագաւորները իրենք կ'առնեն «Հայոց թագաւոր» տիտղոսը մեծ իրաւամբ, վասնզի բազմաթիւ Հայ հպատակներ ունէին, եւ Հայոց թագաւորին ազգականներն էին (Ա. Ալպօյաճեան, Նոյն, 212)։

Ռուբինեանց շրջանին՝ Հայոց եւ Կիպրոսի Լուսինեան արքունիքը սերտ յարաբերութիւններ ունեցած են իրարու հետ շարունակ եւ Կիլիկիոյ հանդիպակաց այս կղզին գաղթած են մեծ թիւով Հայեր, Եգիպտական արշաւանքներու պատճառով, ինչպէս 1277ի եւ 1335ին եւ 1346ին եւայլն։

Իսկ Ռուբինեանց կործանումէն (1375) ետք, այդ գաղթը առած է մեծ համեմատութիւն, ինչպէս տեսնուեցաւ (վերը էջ 498), վասնզի Սիսուանը բոլորովին դատարկուեցաւ։

Այս մեծազանգուած գաղթականներէն շատեր յետոյ անցած են ուրիշ տեղեր և կարեւոր մաս մըն ալ տեղացիներու հետ ձուլուած են։ Լուսինեաններու իշխանութեան յաջորդող Վենետիկեան տիրապետութեան վախճանին՝ Հայերը անշքացած և իրենց թիւը պակսած էր, թէև պահած էին իրենց գոյութիւնը։

*

Կիպրոսը առաջին կայանն էր խուճապահար Հայերու, որոնք Կիլիկիայէն կը հեռանային յանկոյս ծովու ապաստանելու և բարբարոսներու ձեռքէն ազատելու համար։

Քրիստոնեայ Արեւմուտք անցնելու համար — որ ի վերջոյ իրենց նպատակակէտը պիտի ըլլար — իբրև գետերու հունին վրայ ձգուած քարերու, Հայերը, Միջերկրականի արեւելեան ծայրը և իրենց երկիրին ամէնէն մօտը գտնուող Կիպրոսը ըրած են առաջին քարը, և անկէ ուրիշ կղզիներ ոստոստած են։

Այսպէս, ասիական բարբարոսներու այս արշաւանքներու միջոցին, Հայեր կը հաստատուին Կրետէ, ինչպէս նաև Նեկրոպոնտ, Հռոդոս, Միտիլինէ և ուրիշ Միջերկրականեան կղզիներ, որոնք Լատին Ասպետական կարգերու կամ Վենետիկեան ու Ճենովական հասարակապետութիւններու կողմէ գրաւուած էին։

Տեսնուեցաւ արդէն թէ Կիլիկիոյ Հայերը, Ռուբինեաններու անկման շրջանին, երբ Եգիպտացիները, Սուրիան նուաճելէն ետք, կը հարուածէին յաճախակի, Լատիններու կրօնակից և դաշնակից Հայ Թագաւորութիւնը իրենց աւերիչ անհարկու արշաւանքներով, սկսած էին գաղթելու և հեռանալու, մինչ իբրև առաջին գլխաւոր կայան ունենալով Կիպրոսը, և յարակցաբար Արշիպեղագոսի այն կղզիները՝ որոնք Կիպրոսի պէս քրիստոնեայ տիրապետութեան տակ կը գտնուէին։

Դժբախտաբար լիակատար տեղեկութիւններ չունինք, բայց կան դոյզն յիշատակներ, որոնք ցոյց կուտան թէ Կիլիկիայէն ինչպէս նաեւ Փոքր Ասիայէն Հայեր ապաստանած են Կիպրոսէն զատ ուրիշ կղզիներ՝ Արշիպեղագոսի մէջ։

Այսպէս, կը յիշուի որ 1366ին Հայեր Մետիլինէ (= Միտիլլի) կղզին գալով խնդրած և ընդունուած են Հռոդոսի Ասպետներէն՝ Լանկոյ (= Կով) կղզիին մէջ իրենց բնակավայր, եկեղեցի և մշակութեան հող ու եզներ եւ այլն (Ալիշան, Հայ Վենետ, 178)։

Մինչեւ հոն առաջացող Հայերը բնական է որ չէին կրնար աննշմար թողուլ Կրետէի պէս բարեբեր կղզի մը և նշանաւոր շահաստան մը, որ 1206էն սկսեալ Վենետիկցիներու տիրապետութեան տակ կը գտնուէր։

Կրետէն, զոր երբեմն (825–961) արաբ ծովահէններ գրաւած էին և բոլորովին իսլամացուցած 961ին Նիկեփոր Փոկաս կայսրը, մանաւորապէս Հայ զօրքերով, վերագրաւած էր (ՊՀԳ. Ա. 292) և Նիկոն Պոնտացի Հայը (+998) որ Օրթոդոքս եկեղեցիին սուրբերէն մին դարձած է, Բիւզանդական այդ բանակին հետ Կրետէ գացած և աշխատած էր կրկին քրիստոնէացնել այս կղզին (ՊՀԳ. Ա. 321)։

Այդ պատերազմին հնձուած էին կղզիին երկրագործները ու աշխատող դասակարգը, և հետեւաբար կը պակսէին ջղուտ բազուկներ։ Ահա այս պակասը լրացնելու համար՝ հոն ստուարաթիւ գաղութ մը կը բերուի և կը բնակեցուի։

Հայերը քիչ ատենի մէջ կղզին կը ծաղկեցնեն վերստին։ Կը կարծուի թէ այս մեծ գաղթականութեան յիշատակներն էին Արմէնիս և Արմէնիանա անուն երկու աւերակ գիւղեր, քանի մը խաչքարեր և քանի մը սիւներ և խոյակներ, իսկ գաղթական Հայերը ձուլուած են (Փիւնիկ, Ա. տարի Թ. 8 15 Յուլիս 1899)։

Ճշդել թէ այս ձուլումը ո՞ր դարուն և ո՞րչափ ժամանակի մէջ տեղի ունեցած է՝ դժուար է, վասնզի փաստեր կը պակսին. չունինք նաեւ վաւերագրութիւններ, ցոյց տալու թէ ասիական բարբարոսներու արշաւանքները սկսելէն մինչեւ ԺԴ. դարուն վերջերը վիրոյիշեալ հին գաղութը իր գոյութիւնը պահա՞ծ է կամ այդ ժամանակամիջոցին հոն նոր գաղթականներ գացա՞ծ են։ Սակայն Վենետիկի Ծերակոյտին մէկ որոշմնագիրէն կը հասկցուի որ ԺԴ. դարուն՝ 1363ին՝ Գանտիա տակաւին ունէր հին եկեղեցի մը, որ «Հայոց եկեղեցի» անունով ծանօթ էր։ Ծերակոյտը կ'որոշէր այդ եկեղեցին և մօտակայ դաշտը տալ այդ գաղթականներուն և զանոնք ճանչնալ որպէս Վենետիկցի, չորս տարիէն, ինչպէս բոլոր այն Հայերը, որոնք Կրետէ կամ Վենետիկեան տիրակալութեան (Domination) ենթակայ այլ վայրեր պիտի գաղթէին։

Իբրեւ դիւրութիւն՝ Ծերակոյտը կ'որոշէ որ Հայերը ճամբորդեն իրենց ապրանքներով, Վենետիկեան նաւերով, վճարելով ինչ որ կը վճարեն Վենետիկցիները։

Այս կարեւոր վաւերագիրը կը հաստատէ թէ ԺԴ. դարէն առաջ Հերակ-



լիոնի (Գանտիա) մէջ գոյութիւն ունէր արդէն Հայ գաղութ մը իր եկեղեցիով և ապա անհետացած էր գուցէ ձուլուելով տեղացիներու հետ։

Այս իրողութեան կը տեղեկանանք այն գաղթի ձեռնարկով, զոր կատարած է Սեւ ծովու Հայ եպիսկոպոսներէն մին (հաւանօրէն Տրապիզոնի եպիսկոպոսը), որ Վենետիկ երթալով՝ 1 Յուլիս 1363ին՝ ի պատասխան իր խնդրանքին՝ որոշմնագիր մը կ'ստանայ Վենետիկի Տօժէն, ուղղուած Կրետէի Դուքսին և իր խորհրդականներուն, յանձնարարական նամակներով։ Հայ եպիսկոպոսը յայտնած էր որ 2000 Հայեր՝ առանց հաշուելու ծառաները կը փափաքին Կրետէ գաղթել, (տես. վերը էջ 480)։

Գաղթաւորման այս ձեռնարկը յաջողա՞ծ է թէ ծրագրային վիճակի մէջ մնացած է, ճշդուած չէ, սակայն 1414ին կրկին կը հանդիպինք նման ձեռնարկի մը։ Նոյն թուականին Վենետիկի քաղաքացի Տրապիզոնաբնակ Աբրահամ Անտերուն՝ Վենետիկի Ծերակոյտին կը ներկայացնէ խնդրագիր մը, որով կ'առաջարկէ Հայ գաղթականութիւն մը հաստատել Կրետէ և Նեկրոբոնտ (=Եւբէա=Էյրիպօզ) կղզիներուն մէջ, աւելի քան ութսուն Հայ ընտանիքներով, Տրապիզոնի և Սեբաստիոյ կողմերէն գալիք և կը խնդրէ Ծերակոյտէն պաշտպանութիւնը, դիւրութիւններ և մաքսային թոյլտուութիւններ։

Ծերակոյտը այս խնդրանքը կ'ընդունի 1414 Փետրուար 10ին և կ'որոշէ տալ ամէն դիւրութիւն և կը հրամայէ այդ կղզիներու կառավարիչին գործադրել Ծերակոյտին որոշումը։ (Ալիշան, Հայ Վենետ., 176—177)։ Հաւանօրէն այդ գաղթականութիւնը կատարուած է (տես. վերը էջ 481), վասնզի ԺԷ. դարուն երբ Օսմանցիք կը գրաւեն Կրետէն Վենետիկցիներէն՝ հոն կը գտնեն Հայ բնակիչներ, որոնք միայն Վենետիկեան շրջանին, մանաւանդ ակնարկուած ժամանակամիջոցներուն հոն հաստատուած կրնան ըլլալ։

Նոյնիսկ կարելի է ենթադրել թէ Եւբէա կամ Նեկրոբոնտ կղզին աւելի կանուխ հայաբնակ եղած է, վասնզի Կիլիկիոյ Սմբատ Թագաւորը հոն մեռած է 6 Մարտ 1311ին (Հայապատում 543 և Ազգապատում 1815)։ Սմբատ գահազուրկ ըլլալէ ետք՝ 1309ին Կիլիկիա կուգայ Թագաւորութիւնը վերստին ձեռք բերելու համար, սակայն ժողովուրդէն և աւագանիէն որեւէ աջակցութիւն չգտնելով շուտով ետ կը դառնայ և կը հաստատուի Եւբէա կղզին, ուր և կը մեռնի երկու տարի յետոյ։

Հայ նախկին Թագաւոր մը անշուշտ հոն գացած էր հետեւորդներով, որոնք որքան ալ քիչ եղած ըլլային՝ վերջապէս հայերու խումբ մը կը կազմէին։

Միջերկրականեան կղզիներէն մեծագոյնին՝ Սիկիլիոյ հետ եւս կապուած յիշատակներ ունին Հայերը, որոնք որպէս Արաբներու հետ մաքառող Բիւզանդական բանակներու ընտրելագոյն զինուորները, Բիւզանդիոնի և Արաբներու միջև կռուախնձոր դարձած Կիպրոսի, Կրէտէի և Հարաւային Իտալիոյ մէջ իրենց բերած նպաստը նոյնանման պայմաններու մէջ գտնուող Սիկիլիոյ տիրապետութեան պահպանութեան համար եւս ընծայեցին, ինչպէս բացատրուած է արդէն (տես. ՊՀԳ. Ա., 331—333), հոն արիւն թափելով։ Տեսնուեցաւ (Ցոյց) նաև որ Պաւղիկեաններէն, հատուածներ Սիկիլիա աքսորուած են՝ հոն Օրթոդոքսացնելու միտքով, բայց որովհետև Արաբները շուտով տիրած են կղզին, այդ ձուլումը շատ դիւրաւ չէ կատարուած։

Հաւանօրէն մինչև ԺԱ. դար և անկէ ետքն ալ, առանցմէ գոնէ աննշան հետքեր մնացած ըլլան, անյիշատակ և որևէ նշանակութենէ զուրկ։

*
* *

Ասիոյ խորքերէն դէպի արեւմուտք արշաւող բարբարոսները իրենց ասպատակութիւնները տարածեցին մինչև Փոքր Ասիոյ արեւմտեան ծայրը, միշտ դէպի արեւմուտք վանելով զանազան ժողովուրդներ, որոնք Բիւզանդական մշակոյթին ազդեցութեան տակ կազմած էին արուեստական այն ազգը, որ կոչուած է Բիւզանդացի և կատարած է Միրձաւոր Արեւելքի մէջ պատմական և քաղաքակրթական հոյակապ դեր մը, հանդիսանալով քրիստոնեայ աշխարհին առաջնորդը և առաջապահը, ինչպէս նաեւ բարբարոսներու հեղեղին դէմ ամէնէն կարեւոր թումբը։

Բիւզանդիոնի վարիչները թէ՛ ներքին և թէ արտաքին ճակատներու վրայ մեծ ճիգեր ըրած են մէկ կողմէն՝ պետութեան սահմաններուն մէջ՝ ներսը՝ իրարու խառնելու և միաձուլելու համար բազմաթիւ ժողովուրդներ, որպէսզի Բիւզանդացին կերտուի, և միւս կողմէն՝ սահմաններէն դուրս դիմակալելու համար Արեւելքէն՝ Եփրատը և Հիւսիսէն Դանուբը անցնիլ փորձող բարբարոսներուն, որպէսզի չվտանգուի կայսրութեան գոյութիւնը։ Եւ այս երկու ճակատի վրայ պայքարը՝ Բիւզանդիոն շարունակած է տասը դարեր, որովհետև անկարելի էր մէկ անգամէն և կարճ ժամանակամիջոցի մը մէջ ազգերը միախառնել, մանաւանդ որ շարունակ երկիրը կ'ընդունէր նոր տարրեր, զորս ձուլել աշխատած է ան. աւելի կամ նուազ յաջողութեամբ։

Այս եկուորներէն ոմանք — ինչպէս Հայերը — շատ տոկուն եղած են և շատ դժուար խառնուած Բիւզանդացի զանգուածին մէջ, իսկ ուրիշներ — մանաւանդ անոնք որ սեփական մշակոյթ, գիր ու գրականութիւն չէին ունեցած, շատ դիւրաւ Բիւզանդական հալոցին մէջ անհետացած են։

Ազգերը և ժողովուրդները կրօնքով և լեզուով Բիւզանդականացնելու ծրագիրը իրագործելու համար գործադրուած միջոցներէն մէկն ալ ժողովուրդներու տեղափոխութիւնն էր՝ ոչ-օրթոտոքսները Օրթոտոքս զանգուածներու մէջ անհետացնելու միտքով։

Գիտենք թէ այս տեսակ զանգուածային տեղափոխութիւններու ենթարկուած էին Հայերը, քանի քանի անգամներ մանաւանդ Պաւղիկեանութեան աճման շրջանին։ Այսպէս, Ասիայէն պետութեան Եւրոպական բաժինը փոխադրուած էին ԺԱ. դարէն շատ առաջ, երբ տակաւին Ասիական բարբարոսներու դէպի Արեւմուտք տեղաշարժը չէր սկսած և Բիւզանդիոն տակաւին կռիւը կորովով կը շարունակէր Արաբներու դէմ։

Նկատելի է որ ԺԱ. դարէն յետոյ կամաւորապէս Բիւզանդական երկիրներ տեղափոխուող Հայերու թիւը ստուարացած է, քանի բարբարոսներու տիրապետութեան սահմանագիծը դէպի արեւմուտք առաջացած է։ Տեսանք արդէն թէ Փոքր Ասիոյ Հայերը (տես. վերը 370–378), որոնք Սեւ ծովի հարաւային ափերուն վրայ հաստատուած էին, անցան նոյն ծովին հիւսիսային եզերքը և հաստատուեցան Տաւրիկեան թերակղզին (Խրիմ)։



Իսկ Փոքր Ասիոյ միւս մասերուն մէջ հաստատուած Հայերու այն մասը, որ կը բնակէր Փոքր Ասիոյ Արեւմուտքը, մինչեւ Մարմարայի և Յոնիականի մօտերը, անցաւ այս ծովերը և կանգ առաւ գէթ մասամբ Բիւզանդական կայսրութեան Եւրոպական բաժնին մէջ, որ մինչեւ Դանուբ կը տարածուէր, և այն մասը՝ որ Կիլիկիա կ'ապրէր, ինչպէս տեսանք, Կիլիկիոյ Հայ թագաւորութեան կործանումէն ետքը, յանկոյս ծովու Միջերկրականի զանազան կղզիները և ափերը ապաստանեցաւ։

Բիւզանդական պետութեան Եւրոպական մասը, Հայերու համար, անկոխ գետին մը չէր, Հայերը հոն փառաւոր անցեալ մը ունէին, իբրեւ զինուոր և զօրավար Բիւզանդական բանակներու, պաշտպանելով Դանուբի անցքը, սկսեալ Յուստինիանոսի (527—565) և իր յաջորդներուն օրերէն։

Հայ գաղթականներ Դանուբի եզերքները հաստատուած են նոյնիսկ Միջին դարուն սկիզբը երբ Բիւզանդիոն կ'ենթարկուէր բարբարոսներու, մանաւանդ Աւարներու և Սլաւներու ճնշումին, վասնզի անոնք Դանուբէն հարաւ արշաւել կը փորձէին։

Ասոնց դէմ ճակատելու, ինչպէս նաեւ կրօնական ձուլում կատարելու կրկնակ պատճառներով, Բիւզանդիոն Զ. դարէն սկսեալ մեծ թիւով Հայեր տեղափոխած է Պալքանեան թերակղզին, ինչպէս բացատրուած է բաւական մանրամասն (տես. ՊՀԳ. Ա. 180. 228—236, 280—299, 306—309)։

Այս տեղափոխութիւններով Բիւզանդիոն կ'ակնկալէր զինուորական գաղութներ կազմել և պաշտպանել Դանուբի սահմանագլուխը, որ ինչպէս Եփրատինը, երկար ատեն տոկալէ ետք տեղի տուաւ, և Պուլկարները անցան Դանուբը և եկան տեղաւորուեցան Պալքանեան թերակղզիին մէջ, Դանուբի և Պալքանեան լեռնաշղթային միջեւ տարածուած երկիրներուն մէջ և անկախութիւն ձեռք բերին Բիւզանդական հովանաւորութեան տակ 628ին (Ա. Ալպօյաճեան, Պուլկարաց Պատմութիւն, 1910 Վառնա. էջ 5).

Բիւզանդիոն անկէ յետոյ, Է. և Ը. դարերէն սկսեալ, իր սովորական ուղղութեան համաձայն, իր ասիական գաւառներէն շարունակ Հայեր տեղափոխեց Պուլկարներու մէջ, երբեմն կամայ և երբեմն ակամայ։

Այսպէս, կը յիշուի թէ 686ին 8000 տուն Հայ Հայաստանէն գերի վարած է Յուստինիանոս Բ. կայսրը և 693ին նոյն կայսրը, Արաբներու պահանջով անոնց գրաւած հողերուն վրայ բնակող քրիստոնեաները — մեծ մասը Հայ — Փոքր Ասիա և Թրակիա բնակեցուցած է, ինչպէս կը հաստատեն Հայ Յոյն և Արաբ պատմիչներ (տես. A. Muller, Պէլատհոռի, Եագուպի, Իպնէլ-Աթիր և Թէոփանէս)։

Կոստանդին Կոպրոնիմոս (741—775) նոյնպէս Հայ և Ասորի գաղթականներ Կարինէն և Մելիտինէէն փոխադրած է Թրակիա, ուր ինչպէս տեսնուեցաւ արդէն Հայեր հաստատուած էին։ Այս գաղթականները Պաւղիկեանութիւնը տարածեցին Թրակիոյ մէջ, (Թէոփանէս Ա. 6247, Նիկեփոր 60)։

Փրոֆ. Կոնիպէր կը կարծէ թէ այս գաղթը կատարուած է այս աղանդը Հայաստանէն արմատախիլ ընելու չարժառիթով և զանոնք պատնէշ գործածելու համար հազիւ ընկճուած Պուլկարներու և Սլաւ ժողովուրդներու դէմ։

Փրոֆ. Քացարոֆի կարծիքով Է. և Ը. դարերուն Պուլկարիոյ մէջ մեծ թիւով Հայեր կային, որոնք թագաւորին հրաւէրով եկած ճարտարապետներ կամ սահմանագլուխներուն վրայ զետեղուած կամաւորներ էին (տես. ՊՀԳ. Ա, 230)։ Այդ դարերուն հիմնուած Բիրուչթիցա գիւղաքաղաքին մօտ Պուլկար եկեղեցին կը կրէ Հայ ճարտարապետութեան ուժեղ դրոշմը, ինչ որ ուրիշ Պուլկար եկեղեցիներու ճարտարապետութեան վրայ ալ ակներեւ է. վասնզի շինողները Հայեր էին և շարունակ Հայեր, հաւանօրէն Պաւղիկեան աղանդաւորներ, կը տեղափոխուէին Արաբ-Բիւզանդական պայքարին հետեւանօք՝ Անատոլուէն Թրակիա և Պուլկարիա (Փրոֆ. Եորտան Իվանով)։ Ասիկա կը հաստատուի այն յեղափոխութեամբ, որ Պաւղիկեանները յարուցին Օրթոտոքս Յոյն կղերին դէմ 813ին՝ երբ Քրիւմ Պուլկար իշխանը կ'արշաւէր Թրակիա և կ'առաջանար դէպի Պոլիս։

Լեւոն Ե. Հայ կայսրը (813—820) 817ին՝ ընկճելէ ետք Քրիւմը, ինքն ալ Պաւղիկեանները տեղափոխեց Թրակիա (Փրոֆ. Եորտան Իվանով կամ ՊՀԳ. Ա. 234)։

Թէոտորա կայսրուհին (842—857), գլխաւոր հալածիչը Հայ Պաւղիկեաններու, 853—858 հալածելէ ետք զանոնք՝ ինքն ալ այդ աղանդաւորները Պուլկարիա տեղափոխեց (Le Museon et la Revue des Religions No. 1, 2, 3, 1897. Les Armeniens Pauliciens et les Modernes Bulgares Catholiques de la Philippopoliten)։ Այս աղանդաւորները, ինչպէս յայտնի է (ՊՀԳ. Ա. 236), Քրիստոնէութիւնը նորօք ընդունած Պուլկարիոյ մէջ մեծ դեր կատարեցին, Օրթոտոքս և Կաթոլիկ եկեղեցիներու դէմ ճակատելով, վասնզի Պորիս Ա. Պուլկար թագաւորին (852—888) 864ին Քրիստոնէութիւնը ընդունելէն ետքը, քրիստոնեայ քարոզիչներու կրկէսի մը վերածուած էր Պուլկարիան, ուր Յոյն, ՀԱՑ և ուրիշ քարոզիչներ ողողած էին (Wileam Miller և իրենց կողմը շահիլ կը ջանային Պուլկարները։ Պոլիսի և Հռոմի այս պայքարին կը խառնուէին Պաւղիկեանները և իրենք ալ քարոզիչներ կը ղրկէին, որպէսզի Պուլկարները իրենց կապեն (Աթանաս Կրայէֆ) և իրապէս մեծ դեր կատարեցին (Հ. Կէրէն Սոնժոն, Histoire de la Bulgarie 133, և Վասիլ Իվանով տես. ՊՀԳ. Ա. 280—1)։

Այսպէս, Հայաստան պահեց իր յարաբերութիւնները Պուլկարիոյ հետ, ուր շարունակ Բիւզանդացիներու կողմէ տեղափոխուած Պաւղիկեաններէն զատ՝ կամաւոր կերպով գաղթած են Հայերը։ Նոյնիսկ Թ. և Ժ. դարերուն Սեւ ծովի եզերքը՝ Պուրկազի շրջակայքը կար Հայ տանուտէր իշխանապետութիւն մը՝ Բիւզանդիոնի հարկատու և Նովի Թրնովոյի մէջ Հայերը ունէին Հայ եկեղեցի մը, որուն աւերակները գտնուեցան անցեալ դարուն։

Հայերը Ժ. դարուն ինչպէս Բիւզանդական նոյնպէս Պուլկար արքունիքին մէջ դէմքեր կ'ունենան։ Զար Բեթէր (927—928), որ որդին էր Զար Սիմէոնի (ՊՀԳ. 285) և ծնած անոր երկրորդ կնոջմէն՝ Ռաբնայէն, որ Հայ էր և քոյրը՝ Գէորգ Սուրսուպալի Հայ իշխանին, որ Քոլոքիտէ անունով Հայ վանականի մը հետ Պուլկար Զարին կողմէ ղրկուած է Պոլիս՝ Ռոմանոս կայսեր, որպէսզի Մարի իշխանուհիին ձեռքը խնդրեն և յաջողած իր առաքելութեան մէջ։



Յովհաննէս Զմշկիկ (969—976) 969ին Անտիոքի Թէոդորոս Կողոնիացի Հայ Պատրիարքին թելադրութեամբ, ընկճուած Կարնոյ և Մելիտինէի շրջաններու Պաւղիկեաններու մնացորդները տարագրեց Փիլիպուպոլսոյ շուրջը՝ ամայի հողամասեր, որպէսզի չկարենան ապրիլ (Կեդրենոս, Սքիլիցես, Փրֆ. Եորտան Իվանով և Dr. E. Tachella. Le Museon et la Revue des Religions. Թ. 1—3, 1897. 104)։ Պուլկարիա բերուած այս Հայերը Զմշկիկ կը խորհէր թէ աւելի օգտակար կրնային ըլլալ Պալքանեան լեռներուն կիրճերը պաշտպանելու համար քան Ասիոյ մէջ, ուր այլեւս կը խորհէր թէ մեծ վտանգ մը չէին ներկայացներ Արաբները, իր հարուածներէն տկարացած ըլլալով (Հ. Գելցեր. Բիւզանդական Պատմութիւն, 234)։ Զմշկիկ, որ 971ին վերջ տուած էր Պուլկար թագաւորութեան (ՊՀԳ. Ա. 376)՝ Պորիս Բ. թագաւորը գերի տանելով Պոլիս, կը կարծէր թէ առով պիտի ընկճէր Պուլկարները, մինչ անոնց մէջ անկախութեան ոգին կը տեւէր։

Բիթէր Զարին (927—968) իշխանութեան վերջերը՝ 963ին Պուլկարիա երկուքի բաժնուած էր, որոնցմէ մէկը, այն որուն Շիշման Զարը կը տիրէր՝ պահեց իր անկախութիւնը Զմշկիկէն ալ յետոյ։

Շիշման ըստ աւանդութեան ունէր չորս որդիներ, Դաւիթ, Մովսէս, Ահարոն և Սամուէլ «Գրաֆի որդիներ» (Գելցեր 254 և Ասողիկ, Գ. իբ., 236) կոչուած, որոնք իբր թէ յաջորդած են իրեն, մինչ ուրիշ պատմութեան մը համաձայն՝ առանց Շիշմանի որդիներն ըլլալու, անոնք չորս ազնուական եղբայրներ էին և նախապէս Վասիլի բանակին մէջ հրամանատարներ, բայց Մակեդոնիոյ մէջ, կռիւներու ընթացքին անցած էին Պուլկարներու կողմը (Քացարով) և իրենց մէջ բաժնած էին Պուլկարիան։ Ասոնցմէ երեքը կը մեռնին և կը մնայ միայն Սամուէլ, որ ամենակարճ ժամանակի մէջ կը վերակազմէ՝ աւատական կազմով՝ նախկին Պուլկար միապետութիւնը, որուն գլխաւոր պահապանը զօրեղ և պատերազմասէր Պոյեարներու դասակարգն էր։

Զմշկիկի մահը և Սքլերոսի ապստամբութիւնը ազդանշան մը կ'ըլլայ Պուլկարներու ընդհանուր ապստամբութեան և անոնք կ'արշաւեն Թրակիա, Մակեդոնիա, Թեսալիա և նոյնիսկ Պելոպոնէս։

Այս ժամանակներն է որ Պորիս Բ. Զարին երկու զաւակները՝ Ռոմանոս և Պորիս, որոնք իրենց հօրը հետ Կ. Պոլիս գերի տարուած էին, ծպտեալ կը փախին Պուլկարիա։ Պուլկար արձակազէններ չճանչնալով կ'սպաննեն Պորիսը, իսկ Ռոմանոս, որ ներքինի էր, հազիւ կ'ազատուի (Կեդրենոս Բ. 435), սակայն իբրեւ օրինաւոր ժառանգ Պուլկար գահին՝ չ'ուզեր դժուարութիւն հանել Սամուէլի դէմ, որ անհակառակ կ'իշխէ Պուլկարիոյ (975—1016)։

Սամուէլ Դերջանցի Հայ էր (Ասողիկ. Գ. իբ. և իգ.)։ Սամուէլի Հայ ծագումը անտարակուսելի է. 1898ին Բրէսթայի շրջանին պատկանող Մակեդոնիոյ Կերման գիւղին մէջ գտնուած 993 թուականով տապանագիրէ մը կը հասկցուի որ հօրը անունը Նիկողոս, մօրը անունը Հռիփսիմէ և եղբօրը՝ Դաւիթ է։

Վասիլ և Սամուէլ երկուքն ալ Հայ, մին՝ Բիւզանդական և միւսը՝ Պուլկար Զարերու գահերուն վրայ ճակատեցան իրարու դէմ։ Վասիլ՝ 961ին Սեր-

դիկայի (Սոֆիայի) մօտ ծանր պարտութիւն մը կրեց (Կեդրենոս Բ., 437, Լիւոն Սարկաւագ և Աճիլիցես և ՊՀԳ. Ա. 307)։

Սամուէլ ընդարձակեց Պուլկարիան և հասաւ Ադրիական ծով և հպատակեցուց Սերպերը։

Վասիլ 999ին երկրորդ անգամ մըն ալ պարտուեցաւ (Ասողիկ Գ., իը. և իգ. և ՊՀԳ. Ա., 307) և ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել։

Այս նպատակով, Վասիլ Սեբաստիոյ մետրապոլիտը կը ղրկէ Պուլկարիա։ Եւ որովհետեւ Սամուէլ, Վասիլի քոյրը կնութեան կ'ուզէր, Կայսրը իրեն ծառայողներէն մէկուն կինը կը ղրկէ այդ կղերականին հետ։ Երբ խաղը կը հասկցուի, մետրապոլիտը խարոյկի կը դատապարտուի (Ասողիկ, նոյն, և Բրոֆ. Բացարով, Ազդարար, 1921, Մայիս 21)։

Սամուէլ զայրացած, Պուլկար և Հայ զօրքով, յարձակեցաւ Մակեդոնիոյ և Թրակիոյ վրայ և 1002ին գրաւեց Ադրիանուպոլիսը, սակայն քիչ ետքը տեղի տուաւ։

Վասիլ վերջապէս 1014ին տուաւ վճռական հարուած մը, անհամար թիւով Պուլկար ջարդելով և 15,000 գերի առնելով, որոնց բոլորն ալ կուրցուց և դարձուց Պուլկարիա՝ հարիւր կոյրի մէկ միականի առաջնորդ տալով։

Սամուէլ Զար ասկէ խորապէս ազդուած՝ սիրտին ցաւէն կաթուածահար մեռաւ (1014 Սեպտ. 15)։

Սամուէլի յաջորդեց իր որդին Ռատոմիր, որ 1015ին սպաննուեցաւ Սամուէլ Զարին՝ Ահարոն անուն եղբօրը որդին՝ Յովհաննէս Վլատիսլաւէն, որ յափշտակեց պուլկար գահը և հակառակ անոր որ Յունաց կողմնակից էր, պոյեարներու ճնշման տակ շարունակեց պատերազմը և 1016—1017ին կռուեցաւ Տուրացցոյի առջեւ — որ Պուլկարները պաշարած էին։ Այս կռիւին մէջ ինկաւ Օխրիտայի վերջին Զարը՝ Յովհաննէս Վլատիսլաւ։ (Ալպօյաճեան, Նոյն, 28)։ Պուլկարիա վերջնապէս նուաճուած էր (ՊՀԳ. Ա., 318)։ Սամուէլ Զարի գրեթէ ամբողջ ընտանիքը, սպայակոյտը և զինուորները բաղկացած էին մեծ մասամբ Հայերէ։

Պաւղիկեանները՝ Բոկոմիլեան նոր կերպարանափոխութեան տակ հսկայական յառաջդիմութիւն ունեցան Պուլկարիոյ մէջ և քաղաքականութեան ծառայեցին, Զար Սիմէոնի (893—927) օրերէն սկսեալ, վասնզի այս Զարը երբ Բլովտիւ (= Ֆիլիպէ) նահանգը գրաւեց, Պաւղիկեան քարոզիչներուն մուտքը արտօնեց և մեծ դիւրութիւններ տուաւ անոնց Մակեդոնիոյ և Պուլկարիոյ մէջ, ի հեճուկս Բիւզանդիոնի (Աթանաս Գրայ(ֆ և Հ. Կէրէն Սոնժոն)։ Զար Բեթէրի (927—968) ատեն Երեմիա կամ Պոկոմիլ անուն Պուլկար քահանայի մը բարեփոխութիւններով, Պաւղիկեանք արտակարգ յաջողութիւններ ունեցան Պուլկարներու մէջ, (Հ. Գեյցեր), և այնքան տարածուեցան, որ ճակատագրական դեր կատարեցին Պուլկար պատմութեան մէջ (Փրօֆ. Կոնիպէր)։

Բիւզանդացիք, շարունակ այս Հայ աղանդաւորները փոխադրելով Պուլկարիա՝ կ'ստուարացնէին Հայ գաղութը, բայց կը յուսային զայն ընկճել, նոյն ատեն չէին դադրեր աշխատելէ ջնջելու իրենց Պուլկարներու ակամայ տուած անկախութիւնը։

Նկատելի է որ Հայերը, ըլլան Միաբնակ, Պաւղիկեան, Միսալեան կամ



Պատկերամարտ, համաձայն էին Պուլկարներու հետ, գոնէ սա տեսակէտէն որ դէմ էին Յոյն Եկեղեցիին և ասոր համար սիրով կ'ընդունուէին Պուլկարիոյ մէջ։

Ասոր համար բազմացան Հայերը Պուլկարիոյ մէջ և հիմնեցին բազմաթիւ գիւղեր՝ միջնադարեան յիշատակարաններու և գրութիւններու համաձայն։

Այսպէս կը յիշուին.

1. Արմենոֆոր գիւղը Պիթոլիայի մէջ։
2. Արմէնիցա՝ Րիլայի մէջ եայլն։

Իսկ ցարդ գոյութիւն ունին.

1. Էրմենովա՝ Հայկական։
2. Էրմենոքօ » Լիբլինայի մէջ։
3. Էրմենլուի՝ Հայեր, Նիկօբոլիայի մէջ։
4. Արմէնիթէ՝ Հայեր Կապրովայի շրջանը։
5. Էրմենլի՝ Տոպրիչի շրջան։

Նոյնպէս Սոֆիայի գիւղերուն մէջ կան Էրմէնքա և Էրմենքօ անունով անձեր, ինչպէս Լոմ գաւառի Մէտքովից գիւղին մէջ կ'ապրէր Էրմէնքովցի անունով ծանօթ բազմանդամ և հարուստ ընտանիք մը։

Ասոնց բոլորին Պաւղիկեաններէ հիմնուած ըլլալը որոշ չէ, սակայն կան ոմանք որ յայտնապէս Պաւղիկեան ծագում ունին, ինչպէս Փաւլիքենի (Թըրնովայի նահանգին մէջ), Կորնօ-Փաւլիքենի (= Վերին Պաւղիկեանք), Տոլնօ Պաւլիքենի (= Ստորին Պաւղիկեանք) Լովէչի շրջանին մէջ (Փրօֆ. Նորտան Իվանով) և Պողովցի (= Պօղոսաշէն), Թորոս և Գալինիկ գիւղերը։

Այս վերջիններէն Կորնօ-Փաւլիքենիի շրջականները գտնուած առանց խաչի հին գերեզմանները փաստեր են թէ հոն ապրած են երբեմն Պոկոմիլներ կամ Պաւղիկեաններ (Փրօֆ. Ե. Իվանով)։

Պուլկարիա տեղափոխուած Հայերը, որոնց մէկ մասը Պուլկարներու մէջ ձուլուած է և ուրիշ մէկ մասը ցրուած զանազան կողմեր, չեն ծառայած յունական շահերու, ո՛չ զինուորապէս օգտակար ըլլալով և ո՛չ ալ կրօնապէս միանալով Օրթոտոքս եկեղեցիին, այլ աւելի քաջալերած են Պուլկարներու անջատողական միտումները։

ԺԱ. դարուն սկիզբը, երբ Սելջուկեան արշաւանքները սկսան, Վասիլ Բ. Պուլկարասպան 1018ին արդէն ընկճած էր Պուլկար թագաւորութիւնը։

Վասիլ Բ. որքան որ անգութ եղած էր Պուլկարներու հանդէպ, անոնց դէմ կռուած ատեն, նոյնքան անյիշաչար եղաւ և մեղմութեամբ վարուեցաւ անոնց հետ՝ զանոնք նուաճելէն ետքը։ Անվթար պահեց Պուլկարիոյ քաղաքական և եկեղեցական վարչութիւնները։ Կարծես թէ Օխրիտայի Զարերուն տէրութիւնը, Վասիլ Բ.ի անձին վրայ միացած էր Արեւելեան Կայսրութեան։

Պուլկարիա գրեթէ կը պահէր իր անկախութիւնը, վասնզի բոլոր զինուորական ու տուրքերու կազմակերպութիւնները և ազնուականութեան առանձնաշնորհումները կը մնային։ Նոյնիսկ պահուած էր Օխրիտայի Պատրիարքութիւնը, որուն թեմերը ընդարձակուած էին (Պաs. Պուլկարաց էջ 28)։ Միայն Պուլկար

տարջունիքին անդամները և Պուլկար ազնուականներէն մաս մը Պոլիս տեղափոխուեցան և դասուեցան Բիւզանդական ազնուականներու շարքը և անոնց խառնուելով՝ իրենք ալ դարձան Բիւզանդացի։ Դուկասները և Կոմնենները, որոնք այնքան նշանաւոր հանդիսացած են Բիւզանդական պատմութեան մէջ, պարծանք կը համարէին իրենց Շիշման Զարին սերունդէն ըլլալը։ Պուլկարները նուաճող Վասիլ Բ.ի բանակներուն մէջ գտնուող և Պուլկարներուն դէմ կռուող Հայ զինուորները Պուլկարիոյ մէջ հաստատուեցան ըստ Բիւզանդական կայսրութեան մեթոտներուն, երկրագործական գաղութներ կազմելով, ինչպէս նաև զինուորական վարչութեան մէջ դեր կատարելով։

Անոնք հաստատեցին զուտ հայաբնակ գիւղեր։ Staven Runstman իր Civilisation Byzantine անգլերէն և ֆրանսերէն երկլեզուեան գործին մէջ կ՚ըսէ թէ «Հայերը իրենց արուեստը տարին մինչեւ Պուլկարիա Վասիլ Բ.ի ատեն, երբ Պուլկարիա դարձաւ Բիւզանդական նահանգ մը», և կը յայտարարէ թէ «պուլկար քաղաքակրթութիւնը ամէն բան, արուեստ եւ գրականութիւն, կը պարտի միայն Բիւզանդիոնի կամ Հայերուն»։

Այսպէս, Բիւզանդական տիրապետութեան ենթարկուած այս երկիրին մէջ, Պալքանեան լեռնաշղթային երկու կողմերը, Հայերը շարունակեցին ապրիլ մեծ թիւով։ Գալով Պուլկարներուն, դիւրաւ չհամակերպեցան կրելու Բիւզանդական լուծը, որքան որ անիկա մեղմութեամբ կը տեղաւորուէր։ Եւ քանի մը անգամներ ապստամբեցան։

Այս ապստամբութիւններուն ամէնէն ահարկուն տեղի ունեցաւ 1040ին, տուրքի խնդիրի մը պատճառով (Ա. Ալպօյաճեան, Պուլկարաց Պատմ., էջ 29), առաջնորդութեամբ Սամուէլ Հայ Զարին թոռան՝ Բետրօ Տելիանոսի։ Շարժումը տարածուեցաւ բովանդակ Պուլկարիոյ և Մակեդոնիոյ մէջ։ Շիշմանի Ահարոն որդիին սերունդէն Ալուզիանոս իշխան եւ միացաւ ապստամբներուն, բայց սկզբնական յաջողութենէ մը ետք, պառակտումի մը հետեւանօք, ընկճուեցաւ ապստամբութիւնը (տես. Պուլկարաց Պատմ., 30)։

Միքայէլ Դ. Պափլագոնիացի (1033—1043) կայսեր ձուլման անխորհուրդ ձեռնարկները արծարծեց ցեղային ատելութիւնը, ուստի Միքայէլ Է. Տուկիծ Պարապինակէս կայսեր (1071—1078) օրով, Պուլկարները վերստին ապստամբեցան և միացան Սերպերու Միքայէլ իշխանին (1050—1084), որ Հռոմի Պապէն ստացած էր «թագաւոր» տիտղոսը։

Պուլկարները անոր որդին՝ Վոտինը, Բեթէր (Պետրոս) անունով Զար հռչակեցին։ Բեթէր Զար փառաւոր յաղթութիւն մը շահելէ ետք, գերի ինկաւ և աքսորուեցաւ Անտիոք, ուրկէ փախնելով եկաւ Շքոտրա իր հօրը քով։

Պուլկարները նորէն ընկճուեցան և անզթութիւններու ենթարկուեցան։

Ալէքս Կոմնենոս կայսրը (1081—1118) Հայեր կը հաստատէ Ռոտոբի բարձունքները և Պալքանեան լեռներու մէջ և ամէն ջանք կ՚ընէ զանոնք Ցոյներու հետ ձուլելու, բայց Հայերը կ՚անցնին Պուլկարիոյ սահմանը և կը հիւրասիրուին և կ՚ապաստանին Պալքաններու անմերձենալի բարձունքները և Պուլկարներու հետ այնպիսի դիրքեր կը գրաւեն, ուր Բիւզանդացիք չէին համարձակեր յարձակում գործել։



Այսպէս, թէև հալածուած և կրօնափոխութեամբ իր թիւը նուազած, կ՚ապրի Հայ գաղութը գոնէ այն տեղերը՝ ուր Բիւզանդացիք չէին կրնար թափանցել։

Իսկ այն տեղերը, ուր Բիւզանդացիք տիրակալած էին, Հայերը եղան կրօնափոխ և իրենց ծագումն իսկ մոռցուեցաւ։

Այս աննպաստ պայմաններուն տակ իսկ, Հայերը կենսունակութիւն ցոյց տուած են։

Անոնք ունէին վանք մը, որ կառուցուած էր 1084ին, Հայու մը կամ կամ աւելի ճիշդ Գրիգոր Բակուրեանեան անուն Վրահայու մը կողմէ, Ֆիլիպէէն 30 քիլոմէթր հարաւ-արևելք (տես. այս վանքին մասին ՊՀԳ. Ա. 323-4)։

Գրիգոր Բակուրան՝ ըստ կարգ մը աղբիւրներու՝ իր 50 ռազմիկ հետեւորդներով, հոգևորական կոչում ընդունած էր նոյն վանքին մէջ (հմմտ. Ներսէս Գասապեան, Մասիս Տարեգիրք, 1935, 250)։

Բակուրան հուանօրէն Մատթէոս Ուռհայեցիի (էջ 177) յիշատակած «Գրիգոր իշխան որդի Բակուրան»ին էր, սակայն չենք գիտեր թէ 1085ին Սկիւթացւոց դէմ մղուած պատերազմին մէջ սպաննուած Բակուրան անուն Հայ իշխանը զոր Աննա Կոմնեն Ալեքսիասի մէջ կը յիշէ, կապ ունի՞ անոր հետ։ Այս վանքը, որուն Հայկական և Վրական ծագումը որոշ կը տեսնուէր (տես. ՊՀԳ. Ա, 324) ունէր Հայ միաբաններ, որոնք սակայն յունադաւան էին և նշանակելի է որ հակառակ կանոնադրութեան, որ այդ իրաւունքը յիսուն Վրացիներու (իմա քաղկեդոնական) կը վերապահէր՝ պարզապէս վանքը ազատ պահելու համար կրօնական վէճերէ, միաբաններուն խստիւ արգիլուած էր պատարագի ատեն յիշել ուեւէ կրօնական պետի անուն և արտօնուած բաւականանալ աղօթել միայն «վասն ուղղափառ եպիսկոպոսաց» (Ներսէս Գասապեան Մասիս Տարեգիրք, 1934, էջ 249)։

Յիշատակելի և խորհրդածութեան արժանի երեւոյթ մը որ պերճախօս վկայութիւն մըն է միանգամայն։

Յաջորդ ԺԲ. դարուն՝ երբ Օրթոտոքս եկեղեցիին հալածանքները աւելի խստացած էր, կը տեսնուի որ Հայերը համայնքային և մշակութային կեանք ունէին։

Այսպէս, անոնք ունէին ապահովաբար կրօնական նուիրապետութիւն և 1169ին Ֆիլիպէի մէջ վանք մը, որ անշուշտ մշակութային կեդրոնավայր մըն էր։

Թերեւս անիկա այդ թուականէն շատ առաջ շինուած էր, սակայն անոր գոյութեան կը տեղեկանանք միայն 1169 թուականին, երբ կը խօսուի Ֆիլիպէի Հայոց վանքին մասին (Զամ, Գ. 166, Օրմանեան Ազգապատում 1420 զոր կը յիշատակէ Ներսէս Շնորհալի։

Հայազգի Յովհաննէս Ութման(1) (տես. Ընդհանրական. տպ. Երուսա-

(1) Ութման երբեմն Աթման ալ կոչուած է: F. Chalandon, Յովհաննէս եւ Մանուէլ Կոմնենոսներու նուիրած հատորին մէջ զայն կը յիշէ *Jean Atmanos* անունով, իբրեւ «*Abbé du monastère Arménien de Philippopolie* (էջ 654) եւ իբրեւ աղբիւր ցոյց կու տայ *Théorianos, Migne Patrologia Greeca,* հտ *CXXXIII*, էջ 120 եւ 213 եւ *Cappelletti*ի մէջ էջ 231: Յովհաննէս Ութման երեք տարի կեցած է Հռոմկլայի Հայրապետանոցը եւ ապա դարձած Կ. Պոլիս, բերելով միութեան առաջարկին Հայերուն պատասխանը (1173):

ղէմ. 1871 էջ 144, Զամ. Գ. էջ 105 և 166, Օրմանեան, Ազգապատում 1420) որ 1170ին Մանուէլ Կոմնենոս կայսեր հրահանգով յոյն Աստուածաբան Թէորիանոսի(1 ընկերացաւ, հաւանօրէն վանահայրն էր (2) այս վանքին, ուր յաջորդ դարերուն ալ գտնուած են ուրիշ Հայ վանահայրեր (Նոյն)։

Ֆիլիպուպոլսոյ մէջ Հայ վանքի մը գոյութիւնը և անոր վանահօր Հայ լեզուին ծանօթ ըլլալը — թերեւս միակ պատճառը անոր դէպի Կիլիկիա երբեւ թարգման ղրկուելուն — ցոյց կուտան թէ գոնէ տակաւին Պալքաններու ստորոտը ապրող Հայ համայնքը՝ եթէ երբեք կրօնապէս ակամայ օրթոտոքսացած իսկ եղած ըլլար, տակաւին կը պահէր իր հայկական նկարագիրէն շատ բան։

Բիւզանդական կայսրութեան պատմաբանը Գերման Գելցեր (373) կը հաւաստէ նոյնիսկ թէ Հայերը կը պահէին իրենց նշանակելի թիւը ԺԲ. դարուն վերջերը և անկէ յետոյ ալ։

Վանքը կը գտնուէր ապահովաբար շրջապատուած Հայ բնակիչներու հատուածներով, որոնք հաւանօրէն երկրագործական գաղութներ կը կազմէին։

Այդ գիւղերէն ոմանք բաւական երկար ատեն կրցած են պահել իրենց Հայ նկարագիրը, վասնզի Թռնովոյի մատենագիր Կիկորի Ցամպլախ, որ կ՚ապրէր ԺԴ. դարուն վերջերը, կը հաստատէ գոյութիւնը Պաչքովոյի շրջակայքը զուտ հայաբնակ գիւղի մը (Ներսէս Գասպարեան, Հայրենի Տարեցոյց, 1938 էջ 58). Նոյնպէս ցարդ անծանօթ մնացած Հայկական եկեղեցիներ և համայնքներ գտնուած են ուրիշ շրջաններու մէջ ևս։ Այսպէս, համաձայն Թէոփիլակտի գրութեան՝ ԺԱ.—ԺԲ. դարերու ընթացքին՝ Սոֆիայի և Տիվոլիայի շրջանին մէջ, հայկական եկեղեցիներ և կղեր գոյութիւն ունեցած են՝ ըստ պուլկար աղբիւրի մը (Ներսէս Գասպարեան, Մասիս Տարեգիրք, 1934, էջ 251)։

Հայերու, այդ տեղերուն մէջ ունեցած նշանակելի թիւը կը հաստատուի յիշատակութեամբը ԺԲ. դարուն, շուրջ 1184—85 թուականներուն, Փիլիպուպոլսոյ քաղաքին (3), Գրիգոր անուն Հայ Եպիսկոպոսին (Զամ. Գ. 142—145), վասնզի միշտ առաջնորդութեան մը գոյութիւնը հետեւանքը կրնայ ըլլալ բաւական ստուարաթիւ գաղութի մը։ Հետեւաբար, բացարձակ և որոշ իրողութիւն մըն է Հայոց խիտ բնակութիւնը Է. դարէն մինչեւ ԺԱ. դար, Բիւզանդական կայսրութեան Եւրոպական բաժինին մէջ և մանաւանդ Պուլկարներու տեղաւորուած և տիրապետած շրջանակին մէջ։

ԺԲ. դարուն Հայ Եպիսկոպոսի մը գոյութիւնը ի Ֆիլիպէ, կը հաստատէ

---

(1) **Լիգեոն Մայեոր = Մագիստրոս էր:**

(2) Ըստ Ներսէս Գասպարեանի, Մօնթէվիտոյէն Քափուչինեան Հ. Քասիան Սելիմօֆի տեղեկութիւններուն համաձայն, Իտալական Սանթա Մարիա Տէլ Սօրէնթօ վանքեան մէջ գտնուող հին ժամանակագրութիւն մը (Son Amort Mort) կու տայ անունը Պաւլովոյի ուրիշ մէկ Հայ վանահայրին՝ Մելքիսեդեկ վրդ․ին, որուն հետ՝ վանքին մէջ՝ ինչպէս եւ անոր սպանագէտ եղբօր՝ Յակոբի հետ, տեսակցած է գրութեան հեղինակ ժամանակագիր ուղեւորը: (Ներսէս Գասպարեան, Նոյն, 58).

(3) Գրիգոր եպս՝ Գրիգոր Տղայ Կաթողիկոսին կողմէ Հռոմի պապին ղրկուած է. (Զամ. Գ., 142—3):



թէ գէթ Բիւզանդական իշխանութեան տակ մնացած Պուլկարիոյ մէջ, եկեղեցիներ և եկեղեցական վարչութիւն մը պէտք էր ունեցած ըլլային Հայերը։

Պուլկարիա դժբախտաբար միշտ յուզումի մէջ էր և միշտ կ՚ապստամբէր։ Արդարեւ Իսահակ Անկեղոս կայսեր (1185—1195) ժամանակ՝ տուրքերու ծանրութենէն գրգռուած, դարձեալ ըմբոստացան, Բեթէր և Յովհաննէս Ասէն, երկու Պուլկար հողատէր ազնուականներ, Պալքանի մէջ հաստատուած, Վլախներու հետ միացած։ Անոնք կը յաւակնէին ըլլալ Պուլկար հին թագաւորներու սերունդէն, երբ գլուխ կանգնեցան ապստամբութեան։ Բեթէր Թրնովոյի մէջ 1186ին օծուեցաւ Պուլկարիոյ և Յունաստանի Զար և ժողովուրդէն կոչուեցաւ Գալօ Բեթէր (Բարի Պետրոս)։

Պուլկարները, Կումաններու հետ յամառօրէն շարունակեցին կռիւը և մինչեւ Ադրիանուպոլիս և Մակեդոնիա առաջանալով շարունակ կը թալանէին և սոսկալի անգթութիւններ կը գործադրէին։ Ասէնեանք՝ Պուլկարիոյ մէջ հաստատուած բոլոր Յոյները կոտորեցին։ Հազիւ քանի մը ծովեզերեայ քաղաքներու և մասնաւոր կղզիացեալ վայրերու մէջ սակաւաթիւ Յոյներ մնացին։

Այս ընդհանուր կոտորածին մէջ Օրթոտոքս Հայերն ալ ջարդուեցան հաւանաբար և նախկին Հայ բնակչութեան թիւը գուցէ պակսեցաւ։

Պուլկարները և Վլախները Պուլկարիան միայն Պուլկարներու բնակավայրը դարձնելէ ետք, վերահաստատեցին հին Պուլկարիան, որ վերստին սպառնալիք մը եղաւ Բիւզանդիոնի դէմ, որ Եւրոպայի կողմէն իր պաշտպանութեան բնական և ապահով գիծը Դանուբը կորոյս։

Պուլկարները շատ աւելի աղիտաբեր պիտի ըլլային Բիւզանդիոնի, եթէ Պուլկարներու թագուհին գերի ինկած չըլլար։

Այս պարագան պատճառ եղաւ որ 1188ին զինադադար կնքուի և թշնամութիւնները դադրին, հաւանօրէն հարաւային Պուլկարիան Բիւզանդիոնի ձեռքը թողլով։

Այս մասին մէջ էր նաեւ Ֆիլիպէն, ուր 1189ին բաւական նշանակելի թիւով Հայ գաղութի մը գոյութիւնը կը հաստատէ Niketas Choniates (Ակոմինաթ ?) (De Isaacio Angelo II. § 13. էջ 526), պատմելով որ Գ. Խաչակրութեան ատեն ան միակը եղաւ որ քաղաքէն խոյս չտուաւ։

Հ. Գելցեր (385) իր կարգին կը հաստատէ թէ այդ Խաչակրութեան պետը Ֆրետերիկ կայսրը, երբ 1189 Օգոստոս 26ին Ֆիլիպուպոլիս հասաւ, Բիւզանդական տէրութեան քայքայեալ վիճակին մասին մանրամասն տեղեկութիւններ առաւ այդ տեղ բնակող Հայ վաճառականներէն։

Հայերը, որոնք դառնացած էին Բիւզանդացիներէն, օգնելով Ֆրետերիկ Շիկամօրուս կայսեր, վրէժ կը լուծէին անոնցմէ։

Այդ գաղութը անկարելի է որ իր եկեղեցին ունեցած չըլլար, քանի որ իր գլուխը ունէր բարձրաստիճան և լատինագէտ եպիսկոպոս մը իբրեւ առաջնորդ։

1190ին Պուլկարները վերսկսան պատերազմը և յաղթեցին Իսահակ Անգեղոս կայսեր ու գրաւեցին Վառնա, Անխիալոս, Նիշ ու ուրիշ քանի մը քաղաքներ (Պատմ. Պուլկարաց, 33), և ամրապնդեցին իրենց իշխանութիւնը

օժանդակութեամբ Հռոմի Պապին։ (Պուլկարաց Պատմ. էջ 35)։

1197ին Ծռազատիկի պատճառով՝ Կ. Պոլիս, Թրակիա, Մակեդոնիա և արեւմտեան Փոքր Ասիա, ուր տեղերը կ'ապրէին դեռ Հայեր, հալածանքներ կատարուեցան։

Այս պատճառով Գր. Ապիրատ կաթողիկոս (1194—1203) Ներսէս Լամբրոնացին կը ղրկէ Կ. Պոլիս, խնդրելով որ կայսրը Հայերը չնեղէ։

Երբ Լատին կայսրութիւնը հաստատուեցաւ 1201ին Կ. Պոլսոյ մէջ՝ Պուլկարները անոր հետ ալ մաքառեցան և ինչպէս տեսնուեցաւ (վերը, 525—6) նոյնիսկ Պաղտին կայսրը գերի առին։ 1205ին՝ Regnier de Trit Լատին իշխանապետութեան Փիլիպէի շրջանի կառավարիչը հրդեհի տուաւ Պաւղիկեաններու թաղամասը, իսկ յաջորդ 1206ի տարին՝ Յոյներու և Պաւղիկեանց անհաւատարմութեան պատճառով։

Գալոժան Պուլկարաց Զարը (1204—1207) կրակի տուաւ Փիլիպէն ամբողջ և իր անգթութեանց համար առաւ Հռոմէկտոնոս (= Հռոմ-սպան) տիտղոսը Վասիլ Բ.ի Պուլկարոկտոնոս (Պուլկարսպան) տիտղոսին իբրեւ հակադրութիւն։

Ասէն «Մեր» Զարին (1207—1218) տիրապետութեան ժամանակ, որ կը զուգադիպէր Բիւզանդական կայսրութեան բազմաթիւ մասերու կոտորակման (տես. վերը էջ 524), Թէոթորոս Դուկաս Անգեղոս կայսր, որ Եպիրոսի կը տիրէր, Պուլկարիայէն կորզեց շատ մը քաղաքներ և 1222ին Թեսաղոնիկէի տիրելով իր աթոռն հոն փոխադրեց և Պալքանեան թերակղզիին մէջ կազմեց պատկառելի ոյժ մը, նման Ասիոյ մէջ կազմուած Նիկիոյ կայսրութեան։ Սակայն Յովհաննէս Ասէն (1218—1241) Պուլկար Զարը Թեսաղոնիկէի կայսեր ապաշնորհ մէկ արարքէն զայրացած՝ զայն գերի բռնեց և անոր հողերը գրաւեց, կազմելով պետութիւն մը որ Ադրիանուպոլիսէն մինչեւ Ադրիականի եզերքը՝ Տրաչ (Տիւրացցօ), կը տարածուէր,

Ան երկրին խառն բնակչութիւնը մեղմութեամբ սիրաշահիլ աշխատեցաւ և նոյնիսկ Թեսաղոնիկէի և Եպիրոսի մէկ մասը շնորհեց Թէոթորոս կայսեր եղբօրը՝ Մանուէլի, որ իր փեսան էր։

Յովհաննէս Ասէն զինակցեցաւ Նիկիոյ կայսեր հետ և Պոլսոյ վրայ յարձակեցաւ և 1235ին գրաւեց և կործանեց Կալլիպոլիսը (Կէլիպօլու), ուր հաստատուած էին Վենետիկցիք։

Սակայն այս զինակցութիւնը երկար չտեւեց և Յոյներն ու Պուլկարները թշնամացան, և Սերպերը, որ իբրեւ նոր ուժ երեւան եկած էին, իրենք ալ գեր կատարել սկսան։ Բովանդակ Պալքաններու մէջ Յոյները, Պուլկարները և Սերպերը իրարու դէմ մաքառիլ սկսան։ Օսմանեան Թուրքերը առիթէն օգտաքաղելով անցան Եւրոպա և նախ 1389ին Գոսովայի ճակատամարտով ընկճեցին Սերպերը և 1396ին ալ՝ Պուլկարները, և անոնց անկախութեան վերջ տուին։

Այս երկարատեւ պատերազմներու միջոցին Պուլկարիոյ Հայ գաղութին թիւը մեծապէս պակսած է, սակայն անիկա իր գոյութիւնը պահած է։

Նոյնիսկ կը հաստատուի թէ 1436էն առաջ՝ Վառնայի մէջ (այժմ Սթա-



լին) գոյութիւն ունէր Հայ կարեւոր գաղթականութիւն մը, զոր Ճենովացիք Քէֆէէն (= Թէոդոսիա) բերելով հոն հաստատած էին։

Նոյն ատեն անոնք վաճառականական կայաններ կը հաստատեն, նաեւ Պուրկազ և Ռուսճուգ, Սուլթան Սիւլէյմանի ատեն Նախիջեւանէն և յատկապէս Շառոթէն, Հայ գաղթականներ եկած են և հաստատուած նաեւ Սոֆիա, Շումէն և Պուրկազ։

1453ին Պոլսոյ գրաւման պահուն՝ Փիլիպէի մէջ Հայ կարեւոր գաղութ մը կար տակաւին, որ ունէր իր եպիսկոպոսը։

∴

Դանուբի հարաւակողմը բնակող Հայերը, որոնք ազատելու համար Բիւզանդացիներէն և ԺԴ. դարուն Օսմանեան բանակներու առջեւէն միշտ դէպի Հիւսիս կը մղուէին, բնական է պիտի փորձուէին անցնիլ Դանուբը, ուր պիտի հանդիպէին Սեւ ծովու հիւսիսային եզերքէն արդէն հոն հասած և հաստատուած Հայերու։

Արաբական շրջանին իսկ Հայերը թափանցած էին Պոնտայի և Տալմացիոյ ճամբով՝ մէկ կողմէն Իտալիոյ և Ֆրանսայի նաւահանգիստները և միւս կողմէն՝ աւելի հիւսիս, դէպի Խրուաթիա, Թրանսիլվանիա և Հունգարիա (տես. ՊՀԳ. Ա. 336)։

Նոյնպէս այդ ժամանակամիջոցին, այսինքն Է—ԺԱ. դարերու շրջանին, և մանաւորապէս անոր վերջերը, Հայեր հաստատուած էին Ռուսերու և Բոլոնիացիներու իշխանութեան տակ գտնուող երկիրներուն մէջ (տես. ՊՀԳ. Ա. 337)։

Այս մանր գաղութներուն մէջ, ԺԱ. դարէն ետք, ինչպէս տեսնուեցաւ (ՊՀԳ. Ա. 338, ամէնէն ուշագրաւներէն մէկը եղաւ Խրիմը, ուր մինչեւ ԺԱ. դար, հաստատուած կային Հայեր։ Հոն հետզհետէ իրենց թիւը կ'ատուածանար և իրենց առեւտրական գործառնութիւնները, որոնց շնորհիւ յարաբերութիւններ հաստատած էին շատ մը երկիրներու հետ և կը ճոխանային։ Մոլտաւա մէկն էր այն երկիրներէն, որոնց հետ երթեւեկ և յարաբերութիւն ունէին Հայերը։

Մոլտաւա(1) կ'իյնայ Խրիմէն Լեհաստան երթեւեկող Հայ վաճառականներ-

(1) Այսօրուան Ռումանիան երբեմն կը բաղկանար երկու մասէ, Մոլտաւա եւ Վալաքիա: Թուրքերը այս երկու երկիրները կը կոչէին Ուլախ եւ Պուղտան եւ կը կառավարէին քիչ շատ անկախ պէյերով

Մոլտաւան, որուն մայրաքաղաքն էր Եաշ (որ այսօր ալ կը նկատուի երկրորդ մայրաքաղաքը Ռումանիոյ), կը տարբերի իր մշակոյթով, իր բարքերով ու բարբառով Վալաքիայէն (տես. Յ. Ճ. Սիրունի, Ծաղկէ-Ծաղիկ.— Նօթեր Անցորդութենէն, ԱԶԴԱՐԱՐ, թիւ 396. 16 Մարտ 1928) Վալաքիա, որուն մայրաքաղաքն է Պուքրէշ՝ կը կոչուէր նաեւ Մունթէնիա: Հին ատեն Թրանսիլվանիան ալ Ռումանացիներու սեփական էր, ինչպէս Պեսարապիան եւ Պուքովինան:

Ռումանիա, իր աշխարհագրական դիրքին բերումով, միշտ շատ մը ժողովուրդներու անցուդարձի ճամբան եղած է: 1200 տարի առաջ Հռոմ գրաւեց Թրանսիլվանիան իր ոսկի հան-

րու կարաւաններու ճամբուն վրայ և դրացի էր Թրանսիլվանիոյ, ինչպէս նաեւ Բոլոնիոյ և Քիեւի ռուս իշխանութիւններուն։

Մոլտաւա եղած է առաջին օրօրոցը այսօրուան Ռումանիոյ գաղութին։ Թէեւ շատ որոշ և վաւերական տեղեկութիւններ չկան, սակայն ակնարկութիւններ կան շատ կանուխ ժամանակներէն Հայ տարրի մը գոյութեան մասին։

Այսպէս, յիշատակուած է Հայերու գոյութիւնը Արտէալի մէջ Ժ. դարուն՝ Կէյզա դուքսին (972—995) և Ս. Ստեփաննոս (997—1038) Հունգար Թագաւորներու օրով (ՊՀԳ. Ա., 336)։

Անհաւանական չէ որ Հայեր գտնուած ըլլան այդ շրջաններուն, ինչպէս Պալքանեան երկիրներու մէջ, մինչեւ Դանուբի ափերը և անոնց յարակից երկիրները, որոնք ծանօթ էին Հայերուն, Բիւզանդական շրջանէն, ինչպէս բացատրուած է արդէն։

Դանուբի անցքը պաշտպանելու համար Հայաստանէն Պալքանները յաճախ ակամայ և բռնի փոխադրուած Հայերէն մաս մը տարագրուած էր Պուլկարիա, Սերպիա և անկէ ալ Արտէալ (տես. ՊՀԳ. Ա., 337)։

ԺԱ. դարու կէսէն սկսեալ Հայաստանէն փախչող խումբապահար բազմութիւններէն գաղթականներու կարաւաններ նաեւ դէպի հիւսիս կ'ուղղուին, և Խրիմը ընելով իրենց առաջին կայանը՝ կ'առաջանան դէպի Արեւմուտք։

Շօշափելի աղբիւրներ չկան այդ գաղթին ճամբուն ու ապրողութեանը մասին, որքան ալ հաւանական թուի թէ կարաւաններ եկած հասած են մինչեւ Մոլտաւա, ուր Հայ տարրը անծանօթ չէր։

Հայերը Մոլտաւա և Վալաքիա դիմած են ԺԱ. դարուն, հաւանօրէն 1046ին՝ Կոստանդին Մոնոմախոս կայսեր դէպի Արեւելք արշաւանքին և 1064ին՝ Սելջուկներու Անիի տիրելուն հետեւանքով. (Դեմետր Տան, Արեւելեան Հայք ի Պուքովինա, ՀԱ 1891, էջ 18) (1)։

Արդարեւ, 1060—1065ին Մոլտաւայի մէջ կը յիշուին Հայեր, որոնք Անիէն եկած էին։

Ուրեմն ԺԱ. դարուն՝ Հայերը մտած էին հոն, ուր կայք հաստատած էին առեւտրականներ, (Neugebauer. Beschreibung der Moldau und Walachel II. Bd. Լեւոն Բաբայեան Հայերը Մոլդաւայում եւ Բուքովինայում, 1911 Թիֆլիս, էջ 37—38)։

Ցետոյ՝ երկրորդ զանգուած մը՝ կուգայ դարձեալ Անիէն, երբ 1239ին Մոնկոլները կը գրաւեն Բագրատունեաց երբեմնի մայրաքաղաքը։

Հետք չկայ սակայն այս երեք գաղթականութիւններէն ալ։ Նոյնիսկ կը

---

ներով եւ Դանուբի ընդարձակ ու բարեբեր հովիտով:

Իբրեւ առաւել բարեբեր գետեր կ'անցնին Դանուբի հովիտէն: Ռումէն ժողովուրդին կեանքը եղած է յաւիտենական պայքար, որով Ռումանացիք զարգացուցած են իրենց կենսունակութիւնը եւ դիմադրական ոգին ընդդէմ գրեթէ անյաղթելի դժուարութիւններու (Փրոֆ. Նիքոլա Եորգա, Պայքար, 2 Յունիս 1927)

(1 Կը յիշուին նաեւ ուրիշ գաղութներ, ինչպէս 1342ին — երբ Պարսիկներ Անի քաղաքը վերջին անգամ , 1475ին եւ վերջապէս 1600ին (Դ. Տան, Արեւելեան Հայք ի Պուքովինա, նոյն ։



պակսին պատմական ծանօթութիւններ՝ անոնց մասին (Յ. Ճ. Սիրունի)։

Մեր ունեցած տեղեկութիւնները մինչեւ ԺԴ. դար շատ հատուկտոր են։

Իրապէս Հայ գաղութի մը կազմութեան ամէնէն հաւանական թուականը այս երկիրներուն մէջ պէտք է ընդունիլ 1239ը։

Այդ թուականին է որ կրկին Անին կը գրաւուի և իր բնակչութիւնը կը տարտղնի, և Հայ նոր զանգուածներ կը քշուին դէպի Լեհաստան և Մոլտաւա, միշտ Խրիմի ճամբով, սակայն դարձեալ հետքեր չկան այդ թուականին Մոլտաւայի մէջ գոյութիւն ունեցող Հայ գաղութի մը մասին։ Միայն գիտենք՝ որ 1243ին Հունգարիոյ Պէլա Թագաւորին օրով արդէն նշանակալից թիւ մը չունէին Հայերը Արտէալի մէջ։

Ուրեմն խիստ հաւանօրէն Ռումանահայ գաղութի բուն կորիզը Խրիմէն եկած հասուած մըն էր, որ ԺԳ. դարուն կէսերուն Մոլտաւա անցած էր։

Այդ կորիզը կ'ամրանայ երբ Խրիմը կ'անցնի Թաթարներուն ձեռքը 1299ին, Ճենովացիներէն խլուելով։

Ճենովացիներու իշխանութեան տակ իբրեւ առեւտրական մարզուած Հայ տարրը կը ցրուի Լեհաստան և Մոլտաւա, ինչպէս նաեւ հաւանաբար Պօլիս՝ ստեղծելով Հայերու առեւտրական ճիրքերուն առաջին համբաւը։

Մոլտաւա եւս կը վայելէ այդ ձիրքերուն բարիքը, նոյնիսկ իշխանապետութեան կազմուելէն (1353) շատ առաջ, որովհետեւ Մոլտաւ իշխանութեան հիմնադիր Տրակոշ Վոտայի (1352—1353) օրով իսկ կը յիշուի թէ բազմաթիւ Հայեր կային Մոլտաւայի մէջ և լաւ քաղաքացիներ դարձած էին՝ պահելով հանդերձ իրենց կրօնքը ու լեզուն, ինչպէս կը հաւաստէ Հաշտէու Ռումէն պատմագիրը (Istoria Tolerantei Religioase, 1868, 62—64, Յ. Ճ. Սիրունի. Հայրենիք ամսագիր, Է. տարի, Թ. 7, էջ 119)

Հայերը եկած էին Մոլտաւա հաստատուիլ ոչ միայն անոր համար որ խիստ աժան էին հոն հողերը և երկիրը ամէն հնարաւորութիւն ունէր միջազգային առեւտուրի համար, այլ նաեւ, որովհետեւ լաւ հիւրընկալութիւն կը գտնէին Մոլտաւայի իշխաններուն կողմէ։

Այնպէս որ՝ Տրակոշ Վոտայի օրով այնքան աճած էր Հայերուն թիւը, որ անոնք արդէն իրենց եկեղեցիները ունէին Եաշի, Պոթուշանի և Սուչովայի մէջ, թէև դեռ փայտաշէն (նոյն)։

Իշխանապետութեան կազմուելէն (1) ետքը, Հայ տարրը աւելի եւս յարգելի կը դառնար և կարեւոր տեղ մը կը գրաւէր Ռումանիոյ մէջ։

Իշխանապետութեան կազմութեան միջոցին, Մոլտաւա հաստատուած Հայերու թիւը բաւական չէր, որպէսզի անոնք կարենային լիապէս աջակցիլ իշխանապետութեան տնտեսական վերելքին։ Ասոր համար Ռումէն իշխանները անհրաժեշտ սեպեցին իրենց երկիրը հրաւիրել ուրիշ վայրերէ ալ Հայեր, որոնք եկան հաստատուիլ Ռումէն զանազան քաղաքներու մէջ, անժխտելիօրէն ԺԴ.—ԺԴ. դարերուն։

---

(1) Վերը 1353 թուականը նշանակեցինք, բայց աւանդութեան մը համաձայն, այդ իշխանութեան հիմնադիր կը համարուի Լոյվոս Դրագօշ (1342—1344):

Ասոր փաստն է Հայ Եկեղեցիներու գոյութիւնը՝
1350ին Պոթուշանի։
1380ին Ջէթաթէ Ալպայի (= Աքքերման)
1395ին Եաշի մէջ։

Որպէսզի այդ թուականին եկեղեցիներ գոյութիւն ունենային Մոլտաւայի մէջ, պէտք էր որ բաւականաչափ ըլլար Հայոց թիւը հոն, ինչ որ ի յայտ կուգայ այլապէս ալ, երբ Լեհաստանի Հայ եպիսկոպոսին իրաւասութեան կ'ենթարկուին Մոլտաւայի Հայ եկեղեցիները եւ՝ Թէոտորոս, Կոստանդին և այլ կաթողիկոսներու յաջորդական կոնդակներով, և Հայեր կը յիշատակուին ուրիշ քաղաքներու մէջ եւս, ինչպէս 1371ին Սերէթ, 1388ին Սուչաւա և 1399ին Պրաչով։

Մանաւորապէս Ալեքսանդրու Ջէլ Պուն կամ Ամենաբարի (1401—1422) կ'ըլլայ, որ տեսնելով ծաղկեալ վիճակը լեհ քաղաքներու, ուր Հայեր աւելի բազմաթիւ էին քան Մոլտաւական քաղաքներու մէջ, դիւրացուց Հայ վաճառականութեան գործունէութիւնը իր երկրին մէջ, 1407ին Լեհաստանէն Հայ և գերման առեւտրականներ հրաւիրելով իր երկիրը և տուրքերէ և անարդար մաքսերէն զերծ կացուցանելով զանոնք, եթէ հաստատուէին Սուչաւայի, Սերէթի և Ջերնըուցի մէջ։

Այն ատեն է որ Սուչաւայի մէջ կը հաստատուին 700 Հայ ընտանիքներ, որոնք քաղաքին տուին շուտով տնտեսական աւելի մեծ կարեւորութիւն մը, ինչպէս կը շեշտէ Փրոֆ. Վլատ Պընըցիանու։

Արդարեւ 1407 Հոկտեմբեր 8 թուակիր իշխանական հրովարտակով մը Ալէքսանտր Ջէլ Պուն կը կարգաւորէ Կալիցիոյ և Փոտոլիոյ առեւտրականներուն արտածման և ներածման վաճառականութիւնը Մոլտաւայի հետ, և այս առթիւ թեթեւացումներ կը նախատեսէ Հայկական կառքերու համար ալ։ (Պ. Փ. Համտէու, Արհիվա Իստորիքը Ա., էջ 131)։

Իր օրով արդէն 3000 տունի չափ Հայեր հաստատուած էին Մոլտաւայի եօթը գլխաւոր քաղաքներուն մէջ - Սուչավա, Ջէթաթէ-Ալպա (Աքքէրման), Կալաց, Վասլիու, Պօթաշան, Տօրոհոյ և Հոթին։

Այս քաղաքներուն մէջ Սուչաւան էր սակայն առեւտրական մեծագոյն կեդրոնը, ուր սկսան համախմբուիլ Հայերը։ (Յ. Սիրունի, Նոյն)։

Ինչպէս կը հաստատուի Մոլտաւայի Փէթրէ (= Պետրոս) Մուշաթ Վոյվոտը (1378—1393) 1384ին իրեն հպատակ Հայերը կ'ենթարկէ Լէմպէրկի եպիսկոպոսութեան, որուն իրաւասութեան տակ կը գտնուէին ոչ միայն Լեհաստանի՝ այլեւ Փոտոլիոյ, Մոլտաւայի և Պուքովինայի Հայ եկեղեցիները (Հայրենիք ամսաթերթ. Է. տարի, Թ. 8 և 9) և այսպէս կը շարունակուի մինչեւ ԺԶ. դար, երբ Սուչաւա կ'ըլլայ թեմին կեդրոնը (Նոյն), առանձին եպիսկոպոսով մը, որովհետեւ այս քաղաքը եղած էր Մոլտաւայի Վոյվոտին մայրաքաղաքը (Պետրոս քհ. Մամիկոնեան. Նոյն. 40) (1)։

(1) 1565ին երբ Մոլտաւայի Վոյվոդը իր աթոռը Սուչաւայէն Եաշ փոխադրեց, Հայ եպիսկոպոսական աթոռն ալ հոն փոխադրուեցաւ (Պետրոս քհ. Մամիկոնեան, Նոյն, 40):



Փրոֆ. Փ. Փ. Փանայիթէսքուի յայտնաբերած վաւերագիրներուն համաձայն՝ Ալեքսանդր Ջէլ Պուն սլաւ լեզուով գրուած հրովարտակ մը տուած է 1401ին, որով առաջնորդական իրաւասութիւններ կը տրուէր Յովհաննէս անուն եպիս.ի մը, յանձնարարութեանը վրայ Լիթուանիոյ մեծ դուքս Վիթոլտի— որ հետագային պիտի խնամիանար Ալեքսանդր Ջէլ Պունի հետ — որ Մոլտաւայի իշխանէն թոյլտուութիւն կ'ուզէր Սուչաւայի մէջ Հայ եպիսկոպոսութիւն հաստատելու։

Միեւնոյն Ալեքսանդր Ջէլ Պուն իշխանը 1407 Հոկտ. 8 թուականով հրովարտակով մը ինչ ինչ արտօնութիւններ կուտայ Հայերու, մանաւորաբար զերծ կացուցանելով զանոնք անարդար մաքսերէ։

Յակոբ Գ. Կաթողիկոս 1410 Յունիս 26 թուական կոնդակով Լէմպէրկի առաջնորդ կը կարգէ Յովհաննէս եպիսկոպոսը, անոր իրաւասութեան ենթարկելով Սուչաւան և Մոլտաւայի միւս հայաբնակ վայրերը։ (Հայրենիք ամսաթերթ. Է. տարի Թ. 9 և Արազ, Մայիս 10)։

Ալեքսանդրու Ջէլ Պունի յաջորդը Ստեփան Մեծ (1467—1504) կը շարունակէ անոր գործը, Հայերը հրաւիրելով Մոլտաւա՝ երկիրը շէնցնելու համար, և զանոնք հրապուրելու համար կ'ընծայէ ոչ միայն առեւտրական մենաշնորհներ և կրօնական ազատութիւն, այլեւ համայնքային ինքնավարութիւն, նման անոր զոր Հայերը ունէին Լէմպէրկի և Կամենիցի մէջ, ի Լեհաստան։

Հայերուն համայնքային սեփական վարչութիւն ունենալու իրաւունք տուող իշխանն էր Ալեքսանդր Ամենաբարի իշխանը,

Այս իրողութիւնը կը հաստատէ թէ Մոլտաւայի մէջ Հայ գաղթականներու թիւը այնքան պատկառելի էր՝ որ երկրին իշխանները անոնց բացառիկ իրաւունք մը կու տային, ըստ Ռումէն նշանաւոր պատմաբան Հաժտէուի, իրենց սեփական գործերը միայն Հայերէ ընտրուած պաշտօնեաներով տնօրինելու։

Հայերը իրաւունք ստացած էին նաեւ Մոլտաւայի հայաշատ քաղաքներուն մէջ ունենալու իրենց սեփական դատարանները, թաղապետութիւնը եւլն. (Լ. Բաբայեան, Նոյն, էջ 57—58 և Պետրոս քհ. Մամիկոնեան, Նոյն, 42) (1)։

Այսպէս, Հայ տարրը Մոլտաւի մէջ շէնցնողի և ծաղկեցնողի դեր կը կատարէ, երբ երկիրը տակաւին իր սաղմնաւորման մէջ էր։

Գլխաւոր նպաստը, զոր անոնք կը բերէին երկրին, իրենց վաճառականական գործառնութիւններն էին, որոնք մանաւորապէս կը յատկանշուէին իրենց առեւտրական կարաւաններով և երկրին զանազան վայրերուն մէջ հաստատութեամբը հայ առեւտրականներու մշտակայ կորիզներու, որոնք կարաւաններու անցքին ատեն, անհրաժեշտ աջակցութիւնը կ'ընծայէին անոնց։ Այս կորիզները մեծ դեր կատարած են՝ հիմնելով Մոլտաւայի մէջ, մանաւորապէս եօթը քաղաքներ, ուր Հայերը աւելի հոծ թիւով էին, ինչպէս Սուչաւա,

(1) 1469ին Ալեքսանդր Վոյվոդայի ատեն, Սուչաւայի Հայերու քաղաքապետ կամ քաղաքապետական նախագահն էր Սարգիս անուն մէկը (Պետրոս քհ. Մամիկոնեան Նոյն, 42):

*Պոթուշան, Եաշ, Վասլայ (Վասիլու), Սերէթ, Հոթին և Կալաց* (1)։

*Ասոնցմէ ոմանք տօնավաճառի հասարակ կայքեր էին, զորս Հայերը քաղաքի վերածեցին։*

*Այդ թուականներուն կը յիշատակուին նաև հայկական խաներ զանազան քաղաքներու մէջ։*

*Ուրեմն ամէնէն նշանակելի դերը, զոր Հայերը կատարած են իրենց դարաւոր բնակակցութեան ընթացքին բնիկ ժողովուրդին հետ, իրենց առևտրական գործունէութիւնն է, որ մեծապէս նպաստած է երկրին տնտեսական վերելքին։*

*Մոլտաւայէն կ'անցնէր Արևելքը՝ Արևմուտքին միացնող առևտրական ճամբան և Հայերը՝ որոնք այդ երկու աշխարհներուն միջև իբրև առևտրական միջնորդ կը ծառայէին, Մոլտաւան ըրած են խարիսխ իրենց յարաբերութիւններուն։ Արդարեւ Մոլտաւա առևտրական տեսակէտէն, այն առաւելութիւնը կը ներկայացնէր, որ կը գտնուէր վաճառականութեան մեծ ճամբուն վրայ, ուր Հայ առևտրականները կրնային իրենց ապրանքները սպառել և վաճառականական ու տնտեսական կապեր հաստատել դրացի երկիրներուն հետ։ Այս պատճառով՝ ԺԵ. դարուն՝ Հայերու թիւը Մոլտաւայի մէջ մէկ անգամէն զգալի կերպով շատցաւ։ Աղեքսանդր Չէլ Պուն իշխանի ժամանակ, 1418ին, մօտաւորապէս 3,000 (ըստ ոմանց 4,000) Հայ ընտանիքներ բնակութիւն հաստատեցին Մոլտաւայի վերոյիշեալ եօթը քաղաքներուն մէջ (տես. Պետրոս քհ. Մամիկոնեան,* Ռումանահայոց Ներկայն եւ ապագայն, *Կալաց,* 1895, *էջ* 38)։ *Իսկ* 1473*ին, Ստեփան Մեծի ատեն, Հայ գաղթականներու մեծ հատուած մը աւելի կ'ստուարացնէր Մոլտաւայի հին գաղթականներու թիւը (Լեւոն Բաբայեան,* Նոյն, *էջ* 41—42)։

*ԺԵ. դարուն ծաղկած էին մանաւանդ Սուչաւա, Սերեթ, Չերնովից, Եաշ և Պոթուշան քաղաքները, որովհետև այդ տեղերը կեդրոնացած էին մանաւորապէս Հայ առևտրական գաղթականները։*

*Հայերու առևտրական յարաբերութեանց գլխաւոր կեդրոնը Սուչաւա քաղաքն էր, իբրև ապրանքներու մաքսատեղի և մթերանոց։ ԺԵ. դարուն վերջը, ըստ պատմաբան Լուկաչիի* (Lukacsi), *Սուչաւա ունէր մօտաւորապէս* 700 *տուն Հայ բնակիչ. (Լ. Բաբայեան, էջ* 42)։

*Հայերու ԺԵ. դարուն սկիզբն իսկ բաւական ստուարաթիւ գաղթականութիւն մը ունենալուն ապացոյց կրնայ համարուիլ* 1415—1445*ի միջոցին Աւետիք Եպս.ի մը գոյութիւնը իբրև հոգևոր պետ Մոլտաւայի Կամէնիցի, Ռուզաց և Օլախաց աշխարհի (տես. ՀԱ.* 1891, *էջ* 19, Հայրենիք *ամս. Է. տարի, Թ.* 9, *Պետրոս քհ. Մամիկոնեան,* Նոյն, *էջ* 39)։

*Ցատկապէս վեր առնելով Հայոց այդ դերը, Փրոֆ. Եօհ. Անճէլէսքու կ'ըսէ իր* «ՌՈՒՄԷՆՆԵՐՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ» (*Փարիզ,* 1919, *էջ*

(1) Ուրիշ եօթնանուն ցանկի մը մէջ Եաշ եւ Սերէթ կը պակսին եւ անոնց տեղը կը գրուեն Աքքերմանի եւ Տոսոնայ անունները:

Իսկ Լեւոն Բաբայեան կը յիշէ նաեւ Չէրնովիցը:



238) *գիրքին մէջ.* «Երբ Ռումէնները յաջողեցան իրենց հին առեւտրական ծաղկման պահուն հասնիլ հեռաւոր շրջաններ, ճանչցան Սեւ Ծովու բոլոր եզերքները եւ նոյնիսկ Միջերկրական թափանցել նեղուցներու ճամբով, պէտք չէ Իտալացիներու վերագրել այդ բանը, այլ Արեւելքը լաւ ճանչցող ուրիշ առեւտրականներու՝ Հայերուն: Անոնք մեծ դեր խաղացին ռումէն առեւտուրի սկզբնաւորութեան եւ քաղաքներու բնակչութեան կազմութեան մէջ»:

*Նոյն ատենուան վաճառականութիւնը կը կատարուէր կարաւաններու միջոցաւ, և ռումէն առևտուրի պատմութեան մէջ, իրենց նշանակութիւնը ունեցած են* «Հայկական կառքեր», (*Փրոֆ. Փ. Փանայիթէսքու,* Լեհ ուղեւորներ Ռումէն երկիրներու մէջ, 6), *որոնցմէ կը բաղկանային առևտրական կարաւանները, Արևմուտքի և Արևելքի միջեւ իրենց ճամբորդութեան ընթացքին։ Կարաւանները կը կազմուէին բազմաթիւ կառքերէ, որպէսզի կարելի եղածին չափ ստուար թիւ ունենան ճամբու ընթացքին, իրենց ապահովութեան համար։ Լեհաստանը մեկնակէտ էր կարաւաններուն։ Հոնկէ ճամբայ կ'ելլէին Արևելք գացող կարաւանները, յաճախ գալով Եւրոպայի ամէնէն հեռաւոր շրջաններէն, Սիլէզիայէն, Գերմանիայէն ևայլն։ Կարաւանապետը Հայ կ'ըլլար միշտ, ինչպէս կը գրէ Լեհ պատմագիրը* (Վլատիսլաւ Լուբիենսքի), *որ կ'աւելցնէ թէ* «Հայոց յանդգնութիւնն եւ դիւանագիտական բնածին շնորհքը չէին կրնար այնքան լաւ ի յայտ գալ, որքան իրենց ճամբորդութեան ընթացքին դէպի Արեւելք, ուրկէ յաջողապէս կը դառնային ապրանքներով բեռցած»:

*Այսպէս, Հայեր, առևտրական կեանք և ոգևորութիւն կ'ստեղծէին նախնական երկիրի մը մէջ և քաղաքներ կ'ստեղծէին հասարակ տօնավաճառի կայաններէն։*

*Հայերը բերած են նաև իրենց աջակցութիւնը երկիրին երկրագործական ճարտարարուեստին։ Անոնք առաջինները եղան, որ սիսթէմաթիք հողագործութիւն ըրին՝ հողի լայն տարածութիւններու վրայ։*

*Մոլտաւայի Հայերն էին որ տեղական լաւագոյն ձիերը արտադրեցին յետոյ վաճառելու համար զանոնք Աւստրիոյ և Բրուսիոյ մէջ։*

*Վերջապէս յիշատակութեան արժանի է Հայոց դերը երկիրին փոքր առևտուրին մէջ ալ։ Չէր բաւեր իրենց միջնորդի դերը, անհրաժեշտ էր նաև բերուած ապրանքները զետեղել։ Ատկէ է որ Հայերը անթիւ խանութներ բացին երկիրին մէջ։*

*Հայ առևտուրին ամէնէն փայլուն շրջանը ԺԴ., ԺԵ., ԺԶ. և ԺԷ. դարերն էին, երբ աչքառու միակ միջնորդներն էին Հայերը, բոլոր Մերձաւոր Արևելքի և Արևելեան Եւրոպայի միջեւ։*

*Հայ առևտուրի գերակայութիւնը կը տեւէ մինչեւ* 1600, *ռումանականութեան փառքի շրջանը, (Պ. Փ. Հաժտէու,* Պինելէ Փուպլիք, 1885, Ունիրեա, *լրագիր, Պուքրէշ,* Հայերը Ռումանիոյ առեւտուրին մէջ *յօդուածը)։*

*Այսպէս, դարերու ընթացքին, Հայերու թիւը շատցած է Ռումանիոյ մէջ և օրուան իշխանները անոնց առևտրական շատ մը մենաշնորհներ տուած են (Յ. Ճ. Սիրունի,* Ազդարար *Թ.* 396), *ինչպէս տեսնուեցաւ։*

*Հայոց վայելած ապնջականութիւնը անսահման եղած է յատկապէս Մոլ-*

տաւայի մէջ, և պէտք է գիտնալ թէ Հայերն ալ այդ ասպնջականութեան համապատասխան հաւատարմութեամբ և նուիրումով ծառայած են երկրին։

Պարզ հաճոյակատարութիւն մը չէր երբ Ալեքսանդր Չէլ Պուն, 1401 թուականով, հրովարտակով մը Հայ Եպիսկոպոսութիւն մը կը հիմնէր Սուչաւայի մէջ, (Ց. Ճ. Սիրունի, նոյն)։

Հայերը հոծ էին արդէն վաղուց՝ իրենց թիւովը Ալէքսանդր Չէլ Պունի ատեն և անկէ շատ առաջ իսկ և երբ 1352ին Տրակոշ Վոտա հիմը կը դնէր Մոլտաւայի իշխանութեան, Հայ տարր մը կար արդէն իր նշանակալից դիրքով, ինչպէս տեսնուեցաւ։

Ց. Ճ. Սիրունի, 1939ին, յօդուածի մը մէջ կ՚ըսէր թէ «Սխալ կ՚ըլլայ ըսել թէ Հայ գաղութին սկզբնական կորիզը առեւտրական տարր մը կազմեց, ինչպէս կը յեղյեղուի այնքան թիւրիմացութեամբ:

Առեւտուրը այն դարերուն արկածախնդրութիւն էր լոկ, եւ արկածախնդիրներէ չէին կազմուած միայն Հայաստանէն մեկնող կարաւանները:

Այո՛, վաճառականներ ալ կային, որոնք կը թափառէին երկրէ երկիր, ապրանքներու փոխանակութեան համար: Ճենովացիք, Խրիմի մէջ, մարզած էին Հայ տարր մը եւս, եւ առեւտրական ընդունակութիւններ փոխանցած ժողովուրդի մը, որ իր հայրենի երկրին մէջ հողով ու արհեստով զբաղած էր միայն մինչեւ այն դարերուն:

Ու առեւտրական այդ տարրն էր որ իբր միջնորդ ծառայեց Խրիմէն մինչեւ Լեհաստան ու աւելի հեռուները, ու անկէ ալ դէպի Պուքովինա եւ Մոլտաւա, նոյն իսկ երբ Թուրքերն ու Թաթարները Խրիմը խլեցին Ճենովացիներէն:

Ամէն պատճառ ունինք ենթադրելու որ Անիէն եկող զանգուածը քաղքենի դաս մըն էր աւելի ու քաղաքակրթապէս իր նոր շրջապատէն աւելի բարձր: Ասկէ է որ Պուքովինայի եւ Մոլտաւայի Հայերը հպարտ եղած են միշտ իրենց ծագումով, ու գուրգուրանքով պահած միշտ Անիի յիշատակը: Աւելին. վերէն նայած են միշտ իրենց շրջապատին վրայ՝ ազնուականութեան հով մը տալով իրենք իրենց, իբրեւ շառաւիղները հազար եւ մէկ եկեղեցիներով այն մեծ քաղաքին: Մոլտաւայի Հայերը նոյնիսկ խէթով պիտի դիտէին յետոյ Մունթենիոյ Հայութիւնը, որ յաջորդ դարերուն Պալքանի ճամբով Թուրքիայէն պիտի գար:

Դարերով ցուրտ եղան Մոլտաւայի եւ Մունթենիոյ Հայերը իրարու հանդէպ, որովհետեւ Մոլտաւան ինքզինքը աւելի ազնուական կը սեպէր, հպարտ իր ծագումովը ու հաւատարիմ իր հայրենի աւանդութիւններուն, զորս կը պահէր այնքան զորովով՝ դարեր յետոյ ալ: Ասկէ է որ Մոլտաւայի Հայերը այնքան երկար պահեցին իրենց հայրենի բարքերը, մինչ Մունթենիան աւելի շուտ այլասերեցաւ, ու վաղուց պիտի չիք դառնար իբրեւ գաղութ, եթէ նոր վտակներ չգային անընդհատ ամէն հալածանքէ ու ջարդէ յետոյ»:



*
* *

Պուլկարիոյ և Ռումանիոյ Հայերը չեն սահմանափակուած այդ երկիրներուն մէջ՝ նոյն իսկ արաբ տիրապետութեան շրջանին, և Պուլկարիայէն անցած են Տալմացիոյ և Պոսնայի ճամբով՝ Իտալիա և հարաւային Ֆրանսա, և Ռումանիայէն՝ աւելի հիւսիս Թրանսիլվանիա և Հունգարիա, (տես. ՊՀԳ. Ա., 336), Մաճառ և ուրիշ օտար ազգի հեղինակներու տուած տեղեկութիւններուն վրայ հիմնուած։ Անոնք նոյնիսկ կը հաւաստէին գոյութիւնը Հայկական Հողի (Terra Armenorum) մը (տես. ՊՀԳ. Ա., 337)։

Առաջին անգամ Հայերը հունգարական տիրապետութեան տակ գտնուած են Մաճառ Արփար արքայական ընտանիքին իշխանութեան շրջանին (997—1307)։ Անոնք նախ շատ աննշան թիւ մը ունեցած պէտք է ըլլան, բայց յետոյ, ԺԱ. դարուն թերևս 1065ի Անիի գրաւումէն ետք և աւելի ուշ՝ ԺԳ. դարուն, (1239ին) Հայաստանէն՝ Լեհաստան և Պալքանները՝ ստուար թիւով գաղթող Հայերէն մաս մը հաւանօրէն առաջացած է մինչև Հունգարիա և ստուարացուցած՝ գաղութը։

Քեզացի Շիմոն (= Սիմոն) որ ԺԳ. դարուն ապրած Մաճառ պատմագիր է, և Թրոցքի քրոնիկագիրը, կը հաստատեն թէ Կէյզա Դուքս (972—995) և Ս. Ստեփանոս (997— 1038) և ուրիշ Մաճառ թագաւորներու ատեն, այսինքն Ժ. դարուն վերջերը, և ԺԱ. դարուն սկիզբները, Հայեր բնակած են Հունգարիոյ մէջ, մասնաւորապէս Էսթերկոմ (Esztergom) քաղաքը [1], որ հին ատեն Հունգարիոյ մայրաքաղաքն էր։

Թերևս այս գաղութին հաստատումը կապ ունէր այն ծանօթութեան հետ, որ Հայերը և Մաճառները ունեցան իրարու հետ՝ Հունգարիոյ Անդրէաս Բ. թագաւորին 1217ին կատարած Խաչակրութեան ձախող ձեռնարկին պատճառով, վասնզի Հունգարիոյ թագաւորին բանակը երկար ամիսներ կանգ առած էր Կիլիկիոյ մէջ։ Այս առթիւ Անդրէաս թագաւորին և անոր ժողովուրդին անունը պէտք է ծանօթացած ըլլայ Հայերուն, քանի որ Հունգար թագաւորը լաւ յարաբերութիւններ մշակած էր Հայոց Լևոն Ա. թագաւորին հետ և իր որդին նշանած էր Հայոց թագաւորին աղջկան հետ։ Ոնորիոս Գ. Պապը (1216—1227) օրհնած էր այս նշանախօսութիւնը, պայման դնելով որ Լևոն թագաւորին մահէն ետք. Հունգար իշխանը թագաւոր դառնայ Կիլիկիոյ, սակայն Լևոն Ա.ի մահէն ետք, անոր աղջիկը՝ Զապէլ ամուսնացաւ Անտիոքի Փիլիպ իշխանին հետ, որ ինչպէս ծանօթ է, իր ապաշնորհ ընթացքով չկրցաւ Հայերը սիրաշահիլ և Հայոց գահը կորսնցուց (1225)։

Այս միջադէպը պատճառ եղաւ որ Հայերը Հունգարիոյ մէջ շնորհ և լաւ ընդունելութիւն գտնէին, երբ 1239ի, Հայաստանի Մոնկոլական գրաւումէն և 1313ի զարհուրելի երկրաշարժէն ետք, Անիէն և Հայաստանի զանազան մասերէն հողմացրիւ հայ գաղթականներու խումբեր հեռաւոր վայրեր կ՚ապաստանէին։

---

(1) Էսթերկոմ կը գտնուէր արդի մայրաքաղաքին՝ Պուտափեշթի մօտ: Լատինները զայն կը կոչէին Ստրիգոնիա (Strigonia) եւ Գերմանները՝ Կռուն (Grun):

Հաստատելու համար թէ Հայերը Հունգարիոյ մէջ սիրով ընդունուած են, կ'արժէ յիշել թէ Պելա Դ. (1235—1270) թագաւորը 1243ին ամէն ազատութիւն տուած էր Հայ գաղթականներուն։ Նոյնպէս կը յիշուի թէ այս թագաւորին օրով Էսթէրկոմ քաղաքին մէջ կ'ապրէր բաւական հարուստ հայ գաղութ մը (Հրանտ Սարգիս Ուշտունի, Ակնարկ մը Հունգարիոյ Հայոց անցեալին վրայ. Տրանսիլվանիոյ Հայ գաղութը, ԱՐԵՒՄՈՒՏՔ, Ա. տարի, թ. 18, 23 Մարտ, 1947)։ Այս գաղութէն զատ եղած են ուրիշ բաւական թիւով հայ գաղութներ ալ, ինչպէս կը հետեւի կարգ մը վայրերու անուններէն։ Այսպէս, կան Էօրմինեէշ (1) (Հայնոց), Սասէօրմինեէշ (Սաքսոնական Հայնոց), Էօրմինեէյիք (Հայաթոռ), (հմմտ. Ուշտունի, Նոյն)։

Բայց դժբախտաբար ԺԳ. դարուն երկրորդ կէսին «հայ հիւրերը» հեռացած են Հունգարիայէն, վասնզի 1281ին Լաւիսլաւ Դ. թագաւորը Հայերու կալուածներուն մէկ մէկ մասը գրաւած և Օգոստինոսեան կրօնաւորներու նուիրած էր (Հ. Ս. Ուշտունի և ՀԱ. 1906, 161—170)։ Իսկ եթէ մնացողներ ալ եղած են, գուցէ անոնք ալ խառն ամուսնութիւններով կորսուած են։

Այսպէս հայ գաղութը եթէ ոչ բոլորովին՝ գէթ մեծ մասով անչքացած և անհետացած է։

Հայերու, Հունգարիայէն հեռանալէն յետոյ, կը հաստատուի Լվովի (Լեմպերկ) Հայ գաղութը, որ Գազիմիր Գ.ի (1333—1370) ատեն արդէն Եպիսկոպոս մը ունէր և եւ ոքը այնպիսի ազատութիւններ և արտօնութիւններ ստացած էր, որ մեծ հարստութեան և ճոխութեան տիրացած էր։

Հայերու, Լեհաստան հաստատուելէն հետ, Հունգարիա ալ կարելի է նոր գաղթականներ ընդունած է, վասնզի նոյն ԺԴ. դարուն Թալմաշ (2) գաւառին մէջ կը գտնենք Հայ Կաթոլիկ Եպիսկոպոս մը, որ իրեն հետեւող բազմաթիւ հաւատացեալներ ունէր։ Նոյնպէս փաստեր կան, որ այդ ժամանակները Թալմաշի Պրաշով (հունգ. Bresso, ռում. Brasov, գերմաներէն՝ Kronstadt) ու Սիպիու (հունգ. Nagyszeben, ռում.՝ Sibin, գերմ. Hermanstadt) քաղաքներուն մէջ ալ Հայեր կ'ապրէին (Բազմավէպ, 1947, էջ 235, Տոքթ. Ֆէլիքս Աւետիք, Հայերը Հունգարիոյ մէջ)։

---

(1) Խորմին հունգարերէն կը նշանակէ Հայ եւ բաց Ռումէնի, թուրքերէն Էրմէնի բառէն է (Նոյն)։

(2) Թալմաշ (Talmàcs) պատմական Հունգարիոյ արեւելեան մասին, այսինքն Տրանսիլվանիոյ (հունգ. Erdély, լտ. Transylvania) մէջ կը գտնուէր։ Սիրունի իր Արազ տարեգիրքին մէջ (Ա. տարի, 1933, էջ 163) 1345 թուականով կը յիշատակէ Հայ եպիսկոպոս մը Թլմաշի մէջ, ի Տրանսիլվանիա (Episcopus Armenorum de Tulmachy), ինչ որ Հաժդէու կը նկատէ փաստ Հայ գաղթականութեան մը գոյութեան, նոյն երջանին մէջ (Revista Nouă, 15 Մարտ 1888)։

Տրանսիլվանիա, որ այժմ մաս կը կազմէ Ռումանիոյ, երբեմն, այսինքն Ս. Ստեփանոս թագաւորէն (1001—1028) մինչեւ 1526, մաս կը կազմէր Հունգարիոյ եւ 1526էն մինչեւ 1848 ինքնավար պետութիւն մը եղաւ։ 1848ին, նորէն Հունգարիոյ կցուած է։

Առաջին Համաշխարհային պատերազմէն յետոյ, Տրիանոնի խաղաղութեան դաշինքով (1921) Ռումանիոյ տրուեցաւ, իսկ Բ. համաշխարհային պատերազմին, Հունգարացիք նորէն տիրապետեցին, բայց ետքը նորէն Ռումանիոյ զիջիլ ստիպուեցան։



ԺԴ. դարուն կը յիշուի նաև Իշդվան «Ստեփան», իսկ ԺԵ. դարուն Թոմայէ անուն Հայ վարդապետը՝ Էսթէրկոմ քաղաքին մէջ (Հ. Ս. Ուշտունի Նոյն)։ Իսկ Էսթէրկոմ քաղաքին Միքլոշ անուն կաթոլիկ եպիսկոպոսը, իր մէկ կոնդակին մէջ, 1453ին, կը յիշէ Հայ եպիսկոպոս մը, որուն հայատառ կնիքը Հունգարական Թանգարանին ձեռագրատան մէջ պահուած կը մնայ ցարդ (Թ. 2242. ըստ Ուշտունիի, Նոյն)։

Ըստ վաւերագիրներու, կը յիշուին նաեւ երեւելի Հայեր իբրեւ Արմենուս Եկեսուս, այսինքն Փեշթա քաղաքին թաղապետական երդուեալ առաջնորդ։ Իսկ Հունյատի Մաթիաշ (1458—1490) թագաւորին պալատական դատաւորը Էրմենի Ստեփան (Էրմենի Ստեֆանոս) Հայ մըն էր (ըստ Ուշտունիի ի Շալամոն Ֆետենցի Ռուսափիւրքի Պատմութիւն, 1885 հտ. Գ.)։

Այս գաղութներուն և անհատներուն մասին ձեռք բերուած տեղեկութիւնները սոսկ պատահական են, վասնզի ընթերցումներու դիպուածին և կամ քանի մը Հայասէր Հունգարացիներու պրպտումին կը պարտինք (Ուշտունի, Նոյն), մինչ մանաւոր կերպով՝ Հայկական տեսակէտէն՝ Հունգարական պատմութիւնը ուսումնասիրուելով թերեւս ուրիշ յայտնութիւններ երեւան պիտի գային։

Ինչ որ ամէնէն նշանակելին է՝ որոշ տուեալներ չկան թէ անոնք ի՞նչ ճամբով և ի՞նչ բանէ մղուած Թրանսիլվանիա եկած են և հոն տեղաւորուած։

Անոնք շատ ուշ, ԺԷ. դարուն վերջերը միայն խառնուած են երկիրին պատմութեան կամ անոր մէջ յիշատակուած են. հետեւաբար Միջին դարուն տեւողութեան իրենց կեանքին մասին լիակատար տեղեկութիւններ չունինք, թերեւս անոր համար որ մեծ թիւ մը չունէին անոնք։

*
* *

Պալքանեան թերակղզին հաստատուած Հայերը՝ տեսնուեցաւ որ Պուլկարիայէն դէպի Արեւմուտք դիմելով՝ Թօնայի և Տալմացիոյ ճամբով տարածուած էին մինչեւ Իտալիա և Ֆրանսա, իսկ միւս կողմէն տեսանք թէ Կիլիկիոյ թագաւորութեան կործանումէն (1375) ետք՝ Հայ մեծ զանգուածներ ծովերէն անդին փախուստ տուած և Միջերկրականի կղզիներէն անցնելով անցած են Եւրոպա, ուր իրենց առաջին կայանը եղած է Իտալական թերակղզին, որուն հետ Քր.է առաջ 190 թուականէն սկսեալ Հայերը ունեցած էին բազմատեսակ յարաբերութիւններ (ՊՀԳ. Ա. 128), որոնք շատ աւելի զարգացած էին Մեծն Տիգրանէն ետքը, երբ Հռոմ Հայաստանի գերիշխանութեան համար պայքար կը մղէր Պարթեւներու և Սասանեաններու հետ. (ՊՀԳ. Ա. 126—127)։

Սակայն Հռոմէական ընդարձակածաւալ պետութեան մանաւորապէս Ասիական բաժինին՝ Յունաստանի մէջ է որ Հայեր հաստատուած էին Քրիստո-

նէութեան առաջին դարերուն (ՊՀԳ. 128—9) և շատ սակաւաթիւ Հայեր միայն մինչեւ Իտալիա գացած էին, ինչպէս Հայազգի Սուրբ Արշակ, որ Միլանի արքեպիսկոպոս եղած էր Դ. դարուն ըստ Liber Notifiæ Sanctorum Mediolanii (Գիրք ծանօթութեանց Միլանի Սրբոց վրայ) և Էրօվանդ (=Երուանդ) անուն Հայը, որ 469ին Կալլիոյ (արդի Ֆրանսայի) կուսակալ նշանակուած էր Հռոմէն ըստ Փրոֆ. Ադոնցի։ Կան նաև կարգ մը արքայազուն պատանդներ և պատահական Հայ մարդիկ, որոնք Իտալիա գացած են մեծ մասամբ իբրեւ պաշտօնակալ, ինչպէս Զ. և Է. դարուն Բիւզանդացի այն զօրավարները, որոնք իբրեւ Իտալիոյ Էքսարք Ռավէնա նստելով՝ գրեթէ երկու դար կառավարած են Իտալիան, շրջապատուած Հայ զօրքերով և զօրականներով (ՊՀԳ. Ա. 172—174)։

Նոյնպէս կը յիշուէին Սիկիլիա տեղաւորուած Արեւելքցի փախստականներ (Գելցեր, 130, և ՊՀԳ. Ա., 258 և 331), ի մէջ այլոց Հայեր։ Է. դարուն կէսերը, Իտալիոյ մէջ կը գտնուէին Հայ զինուորներ, հրամանին տակ Հայ զօրավարի մը՝ Մժէժի, զոր Կոստանդ Կայսրը 648ին, Իտալիա տարած էր։

Մժէժ քանի տարի այս պաշտօնը վարելէ ետք՝ զինուորներուն պահանջով 668ին՝ Սիկիլիոյ մէջ Կայսր հռչակուած և եղերական մահ մը ունեցած է (ՊՀԳ. Ա., 258—9)։

Իտալիա, մանաւորապէս Սիկիլիա կղզին, եղած էր տեսակ մը աքսորավայր։ Կոստանդին Կայսրը հոն ղրկած էր հազարաւոր գերիներ՝ 786 Յունիս 4ի ապստամբներէ (Թեոփանես, 725 և ՊՀԳ. Ա., 331)։ Թ. դարուն, Իտալիոյ մէջ գտնուած են Պաւլիկեան լեգէոններ ևս, որոնք Ասիայէն փոխադրուած էին հոն (ՊՀԳ. Ա., 332)։

Հայերը և Պաւլիկեանք շատ կանուխէն տարածուած էին, իբրև վաճառականներ Միջերկրականի եզերքները, մանաւորապէս Իտալիոյ և Ֆրանսայի նաւահանգիստները։

Դժբախտաբար Սիկիլիան, զոր երկար ատեն իրարու ձեռքէ յափշտակելու համար մաքառեցան Արաբները և Բիւզանդացիները (ՊՀԳ. Ա., 333), ինչպէս և բովանդակ Իտալիան, որ — Ե. դարէն սկսեալ ոտնակոխ եղած է բարբարոսներէն, — նպաստաւոր միջավայրեր չէին Հայ գաղթականներուն համար, որոնց թիւը շատ պակսեցաւ Բիւզանդական տիրապետութեան վերջ գտնելէն յետոյ, այնպէս որ՝ Թ.էն մինչեւ ԺԱ. դար, սակաւաթիւ Հայ դէմքեր կը յիշուին Իտալիոյ մէջ, (ՊՀԳ. Ա., 336—343), և գրեթէ Հայ գաղութները կ'անհետանան, հաւանօրէն տեղացիներու հետ խառնուելով կամ այլուր փոխադրուելով (ՊՀԳ. Ա., 335)։

Բարբարոսներու տիրապետութիւնը Իտալիոյ վրայ, Հայերու համար հեռաւոր աշխարհ մը դարձուց հին Հռոմը, որուն յաջորդած էր Հայ աշխարհին հետ այնքան սերտ յարաբերութիւններ ունեցող Նոր Հռոմը կամ Կ. Պոլիսը։ Կ. Պոլսոյ (Բիւզանդիոն) գործադրած կրօնական հալածանքներուն պատճառով, ինչպէս յիշուեցաւ (ՊՀԳ. Ա. 336), Հայեր, Իտալիոյ նաւահանգիստներուն մէջ հաստատուած էին։ Անոնք ուղղափառ կամ աղանդաւոր Հայեր էին և հոն գացած էին Պուլկարիայէն՝ Պոնայի ու Տալմացիայի ճամբով։



Կասկած չկայ թէ Միջին Դարուն շատ մը արհեստաւոր և վաճառական Հայեր կային Իտալիոյ մէջ (Գ. Խանամիրեան, Պայքարի բացառիկ 1951, էջ 9), որոնք սակայն կ'երեւի կարեւոր դեր մը չեն կատարած, վասնզի շատ հազուագիւտ կերպով կը հանդիպինք Հայերու յիշատակութեան մինչև ԺԱ. դար Իտալիոյ մէջ, Խաչակրութիւններու շարժման սկզբնաւորութեանը։

Խաչակիրները կերպով մը վերահաստատեցին իրարմէ հեռացած արեւմտեան և արեւելեան երկիրները և ծանօթացուցին Եւրոպան, Արեւելքի քրիստոնեայ ժողովուրդներուն, որոնք ճնշուած Ասիական բարբարոսներէն՝ իբրեւ ազատարարներ ընդունեցին Հռոմի Պապերուն թելադրութեամբ դէպի Երուսաղէմ դիմող այլազան ժողովուրդներէ բաղկացեալ այդ խայտաբղէտ խաժամուժը, որ կ'երթար կռուիլ մահմետականներու դէմ՝ փրկելու համար Ս. Երկիրը։

Արեւելքի քրիստոնեաները, որքան նեղուած մահմետականներէն, նոյնքան ալ զզուած էին Բիւզանդական մոլեռանդութենէն և անոր գործադրած հալածանքներէն, հետեւաբար սիրով փարեցան Խաչակիրներուն և աշխատեցան ի նպաստ անոնց յաջողութեան, յուսալով որ ինչ որ Բիւզանդիոն չէր կրցած, Եւրոպացի այս ժողովուրդները պիտի կարենային, և պիտի ընկճէին մահմետական ազգերու և ասիական բարբարոսներու ուժը, որ կ'սպառնար Արեւելքի քրիստոնեաներու գոյութեան։ Հայը մէկն էր այն արեւելեան քրիստոնեայ ժողովուրդներէն, որոնք հաւատացին արեւմուտքէն հասնող այս «փրկութեան» և ամէն անձնուիրութիւն ցոյց տուին հանդէպ Խաչակիրներու։ Ուստի Ա. Խաչակրութենէն (1097) ետքը, Հայ և Ֆրանկ յարաբերութիւնները սերտացան, մանաւանդ երբ Եւրոպացի այդ արշաւողներուն շնորհիւ ամրապնդուեցաւ Ռուբէնի նոր հիմնած իշխանապետութեան դիրքը, միջազգային տեսակէտէն ճանչցուելով անոր իշխանութիւնը, հակառակ Բիւզանդիոնի ժխտական կեցուածքին։ Եղան ժամանակներ, որ Կիլիկիան Հայ իշխանութիւնը այնքան կախում ունեցաւ արեւմտեան Լատին երկիրներէն, որքան ունէին Անտիոքի և Եդեսիոյ Լատին դքսութիւնները։

Հետեւաբար Ֆրանկները Կիլիկիոյ մէջ վայելեցին բացառիկ առանձնաշնորհումներ, որոնցմէ մանաւորապէս օգտուեցան Արեւելքի ծովային վաճառականութեան ռահվիրայ իտալական երեք քաղաքներու — Վենետիկի, Ճենովայի և Պիզայի — քաղաքացիները, որոնք տնտեսական գետնի վրայ Արեւելքի մէջ յեղաշրջումի մը առաջնորդ հանդիսացան, օգտուելով այն ծանօթութիւններէն զորս Խաչակիրները կ'ստանային Արեւելքէն, ուսումնասիրելով երկիրը և իր արտադրութիւնները, ինչպէս այն հնարաւորութիւնները, որոնք տնտեսական շահարկութեանց և իրենց ծովային առեւտուրին կրնային նպաստել։ Այսպէս, Խաչակրութիւնները մեծ փոփոխութիւնները մտցուցին Մերձաւոր Արեւելքի և Եւրոպայի կեանքին մէջ, բոլորովին անջատօրէն զարգացած քաղաքակրթութիւններու միջեւ շփում ստեղծելով։ Ասիկա ծնունդ տուաւ մեծ յեղաշրջումներու՝ իմացական, առեւտրական և ճարտարարուեստական մարզերու մէջ և սկսաւ ոգեւորեալ գործունէութիւն մը Արեւելքի և Արեւմուտքի միջեւ։

Աշխարհի առեւտրական շարժումը աւելի ընդարձակ սահմաններ ընդ-

գըրկեց և զանազան երկիրներու բերքեր տեղէ տեղ փոխադրուիլ սկսան։ Այս մարզին մէջ ամէնէն յառաջընթացները հանդիսացան, ինչպէս ըսինք, Վենետիկցիք, Բիզացիք և Ճենովացիք, որոնց կազմած ծովային հասարակապետութիւնները Արեւելքի վաճառականութիւնը իրենց ձեռքերուն մէջ առին և այնքան ընդարձակ յարաբերութիւններ մշակեցին, որ գրեթէ բոլոր ծովերու տիրապետութիւնը իրենց սեփական առանձնաշնորհը դարձուցին։

Կիլիկիա, իբրեւ նախադուռ Արեւելքի, անոնց ուշադրութենէն չէր կըրնար վրիպիլ, որով ընդարձակ յարաբերութիւններ մշակեցին Կիլիկիոյ Հայ իշխանութիւններուն հետ, մանաւանդ ԺԲ. դարէն սկսեալ։ 1199ին երբ Լեւոն Բ. իշխանապետ թագաւոր տիտղոսը և թագ ստացաւ, ցոյց տուաւ անոնց նկատմամբ աւելի բարեացակամութիւն և 1201ին Ճենովացիներու և Վենետիկցիներուն հետ դաշինքներ կնքեց և անոնց արտօնութիւններ տուաւ (Հայ Վենես. 26—27), զորս միշտ նորոգեցին իր յաջորդները։

Վենետիկցիք և Ճենովացիք ներքին Ասիոյ արտադրութիւնները և մասնաւորապէս Հնդկական համեմները և Չինական մետաքսը ստանալու համար առաւելապէս օգտուեցան Հայերէն։ Այդ դարուն Արեւելքի մէջ Հայը իր առեւտրական ձեռնհասութեամբ միակ ժողովուրդն էր, որ Ասիոյ ցամաքային վաճառականութիւնը իրեն մենաշնորհը ըրած էր և իր կարաւաններով մինչև Կեդրոնական Ասիա, Չինաստան և Հնդկաստան կ'երթեւեկէր։ Հայերը այդ վայրերէն կ'առնէին այդ թանկագին ապրանքները և կը փոխադրէին Միջերկրականի եզերքը և մասնաւորապէս Հայկական Այաս, որպէսզի բեռցնեն Վենետիկի, Ճենովայի և Բիզայի նաւերը և ղրկեն Եւրոպա։ Այս ձեւով ստեղծուեցան Հայերու և Վենետիկցիներու ու Ճենովացիներու միջեւ առեւտրական սերտ յարաբերութիւններ՝ սկսեալ այն օրերէն, երբ տակաւին Բիւզանդիոն բոլորովին ընկճուած չէր ասիական բարբարոսներու գրոհին առջեւ, և անոր նաւահանգիստներուն — ինչպէս Տրապիզոնի, Կ. Պոլսոյ և Զմիւռնիոյ և այլ նաւահանգիստներու մէջ — հաստատուած Հայ վաճառականներ արդէն սկսած էին յարաբերիլ Վենետիկեան և Ճենովական հասարակապետութիւններու հրապարակներուն հետ, անոնց նաւերուն բեռցնելով իրենց ասիական ապրանքները։

Բիւզանդական պետութեան այդ նաւահանգիստներէն զատ՝ Հայերը մասնաւորապէս Կիլիկիոյ Հայ թագաւորութեան ծովային առեւտուրի գլխաւոր դուռը եղող Այասի նաւահանգիստէն կ'արտածէին այն ապրանքները, զորս Ասիոյ խորերէն կը բերէին։

Այս շահաբեր առեւտուրը մղեց Վենետիկը և Ճենովան որ փորձեն օգտագործել Հայերը՝ թափանցելու համար Ասիոյ խորերը։ Անոնք ԺԴ. դարուն մինչեւ Հայաստան ձեռք երկարեցին, դեսպաններ ղրկելով Պարսկաստանի իշխող տուներուն, մանաւանդ Ատրպատականի Ամիրաներուն, որոնց մայրաքաղաքին՝ Դաւրէժի մէջ իրենց կողմէ ներկայացուցիչներ կարգեցին և հաստատուն դաշինքներ կնքեցին։

Այս դաշինքներուն կնքումին մէջ հաւանօրէն մեծ դեր կատարած են



Հայերը (1), որոնք նաեւ առաջին օգտուողները պիտի ըլլային, քանի որ այդ դաշինքներով Պարսիկ Շահերը կ'ապահովէին Դաւրէժէն դէպի Տրապիզոն բերուած ապրանքներու անվտանգ փոխադրութիւնը (Ալիշան, Հայ Վենես. 66)

Հայ վաճառականները, որոնք ասիական ցամաքին ապրանքները Եւրոպա կը ղրկէին, երբեմն կ'ընկերանային իրենց վաճառքներուն և այսպէս կը ծանօթանային Եւրոպայի, ուր սակաւաթիւ Հայեր կային հաստատուած, իբրեւ ներկայացուցիչները Ասիոյ մէջ գործող Հայ վաճառականներուն։ Ուրեմն Հայ վաճառականներ կ'երեւային անձամբ եւս Վենետիկի և Ճենովայի շուկաներուն մէջ, ԺԱ. դարէն սկսեալ։

Առանց անդրադառնալու այն հաւատաքննութեան սարսափներուն, զորս Պապերը գործադրեցին, Արեւմուտքի մէջ Հայերը ամենամեծ պաշտպանութիւնը վայելեցին Վենետիկի և Ճենովայի հասարակապետութիւններէն, որոնք թերեւս առեւտրական մարդու խորագիտութեամբ բնաւ չէին հարուածած Հայերու կրօնական համոզումները, մինչ յաջորդ շրջանին, Արեւմտեան Լատին երկիրներու մէջ Քրիստոսի Խաչը աւելի մեծ թշնամի մը կ'ըլլայ Հայ եկեղեցիին քան մահմետական մահիկը։ Հետեւաբար Հայերու համար Իտալիոյ պայծառ երկինքը գեղեցիկ միջավայր մը եղաւ զարգացման և յառաջդիմութեան, ուր ազատ շունչ կ'առնէին Սելջուկեան, Մոնկոլական և Թրքական աւերումներէն խուսափող Հայ վաճառականները։

Դիտելի է որ մեր պատմագիրները գրեթէ բնաւ չեն յիշատակեր Հայ գաղթականներու գոյութիւնը Միջերկրականի եզերքները գտնուող վայրերուն և նոյն ծովուն կղզիներուն մէջ, թերեւս անոր համար որ անոնց թիւը շատ քիչ էր մինչեւ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան կործանումը, որմէ յետոյ խիստ ստուարացան անոնք, ինչպէս տեսնուեցաւ, Կիլիկիայէն՝ ծովու ճամբով այդ տեղերը տեղափոխուած 30.000 Հայ ընտանիքներով։

Այդ «Փռանգստան» գաղթողներուն կարեւոր մէկ մասը ապահովաբար ապաստանած էր Իտալիա, ուր արդէն զանազան քաղաքներու մէջ Հայ գաղութներ հաստատուած էին, Խաչակրութիւններու և Սելջուկ-Բիւզանդական պատերազմներու պատճառով, որոնք Հայաստանը և Փոքր Ասիան տակնուվրայ ըրին շատ երկար ատեն, գրեթէ 1080—1469 շրջանին ամբողջ տեւողութեանը։

Հայերը, որոնք Արեւելքէն Արեւմուտք վանուած էին միշտ, բարբարոսներու արշաւանքներու հետեւանքով և անոնց դէպի Արեւմուտք յառաջացման հետ համընթաց, ապաստանեցան Բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքը և տակաւին քրիստոնեայ իշխանութեան տակ մնացած ծովեզերեայ այն հողաշերտերը, որոնք կը կառավարուէին Կ. Պոլսէն կամ Ֆրանկներէ, — մասնաւորապէս Ճենովացիներէ և Վենետիկցիներէ։

Այս Հայ փախստականներուն ուշադրութիւնը գրաւող երկիրները եղած են սովորաբար ծովային առեւտրական կեդրոնները և այն շահաստանները

(1) Օրինակի համար, կը տեսնուի որ Ուզուն Հասան Հայ մը դեսպան ղրկած է Վենետիկ:

(factory) որոնք Վենետիկցիք և Ճենովացիք հաստատած և իրենց հեղինակութեան ենթարկած էին։

Հայերը, որ ԺԴ. դարուն սկիզբը Փոքր Ասիոյ ծովեզերեայ վաճառաշահ կեդրոններուն մէջ՝ առեւտրականներէ, և ցամաքային մասերուն մէջ երկրագործներէ և արհեստաւորներէ բաղկացեալ գաղութներ ունէին, երբ Թաթարները Արեւելքէն և Մէմլուքները Հարաւէն սպառնացին Կիլիկեան Հայ Թագաւորութեան և նոյնիսկ յաջողեցան վերջապէս զայն կործանել, ապա՝ Փոքր Ասիա արշաւել և զայն խռովել, դարձեալ փախուստ տալ սկսան և տեղափոխուեցան ապահով վայրեր, ինչպէս Խրիմ, Տրապիզոն և Սեւ ծովի ուրիշ նաւահանգիստները, Կ. Պոլիս, Զմիւռնիա և նոյնիսկ Եգէականի կղզիները, Կրետէ, Նիկրոբոնտ ևայլ, որոնք կա՛մ Բիւզանդական կա՛մ Ճենովայի և Վենետիկի հասարակապետութիւններուն տիրապետութեան տակ էին։

Այդ արտածման կայան նաւահանգիստներէն մէկը և Հայոց համար ամէնէն գլխաւորը, Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան նշանաւոր նաւահանգիստը՝ Այասն էր, ուր կը փութային Վենետիկեան և Ճենովական նաւերը Ասիոյ խորերէն Հայ վաճառականներու կարաւաններով մթերած ապրանքները Եւրոպա փոխադրելու համար։ Սակայն դժբախտաբար երբ Սուրիոյ և Պաղեստինի մէջ հաստատուած Լատին իշխանութիւնները ընկճուեցան և Կիլիկիոյ Հայ Թագաւորութիւնը տկարանալ սկսաւ։ Եգիպտացիները 1323ին մտան Կիլիկիա և 20000 մարդ գերի տարին և «զբազումս սպանին եւ յոլով տեղիս այրեցին» (Սամուէլ Անեցի, 167) ի մէջ այլոց «զԱյաս իսպառ ջնջեցին եւ զմինիրան եւ զբերդն քակեցին» (նոյն)։

Նոյն պատմագիրը 1336 թուականով կրկին կ'արձանագրէ թէ «Մսրցին եկն ի Կիլիկիայ եւ եառ զԱյաս», (Սամուէլ, էջ 168)։

Այսպէս դադրեցաւ Այասի վաճառականութիւնը և Հայերը ցրուեցան և քաղաքը անշքացաւ և իր կարեւորութիւնը կորսնցուց։

Սակայն Հայերը, չդադրեցան առեւտուր ընելէ Ճենովացիներու և Վենետիկցիներու հետ, Փոքր Ասիոյ այդ ժամանակամիջոցի միւս երեք դուռներուն, Տրապիզոնի, Պոլսոյ և Զմիւռնիոյ մէջ, ուր տեղիրը Հայերը առեւտրական ընդարձակ գործառնութիւններ կը կատարէին եւրոպական նաւագնացներու հետ ապրանքներու փոխանակութեամբ։

Այս երեք քաղաքները, ինչպէս նաեւ Եգէականի կարգ մը կղզիները և նաւահանգիստները — ինչպէս Սելանիկ և Եգէականի եւրոպական եզերքի կարգ մը քաղաքները — տակաւին առեն մը մնացին քրիստոնեայ տիրապետութեան տակ։ Հայերը այդ վայրերուն մէջ իրենց յարաբերութիւնները շարունակեցին Եւրոպացիներուն հետ — մեծ մասամբ Իտալացի — և իբր յաջողակ գործակալներ և ճարտար վաճառականներ, խրախուսուեցան և քաջալերուեցան անոնց կողմէ։

Անոնք նոյնիսկ կը քաջալերէին Հայերը իրենց Արեւելքի կալուածներուն և շահաստաններուն մէջ հաստատուելու և իրենց առեւտուրը շարունակելու։

Այս տեսակէտէն, օրինակի համար, շահեկան վաւերագիր մըն է Կ. Պոլ-



սոյ Լատին կայսրութեան վերջ տրուելէն հազիւ քանի մը ամիս առաջ, 1261 Մարտ 13 թուականով Միքայէլ Պալէոլոկ կայսեր և Ճենովացիներու միջեւ կնքուած այն դաշինքը, ուր Զմիւռնիոյ «բնական նաւահանգիստով» «հարուստ եւ վաճառաշահ քաղաքը» բնակող «վաճառականութեան եւ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ մէջ յաջողակ Հայեր»ը կը յիշուին (Bonaventur F. Slears, Etude sur Smyrne. 1868)։ (1)

Նշանակելի է նաեւ սա իրողութիւնը որ ԺԴ. դարուն վերջին քառորդին, մասնաւորապէս 1369—1373 թուականներուն Տրապիզոն կը գտնուէին Պարսկաստանցի վաճառականներ — խիստ մեծ հաւանականութեամբ Հայեր — որոնք Վենետիկեան նաւերու վաճառքները Դաւրէժ կը փոխադրէին (Ալիշան, Հայ Վենետ. 66 և վերը, 481)։ Իրապէս Հայ վաճառականներու կանուխ այս քաղաքը հաստատուած և Վենետիկցիներու հետ յարաբերութիւններ ունեցած ըլլալը և Հայերը՝ իբրեւ բաղձալի տարր մը իր ստացուածքներուն վրայ տեղաւորելու փափաքը տեսնուեցաւ Տրապիզոնէն եղած խնդրանքներուն Ծերակոյտին տուած պատասխաններով (տես. վերը, 480—1)։

Տեսանք նաեւ ԺԴ. դարուն կամ աւելի առաջ Հայերու գոյութիւնը Թեսաղոնիկէի (Սելանիկ) մէջ, և 1307ի տեղւոյն Եսայի Եպիսկոպոսին Սիսի ժողովին մասնակցութիւնը, ինչ որ կարեւոր փաստ մըն էր՝ որ հոն գոյութիւն ունէր բաւական կարեւոր Հայ գաղութ մը, որ ապահովաբար քաղաքին Լատին տիրապետութեան ենթարկուած ժամանակամիջոցին, պէտք է հաստատուած ըլլար (2)։

Երբ 1246ին Պալէոլոկները տիրեցին Սելանիկի, այլեւս չհալածեցին՝ ինչպէս այլուր՝ հոս ալ, ոչ-Օրթոտոքս Քրիստոնեաները հետեւաբար, հոն հաստատուած Հայերը կրցան հանգիստ ապրիլ հոն և բազմանալ և ունենալ համայնքային վարչութիւն, եպիսկոպոսով մը գլխաւորուած և սեփական եկեղեցիով օժտուած։

1346էն վերջ Սուլթան Պայազիտ (1308—1398) պահ մը գրաւեց Սելանիկը, բայց երբ գերի ինկաւ Լէնկ Թիմուրի ձեռքը, Մանուէլ կայսրը 1403ին, Վենետիկցիներու և Ճենովացիներու օգնութեամբ Սելանիկը ետ առաւ Թուրքերէն։

---

(1) Ցայտնի է որ Զմիւռնիա, Բիւզանդական Կայսրութենէն պահ մը անցած էր Լատին Ասպետներուն, որոնցմէ ԺԴ. դարուն սկիզբը միայն կրցան գրաւել Օսմանցիք:

(2) 1182ին, երբ Լատիններու դէմ ատելութիւնը տեղի տուաւ Կ. Պոլսոյ աղէտալի ջարդերուն, Իտալացի նաւերը ապաստանեցան եւ ծովապատակութեամբ զանազան տեղեր կողոպտեցին, ի մէջ այլոց նաեւ Թեսաղոնիկէն: Սիկիլիոյ Վիլհելմ Բ. թագաւորը (1166—1189), աւելի եռանդով Յոյներուն դէմ զինուեցաւ եւ այնքան յաջողութիւն գտաւ, որ 1185 Օգոստոս 15ին, Թեսաղոնիկէն ծովէն ու ցամաքէն պաշարեց և 18 Օգոստոսին քաղաք մտաւ եւ սարսափելի կոտորած մը տուաւ 1182ին Յոյներուն գործադրած կոտորածին իբրեւ փոխվրէժ: Այդ թուականէն քաղաքն անցաւ լատինական տիրապետութեան տակ եւ եղաւ անջատ թագաւորութեան մը կեդրոնը, ինչպէս նոյն պահուն Պոլիս եղած էր ուրիշ Լատին կայսրութեան մը մայրաքաղաքը՝ (1204—1261) Խաչակիրներէն գրաւուած:

Թեսաղոնիկէի թագաւորութիւնը հազիւ կէս դար տեւեց, վասնզի 1246ին, Դեմետրիոս, Թեսաղոնիկէի Լատին թագաւորը, Նիկիոյ կայսր՝ Յովհաննէս Դուկաս Վատացէսին անձնատուր եղաւ, եւ երբ Պոլիս վերստին 1261ին Բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքը եղաւ, սովորութիւն եղաւ միշտ կայսերական Արքունիքէն մէկը հոն իշխան կարգել:

1423ին Վենետիկցիք Յոյներէն ծախու առին Թեսաղոնիկէն, և 1423—1430ին իրենք կառավարեցին քաղաքը, 1430ին Օսմանցիք տիրեցին քաղաքին և հինգ դարեր իրենք կառավարեցին։ Բիւզանդացիներու, Վենետիկցիներու և Օսմանցիներու քաղաքը իրարու ձեռքէ կորզած ժամանակամիջոցին, պէտք է հին գաղութը անհետացած ըլլայ։

Սիսի ժողովին (1307) ներկաներէն մէկն էր նաև Կիպրոսի Հայոց Նիկողոս եպիսկոպոսը (Կալանոս, 458—9, Ազգապատում, 1784—86 և Ջամ. Գ. 309), հովիւը դարձեալ Լատինական տիրապետութեան ենթակայ այդ կղզիին – որ Խաչակիրներէն Ռիքարտոս Առիւծասիրտ Անգլիոյ թագաւորը գրաւած և Երուսաղէմի թագազուրկ արքային՝ Գուիտոն Լուսինեանի տուած էր 1192ին (1)։

Ցիշուեցաւ արդէն թէ Հայերը Կիլիկեան իշխանութեան հիմնադրութենէն (1080) ետքը՝ կղզիին դրացնութեան պատճառով, հոն հաստատուած էին և Խաչակրութիւններու շրջանին այնքան թիւի մը հասած էին որ 1179ին ունէին առաջնորդ մը (Թադէոս եպս. Կիպրոսի) որ մասնակցած էր Հռոմկլայի ժողովին։ Այս գաղութը, որ արդէն պատկառելի թիւ մը ունէր Լուսինեանց շրջանին, աւելի ստուարացաւ, և օրէ օր աւելի բազմացաւ։

Այդ շրջանին յիշուած առաջին Հայ եպիսկոպոսն է Նիկողայոս եպս.ը (1307), որուն յաջորդած են գրեթէ անընդմիջաբար ուրիշներ, մինչ կղզին 1191էն 1291 միացուած էր Երուսաղէմի թագաւորութեան, 1291էն 1396ին անկախ էր, 1396էն 1489 Ճենովական ազդեցութեան և անկէ վերջ 1489էն 1571 Վենետիկեանին ենթարկուած էր։ Ինչպէս կը տեսնուի, իրարու յաջորդող այս իշխանութիւններն ալ Լատինական էին։

Լատին ստացուածքներու կարգին յիշեցինք նաև Կ. Պոլսոյ քաղաքին հանդիպակաց Ոսկեղջիւրի բերանը գտնուող Կալաթա բերդը, որ նաւահանգիստ չահաստան մըն էր և 1303էն սկսեալ կը գտնուէր Ճենովացիներու իշխանութեան տակ և Բիւզանդական կայսրութենէն չէր կառավարուեր (Գր. Ապաճեան, Շողակաթ, Բ. 125)։

Հայերը, որ այնքան հին ժամանակներէ սկսեալ հաստատուած էին Բիւզանդիոնի մէջ և այնքան գործօն դեր մը կատարած՝ կայսրութեան կեանքին մէջ, 1303էն ետքը խռնած են Ճենովական այս թաղին մէջ, հաւանօրէն նոյնիսկ Ճենովացիներու բաղձանքով։ Հոն անոնք կրօնական ազատութիւն ունեցած են, ինչ որ բուն Պոլիս քաղաքին մէջ չունէին։

Շնորհիւ այդ առաւելութեան, որ Կալաթայի մէջ անոնք վայելեցին, ունեցան եկեղեցական կազմակերպութիւն և յատուկ եպիսկոպոսութիւն, ինչ որ կը հաստատուի յիշատակութեամբը Ստինպոլայ Յուսիկ(2) եպիսկոպոսին, որ ուրիշ Լատինական ստացուածք վայրերու — ինչպէս Թեսաղոնիկէի և Կիպրոսի — եպիսկոպոսներուն հետ, մասնակցած է 1307ին Սիսի Ս. Սոֆիայի մէջ գումարուած ժողովին։

1352ին երբ Ճենովացիք յաղթեցին Յովհաննէս Կանտակուզենոս կայսեր,

(1) Լուսինեաններու թագաւորութիւնը մինչեւ 1489 շարունակուած է:

(2) Հ. Աճառեան, Անձնանունների Բառարանի, մէջ (Դ. 592—3) կ'ըսէ թէ պէտք է ըլլայ Սուքիաս, վասնզի բնագիրը Hesychios է որ պէտք է հասկնալ Սուքիաս եւ ոչ թէ Յուսիկ:



(1341—1355) կայսեր Կալաթան կամ Ղալաթիան ամբողջ մինչեւ Բերա իրենք գրաւեցին։ Հայերու դիրքը առավ աւելի ապահովուեցաւ և աւելի կանոնաւորուեցաւ իրենց կրօնական-եկեղեցական գործերը։

Տեսանք արդէն (տես. վերը, 529) թէ ինչպէս անոնք իրենց Ս. Սարգիս եկեղեցիին շուրջը ուսուցողական ձեռնարկ իսկ ըրած էին (1360—1361 թուականներուն։

Հայերու թիւը այնքան ստուարացած էր, որ 1389ին «եղեւ սկիզբն շինութեան սրբոյ Լուսաւորչին ի Ղալաթիա, որ յանուն Սուրբ Գրիգոր Հաւոյց մեծաց Հայրապետի», ձեռնտուութեամբ և օժանդակութեամբ Կաֆայի և այլ քաղաքներու Հայ վաճառականներուն (ՀԱ. 1946. 112—8)։

Անոնց գլխաւորը կը թուի ըլլալ կոմս անուն Քէֆէցի վաճառականը։

1391ին երբ Թաթարները տիրեցին Խրիմի, կ'երեւի թէ Հայերէն մաս մը հեռացան «Ծովային Հայաստան» կոչուելու չափ ստուար Հայ բնակչութիւն ունեցող Տաւրիկեան թերակղզիէն և Կալաթա տեղափոխուեցան ու ստուարացուցին հոն հաստատուած Հայերու թիւը։

Թուրքերու Պոլիսը գրաւելէն քիչ առաջ, 1436ին Կալաթայի Հայերը կը վերաշինեն իրենց եկեղեցին և ինչպէս յիշատակագիրներ ցոյց կուտան 1433—1438 թուականներուն Յովհաննէս անուն եպիսկոպոս մը ունին «ի կողմանս Կոստանդինուպոլսի» և «ի հոգաբարձութեան եկեղեցւոյ Հայոց» «եղեալ» Երուսաղէմի Եսայի եպիսկոպոսը։ Ասոնք ցոյց կուտան Ճենովական այս գաղութ-չահաստանին մէջ Հայոց թիւը և գրաւած դիրքը և կարեւորութիւնը։ Յովակիմը և 1438ին կը յիշուի իբրեւ «Արհի եպիսկոպոս Կոստանդնուպոլսի»։ Ճենովացիներու օգնութեամբ 1453ին Ֆաթիհի Պոլիսը գրաւելէն գրեթէ անմիջապէս ետքը, 1459—1461 թուականներուն Մարտիրոս եպիսկոպոս՝ «Կոստանդնուպաւլի վիճակին» կը յիշուի։ Ասոր ալ աթոռն Կալաթա պէտք է եղած ըլլայ, վասնզի յաղթական Սուլթանը Ճենովացիներու շնորհ ըրած և ճանչցած էր ինչ ինչ սեղմումներով անոնց ներքին վարչութիւնը, որ գրեթէ երկու դար ևս շարունակուած է (Գր. Ապաճեան, Շողակաթ Բ. տարի, 276)։

Այդ շրջանին Հայերու Կալաթայի մէջ ունեցած գերազանց ազդեցութեան և հեղինակութեան ապացոյց է իրենց ունեցած դերը նոյնիսկ քաղաքին կառավարութեան մէջ, որ կը հաստատուի 1451ին Կալաթայի Ճենովական իշխանութեան և Ֆաթիհ Սուլթան Մուհամմէտ Բ.ի միջև կնքուած դաշնագիրով, ուր կը յիշուին իբրեւ «իշխանք եւ պատգամաւորք Կալաթա քաղաքին» Պրիշող, Գարա, Այոց, Ագորտէս և Արջազ» անունները (հմմտ. Beltn, 154), որոնցմէ ոմանք Հայկական կը թուին։

Այս ազդեցիկ գաղութը ընդունած է ինչպէս կ'երեւի այցելութիւնը շատ մը եկեղեցականներու, ինչպէս 1433ին Տիարպէքիրի առաջնորդ Մկրտիչ Նաղաշ եպիսկոպոսին, նկարիչ և քերթող, որ իր ժամանակին ամէնէն կարկառուն դէմքերէն մին էր և որ Պոլիս եկած էր և ապա գացած էր Խրիմ։

Նոյնպէս Աբրահամ Անկիւրացի և Առաքել Բաղիշեցի վարդապետները 1453ին Պոլիս էին և ականատես եղան քաղաքին Թուրքերէն գրաւման և ողբեր գրեցին։

*
* *

Ինչպէս կը տեսնուի, Վենետիկի և Ճենովայի հասարակապետութիւններուն ստացուածք, Սեւ ծովի և Միջերկրականի եզերքները գտնուող բազմաթիւ քաղաքներ և Եգէականի կղզիներէն ոմանք, կը կազմէին կայանները այս առեւտրական-ծովային ճանապարհներուն, որոնց վրայ կ'երթեւեկէին այս հասարակապետութիւններուն նաւերը և կը կազմէին հանգրուանները այն ճամբաներուն, որոնք կը յանգէին երկու հասարակապետութիւններուն կեդրոնները՝ Վենետիկ և Ճենովա, երկու առեւտրական մեծ քաղաքները, որոնք արեւելեան ապրանքներու Եւրոպա ներածման դուռը կը հանդիսանային ասիական բարբարոսներու արշաւանքի շրջանին։

Այս հանգրուանները, որոնք Խրիմէն կ'սկսէին և մինչեւ Վենետիկ ու Ճենովա շղթայ մը կը կազմէին, և մեծ մասը՝ ստացուածքներն էին այդ երկու հասարակապետութիւններուն, գրեթէ ամէնքն ալ կը հիւրընկալէին Հայ գաղութներ աւելի կամ նուազ ստուար, որոնք գլխաւորաբար կ'զբաղէին վաճառականութեամբ և արհեստներով, և այսպէս յարաբերութեան մէջ կը գտնուէին այս ծովային Հասարակապետութիւններուն հետ, որոնց Արեւելքի ստացուածքներուն գլխաւոր շէնցնողներ էին։ Ասոնք քանի արեւելքէն արշաւողներու ճնշումը աւելի զօրանար, հետզհետէ պիտի մղուէին աւելի դէպի արեւմուտք, և պիտի հաստատուէին Եւրոպական հողի վրայ, սկսելով Վենետիկէն և Ճենովայէն։

Մինչ այն արդէն Հայ եկեղեցականներ, Ժ. և ԺԱ. դարերէն սկսեալ, յաճախել սկսան, Քրիստոնեայ Եւրոպայի զանազան կողմերը։ Խաչակրութիւնները նոր հորիզոն կը բանային Հայերու առջեւ, մասնաւորապէս Հայ եկեղեցականներու, որոնք մինչեւ այն ատեն միայն Բիւզանդիոնի հետ յարաբերութիւններ ունէին։

Կաթոլիկ կղերը կեղծաւոր ձեւերով մօտեցան Արեւելքի քրիստոնեաներուն, որոնք Օրթոտոքս կղերին բռնակալութենէն զզուած այս արեւմուտքէն եկող եկեղեցականներուն կեղծապարիշտ ձեւերէն խաբուեցան և աւելի սերտ յարաբերութիւններ մշակել սկսան։

Եւ այսպէս Իտալիա, Հռոմ, ուխտագնաց կամ նպաստահաւաք եկեղեցականներ երեւան եկան և նոր յարաբերութիւններ սկսան Հռոմի հետ։

Այս կրօնաւորներէն ոմանք Արեւելքի յատուկ ճգնաւորական կենցաղով սրբութեան համբաւ շահեցան, և երեւելի եղան, ինչպէս Հայ կրօնաւոր Սիմէոն, (+ 26 Յուլիս 1016), որ Մանտովա քաղաքը հաստատուած էր (տես. ՊՀԳ. Ա. 340) և Դաւիթ (+ 1050) (1) Հայ սուրբը, որ Լուկա քաղաքին պաշտպանը կը նկատուէ։

---

(1) Տես. ՊՀԳ. 340, ընդարձակ տեղեկութեանց համար տեսնել **Աշխարհագրութիւն Չորից Մասանց**, մասն Բ., հտ. Բ., էջ 522–528, ինչպէս նաեւ **Ազգապատում**, էջ 1138, Մեսրոպ Վրդ. Ուղուրլեան՝ **Պատմ. Հայոց Գաղթականութեան ի Լիվոռնոյ**, 231–8): Գեղամ Խանամիրեան, կը գրէ թէ Ֆրանչիսկեան կարգին հիմնադիր, Ս. Ֆրանչիսքօ Ասսիզացիի (1182–1226 Հոկտ 6 +) Հայերէ սերած ըլլալը շատ հաւանական է, վասնզի իր ծնըն-



Նոյնպէս ԺԱ. դարէն մինչեւ ԺԵ. դար պատահաբար կը յիշատակուին ուրիշ Հայ եկեղեցականներ, որոնք Իտալիա կամ առաւելապէս Հռոմ հաստատուած են։

Մասնաւորապէս Խաչակրութիւններէն սկսեալ՝ Եւրոպայի բազմաթիւ քաղաքներուն մէջ յիշատակուիլ կ'սկսին Հայ վանքեր, զորս հաստատած էին Կիլիկեցի վանականներ, որոնք Եւրոպա եկած էին ապաստան փնտռելու։

Ընդհանրապէս անոնք լաւ ընդունելութիւն գտած են՝ շատ դիւրահասկնալի պատճառներով։

Երկիրին ջերմեռանդ կաթոլիկէ բնակչութիւնը անոնց չէ զլացած իր նպաստը և պաշտօնատարներ ու եպիսկոպոսներ անոնց համակրութիւն և հոգածութիւն ցոյց տուած են։ Իրաւ է որ երբեմն ձգտումներ ունեցած են այդ Հայ վանականները կաթոլիկ կղերին հետ կամ արդէն հոն հաստատուած ուրիշ կրօնական հիմնարկութիւններու հետ։

Բայց պէտք է ընդունիլ թէ Պապերը միշտ ջանացած են կարգադրութիւններ ընել և զօրաւոր կերպով պաշտպանել նորեկները և օգնել որ պահպանեն իրենց գրաւած դիրքերը։

Այս Իտալիա դիմող Հայ վանականները շատ յաճախ յիշուած են Պապական աթոռի վաւերագիրներուն, մանաւանդ Աւինեոնէն գրուածներուն մէջ։

Պապական դիւանը զանոնք կը նկատէ միշտ Ս. Բարսեղի կարգին մէջ և կարելի է որ իրապէս ալ այսպէս էին Կիլիկիոյ Հայ վանականները, որոնք կը կիրարկէին հաւանօրէն Ս. Բարսեղի կանոնները (տես. Մայր ցուցակ Վենետիկի Մխիթարեանց, Բ. հտ. 1263—4)։

Հայ միանձունք գրեթէ բնաւ չունէին սովորութիւնը կրօնական միաբանութեան մը կարգին ենթարկուելու, և մաս կազմելու կրօնական ընկերակցութեան մը, որ բազմաթիւ վանքեր ունենար՝ միակ պետի մը հեղինակութեան տակ միացած։

Հայերը կրօնական կեդրոնացման օտար եղած են։ Հայկական իւրաքանչիւր վանք կամ կրօնական հիմնարկ, մեծ և պզտիկ, կը պահէր իր առանձին ինքնավարութիւնը՝ իրեն յատուկ՝ առաջնորդին իշխանութեան տակ։

Հակառակ Հայ վաղեմի աւանդութեան՝ Իննովկենտ Զ. Պապը (1352—1362), որուն նստոցը Աւինեոն էր, 1356ին որոշեց միակ միաբանութեան մը յանձնել «յայսկոյս ծովու» Հայ վանքերը, վերին հեղինակութեան տակ ընդհանրական վանահօր մը, և պարտադրեց որ Հայ վանականները Օգոստինոսեան արեւմտեան կանոնագիրով ղեկավարուին, փոխան Ս. Բարսեղի արեւելեան կանոններուն, և ընդգրկեն Ս. Դոմինիկոսի կարգին Սահմանադրութիւնը։

Եւ որպէսզի անոնք մարզուին այս նոր կանոններուն համաձայն շարժիլ, անոնց ընդհանուր վանահայր նշանակեց Ֆիօրէնցացի Դոմինիկեան Եղ-

---

դեան պարագաները բաւական մութ են եւ Միլանոյի մէջ իր արձանը՝ կատարելապէս հայկական տիպար մը կը ներկայացնէ զինքը. (տես. **Պայքար**, 1951ի բացառիկ. էջ 1):

Հ. Ց. Ուզեր, Ս. Ֆրանչիսկօ Ասսիզացիի վարքէն քաղելով կը հաւաստէ թէ, անոր պապը Մորիկ *(Moricone)* Հայ վաճառական մըն էր, ամբողջ ընտանեօք եւ կերպասեղէններու վաճառականութիւն կը կատարէր Իտալիոյ եւ Ֆրանսայի միջեւ (**Բազմավէպ**, 1919, 148):

բայր մը (Piene de Strozzis)։ Այս առթիւ 1356—7ին հայերէնի թարգմանուեցաւ Նոր Միաբանութեան Սահմանադրութիւնները, որոնք Ֆրիպուրկի (Զուիցերիա) համալսարանին Փրոֆ. Marc-Antoine Van Den Oudenrijn. Ֆլորենցայի մէջ գտած, և հրատարակած է 1940ին ի Հռոմ (տես. Այսօր, թ. 312, 16 Յունուար 1952)։ Այս վաւերագիրներէն կը հասկցուի որ այս կանոնները նոյն են Դոմենիկեան և Քարոզիչներու կարգին կանոններուն հետ, պզտիկ սրբագրութիւններով, աննշան քանի մը ազատութիւններ տրուած ըլլալով։

Յայտնի չէ թէ Եւրոպա գտնուող Հայ վանականները այս նորութիւնը ինչպէս ընդունած են, բայց կը թուի թէ անոնք պահած են իրենց աւանդական անկախութիւնը։ Օրինակի համար Վենետիկ երբեք չէ միացած Ինոկենտ Զ.է հիմնուած միաբանութեան, և ինչպէս Van Den Oudenrijn կը հաւաստէ, Եւրոպայէն դուրս ոչ մէկ վանք ձուլուած է այս միաբանութեան մէջ (հմմտ. Այսօր, թ. 312)։

Մինչեւ ԺԴ. դարուն վերջը կը յիշուին Հայ վանականներ Իտալիոյ, մասնաւորապէս Բիզայի Ս. Անտոն վանքին մէջ, որոնք կը մերժէին ենթարկուիլ Հռոմէն նշանակուած Ընդհանրական Մեծաւորին։ Այս դժուարութիւնները հետզհետէ հարթուած են. Հայ վանքերը այս ձուլումին զոհուած են (հմմ. Նոյն, Այսօր, թ. 313)։

ԺԵ. դարուն Բ. կէսէն յետոյ՝ Բարսեղեան կոչումով իբրեւ Հայ վանականներ յիշուած միանձունք Իտալացիներ էին մեծամասնաբար։

Հայ լեզուի գործածութիւնը արարողութեան և պաշտամունքի մէջ հետզհետէ դադրած էր, բայց իրենց Հայ հիմնադիրներուն համար, միաբանութեան անդամները ժողովուրդէն դեռ կը ճանչցուէին «Հայ եղբայրներ» կամ «Ս. Բարսեղեան Հայ եղբայրներ»։

ԺԷ. դարուն անոնք կը կոչուէին նաեւ «Բարթողիմէոսեան», առնելով այս անունը իրենց Ճենովայի Multedoի մայրավանքին անունէն։

ԺԷ. դարու կէսերուն՝ այս անունով ծանօթ բոլոր կրօնաւորներուն թիւը 40էն աւելի չէր, չորս վանքերու (Ճենովա, Pontecurone, Միլան և Բաւիա) վրայ բաժնուած, և ամբողջ Իտալացի էին, և միաբանութիւնը ոեւէ կերպով չէր ծառայեր իր բուն նպատակին, այնպէս որ՝ 1650ին Ինոկենտ Ժ. Պապը (1644—1655) ջնջեց, իր գոյութիւնը երեք դար պահած՝ ծագումով Հայ այս միաբանութիւնը, որուն պատմութիւնը հրատարակած էր ջնջումէն քիչ առաջ, Բաւիոյ մէջ, 1640ին, Հ. Գրիգոր Պիտիօ, հիմա խիստ հազուագիւտ գրքոյկով մը (տես. Այսօր, թ. 313) որ հեռու է կատարելութենէ, վասնզի Հայկական վաւերագիրները չէ տեսած, հակառակ անոր որ այն ատեն դիւրութիւն ունէր զանոնք գտնելու միաբանութեան դիւանին մէջ։ Այնպէս որ, խիստ պակասաւոր են միաբանութեան առաջին տարիներուն վրայ տրուած տեղեկութիւնները. բայց բարեբախտաբար ուրիշ աղբիւրներէ կարելի է լրացնել վանական այդ փոքրիկ գաղութներուն պատմութիւնը։

Վանականներու այս բեկորներուն և իրենց հիմնած վանքերուն պատմութիւնը բնաւ գաղութներու պատմութիւն կարելի չէ նկատել, սակայն



պէտք է նկատի ունենալ թէ այդ վանականներուն ոտքի հետքերուն վրայ՝ Հայ անհատներ ալ անցած են Իտալիա, և այդ վանքերուն շուրջը — որոնք աւելի կանուխ հիմնուած էին — Հայ գաղթականներու կորիզներ գոյացած են։

Հետեւաբար անբաժան է անոնց պատմութիւնը իրարմէ և մէկը միւսին կապուած։

Ըստ բանասէրներէ ոմանց կարծիքին՝ առաջին Հայ վանքին հիմնադիրները եղած են Սեւ լերան վանքերէն երկու Հայ կրօնաւորներ, որոնք ԺԳ. դարուն երբ Մելիք Էշրէֆ Կիլիկիա արշաւեց և քանդեց ու աւերեց եկեղեցիները, վանքերը և ճգնարանները, ուրիշ միանձանց հետ անցան Եգիպտոս, ուր ապաստանած էին մեծագոյն մասը Հայ վանականներուն, ըստ Եւրոպացի պատմագիրներու (Ագոնց Ստ., Աշխ. Չորից մասանց, Եւրոպա հտ. Բ. էջ 510–511)։

Ըստ Ֆրիպուրկի համալսարանին Փրոֆ. Marc Antoine Van Den Oudenrijnի՝ այս վանքին հիմնարկութիւնը կապուած է «Բարսեղեան» Կիլիկեան վանքին մը, հիմնուած Սեւ լերան մէջ։

Այս Ռուբինեան թագաւորութեան մէջ հռչակուած վանքին առաջին յիշատակութեան կը հանդիպինք 1114ին՝ երբ վանքին եկեղեցին կ'աւերուի երկրաշարժէ մը, որ 30ի չափ ալ անձի կորուստ կը պատճառէ (Ալիշան, Սիսուան, 487—8)։

ԺԳ. դարուն վերջերը քանի մը վանականներ այս վանքէն կ'անցնին Եւրոպա (տես. Այսօր, թիւ 345) և այլեւայլ տեղեր կը հաստատուին։

Ըստ Van Den Oudenrijn (Այսօր, թ. 345) վանականներու խումբ մը, որոնց պետն էր Մարտիրոս Սեւ Լեռնցի(1) վարդապետ մը, ուղղակի Եւրոպա անցած է Կիլիկիայէն՝ ընկերակցութեամբ Սեւ լերան ուրիշ վանականներուն, և ցամաք ելած Ճենովա՝ 1307ին։ Կղիմէս Ե. Պապը (1305—1314) իրենցմով կը շահագրգռուի։ Վատիկանի դիւաններուն մէջ (Reg, Vat. հտ. 54, 27a) պահուած է Պապական նամակէ քաղուած մը՝ Բուատիյէ գրուած, 10 Յունիս 1307ին, որով Ճենովայի և Թեմին հաւատացեալներուն կը յանձնարարուի ողորմութիւններ տալ Մարտիրոս վարդապետին և ընկերակիցներուն, որոնք արտօնութիւն ստացած են կառուցանելու Հայկական եկեղեցի մը Ճենովա քաղաքին մէջ իսկ։

Այս վանականները 1303ին բախտաւորութիւնը կ'ունենան ծանօթանալու հարուստ վաճառականի մը՝ Օպէրտոյ անուն, որ իրենց կը թելադրէ լքել քաղաքին մէջ եկեղեցի մը շինելու գաղափարը և անոնց կը նուիրէ՝ այդ վանականներուն առաքինի կենցաղէն հրապուրուած, քաղաքին պարիսպէն դուրս Մուլդետօ (Multedo)(2) գիւղին մէջ ունեցած իր կալուածներէն մաս մը, պայ-

---

(1) Պապական դիւանի լատիներէն վաւերագիրներուն համաձայն կը կոչուի «*Fr. Martinus de Sagarito*». (Այսօր, թ. 345): Իր Կիլիկեցի ընկերներէն մէկն ալ կը կոչուի *Fr. Guillaume* (Նոյն):

(2) Յետոյ կոչուած է **Մօնթէ Սանօ**, — լեռ առողջարար: Հիմա Ճենովա քաղաքին մաս կը կազմէ:

մանով որ հոն շինեն եկեղեցի մը ի պատիւ Ս. Բարթողիմէոս Առաքեալին։

Հայերը կ'ընդունին այս առաջարկը, և Կղեմէս Ե. Պապը 2 Ապրիլ 1309ին կու տայ իր հաւանութիւնը և Ճենովացիներու օգնութեամբ կը կառուցուի եկեղեցին, (Օրմանեան, Ազգապատում 1815, Նաեւ Այսօր, Թ. 345) (1)։ Կրօնական պաշտամունքները կը կատարուէին հայերէն։ Յովհաննէս ԻԲ. Պապը (1316—1334) նպաստած է այս վանքին։ Ան տուած է Ներողութիւններ 23 Սեպտ. 1317ին բոլոր անոնց, որ պիտի այցելէին այս սրբավայրը և 13 Ապրիլ 1318ին տուած է եկեղեցական նոր առանձնաշնորհումներ՝ Կիլիկիայէն եկած վանականներուն։

Ճենովացիներու համար այս եկեղեցին և վանքը դարձած են ուխտատեղի 1368էն ի վեր (Այսօր, Թ. 345) և հոն կը յարգուի Դաստառակը որ Ս. Ամենափրկիչ կը կոչուէր (Նոյն)։ Իտալացիք վանքը կը կոչէին Սան Պարթոլոմեոյ տ'Արմենիա (+ Ս. Բարթուղիմէոս Հայոց) (Հայրենիք օրաթերթ, Կ. Պոլիս, Թ. 636 և 643)։

Աւելի քան դար մը ետքը, 1430ին, Ճենովայի առաջնորդն էր Մարտիրոս եպս. (Սիսուան, էջ 410—411)։ Ասիկա ցոյց կու տայ թէ հոն բաւական ստուար գաղութ մը կար։ Այս եպիսկոպոսին պաշտօնավարութեան ատենն էր որ 1430ին՝ ազնուական մը՝ Մարկոս Սպինոլա, Ս. Բարթողիմէոսի ձախ ոտքը իբրեւ մասունք տուաւ այս եկեղեցիին։

Բազմաթիւ Ճենովացիներ, հետեւելով երկու Հայ վանականներուն, այս մենաստանին մէջ կրօնաւորած են Ս. Բարսեղի կանոններով, թէպէտ ազգով Իտալացի։ (Ազոնց, Աշխարհ. Զորից մասանց Աշխարհի, հտ. Բ. 511)։

Երկու ձեռագիրներ, որոնք կը վերաբերէին Ս. Բարթողումէոսի վանքին ծանօթ են։ Մին Բաւիայի համալսարանին մատենադարանին Թ. 346 ձեռագիրն է, փոքրադիր աղօթագիրք մը Հայ-Դոմինիկեան, թարգմանուած 1343ին Կաֆայի Թադէոս եպս.էն և օրինակուած Եղբայր Յակոբ Prevsէն նոյն քաղաքին մէջ 1351ին կամ 1352ին։ Միւս ձեռագիրը՝ Քարոզգիրք մըն է, որ կը վերագրուի Դոմինիկեան Եղբայր Բարթողիմէոս Փոքր Բոլոնիացիի, որ Մարաղայի եպիսկոպոս եղած է 1318—1333։ Այս ձեռագիրը հիմա կը պատկանի Միլանի Ամբրոսիոսեան Մատենադարանին (Van den Ondenrijn Couvents Arméniens en Italie au Moyen Vge. Այսօր, Թ. 345)։

Մարտիրոս Սեւլեռնցիի օրինակին կը հետեւի Դաւիթ Կիլիկեցի վարդապետը, որ 1308ին կը հիմնէ Բառուայի մէջ՝ Հայ վանք մը (Ազգապատում, 1815), ուր նաեւ Իտալացիք կը միաբանէին, բայց միշտ կը կոչուէին «Միաբանութիւն Հայոց» կամ «Հայ միաբանութիւն Բարսեղեանց», որովհետեւ Հայերը հիմնած էին վանքը։

J. Pergoire (Dictionnaire d'Archéologie et Liturgie Chrétienne B. գիրք և G. Maron (Digionaria di erudijine) Ճենովա հաստատուած Արեւելքէն եկած կրօնաւորներու պէս 1307ին Բառուա եկած կ'ենթադրեն կրօնաւորներ, որոնք Բարսեղեան կոչուած են։

(1) Ըստ ոմանց՝ Օպէրայ նպաստած է երկու վանականներուն, որոնք 1308 Մարտ 16ին կամ Մայիս 6ին հիմնած են Ս. Բարթողիմէոս եկեղեցին:



Այս վանքերուն միաբանները օրէ օր շատցան և շինեցին ուրիշ վանքեր Իտալիոյ զանազան քաղաքներուն մէջ, և փոքրիկ ժողովրդապետական եկեղեցիներ, զորս կը հովուէին Բարսեղեան Հայ կրօնաւորները, որոնց կեդրոնը Ճենովայի Ս. Բարթուղիմէոս Հայոց մենաստանն էր (Ազոնց Աշխ. Բ. 511)։

Այս կրօնաւորները, որոնք նախապէս Հայեր էին, ունէին զգեստի յատուկ ձեւ մը, որ 1350ին փոխուեցաւ և Դոմինիկեանց զգեստը կրել սկսան։ Միաժամանակ փոխուեցան նաեւ իրենց Հայկական ծիսակատարութիւնները (1) որոնք մեծ մասամբ պահուած էին մինչեւ ԺԴ. դարու կէսը և ընդգրկեցին Լատինական ծէսը։ Իննովկենտ Զ. Պապը 25 Օգոստոս 1377ին՝ կոնդակով մը կը հրամայէ որ այլեւս Հայ Եղբայրները հագնին Ս, Օգոստինոսի կարգին տարազը և պահեն անոնց կանոնները և ընտրեն Դոմինիկեան միաբանութենէն Աբբահայր մը։ Անոնք ահա այսպէս կորսուին իրենց հայկական նկարագիրը երբ մանաւանդ Լատին ծէսը ընդունեցին։

Անոնք գործեցին և զարգացան մօտաւորապէս 300 տարի, միշտ Բարսեղեան Հայ միաբանութիւն անունին տակ, թէպէտ ամէնն ալ ազգով, լեզուով և ծիսակատարութեամբ լատիններ էին, և միայն իրենց հիմնադիրները Հայեր ըլլալուն համար «Հայ» անունով կը յիշուէին (Ազոնց, Նոյն 512)։

Բարսեղեան Միաբանութիւնը շարունակուած է մինչեւ 1650, միաբանական կանոններու զանցառու, կրօնական կարգերու անուշադիր, և ուսմանց ու գիտութեանց ոչ-հետամուտ և խռովութիւններու, պառակտումներու և տեսակ տեսակ անկարգութիւններու ենթարկուած, միայն քառասուն հոգի մնացած ըլլալով։ Ուստի Իննովկենտ Ժ. պապը ջնջեց Բարսեղեան Հայ Եղբարց կարգը և հրամայեց որ այդ կարգին անդամները մտնեն ուրիշ միաբանութիւններու մէջ կամ աշխարհիկ քահանաներ դառնան, ստանալով որոշեալ թոշակ մը (Աշխարհ. Զորից Մասանց, Բ., 511—2)։ ԺԵ. դարուն, 1462ին գրուած վաւերագիրէ մը, կը հասկցուի թէ ջանք եղած է միացնել և միաբանութեան վերածել Հայ Եղբայրները — գէթ Թոսքանայի պետութեան մէջ գտնուածները — որոնք կը հնազանդէին միակ մեծաւորի մը (Diario Senese, Parti prima 144 կամ Ուղուրլեան Վրդ., Նոյն, էջ 249)։

Անոնք ցոյց կու տան թէ շատ ճիշդ չէ այն տեսութիւնը, որ հայկական կը համարէ, իտալական բազմաթիւ քաղաքներու մէջ երեւան եկած Բարսեղեան միաբանութիւններու սեփական վանքերը, որոնք միայն անունով հայկական էին։

Սակայն այս վանականները Միջին Դարուն Խաչակրութեանց իբրեւ հետեւանք, Իտալիա տեղափոխուելով, ռահվիրաները եղան Հայ առեւտրականներու և արհեստաւորներու, որոնք Արեւելքի վիճակը քանի ծանրացաւ, իրենք ալ հեռացան, մանաւանդ Կիլիկիայէն, և Միջերկրական ծովու ապահով ե-

(1) Կ'ըսուի թէ Բարսեղեանք՝ ըստ Հայաստանեայց Եկեղեցիի կարգերուն՝ երկայն արարողութիւններ կը կատարէին: Ասոր համար Ֆիորենցացիք իբրեւ առակ «հայկական ննջմունք» կ'ըսեն եղեր իրենց չհասկցած խօսքերուն: Burchiello զաւեշտաբան քերթողը կը յիշէր ճպուռածային եղանակը Հայ երգերու (la zolfa degli Arminin = առանց խօսքի երգ) եւ աւելի ուշ Վարքի պատմիչին (+ 1565), մայրը կը խօսի եղեր անոր հայ լեզուով պաշտամունքի մասին. Քանզի մինչեւ 1491, Հայ վանականներ եւ քահանաներ կ'ապրէին ի Ֆիորենցա:

գերքները, քրիստոնեայ տիրապետութեան ներքև գտնուող վայրերը ապաստանեցան, կարծես հետևելով Բարսեղեան Հայ կրօնաւորներուն, և գացին ԺԳ. և ԺԴ դարերու ընթացքին հաստատուեցան գլխաւորապէս Վենետիկ և Ճենովա և երկրորդաբար բազմաթիւ ուրիշ քաղաքներ, ինչպէս Հռոմի, Բիզայի, Անքոնայի, Ռիմինի, Պոլոնիայի, Ֆէրրարայի, Բատուայի, Ռավէննայի։ Սրինայի, Սալեռնոյի, Օրվիէտոյի, Վիտերպոյի, Օգանայի, Ֆապրիանայի, Բարմայի, Միլանի, Նափոլիի, Ֆուէնցայի և Ֆլորէնցայի մէջ։

Այս Հայ գաղթականները, որոնք Մոնկոլական արշաւանքներու տխուր հետևանքներէն ազատ մնալու համար, ապաստանած էին Իտալիա, բարգաւաճ կեանք մը ունեցած են և Արևմուտքի մտաւորական շարժումէն հաղորդուած՝ մեծ դեր մը կատարած են Հայ ազգին մտաւորական զարթումին մէջ, և մասնաւորապէս Վերածնունդի շարժման մեծ ազդեցութեանը ենթարկուած են Հայերը։ Եթէ անոնք ազատ ձգուած ըլլային իրենց զարգացման ուղին իրենք ընտրելու, փոխանակ հաւատաքննական խաւարամտութեան հալածանքներուն ենթարկուելու, բնական է աւելի բարերար պիտի ըլլար այդ ազդեցութիւնը, որ դժբախտաբար չէ եղած այն ինչ որ կ'ակնկալուէր։ Ասով հանդերձ՝ տիրող պայմաններուն պատշաճեցնելով իրենց կեանքը՝ աշխատած են որքան կարելի է իրենց ազգային եկեղեցիին կապուած մնալ և իրենց առանձնայատուկ գոյութիւնը պահել որոշ կազմակերպութիւններով։

Բոլոր այն քաղաքներուն մէջ, ուր անոնք հաստատուած են, կարծես թէ անոնց առաջին մտածութիւնը եղած է հիմնարկել ազգային կեդրոն մը, որ կը կոչուէր «Հիւրանոց», «Հանգստարան Հայոց» և «Հայոց Տուն» (1) Casa deyli Armeni անունով։ «Հայոց Տունը» կը կառավարուէր վերատեսուչով մը կամ կառավարիչով մը և ունէր վարչութիւն ու պաշտօնէութիւն։ Սովորաբար «Հայոց Տուն»ին մէջ կամ քովը հիմնուած կ'ըլլար աղօթարան մը կամ եկեղեցի մը, գաղութին հոգևոր մխիթարութեան համար։ Հոգևոր հովիւներ և այցելու եկեղեցականներ կը պատսպարուէին «Հայոց Տուն»ին կամ «Հիւրանոց»ին մէջ, ուր կը հիւրընկալուէին նաև ճամբորդ Հայեր, որոնք այդ քաղաքներ կ'այցելէին։

Այսպէս, Իտալիոյ գրեթէ քառասունէ աւելի քաղաքներուն մէջ Հայերը ունեցած են Հիւրանոցներ, Եկեղեցիներ և վանքեր, հետզհետէ ճիւղաւորուելով, համեմատաբար Հայ վաճառականներու գործունէութեան սահմանին ընդարձակման։

Հնագոյն շրջանի Հայ զինուորական գաղութներու անշքացումէն և նոյնիսկ անհետացումէն վերջ, դարձեալ ՀՌՈՄՆ է որ կեդրոնը կ'ըլլայ, — Իբր Պապերու աթոռանիստ վայրը — և հոն է որ կը պատահինք, գոնէ անուղղակի, յիշատակութեանը երկու հայկական վանքերու, որոնց վանահայրերը, Դարասիոս և Գէորգ, առաջինը իբրև վանահայր Հայոց և երկրորդը՝ Կիլիկիոյ մենաստաններուն, մասնակցած էին Լատերանեան ժողովին, 649ին։

(1) «Հռոմայ Ոսպեքալս» ձեւով ալ յիշուած է 1226 թուին, (Յիշատակարանք Ձեռագրաց, 846։



Այս վանքերէն՝ Կիլիկեանը, կը գտնուէր Պօղոս Առաքեալի գլխատման տեղւոյն մօտ և իր գոյութիւնը պահած էր մինչև ԺԴ. դար, վասնզի հոն գտնուած են այդ դարուն պատկանող հայկական գերեզմանաքարեր։

Երբ ԺԱ. դարուն սկիզբն իսկ՝ Ասիական բարբարոսները դէպի արևմուտք կը խուժեն և Հայ գաղթականներ Անդր-Միջերկրականեան երկիրներ կ'ապաստանին, Հայերը Հռոմի մէջ կը հաստատեն «Հայոց տուն» մը և Ս. Աստուածածինի (կոչուած «Ս. Աստուածածին Հայոց») (1) և Ս. Լուսաւորիչի նուիրուած եկեղեցի մը՝ Տէյլի Արմէնի կոչուած փողոցի մը մէջ։

Այս եկեղեցին Կղեմէս Բ. Պապը (1040—1047) կը նորոգէ յետոյ։ 1240ին Վատիկանի պալատին և Ս. Պետրոսի եկեղեցիին հրապարակին վրայ Հայերը կը շինէին փոքր եկեղեցի մը և վանք մը, ուր կը բնակէին 12 վանականներ։ Այս վանքը 1356էն յետոյ կը պատկանէր «Ցայսկոյս Ծովու» Հայկական միաբանութեան, զոր հիմնած էր Իննովկենտ Զ. Պապը։ Այս վանքը բաւական կարևոր հիմնարկ մըն էր, վասնզի 1392ին Քարոզիչ Եղբայրներու ընդհանրական պետին նստոցն էր և Կարտինալ Nicolas Caracciolo հոն կը բնակէր (Van den Oudenrijn, Նոյն, Այսօր թ. 371)։ Վանքը ունէր մատուռ մը, որ կը յիշուի իբրև «Մատուռ Ս. Յակոբայ Հայոց» (Ալիշան, Սիսուան 312)։

Այս վանքին և աղօթարանին քով էր «Հայոց Տունը» կամ «Հիւրանոցը» (հաւանօրէն ԺԴ. դարուն) զոր եկեղեցիին հետ վերցնել հարկ եղաւ՝ Ս. Պետրոսի եկեղեցիին առջև հրապարակ մը բանալու համար(2)։

Հոն գրուած և մեզի հասած բաւական թուով ձեռագիրներ ցոյց կու տան թէ Հռոմի Հայերը բաւական ոգևորեալ կեանք մը ունեցած են Կիլիկեան շրջանին, իբրև բեկորները ազգի մը որ միամտօրէն յոյս դրած էր Պապերու օգնութեան վրայ։ Կը յիշուին պատգամաւորներ, որոնք Հռոմ կը դիմեն Հայոց թագաւորներու կողմէ օգնութիւն խնդրելու համար։

Այսպէս, 1210ին Լևոն թագաւոր՝ Հեղի կամ Հեթում անուն անձ մը Օթոն կայսեր և Իննովկենտ Գ. Պապին պատգամաւոր ղրկած է։ Հեղի կը մնայ Հռոմ մէկ տարի և երեք ամիս, կը դառնայ նուէրներով և թագով առ Հայոց թագաւորը։ Իր ուղևորութեան միջոցին, ծովին վրայ, կը թարգմանէ Լատինականէն՝ «Ճառագրութիւն ինքնակալաց Հռովմայ և Ճառագրութիւն Հայրապետաց Հռովմայ» գործերը (տես. Գարեգին Ա. կաթողիկոս, Յիշատակարանք Ձեռագրաց)։

ԺԳ. դարուն երևան կուգան Հռոմի մէջ Արևելքի մէջ տիրող անտանելի կացութենէն ճողոպրող Հայեր։ Ասոնցմէ է Թադէոս քհն. որ իր աշխարհին աղէտը կը նկարագրէ ըսելով՝ թէ «Ե հաս աշխարհին սուր անպատմելի, զոր տեսաք աչաւք մերով, զի զհամարն Աստուած միայն գիտէ զկոտորելոցն

(1) Ըստ *Van Den Oudenrijn*ի (Այսօր, թ. 371), մերթ կոչուած է նաեւ «Ս. Մարիամ անդր կամուրջ»։

(2) Պիոս Դ. 1563ին. անոր փոխարէն տուած է Ս. Մարիամ Եգիպտացիի եկեղեցին, որ 1230էն մինչեւ 1682 կը յիշուի. (Տարիւ Տարեցոյց. 1927, էջ 184, նաեւ հմմտ. *Van den Oudenrijn*, Այսօր, թ. 371)։

օրով եւ զգերելոցն ի ձեռս անաւրինաց եւ յետ այնր մահ եւ սով սաստիկ»։ Նարեկ մը նուիրած է 1226ին «Հռոմայ Ոսպիթալ»ին, որ «աղօթից տուն» ալ ունի, ինչպէս կ'երեւի յիշատակարանէն։ (Յիշատակարանք Ձեռագրաց էջ 846, ՀԱ. 1892 էջ 273—4. Վատիկանի Հայերէն ձեռագիր Թ. 4)։

Պատգամաւոր կամ դեսպան Հայերէն և փոթորկալից Արեւելքէն հոն ապաստանողներէն զատ Հայերը չահագրգռուած են Հռոմի կարծեցեալ կրօնական հեղինակութեամբ և իբրեւ քրիստոնէական նուիրական աթոռ և սրբավայր, հոն երթեւեկած են։

Այսպէս, 1239ին գրուած է Աւետարան մը՝ Խաչենեցի Վարդան Աբեղայի ձեռամբ, «ի Հանգստարանիս Հայոց» «ի դրան սրբոյ մաւրս լուսոյ Սանթա Մարէ» որ է Ս. Աստուածածին եկեղեցին, ուր կը բնակէին հաւանօրէն վերոյիշեալ 12 վանականները, որոնց համար յիշատակագիրը «որք վասն սիրոյն Քրիստոսի եւ սրբոց առաքելոց եւ վասն յուսոյն արքայութեան յանձին ունէին զկամաւոր աղքատութիւն»:

Հայոց տան և միաբանութեան առաջնորդն էր, այդ թուականին, Սարգիս Մարմաշինեցին, (տես. Յիշատակարանք Ձեռագրաց էջ 935—938, Զարպհանալեան Պատմ. Հայերէն դպրութեան հտ. Բ. էջ 309—310 և Հայք Թարգ. էջ 163, ՀԱ. 1897 էջ 109 Ծան. 3 և Բազմավէպ 1930, էջ 346)։ Այս կամաւոր աղքատութիւնը յանձն առնող միաբաններուն կ'ակնարկէ նաեւ 1240ին ի Հռոմ «ի Հանգստարանի Տանս Հայոց ի դրան Ս. Աստուածածնի գրուած Աւետարանի մը գրիչը՝ Վանական, որ այս Աւետարանը գրած է Ստեփանոս քհնյ. Համշինեցիի համար։

Այս գիրքին յիշատակարանէն կը հասկցուի որ այդ թուականին Հռոմ կ'ապրէր Յակոբ անուն այր մը, «Աստուածասէր եւ բարեպաշտն», որ իր «բարեպաշտ եւ հոգեւոր» կնոջ հետ կը սնուցանէին Վանականը, որ կը յիշէ «կամաւոր աղքատ»ները, «որ կան աստ բազում տառապանօք այր և կին(1)։

Առաջնորդն էր Եղբայրութեան (այսինքն միաբանութեան) Սարգիս։ Վանական ձեռագիրին օրինակը առած է Աւետիս «Փիլիսոփայէն», որ անշուշտ Հռոմ բնակող Հայ մըն էր։ (Տես. Յիշատակարանք Ձեռագրաց Ա. էջ 941—42) Բազմավէպ 1930, էջ 340)։

1242ին հոն գրուած Աւետարանի մը գրիչը՝ Թորոս, կը յիշատակէ անունները չորս քահանաներու (Յովհաննէս, Վարդան, Խաչատուր և Յովհաննէս), որոնք գրիչը ընդունած են և հանգուցեալներէն Պետուկ Մշեցին, և Գրիգոր Կարսեցին, (Զարպհանալեան, Պատմ. Հայերէն դպրութեան Բ. հտ. 308 և Թորոս Աղբար, Բ. էջ 440—1, Բազմավէպ 1930։ էջ 346)։

Հռոմի մէջ, ինչպէս կ'երեւի, կամաւոր աղքատ միանձանց վանքին կամ «Հայոց տան» կամ «Հանգստարան»ին մէջ շարժում մը կար գրչագրական գործունէութեան, որ կը հովանաւորուէր Հռոմ ապրող Հայերէն, վասնզի 1240ին Վանական գրիչը կերակրող Յակոբ և իր կինը 1254ին նորէն ձեռնտու կ'ըլլան Յովհաննէս անուն գրիչի մը, որ կը գրէ Աւետարան մը։ Յիշատակարանին մէջ կը յիշուին Մատթէոս, Յակոբ, Մարկոս, Ստեփանոս, Ղազար անուն անձեր, որոնք Հռոմ կը բնակէին (Զարպհանալ. Պատմ. Հայերէն դպրութեան Բ. 308)։

(1) Ուրեմն կուսանք ալ կային:



ԺԴ. դարուն սկիզբը, 1312ին, այս շարժումը տակաւին կը շարունակուի, զի Տիմոթէոս գրիչ «ի հռչակաւոր մայրաքաղաքն Հռոմ, ի Հանգստարան Հայոց« կը գրէ Աւետարան մը (Նոյն)։

Հռոմի Հայերը կ'երեւի Հայաստանի մտաւոր կեդրոններուն հետ կապ կը պահէին, վասնզի Խաչատուր Կէչառուեցի ինքնագիր յիշատակարանի մը մէջ կ'ըսէ թէ «զայս պատմութիւն աշխարհակալին Աղեքսանդրու գրեցի իմով ձեռամբ ի մեծ քաղաքն Հռովմ բերեալ ի Հայս պարգեւս մեծ վարդապետին իմ Եսայեայ»: (Ցուցակ Վենետիկի Ա. 406)։

1 Մարտ 1401ին Բոնիֆակ Թ. Պապը (1389—1401) Հ. Պետրոս Ստեփանոսեան վարդապետին (որ վանահայր էր) կուտայ իշխանութիւն՝ ցկեանս պահելու Մեծաւորի իր դիրքը (Այսօր, 371)։

1565ին Հայոց հին տունը («անդրկամուրջեան») փլաւ և անոր փոխարէն Հայերը ստացան Ս. Մարիամ Եգիպտացի պզտիկ եկեղեցին, որ իրեն կից ունէր հիւրանոց մը (Նոյն)։ Ասիկա եղած է Հռոմի Հայ գաղութին կեդրոնը մինչեւ 1832, երբ ունեցան Via Juliaի մէջ Ս. Վլասի վանքը՝ եկեղեցիով (Նոյն)։

Հռոմէն յետոյ, անոր չափ և թերեւս անկէ աւելի Հայոց ուշադրութիւնը գրաւող քաղաքը եղած է ՎԵՆԵՏԻԿ, ուր կ'երթար Հայը վաճառականութեամբ, վասնզի Վենետիկ առեւտրական մեծ կեդրոն մըն էր։ Ռուբինեանց ժամանակ Վենետիկցիք իբրեւ գլխաւոր նաւագնացներ Միջերկրականի, Կիլիկիոյ հետ առեւտրական յարաբերութիւններ և երթեւեկ ունեցած էին։

«Այս երթեւեկութիւնը այնքան սերտ յարաբերութիւններ էր ստեղծել երկու ազգերի մէջ, որ Վենետիկում կառուցվեց «Հայոց տուն» անունով մի շինութիւն, այն էլ մի Վենետիկցու կտակած գումարով: Այդ բարերարը Մարկոս Ծիանին էր, որ շատ անգամ էր եղել Կիլիկիայում ու հարստացել էր այնտեղ: Կամենալով լաւութիւն անել իր բարեկամ Հայերին, նա կարգադրեց որ իրանից յետոյ մնացած կալքերը գործադրվեն յօգուտ այն Հայ պանդուխտների, որոնք գնում են Վենետիկ: (Հ. Ալիշան, Հայ Վենետ. 1896, 144—147): Նրա առատաձեռնութեամբ շինված «Հայոց տունը» շէն ու կանգուն էր դարերի ընթացքում: Օտարութեան մէջ թափառող Հայը գիտէր որ Տոժերի գեղեցիկ մայրաքաղաքում պատրաստ կայ իր համար օթեւան եւ նոյնիսկ ապրուստի միջոց: Այդքանն բաւական էր, որ այդ բարեգործական հիւրանոցում միմեանց հանդիպէին վաճառականը, կրօնաւորը, աղքատը եւ առհասարակ զանազան կողմերից եկած եւ զանազան կողմեր գնացող մարդիկ» (Լէօ, Հայկական Տպագրութիւն, 1904, Ա. հտ. 17—18):

Վենետիկի հասարակապետութեան նաւերը, որոնք Արեւելք կ'երթային Ասիական ապրանքներով բեռնաւորուելու համար առաւելապէս Հայերու հետ գործ կ'ունենային։ Այսպէս կ'ստեղծուէր բարեկամութիւն մը Հայոց և Վենետիկի հասարակապետութեան միջեւ, շատ հին ժամանակներէ սկսեալ (Ալիշան Հայ Վենետ.) և շատ կը զարգանար Կիլիկեան թագաւորութեան շրջանին։ Դեկտ. 1201ին կը տեսնենք որ Լեւոն մեծագործ Վենետիկի կուտայ առեւտրական առանձաշնորհումներ, որոնք յաջորդ տարիներուն աւելի կ'ընդարձակուին (Հայ Վենետ. 255)։

Դժբախտաբար հասարակապետութեան դիւանները չեն պահած Հայերու Վենետիկ հաստատութեան թուականը, որուն հնութիւնը առնուազն մինչեւ ԺԱ. դար կը բարձրանայ։ Ստոյգ կրնանք համարել թէ ԺԲ.—ԺԳ. դարերուն հոն հաստատուած Հայ գաղութ մը կար իր «Հայոց տուն»ով և անոր քովը կամ մէջը գտնուող եկեղեցիով, որ հաւանօրէն Ս. Յովհաննէս Մկրտիչ կը կոչուէր։

Անհետ կորսուած հին «Հայոց տան» 1235ին, կը յաջորդէ ուրիշ տուն մը, զոր նուիրած էր Սեբաստիանոս Տօժին Մարկոս Ծիանի որդին, և 1253ին ալ անոր կտակած էր կալուածներ, անոնց եկամուտով նորոգելու այդ տունը, որ մասնաւորապէս Հայ եկեղեցականներու բնակութեան յատկացուած էր։

1434ին Հայերը կ'ունենային Ս. Խաչ անուն ուրիշ եկեղեցի մը, որուն հիմնադիրն էր Կատարինոյ Ծէնոյ Վենետիկցի ազնուականը, որ՝ առ ի երախտագիտութիւն՝ Հայերուն նուիրած էր այս եկեղեցին։ «Հայոց Տան» կից էր Հայերու գերեզմանատունը։ (Վենետիկի Հայոց մասին երկարօրէն գրած է Հ. Ալիշան՝ Հայ Վենետի մէջ)։

Վենետիկէն քիչ նուազ նշանակութիւն ունեցած է մեզի համար Իտալիոյ միւս ծովային Հասարակապետութեան՝ կեդրոնը՝ ՃԵՆՈՎԱ ևս, որ նոյնպէս ընդարձակ յարաբերութիւններ մշակած է Կիլիկիոյ ու Արեւելքի ուրիշ նաւահանգիստներու հետ։ 1201ին Ճենովա եւս Լեւոն Մեծագործէն ստացած է առանձնաշնորհում։

Այս պատճառով ինչպէս Վենետիկ, նոյնպէս նաեւ Ճենովա հաստատուած պէտք է ըլլայ Հայ գաղութ մը։

Այս վաճառական գաղթականներուն քով տեսնուեցաւ թէ ինչպէս հոն եկած էին ԺԴ. դարուն սկիզբը՝ Հայ վանականներ և 1308ին հիմնած էին Ս. Բարթուղիմէոս Առաքեալի վանքը (վերը, 589–590): Այս վանքը, ինչպէս տեսանք, նշանաւոր եղած է Ս. Դաստառակով, զոր յիշատակ թողուց 1376ին կամ 1380ին Լէոնարտոս Մոնթոլտօ Ճենովացի դուքսը։ Այս թանկագին սրբութիւնը մինչեւ հիմա հոն կը մնայ։ Այս եկեղեցական հիմնարկին կազմակերպութիւնը կատարուած շրջանին կը տեսնենք թէ Հայ աշխարհիկ անհատներ ալ կան քաղաքին մէջ, ինչպէս էին Մանուէլ Ասպետ և ընտանիքը, որոնք վաղուց հաստատուած էին Ճենովա և հոն ծնած էր Մանուէլ, որ Կիլիկիոյ Լեւոն Ե. թագաւորին գերի իյնալէ (1375) յետոյ զայն ազատագրելու համար ճիգեր գործադրած էր (Հայ Վենետ. 135)։

Հռոմի, Ճենովայի և Վենետիկի չափ հին հայաբնակ վայր մըն էր նաեւ ԲԱՏՈՒԱ. ուր շատ հին ատենէ ի վեր Արեւելցի գաղթականներ եկած հաստատուած էին։ 601ին երբ Աճիլուլֆա կործանեց Բատուան, բնական է այս հնօրեայ գաղութը անհետացաւ։

Սակայն ինչպէս (վերը, էջ 590) տեսնուեցաւ, Ճենովայի Բարսեղեան կրօնաւորներուն պէս՝ ուղղակի Հայաստանէն՝ Դաւիթ վրդ. Կիլիկեցի՝ թերեւս Վենետիկի ճամբով գալով, հաստատած է 1308ին վանք մը՝ Ս. Հե-



ղինէ անունով(1) Բատուայի մէջ, որ մէկ դարէ աւելի հոն մնացած է։ (Y. Maroni Degionario di erudizione) կը կարծէ թէ Ճենովան եղած է Հայերուն Իտալիոյ ամէն կողմ տարածուելուն կեդրոնը և Վենետիկի հասարակապետութեան՝ Արեւելքի հետ վաճառականական յարաբերութիւններ նպաստած պէտք է ըլլան Բարսեղեաններու Բատուա իջնելուն։ Անոնց առաջին յիշատակութիւնը Բատուայի մէջ 1348ին կ'ըլլայ, ոչ թէ իբրև նոր եկուորներ, այլ իբրեւ վաղուց եկած և արդէն անկման շրջանի մէջ մտած, այն աստիճան՝ որ իրենց Ognisanti արուարձանին մէջ գտնուող Saneta Maria Armeniorum կամ Ս. Մարիամ Նազարէթայ եկեղեցիին իբրեւ հիմնաքար կը գործածուի՝ վրան նոր վանք մը կառուցանելու համար։ (2)

1308ին հաստատուած էր Բարսեղեանց Ս. Մարիամ Նազարէթայ Հայ եկեղեցին և 1376—80ին կը յիշուի նաեւ Հայերու գոյութիւնը աղօթարանով մը որ Ս. Մարիամ եկեղեցին պէտք է ըլլայ։

Հայերու թիւին կարեւորութիւնը կը հաստատուի նաեւ 1406ին իրենց յատուկ առաջնորդի մը գոյութեամբը (Gennari. Codice. Padovano. հտ. Ա. 440. Raccolta Comin. 71, Biblioteca Grinzano. և Բազմավէպ 1929. 336)։

1420ին իրենց եկեղեցին այլեւս Ս. Մարիամ (S. Marie) չէր կոչուէր, այլ Ս. Բարսեղ (S. Basilio) (Libro Estimi, detto Croce գլ. Բ. Բատուայի Առաջնորդարանին հին դիւան. Բազմավէպ 1929, Յոյն)։

«Հայերու Ս. Բարսեղի ուխտին վանքը» — ինչպէս կը տեսնուէր կալուածատոմարէն — ունէր մի քանի կալուածներ, իսկ Ս. Բարսեղի միաբանութիւնը միայն չորս հոգի էր և կ'ապրէր այդ կալուածներուն ջնջին հասոյթովը։

Հայերու հետ շատ վաղեմի յարաբերութիւններ ունեցող իտալական քաղաք մըն էր նաեւ ՌԱՎԵՆՆԱ կամ ԱՐՄԵՆԻԱ, որուն Դ. դարուն հիմնադրութիւնը նոյնիսկ իտալացի պատմաբանի մը կարծիքով Հայերը կատարած են, ինչ որ կրնայ տարակուսելի ըլլալ. սակայն ինչպէս յիշուեցաւ այս քաղաքը լի էր Հայկական հին յիշատակներով և նստոցն էր Իտալիոյ Բիւզանդական բանակին, որուն զօրավարները և զինուորները մեծ մասամբ Հայեր էին և առաւելապէս գրաւած էին Քլասսէ Առմէնիա կոչուած — թերեւս Հայերը հոն բնակելուն համար — ծովեզերեայ քաղաքը կամ նաւահանգիստը Ժ. դարուն։

Ռավեննայի մէջ ամբողջ Միջին Դարուն տեւողութեան Հայեր բնակած են, ուստի հոն վանքեր ու եկեղեցիներ պէտք է ունեցած ըլլան։ Երկու վանքեր կային Կամալտուլեաններու ձեռքը, որոնք կը կոչուէին Արմենիոյ վանքեր (Աշխարհ. Գ. 129) ինչ որ փաստ մըն է թէ Հայկական ծագում ունէին անոնք։ ԺԱ. դարուն 1029ին հոն հաստատուած են հաւանօրէն Բարսեղեան կրօնաւորներ մենաստանի մը մէջ, որուն եկեղեցին կը կոչուէր Ս. Յովհան-

---

(1) Բարսեղեան Հայ կրօնաւորներու, Երանելի Հեղինէի վանքը, յետոյ անցած է Օրիվեր-եան կրօնաւորներու եւ 1520ին կուսաստանի վերածուած է, (Ազոնց, Աշխարհ. Բ. 584):

(2) *Ognissanti*՝ արուարձանին (այժմ *Via Belgoni* կոչուած) վանքը անցած է յետոյ Ֆրանչիսկեաններուն:

նէս Հայոց (Ուղ. 248), կառուցուած Աումէնիա կոչուած տեղւոյն վրայ։

Ռավեննայի պէս հին ժամանակներէ սկսեալ Հայերու կայան մը եղած վայր մըն էր Անքոնա, որ Ադրիականի եզերքը կը գտնուէր՝ ոչ հեռու Ռավեննայէն և Ռիմինիէն։

Հայերը շատ կանուխ հոն հաստատուած են (Սսակսն 452), և քաղաքին պաշտպան սուրբը Ս. Լիբերիանոս (= Ազատ) Հայ մըն էր՝ ըստ աւանդութեան։ Հայ վաղեմի թագաւորի մը որդին, որ ծածուկ այս կողմերը պտըտած առեն մեռած է, Ե. դարուն վերջերը կամ Զ.ի սկիզբները։ Հայերը հոս ունեցած են վանք մը և Հայ համայնք մը, որոնց Իննովկենտ Գ. Պապը (1198—1216) շնորհած է արտօնութիւններ (Oudenrijn, Այսօր, Թ. 313), ինչպէս կը հաստատուի 30 Մայիս 1304ին՝ Բենեդիկտոս ԺԱ. Պապին (1303—1304) Անքոնացի Հայ վանականներու տուած մէկ վկայականէն (Ch. Grandjean, Registre de Benoit XI Թ. 958 կամ Այսօր, 313), որ նախորդներուն վրայ նոր առանձնաշնորհումներ կ'աւելցնէ։

Ապահովաբար Հայերու թիւը Անքոնայի մէջ աւելցած է հետզհետէ հաւանօրէն Հեթում Ա. (1224—1269) թագաւորին առեն Կիլիկիայէն եկող Հայ գաղթականներով, որոնք եկած հաստատած են քաղաքին պարիսպին Dalamo անուն դրան մօտ իրենց Հոգետունը(1) որ Իննովկենտ Դ. Պապին 1248 Սեպտեմբեր 22ի կոնդակին մէջ Ս. Հոգի (S. Spritus) կը կոչուի(2)։ Պապը 1206ին արտօնեց նաեւ շինել անոր մէջ կամ քովը եկեղեցի մը՝ Ս. Հոգի և Ս. Անաստասիա անունով, և 1262ին՝ ընդարձակեց Հոգետունը (Սիսուան, 372)։

Ուրբանոս Դ. Պապը (1261—1264) 40օրեայ Հոգեւոր Ներողութիւն շնորհեց շինութեան նպաստողներուն։ Հայերը կոչելով աղքատներ կամ պանդուխտներ (Pauperes Hermein), ինչ որ կ'ապացուցանէ թէ Հայ աշխարհականներ ալ կային քաղաքին մէջ։

Հայերը Անքոնայի մէջ ԺԴ. դարուն 150 ընտանիք էին։ (Ալիշան, Սիսական, 220—221)։

1356ին կամ քիչ յետոյ, Անքոնայի Հայոց տունը կապուած է Իննովկենտ Զ. Պապին հիմնած միաբանութեան (Այսօր, Թ. 313)։

Անքոնայի մէջ ԺԵ. դարուն սկիզբը Հայերու թիւը կը պակսի։ «Ս. Բարսեղեան Հայ Եղբայրներու ընդհանուր վանահայրը Հ. Անտոն Բիզացի, կը նշանակուի վանահայր Անքոնայի Դոմինիկեանց, և միեւնոյն առեն կը մատակարարէ Հայոց հին վանքին ստացուածքները։

Վերջապէս 16 Սեպտեմբեր 1464ին, Պօղոս Բ. Պապը, (1464—1471) այս վանքը տրամադրեց Ս. Ֆրանսուայի Երից կարգաց Եղբայրներուն (Bullarium Franciscanum հտ. II Թ. 1248 կամ Oudenrijn, Այսօր, Թ. 313)։

Իբրեւ վաճառականական կեդրոն Հայ գաղթականներ հիւրընկալելու յարմարութիւններ ունեցող ուրիշ վայր մըն էր նաեւ ԲԻԶԱ (Pise), երբեմն հասարակապետութեան մը կեդրոնը որ Ճենովայի և Վենետիկի պէս Կիլիկիոյ Հայ թագաւորութեան հետ առեւտրական յարաբերութիւններ ունեցած է, իբրեւ մրցակից անոնց։ Նոյնիսկ ԺԳ. դարուն Բիզացի վաճառականներ հաստատուած էին Այաս (Սիսական, 450) և ԺԴ. դարուն սկիզբը անոնց գունձն (consul) էր Բինտոնէ (Bindone Saccamarende)։

1216ին Բիզացիք ալ Կիլիկիոյ թագաւորութենէն ստացած էին արտօնութիւններ, որոնք մինչեւ Կիլիկիոյ թագաւորութեան վախճանը ի զօրու էին։

1115ին Բիզայի մէջ կը յիշատակուին այլակրօն արեւելցիներ, որոնց գոնէ մէկ մասը Հայեր պէտք է ըլլան (Սիսական, 450)։ Անժխտելի իրողութիւն է, որ յատկապէս 1282էն սկսեալ կը յիշուին քաղաքին դիւանին մէջ Հայեր, ինչպէս Միհրան Ուզօլինայի որդին Պետրոս (+ 1366) զոր Բիզացիք կը կոչէին Տելլա Վերճինէ, որ մաս կը կազմէր պետութեան աւագանիին.

Պետրոս իր կնոջ՝ Վալբէի հետ կտակ մը ըրած է 1367ին, Բիզայէն 12 քիլոմէթր հեռու բլրակի մը վրայ Քալզի կոչուած գիւղին մօտ կառուցանելու համար Կարտուսարան (Câstosa) Լատինական վանքը, Vol di Calce ձորակին մէջ (Սսակսն, 450)։

Ասոնք քաղաքի միակ Հայերը չէին, քանի որ 1320ին Հայերը հոն Spussavanto թաղին մէջ ունէին «Հայոց Տուն» և Ս. Անտոն անուն եկեղեցի մը (Սիսուան, 234)։

Բիզայի մէջ Հայերը ունէին Ս. Անտոնի նուիրուած Հայոց տուն մը, ԺԴ. դարու առաջին կէսին հիմնուած (1)։

Այս տան մէջ 1350էն 1360, կարճ շրջանին գրուած են ձեռագիրներ։

Անոնցմէ մէկը կը պահուի Վիեննայի կայսերական Մատենադարանին մէջ, պատարագի մեկնութիւն մըն է՝ «աւարտեալ Ինոնովկենտիոս երրորդ Պապին, ի թուին Փրկչին ՌՅԾԴ. (= 1354) թարգմանեալ ի Լատին լեզուէ ի Հայ բարբառ ի Թադէոս Կաւային(2) եպիսկոպոսէ ի կարգէ Քարոզողաց (3) եւ օրինակեալ ի նոյնում թուին ի Թորոս աբեղայէ Ալվրցւոյ ի քաղաքն Պիզ ընդ հովանեաւ սրբոյն Անտոնի Հայտան, ի հայրապետութեան Ինոնովկենտիոսի վեցերորդի»

Հոն Գրիգոր անուն Արքեպիսկոպոս մը, հաւանօրէն կաթողիկէ, որ կը կրէր «Վեռիոյ (Veria) Արքեպիսկոպոս» տիտղոսը և զոր Սիսէն Հայոց կաթողիկոսը ղրկած էր Իտալիա իբրեւ նուիրակ, ապրած է 1353էն 1362։ Այս եպիսկոպոսը, հակառակ իր աչքերուն տկարութեան և հիւանդութեան, ընդօրինակած է գիրքեր։ 6 Նոյեմբեր 1353ին աւարտած է ընդօրինակութիւնը

(1) Ըստ *Van Den Oudenrijn*ի (Այսօր, p. 313) Անքոնայի մէջ Ս. Հոգի անունով վանք մը ունէին Հայերը, որ հիմնուած էր, ըստ Հ. *Bitio*ի, Ճենովայի Ս. Բարթողիմէոս վանքին վանականներէն «Հ. Մարտիրոսի առեն», այսինքն 1307ի եւ 1356ի միջեւ, ինչ որ ճիշդ չէ, քանի որ շատ աւելի կանուխ կը յիշուի անիկա:

(2) Ալիշան, (Սիսուան) 1246ին կը յիշէ, ուրեմն երկու տարի կը կանխէ:



(1) *Van Den Oudenrijn* (Այսօր, p. 376), իբրեւ վանք կը ներկայացնէ Ս. Անտոնի նուիրուած այս հաստատութիւնը, ինչ որ կասկածելի է:

(2) Կաֆա կամ Քէֆէ:

(3) *Oudenrijn* (Այսօր, p. 376), այս եկեղեցականը Կոռիկոսէն Խրիմ գացած ցոյց կու տայ: 1354ի Ապրիլին եկած էր Բիզայի վանքը (իմա Հայ Տունը) եւ հոն աւարտած էր թարգմանութիւնը: Խրիմ դառնալով մեռած է Քէֆէ, 23 Օգոստոս 1357ին:

Պատարագամատոյցի մը, որ թարգմանուած է Աւինիոնի մէջ Ֆրանչիսկեան Հ. Ponceէն, կաթոլիկութեան յարած Կիլիկիոյ Հայոց համար (Ցիշատակարանը տես. F. Maclerի Notes des manucrits Armeniens vus dans quelques bibliothèques de l'Europe Centrale. Paris 1913 էջ 4517) Ցաջորդ տարուան Օգոստոսին Բիզա գտնուող Հայ վանական մը, որ կը կոչուէր Թորոս, ընդօրինակած է թարգմանութիւնը Իննովկենտ Զ. Պապի մէկ գործին, որ կատարուած էր Կոռիկոսցի Թադէոս կրօնաւորին կողմէ, որ Խրիմ գացած և Քէֆէի եպիսկոպոս եղած էր։

1354 Ապրիլին ան անցած էր Բիզայէն և հոն աւարտած էր թարգմանութիւնը, և դարձին Խրիմի մէջ մեռած էր՝ 23 Օգոստոս 1357ին։

8 Ցունուար 1358ին վերոյիշեալ Վեռիոյ Գրիգոր արքեպիսկոպոսը աւարտած է մէկ ուրիշ ընդօրինակութիւնը Պատարագամատոյցի մը, «ի խնդրոյ Քրիստոսասէր եղբօրն անուն Աւետիս կոչեցեալ(1) ի քաղաքէն Արզլում, որ է Թէոդուպոլիս»(2), որ հիմա կը գտնուի Միլանի Ամբրոսիոսեան Մատենադարանը (Այuor թ. 375 և ՀԱ. 1948 էջ 596)։

Մ. Ա. Վան տեն Ուտենրիյն կը հաւաստէ թէ կը յիշուի նաեւ Բիզայի վանքին միաբան Հ. Անտոն Պետրոսեանը (Antonius Petri). որ քառասուն տարիներ մեծաւորը եղած է Իտալիոյ Հայ եղբայրներու միաբանութեան (Այuor, թ. 375)։

Նոյնպէս հին ու վաղեմի յարաբերութիւններով Հայերու ծանօթ վայր մըն էր ՖԻՕՐԷՆԶԱ (նաեւ ուղղագրուած Ֆիօրենցիա կամ Ֆլորենցիա), Թոսքանայի հասարակապետութեան մայրաքաղաքը, ուր Հայերը կանուխ հաստատուած պէտք է ըլլան։ Հոս բարձրադիր գեղեցիկ բլուրի մը վրայ Հայերը կառուցած էին Ս. Մինասի կամ Սան Մինիաթոյի մեծակառոյց վանքը որ իր ընդարձակ տաճարով մինչև ԺԱ. դար սեփական էր Հայ Բարսեղեան կրօնաւորներու ըստ Հ. Րիքա Pedre Richa), Մանի և Վարքի պատմիչներուն։ Ս. Մինաս որ կ'ենթադրուի ըլլալ Հայաստանի թագաւոր մը կամ արքայորդի մը, Ֆիօրենցայի առաքեալն էր։ Այս եկեղեցին կը թուի ըլլալ ԺԱ.էն ԺԳ. դարերու գործ և բաւական Բիւզանդական, զուգէ նաև Հայկական հետքերով։ Հոն կը տեսնուի Ս. Մինասի խճանկարը շինուած 1279ին Հայ արքայական հանդերձանքով և արձանագրութեամբ մը, որ զայն կը կոչէ Rex Armenia (= Թագաւոր Հայաստանի)։ Ս. Մինասը, որ ոմանց կողմէ կոչուած է Հռոմայեցի զինուոր, մարտիրոսացած է Դեկոսի (249—251) ատեն։ (Գ. Խանամիրեան, Պայքար բացառիկ, 1951, էջ 9 և Ուղր., էջ 244)։

Ս. Մինասի վանքը, Բարսեղեանք, ԺԳ. դարուն վերջերը Լատիններուն թողուցին և քաղաքին մէջ հիմնեցին ուրիշ վանք մը Ս. Բարսեղի (Սան Պա-

(1) Աւետիս, Բիզայի միաբանութիւնը ձգելով՝ Քարոզիչ Եղբայրներու կարգը մտած է եւ առած լատին Օգոստինոս անունը եւ լատինացած: 1374ին Պոլիս գացած է եւ 1380ին դարձած Իտալիա՝ Վենետիկ, եւ գիրքեր գրած է: (Այuor, թ. 376):

2) Այս Աւետիսը Ֆր. Աւետիք Օգոստինոս Կարնեցի Հայ Դոմինիկեանն է, որուն ձեռագիրներուն նուիրուած գերմաներէն յօդուած մը ունի Մ. Ա. Վան Տեն Ուդենրիյն, ՀԱ.ի մէջ՝ 1948, էջ 588—596):



գիլիկօն) նուիրուած տաճարով մը (1)։ Այս նոր վանքը, որ շինուած էր Սան Կալլօ ճանապարհին վրայ, կը պատկանէր նոյնպէս Բարսեղեաններու, որոնք Էռմիտի կը կոչուէին ժողովուրդէն, իբր թէ Հայաստանէն եկած ըլլալով (Աշխ. Գ. 16), թէև հին ատեն յոյն ալ կոչուած էին։ 1321ին և 1324ին, երկու անգամ, Ցովհաննէս ԻԲ. պապը, պաշտպանած է Ֆիօրէնցայի Հայ վանականները, ընդդէմ քաղաքին աշխարհիկ կղերին, մանաւորապէս Ս. Լորան Եկեղեցիին կանոնիկոսներուն, որոնք դժգոհ էին օտարներու հաստատուիլը տեսնելով իրենց թեմին մէջ։

Քաղաքին մէջ և շրջակայքը, Հայերը ունէին ազդեցիկ բարեկամներ։ Ուժգին պաշտպանած է զանոնք նաև Fiésole Եպիսկոպոսը և Santa Maria Novella մեծ վանքին վանահայրը։ 7 Հոկտ. 1321ին, Ցովհաննէս ԻԲ. պապը Հայերը պաշտպանողներուն իրաւունք տուաւ և արտօնեց, որ անոնք Եկեղեցի մը շինեն և գերեզմանատուն մը ունենան, ենթակայ Ցովհաննէս անուն Հայու մը և ընկերներուն, որոնք Ս. Բարսեղի կարգին կը պատկանէին (G. Mollat Jean XXII. Lettres Communes հտ. Դ. թ. 14531, տես. Այuor, թ. 320)։

Եկեղեցին կը շինուի, սակայն հակառակորդներ չեն դադրիր մաքառելէ անոնց դէմ։

Ցովհաննէս ԻԲ. պապին, 29 Ցուլիս 1324 թուականով մէկ գիրէն (Mollat, Նոյն, հտ. Ե., թ. 19989), կը հասկցուի թէ Ս. Լորանի կանոնիկոսները՝ նոյն իսկ բռնի ուժի դիմած են, զինեալ յարձակելով Հայ Եկեղեցիին վրայ և վանականները ծեծելով և Եկեղեցին տակն ու վրայ ընելով, սակայն պապին պաշտպանութեամբ, Հայերը չարունակած են իրենց գոյութիւնը պահել։

1341ին, Աւինիոնի մէջ կը տեսնուին Ֆլորանսէն քանի մը Հայ Եղբայրներ, որոնք մեզի անծանօթ գործով մը հոն գացած են (Այuor, թ. 320)։

Պապական արքունիքին մէջ, Հայոց մեծ պաշտպանը Եղ. Դանիէլ Մընուր, Արճէշէն, կը հաւաքէ վկայութիւններ, «Պատասխան Մոլութիւններու որոնք կը վերագրուին Հայոց» կոչուած իր ծանօթ գործին համար (տես. Recueil des Historiens des Croiades, Documents Arméniens, հրտ. Kohler էջ 617 կամ Այuor, թ. 320)։

Ալիշան, (Հայ Վենետ. 149), կը յայտնէ թէ ԺԳ. դարուն Հայ գաշութ մը կար Ֆիօրէնցա և կ'ըսէ թէ Ս. Բարսեղ վանքը յիշուած է 1250էն 1491, իբրև Հայերու սեփական։

Անիկա ԺԵ. դարուն «Ս. Բարսեղեան Հայ Եղբայրներու» Միաբանութեան ամէնէն կարեւոր տուներէն մին էր։

1403էն 1472, միաբանութեան ընդհանրական մեծաւորն էր Հ. Անտոն, որ կը պատկանէր Ֆլորանցի Magalotti ազնուական ընտանիքին։

1425ին Ֆիօրէնցայի վանքին և եկեղեցիին Հայ Եղբայրները կը յիշուին ձեռագիրի մը մէջ, որ կը պատկանէր Castelloի Կղերանոցի մատենադարանին (հիմա քաղաքին Լորէնեան Մատենադարանը) (Այuor, թ. 320)։

(1) Ըստ Հ. Գրիգոր Պիսիոյի, հիմնուած էր Ճենովայի Ս. Բարթողիմէոս վանքին կրօնաւորներէն՝ 1307էն 1356 թուականներու մէջերը: 1321ին, յիշատակութիւն մը կ'ստիպէ մեզի զանէ այդ թուականին հիմնուած ընդունելու:

Ս. Բարսեղեան Հայ Եղբայրները Ֆլորենցայի հասարակապետութեան որոշումով 1407էն սկսեալ ամէն տարի մօրրամոմ ընծայ կ'ստանային։ 1491ին Բարսեղեան միաբանները հետզհետէ վախճանելով սպառեցան և իրենց վանքը տրուեցաւ Հոգւոյն Սրբոյ միաբանութեան (Ուղուրլեան, Ցոյց, 244—5 և Ալիշան Սսական, 450)։

Հայ վանականներ նաեւ Ֆլորենցայի մօտակայ անտառին մէջ Մունիլլօ կոչուած տեղը ունէին եղեր վանք մը, որուն Ֆրանչիսկեանք տիրացած են։ Բազմաթիւ վաւերագիրներ ցոյց կու տան թէ բաւական թիւով Հայ վանականներ կային Ֆլորէնցայի մէջ (Գ. Խանամիրեան, Պայքար բացառիկ 1951)։

Նոյնպէս բաւական հին առենէ ի վեր հայաբնակ քաղաք մը եղած է Ռավէննայի մօտակայ Ադրիականի ծովեզերքի ԱՐԻՄԻՆԻ կամ ՌԻՄԻՆԻ (Rimini) քաղաքը, զոր Ռիմ կը գրէ Հայ գրիչ մը։ Հայերը հոն ունէին Հոգետուն՝ յանուն Ս. Աւետարանիչներու Յովհաննէսի և Մատթէոսի եկեղեցիով, որ հաւանօրէն ԺԳ. դարուն սկիզբը հիմնուած պիտի ըլլայ, վասնզի 1215ին քաղաքին հոգետուններուն կամ հիւրանոցներուն (Ospitali) մէջ կը յիշուի Ս. Յովհաննէսը, որուն Հայերուն պատկանիլը կ'ենթադրէ Tonini — քաղաքին պատմիչը — հիմնուելով ուրիշ պատմիչի մը սա վկայութեան վրայ՝ որ Երուսաղէմէն եկող Հայեր բերած էին Սուրբերու նշխարներ և կը պահէին խնամով։

Կ'ենթադրուի թէ այդ Հայերը Սալահէտտինի Երուսաղէմը գրաւելէն (1188) ետք փախած էին։ 25 Նոյեմբեր 1265ին Հայերը, Կղեմէս Դ. Պապին հաւանութեամբ կը փոխադրուին քաղաքին ուրիշ մէկ կողմը, Ս. Վլաս եկեղեցին և Նիկողոս Գ. Պապին առեն, 1291ին կը նորոգեն կամ կը վերաշինեն այդ եկեղեցին, որուն վէմերը կը պահուին երկու իրարու նման արձանագրութեամբ, 1296 թուականներով մին հաւանօրէն «Հայոց տան» և միւսը՝ եկեղեցիին համար (տես. L. Tonini. Storia Civile a Sacra Riminese հտ. Գ. էջ 342 և Այսօր, թ. 313)։

Իթվ ՉԽԵ. ես Թովմա վարդապետս ծինեցի զսուրբս:

Իթվ ՉԽԵ. ծինեցաւ սուրբս Աստուծոյ Թովմա վարդապետէ:

Ռիմինիի մէջ ալ Բարսեղեանք պէտք է հաստատուած ըլլան, վասնզի քաղաքին դիւանին մէջ 1311ին կը յիշուին Հայ Եղբարք, որ յայտնի չէ թէ մինչեւ ե՛րբ գոյութիւն ունեցած են։ 1442ին Ս. Վլասը տրուած է Հերոնիմեան վանականներուն։

Ռիմինի մէջ Հայերու բաւական ստուարաթիւ բազմութեան մը գոյութիւնը կը հաստատէ այդ քաղաքը 1254ին ընդօրինակուած Ցանախապատումի մը գրիչը՝ Վարդան, որ ընդօրինակած է այս ձեռագիրը «Ի Հայոց տուն, հիմնեալ յանուն Ս, Յովհաննու եւ Ս. Մատթէոսի» և կը յիշէ «զառաքելաշնորհ եպիսկոպոսն Յովաննէս» (F. Macler. Բարիզ Ազգ. Մատենադարան։ Թ. 112/1 և Այսօր, Թ. 313) և Դանիէլ և Սիմոն երէցները։

Քանի մը տարի յետոյ Հայ գաղութը կ'անհետանայ կամ կը ցրուի։

ԺԵ. դարուն սկիզբը, միաբանութեան անդամ մը՝ Եղբայր Սարգիս, կ'օրինակէ Հայ-Հռոմէական Միսալ մը, որ ցարդ կը պահուի Ռիմինի հասարակաց մատենադարանը։



Հաւանօրէն Հայ վաճառականներ, ինչպէս Անքոնա, հոս ալ եկած են, ինչպէս երկու քաղաքներուն միջեւ գտնուող Պիզարա և Սինիգալիա քաղաքները։

ԺԵ. դարու կէսերուն՝ Հայ միաբանները նորէն անհետացան Ռիմինիէն այս անգամ վերջնականապէս։ 5 Հոկտեմբեր 1442ին Եւգինէոս Դ. Պապը շէնքը նուիրեց տեղացի Ս. Ժերոմի եղբայրակիցներուն (Այսօր, Թ. 313)։

Թոսքանայի մէջ էր նաեւ ՍԻԵՆԱ (Siena կամ Sienue) քաղաքը, ուր հաստատուած էին Բարսեղեան Հայ կրօնաւորները և ունէին փոքրիկ եկեղեցի մը, քաղաքին Կամոլեան դրան մօտ, Ս. Խաչի և Ս. Գերեզմանի անունով, որ լքուած էր յետոյ, (Ուղ. Ցոյց, 247)։ Քաղաքապետութիւնը իրենց ռոճիկ սահմանած էր 1263էն մինչեւ 1277։

1270ին Հայերը ունէին քաղաքին մէջ Ս. Աստուածածին, Ս. Սիմոն և Ս. Թադէոս երեք խորան միակ եկեղեցին կամ երեք եկեղեցիներ (Սիսուան, 372 և Van den Oudenrijn, Այսօր թ. 371)։

1356էն յետոյ վանքը մաս կազմած է «Յայսկոյս Ծովուն» Հայ Եղբայրներու միաբանութեան որ հոն հաչակեց իր ընդհանուր կանոնիկոսը՝ 1371ին։ Այդ ժամանակամիջոցին ոմն Եղբայր Մխիթար, Երնջակի գաւառին Շահապոն գիւղէն, հոն գրած է Պատարագամատոյց մը, (Ալիշան, Սիսական, էջ 182)։

Իտալիոյ հայաբնակ հին քաղաքներէն մին էր նաեւ ՊԵՐՈՒՃԻԱ կամ ՊԵՐՈՒԺ = Փէրուժ = Perugia) Ումբրիոյ մէջ։ Այս քաղաքին և Կիլիկիոյ միջեւ յարաբերութիւններ գոյութիւն ունէին, վասնզի Լեւոն Գ. Թագաւոր Ժամագիրք մը նուիրած է Հայոց Ս. Մատթէոս եկեղեցիին՝ Յովհաննէս քհն.ի մը խնդրանքով, 1273ին, ինչ որ կը հաստատէ թէ Հայերը անկէ առաջ արդէն հոն հաստատուած էին։ (Ուղուրլեան, Ցոյց, 243, և Պատմ. Հայերէն դպրութեան Բ. 310)։

1273ին այնտեղ Հայերու կարեւոր թիւ մը պէտք է գտնուած ըլլայ (Այսօր, թ. 346) վասնզի վերոյիշեալ Յովհաննէս քհն.էն զատ հոն կը գտնուէին Ղուկաս անուն քահանայ մը ու Հեթում և Օշին Սարկաւագները (Ցոյց)։ Հայ գաղութին եկեղեցին կ'օծուի նոյն տարին (1273) յանուն Ս. Կոյսին և Ս. Մատթէոս աւետարանիչին և քաղաքացիները կու տան դրամական նուէր մը (Այսօր թ. 346)։

1301ին՝ «ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցն Մատթէոսի եւ Բառնաբայ», — թերեւս գաղութը երկու եկեղեցիներ ունենալուն համար —, Դաւիթ անունով գրիչ մը կը գրէ Գործք Առաքելոց և Կաթողիկեայ Թուղթք, «Հայոց Տան» մէջ որուն առաջնորդներն էին Յակոբ քհն. և Գրիգոր «միայնակեաց Պկոտն կոչեցեալ»։ Յիշատակարանին մէջ իբրեւ եկեղեցւոյ պաշտօնեայ կը յիշուին Յակոբ և Մատթէոս քահանաները, Յովհաննէս Սարկաւագը և Պարոնիկ միակեացը և Ներսէս Սարկաւագը (ՀԱ. 1892 էջ 341—2)։

Յաջորդ տարին (1302) Տիմոթէոս անուն քահանայ մը Խազգիրք մը կը գրէ «Ի Փերուժ Իտալիոյ» (Երուսաղէմի թ. 2436 ձեռագիրը)։

Նոյն տարին, 1302ին, նոյն Տիմոթէոս քահանան Փերուճիոյ Ս. Մատթէոս եկեղեցիին նուիրուած Տօնամակի մը մէջ կը յիշատակէ ծերունի

Յակոբ քհ.ն (վերոյիշեալը) և անոր հոգեւոր որդին Բասիլ քհ.ն, որոնք Հայոց տան վերատեսուչներն էին և Ս. Մատթէոս եկեղեցիին քահանաները (տես Գարեգին կաթ. Յովսէփեանց, Յիշատակարանք Ձեռագրաց 872)։

1309ին Փէրուժի մէջ «ընդ հովանեաւ եկեղեցւոյն սրբոյ Աւետարանչին Մատթէոսի, ձեռամբ Երեմիայի» գրուած է Աստուածաշունչ մը (Երուսաղէմի թ. 427 ձեռագիր)։

Նոյն թուականներուն գրուած ուրիշ հայերէն ձեռագիր մը կը պահուի Բերուժի մայր-եկեղեցիին մատենադարանը (նկարագրուած հայագէտ Փրոֆ. Almo Zanolli-էն, Այսօր թ. 346)։

Պաւղոսի Թղթոց գրչագիրի մը մէջ, որ դարձեալ Բէրուժի մէջ գրուած է Յովհաննէս գրիչէն, «ի յառաջնորդութեան Տանս Հայոց Տեառն Սուքիասայ» կը յիշատակուի իբրեւ հոգեւոր հայր գրիչին՝ Ստեփանոս Փիլիփոփայ և Յովհաննէս Շամքորեցին և անոր աշակերտ Յովհաննէս քահանան (Պատմ. Հայ դպրութեան, Բ. 311 դժբախտաբար թուականը չէ յիշուած)։

Նոյնպէս անթուական կը յիշուի Զարպհանէլեանէ Յայսմաւուրք մը (Պատմ. Հայ Դպր. Բ, 310), որ Փէրուժ գրուած է։

1341ին Մառի անուն Հայուհի մը, Վենետիկ հաստատուած, իր կտակին մէջ կը յիշէ Ս. Կոյսի և Ս. Մատթէոս Աւետարանիչի եկեղեցիները։

Փէրուժ հոծ Հայութեան մը կեդրոնը եղած է։ Հոն մեռած է 1349ին՝ Թովմաս եպս. «Իտալիոյ Հայոց» (Հայապատում, 485), որ նոյնն է ապահովաբար, Van den Oudenrijnի սխալմամբ 1375ին յիշած Թովմաս եպս.ին հետ, որ Սիսէն իբրեւ կաթողիկոսական նուիրակ եկած էր Փէրուժ և հոն վախճանելով թաղուած էր Հայոց եկեղեցին։

Բէրուժի Հայ վանականները միացած են Իննովկենտ Զ. Պապին հիմնած միաբանութեան։

1450ին տակաւին իրենց գոյութիւնը կը պահէին, երբ նոր նպաստ մը ստացան կառավարութենէն։

1528ին միաբանութիւնը կը դադրի գոյութենէ և իրենց հին տունը կը վերածուի հիւանդանոցի (Այսօր, թ. 346)։

ՊՈԼՈՆԻԱ կամ ԲՈԼՈՆԻԱ (Bologne), նոյնպէս ծանօթ քաղաք, պէտք է որ ԺԳ. դարուն իսկ հիւրընկալած ըլլայ Հայ գաղթականներ բաւական թիւով մը, վասնզի 1303ին, ԺԴ. դարուն սկիզբը, հոն կը յիշուին երեք եկեղեցիներ, Ս. Աստուածածին, Ս. Յովհաննէս Մկրտիչ և Ս. Հոգի անունով (Սիսուան)։ Հոն գրուած է նաև 1381ին Միսալ (Հռոմէական պատարագամատոյց), «ձեռամբ փծուն եւ անարհեստ գրչի, Պօղոս անուն աբեղայի Առաքելցւոյ ի գաւառիս Իտալացւոց. ի մայրաքաղաքիս որ կոչի Պոլօն, ընդ հովանեաւ Ս. Հոգւոյն եւ ի պատիւ Ս. Աստուածածնին...»: (Պատմ. Հայ Դպրութեան, Բ. 312 և Փարիզ, Ազգ. Մատենադարան, Հայ Գրչագիրներ, Թ. 107/22, Macler)։

Հ. Pitio, իր Իտալիոյ Հայ Եղբայրներու պատմութեան մէջ, կը յիշէ Բոլոնիոյ մէջ հայկական վանք մը՝ «Սանթա Մառի Գառպէլատա» անունով (Այսօր, Թ. 314)։ Այս տունը հիմնած էին Ճենովայէն իրր թէ 1356էն ետք եկած կրօնաւորներ, բայց հաւանօրէն սխալ է վանքին անունը և վստահօրէն թուականը (Այսօր, Թ. 314)։



8 Հոկտ. 1321ին, Յովհաննէս ԻԲ պապը Ներողութիւններ կը շնորհէ անոնց՝ որոնք Բոլոնիոյ Ս. Բարսեղի կարգին Հայ կրօնաւորներուն եկեղեցին կ՚այցելեն, և կը խօսի անոնց մեծ աղքատութեան վրայ և կը յանձնարարէ վեհանձնութիւն ցոյց տալ, նպաստելով այս Եղբայրներուն։

4 Յուլիս 1426ի Պապին գրութեանը համաձայն՝ Հայ Եղբայրներու տունը Ս. Հոգւոյն հովանիին տակ, կը գտնուէր քաղաքին պարիսպէն դուրս և կը պատկանէր Իննովկենտ Զ. պապէն հիմնուած միաբանութեան։ Այս շրջանին վանահայրն էր Պօղոս Յովհաննէսեան (Paul de Jean), որ որոշ արժանիքներով օժտուած անձ մը ըլլալու էր, վասնզի Մարտինոս Ե. պապը (1413—1431) կ՚արտօնէր պահել, հակառակ ընկալեալ սովորութեան, իր Մեծաւորի պաշտօնը ցկեանս կամ մինչև նոր տնօրինութիւն (Այսօր, Թ. 314)։

ՄԻԼԱՆԻ «Հայոց Տունը» ունէր եկեղեցի մը Կոզմայի և Դամիանոսի նուիրուած, ԺԴ. դարուն։

1356էն ետք, այս վանքին կրօնաւորները մաս կը կազմէին այն հայկ. միաբանութեան, զոր հիմնած էր Իննովկենտ Զ. պապը, և որուն Ընդհանրական Մեծաւորները ընտրուած են 1486ին, 1492ին, 1501ին, 1507ին և 1518ին (Այսօր, 346)։

Բայց կը տեսնուի որոշապէս թէ այս միաբանութիւնը կորսուած էր իր հայկական նկարագիրը ԺԵ. դարուն։ Վենետիկի Մխիթարեանց քով կը պահուի 1410 թուականով ձեռագիր մը՝ գրուած Ապարանցի Մխիթարիչէն, ուր կը խօսուի Միլան հաստատուած Հայ կրօնաւորներու վրայ, որոնք չէին կիրարկեր Հայ պատարագամատոյցը, այլ կը գործածէին տեղական լատին կղերին նման «Ամբրոսիոսեան»ը, (տես. Ալիշան, Հայապատում, էջ 552) (1)։ Ս. Կոզմայի և Դամիանոսի այս վանքը կը մնար մինչև ջնջումը «Հայ Եղբարց» միաբանութեան, որ տեղի ունեցած է 1650ին, երբ իրենց վանքը փոխանցուած է վերակազմեալ Օգոստինոսեանց։

ՆԱԲՈԼԻԻ Հայոց Տունը հիմնուած է, ըստ Հ. Pitioի, 1356էն յետոյ՝ Ճենովայի Ս. Բարթողիմէոսեան միաբանութեան կրօնաւորներէ, սակայն իրականութեան մէջ, աւելի հին է անիկա, վասնզի Օգոստոս 1328ին Յովհաննէս ԻԲ. պապը, իրաւունք կու տայ այս տան Հայ վանականներուն՝ հրնչեցնել զանգակ և հաստատել գերեզմանատուն (G. Mollat. Jean XXII, Lettres Communes Է. հտ, թ. 42059, Այսօր, Թ. 346)։ 1328էն 1448, 120 տարի կը յիշուի այս եկեղեցին, (Սաական, 455), որ թերևս աւելի կանուխ շինուած էր, վասնզի Նաբոլին իբրեւ վաճառաշահ նաւահանգիստ՝ պէտք է աւելի կանուխ բնակուած ըլլայ Հայերէ։ Նաբոլի ունի այս եկեղեցիին մօտ «Հայոց փողոց» մը և քաղաքին կեդրոնը Ս. Գրիգոր Լուսաւորիչի նուիրուած եկեղեցի մը, ուր կը պահուին Լուսաւորիչին գլուխին մէկ մասը և չարչարանքի գործիները։ Աւանդութեան մը համաձայն՝ Կ. Պոլիսէն կամ Արեւելքէն Նաբոլի փոխադրած են այս մասունքները, Կոստանդին Ե. Կոպրոնիմոս (741–745)

(1) Ըստ *Van Der Ooderijn*ի, Ալիշան կը սխալի այս նօթը վերագրելով Եղ. Մխիթարիչի, գիրքին հեղինակին: Ան յետամուտ կը կարծէ անանուն գրիչ մը:

պատկերամարտ կայսեր ատեն, կոյսեր՝ որոնք Ս. Բարսեղի կարգին կը պատկանէին (Ացոնց, Աշխարհ., Գ. 164)

1356ին, Նաբոլիի միաբանները մաս կազմեցին Իննովկենտ Զ. պապէն հաստատուած Հայ միաբանութեան որ Բարոզող Եղբայրներու կարգին պատկանող ուրիշ շատ մը Հայ վանքերուն պէս, Ս. Հոգւոյ անունով կոչուած էր։

1448ին, միաբանութիւնը նուազած է, Հայ Եղբարց Ընդհանրական Վանահայրը՝ Հ. Պօղոս Անտոն Bentivoglis, տրամադրեց եկեղեցին և վանական շէնքը, Դոմինիկեան կարգէն Հ. Անտոն Ռոքքայի։ (Antoine della Rocca)։ Իր նուէրը հաստատեց Նիկողոս Ե. պապը։ (Այսօր, Թ. 346)։

Հայաբնակ էր նաև հարաւային Իտալիոյ ՍԱԼԵՌՆՈՅ (Salerno) քաղաքը, ուր Հայերը, կ'երևի հաստատուած են ԺԳ. դարուն։ 1283էն 1328 Հայեր կը յիշուին հոն, թէև կարելի է որ ատկէ առաջ կամ ետքն ալ Հայեր կ'ապրէին այնտեղ։

1283ին կը տեսնենք թէ հոն գրուած է աղօթագիրք մը, Գրիգորէ, «ընդ հովանեաւ Ս. Մատթէոս առաքելոյն», որ թերևս հայ եկեղեցի մը չէ, այլ քաղաքին նոյն անունով Մայր Եկեղեցին, բայց նոյն թուականին անվրէպ է Հայոց Տան գոյութիւնը, վասնզի գրիչը կ'ըսէ թէ գրուած է «ի տունն Հայոց առ դրան Սրբոց Կղմնի (1), որ թերևս Հիւրանոցին Եկեղեցիին անունն է (Հ. Գ. Վրդ. Գալէմքեարեան, Ցուցակ Հայ Ձեռագրաց Արքունի Մատենադարանին ի Միւնխեն, 1892, էջ 11)։

1287ին կը յիշուի նաև Ս. Կարապետ անուն եկեղեցի մը (Սիսուան, 372), որ ԺԴ. դարուն՝ 1327ին, անկասկած գոյութիւն ունեցած է, վասնզի հոն գրուած է Նարեկ մը՝ «գրեալ ի մագաղաթի, յաշխարհս Ֆռանկաց, ի քաղաքս Սալեռ. ընդ հովանեաւ Սուրբ Կարապետին, յԱնդրոնիկոս քահանայէ, ի թուին Հայոց ՉՀԶ (= 1327) (Կարինեան, Թ. 1517 Պատմ. Հայ Դպրութեան Բ., 310): Օգոստոս 1328ին, հոն դեռ կային Հայ վանականներ, երբ Յովհաննէս ԻԲ. պապը հրատարակեց Ներողութիւն՝ ի նպաստ իրենց (G. Mollat, Jean XXII. Lettres Communes, հտ. VII Թ. 42061, Նաև Այսօր, Թ. 371)։

Այս եկեղեցին, «Անապատ» որակուած, ապահովաբար վանք մըն էր, որուն յիշատակով Անապատ Հայոց Ս. Խաչ կոչուած ըլլալը կը կարծուի Կաւայ գիւղաքաղաքի մօտակայ լերան վրայ շինուած նորագոյն եկեղեցին, հազիւ քանի մը մղոն հեռու Սալեռնոյէն (Սռական, 455)։

Հայոց ծանօթ էր շատ կանուխ՝ Սիկիլիա կղզին, ինչպէս տեսնուեցաւ (ՊՀԳ. Ա. 331–333), որ Բիւզանդական կայսրութեան տիրապետութեան շրջանին նուաճուած էր, և աքսորավայր մը եղած էր։ Պահ մը արաբներու իշխանութեան ենթարկուելէ ետք՝ անկախ թագաւորութիւն մը եղաւ, ՄԵՍԻՆԱ մայրաքաղաքով։

Միջերկրականեան այս կղզին ալ բաժին մը ունեցած է Արևելքի ծովային վաճառականութեան մէջ։ Այս առթիւ Սիկիլիոյ թագաւորութիւնը յարաբերութիւններ ունեցած է մեր Կիլիկեան թագաւորութեան հետ։ Այսպէս,

(1) Թերեւս Կղեմենս կամ Կղեմէս:



1226—7ին, կը յիշուի որ Լևոն Բ. թագաւոր, Վասակ և Վահրամ եղբայրները դեսպան ղրկած է Կարոլոս Ա. Անժուի։

Նոյնպէս Օշին թագաւոր (1304—1320) ամուսնացաւ Տարենտացի արքայազուն Փիլիպպոս իշխանին աղջկան հետ և անոր որդին Լևոն Դ. (1320—1342) ամուսնացաւ Էլէոնարա Կոստանդիոյի հետ, որ աղջիկն էր Ֆրետերիկ թագաւորին, որ առևտրական արտօնութիւններու գաշինք կնքած էր, իր Սիկիլեան հպատակներուն համար Այասի մէջ առանձնաշնորհումներ ստանալով, Վենետիկի և Ճենովայի պէս (Սիսուան, 363)։

Այս յարաբերութիւններուն իբրեւ հետեւանք՝ Հայեր հաստատուած էին Մեսինա և հոն ունէին «Հայոց տուն» մը (Նոյն)։

Այս Հայ գաղութը բաւական երկար ատեն պահած է իր գոյութիւնը այս կղզիին մէջ։

Այս գլխաւոր և յայտնի վայրերէն զատ՝ Իտալիոյ զանազան քաղաքներուն մէջ ալ Հայ պզտիկ գաղութներ յիշուած են և թերեւս կան շատ ուրիշներ ալ, որոնք չեն յիշուած՝ իրենց շատ պզտիկ թիւին կամ առիթ մը ներկայացած չըլլալուն համար։

Այս երկրորդական քաղաքներէն յիշենք ՖԱԲՐԻԱՆՈՅ քաղաքը, ուր Հայերը ունեցած են Հայոց տուն մը՝ Ս. Հոգի եկեղեցիով։ Այս տան մէջ 1319ին Վարդան քահանայ Ճաշոց գիրք մը գրած է (յիշատակարանը տես. Պատմ. Հայ Դպրութեան Բ. 312)։

ՉԻՎԻԹԱ ՎԷՔՔԻԱ կամ ՈՍՏԻԱ նաւահանգիստ Հռոմի, որ կը գտնուէր Բիզայի և Լիվոռնոյի հարաւը։ Ասպնջական եղած է Հայ վաճառականներու և ուխտաւորներու։ Հայերը 1340ին հոն ունէին Ս. Հոգի եկեղեցին հաւանօրէն Հոգետունով կամ Հայոց Տունով միասին։

ՕՐՎԻԷՏՕ (Orvieto), ուր Հայերը 1288ին կը յիշուին և ունէին տուն մը, զոր կը յիշէ Վենետիկցի Մառի անունով Հայուհին, 1341ին, իր կտակին մէջ (Սիսական 482)։

13 Նոյեմբեր 1349ին Կղեմէս Զ. Պապը Եպիսկոպոս կը նշանակէ Հ. Թօմաս մը, որ այդ միջոցին կը գտնուէր Օրվիէտոյի Հայ միաբանութեան գլուխը։

Ուրիշ տեղեկութիւններ կը պակսին այս վանքին վրայ, միայն գիտենք որ տեսանագրեալ էր յանուն Ս. Հոգւոյն։

ՄԱՆՏՈՎԱ Լոմպարտիայի մէջ, որուն եկեղեցին 1335ին կը յիշուի (տես Ղալայճեանցի Վասպուրականի Ձեռագիրներու Ցուցակը, էջ 252—4) Կտուց Անապատ պահուած Աւետարանի մը յիշատակարանին մէջ, որ, եթէ, ինչպէս կ'ենթադրէ Ղալայճեան, ԺԴ. դարուն գրուած է, 1335ին միայն կրնայ գրուած ըլլալ։ Գրիչը կ'ըսէ թէ գրած է Լոնպարտիոյ Ս. Պենետիկտոս վանքը, որ հանգստարանն էր Սուրբ և Սքանչելագործ ճգնաւորին Քրիստոսի Սիմէոնի (+ 16 Յուլիս 1016), որ ինչպէս յայտնի է՝ Մոնտովա թաղուած էր (ՊՀԳ. Ա. 340)։ Ձեռագիրը ստացած է Մակար կրօնաւորը։ Յիշատակարանը կը յիշէ ուրիշ Հայեր, ինչ որ կը հաստատէ հոն Հայ գաղութի մը գոյութիւնը, որչափ կարելի է հասկնալ չափազանց մաշուած և ցեցակեր այդ Աւետարանին յիշատակարանէն։

ՖԱԼԻՈԼԻ աւանը, որ կը գտնուէր Անդրիականի վրայ, հարաւը Գարգանոյ (Gargano) հրուանդանին, ծոցի մը մէջ, հին Սեպանտոյին և այժմ Մանֆրիտոնիա կոչուած քաղաքին մօտ։ Հոն Հայերը կանգնած և նոյն ալ վերանորոգած էին եկեղեցի մը՝ 1313—14 թուականներուն (Սաակեան 452),

ԼՈՒԿԿԱ՝ Սմիլիա նահանգին մէջ, որ ինչպէս յիշուեցաւ, իբրև պաշտպան սուրբ ունէր Հայ Ս. Դաւիթը (տես. ՊՀԳ. Ա. 340 և վերը 586) ԺԴ. դարուն Կիլիկիայէն գաղթող Հայեր հաստատուեցան հոն։ Հայ եկեղեցիին անունն էր Ս. Պօղոս (Սիսուան, 372), յիշուած 1319էն սկսեալ։

Այս կարևոր և քիչ շատ գործօն գաղութներուն ժամանակակից Իտալիոյ մէջ կը յիշուին գաղութներ, որոնք ունէին իրենց Հայ եկեղեցիները, ինչպէս ԺԳ. դարու, 1290ին ՎԵՏԵՐՊՈՅԻ(1)

ԺԴ։ դարու սկիզբը ՕՏԼԱՆՈՅ(2)։

1304ին ՖԵՐՐԱՐԱ(3)

1318ին՝ ԿՈՒՊՈԼԻՈՅ(4)։

1319ին՝ ԲԱՐՄԱ(5)։

1340ին՝ ԲԻՍՏՈՅԱ (Թոսքանայի մէջ) (6)։

1372ին՝ ՖԱԷՆՑԱ (7)։

Հայ Բարսեղեանք երկար բնակութիւն ունեցած են նաև հարաւային Իտալիոյ ԲՈՒԼԻԷՆ (La Puglie) քաղաքը (8) և մենաստան մը և անդաստաններ, ունեցած են Սիեննայի իշխանութեան մէջ գտնուող ՍԱՆ-ՃԵՄԻՆԻԱՆՈՅ աւանը (9)։

Կը յիշուին նաև քանի մը վայրեր, ինչպէս՝

ԲՈՆԹԷՔՈՐՈՆԱ՝ Ս. Պետրոս Առաքեալ, ԿՈՒԱ՝ Ս. Խաչ եկեղեցիներով, սակայն առանց որոշ թուականի։

Ինչպէս նաև յիշատակուած են քաղաքներ, որոնց եկեղեցիներուն ո՛չ անունները և ո՛չ ալ թուականները գիտենք, սակայն գիտենք որ հայաբնակ եղած են, ինչպէս ԲԵՆԻՒԵՆՏ (10), ՊՈՒԼԻԱ (11), ՖՈՐԼԻ, ԻՄՈԼԱ, ԲԵՋԱՐՈՅ

---

(1) Եկեղեցիին անունն էր Ս. Սիմոն (= Շմաւոն) եւ Ս. Յուդա, (Ալիշան, Սիսուան, 372):

(2) Պոլոնիայի մօտ էր այս քաղաքը, եւ Հայ եկեղեցւոյ անունն էր Ս. Բարսեղ եւ Ս. Մարիամ Կարմեղայ, (Սիսուան, 372):

(3) Եկեղեցին ձեռնադրեալ էր Ս. Աննա անունով (Նոյն)

(4) Անունն էր Ս. Հրեշտակք, Ս. Աննա (Նոյն):

(5) Ս. Բարսեղ (Նոյն):

(6) Ս. Բարսեղ եւ Ս. Ոնոփրիոս (Սիսուան. 372):

(7) Ս. Թովմաս կամ Ս. Մարթա:

(8) Մինչեւ հիմա հոն Բարսեղեանք «Իտալական Թեբայիսի» *(Tebaide Italiana)* հետք մը, ձգած են, որ Մանածրիացի *Vincenza Gallo* (Վինչենցիոս Կալլոս) մեծ խնամքով հրատարակած է *(La Tebaide in Italia, Napoli-Aldina,* 1925· Բազմավէպ, 1928, էջ 336):

(9) Այս մենաստանը եւ իր ստացուածքները, տրուած են Ոլիվէտեանի կոչուած կրօնաւորներուն. (Ուղուրլեան Վրդ., Նոյն, 249):

(10) Հայերու հոս բնակութիւնը կը հաստատէ Կանալ *(Canal)*, որ քաղաքին վաճառականութեան պատմութիւնը գրած է (Սաակեան, 455):

(11) Կ'աւանդուի որ Հայ եւ Յոյն մենաստաններ ունեցած է այս քաղաքը (Սաակեան, 455):



(Բելգարա), (պապական երկիրներ), ՊԱՏԱՒԻՈՆ, (Վենետիկի դքսութեան մէջ), ՖԱԲՈՐԻԱՆՈՅ, ՖԴՐԻՑԱ, ԳԱԲԲԻՕ, ԱՄԱԼՖԻ (1), ՎԻԵՏՐԻ (2), բայց որևէ պատմական տեղեկութիւն չունինք անոնց մասին։

Իտալական այսքան բազմաթիւ քաղաքներուն մէջ հաստատուած Հայերը, թերևս նիւթական որոշ բարգաւաճումի մը հասած են, բայց դժբախտաբար շատ շուտով կորսուած են իրենց ազգութիւնը՝ Հռոմի Եկեղեցիին սադրանքներուն և ընդգրկած՝ ապազգայնացնող մեթոտներուն ենթարկուած։ Հայ գաղթականները չունէին միջոցները անոր դէմ մաքառելու, մանաւանդ որ իրենց ազգային կրօնքն իսկ ազատ կիրարկութեան թոյլտուութիւնը չունէին։ Մեծ դժբախտութիւն մըն էր նաև սա իրողութիւնը. անոնք միակամօրէն բնաւ ազգապահպանութեան համար չեն մաքառած և գոնէ համախմբեալ և մէկ վայրի մէջ կեդրոնանալու հնարաւորութիւնը չեն ունեցած և իբրև աննշան միութիւններ, կաթոլիկ քրիստոնեայ մեծ զանգուածին հետ անխտրականութեամբ վարուելով, շատ դիւրաւ հալած են, ցաւագին յիշատակ մը թողլով իրենց ետին։

∴

Իրենց հայրենիքէն հեռացող Հայերու վերջին կայանը չէր Իտալիան։ Անոնք յաճախ շատ հեռուները գացած են, զարմանալի յանդգնութեամբ, մը, մտնելով անծանօթ աշխարհներ, ինչպէս Ֆրանսա, ուր նոյնիսկ Ե. դարուն պատահաբար այցելու Հայերէն յետոյ,՝ Զ. և Է. դարերուն Հայ վաճառականներ մուտք գործած էին (ՊՀԳ. Ա., 176) և Թ. և Ժ. դարերուն Հայեր, մասնաւորապէս Պաւղիկեան աղանդաւորներ, Պուլկարիայէն՝ Տալմացիոյ և հիւսիսային Իտալիոյ ճամբով՝ մինչև Ֆրանսայի հարաւային նաւահանգիստները առաջացած էին (ՊՀԳ. Ա. 339—341)։

Դժբախտաբար Ֆրանսա հաստատուած առևտրական և արհեստաւոր Հայերու մասին առարկայական տուեալներով տեղեկութիւններ գրեթէ չունինք. միայն կը հանդիպինք յիշատակութեանը շրջիկ կրօնաւորներու, որոնք Ֆրանսա հասած են, ինչպէս տեսնուեցաւ (ՊՀԳ. Ա.: 339—341) (3)։ Եթէ ման-

---

(1) Նափոլիի մերձակայ վայր մը, զոր նուաճած էր 891 պրոտոսպաթար Սմբատիկ եւ չորս տարի հոն իշխած էր: Իրեն յաջորդած են Գէորգ եւ Վարդակ (Սաակեան, 454): Կը կարծուի թէ հոն Թ. դարէն սկսեալ Հայեր բնակած են Թերեւս ասոր համար քաղաքին եպիսկոպոսը՝ Անսոն Արիքանօ, 1343ին դեսպան ղրկուած է Հայոց Կոստանդին Գ. թագաւորին:

(2) Աղիականի եզերքը, ուր Հայ վաճառականներ երթեւեկած են (Սաակեան, էջ 452):

(3) Մեր յիշած Հայ եկեղեցականներէն աւելի կանուխ թուականի մը Ֆրանսա այցելած Գրիգոր՝ Հայաստանի *Amnice* քաղաքի (Եփրատի վրայ, իբր թէ) եպիսկոպոսի մը յիշատակութիւնը, 1952ին գտած է Թագւոր Թագւորեան (Այսօր, Թ. 553—4): *Cap*ի եպիսկոպոսս *St. Remi* կամ *St. Remède*, այս Հայ եպիսկոպոսը նշանակած է հովիւ *Tallard*ի *(Hautes Alpes)*, ուր ան մեռած է 21 Սեպտ. 404ին: Անոր կենսագրութիւնը հրատարակուած է 1837ին, *La Vie du Bienheureux Grégoire, évèque d'Amnice en Arménie et Patron Tutelaire de Tallard, par l'Abbé Nicollet, Cap, 1837.* Թ. Թագւորեան անկէ քաղուած մը հրատարակած է (տես. Այսօր, Թ. 556—9):

րամասն տեղեկութիւններ կը պակսին մեզի Ե. դարէն մինչև ԺԱ. դար՝ Ֆրանսա այցելած բազմաթիւ Հայ եկեղեցականները (որոնք սրբացած են) և ուրիշ Հայեր, որոնք Ֆրանսա հաստատուած են առեւտուրի գործով կամ այլ պատճառներով, անժխտելի է որ որոշ ազդեցութիւն մը ունեցած են իրենց բնակած շրջանակներուն մէջ։

Գ. Խանամիրեան, (Պայքար բացառիկ, 1951, էջ 9), գիտել կու տայ թէ Նիկոպոլսոյ Ս. Գրիգոր Արքեպս.ի նուիրուած եկեղեցիին մօտ կը գտնուին Ժեռմինիի տը Փուէյի և էթամփի շէնքերը, «որոնց մեջ հայկական ճարտարապետության յուրահատուկ ոճի մի անսխալելի կերպեր գործածված են»։

Ժօզէֆ Ստրզիգովսկի (1862—1941 +), իր «Էյս Լա Շապելի Մայր եկեղեցին եւ իր այլափոխութիւնը» գրուածքին մէջ կը պնդէ որ «Գերմանիոյ Աախենի Մայր եկեղեցին (796—504), նաեւ Ֆրանսայի Օռլէան քաղաքին մօտ գտնուող Ժեռմինիի տէ Փռէի եկեղեցին կառուցուած են հայկական ոճով. այդ ոճը յառաջ եկած է Արեւելքէն — հայկականէն, եւ ոչ թէ Բիւզանդական-Հռոմէականէն, ինչպէս մինչեւ հիմա առհասարակ կը կարծուէր։ Այս երկու եկեղեցիներուն եւ Կարոլինգեան ոճով շինուածներու յատակագիծի ճարտարապետական յորինուածքը՝ Հայաստանի հին եկեղեցիներուն եւ մանաւանդ Զուարթնոցի (654) ու Ս. Գրիգոր եկեղեցիներու յատակագիծներուն հետ գրեթէ նոյն են» (Գ. Խանամիրեան, Նոյն)։

Ի՞նչպէս կարելի է մեկնել ասիկա։

Խանամիրեան կը խորհի թէ, ինչպէս որ Արաբները Հայ որմնադիրներ գործածած էին ոչ միայն Եգիպտոսի, այլև Սպանիոյ մէջ, նոյնպէս 806ին Ֆրանսայի մէջ շինուած Ժեռմինիի տը Փուէի եկեղեցիին համար ալ Հայեր գործածուած են, և սա յատկանշական տեսութիւնը կը պարզէ, յաւելով՝ որ այս եկեղեցին քիչ մը մահմետական յատկանիշներ ունէր։ Եւ որովհետև մահմետականները օգտուած էին Հայ որմնադիրներու հմտութենէն, Խանամիրեան, Մառթին Ս. Պուրկոյի Լուի Ռէօյի և Կ. Քոհենի ուսումնասիրութիւններուն վրայ (տես. Նոյն) հիմնուած, կը հետեւցնէ թէ անոնք կրած են Հայ և Արաբ ճարտարապետութիւններուն ազդեցութիւնը, ինչ որ՝ թէև անհաւատալի՝ սակայն հաստատուած իրողութիւն մը կարելի է համարել։

Նախ քան Խաչակրութիւնները գոյութիւն ունեցող այս կապերը սակայն՝ աննշան են, բաղդատմամբ այն շատ սերտ յարաբերութիւններուն, զորս Հայերը ունեցան Խաչակրութիւններէ ետքը, ինչպէս և Արևմուտքի զանազան երկիրներու, նոյնպէս և Ֆրանսայի հետ։ Ֆրանսացի Խաչակիր ասպետներուն համար, Հայերը մեծ զոհողութիւններ ըրին։

---

Ըստ Գեղամ Խանամիրեանի (Պայքար, բացառիկ, 1951, էջ 9)՝ Թ. դարու վերջերէն սկսեալ Ֆրանսա գացած էին Հայերու կարեւոր խումբ մը։ Ս. Սողոմոն, Հայ սուրբը, որ մինչեւ այսօր պաշտամունքի առարկայ է Ֆրանսացիներէն, եւ կը հանգչի կեդրոնական Փիթիվիէ քաղաքին մօտերը. Յիշած եմ (ՊՀԳ. Ա., 339) Ժ. դարուն Նիկոպոլսոյ Ս. Գրիգոր եպս.ը, որ առանձնացած է Փիթիվիէի մօտերը, եւ մինչեւ իր մահը ապրած է իբրեւ ճգնաւոր։ Թաղուած է իրեն նուիրուած տեղւոյն բեմական եկեղեցիին մէջ, որուն առաջին քարը դրուած է Ռէնի-է սը Ֆլանտրը, Օռլէանի եպիսկոպոսին կողմէ՝ 1080ին (Գ. Խանամիրեան, Նոյն)։



Henri Riondel իր մէկ ուսումնասիրութեան մէջ, (ՖՐԱՆՍԱ ԵՒ ՀԱՅԵՐԸ, ձակատամա-ս Թ. 373—379) թուելէ յետոյ Հայերու մատուցած ծառայութիւնները Ֆրանսացի Խաչակիրներուն, կը յարէ թէ «այսքան սերտ յարաբերութիւններ պիտի առաջացնէին զինակցութիւններ, որոնք Ռուբէնի յաջորդները արքայական արիւնը պիտի խառնէին ֆրանսական ամենանշանաւոր ընտանիքներու արիւնին։ Անդրծովեան շառաւիղներու հինաւուրց պատմիչը անոնցմէ կը հաշուէ ոչ նուազ քան տասներկուքը, Թորոսի թագաւորութենէն, 1141ին, մինչեւ Լեւոն Ե. 1321ին։ Ուրիշ ֆրանք եւ Հայ ամուսնակցութիւններ եղած են այս թուականներէն թէ՛ առաջ եւ թէ՛ յետոյ(1), մանաւանդ երբ Հայաստանի թագը անցաւ Կիպրոսի Լուսինեաններուն։ Եւ ամբողջ երկիրին ազնուական ուրիշ ընտանիքներ արքայական տան օրինակին կը հետեւէին։ Ֆրանսացի ազնուականներ յաճախ կը ստանձնէին բարձր պաշտօններ, արքայական դատաւորութեան, Ռուբինեան թագաւորներու մօտ»։

Հ. Ալիշան կը հաստատէ թէ ֆրանսական սովորութիւններ և օրէնքներ ընդօրինակուած էին Կիլիկեան Հայ արքունիքէն և ազգէն ու փոխադարձաբար Հայկական շատ մը սովորութիւններ Արևմուտք մտած էին։ Henri Riondet կը պնդէ թէ Արևմուտքի մէջ Հայ մայրերէն ծնած զաւակներուն Հայ անուններ, Լևոն, Հեթում, Թորոս և այլ դրուած է, և յաճախ կը պատահէր որ Ֆրանսայի Հայերը դեռատի իշխանազունները՝ իրենց զաւակները կը ղրկէին Հայ մօրեղբայրներուն արքունիքը, հոն դաստիարակուելու և յետոյ բարձր պաշտօններ և աստիճաններ ստանալու համար։

Կիլիկիոյ մէջ միայն ազնուականներ չէ որ հաստատուեցան, այլ երկիրին նաւահանգիստները լեցուեցան Փրովանսէն եկած վաճառականներով, վասնզի Հարաւային Ֆրանսայի մի քանի ծովեզերեայ քաղաքներն ալ, — տկար մրցակիցներ Ճենովայի, Վենետիկի, Բիզայի եւայլնի—, իրենք ալ հետամուտ էին վաճառականական յարաբերութիւններ ունենալու Կիլիկիոյ և Կիպրոսի հետ, ինչպէս ունէին Սուրիոյ հետ, և այսպէս շահաստաններ կը հաստատէին։

Այստեղ գացող առաջին Ֆրանսացիները եղած են Մարսիլիացիները, որոնց հետքերը կը գտնուին 1228էն ի վեր, ըստ Տիրան Թէքէեանի հետազօտութիւններուն։

Եւ ինչպէս ծովային վաճառականութեան ախոյեան Իտալական քաղաքներու մէջ Հայ վաճառականներ՝ առեւտրական յարաբերութիւններու հետեւանքով հաստատուեցան, նոյնը պատահեցաւ Ֆրանսայի վաճառաշահ նաւահանգիստներուն համար։ Հայ գաղութներ երեւան եկան այդ վայրերը։ Կը կարծուի թէ հին ժամանակներու մէջ Հայերը ոտք դրած էին Մարսիլիա, և Կիլիկեան շրջանին հոն գաղութներ եղած էին։ ԺԱ. դարուն, յայտնի է թէ Անիի կործանումէն վերջ, գանգուածային գաղթեր տեղի ունեցած էին և Եւ-

---

(1) Տես. ՊՀԳ. Ա., էջ 343, ուր բացատրուած է թէ ինչպէս Պուրպոնեաններու արեան խառնուած է Հայ արիւն։

րոպական զանազան քաղաքներու կարգին՝ ԺԲ. դարուն Հայ վաճառականներ ընդունած էին Մարսէյլ և շրջականները՝ (Նոր Լուր Թ. 1132) գլխաւորապէս Մոնփելիէ, Նարպոն, Նիմ և այլ քաղաքները։

Այսպէս, Տարասկոնի (Հարաւային Ֆրանսա) Սէնթ Մարթ եկեղեցիին մէջ գտնուած է Հայկական արձանագրութիւն մը՝ 1226 թուականով, Լատիններէն նախադասութեան մը վրայ։

Այդ արձանագրութիւնը կը ներկայացնէ Հայերէն այբուբենը, բայց նշանակելի է որ Օ և Ֆ տառերը կը պակսին, ինչ որ կը հաստատէ թէ անիկա գրուած է ԺԳ. դարէն առաջ, քանի որ այդ տառերը այդ դարէն յետոյ գործածուած են մեր մէջ։ Գիրերը տեղ տեղ անջատուած են իրարմէ զանգի մը պատկերով։ Պարզ տապանաքար մըն է, որ կը կրէ այս արձանագրութիւնը։ Ըստ երեւոյթին մարմինը թաղուած է եկեղեցիին գետնադամբարանին մէջ, ուրուն մուտքը գաւիթէն է։ Այս տապանաքարին վրայ կայ ուրիշ մը եւս, որ կը կրէ թռչունի մը պատկերը, անթերի գծագրութեամբ։

Կարելի է բաւական վստահութեամբ ըսել թէ Հարաւային Ֆրանսա հաստատուած Հայ գաղութը աննշան չէր։

H. Riondel կ'ըսէ թէ «անոնց ընտանիքները բաւական կարեւոր եղած պիտի ըլլան որ Ռօն գետի մէկ ճիւղը, այսօր ցամքած, կ'անուանուէր Հայերու անունով, անտարակոյս այն պատճառով, որ այս վերջինները այս եզերքին վրայ բազմաթիւ վաճառատեղիներ ունէին»:

Հաստատուած է որ Հայերը առեւտուր կ'ընէին Կամպանիոյ և Փռովանս նահանգներուն — մանաւորապէս Մոնփելիէ, Նիմ և Մարսիլիա շահաստան նաւահանգիստներուն հետ — ուր Կիլիկիայէն Հայեր եկած էին. (Ալիշան, Սիսական, էջ 456)։

Այսպէս, ԺԲ. դարէն սկսեալ, Հայերը գաղթած են Հարաւային Ֆրանսա, Փրովանս և Լանկտոք նահանգները և մանաւորապէս Մարսիլիա, Մոնփելիէ, Նարպոն և Նիմ, ուր հասած են Արեւելքէն հալածուած (J. Mathorez «Հայերը ի Ֆրանսա ԺԲ.էն մինչեւ ԺԸ. դար» Revues Historiques 1918 Mai–Juin Թրգ. Հ. Ց. Վրդ. Աւգերէ, Բազմավէպ 1919 էջ 144—149)։

«Միջին դարում, Հայերը այնքան բազմաթիւ էին Մոնփելիէի մէջ, որ համալսարանի դրան վրայ փակցուած էր Հայկական դրամի եւ Ֆրանսայի թագաւորին դրամի փոխանակութեան ցուցակ: Էռոյի նահանգին մէջ խիստ յաճախ կը գտնուի Հայկական տիպար իր ֆիզիքական երկու գլխաւոր յատկանիշերով — կարճ գանկ եւ ուռուցիկ, ցցուն քիթ...» (Տոքթ. Ռընէ Մարսիալ. Francais qui es-tu? էջ 96 կամ Հայկական գիրք, 1943, Փարիզ, 74)։

Կիլիկիոյ Օշին Թագաւորը 1314 Յունուար 7ին հրովարտակով մը արտօնած էր որ Այասի նաւահանգիստին մէջ Մոնփելիէցիներէն պահանջուի 2% մաքսային զեղչեալ տուրք (Ed. Dulaurier, Recherches sur la chronologie Armenienne. էջ 189, Հրանտ Սամուէլ. Հայերը Ֆրանսայի մէջ սկիզբէն ի վեր, ՖՐԱՆՍԱՀԱՅ ՏԱՐԵԳԻՐՔ. 1927 էջ 52—53) եւ 1321 Մարտ 16ի Օշինի որդին և յաջորդը Լեւոն Դ. «առ Մոնբուզլերցի վաճառականքն» շնորհած է նոյն առանձնաշնորհումները յիշելով իր հօրը տուած համանքը (= հրովարտակը)։ (J. Mathorez Նոյն, Dulaurier, Chartes Arménienne dans Historiens des Croisades Docouments Arméniens. հտ. I. էջ 754—756, Սիսուան 359, Հայ Վենետ. 74. 78. 111)։



Մինչեւ հիմա կը մնան Օշինի և Լեւոն Դ.ի այս երկու հրովարտակները Մոնփելիէի դիւանաթուղթերուն մէջ։ (H. Riondel, Նոյն)։

Նոյնպէս Կիպրոսի Հուգոն Ա. Թագաւորին որդին, Հենրի Ա., 1226էն ի վեր դիւրութիւններ տուած էր Փրովանսի բնակիչներուն և Մոնփելիէի վաճառականներուն։ Մոնփելիէցիք, օգտուելով այս արտօնութիւններէն, Կիպրոսի Ֆամակուսթա քաղաքին մէջ հաստատած էին հիւպատոս մը և Factory մը։

Հետաքրքրական պարագայ մըն է այն՝ որ Կիլիկիոյ և Կիպրոսի Թագաւորները այս շնորհները ընելով կ'ուզէին Եւրոպայի քրիստոնեայ իշխանութիւնները շահագրգռել և անոնց պաշտպանութիւնը ապահովել իրենց իշխանութիւններուն համար։

Այդ կարգի շնորհներ, նոյնիսկ հողային զիջումներ պէտք է կատարուած ըլլան, բայց դժբախտաբար բոլորին տեղեակ չենք մենք, և փաստեր չունինք, թէև անոնցմէ ոմանց վրայ պատահօրէն ստացուած գաղափար ունինք։

Այսպէս, կը յիշուի Կիլիկիոյ ծովեզերքը Փրովանսալ կղզին (այսօր Տանա Ատասը), որ Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան կը պատկանէր և անվիճելիօրէն «հայկական կղզի» մը եղած էր, հովանաւորուած Կիլիկիոյ Հայ Թագաւորներէ։ ԺԳ. դարուն սկիզբը, Կիլիկիոյ Թագաւորները կ'արտօնեն Երուսաղէմի Ս. Յովհաննու Ասպետները, որպէսզի հոն հաստատեն ապաստան մը՝ ազատագրուած քրիստոնեայ գերիներուն համար։

Այս կղզիին շատ մօտը գտնուող Սիլիֆքէ քաղաքը Լեւոն Ա. Թագաւոր 1209ին կը ձգէ նոյն Ասպետներուն դէպի հիւսիս գտնուող Նոր բերդ և Կամարտիան կոչուած երկու ամրոցներու հետ, իբրև նշան շնորհապարտութեան Երուսաղէմի Ս. Յովհաննու ասպետներուն, որոնք իրեն օգնած էին վտարելու համար Իկոնիոյ Սելջուկ զօրքերը, Կիլիկիոյ սահմաններէն։

Այս Ֆրանսացի Ասպետներէն շատեր Փրովանսացիներ էին, որոնք ԺԳ. դարուն հաստատուած էին Փրովանսալ կղզիին մէջ, ինչպէս նաև ծովեզերեայ այն շրջանին մէջ, որոնք կղզիին հանդիպակաց Սիլիֆքէի ցամաքամասը կը կազմէին։

ԺԴ. դարուն այս կղզին Փրովանսցիներուն համար եղաւ առեւտրական գործունէութեան կարեւոր խարիսխ մը, այդ շրջանակին մէջ։

1321ին, երբ Այասի դէմ նոր յարձակումներ գործուեցան, Փրովանսցի վաճառականները իրենք զիրենք ապահով չզգալով Փրովանսալ կղզիին մէջ, Լեւոն Դ. Թագաւորէն կը խնդրեն կղզին իրենց յանձնել, հոն աւելի ազատօրէն և աւելի շահաւէտ կերպով առեւտուր ընելու համար։ Այս վաճառականութիւնը կը կատարուէր Սիլիֆիէի նաւահանգիստէն։

Լատիններու Փորթուս Փինուս կոչած Այա Լիման նաւահանգիստը՝ Սիլիֆիէ քաղաքը՝ կը գտնուէր այն մեծ ճամբուն վրայ, որ կու գար Փոքր Ասիայի կեդրոնէն, անցնելով Ատանա և Տարսոն քաղաքներէն, որոնք մինչև 1359 Հայերու ձեռքն էին և այդ թուականին անցած՝ Մահմետականներուն։

Հայերը ԺԴ. դարու առաջին կէսին տակաւին տէր էին Ներքնաշխարհի կարաւանի ճամբաներուն։

ԺԴ. դարու երկրորդ կէսին՝ Կիլիկիոյ Թագաւորը, Կոռիկոս Նաւահանգիստը ձգեց Կիպրոսի Թագաւորին, որ կրցաւ զայն պաշտպանել մինչեւ ԺԵ. դար, բայց չենք գիտեր թէ Ս. Յովհաննու Ասպետները Փրովանսալ կղզին և անոր Նաւահանգիստը որքա՞ն ատեն կրցան պահել։ Ըստ Տիրան Թէքեանի՝ կղզին երկու անգամներ լովլին թալանուած է, և դադրած է անոր կարեւորութիւնը՝ ԺԵ. դարուն վերջերը։

Այսպէս, Հարաւային Ֆրանսայի, մասնաւորապէս Մոնփելիէի և Կիլիկիոյ միջեւ յարաբերութիւններ կային, և Ֆրանսացիք ալ, Իտալացիներէն քիչ մը ուշ կը մասնակցէին Արեւելքի ծովային առեւտուրին և երթեւեկ ունէին Կիլիկիոյ, մասնաւորապէս Այասի հետ։ Հաւանօրէն Լանկտոքի բնակիչները կ'երթային Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան սահմաններուն մէջ, և փոխադարձաբար՝ Հայ ճարպիկ և նախաձեռնարկ վաճառականներ կ'երթային Ֆրանսա, հոն գործելու համար։

Կիլիկիոյ և Նիմի վաճառականական յարաբերութիւններն այնքան բանուկ էին, որ բաղդատական ցուցակներ շինուած էին Այասի և Ֆրանսայի չափերուն և կշիռներու համար (J. Mathorez, Նոյն) (1)։

Դժբախտաբար առարկայական տուեալներ կը պակսին, հաստատելու համար որ Հայերը որքան կարեւոր թիւ մը կը ներկայացնէին ԺԱ. դարէն յետոյ՝ Ֆրանսայի մէջ, թէեւ հայկական ազդեցութեան մը որոշ հետքերը կը տեսնուի Ֆրանսայի մէջ։

Բենիամին տը Դուտել, որ Լանկտոքի Նահանգները կը շրջէր ԺԲ. դարուն երկրորդ կէսին ատենները, կը հաւաստէ որ Ֆրանսայի հարաւային քաղաքները այլազան ազգերէ բաղկացած բնակիչներ ունէին։ Ան կը գրէ թէ «Ի Մոնփելիէ, կը լսուի խօսուիլը լեզուներուն, աշխարհի ամէն ազգերուն. որոնք հոն կը դիմեն Ճենովացիներու եւ Բիզացիներու հետ» (J. Mathorez, Նոյն)։

Հոն պէտք է լսուած ըլլայ նաեւ հայերէնը, վասնզի ընդարձակ յարաբերութիւններ կը մշակուէին Կիլիկիոյ և հարաւային Ֆրանսայի մի քանի քաղաքներուն միջեւ, որոնցմէ նշանաւորներէն էր Մոնփելիէ։

ԺԳ. և ԺԴ. դարերուն, Կիլիկիա միջազգային առեւտուրի կեդրոն դարձած էր և Այաս Նաւահանգիստը, արեւելեան Միջերկրականի ծովային վաճառականութեան ամենակարեւոր կեդրոնն էր։ Այս պատճառով ֆրանսական նաւերը հոն կը դիմէին։

ԺԳ. դարուն, 1228էն սկսեալ, Այասի հետ առեւտրական յարաբերութիւն մշակող Եւրոպական բազմաթիւ քաղաքներու բնակիչներէն մասնաւոր կերպով յիշուած են Մարսիլիացիք և աւելի ուշ՝ 1321 Մարտ 16ին, Լեւոն Դ.ի տուած պարգեւագիրին մէջ, Փրովանսի բնակիչները և Նիմի, Նարփոնի և Մոնփելիէի քաղաքացիները (Սիսուան, 359 և Հայ Վենետ., 74—78 և 111)։

(1) Այս համեմատական ցուցակը 1335ին պատրաստած է Ֆրանչիսքօ Պալոտչչի Փէկոլոթթի (*F. B. Pegolotti, Pratica della Mercatura*·, էջ 46), որ Ֆիորէնցայի Պարտի Դրամատան կողմէ, Կիլիկիա գացած էր եւ 10 Յունուար 1335ին իր հայրենակիցներուն համար ստացած էր առանձնաշնորհումներ։



Թէեւ ուրիշ քաղաքներու արտօնագիրները չեն գտնուած, սակայն վստահօրէն կրնանք ըսել թէ պէտք է ուրիշ քաղաքներ ալ ստացած ըլլան այդ տեսակ առանձնաշնորհումներ։

Ամէն պարագայի մէջ՝ ֆրանսական նաւեր Այաս կ'երթեւեկէին, ինչպէս 2 Սեպտ. 1295 թուականով վաւերաթուղթ մը, Վենետիկ քաղաքի դիւաններուն մէջ գտնուած, կը հաստատէ ասիկա Մարսիլիացիներու նաւերուն համար (Victor Langlois, Le Trésor des Chartes de l'Arménie, 164—165, Հրանտ Սամուէլ, Նոյն, 53)։

Ֆրանսացիք Կիլիկիա կը բերէին չհիւսուած դերձան, ածելի, փարիզեան գօտիներ, դանակ, հայելի, օճառ, մեղրամոմ եւայլն։

Երբ Ֆրանսայի Աւինեոն քաղաքը Պապերուն նստոցը եղաւ պահ մը, Ֆրանսայի և Կիլիկիոյ միջեւ յարաբերութիւններ սաստկացան՝ Հռոմին տեղը, Ֆրանսայի այդ քաղաքը գրաւած ըլլալով։ Աւինեոնի հակաթոռ Պապերը Արեւելք ղրկեցին Ֆրանչիսկեան կրօնաւորներ, որոնք հայերէն կ'ուսանէին Պապերու պալատին մէջ, ուր արեւելեան լեզուներու յատուկ դասընթացք մը բացուած էր։ Հայերէնի ուսուցիչները, Կիլիկիոյ Հայ Թագաւորները կը ղրկէին։ Լեւոն Դ. այս նպատակով 1322ին ղրկած է երկու կրօնաւորներ, Ռընիէ տը Քոնսթանս և Աղեքսանդր Պետրոս, որոնք ամսական 24 ֆիօրին և 12 մեծ թուղթ կ'ստանային, (M. Faucon. La Librairie des Papes d'Avignon, հտ. II. 31—32, Հրանտ Սամուէլ, Նոյն, 56)

Ֆրանսական արքունիքը, ինչպէս Աւինեոնի Պապական աթոռը, երկուքն ալ հաւասարապէս կը շահագրգռուէին կամ շահագրգռուիլ կը կեղծէին Արեւելքի քրիստոնեաներով և իբր թէ անոնց ի նպաստ ձեռնարկներ կ'ընէին։ Այսպէս, ըստ Vaisetteին՝ Լանկտոքի պատմութեան հեղինակին՝ առեւտրական յարաբերութիւններու հետեւանքով էր որ Ֆրանսայի Ֆիլիպ Վալուա Թագաւորը 1335ին, ծրագրեց խաչակրութիւն մը կազմակերպել, Հայերու օգնութեան հասնելու համար, սակայն ի մեծ ցաւ Հայերուն, չկրցաւ իրականացնել և ձախողեցաւ գործը, ինչպէս պատահած էր Արագոնի Յակոբ Բ. Թագաւորին (1291—1327), որ 1293 Նոյեմբերին Մոնկոլներու Քեղաթուն կամ Խայխաթուն (1291—1325) վեհապետին և 1300ին, Ղազան Մահմուտ Խանի (1295—1304) պատգամաւորներ ղրկած էր՝ միասին խաչակրութիւն մը կազմակերպելու համար։ Սպանական բանակները Այաս ցամաք պիտի ելլէին, Մոնկոլներուն գործակցելու համար, սակայն այս ծրագիրն ալ ձախողեցաւ (Charles Kohler, «Mélanges pour servir à l'Histoire de l'Orient Latin», Paris, 1906, հտ. II. 596 և շար. կամ Հրանտ Սամուէլ, Նոյն, 55)։

Անշուշտ գումարներով նպաստներ Քրիստոնեայ Արեւմուտքի միակ շնորհը եղած են Արեւելքի քրիստոնեաներուն, որոնք թշուառութեան մէջ կը տըուայտէին և իրենց աչքերը Արեւմուտք դարձուցած էին։

Անոնց մէկ նմոյշը կարելի է նկատել Ֆրանսայի Կարոլոս Ե. Թագաւորին իշխանութեան ատեն, Ատանայի Եպիսկոպոսին ղրկուած ողորմութեան գումարները։ 1364ին Թագաւորը կը յայտնէր թէ ստացած էր «(Ժեհան Jehan l'Ulssierէն, 100 ֆրանք ոսկի, զանոնք իբրեւ ողորմութիւն տալու համար Եղբայր

Մանուէլի, Ատանայի Եպիսկոպոսին, Հայաստանի մէջ, աղքատ և կողոպտուած անհաւատներէ» (Léopold Delisle — Mandements de Charte V. N. 123, Collection des Documents Inéditsի J. Mathorezի յօդուածին, տես նաև Բազմավէպ, 1919, 148)։

Ողորմութեան կամ գթութեան գործ մըն էր նաև այն հիւրընկալութիւնը զոր Փարիզ ընծայած է մեր Լևոն վերջին Թագաւորին։ Ան 1384ին, Կարոլոս Զ.էն սիրով ընդունուեցաւ և ստացաւ կենսաթոշակ և դղեակ մը՝ բնակութեան համար։ Լևոն ուզեց օգտակար ըլլալ զինքը հիւրընկալող երկրին՝ երկու անգամ Անգլիա երթալով, Ֆրանսայի և Անգլիոյ թագաւորներուն միջև հաշտութիւն գոյացնելու համար։ Զախողած իր առաքելութեան մէջ՝ 1393 Նոյեմ. 29ին մեռաւ ի Փարիզ։

Նշանակելի է և ամենահաւանական՝ որ Լևոն Լուսինեան վերջին, մինակը չէր որ Փարիզ հաստատուեցաւ. հաւանօրէն իրեն հետ ունէր հետևորդներ։ Յովհաննէս Տարտէլ, իր խոստովանահայրը, որ իրեն հետևած էր գերութեան մէջոցին, և Գահիրէէն անցած էր Եւրոպա, ողորմութիւն մուրալու, Եւրոպական արքունիքներէն, գերի Թագաւորին փրկանքը տալու համար և յաջողած՝ իր առաքելութեան մէջ, ունի Լևոնի կեանքին նուիրուած աշխատութիւն մը՝ Chronique d'Arménieի, (Ժամանակագրութիւն Հայաստանի) ուր, շատ մը շահեկան մանրամասնութիւններ կու տայ (1)։ Ան կը հաստատէ թէ Լևոն մինակը չէր մեկնած դէպի Ֆրանսա, վասնզի կը գրէ թէ «roy s'estoit parti luy et ses gens» և կը հաւաստէ թէ Ֆրանսայի Թագաւորը Կարոլոս Զ. հիւրընկալելով զայն, բարեխիղճ գտնուեցաւ հանդէպ անոր և հանդէպ անոնց, որ անոր հետ էին (et tous ceulx qui en sa compagnie estoient)։

Ֆրանսայի Թագաւորներուն և Աւինեոնի Պապերուն Հայոց նկատմամբ ցոյց տուած շահագրգռութիւնը, տեսակ մը քաջալերութիւն էր, որ Հայերը դիմէին Ֆրանսա և հոն հաստատուէին։

Բայց գլխաւորապէս դուրսէ ի վեր տևող վաճառականական յարաբերութիւնները Ֆրանսայի և Կիլիկիոյ միջև, մղած են Արևելքի մէջ արկածեալ Հայերը՝ ապաստանելու «Փռանկներու երկիրը» (Pays de Francs) (J. Mathorez, նոյն), ուր կարգ մը Հայեր ալ այցելած էին քաղաքական և կրօնական շարժառիթներով և լաւ ընդունելութիւն գտած էին։

Այսպէս, կը յիշատակուի արքայազուն մը՝ Հեթում Կիլիկեցի, Կոռիկոսի իշխանը, որ յետոյ կրօնաւոր դարձաւ։

Հեթում, բաւական արկածալից կեանք մը ունենալէ ետք, անցաւ Եւրոպա, այցելեց Հռոմ և Աւինեոն, ուր լաւ ընդունելութիւն գտաւ Կղեմէս Ե. պապէն (1305—1314) և անկէ իր Փրէմոնստրացեան միաբանութեան համար ստացաւ վանք մը, Փուատիէի մէջ, ուր իր ծերութեան օրերուն, գիրի առնել տուաւ իր քարտուղարին՝ Նիկողոս Ֆալգոնիի, իր «Ծաղիկ Արեւելքի

(1) Այս գործը հրատարակուած է նախ Ֆրանսերէն Documents Arméniens շարքին Բ. հտ. (գլ. XXXVI եւ CXLIV Լ.Չ. եւ ձեռ. Jean Dardel, Chronique d'Arménie. իսկ հայերէն թարգմանութիւնը կատարած է Խորէն Եպս. Նարպէյ (յանձնարարութեամբ Կ. Եզեանցի). որ անոր կցած է հմտալից բովանդակ (81 էջ) յառաջաբան մը: Գիրքը հրատարակուած է Ս. Պետերբուրգ, Թիֆլիսի Հրատարակչական Ընկերութեան ծախսով:



Պատմութեանց» (Flos Historiarum Terræ Orientis) գործը (1), որ Ասիոյ աշխարհագրութեան և պատմութեան համար կարևոր տեղեկութիւններ կը պարունակէ։

Հեթում 1314ին Կիլիկիա դարձած է, մասնակցելու համար Ատանայի ժողովին (1314—1316) և անոր առաջին նիստերուն մասնակցելէ ետք, մեռած է։

Կրօնական եռանդով Ֆրանսա գացած Հեթումի նման ուրիշներ ալ գտնուած են թերևս, երբեմն շարաշահ խաչագողներ և՝ երբեմն ճշմարիտ անձնուէրներ, որոնք Արևելքի քրիստոնեայ հաստատութիւններուն համար նպաստահաւաքութեան եկած են Ֆրանսայի մէջ՝ արևելեան ուրիշ ազգերու կրօնաւորներուն պէս։

Հաւանօրէն, Կիլիկիոյ Լուսինեան վերջին Լևոն Ե. Թագաւորի հետևորդներէն մին էր նաև Սեբաստիոյ Սիմէոն Հայ Եպիսկոպոսը, որ 1388ի Զատիկի օրը պատարագած է Լանկտոքի՝ Լուկրաս արքայարանին մէջ (J. Mathorez, նոյն):

Բայց այս անցորդ եկեղեցականներուն և պատահական քանի մը անձերուն Ֆրանսա շրջիլը անբաւական էր Հայ գաղթականութեան մը գոյութեան փաստը նկատելու՝ եթէ ուրիշ ապացոյցներ չըլլային։

Տեսնուեցաւ թէ գլխաւոր շարժառիթը, որ Հայերը կը տանէր հաստատուելու Ֆրանսայի հարաւային նաւահանգիստը, վաճառականութիւնն էր, որ դժբախտաբար խաղաղ զարգացումով մը չէ բարգաւաճած և անկման ու բարձրացման ժամանակաշրջաններ ունեցած է՝ Մահմետականներու՝ քրիստոնեաներուն դէմ ունեցած ատելութեան պատճառով։

Այդ հակառակութեան իբրև հետևանք՝ ԺԳ. դարուն, երբ Եգիպտացիք տիրեցին Պաղեստինի և Սուրիոյ, այդ երկիրներէն վանեցին և արտաքսեցին բոլոր Լատինները, ինչ որ ամենածանր հարուած էր «Փռանկներուն համար։

Այնպէս որ, ինչպէս ուրիշ ազգերու, Ֆրանսայի առևտրականներն ալ իրենք կարևոր շահաստան շուկաներէն մէկէն զրկուեցան։

Բայց քիչ ետքը Մեմլուք Սուլթաններու հաւանութեամբ, յաջողեցան դարձեալ շրջուն ակիլ երթևեկել Սուրիա և Պաղեստին, մասնաւորապէս Աքիայի նաւահանգիստը իբրև կայան և դուռ գործածելով։

Այս պատճառով ԺԴ. դարուն և յաջորդին, Արևելցի բոլոր վաճառականները կը յիշուին «Սուրիացի» ընդհանուր անունին տակ, այնպէս որ Հայերն ալ Սուրիացի կը ճանչցուին, և հաւանօրէն այդ անունին տակ կը գործեն ժամանակ մը Մերձաւոր Արևելքի մէջ, ուր Քրիստոնեաներու կացութիւնը շատ դժբախտ էր, վասնզի Մահմետականներու դէմ անպաշտպան մնացած էին և ծանր տագնապներու ենթարկուած։

Արևելքի գաղթականները, ի մէջ այլոց Հայերը, կարծես թէ այլևս չէին ուզեր նայիլ իրենց ետին, և յոյս չունէին օր մը հոն դառնալու, և հետևաբար նոր կայաններ կը կազմեն։

(1) Հեթումի եւ իր գործին վրայ գրած են զանազան հեղինակներ, ինչպէս Ch. Kohler, Omont, Paulin Paris, եւն. Բազմավէպ, 1919, էջ. 148):

Այդ դարը կը հանդիսանայ ամէնէն տարածուն ժամանակամիջոցը Հայ գաղթականութեան և ինչպէս ցոյց կու տան բազմաթիւ արձանագրութիւններ և վաւերագիրներ, Հայերը այդ շրջանին կը բնակին Իտալիոյ 30էն աւելի քաղաքներուն, Հարաւային Ֆրանսայի 6—7 քաղաքներուն, ինչպէս նաև Ֆլանտրայի Պրիւժ, Տամ և Էքլիւզ քաղաքներուն մէջ։

ԺԴ. դարուն գաղթող Հայերը մեծ մասամբ հարկադրուած կը հեռանային, հանգիստ և ապրուստ փնտռելու համար։ Հետևաբար սոսկ առևտրականներ չէին և իրենց մէջ արհեստաւորներ ալ կային։

Ասոնցմէ մաս մը Ֆրանսա պէտք է հաստատուած ըլլայ, վասնզի կը հաստատուի որ Ֆրանսայի Փիլիպպոս Դ. Ցանդուգն (Philippe Le Hardi) (1342—1404) թագաւորը, Հայ որմնագիրներ բերել տուած է, շինելու համար իր դղեակը և եկեղեցիներ։

Տիժոնի (Պուրկոնիը) մէջ — որ հին քաղաք մըն է — բուն հայկական զոթական կամարը տիրական էր, հաւանօրէն կառուցուած Հայ գործաւորներէ։ Հայերը, հոն կը թուի թէ զբաղած են գինիի պատրաստութեամբ, վասնզի քաղաքը ունի գինիի թանգարան մը, ուր ցոյց կը տրուի թէ ինչպէս կը պատրաստէին գինին Հայաստանի մէջ։ Հոն կայ արձանագրութիւն մը, ուր կը կարդացուի։ «Այգիին 35 տեսակներուն մէջ միայն Վիթիս Վինիֆէրան խմորակն է, որ կ'արտադրէ գինի, մասնաւորաբար «Կովկասեան Վիթիսը», որուն բուշխումի աւազանը կը գտնուի Պեսարապիոյ, Հայաստանի, Կովկասի, Անատոլուի, Իրանի, Թուրքիստանի և Քաշմիրի մէջ»։

Լեոն Քէչիչեան, որ այցելած է Տիժոն, կը հաւաստէ թէ՝ իր կատարած քննութեան համաձայն, Փիլիպպոս Դ. Ցանդուգն, ԺԴ. դարուն, Հայաստանէն բերած է Հայ գինեգործներ, որոնց գործածած հնձանները կը պահուին ցարդ Տիժոնի գինիի թանգարանին մէջ։

Կ. Պոլսոյ գրաւումը (1453) կը փակէր Միջին Դարը և Նոր վարագոյր մը կը բանար Արևելքի ժողովուրդներուն համար։ Այս ժողովուրդներէն մէկն էր Հայը, որ Թուրք և Պարսիկ պատերազմներուն հետևանքով պիտի խարբալուէր և չարաչար պիտի տուժէին իր վաճառականները, վասնզի Թուրքիա այլամերժ քաղաքականութեամբ մը պիտի մերժէր իր նաւահանգիստները բանալ Եւրոպական նաւերու առջև։ Այսպէս, մօտաւորապէս դար մը մոռացութեան մէջ պիտի մնար Ֆրանսան, ուր Հայերը պիտի անչքանային" ԺԴ. դարուն վերջերէն մինչև ԺԶ.—ԺԷ. դարերը, վերստին հոն տեղ և դիրք գրաւելու համար։

∴

Ֆրանսա մեկնած Հայ գաղթականներէն ոմանք աւելի հիւսիս, Հիւսիսային Ծովուն եզերքը հաստատուած են, և այսօր Պելճիական ու Հոլանտական թագաւորութիւնները կազմող երկիրները անցած են, երբ անոնք կը ներկայացնէին միութիւն մը, որ ԺԴ. և ԺԵ. դարերուն «Ստորին Նահանգներ» (Pays-Bas = Nederland) կամ «Միացեալ գաւառներ» (Provinces Unies) կը կոչուէր և մինչև ԺԶ. դար Սպանիացիներու տիրապետութեան տակ էր։



1588ին, Սպանիացիներու դէմ միացեալ ուժերով մարտնչելով՝ իրենց անկախութիւնը ձեռք բերին և կազմեցին Միացեալ Հոլանտայի Հասարակապետութիւնը։

Ֆրանսայի մեծ յեղափոխութենէն և Նափոլէոնի պատերազմներէն ետք՝ 1815ին կազմուած է Մեծ Հոլանտան, որմէ Պելճիքացիք անջատուեցան 1830-ին և Ֆրանսայի պաշտպանութեամբ կազմեցին առանձին թագաւորութիւն մը։

Հետևաբար Պելճիքա և Հոլանտա Միջին Դարուն մէկ երկիր կը կազմէին և նոյն ճակատագիրը կը բաժնէին, երբ Հայ գաղթականներ հոն ալ մուտք գործեցին Ֆրանսայի ճամբով, մասնաւորապէս հաստատուելով սահմանակից և յաճախ ֆրանսական իշխանութեան ենթարկուած Ֆլանտրիոյ մէջ, ուր Հայ եկեղեցական մը՝ Անտիոքի Ս. Մակար պատրիարքը հրեցած էր։ Ան Պաւարիա և Մոզունտիա շրջագայութենէ մը յետոյ՝ Կանտ (Gand) գացած և հոն ժանտախտէ վարակուելով 1012 Ապրիլ 10ին վախճանած էր։ (Տես. ՊՀԳ. Ա., 339 և Առաքել Սարուխան՝ Բելգիա եւ Հայերը, Վիեննա, 1937, էջ 2)։ Բայց հայածին եկեղեցականի մը պատահական այցը, կարելի չէ Հայ գաղթականութեան պատմութեան լծորդել ուղղակի, որքան ալ կարևոր եղած ըլլայ ան։

Իրապէս շատ նշանակելի յարաբերութիւններ գոյութիւն ունեցած չեն Հայերու և այս երկիրին միջև, նոյնիսկ Կիլիկեան թագաւորութեան շրջանին, երբ միայն մանր գործառնութիւններ կը յիշուին ֆլամանական և հայկական վաճառականական աշխարհին միջև.

Հայերը, ինչպէս Ֆրանսայի, նոյնպէս այս երկիրին կը ծանօթանան Խաչակրութիւններուն առիթով, որոնց Ֆլամանները լայնօրէն մասնակցած են։

Այս ծանօթութիւնները, զորս անոնք ունեցած են, կը թուին պատճառ եղած ըլլալ որ Ֆլաման վաճառականները շահագրգռուին ընդհանրապէս Արևելքով և մասնաւորապէս Կիլիկիոյ նշանաւոր առևտրական նաւահանգիստ՝ Այասով, ուր կ'երթևեկէին իրենց ալ նաւերը և վաճառականները (V. Langlois, Trésor des Chartes d'Arménie) որոնք եւս խնդրամատոյց եղած են առանձնաշնորհումներ ունենալու համար։

Փոխադարձաբար Հայերն ալ՝ այս պատճառով իսկ կ'երևին Ֆլանտրիոյ մէջ։ Հայերը կը բնակէին գլխաւորապէս Պրիւժ (Bruges) քաղաքը, որուն բնակիչներուն մեծ մասը օտարերկրացիներ էին, և կու գային այն երկիրներէն, որոնց ապրանքները կը բերուէին հոն ծախուելու կամ փոխանակուելու համար (Ա. Սարուխան, Նոյն, 116)։

Անոնք՝ ԺԴ. դարու սկիզբէն հոն գալ սկսած պէտք է ըլլան. վասնզի քաղաքին դիւանին մէջ պահուած հաշիւներէն կը հասկցուի որ 1322ին «Արևելցիներ» սկսած են գալ Պրիւժ։

1340ին առաջին անգամ Հայ վաճառականներ կու գան հոն, երբ արևմտեան Եւրոպայի ամէնէն կարևոր նաւահանգիստն էր Պրիւժ, որ ԺԱ.—ԺԵ. դարուն, առևտրական և արդիւնաբերական գործունէութեան կեդրոն համարուած Ֆլանտրիոյ նահանգին նաւահանգիստն էր և ԺԴ. դարուն «Ոսկի Փեթակ» կը կոչուէր պատմագիրներէն (Ա. Սարուխան, Նոյն, 4 և 115)։ Շնոր-

հիւ իր գրած գիրքին՝ Ֆրանսայի, Անգլիոյ և Գերմանիոյ միջև, Պրիւժ միջազգային դրամական հրապարակ էր (Ա. Սարուխան, Նոյն, 116)։ Հոն հաստատուելով Հայ առևտրականներ, սկսան ներածել արևելեան ապրանքներ, ներկեր, համեմներ, գորգեր և կապերտներ (Սարուխան, Նոյն, 117)։ Այդ Հայ վաճառականները իրենց ներածած արևելեան ապրանքներուն փոխարէն, Փոքր Ասիա կ'արտածէին Պելժիական չուխայ և ասուեղէն, ինչպէս նաև անգլիական բուրդ, սպանական իւղեր, ռուսական մորթեղէն ևայլն, այսինքն թէ՛ տեղական և թէ՛ Եւրոպական ուրիշ երկիրներէն Պրիւժ բերուած և մթերուած զանազան գործուածքներ, զորս կը գնէին և կը տանէին Այաս կամ Միջերկրականեան այն նաւահանգիստները, ուր իրենք մասնաճիւղեր կամ ընկերներ ունէին (Ա. Սարուխան, Նոյն, 117—118)։

Պրիւժի ԺԳ., ԺԴ. և ԺԵ. դարերու ներածութեան և արտածութեան մասին տեղեկութիւններ տուող վաւերագիրի մը մէջ գրուած է որ «Հայաստանի թագաւորութենէն կ'ստացուի բամպակ և զանազան համեմներ» (Ա. Սարուխան, Նոյն, 119)։

Նոյնպէս ուրիշ վաւերագիրներ կը հաստատեն որ Ֆլամանները՝ Հայերէն կ'առնէին բամպակ. համեմներ և պղպեղ, որդան կարմիր ևայլն։

Իսկ Հայերու ժամանակաւոր կամ մշտնջենական բնակութեան միակ հետքը կը գտնուի Պրիւժի Սէնթ Օպէր (S. Obert) վանքին հին հաշուեգիրներուն մէջ, ուր նշանակուած է թէ 1369 թուականին, Նիկողայոս անուն Հայը՝ իրեն ընկերացող բարձրաստիճան եկեղեցականին կտոր մը գործուածք նուիրած է, իսկ անոնց, որոնք անոր հետ Ս. Խաչի դուռը անցան՝ 12 լիրա տուած (La Flandre, Bruges, 1880, էջ 17), ինչ որ կը հաստատէ անուղղակի կերպով՝ Հայերու յարաբերութիւնները և երթևեկը Ֆլաման քաղաքներուն հետ։ Հայ լեզուով որմնագիր մը (graffito–graffitto), ոմն Սարգիսի համար, Պրիւժի Մայր Եկեղեցիին որմերէն մէկուն վրայ գրուած, կը հաստատէ Հայերու բնակութիւնը Ֆլանտրի մէջ (J. Mathorez, Նոյն)։ Fr. Macler (Mosaïque Orientrale, 29 և ՀԱ. 1908, 156—7), կը կարծէ թէ այս Սարգիսը պէտք է ըլլայ Լևոն վերջինին ընկերացողներէն մէկը, որ իր տիրոջ մահէն ետք՝ Կարոլոս Է.ի հետևած է այս քաղաքը երթալու համար։

ԺԴ. դարուն Ֆլաման վաճառականութեան կեդրոններն էին Պրիւժ և Անվերս, ուր Հայ վաճառականներ հաւանական է որ երթևեկած ըլլան, ինչպէս կը վկայէ Էմիլ Վանդէն Պիւսքէ (Emile Vanden Busche), որ հին արձանագրութիւններէ քաղելով կը հաւաստէ թէ Ֆլաման վաճառականներու երթևեկած արևելեան շահաստաններն էին Հայաստան (իմա՛ Կիլիկիա), Կիպրոս և Երուսաղէմ (Սիսուան, էջ 359 և La Flandre ամսաթերթ, 1880, թ. 12 և Էմիլ Վանտէի, Une Question d'Orient au Moyen Age, 1878 և Ա. Սարուխան, Նոյն, 120)։

ԺԴ. դարուն սկիզբը, Ֆլամանները Մերձաւոր Արևելքի հետ իրենց առևտուրը կը կատարէին արևելցիներու միջոցով, որոնց մէջ էին նաև Հայերը (Ա. Սարուխան Նոյն 120՝ հիմնուելով փաստաբան A. Bultyn-ի 1589ին պատրաստած մէկ զեկուցագրին վրայ), որոնք Կիլիկիայէն ու Փոքր Ասիայէն



կու գային ու սեփական գրասենեակներ կը հաստատէին Պրիւժի մէջ (Սարուխան, Նոյն, 120)։

Ակնէ յայտնի է որ Ֆլամանները անոնց օրինակին հետևելով գացած են Մերձաւոր Արևելք և այնտեղ առևտրական գրասենեակներ հաստատած (Նոյն, 120—1)։ Բայց այնպէս կը թուի թէ Ֆլամանները չեն յաջողած, որովհետև շուտով հեռացած են Մերձաւոր Արևելքէն և իրենց ապրանքները ծախած են Պրիւժի մէջ Հայերուն և ուրիշ արևելեան ժողովուրդներուն (Նոյն)։

Մինչդեռ Հայ գաղթականները, որոնք Ֆլանտրիա գացած էին, յաջողած էին դիրք մը գրաւել և կարևոր դեր կատարել, հակառակ անոր որ երբ հոն կը հասնէին չունէին փայլուն վիճակ մը և կարօտ էին, վասնզի կը յիշուի որ Ֆլանտրիա հասնող առաջին Հայ գաղթականները, կարօտ եղած են կաթոլիկ կղերականներուն որոնք մեծ ծառայութիւններ մատուցած են։ Սակայն այդ գաղթականները մեծ թիւ մը չունէին և գրեթէ միայն Պրիւժի և անոր մօտակայ Տամ և Էքլիւզ քաղաքներուն մէջ կը բնակէին։ Թէև թիւով քիչ, բայց որակ ունենալ կը թուին. վասնզի ԺԵ. դարուն Ցակոբ Քէօր (Jacques Cœur), Ֆրանսայի ամենամեծ վաճառականը, երբ առևտրական սենեակ կը հիմնէ Պրիւժի մէջ՝ ուրիշ արևելցիներու հետ կը հանդիպի Հայերու, որոնք հոն հաստատուած էին (Ալիշան, Սիսական)։

Կ'երևի թէ ԺԴ. դարուն, Արևելքի խռովեալ վիճակին հետևանքով Եւրոպա անցած են շատ մը գաղթականներ, որոնցմէ մաս մը գացած է Պելճիքա։

Պելճիգացիք 1346ին այդ գաղթականներուն համար շինած են ապաստանարան մը Պրիւժի շրջակայքը, որպէսզի «անտուն և տեղ չունեցող ճամբորդներ հոն պատսպարուին»։ Այդ հաստատութիւնը կը պատկանէր Պրիւժի Saint Bavon Մայր Եկեղեցիին, որուն մատեանին մէջ 1386ին արձանագրուած է թէ այդ ժամանակ կային բազմաթիւ աղքատ ասպետներ, ինչպէս նաև Թափառականներ, նոյնպէս նաև Եգիպտացիներ և օտարականներ, որոնք կու գային Հայաստանէն (իմա՛ Կիլիկիա) և Ասիայէն։ Անոնք կը փախչէին Սարակինոսներէն և մեծ թիւով կու գային Պելճիգա (Սարուխան, Նոյն. 126)։

Այս վկայութեան մէջ յայտնի է թէ Հայերը արևելեան ուրիշ ազգերու հետ խառնուած են, վասնզի Հայ ասպետներ չկային և Եգիպտացիներ բնաւ Հայոց հետ գաղթած չէին կրնար ըլլալ։ Իսկ Ասիացի գաղթականներու Կիլիկիոյ (Այաս) ճամբով Եւրոպա անցած ըլլալը շատ հաւանական է։

Որոշ տուեալներ կան, թէ Պրիւժ հաստատուած Հայ առևտրականները երկար չեն մնացած հոն, վասնզի անհամաձայնութիւն ծագած է իրենց և Պրիւժի քաղաքացիներուն միջև 1354ին և արևելցիք ստիպուած են ձգել ու հեռանալ։ Այդ պատճառով Հայեր չեն յիշուիր 1354ի արձանագրութիւններուն մէջ։ Հայերը կ'երթան Դորդրէխտ (Հոլանտա), ուր մի քանի տարի կը մնան։ Այս միջոցին իրենց անհամաձայնութեան առիթ տուող խնդիրը կը հարթուի և անոնք կը վերադառնան Պրիւժ և 1358ին վերջնապէս կը հաստատուին հոն և իրենց գրասենեակը կը հաստատեն (Սարուխան, Նոյն, 121)։

Այս անգամ, այդ արևելցիները, (1358—1360) երբ հոն կը դառնան, կու գան աւելի մեծ թիւով ու կը ձեռնարկեն առևտրական աւելի ընդարձակ

գործունէութեան։ (Ա. Սարուխան, Նոյն, 117)։ Այս նոր գաղթականներուն մէջ կային «անարժէք» անձեր, «թափառականներ», որոնք բեռ կը դառնային դղեակներու և ասպետներու (Սարուխան, Նոյն, էջ 122)։ Դժբախտաբար Հայեր ալ կը յիշուին 1447—1448ին՝ այս դասակարգին պատկանող։

Այսպէս, 1447ին՝ արձանագրութեան մը մէջ ըսուած է թէ նպաստ տրըւած է Հայաստանցի քահանաներու, (Սարուխան, Նոյն)։ Ուրեմն Հայ քահանաներ կա՛մ Հայաստանէն, կա՛մ Ֆրանսայի Բարսեղեան կրօնաւորներէն Պելճիգա գացած են, բայց հաւանական է որ անոնք շատ սակաւ եղած ըլլան և չփոթուած արեւելեան ուրիշ ազգերու պատկանող եկեղեցականներու հետ։

Ֆլանտրի մէջ հաստատուած Հայերը առհասարակ առեւտրական էին և համաշխարհային այդ կարեւոր կեդրոնին մէջ գործող ուրիշ ազգէ առեւտրականներէն ոչինչով նուազ։

Արդարեւ, Պրիւժի մէջ միջազգային առեւտուրով զբաղող բոլոր ցեղերը, Միջերկրականէն մինչեւ Պալդիկի եզերքները բնակողները, ամէնքն ալ իրենց յատուկ «Ազգային Տուներ» ունէին հոն, որ լոժա (loge) կը կոչուէր։ Հայերը այս միջազգային կեդրոնին մէջ ուրիշ ազգերէն ետ չմնացին և իրենք ալ շինեցին իրենց լոժան կամ «Հայ Տունը»։

1478ին՝ ժան տը Վալուա թագաւորին առեն՝ գոթական ոճով շինուած փառաւոր Հայ Տուն մը կանգնեցին, որուն չորս անկիւնին վրայ, չորս աշտարակներ կը բարձրանային (Ա. Սարուխան, 121)։

Անոնք իրենց եկեղեցական պաշտամունքները կը կատարէին Կարմելեան կրօնաւորներու մատուռին մէջ (Նոյն. 121)։

Անոնք Կիլիկիայէն Ֆլանտրիա կը ներածէին բամպակ և ամէն տեսակ համեմներ, և կ՚զբաղէին մասնաւորապէս գորգի վաճառականութեամբ։

Սակայն ժան տը Վալուայի որդւոյն՝ Ֆրանսայի Փիլիպպոս Գեղեցիկ թագաւորի առեն (1482—1506), արդէն Հայեր և ուրիշ արեւելցիներ չէին մնացեր (Սարուխան, Նոյն. 122—3)։

ԺԵ. դարուն, երբ Պրիւժ քաղաքը, իբրեւ նաւահանգիստ կորսնցուցեր էր իր կարեւորութիւնը աւազ լեցուելուն համար, Հայ առեւտրականներ լքեցին Պրիւժը և գացին հաստատուիլ Անվերս, որ ԺԶ. դարուն եղած է Եւրոպայի ամէնէն բանուկ նաւահանգիստներէն մին։

Սակայն Հոլանտացիք ամէն միջոցի դիմեցին նուազեցնելու համար Անվերսի կարեւորութիւնը և առաջին տեղը տալու Ամսթերտամին — երբեմն ձկնորսներու գիւղաքաղաքին — որ ԺԷ. դարուն եղաւ Եւրոպայի ամէնէն բարգաւաճ և ծաղկեալ նաւահանգիստը, ուր Հայերը գացին հաստատուիլ և կազմել գործունեայ գաղութ մը, որուն կեանքը ԺԷ. դարու Հայոց պատմութեան մէկ փառաւոր և անմոռանալի էջը կը կազմէ։

∴

Ֆրանսայէն դէպի հիւսիս՝ Պելճիգա և Հոլանտա առեւտրական նպատակներով առաջացած Հայ գաղթականներու նման, կը կարծուի որ գտնուած են նաև դէպի արևմուտք՝ Գերմանիա գաղթողներ։



Սակայն Գերմանիոյ մէջ Հայերու բնակութեան յիշատակութիւն բնաւ չէ եղած կամ այդ տեսակ արձանագրութիւն մը չէ գտնուած Հայ և օտար մատենագիրներու մօտ։ Հաւանական է այսուհանդերձ՝ որ երբեմն, պատահաբար, քանի մը Հայեր գտնուած ըլլան Գերմանիա։

Խաչակրութիւններուն պատճառով, Հայերը՝ Գերմանիոյ հետ ևս յարաբերութիւն ունեցած են և ինչպէս տեսնուեցաւ՝ Ֆրետերիկ Շիկամօրուս Կայսրը, իբրև Խաչակիր, Կիլիկիա եկած է և հոն գետամոյն մեռած է։

Իր յաջորդը՝ Հենրի Զ., իր հօրը խոստումը գործադրելով, Լեւոն Ա.ի թագ դրկած է (1197)։

Կարելի է խորհիլ թէ Հայ վաճառականներ, ինչպէս արևմտեան բազմաթիւ քաղաքներ, նոյնպէս և Գերմանիոյ զանազան վայրերը երթևեկած ըլլան, սակայն որոշ տեղեկութիւններ կը պակսին։ Միայն Պալթիկի ծովեզերեայ քաղաքներուն մէջ գտնուած բազմաթիւ արեւելեան դրամներ, արեւելեան վաճառականներու այդ կողմերը երթևեկ ունենալուն նշան կը համարուի ոմանց կողմէ, անշուշտ ոչ բացարձակ վստահութեամբ։ ԺԷ. դարու կէսէն վերջն է որ Հայ վաճառականներ Գերմանիա գացած են, ինչպէս պիտի տեսնուի։

∴

Բարբարոսներու արշաւանքին հետեւանքով, Եւրոպա ապաստանող Հայերէն մի քանի անձեր անցած են Մանշը և մտած են Բրիտանական կղզիները, ուր ծանօթ առաջին յիշուած այցելու Հայը՝ ԺԱ. դարուն սկիզբը՝ եղած է Սիմէոն Եպիսկոպոսը (+ 1016), որ շրջած է Անգլիա և անկէ գացած է այլուր։

Հաւանօրէն ԺԳ. դարուն, երբ Մոնկոլները Արևելքը տակն ու վրայ կ՚ընէին և Հայ գաղթականներ զանազան վայրեր կը ցրուէին, թերևս շատ քիչ թիւով Հայեր ալ Բրիտանական կղզիները անցած ըլլան գոնէ իբրև ուղևորներ և առևտրականներ, թէև չունինք որևէ վաւերագիր այս մասին, և քիչ հաւանական կը համարենք։

Հայերը, Անգլիան ճանչցած են մասնաւորապէս Կիլիկիա երթևեկող անգլիական նաւերով և Խաչակիրներու բանակին մէջ գտնուող Անգլիացիներով։

Այսպէս, 1228ի կը յիշուի Հայ եպիսկոպոս մը, որ Անգլիա գացած է, ապահովաբար Մոնկոլներու արշաւանքին պատճառով, խոյս տալով Հայաստանէն։

Քիչ ետքը, 1252ին, Ենրիկ Գ. Անգլիոյ թագաւորը, առաջին անգամ յարաբերութեան մէջ կը մտնէ մեր Հեթում թագաւորին հետ՝ կանոնաւոր կերպով թղթակցելով։

1364ին, Ներսէս Եպիսկոպոս (առաջնորդ կամ վանահայր Կիլիկիոյ մէջ գտնուող Ս. Գէորգ անուն վանքի մը), ապստամբներէն աւերուած և կողոպտուած վանքերու և եկեղեցիներու վերաշինութեան ձեռնարկով, իր հետ առնելով Յակոբ անուն վանական մը, ժողովարարութեան համար կը դիմէ Եւրոպա և կը հասնի Լոնտոն։

Անոնք կը ներկայանան Անգլիոյ Եդուարդ Գ. Թագաւորին, որ կ՚արտօ-

նէ Ներսէս Եպս.ը ամբողջ տարի մը շրջիլու Անգլիոյ մէջ և իր հպատակներէն դրամ հաւաքելու (Արտօնագիրին լատիներէն պատճէնը տես. Սիսուան, 410)։

Ինչպէս արդէն յիշուեցաւ, Լեւոն Հայոց վերջին Թագաւորը գերութենէ ազատելէ ետք, երբ Եւրոպա գնաց և վերջապէս Փարիզ հաստատուեցաւ, Անգլօ-ֆրանսական պատերազմներուն վերջ տալու համար՝ իբրև միջնորդ 1385ին Լոնտոն այցելեց և ապարդիւն ճիգեր րրաւ խաղաղութեան համար։

Այդ Թուականին կը կատարուի առաջին Լորտ Քաղաքապետին (Lord Mayor) ընտրութիւնը, և անոր առաջին անգամ Թագաւորին ներկայանալու առարողութեան կը հրաւիրուին Լոնտոն գտնուող բոլոր օտար բարձրաստիճան իշխանները, որոնց կարգին նաև մեր Լեւոն վերջին Թագաւորը։

Այդ Թուականէն ի վեր, ամէն տարի Նոյեմ. 4ին նոր ընտրուած քաղաքապետը, աւանդական սովորութիւն մը եղած է որ ներկայանայ Թագաւորին, չքեղ Թափորով մը դիմելով պալատ։

Այդ Թափորին կը մասնակցին Անգլիոյ վաճառականներուն, արհեստաւորներուն և գործաւորներուն ներկայացուցիչները՝ ԺԴ. դարու տարազներով, ինչպէս նաև Քաղաքապետին պատմական կառքին կը հետևին առաջին քաղաքապետին Թափորին մասնակից օտար իշխաններուն տարազով անձեր։ Անոնցմէ մին, կը ներկայացնէ ցարդ Լեւոն Ե.ը՝ անոր հագած հագուստովը, ինչպէս կը հաւաստէ նկարիչ Արշակ Ֆէթվաճեան։

Ինչպէս կը տեսնուի, այս տուեալները բնաւ բաւական չեն մտածելու Թէ Հայ գաղութ մը գոյութիւն ունեցած է ասիական բարբարոսներու առեն՝ Բրիտանական կղզիներուն մէջ, ուր Հայերը պիտի հաստատուէին աւելի ուշ՝ իբրև առևտրականներ, երբ արդէն Անգլիա կազմակերպուած էր իբրև ծովային վաճառականութեան մէջ յառաջընթաց երկիր մը և գրաւել սկսած էր Վենետիկի, Ճենովայի, Բիզայի ևայլնի տեղը։

∴

Իռլանտա, մին Բրիտանական կղզիներէն, ինչ ինչ տուեալներու վրայ հիմնուած, կը կարծուի որ Հայ գաղթականներ ընդունած է։ Գ. Խանամիրեան, (Պայքար բացառիկ 1951, էջ 10), անշուշտ հիմնուած վաւերագրութեան մը վրայ, կը գրէ Թէ Միջին Դարուն, կրօնաւորներ և գործաւոր Հայեր մինչև Իռլանտա գացած են։

Է. և Ը. դարերուն, Հայեր յիշուած են Իռլանտական աղօթքի մը մէջ, ինչ որ կ'ենթադրէ գոնէ ծանօթութիւն մը՝ երկու ազգերուն միջև։

Է. դարուն Իռլանտայի մէջ հաստատուած էր հայկական վանք մը՝ Սել Աշիտ, որ երկիրին երրորդ ամենակարևոր մենաստանը կը դառնայ (Գ. Խանամիրեան, Պայքար, նոյն, 10)։

Օր. Ֆրանսուազ Հանրի հնագէտը, Իռլանտական եկեղեցիներու և Անիի շէնքերուն միջև ազգականական կապեր գտած է և Իռլանտական և հայկական քանդակագործութեան մէջ զարմանալի նկատուելու աստիճան հանգիտութիւններ տեսած է (նոյն)։



Անիկա կը հաւաստէ որ Իռլանտայի մէջ հինէն մնացած խաչքարի տեսակ մը կար, յարևնման հայկական խաչքարերուն, ինչ որ ապացոյց մըն է հայկական ազդեցութեան։ Օր. Ֆրանսուազ Հանրի կը շեշտէ այս ազդեցութիւնը Իռլանտայի զարդարուեստին վրայ (F. Henry, La Sculpture Irlandaise pendant les douze premiers siècles chrétienne, Paris, 1933). Ինչ որ կարելի է նկատել արդիւնքը Հայ գաղթական արհեստաւորներու գոյութեան այս կղզիին մէջ, ուր աւելի ուշ ժամանակներու մէջ, հայկական ո՛չ մէկ յիշատակ գտնուած է։

∴

Բրիտանական կղզիներէն աւելի հիւսիս, գրեթէ բևեռային երկիր մը նկատուած Իսլանտայի մէջ՝ գիտենք Թէ ԺԱ. դարուն իբրև կրօնական քարոզիչներ գործած են երեք Հայ եպիսկոպոսներ, Պետրոս, Աբրահամ և Ստեփանոս անունով, որոնք Թերևս Պաւղիկեան աղանդին կը պատկանէին (F. Macler, Arménie et Islande, 1923, և ՊՀԳ. Ա., 340)։

Դժբախտաբար յաջորդ դարերուն համար տեղեկութիւններ կը պակսին և շատ հաւանական չի Թուիր, Հայերու կողմէ մինչև Իսլանտա Թափանցում մը վասնզի այս հեռաւոր և սառնապատ կղզիին մէջ, ուր երեք քարոզիչ եպիսկոպոսներ, գուցէ հալածական ինկած էին հաւատածաւալ գործունէութեամբ, յաջորդ դարերուն դժուար էր որ Հայ գաղթականներ երթային վաստակ ու հանգիստ որոնելու։

∴

Մինչև սառնապատ հիւսիսը առաջացող Հայ բեկորները հասած են նաև ծայրագոյն արևմուտքը և աշխարհի սահմանը համարուած Իպերինեան Թերակղզին, որուն բնակչութեան հետ ցեղագրական վաղեմի յարաբերութիւններու հետքերը շատ անգամ խնդրոյ առարկայ եղած են, վասնզի Պասքերու և Հայերու միջև կապերու գոյութիւն նկատուած է (1)։

Անյիշատակ ժամանակներէն հասած մասամբ աւանդական և մասամբ ցեղագրական առնչութիւնները Թողլով մէկ կողմ, Միջին Դարուն Հայեր կը գտնենք Սպանիոյ մէջ։ Այս Հայերը՝ հոն երթալու հրապուրուած են հաւանօրէն շահէ և ապահովութենէ, Սպանիոյ ծովային վաճառականութեան կեդրո-

---

(1) Տոքթ. Գ. Օ. Գալուստեան այս նիւթը ընդարձակ յօդուած մը ունի Սիոնի մէջ (1953, տես նաեւ Այսօր, Թ. 661—2) «Սպանիոյ եւ Ֆրանսայի սահմաններուն վրայ. Պիրենեան լեռներուն ստորոտը Հայ հին գաղութի մը հետքերը» խորագիրով, ուր կը խօսի գիրքի մը վրայ որ հետեւեալ խորագիրը ունի — *El Valle del Roncal* (= Ռոնքալի Հովիտը): Հեղինակն է *Bernardo Ssiornés Lasa,* տպուած 1927ին:

Ռոնքալի հովիտը կը գտնուի Սպանիոյ եւ Ֆրանսայի սահմանին վրայ գտնուող Պիրենեան լեռներուն մէջ, նախկին Նաւարիոյ թագաւորութեան եւ այժմու Նաւարիոյ նահանգին, Բամբլոնայի գաւառին Վասգոնեայի երկրամասին մէջ, ուր կը բնակին Վասգոնները, որոնք աւանդաբար կը կարծուի թէ Հայերէ սերած են:

նավայր, Միջերկրականեան մեծ նաւահանգիստին՝ Պարչելոնայի Կիլիկիոյ հետ
մշակած յարաբերութիւններուն հետեւանօք ծանօթանալով այս երկիրին։

Այսպէս, կը յիշուի թէ ԺԱ. դարուն, հոն ալ շրջած է, Եւրոպայի շատ
մը երկիրները իբրև այցելու պտտող այն Ս. Սիմէոն «Սքանչելագործ» Եպիսկ.ը.
որ Երուսաղէմի Արսէն Պատրիարքին յանձնարարականով (1) գնաց Հռոմ, ապա
ման եկաւ Թոսքանա, Բիզա, Լուկկա, Միլան, Բաւիա, Սպանիա, Բրիտա-
նիա, Ֆրանսա և ի վերջոյ գնաց հաստատուեցաւ Իտալիոյ՝ Մանտովա քաղա-
քին Բենեդիկտեանց վանքը, Polirone գիւղը, ուր վախճանեցաւ 1016 Յուլիս
26ին (ՊՀԳ. Ա., 340)։

Սպանացիք ևս Խաչակրութեանց ժամանակ է որ Հայերու հետ յարաբե-
րութեան մէջ կը մտնեն, ուրիշ արեւմտեան ազգերու հետ։

Խաչակրութեան մասնակցող ազգերու շարքին, Սպանացիք կարեւոր թիւ
մը կը կազմէին իբրեւ մոլեռանդ քրիստոնեաներ և մենք գիտենք թէ Խաչա-
կիրները ինչ յարաբերութիւններ ունեցած են Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան հետ։

Այդ Թուականէն ետք Սպանացիք միշտ երթեւեկ ունեցած են դէպի Ա-
րեւելք և յարաբերութիւններ՝ Կիլիկիոյ հետ, անգամ մը ծանօթացած ըլլալով
անոր։

Այս առթիւ շատ հաւանական է որ Հայերն ալ գացած ըլլան Սպանիա։

Մասնաւորապէս Հայ կրօնաւորներ աւելի շահագրգռուած ըլլալ կը թը-
ուին այս ջերմեռանդ կրօնասէր երկիրով, ուր պէտք է գացած և հաստատ-
ուած ըլլան։

Ըստ Աստուր Եաղուպեանի, (Հայաստանեայց Եկեղեցի, 1941, էջ 373)։
Թոլէտոյ քաղաքի «Վանքի մը մէջ թափոր» կոչուած պատկերին մէջ նկար-
ուած էին վեղարով և սուրջառով Հայ վարդապետներ որոնք Թափոր կը
գաղնային։ Ուրեմն Հայ կրօնաւորներ Սպանիա հաստատուած էին, նման Ի-
տալիա հաստատուած Բարսեղեան Հայ կրօնաւորներու, որոնք հաւանօրէն հա-
րաւային Ֆրանսայի և Սպանիոյ մէջ ալ տարածուած էին։ Անոնք անշուշտ
լատին ծէսով կը վարուէին, վասնզի 1208ին Ֆրանսայի և Սպանիոյ մէջ հա-
լածանք սկսած էր ընդդէմ այլադաւան եկեղեցիներու։ Քսան տարուան մի-
ջոցին (1208 –1228), քանդուած են 500է աւելի բերդեր, միայն Հարաւային
Ֆրանսայի մէջ, ուր Ալբիգեանք, որոնք Հայաստանէն տարագրուած Պաւլիկ-
եան աղանդաւորներու յաջորդները կը կարծուին, հալածուեցան անխնայ Դո-
մինիկեան Միաբանութեան ձեռամբ թէ՛ Հարաւային Ֆրանսայի և թէ՛ Սպան-
իոյ մէջ (տես Համայնագիտարան Կրոնի, Albigencies բառ. Աստուր Եաղուպ-
եան, Հայաստանեայց Եկեղեցի, 1941, էջ 373)։

Մինչեւ հարիւր տարի առաջ, Պապը հազիւ թոյլ տուած էր, Թոլէտոյ
քաղաքին մէջ, միայն վանքէ մը ներս պարփակուելու, Սպանիոյ հին քրիս-
տոնէութեան արդի ներկայացուցիչներուն։

Յիշուած պատկերը այդ վանքը կը ներկայացնէր։ Հարաւային Սպանիոյ

(1) Կը հաւաստուի թէ այս յանձնարարականը եւ հայերէն Աւետարանն ու Սաղմոսարանը իր հետ ունէր, մինչեւ հիմա պահուած են. (Հրաչեայ Աճառեան, Հայոց Անձնանունների Բառարան, Դ. հտ. 498):



մէջ, Մարաղաքներ (մենաստաններ) կային, ինչպէս որ ունէինք Կիլիկիոյ և
շրջակայքին մէջ, նոյն անուններով։

Ինչպէս կը տեսնուի, Սպանիացի կրօնաւորներ Մեծ Հայք և Կիլիկիա
եկած են (տես. Ազատ Միտք, Թ. 36), և փոխադարձաբար Հայ եկեղեցական-
ներ Սպանիա գացած են։

Այսպէս, կը յիշուի Յովհաննէս անուն վարդապետ մը, որ ԺԳ. դարուն
գացած է Սպանիա Կոմպոստելլայի Ս. Յակոբ վանքը և թարգմանել տուած
է հոն «Պատմութիւն գլխատման Ս. Յակոբ Առաքելոյն» անուն գործը (Ալի-
շան, Սիսական. 457)։ Այս Յովհաննէս վրդ.ը կը խորհիմ որ Կիլիկիա հաս-
տատուած Լատին կրօնաւորներէն մէկն էր հաւանօրէն, որ հայերէն սորված էր, ու-
սումնասիրելու համար Ս. Յակոբ Առաքեալի վկայաբանութիւնը, որ կը շահա-
գրգռէր Սպանացիները որոնք Կոմպոստելլայի մէջ Առաքեալին անունին նուիր-
ուած նշանաւոր ուխտավայր մը ունէին, ուր շատ Հայեր ուխտի կ'երթային։

Կը տեսնուի ուրեմն, որ Հայ և Սպանացի կրօնաւորներ՝ երկու երկիրնե-
րուն միջեւ երթեւեկած են և այսպէս կրօնական գետնի վրայ յարաբերու-
թիւն մշակած են մինչեւ Հայոց անկախութեան կորուստը։

Այս կրօնաւորներուն երթեւեկէն անջատ՝ Սպանացի նաւեր եկած են Կի-
լիկիոյ նաւահանգիստները՝ Միջերկրականի շատ մը քաղաքները հանդիպող
նաւերու կարգին։

Անոնց խարիսխներն էին Պարչելոնա, Մայորքա և Սեւիլլա նաւահան-
գիստները, ինչպէս կը յիշուի Ծովային Օրինաց (Consolato del Mare) մէջ։
Մասնաւորապէս նշանակելի է, որ Քաթալոնացիք 1293 թուականին ստացած
էին առեւտրական առանձին առանձնաշնորհումներ, կամ արդի բացատրու-
թեամբ՝ կնքած էին առեւտրական դաշինք, Կիլիկիոյ հայկական թագաւորու-
թեան հետ, որուն Այաս նաւահանգիստը այդ թուականին Արեւելքի ամէնէն
բանուկ ու ճոխ նաւահանգիստներէն մին էր — ինչպէս ըսած ենք քանիցս—,
ուր Վենետիկ և Ճենովա ունէին իրենց պայլը և գունցը, որոնք արդի հիւ-
պատոսներու դերը կը կատարէին։

Մինչեւ այդ թուականը ուր Արագոնի թագաւորը Վենետիկցիներու և Ճե-
նովացիներու հաւասար իրաւունքներ պահանջած և ստացած էր, Սպանացիք
արդէն երթեւեկ ունէին Կիլիկիա, սակայն կ'երեւայ թէ առանձին պայլ չու-
նէին, ինչպէս ունեցան 1293էն ետքը՝ երբ դաշինք կնքուեցաւ Արագոնի
Յակոբ Բ. Թագաւորին (1291—1327) և Հայոց Հեթում Բ. Թագաւորին (1289
—1297) միջեւ։

Աստ փաստ կը համարէ Հ. Ալիշան (Սիսուան, 363), 1274 թուականով
այն դիւանական վաւերագիրը, որ Ճենովացիներու գունցին ապարանքը ստո-
րագրած է Սպանացի Պետրոս Յովհան Քհն., որ Այաս հաստատուած մէկը կը
թուի և ոչ թէ պատահական անցորդ մը։

1293ի դաշինքին կնքուելէն յետոյ, ինչպէս կը թուի, Արագոնի Յակոբ
Բ. Թագաւորը, առեւտրական յարաբերութիւնները պահպանելու և ընդարձա-
կելու նախաձեռնութեամբ, շարունակած է բարւոք յարաբերութիւններ պահել

*Հեթում Բ.ի յաջորդներուն հետ, և ունեցած է շատ բարեկամական յարաբերութիւններ մեր Օշին Թագաւորին* (1308—1320 *Յունիս* 20 +) *հետ։*

*Յակոբ Բ., նախ* 1319*ին, մասնաւոր դեսպանով, Օշինի փափաքին վրայ, կը ղրկէ վեց արու և չորս մատակ ձիեր, և* 1320*ին կրկին երկու արու ձիեր, որոնց արտածումը կ'երևայ թէ բացառաբար արտօնած էր Յակոբ Թագաւոր, ինչպէս կը տեսնուի Պարչելոնայի քաղաքին մատենադարանը պահուած երկու վաւերագիրներէ* (Ռանմսեր, 1905, 67 *և* 73—74)*։*

*Նոյնպէս՝ պահուած կը մնան ուրիշ գիրեր, նոյն Թագաւորէն, որոնցմէ կը հասկցուի թէ, երկու Թագակիրներուն միջև գոյութիւն ունէր մտերմութիւն և բարեկամութիւն* (Նոյն, 71) *և դեսպանական յարաբերութիւն։*

*Նիկոնիայի Թեկղի Կոյսը, քրիստոնէական առաջին մարտիրոսներէն է, նահատակուած Իսաւրիոյ՝ Սելեւկիա քաղաքը։ Անոր մարմինը կը գտնուէր Օշինի տէրութեան մէջ կամ մօտերը։ Յակոբ Բ. իր շինած մէկ եկեղեցիին համար, կը խնդրէ Օշին Թագաւորէն՝ որ անոր մարմինէն մասունք մը ղրկէ իրեն։ Այս նպատակով՝ ան Օշինի կը ղրկէ դեսպան մը՝* Simon Zalzet*ն, որուն կ'ընկերացնէ մասունքներու փոխադրութեան համար երկու քահանաներ։*

*Յակոբ Բ.ի և Օշինի բարեկամութիւնը աւելի հասկնալի կը դառնայ, երբ նկատի առնենք թէ Օշին եղած է մէկը մեր Հայոց այն Թագաւորներէն, որոնք Արևմուտքէն օգնութեան մը ակնկալութեամբ՝ լատինամիտ հակումներ ցոյց տուած են։ Օշին իր առաջին կնոջ՝ Զապէլի մահէն յետոյ, ամուսնացած է Տարենտոյի իշխանին՝ Փիլիպպոսի աղջկան՝ Յովհաննա Իոլինէի հետ։*

*Այս բարեկամական յարաբերութիւններով, — մանաւանդ այնպիսի շրջանի մը, ուր Հայոց Թագաւորները միամտութեամբ իրենց իշխանութեան պահպանութիւնը Հռոմի Պապէն և քրիստոնեայ Արևմուտքէն կ'ակնկալէին — անոնք պահպանուած ըլլալ կը կարծէին ընդդէմ բարբարոս ոտնձգութիւններու։ Սպանիա ևս կը գտնուէր այն երկիրներու կարգին, որոնց վրայ յոյս դրած էին մեր Կիլիկիոյ Թագաւորները։*

*Սակայն, տակաւին այն ատեն Սպանիա չէր ներկայացներ մեծ ուժ մը, վասնզի երկիրը՝ զոր մենք Սպանիա անունով կը ճանչնանք՝ բաժնուած էր մի քանի Թագաւորութիւններու, ինչպէս Արագոնի, Կաստիլիոյ և Նաւառայի և այլն, որոնք յաճախ իրարու հետ կռուելով, զիրար կը տկարացնէին։*

*Ասով հանդերձ՝ այս խորհրդապաշտ երկիրին մէջ, ուր կրօնքը այնքան կարևոր տեղ բռնած էր, և միշտ Արևելքի այլակրօն ազգերուն դէմ կռուելու գաղափարը մտազբաղութիւն մը եղած էր, Հայ Թագաւորութեան օգնութեան ճիչերը հասած են հաւանօրէն Հռոմի խողովակով, և թերևս արձագանգ ալ գտած։*

*Այսպէս,* 1375 *Ապրիլ* 15*ին, երբ մեր Լևոն Ե. վերջին Լուսինեան Թագաւորը գերի ինկաւ Եգիպտացիներուն ձեռքը և փոխադրուեցաւ Գահիրէ, և անկէ դիմումներ կատարեց քրիստոնեայ երկիրներու, որպէսզի իր ազատման համար միջամտեն, ի մէջ այլոց դիմեց նաև Սպանիոյ Թագաւորներուն, որոնցմէ Արագոնի Պետրոս Դ. Թագաւորը* (1336 - 1387) *մի քանի անգամներ դիմած էր Եգիպտոսի Սուլթանին, առանց յաջողութեան.*



*Լևոն, ասկէ քաջալերուած, իր խոստովանահայրը՝ Յովհաննէս Դարդել քահանան իբրև լիազօր ղրկեց Եւրոպա։*

*Յովհաննէս Դարդել, իր ընկերակից՝ Անտոն քհ.ի հետ ճամբայ ելաւ Գահիրէէն* 11 *Սեպտ.* 1379*ին, և վեց ամիս թափառելէ ետքը, հասաւ Պարչելոնա* (1 *Մարտ* 1380)*, ուր ներկայացաւ Արագոնի Թագաւորին։ Պետրոս Դ. դժուարութիւններ հանեց և միայն* Յաղթութիւն *անունը կրող ցռկանաւ մը Դարդելի տրամադրութեան տակ դրաւ՝ այլևայլ ծախքերէ և նուէրներէ խուսափելու համար։ Երբ Դարդել կռահեց Պետրոսի մերժելուն պատճառները, առաջարկեց Արագոնի պետութեան մէջ գտնուող բոլոր եկեղեցիներուն եկամուտը յատկացնել Լևոնի փրկութեան գործին, Պապին առջև պատասխանատուութիւնը իր վրայ առնելով* (1)*։ Այն ատեն Թագաւորը տեղի տուաւ և ոչ միայն յանձնարարական թուղթերով Դարդելը ղրկեց իր իշխանութեան տակ գտնուող առաջնորդներուն և մեծամեծներուն, որպէսզի անոնք ալ իրենց աջակցութիւնը տան Լևոնի ազատութեան համար, այլ Ֆրանկիսկոս Սակլոզա անունով վաճառականի մը և Պարչելոնացի նաւատէրի մը հետ — որ առևտրական գործերու կարգադրութեան համար Եգիպտոս կ'երթար Պետրոս Դ.ի կողմէ — գիր մը յղեց Եգիպտոսի Սուլթանին* (*Կ. Յ. Բասմաջեան,* Նոյն, 65) *և ամիս մը ետքն ալ նուէրներով և նոր նամակներով Եգիպտոս ղրկեց իր դեսպանը՝ Բոնանատ Սապէրան, որուն առաքելութիւնը դրական արդիւնք մը չունեցաւ։*

*Դարդել անոր վրայ դիմեց Կաստիլիոյ Յովհաննէս Ա. Թագաւորին* (1379—1390)*, որուն ներկայացաւ* 1380 *Նոյեմ.* 29*ին և անկէ խոստում ստացաւ թէ իր «եղբայրակցին» փրկութեան համար, ձեռքէն եկածը պիտի ընէր, բայց զանազան արգելքներ կային։ Մանաւորապէս Փորթուկալի հետ պատերազմի բռնուած ըլլալով, չկրցաւ անմիջական ձեռնարկ մը ընել։ Սակայն երկու տարի ետքը, ծանրագին նուէրներով դէպի Եգիպտոս ճամբայ հանեց դեսպանութիւն մը, որ կը բաղկանար իր երեք զինակիցներէն, Մանուէլ անունով Հայ ասպետ մը* (2)*, որ առաւ-փախաւ խաչագող մըն էր և Արագոնի Թագաւորին հօրեղբայր Պետրոս Սեղովիացիէն, որ Կիպրոսի Պետրոս Ա. Թագաւորին աներն էր և Ֆրանչիսկեան կրօնաւորներու կարգը ընդունած էր և Դարէլ քհն.էն։ Պատգամաւորները երբ Պարչելոնա հասան՝ Մանուէլ փախաւ դարձեալ շրջելու երկիրէ երկիր և Լևոնի փրկութեան անունով դրամ հաւաքելու և շորթելու համար։*

*Արագոնի Թագաւորը հոն իրենց ընկերացուց նաև Բոնանատ Սապէրա*

---

**(1) Կղեմէս Է. Պապին մէկ գիրը, ուղղուած Տարրագոնայի Արքեպիսկոպոսին, 1381 Յուլիս 4 թուականով (Կ. Յ. Բասմաջեան, Լեւոն Ե. Լուսինեան, 1908, էջ 63-64), կը հաստատէ թէ Պապը առած պէտք է ըլլայ իր հաւանութիւնը:**

**(2) Մանուէլ ասպետ հաւանօրէն այն է, զոր Կոստանդին թագաւորին (1363—1372) կինը Մարիամ՝ Տարենտոյ իշխանական տոհմէն, Տարսոնի Արքեպիսկոպոսին հետ ղրկած էր 1371ին, յորդորելու համար իր մօրը՝ Յովհաննա թագուհիին ազգականները, որ օգնութեան հասնին Կիլիկիոյ: Մանուէլ ասպետ, ըստ Ալիշանի (Հայ-Վենետ, 135), թէև ազգաւ Հայ, ծնած է Ճենովա եւ իր բնակութիւնը հաստատած էր Նաբոլի:**

դեսպանը, անոր կրկին տալով նամակ մը, ուղղուած Սուլթանին։ Այս անգամ Բոնանատ Սապէրա յանձն առած էր իր պատգամաւորութեան ծախքը իր գրպանէն ընել, մեղքնալով Լեւոն Ե.ը։

Կաստիլիոյ և Արագոնի երկու թագաւորներուն միացեալ դեսպանութիւնը 1382 Մայիս 21ին Պարչելոնայէն ճամբայ ելաւ և երեք ամսուան տաժանելի ճամբորդութենէ մը ետք, ժամանեց Աղեքսանդրիա (14 Օգոստ.) և անկէ իր ճամբան շարունակեց դէպի Գահիրէ, ուր ներկայացաւ խնամակալ Բարքուքի և յանձնեց երկու թագաւորներէն բերած թուղթերը և նուէրները (Նոյն, էջ 71—72)։

Բարքուք, 1382 Սեպտ. 30ին, վերջապէս հաւանեցաւ արձակելու Լեւոն Ե.ը որ եօթը տարի մնացած էր գերի՝ Գահիրէ։

Լեւոն Ե., Հոկտ. 7ին Աղեքսանդրիայէն հեռացաւ Սպանացի երկու թագաւորներուն դեսպաններուն հետ, և Հռոդոս հանդիպումէ մը ետքը՝ գնաց Վենետիկ, ուրկէ անցաւ Աւինեոն, այցելելու համար իր ազատութեան աշխատող Կղեմէս Է. պապին, որ անոր տուաւ Ոսկեղէն Վարդ պատուանշանը (1 Մարտ 1383)։

Լեւոն Ե., ետքը անցաւ Սպանիա, Արագոնի և Կաստիլիոյ թագաւորներուն յայտնելու համար իր երախտագիտութիւնը և շնորհակալութիւնը։

Լեւոն Ե. երբ հասաւ Արագոն (1383 Ապրիլ) Պետրոս Դ. և իր թագուհին, Լերոնայի դուքսն ու դքսուհին և իրենց որդին, նոյնպէս նաև պետական պաշտօնատարներ և ժողովրդեան մեծ բազմութիւն մը թափօր կազմելով դիմաւորեցին Հայոց գահազուրկ թագաւորը և հետեւորդները, անոր ընծայելով շատ մը պարգեւներ, իսկ Պետրոս Դ., տարեկան թոշակ մը յատկացուց Լեւոնի, զոր կ'ստանար մինչեւ իր մահը (Նոյն, 78)։

Լեւոն Ե., Արագոնէն անցաւ Կաստիլիա, որուն Յովհաննէս Ա. թագաւորը այդ միջոցին Փորթուկալի թագաւորին աղջկան հետ ամուսնանալու համար, Բադախոզ կը գտնուէր։ Յովհաննէս Ա. երբ իմացաւ Լեւոնին իր երկիրը գալը, զայն յատուկ պատգամաւորութեամբ առաջնորդել տուաւ իր մօտ և հարսնիքը յետաձգեց, որպէսզի Լեւոն ևս անոր ներկայ ըլլայ։ Լեւոն թագաւոր գտաւ փառաշուք ընդունելութիւն մը (Նոյն, 79) և իր ժամանումին երկրորդ օրը (Մայիս 17), կատարուեցաւ Յովհաննէսի հարսանիքը մեծ խրախճանութիւնով և Հայ թագաւորին կնքահայրութեամբ։

Հարսնիքէն ետք երկու թագաւորները գացին Լէոն քաղաքը, ուրկէ Հայոց թագաւորը պահ մը բաժնուելով ուխտի գնաց Գալիսիայի Ս. Յակոբ վանքը։ Յետոյ կրկին միանալով Լէոնի մէջ՝ Վալլադոլիդի ճամբով գացին Սեգովիա (Օգոստ. 14) ուր ժողովի հրաւիրուած էին Կաստիլիոյ եկեղեցական և աշխարհական աստիճանաւորները և բոլոր իշխանները։

Այդ ժողովին ներկայ եղաւ նաև Լեւոն, որ ներկայացուց իր վիճակը արտասուաշ կերպով։

Յովհաննէս, ի գութ շարժած՝ Հայոց թագաւորին նուիրեց Մատրիտ, Վիլլարէալ և Անտուխար քաղաքները, որպէսզի Լեւոն անոնց եկամուտներով և իր դիրքին համաձայն ճոխութիւնով, իբրեւ թագաւոր Հայոց և իբրեւ տանուտէր կամ ըստ ոմանց նոյնիսկ թագաւոր, այդ երեք քաղաքներուն՝ ապրի մինչեւ իր կեանքին վերջը։



Ասոնցմէ զատ նուիրեց նաև շատ մը դաբլա ոսկեդրամ, ոսկեղէն զարդեր, արծաթեղէն ամաններ, մետաքսէ և ոսկեթել դիպակներ։ Լեւոնի տրամադրութեան տակ դրուեցաւ նաև վեց ցռկանաւ և վեց նաւ, իրենց բոլոր կազմածներով, որպէսզի գործածէ զանոնք երբ որ փափաքի երթալ ձեռք բերել իր թագաւորութիւնը։ Իսկ Ֆրանսա երթալու համար ալ, իբրեւ ճամբու ծախք վճարեց 15,000 ֆլորին։

Այս պարգեւատուութեամբ Լեւոն կ'ստանար Սպանիոյ մէջ տանուտիրական իշխանութիւն մը Մատրիտի վրայ — այսօր մայրաքաղաք Սպանիոյ — որ ամէնէն կարեւոր քաղաքներէն մին էր և ունէր մասնաւոր առանձնաշնորհումներ, զորս վտանգուած կարծեցին Մատրիտի բնակիչները, իրենց թագաւորին կողմէ «օտարականի մը» եղած այս առատաձեռնութեան հետեւանօք (Նոյն, 86) և շատ յուզուեցան երբ Յովհաննէս Ա.ի Մատրիտի Քաղաքային Վարչութեան ղրկուած շնորհաթուղթը (Privillegio) հասաւ։ 1383 Հոկտ. 2ին, քաղաքին և շրջակայից երեւելիները ժողով գումարեցին։ Բայց բոլոր այս իրաւանցումները աւելորդ էին։ Լեւոն անոնց իրաւունքները ջնջելու կողմնակից չէր։ Արդէն հազիւ չորս ամիս մնաց Մատրիտ և Հայաստանի գահը վերադառնալու առաջադրութեամբ դիմումներ ընելու համար՝ 1381 Փետր. 28ին հեռացաւ Կաստիլիայէն և դիմեց Նաւարայի Կարոլոս Բ. թագաւորին (1349—1387), որ զինքը ընդունեց մեծ պատիւով և հրամայեց տալ հարիւր զօրական և հարիւր աղեղնաւոր, որպէսզի ան կարենայ Հայաստան երթալ և փրկել իր երկիրը, ինչպէս նաև նուիրեց ոսկեզօծ արծաթէ գեղաքանդակ նաւ մը, մէջը դնելով 2000 արագոնեան ֆլորին։

Սպանիոյ չորս իշխանութիւններուն պետերը, Հայոց դժբախտ թագաւորին նկատմամբ մարդասէր եղած են և զայն պատուած ու անոր իշխանութիւնը վերահաստատելու համար ձեռնտուութիւն խոստացած են, սակայն դժբախտաբար ապարդիւն անցած են իրենց ջանքերը։

ԺԴ. դարուն, Եգիպտոս տիրած էր արդէն Սուրիոյ և Լատին բոլոր իշխանութիւնները վտարած էր։

Սպանիա իր կարգին, կ'աշխատէր վանել Մաւրիտանացիները և փրկել Սպանիոյ Իսլամական տիրապետութեան ենթարկուած մասերը։ Այլեւս իր նաւերը Միջերկրականի մէջ չէին կրնար ապահով երթեւեկել, ծովահէններու վախով։ Հետեւաբար իր նաւերը Կիլիկիա չկրցան երթալ և յարաբերութիւնները խզուեցան ինքնաբերաբար։

# ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

Կեդրոնական Ասիոյ հրոսներու արշաւանքներուն ժամանակամիջոցը, որ կը գրաւէ մարդկային ազգին պատմութեան չորս դարերը, կը տեւէ 1040էն 1468։ Այս չորս դարերը, Հայ ազգին պատմութեան ամէնէն տագնապալից մէկ շրջանը կը կազմեն։

Այս ժամանակամիջոցը խառնակութեան և փլուզումի շրջան մըն է, ուր ազգեր ազգերու վրայ կ'իյնան, և ինչպէս շատ մը երկիրներ՝ նոյնպէս և Հայաստան կ'ենթարկուի պէսպէս աղէտներու որոնք երկիրը կը վերածեն քաոսի։ Հայերը, այս խառնարանէն խոյս տալու համար՝ իրենց հայրենիքէն հեռանալէ զատ ուրիշ միջոց չունէին։ Եւ սակայն՝ եթէ ոչ ամբողջովին, գէթ մեծ հատուածներով ցրուելով այն ատենուան ծանօթ աշխարհը բաղկացնող բոլոր երկիրները, ինչպէս տեսանք։

Արդարեւ, տեսնուեցաւ որ Հայերը դիմած էին դէպի հիւսիս մինչեւ Իսլանտա կղզին, բեւեռային սառնապատ շրջանակին մէջ, ինչպէս և մինչեւ խաւարակուռն Ափրիկէի հասարակածային սահմանները՝ Եթովպիա, բայց ոչ աւելի հիւսիսը և ոչ աւելի հարաւը կը ճանչնային, և կարծես հետաքրքրութիւնը չէին ունեցած աւելին, շատ հասկնալի երկիւղով մը, այսինքն նախապաշարուած ըլլալով առասպելներով, ինչ որ կը սանձէր իրենց մարդկային յանդգնութիւնը և բնածին հետաքրքրութիւնը։

Միջին Դարուն, աշխարհի վերջին սահմանը դէպի Արեւելք՝ «Մագող Աբեւան» երկիրը՝ Ճափոնը կը կարծուէր, որ անծանօթ աշխարհ մըն էր, Մերձաւոր Ասիա կամ «Արեւելք» (Levant) կոչուած երկիրներուն մէջ ապրող Հելլէն-Հռոմէական մշակոյթով սնած ժողովուրդներուն համար։ Անոնք դէպի Արեւմուտք «եզր ծովու» առաջացող Իպերինեան թերակղզիին ափերէն հեռու դիտած էին Ատլանտեանի ալիքները՝ այդ Ովկիանոսը նկատելով աշխարհի սահմանը զոր չէին գիտեր թէ ո՞ւր կը վերջանար և ի՞նչ կերպով։ Անոնք հոն, երկիրին թէ՛ Արեւելքի և թէ՛ Արեւմուտքի կողմը, հեռուն՝ ծովէն անդին կ'երեւակայէին անդունդ մը, ուր երթալ յանդգնողները կը կորսուէին։

ԺԵ. դարուն էր որ մարդկային միտքը կը թօթափէր հնօրեայ նախապաշարումները, գիտական որոշ հաւանութեամբ մը, ըմբռնելով թէ Երկիրը գունդ մըն էր որ Արեւին շուրջը կը դառնար և ոչ թէ Միջոցին մէջ տափակ տարածութիւն մը, անշարժ, որուն շուրջը կը դառնար Արեւը։

Հետեւաբար, մինչեւ այդ թուականը, աշխարհի բաւական սահմանափակ մէկ մասն էր որ ծանօթ էր մեր կիսագունդի մարդերուն. Արեւելեան կիսագունդի հին ազգերուն և անոնց ամէնէն յառաջադէմներուն որորանը եղող Արեւմտեան Ասիոյ, հիւսիսային Ափրիկէի, և Եւրոպայի ժողովուրդները, որոնք առաւել կամ նուազ չափով ժառանգորդներն էին մարդկային վաղեմի քաղաքակրթութեան, դեռ իրարու ծանօթացած չէին։



Ազգերու այս շարքին մէջ իր տեղը ունէր Հայը, որ իր երկիրին աշխարհագրական շատ աննպաստ դիրքին պատճառով, այսինքն գտնուելով խուժդուժ ազգերու արշաւուղիին վրայ, անյիշատակ ժամանակներէ սկսեալ հարուածուած էր հիւսիսէն և հարաւէն, արեւմուտքէն և արեւելքէն։

Կեդրոնական Ասիոյ հրոսներու արշաւանքներուն չորս դարերու շրջանը, մանաւորապէս նշանաւոր հանդիսացած է այն զանգուածային հսկայական շարժումներով, զորս Մայրագոյն և Կեդրոնական Ասիոյ վայրենի ժողովուրդները կատարեցին, դիմելով դէպի Արեւմուտք, յաճախ իրար հրելով, չի գիտցուիր որոշապէս ինչ շարժառիթներէ մղուած։

Մինչեւ այս շրջանը, այսինքն ԺԱ. դար, ոչ այս ուժգնութեամբ և ոչ ալ այս ծաւալով ոտնակոխ եղած էր Հայաստան։

Մեծ թիւով Հայեր խոյս տուած էին, Հայոց Քրիստոնէացումէն ետք, դէպի դրացի Քրիստոնեայ մեծ Կայսրութեան՝ Բիւզանդիոնի հողերը, ուր շատ հին ատեններէ սկսեալ Հայեր բնակած էին։

ԺԱ. դարուն, այս փախուստը քաջալերուեցաւ Բիւզանդական Կայսրութեան անհեռատես քաղաքականութեան հետեւանօք։ Եւ Հայաստան դատարկացաւ իր Հայ բնակչութենէն՝ տեղ տալու համար Ասիական բարբարոսներու, որոնք ինչպէս գիտել տրուած է, Մայրագոյն Արեւելքէն և Կեդրոնական Ասիայէն դէպի Արեւմուտք կը խուժէին ոչ միայն ասպատակութեան և տիրապետութեան համար, այլ և հոն հաստատուելու։ Անոնք զանգուածային մեծ խումբերով կը տեղափոխուէին դէպի Հայաստանի լեռնադաշտը, և անկէ հարաւ՝ դէպի արեւմուտք՝ Միջերկրականեան երկիրներ, ուր կու գային հաստատուիլ այս վայրենի հրոսներուն կռուող ուժերուն հետեւող և իրենց տունկառքերուն մէջ բնակող իրենց կիներն ու պզտիկները, վաչկատուն ցեղերու յատուկ շատ նախնական և սակաւ կահ-կարասիներով։

Այսպէս, նուաճուած երկիրներու — ընդ որս Հայաստանի — բնակչութեան ցեղային նկարագիրը կը խաթարուէր և կ'այլափոխուէր։

Արեւելքի մէջ Քրիստոնէութիւնը մեծ հարուած մը կ'ընդունէր և հաստատուած կարգերը տակն ու վրայ կ'ըլլային և նոր աշխարհ մը երեւան կու գար, մանաւանդ երբ Հելլէն-Հռոմէական և Քրիստոնեայ քաղաքակրթութեան պաշտպան Բիւզանդիոն՝ տասը երկար դարերու պայքարէ մը յետոյ, ասիական բարբարոսներու բիրտ ու վայրենի զանգուածին քարուքանդ առնող ուժին առջեւ կը տկարանար, և չէր կրնար իրեն վերապահուած դերը կատարել։ Քրիստոնեայ Եւրոպան փորձեց ինքը նախաձեռնութիւնն առանձնել, քրիստոնէութեան վարկը փրկելու՝ Խաչակրութիւններով։ Դժբախտաբար Խաչակրութիւնները շատ գէշ կազմակերպուած էին, և մանաւանդ շատ հեռու՝ բուն նպատակին ծառայելէ, վասնզի անոր պետերէն շատ քիչերը անկեղծ էին և անշահախնդիր։

Հետեւաբար անոնք բնաւ չծառայեցին իրենց նպատակին, քանի որ Արեւելքի քրիստոնեայ բոլոր իշխանութիւնները ջնջուեցան։

Հայերը, Արեւելքէն դէպի Արեւմուտք խուժող գազանաբարոյ ժողովուրդներու տեղափոխութեան ճամբուն վրայ գտնուելով, առաջին հարուածները ի-

րենք պիտի կրէին շատ բնականաբար, և ինչպէս աւելի կանուխ ժամանակներուն, նոյնպէս այս շրջանին, վայրագութիւններուն առաջին զոհերը եղան Հայերը։ Անգթութիւնները անհանդուրժելի էին երբեմն, այնքան որ Հայերը նախամեծար կը համարէին հեռանալ իրենց բնակավայրէն, ամէն ինչ լքելով և գաղթականի մախաղը և ցուպը ձեռք առնելով։

Եւ ինչպէս զանգուածային էր խուժումը այս ասիական բարբարոսներուն, նոյնպէս զանգուածային եղաւ անոնց առջեւէն խոյս տուող Հայերուն փախուստը, որ դէպի արեւմուտք Հայոց ազգին ամբողջական տեղափոխութեան պիտի վերածուէր կարծես, եթէ չգտնուէին մարդիկ, որոնք հասկացողութեան ձեւ մը գտնելով չմնային իրենց պապենական հողերուն վրայ։

Իսկ անոնք որ տեղաշարժի ենթարկուած էին, կարծես թէ տեղքայլ ըրին և անոնցմէ ոմանք կառչելով, երբեմն հաստատուն և երբեմն ազազուն ապաւէններու, դէպի Արեւմուտք իրենց տեղափոխութեան ընթացքին կրցան կանգ առնել տեղ տեղ, կազմելու համար իշխանութիւններ և նոյնիսկ թագաւորութիւն մը՝ Կիլիկիոյ մէջ և տոկալ երեք հարիւր տարիներ եւս Արեւելքի մէջ ու կատարել իրենց սահմանափակ և համեստ ուժերով, արեւմտեան — քրիստոնեայ քաղաքակրթութեան պաշտպանի դերը, մինչեւ որ իրենց ալ դիմադրութիւնը ընկճուեցաւ և բարբարոսները ազատ ասպարէզ գտան ողողելու բովանդակ Արեւելքը եւ քանդեցին անոր դարաւոր քաղաքակրթութիւնը։

Մենք տեսանք թէ Արեւելքի քրիստոնեայ բոլոր իշխանութիւնները ի՛նչ դժնդակ փորձութիւններու ենթարկուեցան եւ ինչքա՛ն տառապանքներու բովէն անցան, մինչեւ որ քայլառքայլ տեղի տուին եւ ապա՝ 29 Մայիս 1453-ին ստիպուեցան թոյլ տալ որ մահիկը ծածանի Արեւմտեան քրիստոնէութեան վերջին ամրոցին՝ Բիւզանդական մայրաքաղաք Կ. Պոլսոյ պարիսպներուն կատարը եւ Այա-Սոֆիայի քրիստոնէական հոյակերտ տաճարին գմբէթին վրայ։

Քրիստոնէութեան մեծ կեդրոնը քիչ յետոյ պիտի վերածուէր իսլամական մեծ կեդրոնի մը, իբրեւ Խալիֆային բնակավայրը։ Արեւելք այլեւս պիտի ենթարկուէր արաբական եւ իսլամական քաղաքակրթութեան ազդեցութեան եւ քրիստոնէութիւնը պիտի նսեմանար հոն եւ նուաստ վիճակի մէջ պիտի շարունակէր հազիւ թէ շնչել, ենթակայ իսլամներու գթութեան եւ բարեացակամութեան։ Այս չորս դարերու վերջաւորութեան՝ Հայը անապաւէն եւ անպաշտպան զանգուածի մը պիտի վերածուէր Արեւելքի մէջ, եւ շատ պարզ էր որ կրկին պիտի ցրուէր աշխարհի չորս կողմը, ուր որ կարենար։ Իրապէս, տեսանք որ Հայը կարծես խուճապահար կը փախչէր ամէն կողմ, իր գլուխը փրկելու եւ խաղաղ վայր մը գտնելու համար, ուր կարենար հաց եւ գործ գտնել եւ ապահովութեան մէջ ապրիլ։

Միջին Դարու այդ շփոթ ու խառնակ ժամանակամիջոցին վախճանը նկատուած են՝

Ա. Կ. Պոլսոյ գրաւումը (1453 Մայիս 29), որ Արեւելեան բարբարոս ժողովուրդներու, Մերձաւոր Արեւելքի մէջ վճռական և բացարձակ յաղթանակը կը խորհրդանշանէ։

Բ. Նոր հողամասերու գիւտը, անոնց կարեւորագոյնը ըլլալով 1492ին՝



Քրիստափոր Գոլոմպոսի՝ Ամերիկայի գիւտը, որ ինչպէս կը թուի, յանկարծական երեւոյթ մը չէր, այլ մարդկութեան մէկ նոր պահանջը, վասնզի Գոլոմպոս միակը չէր, որ Հնդկաստանի համար նոր ճամբայ մը կ՚որոնէր կամ Աշխարհի շրջանն ընել կը փորձէր։

Իրմէ առաջ եւ իրմէ ետք ուրիշներ, յայտնի եւ անյայտ նաւագնացներ, ԺԵ. դարուն Ատլանտեան Ովկիանոս ելած են, նոր աշխարհներ որոնելու համար։ Այս երկու մեծ պատահարները, Պոլսոյ գրաւումը, եւ Ամերիկայի գիւտը, քաղաքակրթութեան համար դարձակէտներ հանդիսացան. վասնզի առաջինը՝ Արեւելքի նուաճման դարաւոր պայքարին հարկադրական լքումը եղաւ, իսկ երկրորդը՝ մարդկութեան առջեւ բացաւ գործունէութեան նոր ասպարէզ, նոր հորիզոն, կիրարկելու համար բոլորովին ի նորոյ Նոր Աշխարհ մը Արեւելքի մէջ պարտուած Քրիստոնեայ քաղաքակրթութեան ատաղձներովը եւ անոր սկզբունքներուն վրայ հիմնուած։

Ասիկա պիտի ըլլար խոշոր յեղաշրջումի մը առիթը, որուն նախակարապետները պիտի հանդիսանային քանի մը յանդուգն նաւագնացներ, որոնք Հնդկաստանի ծովային ճամբան որոնելու ընչաքաղցութեամբ խանդավառուած էին եւ չէին կրնար նախատեսել բարեբար այն հսկայ հետեւանքները, որոնց անգիտակցաբար պատճառ պիտի ըլլային իրենց հետաքրքիր եւ միանգամայն յանդուգն որոնումներովը։ Մեծապէս զարմանալի է այն, որ Հայն ալ, ոչ ծովային՝ այլ լեռնային ժողովուրդ մը ըլլալով մէկտեղ՝ իր մասնակցութիւնը կը բերէ այս երկրախուզութիւններուն, Գոլոմպոսի Ա. ճամբորդութենէն հազիւ 19 ամիս ետքը, այսինքն անոր հետ ժամանակակից նկատուելու աստիճան մօտ ժամանակի մը մէջ։

Այդ յանդուգն ձեռնարկին հերոսն է Հայ եպիսկոպոս մը, Մարտիրոս Երզնկացի, Ս. Կիրակոսի Անապատէն, Նոր գիւղ գիւղէն, որ Հռոմ Ս. Պետրոս եւ Ս. Պօղոս Առաքեալներու գերեզմանին ուխտի երթալու համար՝ 1489 Հոկտեմբեր 29ին ճամբայ կ՚ելլէ եւ Կ. Պոլիս ու Վենետիկ ուղեգիծով կ՚երթայ Հռոմ, իր ուխտը կը կատարէ։ Հոն Պապին կը ներկայանայ եւ անկէ յանձնարարականներ առնելով. առիթէն կ՚օգտուի Քրիստոնեայ աշխարհին մէջ հանգանակութեան մը ձեռնարկելու եւ զանազան երկիրներ շրջելով՝ հետիոտն կը հասնի Սպանիա, կ՚այցելէ Կոմպոստելլայի Ս. Յակոբ կամ Կալիսիոյ Ս. Յակոբ (Սան Տիակօ) ուխտավայրը, ուր բաւական թիւով Հայ ուխտաւորներ ալ գացած են դարերու ընթացքին։

Մարտիրոս եպս. ապա կը դիմէ Ատլանտեանի ծովափը, ծանօթ աշխարհին եզերքը, Սպանիոյ արեւմտեան ծայրը, ուր Սանթա Մարիա անուն աւան մը տակաւին այսօր գոյութիւն ունի, Ֆինէսթերրէ հրուանդանին մօտ։ Հոն, Հայ եպիսկոպոսը հասած «յեզր աշխարհին» — ժամանակին ըմբռնումով — միշտ հետիոտն ուղեւորութեամբ, կը շրջագայի Պասքեան նահանգները, որոնց բնակիչները կ՚երեւի թէ իրենք ալ շահագրգռուած էին Ատլանտեանէն — իր բացատրութեամբ «Համատարած ծովէն» — անդին փնտռտուքներ կատարելու։ Մարտիրոս եպս. ինքն ալ կը խառնուի այդ Պասք երկրախոյզներուն։

Հայ եպիսկոպոսին երկրախուզական նպատակով ձեռնարկի մը մասնակ-

ցութիւնը թերեւս առասպել մը համարուի, սակայն այս եպիսկոպոսին իր համբորդութեան ինքնագիր նկարագրութիւնը, որ մեզի հասած է, ոչ մէկ տարակոյս կը թողու թէ ան սոսկ գաղափարական առաջադրութեամբ մը մասնակցած է այդ գործին, ինչպէս կ'ըսէ M. J. Saint Martin, այս հայերէն փոքր ձեռագիրին եւ անոր ֆրանսերէն թարգմանութեան ծանօթագրութիւններով հրատարակիչը(1)։ Ան կը պատմէ թէ «գտեալ մեծ նաւ մի, որ ասացին թէ Հ.Ռ (70,000) դանքար(2) բեռն ունիմ եւ աղաչեցի զիշխանին, թէ ասէք որ զիս այլ ի նաւն առնուն, այլ չեմ կարել քալել. անձինս տաղարթն հասաւ: Եւ նոքա կու զարմանային թէ զայսչափ աշխարհս դուն ոնց կացիր հետեւակ քալել: Եւ գնացին զնաւն տէրն աղաչեցին մեզ (համար թէ) այս Հայ կարգաւորն ի նաւդ առէք, (որ) հեռաւ աշխարհէ եկեալ է, եւ չի կարել ցամաքով ի յետ դառնալ:

Կարդացին զՊապին թուխտն, որ լսեց եւ ասաց՝ թէ կառնում ի նաւս, եւ ապա ասացէք դորա որ գիտենայ որ ես համատարած ծովով կ'երթամ, իմ նաւս պազիրկան չէ(3) մտներ, այս կասար մարդս որ կայ. նաւիս ծառուր-վորք(4) են. մենք զմեր արեւուն թարկն որ տվեր եմք, եւ Աստուած ապաւիներ, թէ նասիպս(5) բերէ որ Աստուած ազատէ զմեզ որ բոլորենք զաշխարհսն, այլաւ, եւ թէ չէ՝ հայ զայն Աստուած գիտէ, այլ ի հով նար չունինք գնալու, թէ դու այլ կամք ունիս, խիստ բարի, արեկ ՚ի նաւս, զհաց դու զկեր դու զխում մի հոգալ. քո վարձքն այլ քեզ, այն կարգաւորքըն թէ մեք այլ հոգի ունինք զորա պաքսիմատն, եւ զինչ որ Աստուած պատրաստեալ է մենք կու հոգանք: Դարձեալ ՚ի քաղաքն, եւ ժամուն ատեն հաւակացուցին ժողովրդեանն՝ թէ այս Հայ կարգաւորս ի նաւ կու մտնէ, ձեր տղայոց արեւու համար եւ Ձեր հոգուդ իրենս ազիզ(6) ժողովեցէք: Անչափ բարի բերին՝ որ քանի օաս ուտէին՝ չէր հասներ» (տես. նոյն, 76—77)։

Եւ Հայ եպիսկոպոսը նաւ կը մտնէ անծանօթ աշխարհներու ի խնդիր եւ «Համատարած ծովու մէջ կ'առաջանայ Պասքիրուն հետ։

Իրենց նաւը ճամբայ կ'ելլէ 8 Ապրիլ 1494ին եւ 68 օրեր անծանօթ ջուրերու վրայ շրջագայելէ յետոյ, 15 Յունիս 1494ին ցամաք կ'ելլեն «Եզր աշխարհին քաղաք»ը, որ ըստ Սէն-Մարթէնի պէտք է ըլլայ Sainte Marie de Finistère, ուրկէ կ'անցնի ան Անտալուզիոյ այն քաղաքը, որ ծովու մէջ է

(1) Հայերէն ձեռագիրը կը կրէ «Ճանապարհորդութիւն Տեառն Մարտիրոսի եպիսկոպոսի Արզնկայոյ խորագիրը: Հրատարակուած ֆրանսերէն թարգմանութեամբ եւ լուսաբանեալ 1827ին *M. J. Saint Martin*,է սա ենթադրելով.

*Relation d'un voyage fait en Europe et dans l'océan Atlantique, à la fin du XVe. siècle, sous le règne du Charles VIII, par Martyr, évèque d'Arzendjian, traduite de l'Arménien et accompagnée du texte original.*

(2) Ուրեմն 70,000 դանքար տարողութիւն ունեցող նաւ մըն էր Մարտիրոս եպս.ի մտած նաւը:

(3) Վաճառականական նաւ չէ ըսել կ'ուզէ, այլ նպատակ ունի:

(4) Պաշտօնեայ = ծառայ = նաւավարել կ'ուզէ:

(5) Նասիպ, թրքերէն բառ, բախտ կը նշանակէ:

(6) Պարէն:



եւ որ ըստ Սէն Մարթէնի, ուրիշ քաղաք մը չի կրնար ըլլալ՝ եթէ ոչ Գատիքսը, որ հաստատուած էր շատ նեղ երկար հողամասի մը վրայ եւ իրապէս շրջապատուած էր գրեթէ ամէն կողմէ ծովով։

Հայ եպիսկոպոսը, որ հինգ տարի (1489—1495) անընդհատ հետիոտն քաղաքէ քաղաք գացած էր նպատակի մը հետապնդութեան համար, այսինքն ուխտաւորութեամբ, եւ ապա յանդգնօրէն անծանօթ ծովու մը ալիքներուն յանձնած է ինքզինքը՝ իրեն անծանօթ ժողովուրդի մը զաւակներուն հետ, որոնց լեզուն ալ չէր գիտեր, կարծես խորհրդանշական նմոյշն է այն հազարաւոր եւ տասնեակ հազարաւոր Հայ գաղթականներուն, որոնք, դարերու ընթացքին, աներեւակայելի դժուարութիւններու յաղթահարելով, կը վերսկսին իրենց կեանքը, կը վերակերտեն իրենց ճակատագիրը, լծուելու համար նախ իրենց, ապա իրենց նոր միջավայրին կամ որդեգրած նոր հայրենիքին ի նպաստ՝ յառաջդիմական աշխատանքներու, շինարարութիւններու ու ամէն կարգի վերելքի։

Միջին Դարու այս շրջանին Հայ Գաղթականութեան Պատմութիւնը փակելու ժամանակ եւ սկսելէ առաջ յաջորդ շատ աւելի շահեկան շրջանին պատմութեան, աւելորդ չըլլայ ուշադրութեան առնել Մարտիրոս Երզնկացի եպիսկոպոսին պարագան։ Ան պարզ կրօնաւոր մըն էր, որ ուխտի կ'երթար Ս. Պետրոսի եւ Ս. Պօղոսի գերեզմաններուն, անոր միացնելով ճամբու ընթացքին, ի նպաստ իր հալածեալ ազգակիցներուն եւ անոնց եկեղեցիներուն՝ հանգանակութեան մը աշխատանքը։ Սպանիոյ մէջ, ուրեմն, Նոր աշխարհներ գտնելու ընդհանուր եւ գինովցնող խանդավառութեանց մէջտեղ, Հայ եպիսկոպոսն ալ կը վարակուի մարդկային զանգուածներուն համար աշխատելու մեծ երազներէն, ու կը ձեռնարկէ յանդուգն ճամբորդութիւններու։ Պատմութեան փիլիսոփային կը մնայ, այլեւս, ճշդել տեղը այս Մարտիրոս եպիսկոպոսին եւ հազարաւոր Մարտիրոսներուն, որոնք իրենց ցեղին պարտադրուած դժխեմ ճակատագիրէն ետք, տակաւին սիրտն ու տրամադրութիւնը կ'ունենան նոր նուաճումներ կատարելու։

Ազգային սին հպարտութիւն և մեծամտութիւն թող չհամարուի, եթէ մենք մեզի վերագրենք ստեղծագործական եւ շինարար ոգի։ Բայց այդ ոգին իրականութիւն մըն է, որ կը հաստատուի եւ կը դրուատուի ամբողջ աշխարհէն։ Եւ ասիկա է փառքը Հայ բազմաչարչար ազգին, որ այսօր պատմութեան բեմին վրայ կը կենայ որպէս քաղաքակիրթ եւ յառաջդիմական տարր։

Այս իրականութիւնը ցարդ խանդավառեր եւ աշխատանքի է մղեր բոլոր անկեղծ ու արդարասէր մարդիկը՝ ի նպաստ մեր ցեղին։ Այս սրտապնդիչ իրականութիւնը — այսինքն՝ Հայուն ոգեկան զօրութենականութեան իրականութիւնը — պիտի խանդավառէ եւ աշխատանքի մղէ բոլոր անոնք, որոնք որեւէ կերպով կրնան նպաստել այս առաքինի ցեղին վերելքին, ընդմէջ քաղաքակիրթ ու խաղաղասէր միւս ազգերուն անոնց կողքին։

Գահիրէ, 6 Մայիս 1955

ՎԵՐՋ

# ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Այս գիրքին իբրեւ աղբիւր ծառայող բազմաթիւ հրատարակութիւններէն յաճախակի յիշուածներուն համար գործածուած են հետեւեալ համառօտագրութիւնները.*—

Ազգ. = Ազգապատում *Հայ Ուղղափառ Եկեղեցւոյն անցքերը սկիզբէն մինչեւ մեր օրերը յարակից ազգային պարագաներով պատմուած։ Մաղաքիա Արքեպ. Օրմանեան, տպ. Կ. Պոլիս և Երուսաղէմ.* 1912—1927։ *Երեք հատոր։*

*ԲԶՄՊ.* = *ԲԱԶՄԱՎԷՊ հանդիսարան, բանասիրական, գրական, գիտական, բարոյական։ Վենետիկի Մխիթարեանց հրատարակութեամբ։* 1843—1954, 112 *տարի։*

Գելցեր = Համառօտութիւն Բիւզանդական կայսրների պատմութեան. *Հ. Գելցեր. Գերմաներէնից թարգմանեց Մեսրոպ վրդ. Տէր Մովսէսեան, Վաղարշապատ. տպ. Ս. Էջմիածնի.* 1901։

*ՀԱ* = *ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ. Հայագիտական Ուսումնաթերթ. Վիեննայի Մխիթարեանց հրատարակութեամբ.* 1887—1954. 68 *տարի։*

Չամ. = Պատմութիւն Հայոց *ի սկզբանէ աշխարհի մինչեւ յամի Տեառն* 1784, *ըստ աւանդելոյ այլեւայլ մատենագրաց. յօրինեալ ի Հայր Միքայէլ Վրդ.է Չամչեանց Կոստանդնուպոլսեցւոյ, յաշակերտէ ամենապատիւ Տն. Մխիթարայ Մեծի Աբբայի։ Վենետիկ.* 1784—85. *երեք ստուար հատորներ։*

*ՊՀԳ.Ա.* = Պատմութիւն Հայ Գաղթականութեան *Ա. հտ. Արշակ Ալպօյաճեան.* 1941. *Գահիրէ։*

Ֆրիկ = Ֆրիկ Դիւան. *Տիրայր Արքեպիսկոպոս. Հրատարակութիւն Հայկ. Բարեգործական Ընդհանուր Միութեան Մելգոնեան հիմնադրամի. Նիւ Եորք.* 1952։

Bussel = The Roman Empire from 81 to 1081. by F. W. Bussell. London. 1910.

CMH. = The Cambridge Mediaeval History, New-York. The Macmillan Company 1923. *չորս ստուար հատորներ։*

EB. = L'Epopée Byzantine à la fin du dixième siècle. Gustave Schlumberger. *երեք ստուար հատորներ. հրատարակուած Բարիզ 1896—1905 տասնամեակի ընթացքին։*

Gibbon = History of the decline and fall of the Roman Empire, by Edward Gibbon - Ed. J. B. Bury. London 1912։

IB = Les Iles des Princes. Le Palais et l'Eglise des Blachernes. la grande Muraille de Byzance. par Gustave Schlumberger. 1925. Paris։

Lamouche = Histoire de la Turquie depuis les Origines jusqu'à nos jours. 1934. Paris։

Laurent = L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête Arabe jusqu'en 886. J. Laurent. 1919 Paris։

Michel le Syrien = Chronique de Michel le Syrien. Patriarche Yacobit d'Antioche (1166—1199). Editée pour la première fois et traduite en français par J. B. Chabot. 1890—1906. Paris. *չորս հատոր։*

Morgan = Histoire du peuple Arménien. Jacques de Morgan. 1919. Paris։

*ԾԱՆՕԹ.— Դիտել կու տանք որ աղբիւրները յիշատակուած տեղն յաճախ* տարի, հատոր, մաս, դպրութիւն, գլուխ, տպագրութիւն, էջ *եւայլն բառերը չեն գործածուած, տեղի խնայողութեան համար։*



ՏՊԱՐԱՆ ՆՈՐ-ԱՍՏՂ' ԳԱՀԻՐԷ



# ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ ԲԱՌԱՐԱՆ

## Ա. ԵՒ Բ. ՀԱՏՈՐՆԵՐՈՒ' ՄԻԱՑԵԱԼ

ԾԱՆՕԹ.— Բ. տառին յաջորդող թիւերը Բ. հատորինն են։

## Ա.

## Բ.

## ԼԱՏԻՆԱՏԱՌ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐ

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Ընթերցողներէն կը խնդրենք նկատի ունենալ յատուկ անուններու բառա-
րանին դիմելու ատեն, որ,

Ա. Անփոփոխ տասնաւոր եւ հարիւրաւոր թիւերը կրճատուած եւ փոփո-
խելի վերջաւորութիւնները միայն նշանակուած են: Այսպէս, օրինակի հա-
մար, երբ անուն մը յիշուած է 10, 17, 25, 28, 102, 113, 128 եւայլ էջե-
րուն մէջ, նշանակուած է, 10, 7, 25, 8, 102, 13, 28, տեղ շահելու համար:

Բ. Անձերու մականունները հիմ առնուած է, բայց երբ մականունը
ծանօթ չէ, այն ատեն պզտիկ անունը յիշուած:

Գ. Անձերու անուններուն քով, անոնց ծննդեան ու մահուան կամ ա-
ւելի նախընտրաբար՝ պաշտօնավարութեան թուականներն դրուած են փակա-
գիծի մէջ. որչափ կարելի է, ժամանակագրութեան նպաստ մը բերելու համար:

Դ. Բոլոր մէկէ աւելի անուններ ունեցող վայրերու եւ անձերու զա-
նազան անունները = նշանով խմբուած են, հոն ուր նշանակուած են էջե-
րու թիւերը, իսկ իւրաքանչիւրը յիշուած է իր կարգին ☞ ով յղելով այն
անունին, ուր նշանակուած են բոլոր համազօրները եւ էջերը:

Ե. Տարբեր ուղղագրութեամբ անուններու միայն մէկ ձեւը առնուած է
սովորաբար, սակայն աշխատուած է միւս ձեւերն ալ նշանակելու՝ որքան
կարելի է, ինչպէս *Երիմ* եւ *Ղրիմ*, երկուքն ալ նշանակուած են:

15 *Սեպտ.* 1955

# ՑԱՆԿ



# ՀԵՂԻՆԱԿԻՆ ՀՐԱՏԱՐԱԿԱԾ ԳՈՐԾԵՐԸ

1. ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ, Վենետիկ, 1901
2. Ս. ՓՐԿՉԵԱՆ ԱԶԳ. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ԸՆԴԱՐՁԱԿ ՕՐԱՑՈՅՑ
   յաջորդաբար երեք տարի Կ. Պոլիս 1908, 1909, 1910
3. ՊՈՒԼԿԱՐԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Վառնա, 1912
4. ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ, իր կեանքը և իր գործը, Կ. Պոլիս 1919
5. ՄԻՆԱՍ ՉԵՐԱԶ, » » » » » Գահիրէ, 1927
6. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, 2. հատոր » 1937
7. ԳՐԻԳՈՐ ԿԵՍԱՐԱՑԻ ՊԱՏՐԻԱՐՔ ԵՒ ԻՐ ԺԱՄԱՆԱԿԸ, Երուսաղէմ, 1936
8. ԹՈՐԳՈՄ ՊԱՏՐԻԱՐՔ ԳՈՒՇԱԿԵԱՆ, Գահիրէ 1940
9. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, 2 հատոր Գահիրէ 1941 և 1955
10. ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԸ » 1945
11. ՑԱՒԻՏԵՆԱԿԱՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԸ » 1945
12. ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ Ի ՀԱՊԷՇԻՍՏԱՆ » 1946
13. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴՊՐՈՑԻՆ » 1947
14. ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ԵՒ ՆԵՐՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ
    Գահիրէ, 1950
15. ՔՆՆԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ, Գահիրէ, 1950
16. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵԻԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, Գահիրէ, 1952
17. ԱԶԱՏ ՄԻՏՔ, շաբաթաթերթ » 1937

# ՀՐԱՏԱՐԱԿՉԻ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Հայերը Ռումելիի մէջ (*Իզմիրեանց Գրական Մրցանակով վարձատրուած*)
2. Հայերը Բիւզանդական երկիրներու մէջ
3. Հայերը Իրանի մէջ
4. Հայերը Իրաքի մէջ
5. Հայերը Եգիպտոսի մէջ
6. Հայերը Պրուսայի մէջ
7. Հայերը Քէօթահիայի մէջ
8. Հայերը Տրապիզոնի մէջ
9. Հայերը Մալաթիոյ մէջ
10. Տպագրութեան արուեստը եւ Հայք
11. Կարապետ Փանոսեանի կեանքը եւ գործը
12. Կարապետ Իւթիւճեանի կեանքը եւ գործը
13. Արմենակ Հայկունիի կեանքը եւ գործը
14. Բիւզանդ Քէչեանի կեանքը եւ գործը
15. Վահան Թէքէեանի հանրային գործունէութիւնը
16. Անհետացող դէմքեր
17. Հայ եւ Թուրք յարաբերութիւններ
18. Հայոց Պատմութիւն (*բարձրագոյն դասընթացք*)
19. Պատմութիւն Հայ Ազատագրութեան
20. Սպանիա եւ Հայաստան
21. Ֆրանսա եւ Հայաստան
22. Ամերիկա եւ Հայերը
23. Հարիւրամեայ պատմութիւն Ս. Փրկչեան Ազգ. Հիւանդանոցի Հայոց Կ. Պոլսոյ
24. Պատմութիւն Հայ Քաղաքակրթութեան
25. Պատմութիւն Հայ Իմացական Շարժման

*եւայլն*



Տպարան ՆՈՐ ԱՍՏՂ, Գահիրէ